6

Thiers, ...

Histoire...

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՖՐԱՆՍԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ

(ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ)


ԳՐԵՑ
ԱՏՈԼՖ ԹԻԷՌ

ԹԱՐԳՄԱՆԵՑ
ԵՐ. Տ. ԱՆԴՐԷԱՍԵԱՆ





1095 p.


"ԿԻՒԹԷՄՊԷՐԿ" ՄԱՏԵՆԱՇԱՐ, ԹԻՒ 44

Կ. ՊՈԼԻՍ, ՏՊԱԳՐ. ԿԻՒԹԷՄՊԷՐԿ

# ՔԱՆԻ ՄԸ ԽՕՍՔ ՀՐԱՏԱՐԱԿԻՉՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ.

Մարդկային հին և նոր պատմութեան մեծագոյն եղելութեան՝ Ֆրանսական յեղափոխութեան հրաշալի դրուագները՝ արիւնալի նախճիրները, աննման դիւցազնութեանց, աշխարհադղորդ պատահարները ընդգրկուած, պատկերացած են այս զմայլելի ու եզական գործին մէջ, զոր աշխարհի գրեթէ բոլոր լեզուներուն թարգմանուած է։ Գրողն է նշանաւոր ֆրանսացի պատմագիր-գրագէտ Ադոլֆ Թիէռ, որ յեղափոխական մը ըլլալով հանդերձ անկողմնակալ և չէզոք գտնուած է պատմական իրողութիւններուն մէջ։

«ԿԻԹԷՄՊԷՐԿ» ՄԱՏԵՆԱՇԱՐԻ հրատարակիչներս, որ մինչև ցարդ օգտաշատ հրատարակութիւններով գոհացում տուած ենք նոր սերունդին, պարծանքով կը յայտարարենք թէ շատ մը հրատարակիչներու հրատարակել չհամարձակած մէկ հոյակապ գործը, ՖՐԱՆՍԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ ձեռնարկած ենք հրատարակելու, որով մեծ ծառայութիւն մը մատուցած ըլլալ կը կարծենք ներկայացնելով թէ՛ հին և թէ նոր սերունդին։ Թարգմանութիւնը ստանձնած է ծանօթ հրապարակագիր և հայագէտ ԵՐ. Տ. ԱՆԴՐԷԱՍԵԱՆ։ Գործին սկզբի պրակներէն արդէն պիտի համոզուի թէ ինչ գոհունակութիւններով կը հրատարակուի այս աննման պատմութիւնը, որուն ամէն մէկ դրուագը պատկերացուած է իր նկարով։

Ուրեմն փութացէք օգտուիլ և առանց առիթը ձեռքէ հանելու տէր եղէք հոյակապ գործի մը՝ կարդալու և ճանչնալու համար մարդկային ազատագրութեան աւետարանիչներուն հրաշալի գործերը, որոնց ճշմարտապէս կը պարտինք նաև այն ազատութիւնը զոր այժմ կը վայելենք Թուրքիոյ մէջ։

ԵՐ. ՄՍՐԼԵԱՆ — ԳԱԲՐ. ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՖՐԱՆՍԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

### ՍԱՀՄԱՆԱԴԻՐ ԺՈՂՈՎ

Ֆրանսայի բարոյական եւ քաղաքական վիճակը ԺԸ. դարու վերջը.— Գահակալութիւն Լուի ԺԶ.ի.— Մորպա, Թիւրկօ եւ Նեքեր նախարարները. Քալոն. Երեւելեաց Ժողով. —Տը Պրիէն նախարար.— Աւագաժողովը կ'ընդդիմանայ. տը Պրիէն կ'աքսորուի եւ ետ կը կանչուի.— Նոր ժողով Երեւելեաց.— Վիճաբանութիւններ Ընդհանուր ժողովի կամ Կարգաժողովի մասին.— Անկումներու կազմութիւն.— Ցեղափոխութեան պատճառները.— Առաջին ընտրութիւնք պատգամաւորներու Ընդհ. ժողովի համար.— Հրկիզում Ռէվէյյօնի տան.— Օրէնսի դուռը, իր նշանակութիւնը — Ընդհ. ժողովոյ բացումը. — Վիճաբանութիւններ իրաւասութեանց ձայնի եւ դասակարգ առ դասակարգ եւ մարդ գլուխ քուէարկութեան մասին.— Երրորդ Դասակարգը (Միջին Դասակարգ) իրենքզինքը Ազգային Ժողով կը հռչակէ.— Ընդհ. ժողովոյ սրահը կը փակուի, պատգամաւորները ուրիշ շէնք մը կ'երթան.— Մականախաղի երդումը.— Յունիս 23ի արքայական նիստը.— Ժողովը կը շարունակէ իր խորհրդակցութիւնները հակառակ թագաւորին հրամաններուն.— Ժողովին առաջին աշխատութիւնները։

Ֆրանսական միապետութեան յաջորդութիւնները յայտնի են. գիտենք թէ կիսավայրենի Գալլիոյ մէջ Ցեղերը, յետոյ Հռոմայեցիք բերին իրենց զէնքերն ու իրենց քաղաքակրթութիւնը. թէ անոնցմէ ետքը՝ բարբարոսները հոն հաստատեցին իրենց զինուորական նուիրապետութիւնը. թէ այս նուիրապետութիւնը, անձերէն հողերուն փոխանցուելով, անշարժացաւ կարծես հոն, և այսպէս ձեւացուց աւատական դրութիւնը։ Իշխանութիւնը հոն բաժնուեցաւ թագաւոր կոչուած աւատական պետին՝ և ճորտ կամ աւատառու կոչուած երկրորդական պետերու միջեւ, որոնք իրենց կարգին թագաւոր էին իրենց սեփական հպատակներուն։ Մեր ժամանակին մէջ, երբ զիրար ամբաստանելու պէտքը փնտռել կուտայ փոխադարձ յանցանքները, բաւականին հասկցած ենք թէ նախ ճորտերը ձեռք ձգել ուզեցին իշխանութիւն, բան մը զոր իշխանութեան ամէնէն աւելի մօտ գտնուողները կ'ընեն միշտ. թէ այդ իշխանութիւնը յետոյ բաժնուեցաւ անոնց մէջ, և անկէց ձեւացաւ աւատական անիշխանութիւնը, և թէ վերջապէս իշխանութիւնը վերադարձաւ գահուն, որ կեդրոնացաւ բռնապետութեան՝ Լուի ԺԱ.ի, Ռիշլիէօի և Լուի ԺԴ.ի ատեն։

Ֆրանսական ժողովուրդը աստիճանաբար ազատագրած էր ինքզինքը աշխատութեան շնորհիւ, որ առաջին աղբիւրն է հարստութեան և ազատութեան։ Նախ երկրագործ, յետոյ վաճառական և արհեստաւոր, այնպիսի կարողութիւն մը ստացաւ որ ինքը կազմեց բովանդակ ազգը։ Իբրեւ աղերսարկու մտաւ Ընդհանուր Ժողովէն ներս, հոն երեւցաւ ծնրադիր, գթութեան և ողորմութեան մուրալու համար. մինչև իսկ շատ չանցած Լուի ԺԴ. ծանոյց թէ այլ եւս չէր ուզեր ունենալ չափազանց հլու հնազանդ ծառաներ, և ասիկա յայտարարեց Աւագաժողովին, ձի հեծնելու կօշիկներով և ձեռքը խարազան բռնած։ Անկէ ետքը պետութեան գլուխը տեսնուեցան` Նախ թագաւոր մը` որ տեսականին մէջ գէշ սահմանուած, իսկ գործնականին մէջ բացարձակ իշխանութիւն մը ունէր. Մեծամեծներ` որոնք թագաւորին աչքը մտնելու համար վրայ տուած էին իրենց աւատապետական [illegible], և միջնորդութիւններով իրարու ձեռքէ կը յափշտակէին ինչ որ իրենց կը յանձնուէր ժողովուրդին մարմինէն. վարը, անծայրածիր բնակչութիւն մը, որ արքայական այս ամենակալութեան հետ ուրիշ կապ չունէր եթէ ոչ ստիպողական գործած հնազանդութիւն մը և տուրքերու վճարում։ Արքունիքին և ժողովուրդին մէջտեղ կը գտնուէին Աւագաժողովները` որոնք արդարութիւնը բաշխելու և արքայական կամքը արձանագրելու պաշտօնը ունէին։ Իշխանութիւնը միշտ մէկը միւսին ձեռքէն կը յափշտակէր, ու եթէ ասիկա ազգին օրինաւոր ժողովներուն մէջ տեղի չունենար իշխանին պալատին մէջ իսկ տեղի կ'ունենար։ Աւագաժողովները եթէ մերժէին արձանագրել արքայական կամքը (հրաման), անոր ազդեցութիւնը կոտրած կ'ըլլային. այն ատեն թագաւորը, եթէ տկար մէկն էր, անձամբ ժողովին կ'երթար և իր ներկայութեամբ իրաւախոհութեամբ արձանագրութիւնը կը կատարէր. իսկ եթէ թագաւորը զօրաւոր մէկն էր, Աւագաժողովը գլուխ կը ծռէր լռելեայն։ Լուի ԺԴ. և ոչ իսկ իրաւախոհութեան պէտք ունեցաւ, որովհետև իր իշխանութեան տակ ոչ մէկ Աւագաժողով համարձակեցաւ հակառակ դիտողութիւններ ընել. ազգը իր ետևէն քաշեց տարաւ, և զայն փառաւորեց այն հրաշալիքներով որոնք ինքն իսկ կ'ընէր պատերազմի մէջ, արուեստներու և գիտութեան մէջ։ Հպատակ ու վեհապետ համաձայն եղան և միեւնոյն նպատակին ձգտեցան։ Բայց Լուի ԺԴ. հազիւ շունչը փչած, խնամակալը առիթ ընծայեց Աւագաժողովներուն իրենց երկարատեւ ոչնչութեան վրէժը լուծելու։ Միապետին կամքը, իր ողջութեան այնքան յարգուած, բռնաբարուեցաւ մահուընէն ետքը, և իր կտակը բեկանուեցաւ։ Այն ատեն իշխանութեան հեղինակութիւնը վէճի տակ ինկաւ, և երկար պայքար մը սկսաւ Աւագաժողովներու, կղերին և արքունիքին միջեւ, ազգի մը առջեւ որ հիւծած էր երկար պատերազմներէ և յոգնած` հեշտութեանց և զէնքի ճաշակին անձնատուր եղող իր տէրերուն շռայլութեանցը հանդուրժել յոգնած։ Միապետին և անոր հաճոյքներուն ծառայելու համար միայն հանճար ունեցած էր մինչև այն ատեն, բայց այնուհետև իր սեփական գործածութեանը համար ունեցաւ, ու անով իր շահերը սկսաւ քննել։ Մարդկային միտքը շարունակ մէկ առարկայէն միւսը կ'անցնի։ Թատրոնէն, եկեղեցական բեմէն` ֆրանսական հանճարը տարուեցաւ դէպ ի բարոյական և քաղաքական գիտութիւնները, և այն ատեն ամէն բան փոխուեցաւ։ Երեւակայեցէք, ամբողջ մէկ դար, ազգային իրաւունքներուն բոլոր յափշտակիչները իրարու ձեռքէ խլած էին հինցած մաշած իշխանութիւն մը. Աւագաժողովները հալածած էին կղերը,



ԼՈՒԻ ԺԶ. ԳԼԽԱՏՈՒԱԾ ԹՕՆՎԱՆՍԻՕՆԻ ՎՃՌՈՎ

և կղերը հալածած էր Աւագաժողովները, որ չէին ճանչցած արքունիքին իշխանութիւնը. արքունիքը, անփոյթ և անզօր այս պայքարին դէմ, ժողովրդոց կենսունակութիւնը կը լափէր ամենամեծ անկարգութեանց մէջտեղ. ազգը, հարստացած և արթնցած, հանդիսատես կ'ըլլար այս պատահումներուն, անոնց կրարտ դէմ խոստովանութիւններովը զինուելով, քաղաքական ամէն գործունէութենէ զրկուած, վարդապետելով յանդգնութեամբ և ազատութեամբ, վասն զի վերացականութիւններու մէջ ամփոփուած էր. մանաւանդ անինչպով վերագտնել իր աստիճանը Եւրոպայի մէջ, և ի զուր տալով իր ոսկին և իր արիւնը վերստին ձեռք բերելու համար դիրք մը՝ զոր կորուսած էր իր տէրերուն ապիկարութեամբը. այս եղաւ ԺԸ դարը:

Գայթակղութիւնը ծայրայեղութեան մղուած էր, երբ Լուի ԺԶ., արդարասէր իշխան, չափաւոր իր ճաշակներուն մէջ, անփութօրէն դաստիարակուած, բայց ի բնէ բարի, շատ երիտասարդ՝ գահը բարձրացաւ (1774): Իր քովը կանչեց ծերունի դրանիկ մը՝ անոր աւլու համար իր թագաւորութեան հողը,

և իր վստահութիւնը բաժնեց Մօրբայի և Թագուհիին միջև, որ աւստրիացի մանկամարդ իշխանուհի մըն էր, վառվռուն, սիրալիր, և որ մեծ ազդեցութիւն ունէր իր վրայ։ Մօրբա և Թագուհին չէին սիրեր զիրար. Թագաւորը, մերթ իր նախարարին տեղի տալով, մերթ իր կնոջը, կանուխէն սկսաւ իր անստուգութեանց երկար ասպարէզը։ Իր թագաւորութեան վճակին գլուխ, այս մասին կը հաւատար իմաստասէրներուն. բայց յոյժ քրիստոնէական զգացմանց մէջ մեծցած ըլլալով, այդ իմաստասէրներուն հանդէպ հակակրութիւն ունէր։ Հասարակաց ձայնը, որ բարձրօրէն կ'արտայայտուէր, իրեն մատնանիշ բրաւ Թիւրկօն՝ տնտեսագէտներու ընկերութենէն, պարզ և առաքինի մարդ մը, անյողդողդ նկարագրի տէր, դանդաղ, բայց յամառ ու խորունկ հանճարով։ Անոր ուղղամտութեանը համոզուած և բարենորոգմանց անոր ծրագիրներէն հմայուած, Լուի ԺԶ. յաճախ կրկնած է. «Ես և Թիւրկօն միայն ժողովուրդին բարեկամներն ենք»։ Թիւրկօի բարենորոգումները ձախողեցան՝ ընդդիմութեամբը պետութեան առաջին դասակարգերուն, որոնք շահ ունէին պահպանութեանը մէջ բոլոր այն կարգի զեղծումներուն զորս խստաբարոյ նախարարը կ'ուզէր ջնջել։ Լուի ԺԶ. ցաւ ի սիրտ պաշտօնէն արձակեց զայն։ Իր կեանքին մէջ, որ երկար մարտիրոսութիւն մը եղաւ միայն, այս Թագաւորը միշտ ցաւն ունեցաւ աղէկը ընդնշմարելու, անկեղծօրէն զայն ուզելու, բայց զայն գործադրելու համար պէտք եղած ուժը չունենալու։

Թագաւորը, արքունիքին, Աւագաժողովներու և հասարակութեան մէջտեղը ճնշուած, ենթակայ ամէն տեսակ էնդրիկներու և թելադրութեանց, հետզհետէ նախարար փոխեց. անգամ մը եւս տեղի տալով հասարակաց ձայնին և բարենորոգմանց անհրաժեշտութեանը, ելմտական նախարար կարգեց Նէքէրը (1777), սեղանաւորական գործերէ հարստացած ժընէվցի մը, Բօլպէրի կուսակից և աշակերտ, ինչպէս Թիւրկօն՝ Սիւլլիի. ենայասէր և արդարամիտ ելմտագէտ, բայց սնամիտ, յաւակնութիւնն ունէր վարիչ ըլլալու ամէն բանի, փիլիսոփայութեան, կրօնքի, ազատութեան մէջ, և, իր բարեկամներուն և հանրութեան գովեստներէն խաբուած, կը խորհէր թէ միտքերը կ'առաջնորդէր և կը սեւեռէր հո՛ն ուր իր միտքը կը սեւեռուէր։

Նէքէր բարեկարգեց ելեւմուտքը, և Ամերիկայի պատերազմին առաջին ծախքերուն բաւելու միջոցները գտաւ։ Նուազ ընդարձակ, բայց աւելի ճկուն հանճար քան Թիւրկօն, մանաւանդ որ դրամատէրներուն վստահութիւնը իր տրամադրութեան տակ ունենալով, առժամապէս հասոյթի անակնկալ աղբիւրներ գտաւ և վստահութիւնը վերադարձուց։ Բայց գանձին տագնապը վերջացնելու համար սեղանաւորական հնարքներէն աւելին պէտք էր, և բարենորոգմանց միջոցը փորձեց։ Առաջին դասակարգերը իրեն համար ալ հաճոյակատար չեղան ինչպէս եղած չէին Թիւրկօի համար։ Աւագաժողովը, իմանալով անոր ծրագիրները, միացաւ անոր դէմ և պարտաւորեց զայն քաշուիլ։

Զեղծումներու մասին ընդհանուր համոզում կար. ամէն մարդ կ'ընդունէր այս կէտը. Թագաւորը գիտէր զայն և դժնդակօրէն կը տառապէր։ Դրանիկները որ կը վայելէին այդ զեղծումները, կը փափաքէին որ Գանձին տագնապը վերջանար, առանց սակայն իրենց կողմէ ոևէ զոհողութեան։ Արքունեաց մէջ անոնք կը քննախօսէին, և իմաստասիրական առածներ կ'արտասանէին. որսի ատեն՝ կ'արգահատէին հողագործին վրայ, անոր դէմ գործուած հարստահարութեանց համար. մինչեւ իսկ տեսնուեցաւ որ անոնք ծափահարեցին Ամերիկայի ազատագրութիւնը և պատ-

ուով ընդունեցին Նոր Աշխարհէն վերադարձող երիտասարդ Ֆրանսացիները։ Աւագաժողովը, նոյնպէս, ժողովրդեան շահուն վրայ կը խօսէր, խրոխտաբար ազգային տառապանքները մէջ կը բերէր, և սակայն կ՚ընդդիմանար տուրքին հաւասար բաշխման, ինչպէս նաև աւատական բարբարոսութեան մնացորդներուն ջնջմանը։ Ամէնքն ալ հասարակաց բարւոյն վրայ կը խօսէին, քիչեր զայն կ՚ուզէին. և ժողովուրդը, տակաւին չկրնալով աղէկ մը որոշել իր ճշմարիտ բարեկամները, կը ծափահարէր բոլոր անոնք որ դէմ կը դնէին իշխանութեան՝ իր ամէնէն ակներև թշնամիին։

Թիւրկօն և Նեքէրը հեռացուելով, իրերու վիճակը չէր փոխուած, գանձային անձկութիւնը նոյնն էր. տակաւին երկար ատեն ազգին միջամտութեան անհարկի ըլլալուն պիտի հաւանուէր, բայց ապրիլ պէտք էր, արքունեաց շռայլութիւններուն հանիլ պէտք էր։ Դժուարութիւնը, որ պահ մը կը մեկուսացուէր նախարարի մը պաշտօնանկութեամբը, փոխառութեամբ մը, կամ տուրքի մը բռնի հաստատմամբը, շատ չանցած կը վերիրեւէր աւելի մեծ, ինչպէս ամէն զանց առնուած չարիք։ Վարանում կար, ինչպէս կ՚ըլլայ ամէն անգամ որ պէտք է ահաւոր, բայց անհրաժեշտ որոշում մը տալ։ Հնարքով մը նախարար նշանակուեցաւ Պ. տը Գալօն, որուն շատ նպաստաւոր չէր հանրային կարծիքը վասնզի Լա Շալօթէի հալածումին (1783) նպաստած էր։ Գալօն, նրբամիտ, փայլուն, միջոցներով բեղմնաւոր, յոյսը դրած էր իր հնարքին, բախտին և մարդոց վրայ, և ապագային անձնատուր կ՚ըլլար տարօրինակ անփութութեամբ մը։ Իր կարծիքն էր թէ նախապէս իրար անցնելու չէր բնաւ, և չարիքը երեւան հանելու էր նախընթօրն այն օրուան ուր կ՚ուզուէր զանիկա դարմանել։ Իր շարժուձեւերովը հմայեց արքունիքը, ամէն կամ շնորհելու իր փութկոտութեամբը յուզեց զայն, թագուհին և ամէնուն հայթայթեց մէկ քանի աւելի հեշտին բալէներ, և ամէնէն քամիելի գուշակութեանց յաջորդել տուաւ երջանկութեան և կոյր վստահութեան վայրկեան մը։

Ապագան որուն վրայ յոյս դրուած էր, կը մօտենար. վերջապէս վճռական միջոցներ ձեռք առնուելու էին։ Կարելի չէր նոր տուրքերով բեռնաւորել ժողովուրդը, և սակայն արկղները պարապ էին։ Մէկ միջոց մը կար իբրեւ դարման, ծախքը զեղչել՝ շնորհապաշտութիւնները ջնջելով, և, եթէ այս միջոցն ալ չի բաւէր, տուրքը տարածել աւելի մեծ թիւով հարկատուներու վրայ, այսինքն ազնուականութեան և կղերին վրայ։ Այս ծրագիրները որոնք հետզհետէ փորձուած էին Թիւրկօի և Նեքէրի կողմէ, և Գալօնի կողմէ ձեռք առնուած նորէն, յաջողութեան յարմար չդատուեցան այս վերջինէն, ցորչափ հարկ էր առանձնաշնորհեալներուն իսկ հաւանութիւնն առնել։ Ուստի Գալօն մտածեց զանոնք հաւաքել Երեւելեաց յորջորջուած ժողովի մը մէջ, անոնց ենթարկելու համար իր ծրագիրները և հաւանութիւննին առնելու համար՝ ճարպիկութեամբ կամ համոզմամբ(*)։ Ժողովը բաղկացած էր ազնուականութենէն առնուած մեծամեծներէ, կղերականներէ և ատենակալներէ, քաղաքապետներէ և գաւառացի մէկ քանի ատենակալներէ։ Շնորհիւ այս բաղկացութեան, և մանաւանդ ժողովրդական և իմաստաւէր մեծամեծներու օժանդակութեամբը, զորս ժողով մտնելու հոգը ունեցած էր, Գալօն պարծեցաւ թէ յաղթանակը պիտի տանի։

Զափազանց ինքնավստահ նախարարը սխալած էր։ Հանրային կարծիքը

(*) Այս ժողովը բացուեցաւ 1787 Փետր. 22ին։

չէր ներէր որ Թիւրկօի և Նեքէրի տեղը բռնէր ան։ Ուրախ մանաւանդ որ նախարար մը հաշիւ տալու կը հարկադրուէր, ուժ տուաւ Երեւելեաց դիմադրութեանը։ Ամենաբուռն վիճաբանութիւններ ծագեցան։ Գալոն՝ յանցանքն ունեցաւ զանձին վիճակը իր նախորդներուն, և մասամբ Նեքէրի վրայ ձգելու։ Նեքէր պատասխանեց, աքսորուեցաւ, և ընդդիմութիւնը աւելի սաստկացաւ։ Գալոն ամէնուն ալ հասաւ պատրաստամտութեամբ և հանդարտութեամբ։ Պաշտօնանկ ըրաւ դատական նախարար Պ. տը Միրոմէնիլը, որ Աւագաժողովին հետ կը դաւադրէր։ Բայց իր յաղթանակը երկու օր տեւեց։ Թագաւորը, որ կը սիրէր զինքը, իր պաշտպանութիւնը խոստանալով՝ կարողութենէն վեր բան մը ըրած էր։ Գալոն ցնցուեցաւ Երեւելեաց առաջարկներէն, որոնք կը խոստանային համակերպիլ Գալոնի ծրագիրներուն, բայց պայմանով որ անոնց գործադրութիւնը յանձնուէր աւելի բարոյականի տէր և աւելի վստահութեան արժանի նախարարի մը։ Թագուհին, Վերմօն աբբային թելադրութեամբը, թագաւորին առաջարկեց և ընդունիլ տուաւ նոր նախարար մը, Պ. տը Պրիէն, Թուլուզի արքեպիսկոպոսը, և մէկը այն Երեւելիներէն որոնք ամէնէն աւելի նպաստած էին Գալոնի կործանումը՝ անոր յաջորդելու յոյսով (1787 ապրիլ)։

Թուլուզի արքեպիսկոպոսը, յամառ միտքի և տկար նկարագրի տէր, տղայութենէն ի վեր նախարարութիւն կ'երազէր, և ամէն միջոցով այս նպատակը կը հետապնդէր։ Գլխաւորապէս կանանց վարկին կը կրթնէր, որոնց կը ջանար հաճելի ըլլալ և կը յաջողէր։ Ամէն կողմ գովել կուտար Լանկտօքի իր վարչութիւնը։ Նախարարութեան հասնելուն՝ եթէ ձեռք չկրցաւ այն յարգը որով շրջապատուած էր Նեքէր, յաչս հասարակութեան՝ Գալոնի տեղն անցնելու արժանիքն ունեցաւ։ Ի սկզբան՝ վարչապետ չեղաւ, բայց շատ չանցած հասաւ այդ պաշտօնին։ Աջակցութեամբ դատական նախարար Պ. տը Լամուանեոնի, որ Աւագաժողովին յամառ թշնամին էր, իր ասպարէզն սկսաւ բաւական յաջողութեամբ։

Երեւելիները, իրենց խոստումներէն հարկադրուած, փութով հաւանեցան բոլոր այն բաներուն զորս նախապէս մերժած էին. հողային տուրք, դրոշմի տուրք, տարապարհակներու ջնջում, նահանգային ժողովներ, ամէն բան շնորհուեցաւ արուեստակօրէն։ Կ'ուզէին ցոյց տալ թէ ոչ թէ այս միջոցներուն, այլ անոնց հեղինակին ընդդիմացած էին. հանրային կարծիքը կը յաղթանակէր։ Գալոն անէծքներով կը հալածուէր, և Երեւելիները հասարակաց քուէով շրջապատուած, կը ցաւէին սակայն՝ ի գին մեծ զոհողութեանց ձեռք բերուած պատուի մը վրայ։ Եթէ Պ. տը Պրիէն գիտնար օգտուիլ իր դիրքին առաւելութիւններէն, եթէ Երեւելիներուն կողմէ ընդունուած միջոցներուն գործադրութիւնը հետապնդէր փութաջանութեամբ, եթէ զանոնք ամէնը մէկտեղ և անյապաղ ներկայացնէր Աւագաժողովին, այն պահուն երբ առաջին դատակարգերուն հաւանութիւնը բռնադատուած կը թուէր, թերեւս յաջողէր։ Աւագաժողովը, ամէն կողմէ նեղուած, ամէն բանի պիտի հաւանէր, և այս իրաւախոհութիւնը, թէեւ մասնակի և բռնի, հաւանօրէն երկար ատենուան համար պիտի ուշացնէր պայքարը որ շատ չանցած սկսաւ։

Պ. տը Պրիէն չըրաւ այդ բանը։ Անխոհեմ պայմանաժամերով, կարծիքի փոփոխութիւններ առաջ եկան, և հրովարտակները իրարու ետեւէ միայն ներկայացուեցան։ Աւագաժողովը ժամանակ ունեցաւ վիճաբանելու, յանդգնութիւն առնելու, և անդրադառնալու այն տեսակ մը անակնկալին որուն

ենթարկուած էին Երեւելիները։ Ցետ երկար վիճաբանութեան, արձանագրեց տարհապարհակներու երկրորդ ջնջումը որոշող հրովարտակը, և ուրիշ մը որ թոյլ կուտար ցորենահատերու ազատ արտածումը։ Իր ատելութիւնը մասնաւորապէս կ'ուղղուէր հողային նպաստին դէմ. բայց կը վախնար որ մերժումով մը հանրութեան միտքը կը լուսաւորէր և անոր ցոյց կուտար թէ իր ընդդիմութիւնը շահախնդրական էր։ Կը վարանէր, երբ իրեն խնայուեցաւ այս տագնապը միեւնոյն ժամանակ իրեն ներկայացնելով թէ՛ դրոշմի և թէ հողային նպաստի վերաբերեալ հրովարտակը, և մանաւանդ վիճաբանութիւնն սկսելով դրոշմի հրովարտակէն։ Այսպէս, Աւագաժողովը կրցաւ մերժել առաջինը՝ առանց երկրորդին վրայ բացատրութիւն տալու. և, դրոշմի տուրքը քննադատելով որմէ հարկատուներու մեծամասնութիւնը կը վնասուէր, հասարակաց շահը պաշտպանելու երեւոյթ ունեցաւ։ Նիստի մը մէջ ուր ներկայ էր աւագանին, ժողովը մատնանիշ ըրաւ արքունիքին ղեղծումները, գայթակղութիւններն ու չռայլութիւնները, և ծախուց հաշիւները (état) ուզեց։ Խորհրդական մը բառախաղ մը ընելով գոչեց. «Հաշիւներ չէ որ կ'ուզենք, այլ ընդհանուր ժողով (états généraux)։ Այս անակնկալ պահանջը զարմանահար ըրաւ ամէնքը։ Մինչեւ այն ատեն, ժողովրդական դատին նպաստաւոր կամ ոչ ամէն տեսակ ընդդիմութեան ուժ տըրուած էր, բաւական է որ անիկա արքունիքին դէմ ուղղուած ըլլար, որուն կը վերագրուէին բոլոր չարիքները։ Սակայն, ճշգիւ յայտնի չէր թէ ինչ էր ուզուածը. այնքան դժուար եղած էր ազդել կառավարութեան վրայ, այնքան սովորութիւն եղած էր բաւականանալ գանգատներով, որ մարդիկ կը տանջային՝ առանց յղանալու գործելու ոչ ալ յեղափոխութիւն մը ընելու գաղափարը։ Արտասանուած մէկ բառ մը անսպասելի նպատակ մը ընծայեց. ամէն մարդ կրկնեց զայն, և բարձրաղաղակ պահանջուեցաւ Ընդհանուր ժողով։

Տ'Էպրէմէնիլ, երիտասարդ խորհրդական մը, յախուռն ատենաբան, աննպատակ խռովարար, Աւագաժողովներու մէջ ռամկավար, Ընդհանուր ժողովներու մէջ ազնուապետական, և զոր Սահմանադիր ժողովը հրովարտակով մը խենդ հռչակեց, տ'Էպրէմէնիլ այս պարագային մէջ փայլեցաւ իբրեւ ամենաբուռն ճարտասաններէն մէկը։ Բայց ընդդիմադիր կուսակցութիւնը գաղտնապէս կ'առաջնորդուէր Տիւբորի կողմէ, լայնամիտ երիտասարդ մը, օժտուած անձկուն և յարատեւող նկարագրով, որ թերեւս միս մինակը բոլոր այս խառնակութեան մէջ, ապագայ մը առաջադրած էր իրեն, և իր կուսակցութիւնը, արքունիքն ու ազգը կ'ուզէր առաջնորդել՝ խորհրդարանական ազնուապետութենէ բոլորովին տարբեր նպատակի մը։

Աւագաժողովը բաժնուած էր ծեր և երիտասարդ խորհրդականներու։ Առաջինները կ'ուզէին հակակշռել արքայական իշխանութեան՝ իրենց կուսակցութեան կարեւորութիւն ընծայելու համար. երկրորդները, աւելի եռանդուն և աւելի անկեղծ, կ'ուզէին ազատութիւնը ներմուծել պետութեան մէջ, առանց սակայն յեղաշրջելու քաղաքական դրութիւնը որուն տակ ծնած էին։ Աւագաժողովը ծանր խոստովանութիւն մը ըրաւ. խոստովանեցաւ թէ ինքը իշխանութիւն չունէր հաւանելու տուրքերուն, թէ Ընդհանուր Ժողովին միայն կը պատկանէր զանոնք հաստատելու իրաւունքը, և թագաւորէն խնդրեց որ հասոյթներուն և ծախքերուն հաշիւները ներկայացուէին։

Անձեռնհասութեան և նոյն իսկ յափշտակութեան այս խոստովանութիւնը, — քանի որ Աւագաժողովը զայն

վայր տուրքիր հաստատելու. խրատունքը տուած էր Լինքլինքին, — այս խոստովանութիւնը զարմանք պատճառեց։ Կղերական-նախարարը, այս հակառակութենէն զայրացած, Աւագաժողովը իսկոյն Վէրսայլ կանչեց, և երկու հրովարտակները արձանագրել տուաւ ի ներկայութեան թագաւորին (6 Օգոստոս)։ Աւագաժողովը, Բարիզ դարձին, բողոքեց, և քննութիւն հրամայեց Գալոնի շռայլութեանց դէմ։ Իսկոյն Նախարարաց Խորհուրդը բեկանեց Աւագաժողովին որոշումները և Թռուա աքսորեց զայն (15 Օգոստոս)։

Այս էր իրաց կացութիւնը 1787 Օգոստոս 15ին։ Թագաւորին երկու եղբայրները, Մօսիէօն և Արթուաի կոմսը, ղրկուեցան, մէկը հաշիւներու դիւանը և միւսը տուրքերու դիւանը՝ հրովարտակներն արձանագրել տալու համար։ Առաջինը, որ ժողովրդական եղած էր Երեւելեաց Ժողովին մէջ իր յայտնած կարծիքներովը, ընդունուեցաւ անհամար ամբոխի մը ծափողջոյններովը և մինչեւ Լիւքսանպուռ առաջնորդուեցաւ ընդհանուր ծափերու մէջ։ Արթուայի կոմսը, որ ճանչցուած էր իբրեւ պաշտպան Գալոնի, սպառնալիքներով ընդունուեցաւ. իր ծառաներն յարձակում կրեցին, և հարկ եղաւ զինուորական ուժի դիմել։

Աւագաժողովը իր շուրջը ունէր բազմաթիւ յաճախորդներ, բաղկացած օրէնսգէտներէ, դատարանի պաշտօնեաներէ, գրագիրներէ, ուսանողներէ, գործունեայ ու անհանդարտ ամբոխ մը՝ անոր դատին համար շարժելու միշտ պատրաստ։ Աւագաժողովին այս բնական դաշնակիցներուն կը միանային դրամատէրները որոնք խարդախ սնանկութենէ կը վախնային, լուսաւորեալ դասակարգերը, որոնք անձնուէր էին ամէն ընդդիմադիրներու, և վերջապէս խուժանը որ միշտ խռովարարներու կողմը կը բռնէ։ Մանր անկարգութիւններ ծագեցան, և կառավարութիւնը դժուարաւ զսպեց զանոնք։

Աւագաժողովը, որ Թռուա նիստ կ'ընէր, ամէն օր կը հաւաքուէր և դատերը կը հրաւիրէր։ Ոչ փաստաբանները կ'երեւային ոչ դատախազները, և արդարութիւնը կախակայուած էր, ինչպէս պատահած էր այնքան անգամներ դարուն ընթացքին մէջ։ Սակայն ատենականները կը յոգնէին իրենց աքսորէն, և Պ. տը Պրիէն դրամ չունէր։ Վստահօրէն կ'ապահովցնէր թէ դրամ կա՛ր, և կը հանդարտեցնէր արքունիքը, որուն միակ մտահոգութիւնը այս էր. բայց այլ եւս խօսք չունէր դրամ, և, կարովի որոշմամբ մը, Աւագաժողովին մէկ քանի անդամներուն հետ կը բանակցէր։ Իր պայմաններն էին 440 միլիոնի փոխառութիւն մը, չորս տարուան վրայ բաժնուած. յաւարտ պայմանաժամուն, Ընդհանուր Ժողովը պիտի հրաւիրուէր։ Այս գնով, Պրիէն կը հրաժարէր երկու տուրքերէն, որ այնքան անհամաձայնութեանց պատճառ եղած էին։ Քանի մը անդամներէ ապահովութիւն առնելով, կարծեց թէ բովանդակ Աւագաժողովի մասին ալ կրնար ապահով ըլլալ, և սեպտեմբեր 10ին Աւագաժողովը աքսորէն ետ կանչուեցաւ։ Նոյն ամսուան 20ին արքայական նիստ մը տեղի ունեցաւ։ Թագաւորը անձամբ եկաւ ներկայացնել հրովարտակը որով յաջորդական փոխառութիւնը կը հիմնուէր և Ընդհանուր Ժողովը կը հրաւիրուէր հինգ տարիէն։ Այս նիստին հանգամանքը բնաւ չհասկցուեցաւ, և յայտնի չեղաւ թէ անիկա արքայական ատեան մըն էր։ Դէմքերը թաղծոտ էին, խոր լռութիւն կը տիրէր, երբ Օռլէանի դուքսը ոտքի ելաւ, այլայլած, և բուռն յուզման մը նշաններովը, խօսքը թագաւորին ուղղեց, և հարցուց թէ անիկա արքայական ատեան մըն էր թէ ազատ խորհրդակցութիւն մը։ «Արքայական նիստ

մըն է», պատասխանեց Թագաւորը։ Ֆրէթօ, Սապաթիէ, տ'Էպրէմէնիլ խորհրդականները խօսք առին Օռլէանի դուքսէն ետքը, և իրենց սովորական ուժգնութեամբը ատենախօսեցին։ Իսկոյն, բռնի արձանագրութիւն կատարուեցաւ, Ֆրէթօ և Սապաթիէ խորհրդականները Իէռ կղզիներն աքսորուեցան, և Օռլէանի դուքսն ալ ի Վիլէ-Քօթրէ։ Ընդհանուր ժողովի գումարումը հինգ տարուան յետաձգուեցաւ։

Ասոնք եղան 1787 տարւոյն գլխաւոր դէպքերը։ 1788 տարին սկսաւ նորանոր թշնամութիւններով։ Յունուար 4ին, Աւագաժողովը վճիռ մը արձակեց գոց նամակներու դէմ, և աքսորուած անձերու յետ կոչման ի նպաստ։ Թագաւորը բեկանեց այս վճիռը. Աւագաժողովը նորէն հաստատեց զայն։

Այս միջոցին, Օռլէանի դուքսը, Վիլէ-Քօթրէ քշուած, չէր կրնար համակերպիլ իր աքսորին։ Այս իշխանը, արքունիքին հետ աւրուած, հաշտուած էր հանրային կարծիքին հետ, որ նախ նպաստաւոր չէր իրեն։ Թէ՛ իշխանի մը արժանաւորութենէն զրկուած և թէ՛ տրիբունի մը հաստատակամութենէն, չկրցաւ տանիլ այդքան թեթև պատիժ մը. և իր վերադարձը ձեռք բերելու համար մինչև պաղատանք իջաւ՝ նոյն իսկ Թագուհիին հանդէպ որ իր անձնական թշնամին էր։

Փարէզ զայրացած էր խռովութիւններէն, առանց ունենալու զանոնք յաղթահարելու կորովը։ Եւրոպայի մէջ տկար՝ ընդդէմ Բրուսիոյ, որուն կը զոհէր Հոլանտան, Ֆրանսայի մէջ տկար՝ ընդդէմ Աւագաժողովին և պետութեան մեծամեծներուն, անիկա միմիայն Թագուհիէն կը պաշտպանուէր, և բաց աստի յաճախ իր աշխատութեանց մէջ կ'ընդհատուէր վատթար առողջութենէ մը։ Ոչ ըմբոստութիւնները գիտէր զսպել, ոչ Թագաւորէն հրամայուած նուաճումները գործադրել. և, հակառակ գանձին մօտալուտ դատարկացումին, անհասանելի ապահովութիւն մը ցոյց կուտար։ Սակայն, այսչափ դժուարութեանց մէջ անգամ, զանց չէր առներ նորանոր շահեր ապահովել իրեն, և նորանոր պատիւներու արժանացնել իր ընտանիքը։

Դատական նախարարը Լամուանեօն, նուազ տկարասիրտ, բայց նոյնքան նուազ ազդեցիկ որքան Թուլուզի արքեպիսկոպոսը, իրեն հետ նոր ծրագիր մը յղացաւ Աւագաժողովին քաղաքական իշխանութիւնն հարուածելու համար, վասնզի կառավարութեան գլխաւոր նպատակը աս էր այդ բանին։ Կարևոր էր գաղտնիքը պահել։ Ամէն բան լռիկ մնջիկ պատրաստուեցաւ. գոց նամակներ ղրկուեցան գաւառական հրամանատարներուն. տպարանները որ հրամանները կը պատրաստէին, պահակազօրքով շրջապատուեցան։ Կ'ուզէին որ ծրագիրը՝ Աւագաժողովին հաղորդուելու վայրկեանին միայն ճանչցուի։ Թուականը կը մօտենար, և զրոյց կը շրջէր թէ քաղաքական մեծ գործ մը կը պատրաստուէր։ Տ'Էպրէմէնիլ խորհրդականը յաջողեցաւ դրամով մոլորեցնել տպագրիչ գործաւոր մը և հրամանագիրներուն մէկ օրինակը ձեռք ձգել։ Յետոյ գնաց Խորհրդարան, հաւաքել տուաւ իր պաշտօնակիցները, և անոնց յանդգնօրէն ծանոյց նախարարական ծրագիրը (Մայիս)։ Ըստ այդ ծրագրին, վեց մեծ պայլութիւններ կը հիմնուէին Բարիզի Աւագաժողովին իշխանութեան շրջանակին մէջ, անոր չափազանց ընդարձակ իրաւասութիւնը սահմանելու համար։ Վերջին վճիռն արձակելու և օրէնքներն ու հրովարտակները արձանագրելու ձեռնհասութիւնը փոխադրուած էր լիակատար ատեանի մը՝ աւագանիներէ, կղերականներէ, ատենակալներէ, զինուորական սպաներէ կազմուած և ամէնքն ալ Թագաւորին կողմէ ընտրուած։ Պահակազօրքին հրամանատարն իսկ հոն քուէի իրաւունք ունէր։ Այս ծրագիրը

կը հարուածէր Ազգաժողովին դատական իշխանութիւնը և կ'ոչնչացնէր լիովին անոր քաղաքական իշխանութիւնը։ Ժողովը, այսուհետ, չէր գիտեր ի՛նչ ընել։ Չէր կրնար խորհրդակցիլ ծրագրի մը վրայ որ իրեն չէր ներկայացուած. և սակայն յոյժ կարեւոր էր յանկարծակիի չգալ։ Այս տագնապին մէջ անիկա շատ ամուր և ճարտար միջոց մը գործածեց, այն է վճռագրով մը յայտնել և նուիրագործել միապետութեան կալուածական բոլոր օրէնքները, ի շարս որոնց նաև իր գոյութիւնն և իր իրաւունքները։ Այս ընդհանուր անօրինութեամբ, բնաւ չէր կանխեր կառավարութեան ենթադրական ծրագիրները, և կ'երաշխաւորէր ինչ որ կ'ուզէր երաշխաւորել։

Հետեւեալն է, Մայիս 5ին Բարիզի Ազգաժողովին կողմէ յայտարարուեցաւ.

«Թէ Ֆրանսան միապետութիւն մըն էր թագաւորէն կառավարուած, ըստ օրինի. և թէ այս օրէնքներէն մէկ քանիները, որոնք հիմնական էին, կ'ընդգրկէին և կը նուիրագործէին. 1. Իշխող տան իրաւունքը գահուն վրայ, արուէ արու, նախածնունդի կարգաւ. 2. Ազգին իրաւունքը ազատօրէն նպաստներ շնորհելու Ընդհանուր Ժողովի միջոցաւ, կանոնաւորապէս հրաւիրուած և բաղկացած. 3. Գաւառներուն սովորութիւններն ու առանձնաշնորհումները. 4. Ատեանականներուն ցկեանս պաշտօնավարութիւնը. 5. Ատեաններուն իրաւունքը ամէն գաւառի մէջ ստուգել թագաւորին հրամանները, և անոնցմէ միայն անո՛նց արձանագրութիւնը հրամայել որոնք համաձայն են գաւառին կալուածական օրէնքներուն ինչպէս նաև պետութեան հիմնական օրէնքներուն. 6. Ամէն մէկ քաղաքացիի իրաւունքը ոչ մէկ կերպով չկոչուիլ իր բնական և օրէնքէն նշանակուած դատաւորներէն զատ ուրիշ ո և է դատաւորի առջև, և 7. Իրաւունքը, առանց որուն բոլոր միւսները ոչինչ էին, որուն համեմատ, ի՛նչ հրամանով ալ ըլլայ, մարդ կը ձերբակալուի՝ միմիայն անյապաղ յանձնուելու համար ձեռնհաս դատաւորին ձեռքը։ Յիշեալ ատեանը կը բողոքէր այն ամէն հարուածներուն դէմ որ կրնան արուիլ վերոգրեալ սկզբունքներուն։»

Այս կորովի որոշման, նախարարը սովորական միջոցով պատասխանեց, որ միշտ գործածուած է դէշ կերպով և ի զուր տեղը. Ազգաժողովին մէկ քանի անդամներուն դէմ խիստ միջոցներ ձեռք առաւ։ Տ'Էպրէմէնիլ և Կուալար տը Մոնսապէռ, իմանալով որ վտանգի տակ են, հաւաքուած Ազգաժողովին որանն ապաստանեցան։ Սպայ մը, Վէնսան տ'Ակուլ, հոն գնաց գումարտակով մը և նշանակուած ատեանականները չճանչնալով, իրենց անունովը կանչեց զանոնք։ Նախ, խորին լռութիւն տիրեց ժողովարանին մէջ. յետոյ ժողովականները պոռացին թէ ամէնքն ալ տ'Էպրէմէնիլներ էին։ Վերջապէս ճշմարիտ տ'Էպրէմէնիլը իր անունը տուաւ, և հետեւեցաւ զինքը ձերբակալելու պաշտօն ունեցող սպային։ Շփոթութիւնը իր գագաթնակէտին հասաւ այն ատեն. ժողովուրդը ատեանականներուն ընկերացաւ՝ ծափահարելով զանոնք։ Երեք օր ետքը, թագաւորը, արքայանիստ գումարման մը մէջ, հրովարտակներն արձանագրել տուաւ. և հաւաքուած իշխաններն ու աւագանին ներկայացուցին պատկերը այն լիակատար ատեանին որ պիտի յաջորդէր Ազգաժողովին։

Տօֆինէ իսկոյն որոշում մը հրապարակեց ընդդէմ հրովարտակներուն։ Ռէնի Ազգաժողովը անարգ հռչակեց բոլոր անոնք որ պիտի մտնէին լիակատար ատեանին մէջ։ Ի Կրընօպլ, բնակիչները իրենց ատեանականները պաշտպանեցին երկու գօրագունդերուն դէմ. գօրքերն իսկ, զինուորական ազնուականութենէն անհնազանդութեան գրգռուելով, միր-



ՄԱՐԻ ԱՆԹՈՒԱՆԷԹ

ժեցին գործել։ Երբ Տօֆինէի հրամատարը հաւաքեց իր գնդապետները հակրճալու համար թէ կարելի էր յոյս դնել անոնց զինուորներուն վրայ, ամենքն ալ լուռ մնացին։ Ամէնէն երիտասարդը, որ ամէնէն առաջ պիտի խօսէր, պատասխանեց թէ իր զինուորներուն վրայ յոյս դրուելու չէր՝ սկսեալ գնդապետէն։ Այս դիմադրութեան վրայ, նախարարը գործադրեց Նախարարաց Խորհուրդին վճիռները որոնք կը բովանդակէին գերագոյն ատեաններու արձակումները, և անոնցմէ ութը աքսորի դատապարտեց։

Սրբութիւնքը, առաջին դասակարգերէն (ազնուականութիւն և կղեր) մաստանջուած, որոնք կուլ կը մղէին յանուն ժողովրդեան շահուն և անոր միջամտութիւնը դրդելով, ինքն ալ իր կողմէ նոյն միջոցին դիմեց, որոշեց Թիէր-դ'Էդան (միջին դասակարգ) իր օգնութեանը կանչել, ինչպէս ըրած էին ժամանակաւ Գրանսայի թագաւորները աւատականութիւնը ջնջելու համար։ Ուստի, ամէն միջոցով փութացուց Ընդհ. ժողովին գումարումը, որուն ընտրանքին համար քննութիւններ հրամայեց. հրաւիրեց գրագէտներն ու գի-

3

տական մարմինները իրենց կարծիքը տալու. և մինչ հաւաքուած կղերականութիւնն ալ իր կողմէ կը յայտարարէր թէ մօտեցնելու էր գումարման թուականը, արքունիքը, կուռի հրաւէրն ընդունելով, միևնոյն ժամանակ առկախից լիակատար ատեանին հաւաքումը, և Ընդհ. Ժողովին բացումը որոշեց 1789 Մայիս 1ին։ Այն ատեն Թուլուզի արքեպիսկոպոսը պաշտօնէ քաշուեցաւ (24 Օգոստոս), ինք որ ակարօրէն գործադրուած յանդուգն ծրագիրներով առաջ բերած էր հակառակութիւն մը որուն կամ յաղթելու էր կամ անոր ծագման պատճառ ըլլալու չէր։ Քաշուած ատենը պետական գանձը անձկութեան մէջ թողուց, Օթէլ տը Վիլի եկամուտներուն վճարումը առկախ, բոլոր իշխանութիւնները իրարու դէմ ելած, բոլոր դասերը զէնքի դիմած։ Գալով իրեն, ութը հարիւր հազար ֆրանքի շահով մը, Սանի արքեպիսկոպոսութեամբ և կարտինալի գլխարկով վարձատրուած, եթէ հասարակաց հարստութիւնը չպատրաստեց, գէթ իրենը շինեց։ Իրեն վերջին խորհուրդ, հրաւիրեց թագաւորը նորէն կանչել Նէքէրը ելմտական նախարարութեան գլուխը, անոր ժողովրդականութիւնը գործածելու համար ընդդէմ անպատեհ հակառակութեանց։

1787 և 1788 երկու տարիներու միջոցին է որ Ֆրանսայի ուզեցին ունայն տեսութիւններէ գործնականի անցնիլ։ Առաջին իշխանութեանց պայքարը ասոր փափաքն ու առիթը տուած էր իրենց։ Դարուն բոլոր տևողութեանը միջոցին, Աւագաժողովը յարձակած էր կղերին վրայ և քօղամերկած անոր անդրալեռնական միտումները. կղերէն ետքը, յարձակած էր արքունիքին վրայ, մատնանշած անոր իշխանութեան զեղծումները, և նշաւակած անոր անիրաւութիւնները։ Վերջի տարիներին տակ և ինքն ալ իր կարգին իր գոյութեանը դէմ յարձակում կրած, վերջապէս կուգար ազգին դարձնել առանձնաշնորհումներ զորս արքունիքը իրմէ, Աւագաժողովէն իսկ կ՚ուզէր խլել զանոնք փոխանցելու համար արտասովոր ատեանի մը։ Ազգը այսպէս տէր դարձնելէ յետոյ իր իրաւունքներուն, իր ուժը գործածած էր ապստամբութիւն գրգռելու և զայն պաշտպանելու։ Իրենց կողմէ, բարձր կղերականութիւնը՝ հաւատաթուղթեր հանելով, ազնուականութիւնը՝ զօրքերուն անհնազանդութիւնը արծարծելով, իրենց ճիգերը միացուցած էին ատենականներու ճիգերուն և ժողովուրդը զէնքի կոչած՝ իր առանձնաշնորհմանց պաշտպանութեանը համար։

Արքունիքը, այս այլազան թշնամիներէն նեղը մտած, ակարօրէն դիմադրած էր։ Գործելու պէտքն զգալով, և այդ բանէն միշտ յետաձգելով, մերթ ջնջած էր մէկ քանի զեղծումներ, աւելի ի նպաստ գանձին քան ժողովրդեան, և յետոյ նորէն անգործութեան մէջ ինկած էր։ Վերջապէս, ամէն կողմէ յարձակում կրելով, տեսնելով որ առաջին դատակարգերը ժողովուրդը կրկէս կը հրաւիրէին, ինքը անձամբ կուգար զայն հոն մտնելով՝ Ընդհ. Ժողով գումարելով։ Դարուն ամբողջ տևողութեանը միջոցին ընդդիմանալով իմաստասիրական մտքին, արքունիքը այս անգամ անոր կոչում կ՚ընէր, և անոր քննութեանը կը յանձնէր թագաւորութեան կազմակերպութեանց քննութիւնը։ Այսպէս, պետութեան առաջին իշխանութիւնները անիրաւ տէրերու տարօրինակ տեսարանը պարզեցին՝ առարկայ մը խլելով իրարու ձեռքէ՝ օրինաւոր տիրոջը ներկայութեանը, և վերջապէս զանիկա իրրև դատաւոր իսկ կանչելով։

Իրերը այս կէտին վրայ էին երբ Նէքէր նախարարութեան մէջ մտաւ (Օգոստոս)։ Վստահութիւնը իսկոյն հետևեցաւ, վարկը իսկոյն վերահաստատուեցաւ, ամէնէն ստիպողական դժուա-

րութիւնները հարթուեցան։ Այսպէս միջոցներով հասաւ անհրաժեշտ ծախքերուն, ստանալով Ընդհ. Ժողովին, որ ամէնուն կողմէ բաղձացուած դարմանն էր։

Անոր կազմակերպութեանը մասին մեծ խնդիրներ կը սկսէր յուզուիլ։ Իրարու կը հարցուէր թէ Թիէռ-դ'Էթային դերը ինչ պիտի ըլլար հոն, թէ հաւասար տարր մը պիտի երեւնար թէ աղերսարկու, թէ թիւով միւս երկու առաջին դասակարգերուն հաւասար ներկայացուցիչ պիտի ունենար, թէ մա՞րդ գլուխ թէ դասակարգ առ դասակարգ քուէ պիտի տրուէր, և թէ Թիէռը մի՞կ ձայն միայն պիտի ունենար ազնուականութեան և կղերականութեան երկու ձայներուն դէմ։

Նախ և առաջ յուզուեցաւ պատգամաւորներուն թիւին խնդիրը։ ԺԸ. դարու ոչ մէկ փիլիսոփայական բանավէճ այսքան յուզում յարուցած էր։ Միտքերը տաքցան խնդրին բոլորովին արդիական կարեւորութենէն։ Սեղմ, կորովի, դառնադառն գրագէտ մը այս վիճաբանութեան մէջ բանեց այն տեղը զոր դարուն մեծ հանճարները գրաւած էին իմաստասիրական վիճաբանութեանց մէջ։ Սիէյէս աբբան, գրքի մը մէջ որ մեծ խթան եղաւ ժողովրդային մաքին, հարցուց ինքն իրեն. Ի՞նչ է Թիէռ-դ'Էթան։ Եւ ինքը պատասխանեց. Ոչինչ։— Ի՞նչ պէտք է ըլլայ։— Ամէն բան։

Տօֆինէի Ընդհ. Ժողովը գումարուեցաւ ի հեճուկս արքունիքին։ Առաջին երկու դասակարգերը, աւելի ճարպիկ և աւելի ժողովրդական այդ գաւառին մէջ քան ուրիշ տեղ, որոշեցին որ միջին դասակարգն ալ (Թիէռը) ազնուականութեան և կղերականութեան հաւասար ներկայացուցիչ ունենայ։ Բարիզի Աւագաժողովը, այս անխոհեմ գրգիռներուն հետեւանքը արդէն իսկ ընդնշմարելով, հակեցաւ թէ Թիէռ-դ'Էթան չպիտի ներկայանար իբրեւ օժանդակ, այլ իբրեւ տէր, և գումարման հրովարտակը արձանագրած ատենը, իբրեւ յայտնի պայման հրամայեց պահպանել 1614ի կանոնները, որոնք բոլորովին կը ջնջէին երրորդ դասակարգին դերը։ Արդէն անժողովրդականացած այն դժուարութեանց բերմամբը զոր յարուցած էր բողոքականներուն քաղաքացիի իրաւունքը վերադարձնող հրովարտակին դէմ, այդ վայրկենին բոլորովին գոյնը դուրս տուաւ, և արքունիքը լիովին լուծեց իր վրէժը։ Առաջին անգամ, անիկա կրեց եօքէն ժողովրդային շնորհներուն անկայունութեան փորձը. բայց եթէ ազգը կրցաւ ապերախտ երեւնալ հանդէպ իր պետերուն զորս իրարու քով կը լքէր, այս անգամ ամէն իրաւունք ունէր Աւագաժողովին դէմ, վասնզի անիկա կանգ կ'առնէր՝ ազգը իր իրաւունքներէն ոչ մէկուն տակաւին տիրացած։

Արքունիքը, չհամարձակելով ինքն իսկ որոշել այս կարեւոր խնդիրները, կամ մանաւանդ ուզելով ի նպաստ իրեն անժողովրդականացնել առաջին երկու դասակարգերը, անոնց կարծիքը հարցուց իրենց, անոնց չհետեւելու դիտաւորութեամբ, եթէ, ինչպէս հաւանական էր, այդ կարծիքը հակառակ ըլլար Թիէռ-դ'Էթային։ Հետեւապէս, Երեւելեաց նոր ժողով մը հրաւիրեց (Վերսայլի մէջ գումարուած Նոյմ. 6ին և յաջորդ Դեկտ. 8ին փակուած), որուն մէջ վիճաբանութեան դրուեցան Ընդհ. Ժողովի կազմութեան վերաբերեալ բոլոր հարցերը։ Վէճը բուռն եղաւ. մէկ կողմէ մէջ կը բերուէին նախկին աւանդութիւնները, միւս կողմէ բնական իրաւունքներն ու բանականութիւնը։ Աւանդութեանց վրայ իսկ հիմնուելով, Թիէռ-դ'Էթային դատը իրաւունք կը ստանար. վասնզի 1614ի կանոններուն դէմ, զոր առաջին դասակարգերը մէջ կը բերէին, աւելի հին կանոններ կը յիշուէին։ Այսպէս, կարգ մը գումարմանց մէջ, և կարգ մը կէտերու վրայ, մարդ գլուխ

քուէարկութիւն եղած էր. երբեմն գաւառ գաւառ և ոչ թէ դասակարգ առ դասակարգ քուէարկուած էր. յաճախ Թիէռսին պատգամաւորները թիւով հաւասարած էին ազնուական և կղերական պատգամաւորներուն: Ինչպէս ուրիշ վստահիլ հին սովորութիւններուն: Պետութեան իշխանութիւնները մշտական յեղաշրջութեան մը մէջ չէի՞ն: Արքայական իշխանութիւնը որ, նախ՝ գերակշիռ, յետոյ պարտուած և մերկացած, նորէն կը զօրանար ժողովրդեան օժանդակութեամբ և բոլոր իշխանութիւնը իր ափին մէջ կ'առնէր, կը ներկայացնէր անվերջ պայքար մը և յարափոփոխ տիրապետութիւն մը: Կ'ըսուէր կղերականութեան որ եթէ հին ժամանակներուն գլխէր, ա՛լ կը դադրէր դասակարգ մը ըլլալէ. ազնուականներուն՝ թէ աւատներու տէրերը միայն կրնային ընտրուիլ, և թէ այսպէս իրենցմէ շատեր դուրս պիտի հանուէին պատգամաւորութենէ. Աւագաժողովին իսկ՝ թէ այլ ևս թագաւորութեան անհաւատարիմ մարմին մըն էր. վերջապէս ամէնուն՝ թէ ֆրանսական Կազմակերպութիւնը երկար յեղաշրջութիւն մըն էր սակ, որու միջոցին իւրաքանչիւր իշխանութիւն յաջորդաբար տիրապետած էր. թէ ամէն բան նորութիւն եղած էր, և թէ այս լայնածիր պայքարին մէջ՝ բանականութիւնը լոկ վճիռ տալու էր:

Թիէռս-Էթան կը պարունակէր ազգին ամբողջութիւնը գրեթէ, բոլոր օգտակար դասակարգերը, ճարտարամիտ և լուսաւորուած. թէև հողերուն մէկ մասին միայն տիրացած էր, զանոնք բոլորն ալ կը շահագործէր, և, տրամաբանօրէն, չափազանց չէր իրեն տալ միւս երկու դասակարգերուն հաւասար թիւով պատգամաւորներ:

Երեւելեաց ժողովը Թիէռսին կրկնապատկութեանը դէմ ելաւ: Մէկ դիւան մը միայն, այն որուն կը նախագահէր թագաւորին եղբայրը, Մօսիէօ, քուէարկեց ի նպաստ այդ կրկնապատկութեան: Այն ատեն, արքունիքը, ինկատի առնելով — կ'ըսէր — փոքրամասնութեան կարծիքը, արքայազուն իշխաններու յայտնի կարծիքը, Տօֆինէի երեք դասակարգերուն բաղձանքը, գաւառային ժողովներուն պահանջումը, նահանգային ժողով ունեցող մէկ քանի գաւառներու օրինակը, բազում հրապարակագիրներու կարծիքը, և բազմաթիւ ուղերձներու յայտնած փափաքը, արքունիքը հրամայեց որ պատգամաւորներուն թիւը առնուազն հազար ըլլայ. բնակչութեան և իւրաքանչիւր պայլութեան հարկերուն համեմատութեամբ կազմուի, և Թիէռ-դ'Էթաի պատգամաւորներուն մասնաւոր թիւը հաւասար ըլլայ միւս երկու միացեալ դասակարգերուն թիւին: Որոշմնագիր 1788 Դեկտ. 27ի Նախարարաց Խորհրդին:)

Այս յայտարարութիւնը ընդհանուր խանդավառութիւն առաջ բերաւ: Նէքէրին վերագրուեցաւ ան, իրեն նկատմամբ ազգին համարումը և մեծամեծաց ատելութիւնը շարցաւ: Սակայն, այս յայտարարութիւնը՝ անձի վրայ կամ ըստ դասակարգի քուէարկութեան մասին բան մը չէր որոշեր, բայց լռելեայն կը պարունակէր զանիկա. վասնզի անլուրջ էր ձայներն աւելցնել՝ եթէ անոնք չպիտի հաշուուէին. և Թիէռ-դ'Էթային կը թողուէր բանի ուժով ձեռք բերելու ինչ որ նոյն պահուն կը մերժուէր իրեն: Այսպէս, անիկա գաղափար մը կու տար արքունիքին և նոյն ինքն Նէքէրի տկարութեանը: Այդ արքունիքը կը ներկայացնէր կամքերու հաւաքոյթ մը որ ամէն վճռական արդիւնք տարրդիւն կ'ընծայէր: Թագաւորը չափաւոր էր, արդարամիտ, ջանասէր, և իր սեպհական հմտութենէն իսկ կը կասկածէր. ժողովուրդը սիրելով և անոր տրտունջները ընդունելով՝ երբեմն սակայն կը պաշա-

բուէր պանական և մնամիտ երկիւղով և ազատութեան թոյլատուութեան հետ կը կարծէր տեսնել անիշխանութեան և ամբարշտութեան ընթացքը: Իմաստասիրական ոգին, իր առաջին թափին մէջ, անշուշտ խոտորումներ ըրած էր, և երկչոտ ու կրօնաւէր թագաւոր մը անոնցմէ ի հարկէ կը խրտչէր: Ամէն վայրկեան տկարութիւններով, սայթաքով, անստուգութիւններով պաշարուած, տարաբախտ Լուի ԺԶ., իր մտաւրին ամէն զոհողութեանց պատրաստ, բայց զանոնք ուրիշներու պարտադրելու անկարող, արքունիքին հանդէպ իր դիւրահաճութեանը և թագուհիին համար իր ներողամտութեանը զոհ, կը քաւէր բոլոր իր չգործած սխալները, որոնք իրը կ'ըլլային սակայն, վասնզի կը թողուր որ անոնք գործուէին: Թագուհին, հաճոյքներու անձնատուր, շուրջը տարածելով իր դիւթութեան տիրապետութիւնը, կ'ուզէր որ իր ամուսինը հանդարտ ըլլար, արքունիքն ու իր հպատակները պաշտէին զինքը: Մերթ, համամիտ էր թագաւորին հետ՝ բարենորոգմանց գործադրութեանը համար, երբ անոնց պէտքը ստիպողական երեւնար. մերթ, ընդհակառակը, երբ կարծէր թէ իշխանութիւնը վտանգի տակ է, իր արքունի բարեկամները ընչագուրկ, կը կեցնէր թագաւորը, կը հեռացնէր ժողովրդական նախարարները, և բարիքի ամէն միջոց և ամէն յոյս կը փճացնէր: Ան մանաւանդ տեղի կուտար ազդեցութեանը մաս մը ազնուականներու որոնք դահուն շուրջը կ'ապրէին և հոն կը սնանէին շնորհներով և զեղծումներով: Արքունի այս ազնուականութիւնը, ինչպէս թագուհին ալ, կը փափաքէր որ թագաւորը չայլութիւններ ընելու կարող ըլլար. և, այս պատճառաւ, թշնամի էր Աւագաժողովներուն երբ անոնք տուրքեր կը մերժէին, բայց անոնց դաշնակիցը կ'ըլլար երբ կը պաշտպանէին իր առանձնաշնորհումները, ճշմարտակերպ պատրուակներու տակ մերժելով հողային նպատակը: Այս հակընդդէմ ազդեցութեանց մէջտեղ, չկըրնալով դժուարութիւնները դիմակալել դէմ յանդիման, դատել զեղծումները, իշխանութենէ ջնջել զանոնք, փոխն ի փոխը տեղի կուտար արքունիքին և հանրային կարծիքին, և չէր կրնար գոհացնել ոչ մին ոչ միւսը:

Եթէ, ԺԸ. դարու տեւողութեանը միջոցին, որ ատեն իմաստասէրները, Թիւյլըրիի մէկ ծառուղին մէջ հաւաքուած, մաղթանքներ կ'ընէին Ֆրէտէրիքի և Ամերիկացւոց համար, Թիւրկոյի և Նեքէրի համար. եթէ, որ ատեն անոնք չէին ըղձար պետութիւնը կառավարել, այլ միայն լուսաւորել իշխանները, և առ առաւելն կը նախատեսէին հեռաւոր յեղափոխութիւններ զորս անհանգստութեան նշաններ և հաստատութեանց անհեթեթութիւնը բառ բաւականին ենթադրել կուտային. եթէ, այդ պահուն, թագաւորը ինքնաբերաբար հաւատարմութիւն մը հաստատած ըլլար պաշտօնեարու մէջ և մէկ քանի երաշխաւորութիւններ տուած ըլլար, ամէն բան պիտի խաղաղէր երկար ատենուան համար, և Լուի ԺԶ. Մարկոս-Աւրելիոսի չափ պիտի պաշտուէր: Բայց երբ բոլոր իշխանութիւնները երկար պայքարի մը բերմամբը ապականեցան, և բոլոր զեղծումները քօղամերկուեցան երեւելւոց ժողովէ մը. երբ ազգը, կռուին հրաւիրուելով, բան մը ըլլալու յոյսն ու կամքը յղացաւ, տիրականօրէն ուզեց այդ բանը: Ընդհ. Ժողով խոստացուած էր իրեն, ինք պահանջեց որ անոր գումարման թուականը մերձեցուէր. թուականը երբ մերձեցուեցաւ, գերակշռութիւն պահանջեց հոն. մերժուեցաւ. բայց, կրկնապատկելով իր ներկայացուցիչներուն թիւը, այդ գերակշռութիւնը ձեռք բերելու միջոցը ընծայեցին իրեն: Այսպէս ուրեմն՝ մաս առ մաս միայն տեղի կը տրուէր, և մի՛ միայն երբ ա

ևս կարելի չէր գիտակցիլ։ բայց այն ատեն իր ուժերն առած էին ու փորձուած, և կ՚ուզէր ինչ որ կը կարծէր թէ կրնայ։ Անդադրում ընդդիմութիւն մը, իր փառասիրութիւնը գրգռելով, շատ չանցած անյաղ պիտի դարձնէր զինքը։ Բայց այն ատեն իսկ, եթէ մեծ նախարար մը, քիչ մը ուժ տալով թագաւորին, թագուհին սիրաշահելով, առանձնաշնորհեալները սանձելով, կանխած ըլլար և յանկարծ կշտացուցած ազգային պահանջումները, ինքն իսկ տալով ազատ Սահմանադրութիւն մը. եթէ գոհացուցած ըլլար գործելու պէտքը զոր ազգը կը զգար, ցանկիկս իսկոյն կանչելով ոչ թէ Պետութիւնը վերակազմելու, այլ իր տարեկան շահերուն վրայ վճարանելու նորակազմ Ժողովի մը մէջ. գուցէ պայքարը սկսած չըլլար։ Բայց դժուարութիւնը կանխել հարկ էր փոխանակ անոր տեղի տալու, և մանաւանդ բազմաթիւ յաւակնութիւններ գոհելու։ Զօրաւոր համոզմամբ, իր համոզման հաւատար կամքով մարդ մը պէտք էր. և այդ մարդը, անշուշտ յանդուգն, հզօր, թերևս կրքոտ, պիտի անարգէր արքունիքը, որ չպիտի ուզէր զայն։ Միանգամայն հանրային կարծիքն ու հին՚շահերը խնայելու համար արքունիքը կէս-միջոցներ ձեռք առաւ. ինչպէս տեսնուեցաւ, անիկա կէս-խոստանայէր, կէս-յանդուգն նախարար մը ընտրեց, որ անսահման ժողովրդականութիւն մը ունէր, վասնզի այն ատեն իշխանութեան պետի մը մէջ կէս-ժողովրդական դիտաւորութիւններ կը գերադասէին ամէն յոյս և կը դրգռէին խանդավառութիւնը ժողովրդեան մը զոր, շատ չանցած, իր պետերուն ռամկավարութիւնը հազիւ գոհ պիտի թողուր։

Միտքերը ընդհանուր խմորման մէջ էին։ Ժողովներ կազմուած էին ամբողջ Ֆրանսայի մէջ, ըստ օրինակի Անգլիոյ, և միևնոյն անունով, այն է քլըպ։ Անոնց մէջ կը զբաղէին ջնջուելիք զեղծումներով, գործադրուելիք բարենորոգումներով և հիմնուելիք սահմանադրութեամբ։ Երկրին կացութիւնը խստօրէն քննելով, սաստիկ կը զայրանային։ Արդարև, երկրին քաղաքական և տնտեսական կացութիւնը անհանդուրժելի էր։ Ամէն բան առանձնաշնորհում էր անհատներու, դասակարգերու, քաղաքներու, նահանգներու և նոյնիսկ արհեստներու մէջ։ Ամէն բան արգելք էր մարդուն ճարտարարուեստին ու հանճարին համար։ Քաղաքային, եկեղեցական և զինուորական աստիճանները տարամերժօրէն մէկ քանի դասակարգերու վերապահուած էին, և այս դասակարգերուն մէջ քանի մը անհատներու։ Ասպարէզ մը կարելի չէր ընդգրկել առանց կարգ մը դրամական պայմաններու։ Քաղաքները իրենց առանձնաշնորհումներն ունէին տուրքի հաստատման, զանձման և քանակութեան, և պաշտօնատարներու ընտրութեան համար։ Շնորհներն իսկ, որոնք վերապրողներու ձևովը ընտանեկան ստացուածքի վերածուած էին, գրեթէ թոյլ չէին տար այլ ևս թագաւորին՝ նախամեծարութիւններ ընծայելու։ Քանի մը դրամական նուէրներ ընելու ազատութիւնը լոկ կը մնար իրեն, և տեսնուած էր որ ան Բոլինեի դուքսին հետ վիճելու ստիպուած էր՝ անօգուտ պաշտօն մը ջնջելու համար։ Ամէն բան ուրեմն անշարժացած էր քանի մը ձեռքերու մէջ, և ամէնուրեք փոքր թիւը կը դիմադրէր՝ կողոպտուած մեծ թիւին։ Տուրքերը կը ծանրանային մէկ դասակարգի մը վրայ։ Ազնուականութիւնն ու կղերականութիւնը հողերուն երկու երրորդին տիրացած էին գրեթէ. միւս մէկ երրորդ մասը, որ ժողովուրդին ձեռքն էր, տուրք կը վճարէր թագաւորին, բազմաթիւ աւատապետական հարկեր՝ ազնուականութեան, տասանորդ՝ կղերականութեան, և բաց ատոր կ՚ենթարկուէր ազնուական որսորդներու

և երէք աւերմունքին: Սպառման նիւթերու տուրքերը կը ծանրանային մեծ թիւին վրայ, այսինքն ժողովրդեան վրայ: Տուրքերու հաւաքումը կեղեքիչ էր. մեծամեծները անպատժօրէն կըրնային յափշտակել վճարումը. ժողովուրդը, ընդհակառակը, կը խոշտանգուէր, կը բանտարկուէր, դատապարտուած էր իր մարմինն յանձնելու ի չգոյէ իր բերքերուն: Իր քրտինքովը ուրիշն կը սնանէր, իր արիւնովը կը պաշտպանէր ընկերութեան բարձր դասակարգերը, առանց ինքն իրեն համար կարենալ ապրելու: Միջակարգերը (պուրժուազի), ճարտարարուեստ, բուսամիտ, անշուշտ նուազ դժբախտ քան ժողովուրդը, բայց թագաւորութիւնն հարստացնելով իր ճարտարարուեստովը, իր տաղանդովը երեւելի հանդիսանալով գոյն, չէր ստանար ոչ մէկը այն առաւելութիւններուն որոնց իրաւունք ունէր: Արդարութիւնը, զոր քանի մը նահանգներու մէջ ատեանները կը բաշխէին, իսկ արքունական ատեաններու մէջ դատաւորները՝ որոնք դրամով ծախու առած էին իրենց պաշտօնը, կաշառակեր էր, յաճախ կողմնակալական, միշտ կարծամտաբար, և մանաւանդ անագորոյն եղեռնական դատերու մէջ: Անհատական ազատութիւնը բռնաբարուած էր կնիքուած նամակներով, մամուլի ազատութիւնը՝ արքունական գրաքննիչներով: Վերջապէս, պետութիւնը, արտաքուստ դէշ պաշտպանուած, Լուի ԺԵ.ի հոմանուհիներէն մաշուած, Լուի ԺԶ.ի նախարարներուն տկարութենէն վտանգուած, վերջերս ալ անպատուուած էր Եւրոպայի մէջ՝ Հոլանտայի և Պոլոնիոյ ամօթալի կերպով զոհուելովը:

Արդէն, ժողովրդային զանգուածները կը սկսէին շարժիլ. քանի մը խռովութիւններ ծագած էին Աւագաժողովներու պայքարին պահուն, և մանաւանդ Ռէվէյոնի արքայախնդրական հեռազման միջոցին: Առոր պատկերը այրած էին. զինուորական իշխանութիւնը նախատուած էր և նոյն իսկ յարձակում կրած. դատական իշխանութիւնը տկար կերպով հետապնդած էր խռովարարները, որոնք անոր դատը կը պաշտպանէին: Միտքերը յուզուած, մտաւոր յեղափոխութեան մը շփոթ գաղափարովը լեցուն, յարատեւ խմորման մէջ էին: Աւագաժողովներն ու առաջին դասակարգերը արդէն իսկ, կը տեսնէին իրենց դէմ ուղղուիլն այն զէնքերուն զորս տուած էին ժողովուրդին ձեռքը: Պըրթանիի մէջ, ազնուականութիւնը հակառակած էր Թիէռ-դ'Էթաի կրկնապատկութեան, և մերժած էր պատգամաւոր ընտրել: Միջին դասակարգը, որ այնքան հզօրապէս ծառայած էր անոր՝ ընդդէմ արքունիքին, անոր դէմ դարձած էր այն ատեն, և մանաւանդ կռիւներ տեղի ունեցած էին: Արքունիքը, որ Պըրթանի ազնուականութենէն իր մէկ մը ըստ բաւականի լուծած չէր կարծեր, ոչ միայն իր օժանդակութիւնը մերժած էր, այլ և Պարիզ եկած անոր մէկ քանի անդամները բանտարկած էր:

Տարերք իսկ կը թուէին չթայաղերծ ըլլալ: Յուլիս 13ին, կարկուտ մը փճացուցած էր հունձքերը, և Պարիզի պարենաւորումը աւելի դժուար պիտի ըլլար, մանաւանդ այն խառնակութեանց մէջ, որ կը պատրաստուէին: Առեւտրական ամբողջ գործունէութիւնը հազիւ կը բաւէր՝ բաւականաչափ ուտեստ հաւաքելու համար այդ մեծ մայրաքաղաքին մէջ, և վախ կար որ շատ չանցած շատ դժուար ըլլար զայն ապրեցնել, երբ քաղաքական խռովարարները վստահութիւնը խախտէին և հաղորդակցութիւնները ընդհատէին: Լուի ԺԴ.ի ձախորդութեանց յաջորդող ահաւոր ձմեռէն ի վեր, որ Ֆէնըլոնի ողորմածութիւնը անմահացուց, չէր տեսնուած այնքան սաստիկ ձմեռ որքան 88ին և 89ին: Բարեգործութիւնը, որ

այն ատեն երեւան եկաւ սրտաչարժ կերպով, անբաւական եղաւ ժողովրդեան թշուառութիւնը մեղմելու։ Ֆրանսայի ամէն կողմերէն վազնիվաղը անգործ և չքաւոր բազմաթիւ Թափառականներ հասան և Վէրսայլէն Բարիզ պարզեցին իրենց թշուառութիւնն ու իրենց մերկութիւնը։ Ամենայնոքը իրարանցումին, անոնք յանկարծ երեւան կ'ելլային օգտուելու համար առիթէն որ միշտ նպաստաւոր է անոնց որ ամէն բանի կարօտ են, մինչեւ իսկ օրուան հացին։

Այսպէս, ամէն բան նպաստաւոր էր յեղափոխութեան մը։ Ամբողջ դար մը նպաստած էր քօղազերծելու չեղծումները և զանոնք ծայրայեղութեան մղելու, երկու տարի ընթացքին գրգռելու և մարզելու ժողովրդային զանգուածները; առանձնաշնորհեալներու կռիւներուն մէջ մտնելով զանոնք։ Վերջապէս, բնական աղէտներ, զանազան պարագաներու պատահական զուգակցութիւնը, առաջ բերին այն չարաղէտ դէպքը որուն Թուականը կրնար յետաձգուիլ, բայց որուն կատարումը ոչ կամ կամաւ անխուսափելի էր։

Այս պարագաներուն մէջ է որ տեղի ունեցան ընտրութիւնները։ Բանի մը գաւառներու մէջ անոնք ալմկալից եղան, ամէնուրեք եռանդալից, և շատ հանդարտ ի Բարիզ, ուր համաձայնութիւն և համամտութիւն տիրեց։ Ցուցակներ կը բաշխուէին, միանալու և համաձայնելու ջանք մը կար։ Վաճառականներ, փաստաբաններ, դրչի մարդիկ՝ առաջին անգամ ըլլալով զիրար հաւաքուած տեսնելնուն զարմացած, քիչ քիչ ազատութեան կը բարձրանային։ Ի Բարիզ, իրենք իսկ վերահաստատեցին Թագաւորին կողմէ կազմուած դիւանները, և առանց անձերը փոխելու, իրենց ուժին ապացոյցը տուին զանոնք հաստատելով։ Իմաստուն Պայեին կը հետեւայ Տույեօի իր առանձնոցէն. էնթրիկներէ հեռի, իր ազնիւ պաշտօնին գիտակից, առանձինն ու հեռիուան մողով կ'երթայ։ Ճամբան կը կենայ Ֆէօյեաններու դարատափին վրայ. անծանօթ երիտասարդ մը անոր կը մօտենայ յարգանօք. «Պիտի ընտրուիք, կ'ըսէ։—Ձեզ գիտեր, կը պատասխանէ Պայեի. այդ պատիւը ոչ մերժուելու, ոչ խնդրուելու է։» Համեստ ակադեմականը ճամբան կը շարունակէ, և հետզհետէ կ'անուանուի ընտրող և պատգամաւոր։

Միւս կողմէն ընտրութիւնը փոթորկալից եղաւ. ազնուականութենէն մերժուելով, Թիէռ-դ'Էթաէն ընդունուելով, անիկա խառնակեց Բաժանը՝ իր հոյլենիքը, և շատ չանցած եկաւ երեւցաւ ի Վէրսայլ։

Արքունիքը ընաւ չուզեց ազդել ընտրութեանց վրայ. բազմաթիւ երէցներու ներկայութենէն ընաւ չանհուեցաւ. յոյսը դրած էր անոնց հակառակութեանը վրայ ընդդէմ բարձրաստիճան կղերականներու, և միեւնոյն ժամանակ անոնց յարգանքին վրայ դէպի գահը։ Մնաց որ, ամէն բան չէր նախատեսեր, և Թիէռ-դ'Էթաի պատգամաւորներուն մէջ աւելի ազնուականութեան քան թէ իրեն դէմ հակառակորդներ կը տեսնէր։ Օռլէանի դուքսը ամբաստանուեցաւ թէ ուժնապէս կը գործէ իր կուսակիցները ընտրել տալու համար, և ինքն իսկ ընտրուելու համար։ Արքունիքին հակառակորդներուն մէջ արդէն դասուած, Աւագաժողովներու դաշնակից, կամայ ակամայ՝ ժողովրդական կուսակցութեան կողմէ իբրեւ պետ նշանակուած, զանազան հնարագիտութիւններ վերագրուեցան իրեն։ Ցաւալի դէպք մը պատահեցաւ Սէնդ-Անդուան արուարձանին մէջ, և որովհետեւ ամէն դէպքի հեղինակ մը կ'ուզուի տալ, դուքսը պատասխանատու բռնեցին։ Վոնուար թուղթերու գործարանատէր մը, Ռէվէյեօն, որ իր ճարպիկութեամբը



ՀՐԿԻԶՈՒՄ ՌԷՎԷՅԵՕՆ ՏԱՆ

ընդարձակ գործատեղիններ կը բանեցնէր, մեր ճարտարարուեստը կը կատարելագործէր և երեք հարիւր գործաւորներու ապրուստը կը հայթայթէր, ամբաստանուեցաւ թէ աւուրչէքները կէսուկէս ջնջել կ՚ուզէր։ Խուժանը սպառնաց այրել անոր տունը։ Յաջողեցան ցրուել զայն. բայց խուժանը յաջորդ օրը նորէն հոն դարձաւ. յարձակեցան տունին վրայ, այրեցին, կործանեցին (27 ապրիլ)։ Հակառակ որ առջի օրը յարձակողները սպառնացած էին ու հոն ժամանելիք եղած, իշխանութիւնը շատ ուշ գործեց, և այն ատեն տարապայման խստութեամբ գործեց։ Սպասեցին որ խուժանը ափրէ տանը. յետոյ կառավարութեամբ վրան յարձակեցան և հարկ եղաւ չարերը խողխողել այդ վայրագ ու անմեղներ մարդերէ, որոնք այնուհետեւ երեւցան ամէն առթիւ, և որ աւազակ յորջորջուեցան։

Բոլոր կուսակցութիւնները, որ արդէն կազմուած էին, զիրար ամբաստանեցին. կշտամբեցին արքունիքը որ նախ ուշ և յետոյ անագորոյն կերպով գործած էր. Ենթադրուեցաւ թէ դիտմամբ

թողած էր որ ամբոխը կռուի սկսի, յետոյ օրինակ մը տալու եւ իր գինուորները վարժեցնելու համար։ Ռէվէյիօնի տան աւերիչներուն վրայէն գտնուած դրամը, անոնցմէ ոմանց բերնէն փախած խօսքերը կասկած տուին թէ անոնք ծածուկ ձեռքէ մը դրդուած եւ առաջնորդուած էին. եւ ժողովրդային կուսակցութեան թշնամիները ամբաստանեցին Օռլէանի դուքսը թէ ուզած էր փորձել այդ յեղափոխական վոհմակները։

Այս իշխանը բնոյթի յատկութիւններով էր ծնած. անսահման հարստութիւն ժառանգած էր. բայց գէշ բարքերու անձնատուր, չարաչար գործածած էր բնութեան ու բախտին պարգեւները։ Նկարագրով անհաւասարական, պահ մը համրային կարծիքին անփոյթ, պահ մը ժողովրդականութեան ծարաւի, օրին մէկը յանդուգն էր ու փառասէր, հետեւեալ օրը հլու եւ մոլեգին։ Թագուհիին հետ աւրուելով, արքունիքին թշնամին եղած էր։ Որովհետեւ կուսակցութիւնները կը կազմուէին, թողած էր որ անոնք իր անունը, եւ նոյն իսկ, կ'ըսեն, իր հարստութիւնը։ Ցփոթ ապագայէ մը հրապուրուած, կը գործէր այնքան որ ինքզինքը ամբաստանութեան ենթարկէ, յաջողելու անպատեհ, եւ եթէ իր կուսակիցները իրօք ծրագիրներ ունէին, ինքը զանոնք պիտի յուսահատեցնէր իր յողդողդ փառասիրութեամբը։

Ընդհանուր Ժողովին գումարման վայրկեանը կը հասնէր վերջապէս այս հասարակաց վտանգին մէջ՝ կղերն ու ազնուականները արքունիքին մօտենալով, արքայազուն իշխաններուն եւ թագուհիին շուրջ բոլորուած էին։ Կ'աշխատէին կեղծաւորութիւններով իրենց կողմը շահիլ գիւղացի երեւելիները, բայց անոնց բռնակալութեան տակ կը հեծէին անոնց դաժանութիւնը։ Կղերը կ'աշխատէր իր կարգին ստորակարգները հրապուրել, զինուորական ազնուականներն ալ իր կարգին ստորակարգները։ Աւագաժողովները, որոնք կարծած էին առաջին դերը գրաւել Ընդհանուր ժողովներուն մէջ, սկսան վախնալ իրենց փառասիրութեան ի դերեւ ելլելուն վրայ։ Ընդհանուր ժողովին երեսփոխանները, իրենց խելքին առաւելութեամբ զօրացած, ինչպէս նաեւ իրենց ստորադասներուն կորովի արտայայտութիւնէն, չարունակ իրարու մօտենալէն ոյժ առնելով, նոյն իսկ շատերուն կողմէն իրենց ջանքերուն յաջողութեան մասին յայտնուած տարակոյսներէն դրդուած, հաստատ որոշում առած էին անկէ չալու։

Թագաւորը միայն, որ իր թագաւորութեան սկզբնաւորութենէն ի վեր վայրկեան մը հանգիստ չէր վայլած, Ընդհանուր Ժողովը իր շփոթութիւններուն իբրեւ վախճան կը նկատէր հեռուէն հեռու։ Իր հեղինակութեան նախանձաւոր, մանաւանդ իր զաւակներուն համար, որոնց պարտաւորութիւն կը համարէր անաղարտ թողուլ այս ժառանգութիւնը, քան թէ իրեն համար, չէր զայրանար անոր մէկ մասը ազգին թողուլ, եւ կառավարութեան դժուարութեանց բեռը անոր կռնակը հանելով։ Ուստի խնդութեամբ կը պարապէր այդ մեծ գումարումին պատրաստութեանց։ Փութով սրահ մը պատրաստեցաւ։ Նոյն իսկ որոշուեցան տարազները եւ Ընդհանուր Ժողովին պարտաւորուեցաւ նուաստացուցիչ ձեւակերպութիւն մը։ Մարդիկ իրենց արտաքին արժանաւորութեանց ո՛չ նուազ նախանձոտ են որքան իրենց իրաւունքներուն. արդարացի հպարտութեամբ մը՝ ստորակները երեսփոխաններուն կ'արգիլէին զիջանիլ ոեւէ անուանարկիչ ձեւակերպութեան։ Արքունիքին այս նոր թերութիւնը, միւս բոլոր թերութիւններուն նման, կը բղխէր գոնէ արտաքին նշանը պահպանելու

փառլաքէն, երբ այլ եւս իրականութիւն չկար։ Ասկէ ի հարկէ խորունկ գայրոյթ մը պատճառեց ա՛յն պահուն՝ երբ յարձակելէ առաջ՝ սկսած էին զիրար աչքերով չափել։

Բացման նախորդ օրը, Մայիս 4ին, հանդիսաւոր թափոր մը տեղի ունեցաւ։ Թագաւորը, երեք դասակարգերը (կղեր, ազնուական և քաղքենի), բոլոր պետական աստիճանաւորները, Նօթր-Տամի եկեղեցին գացին։ Արքունիքը արտասովոր մեծվայելչութիւն մը ցուցադրած էր։ Առաջին երկու դասակարգերը պերճանքով հագուած էին։ Իշխաններ, դուքսեր, պալատականներ, ազնուականներ, բարձրաստիճան եկեղեցականներ, ծիրանազգեստ պճնուած էին. և փետրազարդ բեղոյրներով գլուխնին ծածկած։ Քաղքենի երեսփոխանները,— ժողովրդային ներկայացուցիչները—կուգային յետոյ, պարզ սեւ վերարկուներ հագած, և հակառակ իրենց համեստ կերպարանքին՝ կարծես զօրաւոր էին իրենց թիւով ու իրենց տարազով։ Դիւանելյա ու Օրլէանի դուքսը, որ ազնուականներուն ամէնէն վերջը կուգար, կը փափաքէր ա՛լ աւելի ետեւ մնալ Երրորդ Կարգին առաջին երեսփոխաններուն հետ խառնուելու համար։

Այն զինուորական ու կրօնական ազգային շքեղութիւնը, այն բարեպաշտական երգերը, այն պատերազմական գործիքները, և մանաւանդ դէպքին մեծութիւնը, խորապէս յուզեցին սիրտերը։ Նանսիի եպիսկոպոսին վեհ զգացումներով լեցուն ճառը խանդավառօրէն ծափահարուեցաւ՝ հակառակ տեղւոյն սրբութեան և թագաւորին ներկայութեան։ Շքեղ զուարճութիւնք հոգին կը վերացնեն, մեզ կը բաժնեն մեզմէ, և ուրիշներուն կը կապեն մեզ, ընդհանուր զգլխում մը տարածուեցաւ, և յանկարծ մէկէ աւելի սիրտեր զգացին իրենց ատելութեանց նուաղիլը, և պահ մը լեցուեցան մարդկայնութեամբ և հայրենասիրութեամբ(*)։

(*) Ֆէրրիէռի Յիշատակարաններուն հետեւեալ հատուածը պիտի չյիշատակէի, եթէ ստորին անուանարկիչներ աշխատած չըլլային ամէն բան պղտորելու Ֆրանսական յեղափոխութեան տեսարաններուն մէջ։ Մէջ բերելիք հատուածս պիտի բաւէ դատաստան մը կազմել տալու այդ թուականին ազգային համակրութեանց նուաղ ռամկական սիրտերու վրայ թողած տպաւորութեան մասին։

«Այս վեհ և սրտայոյզ արարողութեան իմ վրաս ըրած տպաւորութիւնը հոս ի գիր առնելու հաճոյքին տեղի կուտամ. պիտի ընդօրինակեմ այդ միջոցին գրի առած տպաւորութիւնս, իմ զգացածովս տակաւին լեցուած։ Եթէ այս հատուածը պատմական չէ, թերեւս քանի մը ընթերցողներու համար աւելի ուժգին շահեկանութիւն մը պիտի ունենայ։

«Ազնուականները սեւ հագուստով, ոսկեհուռ ասուեայ բաճկոնակով և զարդեղէններով, մետաքսէ վերարկուով, ժանեկաւոր փողկապով, ու Հանրի Դ. փետրաւոր հանգրէճ բեղոյրով, քառակուսի գդակով. եպիսկոպոսները իրենց մանիշակագոյն փիլոններով և շապիկներով, ժողովրդային ներկայացուցիչները սեւազգեստ, մետաքսէ վերարկուով, նուրբ կտաւէ փողկապով։ Թագաւորը ճոխապաճոյճ բարձրաւանդակի մը վրայ կեցաւ. գահաժառանգը, Արթուայի կոմսը, իշխանազուններ, նախարարները, պալատական աւագ սպայակոյտը նստած էին թագաւորէն վար. թագուհին ճիշդ թագաւորին դէմ առ դէմ, արքայազուն օրիորդը, Արթուայի կոմսուհին, իշխանուհիները, պալատական տիկինները, ադամանդներով շքեղօրէն պճնազարդուած և ծածկուած, հիասքանչ թափոր մը կը կազմէին անոր

Ընդհանուր ժողովին բացումը տեղի ունեցաւ երկրորդ օրը, 1789 Մայիս 5: Թագաւորը բազմած էր բարձր գահոյքի մը վրայ, թագուհին անոր մօտ, արքունիքին անդամները բեմերուն մէջ, երկու առաջին կարգերը երկու կողմերուն վրայ, իսկ երրորդ դասակարգը սրահին խորը և ցած աթոռներու վրայ: Շարժում մը խլրտեցաւ Միրապօ կոմ-

չուրջ: Փողոցները պալատական զորքերով ծածկուած էին. Ֆրանսական և զուիցերիական արքունի պահնորդներու զօրախումբեր անընդհատ շղթայ մը կը կազմէին սկսեալ Նօթր Տամէն մինչև Սէն Լուի. անհագին ժողովուրդ մը մեր անցքը կը դիտէր յարգալից լռութեամբ, պատշգամները մեծարժէք կերպասներով զարդարուած էին, պատուհանները լեցուած ամէն հասակէ, ամէն սեռէ հանդիսականներով, դեղանի վայելչազգեստ կիներով, բեղոյրներու փետուրներու, զգեստներու պէսպիսութիւնը, ամէն դէմքերու վրայ նկարուած սիրայորդոր գորովանքը, ամէն աչքերու մէջ փայլատակող ուրախութիւնը, ծափերը, հետաքրքրութեամբ անյագ արտայայտութիւնները, մեզ կանխող նայուածքները, որոնք մեր հեռանալէն ետք իսկ տակաւին մեզի կը հետևէին... Զմայլեցուցիչ, զօշաղիչ պատկեր՝ զոր ի զուր կը ճգնիմ կրկին նկարագրել: Երաժշտախումբեր, անջրպետէ անջրպետ կարգաւորուած, մեղմօրոր ձայներով օդը կը թնդացնէին. զինուորական քայլերգներ, թմբուկներու և դափերու դղրդիւններ, շեփորներու շառաչիւն, կարգ ըստ կարգէ անշփոթ, ներդաշնակ փոխասացութիւն ընող քահանաներուն վեհ երգը, կ՚ոգեւորէին Ցասխմնականին այս յաղթական գնացքը:

Ամենաքաղցր զմայլանքի մը մէջ ընդ փոյթ խորասոյզ, վսեմական՝ այլ մելամաղձիկ խորհուրդներ եկան ընծայուեցան ինծի: Այն Ֆրանսան, հայրե-

սին սրահներուն մէջ. բայց իր նայուածքը, իր գնացքը պատկառանք ազդեցին ժողովին: Երրորդ դասակարգն ալ միւս կարգերուն նման գլուխը գոցեց՝ հակառակ հաստատուած սովորութեան: Թագաւորը ճառ մը արտասանեց՝ որով ոմանց անշահախնդրութիւն, ուրիշներուն խելքի իմաստութիւն կը պատուիրէր, և ամէնուն կը խօսէր ժո-

նիքս, կը սեմէի զայն, որ կրօնքին յեցած կ՚ըսէր մեզի. Խեղդեցէ՛ք ձեր արդայամիտ կարծիքն ու կռիւները. ահա՛ վճռական վայրկեանը որ նորափետուր կեանք մը պիտի տայ ինծի, կամ ի սպառ պիտի անէացնէ զիս... Սէ՛ր հայրենեաց, դուն կը խօսէիր սրտիս... Ի՛նչ, բարէ՛, խառնակիչներ, անմիտ փառամոլներ, դձուձ դաւադիրներ պիտի ջանա՞ն մոլորահեռ ճամբաներով քայքայել հայրենիքին միութիւնը, իրենց կործանարար դրութիւնները պիտի հիմնե՞ն նենգապատիր չահերու վրայ. պիտի ըսե՞ն քեզի. Երկու չահ ունիս դուն, և դասակարգերուդ նախանձը չարժող բոլոր փառքդ, համօրէն մեծութիւնդ պիտի ցրուի կէս օրուան հովէն հալածական թեթեւ ծուխի մը պէս... Ո՛չ, ահա կ՚երդնում քու առջևդ. թո՛ղ ցամքած լեզուս քիմքիս կցուի, եթէ երբեք մոռնամ մեծութիւններդ ու հանդիսութիւններդ:

«Այն կրօնարար հանդերձանքը քանի՛ շող ու փայլ կը ցանէր այն համակ մարդկային պերճանքին վրայ: Առանց քեզի, ո՛վ արժանայարգ կրօնք, ամբարհաւաճութեան մին ցուցադրանք մը պիտի ըլլար այն, բայց դուն կը մաքրագործես և կը սրբացնես, դուն մեծութիւնն իսկ կը մեծցնես. Թագաւորները, դարուն հզօրները, անոնք ալ գոնէ ձեւակերպուած մեծարանքներով, հպատակութեան տուրք կ՚ընծայեն Թագաւորին Թագաւորաց... Այո՛, Աստուծոյ միայն կը վայելէ պատիւ, իշխա-

ղօղանջին համար իր սիրոյն վրայ։ Ցետոյ խօսք առաւ արքունի կնքապահ Պառանթէն, որուն յաջորդեց Նէքէր, որ յիշատակագիր մը կարդայ երկրին վիճակին վրայ, երկարօրէն խօսելով ելեւմուտքին նկատմամբ, յառաջ բերելով միլիոնի պաց մը ցոյց տուաւ, եւ իր ա-ռած դասերէն դժգոհ չերեւնալով ալ իր երկարաբանութիւններովը ձանձրացուց։

Յաջորդ օրէն սկսեալ մէն մի դասակարգի երեսփոխաններուն պատուիր-ուեցաւ իրենց սահմանուած ժողովասեղին երթալ։ Երեք դասակարգերն ալ միասին պարունակելու չափ ընդարձակ հասարակաց սրահէն զատ՝ ուրիշ երկու սրահներ կառուցուած էին ազնուականութեան եւ կղերին համար։ Հասարակաց սրահը երրորդ կարգին սահմանուած էր, որ իր սեփական ժողովասեղին մէջ ըլլալով հանդերձ, միւս կարգերուն ժողովասեղին մէջ ալ գտնուելու առաւելութիւնը ունէր այսպէս։ Ըլլալիք առաջին գործողութիւնն էր իրաւասութեանց եւ ընտրութեանց ճշդումը. խնդիր էր գիտնալ թէ այս գործողութիւնը միաժողո՞վ նիստի մէջ պէտք էր տեղի ունենար թէ իւրաքանչիւր դասակարգ ինք առանձինն պիտի ընէր զայն։ Երրորդին երեսփոխանները, պահանջելով որ Ընդ-

նութիւն եւ փառք... Այն սուրբ արարողութիւնները, այն երգերը, պատարագի զգեստով զգեստաւորուած այն քահանաները, այն կնդրուկները, այն ամպհովանին, ոսկիով ու պատուական քարերով ճառագայթարձակ այն սրեր... Կը յիշէի մարգարէին խօսքերը, Երուսաղէմի աղջիկներ, կ'ընդառաջէ ձեր թագաւորը. հագի՛ք ձեր հարսնութեան լոդիկները եւ անոր առջեւ վազեցէ՛ք... Ուրախութեան արցունքներ կը հոսէին աչքերէս։ Աստուածս, հայրենիքս, հայրենակիցներս նոյնացած էին ինծի հետ...

«Երեք դասակարգերը, Սէն-Լուի համերով, նստած առանձին դրուած տախտերու վրայ։ Թագաւորն ու թագուհին բազմեցան մանիշակագոյն թաւշեայ, ոսկեման շուշանածաղիկներով ցանցնուած ամպհովանիի մը տակ. իշխանները, իշխանուհիները, պալատական ասպետներն ու պաշտօնատարները, արքունի տիկինները, կը գրաւէին նոյն վեհափառութեանց վերապահուած շրջափակը. Ս. Հաղորդութեան սկիհը խորանին վրայ բերուեցաւ ամէնէն ազդուական երաժշտութեան ձայներով։ Այն բնական, այլ ճշմարիտ, միամիտ, սրտայայտութիւնը խնդրող արտեւոտականներու խառնաղանճէն զերծ, երկնքմբերձիկ ձայներու այն կշռաւոր համերգանքը, հաստատեց ինծի թէ պարզը միշտ գեղեցիկ, միշտ մեծ, միշտ վսեմ է... Ցիմար են մարդիկ որ իրենց մտաց իմաստակութեամբ աղաւաղել կը համարին Յու խանդականին ընծայուած պաշտամունքը. ինչպէս մեծարերութեամբ կը տեսնեն մարդը Աստուծոյ կարող, զայն աչքին տեսանելի, շօշափելի զգայական ընող բարոյականութեան չգթան... Քարոզը արտասանեց Նանսիի եպիսկոպոս տը լա Ֆառ... Կրօնքը կը կոչէ պետութիւններուն օյժը. կրօնքը կը յորդորէ ժողովուրդներուն երջանկութիւնը. վեհաշուք ժողովին մէջ ճառելի կարեւոր նիւթը չէր այս ճշմարտութիւնը, որուն վրայ երբեք պահիկ մը խոկ չէ երկմտած ո եւ է զգօնամիտ մարդ. վայրը, պարագան կը բանային աւելի ընդարձակ դաշտ մը, բայց Նանսիի եպիսկոպոսը չհամարձակեցաւ կամ չկրցաւ ընթանալ անոր մէջէն։

Յաջորդ օրը երեսփոխանները հաւաքուեցան ծաշայուցակներու սրահին մէջ։ Աստղ ժողովը ո՛չ նուազ պատկառելի եղաւ, ո՛չ ալ տեսարանը երեւելին նուազ մեծաքանչ։»

Ֆերրիէռ Մարքիզին յիշատակարանը, հատոր Ա., էջ 18 եւ յաջորդականք։

համար Ժողովին մէն մի մասին համար կարեւոր էր միւս երկուքին օրինաւորութեան վրայ հաստատ ըլլալ։ Տէրդումի գործողութիւնը միաժողով ըլլալուն վրայ կը պնդէին։ Ազնուականները ու կղերը, ուզելով պահել կարգերուն բաժանումը, կը պնդէին թէ իւրաքանչիւրը պէտք է առանձինն կազմակերպուի։ Այս խնդիրը տակաւին մարդ գլուխ քուէի խնդիրը չէր, որովհետեւ կարելի էր իրաւասութիւնները միաժողով ճշդել և յետոյ անջատաբար քուէարկել, բայց շատ կը նմանէր անոր. և առաջին օրէն սկսեալ՝ այս խնդիրը դժուարութիւն մը պայթեցուց զոր դիւրին՞ էր նախատեսել և արգիլել վէճը առաջուց վերջացնելով։ Բայց արքունիքը արդար եղած բանը ո՛չ մերժելու ո՛չ շնորհելու ուժ չունէր բնաւ, և միայն որ ան կը յուսար տիրել բաժնելով։

Երրորդ Կարգին երեսփոխանները ժողով գումարեցին հասարակաց սրահին մէջ, ու և է միջոց ձեռք առնելէ հրաժարելով, և իրենց պաշտօնակիցներուն գումարման սպասելով, ինչպէս կ'ըսէին։ Ազնուականներն ու կղերը, իրենց սրահին մէջ քաշուած, սկսան խորհրդակցիլ ճշդումին վրայ։ Կղերը իր ուրոյն ճշդումը քուէարկեց 114ի դէմ 133ի մեծամասնութեամբ, և ազնուականներն ալ իրենցը՝ 114ի դէմ 188ի մեծամասնութեամբ։

Երրորդ դասակարգը իր անշարժութեան մէջ յարատեւելով, երկրորդ օրն ալ շարունակեց իր երէկի վարմունքը։ Կ'աշխատէր խոյս տալ, զգուշանալ ու և է կարգադրութենէ, որ զինքը իբրեւ անջատ դասակարգ կազմուած նկատել տար։ Այս պատճառաւ, իր անդամներէն մէկ քանին միւս երկու խորհրդարաններուն ուղղելով, հոգ տարաւ ու և է բացորոշ պաշտօն չառնել անոնց։ Այդ անդամները ազնուականներուն և կղերին դրկուած էին անոնց ըսելու համար թէ հասարակաց սրահին մէջ իրենց կը սպասուէր։ Այդ պահուն ազնուականները նիստ չէին ըներ. կղերը գումարուած էր, և առաջարկեց պատուիրակներ անուանել ծագած վէճերը համաձայնեցնելու համար։ Եւ իրաւ ալ անուանեց, և ազնուականներն ալ հրաւիրեց նոյնը ընելու։ Կղերը այս պայքարին մէջ ազնուականութենէն շատ տարբեր նկարագիր մը ցոյց կուտար։ Բոլոր առանձնաշնորհեալ դասակարգերուն մէջ ան ամէնէն աւելի տառապած էր ԺԸ. դարու յարձակումներէն. իր քաղաքական գոյութիւնը վէճի ենթարկուած էր, իր թեմական հովիւներուն մեծ թիւին պատճառաւ բաժնուած էր. միայն որ իր պարտաւորիչ դերն էր չափաւորութեան և հաշտարար մարքի դերը. ուստի, ինչպէս տեսնուեցաւ, տեսակ մը միջնորդութիւն առաջարկեց։

Ընդհակառակն, ազնուականները մերժեցին՝ չուզելով պատուիրակներ անուանել։ Կղերէն նուազ խոհեմ, իրենց իրաւունքներուն վրայ աւելի յամառ, չափաւորութեան պարտաւորուած չկարծելով զիրենք, այլ սրտառութեան, մրմունջ և սպառնալիք կը թափէին իրենց բերնէն։ Ո՛չ մէկ կիրքի ներողամիտ չեղող այն մարդիկը անձնատուր կ'ըլլային բոլոր իրենց կիրքերուն, և բոլոր ժողովներու մէջ եղածին նման, ամենաբուռն միաքերու տիրապետութեան ենթարկուած էին։ Գազալէս, տ'Էպրէմէնիլ, որոնք դեռ վերջերս ազնուականացած էին պաշտօնապէս, ամէնէն կատաղի առաջարկութիւնները ընդունիլ կուտային, զորս կանխաւ կը պատրաստէին մասնաւոր գումարումներու մէջ։ Աւելի խոհեմ կամ իրենց փառասիրութեան մէջ աւելի զգօն մարդոցմէ բաղկացած փոքրամասնութիւն մը ի զուր կը ջանար լուսաբանել այդ ազնուականները. բան մը լսել չէին ուզեր, կռուելու և մեռնելու խօսք կ'ընէին, և, կը յարէին, օրէնքներուն և արդարութեան համար։ Երրորդ Կարգը, անշարժ,

հանդարտօրէն կուլ կուտար բոլոր նախատինքները. լսելոյն կը զայրանար, բոլոր նոր եկող ուժերուն յատուկ խոհեմութեամբ և հաստատակամութեամբ կը շարժէր, և կ'արժանանար ծափաձայն հաւանութեանց ունկնդիրներու բեմերուն, որոնք նախ պալատականներուն սահմանուած էին, բայց ուր քիչ վերջը հասարակ ժողովուրդը սկսած էր խուժել։

Բաւական օրեր անցած էին արդէն։ Կղերը ծուղակ լարած էր Երրորդ Կարգին՝ ջանալով զայն մղել ա՛յնպիսի գործողութիւններու, որոնք կազմակերպուած կարգի մը հանգամանքը տային անոր։ Բայց Երրորդ Կարգը շարունակ կը մերժէր, և ներքին կարգապահութեան անհրաժեշտ միջոցներ միայն ձեռք առնելով, բաւականացած էր ընտրելով երիցագոյն անդամ մը և օգնականներ կարծիքները հաւաքելու համար։ Իրեն ուղղուած նամակները կը մերժէր բանալ, և կը յայտարարէր թէ ինք ո՛չ թէ կարգ մը կը կազմէր, այլ քաղաքացիներու ժողով մը՝ օրինաւոր ներկայացուցչութեամբ մը հաւաքուած՝ ուրիշ քաղաքացիներու սպասելու համար։ (Ազնուականութիւնը, հաշտարար պատուիրակներու անուանումը մերժելէն վերջ, հուսկ ուրեմն հաւանեցաւ անոնցմէ քանի մը հատ ղրկել միւս կարգերուն հետ իրաւախոհ ըլլալու համար. բայց անոնց տուած պաշտօնը անօգուտ կ'ըլլար, քանի որ անոնց միեւնոյն կը յանձնարարէր որ յայտարարեն թէ ազնուականութիւնը կը պնդէր Մայիս 6ի իր որոշումին վրայ, որ անջատ, ուրոյն ճշդումը կը պատուիրէր։ Կղերը, ընդհակառակն, իր դերին հաւատարիմ, իր յատուկ խորհրդարանին մէջ արդէն իսկ սկսուած ճշդումը դադրեցուցած էր, և ինքզինքը դեռ ո՛չ կազմակերպուած կը յայտարարէր, միւս երկու կարգերուն հաշտարար պատուիրակներուն բանակցութեանց սպասելով։ Բանակցութիւնները դանդաղ էին. կղերը լուռ կը մնար, ժողովրդային երեսփոխանները իրենց պատճառաբանութիւնները առաջ կը քշէին հանդարտիկ, իսկ ազնուականութեան պատուիրակները՝ զայրացած։ Իրարմէ վէճով դառնացած կը բաժնուէին, և Երրորդ Կարգը, որ անզիջելու հաստատ որոշում ունէր, անշուշտ չնեղացաւ իմանալով թէ ամէն իրաւախոհութիւն անհնարին կը դառնար։ Ազնուականները ամէն օր իրենց պատուիրակներէն հաւաստիք կ'ընդունէին թէ տուտկութիւնը իրենց կողմն էր, և այսպէս ո՛չ աւելի կը շահէր անոնց մեծամասնութիւնը։ Խոհեմութեան փախստեայ նշոյլով մը, երկու առաջին կարգերը յայտարարեցին թէ կը հրաժարէին իրենց դրամական առանձնաշնորհումներէն։ Երրորդ Կարգը ընդունեց այս զիջումը, բայց յարատեւեց իր անգործութեան մէջ, պահանջելով միշտ միաժողով կատարել ձեռնհասութեանց կամ իրաւասութեանց ճշդումը։ Բանակցութիւնները դեռ կը շարունակուէին, երբ վերջապէս, իբրև միջին ճամբայ, առաջարկուեցաւ երեք կարգերէն առնուած պատուիրակներու միջոցաւ ճշդել այդ Ընդհանուր Ժողովին իրաւասութիւնները։ Ազնուականութեան պատուիրակները անոր անունով յայտարարեցին թէ այս կարգադրութեան համամիտ չէին, և քաշուեցան առանց օր որոշելու նոր բանակցութեան մը համար։ Այսպէս ի դերեւ ելաւ իրաւախոհութիւնը։ Միեւնոյն օրը ազնուականութիւնը մասնաւոր վճիռով մը կը յայտարարէր դարձեալ թէ այս նըստաշրջանին համար անջատ պէտք էր ճշդել ձեռնհասութիւնները, Ընդհանուր Ժողովին թողլով ապագային ուրիշ եղանակ մը որոշելու հոգը։ Այս վճիռը Մայիս 27ին հաղորդուեցաւ ժողովրդային ներկայացուցիչներուն։ Մայիս 5էն ի վեր հաւաքուած էին, ուրեմն քաններկու օր անցած էր, առանց բան մը ըրած ըլլա-

յու։ Ժամանակն էր միջնական որոշում մը տալու։ Միւսալօ, որ ժողովրդային կուսակցութեան մղում կուտար, գլուխ առաւ թէ հարկ անհրաժեշտ էր կայանք մը տալ, և խիստ երկար ատենէ ի վեր սպասուած հանրային օգուտին սկսիլ։ Ուստի, ազնուականութեան ծանօթ որոշումին համաձայն, առաջարկեց հրաւէր մը կարդալ կղերին որպէս զի ան ալ իր կարծիքը բացայայտ պարզէ խո-կոյն, և յայտարարէ թէ կ'ուզէ՞ր թէ ոչ Երրորդ Կարգին միանալ։ Առաջարկութիւնը անմիջապէս ընդունուեցաւ։ Եպիսկոպոսաց Թուռմէ բազմաթիւ պատուիրակութեան մը գլուխը անցնելով կղերին սրահը գնաց. «Պարոնայք ժողովրդականք կը հրաւիրեն պարոնայք կղերականները, ըսաւ, յանուն խաղաղութեան Աստուծոյն և ի շահ Ազգին, իրենց հետ հաւաքուելու ժողովարահին մէջ, այս պահուս հասարակաց փրկութեան յոյժ հարկաւոր համաձայնութիւնը ի գլուխ հանելու միջոցին վրայ խորհրդակցելու համար։» Կղերը զարմացաւ այս հանդիսաւոր խօսքերուն վրայ. իր անդամներէն շատերը ծափելով պատասխանեցին, և ուզեցին մէկէն ի մէկ հաւանիլ անոր հրաւէրին, բայց ուրիշներ արգիլեցին զիրենք, և ժողովրդային երեսփոխաններուն պատասխանուեցաւ թէ խորհրդակցութիւն պիտի կատարուի այդ մասին։ Պատուիրակութեան դարձին՝ Երրորդ Կարգը, անողոք, որոշում առաւ սպասելու, նոյն նիստին իսկ, կղերին պատասխանին։ Այս պատասխանը չհասնելով, մարդ ղրկեցին ըսելու որ պատասխանի կը սպասուէր։ Կղերը չափազանց զբաղած ըլլալը առարկեց, և խնդրեց որ հարկ եղած ժամանակը տրուի իրենց։ Զափաւորութեամբ պատասխանուեցաւ իրենց թէ ազատ էր, և թէ պիտի սպասուէր, եթէ հարկ ըլլար, ամբողջ օրը և ամբողջ գիշերը։

Կացութիւնը դժուար էր. կղերը գիտէր թէ իր պատասխանէն վերջ ժողովրդայինք գործի պիտի սկսէին և վճռական որոշում մը պիտի տային։ Կ'ուզէր ձգձգել արքունիքին հետ համախորհուրդ ըլլալու համար. ուստի մինչև յաջորդ օրը միջոց ուզեց, ինչ որ յակամայս շնորհուեցաւ։ Եւ արդարև յաջորդ օրը թագաւորը, որուն ա՛յնքան պէտք ունէին երկու առաջին կարգերը, որոնց միջնորդել։ Այս պահուս արքունիքին և երկու առաջին կարգերուն միջև թշնամութիւնները կը սկսէին մոռցուիլ արագօրէն բարերայոյլ այս ժողովրդային զօրութեան ի տես։ Թագաւորը, վերջապէս երեւնալով, երեք կարգերը հրաւիրեց բանակցութեանց վերսկսիլ իր կնքապահին ներկայութեամբ։ Երրորդ Կարգը, ի՛նչ որ ալ ըլլար իր յառաջդիմութեանց մասին, զորս դէպքին համեմատ կը դասէին, իր բաղձանքը չափաւոր միապետութենէ մը անդին չէր մղեր։ Լուի ԺԶ.ի գլխաւորներուն իրազեկ, անոր նկատմամբ յարգալից էր. մինչ որ ո՛և է սխալ ճամբով մը իր դասին ալ չուզելով մեկնել, պատասխանեց թէ ի յարգանս թագաւորին կը հաւանէր բանակցութեանց վերսկսումին, թէև ազնուականութեան յայտարարութիւններուն նայելով, կարելի է ապարդիւն նկատել զանոնք։ Այս պատասխանին կցեց ուղերձ մը՝ զոր իր երիցագոյն անդամին յանձնարարեց յանձնել թագաւորին։ Այս երիցագոյնն էր Պայիի, պարզուկ և առաքինի մարդ, հռչակաւոր և համեստ գիտնական, որ իր մասնաւենեակին լուռ աշխատութիւններէն մէկէն ի մէկ փոխադրուած էր քաղաքային պայքարներու մէջև։ Մեծ ժողովի մը նախագահելու ընտրուած, կը սարսափէր իր նոր գործէն, ինքզինքը անարժան կը նկատէր զայն վարելու, և պարտականութեամբ միայն ստանձնած էր զայն։ Բայց, յանկարծ ազատութեան վերացած, իրեն մէջ զգաց անակնկալ թափանցամտութիւն մը և անյողդողդութիւն մը, այնքան պայքարներու



ԲԱՑՈՒՄ ՆԱՀԱՆԳԱՑԻՆ ԺՈՂՈՎԻ

մէջեւ յարգել տուաւ ժողովին վեհութիւնը, և մեր ներկայացուցիչը հանդիսացաւ առաքինութեան և խելքի բովանդակ պատկառանքով:

Պայլի ամենամեծ դժուարութեամբ կրցաւ մինչեւ թագաւորին ժամանել: Երբ իր նորս մացուելուն վրայ կը պնդէր, դրանիկները պատասխանեցին թէ նոյն իսկ վեհապետին միչտը չէր յարգեր, անդրանիկ արքայորդին մահուան առթիւ: Վերջապէս ներկայացուեցաւ, կրցաւ վարել ամէն նուաստացուցիչ ձեւակերպութիւն, և որքան հաստատամիտ նոյնքան ալ քաղաքավար եղաւ: Թագաւորը սիրով ընդունեց զայն, բայց առանց մտքը բանալու իր դիտումներուն վրայ:

Կառավարութիւնը, որոշած ըլլալով քանի մը զիջումներ ընել դրամ ճարելու համար, երեք կարգերուն ալ հակառակելով, կ՚ուզէր անոնց իրաւարարը ըլլալ, ազնուականներէն խլել անոնց դրամական առանձնաշնորհումները Երրորդ Կարգին օգնութեամբ, և Երրորդ Կարգին ալ փառասիրութիւնը կասեցնել ազնուականներուն միջոցաւ: Գալով ազնուականներուն, վարչութեան նեղութիւնները հոգ չընելով, իր ընելիք զիջումներուն վրայ մտածելով, կ՚ուզէր Ընդհանուր Ժողովին լուծումը

ձեռք բերել, և այսպէս անօգուտ դարձընել անոնց գումարումը։ Իսկ Համայնքային Ժողովը (Երրորդ Կարգը), զոր արքունիքը, կղերն ու ազնուականները չէին ուզեր ճանչնալ այդ տիտղոսով, և կ'անուանէին միշտ Երրորդ Կարգ, անդադար նոր ուժեր կը ստանար, և ամէն վտանգներու խիզախելու կազմ, չէր ուզեր փախցնել առիթ մը, որ թերևս ա՛լ անգամ մըն ալ չներկայանար։

Թագաւորին կողմէ պահանջուած բանակցութիւնները տեղի ունեցան։ Ազնուականութեան պատուիրակները ամէն տեսակ դժուարութիւններ յարուցին Երրորդ Կարգին առած Համայնքային Ժողով տիտղոսին վրայ, արձանագրութեանց ձևին և ստորագրութեան վրայ։ Վերջապէս վիճաբանութեան մասն և լռութեան վերածուեցան իրենց դէմ հանուած փաստերէն, երբ Նէքէր թագաւորին անունով հաշտութեան նոր միջոց մը առաջարկեց։ Իւրաքանչիւր կարգ անջատօրէն պիտի քննէր ձեռնհասութիւնները և պիտի հաղորդէր միւսներուն, դժուարութիւններ պատահած պարագային՝ պատուիրակներ պիտի տեղեկագրէին զանոնք իւրաքանչիւր խորհրդարանի, և եթէ երեք կարգերուն որոշումը համաձայն չըլլար, վերջին վճիռը թագաւորը պիտի արձակէր։ Այսպէս արքունիքը գժտութիւնը կը լուծէր ի նպաստ իրեն։ Բանակցութիւնները իսկոյն դադրեցուցուեցան կարգերուն համամտութիւնը ձեռք բերելու համար։ Կղերը առանց ո և է առարկութեան ընդունեց ծրագիրը։ Ազնուականութիւնը նախ և առաջ սիրով ընդունեց զայն, բայց, իր սովորական դրդիչներէն մղուելով, իր անդամներէն ամէնէն խելացիներուն կարծիքը մերժեց և փոփոխեց հաշտութեան ծրագիրը։ Ա՛յդ օրէն կը սկսին իր բոլոր դժբախտութիւնները։

Համայնքային Ժողովը, այս որոշումը իմանալով, իրենց կողմէ կարծիք յայտնելու համար կը սպասէին որ իրենց հաղորդուէր ան. բայց կղերը, իր սովորական խորամանկութեամբ, ուզելով ժողովուրդին հետ դէմ առ դէմ բերել զայն, պատուիրակութիւն մը ղրկեց անոր՝ յորդորելու որ իրեն հետ Համայնքային Ժողովն ալ զբաղի ժողովուրդին ցաւերով, որոնք օր ըստ օրէ կը մեծնային, և փութան միասին միջոցներ փնտռել պարէններուն սակաւութեան և սղութեան դէմ։ Համայնքային Ժողովը, որ ժողովրդային դժգոհութեան պիտի ենթարկուէր եթէ այս տեսակ առաջարկութեան մը անտարբեր երևնար, նենգութեան դէմ նենգութիւն բանեցուց, և պատասխանեց թէ միևնոյն պարտականութեամբ տոգորուած՝ կղերին կը սպասէ մեծ սրահին մէջ իրեն հետ այս կարևոր նիւթին վրայ զբաղելու համար։ Այն միջոցին ազնուականութեան ներկայացուցիչները եկան և համայնքային ժողովին հաղորդեցին հանդիսաւորապէս իրենց որոշումը. — Ազնուականութիւնը կ'ընդունէր — կ'ըսէին — հաշտութեան յատակագիծը, բայց պնդելով անջատ ճշդումին վրայ, և ընդհանուր ժողովին և թագաւորին վերին իրաւասութեան վերապահելով այն դժուարութիւնները միայն որոնք կրնային ծագիլ ամբողջ գաւառի մը բոլոր պատուիրակութեանց կողմէ։

Այս որոշումը վերջ տուաւ համայնքային ժողովին բոլոր չփոթութեանց։ Պարտաւորուած կա՛մ տեղի տալու, կամ առաջին երկու կարգերուն և գահուն դէմ միամինակ պատերազմ հրչակելու եթէ հաշտութեան յատակագիծը ընդունէր, կարծիք յայտնելէ արգիլուեցաւ, յատակագիծը ծանր փոփոխութիւններով միայն ընդունուած ըլլալով։ Անջատ ճշդումին վրայ տեղի տալը իրաւ է որ կարգ գլուխ քուէի վրայ տեղի տալ չէր, բայց մէկ անգամ տկարանալը միշտ տկարանալ էր։ Պէտք էր կա՛մ հպատակիլ գրեթէ աննշան դերի մը, դրամ տալ իշխանութեան, և չստանալ ջնջելով քանի մը կեղծումներ երբ Պե-

տութիւնը վերականգնելու հնարաւորութիւնը կը տեսնուէր, կամ զօրաւոր որոշում մը տալ և բուռն կերպով ձեռք ձգել օրէնսդիր իշխանութենէն մաս մը։ Յեղափոխական առաջին գործը ա՛յս էր. բայց Ժողովը չվարանեցաւ։ Հետևաբար, բոլոր արձանագրութիւններուն ստորագրուելէն, բանակցութիւններուն վերջանալէն ետք, Միրաբօ ոտք կ'ելլէ. «Մէկ մասին կողմէ մերժուած ո և է հաշտութեան ծրագիր չի կրնար այլևս քննուիլ միւսին կողմէ։ Ամիս մը անցաւ, պէտք է վճռական որոշում մը տալ. Բարիզէն երեսփոխան մը կարևոր առաջարկ մը ունի ընելիք, մտիկ ընե՛նք։» Միրաբօ խորհրդակցութիւնը բանալով իր խիզախութեան շնորհիւ, բեմին վրայ հանեց Սիյեէսը, լայնախոհ, կանոնական միտք մը, իր հետևութիւններուն մէջ խստապահանջ։ Սիյեէս քանի մը խօսքով կը յիշեցնէ և կը պատճառաբանէ համայնքային ժողովին վարմունքը։ Սպասեց և ականջ կախեց բոլոր առաջարկուած հաշտութիւններուն. իր երկարատև զիջումը ապարդիւն եղաւ. չի կրնար այլ ևս երկար յապաղիլ առանց թերանալու իր պաշտօնին. հետևաբար վերջին հրաւէր մը կ'ուղղէ միւս երկու կարգերուն, որպէսզի իրեն միանան ձգումը սկսելու համար։ Այս կարուկ կերպով պատճառաբանուած առաջարկութիւնը (*) խանդավառութեամբ ըն-

(*) Հոս հարկ կը համարիմ մէջ բերել այն շարժառիթները՝ որոնց վրայ Համայնքային Ժողովը հիմնեց իր տալիք որոշումը։ Յեղափոխութիւնը սկզբնաւորող այս առաջին գործը շատ կարևոր ըլլալով, անհրաժեշտ է արդարացնել անոր ստիպողականութիւնը, և կարծեմ ասիկա ամենէն աւելի լաւ կերպով կարելի է՝ մէջ բերելով Համայնքային Ժողովին վճիռը կանխող «նկատելով»ները։ Այս նկատելումները, ինչպէս նաև վճիռը, կը վերաբերին Սիյեէս վանականին.

«Համայնքային Ժողովը, Թագաւորին Գ. Գ. պատուիրակներուն կողմէ առաջարկուած հաշտութեան նախագիծին վրայ խորհրդակցելով, պարտք համարեցաւ միանգամայն նկատողութեան առնել նոյն նախագիծին վրայ ազնուականութեան Գ. Գ. պատուիրակներուն փութով տուած վճիռը։

«Տեսաւ որ ազնուականութեան Գ. Գ. պատուիրակները, հակառակ կանխագեկոյց համակերպութեան, կը պնդեն նախկին փոփոխութեան մը վրայ, որ գրեթէ բոլորովին յետս կոչում կ'ընէ նոյն կանխազեկոյց համակերպութեան, և թէ այսպէս իրենց վճիռը, այս մասին, չի կրնար իբրև դրական մերժում մը նկատուիլ։

«Այս նկատումով, և նկատելով որ Պարոնայք ազնուականք ձեռնթափ չեն եղած իրենց նախորդ խորհրդակցութիւններէն, որոնք գումարումի ամէն ծրագրի հակառակ են, Համայնքային Ժողովին երեսփոխանները կը խորհին թէ բացարձակապէս անօգուտ է այսուհետև զբաղիլ միջոցի մը վրայ, որ չի կրնար այլևս հաշտական կոչուիլ՝ հաշտելի մասերէն մէկուն կողմէ մերժուած ըլլալուն պէս։

«Իրաց այս վիճակին մէջ, որ Համայնքային Ժողովին երեսփոխանները կրկին կը դնէ իրենց առաջին դիրքին մէջ, Ժողովը կը դատէ որ այլ ևս չի կրնար անգործութեամբ սպասել առանձնաշնորհեալ դասակարգերուն, առանց յանցապարտ նկատուելու հանդէպ Ազգին, որ անշուշտ իրաւունք ունի իրմէն սպասելու որ լաւագոյն կերպով գործածէ իր ժամանակը։

«Կը դատէ թէ Ազգին ներկայացուցիչներուն համար, ինչ որ ալ ըլլայ իրենց ներկայացուցած քաղաքացիներուն դասակարգը, ստիպողական պարտակա-

դունուեցաւ․ ուղուեցաւ. Նոյն իսկ երկու կարգերը պարտադրել մէկ ժամէն գումարուելու նիստ Յունիս 10ին։ Սակայն պայմանաժամը երկարաձգուեցաւ։ Երկրորդ օրը, հինգշաբթի, կրօնական հանդիսութեանց նուիրուած օր մը ըլլալով, ուրբաթի յետաձգուեցաւ։ Ուր-

նութիւն մըն է, առանց նոր յապաղումի գործօն ժողովի մը կազմակերպուիլ՝ իրենց պաշտօնին առարկային սկսելու և զայն ի գլուխ հանելու կարող։

«Ժողովը, պաշտօն կը յանձնէ հաշտական կոչուած զանազան յանձնակցութեանց հետեւող Գ. Գ. պատուիրակներուն՝ գրել առանձնաշնորհեայներուն դասակարգերը ուղիղ սկզբունքներու բերելու համար Համայնքային Ժողովի երեսփոխաններուն երկար և ունայն ջանքերուն պատմութիւնը, ինք կը ստանձնէ յայտագրել ա՛յն շարժառիթները՝ որոնք հարկադրեցին զինքը սպասողական վիճակէ գործի վիճակի անցնելու, վերջապէս, կը մնայ որ այս պատմութիւնն ու այս շարժառիթները տպագրուին ներկայ խորհրդակցութեան գլուխը։

«Բայց քանի որ կարելի չէ գործօն ժողովի մը կազմակերպուիլ առանց նախապէս զայն կազմելու իրաւունք ունեցողները ճանչնալու, այսինքն առանց վաւերացնելու զանոնք որոնք իբրեւ ազգին ներկայացուցիչները քուէարկելու իրաւունք ունին, Համայնքային Ժողովին միեւնոյն երեսփոխանները պարտք կը համարին վերջին փորձ մըն ալ ընել Պարոն Կղերին և Պարոն Ազնուականութեան մօտ, որոնք սակայն ցարդ մերժեցին ճշդել այս գիրենք։

«Նա եւս, Ժողովը իր շահուն տեսակէտով հաստատելով երեսփոխաններու այս երկու դասակարգերուն մերժումը, ա՛յն պարագային՝ երբ անոնք յամառին անծանօթ մնալ, անհրաժեշտ կը համարի վերջին հրաւէր մըն ալ ընել իրենց և-

բաթի վերջին հրաւէրը հաղորդուեցաւ, երկու կարգերը կը պատասխանեն թէ պիտի խորհրդակցին. Թագաւորն ալ կը պատասխանէ թէ պիտի իմացնէ իր դիտաւորութիւնը։ Անդին անուանակոչումը կը սկսի, առաջին օրը երեք թեմական ժողովրդապետներ կը ներ-

րեփոխաններու միջոցաւ, որոնք պիտի կարդան անոնց առջեւ ներկայ որոշումը, և առոր մէկ պատճէնը անոնց պիտի թողուն հետեւեալ խօսքերով.

«Պարոննե՛ր, Ֆրանսայի Համայնքային Ժողովին երեսփոխաններուն կողմէ պաշտօն ունինք իմացնելու ձեզի թէ անոնք չեն կրնար այսուհետեւ յապաղիլ Ազգին բոլոր ներկայացուցիչներուն հարկադրուած պարտքը գուհայներուն մէջ։ Ճիշդ ժամանակն է որ այդ ախտաւոր առանձնաշնորհները յայտնի ըլլան իրենց ձեռնհասութեանց միաժողով ճշդումով, և վերջապէս սկսին ղեկավարել ազգային շահով, որ միայն, բոլոր մասնաւոր շահերէն դուրս, կը ներկայանայ իբրեւ մեծ նպատակը, որուն պէտք է ձգտին բոլոր երեսփոխանները հասարակաց ջանքով։ Հետեւաբար, և գործի սկսելու համար Ազգին ներկայացուցիչներուն պարտաւորութեան առջեւ, Համայնքային Ժողովին երեսփոխանները կրկին կ'աղաչեն ձեզի, Պարոննե՛ր, և իրենց պարտքը կը հարկադրէ զիրենք, թէ՛ անհատապար և թէ հաւաքաբար, վերջին թախանձանք մըն ալ ընել որ ժողովարան հրամմէք ձեռնհասութեան ընդհանուր ճշդումը հաստատելու անոնց նման, աջակցելու և համակերպելու նոյն գործողութեան։ Միաժամանակ պաշտօն ունինք ազդարարելու ձեզի թէ մէկ ժամէն պիտի կատարուի ժողովի հրաւիրուած բոլոր անդամներուն ընդհանուր անուանակոչումը, յետոյ անմիջապէս ճշդումի պիտի ձեռնարկուի, և չներկայացողները անձեռնհաս պիտի նկատուին։»

կայանան, և ծափերով կ'ընդունուին. երկրորդ օրը վեց. երրորդ և չորրորդ օրը տասը, որոնց մէջ կը գտնուէր Կրէկուար վանականը։

Անուանակոչումին և ձեռնհասութեանց ճշդումին առթիւ, ծանր վէճ մը ծագեցաւ Ժողովին անունին վրայ։ Միրապօ առաջարկեց Ֆրանսական ժողովրդեան ներկայացուցիչք անունը. Մունիէ՝ ի բացակայութեան փոքրամասնութեան խորհրդակցող մեծամասնութիւն, երեսփոխան Լըկրան՝ Ազգային Ժողով։ Այս վերջինը ընդունուեցաւ բաւական երկար վիճաբանութենէ մը վերջ որ տեւեց մինչև Յունիս 16ի գիշերը։ Կէս գիշերէ վերջ ժամը մէկն էր, և խնդիր կ'ըլլար անմիջապէս իսկ դիւան կազմելով գործի սկսի՞լ թէ վաղուան յետաձգել։ Երեսփոխաններուն մէկ մասը կ'ուզէր որ վայրկեան մը չկորսուի, առնալու համար օրինական նկարագիր մը որ պարտադրուի արքունիքին։ Փոքր թիւ մը, փափաքելով Ժողովին աշխատութիւնները ճշդել, կը զայրանար և մոլեգին աղաղակներ կ'արձակէր։ Երկու կուսակցութիւնները, երկար սեղանի մը երկու կողմը շարուած, փոխադարձաբար իրարու կը սպառնային. Պայեի, կեդրոնը կեցած, ոմանց կողմէ կը հրաւիրուէր Ժողովը դադրեցնելու, ուրիշներէն ալ՝ գործի սկսելու ծրագիրը քուէի դնելու։ Աղաղակներու և նախատինքներու միջև անդրդուած, մէկ ժամէ աւելի մնաց լուռ և անշարժ։ Երկինք փոթորկալից էր, հովը ուժգնօրէն կը փչէր սրահին մէջ, և խառնիճաղանճը կ'աւելցնէր։ Վերջապէս կատաղիները քաշուեցան. այն ատեն Պայեի, խօսքը ուղղելով Ժողովին, որ զայն վրդովողներուն նահանջովը հանդարտած էր, յորդորեց երկրորդ օրուան յետաձգել առաջարկուած կարեւոր գործը։ Ժողովը ընդունեց իր կարծիքը, և քաշուեցաւ դրուատելով իր աննկուն ոգին և իմաստութիւնը։

Երկրորդ օրը, Յունիս 17, առաջարկութիւնը խորհրդակցութեան դրուեցաւ և 90ի դէմ 491 ձայնի մեծամասնութեամբ, Համայնքային Ժողովը օրինադրուեցաւ և կազմուեցաւ Ազգային Ժողով։ Սիյեէս՝ որուն յանձնուեցաւ նաև այս որոշումին պատճառաբանութիւնը, ըրաւ զայն իր սովորական ճշգրտապահանջութեամբ։

«Ժողովը, ձեռնհասութեանց ճշդումէն վերջ խորհրդակցելով, կ'ընդունի թէ ինք արդէն բաղկացած է Ազգին գոնէ հարիւրին իննսունվեցին կողմէ ուղղակի ղրկուած ներկայացուցիչներէն։ Պատգամաւորական այսպիսի զանգուած մը չէր կրնար անգործ մնալ քանի մը նահանգներու կամ քաղաքացիի քանի մը դասակարգերու երեսփոխաններուն բացակայութեան պատճառաւ. որովհետև անուանով կանչուած բացակաները չեն կրնար արգելք ըլլալ ներկաներուն որ ի գործ դնեն լիովին իրենց իրաւունքները, մանաւանդ երբ այդ իրաւունքներուն գործադրութիւնը հրամայողական և հարկեցուցիչ պարտաւորութիւն մըն է։

«Նաև, քանի որ ինքնութիւնը ճշդուած ներկայացուցիչներուն անկ է ձևել ազգային բաղձանքին, և քանի որ բոլոր ճշդուած ներկայացուցիչները պէտք է այս Ժողովին մէջ գտնուին, անհրաժեշտ է եզրակացնել թէ իրեն և միայն իրեն կը վերաբերի ազգին ընդհանուր կամքին թարգման և ներկայացուցիչ ըլլալ։

«Գահուն և Ժողովին միջև չի կրնար գոյութիւն ունենալ ոև է վեթօ, ոև է ժխտական իշխանութիւն։

«Ուրեմն Ժողովը կը յայտարարէ թէ ազգային վերածնութեան ընդհանրական գործը կրնայ և պէտք է սկսիլ անյապաղ ներկայ երեսփոխաններուն կողմէ, և թէ անոնք պարտաւոր են հետևիլ անոր անընդհատաբար ինչպէս նաև անխափան։

«Ազգային ժողով անուանադրութիւնը միակն է որ ժողովին կը պատշաճի իրաց արդի վիճակին մէջ, ա՛յն պատճառաւ որ զայն բաղկացնող անդամները օրինաւորապէս և հրապարակաւ ճանչցուած ու ճշդուած միակ ներկայացուցիչներն են, և կամ ա՛յն պատճառաւ որ անոնք ղրկուած են ազգին գրեթէ ամբողջութեան կողմէ, կամ վերջապէս ա՛յն պատճառաւ որ ներկայացուցչութիւնը ըլլալով մի և անբաժանելի, երեսփոխաններէն ո՛չ մէկը, ո՛ր կարգին կամ ո՛ր դասակարգին ալ ընտրուած ըլլայ, իրաւունք չունի իր պաշտօնը ի գործ դնելու այս ժողովէն անջատաբար։

«Ժողովը նաև անյոյս պիտի չըլլայ իր ծոցին մէջ հաւաքելու այսօր բացակայ բոլոր երեսփոխանները. պիտի չդադրի զանոնք կոչելէ կատարելու Ընդհանուր ժողովին գումարման աջակցելու համար իրենց հարկադրուած պարտականութիւնը։ Որ վայրկեանին որ բացակայ երեսփոխանները գան ներկայանան նստաշրջանին մէջ որ ահա կը բացուի, ժողովս կանխաւ կը յայտարարէ թէ պիտի փութայ ընդունիլ զանոնք, և, ձեռնհասութեանց ճշդումէն վերջ, անոնց հետ մասնակցիլ և շարունակել այն մեծ աշխատութիւնները, որոնք Ֆրանսայի վերածնութիւնը պիտի յանձանձեն։»

Այս վճռէն անմիջապէս վերջ, ժողովը, ուզելով իր զօրութեան մէկ ապացոյցը տալ և միանգամայն յայտնի ընել թէ ինք նպատակ չունէր վարչութեան ընթացքը կասեցնելու, օրինաւորեց տուրքերու գանձումը, թէև առանց ազգային հաւանութեան հաստատուած։ Իր անջատումին իբրև կանխարգել միջոց, յարեց թէ տուրքերը պիտի դադրին գանձուելէ ա՛յն օրէն ուր ինք անջատ ըլլար. ասկէց զատ սնանկութիւնը նախատեսելով, զոր արքայական իշխանութիւնը կրնար իբրև հնարք մը գործածել իմաստական դըժուարութեանց վերջ տալու և ազգային օժանդակութեան պէտք չունենալու համար, խոհեմութիւն և պարտք համարեցաւ պետական առնելիքաւորները ֆրանսական ուղղամտութեան պաշտպանութեան տակ դնել։ Վերջապէս ծանոյց թէ անմիջապէս պիտի սկսի զբաղիլ ուտելիքներու նուազութեան և հանրային չքաւորութեան պատճառներով։

Քաջութիւն միանգամայն ճարպիկութիւն ցոյց տուող այս անօրինութիւնները խոր տպաւորութիւն մը առաջ բերին։ Արքունիքն ու առաջին երկու կարգերը ահաբեկեցան ա՛յսքան յանդգնութեան ու կորովին վրայ։

Այս միջոցին կղերը աղմկօրէն կը խորհրդակցէր թէ հա՞րկ էր Համայնքային ժողովին միանալ։ Ամբոխը դուրսը կը սպասէր իր խորհրդակցութեան արդիւնքին. վերջապէս թեմական ժողովրդապետները յաղթանակ տարին, և իմացուեցաւ որ միացումը քուէարկուած էր 115ի դէմ 149 ձայներու մեծամասնութեամբ։ Միացումին համար քուէարկողները ցնծալից աղաղակներով ընդունուեցան. միւսները նախատակոծ և հալածական եղան ժողովուրդէն։

Այս պահը արքունիքին և ազնուականութեան հաշտութիւնը առաջ պիտի բերէր։ Երկուքին համար ալ վտանգը հաւասար էր։ Վերջին որոշումը կը մնար թէ՛ թագաւորին և թէ առաջին երկու կարգերուն, որոնց պէտք չունենալը կը յայտարարէր Համայնքային ժողովը։ Իսկոյն թագաւորին ոտքը նետուող նետուողի. Լիւքսանպուրի դուքսը, կարտինալ Լա Ռօշֆուքօ, Բարիզի արքեպիսկոպոսը, պաղատեցան անոր զսպելու Երրորդ Կարգին ամբարտաւանութիւնը և պաշտպանելու իրենց վտանգուած իրաւունքները։ Աւագաժողովը առաջարկեց անոր

հրաժարիլ Ընդհանուր Ժողովէն, խոստանալով հաւանիլ բոլոր տուրքերուն։ Թագաւորը շրջապատուեցաւ իշխաններէն և Թագուհիէն. ասիկա աւելի խիստ էր իր տկարութեան համար. վերջապէս քշեցին տարին զայն Մառլի, անորմէ խիստ անօրինութիւն մը խլելու համար։

Նախարար Նէքէր, որ ժողովրդային դատին կապուած էր, կը բաւականանար ապարդիւն դիտողութիւններով, զորս Թագաւորը խրատացի կը գտնէր երբ իր միտքը ազատ կը ձգէին, բայց արքունիքը կը ջնջէր ընդ փայլ ջնջելու անոնց արդիւնքը։ Արքայական հեղինակութեան միջամտութիւնը անհրաժեշտ տեսածին պէս, ծրագիր մը կազմեց որ խիստ յանդուգն երեւցաւ բաղդատմամբ իր քաջութեան. կ'ուզէր որ վեհապետը, արքայական նիստի մը մէջ, հրամայէ երեք կարգերուն այ միացումը, այլ միեւնոյն ընդհանուր շահեկանութիւն ունեցող բոլոր անօրինութիւններուն համար, որ իրեն վերապահէ Ընդհանուր Ժողովին կողմէ տրուած բոլոր որոշումներուն վաւերացումը, որ կանխաւ մերժէ չափաւոր միապետութեան դէմ ոևէ կարգադրութիւն, ինչպէս միակ ժողովի մը հաստատութիւն, որ վերջապէս խառնական աւանձնաշնորհումներու ջնջումը, քաղաքային և զինուորական, ևն. պաշտօններու մէջ բոլոր Ֆրանսացիներուն հաւասար ընդունելը։ Նէքէր, որ այսպիսի յատակագիծի մը համար ժամանակը կանխելու ոյժը չէր ունեցած, ա՛լ աւելի չունէր անոր գործադրութիւնը պաշտպանելու ոյժը։

Նախարարական Խորհուրդը Թագաւորին ետեւէն գացած էր Մառլի։ Հոն, Նէքէրի ծրագիրը, նախապէս ընդունուած էր, կրկին վիճաբանութեան ենթարկուեցաւ։ Յանկարծ տոմս մը յանձնուեցաւ Թագաւորին. Խորհուրդը դադրեցաւ, վերսկսաւ, և վաղուան յետաձգուեցաւ, հակառակ արագ ստիպողութեան պէտքին։ Յաջորդ օրը նոր անդամներ աւելցան Խորհուրդին վրայ. ասոնք կարգէն էին Թագաւորին եղբայրները։ Նէքէրի ծրագիրը բարեփոխուեցաւ։ Նախարարը կը դիմադրէ, քանի մը զիջումներ կ'ընէ, բայց պարտուած կը տեսնէ զինքը և կը վերադառնայ Վէրսայլ։ Մանկլաւիկ մը երեք անգամ կուգայ իրեն կը յանձնէ նոր բարեփոխումներ կրող տոմսեր. իր յատակագիծը բոլորովին կ'այլակերպուի, և արքայական նիստը կ'որոշուի Յունիս 22ին։

Դեռ 20ն էր. և արդէն իսկ կը գոցեն Ընդհանուր Ժողովին սրահը, պատրուակելով թէ Թագաւորին ներկայութեան համար անհրաժեշտ պատրաստութիւններ կան ընելիք։ Այս պատրաստութիւնները կարելի էր կէս օրուան մէջ ընել. բայց կլէրը օր մը առաջ որոշած էր համայնքային ժողովին միանալ, և անոր այս միացումը կ'ուզուէր խափանել։ Թագաւորին մէկ հրամանը իսկոյն նիստերը կը դադրեցնէ մինչեւ 22։ Պայլի, Ժողովին կամքը տեղը տանելու պարտաւոր զգալով ինքզինքը, սրահին դուռը կ'երթայ։ Պահնորդներ անոր բոլորտիքը կ'առնէին մուտքը արգիլելու հրամանով, պահակ սպան յարգանքով ընդունեց Պայլին, և արտօնեց զայն բակ մը մտնել բողոքագիր մը խմբագրելու համար։ Քանի մը երիտասարդ և եռանդուն երեսփոխաններ կ'ուզէին բռնի ներս մտնել. Պայլի կը վազէ, զանոնք կը հանդարտեցնէ և կը տանի իրեն հետ, չվտանգելու համար դիրքը վեհանձն սպային՝ որ այնքան չափաւորութեամբ կը գործադրէր իշխանութեան հրամանները։ Աղմկալից խումբեր կը կազմուէին, կը պնդեն գումարուիլ. ոմանք կը խօսին Թագաւորին պատուհաններուն տակ իսկ նիստ գումարելու վրայ, ուրիշներ կ'առաջարկեն Մականախաղի սրահը, իսկոյն հոն կ'երթան, տէրը ուրախութեամբ կը յանձնէ զայն։

Այս սրահը ընդարձակ էր, բայց անոր պատերը մութ և մերկ էին. լուսաւորութիւն չկար։ Թիկնաթոռ մը կը ճարեն Նախագահին, որ կը մերժէ և կ'ուզէ ոտքի վրայ մնալ ժողովին հետ. Նստարան մը դիւան կը ծառայէ. երկու Երեսփոխան դուռը կեցած են իբրև պահապան, և քիչ մը վերջ ատոնց տեղը կ'անցնին սրահին սիրող կողմը դրկուած մարդիկ։ Ժողովուրդը կը վազէ խմբովին, և խորհրդակցութիւնը կը սկսի։ Ամէն կողմէ կը բողոքուի նիստերու ընդհատումին դէմ, և զանազան միջոցներ կ'առաջարկուին ազգային կրկնութիւնը արգիլելու համար։ Յուզումը կ'աւելնայ, և ծայրայեղ կուսակցութիւնները կը սկսին երեւակայական ձեռնարկներու տալ զիրենք։ Կ'առաջարկուի Բարիզ երթալ. այս կարծիքը, որ եռանդուն կերպով ընդունուեցաւ, բուռն վիճաբանութեան կ'ենթարկուի. արդէն իսկ կը խօսուի խմբովին և հետիոտն հոն երթալու վրայ։ Պայլի կ'ահաբեկի ճամբան ժողովին գլխուն գալիք բռնութիւններ միաքը բերելով. մինչ որ հեղձուածի մը կասկածանքով կը հակառակի այս ծրագրին։ Այն ատեն Մունիէ երեսփոխաններուն կ'առաջարկէ երդումով խօսք տալ իրարմէ չբաժնուիլ Սահմանադրութեան մը հաստատութենէն առաջ։ Ցնծութեամբ կ'ընդունուի այս առաջարկութիւնը, և խելոյն կը խմբագրուի երդումին բանաձևը։ Պայլի առաջին անգամ ինք խօսք տալու պատիւը կը խնդրէ, և սա՛պէս խմբագրուած բանաձևը կը կարդայ. «Հանդիսաւոր երդում կուտանք չբաժնուիլ բնաւ իրարմէ, հաւաքուիլ ամէնուրեք ուր պարագաները պահանջեն, մինչև որ թագաւորութեան Սահմանադրութիւնը հաստատուի և ամրանայ ամուր հիմերու վրայ։» Բարձր և հասկնալի ձայնով արտասանուած այս բանաձևը թնդաց մինչև դուրսը։ Իսկոյն բոլոր բերանները կ'արտաբերեն երդումը. բոլոր բազուկները կ'երկարին դէպ ի Պայլի, որ, յամեկայն և անշարժ, կ'ընդունի ազգային իրաւունքներուն գործադրութիւնը օրէնքներով ապահովելու այս հանդիսաւոր ուխտադրութիւնը։ Ամբոխը խելոյն կ'արձակէ Կեցցէ՜ ժողովը, կեցցէ՜ թագաւորը աղաղակներ, իբր ապացուցանելու համար թէ առանց բարկութեան և առանց ատելութեան, այլ ի պարտաւորութենէ, ժողովը կը վերադառնայ ինչ որ իրաւունքն է իրեն։ Երեսփոխանները յետոյ կը պատրաստուին ստորագրելու իրենց ըրած յայտարարութիւնը։ Միայն մէկը, Մարթէն տ'Օք իրեն անունին կցեց ընդդիմադիր բառը։ Անոր շուրջ մեծ իրարանցում մը տեղի ունեցաւ։ Պայլի, իր ձայնը լսելի ընելու համար, սեղանի մը վրայ ելաւ, չափաւորութեամբ խօսք ուղղեց երեսփոխանին, և անոր ներկայացուց թէ իրաւունք ունի իր ստորագրութիւնը մերժելու, բայց ո՛չ ընդդիմադիր կուսակցութիւն մը կազմելու։ Երեսփոխանը կը յամառի, և ժողովը, ի յարգանս անոր ազատութեան, կը համբերէ բաւական և կը թողու զայն արձանագրութեան մէջ։

Անկախութեան այս նոր գործը յուզեց ազնուականութեան երկիւղը, և յաջորդ օրը ազնուականք գացին իրենց բողոքը դնել թագաւորին ոտքը, իրենք զիրենք կերպով մը արդարացնել հաշտութեան ծրագրին մէջ իրենց ըրած սեղմումներուն վրայ, և անոր աջակցութիւնը խնդրել։ Ազնուականներուն փոքրամասնութիւնը բողոքեց այս ընթացքին դէմ, իրաւամբ պնդելով թէ այլ ևս ժամանակը չէր արքայական միջնորդութիւն խնդրելու, զայն անպատեհ կերպով մերժելէ վերջ։ Այս փոքրամասնութիւնը, որուն ձայնը բնաւ լսելի չեղաւ, քառասուներեօթը անդամներէ կը բաղկանար. անոր մէջ կային զինուորականներ, լաւամիտ դատաւորներ. Լիանգուրի դուքսը, մեծանձն բարեկամ էր թագաւորին և ազա-



Մ Ի Ռ Ա Պ Օ

ութեան. Լա Ռօշֆուքօի դուքսը, յարատեւ առաքինութեամբ և մեծամեծ հմտութիւններով նշանաւոր. Լալի-Թօլանտալ, արդէն հռչակաւոր իր հօրը տառապանքներով և իր պերճախօս բողոքներով. Գլէռմօն-Թօնէռ, ճարտարխօսութեան տաղանդով անուանի. Լամէթ եղբայրները, երիտասարդ գնդապետներ, իրենց խելացութեամբ և արիութեամբ հանրածանօթ. Տիւբօռ, արդէն իսկ յիշատակուած իր ընդարձակ կարողութեամբ և անյողդողդ նկարագիրովը. վերջապէս մարգիզ տը Լա Ֆայէթ, ամերիկեան ազատութեան ախոյեան, ֆրանսական տաքարիւնին միացնելով Ուաշինկթընի սառնութիւնն ու պարզութիւնը։

Մեքենայութիւնները կը դանդաղեցընէին արքունիքին բոլոր գործողութիւնները։ Նախապէս երկուշաբթի 22ին որոշուած նիստը 23ին յետաձգուեցաւ։ Շատ ուշ նախարարաց խորհուրդէն վերջ Պայեիի գրուած տոմս մը կը ծանուցանէր անոր այս յետաձգումը, և կ՚ապա-

ցուցանէր միտքերու մէջ տիրող յուզումը։ Նէքէր միայն դրած էր նիստին չերթալ, իր ներկայութեամբը չարտօնելու համար այնպիսի ծրագիրներ՝ որոնց ինք համամիտ չէր։

Տկար հեղինակութեան սովորական հնարքը եղող փոքր միջոցները գործածուեցան 22 երկուշաբթի նիստը խափանելու համար. իշխանազունները բռնել տուին Մականախաղի սրահը՝ այն օրը հոն խաղալու համար։ Ժողովը գնաց Սէն-Լուի եկեղեցին, ուր ընդունեց կղերին մեծամասնութիւնը, որուն գլուխը կը գտնուէր Վիէնի արքեպիսկոպոսը։ Ամենամեծ շուքով տեղի ունեցած այս գումարումը ամենաբուռն խանդութիւն գրգռեց։ Կղերը կ'ըսէր թէ կը հպատակի ձեռնհասութեան միաձագով ճշդումին։

Յաջորդ օրը, 23, արքայական նիստին համար որոշուած օրն էր։ Համայնքային ժողովին երեսփոխանները պարտաւոր էին մտնել կողմնակի դուռնէ մը, ազնուականութեան և կղերին վերապահուածէն տարբեր։ Թէև բռնութիւն չէին բանեցներ, բայց ամէն տեսակ նուաստացումներ չէին խնայուեր Երրորդ Կարգին համար։ Անձրևին տակ երկար սպասեցին. նախագահը, այդ դուռը գոցելու պարտաւորուած, որ չէր բացուեր, քանիցս զարկաւ. իրեն պատասխանուեցաւ թէ ժամանակը չէր։ Երեսփոխանները մեկնելու վրայ էին, երբ Պայեի անգամ մըն ալ զարկաւ, դուռը բացուեցաւ վերջապէս, երեսփոխանները ներս մտան, և երկու առաջին կարգերը գտան իրենց աթոռներուն վրայ բազմած, զորս ուզած էին ապահովել՝ կանխաւ գրաւելով զանոնք։ Նիստը Մայիս 5ի նիստին պէս վեհաշուք և յուզիչ չէր զգացումներու և յոյսերու տեսակ մը գինովով։ Բազմաթիւ զօրականներ, թախծոտ լռութիւն մը կը տարբերէին զայն առաջին հանդիսաւորութենէն։ Համայնքային ժողովին երեսփոխանները որոշած էին խորունկ լռութիւն պահել։ Թագաւորը խօսք առաւ, և իր անկարութիւնը մատնեց իր նկարագրին համար չափազանց կորովի բացատրութիւններ գործածելով։ Իրեն յանդիմանութիւններ արտասանել և հրամաններ տալ կուտային։ Կը պատուիրէր կարգերու համեմատ բաժանում, կը բեկանէր Երրորդ Կարգին նախորդ որոշումները, խոստանալով վաւերացնել դրամական առանձնաշնորհումներու ջնջումը, երբ ստացողները հրաժարէին անոնցմէ։ Հաստատուն կը պահէր բոլոր աւատական իրաւունքները, շահաւէտ թէ պատուաւոր, իբրև անբռնաբարելի սեփականութիւններ. գումարումը չէր հրամայեր ընդհանրական օգտի խնդիրներու համար, այլ կը թողուր զայն առաջին երկու կարգերուն բարեացակամութեան։ Այսպէս հնազանդութեան կը բռնադատէր համայնքային ժողովը, և կը շատանար միայն յորդորներ կարդալով ազնուականութեան։ Կղերն ու ազնուականները յատկապէս իրենց վերաբերեալ բաներուն դատաւոր կը կարգէր, և ի վերջոյ կ'ըսէր որ եթէ նոր խոչընդոտներու հանդիպի, ինք մինակ պիտի նայէր իր ժողովուրդին բարիքին և ինքզինքը պիտի նկատէր իբրև միակ ներկայացուցիչը անոր։ Այս շեշտը, այս լեզուն խորապէս վիրաւորեցին միտքերը, ո՛չ թէ Թագաւորին դէմ, որ անկարութեամբ կը ներկայացնէր իրենը չեղած կիրքեր, այլ ազնուապետական դասակարգին դէմ, որուն գործիքը եղած էր ան։

Իր ճառէն անմիջապէս վերջ, հրամայեց որ ժողովը իսկոյն անջատուի։ Ազնուականները իրեն հետեւեցան, կղերի մէկ մասին հետ։ Եկեղեցական երեսփոխաններուն ամենամեծ մասը մնաց. համայնքային ժողովին երեսփոխանները, անշարժ, խորին լռութիւն մը կը պահէին։ Միրապօ, որ միշտ առաջ նետուողն էր, ոտքի կ'ելլէ. «Տեա՛րք,

բաւ, կը խոստովանիմ թէ ձեր քիչ մը առաջ մտիկ ըրածը կրնար հայրենիքին փրկութիւնը ըլլալ, եթէ բանապաշտութեան նուէրներ մինչև վտանգաւոր չըլլային...։ Զէնքերու հանդերձանք, ազգային սաճարին բանաբարութի՛ւն, առանկ բաներ պէտք են եղեր պատուիրելու համար ձեզի որ երջանիկ ըլլաք... Ո՞ւր են ազգին թշնամիները։ Կատիլինան մեր դուռը ափ առա՞ծ է։ Կը խընդրեմ որ ձեր պատկառանքով, ձեր օրէնսդրական զօրութեամբ զգեստաւորուած, ամփոփուիք ձեր երդումին կրօնքին մէջ. այդ երդումը ձեզի թոյլ չիտար անջատուիլ մինչև որ Սահմանադրութիւնը չհաստատէք։»

Մարքիզ տը Պուէզէ, արքայական արարողապետը, այն ատեն ներս կը մտնէ և խօսքը Պայիի ուղղելով կ'ըսէ. «Լսեցի՞ք Թագաւորին հրամանները.» և Պայեի կը պատասխանէ անոր. «Հիմակ Ժողովին հրամանները պիտի առնեմ։» Միռապօ առաջ անցնելով կը գոչէ. «Այո՛, պարոն, իմացանք Թագաւորին բերանը դրուած դիտաւորութիւնները. բայց դուք հոս ո՛չ ձայն ունիք, ո՛չ տեղ, ո՛չ խօսելու իրաւունք։ Սակայն ո և է յապաղումի առիթ չտալու համար, գացէք ըսէք ձեր տիրոջը թէ մենք հոս եկած ենք ժողովուրդին զօրութեամբ, և սուիններու զօրութեամբ միայն՝ մեզ ասկէց պիտի դուրս հանեն։» Տը Պուէզէ կը քաշուի։ Սիյէէս սա՛ խօսքերը կ'արտասանէ. «Այսօր ենք ինչ որ էինք երէկ. խորհրդակցի՛նք։» Ժողովը կ'ամփոփուի խորհրդակցելու համար իր նախորդ որոշումներուն պահպանութեան վրայ։ «Այս որոշումներէն առաջինը, ըսաւ Պառնավ, յայտարարեց թէ ինչ էք դուք. երկրորդը կանոնի տակ առաւ տուրքերը, որուն դուք միայն իրաւունք ունիք հաւանելու. երրորդն է ձեր պարտքը կատարելու երդումը։ Այս տնօրինութիւններէն ո՛չ մին արքայական վաւերացումի պէտք ունի։ Թագաւորը չի կրնար արգիլել ինչ որ իր հաւանութեան պէտք չունի։» Այդ պահուն գործաւորներ կուգան ատեանը վերցնելու, զինեալ զօրականներ սրահին մէջէն կ'անցնին, ուրիշներ դուրսէն կը պաշարեն, պահակներ մինչև իսկ դրան կը մօտենան։ Ժողովը առանց ընդհատուելու նստարաններուն վրայ կը մնայ և ձայները կը հաւաքէ. միաձայնութիւն կայ նախորդ բոլոր որոշումներուն պահպանութեան համար։ Բայց ասով չի լմննար. արքայանիստ քաղաքին ծոցին մէջ, արքունի ծառաներուն մէջանց, և ժամանակէ մը ի վեր ա՛յնքան ահարկու եղող ժողովուրդին օգնութենէն զուրկ, Ժողովը կրնար վտանգի ենթարկուած ըլլալ։ Միռապօ կրկին կ'երևայ բեմին վրայ և կ'առաջարկէ վճռել մէն մի երեսփոխանի անբռնաբարելիութիւնը։ Իսկոյն Ժողովը, վեհաչուք կամք մը միայն հանելով ուժին դէմ, անբռնաբարելի կը հռչակէ իր անդամներէն իւրաքանչիւրը, մատնիչ, վատ, և մահու պատիժի յանցաւոր կը յայտարարէ ո՛վ որ անոնց անձին ձեռք դպցնէ դաւելու մտօք։

Այդ միջոցին ազնուականութիւնը, որ Պետութիւնը փրկուած կը կարծէր Թագաւորին նախագահութեամբ կատարուած այն նիստին շնորհիւ, իր շնորհաւորութիւնները կը մատուցանէր վեհափառին՝ որ անոր գաղափարը ունեցած էր, և վեհափառէն ալ Թագուհիին։ Թագուհին, զաւակը թևերուն մէջ կրելով, զայն ցոյց տալով իր շատ փութկոտ ծառաներուն, կ'ընդունէր անոնց երդումները, և դժբախտաբար անձնատուր կ'ըլլար կոյր վստահութեան մը։ Սոյն այս վայրկեանին աղաղակներ լըսուեցան. ամէն ոք վազեց, և իմացուեցաւ որ ժողովուրդը խումբ կազմած, Նէքէրը կը շնորհաւորէր արքայական նիստին ներկայ չըլլալուն համար։ Սոսկումը իսկոյն ուրախութեան յաջորդեց. Թագաւորն ու Թագուհին

ցուցանէր միտքերու մէջ տիրող յուզումը։ Նէքէր միտքը դրած էր նիստին չերթալ, իր ներկայութեամբը չարտօնելու համար ա՛յնպիսի ծրագիրներ՝ որոնց ինք համամիտ չէր։

Տկար հեղինակութեան սովորական հնարքը եղող փոքր միջոցները գործածուեցան 22 երկուշաբթի նիստը խափանելու համար. իշխանազուններու բանել տուին Մանկանախաղի սրահը՝ այն օրը հոն խաղալու համար։ Ժողովը գնաց Սէն-Լուի եկեղեցին, ուր ընդունեց կղերին մեծամասնութիւնը, որուն գլուխը կը գտնուէր Վիէնի արքեպիսկոպոսը։ Ամենամեծ շուքով տեղի ունեցած այս գումարումը ամենաբուռն խանդութիւն գրգռեց։ Կղերը կ՚ըսէր թէ կը հպատակի ձեռնհասութեան միաժողով ճշդումին։

Յաջորդ օրը, 23, արքայական նիստին համար որոշուած օրն էր։ Համայնքային ժողովին երեսփոխանները պարտաւոր էին մտնել կողմնակի դուռնէ մը, ազնուականութեան և կղերին վերապահուածէն տարբեր։ Թէեւ բռնութիւն չէին բանեցներ, բայց ամէն տեսակ նուաստացումներ չէին խնայուեր Երրորդ Կարգին համար։ Անձրեւին տակ երկար ատեն սպասեցին. նախագահը, այդ դուռը զարնելու պարտաւորուած, որ չէր բացուեր, քանիցս զարկաւ. իրեն պատասխանուեցաւ թէ ժամանակը չէր։ Երեսփոխանները մեկնելու վրայ էին, երբ Պայեի անգամ մըն ալ զարկաւ, դուռը բացուեցաւ վերջապէս, երեսփոխանները ներս մտան, և երկու առաջին կարգերը գտան իրենց աթոռներուն վրայ բազմած, զորս ուզած էին ապահովել՝ կանխաւ գրաւելով զանոնք։ Նիստը Մայիս 5ի նիստին պէս վեհաշուք և յուզիչ չէր զգացումներու և յոյսերու տեսակ մը զեղումով։ Բազմաթիւ զօրականներ, թախծոտ լռութիւն մը կը տարբերէին զայն առաջին հանդիսաւորութենէն։ Համայնքային ժողովին երեսփոխանները որոշած էին խորունկ լռութիւն պահել։ Թագաւորը խօսք առաւ, և իր տկարութիւնը մատնեց իր նկարագրին համար չափազանց կորովի բացատրութիւններ գործածելով։ Իրեն յանդիմանութիւններ արտասանել և հրամաններ տալ կուտային։ Կը պատուիրէր կարգերու համեմատ բաժանում, կը բեկանէր Երրորդ Կարգին նախորդ որոշումները, խոստանալով վաւերացնել դրամական առանձնաշնորհումներու ջնջումը, երբ ստացողները հրաժարէին անոնցմէ։ Հաստատուն կը պահէր բոլոր աւատական իրաւունքները, շահաւէտ թէ պատուաւոր, իբրեւ անբռնաբարելի սեփականութիւններ. գումարումը չէր հրամայեր ընդհանրական օգտի խնդիրներու համար, այլ կը թողուր զայն առաջին երկու կարգերուն բարեացակամութեան։ Այսպէս հնազանդութեան կը բռնադատէր համայնքային ժողովը, և կը շատանար միայն յորդորներ կարդալով ազնուականութեան։ Կղերն ու ազնուականները յատկապէս իրենց վերաբերեալ բաներուն դատաւոր կը կարգէր, և ի վերջոյ կ՚ըսէր որ եթէ նոր խոչընդոտներու հանդիպի, ինք մինակ պիտի նայէր իր ժողովուրդին բարիքին և ինքզինքը պիտի նկատէր իբրեւ միակ ներկայացուցիչը անոր։ Այս շեշտը, այս լեզուն խորապէս զայրացուցին միտքերը, ո՛չ թէ թագաւորին դէմ, որ տկարութեամբ կը ներկայացնէր իրենը չեղած կիրքեր, այլ ազնուապետական դասակարգին դէմ, որուն գործիքը եղած էր ան։

Իր ճառէն անմիջապէս վերջ, հրամայեց որ ժողովը իսկոյն անջատուի։ Ազնուականները իրեն հետեւեցան, կղերին մէկ մասին հետ։ Եկեղեցական երեսփոխաններուն ամենամեծ մասը մնաց. համայնքային ժողովին երեսփոխանները, անշարժ, խորին լռութիւն մը կը պահէին։ Միրաբօ, որ միշտ առաջ նետուողն էր, ոտքի կ՚ելլէ. « Տեա՛րք,

ըսաւ, կը խոստովանիմ թէ ձեր քիչ մը առաջ մեկ ըրածը կրնար հայրենիքին փրկութիւնը ըլլալ, եթէ բանապետութեան նուէրները միշտ վտանգաւոր չըլլային...։ Զէնքերու հանդերձանք, ազգային տաճարին բանաբարութի՛ւն, ատանկ բաներ պէտք են եղեր պատուիրելու համար ձեզի որ երջանիկ ըլլաք... Ո՛ւր են ազգին թշնամիները։ Կատիլինան մեր դուռը ափ առա՛ծ է։ Կը խընդրեմ որ ձեր պատկառանքով, ձեր օրէնսդրական զօրութեամբ զգեստաւորուած, ամփոփուիք ձեր երդումին կլոնքին մէջ. այդ երդումը ձեզի թոյլ չիտար անջատուիլ մինչեւ որ Սահմանադրութիւնը չհաստատէք։»

Մարքիզ տը Պուէզէ, արքայական արարողապետը, այն ատեն ներս կը մտնէ և խօսքը Պայիի ուղղելով կ'ըսէ. «Լսեցի՛ք Թագաւորին հրամանները.» և Պայի կը պատասխանէ անոր. «Հիմակ Ժողովին հրամանները պիտի առնեմ։» Միրապօ առա՛ջ անցնելով կը գոչէ. «Այո՛, պարոն, իմացանք Թագաւորին բերանը դրուած դիտաւորութիւնները. բայց դուք հոս ո՛չ ձայն ունիք, ո՛չ տեղ, ո՛չ խօսելու իրաւունք։ Սակայն ո և է յապաղումի առիթ չտալու համար, գացէք ըսէք ձեր տիրոջը թէ մենք հոս եկած ենք ժողովուրդին զօրութեամբ, և սուիններու զօրութեամբ միայն մեզ ասկէց պիտի դուրս հանեն։» Տը Պուէզէ կը քաշուի։ Սիյէէս սա՛ խօսքերը կ'արտասանէ. «Այսօր ենք ինչ որ էինք երէկ. խորհրդակցի՛նք։» Ժողովը կ'ամփոփուի խորհրդակցելու համար իր նախորդ որոշումներուն պահպանութեան վրայ։ «Այս որոշումներէն առաջինը, ըսաւ Պառնավ, յայտարարեց թէ ի՛նչ էք դուք. երկրորդը կանոնի տակ առաւ տուրքերը, որուն դուք միայն իրաւունք ունիք հաւանելու. երրորդն է ձեր պարտքը կատարելու երդումը։ Այս տնօրինութիւններէն ո՛չ մին արքայական վաւերացումի պէտք ունի։ Թագաւորը չի կրնար արգիլել ի՛նչ որ իր հաւանութեան պէտք չունի։» Այդ պահուն գործաւորներ կուգան տախտերը վերցնելու, զինեալ զօրականներ սրահին մէջէն կ'անցնին, ուրիշներ դուրսէն կը պաշարեն, պահակներ մինչեւ իսկ դրան կը մօտենան։ Ժողովը առանց ընդհատուելու նստարաններուն վրայ կը մնայ և ձայները կը հաւաքէ. միաձայնութիւն կայ նախորդ բոլոր որոշումներուն պահպանութեան համար։ Բայց ասով չի լմննար. արքայանիստ քաղաքին ծոցին մէջ, արքունի ծառաներուն մէջտեղ, և ժամանակէ մը ի վեր ա՛յնքան ահարկու եղող ժողովուրդին օգնութենէն զուրկ, Ժողովը կրնար վտանգի ենթարկուած ըլլալ։ Միրապօ կրկին կ'երեւայ բեմին վրայ և կ'առաջարկէ վճռել մէն մի երեսփոխանի անբռնաբարելիութիւնը։ Իսկոյն Ժողովը, վեհաշուք կամք մը միայն հանելով ուժին դէմ, անբռնաբարելի կը հռչակէ իր անդամներէն իւրաքանչիւրը, մատնիչ, վատ, և մահու պատիժի յանցաւոր կը յայտարարէ ո՛վ որ անոնց անձին ձեռք դպցնէ դաւելու մտօք։

Այդ միջոցին ազնուականութիւնը, որ Պետութիւնը փրկուած կը կարծէր Թագաւորին նախագահութեամբ կատարուած այն նիստին շնորհիւ, իր շնորհաւորութիւնները կը մատուցանէր վեհափառին՝ որ անոր գաղափարը ունեցած էր, և վեհափառէն ալ Թագուհիին։ Թագուհին, զաւակը թեւերուն մէջ կրելով, զայն ցոյց տալով իր շատ փութկոտ ծառաներուն, կ'ընդունէր անոնց երդումները, և դժբախտաբար անձնատուր կ'ըլլար կոյր վստահութեան մը։ Սոյն այս վայրկեանին աղաղակներ լըսուեցան. ամէն ոք վազեց, և իմացուեցաւ որ ժողովուրդը խումբ կազմած, Նէքէրը կը շնորհաւորէր արքայական նիստին ներկայ չըլլալուն համար։ Սոսկումը իսկոյն ուրախութեան յաջորդեց. Թագաւորն ու Թագուհին

Նէքէրը կանչել տուին, և այս օգոստափառ անձնաւորութիւնները պարտաւորուեցան պաղատիլ անոր որ պահէ իր նախարարական պաշտօնը։ Նախարարը հաւանեցաւ, և արքունիքին վերադարձուց այդ չարաչուք նիստին ներկայ չըլլալով իր պահած ժողովրդականութեան մէկ մասը։

Այսպէս ահա կը կատարուէր առաջին յեղափոխութիւնը։ Երրորդ Կարգը կրկին ստացած էր օրէնսդրական իշխանութիւնը, և իր հակառակորդները կորսնցուցած էին զայն՝ ամբողջովին զայն իրենց պահել ուզելնուն համար։ Քանի մը օրէն բոլորովին ի գլուխ ելաւ այս օրէնսդրական իշխանութիւնը։ Քանի մը մանր հնարքներ ալ գործածուեցան, ինչպէս՝ Ժողովին սրահներուն մէջ ներքին հաղորդակցութիւնները խափանել, բայց անյաջող եղան։ 24ին, կղերին մեծամասնութիւնը Ժողովի գնաց, և պահանջեց ձեռնհասութեան միաժողով ճշդումը՝ խորհրդակցելու համար յետոյ Յունիս 23ի նիստին մէջ Թագաւորին ըրած առաջարկութիւններուն վրայ։ Կղերին փոքրամասնութիւնը կը շարունակէր խորհրդակցիլ իր մասնաւոր խորհրդարանին մէջ։ Բարիզի արքեպիսկոպոսը՝ Ժիւինեէ՝ առաքինի եկեղեցական, ժողովուրդի բարերար, բայց յամառ առանձնաշնորհեալ մը, ժողովուրդէն հալածուեցաւ և պարտաւորուեցաւ խոստանալ իր ներկայութիւնը. և իրաւ ալ Ազգային Ժողովին գնաց ընկերակցութեամբ Պոռտոյի արքեպիսկոպոսին, որ ժողովրդական եկեղեցական մըն էր, և ապագային ալ նախարար պիտի ըլլար։

Ազնուականութեան շարքերուն մէջ ամենամեծ վրդովում յայտնուեցաւ։ Իր սովորական դրդիչները կը հրահրէին կիրքերը. Մ'Էսբրէմէնիլ առաջարկեց յանցաւոր հռչակել Երրորդ Կարգը, և ընդհանուր դատախազի ձեռքով հալածանք հանել անոր դէմ. փոքրամասնութիւնը առաջարկեց միաժողով գումարում։ Այս առաջարկը մերժուեցաւ ազնուականներու մէջ։ Օռլէանի դուքսը ոյժ տուաւ առաջարկութեան, մէկ օր առաջ հակառակը խոստանալէ վերջ Բոլինեագներուն։ Քառասուն եօթը ազնուականներ, մտադրելով ընդհանուր ժողովին միմիայն հակառակ մեծամասնութեան որոշման, խմբովին հոն գացին, և ընդունուեցան հանրային ուրախութիւններով։ Սակայն իրենց ներկայութեամբ առթած այս ցնծութեան հակառակ, դէմքերնին տխուր էր։ «Մեր խիղճին տեղի կուտանք, ըսաւ Գլէրմոն-Թոնէր, բայց ցաւ ի սիրտ կը բաժնուինք մեր եղբայրներէն։ Կուգանք աջակից ըլլալ հանրային վերածնութեան. մեզմէ իւրաքանչիւրը պիտի ճանչնէ ձեզի իր փոխանորդեալի գերի իր համար նշանակած գործունէութեան սահմանը։»

Ամէն օր նոր յարողներ կուգային, և Ժողովը իր անդամներուն թիւին աճումը կը տեսնէր։ Ամէն կողմերէ ուղերձներ կը հասնէին, քաղաքներուն և գաւառներուն մաղթանքն ու հաւանութիւնը արտայայտող։ Մունիէ ալ հանեց ամբողջ Տոֆինէ գաւառին ժողովրդային խանդավառութիւնը։ Բարիզ նոյնը ըրաւ. Բալէ-Ռուայեալ իսկ պատուիրակութիւն մը ղրկեց, զոր Ժողովը, դեռ վտանգներէ շրջապատուած, ընդունեց խուժանը իրմէ չպաղեցնելու համար։ Այդ միջոցին չէր նախատեսեր խուժանին ծայրայեղութիւնները, ընդհակառակն պէտք ունէր անոր կորովին ու ազդեցութեան վրայ համարում ունենալու և աջակցութիւն մը յուսալու անկէ. շատ միտքեր կը կասկածէին անկէ, և ժողովուրդին քաջութիւնը տակաւին երջանիկ երազ մըն էր միայն։ Այսպէս ունկնդիրներուն բեմերէն եղած ծափահարութիւնները, որոնք յաճախ նեղացուցիչ էին Ժողովին, այսու հանդերձ ոյժ կուտային անոր, և չհամարձակեցան արգիլել։ Պայլի ուզեց բողո-

քել, բայց իր ձայնն ու առաջարկը խեղդուեցան աղմկարար ծափերով։

Աղնուականութեան մեծամասնութիւնը իր նիստերը կը շարունակէր երքերու բուռն թափով և խանդավառութեամբ։ Սոսկում տարածուեցաւ գաւառներուն մէջ, և միաժողով գումարումի նշանը մեկնեցաւ նոյն իսկ անոնցմէ, որոնք ասկէց դեռ քիչ առաջ դիմադրութեան կը մղէին զայն։ Բայց դիւրին չէր վարել այս կիրքերը, որոնք արդէն չափազանց գրգռուած էին։ Թագաւորը հարկադրուեցաւ նամակ մը գրել․ արքունիքը, ուագանին պարտաւորուեցան թախանձել։ «Գումարումը վաղանցիկ պիտի ըլլայ, կ'ըսուէր ամէնէն աւելի յամառողներուն, զօրքերը հոս կը մօտենան, տեղի տուէք թագաւորը ազատելու համար։» Հաւանութիւններն խլուեցան անկարգութեան միջեւ, և աղնուականութեան մեծամասնութիւնը՝ ընկերակցութեամբ կղերին փոքրամասնութեան՝ Յունիս 27ին Ընդհանուր Ժողովին գնաց։ Լիւքսանպուրի դուքսը, հոն ամէնուն անունովը խօսելով, ըսաւ թէ կուգային՝ թագաւորին յարգանքի ցոյց մը ընելու համար և ազգին ալ հայրենասիրութեան ապացոյց մը։ «Ընտանիքը կատարեալ է», պատասխանեց Պայլի։ Ենթադրելով թէ գումարումը ամբողջ էր, և թէ հարկ չկար նախնական գործողութեանց, այլ միաժողով խորհրդակցելու, յարեց․ «Պիտի կրնանք երկրին վերածնութեան և հանրային բարօրութեան սպասալի անդուլ և անդադար»։

Քանի մը մանր մունր հնարքներ ալ գործածուեցան ի հարկէ ստիպեալ ըրած ըլլալնին չցուցնելու համար։ Նոր եկողները մինչ նիստերու բացումէն վերջ կուգային, ամէնքն ալ խմբովին, կարգ մը ձեւացնելու եղանակաւ։ Կը կեղծէին նախագահին առջեւ ոտքի վրայ մնալու, որպէսզի աթոռ ունենալու երեւոյթը չտան իրենց։ Պայլիի մեծ խոհականութեամբ և անյողդողդութեամբ վերջապէս յաղթեց բոլոր դիմադրութիւններուն, և յաջողեցաւ նստեցնել զանոնք։ Ուզուեցաւ անոր նախագահութիւնն ալ խնդրոյ նիւթ ըլլալ, ո՛չ թէ բանի ուժով, այլ մերթ գաղանի բանակցութեամբ մը, մերթ խարեպատիր հնարքով մը։ Պայլի ամուր բռնեց նախագահութիւնը, ո՛չ թէ փառասիրութենէն, այլ պարտականութենէն. և այսպէս տեսնուեցաւ որ պարզ քաղաքացի մը, իր առաքինութիւններով ու տաղանդովը միայն ծանօթ, կը նախագահէր Թագաւորութեան և եկեղեցիին բոլոր աւագանիին։

Բացայայտ էր թէ օրէնսդրական յեղափոխութիւնը ի գլուխ եկած էր։ Թէև առաջին գժտութիւնը ուրիշ նպատակ չունէր այլ միայն նախնական գործողութեանց և ձեռնհասութեան ճշդումի եղանակը, և ոչ թէ քուէարկելու կերպը, թէեւ ոմանք յայտարարած էին թէ միաժողով ճշդումի համար միայն կը գումարուին, և միւսները՝ Յունիս 23ին արտայայտուած արքայական դիտաւորութեանց հնազանդելու համար, յայտնի էր թէ մարդ գլուխ քուէարկութիւնը անխուսափելի էր. ուրեմն անօգուտ և անպատշաճ էր ամէն բողոք։ Սակայն կարտինալ Լա Ռօշֆուքօ փոքրամասնութեան անունով բողոքեց, և հաւաստեց թէ ինք ընդհանուր ժողովին մասնակցած էր՝ միմիայն ընդհանուր նիւթերու վրայ խորհրդակցելու համար, և պահելով մինչեւ անջատ կարգ մը կազմելու իրաւունքը։ Վիէնի արքեպիսկոպոսը բարկութեամբ պատասխան տուաւ թէ փոքրամասնութիւնը ոչինչ կրցած էր որոշել ի բացակայութեան կղերին մեծամասնութեան, և թէ իրաւունք չունէր կարգին անունով խօսելու։ Միրապօ եւս այդ յաւակնութեան դէմ ելաւ եռանդով, ըսաւ թէ տարօրինակ բան է ժողովին մէջ բողոքել ժողովին դէմ, թէ պէտք էր կա՛մ ճանչնալ անոր վեհապետութիւնը կամ քաշուիլ երթալ։

Այն ատեն ծագեցաւ ընտրողներուն կողմէ իրենց փոխանորդներուն տըրուած խրատունքի հարցը, որ ծանօթ հրամայողական հրահանգ (mandat impératif) անունով։ Յանձնառութեանց տետրակներուն ամենամեծ մասը կը յայտնէր ընտրողներու բաղձանքը ի մասին գործադրութեան բարեկարգութեանց, և այս բաղձանքը պարտաւորիչ, հրամայողական կ'ընէր երեսփոխաններուն վրայ։ Գործելէ առաջ պէտք էր ճշդել թէ մինչև ո՛ր կէտը կարելի էր գործել, ուրեմն այս խնդիրը պէտք էր առաջինը ըլլար։ Ոմանք կ'ուզէին որ գլխում ըլլայ կրկին փոխանորդներուն, ուրիշներ կը խորհէին թէ փոխանորդներէն կարելի էր առնալ միմիայն իրենց համար հքուէ տալու պաշտօնը, ամբողջ ազգին պատգամաւորներուն կողմէ խնդիրներուն վիճաբանուելէն և քուէարկուելէն վերջ, բայց չէին կարծեր որ կարելի ըլլայ կանխաւ առնալ բոլորովին չինուած կարծիք մը կամ խորհուրդ մը։ Եթէ խուցնէ կը կարծուի որ ընդհանուր խորհուրդի մը մէջ կարելի է օրէնք չինել, ա՛յն պատճառաւ որ աւելի լոյս և հմտութիւն կը գտնուի բարձրանալով, կամ ա՛յն պատճառաւ՝ որ կարելի չէ կարծիք մը ունենալ մինչև որ ազգին բոլոր մասերը փոխադարձաբար դիտար հասկցած ըլլան, ասկէց կը հետևի թէ այն ատեն երեսփոխանները պէտք է ազատ ըլլան և առանց պարտաւորիչ հրահանգի։ Միրապօ, պատճառաբանութիւնը հեղնութեամբ համեմելով, պոռաց թէ դէշ ըրին հոս գալով անոնք որ ընտրողներուն հրահանգները հրամայողական կը կարծէին, և հիմա ուրիշ բան չի մնար ընել իրենց եթէ ոչ՝ յանձնառութեանց տետրակները թողուլ իրենց նստարաններուն վրայ «քանի որ այդ տետրակներն ալ իրենց չափ լաւ կրնան բազմիլ։ Սիյէյս, իր սովորական կտրուղամտութեամբ, նախատեսելով թէ, հակառակ Ժողովին խիստ արդար որոշումին, չատ թիւով անդամներ իրենց երդումէն ետ պիտի դառնային, և թէ իրենց խիղճին մէջ ապաստանելով կարելի պիտի չըլլայ փոխել անոնց միտքը, առաջարկեց օրակարգը սա՛ հիման վրայ թէ Իւրաքանչիւրը իր տուած երդումին արժէքին դատաւորն էր։ «Անոնք որ իրենց յանձնառութեան տետրակներէն հարկադրուած կը կարծեն զիրենք, ըսաւ, իրրև բացակայ պիտի նկատուին, ճիշդ անոնց պէս՝ որոնք մերժած էին իրենց ձեռնհասութիւնը ճշդել տալ Ընդհանուր Ժողովին մէջ։» Այս իմաստուն կարծիքը ընդունուեցաւ։ Ժողովը, ընդդիմադիրները ճնշելով, անոնց ձեռքը պատրուակ տուած պիտի ըլլար, մինչ զանոնք ազատ թողլով ապահով էր զանոնք իրեն բերելու, որովհետև իր յաղթութիւնը այսուհետև անկասկած էր։

Նոր գումարումին նպատակն էր Պետութեան բարենորոգումը, այսինքն հաստատութիւնը Սահմանադրութեան մը, որ կը պակսէր Ֆրանսայի, ինչ որ հակառակէն կարելի ըլլար ըսել։ Եթէ այդ բառով հասկցուեր կառավարողներուն և կառավարեալներուն միջև յարաբերութեանց տեսակ մը, անշուշտ Ֆրանսա սահմանադրութիւն ունէր, թագաւոր մը կը հրամայէր և հպատակներ կը հնազանդէին. Նախարարներ քմահաճ կերպով կը բանտարկէին. հարկահաւաքներ ժողովուրդին մինչև յետին բնիոնը կը գանձէին. ատենաժողովներ խեղճ ողորմելի մարդիկ կը դատապարտէին չարչարանքներու։ Ամենէն բարբարոս ժողովուրդներն ալ այս տեսակ սահմանադրութիւններ ունին։ Ֆրանսայի մէջ տեղի ունեցած էին Կարգաժողովներ, բայց առանց ճշգրիտ իրաւասութիւններու, առանց ապահովուած վերադարձներու, և միշտ ապարդիւն։ Գտնուած էին բարձրագոյն ատեաններ կամ դատարաններ, որոնք յաճախ դատական իշխանութեան կը միացնէին օրէնսդրական իշխանութիւնը,

բայց չկար օրէնք մը որ ապահովէր իշխանութեան վարիչներուն պատասխանատուութիւնը, մամուլին ազատութիւնը, անհատական ազատութիւնը, վերջապէս բոլոր երաշխաւորութիւնները որոնք, ընկերային պայմանին մէջ, բնական ազատութեան ցնորքին թերին կը լեցնեն (*)։ Սահմանադրութեան մը

«Զունինք օրէնք՝ որ անհրաժեշտ ընէ ձեր Ընդհանուր Ժողովին պարբերական վերադարձը, որովհետեւ զա՛յն կը պահանջէք, եւ հարիւր եօթանասուն հինգ տարին ի վեր գումարուած չէ։

«Զունինք օրէնք՝ որ ձեր ապահովութիւնը, ձեր անհատական ազատութիւնը գերծ պահէ քմածին միտումներէ, որովհետեւ զա՛յն կը պահանջէք, եւ իշխանութեան սակ թագաւորի մը՝ որուն արդարութիւնը կը ճանչնայ ամբողջ Եւրոպան եւ որուն ուղղամտութիւնը կը յարգէ, նախարարներ գլնեալ արքանհանկներու միջոցաւ ձեր դատաւորները դուրս քշեցին օրէնքներու սրբավայրէն։ Նախորդ իշխանութեան օրով եւ թագաւորութեան բոլոր դատաւորները իրենց նիստ բռնած միջոցին դուրս հանուեցան իրենց պաշտօնատեղիէն, իրենց օջախէն, եւ ցիրուցան ըրին զանոնք աքսորով, մինչ քննարկելու գաղափարները, ուրիշներ ճահիճներու ցխերն մէջ, ամենքն ամէնէն զարհուրելի բանտէն աւելի անհամ որ վայրերու մէջ։ Աւելի՜ հին ժամանակներ բարձրանալով, պիտի գտնէք հարիւր հազար կնքեալ թուղթեր, ձերբակալման հրամանագիրներ, խեղճ ազգամերի աստուածաբանական կռիւներու համար։ Ա՜լ աւելի հեռանալով, կը տեսնէք արիւնահեղ յանձնաժողովներ միայն քմածին բանտարկութիւններ, եւ հազիւ կրնաք հանդիպել զանոնք ձեր բարի Հանրիին թագաւորութեան միջոցին։

«Զունինք օրէնք որ հաստատէ մամուլին ազատութիւնը, որովհետեւ զա՛յն կը պահանջէք, եւ մինչեւ ցարդ ձեր խորհուրդները սարուկ եղան, ձեր բաղձանքները շղթայակապ, ճնշումի պահուն ձեր սիրտերուն աղաղակը խեղ-

(*) Վիճելի կէտերուն առթիւ միայն մէջ կը բերեմ յիշատակութիւններ եւ ծանօթագրութիւններ։ Սա՛ հարցը թէ արդեօք սահմանադրութիւն մը ունէինք՝ իմ կարծիքով յեղափոխութեան ամէնէն կարեւոր հարցերէն մին է ինծի համար. որովհետեւ հիմնական օրէնքի մը բացակայութիւնն է որ մեզ կ'արդարացնէ անկէց մեզի տալ ուզելնուս համար։ Կարծեմ այս առթիւ յիշատակելի ամէնէն յարգոյ եւ նուազ տարակուսելի հեղինակութիւնն է Լալի-Թօլանտալ։ Այս պատուական քաղաքացին 1789 Յունիս 15ին ազնուականներու խորհրդարանին մէջ արտասանեց ճառ մը՝ որուն ահա՛ ամփոփումը.

«Պարոննե՛ր, երկար մեղադրանքներ, նոյն իսկ դառնութեամբ խառնուած մեղադրանքներ ըրած են այս ժողովին անդամներուն, որոնք ցաւով միանգամայն վերապահութեամբ տարակոյսներ յայտնած են ա՛յն բանին վրայ որ մեր Սահմանադրութիւնը կը կոչուի։ Այս նիւթը թերեւս շատ ուղղակի առնչութիւն մը չունի մեր խօսածներուն հետ. բայց քանի որ ամբաստանութեան պատրուակը ա՛ն եղած է, թող պաշտպանութեան առիթն ալ ա՛ն ըլլայ, եւ թո՛ղ ներուի ինծի քանի մը խօսք ուղղել այս մեղադրանքի հեղինակներուն։

«Անշուշտ չունինք օրէնք մը հաստատող թէ Ընդհանուր Ժողովը կամ Կարգաժողովը վեհապետութեան ամբողջացուցիչ մասը ըլլայ, որովհետեւ հիմա զա՛յն կը պահանջէք, եւ ցարդ երբեմն նախարարական խորհուրդին մէկ վճիռը կ'արգիլէր անոր խորհրդակցութիւնը, երբեմն ալ Աւագաժողովի մը վճիռը կը բեկանէր անոր խորհրդակցութիւնները։

պէտքը խոստովանուած և առհասարակ զգացուած էր. բոլոր ընտրողներու կողմէ տրուած յանձնառութեան տետրակները ազդուօրէն արտայայտած էին այդ պէտքը, և նոյն իսկ բացորոշապէս արտայայտուած էին այդ սահմանադրութեան հիմնական սկզբունքներուն վրայ: Միաձայնօրէն պաշտպանուած էին միապետական կառավարութիւնը, արուէ արու ժառանգականութիւնը, գործադիր

դուեցաւ, «Մերթ մինիստրներու բռնակալութեամբ, մերթ յաճախ ժողովներու աւելի զարհուրելի բռնակալութեամբ:

«Չունինք կամ այլ եւս չունինք օրէնք՝ որ տուրքերու մասին ձեր հաւանութիւնը անհրաժեշտ ընէ, որովհետեւ զա՛յն կը պահանջէք, և երկու դարէ ի վեր բեռնաւորուած էք երեք-չորս հարիւր միլիոնէ աւելի տուրքերով, առանց անոնցմէ ոչ մէկուն համար հաւանութիւն տալու:

«Չունինք օրէնք որ պատասխանատու ընէ գործադիր իշխանութեան բոլոր նախարարները, որովհետեւ զա՛յն կը պահանջէք, և այն արիւնահեղ յանձնաժողովներուն ստեղծիչները, ո՛ւր քմածին հրամաններուն բաշխողները, հանրային գանձը խորողները, արդարութեան սրբավայրին բռնաբարիչները, թագաւորի մը տկարութիւնները խաբողները, ուրիշի մը կիրքերը շողոմողները, ազգին աղէտքին պատճառ եղողները, ո՛չ հաշիւ տուած են, ո՛չ պատիժ մը կրած են:

«Վերջապէս, չունինք ընդհանուր, դրական, գրաւոր օրէնք մը, վաւերագիր մը ազգային և թագաւորական միանգամայն, Մեծ Սահմանադիր մը, որուն վրայ հանգչի անյեղլի և հաստատուն կարգ մը, որուն վրայ իւրաքանչիւր ոք իմանայ թէ ո՛րքան զոհողութիւն պիտի ընէ իր ազատութենէն և սեփականութենէն մնացածը պահպանելու համար, որ ապահովէ բոլոր իրաւունքները և սահմանէ բոլոր իրաւասութիւնները: Ընդհակառակն, ձեր կառավարութեան րէժիմը փոխուած է թագաւորէ թագաւոր, յաճախ նախարարութենէ նախարարութիւն. կախում ունեցած է մէկ մարդու մը հաճոյքէն, նկարագրէն: Անչափահասութեան միջոցին, ամբողջ իշխանի մը օրով, ազգին երջանկութեան և պատկառանքին դէմ ելլող արքայական հեղինակութիւնը անդադարօրէն նուաստացուած է, կա՛մ աւագանիին կողմէ, որ մէկ ձեռքով զայն կը զսպէր և միւսով մաս-մասը ստահակ կ'ընէր, կամ ընկերակցութեանց կողմէ, որոնք ժամանակ մը յանդգնութեամբ կ'արգիլէին ինչ որ ուրիշ ատեն մը քաջութեամբ պաշտպանած էին: Ամբաստանուած և շողոքորթուած իշխաններու օրով, ատելի և խաբուած իշխաններու օրով, այդ միևնոյն հեղինակութիւնը ամէն սահմաններէ դուրս մղուեցաւ: Ձեր երկրորդական իշխանութիւնները, ձեր միջնակարգ իրաւասութիւնները, ինչպէս կ'անուանէք, ո՛չ աւելի լաւ սահմանուեցան, ո՛չ աւելի հաստատուեցան: Մերթ Ատեանժողովները իրենց սկզբունք գրին թէ իրենք չէին կրնար խառնուիլ Պետական գործերուն, մերթ պնդեցին թէ զանոնք վարելը իրենց կը վերաբերէր իբրեւ ազգին ներկայացուցիչները: Մէկ կողմէ տեսնուեցան թագաւորին կամքը ազդարարող յայտարարութիւններ, միւս կողմէն վճիռներ, որոնց մէջ թագաւորին պաշտօնատարները թագաւորին անունով կ'արգիլէին թագաւորին հրամաններուն գործադրութիւնը: Ատեանները ալ ասկէց աւելի համաձայն չէին իրենց միջեւ, իրարու ձեռքէ կը խլեն իրենց ծագումը, իրենց պաշտօնը. զիրար կը չանթահարեն փոխադարձաբար վճիռներով:

«Կարճ կը կապեմ այս մանրամաս-



ԹԱԿԱՆԱԽԱՂԻ ԵՐԴՈՒՄԸ

իշխանութեան այսմերժ իրաւասութեան ամփոփումը Թագաւորին ձեռքին մէջ, բոլոր վարիչներուն պատասխանատուութիւնը, ազգին և Թագաւորին աջակցութիւնը օրէնքներու յօրինումին համար, տուրքի քուէարկութիւնը և անհատական ազատութիւնը: Բայց համաձայն չէին մէկ կամ երկու օրէնսդիր

նութիւնները, զորս կրնայի անհունօրէն ընդարձակել, բայց եթէ բոլոր այս իրողութիւնները յարատեւ են, եթէ չունիք ձեր պահանջած օրէնքներէն ո՛չ մին, որոնց քաղուածը ըրի, կամ եթէ զանոնք ունենալով (և աղէկ ուշադրութիւն ըրէ՛ք ասոր), կամ եթէ զանոնք ունենալով, չունիք զանոնք գործադրելու պարտաւորող օրէնքը, որ անոնց կատարումը երաշխաւորէ և յարատեւութիւնը հաստատէ, ուրեմն սահմանեցէ՛ք մեզի թէ ի՞նչ կը հասկնաք Սահմանադրութիւն բառով, և գոնէ ընդունեցէ՛ք որ կարելի է ներողամիտ ըլլալ անոնց՝ որոնք չեն կրնար կասկածիլ մերինին գոյութեան վրայ: Շարունակ այդ Սահմանադրութեան յարելու խօսքը կ'ըլլայ. բաւէ՛, լա՛ւ է որ այդ ցնորքը հե-

խորհրդարաններու հաստատութեան մասին, օրէնսդիր մարմինին միայնութեան, պարբերականութեան, լուծման մասին. կլերին և Ազնուականներուն քաղաքական գոյութեան մասին. մամուլի ազատութեան ընդարձակութեան մասին։ Յանձնառութեան տետրակներու կողմէ որոշուած կամ առաջարկուած ա՛յսքան խնդիրներ բաւականի, կը ծանուցանեն թէ հանրային միտքը այն ատեն ի՛նչպէս արթնցած էր երկրին բոլոր մասերուն մէջ, և ապա-

ռացնենք մեր աչքէն, անոր տեղ խրա-կանութիւն մը գնելու համար։ Գալով նորութիւններու բացատրութեան, գալով նորացուցիչներու որակումին, որոնցմով չեն դադրիր ընկճել մեզ, ընդունի՛նք դարձեալ թէ առաջին նորացուցիչները մեր ձեռքերուն մէջ են, թէ առաջին նորացուցիչները մեր յանձնառութեան տետրակներն են. յարգե՛նք, օրհնե՛նք այս բարերարական նորութիւնը, որ ամէն ինչ իր յարմար տեղը պիտի դնէ, որ բոլոր իրաւունքները անբռնաբարելի պիտի ընէ, բոլոր հեղինակութիւնները բարերարէ, և բոլոր հպատակները երջանիկ։

«Այս Սահմանադրութեան համար է, Պարոնե՛ր, որ մաղթանքներ կ'ընեմ. այս Սահմանադրութիւնն է որ առարկայ է մեր բոլոր փոխանորդներուն յանձնարարութեան, և որ պէտք է մեր բոլոր աշխատութեանց նպատակը ըլլայ. այս Սահմանադրութիւնն է որ կ'ընդվզի մեզի առաջարկուած ուղերձին գաղափարին դէմ իսկ, ուղերձ մը՝ որ թագաւորին գիրքն ալ ազգին չափ պիտի խախտէ, վերջապէս ուղերձ մը՝ որ խիստ վնասակար կ'երեւայ ինծի, որուն ո՛չ միայն պիտի հակառակիմ մինչեւ վերջին վայրկեանը, այլ եթէ հնար իսկ ըլլայ անոր ընդունելը, անոր դէմ հանդիսաւորապէս բողոքելու տխուր հարկին պարտաւոր պիտի կարծեմ ինքզինքս։»

տութեան համար Ֆրանսայի իղձը ո՛րքան ընդհանուր էր և ցայտուն (*)։ Բայց մեծ ու դժուարին գործ մըն էր ամբողջ սահմանադրութեան մը հիմերը հինցած օրէնսդրութեան մը աւերակներուն միջեւ, բոլոր ընդդիմութիւններու հակառակ, և միտքերու անկարգաւունով։ Շահերու տարբերութենէն առաջ գալիք դժուարութիւններէն զատ, ա՛լ աւելի երկիւղալի էր կարծիքներու բնական տարբերութիւնը։ Մեծ ժողովուրդի մը ամբողջ օրէնսդրութեան գործը ա՛յնքան ուժգնօրէն կը գրգռէ միտքերը, ա՛յնքան ընդարձակ ծրագիրներ կը ներշնչէ անոնց և ա՛յնքան անիրական յոյսեր, որ պէտք էր սպասել կա՛մ տարտամ կամ ծայրայեղ և յաճախ իրերահակ առօրինութիւններու։ Աշխատու-

* Օգտակար կը համարիմ դնել հոս յանձնառութեանց տետրակներուն ամփոփումը, զոր Ազգային Ժողովին առաջեւ ըրաւ Գլէրմոն-Թոնէռ։ Ֆրանսայի բովանդակ տարածութեան մէջ այդ թուականին տիրող կարծիքներուն մէկ լաւ վիճակագրութիւնն է այս։ Այս նկատումով, ամփոփումը վերջին ծայր կարեւոր է, և թէեւ Բարիզ ազդած է այս տետրակներուն խմբագրութեան վրայ, սակայն թէ գաւառները ամենամեծ բաժինը ունեցան անոր մէջ։

ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՄԱՍՆԱԽՈՒՄԲԻՆ
ՏԵՂԵԿԱԳԻՐԸ

որ կը պարունակէ այս երեք վերաբերեալ տետրակներուն ամփոփումը, զոր Ազգային Ժողովին մէջ կարդաց կոմս տը Գլէրմոն-Թոնէռ։

(Նիստ 27 Յուլիսի 1789)

«Պարոնե՛ր, դուք կոչուած էք վերածնելու Ֆրանսական պետութիւնը. այս մեծ գործին կը բերէք և՛ ձեր սեփական իմաստութիւնը և ձեր փոխանորդներուն իմաստութիւնը։

«Նախ պարտք համարեցանք հաւաքել և ձեզի ներկայացնել ձեր տետրակ-

թիւններուն մէջ կապակցութիւն ընելու համար, մասնախումբ մը անուանուեցաւ՝ որուն պաշտօնն էր անոնց տարածութիւնը չափել և բաշխումը դասաւորել։ Այս մասնախումբը կը բաղկանար Ժողովին ամէնէն չափաւոր անդամներէն։ Մունիէ, խոհական միտք մը, թէև յամառ, անոր ամէնէն աշխատասէր և ամէնէն ազդեցիկ անդամն էր. ինք եղաւ որ պատրաստեց աշխատութեան դասաւորութիւնը։

Այս Ժողովին յաղթելիք միակ դժուարութիւնը Սահմանադրութիւն մը տալը չէր։ Անկարելի էր որ վարչական գործերուն ալ չխառնուէր, գտնուած ըլլալով գէշ դասաւորուած կառավա-

ներուն ամենամեծ թիւին մէջ ցիրուցան եղած մասերը. յետոյ ձեզի պիտի ներկայացնենք և՛ ձեր մասնախումբին մասնաւոր տեսութիւնները, և ա՛յն տեսութիւնները՝ զորս կրցաւ և պիտի կրնայ հաւաքել այս պատկառելի Ժողովին անդամներուն կողմէ հաղորդուած կամ հաղորդուելիք կամ յանձնուելիք զանազան յատակագիծներուն, զանազան գիտողութիւններուն մէջէն։

«Այս աշխատութեան առաջին մասին համառօտութիւնն է որ պիտի ընենք ձեզի, Պարոննե՛ր։

«Մեր փոխանորդեալները, Պարոննե՛ր, ամենքն ալ համաձայն են մէկ կէտի վրայ. Պետութեան վերածնութիւնը կ'ուզեն. բայց ոմանք անոր կը սպասեն գեղծումներու պարզ բարեկարգութենէն և տասնըչորս դարերէ ի վեր գոյութիւն ունեցող Սահմանադրութեան մը վերահաստատութենէն, որ իրենց կարծիքով կրնայ դեռ վերակենդանանալ՝ եթէ դարմանուին հանրային շահուն դէմ անձնական շահուն ապստամբութիւններէն և ժամանակներէն եղած վնասները։

«Ուրիշներ ներկայ ընկերային րէժիմը նկատած են ա՛յն աստիճան ապականուած, որ նոր Սահմանադրութիւն մը պահանջած են, և բաց ի կառավարութենէն և միապետական ձեւերէն, զորս ամէն Ֆրանսացիի սրտին մէջ կայ սիրել և յարգել, և զորս հրամայած են ձեզի պահպանել, բոլոր անհրաժեշտ իրաւասութիւնները տուած են ձեզի Սահմանադրութիւն մը ստեղծելու, և աներկբայ սկզբունքներու, և բոլոր իշխանութեանց տարանջատութեան և կանոնաւոր յօրինուածութեան վրայ հանգչեցնելու Ֆրանսական պետութեան բարօրութիւնը. ասոնք, Պարոննե՛ր, ա՛յն համոզումը ունեցած են թէ Սահմանադրութեան առաջին գլուխը պէտք է պարունակէ մարդուն իրաւունքներուն յայտարարութիւնը, ա՛յն անկորնչելի իրաւունքներուն, որուն պահպանութեան համար կազմուած է ընկերութիւնը։

«Մարդուն իրաւունքներուն ա՛յնքան շարունակ ուրացուած յայտարարութեան պահանջը միակ տարբերութիւնն է, եթէ կրնանք այսպէս ըսել, որ գոյութիւն ունի նոր Սահմանադրութիւն մը պահանջող տետրակներուն և գոյութիւն ունեցող կարծուած Սահմանադրութեան վերահաստատութիւնը պահանջողներուն միջև։

«Թէ՛ առաջինները և թէ երկրորդները իրենց գաղափարները հաւասարապէս հաստատած են միապետական կառավարութեան սկզբունքներուն, իշխանութեան գոյութեան և օրէնսդրական մարմինին կազմակերպութեան, տուրքի մասին ազգային հաւանութեան անհրաժեշտութեան, վարչական մարմիններու կազմակերպութեան և քաղաքացիներուն իրաւունքներուն վրայ։

«Պարոննե՛ր, այս զանազան նիւթերուն վրայէն պիտի անցնինք, և իբրեւ որոշում անոնցմէ իւրաքանչիւրին վրայ պիտի ընծայենք ձեզի միակերպ արդիւնքները, և իբրեւ հարց՝ տարբեր կամ հակասական արդիւնքները, զորս

րութեան մը և արագ սփոփանքներ պահանջող ամպլլուկ ժողովուրդի մը միջև ։ Ժողովուրդին օգնելու անձարարող իշխանութեան մասին կասկածոտ ըլլալով, ի հարկէ, նոյն իսկ առանց փաստաւորութեան, կամաց կամաց պիտի մանէր գործադիր իշխանութեան սահմանին մէջ ։ Այդ էն առաջ օրինակը իրեն տուած էր կղերը, անմիջապէս ժողովուրդին պարէններուն խնդրով զբաղելու ներգամիտ առաջարկութիւնը ընելով Երրորդ Կարգին ։ Ժողովը, հա-

մեզի ներկայացուցած են ձեր տեղակներէն անոնք, որոնց պարզումը կարելի եղաւ մեզի ընել կամ հայթայթել ։

«1. Միապետական կառավարութիւնը, թագաւորին նուիրական անձին անբռնաբարելիութիւնը, և գահուն արուէ արու ժառանգականութիւնը հաւասարապէս ճանչցուած և նուիրագործուած են տեղակներուն ամենամեծ մասին կողմէ, և ո՛չ մէկուն մէջ խնդրոյ նիւթ եղած չեն ։

«2. Թագաւորը հաւասարապէս ճանչցուած է իբրև աւանդապահը գործադիր իշխանութեան լրութեան ։

«3. Իշխանութեան բոլոր վարիչներուն պատասխանատուութիւնը կը պահանջուի առ հասարակ ։

«4. Քանի մը տեղակներ թագաւորին կը վերագրեն օրէնսդրական իշխանութիւնը, որ սահմանափակուած ըլլայ երկրին սահմանադրական և հիմնական օրէնքներով. ուրիշներ կ'ընդունին թէ թագաւորը, մէկ Ընդհանուր Ժողովէն մինչև միւսը անցած միջոցին մէջ, կրնայ ինք առանձինն շինել ոստիկանական և վարչական օրէնքները, որոնք ժամանակեայ միայն պիտի ըլլան, և որոնց համար կը պահանջեն ազատ արձանագրութիւնը բարձրագոյն ատեաններու մէջ. պատգամաւորական շրջանակ մը մինչև իսկ պահանջած է որ արձանագրութիւնը տեղի չունենայ առանց գաւառային ժողովներու միջնակայ յանձնաժողովներու երկու երրորդին հաւանութեան ։ Տեղակներուն ամենամեծ մասը կ'ընդունի օրէնքներու հռչակումին համար արքայական վաւերացման անհրաժեշտութիւնը ։

«Գալով օրէնսդրական իշխանութեան, տեղակներու մեծամասնութիւնը կ'ընդունի զայն իբրև անհերքելի սկզբունք ազգային ներկայացուցչութեան, արքայական վաւերացման պայմանաւ, և կ'երևի թէ ձեր փոխանորդներուն կողմէ առհասարակ նուիրագործուած է Համէական օրինաց հաւաքածոյին սա՛ վաղեմի սկզբունքը ։ Օրէնքները կը շինուին համաձայնութեամբ ժողովուրդին եւ կը հաստատուին թագաւորէն ։

«Գալով ազգային ներկայացուցչութեան կազմակերպութեան, ձեր որոշելիք հարցերը կը պատկանին ազգային ներկայացուցչութեան գումարումին, կամ տեւողութեան, կամ կազմութեան, կամ ձեր փոխանորդներուն կողմէ ազգային ներկայացուցչութեան վերագրուած խորհրդակցութեան եղանակին ։

«Գալով գումարումին, անոնք յայտարարած են թէ Ընդհանուր Ժողովը ինք իրմով միայն կրնայ լուծուիլ. ուրիշներ՝ թէ գումարելու, երկարաձգելու և լուծելու իրաւունքը թագաւորին կը վերաբերէր, սա՛ միակ պայմանաւ որ լուծման պարագային իսկոյն նոր գումարում մը տեղի ունենայ ։

«Գալով տեւողութեան, անոնք պահանջած են Ընդհանուր Ժողովին պարբերականութիւնը, և ուզած են որ պարբերական գումարումը կախում չունենայ ո՛չ իշխանութեան կամեցողութենէն և ոչ անոր շահէն. ուրիշներ, բայց աւելի սակաւաթիւ, պահանջած են Ընդհանուր Ժողովին մնայունութիւնը, այնպէս որ անդամներուն բաժանումը ժողովին լուծումը առաջ չբերէ ։

զիւ հազ կազմուած, պարէններու մասնաւոր մը անուանեց, նախարարութենէն տեղեկութիւններ հարցուց այս նիւթին վրայ, առաջարկեց դիւրացնել պարէններու շրջաբերութիւնը գաւառէ գաւառ, պաշտօնապէս փոխադրել զանոնք պակսած տեղերը, նպաստ բաշխել և փոխատուութիւններով ձեռք բերել զանոնք։ Նախարարութիւնը իր ձեռք առած ազդու միջոցները իմացուց, որոնց Լուի ԺԶ. իբրև հոգատար վարիչ, իր բովանդակ կարողութեամբ նպաստած

«Պարբերականութեան գրութիւնը երկրորդ հարց մը ծնուցած է։ Նիստերու ընդհատումի միջոցին միջնակայ յանձնաժողով կենա՞յու է թէ ոչ։ Ձեր փոխանորդներուն մեծամասնութիւնը միջնակայ յանձնաժողովի մը հաստատութիւնը նկատած է իբրև վտանգաւոր հաստատութիւն մը։

«Գալով կազմութեան, որոնք յենած են երեք կարգերու բաժանումին վրայ. բայց, այս մասին, շատ մը ներկայացուցիչներու ձեռք բերած իրաւասութեանց ընդարձակութիւնը անշուշտ գործելու աւելի մեծ ազատութիւն մը կուտայ այս հարցին լուծման համար։

«Քանի մը շրջանակներ երկու առաջին կարգերուն գումարումը միևնոյն խորհրդարանի մը մէջ պահանջած են. ուրիշներ՝ կղերին ջնջումը և անոր անդամներուն բաժանումը միւս՝ երկու կարգերուն մէջ. ուրիշներ թէ ազնուականութեան ներկայացուցիչները կղերին կրկնապատիկը ըլլան, և երկուքը միացեալ համայնքային, երրորդ կարգի, ներկայացուցիչներուն թիւին հաւասար ըլլան։

«Շրջանակ մը, երկու առաջին կարգերուն միասին գումարումը պահանջած ատեն, պահանջած է երրորդի մըն ալ հաստատութիւնը, գիւղական ներկայացուցիչներու կարգ անունին տակ։ Նաև պահանջուած է որ արքունիքին մէջ գործ, պաշտօն կամ դիրք ունեցող ամէն անձ չի կրնայ Ընդհանուր Ժողովին երեսփոխան ըլլալ։ Վերջապէս, երեսփոխաններու անձին անբռնաբարելիութիւնը ընդունուած է շրջանակներու ամենամեծ մասին կողմէ, և ո՛չ մէկէն մշակուած։ Գալով խորհրդակցութեան եղանակին, մարդ գլուխ կարծիքին և կարգ գլուխ կարծիքին հարցը լուծուած է. քանի մը շրջանակներ կարծիքներուն երկու երրորդը կը պահանջեն որոշում մը կազմելու համար։

«Տուրքի մասին ազգային հաւանութեան անհրաժեշտութիւնը ու հասարակ ընդունուած է ձեր փոխանորդներուն կողմէ, ձեր բոլոր տետրակներէն ալ հաստատուած. ամէնքն ալ տուրքին տևողութիւնը կը սահմանեն ձեր անոր հաստատելիք սահմանին, և այս սահմանը պիտի չկրնայ մէկ նստաշրջանէն միւսէն անդին անցնիլ։ Այս հրամայողական պահանջը ձեր բոլոր փոխանորդներուն երևցած է իբրև ամէնէն ապահով երաշխաւորը ձեր ազգային ժողովներուն մշտնջենականութեան։

«Փոխատուութիւնը, անուղղակի տուրք մը ըլլալով միայն, միևնոյն սկզբունքներուն կը թուի հպատակիլ անոնց համար։

«Քանի մը շրջանակներ սահմանաւոր տուրքերէն բացառութիւն ըրած են անոնք՝ որոնց նպատակն է ազգային պարտքին հաշուեյարդարութիւնը, և կարծիք յայտնած են թէ այդպիսի տուրքերը պէտք է գանձուին մինչև ազգային պարտքին ամբողջական մարումը։

«Գալով վարչական մարմիններուն կամ գաւառային ժողովներուն, բոլոր տետրակները անոնց հաստատութիւնը կը պահանջեն, և մեծագոյն մասը կը վստահի ձեր խոհականութեան՝ ի մասին անոնց կազմակերպութեան։

«Վերջապէս, քաղաքացիներուն իրա-

էր։ Լալի-Թօլանտալ առաջարկեց ազատ շրջաբերութեան համար հրամանագիրներ արձակել. Մունիէ առարկեց թէ այդպիսի հրամանագիրներ արքայական վաւերացում կը պահանջէին, և թէ

այդ վաւերացումը, դեռ կանոնաւորուած չըլլալով, ծանր դժուարութիւններու պիտի ենթարկուի։

Այսպէս բոլոր խոչընդոտները կրաւու եկած էին։ Հարկ էր օրէնքներ չի-

ունքները, ազատութիւնը, սեփականութիւնը ուժգնօրէն կը պահանջուին ամբողջ Ֆրանսական ազգին կողմէ։ Ան իր անդամներէն իւրաքանչիւրին համար կը պահանջէ մասնաւոր սեփականութեանց անբռնաբարելիութիւնը, ինչպէս ինք ալ իրեն համար պարտաւոր կ՚ընէ հանրային սեփականութեան անբռնաբարելիութիւնը. կը պահանջէ բովանդակ լայնութեամբ անհատական ազատութիւն, ինչպէս յաւէտ հաստատած է անոր ազգային ազատութիւնը. կը պահանջէ մամուլի ազատութիւն, կամ խորհուրդի ազատ հաղորդակցութիւն. զայրոյթով կը բողոքէ արքայական ծածկագիր հրամանագիրներու դէմ, որոնք ըստ քմաց սա՛ կամ նա՛ կերպով կը անօրինէին անձերու մասին, և կը բողոքէ թղթատարութեան գաղտնիքի բռնաբարումին դէմ, որ բռնապետութեան ամէնէն անհեթեթ և ամէնէն զարշելի գիւտերէն մին է։

«Պահանջումներու այս խումբին մէջէն, գիտցէ՛ք, Պարոննե՛ր, քանի մը մասնաւոր բարեփոխութիւններ՝ ի մասին ծածկագիր հրամաններու և մամուլի ազատութեան։ Դուք զանոնք պիտի կշռէք ձեր խոհականութեամբ. պիտի ապահովէք անշուշտ Ֆրանսական պատուին ա՛յն զգացումը, որ, ամօթալի գործերու մասին իր տածած զզուանքով, մերթ մոլոր եղած է արդարութիւնը և որ նոյնքա՛ն փոյթ պիտի տանի հպատակներու օրէնքին, երբ օրէնքը զօրաւորներուն ալ հրամայէ, որքան ցարդ կը խոստովանէր երբ տկարին վրայ միայն կը ճնշէր օրէնքը. պիտի ամոքէք կրօնքի մտատանջութիւնները, որ խիստ յաճախ կ՚արհամարհուէր պարտաւական

հրատարակութիւններով հալածանքի րէժիմին տակ, և կղերը՝ յիշելով որ սանձարձակ ազատութիւնը գերութեան ընկերն է, ինք ալ պիտի ընդունի թէ ազատութեան առաջին և բնական արդիւնքն է վերադարձ դէպ ի կարգ կանոն, դէպ ի պատշաճութիւն և դէպ ի յարգանք հանրային մեծարանքի առարկաներուն համար։

«Ահա՛, Պարոննե՛ր, հաշիւը զոր ձեր մասնախումբը հարկ դատեց տալ ձեր ընտրակներուն ա՛յն մասին վրայ՝ որ Սահմանադրութեան մասին կը խօսի։ Հո՛ն պիտի գտնէք անշուշտ բոլոր հիմնական քարերը ա՛յն շէնքին՝ զոր պաշտօն ունիք կանգնելու իր բովանդակ բարձրութեամբ. բայց թերևս ձեր փափաքն է գտնել առանց որոնց ընկերային րէժիմը միշտ բազմաթիւ պակասաւորութիւններ պիտի ներկայացնէ. իրաւասութիւնները անոնց մէջ նշանակուած են, բայց որոշուած չեն տակաւին հարկ եղած ճշդութեամբ. ազգային ներկայացուցչութեան կազմակերպութիւնը ըստ բաւականին հաստատուած չէ անոնց մէջ, ընտրականութեան սկզբունքները դրուած չեն. այս արդիւնքները ձեր աշխատութիւնէն պիտի ծնին։ Ազգը ուզած է ազատ ըլլալ, և ձեզի յանձնած է իր ազատագրութեան հոգը. Ֆրանսայի հանճարը հանրային միտքին ընթացքը գահավիժած է, եթէ կրնանք այսպէս ըսել։ Ձեզի համար քիչ ժամերու մէջ կուտակած է այնպիսի փորձառութիւն մը՝ որուն հազիւ կրնայ սպասուիլ քանի մը դարերէ։ Կրնաք, Պարոններ, Սահմանադրութիւն մը տալ Ֆրանսայի. թագաւորն ու ժողովուրդը զայն կը պահանջեն. երկուքն ալ արժանի են անոր։»

նել առանց օրէնսդրական ձեւերուն հաստատուած ըլլալուն, հսկել վարչութեան վրայ առանց գործադիր իշխանութեան ոտնձգութիւն ընելու, եւ բաւել ա՛յնքան չափով կայութեան մը, հակառակ իշխանութեան գժկամակութեան, շահերու հակառակութեան, միտքերու տարբերութեան եւ նորազարթոյց ժողովուրդի մը պահանջումներուն, որ Ժողովէն քանի մը փորձառու անդամ կը վրդովէր, կը ծփար անհուն մայրաքաղաքի մը ծոցին մէջ:

## ՎԵՐՋ Ա. ԳԻՐՔԻՆ

Տետրակներուն մեկնութեան արդիւնքը·

Խոստովանուած սկզբունքներ

1. Ֆրանսական կառավարութիւնը միապետական կառավարութիւն մըն է:

2. Թագաւորին անձը անբռնաբարելի է եւ նուիրական:

3. Գահը ժառանգական է արուէ արու:

4. Թագաւորը աւանդապահն է գործադիր իշխանութեան:

5. Իշխանութեան վարիչները պատասխանատու են:

6. Արքայական վաւերացումը անհրաժեշտ է օրէնքներուն հաստատումին համար:

7. Ազգը օրէնք կը շինէ արքայական վաւերացմամբ:

8. Փոխառութեան եւ տուրքին համար անհրաժեշտ է ազգային հաւանութիւնը:

9. Տուրքը Ընդհանուր ժողովին մէկ նստաշրջանէն միւսը միայն կրնայ հաստատուն ըլլալ: (Պիւտճէի քուէարկութեան սկզբունքը:)

10. Սեփականութիւնը նուիրական պիտի ըլլայ:

11. Անհատական ազատութիւնը նուիրական պիտի ըլլայ:

Հարցեր՝ որոնց վրայ միակերպօրէն արտայայտուած չեն տետրակները:

1. Թագաւորին օրէնսդրական իրաւասութիւնը պէ՞տք է սահմանափակուած ըլլայ երկրին սահմանադրական օրէնքներէն:

2. Թագաւորը ինք միայն կրնա՞յ շինել ոստիկանական եւ վարչային օրէնքներ Ընդհանուր ժողովին արձակուրդին միջոցին:

3. Այդ օրէնքները պէ՞տք է ենթարկուին բարձրագոյն ատեաններու ազատ արձանագրութեան:

4. Ընդհանուր ժողովը ինք իր կողմէ կրնա՞յ լուծուիլ:

5. Թագաւորը կրնա՞յ ինք միայն Ընդհանուր ժողովը գումարել, երկարաձգել եւ լուծել:

6. Լուծումի պարագային, թագաւորը պարտաւորուած չէ՞ նոյն հետայն նոր գումարում մը ընել:

7. Ընդհանուր ժողովը հաստատուն պիտի ըլլայ թէ պարբերական:

8. Եթէ պարբերական ըլլայ, միջնակայ յանձնաժողով մը պէ՞տք է ըլլայ թէ ոչ:

9. Երկու առաջին կարգերը միեւնոյն խորհրդարանին մէ՞ջ պիտի գումարուին:

10. Երկու խորհրդարանները առանց կարգի տարբերութեա՞ն պիտի կազմուին:

11. Կղերի կարգին անդամները միւս երկու կարգերուն մէ՞ջ պիտի բաժնուին:

12. Կղերին, ազնուականութեան եւ համայնքին ներկայացուցչութիւնը մէկի, երկուքի եւ երեքի համեմատութեա՞մբ պիտի ըլլայ:

13. Պէ՞տք է երրորդ կարգ մը հաստատել գիւղականներու կարգ անունով:

14. Արքունիքին մէջ պաշտօն, գործ, դիրք ունեցող անձինք կրնա՞ն Ընդհանուր ժողովի երեսփոխան ըլլալ:

15. Ձայներու երկու երրորդին հարկ կա՞յ որոշում մը կազմելու համար:

16. Ազգային պարտքին հաշուեկարգադրութեան գործածուելիք տուրքերը պէ՞տք է գանձուին մինչեւ անոր ամբողջական ապառումը:

17. Ծածկագիր հրամանները պիտի ջնջուի՞ն թէ բարեփոխուին:

18. Մամուլին ազատութիւնը անսահմա՞ն պիտի ըլլայ թէ եղանակաւորուած:

# ԵՐԿՐՈՐԴ ԳԻՐՔ

## ՊԱՍԹԻՅԼԻ ԱՌՈՒՄԸ

*Բարիզի մէջ ժողովրդային յուզումներ.— Ժողովուրդը կ'ազատէ Աբբայարանին մէջ բանտարկուած Ֆրանսացի պահակները.— Արքունիքին դաւերը. զօրախումբեր Բարիզի կը մօտենան.— Նեքեր կը հանուի.— Յուլիս 12, 13 եւ 14ի օրերը.— Պասթիյլի առումը. Թագաւորը ժողովին կ'երթայ, անկէ ալ Բարիզ.— Նեքեր նորէն կը կանչուի.— Բարիզի քաղաքապետութեան աշխատութիւնները.— Լաֆայէթ՝ ազգային պահակներու հրամանատար. Յեղափոխութեան մէջ իր նկարագիրը եւ իր դերը.— Ֆուլոնի եւ Պերթիէի ջարդը.— Նեքերի վերադարձը.— Կուսակցութեանց եւ անոնց պետերուն կազմութիւնն ու բաժանումը.— Միրաբօ, իր նկարագիրը, իր ծրագիրները եւ իր ձայնը.— Աւագանիները.— Գաւառներուն եւ գիւղերուն մէջ խռովութիւններ.— Օգս. 4ի գիշերը.— Ազնուական իրաւունքներու եւ կղերին՝ տասանորդներու ջնջումը.— Մարդուն իրաւունքներու յայտարարութիւնը.— Վիճաբանութիւնն Սահմանադրութեան եւ Վէթոյի վրայ.— Յուզում Բարիզի մէջ.— Խնճոյք ճաշարան Արքայական Պալատին մէջ։*

Բարիզ Վէրսայլէն կը բաժնուի շատ փոքր միջոցով մը, և կարելի է կտրել անցնիլ քանիցս մէկ օրը։ Ուստի Բարիզի բոլոր յուզումները անմիջապէս զգալի կ'ըլլային Վէրսայլի, արքունիքին և ժողովին մէջ։ Բարիզ այն միջոցին նոր և արտասովոր տեսարան մը կ'ընծայէր։ Ընտրողները, փոխանակ չըրջանակներու մէջ հաւաքուելով, չէին ուզած բաժնուիլ ընտրութիւններէն վերջ, և հաւաքուած կը մնային, կա՛մ հրահանգ տալու համար իրենց երեսփոխաններուն, կամ միանալու, գըրգռելու ա՛յն պէտքէն որ միշտ կը գտնուի մարդոց սրտին մէջ, և նո՛յնքան աւելի ուժգնութեամբ կը պայթի որքան երկար ատեն ճնշուած ըլլայ։ Ընտրողներն ալ Ազգային ժողովին բախտը ունեցած էին. իրենց նստատեղին գոցուած ըլլալով ուրիշ տեղ մը գացին. վերջապէս յաջողած էին բանալ տալ Քաղաքապետարանը, և հոն կը շարունակէին հաւաքուիլ և թղթակցիլ իրենց երեսփոխաններուն հետ։ Ազգային ժողովին ատենագրութիւնները հրատարակող հանրային թերթեր չկային տակաւին. իրարու մօտենալու պէտք ունէին՝ դէպքերու մասին տեղեկանալու և հրահանգուելու համար։ Արքայական Պալատին պարտէզը հաւաքումներու ամենէն յաճախուած վայրերէն մին էր։ Եւրոպայի ամենէն փարթամ վաճառատուններէն շրջապատուած այս հիանալի պարտէզը, որ Օրլէանի դուքսին պալատին մէկ մասը կը կազմէր, սարականներուն, շուայտներուն, դատարկապորտներուն և մանաւանդ ամենամեծ գրգռիչներուն ժամադրավայրն էր։ Ամենայանդուգն ճառեր կ'արտասանուէին սրճարաններուն կամ նոյն իսկ պարտէզին մէջ։ Ատենաբան մը յանկարծ սեղանի մը վրայ կ'ելլէր, և, ամբոխը բոլորտիքը հաւաքելով, ամենաբուռն խօսքերով կը գրգռէր զայն, խօսքեր որոնք միշտ անպատիժ կը մնային, որովհետև հոն իրենց վեհապետ կը տիրէր խուժանը, Օրլէանի դուքսին անձնուէր ենթադրուած մար-



Պ Ա Ց Ե Ի

դիկ հին ամէնէն խանդավառներէն կ'երեւնային։ Այս իշխանին հարստահարութիւնները, անոր հանրածանօթ չայյութիւնները, ահագին փոխառութիւնները, իր շրջակայքը, իր փառասիրութիւնները, թէեւ տարտամ, — այս ամէնը կարծես ամբաստանութիւն մըն էր անոր դէմ։ Պատմութիւնը, առանց սակայն ս. ե. է անուն նշանակելու, կրնայ հաստատել թէ ոսկին անխնայ վատնեցաւ։ Եթէ ազգին ողջամիտ մասը եռանդագին ազատութիւն կ'ուզէր, եթէ մատտանջ ու տառապող խուժանը կ'ուզէր յուզուիլ եւ բարւոքել իր ճակատագիրը, անդին սակայն կային գրգիչներ, որոնք մերթ գրգռեցին խուժանը եւ թերեւս ուղղեցին անոր հարուածներէն մէկ քանին։ Մնաց որ այս ազդեցութիւնը չի հաշուուիր ընաւ յեղափոխութեան պատճառներուն մէջ, վասն զի քիչ մը ոսկիով եւ գաղտնի մեքենայութիւններով չէ որ կը գրգռուի քսանըհինգ միլիոն հոգինոց ազգ մը։

Շատ չանցած խռովութիւններու առիթ մը ներկայացաւ։ Թագաւորին պահակ գունդը կազմելու սահմանուած ըն.

տիր զօրականները, ֆրանսական պահակներ կոչուած, Բարիզի մէջ էին։ Քանի մը ջոկատներ կ՚անջատուէին փոփոխանակի և կու գային ծառայութիւննին կատարել Վէրսայլի մէջ։ Նորամուտ կարգապահութեան բարբարիկ խստութենէն զատ, այս զօրականները գանգատ ունէին նաև իրենց նորընտիր գնդապետին խստութենէն։ Ռէվէյեօն տունին Թալանումի պահուն, բաւական կատաղութիւն ցոյց տուած էին ժողովուրդին դէմ. բայց յետոյ ցաւ զգալով հետզհետէ անոր կը խառնուէին և վերջապէս տեղի տուած էին անոր հրապոյրներուն։ Մնաց որ զինուոր և ենթասպայ ու հասարակ կը զգային թէ իրենց ասպարէզը փակուած էր։ Կը վիրաւորուէին տեսնելով որ իրենց երիտասարդ սպաները գրեթէ ո և է ծառայութիւն չէին ըներ, հանդէսի օրեր միայն երեսնին կը ցուցնէին, և զօրահանդէսէն վերջ մինչև իսկ զօրագունդին չէին ընկերանար դէպի զօրանոցները։ Հոս ալ ինչպէս այլուր Երրորդ Կարգ մը կար որ ամէն բանի պիտի հասնէր բայց ո՛չ բանէ մը պիտի օգտուէր։ Անկարգապահութեան նշաններ երևցան, և քանի մը զինուորներ Աբբայարանին մէջ բանտարկուեցան։

Աբբայական Պալատին շուրջ հաւաքուողներու բազմութիւն մը աղաղակեց. Օ՜ն, դէպի Աբբայարա՜ն։ Խուժանը իսկոյն հոն վազեց։ Դուռները խորտակուեցան, և անկէց խլուած զինուորները յաղթանակաւ տարուեցան (30 Յունիս)։ Մինչ ժողովուրդը զանոնք արքայական պալատին պարտէզին մէջ կը պահէր, նամակ մըն ալ Ժողովին գրուեցաւ անոնց ազատութիւնը պահանջելու համար։ Մէկ կողմէն ժողովուրդին և միւս կողմէն կասկածելի եղող և իր սեփական դատին համար գործելու պարտաւորուող կառավարութեան միջև գտնուած՝ Ժողովը չէր կրնար չմիջամտել և հանրային ոստիկանութեան խառնուելով ոտնձգութիւն մը չգործել։ Ճարտար և միանգամայն խոհական որոշում մը տալով, Բարիզցիներուն արտայայտեց բարեկարգութեան պահպանութեան մասին իր բաղձանքը, յանձնարարեց անոնց չվրդովել զայն, և միևնոյն ատեն պատուիրակութիւն մը ղրկեց Թագաւորին՝ իր գթութիւնը հայցելու համար, համաձայնութիւնն ու խաղաղութիւնը վերահաստատելու իբրև անվրէպ միջոց։ Թագաւորը՝ Ժողովին չափաւորութենէն զգածուած, իր գթութիւնը խոստացաւ երբ բարեկարգութիւնը վերահաստատուի։ Ֆրանսական պահակները իսկոյն կրկին բանտերու մէջ դրուեցան և թագաւորին մէկ ներումը զանոնք անմիջապէս հանել տուաւ։

Մինչև հոս գործերը լաւ կ՚երթային. բայց ազնուականութիւնը՝ երկու կարգերուն միանալով՝ ցաւով տեղի տուած էր, և խոստում առնելով թէ գումարումը կարճատև պիտի ըլլար։ Ամէն օր կը հաւաքուէր և կը բողոքէր Ազգային Ժողովին աշխատութիւններուն դէմ. իր հաւաքումները հետզհետէ նուազ բազմաթիւ կ՚ըլլային. Յուլիս 3ին, 138 էր ներկայ անդամներուն թիւը. 10ին 93ի իջած էր, և 11ին 80 էր միայն։ Սակայն ամէնէն յամառները յարատևած էին, և 11ին բողոքի մը որոշում մը տուին զոր սակայն հետագայ դէպքերը արգելք եղան խմբագրելու։ Արքունիքն ալ իր կողմէ առանց ցաւի և առանց ծրագրի չէր որ տեղի տուած էր։ Յունիս 23ի՝ նիստէն վերջ սարսափը անցուցած ըլլալով, ընդհանուր հաւաքում ուզած էր Ժողովին ընթացքը ազնուականներու միջոցաւ խանգարելու համար, և զայն շատ չանցած բանի ուժով լուծելու յուսով։ Նէքեր կը պահուէր միմիայն հիւսուած գաղտնի դաւերը անոր ներկայութեամբ ծածկելու համար։ Տեսակ մը իրարանցումէն և իրեն մասին բանեցուցած վերապահումէն կռահած էր թէ մեքենայութիւն

մը կը պատրաստուի։ Թագաւորը անգամ տեղեակ չէր ամէն բանի, և անշուշտ շուրջինները մտադրած էին անոր կամքէն աւելի հեռուն երթալ։ Նէքեր, որ ա՛յն համոզումը ունէր թէ պետական մարդու մը ամբողջ գործը պէտք էր խորհելու և պատճառաբանելու սահմանափակուի, և ինք ալ ճիշդ անհրաժեշտ ուժը ունէր դիտողութիւններ ընելու, կ'ընէր բայց ի զուր։ Մունիէի, Լալի-Թօլանտալի և Գլէրմօն-Թօնէռի հետ միացած, ամէնքը միասին կը խոկային անգլիական Սահմանադրութեան հաստատութիւնը։ Այդ միջոցին արքունիքը գաղտնի պատրաստութիւններու հետամուտ կ'ըլլար, և ազնուական երեսփոխանները քաշուիլ ուզելով, համոզեցին վար դրին զանոնք, մօտալուտ դէպքի մը խօսքը ընելով անոնց։

Զօրքեր կը մօտենային. ալ Պոօլի ծերունի մարէչալը անոնց ընդհանուր հրամանատարութիւնը ընդունած էր, և պառօ՛ն Պէզէնվալ Բարիզի շրջապատող զինուորներուն մասնաւոր հրամանատարութիւնը ընդունած էր։ Մեծ մասամբ օտարացեալ տասնըհինգ զօրագունդ մայրաքաղաքին շուրջն էին։ Դրանիկներուն պարծենկոտ և յաւակնոտ վարմունքը յայտարար էր վտանգին, և բռնապետական ծայրայեղօրէն հակամէտ դաւադիրները այսպէս իրենք իսկ կը վտանգէին իրենց ծրագիրները։ Ժողովրդային երեսփոխանները, իմանալով, ո՛չ թէ դեռ բոլորովին ծանօթ չեղող և թագաւորին անգամ մասամբ միայն ծանօթ եղող ծրագրին մանրամասնութիւնները, բայց գոնէ բանի միջոցներու գործադրութեան պարագան, զայրացած՝ դիմադրութեան միջոցներ կը խորհէին։ Չի գիտցուիր և հաւանաբար բնաւ պիտի չգիտցուի թէ Յուլիս 14ի ապստամբութեան մէջ ի՛նչ եղած է գաղտնի միջոցներուն մասը. բայց անիկա մեծ կարեւորութիւն չունի. ազնուականութիւնը կը դաւէր, ժողովրդական կուսակցութիւնը ևս կրնար դաւել։ Գործածուած միջոցները նոյնը ըլլալով, կը մնայ դատելու արդարութիւնը, և արդարութիւնը անոնց կողմէ չէր որոնք կ'ուզէին երեք կարգերուն գումարումէն ձեռք քաշել՝ որոշումներն փոխելով, ազգային ներկայացուցչութիւնը լուծել, և անոր ամէնէն քաջասիրտ երեսփոխաններուն դէմ գուալ։

Միրապօ մտածեց թէ իշխանութիւնը վախցնելու ամէնէն ապահով միջոցն էր պարտաւորել զայն որ հրապարակաւ վիճաբանի ա՛յն անօրինութեանց վրայ՝ զորս յայտնապէս կ'ընէր ան։ Ասոր համար պէտք էր բացէ ի բաց ամբաստանել զայն։ Եթէ վարանէր պատասխանելու, եթէ քաշուէր, արդէն իսկ դատուած կ'ըլլար. ազգը կ'իմանար և ոտքի կ'ելլէր։

Միրապօ Սահմանադրութեան աշխատութիւնները դադրեցնել տուաւ, և առաջարկեց խնդրել Թագաւորէն որ զօրքերը ետ ճամբէ։ Իր խօսքերուն մէջ վեհապետին հանդէպ յարգանքը խառնեց կառավարութեան մասին ամենախիստ յանդիմանութիւններուն հետ։ Ըսաւ թէ ամէն օր նոր զինուորներ առաջ կուգան. թէ բոլոր անցքերը գոցուած են. թէ կամուրջները, ճեմելայրերը զինուորական պահականոցներու փոխուած են. թէ յայտնի և թագուն խորհուրդներ, հապշտապ հրամաններ և հակահրամաններ ամենուն աչքին կը զարնեն և պատերազմ կ'ազդարարեն։ Այս խորհուրդներուն վրայ դառն կշտամբանքներ աւելցնելով. «Ազգին առջեւ կը ցուցնեն, ըսաւ, աւելի ըսպառնալից զինուորներ որքան թշնամիի մը արշաւանք մը անոնց պիտի չհանդիպի թերեւս, և գոնէ հազար անգամ աւելի որքան չկրցան հաւաքել օգնելու համար իրենց հաւատարմութեան զոհ գացող բարեկամներու, և մանաւանդ պահպանելու համար Հոլանտացիներուն ա՛յնքան թանկագին, ա՛յնքան սիրով

ձեռք բերուած բայց ա՛յնքան ամօթալի կերպով կորսուած զինակցութիւնը ։ »

Իր ճառը խոյսն ողողուեցաւ ծափերով, իր առաջարկած ուղերձը ընդունուեցաւ ։ Միայն թէ, որովհետեւ զինուորներուն հետ ճամբուելը խնդրելով առաջարկած էր անոնց տեղը քաղաքինի պահակներ գործածել, այդ յօդուածը ջնջուեցաւ. չորս ձայնի դէմ միաձայնութեամբ քուէարկուեցաւ ուղերձը ։ Այս ուղերձին մէջ, որ նշանաւոր մնացած է, զոր կ'ըսեն թէ գրաւոր չպատրաստեց, այլ բոլոր անոր գաղափարները իր բարեկամներէն մէկուն թելադրեց, Միրաբօ կը նախատեսէր գրեթէ բոլոր ըլլալիքը. խուժանին պայթումը եւ զինուորներուն դասալքութիւնը քաղաքացիներուն հետ անոնց շփումովը ։ Որքան ճարտար նոյնքան յանդուգն, կը համարձակէր հաւաստել թագաւորին թէ իր խոստումները բնաւ ունայն պիտի չըլլային. «Դուք մեզ կանչեցիք, կ'ըսէր անոր, թագաւորութիւնը վերածնելու համար. ձեր բաղձանքը պիտի կատարուի, հակառակ որոգայթներու, դժուարութիւններու, վտանգներու ... ևն.»

Ուղերձը մատուցուեցաւ քսանչորս անդամներու պատուիրակութեան մը կողմէ ։ Թագաւորը, չուզելով իր միտքը յայտնել, պատասխանեց թէ զօրքերու այս հաւաքումին նպատակն էր միայն հանրային անդորրութեան պահպանութիւնը եւ Ժողովին վայելուչ պաշտպանութիւնը, թէ սակայն զատ, եթէ Ժողովը կը վախնար անկէ, պիտի տեղափոխէր զայն Սուասոն կամ Նուայոն, եւ թէ ինքն ալ Գոմբիէնեի պիտի երթար ։

Ժողովը չէր կրնար գո՞հ ըլլալ այդպիսի պատասխանով մը, մանաւանդ մայրաքաղաքէն զինքը հեռացնելու առաջարկութենէն երկու բանակներու միջեւ դնելու համար զայն ։ Գրիյեոնի կոմսը առաջարկեց վստահիլ պարկեշտ թագաւորի մը խօսքին ։ «Պարկեշտ թագաւորի մը խօսքը, յարեց Միրաբօ, իր նախարարութեան վարմունքին համար յանի երաշխաւոր մըն է. մեր թագաւորներուն վրայ մեր կոյր վստահութիւնը մեզի կորսնցուցած է, մենք զինուորներուն հետ կանչուիլը պահանջեցինք, ո՛չ թէ անոնց առջեւէն փախչիլ. պէտք է պնդել տակաւին եւ անդադար ։ »

Այս կարծիքին ոյժ չտրուեցաւ ։ Միրաբօ բաց միջոցներու վրայ ա՛յնքան պնդող մար էր, որ կարելի էր ներողամիտ ըլլալ գաղտնի մեքենայութիւններու, եթէ իրաւ է որ գործածեց զանոնք ։

Յուլիս 11 էր. Նէքէր քանիցս ըսած էր թագաւորին որ, եթէ իր ծառայութիւններէն չէր ախորժեր, պիտի քաշուէր ամենայն հնազանդութեամբ ։ «Կը պահեմ տուած խօսքդ», պատասխանած էր թագաւորը ։ 11ին իրիկունը, Նէքէր տոմս մը ընդունեց որով Լուի ԺԶ. կը հրաւիրէր զինքը խոստումը բռնել, կը ստիպէր զայն որ մեկնի, եւ կը յարէր թէ վստահ ըլլալով իրեն վրայ կը յուսար որ իր մեկնումը գաղտնի պիտի պահէ ամենուն ։ Նէքէր, արդարացնելով վեհապետին պատուաւոր վստահութիւնը, կը մեկնէր առանց բան մը ըսելու իր շրջակայ մարդոց, ո՛չ իսկ իր աղջկան, եւ քանի մը ժամէն Վերսայլէն շատ հեռի կը գտնուէր ։ Երկրորդ օրը, Յուլիս 12, կիրակի էր ։ Բարիզի մէջ զրոյց տարածուեցաւ թէ Նէքէր ճամբուած էր, ինչպէս նաեւ Մօնմօռէն, տը Լա Լիւզէռն, տը Բիւյզէկիւռ եւ տը Սէն-Բրիէ ։ Կը ծանուցուէր թէ անոնց տեղ պաշտօնի անցած են տը Պրըթէօյլ, տը Լա Վօկիւյոն, տը Պռօկլի, Ֆուլօն եւ Տամէքուռ, գրեթէ ամենքն ալ ծանօթ ժողովրդային դատին իրենց ընդդիմութեան համար ։ Տագնապը կը տարածուի Բարիզի մէջ ։ Արքայական Պալատ կ'երթան ։ Երիտասարդ մը, այնուհետեւ ծանօթ իր հանրապետական ափինով, քնքուշ այլ

բորբոք հոգիով մը ծնած, Գամիլլ Տէմուլէն, սեղանի մը վրայ ելած, ատրճանակներ ցոյց տալով աղաղակելով ի զէ՜ն, ծառի ճիւղ մը փրցուց զոր գըլխանշան ըրաւ իրեն և յորդոր կարդաց ամէնուն իրեն հետեւելու: Ծառերը իսկոյն տերեւաթափ եղան, և ամբոխը գնաց մոմէ կիսանդրիներ պարունակող մուզէոն մը: Ձեռք անցուցին Նէքէրի և Օրլէանի դուքսին կիսարձանները, վերջիններն համար կ'ըսուէր թէ աքսորի սպառնալիք եղած է անոր, և յետոյ ցրուեցան Բարիզի փողոցներուն մէջ: Ամբոխը Սէնթ-Օնօրէ կ'անցնէր, երբ Վանտօմ հրապարակին մօտ հանդիպեցաւ Արքայական-Գերման Ջոկատի մը, որ անոր վրայ խոյանալով՝ քանի մը հոգի վիրաւորեց, ի մէջ այլոց, Ֆրանսական պահակախումբէն զինուոր մը: Այս վերջինները, բոլորովին ժողովուրդին կուսակից և Արքայական-Գերման ջոկատին դէմ, որուն հետ նախընթաց օրերուն կռիւ մը ունեցած էին, Լուի ԺԵ. հրապարակին մօտ բանակած էին, կրակ կ'ընեն Արքայական-Գերման ջոկատին վրայ: Այս ջոկատին հրամայող իշխան Լամպէսք իսկոյն կը քաշուի Թիւյլըրիի պարտէզին կողմը, կրակ կ'ընէ հոն շրջագայող հանդարտ ամբոխին դէմ, ծերունի մը կը սպաննէ շփոթութեան միջոցին, և պարտէզը պարպել կու տայ: Այս պահուս, Բարիզը պաշարող զինուորները կը համախմբուին Ելիսեան Դաշտին և Լուի ԺԵ. հրապարակին վրայ: Սարսափը այլ եւս սահման չունենար և կատաղութեան կը փոխուի: Քաղաքին ամէն կողմէն կը թափին մարդիկ, ի զէ՜ն, ի զէ՜ն գոչելով: Խուժանը քաղաքապետարան կը դիմէ զէնք պահանջելու համար: Ընդհանուր ժողովը կազմող ընտրողները հոն հաւաքուած էին: Կը յանձնեն զէնքերնին չկրնալով այլեւս մերժել, և զորս արդէն սկսած էին թալանել երբ իրենք կը հաւանէին շնորհել զանոնք: Այս պահուս այս ընտրողները կը կազմէին միակ հաստատեալ իշխանութիւնը: Ամէն գործօն հեղինակութենէ զուրկ, պարագային համեմատ կ'առնեն պէտք եղած մարդիկը, և կը հրամայեն շրջանակներուն գումարումը: Բոլոր քաղաքացիները հոն կ'երթան խուժանին միջնորդութենէն և միանգամայն արքայական զօրքերուն յարձակումէն զերծ մընալու միջոցներուն վրայ խորհրդակցելու համար: Գիշերանց, ժողովուրդը, որ միշտ կը վազէ զինքը հետաքրքրող բանին կողմը, կը կտրէ ու կ'այրէ ցցապատնէշները, կը ցրուէ մաքսի բաժի պաշտօնեաները, և բոլոր մուտքերը ազատ կը դարձնէ: Զինավաճառներուն խանութները կը թալանուին: Ռէվէյեօն տունին մէջ տեսնուած այն աւազակները, որոնք ամէն առթիւ կ'երեւան կարծես հողին տակէն դուրս ելլելով, ցիցերով ու բիրերով զինուած կը տեսնուին կրկին և սարսափ կը տարածեն: Այս դէպքերը տեղի կ'ունենային Յուլիս 12ի կիրակի գիշերը, և 12էն երկուշաբթի լուսնալու գիշերը, և կիրակի գիշերէն Յուլիս 13 լուսնալու երկուշաբթին: Երկուշաբթի առտու, ընտրողները, միշտ քաղաքապետարանին մէջ հաւաքուած, կը կարծեն աւելի օրինական ձեւ մը տուած ըլլալ իրենց հեղինակութեան. հետեւաբար իրենց քով կը կանչեն վաճառականներուն պետը, որ սովորական վարիչն էր քաղաքին: Անիկա չի հաւանիր տեղի տալ բայց եթէ օրինական ձեւով, պահանջումի մը վրայ: Այնպէս կ'ընեն արդարեւ, և իրեն իբրեւ ընկեր կուտան բաւական թիւով ընտրողներ. այսպէս կը կազմեն բոլոր իրաւասութիւններով օժտուած քաղաքապետութիւն մը, որ իրեն մօտ կը հրաւիրէ ոստիկանութեան պետը, և քանի մը ժամէն կը խմբագրէ ապառազինութեան յատակագիծ մը քաղաքային զինուորութեան համար:

Այս զինուորութիւնը, քաղաքացի-

նիրէն կազմուած, պիտի բաղկանար քառասունըութը հազար հոգիէ, օրուարձաններէն և չքաւորներէն հայթայթուած։ Որոշիչ նշանը՝ փոխանակ կանանչ գլխանոցանին՝ պիտի ըլլար բարիզեան կարմիր և կապոյտ գլխանոցներ։ Պիտի ձերբակալուէր, պիտի զէնքերէց ըլլար, պիտի պատժուէր ո և է մարդ, որ զինուած և այս նշանով բռնուէր, առանց քաղաքային պահակախումբին մէջ իր շրջանակին կողմէ զինուորագրուած ըլլալու։ Ազգային պահակներու առաջին ծագումը այսպէս եղաւ։ Բոլոր շրջանակները ընդունեցին այս յառաջարկը, և փութացին գործադրութեան դնել զայն։ Միևնոյն առաւօտուան ընթացքին մէջ, ժողովուրդը աւերուքանը բրած էր Սէն-Լազարի տունը հոն ցորեն փնտռելու համար։ Զինարանն ալ կոտրած էր զէնք առնելու համար, և թաղուած տեղերէն հինաւուրց զրահներ հանեց և անոնցմով սպառազինուեցաւ։ Սաղաւարտակիր և բրակիր ամբոխ մը ողողեց քաղաքը։ Ժողովուրդը այնուհետև թագաւորի թշնամի երևցաւ. իր սովորական փոփոխամտութեամբ անշահախնդրութիւն կը կիզծէր, ոսկին կը յարգէր, զէնքերը միայն կ'առնէր, և ինք անձամբ կը ձերբակալէր աւազակները։ Ֆրանսական պահակները և զինուորային քաղաքապահները իրենց ծառայութիւնը մատուցած ըլլալով քաղաքային պահակներուն մէջ առնուեցան անոնք ալ։

Մինչ զէնք կը պահանջուէր մեծագոյն։ Քաղաքապետ Ֆլէսէլ, որ նախ գլխաւորած էր իր քաղաքակիցներուն, հիմա անոնց ցոյց կուտար, և նոյն օրուան համար խել 12,000 հրացան կը խոստանար, և յաջորդ օրերուն համար ալ աւելի։ Կը յայտարարէր թէ անծանօթ զինավաճառի մը հետ սակարկութիւն բրած կնքուցած էր։ Բայց անցած ժամանակին սակարկութիւնը նկատելով այս բանը դժար կ'երևնար։ Սակայն եօթ իրիկուն եղաւ, Ֆլէսէլի կողմէ ծանուցուած ռազմանիւթի սնտուկները Քաղաքապետարան տարուեցան, — բացին զանոնք և լեցուն գտան հին ճերմակեղէններով։ Ամբոխը, աս տեսնելով, կատղեցաւ քաղաքապետին դէմ, որ ըսաւ թէ խաբուեր է։ Ամբոխը հանդարտեցնելու համար ուղղեց զայն դէպի Շառթրէօ, վստահեցնելով զայն թէ զէնք պիտի գտնեն հոն։ Վանականները զարմանքով ընդունեցին այս կատաղի ամբոխը, իրենց ներքին վայրերը տարին և յաջողեցան համոզել թէ քաղաքապետին ծանուցածէն ոչինչ ունէին իրենք։

Ժողովուրդը, ամէն ժամանակէ աւելի զայրացած, ետ դարձաւ, մատնութի՛ւն աղաղակելով։ Զայն գոհացնելու համար հրամայուեցաւ 50,000 ցից շինել։ Վէրսայլի համար սահմանուած վառօդներ Սէն գետն ի վար կ'իջնէին մակոյկներով. ձեռք ձգեցին զանոնք, և ընտրող մը անոնց բաշխումը կատարեց ամենամեծ վտանգներու մէջտեղ։

Սարսափելի շփոթութիւն մը կը տիրէր այդ Քաղաքապետարանին մէջ, որ իշխանութեանց կեդրոնն էր, քաղաքապահ զինուորութեան ընդհանուր բանակատեղին և բոլոր գործողութեանց միջակէտը։ Հոն պէտք էր հոգ տանիլ թէ՛ արտաքին պաշտպանութեան, որ արքունիքին կողմէ սպառնալիքի տակ էր, և թէ ներքին պաշտպանութեան, որ աւազակներուն սպառնալիքին տակ էր։ Ամէն վայրկեան հարկ էր հանդարտեցնել ժողովուրդին կասկածները, որ ինքզինքը մատնուած կը կարծուէր, և իր մոլեգնութենէն ազատել զանոնք, որ իր անվստահութիւնը կը գրգռէին։ Կառքեր վար կը դրուէին հոն, կառուաններու ճամբան կը կտրէին, ճամբորդներ իրենց ճամբան շարունակելու թոյլտուութեան կը սպասէին։ Գիշերը Քաղաքապետարանը անգամ մը եւս վտանգի ենթարկուեցաւ աւազակներէն. ընտրող մը քաջակորովի Մօրօ տը Սէն-Մէրի, որ

պաշտօն ունէր հոն հսկելու, տակառներով վառօդ բերել տալու, և սպառնաց շէնքը օդը հանել։ Աս լսելով՝ աւազակները հեռացան։ Այդ միջոցին, իրենց տուները փակուած քաղաքացիները պատրաստ կեցած էին ամէն տեսակ յարձակումի հանդէպ. փողոցներուն քարերը հանելով, խրամներ բացած էին, պաշարումի մը դիմադրելու ամէն միջոցները ձեռք առնելով։

Մայրաքաղաքին այս խռովութեանց միջոցին, ահ ու սարսափը կը թագաւորէր ժողովին մէջ։ Պատրաստուած դէպքերէն տագնապահար, 13ի առտուն նիստ գումարած էր, Բարիզի մէջ անցած դարձածէն դեռ անգէտ։ Առաջին անգամ երեսփոխան Մունիէ կը բողոքէ նախարարներուն ճամբուելուն դէմ։ Անոր ետևէն բեմ կ'ելլէ Լալի-Թօլանդալ, հիանալի դրուատիքը կը հիւսէ Նեքերի, և երկուքն ալ միաբան կ'առաջարկեն ուղերձ մը, որով թագաւորէն պիտի խնդրուի շնորհազուրկ նախարարներուն ետ կանչուիլը։ Ազնուականներուն մէկ երեսփոխանը, Վիրիէօ, կ'առաջարկէ նոյն իսկ Յունիս 17ի որոշումները հաստատել նոր երդումով մը։ Գլէրմօն-Թօնէռ կ'ընդդիմանայ այս առաջարկութեան, իբրև անօգուտ, և ժողովին կողմէ արդէն իսկ տրուած յանձնառութիւնները յիշեցնելով, կ'աղաղակէ. «Սահմանադրութիւնը պիտի ըլլայ, կամ մենք այլ ևս պիտի չըլլանք։» Վիճաբանութիւնը արդէն կ'երկարէր, երբ իմացուեցան 13ի առտուան Բարիզի խռովութիւնները, և մայրաքաղաքին գլխուն սպառնացած դժբախտութիւնները՝ մէկ կողմէ անկարգապահ Ֆրանսացիներուն, որոնք Լա Ռօշֆուքօ դուքսին բացատրութեան համեմատ, ո՛չ մէկուն խօսքը մտիկ կ'ընէին, և միւս կողմէ կարգապահ օտարականներուն միջոցն, որոնք բռնապետութեան ձեռքին մէջ էին։ Կ'որոշուի անմիջապէս պատուիրակութիւն մը ղրկել թագաւորին, մայրաքաղաքին աւերածութիւնը անոր նկարագրելու, և թախանձելու որ հրամայէ զինուորներուն ետ կանչուիլը և քաղաքային պահնորդներուն հաստատուիլը։ Թագաւորը պաղ և անխռով պատասխան մը կուտայ՝ որ իր որոշին հետ համաձայն չէր, և կը կրկնէ թէ Բարիզ չի կրնար ինքզինքը պահել։ Այն ատեն, ժողովը, անհնազանդ քաջութեան մը մերանալով, յիշատակելի որոշում մը կուտայ որով կը պնդէ զօրքերուն ճամբուելուն և քաղաքային պահակներուն հաստատուելուն վրայ, պատասխանատու կը յայտարարէ նախարարները և իշխանութեան բոլոր վարիչները, պատրաստուած դժբախտութեանց պատասխանատուութիւնը կը ծանրացնէ թագաւորին խորհրդականներուն վրայ, ի՛նչ աստիճանի վրայ ալ որ ըլլան. հանրային պարտքը ազգին հիմերու վրայ կը դնէ, կ'արգիլէ բերան առնել սնանկութեան անպատիւ անունը, կը պնդէ իր նախորդ վճիռներուն վրայ, և նախագահին կը հրամայէ իր ցաւակցութիւնը յայտնել Նեքերի ինչպէս նաև ճամբուած միւս նախարարներուն։ Այս կորովալից և խոհեմական անօրինութիւններէն վերջ, ժողովը, ամէն անձնական բռնութենէ իր անդամները զերծ կացուցանելու համար, կը յայտարարէ թէ մնայուն կերպով նիստ կը գումարէ, և փոխ-նախագահ կ'անուանէ Լաֆայէթը, թեթևցընելու համար Վիէնի յարգամեծար արքեպիսկոպոսը, որուն իր տարիքը չի թոյլատրեր նիստին յարատևել գիշեր ցերեկ։

13էն 14 լուսնալու գիշերը այսպէս անցաւ վրդովումի և տագնապներու միջև։ Մէն մի վայրկեան ալխտալի լուրեր կը սրուէին և կը հակասուէին. արքունիքին բոլոր ծրագիրները ծանօթ չէին, բայց գիտէին թէ շատ երեսփոխաններ վտանգի տակ էին, թէ բռնութիւն պիտի գործածուէր Բարիզի և

ժողովին ամէնէն աչքառու անդամներուն դէմ։ Վայրկեան մը առկախուած նիստը վերսկսաւ տասուան ժամը հինգին, Յուլիս 14։ Ժողովը պատկառազդեցիկ անդորրութեամբ մը Սահմանադրութեան աշխատութիւնները վերսկսաւ, մեծ խոհականութեամբ և արդարադատութեամբ վիճաբանեցաւ անոր գործադրութիւնը փութացնելու և խոհեմութեամբ զայն առաջ վարելու միջոցներուն վրայ։ Մասնախումբ մը անուանուեցաւ հարցումները պատրաստելու համար. կը բաղկանար Օթէնի եպիսկոպոսէն, Պօռտոյի արքեպիսկոպոսէն, Լալիէ, Գլէռմոն-Թօնէռ, Մունիէ, Սիյէսէ, Շափըլիէ և Պէռկասէ։ Մինչեւ կէս օր անցաւ այսպէս. մինչ ատեանի չարաչուք լուրեր կ'իմացուէին. կ'ըսուէր թէ թագաւորը գիշերը պիտի մեկնէր, և ժողովը պիտի մատնուէր քանի մը օտար զօրագունդերու։ Այդ միջոցին իշխանազուններ, Բօլինեակի դքսուհին և Թագուհին տեսնուեցան, որ կը ճեմէին Նարնջարանին մէջ, շոյելով սպաները ու զինուորները և զովացուցիչներ բաշխելով անոնց։ Կ'երեւի թէ մեծ ծրագիր մը երկնուած էր 14էն 15ի գիշերուան համար, թէ Բարիզ յարձակում պիտի կրէր եօթը կէտերու վրայ, Արքայական Պալատը պիտի շրջապատուէր, ժողովը պիտի լուծուէր, և Յունիս 23ի յայտարարութիւնը Ազգաժողովէն պիտի տարուէր, թէ վերջապէս գանձին պէտքերը պիտի հոգացուէին սնանկութեամբ և պետական գանձատոմսերով։ Ստոյգ է որ զինուորներուն հրամանատարները պատուէր տուած էին առաջ քալելու 14էն 15, թէ գանձատոմսերը շինուած էին, թէ զուիցերիացի պահակներուն զօրանոցները ռազմանիւթերով լեցուն էին, և թէ Պասթիլլի կառավարիչը բերդը պարպած էր, թողլով միայն քանի մը անհրաժեշտ կարասիներ։ Կէս օրէ վերջ ժողովին սարսափը կրկնապատկուեցաւ. տեսնուեցաւ Լամպէսք իշխանին քառատրոփ արշաւելը. կը լսուէր թնդանօթին որոտումը, և ականջները գետին կը դնէին ամենափոքր աղմուկները լսելու համար։ Միրապօ այն ատեն առաջարկեց դադրեցնել ամէն վիճաբանութիւն, և երկրորդ պատուիրակութիւն մը ղրկել Թագաւորին։ Պատուիրակութիւնը իսկոյն մեկնեցաւ նոր թախանձանքներ ընելու համար։ Այս պահուս ժողովէն երկու անդամներ, շտապաւ Բարիզէն գալով, հաւատացին թէ հոն զինուոր կը ջարդեն. անոնցմէ մէկը վկայեց թէ զրահիր կարուած և սեւ հագած զինակ մը տեսած էր։ Կը սկսէր գիշեր ըլլալ. ծանուցուեցաւ երկու ընտրողներու ժամանումը։ Խորին լռութիւն կը տիրէր սրահին մէջ. մութին մէջ կը լսուէր անոնց քայլերուն շշուկը, և անոնց բերնէն լսուեցաւ թէ յարձակում եղած էր Պասթիլլի վրայ, թէ թնդանօթ արձակուած էր, թէ արիւն կը հոսէր, և թէ ահաւոր աղէտքներ կը սպառնային։ Իսկոյն նոր պատուիրակութիւն մը զրկուեցաւ նախորդին վերադարձէն առաջ։ Ասոր մեկնած ատենը առաջինը կը հասնէր և կը բերէր Թագաւորին պատասխանը։ Թագաւորը հրամայած էր, կ'ըսէր, Արիսեան Դաշտին մէջ բանակած զօրքերը հեռացնել, և, քաղաքային պահնորդներուն կազմութիւնը իմանալով, սպաներ անուանուած էր անոնց հրամանատարութեան համար։

Երկրորդ պատուիրակութեան դարձին, Թագաւորը, մինչ աւելի խռովված, ըսաւ անոր. «Պարոննե՛ր, սիրտս հետզհետէ կտոր կտոր կ'ընէք Բարիզի աղէտքներուն վրայ ձեր պատմութեամբ։ Կարելի չէ որ անոնց պատճառը զօրքերու տրուած հրամանները ըլլան»։ Մինչեւ ցարդ բանակին հեռացումը միայն ձեռք բերուած էր։ Կէս գիշերէն երկու ժամ վերջն էր։ Բարիզ քաղաքին պատասխանուեցաւ թէ «երկու պատուի-



Պ Ա Ս Թ Ի Յ Լ Ի   Ա Ռ Ո Ւ Մ Ը

բակութիւններ գրկուած էին, և թէ թախանձանքները պիտի կրկնուէին յաջորդ օրը, մինչև որ ձեռք բերուի յաջողութիւնը՝ որուն իրաւունք ունին սպասելու Թագաւորին սրտէն, եթէ սակայն օտարին տպաւորութիւնները անոր շարժումները այլ ևս չկասեցնեն»: Նիստը պահ մը առկախուեցաւ, և իրիկունը իմացուեցաւ 14ի ցերեկուան դէպքերը:

Ժողովուրդը, 13ի գիշերէն սկսեալ, դիմած էր դէպի Պաստիլ. հրացանի քանի մը հարուածներ արձակուած էին, և կ'երևէր թէ ղրդիչները քանիցս արտասանած էին Օ՜ն, դէպի Պաստի՛լ աղաղակը: Քանի մը տետրակներու մէջ կը գտնուէր անոր քանդումին բաղձանքը. այսպէս գաղափարները կանխաւ այդ ուղղութիւնը առած էին: Մինչ զէնք կը պահանջուէր: Զրոյց տարածուած էր թէ Անկար զինուորներու հիւանդանոցին մէջ ստուար մթերք մը կը պարունակէր անկէց: Իսկոյն հոն կ'երթան: Հրամատարը, որ Սօմպրէօյլ մարքը կ'արգիլէ, ըսելով թէ Վերսայլէն պէտք է հրաման ուզէ: Ժողովուր-

դը բան մը չուզեր մտիկ ընել, հիւանդանոցին վրայ կը խոյանայ, կը յափշտակէ թնդանօթները և մեծաքանակ հրացան։ Արդէն այդ պահուն ահագին ամբոխ մը կը պաշարէր Պաստիլը։ Պաշարողները կ'ըսէին թէ բերդին թնդանօթը քաղաքին վրայ ուղղուած էր և թէ պէտք էր արգիլել անոր վրայ արձակուիլը։ Շրջանակի մը երեսփոխանը կը պահանջէ ամրոցին մէջ մտնել, և կ'արտօնուի հրամանատարէն։ Այցելելով ամէն կողմ, կը գտնէ երեսուն երկու զուիցերիացի և ութսուն երկու անկար զինուոր, և պահակներէն խոստում կ'առնէ կրակ չընել եթէ բերդին վրայ յարձակում չըլլայ։ Այս բանակցութեանց միջոցին, ժողովուրդը իր երեսփոխանին երեւնալը չտեսնելով, կը սկսի զայրանալ, և անիկա կը պարտաւորուի ինքզինքը ցուցնել խուժանը հանդարտեցնելու համար։ Վերջապէս կը քաշուի առտուան ժամը տասնըմէկին ատենները։ Կէս ժամ հազիւ անցած էր, զինեալ նոր խումբ մը կը հասնի պոռալով. «Պաստիլը կ'ուզենք»։ Պահակազօրքը կը հրաւիրէ յարձակողները քաշուելու, բայց անոնք կը յամառին։ Երկու հոգի անվեհերութեամբ կը բարձրանան պահականոցին տանիքին վրայ, և կացինի հարուածներով կը խորտակեն կամուրջին շղթաները. կամուրջը կ'իյնայ։ Ամբոխը հոն կը գահավիժի, և երկրորդ կամուրջի մը կողմը կը վազէ, անկէց ալ անցնելու համար։ Այս վայրկենին հրացանաձգութիւն մը կը դադրեցնէ զայն. ետ ետ կը քաշուի բայց կրակ ընելով։ Կռիւը քանի մը վայրկեան կը տեւէ։ Քաղաքապետարան հաւաքուող ընտրողները, հրացանաձգութեան ձայնը լսելով, միշտ աւելի կը տագնապին, և երկու պատուիրակութիւններ կը ղրկեն, իրարու ետեւէ, հրաւիրելու համար հրամանատարները որ բերդին մէջ մտցնէ պարիզեան քաղաքապահներէն ջոկատ մը, ա՛յն փաստով թէ Բարիզի մէջ ամէն զինուորական ոյժ քաղաքին ձեռքին տակ ըլլալու է։ Այս երկու պատուիրակութիւնները յաջորդաբար կը հասնին։ Այս ժողովրդային պաշարումի միջոցին շատ դժուար էր իրարու խօսք հասկցնելը։ Թմբուկին թնդիւնը, դրօշի մը տեսքը պահ մը կը դադրեցնեն կրակը։ Երեսփոխանները կը յառաջանան. պահակազօրքը անոնց կը սպասէ, բայց անկարելի է խօսք հասկնալ։ Հրացանի հարուածներ կ'արձակուին, չի գիտցուիր ո՛ւրկէց։ Ժողովուրդը, համոզուած ըլլալով թէ մատնուած է, կը խուժէ բերդը կրակի տալու համար. պահակազօրքը այն ատեն ռումբ կ'արձակէ. ֆրանսական պահակները թնդանօթով կը հասնին և կը սկսին կանոնաւոր յարձակում։

Մինչ այս մինչ այն, պարոն տը Պէզանվալի կողմէ Պաստիլի հրամանատար Տըլօնէյի ուղղուած մէկ տոմսը ձեռք կը ձգուի և կը կարդացուի Քաղաքապետարանին մէջ։ Պէզանվալ կը յորդորէր Տըլօնէյը դիմադրել, ապահովցնելով թէ ընդհուպ օգնութիւն պիտի հասնէր իրեն։ Եւ արդարեւ այդ օրուան իրիկունը պիտի գործադրուէին արքունիքին ծրագիրները։ Սակայն Տըլօնէյ, տեսնելով որ իրեն օգնութեան հասնող չկայ, և ժողովուրդին ալ կատաղութիւնը տեսնելով, վառուած պատրոյգ մը կը բռնէ և կ'ուզէ բերդը օդը հանել։ Պահակազօրքը կ'ընդդիմանայ, և կը պարտաւորէ զայն անձնատուր ըլլալ. Նշանները կը տրուին, կամուրջ մը վար կ'իջեցուի։ Պաշարողները կը մօտենան և կը խոստանան ոև է չարիք չգործել. բայց խուժանը կը գահավիժի և բոլոր բակերը կ'արշաւէ։ Զուիցերիացիք կը յաջողին իրենք զիրենք ազատել։ Յարձակում կրող անկար զինուորները հազիւ հազ կը յափշտակուին ջարդուելէ և ժողովուրդին կատաղութենէն ֆրանսացի պահակներուն անձնուիրութեամբ։ Այս պահուս գեղանի, ծաղ-

կատի և ղողահար աղջիկ մը կը ներկայանայ. Տըլօնէյի աղջիկը կ'ենթադրեն զայն, կը բռնեն, և ահա քիչ մնաց պիտի այրուէր, երբ քաջ զինուոր մը կը խոյանայ, կատղածներուն ձեռքէն կը յափշտակէ զայն, կը վազէ ապահով տեղ մը կը դնէ զայն, և կը վերադառնայ խառնուրդին:

Ժամը հինգուկէսն էր: Ընտրողները ամենասաստիկ անձկութեան մէջ էին, երբ խուլ և երկարաձիգ մռնչիւն մը կը լսեն: Ամբոխ մը կը խուժէ յաղթութիւն աղաղակելով: Սրահ կ'արշաւեն. ֆրանսացի պահակ մը, վէրքերով ծածկուած, դափնիներով պսակուած, յաղթանակաւ կր տարուի ժողովուրդին կողմէ: Պասթիյլի կանոնագիրը և բանալիները սուինի մը ծայրն են. ամբոխին վերեւ բարձրացող արիւնոտ ձեռք մը օձիքի ճարմանդ մը ցոյց կուտայ. քիչ առաջ գլխատուած կառավարիչ Տըլօնէյինն էր: Երկու ֆրանսացի պահակներ, Էլի և Իւլէն, պաշտպանած էին զայն մինչեւ յետին վայրկեանը: Ուրիշ զոհեր ալ ինկած էին, թէեւ խուժանին վայրագութեան դէմ հերոսաբար պաշտպանուած: Տեսակ մը մոլեգնութիւն կը սկսէր պայթիլ քաղաքապետ Ֆլէսէլի դէմ որ իբր մատնիչ կ'ամբաստանուէր: Կը պնդէին թէ ան ժողովուրդը խաբած էր քանիցս զէնք խոստանալով զոր չէր ուզեր տալ: Սրահը լեցուն էր երկար կռուէ մը եկող մարդոցմով, որոնց ետեւէն ալ կը խուժէին ուրիշ հարիւր հազարներ, որոնք դուրսը մնալով կ'ուզէին մտնել իրենց կարգին: Ընտրողները կը ջանային ժողովուրդը արդարացնել խուժանին աչքին: Կը սկսէր իր վստահութիւնը կորսնցնել, և արդէն դէպի դէզին կարած կ'աղաղակէ. «Քանի որ կասկածելի եմ, պիտի քաշուիմ:—Ո՛չ ըսին իրեն, Արքայական Պալատ եկուր հոն դատուելու համար:» Այն ատեն կ'իջնէ հոն երթալու համար: Խուժանը կը դղրդի, կը պաշարէ զայն, կը խուժէ շուրջը: Բէլթիէ քարափը հասնելուն, անծանօթ մը գետին կը տապալէ զայն ատրճանակի մը հարուածով: Կ'ըսուի թէ Տըլօնէյի վրայ նամակ մը գտնուած էր, որուն մէջ Ֆլէսէլ կ'ըսէր իրեն. «Լաւ դիմացէ՛ք, մինչ ես Բարիզցիները խաղցնեմ գլխանշաններով:»

Ասոնք եղած էին այդ օրուան դըժբախտ պատահարները: Սարսափի շարժում մը յաջորդեց ընդ փոյթ յաղթութեան գինովութեան: Պասթիյլի յաղթականները, իրենց յանդգնութեան վրայ զարմացած, և վաղուան համար կարծելով կրկին գտնել իրենց դէմ անհուելի իշխանութիւնը, չէին համարձակեր այլ եւս իրենց անունը տալ: Մէն մի վայրկեան լուր կը հասնէր թէ զօրքերը կը յառաջանային Բարիզը քանդելու համար: Մօռօ տը Սէն-Մէրի, նո՛յնը՝ որ երէկ սպառնացած էր աւագներուն քաղաքապետարանը օդը հանել տալ, անդրդուելի մնաց, և երեք հազարէն աւելի հրաման տուաւ քանի մը ժամուան մէջ: Քաղաքապետարանին մէջ Պասթիյլի առումը իմացուելուն պէս, ընտրողները իմացուցին իսկոյն ժողովին, որ կէս գիշերին ընդունած էր լուրը:

Նիստը առժամաբար դադրեցուեցաւ, բայց լուրը արագութեամբ տարածուեցաւ: Արքունիքը մինչեւ այն ատեն չէր հաւատար ժողովուրդին կորովին, ծիծաղելով կայր խուժանի մը ճիգերուն վրայ որ կ'ուզէր գրաւել բերդ մը՝ զոր ի զուր ատենօք պաշարած էր մեծն Գօնտէ, արքունիքը խաղալ էր և քամահանքներով կը ծիծաղէր: Սակայն թագաւորը կը սկսէր մտատանջ ըլլալ. իր վերջին պատասխանները մինչեւ իսկ իր միտքը երեւան կը հանէին: Պառկած էր: Իր մեծ զգացումներով հանրածանօթ Լիանքուռի դուքը Լուի ԺԶ. ի մտերիմ բարեկամն էր, և հանդերձարանին արարողապետի իր պաշտօնով,

միշտ կը մտնէր կ'ելլէր անոր մօտ։ Բարիզի դէպքերը իմանալով, արտորնօք գնաց վեհապետին քով, արթնցուց զայն նախարարներուն հակառակ, և անցած դարձածը իմացուց անոր։ «Ի՜նչ ապստամբութիւն, գոչեց թագաւորը։ —Տէր Արքայ, յարեց Լիանգուռի դուքը, յեղափոխութիւն ըսէք։» Թագաւորը իր դիտողութիւններէն լուսաւորուած, հաւանեցաւ առտուն կանուխէն ժողովին երթալ։ Արքունիքն ալ տեղի տուաւ, և վստահութեան այս արարքը որոշուեցաւ։ Այդ միջոցին ժողովը նիստ կ'ընէր։ Ո՛չ ոք գիտէր թագաւորին ներշնչուած նոր տրամադրութիւնները, և կը խորհուէր նոր պատուիրակութիւն մը ղրկել իրեն, փորձելու համար ի գութ շարժել զայն, և ձեռք բերել անոր մէկ ի՛նչ որ դեռ կար չնորհուելիք։ Այս պատուիրակութիւնը մահաշուք դէպքերէն ի վեր հինգերորդն էր։ Քսանըչորս անդամներէ կը բաղկանար և ճամբայ պիտի ելլէր, երբ Միրապօ, ամէն ժամանակէ աւելի բուռն, կեցուց զայն. «Ըսէք թագաւորին, գոչեց, ըսէ՛ք անոր թէ օտար հրոսակները, որոնցմէ պաշարուած ենք, երէկ ընդունեցին իշխաններուն, իշխանուհիներուն, դրանիկներուն, դրանկուհիներուն այցելութիւնը և անոնց գգուանքները և անոնց յորդորները, և անոնց նուէրները։ Ըսէ՛ք անոր թէ ոսկիով և գինիով յղփացած այն օտար արբանեակները իրենց ամբարիշտ երգերուն մէջ գուշակեցին Ֆրանսայի ստրկացումը, և թէ անոնց վայրագ մաղթանքները կը պաղատէին Ազգային Ժողովին կործանումը։ Ըսէ՛ք անոր թէ նոյն իսկ իր պալատին մէջ, դրանիկները իրենց պարերը խառնեցին այդ բարբարոս երաժշտութեան ձայներուն, և թէ Ս. Պարթէլըմիի նախերգանքն ալ այսպէս եղած էր։ Ըսէք անոր թէ այն Հանրին, որուն յիշատակը տիեզերքը կ'օրհնէ, իր նախահայրերէն այն զոր ինք կ'ուզէր իբրև տիպար առնել իրեն, պարէն կը մտցնէր ապստամբած Բարիզի մէջ, զոր ինք անձամբ կը պաշարէր, և թէ հիմա իր վայրագ խորհրդականները ճամբէն ետ կը դարձնեն այն ալիւրները զորս վաճառականութիւնը կը տանի հաւատարիմ և սովալլուկ Բարիզի մէջ»։

Պատուիրակութիւնը թագաւորին մօտ պիտի երթար. երբ իմացուեցաւ որ ան կուգայ ինքնաբերաբար, առանց թիկնապահի, առանց ուղեկիցի։ Ծափեր կը թնդան. «Սպասեցէ՛ք, ըսաւ Միրապօ լրջութեամբ, թո՛ղ թագաւորը մեզի գիտցնէ իր բարւոք տրամադրութիւնները։ Վշտի այս վայրկեանին մէջ տխուր յարգանք մը թո՛ղ ըլլայ վեհապետին մեր ընելիք ընդունելութիւնը։ Ժողովուրդներուն լռութիւնը թագաւորներուն դասն է։»

Լուի ԺԶ. այն միջոցին կը ներկայանայ իր երկու եղբայրներուն ընկերակցութեամբ։ Իր պարզ և սրտայոյզ ճառը բուռն խանդավառութիւն կը գրգռէ։ Կը վստահացնէ ժողովը, զոր առաջին անգամ ըլլալով՝ կ'անուանէ Ազգային Ժողով, մեղմօրէն ցաւ կը յայտնէ միտքէ անցուած անվստահութեան. «Դուք վախցաք, ըսաւ անոնց. է՛ ուրեմն, ես կը վստահիմ ձեզի։» Այս բառերը ծափերով ծածկուեցան։ Իսկոյն ոտքի կ'ելլեն երեսփոխանները, վեհապետը կը շրջապատեն, և հետիոտն կը տանին զայն մինչև դղեակ։ Ամբոխը կը խառնուի անոր բոլորտիքը, ամէն աչքերէ արցունք կը հոսի, և հազիւ կրնայ անցք մը բանալ այս բազմաթիւ թափորին միջև։ Այդ միջոցին թագուհին, պալատականներուն հետ պատշգամին վրայ կեցած, հեռուէն կը դիտէր այս սրտաճմլիկ տեսարանը։ Իր զաւակը բազուկներուն մէջ էր, աղջիկն ալ իր քով միամտօրէն կը խաղար եղբօրը մազերուն հետ։ Իշխանուհին, սաստիկ յուզուած, կարծես կ'ախորժէր Ֆրանսացիներուն այս սէրէն։ Աւա՜ղ, քանի՛

քանի անգամ այս չարաղէտ դժբախտու-թիւններու միջոցին փոխադարձ խանդաղատանք մը հաշտեցուց սիրտերը ։ Վայրկեան մը ամէն ինչ մոռցուած կը թուէր. բայց յաջորդ օրը, նոյն իսկ ա՛յն օրը, արքունիքը կը վերադառնար իր հպարտութեան, ժողովուրդն իր անվստահութիւններուն, և անոնց առնչութիւնը կը վերսկսէր իր ընթացքը ։

Հաշտութիւնը կնքուած էր Ժողովին հետ, բայց կը մնար կնքել Բարիզի հետ ։ Ժողովը նախ պատուիրակութիւն մը ղրկեց Քաղաքապետարան, թագաւորին հետ գործուած բարեբաստիկ հաշտութեան լուրը տանելու ։ Պայեի, Լաֆայէթ, Լալի-Թօլանտալ պատուիրակներուն մէջ կը գտնուէին ։ Ասոնց ներկայութիւնը ամենաբուռն ցնծութիւն տարածեց ։ Լալիի ճառը ա՛յնքան սրտագին հրճուանքներ պատճառեց որ զինքը յաղթանակաւ տարին Քաղաքապետարանին մէկ պատուհանը Ժողովուրդին ցուցադրելու համար ։ Ծաղկեպսակ մը դրուեցաւ անոր գլխուն վրայ. և այս յարգանքները ընդունեց ան ճիշդ դէմ առ դէմ այն հրապարակին, ուր իր հայրը հոգին փչած էր բերնին վրայ գեղոցով մը ։ Քաղաքապետ տարաբախտ Ֆլէսէլի մահը, և քաղքենի զինուորութեան հրամանատարութիւնը սահմանելու մասին Օմօնի դուքսին մերժումը բաց կը ձգէին քաղաքապետի մը և հրամանատարի մը անուանումը ։ Պայեի նշանակուեցաւ, և ամենաբուռն ծափահարութիւններու մէջտեղ Ֆլէսէլի յաջորդ անուանուեցաւ, Բարիզի քաղաքապետ անունին տակ ։ Լալիի գլխուն վրայ եղած պսակը անցաւ նոր քաղաքապետին գլխուն վրայ, ուզեց վերցնել զայն, բայց Բարիզի արքեպիսկոպոսը դարձեալ հոն դրաւ հակառակ անոր կամքին ։ Առաքինի ծերունին այն ատեն արցունքներ թափեց և համակերպեցաւ իր նոր պաշտօնին ։ Արժանի ներկայացուցիչ մեծ ժողովի մը՝ հանդէպ գահուն վեհափառութեան, նուազ կարող էր դիմադրելու համայնքի մը փոթորիկներուն դէմ ։ Այսու հանդերձ անձնուրացութիւն ընելով՝ ինքզինքը պիտի նուիրէր պարէններու խիստ դժուարին հոգածութեան և պիտի կերակրէր ժողովուրդ մը՝ որ ի վերջոյ ա՛յնքան ապերախտութեամբ պիտի փոխարինէր իրեն ։ Կը մնար քաղաքապահ զինուորութեան հրամանատարի մը անուանումը ։ Սրահին մէջ կը գտնուէր ազատագրուած Ամերիկայէն Բարիզ քաղաքին ղրկուած կիսարձան մը ։ Մօռօ տը Սէն-Մէռի ձեռքովը ցոյց տուաւ զայն. բոլոր աչքերը հոն ուղղուեցան. Լաֆայէթ մարքիզին կիսարձանն էր այն ։ Ընդհանուր աղաղակ մը հրամանատար անուանեց զայն ։ Իսկոյն գոհաբանական աղօթք մը քուէարկուեցաւ, և խմբովին գացին Նօթր-Տամ ։ Նոր ատենակալները, Բարիզի արքեպիսկոպոսը, ընտրողները, Ֆրանսական պահակներու, քաղաքապահ զինուորներու հետ խառնուած, դիմեցին հինաւուրց մայր եկեղեցին, տեսակ մը տրբեցութեամբ ։ Ճամբան ընկեցիկ մանուկներ Պայեիի ոտքերուն փարեցան, որ հիւանդանոցներուն համար մեծ աշխատութիւններ տարած էր. զայն իրենց մայրը կ'անուանէին ։ Պայեի իր թեւերուն մէջ սեղմեց զանոնք, իր զաւակները անուանելով ։ Հասան եկեղեցի, պաշտամունքը կատարուեցաւ, և յետոյ իւրաքանչիւր ոք տարածուեցաւ քաղաքին մէջ, ուր ցնորական խնդութիւն մը յաջորդած էր երէկի սարսափին ։ Այդ պահուն ժողովուրդը այցելած էր երկար ատենէ ի վեր ա՛յնքան ահարկու եղող այրը, որուն մուտքը հիմա բաց էր ։ Պասթիյլի ամէն կողմերը կը պտտէին անյագ հետաքրքրութեամբ մը և տեսակ մը սարսափով ։ Կը փնտռէին տանջանքի գործիքներ, խորունկ զնդաններ ։ Մանաւանդ տեսան հոն ահագին քար մը մութ և ճախճախուտ բանտի մը մէջ դրուած, որուն

կեդրոնը հաստատուած էր ծանր չըղթայ մը։

Արքունիքը, նո՛յնքան կոյր իր երկիւղներուն մէջ որքան եղած էր իր վստահութեան մէջ, ժողովուրդէն ա՛յնքան կը սարսափէր որ մէկ մի վայրկեան կ'երեւակայէր թէ բարիզեան բանակ մը Վերսայլի վրայ պիտի քալէր։ Առթուայի կոմսը, Բօլինեաք ընտանիքը, որ թագուհիին աչքին լոյսն էր, Ֆրանսայէն մեկնեցան, և առաջին տարագիրները եղան։ Պայեի եկաւ վստահացնել թագաւորը և յորդորեց զայն Բարիզ ճամբորդել, ինչ որ որոշուեցաւ թագուհիին և արքունիքին ընդդիմութեան հակառակ։

Թագաւորը պատրաստուեցաւ մեկնիլ։ Երկու հարիւր երեսփոխաններ պաշտօն ստացան ընկերակցիլ անոր։ Թագուհին խորին կսկիծով հրաժեշտի ողջոյններ մատոյց անոր։ Պահակներ ուղեկցեցան մինչեւ Սէվռ, ուր կեցան սպասելու համար անոր։ Պայեի, քաղաքապետութեան գլուխը անցած, ընդունեց զայն Բարիզի դուռներուն առջեւ, և անոր ներկայացուց ատենօք Հանրի Դ.ի ընծայուած բանալիները։ «Այն բարի թագաւորը, ըսաւ անոր Պայեի, գրաւած էր իր ժողովուրդը. այսօր ժողովուրդն է որ կրկին գրաւեց իր թագաւորը։» Վերսայլի մէջ օրէնսդիր եղող ազգը Բարիզի մէջ զինուած էր։ Լուի ԺԶ. քաղաք մտնելով ինքզինքը շրջապատուած տեսաւ լուռ և զունդ կազմած խուժանէ մը։ Քաղաքապետարան հասաւ (17 Յուլիս), անցնելով իր գլխուն վրայ ինչան պատուոյ խաչաձեւուած թուրերու կամարէ մը։ Պարզ և գրաւիչ էր իր ճառը։ Ժողովուրդը, որ չէր կրնար այլ եւս ինքզինքը զսպել, վերջապէս պայթեցաւ, և իր սովորական ծափերը չխնայեց թագաւորին։ Այս ծափերը քիչ մը սփոփեցին վհատաբեկին սիրտը. սակայն չկրցաւ ծածկել ուրախութեան շարժում մը՝ Սէվրի բարձունքներուն վրայ զետեղուած տեսնելով պահակները. և ի դարձին թագուհին, անոր պարանոցին փաթթելով, ողջագուրեց զայն իբրեւ թէ վախցած էր որ այլ եւս կրկին պիտի չտեսնէր զայն։ Լուի ԺԶ. ամբողջովին գոհացնելու համար հանրային բաղձանքը, հրամայեց Նէքէրի վերադարձը և նոր նախարարներուն ճամբուիլը։ Թագաւորին բարեկամ և անոր յոյժ օգտակար խորհրդական Լիանքուրի դուքսը, ժողովին նախագահ ընտրուեցաւ։ Ազնուական երեսփոխանները, որոնք խորհրդակցութիւններուն ներկայ ըլլալով հանդերձ, տակաւին կը մերժէին մասնակցիլ, վերջապէս համակերպեցան և քուէ տուին։ Այսպէս ի գլուխ ելաւ կարգերուն խառնումը։ Այդ վայրկեանէն սկսեալ կարելի էր իբրեւ վերջացած նկատել յեղափոխութիւնը։ Ազգը, որ իր ժողովը օրէնսդիր իշխանութեան տէրն էր, և որուն կը վերաբերէր հանրային ոյժը, այնուհետեւ կրնար իրագործել ինչ որ օգտակար էր իր շահերուն։ Տուրքերու հաւասարութիւնը մերժուած ըլլալուն համար էր որ անհրաժեշտ եղած էր Ընդհանուր Ժողովը. այդ ժողովին մէջ հեղինակութեան արդար բաժանում մը մերժուելուն համար էր որ ամէն ազդեցութիւն կորսնցուցած էին հոն. վերջապէս այդ ազդեցութիւնը կրկին ձեռք ձգել ուզուելուն համար էր որ ոտք հանեցին Բարիզը և ամբողջ ազգը դրդեցին տիրանալու հանրային ուժին։

Սակայն ամէն ինչ վեր ի վայր կը յուզուէր մայրաքաղաքին ծոցին մէջ, ուր նոր հեղինակութիւն մը հաստատուած էր։ Միեւնոյն շարժումը՝ որ մղած էր ընտրողները գործի սկսելու սկսելու, բոլոր դասակարգերը կը մղէր նոյնը ընելու։

Քաղաքապետարանն ալ կը հետեւէր ժողովին օրինակին, ընտրական շրջանակները Քաղաքապետարանին, և բոլոր ընկերակցութիւնները ընտրական շրջանակներուն կամ արուարձաններուն

օրինակին։ Դերձակներ, կօշկակարներ, հացագործներ, սպասաւորներ, հաւաքուելով Լուվրի մէջ, Լուի ԺԵ հրապարակը, Արիսեան Դաշտը, պաշտօնապէս կը խորհրդակցէին, քաղաքապետութեան կրկնակի արգելքներուն հակառակ։ Այս ներհակ շարժումներուն մէջեւ, Քաղաքապետարանը, որուն դէմ կը մաքառէին շրջանակները, և որ մտատանջ էր արքայական պալատին ալ կողմէ, շրջապատուած էր խռովընդոտներով, և դժուարաւ կրնար բռնել իր առաջին վարչութեան հոգերուն։ Ինք իրեն վրայ միացուցած էր քաղաքային, դատական և զինուորական հեղինակութիւնը։ Հոն հաստատուած էր քաղաքապահ զինուորութեան ընդհանուր կեդրոնը։ Առաջինները՝ դատաւորները՝ իրենց իրաւասութիւններուն մասին երկմիտ ըլլալով՝ անոր կը ղրկէին ամբաստանեալները։ Նոյն իսկ օրէնսդրական կարողութիւն ունէր, վասնզի պաշտօն յանձնուած էր իրեն սահմանադրութիւն մը շինելու։ Պայեի այս նպատակաւ մէն մի շրջանակէ ուզած էր երկու պատուիրակ որոնք, համայնքի ներկայացուցիչք անունին տակ, պիտի աշխատէին կարգաւորել անոր կազմութիւնը։ Այսքան հոգերու բաւելու համար, ընտրողները զանազան մասնախումբերու բաժնուած էին. մին, խուզարկութեանց մասնախումբ անունով, ոստիկանութեամբ կը զբաղէր. միւսը, պարէններու մասնախումբ անունով, պարենաւորման գործերով կը զբաղէր, ամէնէն աւելի դժուարին և վտանգաւոր աշխատութիւնը։ Պայեի պարտաւորուեցաւ գիշեր ցերեկ զբաղիլ։ Հարկ էր անընդհատ ցորեն գնել, աղալ տալ, յետոյ Բարիզ ղրկել՝ սովատանջ գիւղերու մէջէն անցընելով։ Յաճախ կարաւանները վար կը դրուէին ճամբան, և բազմաթիւ ջոկատներու պէտք կ'ըլլար ճամբուն վրայ և վաճառանոցներուն մէջ թալանումը արգիլելու համար։ Թէեւ Պետութիւնը ցորենը վնասով կը ծախէր, որպէսզի հացագործները կարենային հացին գինը իջեցնել, բայց խուժանը գոհ չէր. միշտ պէտք էր աւելի իջեցնել գինը, և Բարիզի պարէններուն անբաւականութիւնը կ'աւելնար նոյն իսկ գիներու այս իջնելովը, որովհետեւ գիւղերէն հոն կը թափէին պարենաւորուելու համար։ Վաղուան երկիւղէն ամէն ոք առատ պաշար ունենալու հակամէտ կ'ըլլար, և ինչ որ կը դիզուէր ոմանց ձեռքին մէջ՝ կը պակսէր ուրիշներուն համար։ Վստահութիւնն է որ կը փութացնէ վաճառականութեան աշխատութիւնները, որ պարէնները կը բերէ և անոնց բաշխումը հաւասար և դիւրին կ'ընէ. բայց երբ վստահութիւնը անհետ ըլլայ, առեւտրական գործունէութիւնը կը դադրի. առարկաները պէտքերուն չբաւելով, պէտքերը կը գրգռուին, նուազութեան վրայ շփոթութիւնն ալ կ'աւելնայ և մնացած քիչին ալ բարւոք մատակարարութիւնը կը խափանուի։ Ուստի պարէններու հոգը ամէնէն դժուարն էր։ Անողորմ մտահոգութիւններ կը լափէին Պայեին, և մասնախումբը։ Օրուան ամբողջ աշխատութիւնը հազիւ կը բաւէր նոյն օրուան պէտքին, և հարկ էր երկրորդ օրը վերսկսիլ միեւնոյն մտատանջութիւններով։

Քաղքենի զինուորութեան հրամատար Լաֆայէթ (*) նուազ նեղութիւններու չէր ենթարկուած։ Այդ զինուորութեան մաս կազմել տուած էր յեղափոխութեան անձնուէր ֆրանսական պահակները։ Բաւական թիւով Զուիցերիացիներ, և մեծաքանակ զինուորներ՝ որոնք աւելի բարձր ռոճիկի մը յուսով զօրագունդերէն դասալիք կ'ըլլային։ Թագաւորը ինք անձամբ այս արտօնու-

(*) Այդ պաշտօնին անուանուած էր Քաղաքապետարանին մէջ Յուլիս 15ին։

թիւնը տուած էր իրեն։ Այս միացեալ ուժերը կոչուեցան կեդրոնի գունդեր։ Քաղաքապահ զինուորութիւնը ազգային պահնորդ անունը առաւ, համազգեստ հագաւ, և բարիզեան գլխանոցին կարմիր և կապոյտ երկու գոյներուն վրայ աւելցուց ճերմակը, Թագաւորին գոյնը։ Այս եռագոյն գլխանոցին ճակատագրին համար էր որ Լաֆայէթ գուշակութիւն ըրաւ, ծանուցանելով թէ ան աշխարհի շրջանը պիտի ընէր։

Այս զօրականին գլուխը անցած Լաֆայէթ երկու տարի իրարու վրայ ջանաց պահպանել հանրային անդորրութիւնը, և ժողովին կողմէ ամէն օր հռչակուած օրէնքները գործադրել տալ։ Մեծերուն ազնուականութեան միջև անաղարտ մնացած վաղեմի ընտանիքէ մը սերած, Լաֆայէթ, ուղիղ միտքով, աննկուն հոգիով օժտուած, ճշմարիտ փառքին սիրահետ, ձանձրացած էր արքունիքին ունայնամտութենէն և մեր բանակներուն իմաստակ կարգապահութենէն։ Իր հայրենիքը փրկելու համար ազնիւ օրինակ չէր ընծայեր իրեն. ուստի միտքը դրաւ ժամանակակից դարուն ամէնէն վեհոգի ձեռնարկին, և Ամերիկա մեկնեցաւ յաջորդ օրը այն օրուան երբ Եւրոպայի մէջ լուր տարածուեցաւ թէ Ամերիկա հպատակած էր։ Հոն կռուեցաւ Ուաշինկթոնի կողք կողքի, և նոր աշխարհին ազատագրութիւնը վճռեց Ֆրանսայի հետ զինակցութեամբ։ Եւրոպական անունով մը իր երկիրը վերադարձած, արքունիքին մէջ իբրև նորութիւն մը ընդունուած, հոն երևցաւ պարզ և ազատ, Ամերիկացիի մը պէս։ Երբ դատարկապորտ ազնուականներուն համար մտքի խաղ մը թուող իմաստասիրութիւնը անոնցմէ զոհողութիւններ պահանջեց, Լաֆայէթ, գրեթէ առանձինն, իր կարծիքներուն մէջ յամառեցաւ, Ընդհանուր ժողով պահանջեց, հզօրապէս նպաստեց երեք կարգերուն հաւաքման, և իբրև վարձատրութիւն ազգային պահնորդութեան ընդհանուր հրամանատար անուանուեցաւ։ Լաֆայէթ չունէր այն ձիրքերն ու հանճարը՝ որոնք յաճախ գեղծումի կը տանին զօրութիւնը, այժը. հաւասարաչափ հոգիով մը, նրբադատ միտքով մը, անյեղլիօրէն անշահախնդիր դրութեամբ մը, աւելի յարմար էր պարագաներուն իրեն համար նշանակած դերին, — օրէնքները գործադրել տալու դերին։ Իր զինուորներէն պաշտուած, առանց յաղթութեամբ մը գերելու զանոնք, խուժանին կատաղութեանց միջև անդորրուէտ և հնարալից, անխոնջ արթնամտութեամբ մը բարեկարգութիւնը կը պահպանէր։ Ջինքը անկաշառելի գտնող կուսակցութիւնները՝ իր ճարտարութիւնը կ'ամբաստանէին, քանի որ չէին կրնար ամբաստանել իր նկարագիրը։ Սակայն չէր խաբուեր դէպքերէն ու մարդոցմէն. ճիշդ իրենց արժէքովը կը գնահատէր արքունիքն ու կուսակցութեան պետերը, ի վտանգ իր կեանքին կը պաշտպանէր զանոնք առանց յարգելու, և յաճախ անյուսօրէն կը մաքառէր երկպառակ կողմերուն դէմ, բայց յարատևութեամբ մարդու մը՝ որ պէտք չէ լքէ հանրային իրը, երբ մինչև իսկ այլևս յուսալից չըլլայ այն։

Լաֆայէթ, բոլոր իր արթնամտութեան հակառակ, չյաջողեցաւ միշտ կասեցնել ժողովրդային կատաղութիւնները։ Որովհետև, այժը ո՛րքան ալ գործօն ըլլայ, չի կրնար ամէն կողմ երևնալ ժողովուրդի մը դէմ, որ ամէն ուրեք կը վտարանջէ, որ ամէն մարդու մէջ թշնամի մը կը տեսնէ։

Ամէն վայրկեան ամէնէն ծայրելի գրոյցներ կը տարածուէին և կը հաւատացուէին։ Մերթ կ'ըսուէր թէ Ֆրանսական պահակ զինուորները թունաւորուած էին, մերթ թէ դիտմամբ ապականուած էին ալիւրները, կամ թէ անոնց ճամբան կը խոտորեցնէին, և ալիւրները մայրաքաղաք հասցնելու համար ամէնէն



ԼԱՖԱՅԵԷԹ

աւելի յօգնողները կը պարտաւորուէին իբրեւ ամբաստանուած երեւնալ ժողովուրդի մը առջեւ, որ, վայրկեանի տպաւորութիւններուն համեմատ, զիրենք նախատակոծ կ'ընէր կամ ծափերով կ'ողողէր։ Սակայն ստոյգ է թէ ժողովուրդին կատաղութիւնը, որ, ընդհանրապէս, չի գիտեր իր զոհերը ընտրել և ոչ ալ երկար ատեն փնտռել, յաճախ ուղղուած կը թուէր կամ վարձուած ողորմելիներէ, ինչպէս ըսուած է, խռովութիւնները արիւնոտելով աւելի ծանրակշիռ դարձնելու համար, և կամ լով աւելի խորապէս տակաւին մարդիկներէ։ Ֆուլօն և Պէռթիէ հալածուեցան և բռնուեցան Բարիզէն հեռու, յայտնի դիտաւորութեամբ մը։ Զանոնք խղդող խուժանին կատաղութիւնը միայն ինքնածին էին անոնց մասին։ Ֆուլոն, վաղեմի մատակարար, խստասիրտ և անխիղճ մարդ, սարսափելի գեղծումներ գործած էր, և Նէքէրի ու անոր պաշտօնակիցներուն յաջորդելու համար նշանակուած նախարարներէն մին եղած էր։ Զինուորականութեան Վիւնի մէջ, թէեւ ինք իր մահուան լուրը տարածած էր։ Բա-

րիզ տարին զայն, յայտարարելով թէ ան ըսած ըլլար որ պէտք է չոր խոտ կերցնել ժողովուրդին։ Վիզին վրայ եղինձներ դրին, ուղտափուշի փունջ մը մըն ալ ձեռքին վրայ, և տրցակ մը խոտ կռնակը։ Այս վիճակով քաշկռտեցին տարին Քաղաքապետարան։ Նոյն պահուն իր փեսան, Պէրթիէ տը Սովինեի ձերբակալուած էր Գոմբիէնեի մէջ։ Բարիզի համայնքին կարծեցեալ հրամաններուն վրայ, սակայն առանց հրաման չէր տրուած։ Համայնքը իսկոյն դրկեց որ ազատ արձակեն զայն, բայց չգործադրուեցաւ։ Ճամբայ հանեցին զայն դէպի Բարիզ, ա՛յն պահուն երբ Ֆուլօն Քաղաքապետարանն էր, կատաղածներուն մոլեգնութեան ենթարկուած։ Քանի մը ընտրողներ գտնուած էին իբրև դատաւոր. բայց զանազան պատրուակներով անոնք մերժած էին այս ահաւոր ատենակալութիւնը։ Վերջապէս նշանակուեցան Պայեի և Լաֆայէթ, որոնք պարտաւորուած էին ենթարկուիլ կա՛մ խուժանին կատաղութեան նուիրուելու անողորմ ծայրայեղութեան կամ զոհ մը զոհելու։ Սակայն Լաֆայէթ, մեծ վարպետութեամբ և հաստատամտութեամբ, կը ձգձգէր տակաւին։ Բանիցս յաջողութեամբ խօսք հասկցուցած էր խուժանին։ Եղկելին Ֆուլօն, իր մօտր աթոռի մը վրայ կեցած, անխոհեմութիւնը ունեցաւ Լաֆայէթի վերջին խօսքերը ծափահարելու։ «Կը տեսնէ՞ք, ըսաւ վկայ մը, խօսքերնին մէկ ըրած են։» Այս բառին վրայ՝ ամբոխը կը դղրդի և կը զահավիժի Ֆուլօնի վրայ։ Լաֆայէթ անհաւատալի ճիգեր կ'ընէ մարդասպաններէն խլելու համար զայն. դարձեալ կ'առնեն զայն անոր ձեռքէն, և դըժբախտ ծերունին կը կախեն փողոցի կազի ձողի մը վրայ։ Գլուխը կը կտրեն և ցիցի մը վրայ անցընելով կը պտտցնեն Բարիզի մէջ։ Այդ պահուն Պէրթիէ կը հասնէր կառքի մը մէջ, առաջնորդութեամբ պահակներու, և հետեւէն ալ խուժան մը։ Ցոյց կուտան անոր արիւնոտ գլուխ մը, բայց անիկա բնաւ միտքէն չանցըներ թէ այդ գլուխը իր աներոջն էր։ Կը տանին քաղաքապետարան, ուր կ'արտասանէ սրտոտ և զայրացկոտ քանի մը բառեր։ Կրկին խուժանէն բռնուելով, վայրկեան մը օձիքը կ'ազատէ, զէնք մը կ'առնէ, կատաղօրէն կը պաշտպանէ ինքզինքը, և շատ չանցած տապալած կ'իյնայ խեղճ Ֆուլօնին պէս։ Այս սպանութիւնները կատարուեցան կա՛մ Ֆուլօնի կամ ատելութեան թշնամիներուն կողմէն. որովհետև, եթէ ժողովուրդին կատաղութիւնը ինքնածին եղաւ զանոնք տեսնելուն վրայ, ինչպէս ինքնածին էր արդէն անոր շարժումներուն մեծագոյն մասը, տարակոյս չկայ թէ կանխաւ պատրաստուած բան մըն էր անոնց ձերբակալութիւնը։ Լաֆայէթ, ցաւով ու զայրոյթով լեցուած, հրաժարական տալ ուզեց. Պայեի և քաղաքապետութիւնը, այս ծրագրէն սարսափահար, փութացին այդ դիմաւորութենէն ետ կեցնել զայն։ Յետոյ որոշուեցաւ որ Լաֆայէթ տար իր հրաժարականը իր դժգոհութիւնը զգացնելու համար ժողովուրդին. բայց իրեն ըլլալիք թախանձանքներէն վերջ ալ ետ պիտի առնէր։ Արդարև ժողովուրդը և քաղաքապահ զինուորութիւնը շրջապատեցին զայն, և ամենամեծ հնազանդութիւն խոստացան իրեն։ Այս պայմաններով կրկին ստանձնեց հրամանատարութիւնը, և այնուհետև զօրունակութիւնը ունեցաւ խռովութեանց մեծագոյն մասը արգիլելու, իր կորովին ու իր զօրքերուն անձնուիրութեան շնորհիւ։

Այդ պահուն, Նէքէր Պալի մէջ ընդունած էր թագաւորին և Ժողովին թախանձանքները։ Վերսայլէն մեկնած ատեն պալատին մէջ յաղթական թողած էր Բոլինեաքները, որոնց հանդիպեցաւ Պալի մէջ, ուր փախած էին, և անոնցմէ առաջին անգամ իմացաւ պահուն

դժբախտութիւնները և իրեն ապառազ շնորհին յանկարծական վերադարձը։ Ճամբայ ելաւ և կրցաւ անցաւ Ֆրանսան, ժողովուրդին կողմէ յաղթանակով վերադարձ, որուն յանձնարարեց խաղաղութիւն և կարգապահութիւն, իր ամբողջութեան համաձայն։ Թագաւորը շփոթութեամբ ընդունեց զայն, ժողովը փութով. և որոշեց ան Բարիզ ալ երթալ, ուր պիտի ունենար իր յաղթանակի օրը։ Նէքէրի ծրագիրն էր ընտրողներէն խնդրել պարոն Պէզանվալի շնորհն ու ազատ արձակումը, թէև իրեն թշնամի էր։ Պայիի, որ իրեն չափ թշնամի էր խիստ միջոցներու, այլ պարագաներու աւելի ճիշդ գնահատող մը, ի զուր անոր ներկայացուց այդ պիսի միջոցի մը վտանգը, և զգացուց անոր թէ խանդավառութեամբ ձեռք բերուած այդ շնորհը հետեւեալ օրը եւս պիտի առնուէր իբրև ապօրինի, որովհետև վարչական մարմին մը չի կրնար ո՛չ դատապարտել ո՛չ շնորհ ընել։ Նէքէր յամառեցաւ և ուզեց մայրաքաղաքին վրայ իր ազդեցութիւնը փորձել։ Յուլիս 30ին Քաղաքապետարան գնաց։ Յուսացածէն աւելին գտաւ, և պարտաւորուեցաւ ամենակարող կարծել ինքզինքը, խուժանին ցնծութիւնը տեսնելով։ Յուզուած, աչքերը արցունքով լեցուած, ընդհանուր ներում մը խնդրեց, որ իսկոյն շնորհուեցաւ ծափերով։ Ընտրողներուն և ներկայացուցիչներուն երկու ժողովները հաւասարապէս փութկոտ երեւցան. ընտրողները վճռեցին ընդհանուր ներում. համայնքին ներկայացուցիչները հրամայեցին ազատ արձակել Պէզանվալը։ Նէքէր քաշուեցաւ գինովցած, իրեն համար առնելով իր շնորհալիութեան ուղղուած ծափերը։ Բայց այդ օրն իսկ պիտի իմանար խաբուած ըլլալը. Միրաբօ անողորմաբար թօթվեց զինքը։ Ժողովին մէջ, շրջանակներուն մէջ ընդհանուր աղաղակ մը բարձրացաւ նախարարին դիւրաղգածութեան դէմ, որ ներելի է, կ'ըսէին, այլ մոլորական։ Առաջին բողոքողը եղաւ Օռաթուարի շրջանակը, Միրապոյէն գրգռուած, ինչպէս կը հաւաստուի։ Ամէն կողմէ կը պնդէին թէ վարչական մարմին մը չի կրնար ո՛չ դատապարտել ո՛չ ներել։ Քաղաքապետարանին ապօրինի անօրինութիւնը ետ առնուեցաւ, և պարոն Պէզանվալ բանտէն չարձակուեցաւ։ Այսպէս կը ճըշմարտուէր խոհական Պայիի կարծիքը, որուն չէր ուզած Նէքէր հետեւիլ։

Այդ միջոցին, կուսակցութիւնները կը սկսէին ա՛լ աւելի որոշ գոյն մը առնել։ Ազգաժողովը, ազնուականութիւնը, կղերը, արքունիքը, միեւնոյն կործանումին սպառնալիքին տակ, իրենց շահերը միացնելով համաձայն կը գործէին։ Արքունիքին մէջ չէին այլեւս ո՛չ Արթուայի կոմսը, ո՛չ բօլինեագները։ Յուսահատութեան խառնուած տեսակ մը ահաբեկում մը կը տիրէր ազնուականութեան մէջ։ Չկրնալով խափանել ինչ որ ինք չարիք կը կոչէր, հիմա կը փափաքէր որ ժողովուրդը կարելի եղածին չափ շատ գործէր չարիք, բարիքը բերելու համար չարիքին ծայրայեղութենէն իսկ։ Հակառակութեան և նենգամտութեան խառնուրդ եղող այս դրութիւնը, որ քաղաքական յուսահատութիւն կը կոչուի, կուսակցութիւններուն մէջ սկսաւ ա՛յն օրէն երբ տեսան իրենց կորսնցուցածները և իրենց ունեցածէն կամ իրենց մնացածէն ալ հրաժարեցան, ամէն ինչ կրկին ձեռք բերելու յուսով։ Ազնուականները այնուհետեւ սկսան այս դրութիւնը կիրարկել, և յաճախ քուէարկեցին ժողովըրդային կուսակցութեան ամէնէն բուռն անդամներուն հետ։

Մարդիկ պարագաներէն է որ կը ծնին։ Ազնուականութեան վտանգը իրեն համար ախոյեան մը ծնցուցած էր։ Թագուհիին պաշտպան զօրագունդին շարքերուն մէջէն արիւրապետ երիտա-

սարդ Գաղղիա իրեն մէջ գտած էր անակնկալ մտքի ոյժ մը և արտայայտութեան դիւրութիւն ։ Ճշգրիտ ու պարզ, արագօրէն և բառ պատշաճի կ՚ըսէր ինչ որ պէտք էր ըսել. և ցաւալի է որ իր ա՚յնքան արդարասէր ոգին նուիրուեցաւ ա՚յնպիսի դատի մը՝ որ հալածանքի ենթարկուելէն վերջ միայն ունեցած էր քանի մը արդարացի փաստեր ։ Կղերը իր ախոյեանը գտած էր յանձին Մօռի աբբային ։ Այս վանականը, վարժ և անսպառելի սոփեստէս, ունէր բարեբաստիկ ինքնաբղխումներ և մեծ պաշարիւն. գիտէր խիղախօրէն դիմակալել խռովութեան և ամբոխավարութեան, և յանդգնօրէն ալ բացայայտ իրողութիւները ։ Ահա ասոնք էին ազնուականութեան միջոցները և տրամադրութիւնները ։

Նախարարութիւնը ո՛չ իրեն յատուկ տեսութիւններ ունէր և ոչ ծրագիրը ։ Նէքէր, որ տալի էր զինքը ի հարկէ ստիպեալ հանդուրժող արքունիքին, Նէքէր միայն ունէր ո՛չ թէ յատակագիծ մը, այլ բաղձանք մը ։

Ան մինչ կը փափաքէր անգլիական սահմանադրութեան, անտարակոյս բաւացողը՝ զոր կարելի էր որդեգրել իրբև պատշաճեցում մը գահուն, ազնուականութեան և ժողովուրդին միջև. բայց այս սահմանադրութիւնը, զոր Լանկրի եպիսկոպոսը առաջարկած էր միակ ժողովի մը հաստատութենէն առաջ, և որ մերժուած էր երկու առաջին կարգերէն, անհնարին դարձած էր այլեւս ։ Վերին ազնուականութիւնը երկու խորհրդարան չէր ուզեր, որովհետև իրաւախոհութիւն եղած պիտի ըլլար. փոքր ազնուականութիւնն ալ չէր ուզեր, որովհետև ան չէր ուզեր վերին խորհրդարանին մէջ մտնել. ժողովրդային կուսակցութիւնն ալ չէր ուզեր, որովհետև, ազնուականութենէն բոլորովին սարսափահար, չէր ուզեր ո և է ազդեցութիւն թողուլ անոր վրայ ։

Միայն քանի մը երեսփոխաններ, ոմանք չափաւորութեան զգացումով, ուրիշներ ալ՝ որովհետև այս գաղափարը իրենցն էր, անգլիական կարգն ու սարքին կարօտ կը քաշէին, և կը կազմէին նախարար Նէքէրի բովանդակ կուսակցութիւնը, տկար կուսակցութիւն, որովհետև հաշտարար տեսութիւններ միայն կ՚ընծայէր զայրացկոտ կիրքերու, և իր հակառակորդներուն դէմ կը հանէր միմիայն պատճառաբանութիւններ, բայց գործողութեան ո՛չ մէկ միջոց ։

Ժողովրդական կուսակցութիւնը կը սկսէր բաժնուիլ, վասն զի կը սկսէր յաղթուիլ ։ Լալի-Թօլանտալ, Մունիէ, Մալուէ և Նէքէրի միւս կուսակիցները, կը ջատագովէին մինչև այն ատեն եղածները, որովհետև այն ամէն եղածները կառավարութիւնը բերած էին իրենց գաղափարներուն, այսինքն անգլիական սահմանադրութեան ։ Հիմակ այլևս բաւական կը համարէին. իշխանութեան հետ հաշտուելով կ՚ուզէին կանգ առնել ։ Ընդհակառակն ժողովրդային կուսակցութիւնը կանգ առնելու ատենը եկած չէր կարծեր ։ Ամէնէն աւելի բուռն կերպով կը շարժէին Պրըթօն քլիւպին մէջ (*) ։ Անկեղծ համոզում մը իր անդամներէն մեծագոյն մասին շարժիչ ոյժն էր. այսու հանդերձ անձնական յաւակնութիւններ կը սկսէին ծայր տալ հոն, և անհատական շահու շարժումները արդէն իսկ կը յաջորդէին հայրենասիրութեան առաջին խանդանքներուն ։ Պառնավ, Կըրնօպլի երիտասարդ փաստաբան մը, պայծառ, դիւրահաղորդ մտքով մը օժտուած, վերին աստիճանի ունէր բարւոք խօսելու տաղանդին, երկու Լամէթներուն հետ կը կազմէր եռապետութիւն մը, որ իր

(*) Այս քլիւպը կազմուած էր Յունիսի առաջին օրերուն ։ Վերջերը կոչուեցաւ Սահմանադրականաց Ընկերութիւն ։

երիտասարդութեամբը չունկան, քիչ տանիքէն ալ աղեկցիկ եղաւ իր գործունէութեամբ և տաղանդով։ Իրենց ընկերակցութեան մաս կը կազմէր նաև Աւագաժողովին երիտասարդ խորհրդական Տիւբօռ, զոր այլուր տեսանք արդէն։ Կ'ըսէին թէ Տիւբօռ հօրն եղածը կը խորհէր, Պառնավ կը բացատրէր, Լամէթներն ալ կը գործադրէին։ Սակայն այս երիտասարդ եռեակը իրարու բարեկամ էին, առանց ոև է մէկուն վճռական թշնամիներ ըլլալու։

Ժողովրդային պետերուն ամէնէն անվախը, ա՛ն որ, միշտ առաջ նետուելով, խիզախ խորհրդակցութիւնները կը բանար, Միրապօն էր։ Հին միահեծանութեան անտեղի օրէնսդրութիւնները վերացուած էին արդարադատ միտքերը և լուսաւորուած՝ ուղիղ սիրտերը. բայց անկարելի էր որ չծառացնէին նաև խանդավառ հոգի մը և չցրուէին ատատիկ կիրքեր։ Այդ հոգին Միրապօյինը եղաւ, որ ծնած վայրկեանէն ի վեր հանդիպելով բոլոր բռնաւորութիւններու, իր հօրը, կառավարութեան և դատարաններուն բռնաւորութեանց, գործածեց իր երիտասարդութիւնը անոնց դէմ մաքառելու և զանոնք ատելու։ Ծնած է Բռօվանսի արեւուն տակ, և ազնուական ընտանիքէ սերած։ Կանուխէն ճանչցուեցաւ իր անկարգութիւններով, կռիւներով, և բուռն սիրահարութեամբ։ Իր ճամբորդութիւնները, զնտութիւնները, անծայր ընթերցումները ամէն բան սորվեցուցած էին իրեն, և ամէն բան ալ ըմբռնած էր։ Բայց ծայրայեղ, անհեթեթ, նոյն իսկ իմաստակ, երբ պահ մը կիրքը թողուր զինքը, բոլորովին տարբեր մարդ մը կ'ըլլար կիրքին տիրապետութեան տակ։ Բեմը մէկէն ի մէկ կը գրգռէր զինքը իր ընդդիմախօսներուն առջև, միտքը կը բացայայտուէր. իր առաջին տեսութիւնները ի սկզբան շփոթ էին, խօսքերը կցկտուր, մարմինը դողդոջուն. բայց լոյսը կը հասնէր ընդհուպ. այն ատեն իր միտքը մէկ վայրկեանի մէջ տարիներու աշխատութիւն կը սանէր. և բեմին վրայ ինք՝ ամէն ինչ իրեն համար գիւտ էր, աշխոյժ, կորովի և յանկարծական արտայայտութիւն։ Նոր ընդդիմութեան մը առջև կը խոյանար աւելի չտապ և աւելի ջինջ, և ճշմարտութիւնը կը հանդիսացնէր պայծառ կամ անհարթ պատկերներով։ Եթէ պարագաները դժուարին ըլլային, և միտքերը երկար վիճաբանութեամբ խոնջած կամ վտանգէ մը խրտչած, ահա՛ ճիչ մը, վճռական բառ մը փոխ կուտար իր բերնէն, գլուխը սարսափ կ'ազդէր ազդուութեամբ ու հանճարով, և ժողովը, բռնադատուած կամ վերահաստատուած, օրէնքներ կուտար, կամ վեհ որոշումներ։

Իր բարձր յատկութիւններով խորտապանած, իր մոլութիւններով ինքզումիտ, մերթ ամբարտաւան մերթ ճկուն, մէկ քանին կը հմայէր իր քնքշանքներով, ուրիշները կ'անարգէր իր երգիծանքներով, և զանոնք ամէնքը իր ետևէն կ'առնէր կը տանէր քարշողութեան եզական զօրութեամբ։ Իր կուսակցութիւնը անհամար էր, ժողովուրդին մէջ, ժողովին մէջ, նոյն իսկ արքունիքին մէջ, վերջապէս ամէն անոնց մէջ՝ որոնց կ'ուզէր խօսքը նոյն պահուն։ Մարդոց հետ խառնուելով ընտանեբար, ուզողին՝ երբ հարկ ըլլար ա՛յնպէս ըլլալ, զուարթը եղաւ Պառնավի նորընծայ տաղանդին, թէև չէր սիրեր անոր երիտասարդ բարեկամները. կը գնահատէր Սիյէսի խորաթափանց ոգին, և կը չոյէր անոր անընտել կամշտա բնաւորութիւնը. կը ատէր Լաֆայէթի յանչափս մաքուր կեանքէն, կ'արհամարհէր Նէքէրի ծայրայեղ խստապահանջութիւնը, հպարտ բանավարութիւնը և անոր յաւակնութիւնը վարելու համար յեղափոխութիւնը՝ որուն իրեն վերաբերիլը գիտէր։ Շատ չէր սիրեր

Օռլէանի դուքսը և անոր տարտամ փառասիրութիւնը, և, ինչպէս քիչ ետքը պիտի տեսնուի, ո՛և է հասարակաց չափ մը չունենալու անոր հետ ։ Այսպէս ինք իր հանճարին հետ առանձին, կը յարձակէր բռնաւորութեան վրայ՝ զոր երդուընցած էր քանդել ։ Սակայն, եթէ չէր ունեցեր միապետութեան ունայնամտութիւնները, ա՛լ աւելի հակառակ էր հանրապետութեանց խենթութիւնին. բայց աւագանիէն և իշխանութենէն բաւ բաւականի վրէժ լուծած չըլլալով, կը շարունակէր քանդել ։ Միւս կողմէ, կարօտութիւններէն տանջուած, ներկայէն զզուած, կը դիմէր դէպի անծանօթ ապագայ մը, ամէն բան ենթադրել տալով իր մաքի կարողութիւններէն, իր փառասիրութենէն, իր մոլութիւններէն, իր նիւթական վիճակին անբաւականութենէն, և իր խոստումներուն վրան բաց համարձակութեամբը ամէն կասկածներ և ամէն չարախօսութիւններ արտօնելով ։

Այսպէս կը բաժնուէին Ֆրանսա և կուսակցութիւնները ։ Ժողովրդային երեսփոխաններուն մէջև առաջին զժտութիւնները տեղի ունեցան խուժանին ծայրայեղութեանց առթիւ ։ Մունիէ և Լալի-Թօլանտալ կ'ուզէին որ հանդիսաւոր յայտարարութիւն մը ուղղուի ժողովուրդին՝ իր ծայրայեղութիւնները դատապարտելու համար ։ Ժողովը, այս անօրինութեան անօգտակարութիւնը և իրեն թէև թիկունք եղող խուժանին սիրտը չցաւցնելու հոգը զգալով, նախ մերժեց. բայց յետոյ իր անդամներէն ոմանց թախանձանքին տեղի տալով, վերջապէս յայտարարութիւն մը հանեց, որ, ինչպէս նախատեսուած էր, բոլորովին անօգուտ եղաւ, որովհետև վարանջող ժողովուրդ մը խօսքով չի հանդարտիր ։

Յուզումը ընդհանուր էր ։ Յեղակարծ տարափ մը ծաւալած էր ։ Զանազան խռովութեանց ատեն տեսնուող ու աւազակներուն անունը ամէն բերաններու մէջ էր, պատկերներն ալ ամէն միտքերու մէջ ։ Յանկարծ թղթատարներ կը գային, և, Ֆրանսայի մէկ ծայրէն միւսը, կը ծանուցանէին թէ աւազակները կուգան և հունձքերը կը կոխեն չհասունցած ։ Ամէն կողմէ կը հաւաքուին, և քանի մը օրուան մէջ բովանդակ Ֆրանսա սպառազէն կը սպասէ աւազակներուն. բայց ներս գալող չկայ ։ Այս հնարքը, որ տիեզերական ըրաւ Յուլիս 14ի յեղափոխութիւնը, ազգին սպառազինութիւնը առթելով, այն միջոցին բոլոր կուսակցութիւններուն վերագրուեցաւ, բայց անկէց վերջ ժողովրդային կուսակցութեան միայն, որ քաղեց անոր արդիւնքները ։ Զարմանալի է որ ո՛րքան հանճարեղ նոյնքան մեղապարտ այսպիսի հնարքի մը պատասխանատուութիւնը իրարու վրայ ձգած են ։ Միրաբոյի կնակը հանեցին զայն, և իրաւցնէ անոր հեղինակը ըլլալը պարծանք պիտի համարէր իրեն, սակայն հերքած է և չէ ընդունած ։ Ասանկ բան մը աւելի կը սպասուէր Սիյէսի մաքի յատկութենէն, և ոմանք կարծած են թէ այս վերջինը թելադրած է զայն Օռլէանի դուքսին ։ Ուրիշներ վերջապէս այս մասին ամբաստանած են արքունիքը, այն մտօք որ այս լրատարները մէկ մի վայրկեան պիտի ձերբակալուէին, եթէ կառավարութիւնը գործին մէջ մաս չունենար. թէ արքունիքը համոզուած ըլլալով յեղափոխութեան ընդհանրական ըլլալուն, և զայն Բարիզցիներուն իբրև պարզ մէկ վարանջութիւն նկատելով, ուզած էր գաւառները զինել՝ զանոնք Բարիզի դէմ հանելու համար ։ Ի՛նչ որ ալ եղած ըլլայ, այս հնարքը ի շահ ազգին դարձաւ, զոր զինեց, և զոր կարողացուց հսկելու իր ապահովութեան և իր իրաւունքներուն ։

Քաղաքներուն ժողովուրդը թօթափած էր իր շղթաները, գիւղերունն ալ իրենները կ'ուզէր թօթափել ։ Կը մերժէր վճարել աւատական տուրքերը.

կը հալածէր զինքը հարստահարողները․ կրակի կուտար դղեակները, սեփականութեան վաւերաթուղթերը կ'այրէր, և ինչ ինչ գաւառներու մէջ կատաղի վրէժխնդրութիւններու անձնատուր կ'ըլլար։ Յաւալի դէպք մը մանաւանդ այս ընդհանուր գրգռումին պատճառ տուած էր։ Քէնսէյի ազնուական մի ոմն պարոն Մէյմէ հանդէս մը սարքած էր իր դղեակին շուրջ։ Գիւղերուն ամբողջ ժողովուրդը հաւաքուած էր հոն, և ուրախութիւն կը կատարէր, երբ վառօդի տակառ մը, յանկարծ բռնկելով մահացու պայթում մը առաջ բերաւ։ Այս արկածը, որուն անխոհեմութեան և ո՛չ թէ մատնութեան արդիւնք ըլլալը հասկըցուած է այնուհետև, իբրև ոճիր վերագրուեցաւ պարոն Մէյմէի։ Ընդհուպ տարածուեցաւ այս զրոյցը, և ամէնուրեք առաջ բերաւ նոյն գիւղացիներուն անգթութիւնները, որոնք արդէն բրտացած էին խեղճուկ կեանքով մը և վայրենացած երկարատև տառապանքներով։ Նախարարները եկան խմբովին ժողովին առջև պարզելու Ֆրանսայի ողբալի վիճակին մէկ պատկերը, և բարեկարգութիւնը վերահաստատելու միջոցներ պահանջեցին անորմէ։ Այս ամէն տեսակ աղէտները յայտնուած էին Յուլիս 14էն ի վեր։ Օգոստոս ամիսը կը սկսէր, և անխուսափելի կը դառնար վերահաստատել կառավարութեան և օրէնքներուն ազդեցութիւնը։ Բայց այս բանը յաջողութեամբ փորձելու համար հարկ էր Պետութեան վերածնունդին սկսիլ՝ բարեկարգելով ընկերային և քաղաքային բոլոր ա՛յն հաստատութիւնները, որոնք ուժգնօրէն կը վիրաւորէին ժողովուրդը, և տրամադիր կ'ընէին զայն ապըստամբելու։ Ազգին մէկ մասը, մեծ մասին հպատակ, աւատական կամ ակրէպէյրական կոչուած խել մը տուրքերու ենթարկուած էր։ Այս տուրքերէն մէկ քանին, որոնք իբր օգտակար կ'որակուէին, գիւղացիները կը պարտաւորէին մաշեցուցիչ ծառայութիւններու․ մէկ մասն ալ, պատուաւոր կոչուածները, զորոնք իրենց աւատապետներուն հանդէպ կը հարկեցնէին նուաստացուցիչ յարգանքներու և ստրկութիւններու։ Աւատական բարբարոսութեան մնացորդներն էին ասոնք, որոնց ջնջումը մարդկութեան պարտականութիւնն էր, ինչպէս բուն բարբարոսութիւնը արդէն ջնջուած էր։ Վիճաբանութեամբ կարելի չէր ջնջել այս առանձնաշնորհումները, որոնք իբր սեփականութիւններ նկատուած էին, և նոյն իսկ թագաւորին կողմէ ա՛յդ անունով կոչուեցան Յունիս 23ի յայտարարութեան մէջ։ Յանկարծական և ներշնչուն շարժումով մը հարկ էր մղել ստացողները կամովին հրաժարելու անոնցմէ։

Այն միջոցին ժողովը կը վիճաբանէր մարդուն Իրաւունքներուն հռչակումը յայտարարութեան վրայ։ Նախ խնդիր եղած էր թէ պէ՞տք է այսպիսի յայտարարութիւն մը, և Օգոստոս 4ին առաւօտուն որոշուեցաւ ընել զայն և զետեղել Սահմանադրութեան գլուխը։ Նոյն օրուան իրիկունը մասնախումբը իր տեղեկագիրը բերաւ խռովութիւններուն և զանոնք դադրեցնելու միջոցներուն վրայ։ Փերակոմս Նօայլ և դուքս Էկիյեոն, երկուքն ալ ազնուականութեան անդամ, ըսին բարձրանալով ներկայացուցին թէ այդ գործածելը չի բաւեր ժողովուրդը հանդարտեցնելու և ետ դարձնելու համար, թէ հարկ է անոր չարիքներուն պատճառը ջնջել, և թէ անոնց հետեւանք եղող խռովութիւնը իսկոյն պիտի դադրի։ Վերջապէս աւելի պայծառօրէն արտայայտուելով, կ'առաջարկին ջնջել բոլոր ա՛յն կեղեքիչ իրաւունքները՝ որոնք, աւատական իրաւունքներ անունին տակ, գիւղացիները կը ճնշեն, կը ճզմեն։

Պարթմենի գաւառին մէջ սեփակա-

նստէր Լըկլուէն որ Պէրլէնկալ բանին վրայ երեւցաւ, երկրագործի հագուստով, և գարնուկի կերպով պատկերացուց ազատական բէմին։ Խակոյն անոնց մէջ յորդորուած վեհանձնութիւնը, ուրիշներուն մէջ ալ մղուած հպարտութիւնը անակնկալ անշահախնդրութեան հրաման մը առաջ բերին. ամէն մարդ բան մը կը խոյանայ իր առանձնաշնորհումներէն հրաժարելու համար։ Առաջին օրինակը կուտայ ազնուականութիւնը. կղերը՝ ոչ նուազ փութկոտ՝ կ'անձնատուրէ անոր հետեւիլ։ Տեսակ մը արբեցութիւն կը գրաւէ ժողովը. բոլոր կարգերը, բոլոր գաւառակարգերը, ո և է առանձնաշնորհումի բոլոր տէրերը կը փութան իրենց հրաժարումները յայտարարել՝ մէկ կողմ դնելով ամբողջ վիճաբանութիւն մը, որ անշուշտ անհրաժեշտ չէր այդպիսի զոհողութեանց արդարութիւնը ապացուցանելու համար։ Առաջին երկու կարգերուն երեսփոխաններէն ետքը համայնքին կամ երրորդ կարգին երեսփոխաններն ալ իրենց կարգին կուգան իրենց զոհաբերութիւնները ընելու։ Չի կրնալով զոհել անձնական առանձնաշնորհումները՝ գաւառներուն և քաղաքներուն առանձնաշնորհումները կը զոհեն։ Անհատներուն միջեւ վերահաստատուած իրաւունքներու հաւասարութիւնը կը հաստատուի այսպէս երկրին բոլոր մասերուն միջեւ։ Անոնք իրենց հանգստեան ոսկիները կը բերեն, և Աւագաժողովին մէկ անդամը, վրայ տալիք բան մը չունենալով, հանդէպ Տէրութեան իր անձնուիրութիւնը կը խոստանայ։ Դիւանին աստիճանները կ'ողողուին երեսփոխաններով՝ որոնք կուգան յանձնել իրենց իրաւունքներուն հրաժարմանց վաւերագիրը. առ այժմ բաւ կը համարուի զոհողութիւններուն թուարկումը, և յաջորդ օրուան կը յետաձգուի յօդուածներուն խմբագրութիւնը։ Խանդավառութիւնը ընդհանուր էր, բայց այս աւիւնին մէջ դիւրին էր նշմարել որ քանի մը ոչ անկեղծ առանձնաշնորհեալներ կ'ուզէին գործերը գէշին կողմը մղել։ Կը վախցուէր գիշերուան և տրուած թելադրութեանց արդիւնքէն։ Երբ Լալի-Թօլանտալ, վտանգը նշմարելով, նախագահին ձեռքը տոմս մը հասցուց։ «Ժողովին այս խանդավառութենէն կասկածելու, վախնալու տեղ կայ, կ'ըսէր անոր։ Նիստը վերջացուցէք։» Միեւնոյն վայրկեանին երեսփոխան մը դէպի անոր կը խոյանայ և յուզումով ձեռքը սեղմելով, կ'ըսէ. «Յանձնեցէք ինծի արքայական վաւերացումը, և բարեկամ կ'ըլլանք։» Լալի-Թօլանտալ, այն ատեն զգալով յեղափոխութիւնը Թագաւորին հետ կապելու պէտքը, կ'առաջարկէ Թագաւորը հռչակել վերանորոգիչ Ֆրանսական ազատութեան։ Առաջարկութիւնը խանդավառութեամբ կ'ընդունուի. գոհաբանական աղօթք մը կը վճռուի, և վերջապէս կէս գիշերուան ատենները իրարմէ կը բաժնուին։

Այդ յիշատակելի գիշերուան մէջ որոշուեցան.

Հողային տուրքի պայմանին ջնջում մը.

Աւատական տուրքեր գանձելու իրաւասութիւնը.

Աւատական (կամ տէրէպէյական դատական իրաւասութեանց ջնջումը.

Որսորդութեանց, աղաւնոցի, ճագարանոցի, ևն. անունով աւատական իրաւունքներու բացարձակ ջնջումը.

Տասանորդի գնումը.

Տուրքերու հաւասարութիւնը.

Բոլոր քաղաքացիներուն մուտքը քաղաքային և զինուորական պաշտօններու.

Պաշտօնները դրամով ծախու հանելու դրութեան ջնջումը.

Քաղաքներու և գաւառներու բոլոր առանձնաշնորհումներուն ջնջումը.

Արհեստապետութեանց բարեկարգութիւնը.

Եւ անպաշտօն առաջացած հանգամանաց թոշակներու ջնջումը։



ՖՈՒԼՕՆԻ ՋԱՐԴԸ

Այս որոշումները վճռուեցան ընդհանուր ձեւով, բայց կը մնար խմբագրել զանոնք հրովարտակներով. և այս միջոցին էր որ վեհազնութեան խումբը անցած ըլլալով, իւրաքանչիւրը իր հակամիտութիւններուն դարձած ըլլալով կրկին, անոնք պէտք ջանային ընդարձակել, ուրիշներն ալ ստիպել ձեռք բերուած զիջումները: Վիճաբանութիւնը սաստկացաւ, և ուշ մնացած և սխալ հասկցուած ընդդիմութիւն մը խառնակեց, ցրուեց ամէն քննութիւն:

Աւատական իրաւունքներու ջնջումը որոշուած էր, բայց հարկ էր զանազանել թէ այս իրաւունքներուն մէջէն որո՞նք բոլորովին պէտք ջնջուէին և որո՞նք պէտք փոխարինուէին: Աշխարհականները, այսինքն ազնուականութեան առաջին հեղինակները, ասոնք երկրի մը կամ հողի մը տիրանալով, մարդոց վրայ

պարտադիր ըրած էին ծառայութիւններ և հողերուն վրայ ալ հարկեր։ Նոյն իսկ հողին մէկ մասը իրենց վերապահած էին, և յաջորդաբար միւսն յանձնած էին զայն մշակներու, մշտնջենաւոր հասոյթներու պայմանաւ։ Երկարատեւ ստացում մը, յաջորդական բազմաթիւ փոխանցումներով, սեփականութեան իրաւունքը կազմած էր, և մարդոց ու հողերուն վրայ պարտադիր եղած բոլոր հարկերն ալ սեփականութեան յատկանիշ առած էին։ Ուրեմն Սահմանադիր Ժողովը պարտաւորուած էր ուղղակի սեփականութեանց վրայ յարձակիլ։ Այս կացութեան մէջ Ժողովը պարտաւոր էր սեփականութիւնները դասել ո՛չ թէ իրենց աւելի կամ նուազ ստացուած, այլ իրենց աւելի կամ նուազ ծանրակիր՝ ընկերութեան համար։ Անձնական ստրկութիւնները ջնջեց, և այդ ստրկութեանց մէկ քանին տուրքի փոխուած ըլլալով, այդ տուրքերն ալ (կապալ, խաֆիրութիւն ևլն.) ջնջեց։ Հողերուն վրայ պարտադիր եղած հարկերէն ջնջեց ա՛յնպիսիները որոնք յայտնապէս ստրկութեան մնացորդներն էին, ինչպէս փոխանցումներու համար պարտադիր եղած տուրքը. և յայտարարեց թէ բոլոր մշտնջենաւոր հասոյթի պարտաւորութիւնները կարելի է մէկ անգամով փոխարինել և վերջնական տէր ըլլալ հողերուն։ Ուրեմն անտեղի է ամբաստանել Սահմանադիր Ժողովը իբրեւ սեփականութեանց բռնաբարող, քանի որ ամէն բան անտեղի եղած էր առաջուց. և տարօրինակ բան է որ ազնուականութիւնը, սեփականութիւնները ա՛յնքան երկար ատեն բռնաբարած ըլլալով, կա՛մ մասնակի հարկեր պահանջելով, կամ պետական գանձուն տուրք չվճարելով, յանկարծ հիմա ա՛յնքան խստապահանջ կ՚երեւնար սկզբունքներու վրայ, երբ խնդիրը իր առանձնաշնորհումներուն շուրջ կը դառնար։ Աւատապետական դատական իրաւասութիւնները — պատժել, կախաղան հանել ևլն. — ևս սեփականութիւն կոչուած էին, քանի որ դարերէ ի վեր փոխանցուած էին ժառանգաբար. բայց Ժողովը այս տեսակէտով յիսոտաբար չվարուեցաւ, և զանոնք ջնջեց, հրամայելով սակայն որ անոնք դեռ պահուին մինչեւ որ անոնց տեղը ուրիշ կարգադրութիւն մը ըլլայ։

Որսորդութեան այլամերժ իրաւունքն ալ տաքուկ վէճերու առարկայ դարձաւ։ Հակառակ սա՛ մտքի առարկութեան թէ շատ չանցած ամբողջ ժողովուրդը պիտի զինուէր, եթէ որսորդութեան իրաւունքը շնորհուէր, այս իրաւունքը իւրաքանչիւրին տրուեցաւ իր արտերուն տարածութեան մէջ։ Առանձնաշնորհում դարձած աղաւնոցներն ալ արգիլուեցան։ Ժողովը որոշեց որ իւրաքանչիւր ոք կրնար անկէց ունենալ, այլ թէ հունձքերու թուականին կարելի էր սպաննել աղաւնիները, սովորական որսի պէս, իրենց գտնուելիք տեղերուն վրայ։ Պալատական որսորդութեանց բոլոր առանձնաշնորհումները ջնջուեցան, սակայն աւելցուեցաւ որ թագաւորին անձնական հաճոյքները պիտի հոգացուէին ա՛յնպիսի միջոցներով՝ որոնք համաձայն ըլլան ազատութեան և սեփականութեան։

Ցօղուած մը մանաւանդ բուռն պայքարներ գրգռեց աւելի կարեւոր հարցերու որոնց նախաբանն էր այն, և խնդրոյ նիւթ ըրած շահերուն պատճառաւ. ա՛յն է տասանորդի հարցը։ Օգոստոս 4ի գիշերը, Ժողովը վերագնելի յայտարարած էր տասանորդը, այսինքն դրամի մը փոխարէն ջնջուած։ Խմբագրութեան պահուն, ուզեց ջնջել առանց վերագնումի, սակայն աւելցնելով որ Պետութիւնը ինք պիտի հոգայ կղերին ապրուստը։ Տարակոյս չկայ որ այս որոշումին մէջ ձեւական թերութիւն մը կար, որովհետեւ արդէն տրուած որոշում մը ետ առնել էր։ Բայց Կառա այս

առարկութեան պատասխանից թէ ատի՛կա ճիշդ ու ճիշդ վերագրուած էր, քանի որ հարկատուին տեղ Պետութիւնը ինք կը վերագնէր տասանորդը, կղերին պէտքերուն հոգածութիւնը ստանձնելով։ Աբբա Սիյէէս, որ տասանորդի պաշտպաններուն մէջ գտնուելուն համար զարմանք կը պատճառէր, և այդ տուրքին իբրև անշահախնդիր պաշտպան չնկատուեցաւ, հաւանեցաւ արդարև որ Պետութիւնը կը վերագնէր տասանորդը, բայց բռնաբարութիւն մը կը գործէր համդէպ ազգին մասսային, անոր կլանակը հանելով պարտք մը՝ զոր հողատէրերուն վրայ պէտք էր միայն ծանրացնել։ Կտրուկ ձևով մը ներկայացուած այս առարկութեան պատասխանուեցաւ շատ դառն բառով մը, որ անկէց ի վեր յաճախ կրկնուած է. «Կ'ուզէք ազատ ըլլալ, և չէք գիտեր արդար ըլլալ։» Թէև Սիյէէս անկարելի կարծեց այս առարկութեան պատասխան տալը, բայց դիւրին էր պատասխանը։ Կղերին կամ պաշտամունքին պարտքը ամէնուն պարտքն է. ո՞վ պիտի վճարէ զայն. հողատէրե՞րը միայն թէ ու հասարակ բոլոր հարկատուները։ Ասիկա դատելը Պետութեան կը պատկանի։ Ոչ մէկուն անիրաւութիւն ըրած կ'ըլլայ տուրքը բաշխելով ամէնէն պատշաճ դատուած եղանակով։ Տասանորդը՝ փոքր հողատէրերը ճզմելով՝ կը փճացնէր երկրագործութիւնը. ուրեմն Պետութիւնը պարտաւոր էր անդափոխել այս տուրքը. ահա այս կէտը ապացուցուց Միրապօ յետին ծայր բացայայտութեամբ։ Կղերը, որ տասանորդը նախամեծար կը համարէր, որովհետև կը նախատեսէր թէ Պետութեան կողմէ կապուած ռոճիկը իր բուն պէտքերուն վրայ պիտի չափուէր, տասանորդի սեփականատէր ցոյց տուաւ ինքզինքը և այս իրաւունքին վրայ պնդեց՝ անյիշատակ դարերէ ի վեր իր այս մասին առանձնաշնորհումները մէջ բերելով. Նորագեց երկարամեայ սեփականութեան յաճախ յիշեցուած փաստը, որ ոչինչ կ'ապացուցանէ, որովհետև սեփականութեամբ ամէն բան կ'օրինականանայ, մինչև իսկ բռնութիւնը։ Իրեն պատասխանուեցաւ որ տասանորդը արդիւնքէն բան մը առնել է միայն, թէ փոխանցելի չէ, և չունի սեփականութեան գլխաւոր յատկանիշերը. Թէ իրաւ է որ ի նպաստ իրեն հաստատուած տուրք մըն է, և թէ այդ տուրքին տեղ Պետութիւնը կը ստանձնէ ուրիշ մը հաստատել։ Կղերին հպարտութիւնը ընդվզեցաւ ռոճիկ ընդունելու գաղափարէն, բողոքեց բուռն, և Միրապօ, որուն նմանը չկար փաստի ու հեգնութեան չեչտակի նետեր արձակելուն մէջ, ընդմիջողներուն պատասխանեց թէ ինք ընկերութեան մէջ ապրելու երեք միջոց միայն կը ճանչնար. ըլլալ կա՛մ գող, կամ մուրացկան, կամ թոշակաւոր։ Կղերը զգաց թէ իրեն կը մնար լքել ինչ որ չէր կրնար պաշտպանել։ Թեմական քահանաները մանաւանդ, գիտնալով թէ Ժողովին մէջ տիրող արդարութեան ոգիէն ամէն բան կրնային շահիլ, և թէ Ժողովը կ'ուզէ մանաւորապէս յարձակիլ Թեմական առաջնորդ-եպիսկոպոսներուն յղփութեան ու փառքամոլութեան դէմ, փութացին հրաժարիլ տասանորդէ։ Ուստի տասանորդի ամբողջական ջնջումը վճռուեցաւ, պայմանաւ որ Պետութիւնը ինք պիտի ստանձնէր պաշտամունքին ծախքերը, բայց մինչև այդ կարգադրութիւնը՝ տասանորդը պիտի գանձուէր։ Այս վերջին յարգալից հատուածը իրաւ է որ անօգուտ եղաւ։ Ժողովուրդը չէր ուզեր այլ ևս վճարել, բայց վճիռէն առաջ ալ արդէն չէր ուզեր վճարել, և երբ Ժողովը ջնջեց աւատական րէժիմը, արդէն իրականին մէջ ջնջուած էր այն։ Օգոստոս 13ին, բոլոր յօդուածները վեհապետին մատուցուեցան, որ ընդունեց Ֆրանսական ազատութեան վերանորո-

գիւղի ախտաղտը, և ներկայ եղու գոհա-ցանակներու պաշտամունքին, որ կ'ուզէր ունենալ նախագահը և անոր ալ քով իշխու եանել բոլոր երեսփոխանները։

Այսպէս ի գլուխ եկու յեղափոխութեան ամենակարեւոր բարենորոգումը։ Ժողովը ցոյց տուած էր զօրութիւն և չափ միանգամայն։ Դժբախտաբար ժողովուրդ մը չի գիտեր ինու չափաւորութեամբ մնալ իր իրաւունքներուն կիրառումին մէջ։ Ամբողջ երկրին մէջ վայրագ բռնութիւններ գործուեցան։ Գիւղականներուն հրձգութիւնը չարունակուեցաւ, գիւղերը ողողուեցան որսորդներով՝ որոնք կը փութային ի գործ դնել իրենց համար բարոյական իրաւունքներ։ Տարածուեցան, թափեցան այն արտերուն մէջ, որոնք դեռ քիչ առաջ վերապահուած էին իրենց կալուածներուն հաճոյքներուն համար միայն, և սակայն քանդումներ գործեցին։ Ամէն յափշտակութիւն իր անագուր փոխարինութիւնը ունի, և յափշտակողը պէտք է խորհի սար վրայ, գտնէ իր զաւակներուն համար, որոնք գրեթէ միշտ անոր պատիժը կը կրեն։ Բազմաթիւ որ-կածներ տեղի ունեցան։

Օգոստոս ամսուն 7էն սկսեալ նախարարները դարձեալ ներկայացած էին Ժողովին՝ երկրին վիճակին վրայ տեղեկագիր տալու համար։ Դատական նախարարը պայթող աղղնապայից անկարգութիւնները իմացուցած էր. Նէքէր իր կողմէն ելեւմտական ողբալի վիճակը յայտնած էր։ Ժողովը արամաթեամբ, ալ սանոյց վստահութեան, տասնաւ այս կրկնակի անզեկատութիւնը։ 10էն հրովարտակ մը հանեց հանրային անդորրութեան վրայ, որով քաղաքապետութիւններուն պաշտօն կը յանձնուէր հսկել բարեկարգութեան պահպանութեան, ցրուելով բոլոր խռովարարական համախմբութիւնները։ Զարդ խռովարարները դատարաններուն պիտի յանձնէին, իսկ պիտի բանտարկէին տուգանքի, խրարանցումի պատճառ եղողները, սուտ հրամաններ մէջտեղ հանողները, կամ բանակին արարքներ գրգռողները և դատավարութեան թուղթերը պիտի ղրկէին Ազգային Ժողովին, որպէսզի կարելի ըլլար խռովութեանց պատճառին իրազեկ ըլլալ։ Ազգային պահնորդները և կանոնաւոր զորքերը քաղաքապետութեանց արամադրութեան տակ կը դրուէին, և պարտաւոր էին երդում ընել ազգին, թագաւորին և օրէնքին, ևն. հաւատարիմ ըլլալու։ Այս երդումն է որ այնուհետեւ կոչուեցաւ քաղաքացիական երդում։

Ելեւմուտքին վրայ Նէքէրի տեղեկագիրը ծայր աստիճան տագնապալից եղաւ։ Վարկերու պէտքն էր որ Ազգային Ժողովին դիմում ընել տուած էր. այս Ժողովը՝ հազիւ հազ գումարուած՝ իշխանութեան հետ պայքարի մտած էր, և երաշխաւորութիւններ հաստատելու հարկեցուցիչ պէտքին վրայ միայն խորհելով, պետական հասոյթները ապահովելու պէտքը անտես ըրած էր։ Ելեւմուտքին ամբողջ հոգը Նէքէրի վըրայ էր միայն։ Մինչ Պայիի, մայրաքաղաքին պարէններուն բեռին տակ, դժնդակ անձկութիւններու մէջ կը գտնուէր, Նէքէր, նոյնպէս հարկեցուցիչ այն շատ աւելի ընդարձակ պէտքերէ տանջուած, Նէքէր, իր դժուարին ու տաժանելի հաշիւներուն մէջ փակուած, հազարաւոր նեղութիւններու տակ ճընշուած, կը ջանար հանրային կարօտութիւնը բառնալ, և ելեւմտական հարցերու վրայ միայն խորհած միջոցին՝ չէր հասկնար թէ ինչո՛ւ Ժողովը քաղաքական հարցերու վրայ միայն խորհէր։ Նէքէր և Ժողովը, իւրաքանչիւրը իր նիւթովը նախապաշարուած, ուրիշ նիւթ չէին տեսներ։ Սակայն, եթէ ներկայ տագնապը և կարօտութիւնը կ'արդարացնէին Նէքէրի մտատանջութիւնները, Ժողովին ալ, կ'արդարանար Նէքէրի բարձրախոհ անտեսութիւններուն մասին իր վստահու-

թեամբ։ Այս ժողովը, որ ընդգրկած էր Ֆրանսան ու անոր ապագան, չէր կրնար հաւատալ թէ խորունկ չքաւորութեան մատնուած ըլլայ այս գեղեցիկ երկիրը, որ պահ մը կը հեծէ, պարտքերու ծանրութեան տակ։

Նէքէր, 1788 Օգոստոսին նախարարութեան մէջ մտնելով, գանձին մէջ 400,000 ֆրանք գտաւ միայն։ Ի գին մեծ հոգածութիւններու, ամէնէն աւելի առօրեական պէտքերուն հասած էր. և անկէց ի վեր պարագաները պէտքերը բազմապատկեցին հասոյթի աղբիւրները նուազեցնելով։ Հարկ եղած էր ցորեն գնել, արժած գինէն վար ծախել, ահագին քանակութեամբ նպաստ բաշխել, հանրօգուտ աշխատութիւններ հաստատել գործաւորները զբաղեցնելու համար։ Այս վերջին նպաստակու օրական մինչև 12,000 ֆր. դուրս ելած էր գանձէն։ Ծախքերը ո՛րքան կ'աւելնային եկամուտներն ալ նոյն չափով կը պակսէին։ Աղի գիներուն գեղչը, վճարումներուն յապաղումը, և յաճախ տուրք վճարելու բացարձակ մերժումը, զինեալ ուժով մաքսանենգութիւնը, բաժի, ասկի վճարումը ապահովող փակոցներուն քանդումը, նոյն իսկ արձանագրութեանց տոմարներուն թալանումը և գրագիրներուն սպաննութիւնը, հասոյթներուն մէկ մասը փճացուցած էին։ Հետևաբար Նէքէր երեսուն միլիոնի փոխառութիւն մը պահանջեց։ Առաջին տպաւորութիւնը ա՛յնքան ուժգին եղաւ որ որոշուեցաւ ծափահարութեամբ քուէարկել փոխառութիւնը. բայց շատ չանցած հանդարտեցաւ այս առաջին շարժումը։ Դժկամակութիւն յայտնուեցաւ նոր փոխառութիւններու համար, և տեսակ մը համառութիւն գործուեցաւ առաջ քշելով ընտրական տետրակները, որոնցմէ արդէն հրաժարած էին, և որոնք կ'արգիլէին փոխառութեան հաւանիլ Սահմանադրութիւնը չքննուած. անցեալ տարուընէ ի վեր գանձը մնած գումարներուն հաշիւը տեսնելու չափ իսկ առաջ գացին, որպէս թէ վստահութիւն չկար նախարարին վրայ։ Սակայն Պետական պէտքերուն հասնելու հարկը ընդունիլ տուաւ փոխառութիւնը. բայց փոխեցին նախարարին յատակագիծը և տոկոսը հարիւրին չորս ու կէսի իջեցուցին, ազգին հայրենասիրութեան վրայ յոյս դնելով, բայց խնդիր էր թէ այդ հայրենասիրութիւնը, որ կայ ազգին մէջ, կրնա՞ր միթէ գտնուիլ արհեստով փոխատուներուն մէջ, որոնք միայն սովորաբար այս տեսակ սեղանաւորական չահագործութիւններով կը զբաղին։ Այս առաջին թերութիւնը մին եղաւ ա՛յն թերութիւններէն զորս սովորաբար կը գործեն ժողովները, երբ պաշտօնի վրայ եղող նախարարին անմիջական տեսութիւններուն կը փոխանակեն վերացականօրէն հաշուող հազար երկու հարիւր միտքերու ընդհանուր տեսութիւնը։ Դիւրաւ նշմարուեցաւ նաև թէ ազգին միտքը կը սկսէր արդէն նախարարին երկչոտութեան չընտելանալ։

Հանրային անդորրութեան և եկամուտքին արուած այս անխուսափելի հոգածութիւններէն վերջ, զբաղեցան Իրաւունքներու Յայտարարութեամբ։ Առաջին գաղափարը հայթայթած էր Լաֆայէթ, որ ինք ալ Ամերիկացիներէն փոխ առած էր զայն։ Օգս. 12ին կրկին ձեռք առնուեցաւ և վերջնապէս վճռուեցաւ այս վճարանութիւնը, որ ընդհատուած էր Յուլիս 14ի յեղափոխութեամբ, Օգոստոս 1ին վերսկսուած և դարձեալ ընդհատուած աւատական ռէժիմին ջնջումով։ Այս գաղափարը պատկառելի բան մը ունէր որով գրաւեց ժողովը։ Միտքերու խանդը, թերեւս զիրենք կը մղէր ամէն բանի որ մեծութիւն ունէր. այս թռիչքը երևան կը բերէր իրենց բարեմտութիւնը, ուղղամտութիւնը, իրենց լաւ և յոռի որոշումները։ Ուստի գրաւեցին այդ գաղափարը և ուզեցին գործադրել զայն։

Եթէ խնդիրը միմիայն քանի մը սկզբունքներու վրայ ըլլար, ինչպէս տուրքի քուէարկութիւն, կրօնական ազատութիւն, մամուլի ազատութիւն, Նախարարական պատասխանատուութիւն, զորս կանխաւ չէր ընդունուած իշխանութիւնը, որուն լուծը սակայն թօթափեցին, — անկէց աւելի դիւրին բան չկար: Նոյնը ըրած էին արդէն Ամերիկա և Անգլիա: Ֆրանսա քանի մը որոշ և դրական առածներով պիտի կրնար բացատրել իր կառավարութեան վրայ պարտադիր ըրած նոր սկզբունքները. բայց Ֆրանսա, անցեալին հետ իր յարաբերութիւնը խզելով և ուզելով բնութեան վիճակին վերադառնալ, ներքին ձգտումը ունեցաւ մարդու և քաղաքացիի բոլոր իրաւունքներուն մէկ կատարեալ յայտարարութիւնը ընելու: Նախ և առաջ այսպիսի յայտարարութեան մը անհրաժեշտութեան և միանգամայն վտանգին վրայ խօսուեցաւ: Շատ և անօգուտ վիճաբանութիւններ եղան այս մասին, որովհետեւ ո՛չ օգուտ ո՛չ վտանգ կար ժողովուրդին չհասկցած բանաձեւներով բաղկացած յայտարարութիւն մը ընելուն մէջ. անկէց բան մը պիտի հասկնային միմիայն սահմանափակ թիւով իմաստասիրական միտքեր, որոնք արդէն մեծ մասնակցութիւն մը չունէին ժողովրդային վարանջութեանց մէջ: Բայց վերջապէս որոշուեցաւ որ ըլլայ և զետեղուի սահմանադրական վաւերաթուղթին գլուխը: Բայց խմբագրել հարկ էր զայն, և ահա դժուարին գործը: Ի՞նչ է իրաւունք մը. — պարտականութիւն մը հանդէպ ժողովուրդին: Արդ, պարտականութիւն է ամէն բարիք զոր կրնանք անոր համար ընել. ուրեմն կառավարական ամէն իմաստուն տնօրինութիւն իրաւունք մըն է: Առաջարկուած բոլոր ծրագիրները կը պարունակէին օրէնքին սահմանը, զայն շինելու կերպը, վեհապետութեան սկզբունքը, ևն.: Կ'առարկուէր թէ ատոնք չեն իրաւունքները, այլ թէ ատոնք ընդհանուր առածներ են: Սակայն հարկ էր այս առածները արտայայտել: Միրաբօ, համբերութիւնը հատած, գոչեց վերջապէս. «Իրաւունքներ բառը մի՛ գործածէք, այլ ըսէք. Ի շահ ամէնուն, յայտարարուեցաւ . . .» Այսու հանդերձ նախամեծար համարուեցաւ Իրաւունքներու Յայտարարութիւն մ՚ը աւելի պատկառելի ախտորոշ, որուն մէջ խառնուեցան առածներ, սկզբունքներ, սահմաններ: Ամբողջէն բաղկացաւ 91ի Սահմանադրութեան գլուխը զետեղուած նշանաւոր Յայտարարութիւնը: Մնաց որ, եղածը չարիք մըն էր միայն, այսինքն իմաստասիրական հասարակ տեղիքի մը համար քանի մը նիւթեր կորսնցնելու չարիքը կամ վնասը: Բայց ո՞վ կրնայ մեղադրել միտքերը՝ զիրենք գրաւող առարկայով զինուելցած ըլլալնուն համար: Ո՞վ իրաւունք ունի արհամարհելու առաջին վարկեաններուն անխուսափելի նախապաշարումը:

Ժամանակ էր վերջապէս Սահմանադրութեան աշխատութիւններուն սկսելու: Նախաշաւիղի յոգնութիւնը ընդհանուր էր, և արդէն իսկ ժողովէն դուրս հիմնական հարցերը կը յուզուէին: Ի հարկէ շատ մը միտքերու կ'ընծայուէր անգլիական Սահմանադրութիւնը, քանի որ անիկա Անգլիոյ մէջ նմանօրինակ պայքարի մը հետեւանքով իրաւախոհութիւն մըն էր, թագաւորին, ազնուականութեան և ժողովուրդին միջեւ գոյացած: Այս Սահմանադրութիւնը էապէս կը կայանար երկու խորհրդարաններու հաստատութեան և արքայական վաւերացումին մէջ: Միտքերը, իրենց առաջին թռիչքին մէջ, ամէնէս պարզ գաղափարներուն կ'երթան. ժողովուրդ մը որ իր կամքը կը յայտարարէ, թագաւոր մը որ կը գործադրէ զայն, կառավարութեան միակ օրինաւոր ձեւը կը թուէր ըլլալ: Վերին խորհրդարանի մը Լորտերու, Ծերակոյտի միջոցաւ ազնուականութեան տալ բաժին մը

ազգին բաժնին հաւասար. Թագաւորին իրաւունք չնորհել ազգային կամքը առ ոչինչ դրելու վաւերացումի դրութեամբ, ասոնք անտեղութիւն կը թուէր իրենց: Ազգը կ'ուզէ, թագաւորը կ'ընէ. միտքերը այս պարզ տարրերէն դուրս չէին ելլէր, և ա՛յն պատճառաւ միայն միապետութիւն կ'ուզէին, որովհետև թագաւոր մը կը թողուին իբրև գործադիր ազգային կամքերու:

Անգլիական միապետութիւնը, ինչպէս որ կայ ազատ համբաւուած Պետութեանց մէջ, միակ հողին մը տիրապետութիւնն է, որուն սահմանները կը դրուին ազգային աջակցութեան միջոցաւ: Իշխանին կամքը իրապէս գրեթէ ամէն բան կ'ընէ, և ազգին կամքը չարիքը խափանելու կը վերածուի, կա՛մ մեծարանելով տուրքին վրայ, կամ իրրև երրորդ մը աջակցելով օրէնքին պատրաստութեան: Բայց ա՛յն վայրկեանին երբ ազգը կրնայ իր ուզածը օրինադրել և հրամայել առանց վերօյի միջոցաւ թագաւորին ընդդիմութեան, թագաւորը այն ատեն պարզ ատենակալ մըն է միայն: Այն ատեն հանրապետութիւն կ'ըլլայ փոխանակ մէկ քանիի միակ հիւպատոսով: Լեհաստանի կառավարութիւնը, թէև թագաւոր մը կայ հոն, բնաւ միապետութիւն անունը չէ առած, այլ հանրապետութիւն. Լակեդեմոնի մէջ ալ թագաւոր կար:

Բուն միապետութիւնը կը պահանջէ ուրեմն միտքերու կողմէ մեծամեծ զիջումներ: Բայց միտքերը իրենց երկարատև անէութենէն վերջ իրենց առաջին խանդավառութեան միջոցին տրամադիր չէին այդ զիջումները ընելու: Ուստի կարծիքներու մէջ հանրապետութիւն կար առանց անունը տալու, և հանրապետական էին առանց կարծելու:

Վիճաբանութեան մէջ կարուկ կերպով չարտայայտուեցան բնաւ. ուստի հարցը գէչ պատկերացուեցաւ և չհասկցուեցաւ, հակառակ ժողովին մէջ տարածուած հանճարեղ և հմտագոյն մարդոց: Անգլիական սահմանադրութեան կուսակիցները, Նէքէր, Մունիէ, Լալի, չկրցան տեսնել թէ ի՛նչ բանի մէջ պէտք էր կայանալ միապետութիւնը, և երբ տեսած ալ ըլլային, պիտի չհամարձակէին կարուկ կերպով ըսել թէ ազգին կամքը պէտք չէր բնաւ ամենակարող ըլլայ, և թէ ան պիտի խափանէր աւելի քան թէ գործէր: Ինքզինքնին կերուն հասցուցին մինչև ա՛յնչափ ըսելն թէ պէտք էր որ թագաւորը կարող ըլլայ ժողովի մը ծայրայեղ յանդգնութիւնները կասեցնել, թէ օրէնքը բարւոք գործադրելու և յօժարակամ գործադրելու համար, պէտք էր որ թագաւորն ալ գործակցի անոր, և թէ վերջապէս պէտք էր յարաբերութիւններ գտնուէին գործադիր և օրէնսդիր իշխանութեանց միջև: Այս փաստերը գէչ կամ գոնէ տկար էին: Եւ իրաւցնէ ծիծաղելի էր, ազգային վեհապետութիւնը ճանչնալէ վերջ, թագաւորին միակ կամքը անոր դէմ հանել ուզելը (*):

Աւելի լաւ կը պաշտպանէին երկուխորհրդարանները, որովհետև իրաւցնէ, նոյն իսկ հանրապետութեան մէջ, կա՛ն բարձր դասակարգեր, որոնք պէտք է ընդդիմանան նորամբարձ դասակարգերուն ծայրայեղօրէն տրամադրող չարժումին, հին հաստատութիւնները նոր հաստատութիւններուն դէմ պաշտպա-

---

(*). Հինգերորդ գիրքին, Օրէնսդիր ժողովին պատմութեան սկիզբը 91ի Սահմանադրութեան վերագրուած թերութիւններուն վրայ դատաստան մը պիտի գտնուի, որ իրաւացի կը թուի ինծի: Այդ թուականին Ֆրանսայի մէջ անգլիականին ձևով կառավարութիւն մը հաստատելու ծրագրին վրայ մէկ խօսք մը միայն պիտի ըսեմ: Կառավարութեան այդ ձևը իրաւախոհութիւն մըն է որդի Պետութիւնները զատող երեք չահերուն միջև, թագաւորու-

նելով։ Բայց այս վերին խորհրդարանը, արքայական առանձնաշնորհումէն աւելի անխուսափելի, քանի որ առանց ծերակոյտի համբաւաւորութեան օրէնսդիր մը չի գտնուիր, արքայական վաւերացումէն աւելի կը մերժուէր, որովհետեւ ժողովուրդը թագաւորութենէն աւելի ազնուականութեան դէմ գայրացած էր։ Այն միջոցին անկարելի էր վերին խորհրդարանը, որովհետեւ ո՛չ ոք կ՚ուզէր զայն. փոքր ազնուականութիւնը կ՚ընդդիմանար անոր, վասնզի ինք հոն տեղ չէր կրնար գտնել. յաւակնոտ առանձնաշնորհեալներն ալ կ՚ընդդիմանային, վասնզի ամէն բանի մէջ զարմերուն վատթարանալը կը փափաքէին. ժողովրդային կուսակցութիւնը կ՚ընդդիմանար, վասնզի չէր ուզեր ազնուականութեան թողուլ դիրք մը՝ ուրկէ [illegible] տիրապետէր ազգային կամքին։ Մունիէ, Լալի, Նէքեր, գրեթէ առանձ էին որ այդ վերին խորհրդարանին կը փափաքէին։ Սիէյէս, ինքնահաւան միտքի մը մոլորանքով, ո՛չ երկու խորհրդարան կ՚ուզէր ո՛չ արքայական վաւերացում։ Այն ընկերութիւնը միաձայն կ՚ըմբռնէր. իր կարծիքով զանգուածը, մասսան, առանց զատակարգի խտրու-

թիւն, ազնուականութիւն եւ ժողովրդապետութիւն։ Արդ, այս իրաւախոհութիւնը ուժերու չափումէն վերջ միայն կարելի է, այսինքն կռիւէն վերջ, այսինքն տակաւին յեղափոխութենէն վերջ։ Արդարեւ, Անգլիոյ մէջ այդ ձեւը երկար պայքարէ մը, ժողովրդապետութենէն եւ ամենազօրութենէն վերջ միայն տեղի ունեցաւ։ Կռիւէն առաջ իրաւախոհութիւն գործել ուզելը պատերազմէն առաջ հաշտութիւն ընել ուզել է։ Տխուր է այս ճշմարտութիւնը, բայց անվիճելի է. մարդիկ, մինչեւ որ իրենց ուժերը չչափեն, չեն պայմանադրեր։ Ուստի յեղափոխութենէն վերջ միայն Ֆրանսայի մէջ կարելի էր անգ-

թեան, պէտք էր ուզել առանձնէր, եւ թագաւորն ալ, իբրեւ միակ ատենակալ, գործադրելու առանձնէր։ Ուստի բարեմտութեամբ էր որ կ՚ըսէր թէ միապետութիւն կամ հանրապետութիւն միեւնոյն բանն է, քանի որ իրեն համար տարբերութիւնը գործադրութիւնը առանձնող ատենակալներուն թիւին մէջ էր միայն։ Սիէյէսի միտքին նկարագիրը չըմբռնուածն էր, այսինքն իր սեփական գաղափարներուն կուռ եւ սերտ միութիւնը։ Ինք իրեն հետ կը համաձայնէր, բայց չէր համաձայներ ո՛չ իրերու բնութեան եւ ոչ իրմէն տարբեր միտքերու հետ։ Զանոնք իր լուծին տակ կ՚առնէր իր բացարձակ առածներուն զօրեղութեամբ, բայց քիչ անգամ կը հաւանեցնէր զանոնք. ուստի չկրնալով ո՛չ պաշտպանել իր դրութիւնները, ո՛չ ալ բանակցօրէն որդեգրել տալ զանոնք, չափ չանցած ինքնահաւանութիւն, քմայք սիրելի յղանար։ Միրապօ, ուղղադատ, արդարախոհ, ճկուն միտք, ան ալ ժողովէն աւելի յառաջադէմ չէր ի մասին քաղաքական գիտութեան. կը մերժէր երկու խորհրդարանը, ո՛չ թէ համոզումով, այլ անոնց արդի անհնարութեան գիտակցութեամբ

լիական սահմանադրութիւնը։ Անշուշտ ալ կ՚ընէին զայն քաղաքելով, բայց գործածած եղանակնին լաւ չէր. եւ եթէ լաւագոյն ալ չարժէին, դարձեալ պիտի չյաջողէին։ Անյաջողութեան մասին ցաւերը նուազեցնելու համար պիտի աւելցնեմ թէ երբ նոյն իսկ մեր օրինաց տախտակին վրայ ամբողջ անգլիական սահմանադրութիւնը դրուէր, այս պայմանադրութիւնը պիտի չամոքէր կիրքերը, դարձեալ պիտի մաքառէին, եւ ճակատամարտը պիտի մղուէր հակառակ այդ նախաշաւիղ պայմանադրութեան։ Ուստի կը կրկնեմ, հարկ էր պատերազմը, այսինքն յեղափոխութիւնը։ Աստուած ի գին կռիւներու միայն արդարութիւնը տուած է մարդոց։



ԳԻՒՂԱՑԻ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ Կ'ԱՊՏԱԿԷՐ

և ազնուականութեան տանութեամբ։ Վաւերացումը կը պաշտպանէր միապետական հակումով մը. և ժողովին բացումէն ի վեր արդէն անոր յարգուած էր, ըսելով թէ, առանց վաւերացումի սկզբունքին, նախամեծար կը համարի Կ. Պոլիս աւելի քան թէ Բարիզ։ Պառնավ, Տիւբոռ և Լամէթ չէին կրնար Միրապոյի հետ միևնոյն բանը ուզել։ Անոնք չէին ընդունիր ո՛չ վերին խորհրդարանը, ո՛չ արքայական վաւերացումը, բայց Սիէյէսի չափ յանդգուն չէին, և կը համաձայնէին բարեխնդել իրենց կարծիքը, թագաւորին և վերին խորհրդարանին տալով ակախական վեթօ մը, այսինքն վարի խորհրդարանին (Երեսփ. Ժողով) մէջ արտայայտուած ազգային կամքին առժամապէս ընդդիմանալու իրաւասութիւնը։

Առաջին մեծարանութիւնները սկսան

Օգոստոս 28ին և 29ին։ Պատճառ կուսակցութիւնը ուզեց պայմանադրուիլ Մունիէի հետ, զոր իր յամառութիւնը պետ ըրած էր անգլիական սահմանադրութեան կուսակցութեան։ Ամէնէն առողջն էր զոր հարկ էր չահիլ, և իրեն դիմեցին։ Բանակցութիւններ տեղի ունեցան։ Երբ տեսնուեցաւ որ անկարելի էր անոր մէջ մտքի ունակութիւն եղած կարծիք մը փոխել, հաւանեցան իր սիրած անգլիական ձևերուն, բայց պայմանաւ որ ժողովրդային խորհրդարանին դէմ վերի խորհրդարան մը և թագաւորը հանելով, այս վերջին երկուքին առկախական վէտօ մը միայն պիտի տրուէր, և թէ, բաց աստի, թագաւորը պիտի չկրնար ժողովը լուծել։ Մունիէ համոզուած ունեցող մարդու մը պատասխանը տուաւ. ըսաւ թէ ճշմարտութիւնը իրեն չէր վերաբերիր, և թէ չէր կրնար անոր մէկ մասը փոխել միւսը փրկելու համար։ Այսպէս կորսնցուց երկու օրէնսդրութիւնները զանոնք բարեփոխել չուզելով։ Եւ եթէ ճշմարիտ էր, ինչ որ պիտի տեսնուի թէ չէր, որ 91ի Սահմանադրութիւնը, վերի խորհրդարանի ջնջումով, փճացուց զանը, ասոր մեծագոյն յանցանքը Մունիէի կը վերաբերի։ Մունիէ խանդավառ չէր, այլ յամառ. ինք նոյնքան ինքնահաւան էր իր դրութեան մէջ որքան Սիէյէս իրենին մէջ, և կը նախընտրէր ամէն բան կորսնցնել քան թէ տեղի տալ բնաւ։ Բանակցութիւնները խզուեցան դառնութեամբ։ Մունիէի սպառնացած էին Բարիզով, ժողովրդային կարծիքով, և ճամբայ ալ եղան — ինչպէս ինք կ'ըսէ — մարդերու համար իրեն դէմ սպառնացուած ազդեցութիւնը *)։

(*) Ես չեմ պաշտպաներ երեսփոխան Մունիէի յամառութիւնը, արդարեւ անձնական համոզումէն աւելի յարգելի բան չկայ. բայց ասիկա բաւական հետաքրքրական իրողութիւն մըն է։ Ահա այս մասին հատուած մը, զոր կը քաղենք իր ընտրողներուն ուղղած տեղեկագիրէն.

«Ոչ սակաւ երեսփոխաններ, կ'ըսէ, որոնցմէ ինծմէ ձեռք բերել այս սկզբունքին (արքայական վաւերացման) զոհողութիւնը, կամ, զայն իրենց կամքը գրկելով, ի փոխարէն յորդորել զիս իրենց հաւատացող մը ընելու. տարին զիս ազատութեան նախանձայոյզ կուսակցի մը մօտ, որ դաշնակցութիւն մը կը փափաքէր անոնց և իմ միջև, որպէս զի ազատութիւնը նուազ խոչընդոտներ ունենայ, և որ կ'ուզէր ներկայ ըլլալ միայն մեր խօսակցութիւններուն, առանց մասնակցելու որոշման։ Փորձելու համար համոզել զիրենք կամ զիս լուսաբանել, այդ բանակցութիւնները ընդունեցի։ Ուժգնօրէն ճամարտակեցին կարծեցեալ անպատեհութիւններուն դէմ որոնք առաջ պիտի գան, եթէ թագաւորը անսահման իրաւունք ունենայ նոր օրէնք մը խափանելու, և ինծի հաւաստեցին որ եթէ այդ իրաւունքը ժողովին կողմէ ճանչցուի, քաղաքային պատերազմ պիտի ծագի։ Երկու անգամ կրկնուած այս բանակցութիւնները ոևէ յաջողութիւն չունեցան. անոնք վերջացան իր հմտութիւններով ու առաքինութիւններով համբաւաւոր Ամերիկացի մը մօտ, որ ազատութիւնը պաշտպանելու յատուկ եղող հաստատութեանց փորձառութիւնը և տեսականը ունէր միանգամայն։ Իմ սկզբունքներուս նպաստաւոր վճիռ մը տուաւ։ Երբ զգացին որ կարծիքս ինծի լքել տալու համար բոլոր ջանքերը անօգուտ էին, վերջապէս յայտարարեցին թէ մեծ կարևորութիւն չէին տար արքայական վաւերացման հարցին, թէև քանի մը օր առաջ զանիկա առաջ քշած էին իբրև քաղաքային պատերազմի պատճառ. առաջարկեցին քուէարկել ան-

Այս հարցերը ժողովուրդն ալ տարակարծիք կ'ընէին ներկայացուցիչներուն պէս, և առանց հասկնալու կը խանդավառուէր դարձեալ անոնց համար։ Այս հարցերը ամփոփուած էին սա՛ կարճ և շատ բանուկ բառին մէջ. վէտօ։ Վէտօն կ'ուզէին կամ չէին ուզեր, և ասիկա կը նշանակէր թէ կ'ուզէին կամ չէին ուզեր բռնաւորութիւնը։ Ժողովուրդը, առանց նոյն իսկ ասիկա հասկնալու, վէտօն կ'ըմբռնէր իբրև տուրք մը զոր հարկ էր ջնջել, կամ իբրև թշնամի մը զոր հարկ էր կախել, և կ'ուզէր փողոցի լապտերներէն վար կախել... (**)

Արքայական պալատը մանաւանդ ամենամեծ եռուզեռի մէջ էր։ Հոն կը գումարուէին խանդավառ մարդիկ, որոնք չկրնալով նոյն իսկ հանդուրժել ընտրական շրջանակներու պարտադիր ձևերուն, աթոռի մը վրայ կ'ելլէին, խօսք կ'առնէին առանց ուզելու, կը սուլէին կամ յաղթանակաւ կը տարուէին ահագին ժողովուրդի մը կողմէ,

սահման փակերագամին համար, և քուէարկել նաև երկու խորհրդարաններուն համար, բայց պայմանաւ որ պիտի չպնդեմ ես ալ Թագաւորին իրաւունք տալ Երեսփ. Ժողովը լուծելու, թէ վերի խորհրդարանին համար առկախական վէթօ մը միայն պիտի պահանջէի, և թէ պիտի չընդդիմանայի հիմնական օրէնքի մը, որով ազգային դաշնակցական ժողովներ հաստատուին որոշ ժամանակներու մէջ, կամ Երեսփ. Ժողովին պահանջումին, կամ գաւառական ժողովներուն պահանջումին վրայ, Սահմանադրութիւնը վերաքննելու և հարկ դատուած փոփոխութիւնները անոր մէջ կատարելու համար։ Ազգային դաշնակցաժողով ըսելով կ'իմանային ա՛յնպիսի ժողովներ, որոնց մէջ փոխադրուած պիտի ըլլային ազգին բոլոր իրաւունքները, բոլոր իրաւասութիւնները, և հետևաբար իրենց ներկայութեամբ իսկ պիտի ջնջէին միապետին և սովորական օրէնսդրական մարմիններուն հեղինակութիւնը, որոնք պիտի կրնային ըստ կամս տրամադրել ամէն տեսակ հեղինակութիւն, իշխանութիւն, ուզածնուն պէս տակնուվրայ ընել Սահմանադրութիւնը, բռնաւորութիւն կամ անիշխանութիւն վերահաստատել։ Վերջապէս կ'ուզէին կերպով մը վերին դիկտատորութիւնը Թողուլ միակ ժողովի մը, որ պիտի կրէր ազգային Դաշնակցաժողով, և թագաւորութիւնը ենթարկել երկպառակութեանց և խռովութեան պարբերական վերադարձի մը։

«Զարմանք յայտնեցի որ կ'ուզէին յորդորել զիս պայմանաւորուելու երկրին շահերուն վրայ՝ իբրև թէ երկրին բացարձակ տէրերը եղած ըլլայինք, դիտել տուի թէ առկախական վէթօ մը միայն թողլով վերի խորհրդարանին, եթէ ընտրելի անդամներէ կը բաղկանար ան, դժուար պիտի ըլլար հանրային վստահութեան արժանի անձերէ կազմել զայն. այն ատեն բոլոր քաղաքացիները պիտի նախընտրէին երեսփոխան անուանուիլը. թէ պետական ոճիրներու դատաւոր եղող վերի խորհրդարանը պէտք էր շատ մեծ պատկառանք ունենար, և հետևաբար թէ անոր հեղինակութիւնը պէտք չէր վարի խորհրդարանին հեղինակութենէն պակաս ըլլար։ Վերջապէս, աւելցուցի թէ, երբ ես սկզբունքի մը ճշմարիտ ըլլալուն հաւատամ, պատրաստ էի պաշտպանել զայն, և թէ չէի կրնար ըստ կամս գործածել զայն, քանի որ ճշմարտութիւնը կը պատկանէր բոլոր քաղաքացիներուն։»

(**) Երկու գիւղացիներ վէթօյին վրայ կը խօսէին. «Գիտե՞ս ինչ է վէթօն, ըսաւ մին։— Ո՛չ։— Է՛, ուրեմն, ամանդ ապուրով լեցուն է. թագաւորը քեզի կ'ըսէ. Ապուրդ թափէ, և պէտք է որ ապուրդ թափես։»

որ պատրաստ էր գործադրելու անոնց առաջարկածը։ Գամիյ Տէմուլէն, որուն անունը արդէն տուինք այս պատմութեան մէջ, նշանաւոր կը հանդիսանար անոնց մէջ իր մաքին խայտանքովը, ինքնատպութեամբը և չնականութեամբը. և, առանց ինք անգութ ըլլալու, անգթութիւններ կը պահանջէր։ Անոնց մէջ կը սեպուէր նաև Սէն-Հիւրիւկ, հին մարքիզ, երկար ատեն Պասթիլի մէջ արգելափակ եղած ընտանեկան գրժտութիւններու համար, և խենդ ըլլալու աստիճան իշխանութեանց դէմ կատղած։ Հոն ամէն օր ատոնք կը կրկնէին թէ պէտք է Վէրսայլ երթալ, թագաւորէն և ժողովէն հաշիւ պահանջելու թէ ինչու կը վարանին ժողովուրդին օգտակար եղած բաները ընելու մէջ։ Լաֆայէթ ամենամեծ դժուարութեամբ կը զսպէր զանոնք չարունակ պահակախումբեր շրջագայեցնելով։ Ազգային պահնորդները կ՚ամբաստանուէին արդէն իբրև ազնուականներուն կողմէ շահուած։ «Այլևս ազգային պահնորդ չէ մնացած», կ՚ըսէր Տէմուլէն։ Արդէն նոյն իսկ Գրօմուէլի անունը կ՚արտասանուէր Լաֆայէթի անունին կից։ Օր մը, կիրակի, Օգոստոս 30, առաջարկ մը կը ներկայացուի Արքայական պալատին։ Մունիէ կ՚ամբաստանուի այդ գրին մէջ, Միրապօ իբրև վտանգի մէջ կը ներկայացուի, և կ՚առաջարկուի Վէրսայլ երթալ այս վերջինին կեանքին վրայ հսկողութիւն կատարելու։ Միրապօ տակաւին արքայական վաւերացումը կը պաշտպանէր, բայց առանց դադրեցնելու ժողովրդական սիրուելի իր դերը, դարձեալ միևնոյն մարդը երևնալով խուժանին աչքին։ Սէն-Հիւրիւկ, քանի մը տաքգլուխներու առջև անցած Վէրսայլի ճամբուն վրայ կ՚երթայ։ Կ՚ուզեն, կ՚ըսեն, մեկ ժողովը որ պաշտօնէ դադրեցնէ իր անհաւատարիմ ներկայացուցիչները՝ անոնց տեղ ուրիշներ անուանելու համար, և թախանձել թագաւորն ու գահաժառանգը Բարիզ գալով ապահովելու ժողովուրդին միջև։ Լաֆայէթ կը վազէ, կը ձերբակալէ զանոնք և կը սպառնայ ետ դառնալ։ Յաջորդ երկուշաբթին 31, կը հաւաքուին դարձեալ։ Ուղերձ մը կը պատրաստեն համայնքին, որով կը պահանջէ ընտրական շրջանակները ի ժողով գումարել վէթօն դատապարտելու ինչպէս նաև զայն պաշտպանող երեսփոխանները, զանոնք պաշտօնանկ ընելու և անոնց տեղ ուրիշներ անուանելու համար։ Համայնքը զանոնք կը մերժէ երկու անգամ ամենամեծ հաստատամտութեամբ։

Այդ միջոցին յուզումը կը տիրէր ժողովին մէջ։ Դժգոհները գլխաւոր երեսփոխաններուն սպառնալից և նախատական նամակներ գրած էին։ Անոնցմէ մին ստորագրած էր Սէն-Հիւրիւկ։ 31ի երկուշաբթին, նիստին բացման պահուն, Լալի իմացուց թէ Արքայական պալատէն պատուիրակութիւն մը ընդունած էր, որ զինքը կը յորդորէր բաժնուիլ վէթօն արգիլող յանի քաղաքացիներէն, և կ՚աւելցնէր թէ քան հազար հոգինոց բանակ մը պատրաստ էր քալելու։ Մունիէ ևս կարդաց իր ստացած նամակները, առաջարկեց հետամուտ ըլլալ գտնել այս մեքենայութեանց դաւաճան հեղինակները, և ժողովին առաջարկեց հինգ հարիւր հազար ֆրանք տալ զանոնք յայտնողին։ Պայքարը խառնաշփոթ եղաւ։ Տիւբօռ ըսելով թէ ժողովին արժանապատուութեան չէր վայլեր այդպիսի մանրամասնութիւններով զբաղիլ։ Միրապօ ալ կարդաց իրեն ուղղուած նամակները, որոնց մէջ ժողովրդական դատին թշնամիները զինքը Մունիէէն նուազ չէին դատապարտեր։ Ժողովը օրակարգին անցաւ, և մէջտեղ հանուած նամակներէն մէկուն ստորագրող Սէն-Հիւրիւկ բանտարկուեցաւ համայնքին հրամանով։

Օրակարգին վրայ էին երկու խնդիր-

ներ միանգամայն. Ժողովներուն յարատեւութիւնը, երկու խորհրդարանները և վէթօն: Յարատեւութիւնը քուէարկուեցաւ գրեթէ միաձայնութեամբ: Ազգային ժողովներու երկարատեւ ընդհատումէն մեծապէս նեղուած էին և այս պատճառաւ յարատեւ կ'ուզէին զանոնք: Յետոյ անցան օրէնսդիր մարմինին միութեան մեծ խնդրոյն: Բեմերը գրաւուած էին բազմաթիւ և ամբոխային ունկնդիրներով: Երեսփոխաններէն շատերը կը քաշուէին: Նախագահը՝ որ այս պահուն Լանկրի եպիսկոպոսն էր, ի զուր կը ջանար վար դնել զանոնք. անոնք բազմութեամբ կը մնային: Ամէն կողմէ մեծագոչ կը պահանջէին ձայները գիտնալ ընել: Լալի անգամ մը եւս խօսք կը պահանջէ. կը մերժուի և կ'ամբաստանուի նախագահը՝ զայն բեմին վրայ հանած ըլլալուն վրայ. մինչեւ իսկ անգամ մը նախագահին քով երթալով կը գոչէ թէ ժողովը յանձնեցնելէն ինք չէ՞ հանձնուած արդեօք: Այս խօսքերէն վիրաւորուելով նախագահը թիկնաթոռը կը թողու, և վիճաբանութիւնը դարձեալ կը յետաձգուի: Յաջորդ օրը Սեպտ. 10ին, կը կարդացուի Ռէն քաղաքին մէկ ուղերձը, որ անընդունելի կը յայտարարէ վէթօն և զանոնք քուէարկողները հայրենիքի թշնամի: Մունիէ և իրենները կը զայրանան, և կ'առաջարկեն յանդիմանել քաղաքապետութիւնը: Միրապօ կը պատասխանէ թէ ժողովը պաշտօն չունի դաս տալու քաղաքապետական պաշտօնատարներուն, և թէ պէտք է օրակարգին անցնիլ: Երկու խորհրդարաններու խնդիրը վերջապէս ձայնի կը դրուի, և ծափերու շառաչիւնով ժողովին միութիւնը կը վճռուի: Չորս հարիւր իննսուներինը ձայներ մէկ խորհրդարանի ի նպաստ կ'արտայայտուին, իսկ ութսուներինը ի նպաստ երկուքի. հարիւր քըսան երկու ձայն կորսուած են, շատ մը երեսփոխաններու զգացած երկիւղին հետեւանքով:

Վերջապէս կը հասնի վէթոյի խնդիրը: Միջին եզր մը գտնուած էր, առկախական վէթօն, որ առժամապէս միայն պիտի դադրեցնէր օրէնքը, մէկ կամ մէկ քանի օրէնսդրական շրջաններու միջոցին: Ասիկա իբրեւ կոչ մը կը նկատուէր ժողովուրդին, որովհետեւ թագաւորը, նոր ժողովներու դիմելով, և անոնց տեղի տալով եթէ յամառէին, իրօք ազգային հեղինակութեան դիմելու երեւոյթ մը կ'ունէր: Մունիէ և իրենները սաստ ընդդիմացան. իրաւունք ունէին անգլիական միապետութեան դրութեամբ, որով թագաւորը ազգային ներկայացուցչութեան հետ կը խորհրդակցի և չի հնազանդիր բնաւ. բայց իրենց գտնուած կացութեան մէջ անիրաւ էին: Իրենք կ'ըսէին թէ հապճեպ որոշում մը խափանել ուզած էին միայն: Արդ, առկախական վէթօն եւս բացարձակ վէթոյին պէս նոյն արդիւնքը կ'ունենար: Եթէ ներկայացուցչական ժողովը յամառէր, ազգային կամքը բացայայտ կ'ըլլար, և անոր փհապետութիւնը ընդունելով՝ դժուար կ'ըլլար ընդդիմանալ անոր անորոշ ժամանակով:

Նախարարութիւնը զգաց արդարեւ թէ առկախական վէթօն բացարձակ վէթոյին արդիւնքը կ'ունենար նիւթապէս, և Նեքեր խորհուրդ տուաւ թագաւորին կամաւոր զոհողութեան օգուտը իր կողմը ունենալ, յիշատակագիր մը ուղղելով ժողովին, և ինքնին պահանջելով առկախական քուէն: Այս մասին զրոյց տարածուեցաւ, և կանխաւ իմացուեցաւ յիշատակագրին նպատակն ու ոգին: Ներկայացուեցաւ Սեպտ. 11ին. ամէն ոք գիտէր անոր պարունակութիւնը: Կը թուի թէ Մունիէ, գահուն շահը պաշտպանելով, միմիայն գահը կէտ նպատակի ունեցած էր. բայց կուսակցութիւնները իրենց ծառայած շահերէն տարբեր շահ մը կ'ունենան ընդհուպ: Մունիէ մերժեց այս արքայական գե-

կուցագիրը, ըսելով որ, եթէ Թագաւորը կը հրաժարէր ազգին օգտակար սահմանաշնորհումէ մը, պէտք է հակառակ իր կամքին տալ զայն անոր հանրային օգտին համար։ Դիւքերը վերիվայր շրջեցան, և Թագաւորին հակառակորդները այս մասին ոյժ տուին իր միջամտութեան. բայց իրենց աշխատութիւնը անօգուտ եղաւ, և յիշատակագիրը բրտօրէն մերժուեցաւ։ Դարձեալ մեկնութեան ենթարկուեցաւ վաւերացում բառը, խնդիր յուզուեցաւ գիտնալու համար թէ վաւերացումը անհրաժե՞շտ էր Սահմանադրութեան։ Երկար բարակ որոշելէ վերջ թէ սահմանադիր իշխանութիւնը սահմանադրեալ իշխանութիւններէն գերադաս էր, հաստատուեցաւ որ վաւերացումը օրէնսդրական գործառնութիւններու վրայ միայն կրնար ի գործ դրուիլ, բայց ո՛չ երբեք սահմանադրող գործառնութիւններու վրայ, և թէ այս վերջինները միմիայն հռչակուելով կ'ըլլան կը լինին։ Վեց հարիւր եօթանասուններեք ձայն ի նպաստ առկախական վէթոյի, երեք հարիւր քսաներհինգ ի նպաստ բացարձակ վէթոյի արտայայտուեցան։ Այսպէս որոշուեցան նոր սահմանադրութեան հիմնական յօդուածները։ Մունիէ և Լալի-Թօլանտալ իսկոյն հրաժարական տուին Սահմանադրական Մասնախումբի անդամակցութենէ։

Մինչև ցարդ խել մը վճիռներ արտասանուած էին առանց երբեք անոնցմէ արքայական հաւանութեան ներկայացնելու։ Որոշուեցաւ Թագաւորին ներկայացընել Օգոստոս 4ի յօդուածները։ Խնդիր էր գիտնալ թէ վաւերացո՞ւմ պիտի խնդրուէր թէ պարզ հռչակում, զանոնք նկատելով իբրև օրէնսդրական կամ սահմանադրուած։ Մօրի և նոյն իսկ Լալի-Թօլանտալ ձախաւերութիւնը ունեցան պնդելու թէ անոնք օրէնսդրական էին և հետևաբար վաւերացում կը պահանջէին, իսկ թէ խոչընդոտ մը ստանելով արքայական կարողութենէն։ Միռաբօ չնաչխարհիկ ճշտադատութեամբ մը պնդեց թէ այդ յօդուածներէն մէկ քանին կը ջնջէին աւատական րէժիմը և գերազանցապէս սահմանադրական հանգամանք ունէին, մէկ քանին ալ ազնուականութեան և կղերին զուտ մէկ առտոնձնութիւնն էին, և թէ անշուշտ կղերն ու ազնուականութիւնը չէին ուզեր որ Թագաւորը կարողանայ ետ առնել տալ իրենց այդ առտոնձնութիւնը, որով իրենց երբեմնի իրաւունքներէն հրաժարած էին յօժարակամ։ Շաբըլիէ յարեց թէ պէտք չէր Թագաւորին հաւանութիւնը մինչև իսկ անհրաժեշտ ենթադրել, քանի որ արդէն հաւանած էր անոնց, ընդունելով Ֆրանսական ազատութեան վերանորոգիչի տիտղոսը և ներկայ ըլլալով գոհաբանական աղօթքին։ Հետևաբար Թագաւորէն խնդրուեցաւ պարզապէս հռչակում ընել (*)։

Անդամ մը յանկարծ առաջարկեց գահուն ժառանգութիւնը և արքայական անձին անբռնաբարելիութիւնը։ Ժողովը, որ անկեղծօրէն կ'ուզէր Թագաւորը իբրև իր առաջին ժառանգական ատենակալը, ընդհանուր հաւանութեամբ քուէարկեց այս երկու յօդուածները։ Առաջարկուեցաւ գահաժառանգին անբռնաբարելիութիւնը. բայց իսկոյն Մօնթմար դուքսը դիտել տուաւ թէ զաւակները երբեմն փորձած են գահընկէց ընել իրենց հայրը, և թէ հարկ էր զանոնք պատժելու միջոց ունենալ։ Այս նկատումով առաջարկութիւնը մերժուեցաւ։ Երեսփոխան Առնու, արուէ արու և ճիւղէ ճիւղ ժառանգականութեան յօդուածին առթիւ, առաջարկեց հաստատել Սպանիական ճիւղին հրաժարումները ֆրանսական գահէն, որոնք արդէն կատարուած էին Ութրէխթի պայմանադրութեան մէջ։ Պնդեցին թէ

---

(*) Այս յօդուածները իրեն ներկայացուեցան Սեպտեմբեր 20ին։

հարկ չկայ այդ մասին խորհրդակցիլ, որովհետեւ աւելորդ է հաւատարիմ դաշնակցի մը սիրալ ցուցնել, Միրապօ այս կարծիքէն եղաւ և Ժողովը անցաւ օրակարգին։ Յանկարծ Միրապօ, փորձ մը կատարելու համար, որ գէշ մեկնուած է, ուզեց արծարծել ա՛յն խնդիրը, զոր ինք նպաստած էր հետացնելու ասկէց առաջ։ Օրլէանի տունը սպանիական տունին հետ մրցակից էր տիրող ճիւղին անզաւակ մնալուն պարագային։ Միրապօ ամէն կողմէ մեծ խրախուսանք մը տեսաւ օրակարգին անցնելու։ Սատար մըն էր ինք Օրլէանի դուքսին, թէեւ անոր հետ ընտանի ինչպէս գիտէր ըլլալ ամէնուն հետ, այսու հանդերձ կ'ուզէր ճանչնալ կուսակցութեանց վիճակը, և տեսնել թէ որո՞նք էին դուքսին բարեկամներն ու թշնամիները։ Խնամակալութեան խնդիրը կը ներկայանար․ անչափահասութեան պարագային՝ թագաւորին եղբայրները չէին կրնար իրենց եղբօրորդւոյն խնամակալ ըլլալ, քանի որ իրենք անչափահաս որդւոյն ժառանգորդներն էին, և հետեւաբար անոր ապրելուն նուազ հոգածու։ Ուրեմն խնամակալութիւնը կը վերաբերէր ամէնէն մօտաւոր ազգականին, ա՛յն էր կամ թագուհին, կամ Օրլէանի դուքսը, կամ Սպանիական ընտանիքը։ Ուրեմն Միրապօ կ'առաջարկէ խնամակալութիւնը տալ Ֆրանսայի մէջ ծնած մարդու մը։ «Ժողովին աշխարհագրութեան մասին իմ ծանօթութիւնս, ըսաւ, և օրակարգի աղաղակներուն մեկնած կէտը կ'ապացուցանեն թէ խնդիրը հոս պարզապէս օտար տիրապետութեան մը վրայ է, և թէ այս մասին չխորհրդակցելու համար առաջարկութիւնը, ըստ երեւոյթին սպանիական, թերեւս աւստրիական առաջարկութիւն մըն է»։ Այս բառերուն վրայ կը պոռան կը կանչեն․ վիճաբանութիւնը կը վերսկսի սոսկալի ուժգնութեամբ, բոլոր ընդդիմադիրները դարձեալ օրակարգ կը պահանջեն։ Ի զուր Միրապօ կը կրկնէ իրենց ամէն վայրկեան թէ օրակարգ պահելով մէկ չարժանիք միայն կրնան ունենալ, ա՛յն է՝ օտար տիրապետութիւն մը բերել Ֆրանսայի մէջ․ չեն պատասխաներ, որովհետեւ իրաւցնէ օտարը կը նախընտրէին Օրլէանի դուքսէն։ Վերջապէս երկու օրուան վիճաբանութենէ մը ետք, դարձեալ յայտարարուեցաւ թէ խորհրդակցութեան տեղի չկայ։ Բայց Միրապօ ուզածը ձեռք բերած էր, տեսած էր թէ կուսակցութիւնները ինչ կերպով կը ծրագրուէին։ Այս փորձը ի հարկէ ամբաստանութեան առիթ մը պիտի ըլլար իրեն դէմ, և ա՛յն վայրկեանէն սկսեալ Օրլէանի կուսակցութեան մէկ գործակալը անուանուեցաւ(*)։ Այս վիճաբանութեան յայգերուն մէջ, Ժողովը ընդունեց թագա-

(*) Բոլոր կուսակցութեանց հանդէպ Միրապոյի վարմունքին մանրամասնութիւնները տակաւին լաւ ճանչցուած չեն, բայց ի մօտոյ պիտի հասկցուին։ Այս մասին հրատարակութիւններ ընելու պատրաստուողներէն առայժմ ստացած եմ սոյն տեղեկութիւնները․ ձեռք անցուցի քանի մը կարեւոր թուղթեր, և ի մասնաւորի հաւատոյ դաւանութեան ձեւով գրած թուղթ մը, որ արքունիքին հետ իր դաշնակցութիւնը կը պարզէր։ Արտօնուած չեմ հաստատութեան տալու ո՛չ միայն այս վաւերաթուղթերէն ոչ ալ անոր տրամադրութիւնները յիշատակել։ Ես միայն կը պնդեմ ինչ որ ապագան ըստ բաւականին պիտի ապացուցանէ՝ երբ բոլոր տեղեկութիւնները հրատարակուին։ Ինչ որ կրնամ անկեղծութեամբ ըսել, սա՛ է թէ Միրապօ բնաւ չէր գտնուած Օրլէանի դուքսին ենթադրուած դաւերուն մէջ։ Միրապօ մինչեւ Բրօվանսէն միակ ծրագրով մը, ա՛յն է՝ կռուիլ կամայական իշխանութեան դէմ,

ուրին պատասխանէր Օգոստոս 4ի յօդուածներուն։ Թագաւորը կը հաւանէր անոնց ոգիին, մէկ քանիին պայմանաւոր հաւանութիւն միայն կուտար, յա-

սալով որ պէտք բարեփոխուէին գործադրութեան ատեն, մեծ մասին վրայ կը կրկնէր վիճաբանութեան պահուն եղած առարկութիւնները, զորս արդէն

ումէ ինք ալ տատամսած էր, և զոր իր խելքն ու իր զգացումները իրրև զրգռելի նկատել կուտային իրեն։ Բարեկ հանելով՝ յաճախից ծանօթ ակադեմաւորի մը մօտ, որ արժանիքի տէր անձ մըն էր։ Հոն շատ կը խօսուէր քաղաքականութեան, ելեւմուտքի և հանրային տնտեսագիտութեան վրայ։ Շատ ծանօթութիւններ քաղեց հոն այս Նեքերուն նկատմամբ, և բարեկամացաւ Ժընեւցի աւագութի գաղթականութեան հետ, որուն մէկ անդամն էր նաև Պրավիէռ, յետոյ ելեւմտական նախարար։ Սակայն Միրաբօ մտերմական ո և է կապ չկազմեց։ Իր կերպերը շատ ընտանեկան էին, և ասիկա կը պարտէր իր զօրաւորութեան զգացումին, զգացում մը որ յաճախ մինչև անխոհեմութեան կը տանէր։ Այս ընտանութեան շնորհիւ ամէնուն կը մօտենար, և կարծես կը կապուէր բոլոր անոնց հետ որոնց խօսք կ'ուղղէր։ Այս է պատճառ որ յաճախ բարեկամ և մտերիմ կարծուեցաւ շատ մը մարդոց՝ որոնց հետ ընաւ հասարակաց շատ մը չունէր։ Ըսի և կը կրկնեմ թէ ան ո և է կապակցութեան չէր մեբարերել։ Այնտեսակները չէին կրնար Միրաբոյի վրայ մտածել. Նեքերի և Մոնիէի կապակցութիւնները չկրցան հասկնալ, ընդունիլ զայն։ Օրլէանի դուքսը միայն կարծուեցաւ մտերիմ ըլլալ անոր։ Այսպէս կարծուեցաւ, որովհետև Միրաբօ ընտանեբար կը տեսակցէր անոր հետ, և երկուքն ալ մեծ փառասիրութեան տէր ըլլալ կ'ենթադրուէին, մէն իրրև իշխան, միւսը իրրև արիբուն, կարծես պէտք էին որ իրարու միանային։ Միրաբոյի Նախթական անձկութիւնը և Օրլէանի դուքսին հարըստութիւնը եւս միութեան չարժառիթ մը ըլլալ կը թուէին։ Այսու հանդերձ

Միրաբօ աղքատ մնաց մինչև արքունիքին հետ իր կապակցութեանց ժամանակ։ Այնուհետև կը գնէր բոլոր կապակցութիւնները, կը ջանար անոնց միտքը լաւ մը հասկնալ, և իր կարեւորութիւնը կը զգար և ասոր այս պատճառաւ չէր ուզեր անոնցմէ մէկուն յարիլ թեթևօրէն։

Անգամ մը միայն սկսաւ յարաբերութիւն մը ունենալ Օրլէանի դուքսին կարծեցեալ գործակալներէն մէկուն հետ։ Այդ կարծեցեալ գործակալին կողմէ ճաշի հրաւիրուեցաւ, և ինք, որ երբեք արկածախնդրութենէ չէր վախնար, ընդունեց աւելի հետաքրքրութեամբ քան ուրիշ ո և է չարժառիթով։ Հոն երթալէ առաջ իմացուց իր սպասելիք մտերիմին, և շատ գոհ եղեւցաւ այս տեսակցութենէն, որ մեծամեծ յայտնութիւններ յառաջ կուտար իրեն։ Ճաշը տեղի ունեցաւ և Միրաբօ յետոյ սպասեց անցած դարձածը. անորոշ, հետաքրքիր խօսքեր միայն դարձած էին Օրլէանի դուքսին վրայ, Միրաբոյի կարողութեանց մասին անոր ունեցած յարգանքին վրայ, և Պետութիւն մը կառավարելու համար անոր ունեցած դիրքին վրայ։ Հետևաբար շատ աննշան եղաւ այս տեսակցութիւնը, ուսուսկն սա՛ միայն կարելի էր ենթադրել թէ Միրաբօ նախարար ըլլալ կ'ուզէր։ Ուստի իր բարեկամին ըսաւ իր սովորական զուարճախօսութեամբ. «Այլ եւս նախարար կրնամ ըլլալ որովհետև Օրլէանի դուքսը և թագաւորը հաւասարապէս կ'ուզեն անուանել զիս»։ Ասոնք կատակաբանութիւններ էին, և Միրաբօ ինք ալ ընաւ հաւատացած չէ դուքսին ծրագիրներուն։ Յետագայ ծանօթագրութեան մը մէջ պիտի բացատրեմ ուրիշ մէկ քանի մանրամասնութիւններ։



ՆԷՔԷՐ

մերժած էր Ժողովը։ Միրաբօ դարձեալ երեւցաւ բեմին վրայ. «Քննեցինք, ըսաւ, գործադիր իշխանութեան վրայ սահմանադիր իշխանութեան դերակըշռութիւնը, կերպով մը քօղ մը ձգեցինք այս խնդիրներուն վրայ (արդարեւ Ժողովը ի նպաստ իրեն բացատրած էր այդ խնդիրներուն հակըշռելու եղանակը, առանց այս մասին վճռական որոշում մը տալու). բայց հիմէ կը կըռուին մեր սահմանադիր գործութեան դէմ, պէտի պարտաւորին մեզ բացէ ի բաց յայտարարել զայն։ Ուրեմն թո՛ղ համարձակ վարուին եւ առանց չափասանութեան։ Գործադրութեան դժուարութիւններուն կը հաւանինք, բայց չենք սահանջեր։ Այսպէս կը պահանջենք որ ձրիական պաշտօնները ջնջուին, բայց ապագային համար ցոյց տալով վերադրումը եւ վերադրումի փոխանցումը. կղերին թոշակին ծառայող տուրքը հողագործութեան կործանարար

կը յայտարարենք, բայց մինչեւ որ անոր տեղ ուրիշ բան մը հաստատէ՝ կը հրամայենք տասանորդին՝ գանձումը. աւատական դատարանները կը ջնջենք, բայց անոր գոյութիւնը կ'արտօնենք մինչեւ որ ուրիշ ատեաններ հաստատուին։ Միւս յօդուածներուն համար ալ նմանապէս. անոնք ամենքը սկզբունքներ միայն կը պարունակեն, զորս պէտք է անբռնաբարելի ընել հանդիսաւոր հռչակումով։ Մնաց որ, գէշ ալ ըլլան, երեւակայութիւնները անգամ մը այս որոշումներով գրաւուած են, կարելի չէ այլեւս զլանալ զանոնք։ Միամտօրէն կրկնենք Թագաւորին ինչ որ Ֆիլիփ Բ.ի յիմարը կ'ըսէր այն միահեծան իշխանին. «Ի՞նչ պիտի ընես, Ֆիլի՛փ, երբ ամէն մարդ այո՛ ըսէ քու ո՛չ ըսածիդ։»

Ժողովը դարձեալ հրամայեց իր նախագահին Թագաւորին վերադրունել հռչակումը խնդրելու համար անկէց։ Թագաւորը հաւանեցաւ։ Ժողովն ալ, իր կողմէ, ատենախօսական վերջին անդողութեան վրայ խորհրդակցելով, տարածեց զայն երկու նախաշրջանի վրայ, բայց սխալեցաւ երբ ցոյց տալ ուզեց որ ատենը անսալ մը փորձառութիւն մըն էր Լուի ԺԶ.ի համար՝ հանրային կարծիքին մասին իր ըրած զիջումներուն հետեւանքով։

Մինչ Ժողովը իր նպատակին հասու կ'ըլլար աւանձնաշնորհեալներուն չարակամութենէն եւ ժողովրդային ծայրայեղութիւններէն առաջ եկած խոչընդոտներուն մէջէն, ուրիշ շփոթութիւններ կը կուտակուէին իրեն առջեւ, եւ իր թշնամիները կ'ուրախանային։ Կը յուսային թէ Ժողովը պիտի զարնէր նիւթական անձկութեանց, ինչպէս առջին արքունիքը անձրկած մնացած էր։ Երեսուն միլիոնի առաջին փոխառութիւնը չէր յաջողած. աւելի նպաստաւոր արդիւնք մը չէր ունեցած ութսուն միլիոնի երկրորդ փոխառութիւն մը, որ հրամայուած էր Նեքերի մէկ նոր առաջարկութեան վրայ։ «Վճարանեցէ՛ք, բառ մըն է Տըկոփի ո'Սուաի, թո՛ղ պայմանաժամերը անցնին, եւ պայմանաժամերը աւարտելուն մենք ո՛լ պիտի չըլլանք այլեւս... Ահաւոր ճշմարտութիւններ պիտի սպրդին ձեզի։ — Ի կա՛րգ, ի կա՛րգ, կ'աղաղակեն ամենքը։ — Ո՛չ, ո՛չ, խօսեցէ՛ք», կը պատասխանեն ուրիշներ։ Երեսփոխան մը ոտքի կ'ելլէ. «Շարունակեցէ՛ք, կ'ըսէ Տըկոփի, ազգնակ եւ մարդոց տարածեցէ՛ք։ Ի՛ ուրեմն, ըլլալիքը ինչ է. մեր ունեցածին մէկ մասը պիտի տանք, եւ ամէն բան պիտի վերջանայ։» Տըկոփ կը շարունակէ. «Ձեր քուէարկած փոխառութիւնները արդիւնք մը չունեցան. գանձին մէջ տասը միլիոն իսկ չի կայ։» Այս բառերուն վրայ, դարձեալ կը չըջապատեն զայն, կը պախարակեն, բռութիւն կը սպառնան։ Ելմտական յանձնախումբին նախագահ Էկիյեոնի դուքսը կը հերքէ զայն ապացուցանելով թէ քանի մը միլիոն ստակ է կենայ պետական գանձին մէջ։ Կը վճռուի որ ուրբաթ եւ շաբաթ օրերը մասնաւորապէս ելմտական գործերուն յատկացուին։

Վերջապէս կը հասնի Նեքեր։ Իր անդուլ աշխատութիւններէն բոլորովին հիւանդկախ, կը կրկնէ իր յախճանական առաջարկները. կը մեղադրէ Ժողովը որ հինգ ամսուան աշխատութենէ վերջ ոչինչ ըրած է ելեւմուտքին համար։ Երկու փոխառութիւնները չեն յաջողած, որովհետեւ խռովութիւնները ազգին վարկը ջնջած են։ Դրամագլուխները կը պահուըտէին. արտասահմանը ընաւ չէր երեւցած առաջարկուած փոխառութիւններուն մէջ։ Տարագրութիւնը, ճամբորդներու հեռացումը եւս նուազեցուցած էին պատրաստ դրամները. եւ օրական պէտքերուն համար խակ բաւական դրամ չկար։ Թագաւորն ու Թագուհին պատրաստուած էին իրենց ոսկի ու արծաթ սպասները Փողե-

բանոց զրկել։ Հետեւաբար Նէքէր հառաջիններուն քառորդին չափ նպաստ կը պահանջէ, առաջարկելով թէ այս միջոցները իրեն բաւարար կը թուէին։ Մասնախումբ մը երեք օր կը քննէ այս յառաջագիծը, և ամբողջովին կը հաւանի անոր։ Նախարարին յայտնի թշնամի Միրապօ առաջին անգամ խօսք կ'առնէ, յորդորելու համար ժողովը որ հաւանի այս յառաջադծին առանց վիճաբանութեան ենթարկելու զայն։ «Զայն քննադատելու ժամանակ չունենալով, ըսաւ, ժողովը պէտք չէ ստանձնէ պատահարին պատասխանատուութիւնը, առաջարկուած միջոցները ընդունելով կամ չընդունելով։» Այս չարժմութին համեմատ խորհուրդ կուտայ անմիջապէս և վստահաբար քուէարկել։ Ժողովը կը միանայ այս առաջարկութեան, և Միրապոյին կը հրամայէ ստանձնանալ որոշումը խմբագրելու համար։ Սակայն խանդավառութիւնը կը հանդարտի, նախարարին թշնամիները կը յաւակնին հասցթի ազդիւներ գտնել ա՛յնպիսի տեղուանք ուր Նախարարը չէ անսած։ Իր բարեկամները ընդհակառակն Միրապոյի վրայ կը յարձակին, և զանգատ կը յայտնեն թէ ուզած է Նախարարը ճնշել պատահարներուն պատասխանատուութեամբ։ Միրապօ ներս կը մանէ և կը կարդայ իր բանաձեւը։ «Դաշունահար կ'ընէք Նախարարին յառաջագիծը», կը պոռայ Վիրիէօ։ Միրապօ, որ ըսա չէր գիտեր եա քաշուիլ առանց պատասխանելու, բացէ ի բաց կը խոստովանի իր չարժառիթները. չի նկատեր որ գուշակած են իր միտքը, երբ կ'ըսեն թէ պատահարներուն պատասխանատուութիւնը Նէքէրի վրայ միայն կ'ուզէր ծանրացնել։ Ըսաւ թէ անոր բարեկամը ըլլալու պատիւը չունի, բայց, եթէ նոյն իսկ անոր սրտագին բարեկամը ըլլար, ամէն բանէ առաջ քաղաքացի ըլլալով, պիտի չվարանի վտանգել անոր դիրքը քան թէ ժողովին դիրքը. թէ չի կարծեր որ Ֆրանսան կը կորսուի երբ Նէքէր սխալած ըլլայ, և թէ ընդհակառակն հանրային փրկութիւնը պիտի վտանգուի մեծապէս եթէ ժողովը իր վարկը կորսնցնէ և վճռական գործողութեան մը մէջ թերանայ։ Ցետոյ ուգերձ մը կ'առաջարկէ գրգռելու համար ազգային հայրենասիրութիւնը և օժտալու համար Նախարարին ծրագրին։

Կը ծափահարեն զայն, բայց ապաւրն կը վիճաբանին։ Հաղորդումէն առաջարկութիւններ կ'ընեն, և ժամանակը կը սահի ունայն հակաճառութիւններով և ճշճիմութիւններով։ Անքան հակառութիւններէ պարտասած, պէտքերուն ամբողջութենէն պղղուած, վերջին անգամ մըն ալ բեմ կը բարձրանայ, կը ափրոպնէ, կրկին հարցը կը դնէ հրանայի ճշգրտութեամբ մը, և ցոյց կուտայ վայրկեանին անխուսափելիութենէն ծագրելու անհնարութիւնը։ Իր հանճարը այն ատեն բոցավառելով կը նկարագրէ սնանկութեան սարսափները։ Կը նկարագրէ զայն իբրև չարագէտ աւերք մը, որ փոխանակ թեթեւակի ամէնուն վրայ ծանրանալու, անոնց վրայ միայն կը ծանրանայ զանոնք ճզմելու սահման։ Ցոյց կուտայ իբրև վիհ մը՝ ուր զոհավէժ կը ձգեն կենդանի զոհեր, և որ չի գոցուիր զանոնք կուլ տալէ վերջ, որովհետև պարտքը միշտ պարտք կը մնայ, նոյն իսկ վճարումը մերժելէ վերջ։ Վերջապէս սարսափով լեցնելով ժողովը, «Անցեալ օր, ըսաւ, Սրբազական Պալատին մէջ ծաղրելի առաջարկութեան մը առթիւ պոռացին. «Կատիլինա Հռոմի դուռներն է հասեր, և դուք տակաւին խորհուրդ կ'ընէք», և արդարեւ ո՛չ Կատիլինա կար, ոչ վտանգ, ո՛չ Հռոմ. բայց այսօր զզուելի սնանկութիւնը հոս է, կը սպառնայ այրել մեկիկ ձեզ, ձեր պատիւը, ձեր ունեցածները, և դուք խորհուրդ կ'ընէք։»

Այս խօսքերուն վրայ, ժողովը այլ յայլմէ եղած կը վերնայ խանդավառ աղաղակներ արձակելով։ Երեսփոխան մը կ'ուզէ պատասխանել. առաջ կուգայ, բայց, իր գործէն սարսափահար, անշարժ և անմռունչ կը մնայ։ Այն ատեն ժողովը կը յայտարարէ թէ ձայնախումբին տեղեկագիրը լսելով, վստահութեամբ կ'որդեգրէ եկամտից Նախարարին յառաջագիծը։ Պերճախօսութեան բարեբախտութիւն մըն էր այս. բայց ատոր մէջ կրնար յաջողիլ միմիայն ա՛յնպիսի մէկը՝ որ Միրապոյին բանականութիւնը և միանգամայն ձիրքերը ունէր։

ԵՐԿՐՈՐԴ ԳԻՐՔԻՆ ՎԵՐՋԸ

# ԵՐՐՈՐԴ ԳԻՐՔ

## ԱՌԱՋԻՆ ԴԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆ

*Պալատին մեքենայութիւնները. — Վերսայլի մէջ հաւաքուող արքայական զօրքերուն եւ Ֆլանտրայի զօրագունդի սպաներուն. — Հոկտեմբեր 4, 5 եւ 6ի օրերը. խռովութիւն եւ արիւնոտ տեսարաններ: Խուժանին կողմէ յարձակումներ Վերսայլի դղեակին վրայ. — Թագաւորը Բարիզ կ'երթայ կը բնակի. — Կուսակցութեանց վիճակը. — Օրլէանի դուքսը Ֆրանսայէն կը մեկնի. — Միրաբոյի բանակցութիւնը արքունիքին հետ. — Ժողովը Բարիզ կը փոխադրուի. — Կղերին ստացուածքներուն վրայ օրէնք. — Ֆրանսա կը բաժնուի գաւառներու. — Քաղաքային երդում. — Միրաբոյի պայմանադրութիւնը արքունիքին հետ. — Պուիյէ. — Ֆավրայի գործը. — Հակայեղափոխական յատակագծերու. — Ժակոպէններու եւ Կորտըլիէներու (Ֆէօյան) ակումբները. — Օտար տէրութեանց քաղաքական վիճակը եւ դաշնադրութիւնները 1790ին. — Հաշտութեան եւ պատերազմի իրաւունքին վրայ վիճաբանութիւն. — Թղթադրամի ստեղծումն. — Դատական կազմակերպութիւն. — Կղերին քաղաքային կազմութիւնը. — Ազնուականութեան տիտղոսներու ջնջում. — Տարեդարձ Յուլիս 14ի. — Առաջին դաշնակցութեան տօնը:*

Մինչ Ժողովը այսպէս շէնքին բոլոր մասերուն վրայ ձեռք կը դնէր, մեծամեծ դէպքեր կը պատրաստուէին: Կարգերուն գումարումով ազգը վերստացած էր օրէնսդրական և սահմանադրական ամենակարողութիւնը: Յուլիս 14ին զինուած էր իր ներկայացուցիչները պաշտպանելու համար: Այսպէս թագաւորն ու ազնուականութիւնը կղզիացած և զինաթափ կը մնային, իրենց համար ունենալով լոկ իրենց իրաւունքներուն զգացումը, որուն ո՛չ ոք կը մասնակցէր, և իրենց դիմացն ալ ունենալով ամէն բան յղանալու և ամէն բան գործադրելու պատրաստ ազգ մը: Արքունիքը սակայն, միմիայն իր ծառաներով բնակուէր փոքրիկ քաղաքի մը մէջ քաշուած, կեցած մը ժողովրդական ազդեցութենէն դուրս էր, և կրնար մինչև իսկ յանկարծական խուժում մը ընել Ժողովին վրայ: Բնական էր որ Բարիզ, Վերսայլէն քանի մը փարսախ անդին, Բարիզ, թագաւորութեան մայրաքաղաքը և անծայրածիր բազմութեան մը բնակարանը, ձգտում ունենար թագաւորը իր ծոցին մէջ բերելու, ամէն ազնուապետական ազդեցութենէ զայն զերծ պահելու և վերստանալու համար ա՛յն առաւելութիւնները, զորս արքունիքին կառավարութեան ներկայութիւնը կը հայթայթէ քաղաքի մը: Թագաւորին հեղինակութիւնը զեղչելէ վերջ, կը մնար միայն ապահով ըլլալ անոր անձին վրայ: Պատահարներուն ընթացքը այսպէս կը պահանջէր, և ամէն կողմէ կը լսուէր սա՛ աղաղակը. Թագաւորը Բարիզ: Ազնուականութիւնը միաքէն այլեւս չէր անցըներ ինքզինքը պաշտպանել նոր կորուստներու դէմ. իր ձեռքը մնացածը ա՛յնքան կ'արհամարհէր որ զայն պահելու չէր զբաղեր. ուստի բանին փոփոխութեան մը կը փա-

փաքէր, ճիշդ ժողովրդական կուսակցութեան պէս։ Յեղափոխութիւն մը անխուսափելի է, երբ երկու կուսակցութիւններ կը հաւաքուին զայն ուզելու համար։ Երկուքն ալ կը նպաստեն դէպքին, և զօրաւորը կ՚օգտուի արդիւնքէն։ Մինչ հայրենասէրները կը փափաքէին թագաւորը Բարիզ տանիլ, արքունիքը կը խորհէր Մէց տանիլ զայն։ Հոն, ամուր բերդի մը մէջ, ուզածը պէտք հրամայէր, կամ, լաւ եւս, իրեն համար ուրիշներուն ուզածը։ Դրանիկները յատակագիծեր կը կազմէին, ծրագիրներ կը յօրինէին, կը ջանային մարդ զինուորագրել, և, մանաւանդ յոյսերու՝ անձնատուր, զիրար կը մատնէին անխոհեմ սպառնալիքներով։ Տ'էսթէն, երբեմն ո՛րքան հռչակաւոր մեր նաւարաժիններուն գլուխը, Վերսայլի ազգային պահնորդ գունդերուն հրամանատարն էր։ Կ՚ուզէր հաւատարիմ ըլլալ ազգին և արքունիքին, դժուարին և միշտ չարախօսուած դեր մը, որ մեծ հաստատամտութիւն մը միայն կրնայ պատուաւոր ընծայել։ Իմացուց դրանիկներուն արարքները։ Ամէնէն նշանաւոր անձեր կը գտնուէին մեքենայողներուն թիւին մէջ, ամէնէն արժանահաւատ վկաներ կը յիշատակուէին իրեն, և թագուհիին գրեց ա՛յն ծանօթ նամակը, որուն մէջ յարգալից կերպով մը կը խօսէր այդ արարքներու անպատեհութեան և վտանգին վրայ։ Բնաւ չկեղծեց, և ամէն մարդու անունը տուաւ *)։ Նամակը արդիւնք չունեցաւ։ Այնպիսի ձեռնարկութիւններ փորձելով,

*) Տ'էսթէն կոմսին թագուհիին ուղղեալ նամակը չահեկան յիշատակարան մըն է, որուն հարկ պիտի ըլլայ դիմել Հոկտեմբեր 5ի և 6ի օրերուն վերաբերմամբ։ Այս քաջարի նաւազը, հաւատարմութեամբ և անկախութեամբ լեցուն (երկու յատկութիւններ որոնք հակառակն երևնան, բայց յաճախ միացած կը գտնուին ծովու մարդոց վրայ), իր սիրած իշխաններուն ամէն բան բացէ ի բաց ըսելու ունակութիւնը պահած էր։ Իր վկայութիւնը չի կրնար կասկածի ենթարկուիլ, երբ, մտերմական նամակի մը մէջ, թագուհիին կը պարզէ իր երևան հանած և վերջը տագնապեցուցած մեքենայութիւնները։ Այս նամակին մէջ պիտի տեսնուի թէ ինք արքունիքը ծրագիր մը չունէ՞ր այդ թուականին։

«Պարտքս և հաւատարմութիւնս զայն կը պահանջեն, պէտք է որ թագուհիին ոտքին առջև դնեմ Բարիզ ըրած ճամբորդութեանս հաշիւը։ Կը զարմանան վրաս թէ ինչպէս անխոհեմ կրնամ քնանալ յարձակումի մը կամ նաւամարտի մը նախօրեակին։ Կը համարձակիմ հաւաստել թէ գործի մէջ երկչոտ չեմ։ Պատերազմներու իշխանին մօտ մեծցած, որուն ուշադրութեան առարկայ եղած էի, մանկութենէս ի վեր Վերսայլի մէջ ճշմարտութիւնը ըսելու վարժուած, զինուոր ու նաւազ, ձեռնարկութիւնները ալ կրակել, կը յարգեմ վտանգը, բայց ձեռնարկութիւնները չեն կրնար այլայլել համարձակութիւնս և անյողդողդութիւնս։

«Է՛ ուրեմն, պէտք է խոստովանիմ ձեր Վեհափառութեան թէ գիշերը աչքս չկրցայ գոցել։ Ընտիրքով մարդոց կողմէ (հապա ինչ պիտի ըլլայ, Տէ՛ր Աստուած, եթէ պարզ ժողովուրդին մէջ ալ տարածուի գործը) իմացայ թէ, ստորագրութիւններ կը հաւաքեն կղերին և ազնուականութեան մէջ։ Ոմանք կը պնդեն թէ թագաւորին համբն ալ կայ, ուրիշներ կը կարծեն թէ ան բանէ մը անգիտութիւն չունի։ Կը հաւատացուի թէ կազմուած յատակագիծ մը կայ, թէ Շամբանիի կամ Վերտէօնի կողմերը պիտի քաշուի թագաւորը կամ բռնի պիտի տարուի, թէ Մէց պիտի երթայ։ Պուիյէէի անունը կը տրուի, տուածն ալ

անշուշտ միտքը դրած էր յանդիմանութիւններ, դիտողութիւններ պիտի խմանայ, և չէր զարմանար:

Նոյն թուականին խել մը նոր մարդիկ եկեղան Վերսայլի մէջ, նոյն խել անծանօթ համազգեստներ ու երեսներ: Կար դրուեցաւ արքայական պահնորդներուն գունդը՝ որուն ծառայութեան շրջանը աւարտած էր, Մէցի, Թուլի, Վէռտէօնի միջնաբերդերէն և ուրիշ զօրքերէն մաս մը կանչուեցաւ: Թագաւորին ծառայութիւնը լքող ֆրանսական պահնորդները, այդ պաշտօնը ուրիշներուն յանձնուելուն վրայ զայրացած, ուզեցին Վերսայլ երթալ՝ կրկին առնելու համար: Անշուշտ գանգատելու

---

ո՞վ է — Լաֆայէթ, որ ականջէս վար բաւ Մ. Ժօժի անունը, սեղանին վրայ: Սակայն որ սպասաւորներէն մին կ՚իմանայ, գլուխ առի իրեն թէ իր բերնէն մէկ բառ մը կրնար մահուան նշան մը ըլլալ: Լաֆայէթ պաշարիչն է, վերջին ծայր դրական մարդ, պատասխանեց ինծի թէ Մէցի մէջ ինչպէս այլուր հայրենասէրները ամէնէն աւելի զօրաւոր էին, և թէ կ՚արժէր որ մէկը մեռնի և ամէնքը փրկուին:

«Մրագիրը կը վարէ պատմել որ Պարթէօյլ, որ կը գանգատի ու չի հեռանար: Դրամը մէկանց մը կը հաւաքեն, և կը խոստանան ամեր մէկ ու կէս միլիոն հայթայթել: Դժբաղդաբար կուս ալ Մէնսիի անունն ալ կը տրուի իբրև գործակից: Ահա սանկ են խօսուածները. եթէ ժողովուրդին մէջ տարածուի, հետևանքները անհաշուելի են. ատկէ առաջ կը դրուցուին: Ակացիները հետևանքէն կը սոսկան, իրականութեան կասկածը անգամ կրնայ ահաւոր հետևանքներ ունենալ: Սպանիական դեսպանին քով գացի, և թագուհիէն չեմ ծածկեր, հոն սարսափ կրկնապատկուեցաւ: Մ. Ֆէյնան Նիւնէս ինծի հետ խօսակցելու այս սուտ

պատճառ մը չունէին, քանի որ իրենք անձամբ լքած էին այդ ծառայութիւնը, բայց կ՚ուզէին թէ ուրիշներէն դրդուեցան այդ ծրագրին: Այն միջոցին պնդողներ եղան թէ արքունիքն էր որ այդ միջոցով ուզած էր սարսափեցնել թագաւորը և մղել զայն Մէց: Իրողութիւն մը բաւականին կ՚ապացուցանէ այս դիտումը. Արքայական Պալատի խռովութիւններէն ի վեր, Լաֆայէթ, Բարիզէն Վերսայլ անցքը պաշտպանելու համար, պահակախումբ մը զետեղած էր Սէվրի մէջ: Պարտաւորուեցաւ ետ քաշել զայն, աջակողմի երեսփոխաններուն խնդրանքին վրայ: Լաֆայէթ յաջողեցաւ կասեցնել ֆրան-

զուիցներուն, անկարելի ծրագրի մը ենթադրութենէն խել առաջ եկած սարսափին վրայ, քանի որ կրնայ պատճառել քաղաքային պատերազմներէն ամէնէն չարաղէտը և ամէնէն նուաստացուցիչը, միապետութեան բանանումը կամ ամբողջական կործանումը, ներքին կառավարութեան կամ արտաքին փառաւորութեան նշաւակ ըլլալով, և Ֆրանսայի ամէնէն սիրելի անձերուն անպարտելի գժտութիւնը: Խօսեցանք թագաւորական ըլլալիք արքունիքին վրայ, զոր պէտի հալածեն, պէտի խարեն անոնք՝ որ իրենց կարող եղած առեն չպաշտպանեցին զայն, և հիմա կ՚ուզեն իրենց անկումին հետ զայն ալ քաշել, արքունիքը, երկիրը, որ ընդհանուր սնանկութեան մը սպառնալիքին տակ կը գտնուի, ահաւոր և միանգամայն անխուսափելի դարձած սնանկութիւն մը: Պահ մը աղաղակեցի թէ լըմ՚ւմեակ չարիքը այս սուտ դրոյցին տարածուիլը ըլլար, որովհետև անհիմն գաղափար մըն էր: Սպանիական դեսպանը այս վերջին խօսքիս վրայ աչքերը կախեց: Թախանձեցի որ չփակը բաէ. վերջապէս համոզուեցաւ որ երեւելի և արժանահաւատ մէկը իմոյ ըսած էր

տակին պաշտօնեները, և հրաժարեցնել իրենց ծրագրէն: Մտերմօրէն գրեց Սէն-Բալէ նախարարին՝ անցած դարձածը անոր իմացնելու և բոլորովին ապահովցնելու համար: Սէն-Բալէ, նամակին վաւերականութիւնը չարաչար գործածելով, ցոյց տուաւ զայն Տ'Էսթէնի, ասիկա ալ հաղորդեց զայն Վերսայլի ազգային պաշտօնէութեան ատեններուն և քաղաքապետութեան, իմացնելու համար քաղաքին սպառնացող և սպառնալից վտանգները: Առաջարկուեցաւ կանչել Ֆլանտրայի զօրագունդը: Վերսայլի պահակ վաշտերէն շատերը ընդդիմացան ասոր, բայց քաղաքապետութիւնը իր գիտցածը գնաց, կանչեց զօրագունդը: Ժողովին դէմ մէկ զօրագունդը քիչ էր, բայց բաւական էր թագաւորը առևանգելու և իր փախուստը պաշտպանելու համար: Տ'Էսթէն Ազգային Ժողովին իմացուց ձեռք առնուած միջոցները և համաձայնութիւնը առաւ: Զօրագունդը հասաւ. անոր հետևորդ զինուորական համբերձանքը, թէև ո՛չ այնքան ուժի զարնող, բայց չկրկնելու արտօնելի գրգռեց: Արքայական պաշտօնեները, դրանիկները ողջագուրեցին ատենը և զգուանքներով ողողեցին զանոնք, և, ինչպէս Յուլիս 14էն առաջ եղած էր, կործեու դաշնակցեան, համաձայնեան և մեծամեծ յոյսեր երկնեցին:

Արքունիքը որքան ինքնավստահ կ'ըլլար, այնքան կ'աւելնար Բարիզի անվստահութիւնը, և քիչ ատենէն պալատին մէջ տեղի ունեցած հանդէսները գրգռեցին չքաւոր ժողովուրդը: Հոկտ. 2ին արքայական պաշտօնեները կը մտածեն ճաշ մը տալ զօրագունդի սպաներուն: Այս ճաշը կը պատրաստուի թատրոնի սրահին մէջ: Օթեակները կը լեցուին պալատական հանդիսականներով: Հրաւիրեալներուն մէջն են ազգային պահակութեան սպաները: Հացկերոյթի ատեն կը տիրէ խիստ ոգևորեալ զուարթութիւն մը, և շատ չանցած գինիները տաքութեան կը փոխեն զայն: Այն միջոցին ներս կը բերուին գունդին զինուորները: Կոչնականները՝ սուսերամերկ՝ բաժակ կը պարպեն արքայական ընտանիքի կենացին. ազգին համար առաջարկուած բաժակը կը մերժուի, կամ գոնէ կը յետաձգուի. փողերը կը հնչեն մարտական քայլերգ, դէպի օթեակները կը վերելակեն աղաղակներ արձակելով, կը գոռայենն սա՛ տրտմալից և ծանօթ երգը. Ո՛վ Ռիչար, ո՛վ իմ թագաւորս, տիեզերք կը լքէ քեզ. իրարու խօսք կուտան մեռնիլ թագա-

---

թէ ընկերութեան մը տակ ստորագրութիւն դնելու առաջարկ եղած էր իրեն: Զուգեց մերժուն անունը տալ. բայց, կա՛մ անուշադրութենէն, կամ բարիք մը ընելու գաղափարով, ինձմէ պատուոյ խօսք չպահանջեց գաղտնի պահելու համար խնդրածս: Յարդ այնքան տարածի զլացած չէի, անհոգ ալ ինծի համար չէ: Կը պատմէին որ Թագուհին իր խոհականութեամբը հաշուէ թէ, մեծ քայլ մը ինչ'ը կընան պատահիլ. արդէն առաջինը բաւական առջի կը հոսի: Տեսայ թէ թագուհին բարի միտք ինչպէս արցունք թափեց խաղխաղուած զոհերուն ճակատագրին վրայ. իսկ հիմա հարկ պիտի ըլլայ անզգուշակերպով թափուած արեան հեղեղներուն վրայ ալ լալ:

«Պարզ վարանում մը կընայ անդարմանելի ըլլալ: Հեղեղին առջև երթալով, զայն չոյելով միայն կարելի է յաջողիլ մտածմ զայն ուղղելու: Դեռ կորսուած բան մը չկայ: Թագուհին կընայ թագաւորին համար վերագրաւել թագաւորութիւնը: Բնութիւնը անոր միջոցներ տրամադրած է իրեն. անոնք միայն հնարաւոր են: Կընայ իմանել իր օգտակար մօրը. եթէ ոչ կը լռեմ... Կը պաղատիմ որ Ձեր Վեհափառութիւնը անկեղծութիւն մը շնորհէ ինծի այս չարաթուան մէջ օր մը:»



ՊԱՀԱԿԱԽՈՒՄԲԵՐՈՒ ՃԱՇԸ

համախորհուրդ յատակագիծի մը ո և է հետքը։ Տարակոյս չկայ որ այդ միջոցին, ինչպէս նաև ամբողջ յեղափոխութեան միջոցին, Օրլէանի դուքսը ժողովրդային շարժումին կենակը գտնուած է, թերևս քիչ մը ոսկի թափելով, խօսելու ատեն տալով, և տարտամ յոյսեր միայն ունենալով։

Ժողովուրդը, Վետոյին վրայ վիճաբանութիւններէն յուզուած, սև գլխանոցներէն գայրացած, անընդհատ շըրջագայող պահակախումբերէն նեղուած, և սովալլուկ եղած, վարանջած էր։ Պայլի և Նէքէր բան մը չէին մնացած, չէին զանց ըրած պարէններ ստանանելու համար, բայց, կա՛մ փոխադրութեանց դժուարութիւնը, կամ ճամբուն վրայ անցքի ունեցած թալանումները, կամ մանաւանդ վաճառականութեան ինքնասուր շարժումին թերին ըրացնելու անկարութիւնը պատճառ կ'ըլլային ալիւրներուն պակսելուն։ Հոկտեմբեր 4 ին յուզումը ամէն ժամանակէ աւելի մեծ եղաւ։ Կը խօսուէր թագաւորին Մէց մեկնելուն և Վերսայլի մէջ զաշն երթալ վնասելու հարկին վրայ,

սեւ գլխանշանները կը կոխոտէին, հաց կը պահանջուէր։ Բազմաթիւ պահակախումբեր յաջողեցան զսպել ժողովուրդը։ Գիշերը բաւական հանդարտ անցաւ։ Երկրորդ օրը, 5 ին, համախմբումները վերսկսան ճիշդ առաւօտէն։ Կիները հացագործներուն խանութները կ'երթային, հաց չկար, Քաղաքապետարան վազեցին՝ համայնքին ներկայացուցիչներուն բողոքելու համար։ Ասոնք տակաւին հոն գումարած չէին, և տեղւոյն վրայ շարուած էր ազգային պահնորդներէն վաշտ մը։ Երիկ մարդիկ այդ կիներուն միացան, բայց կիները մերժեցին, ըսելով թէ երիկ մարդիկ գործել չեն գիտեր։ Խուժեցին այն ատեն վաշտին վրայ, և ետ ետ երթալ տուին անոնց քարի հարուածներով։ Այդ պահուն դուռ մը խորտակելով՝ Քաղաքապետարանը խուժանէն գրաւուեցաւ, աւազակներ ցիցերով կիներուն հետ հոն խուժեցին, և ուզեցին շէնքը բռնկցնել։ Կարելի եղաւ ցրուել զանոնք, Բայց ձեռք անցուցին մեծ կոչնակին տանող լարը և հնչեցուցին վտանգի զանգակն։ Եւ ահա իրար անցան բոլոր արուարձանները։ Պասթիյի առումին ատեն նշանաւոր հանդիսացող քաղաքացիներէն մին՝ Մայեար, ազգային պահակ վաշտին հրամայող սպային հետ խորհրդակցեցաւ, այս կատաղի կիներուն ձեռքէն Քաղաքապետարանը ազատելու միջոցը գտնելու համար։ Սպան չհամարձակեցաւ հաւանիլ անոր առաջարկած միջոցին, այսինքն զանոնք հաւաքել Վերսայլ երթալու պատրուակաւ, բայց առանց հոն առաջնորդելու զանոնք։ Այսու հանդերձ Մայեար միտքը դրաւ, թմբուկ մը առաւ, և իսկոյն զանոնք քաշեց բերաւ իր ետեւէն։ Զէնքերնին բռնած էին զաւազաններ, աւելի կոթեր, հրացաններ և դաշոյններ։ Այս տարօրինակ զէնքերով՝ քարափէն իջաւ վար, անցաւ Լուվրէն, հակառակս բռնադատուեցաւ այս կիները տանիլ Թիւյլըրիի մէջէն և կեցաւ Արիսեան Դաշտին (Շան զ'Էլիզէ) մէջ։ Հոն յաջողեցաւ զէնքընկէց ընել զանոնք, համոզելով անոնց թէ աւելի լաւ էր ժողովին ներկայանալ իբրև աղերսարկուք քան իբրև զինեալ կատաղիներ։ Հաւանեցան, և Մայեար պարտաւորուեցաւ զանոնք առաջնորդել Վերսայլ որովհետև կարելի չէր ետ դարձնել։ Այդ վայրկենին ամէն ինչ դէպի այդ նպատակակէտը կը ձգտէր։ Հրոսակներ ճամբայ կ'ելլէին թնդանօթներ քաշելով։ Ուրիշներ կը պաշարէին ազգային պահակները մեկնելու համար դէպի Վերսայլ, բոլոր թաղամասերուն նպատակակէտը։

Այս միջոցին արքունիքը հանդարտ էր, բայց ժողովը տակն ու վրայ վիճակի մէջ կը սպասէր թագաւորին մէկ պատգամը։ Անոր ընդունելութեան ներկայացուած էին սահմանադրական յօդուածները և Իրաւունքներու Յայտարարութիւնը։ Պատասխանը պէտք էր ըլլալ պարզ և յայտնի ընդունելութիւն, զանոնք հռչակելու խոստմամբ։ Բայց թագաւորը, երկրորդ անգամ ըլլալով, առանց երկար բարակ իր միտքը բացատրելու, դիտողութիւններ կ'ուղղէր ժողովին. իր հաւանութիւնը կուտար սահմանադրական յօդուածներուն, առանց սակայն զանոնք ընդունելու. լաւ սկզբունքներ կը գտնէր Իրաւունքներու Յայտարարութեան մէջ, բայց բացատրութիւններու կը կարօտէին. վերջապէս ամբողջութիւնը, կ'ըսէր, կարելի չէր դատել Սահմանադրութեան ամբողջականութիւնը ի գլուխ չելլէր։ Անշուշտ պաշտպանելիք կարծիք մըն է ասիկա. շատ մը հրապարակագիրներ համամիտ էին ատոր. բայց նոյն միջոցին յարմար տե՞ղն էր այդպիսի կարծիք մը յայտնելը։ Հազիւ հազ կարդացուեցաւ այս պատասխանը, և ահա բողոքներ բարձրացան։ Ռօպէսփիէր ըսաւ թէ թագաւորը իրաւունք չունի ժողովը քննադատելու. Տիւբօռ եւ

յարեց թէ այս պատասխանին տակը Թագաւորին հետ պատասխանատու նախարարն ալ ստորագրելու էր։ Բեթիօն առիթէն օգուտ քաղեց և յիշեցուց արքայական պահնորդներուն ճառը, և մէջ տեղ հանեց ժողովին դէմ արտասանուած նզովքները և նախատինքները։ Կրէկուար կը խօսի պարէններու անբաւականութեան վրայ, և կը հարցնէ թէ ինչո՛ւ համար նամակ մը ուղղուած է Ջաղացպանի մը՝ խոստանալով չափաթական երկու հարիւր ոսկի տալ, եթէ չուզեր ցորեն աղալ։ Այս նամակով բան մը չէր ապացուցուեր, որովհետև բոլոր կուսակցութիւններն ալ կրնային գրած ըլլալ զայն. սակայն այդ նամակը մեծ գրգռութեան պատճառ եղաւ, և տը Մօնթէյ հրաւիրեց Բեթիօնը ստորագրել իր յայտարարութիւնը։ Այն ատեն Միռապօ, որ բեմին վրայէն իսկ պախարակած էր Բեթիօնի և Կրէկուարի ընթացքը, մէջտեղ եկաւ պատասխանելու համար տը Մօնթէյի։ «Նախ և առաջ ես էի որ պախարակեցի, ըսաւ, այդ անքաղաքագիտական յայտարարութիւնները. բայց քանի որ կը պնդէք, ես ալ նոյնը կը յայտարարեմ, և պիտի ստորագրեմ, երբ հռչակուի թէ Ֆրանսայի մէջ Թագաւորը միմիայն անբռնաբարելի է»։ Այս ահաւոր յանդիմանականին վրայ լռեցին, և դարձեալ Թագաւորին պատասխանին դարձան։ Առտուան ժամը տասնը մէկն էր, իմացուեցան Բարիզի շարժումները։ Միռապօ կը յառաջանայ դէպի Մունիէ նախագահը, որ, դեռ նոր ընտրուած հակառակ Արքայական Պալատին թելադրութեանց, և փառաւոր անկումով մը սպառնալիքին ներքև, այս տխուր օրուան մէջ անձնուէր կորովամտութիւն մը պիտի պարզէր. Միռապօ կը կը մօտենայ անոր. «Բարիզ, կ'ըսէ անոր, մեր վրայ կը քալէ. եթէ վիճակը աղէկ չէք տեսներ, դղեակ գացէք ըսէք Թագաւորին որ առանց այլ և այլի ընդունի։ — Բարիզ կը քալէ, լա՛ւ, կը պատասխանէ Մունիէ, թո՛ղ մեզ ամէնքս ալ սպաննեն, բայց ամէնքս. ասկէց Պետութիւնը պիտի շահի։ — Գտումը իրաւցնէ սիրուն է», կը յարէ Միռապօ, և իր տեղը կը դառնայ։ Վիճաբանութիւնը կը շարունակուի մինչև ժամը երեք, և կ'որոշուի որ նախագահը Թագաւորին մօտ երթայ և առանց այլ և այլի պահանջէ իր ընդունելութիւնը։ Այն պահուն երբ Մունիէ դուրս պիտի ելլէր դղեակ երթալու, պատուիրակութեան մը գալուստը ծանուցուեցաւ. Մայեառն ու իրեն ետևէն եկող կիներն էին։ Մայեառ կը խնդրէ ներս մտնել ու խօսիլ. ներս կը տարուի, կիները իր ետևէն կը խուժեն և սրահ կը մտնեն։ Մայեառ կը պարզէ անցած դարձածը, հացին պակասութիւնը և ժողովուրդին յուսահատութիւնը. Ջաղացպանին ուղղուած նամակին վրայ կը խօսի, և կը յայտարարէ թէ ճամբան հանդիպած անձ մը իրենց ըսաւ որ երէց մը ինք պիտի դայ երեսուն պիտի հանէ այդ նամակին գործը։ Այդ երէցը Կրէկուարն էր, և, ինչպէս տեսանք, գործն ալ երեսուն հանած էր։ Այն միջոցին ձայն մը կ'ամբաստանէ թէ այդ նամակին հեղինակը Բարիզի արքեպիսկոպոս Ժիւինեէն է։ Զայրոյթի աղաղակներ կը բարձրանան՝ առաքինի Թեմակալին դէմ եղած վերադրումը հերքելու համար։ Ի կարգ կը հրաւիրուին Մայեառ և իր պատուիրակութիւնը։ Իրեն կ'ըսուի թէ միջոցներ ձեռք առնուած են պարենաւորելու համար Բարիզը, թէ Թագաւորը բան մը մոռցած չէ, թէ պիտի խնդրուի իրմէ նոր տնօրինութիւններ ընել, թէ պէտք է քաշուիլ երթալ, և թէ խռովութիւնը պարէնի անբաւականութիւնը դարմանելու միջոցը չէ։ Մունիէ նոյն պահուն դուրս կ'ելլէ դղեակ երթալու, բայց կիները կը պաշարեն զայն և կ'ուզեն իրեն ընկերանալ, նախ կը մերժէ,

բայց կը պարտաւորուի վեց հոգի ըն-դունիլ։ Բարեգէն համեստ հրաւիրեալները [illegible] կ՚անցնի. որոնք զինուած էին շիշերով, կացիններով և երկաթագամ գաւազաններով։ Սաստիկ կ՚անձրեւէր։ [illegible] պահնորդներու ջոկատ մը կը [illegible] Նախագահը՝ պաշարող հա-սարակութեան վրայ. և կը ցրուէ զայն. բայց [illegible] ընդհուպ կը միանան Մու-նիքի [illegible] կը հասնի, ուր Ֆլաման-տայի զօրագունդը. մեքենագործքերը, [illegible] պահակները և Վերսայլի [illegible] [illegible] գունդը չար-ուած էին հակամարտ ուղղութեամբ։ [illegible] վերջ՝ կը պարտաւորուի [illegible] նորէն մտցնել, Թագա-ւորը [illegible] կ՚ընդունի զանոնք, և ցաւ կը յայտնէ անոնց նիւթական անձկու-թեան վրայ. կիները կը յուզուին։ Ա-նոնցմէ մէկը. մանկամարդ և գեղանի կը պատրաստէ վեհապետը տեսնելով, և հազիւ կրնայ արտասանել այս բառը. Հաց։ Թագաւորը, զգածուած, կը համ-բուրէ զայն. և կիները նոր կը դառնան՝ այս հիւրասիրութենէն զորովուած։ Դղեա-կէն դուրս կ՚ընդունուին իրենց ընկե-րուհիներէն, որոնք չեն ուզեր հաւատալ անոնց անկեղծութեան, կ՚ըսեն թէ խաբուեր, հմայուեր են, և կը պատ-րաստուին բզքտել զանոնք։ Արքայա-կան պահնորդները, որոնց կը հրամայէր Կոմս տը Կիշ, կը վազեն զանոնք ազա-տելու համար. հրացանի հարուածներ կ՚արձակուին անոնց դէմ, երկու պահ-նորդներ կ՚իյնան, և քանի մը կիներ կը վիրաւորուին։ Հոն մօտ, պարզ մարդ մը, քանի մը կիներու գլուխը [illegible], վաշտերուն ուղղին մէջէն կը թափանցէ և կը յառաջանայ մինչեւ գնդակին երկաթեայ վանդակը։ Տը Սավոնիէռ անուն տեղակալն կը վազէ, բայց հրացանի հարուած մը թեւը կը փշրէ։ Այս մանր մանր կռիւները երկուստեք սաստիկ զայրոյթ կը գըր-գռեն։ Թագաւորը՝ վտանգը իմանալով՝ կը հրամայէ իր պահնորդներուն կրակ չընել, և քաշուիլ իրենց բնակարանը։ Անոնց քաշուած միջոցին, հրացանի քանի մը հարուածներ կը փոխանակ-ուին ասոնց և Վերսայլի ազգային պահ-նորդներուն միջեւ, բայց չի գիտցուիր թէ առաջին հարուածները որո՞նց կողմէ արձակուեցան։

Այս անկարգութեան միջոցին Թա-գաւորը խորհուրդ կը գումարէր, և Մունիէ անհամբեր կը սպասէր անոր պատասխանին։ Այս վերջինը չարունակ նեղսը լուր կը ղրկէր թէ ի պաշտօնէ պաշտաուորուած է ժողովին երթալ, թէ վաւերացման լուրը պիտի հանդարտե-ցնէր բոլոր միտքերը, և թէ ինք պիտի մեկնէր եթէ իրեն խոկոյն պատասխան մը չտրուի, հաւանաբար չէր կրնար ուելի երկար ատեն իր պաշտօնէն բա-ցակայիլ։ Նորա խորհուրդին մէջ սա՛ կէտին վրայ յուզում կար թէ Թագա-ւորը պէ՞տք է ճամբայ ելլէ. խորհուրդը անեց երկուան ժամը վեցէն մինչեւ տասը, և կ՚ըսուի թէ Թագաւորը իր թափուր անիւը չուզեց թողուլ Օրլէանի դուքսին։ Կ՚ուզուէր Թագուհին և զա-ւակները ճամբայ հանել, բայց ամբոխը կառքերը կեցուց անոնց երեւնալուն պէս, և միւս կողմէ արդէն Թագուհին քաջարար որոշած էր իր ամուսինէն չբաժնուիլ։ Վերջապէս ժամը տասնին միջոցները Մունիէ ընդունեց Թագաւո-րին վաւերացումը առանց պայմանի և ժողովին դարձաւ։ Երեսփոխանները ցրուած էին և կիները կը գրաւէին սրահը։ Անոնց խմացուց Թագաւորին վաւերացումը, զոր ուրախութեամբ ընդունեցին, հարցնելով նախագահին թէ ատոր վրայ պիտի բարւոքուէ՞ր արդեօք իրենց վիճակը, և մանաւանդ թէ հաց պիտի ունենայի՞ն։ Մունիէ անոնց պատասխանեց ձեռքէն եկածին չափ, և անոնց բաշխել տուաւ ինչքան հաց որ կարելի եղաւ հայթայթել։ Այդ գիշերուան մէջ, ուր գործուած յան-

ցանքները շատ դժուարին են ծչգել, քաղաքապետութիւնն ալ յանցաւոր էր չհոգալուն համար այդ սովորական ամբոխին կարօտութիւնը, որ զիրենք դուրս հանած էր Բարիզէն, քանի որ այդ ամբոխը փողոցին մէջ հաց պիտի չգտնէր անշուշտ։

Այդ միջոցին Լաֆայէթի գալուստը իմացուեցաւ։ Ութը ժամ ամբողջ կռուած էր Բարիզի ազգային քաղաքապահներուն դէմ, որոնք Վերսայլ մեկնիլ կ'ուզէին։ Այդ գունդին հրամանատարներէն մին ըսած էր իրեն. «Զօրավա՛ր, դուք մեզ չէք խաբեր, այլ դուք կը խաբուիք։ Փոխանակ մեր զէնքերը կիներուն դէմ դարձնելու, երթա՛նք Վերսայլ թագաւորը գտնենք, և իր տրամադրութիւններուն վրայ հաւատարի ըլլանք մեր մէջ առնելով զայն»։ Լաֆայէթ գլխաւորած էր իր բանակին սպառնալիքներուն և խուժանին հեղեղներուն։ Յաղթութեամբ չէր որ իր զինուորները տարած էր, այլ հանրային վստահութեամբ, և, հիմա այդ վստահութենէն զրկուելով, չէր կրնար այլեւս վարել զանոնք։ Բայց հակառակ ասոր, յաջողած էր մինչեւ իրիկուն կեցնել զիրենք. սակայն իր ձայնը քիչ տեղէ միայն կը լսուէր, և անկէց անդին ոչինչ կը կասեցնէր ժողովրդային կատաղութիւնը։ Բանիցս վտանգուեցաւ իր գլուխը, և այսուհանդերձ կը գլխաւորէր տակաւին։ Բայց գիտէր որ անդադար հրամաններ կը մեկնէին Բարիզէն. ապստամբութիւնը Վերսայլ կը փոխադրուէր, իր պարտքն էր հոն անոր հետեւիլ։ Համայնքն ալ հրամայեց անոր հոն երթալ, և ճամբայ ելաւ։ Ճամբան կեցուց իր բանակը, երդում ընել տուաւ անոր հաւատարիմ ըլլալ թագաւորին, և Վերսայլ հասաւ կէս գիշերուան միջոցին։ Իմացուց Մունիէի թէ բանակը խօսք տուած էր իր պարտքը կատարել, և թէ օրէնքի հակառակ բան մը պիտի չըլլար։ Դղեակ վազեց։ Հոն երեւցաւ յարգալից և վըշտաբեկ, ձեւք առնուած նախազգուշութիւնները իմացուց թագաւորին, և վստահեցուց իր և իր բանակին անձնուիրութեան վրայ։ Թագաւորը հանդարտած երեւցաւ, և քաշուեցաւ հանգիստ առնելու։ Դղեակին պահնորդները չյանձնուեցան Լաֆայէթի, արտաքին պահակները միայն տրուեցան անոր։ Միւս դիրքերը յանձնուած էին Ֆլանտրական զօրախումբին, որոնց տրամադրութիւնները վստահելի չէին, Զուիցերիացիներուն և արքայական պահնորդներուն։ Ասոնք նախ հրաման ընդունած էին քաշուելու. յետոյ կանչուած էին կրկին, և, չկրնալով հաւաքուիլ, իրենց յատուկ տեղերը քիչ թուով միայն կը գտնուէին։ Տիրող վրդովումի միջոցին, բոլոր մուտքերը վայրերը պաշտպանուած չէին. նոյն իսկ վանդակապատեան մը բաց մնացած էր։ Լաֆայէթ իրեն յանձնուած դուրսի պահականոցները բռնել տուաւ, և անոնցմէ ո՛չ մին չբռնաբարուեցաւ և յարձակում չկրեց։

Ժողովը, հակառակ այս վրդովումներուն, վերսկսած էր իր նիստը, և յոյժ պատկառելի կացուդիրքով մը վիճաբանութիւն մը կը շարունակէր պատժական օրէնքներուն վրայ։ Մերթ ընդ մերթ, ժողովուրդը կ'ընդմիջէր վիճաբանութիւնը հաց պահանջելով։ Միրաբօ, յոգնած, ամուր ձայնով մը պոռաց թէ ժողովը պէտք չունէր ուրիշներէն օրէնք առնելու, և թէ պարպել պիտի տայ ունկնդիրներուն բեմերը։ Ժողովուրդը ծափերով ողջունեց այս բացագանչութիւնը. սակայն ժողովին գործին չէր դար աւելի գլխաւորելը։ Լաֆայէթ Մունիէի ըսել տուած էր թէ ամէն ինչ հանդարտած կը թուէր իրեն, և թէ կրնար ճամբել երեսփոխանները իրենց տեղերը։ Ժողովը ցրուեցաւ կէս գիշերին, որոշելով գումարել յաջորդ օրը 6ին ժամը տասնըմէկին։

Ժողովուրդը հոս ու հոն ցրուած էր

«Թագուհին ազատեցէ՛ք» կը պոռայ։ Այս աղաղակը կը լսուի, և Թագուհին դողալով Թագաւորին քով կ'ապաստանի։ Անոր փախչելու միջոցին աւազակները կը խուժեն, արքայական անկողինը լքուած կը գտնեն, և անիկէց անդին ալ կ'ուզեն թափանցել, բայց դարձեալ կ'արգիլուին այս կէտին վրայ ամրափակուած արքայական պահնորդներու կողմէ։ Այդ վայրկեանին Լաֆայէթի վերադարձեալ ֆրանսական պահնորդները, որոնք զգեակին մօտ պահակ կեցած էին, իրարանցում մը կ'իմանան, կը վազեն և կը ցրուեն աւազակները, յետոյ կ'երթան այն դրան կողմը որուն ետեւը ամրափակուած էին արքայական պահնորդները. «Բացէ՛ք, կը պոռան, ֆրանսական պահնորդները չեն մոռցած և թէ դուք Ֆօնթընուայի մէջ ազատեցիք իրենց զօրագունդը»։ Կը բանան և կ'ողջագուրուին։

Դուրս խռովութիւնը կը տիրէր։ Լաֆայէթ, որ հազիւ քանի մը վայրկենէ ի վեր կը հանգչէր, և որ քնացած ալ չէր, ձայն կը լսէ, կը նետուի առաջին հանդիպած ձիուն վրայ, խառնուրդին մէջէն կը խոյանայ, և կը գտնէ հոն քանի մը արքայական պահնորդներ,

---

ներէն ո՛չ մէկուն վրայ յարձակում գործուեցաւ։ Ամէն ինչ հանդարտ կ'երեւար, և այնուհետեւ բրաւ ան ինչ որ ուրիշ ո և է մէկը պիտի ընէր անվրէպ, անկողինի մը վրայ նետուեցաւ կազդուրելու համար իր ոյժը՝ որուն պէտք ունէր, որովհետեւ քսանըչորս ժամէ ի վեր խուժանին դէմ կը մաքառէր։ Իր հանգիստը կէս ժամ չտեւեց. առաջին աղաղակներուն հետ հասաւ, և ճիշդ ատենին երբ փրկեց ջարդուելու վրայ եղող արքայական պահնորդները։ Ուրեմն ասոր մէջ ինչ յանցանք կարելի է գտնել անոր... Առաջին վայրկեանին ներկայ չը՞լլալը արդեօք. բայց նոյն բանը կրնար բոլորովին տարբեր կերպով ալ տեղի ունենալ. տալիք հրաման մը կամ այցելելիք պահականոց մը կրնար կէս ժամու չափ հեռացնել զինքը առաջին յարձակումին տեղի ունեցած կէտէն, և իր բացակայութիւնը, գործին առաջին վայրկեանին, բոլոր դիպուածներուն ամէնէն անխուսափելին էր։ Բայց միթէ ճիշդ ատենին չվազե՞ց չեկա՞ւ ազատելու համար գրեթէ բոլոր զոհերը, փրկելու համար զգեակը և մէջը գտնուող բարձր անձնաւորութիւնները. Ինքզինքը վեհօրէն չնուիրե՞ց միթէ ամենամեծ վտանգներու։ Ահա՛ ինչ որ կարելի չէ ուրանալ, և ինչ որ այն թշնամիին արժանի ըրաւ զինքն ընդհանուր վստահութիւններու։ Այն միջոցին իր բոլոր ազատածներու միջեւ ձայն մը միայն բարձրացաւ։ Տիկին տը Սթալ, որ զոր կարելի չէ կողմնակցական նկատել ի նպաստ Լաֆայէթի, կը պատմէ թէ ինք ականջովը լսեց արքայական պահնորդներուն Կեցցէ՛ Լաֆայէթ պոռալը։ Մունիէ, որ ան ալ Լաֆայէթի կողմնակից ըլլալու կասկածէն վեր է, կը գովէ անոր անձնուիրութիւնը, և Լալի-Թօլանտալ ցաւ կը յայտնէ որ այդ պահուն տեսակ մը դիւրութիւն չվերադարձուեցաւ իրեն։ Տեսէ՛ք իր ընտրողներուն ուղղած Տեղեկագիրը։ Այս երկու երեւելիները պատմական ըլլալով Հոկտեմբեր 5ի և 6ի դէպքերը, պատճառ մը չկայ որ իրենց վկայութիւնը վստահութեամբ չընդունինք։ Մնաց որ ոչ ոք, առաջին վայրկեաններուն, համարձակեցաւ ուրանալ անձնուիրութիւն մը՝ որ առ հասարակ ճանչցուեցաւ։ Ժամանակ անցնելէ վերջ միայն, կուսակցական ոգին՝ սահմանադրականի մը առաքինութիւնները բարձրացնելու վտանգը զգալով՝ ուրացաւ Լաֆայէթի ծառայութիւնները. և այնուհետեւ սկսաւ այն երկար զրպարտութիւնը, որուն առարկայ ըլլալ չէ դադրած անիկէց ի վեր։

որոնք ջարդուելու վրայ էին։ Մէկ կողմէն զանոնք ազատելով, միւս կողմէ կը հրամայէ իր զօրքերուն դղեակ վազել. և գրէթէ մինակ կը մնայ աւազակներուն մէջը։ Անոնցմէ մին հրացանը իրեն կը չափէ, Լաֆայէթ, առանց վրդովելու, ժողովուրդին կը հրամայէ իրեն քով բերել զայն. ժողովուրդը ակոյն յանցաւորը կը բռնէ և Լաֆայէթի ոտքին առջև անոր գլուխը կը ջախջախէ սալայատակին վրայ։ Լաֆայէթ, արքայական պահնորդները ազատելէ վերջ, անոնց հետ մէկտեղ դղեակ կը դառնայ, և հոն արքայն հաւաքուած կը գտնէ իր նախարարները։ Ամէնքն ալ կը պաշարեն զայն, և կը խոստանան մեռնիլ թագաւորին համար։ Այդ վայրկենին մահուանէ մազապուր եղող արքայական պահնորդները կ'աղաղակեն Կեցցէ՜ Լաֆայէթ։ Ամբողջ արքունիքը, որ ինքը և անոր զօրքերուն շնորհիւ իր կեանքը ազատուած կը տեսնէր, կը խոստովանէր թէ կեանքը անոր կը պարտի. երախտագիտութեան հաւաստիքները ընդհանուր էին։ Թագաւորին հօրաքոյրը, Տիկին Ադէլայիտ, կը վազէ, իր թևերուն մէջ կը սեղմէ զայն ըսելով. «Զօրավա՛ր, դուք մեզ փրկեցիք»։

Ժողովուրդը այս պահուս մեծապէս կը պահանջէր որ Լուի ԺԶ. Բարիզ երթայ։ Խորհուրդ գումարեցին։ Լաֆայէթ, որ մասնակցելու հրաւիրուած էր, մերժեց խորհուրդին ազատութիւնը չկաշկանդելու համար։ Վերջապէս կ'որոշուի որ արքունիքը համակերպի ժողովուրդին փափաքին։ Այս լուրը կրող տոմսեր կը նետուին պատուհաններէն վար։ Լուի ԺԶ. զօրավարին ընկերակցութեամբ պատշգամին վրայ կը ներկայանայ, և Կեցցէ՜ թագաւորը աղաղակները կ'ողջունեն զայն։ Բայց թագուհիին համար նոյնը չէ. սպառնալից ձայներ կը բարձրանան անոր դէմ։ Լաֆայէթ անոր կը մօտենայ. «Տիկի՛ն, կ'ըսէ, ի՞նչ կ'ուզէք ընել։ — Թագաւորին ընկերանամ, կ'ըսէ թագուհին քաջութեամբ։ — Ուրեմն ինծի հետևեցէ՛ք,» կը յարէ զօրավարը, և պարմանահար թագուհին կ'առաջնորդէ պատշգամին վրայ։ Խուժանին կողմէ քանի մը սպառնալիքներ կ'ըլլան։ Մահառիթ հարուած մը կրնար արձակուիլ. խօսքերը չէին լսուիր, պէտք էր շլացնել աչքերը։ Այն միջոցին զօրավարը խոնարհելով և թագուհիին ձեռքը բռնելով կը համբուրէ յարգանօք։ Ասիկա տեսնելով ինքնիրմէ դուրս կ'ելլէ ա՛յն ֆրանսական ժողովուրդը, և հաշտութիւնը կը դրոշմէ Կեցցէ՜ թագուհին, Կեցցէ՜ Լաֆայէթ աղաղակներով։ Արքայական պահնորդներուն հետ հաշտութիւնը դեռ կնքուած չէր։ «Պահնորդներուս համար բան մը պիտի չընէ՞ք», կ'ըսէ թագաւորը Լաֆայէթին։ Այս վերջինը անոնցմէ մին կ'առնէ, պատշգամին վրայ կը տանի, և կը համբուրէ զայն, անոր անցնելով իր թիկնոցը։ Ժողովուրդը դարձեալ կը հրճուի, և իր ծափերով կը վաւերացնէ այս նոր հաշտութիւնը։

Ժողովը իր արժանապատուութեան չվայելեց երթալ վեհապետին մօտ, թէև ուզած էր որ գայ։ Բաւականցաւ անոր մօտ ղրկելով երեսուն վեց հոգիէ պատուիրակութիւն մը։ Եւ անոնց մեկնելէն վերջ որոշում մը առաւ թէ ժողովը անբաժանելի էր վեհապետին անձէն, և հարիւր երեսփոխաններ նշանակեց որ անոր ընկերանան Բարիզ։ Թագաւորը որոշմագիրը ստացաւ և ճամբայ ելաւ։

Գլխատող խումբերը արդէն մեկնած էին։ Լաֆայէթ անոնց ետևէն ղրկած էր բանակէն ջոկատ մը արգիլելու համար անոնց ետ դառնալը։ Հրաման տուած էր զէնքընկէց ընել աւազակները, որոնք իրենց ցիցերուն ծայրը կը կրէին երկու արքայական պահնորդներու գլուխները։ Իրենց ձեռքէն խլուեցաւ այս քստմնելի յաղթանակը, և ճիշդ




ՄԷՅԵԱՌ ԿԻՆԵՐԸ ՎԵՐՍԱՅԼ ԿԸ ՏԱՆԻ

չէ թէ ասիկա թագաւորին կառքին առջեւէն կը տարուէր։

Լուի ԺԶ. վերջապէս հասաւ խուռն բազմութեան մը մէջանց և Պայիի կողմէն ընդունուեցաւ Քաղաքապետարանին մէջ։ «Վստահութեամբ կը վերադառնամ, ըսաւ թագաւորը, իմ Բարիզարնակ ժողովուրդիս մէջ»։ Պայի այս խօսքերը հաղորդեց անոնց որոնք չէին կրնար լսել, բայց մոռցաւ վստահութիւն բառը։ «Աւելցուցէ՛ք վըստահութեամբ, ըսաւ թագուհին։ — Դուք աւելի յաջողեցաք, յարեց Պայի, քան թէ ես անձամբ արտասանէի զայն»։

Արքայական ընտանիքը գնաց Թիւյլըրիի պալատը, որ դարէ մը ի վեր բնակելի չէր եղած, և ուր ժամանակ չէր գտնուած հարկ եղած պատրաստու-

[illegible] Լաֆայէթ [illegible] ժողովր- [illegible] մէջը [illegible] զայն. [illegible] Սա- [illegible] և քա- [illegible] պատ- [illegible] Աւստր ա- [illegible] չա- [illegible] արթնա- [illegible] կ'ապայու- [illegible] ունենալու ան- [illegible]

[illegible] կուսակցու- [illegible] եղանակով մը, կը [illegible]ութիւնը, Լուի [illegible] մօտ ո և է [illegible], կը ցրուի [illegible] գաւառներուն մէջ։ [illegible] տարագրու- [illegible]ութիւնը կ'սկսի [illegible]։ Բազմաթիւ ազնուա- [illegible] կը փախչին Աւթուայի [illegible], որ ապաստանած էր իր [illegible], առոնց քաղաքակա- [illegible] զրգռել հարաւի գա- [illegible] և ձախողեցնել տալ թէ Թագա- [illegible] չէ։ Թագուհին, որ Աւստա- [illegible] է, և առկէց զատ թշնամի է [illegible] մէջ կազմուած նոր արքու- [illegible]. [illegible] կը դարձնէ դէպի Ա- [illegible]։ Թագաւորը, բոլոր այս խառ- [illegible] միջև, ամէն բան կը [illegible], բանի մը արդելք չըլլար, և իր [illegible] կըսպասէ որ կողմէն ալ որ [illegible]. [illegible] ընդ մերթ ժողովին կողմէ պահանջուած հերքումները կուտայ, և իրօք ալ ազատ չէ, ինչպէս պիտի չըլլար Տուբինոյի կամ Գոպլէնցի մէջ, ինչպէս ազատ չէր եղած Մօռբայի օրով, որովհետև տկարութեան ճակատագիրն է կախակայեալ ըլլալ միշտ։

Ժողովրդական կուսակցութիւնը, այնուհետև յաղթապանծ, բաժնուած էր Օրլէանի դուքսին, Լաֆայէթի, Միրապոյի, Պառնավի և Լամէթներուն միջև։ Հանրային ձայնը Օրլէանի դուքսը և Միրապօն կ'ամբաստանէր իբրև հեղինակ վերջին Ապստամբութեան։ Վկաներ, որոնք վստահութեան անարժան չէին, կը հաւաստէին թէ աչքովնին տեսած էին դուքսն ու Միրապօն Հոկտ. 6ի ցաւալի ճակատամարտի դաշտին վրայ։ Այս խողութիւնները վերջերը հերքուեցան. բայց այն միջոցին կը հաւատացուէին։ Դաւադիրները ուզած էին թագաւորը հեռացնել և նոյն իսկ մեռցնել զայն, կ'ըսէին ամէնէն յանդուգն չարախօսներ։ Օրլէանի դուքսը, կը յաւելին, կ'ուզէր թագաւորութեան տեղապահ ըլլալ, և Միրապօ նախարար։ Այս ծրագիրներէն ո՛չ մին յաջողած չըլլալով, Լաֆայէթ, զանոնք իր ներկայութեամբ ի դերևս հանածի ձեւ առնելով, թագաւորին ազատարար և Օրլէանի դուքսին ու Միրապոյի յաղթական կը համարուէր։ Արքունիքը, որ դեռ միջոց ունեցած չէր ապերախտ ըլլալու, իբրև իր ազատարարը կը խոստովանէր Լաֆայէթը, և այդ պահուն զօրավարին կարողութիւնը անսահման կըթուէր։ Խանդավառ ծայրայեղ հայրենասէրները կը խրտչէին անկէց և արդէն իսկ Գրօմուէլի անունը կը քրթմնջէին։ Միրապօ, որ ինչպէս վերջը պիտի տեսնուի, կապ մը չունէր Օրլէանի դուքսին հետ, կը նախանձէր Լաֆայէթի, և Բարձրապատիւ-Գրօմուէլ կը կոչէր զայն։ Աղնուականները ոյժ կուտային այս անվստահութիւններուն, և անոնց վրայ

կռնոց ալ գրպարտութիւնները կ'աւելցնէին։ Բայց Լաֆայէթ միտքը դրած էր, ամէն խոչընդոտներու հակառակ, այժ տալ Թագաւորին և Սահմանադրութեան։ Ասոր համար, նախ որոշեց հեռացնել Օրլէանի դուքսը, որուն ներկայութիւնը առիթ կուտար չար մը գրոյցներու, և կրնար հայթայթել խռովութեանց եթէ ոչ միջոց, գոնէ պատրուակ։ Իշխանին հետ տեսակցութիւն մը ունեցաւ, վախցուց զայն իր հաստատամտութեամբը, և պարտաւորեց հեռանալ։ Թագաւորը, որ մաս ունէր այս ծրագրին մէջ, իր սովորական տկարութեամբը կեղծեց թէ ի հարկէ բռնադատուած էր այս կարգադրութեան, և նամակ մը գրելով Օրլէանի դուքսին, ըսաւ անոր թէ պէտք է քաշուէին կա՛մ ինքը և կամ Լաֆայէթ, թէ հանրային կարծիքներուն վիճակով ընտրութիւնը երկբայելի չեն կրնար ըլլալ, և թէ հետեւաբար պաշտօն մը կուտար իրեն Անգլիոյ մէջ։ Այնուհետեւ գիտցուած է որ արտաքին գործոց նախարար Մօնմօրէն, Օրլէանի դուքսին փառասիրութենէն պրծելու համար, Ստորին Նահանգներուն դէմ դրդած էր զայն, որոնք այն միջոցին ապստամբած էին Աւստրիոյ դէմ, և անոր յոյս մը ներշնչած էր Պռապանի դուքսի տիտղոսը կրելու։ Դուքսին բարեկամները այս որոշումը իմանալով զայրացան անոր տկարութեանվրայ։ Իրմէ աւելի փառասէր, չէին ուզեր որ տեղի տար. Միռապոյի մօտ գացին, և յորդորեցին զայն ժողովին բեմին վրայէն հրապարակել իշխանին հանդէպ Լաֆայէթի ի գործ դրած բռնութիւնները։ Միռապօ. որ արդէն կը նախանձէր զօրավարին ժողովրդականութենէն, դուքսին և անոր լուր ղրկեց թէ երկուքն ալ պիտի ամբաստանէր բեմէն, եթէ Անգլիա մեկնումը տեղի ունենար։ Օրլէանի դուքսը վարանեցաւ, բայց Լաֆայէթի մէկ նոր հրաւէրին վրայ վերջապէս որոշեց, և Միռապօ ժողովին մէջ ընդունելով իշխանին մեկնումը իրեն ծանուցող տոմս մը, աղաղակեց դառնութեամբ. «Զարժեր որ մարդ իրեն համար անհանգիստ ըլլայ(*)։

Այս և ուրիշ շատ մը անխորհուրդ բառեր պատճառ եղան որ Միռապօ յաճախ ամբաստանուի իբրեւ Օրլէանի դուքսին գործակալներէն մին, սակայն երբեք չեղաւ այդպիսի մէկը։ Իր նիւթական անձկութիւնը, իր խօսքերուն անխոհեմութիւնը, Օրլէանի դուքսին հետ իր ընտանի վարմունքը, որ սա-

(*) Արդէն պարզեցի թէ գրեթէ ոչինչ էին Օրլէանի դուքսին հետ Միռապոյի յարաբերութիւնները։ Ահա քէ ինչ է սա՛ նշանաւոր բառին իմաստը։ Այդ... (հոս Միռապօ խիստ ծանր բառի մը սկզբնատառերը կ'արտասանէ Ց... Բ...) չարժեր որ մարդ իրեն համար հանգիստն տայ։ Օրլէանի դուքսին հանդէպ Լաֆայէթի ի գործ դրած ճնշումը նեղացուց ժողովրդային կուսակցութիւնը, այլ մանաւանդ զայրացուց աքսորի դատապարտուած իշխանին բարեկամները։ Ասոնք կը մտածեն Միռապօն լաֆայէթի դէմ արձակել, զօրավարին դէմ ատենաբանին նախանձէն օգտուելով։ Դուքսին մէկ բարեկամը ի Լօզէօն, իրկուն մը Միռապոյի տունը գնաց ստիպելու համար զայն որ երկրորդ օրէն սկսեալ խօսք առնէ։ Միռապօ, որ յաճախ ուրիշներուն խօսքերէն կը քշուէր, տեղի պիտի տար այս անգամ ալ, երբ իր սեփական վարմունքի մասին իրմէ աւելի հոգածու բարեկամներ յորդորեցին որ ատանկ բան չընէ։ Ուրեմն որոշուեցաւ որ լուռ մնայ։ Երկրորդ օրը, նիստին բացման, Օրլէանի դուքսին մեկնումը իմացուեցաւ. և Միռապօ որ ոխ կապած էր անոր դէմ Լաֆայէթի խօսքին մտիկ ըրած ըլլալուն համար և անոր բարեկամներուն անօգուտ ջանքերուն վրայ կը մտածէր գոչեց։ Այս...ին համար չարժեր որ մարդ հանգիստը տայ։

կուսոյն ամէնուն հետ ալ նոյնն էր, Սպանիոյական յաջորդութեան համար իր առաջարկութիւնը, վերջապէս դուքսին մեծ կնուժին հանդէպ իր ընդդիմութիւնը, կասկածներ առաջ պիտի բերէին. բայց ամէն ճշմարիտ է թէ Միրապօ կուսակցութիւն չունէր, նոյն իսկ ուրիշ նպատակ չունէր՝ եթէ ոչ խորտակել ազնուականութիւնը և կամայական իշխանութիւնը։

Այդ ենթադրութիւններուն հեղինակները գիտնալու էին որ Միրապօ այն միջոցին պարտաւորուած էր ամենայն դումարներ փոխ առնելու, ինչ որ տեղի պիտի չունենար, եթէ յանցաւոր հարուստ իշխանի մը գործակալը եղած ըլլար, իշխանի մը՝ որուն համար կ'ըսուէր փճանալու աստիճան կը քամուէր իր կուսակիցներէն։ Միրապօ արդէն նախազգացած էր պետութեան քայքայումը։ Մաքրիմ բարեկամի մը հետ խօսակցութիւն մը, որ ամբողջ գիշեր մը տեւեց, Վերսայլի պարտէզին մէջ, բոլորովին նոր յատակագիծ մը կողմն տարաւ իր միտքը. և հաստատապէս որոշեց իր փառքին համար, Պետութեան փրկութեան համար, վերջապէս իր անձական բախտին համար (որովհետեւ Միրապօ բոլոր այս շահերը միասին վարելու ընդունակ մարդ էր) անդրդուելի միայ կազմալուծիչներուն և գահուն միջեւ, և սահմանադրական միապետութիւնը ամրապնդելու իրեն համար տեղ մը շինելով հոն։ Արքունիքը փորձած էր շահիլ զայն, բայց ձախող կերպով վարուած էին այս մասին, առանց գործածելու յարմարագոյն փափկութիւնները հպարտ մարդու մը հետ, որ կ'ուզէր իր ժողովրդականութիւնը պահպանել՝ իր դեռ չվայելած յարգանքին տեղ գտնէ։ Նէքէրի բարեկամ և Միրապոյի հետ կապ ունեցող Մալուէ կ'ուզէր զանոնք երկուքը հաղորդակցութեան մէջ դնել։ Միրապօ յանձախ միրժած էր (*), համոզուած ըլլալով թէ երբեք չի կրնար համաձայնիլ նախարարին հետ։ Սակայն հաւանեցաւ։ Մալուէ նախարարին ներկայացուց զայն, և երկու նկարագիրներուն անհաշտելիութիւնը ա'լ աւելի լաւ երեւան եկաւ այս տեսակցութեան պահուն, ուր բոլոր ներկաներու խոստովանութեամբը, Միրապօ պարզեց անձնական կեանքին մէջ և բեմին վրայ հաւասարապէս ունեցած գերակշռութիւնը։ Զրոյց տարածեցին թէ ուզած էր կաշառուիլ, և թէ Նէքէր այդ մասին ո և է համարձակութիւն առած չըլլալով իրեն, դուրս ելած ատենը ըսեր է։ Պիտի ճանկցնեմ նախարարին իմ ո՛վ ըլլալս։ Աս ալ կուսակցութիւններուն մէկ մեկնութիւնն է, բայց սուտ է։ Մալուէ նախարարին հետ համաձայնիլ առաջարկած էր Միրապոյի, որուն մինչեւ այն ատեն ձեռք բերուած ազատութեննէն զո՞հ ըլլալը ամէն մարդ գիտէր, անոր եղածը ա'յս է միայն։ Մնաց որ ճիշդ այն թուականին էր որ ուղղակի բանակցութեան մը սկսուեցաւ արքունիքին հետ։ Բոլոր կուսակցութեանց մարդոց հետ կապ ունեցող օտարական իշխան մը այս մասին խօսք բացած էր։ Միջնորդ ծառայող բարեկամ մը զգացուց թէ անկարելի էր Միրապոյէն սկզբունքի ո և է զոհողութիւն ձեռք բերել, բայց եթէ ամուր կառչուի Սահմանադրութեան, անդրդուելի նեցուկ մը պիտի գտնուի անոր մէջ. թէ զոյով պայմաններուն, առնք Միրապոյի նիւթական կացութեան մէջ կը գտնուին, թէ նոյնիսկ անորմէ օգտուիլ ուզողներուն շահը կը պահանջէ որ այդ կացութիւնը պատուաւոր և անկախ ըլլայ, այսինքն իր պարտքերը վճարուին. Թէ

(*) Մալուէ և Պէրթրան տը Մօլվիլ հակառակը գրած են. բայց մեր տուած բերած իրողութիւնը հաստատուած է արժանահաւատ վկաներով։

վերջապէս պէտք է կապել զայն ընկերային նոր կարգին, և առանց առ այժմ անոր նախարարական պաշտօն տալու, ապագային համար յուսադրել զայն։ Բանակցութիւնները երկու-երեք ամիս վերջ միայն բոլորովին վերջացան, այսինքն 1790ի առաջին ամիսներուն։ Այս մանրամասնութիւններուն անիրազեկ պատմաբանները, իշխանութեան դէմ կռուելու մասին Միրապոյի յարատեւութիւնէն խաբուելով, այս բանակցութեան միջոցը աւելի ետքը դրած են։ Սակայն գրեթէ եղրակացուեցաւ 1790ի սկիզբը։ Պիտի հասկցնենք աս իր տեղը։

Պառնավ և Լամէթները հայրենասիրական աւելի մեծ խստապահանջութեամբ միայն կրնային մրցիլ Միրապոյի հետ։ Տեղի ունեցած բանակցութիւնները իմանալով, ոյժ տուին արդէն իսկ տարածուած սա՛ զրոյցին թէ նախարարութիւն պիտի առաջարկուի իրեն, սով իսկ զայն ընդունելու կարողութիւնը բառնալու համար անորմէ։ Ասոր արգելք ըլլալու մէկ առիթը ներկայացաւ քիչ ատենէն։ Նախարարները ժողովին մէջ խօսելու իրաւունք չունէին։ Միրապօ նախարարութեան հասնելով չէր ուզեր խօսքը վրայ տալ, որ ազդեցութեան իր ամենամեծ միջոցն էր. մանաց որ կը փափաքէր Նէքէրը բեմին վրայ բերել՝ զայն ջախջախելու համար։ Ուստի առաջարկեց խորհրդակցական ձայն տալ նախարարներուն։ Ժողովրդական կուսակցութիւնը, իրար անցնելով, հակառակեցաւ առանց համոզիչ փաստի, վախնալով թէ նախարարներուն խօսելու իրաւունքը կրնար միտքերը մոլորեցնել ի նպաստ անոնց ծրագիրներուն։ Բայց այս երկիւղը բանաւոր չէր, որովհետև խորհրդարաններուն հետ իրենց հրապարակային հաղորդակցութիւններով չէ որ նախարարները սովորաբար կը մոլորեցնեն ազգային ներկայացուցչութիւնը։ Միրապոյի առաջարկութիւնը մերժուեցաւ, և Լանժիւինէ, բծախնդրութիւնը ա՛լ աւելի հեռուն տանելով, առաջարկեց ներկայ երեսփոխաններուն արգիլել նախարարական պաշտօն ընդունիլը։ Վիճաբանութիւնը սաստիկ եղաւ։ Թէև այս առաջարկութեանց շարժառիթը ծանօթ էր, բայց յայտնապէս չէր ըսուեր. և Միրապօ, որ անկարելի էր թէ ակնարկութիւնը իրեն ըլլալը չհասկնար, վերջապէս աղաղակեց թէ մէկ մարդու մը պատճառաւ պէտք չէր Պետութեան համար աղետալի որոշում մը տալ, թէ այդ որոշումին կը հաւանէր, պայմանաւ որ նախարարութիւնն արգիլուի ո՛չ թէ հիմակուան բոլոր երեսփոխաններուն, այլ միայն պարոն Միրապոյի, Էքսի երեսփոխանին։ Այսքան անկեղծութիւն և խիզախութիւն ապարդիւն մնացին, և որոշումը ընդունուեցաւ միաձայնութեամբ։

Կը տեսնուի թէ Պետութիւնը ինչպէս պառակտուած էր տարագիրներուն, Թագուհիին, Թագաւորին, և Լաֆայէթի, Միրապոյի, Պառնավի և Լամէթներու պէս ժողովրդային զանազան պետերուն միջեւ։ Երկար ատենի համար այլեւս անկարելի էր ո և է վճռական պատահար, Յուլիս 14ի կամ Հոկտ. 5ի պատահարին պէս։ Հարկ էր որ նոր անախորժութիւններ զայրացնէին արքունիքն ու ժողովուրդը, և փայլուն խզում մը առաջ բերէին։

Ժողովը փոխադրուած էր Բարիզ(*), համայնքին կողմէ անդորրութեան կրկ-

---

(*) Միրապոյի, ինչպէս բոլոր գերազանց մարդոց վրայ, շատ մեծութեան քով շատ ալ պզտիկութիւն կայ։ Ունէր բուռն երեւակայութիւն մը, զոր հարկ էր յոյսերով գրաւել, օրօրել։ Անկարելի էր նախարարական պաշտօն տալ իրեն առանց խորտակելու իր ազդեցութիւնը, և հետեւաբար առանց

բուն մաքառումին Ռուշչուքլեքի, որ ո՛չ ամենէն իսկ ջերմ կուսակից կ'երեււար Ժողովուրդին և աղքատներուն։ Այս օրէնքին ուժովը, քաղաքային վարչութիւնները պատասխանատու էին հանրային անդորրութեան. խռովութեանց պարագային, պարտաւոր էին զինուորական ուժի դիմել կամ քաղաքապահներուն, և երբեք անգամ հրաւէր կարդալէ վերջ պարտաւոր էին բռնի ույժ գործածել խռովարարական համախմբութեանց դէմ։ Քննական մասնախումբ մը հաստատուեցաւ Բարիզի համայնքային խորհուրդին և Ազգային Ժողովին մէջ հսկողութեան տակ առնելու համար բազմաթիւ թշնամիներ, որոնց մեքենայութիւնները կը ճիւղաւորուէին ամէն կողմ։ Այս միջոցները աւելորդ բաներ չէին ի դերեւ հանելու համար նոր յեղափոխութեան դէմ դաւող ո՛րքան հակառակորդներու ծրագիրները։

Սահմանադրական աշխատութիւնները գործունէութեամբ առաջ կը տարուէին։ Աւատականութիւնը ջնջուած էր, բայց կը մնար վերջին միջոց մըն ալ ձեռք առնել խորտակելու համար ա՛յն ատուար մարմինները, որոնք Պետութեան մէջ Պետութեան դէմ կազմակերպուած թշնամիներ եղած էին։ Կղերը առանձին կալուածներ ունէր։ Ընդունուած էր զանոնք իշխաններէն իբրեւ աւատական նուիրաբաշխութիւններ, կամ հաւատացեալներէն իբրեւ կտակ։ Եթէ աշխատութեան պտուղ և նպատակ եղող անհատական սեփականութիւնները պէտք էր որ յարգուէին, մասնաւոր նպատակի մը համար կազմակերպուած մարմիններու տրուածները պէտք էր տարբեր կարգադրութիւն մը ընդունէին օրէնքէն։ Կրօնքի ծառայութեան համար, կամ գոնէ այդ պատրուակին տակը տրուած էին. արդ, կրօնքը հանրային սպասարկութիւն մը ըլլալով՝ օրէնքը կրնայ անոր պէտքերուն հասնելու միջոցը կանոնաւորել բոլորովին տարբեր կերպով մը։ Աբբա Մօրի պարզեց հոս իր անխռով լեզուանիութիւնը. տաղանդը հնչեցուց կալուածատէրերուն գլխուն, մօտալուտ ոտնձգութեան մը սպառնալիքը չողացուց անոնց աչքին, և պնդեց թէ խեղճ գաւառները կը զրկուէին դրամագլխի տէրերու, սեղանաւորներուն, լումայափոխներուն, վաշխառուներուն։ Իր բանդէտի ճամարտակութիւնները իրենց եզականութեանը համար կ'արժէ պատմել։ Պարտքեր վճարելու համար տրամադրելի էին կղերին գոյքերը. այդ պարտքերուն տանելիքուորները Բարիզի մեծ դրամատէրներն էին. անոնց զոհ տրուած ստացուածքները գաւառներուն մէջ կը դրանուէին. ասկէց խորին ու անվեհեր տրամաբանութիւնը կ'եզրակացնէր թէ ասիկա գաւառը մայրաքաղաքին զոհել էր. որպէս թէ գաւառը չէր շահեր ի չզոյշ այդ առհազնածուայ հողերուն նոր բաժանումէ մը, որոնք մինչեւ ցարդ վերապահուած են քանի մը զատարկապորտ եկեղեցականներու պերճանքին։ Իր բոլոր ձիգերը ապարդիւն եղան։ Օթէօնի եպիսկոպոսը, իր առաջարկութեան հեղինակն էր, և երեսփոխան Թուրէ քայքայեցին այս մասին ճամարտակութիւնները։ Արդէն իսկ վճռուելու վրայ էր թէ կղերին գոյքերը պետութեան կը վերադարձէին. սակայն ընդդիմադիրները դեռ կը ծանրանային սեփականութեան հարցին վրայ։ Իրենց կը պատասխանուէր թէ, սեփականատէր իսկ ըլլային, կարելի էր իրենց սեփականութիւնները գործածել, քանի որ յաճախ այդ սեփականութիւնները ի չար Պետութեան գործածուած էին ստիպողական պարագաներու մէջ։ Այս կէտը չէին ուրանար։ Այս խոստովանութենէն օգուտ քաղելով, այն ատեն Միրապօ առաջարկեց կը վերադարձին բառը փոխել Պետութեան տրամադրութեան տակ են բառին, և միաձայնութիւնը իսկոյն

վերջացաւ ատոր Սահմանադրութեամբ (Նոյեմբեր 2ի օրէնք)։ Ժողովը այսպէս քանդեց կղերին անհարկու զօրութիւնը, կարգեց Ջոջերուն սեփհանքը, և ձեռք անցուց դրամական ա՛յն ահագին աղբիւրները՝ որոնք ա՛յնքան երկար ատեն կերակրեցին յեղափոխութիւնը։ Միևնոյն ատեն կ'ապահովէր աշխարհիկ եկեղեցականու ապրուստը, վճարելով որ իրենց տարեթոշակը՝ պէտք չէ հազար երկու Ֆրանքէն պակաս ըլլայ, և անոնց տրամադրութեան տակ դրաւ նաև երիցատուն մը և պարտէզ մը։ Կը յայտարարէր թէ, այլ ևս չի ճանչնար կրօնական ուխտերը, և ազատութիւն կը պարգևէր բոլոր վանականներուն, սակայն ուզողները արտօնելով չարունակելու վանական կեանքը, և որովհետև իրենց կալուածները ջնջուած էին, թոշակներ կը սահմանուէին ի փոխարէն։ Կանխահոգութիւնը մինչև իսկ աւելի հեռուն տանելով, արդարութիւն մը կը հաստատէր հարուստ միաբանութիւններուն ու մուրացիկ միաբանութիւններուն միջև, և երկուքին ալ թոշակը համեմատական կ'ընէր իրենց հին վիճակէն։ Հանգստեան թոշակներուն համար ալ նոյնը ըրաւ. և երբ Ցանսենական Գամիւս, աւետարանական պարզութեան դառնալ ուզելով, բոլոր հանգստեան թոշակները վերածել յանհունս դոյզն սակի մը, Ժողովը, Մերլէնի խորհուրդով, զանոնք վերածեց իրենց արդի արժէքին համեմատաբար և թոշակառուներու հին վիճակին պատշաճական։ Ուրեմն անկէց աւելի հեռուն կարելի չէր տանիլ ունակութիւններու յարգանքը, և ահա՛ ասոր մէջ կը կայանայ սեփականութեան բուն յարգանքը։ Այնպէս ալ, երբ Նանթի հրովարտակին յետս կոչումէն ի վեր տարագրուած բողոքականները իրենց ստացուածքները պահանջեցին, Ժողովը չծախուածները միայն դարձուց անոնց։

Անձերու մասին խոհեմ և յարգալից, բայց իրերուն հետ յանդգնաբար կը վարուէր, և սահմանադրական խնդիրներու մէջ աւելի խիզախ կ'երևար։ Ջոջերուն առանձնաշնորհումները հաստատուած էին. կը մնար երկրին հողը բաժնել։ Հողերը մինչև գաւառներու համեմատ բաժնուած էին, իրենց հին Ֆրանսայի հետ միացուելուն ատենաշրջանովը։ Այդ գաւառները, իրարմէ տարբեր օրէնքներով, առանձնաշնորհումներով, բարքերով, յոյժ այլասեռ ամբողջութիւն մը կը ձևացնէին։ Սիէյէս գաղափարը ունեցաւ զանոնք իրար խառնելու նոր բաժանումով մը՝ որ ջնջէ հին սահմանները, և երկրին բոլոր մասերը վերածէ միևնոյն օրէնքներուն և միևնոյն ոգիին։ Ինչ որ եղաւ նոր գաւառամասերու (տէբարթըման) բաժանումով։ Տէբարթըմանները բաժնուեցան գաւառներու, և գաւառակները քաղաքային վարչութիւններու։ Այս բոլոր ստորիճաններուն վրայ՝ ընդունուեցաւ ազգային ներկայացուցչութեան կամ քուէարկութեան սկզբունքը։ Գաւառներուն, գաւառակներուն, համայնքներուն կամ քաղաքապետական, գիւղական վարչութեան կառավարական գործերը յանձնուեցան խորհրդակցական ժողովի մը և գործադիր ժողովի մը, երկուքն ալ ժողովրդային ընտրութեամբ։ Այս զանազան իշխանութիւնները իրարմէ կախում ունէին, և միևնոյն իրաւասութիւնները ունէին իրենց շրջանակի տարածութեան մէջ։ Գաւառը կը կատարէր տուրքին բաշխումը գաւառակներուն միջև, գաւառակը համայնքներուն միջև, և համայնքը անհատներուն միջև։

Ժողովը յետոյ հաստատեց քաղաքական իրաւունքներ վայելող քաղաքացիին պայմանները։ Պահանջեց քսանհինգ տարի և ութը ունկի (մարգ) արծաթի տուրք։ Այս պայմանները ցոյց տուող իւրաքանչիւր անհատ գործօն քաղաքացիի անունը ունէր, և չունե-



ԼԱՖԱՅԵԹ ԴԷՊԻ ՎԵՐՍԱՅԼ

ցողներն ալ կրաւորական քաղաքացի կը կոչուէին : Այս ըստ բաւականին պարզ յորջորջումները հեղնական դարձան, որովհետեւ մարդիկ երբ բանի մը արժէքը նուաղեցնել կ'ուզեն յորջորջումներուն, անուններուն կը կառչին, բայց այս անունները բնական են և լաւ կը բացատրէին իրենց նպատակը : Գործօն քաղաքացին ընտրութիւններուն կը մասնակցէր վարչային և ընդհանուր ատեաններու կազմութեան համար : Երեսփոխաններու ընտրութիւնները երկու աստիճան ունէին : Ընտրելի ըլլալու համար ո՛չ մէկ պայման չէր պահանջուեր, որովհետեւ, ինչպէս որ Ժողովին մէջ ըսուեցաւ, մարդ ընտրող է քանի որ գոյութիւն ունի ընկերութեան մէջ, և պէտք է ընտրելի ըլլայ միմիայն իր ընտրողներուն վստահութեամբը :

Այս աշխատութիւնները, պարագայական հազարաւոր վիճաբանութիւններով ընդհատուած, մեծ եռանդով ա-

ռաջ կը մղուէին սակայն։ Աջակողմը զանոնք խափանելու մասին իր յամառութեամբը միայն կը մասնակցէր, և կը յամառէր ամէն ատեն որ առիթը գտնէր ազգին ազդեցութեան սա՛ կամ նա՛ մասին վրայ վէճ բանալու։ Ընդհակառակն, ժողովրդային երեսփոխանները, թէեւ զանազան կուսակցութիւններ կազմած, իրարու կը միանային կամ կ'անջատուէին առանց բաղխումի, իրենց անձնական կարծիքին համեմատ։ Դիւրին էր տեսնել թէ կուսակցական միութիւններուն թելադրողը, անոնց վրայ տիրողը անձնական համոզումն էր միայն։ Թուրէ, Միրապօ, Տիւբօռ, Սիէյէս, Պառնաւ, Շափըլիէ մերթ կը միանային, մերթ կ'անջատուէին, մէն մի վիճաբանութեան մէջ իրենց անձնական կարծիքին համեմատ։ Գալով ազնուականութեան և կղերին անդամներուն, կուսակցական վիճաբանութիւններու մէջ միայն կ'երեւնային անոնք։ Գաւառական ժողովները երբ Ընդհանուր ժողովին դէմ որոշումներ տային, երբ երեսփոխաններ կամ գրագէտներ Ընդհանուր Ժողովին նախատական ընթացք մը բռնէին, կղերն ու ազնուականք կազմ և պատրաստ էին անոնց ոյժ տալու։ Անոնք ժողովուրդին դէմ կը պաշտպանէին զինուորական հրամանատարները, գերեվաճառները գերիներուն դէմ. կ'առարկէին հրեաներուն և բողոքականներուն ընդունելութեան հանրային իրաւունքներու վայելումին մէջ։ Վերջապէս երբ Ճենովա Ֆրանսայի դէմ եղաւ Գորսիքայի ազատագրութեան և այդ կղզին Ֆրանսայի հետ միացնելուն պատճառաւ, անոնք Ճենովայի դէմ եղան Ֆրանսայի դէմ։ Մէկ խօսքով, ամէն օգտակար վիճաբանութիւնու հանդէպ օտար, անտարբեր, մտիկ չընող, ժողովի ատեն իրարու հետ խօսող կղերն ու ազնուականները, այն ատեն ոտքի կ'ելլէին, երբ ազատութիւն մը կամ իրաւունքներ կային մերժելիք(*)։

*) Շահեկանութենէ զուրկ չէ Ֆերիէռի կարծիքն իմանալ այն եղանակին վրայ՝ որով իր սեփական կուսակցութեան երեսփոխանները կը վարուէին ժողովին մէջ։

«Ազգային ժողովին մէջ, կ'ըսէ Ֆերիէռ, գրեթէ երեք հարիւր անդամներ միայն կային, ճշմարտապէս ուղղամիտ մարդիկ, կուսակցական ոգիէ զերծ, սա՛ կամ նա՛ ակումբին օտար, բարին կամենալով, միմիայն բարւոյն համար, միաբանական, դասակարգային շահերէ անկախ, միշտ պատրաստ ընդգրկելու ամէնէն արդար, ամէնէն օգտակար առաջարկութիւնը, խնդիր չէ թէ ուրկէց կը բղխէր և ուրկէց ոյժ կը գտնէր։ Իրենց կոչուած պատուաւոր պաշտօնին արժանի այս մարդիկն են որ շինեցին ի՛նչ լաւ օրէնք որ դուրս ելած է Սահմանադրական Ժողովէն. անոնք են որ անոր չըրած չարիքը խափանեցին։ Բարին միայն որդեգրելով, և վտարելով միշտ ինչ որ յոռի է, յաճախ մեծամասնութիւնը շահեցուցին այն խորհրդակցութիւններուն, որոնք, առանց անոնց, պիտի մերժուէին կուսակցական ոգիով, յաճախ մերժեցին այն առաջարկութիւնները, որոնք, առանց անոնց, պիտի ընդունուէին շահակցական ոգիով։

Այս մասին չեմ կրնար զսպել անձս և դիտել չտալ ազնուականներուն և եպիսկոպոսներուն անքաղաքագիտական վարմունքը։ Որովհետև անոնց նպատակն էր մի միայն Ժողովը լուծել, անոնց գործողութիւնները անպատուել, ո՛չ միայն չէին ընդդիմանար յոռի վճիռներու, այլ անըմբռնելի անտարբերութիւն մը ցոյց կու տան այս նկատումով։ Սրահէն դուրս կ'ելլէին երբ նախագահը որոշակարգը կը դնէր, իրենց հետեւէն քաշելով իրենց կուսակցութեան երեսփոխանները, կամ, եթէ մնային, կը պոռային անոնց որ խորհրդակցու-

Արդէն ընինք, այլեւս կարելի չէր մեծ դաւադրութիւն մը փորձել Թագաւորին մօտ, քանի որ ազնուականները փախուստ տուած էին, և արքունիքը շրջապատուած էր ժողովէն, ժողովուրդէն և ազգային պահնորդութենէն։ Ուրեմն դժգոհները առ առաւելն մասնակի շարժումներ միայն կրնային փորձել։ Կը խմորէին իրերու հին կարգի կառչող սպաներուն յոռի տրամադրութիւնները, մինչ զինուորները նորին կողմը կը հակէին, ուսկից կրնային ամէն բան շահիլ։ Բուռն կռիւներ տեղի կ'ունենան բանակին և խուժանին միջեւ. յաճախ զինուորները իրենց պետերը կը յանձնէին ամբոխին, որ կը կոտորէր զանոնք, երբեմն ալ անվստահութիւնները բարեբախտաբար կը հանդարտէին, և ամէն ինչ կը խաղաղէր երբ քաղաքներուն հրամանատարները կարենային քիչ մը ճարպիկութեամբ վարուիլ և հաւատարմութեան երդում ընէին նոր Սահմանադրութեան։ Կղերը բողոքներով ողողած էր Պարլամանը գաւառը իր ստացուածքներուն յափշտակութեան դէմ։ Կը ջանային կրօնական մոլեռանդութեան մնացորդները գրգռել գաւառներուն մէջ ուր հին աւելորդապաշտութիւնը տակաւին կը տիրէր։ Գաւառային աւագաժողովներն ալ գործածուեցան, և անոնց հեղինակութեան վերջին փորձն ալ փորձուեցաւ։ Կեդրոնական ազգային ժողովը անոնց արձակուրդը երկարաձգեց, որովհետեւ չէր ուզեր վէճի բռնուիլ անոնց հետ, թէեւ միտքը դրած էր լուծել զանոնք։ Արձակուրդի ատեանները դատական գործերը կը վարէին անոնց բացակայութեանը։ Ռուանի, Նանսի, Ռէնի մէջ վճիռներ կուտային, որոնցմով ցաւ կը յայտնուէր հին միապետութեան կործանումին, անոր օրէնքներուն բռնաբարութեան վրայ, և,

---

թեան չմասնակցին։ Գլխապականք, այս լքումին հետեւանքով, ուզածնին կը վճռէին բոլոր։ Եպիսկոպոսները ու ազնուականները, հաստատապէս համոզուած ըլլալով թէ իրերու նոր նոր պիտի չյարատեւէ, կ'աճապարէին տեսակ մը անհամբերութեամբ, անոր անկումը փութացնելու յոյսով, ինչպէս նաեւ միապետութեան կործանումը, և իրենց իսկ կործանումը։ Այս անմիտ վարմունքին կը միացնէին նախատական անհոգութիւն մը, թէ՛ ժողովին և թէ նիստերուն ներկայ եղող ժողովուրդին համար։ Մտիկ չէին ըներ, կը ծիծաղէին, բարձրաձայն կը խօսէին, այսպէս ժողովուրդը հաստատելով իրենց մասին գոյացուցած աննպաստ կարծիքին մէջ. և փոխանակ անոր վստահութիւնն ու յարգանքը շահիլ աշխատելու, անոր ատելութիւնն ու արհամարհանքը վաստկելու միայն կ'աշխատէին։ Բոլոր այս խելառութեանց չարժառիթը ա՛յն էր որ եպիսկոպոսներն ու ազնուականները չէին կրնար համոզուիլ թէ յեղափոխութիւնը երկար ատենէ ի վեր բոլոր Ֆրանսացիներուն կարծիքին և սիրտին մէջ էր։ Կ'երեւակայէին այս թումբերուն օգնութեամբ զսպել ամէն օր ստուարացող հեղեղը։ Ասով կը չեղջակուտէին անոր ջուրերը, ա՛լ աւելի աւերում կ'առթէին, յամառութեամբ կառչելով հին ըէժիմին, որ խարխուլ էր իրենց բոլոր գործողութեանց, իրենց բոլոր ընդդիմութեանց, այլ զոր ո՛չ ոք կ'ուզէր։ Այս ձախաւեր յամառութեամբ կը բռնադատէին յեղափոխականները իրենց առաջադրած նպատակէն ալ անդին տարածելու յեղափոխական դրութիւնը։ Այնուհետեւ ազնուականներն ու եպիսկոպոսները անարդարութիւն, բռնաւորութիւն կ'աղաղակէին։ Իրենց իրաւունքներուն հնութեան և օրինաւորութեան վրայ կը խօսէին ա՛յնպիսի մարդոց՝ որոնք ըրած էին բոլոր իրաւունքները խարխուլը»։

(Յիշատակագիրք Ֆերիէռի, հատոր Բ, էջ 125։)

տուանց Ազգային Ժողովին անունը տալու, կարծես զայն մասնանիշ կ'ընէին իբրև բոլոր չարիքներու պատճառ։ Այս պէս ընողները դատարանի կանչուեցան և չափաւորութեամբ յանդիմանուեցան։ Ռէնի Աւագաժողովը, իբրև աւելի յանդուգն, իր պաշտօնը կատարելու անկարող հռչակուեցաւ։ Մէցի Աւագաժողով'ը իր յայտարարութեան մէջ թաքուն կերպով կը հասկցնէր թէ թագաւորը ազատ չէր։ Ահա՛ այս էր, ինչպէս ըսինք, դժգոհներուն քաղաքականութիւնը։ Չկրնալով թագաւորը գործածել, կը ջանային զայն հարստահարուած վիճակի մէջ ներկայացնել, և այսպէս կ'ուզէին չեղեալ համարիլ բոլոր օրէնքները՝ որոնց կը թուէր ան հաւանիլ։ Կարծես ինքն ալ ուժ կուտար այս քաղաքականութեան։ Չէր ուզած ետ կանչել Հոկտ. 5 և 6ին ճամբած իր արքայական պահնորդները, և ինքզինքը պահել կուտար ազգային քաղաքապահներէն, որոնց մինչև իր ապահով ըլլալը գիտէր։ Իր դիտումն էր գերի երևնալ։ Բարիզի համայնքային ժողովը ի դերև հանեց այս շատ ճղճիմ խարամանկութիւնը, խնդրելով թագաւորէն որ ետ կանչէ իր պահնորդները, ինչ որ մերժեց անոսր պատրուակներով և թագուհիին միջոցաւ(*)։

1790 տարին նոր սկսած էր, և ընդհանուր յուզում մը զգալի կ'ըլլար։ Հոկտ. 5 և 6էն ի վեր բաւական հանդարտ երեք ամիսներ անցած էին, բայց մտատանջութիւնը կը թուէր նորոգուիլ։ Մեծ վրդովումներուն հանգիստներ կը յաջորդէին, և այս հանգիստներուն մանր ճգնաժամեր մինչև աւելի մեծ ճգնաժամերը։ Այս խռովութեանց պատճառ կ'ամբաստանուէին կղերը, ազնուականները, արքունիքը, նոյն իսկ Անգլիան, որ պաշտօն յանձնեց իր դեսպանին արդարացնել զինքը։ Ազգային պահնորդութեան թոշակաւոր գունդերը անգամ

(*) Արքայական պահնորդներուն ետ կանչուիլը առիթ տուաւ մանրավէպի մը զոր կ'արժէ պատմել։ Թագաւորը գանգատ կը յայտնէր Լաֆայէթի թէ թագաւորը ազատ չէր, և սոր իբր ապացոյց մէջ կը բերէր թէ դղեակին պաշտպանութիւնը կը կատարուէր ազգային պահակներէն և ո՛չ թէ արքայական պահնորդներէն։ Լաֆայէթ հարցուց իրեն անմիջապէս թէ կը փափաքիմ այս վերջիններուն ետ կանչուելուն։ Թագուհին նախ վարանեցաւ պատասխանելու անոր, բայց չհամարձակեցաւ մերժել այս ետ կանչուելուն առթիւ զօրավարին ըրած առաջարկը։ Լաֆայէթ իսկոյն քաղաքապետութեան գնաց, որ, իր դրդումին վրայ, պաշտօնապէս խնդրեց թագաւորէն ետ կանչել իր պահնորդները, դղեակին պաշտպանութիւնը անոնց և քաղաքապահներուն միջև բաժնելու համար։ Թագաւորն ու թագուհին այս խնդրանքը նկատառութեամբ չըլսեցին. բայց շատ չանցած ասոր հետեւութիւնները իրենց զգացնողներ եղան, և իրենց ազատ երևնալը չուզողները յորդորեցին մերժողական պատասխան տալ։ Սակայն դժուար էր մերժումը պատճառաբանել, և թագուհին, որուն յաճախ կը յանձնուէին դժուարին յանձնարարութիւնները, վրան առաւ ըսել Լաֆայէթի թէ քաղաքապետութեան առաջարկութիւնը չընդունիր։ Տուած շարժառիթն ալ սա՛ էր որ չէին ուզեր արքայական պահնորդները ջարդուելու վտանգին ենթարկել։ Սակայն Լաֆայէթ քիչ առաջ անոնցմէ մին լսած էր որ համազգեստով կը պտըտէր արքայական պալատին մէջ։ Այս իրողութիւնը հաղորդեց թագուհիին, որ ա՛լ աւելի շփոթուեցաւ, բայց պնդեց իր դիտաւորութեան մէջ, զոր ստանձնած էր արտայայտելու։

տօգորուեցան այս ընդհանուր անհանդստութեններէն։ Շան ղ'Էլիզէի մէջ հաւաքուած քանի մը զինուորներ թոշակի յաւելում կը պահանջէին։ Լաֆայէթ, ամենուրեք ներկայ, վազեց, ցրուեց զանոնք, պատժեց ու անդորրութիւնը վերահաստատեց իր զօրականին մէջ, որ միշտ հաւատարիմ էր կարգապահութեան այդ թեթեւ ընդմիջումներուն հակառակ։

Կը խօսուէր մանաւանդ Ժողովին և քաղաքապետութեան դէմ՝ դաւադրութեան մը վրայ, որուն ենթադրեալ պետն էր Ֆավրաս մարքիզը։ Փայլուն կերպով ձերբակալուելով յանձնուեցաւ Շաթըլէի։ Իսկոյն զրոյց տարածուեցաւ թէ Պայիի և Լաֆայէթ պիտի սպաննուէին, թէ Վերսայլի մէջ հազար երկու հարիւր ձիաւոր պատրաստ էին Թագաւորը փախցնելու, թէ Զուիցերիացիներէ և Բրէմօնդեցիներէ բաղկացեալ բանակ մը պիտի ընդունէր զայն և Բարիզի վրայ պիտի քալէր։ Տագնապը ընդարձակուեցաւ. կ'աւելցնէին թէ Ֆավրա ամենաբարձր անձնաւորութիւններու գաղտնի գործակալն էր։ Կասկածներ ուղղուեցան Թագաւորին եղբօրը վրայ։ Ֆավրա Թագաւորին պաշտպանողներուն մէջ գտնուած էր և անոր հաշուոյն փոխառութեան մը մասին բանակցած էր։ Թագաւորին եղբայրը, միտքերու յուզումէն սարսափահար, Քաղաքապետարան ներկայացաւ, իրեն մասին եղած վերագրումներուն դէմ բողոքեց, Ֆավրայի հետ ունեցած իր յարաբերութիւնները բացատրեց, յիշեցուց իր ժողովրդային տրամադրութիւնները, զորս երբեմն յայտնած էր Երեւելիներու Ժողովին մէջ, և պահանջեց որ դատուի ոչ թէ հանրային զրոյցներու վրայ, այլ իր ծանօթ և բնաւ չհերքուած հայրենասիրութեան վրայ(*)։ Իր ճառը ընդհանուր ծափերով ընդունուեցաւ, և ամբոխին կողմէ առաջնորդուեցաւ մինչեւ իր բնակարանը։

Ֆավրայի դատավարութիւնը շարունակուեցաւ։ Այս Ֆավրան ամբողջ Եւրոպայի շրջանը ըրած էր, կարգուած էր օտար իշխանուհիի մը հետ, և ծրագիրներ կը չինէր իր բախտը վերահաստատելու համար։ Շինած էր Յուլիս 15ին, Հոկտ. 5ին և 6ին ու 1790ի առաջին ամիսներուն։ Զինքը ամբաստանող վկաները իր վերջին յատակագիծը կը ճշդէին։ Այս յատակագծին մաս կը

(*) Քաղաքապետարանին մէջ Թագաւորին եղբօր խօսած ճառը հատուած մը կը պարունակէ զոր կ'արժէ նշանակել հոս։

«Գալով իմ անձնական կարծիքներուս, ըսաւ այս բարձր անձնաւորութիւնը, վստահութեամբ պիտի խօսիմ անոնց մասին իմ քաղաքակիցներուս։ Այն օրէն ի վեր երբ երեւելիներու երկրորդ ժողովին մէջ կարծիքս յայտնեցի միտքերը բաժնող հիմնական հարցին վրայ չդադրեցայ համոզուելէ թէ մեծ յեղափոխութիւն մը պատրաստուած էր. թէ Թագաւորը, իր դիտաւորութիւններով, իր առաքինութիւններով և իր վերին դիրքով պէտք է անոր պետը ըլլայ, քանի որ յեղափոխութիւնը չէր կրնար շահաբեր ըլլալ ազգին առանց հաւասարապէս շահաբեր ըլլալու վեհապետին. վերջապէս թէ արքայական իշխանութիւնը պէտք էր ազգային ազատութեան պատնէշը ըլլա՛լ, և ազգային ազատութիւնն ալ արքայական հեղինակութեան խարիսխը։ Թո՛ղ ըսեն թէ իմ գործերէս ո՞րը, իմ խօսածներէս ո՞րը հակառակ եղած է այս սկզբունքներուն, և ո և է պարագայի մէջ ուր գտնուած եմ, իմ տեսութիւններուս և խորհուրդներուս միակ առարկան կաղմած չըլլայ Թագաւորին և ժողովուրդին երջանկութիւնը։ Մինչեւ հոս իրաւունք ունիմ որ խօսքիս հաւատացուի. ո՛չ զգացում փոխած եմ ոչ սկզբունք, և պիտի չփոխեմ ալ բնաւ»։

կազմէին Թերեւս Պայիի և Լաֆայէթի սպաննութիւնը, թագաւորին փախուստը, բայց ապացոյց մը չկար թէ հազար երկու հարիւր ձիաւորներ պատրաստ եղած ըլլային, ոչ ալ շարժման մէջ զուիցերիական կամ բիէմոնդական բանակ մը։ Դաւադիրները անյայտ էին Ֆավռայի։ Շամբըլէն վերջերս բանտէն արձակած էր Պէզանվալը և Յուլիս 14ի դաւին մէջ մաս ունեցող ուրիշներ. հանրային կարծիքը դժգոհ էր։ Այսուհանդերձ Լաֆայէթ վստահացուց Շամբըլէի անդամները, խնդրեց որ արդար ըլլան, և խոստացաւ թէ իրենց վճիռը, ի՛նչ ալ ըլլար, պիտի գործադրուէր։

Այս դատավարութիւնը կասկածներ ծնցուց արքունիքին դէմ։ Այս նոր ծրագիրներէն կ՚երեւար թէ անիկա ուղղուելիք չունի. որովհետեւ Բարիզի մէջ իսկ անոր դաւեր սարքելը կը տեսնուէր՝ Հետեւաբար Թագաւորին խորհուրդ տուին ունենալ փայլուն ընթացք մը՝ որ կարենար գոհ թողուլ հանրային կարծիքը։

1790 Փետր. 4ին ժողովը զարմացաւ քանի մը փոփոխութիւններ տեսնելով սրահին յարդարանքին մէջ։ Շունածաղիկներ բանուած գորգ մը դիւանին աստիճանները կը ծածկէր. քարտուղարներուն Թիկնաթոռը վարօք դրուած էր, նախագահը ոտքի կեցած էր աթոռին մօտ՝ ուր սովորաբար բազմած կ՚ըլլար։ «Ահա՛ Թագաւորը», կը գոչեն յանկարծ բարապանները,՝ և Լուի ԺԶ. իսկոյն սրահ կը մտնէ։ Ժողովը ոտքի ելաւ զայն տեսնելուն, և ընդունուեցաւ ծափերու մէջէն։ Արագ արագ դիմող հանդիսատեսներու խումբ մը գրաւեց բեմերը, ամենամեծ անհամբերութեամբ արքայական խօսքերուն սպասելով։ Լուի ԺԶ. ոտքի վրայ խօսեցաւ նստած ժողովին։ Յիշեցուց նախ Ֆրանսայի նշաւակ եղած խռովութիւնները, զանոնք խաղաղելու և ժողովուրդին պարէնը ապահովելու համար իր ըրած ջանքերը. քաղուածը ըրաւ երեսփոխաններուն աշխատութեանց, յայտարարելով թէ ինք ալ միեւնոյն բաներն փորձած էր գաւառային ժողովներուն մէջ. վերջապէս ցոյց տուաւ թէ ինք ալ ամենօք յօժարած է հիմա իրականացած բաղձանքները։ Աւելցուց թէ յատկապէս պէտք կը զգայ ազգին ներկայացուցիչներուն միանալու՝ ա՛յն պահուն մանաւանդ երբ իր հաւանութեան ենթարկուած են երկրին մէջ նոր կազմակերպութիւն մը հաստատելու սահմանուած վճիռները։ պիտի նպաստէ, ըսաւ, իր բոլոր ուժովը այս ընդարձակ կազմակերպութեան յաջողութեան. ամէն հակառակ փորձ ոճիր պիտի նկատուի և բոլոր միջոցներով պիտի հալածուի։ Այս բաներուն վրայ թնդացին ծափերը։ Թագաւորը կը շարունակէ, և իր իսկ զոհողութիւնները յիշեցնելով, ոև է բան կորսնցնողները կը յորդորէ նմանիլ իր համակերպութեան և իրենց վնասները փոխարինել նոր Սահմանադրութեամբ Ֆրանսայի խոստացուած բարիքներով։ Բայց երբ այս Սահմանադրութիւնը պաշտպանել խոստանալէն վերջ կը յարէ թէ ա՛լ աւելին պիտի ընէ, և թէ Թագուհիին հետ համախորհուրդ, իր զաւկին միտքն ու սիրտը կանուխէն պիտի պատրաստէ իրերու նոր կարգին, և պիտի վարժեցնէ զայն երջանիկ ըլլալ Ֆրանսացիներուն երջանկութեամբը, սիրագորով աղաղակներ կը բղխին ամէն կողմերէ, բոլոր ձեռքերը կ՚ուղղուին դէպի վեհապետը, բոլոր աչքերը կը փնտռեն մայրն ու զաւակը, բոլոր ձայները զանոնք կը խնդրեն. ցնծութիւնը ընդհանուր է։ Վերջապէս Թագաւորը իր ճառը կը վերջացնէ պաշտպանելով միաբանութիւն և խաղաղութիւն այս բարի ժողովուրդին որուն կը հաւաստեն զինքը թէ կը սիրեն, երբ կ՚ուզեն իր վիշտերուն վրայ

մխիթարել զինքը (*)։ Այս վերջին խօսքերուն վրայ, բոլոր ներկաները երախտագիտութեան հաւատարիմներ ցոյց տուին հրճուանքով։ Նախագահը կարճ պատասխան մը տալով, կ'արտայայտէ բոլոր սիրտերուն մէջ տիրող զգացումներուն անկարգութիւնը։ Ամբոխէն վեհապետ կրկին կ'առաջնորդուի Թիւյլըրի։ Ժողովը շնորհակալութիւն կը քուէարկէ իրեն և թագուհիին։ Նոր

---

* Այս պարագային մէջ թագաւորին արտասանած ճառն այնքան նշանաւոր է որ հարկ է յիշատակել զայն քանի մը դիտողութիւններով։ Այս իշխանը, պատուական և խիստ առաքինի, շարունակ վարանումի մը մէջ էր, և վայրկեաններ կային որ շատ ճշդութեամբ կը տեսնէր իր անփական պարտականութիւնները և արքունիքին սխալ ճամբաները։ Փետր. 4ին արտասանած ճառին մէջ տիրող շեշտը բաւական կ'ապացուցանէ թէ իր խօսքերը խաբուսիկ չէին, և իր ներկայ կացութեան ճշմարիտ զգացումովը կ'արտայայտուէր։

«Պարոններ, Հանրութիւնը ա՛յն պարագաներուն որոնց մէջ կը գտնուի Ֆրանսա՝ զիս ձեր մէջ կը քաշէ։ Բարեկարգութեան և հրութեան բոլոր կողերուն աստիճանական թուլացումը, արդարութեան առկախումը կամ անգործութիւնը, մասնաւոր զրկումներէ ծնած դժգոհութիւնները, հակառակութիւնները, դժբախտ տակլութիւնները, որոնք երկարատև երկպառակութիւններու անխուսափելի հետևանքն են, ելևմուտքին տագնապալից կացութիւնը և հանրային հարստութեան վիճակին վրայ անստուգութիւնները, վերջապէս միտքերուն ընդհանուր վրդովումը, ամէն ինչ կարծես միացած է վառ պահելու համար երկրին բարօրութեան և երջանկութեան ճշմարիտ բարեկամներուն մտահոգութիւնը։

«Մեծ նպատակ մը կը ներկայանայ ձեր նայուածքներուն, բայց պէտք է առաջ հասնիլ առանց աւելցնելու խռովութիւնը և առանց նոր ջղաձգութիւններու։ Պարտաւոր եմ ըսել թէ ես կը յուսայի որ աւելի մօտէն ու աւելի հանդարտ կերպով պիտի առաջնորդէի ձեզ այդ նպատակին, երբ մտածել կազմելի ձեզ ի ժողով գումարելու, և հաստատակաց բարօրութեան համար ի մի հաւաքելու ազգին ներկայացուցիչներուն հմտութիւնն ու կամքը. բայց իմ երջանկութիւնս և փառքս նուազ սերտօրէն կապուած չեն ձեր աշխատութիւններուն յաջողութեան։

«Անշուշտ հաստ արթնամտութեամբ մը այդ աշխատութիւնները երաշխաւորեցի ա՛յն ազդեցութեան դէմ, զոր անոնց վրայ կրնային ունենալ ձեր գտնուած դժբախտ պարագաները։ Անցեալ տարի Ֆրանսայի սարսափ եղող պարէնի նուազութեան տհաճեկումը հեռացուց բազմապատիկ հոգերով և առատ քանակութեամբ պարենաւորումներով։ Անկարգութիւնը զոր ի հարկէ առաջ պիտի բերէին ելևմուտքին հին վիճակը, վարկաբեկութիւնը, դրամին ծայրայեղ սակաւութիւնը և հասոյթներուն աստիճանական անկումը, մինչև հիմա խափանուեցաւ, գոնէ իր պայթումին և ծայրայեղութիւններուն մէջ։ Ամենուրեք մեղմացուցի, և գլխաւորապէս մայրաքաղաքին մէջ, աշխատութեան պակասութեան վտանգաւոր հետևութիւնները. և հակառակ իշխանութեան բոլոր միջոցներուն տկարացումին, երկիրը պահպանեցի, ոչ թէ, աւելորդ է ըսել, իմ փափաքած հանդարտութեան մէջ, այլ ա՛յնչափ մը անդորր վիճակի մէջ որ բաւէր ընդունելու համար խոհական և բարեկարգ ազատութեան մը բարիքը. վերջապէս հակառակ սա հանրական ծանօթ մեր

գաղափար մը կը ներկայանայ. Լուի ԺԶ. կուգար պատուոյ խօսք տալ պահպանելու Սահմանադրութիւնը. կարգը եկած էր երեսփոխաններուն նոյն յանձնառութիւնը ընելու։ Ուստի կ'առաջարկուի քաղաքացիական երդումը. և իւրաքանչիւր երեսփոխան կուգայ երդնուլ հաւատարիմ ըլլալ ազգին, օրէնքին և թագաւորին, և իր բոլոր կարողութեամբը պաշտպանելու Ազգային Ժողովէն

---

ներքին կացութեան, և հակառակ ուրիշ ազգութիւնները վրդովող քաղաքական փոթորիկներուն, պահպանեցի խաղաղութիւնը արտաքուստ, և Եւրոպայի բոլոր Պետութեանց հետ պահեցի յարգանքի և բարեկամութեան յարաբերութիւններ՝ որոնք կրնան ատեւական ընել այս խաղաղութիւնը։

«Այսպէս նախահոգ զգուշութեամբ մեծամեծ հակառակութիւններու դէմ, որոնք կրնային դիւրաւ ընդմիջել ձեր հոգածութիւնն ու աշխատութիւնները, կարծեմ հասած է վայրկեանը, որ Պետութեան շահը կը պահանջէ որ ա՛լ աւելի բացորոշ և աւելի ակներև երևնալով մը ընկերանամ գործադրութեան և յաջողութեան ամէն բանի զոր համախորհուրդ որոշեցիք յօգուտ Ֆրանսայի։ Ամէնէն մեծ առիթը ա՛յս է երբ իմ ընդունելութեանս կը մատուցանէք երկրին մէջ նոր կազմակերպութիւն մը հաստատելու սահմանուած հրովարտակները, որով յոյժ կարևոր և յոյժ բարեդէպ ազդեցութիւն մը պիտի գոյանայ հպատակներուս երջանկութեան և այս Պետութեան բարօրութեան համար։

«Գիտէք, Պարոններ, թէ տասը տարիէ աւելի է որ, և ա՛յնպիսի ժամանակի մը մէջ երբ ազգին բաղձանքը տակաւին արտայայտուած չէր գաւառական ժողովներու վրայ, ես սկսած էի վարչութեան այս տեսակը փոխանցել հին ու երկարատև սովորութեամբ նուիրագործուած տեսակէ։ Փորձը ցոյց տուած ըլլալով ինծի թէ այդ հաստատութեանց օգտակարութեան վրայ իմ յղացած կարծիքիս մէջ սխալած չէի, ջանացի միևնոյն բարիքը վայելել տալ թագաւորութեանս բոլոր գաւառներուն. և ընդհանուր վստահութիւնը ապահովցնելու համար նոր վարչութիւններուն, ուզեցի որ բոլոր քաղաքացիներէն ազատօրէն ընտրուածներն անոնց անդամներ։ Բայց դուք բարւոքեցիք այս տեսութիւնները մէկէ աւելի եղանակներով, որոնցմէ ամէնէն էականը անշուշտ ա՛յն խոհականօրէն պատճառաբանուած և հաստատ ստորաբաժանումն է, որ դասած է հին բաժանումները ակերպացնելով, և հաւասարակշռութեան ընդհանուր և կատարեալ դրութիւն մը հաստատելով, երկրին բոլոր մասերը ա՛լ աւելի կը միացնէ միևնոյն մտքին և միևնոյն շահուն։ Այս մեծ գաղափարը, այս փրկարար նպատակը բոլորովին ձեզ կը պարտինք. ո՛չ նուազ հարկ էր նաև ազգին ներկայացուցիչներուն կամքերուն միութիւնը, ոչ նուազ հարկ էր նաև անոնց արդար ազդեցութիւնը ընդհանուր կարծիքին վրայ, այսքան կարևոր փոփոխութեան մը վստահութեամբ ձեռնարկելու, և բանականութեան անունով յաղթելու համար ունակութեան և մասնաւոր շահերու ընդդիմութեանց։»

Ինչ որ հոս կ'ըսէ թագաւորը կատարելապէս ճիշդ է և շատ լաւ զգացուած։ Իրաւ է որ անկէց առաջ իր սկզբնական շարժումովը փորձած էր բոլոր բարեքումները, և վեհապետներուն քով հաղուագիւտ եղող օրինակ մը տուած էր, այսինքն կանխաւ հոգալ իրենց հպատակներուն պէտքերը։ Գաւառային նոր բաժանումի մասին իր ըրած գործերը ևս ամբողջ բարեմտութեան դրոշմը կը կրեն, որովհետև այդ բաժանումի խորք օգտակար էր կառա-



ՀԱՑԱԳՈՐԾ ՖՐԱՆՍՈՒԱՑԻ ՍՊԱՆՆՈՒԹԻՒՆԸ

վճռուած եւ թագաւորէն ընդունուած Սահմանադրութիւնը: Երկրորդականները, առեւտրական դասու պատգամաւորներն ալ կը պահանջէին նոյն երդումը ընել

---

վարութեան, խորտակելով ինչ ինչ գաւառային մասերուն կողմէ յարուցուած ընդդիմութիւնները։ Հետեւաբար ամէն ինչ կը մղէ մեզ հաւատալու թէ թագաւորը հոս կատարեալ անկեղծութեամբ կը խօսի։ Կը շարունակէ.

«Իմ տրամադրելի բոլոր միջոցներովս պիտի նպաստեմ, պիտի աջակցիմ յաջողութեանը այս ընդարձակ կազմակերպութեան՝ ուրկէց կախում ունի Ֆրանսայի փրկութիւնը. և հարկ կը համարիմ ըսել թէ երկրին ներքին կա-

իրենց կարգին. ըսմերը, ամփիթատրոնները անոնց կը հեռանէին. և ամէն կողմերէ կը լսուի միմիայն սա խօսքը. Կ'երդնո՛ւմ։

Երդումը կրկնուեցաւ Քաղաքապետարանին մէջ, և գիւղախումբէ գիւղախումբ բովանդակ Ֆրանսայի մէջ։ Խրախճանութիւններ համարուեցան. ընդհանուր և անկեղծ սրտազեղում։ Անշուշտ նոր ընթացք մը սկսելու պա-

---

ցութեամբը ո՛րքան զբաղած եմ, աչքերս ո՛րքան բաց են մեզ շրջապատող ամէն տեսակ վտանգներու վրայ որ ուժգնօրէն կը զգամ թէ միտքերու ներկայ տրամադրութեան մէջ, և հասարակաց գործերու գտնուած վիճակը նկատի առնելով, պէտք է իրերու նոր կարգ մը հաստատուի հանդարտութեամբ և անդորրութեամբ, եթէ ոչ՝ երկիրը պիտի ենթարկուի անիշխանութեան ամէն աղէտներուն։

«Թո՛ղ սոր վրայ խորհրդածեն բոլոր ճշմարիտ քաղաքացիները, ինչպէս ես կ'ընեմ, իրենց ուշադրութիւնը սեւեռելով միմիայն Պետութեան բարւոյն վրայ, և պիտի տեսնեն թէ նոյն իսկ տարբեր կարծիքներ ունենալով հանդերձ, գերագոյն շահ մը պէտք է զիրենք ամէնքն ալ միացնէ այսօր։ Ժամանակը պիտի բարեկարգէ այս ժողովին գործը եղող օրէնքներու հաւաքածոյին մէջ սպրդած թերի մասերը (այս անուղղակի եւ չափաւոր քննադատութիւնը կ'ապացուցանէ թէ քաղաքը շողոքորթել չէր ուզեր, այլ հիմնաւորութիւնը լսել, հարկ եղած չափը գործածելով հանդերձ). բայց ամէն ձեռնարկութիւն՝ որ պիտի ձգտի դղրդելու նոյնինքն Սահմանադրութեան սկզբունքները, ամէն միաբանութիւն՝ որ նպատակ ունենայ զանոնք տապալելու կամ անոնց բարեդէպ ազդեցութիւնը տկարացնելու, ուրիշ բանի պիտի չծառայեն եթէ ոչ՝ ձեզի զգալի ընելու անմիաբանութեան ահաւոր չարիքները, և ժողովուրդին և ինծի դէմ այդ տեսակ փորձի մը յաջողութիւնը ենթադրելով, հետեւանքը պիտի ըլլայ զուրկ մնալ, առանց որ և է փոխարինութեան, ա՛յն զանազան բարիքներէն որոնց հեռանկարը մեզի կ'ընծայէ իրերու նոր կարգ մը։

«Ուրեմն բարեմտութեամբ անձնատուր ըլլա՛նք ա՛յն յոյսերուն զորս կրնանք յղանալ, և խորհի՛նք միայն իրականացնել զանոնք հասարակաց համաձայնութեամբ։ Թո՛ղ ամենուրեք գիտնան թէ վեհապետը և ազգին ներկայացուցիչները մի եւ նոյն շահով և մի և նոյն փափաքով միացած են, որպէս զի այս համոզումը, այս հաստատուն հաւատքը գաւառներուն մէջ տարածեն խաղաղութեան և բարեհաճութեան ոգի մը որպէս զի իրենց պարկեշտութեամբը յանձնարարելի բոլոր քաղաքացիները, ամէն անոնք, որոնք կրնան Պետութեան ծառայել իսկապէս իրենց եռանդով և իրենց հմտութեամբ, փութան մասնակցիլ ընդհանուր վարչութեան տարբեր ստորաբաժանումներուն, որոնց շղթայումն ու ամբողջութիւնը պիտի նպաստեն միահաղոյն բարեկարգութեան վերահաստատման և երկրին բարօրութեան։

«Պէտք չէ անգէտ ձեւանանք, դեռ շատ ընելիքներ կան այս նպատակին հասնելու համար։ Հետեւական կամք մը, ընդհանուր ճիգ մը բացարձակապէս անհրաժեշտ են ճշմարիտ յաջողութիւն մը ձեռք ձգելու համար։ Ուրեմն շարունակեցէք ձեր աշխատութիւնները բարիին կիրքով միայն. միշտ ձեր առաջին ուշադրութիւնը սեւեռեցէ՛ք ժողովուրդին բախտին և հանրային ազատութեան վրայ, բայց զբաղեցէ՛ք նաեւ մեղմացնել, հանդարտեցնել բոլոր անվստահութիւնները, և կարելի եղածին չափ վերջ տուէ՛ք ա՛յն զանազան մտատանջութիւններուն, որոնք Ֆրան-

*բազայ մըն էր այս և այս հաշտութիւնը միւսներուն ալ էր անօգուտ չըներ. բայց նոյն երեկոյին իսկ, մինչ Բարիզ այս բարեբաստիկ պատահարին համար հրավառութեամբ կը շողար, արքունիքը նոր դար-*

*սայէն կը հեռացնէր իր քաղաքացիներէն ստուար թիւ մը, և որոնց արդիւնքը կը հակառակէ ձեր հաստատել ուզած ազատականութեան և արդարութեան օրէնքներուն, բարօրութիւնը ընդհանուր գոհունակութեամբ միայն պիտի վերադառնայ: Ամենուրեք յոյսեր կը նշմարենք, անհամբեր ըղձա՛նք տեսնելու նաև ամենուրեք երջանկութիւնը:*

*«Օր պիտի գայ, քաղցր է ինծ հաւատալ, որ բոլոր Ֆրանսացիք անխտիր պիտի ճանչնան կարգի և վիճակի տարբերութեանց ամբողջական ջնջումին օգուտը, երբ հարկ է աշխատիլ ձեռք ձեռքի տուած հասարակաց բարւոյն համար, քաղաքացիները հաւասարապէս շահագրգռող հայրենիքին բարօրութեան համար, և իւրաքանչիւր ոք առանց ցաւելու պէտք է տեսնէ որ, ոև է կերպով այսուհետև Պետութեան ծառայութեան կոչուելու համար, պիտի բաւէ ունենալ տաղանդ և առաքինութիւն:*

*«Այսու հանդերձ, միևնոյն ժամանակ, պատուուած ցեղի մը ծառայութեանց և պաշտօններուն հնութիւնն ու շարունակութիւնը ա՛յնպիսի արժանիք մըն է զոր ոչ ինչ կրնայ ջնջել, և որովհետև այս արժանիքին հետ կապուած են երախտագիտութեան պարտաւորութիւնները, ընկերութեան ամէն դասակարգերուն մէջ անոնք որ կը բաղձան արդիւնաւոր կերպով ծառայել իրենց հայրենիքին, և անոնք որ արդէն անոնց մէջ յաջողելու բարեբախտութիւնը ունեցած են, շահ ունին յարգելու տիտղոսներու, պաշտօններու և յիշատակներու այս փոխանցումը, ամէնէն դեղեցիկ ժառանգութիւնը զոր մարդ կրնայ*

*ձած էր կրկին իր դժկամակութեան, և ժողովրդային երեսփոխաններ ազնուական երեսփոխաններուն վերապահուած ընդունելութենէն տարբեր ընդունելութիւն մը կը գտնէին հոն: Ի զուր Լա-*

*փոխանցել իրեն զաւակներուն:*

*«Կրօնքի պաշտօնեաներուն անկ եղած յարգանքս ալ չի կրնար ջնջուիլ, և երբ անոնց վայելած արտօնութիւնքը միացած ըլլայ գլխաւորաբար ա՛յն սուրբ ճշմարտութեանց՝ որոնք բարեկարգութեան և բարոյականի պաշտպանութեան տակ կը գտնուին, բոլոր պատուաւոր և լուսամիտ քաղաքացիները հաւասար չափ պիտի ունենան անաչառ պահելու և պաշտպանելու զայն:*

*«Անշուշտ անոնք որ լքեցին իրենց դրամական առանձնաշնորհումները, անոնք որ պետութեան մէջ այսուհետև առաջուան պէս քաղաքական կարգ մը պիտի չկազմեն, ենթարկուած կ'ըլլան ա՛յնպիսի զոհողութիւններու որոնց ամբողջ կարևորութիւնը կը ճանչնամ, բայց, հաստատ համոզուած եմ, անոնք բաւական վեհանձնութիւն պիտի ունենան իրենց վնասները հատուցանել փնտռելու բոլոր ա՛յն հանրային օգուտներուն մէջ՝ որոնց յոյսը կը ներկայացնէ ազգային ժողովներու հաստատութիւնը:»*

*Թագաւորը կը շարունակէ, ինչպէս կը տեսնուի, բոլոր կուսակցութիւններուն պարզել նոր օրէնքներուն առաւելութիւնները, և միևնոյն ժամանակ հիներէն բան մը պահելու անհրաժեշտութիւնը: Առանձնաշնորհեալներուն իր ուղղած խօսքը իր բուն կարծիքը կ'ապացուցանէ: անոնց պարտադիր եղած զոհողութիւններուն անհրաժեշտութեան և արդարութեան վրայ, և անոնց ընդդիմութիւնը յաւիտեան պիտի դատապարտէր այս ճառին պարունակած խօսքերովը: Ի զուր պիտի ըսուի թէ Թագաւորը ազատ չէր, զիջումները,*

Ֆայէթ, որուն ողջամիտ և եռանդագին յորդորներուն մտիկ չէին ըներ, կը կրկնէր արքունիքին թէ թագաւորը չէր կրնար այլեւս տատանիլ, և թէ պէտք էր բոլորովին կապուէր ժողովրդական կուսակցութեան և ջանար գրաւել անոր վստահութիւնը. թէ ասոր համար պէտք էր որ իր դիտաւորութիւնները ժողովին մէջ չյայտնուէին միայն, այլ իր ամէնէն աննշան գործերէն իսկ, թէ պէտք էր

պատուէրները և նոյն իսկ կշտամբանքները հաւասարակշռելու համար անոր ցոյց տուած հոգածութիւնը կ'ապացուցանէ թէ անկեղծօրէն կը խօսէր։ Բոլորովին տարբեր կերպով արտայայտուեցաւ երբ աւելի վերջերը ուզեց ցոյց տալ ճնշումի այն վիճակը որուն մէջ կը կարծէր ըլլալ։ Դեսպաններուն ուղղած իր նամակը, զոր աւելի վարը մէջ պիտի բերենք, ասոր ապացոյցը պիտի ըլլայ։ Հոն տիրող բոլորովին ժողովրդավայել ծայրայեղութիւնը ցոյց կուտայ թէ ինք դիտաւորութիւն ունէր ինքզինքը այլեւս զգաստ չերեւցնելու։ Բայց այս ճառին մէջ չափաւորութիւնը բնաւ կասկած չի վերցներ, և հետեւեալ մասը այնքան սրտայոյզ, այնքան փափուկ է որ կարելի չէ զգացած չըլլալ, երբ մէկը կը հաւանի գրել ու արտասանել զայն։

«Ես ալ շատ կորուստներ ունիմ հաշուելիք, եթէ Պետութեան մեծագոյն շահերուն մէջտեղ, անձնական հաշիւներուն վրայ կենայի. բայց փոխարինութիւն մը կը գտնեմ որ կը բաւէ ինծի, լիակատար փոխարինութիւն մը, ազգին երջանկութեան աճումին մէջ, և սրտիս խորէն է որ հոս այս զգացումը կը բացատրեմ։

«Ուրեմն պիտի պահեմ, պիտի պաշտպանեմ սահմանադրական ազատութիւնը, որուն սկզբունքները նուիրագործեց ընդհանուրին բաղձանքը, իմինիս հետ համաձայն։ Աւելին պիտի ընեմ, և թագուհիին [illegible] համախոհութեամբ, որ մասնակից է իմ բոլոր զգացումներուս, կանոնաւոր պիտի պատրաստեմ զաւկիս միտքն ու սիրտը պարագաներուն պատշաճեցուած իրերու նոր կարգին։ Իր ապագին տարիներէն սկսեալ պիտի վարժեցնեմ զայն երջանիկ ըլլալ Ֆրանսացիներուն երջանկութեամբ. և մինչ ճանչնայ, հակառակ շողոքորթներու լեզուին, թէ իմաստուն Սահմանադրութիւն մը զինքը զերծ պիտի պահէ անփորձութեան վտանգներէն, և թէ արդար ազատութիւն մը նոր արժէք մը կ'աւելցնէ սիրոյ և հաւատարմութեան զգացումներուն վրայ, որոնց մասին ազգը, այնքան դարերէ ի վեր, իր թագաւորներուն տուած է սրտագրաւ ապացոյցներ։

«Պէտք է ամէն տարակոյս փարատեմ. ձեր գործը ի գլուխ հանելով, ապահովարար պիտի զբաղիք իմաստութեամբ և պայծառատեսութեամբ գործադիր իշխանութեան ամրութեամբ, պայման մը՝ առանց որուն կարելի չէ տեւական բարեկարգութիւն ի ներքուստ, ո՛չ ալ է յարգանք արտաքուստ։ Ինչ բանաւոր պատճառ մը չունիք անվստահ ըլլալու. ուստի ձեր պարտքն է, իբրեւ քաղաքացի և իբրեւ հաւատարիմ ներկայացուցիչ ազգին, պետութեան բարւոյն և հանրային ազատութեան համար ապահովել այն անխախտ ամրութիւնը՝ որ գործօն և խնամարկու հեղինակութենէ մը միայն կրնայ բղխիլ։ Անտարակոյս միշտ ի մտի պիտի ունենաք թէ, առանց այդպիսի հեղինակութեան մը, ձեր սահմանադրական դրութեան բոլոր մասերը անկապակից և միանգամայն անհաղորդակից պիտի մնան, և զբաղելով հանդերձ ազատութեամբ, զոր դուք կը սիրէք, զոր ես ալ կը սիրեմ, ձեր սնոտութենէն պիտի չկրկնեցնէք թէ վարչութեան մէջ անկարգութիւնը, իշխանութեանց շփոթութիւն առաջ բերելով, յաճախ կոյր

չհանդուրժեր ո և է երկդիմի վարմունքի և մերժէր իր իրական կամքին վրայ յայտնուած ամենադոյզն կասկածը. թէ պէտք չէր ցոյց տալ ո՛չ ճնշում, ո՛չ դժգոհութիւն, ո՛չ ալ գաղտնի յոյս մը ներշնչել ազնուականներուն. և վերջապէս թէ նախարարները պէտք էր միաբան ըլլային և ո և է հակառակութիւն ցոյց չտային ժողովին և չստիպէին զայն շարունակ դիմելու հանրային կարծիքին։

---

բռնութիւններու միջոցաւ կ՚այլափոխուի ամէնէն վտանգաւոր և ամէնէն տագնապայոյզ բռնապետութեան։

«Այսպէս, ո՛չ թէ ինծի համար, Պարոննե՛ր, որ բնաւ հաշուի չեմ առներ ինչ որ ինծի անձնական է Պետութեան ճակատագիրը կանոնաւորելու կոչուած օրէնքներուն և հաստատութիւններուն մօտ, այլ մեր հայրենիքին երջանկութեանը համար իսկ, անոր բարօրութեանը համար, անոր զօրութեանը համար, կը հրաւիրեմ ձեզ ազատագրուիլ վայրենի բոլոր տպաւորութիւններէն, որոնք կրնան չեղեցնել ձեզ իր ամբողջութեամբը նկատի առնելէ ինչ որ կը պահանջէ Ֆրանսայի պէս Թագաւորութիւն մը, և՛ իր առաջին ընդարձակութեամբը, և՛ իր անհուն բնակիչներովը, և՛ դուրսի հետ իր անխուսափելի յարաբերութիւններովը։

«Անիրոյթ պիտի չգտնուիք նաև ձեր ուշադրութիւնը սևեռելու այն բաներուն զորս օրէնսդիրներէն կը պահանջեն բարքերը, նկարագիրը և ունակութիւնները այնպիսի ազգի մը, որ Եւրոպայի մէջ իր մտքին ու իր հանճարին բնութեամբ այնքան հռչակաւոր ըլլալուն համար կարելի չէ անտարբեր կամ անհոգ երեւնալ պահպանելով կամ այլայլելով անոր մէջ քաղցրութեան, վստահութեան և բարութեան զգացումները, որոնք այնքան համբաւ շահեցուցած են անոր։

«Անոր օրինակ առէ՛ք նաև այն արդարակորով մտքին, որ պահպանակ կը ծառայէ սեփականութեան, բոլոր ազգերէն յարգուած այն իրաւունքին, որ դիպուածին գործը չէ, ու կարծիքի տարաձայնութիւններէն չի բղխիր, այլ սկրաւ կը կապուի հանրային կարգ ու սարքի էական առնչութիւններուն և ընկերային ներդաշնակութեան նախնական պայմաններուն։

«Երբ հանդարտութիւնը կը սկսէր վերածնիլ. ի՞նչ ճակատագրականութեամբ նոր մտահոգութիւններ տարածուեցան գաւառներու մէջ։ Ի՞նչ ճակատագրականութեամբ նոր ծայրայեղութիւններու անձնատուր կ՚ըլլան հոն։ Ինծի հետ միացէ՛ք զանոնք դադրեցնելու համար, և մեր բոլոր ճիգերով արգելք ըլլա՛նք որ եղեռնական բռնութիւնները չգան չաղտեղեն այս օրերը՝ ուր ազգին երջանկութիւնը կը պատրաստուի։ Դուք որ այնքան միջոցներով կրնաք ազդել հանրային վստահութեան վրայ, իր ճշմարիտ շահերուն վրայ լուսաւորեցէ՛ք ժողովուրդը զոր կը մոլորեցնեն, այս բարի ժողովուրդը՝ որ այնքան սիրելի է ինծի, եւ որմէ կը հաւատան զիս թէ կը սիրուիմ երբ կ՚ուզեն ցաւերուս մէջ մխիթարել զիս։ Ա՜հ, եթէ այդ ժողովուրդը գիտնար թէ ո՛ր աստիճան դժբախտ կ՚ըլլամ իմանալով մասնաւոր հարստութեանց դէմ ոճրափորձ մը, կամ անհատներու դէմ բուռն արարք մը, թերեւս պիտի խնայէր ինծմէ այս ցաւագին դառնութիւնը։

«Քանի որ Պետութեան մեծամեծ շահերուն վրայ կը խօսիմ, պէտք է թախանձեմ ձեզ ստիպողական և վճռական կերպով մը զբաղելու ամէն բանով որ կը վերաբերի ելևմուտքին մէջ կարգ կանոնի վերահաստատումին, և հանրային հարստութեան հետ ո և է կապով միացող ամբողջ քաղաքացիներու անդորրութեան։

«Ժամանակ է խաղաղեցնել բոլոր

Ի զուր Լաֆայէթ կը կրկնէր այս խոնհեմական յորդորները յարգալից թախանձանքներով․ Թագաւորը կ'ընդունէր անոր նամակները, պարկեշտ մարդ կը գտնէր զայն․ Թագուհին կղուանքով կը մերժէր զանոնք, և կարծես զօրավարին մեծարանքներն անգամ զայրոյթ կը պատճառէին իրեն։ Միրապոյին ա՛լ աւելի կը համակրէր, որ աւելի ազդեցիկ էր, բայց ապահովաբար Լաֆայէթէն նուազ անբասիր։

Արքունիքին հետ Միրապոյի հաղորդակցութիւնները կը շարունակուէին։ Նոյն իսկ արքային եղբօր հետ, որ իր ընդհանուր կարծիքներով աւելի մօտ չեղի էր ժողովրդային կուսակցութեան, յարաբերութիւններ կը տածէր ան, և կը կրկնէր անոր ինչ որ չէր դադրեր բացատրելէ Թագուհիին և Մօնմօրէնի, թէ միապետութիւնը ազատութեամբ միայն կրնար փրկուիլ։ Միրապօ վերջապէս սրտմտագրուեցաւ արքունիքին հետ միջնորդի մը օգնութեամբ։ Իր սկզբունքները յայտագրեց տեսակ մը հաւատոյ դաւանութեամբ․ խօսք տուաւ չշեղիլ անկէց, և այժ տալ արքունիքին ցորչափ արքունիքը մնար միևնոյն գիծին վրայ։ Ի փոխարէն կը ստուէր իրեն բաւական մեծաքանակ թոշակ մը։ Բարոյականը անշուշտ կը դատապարտէ այսպիսի պայմանագրութիւններ, և կը պահանջէ որ պարտքը կատարուի պարտքին համար միայն։ Բայց տակաւ ինքզինքը ծախե՞լ էր միթէ։ Տկար մարդ մը անատարակոյս ինքզինքը ծախած կ'ըլլար, իր սկզբունքները զոհելով․ բայց հզօրն Միրապօ, ո՛չ միայն իրենները չէր զոհեր, այլ իշխանութիւնը այդ սկզբունքներուն կը բերէր, և ի փոխարէն կ'ընդունէր ա՛յն օգնութիւնները, զորս անխուսափելի կը դարձնէին անոր համար իր մեծ պէտքերը

մտահոգութիւնները, ժամանակ է, այս երկրին տալ վարկի ա՛յն ոյժը՝ որուն իրաւունք ունի յուսալու։ Ձէք կրնար ամէն բանի մէկ անգամուն ձեռնարկել, ուստի կը հրաւիրեմ ձեզ ուրիշ ժամանակներու վերապահել մէկ մասը այն գոյքերուն՝ որոնց ցանկը կրնաք ունենալ ձեր առջեւ ձեր ամէնուդ հրամանաւ Թեամբ․ բայց երբ ձեր սրտէն ընկլիքին վրայ աւելցնէք խոհական և բանաւոր յատակագիծ մը արդարութեան գործադրութեան համար․ երբ ապահովէք կատարեալ հաւասարակշռութեան մը խարիխները պետութեան հասոյթներուն և ծախքերուն միջեւ․ վերջապէս երբ ի գլուխ հանէք Սահմանադրութեան գործը, հասարակաց երախտագիտութեան համար մեծամեծ իրաւունքներ պիտի ունենաք, և ազգային ժողովներու յաջորդական շարունակութեամբ, շարունակութիւն մը՝ որ այսուհետեւ նոյն այն սահմանադրութեան վրայ պիտի հիմնուի, տարուէ տարի այնուհետեւ բարօրութեան նոր միջոցներ պիտի աւելնան։ Իցի՜ւ մեր Պետութեան պատմութեան հետ յիշատակելի թուական մը ըլլայ ա՛յս օրը, ուր ձեր վեհապետը կու գայ ձեզի միանալ անկեղծ և մտերմական կերպով։ Պիտի ըլլայ, կը յուսամ, եթէ իմ թախանձագին յորդորներս կարենան խաղաղութեան և ձեր միջեւ մերձեցման նշան մը ըլլալ։ Այսքան անհրաժեշտ եղող միաբանական ոգին հետացուցները քո՛ղ ինծի զանեն իրենց սիրտը ցուցնող յիշատակները. Երախտագիտութեամբս եւ զորովանս պիտի լաւագոյնեմ իրենց փոխարէնը:

«Զդաւանի՛նք ամէնքս, այս օրէն սկսեալ, չդաւանի՛նք ամէնքս, ես կու տամ ձեզի օրինակը, այլ մէկ կարծիք միայն, մէ՛կ շահ, մէկ կամք, յարում նոր Սահմանադրութեան, և սրտեռանդն բաղձանք Ֆրանսայի խաղաղութեան, երջանկութեան և բարօրութեան համար»։

և անկարգ կիրքերը։ Իրենց տկար խելքը և թոյլ խիղճը շատ սուղ ծախողներէն տարբեր, Միրապօ, իր սկզբունքներուն մէջ անդրդուելի, փոփոխակի կը մարմնչէր իր կուսակցութեան կամ արքունիքին դէմ, որպէս թէ առաջինէն չէր սպասեր ժողովրդականութիւն, և երկրորդէն իր ապրուստի միջոցները։ Այն աստիճանի հասաւ գործը որ պատմիչները, չկրնալով դաշնակից համարել զինքը արքունիքին՝ որուն դէմ կը մաքառէր, 1791 տարիին մէջ զետեղած են անոր դաշնագրութիւնը, որ սակայն կնքուած էր 1790ի առաջին ամիսներուն։ Միրապօ տեսաւ Թագուհին, սքանչացուց զայն իր պերճախօսութեամբը, և այնպիսի ընդունելութիւն մը ունեցաւ անորմէ որ շատ հիացուց զինքը։ Այս տրփասուոր մարդը դիւրազգած էր ամէն հաճոյքներուն։ Պէտք էր, բռնել զայն ի նպաստ հասարակաց դատին։ Լաֆայէթէն և Միրապոյէն զատ արքունիքը ունէր նաև Պույիէէն, զոր ժամանակը եկած է ճանչնել։

Պույիէ, քաջութեամբ, ուղղութեամբ և կարողութեամբ լեցուն, դէպ ի ազնուապետութիւն ունէր բոլոր համակրութիւնները, և գործերու մեծագոյն ունակութեամբ։ Մէկ քաշուած, սահմանադրելի ընդարձակ տարածութեան մը և բանակի մեծ մասի մը հրամանատար, կ'աշխատէր անվստահութիւնը վառ պահել իր զինուորներուն և ազգային պահնորդներուն միջև, իր զինուորները արքունիքին վերապահելու համար։ Ինքն իսկ այսպէս կ'ըսէ իր յիշատակագիրքին մէջ։ Սպատողական գիրքի մէջ մտնելով հոն, կ'արհամարհէր ժողովրդային կուսակցութիւնը, և կարծես միապետութեան զօրավարն էր, ինչպէս Լաֆայէթ Սահմանադրութեանն էր։ Սակայն ազնուապետութիւնը անախորժ էր իրեն, Թագաւորին տկարութիւնը զզուելի ըրած էր իր ծառայութիւնը, և պիտի թողուր եթէ Լուի ԺԶ. թախանձած չըլլար անոր որ մնայ։ Պույիէ պատուախնդիր մարդ էր. երդումը ամէն վերջ՝ այլ ևս խորհեցաւ միայն ծառայել Թագաւորին և Սահմանադրութեան։ Հետևաբար արքունիքը բաւական էր որ միացնէր Լաֆայէթը, Միրապօ, և Պույիէէն, անոնցմով պիտի ունենար ազգային պահնորդները, ժողովը և բանակը, այսինքն օրուան երեք ուժերը։ Իրաւ է որ քանի մը չարժառիթներով համաձայն չէին այս երեք անձնաւորութիւնները։ Լաֆայէթ, բարեմիտ և բարեացակամ, պատրաստ էր միանալ ամէն անոնց որոնք կ'ուզէին ծառայել Թագաւորին ու Սահմանադրութեան. բայց Միրապօ կը նախանձէր Լաֆայէթի ազդեցութեան, կը սոսկար անոր գոլարանուած մաքրութենէն, և կարծես իրեն համար յանցանք մըն էր այս մաքրութիւնը։ Պույիէ Լաֆայէթի մէջ կ'ատէր անոր վերացականօրէն խանդավառ համոզումը, և թերևս անբասիր թշնամի մը. ան կը նախընտրէր Միրապօն զոր աւելի գործի յարմար կը նկատէր և նուազ խստապահանջ իր քաղաքական հաւատքին մէջ։ Արքունիքին մէջ իրար անցած էին միացնելու այս երեք մարդիկը, անոնց զիրար չքաշելու մասնաւոր չարժառիթները ջնջելով։ Բայց միութեան մէկ միջոց կար միայն, ազատ միապետութիւնը։ Ուստի պէտք էր բացէ ի բաց համակերպիլ այս բանին և բոլոր ուժովը անոր ձգտիլ։ Բայց արքունիքը, միշտ վարանոտ, չէր մերժեր Լաֆայէթը, այլ պաղ կերպով կը վերաբերուէր անոր մասին. վճարում կ'ընէր Միրապոյին՝ որ մերթ ընդ մերթ կը կշտամբէր զայն. վառ կը պահէր Պույիէի դժկամակութիւնը յեղափոխութեան դէմ, Աւստրիոյ կողմը կը նայէր յոյսով, և կը ձգէր որ Տուրինոյի մէջ՝ գործէին տարագիրները։ Տկար-

ները այսպէս կ՚ըսեն. կ՚աշխատին ուժելի յոյս և քաջալերութիւն տալ իրենց քան թէ յաջողութիւններին ապահովել, և այս կերպով իրենք զիրենք կը կորսընցնեն միայն, յարուցանելով այնպիսի կասկածներ՝ որոնք կը գրգռեն թէ՛ կուսակցութիւնները և թէ իրականութիւնը, որովհետև աւելի լաւ է գործել առանց քան թէ ապահովել։

Ի զուր Լաֆայէթ, որ արքունիքին չըրածը կ՚ուզէր ընել, կը գրէր իր ազգական Պույիեէի յորդորելու զայն որ միասին ծառայեն արքունիքին, և միակ հնարաւոր միջոցներով. Պույիէ, արքունիքէն գէշ նկրտնչուած, պաղ կերպով և փախուստ տալով կը պատասխանէր, և, Սահմանադրութեան դէմ առանց բան մը փորձելու, կը շարունակէր ինքզինքը բարձր երևցնել իր զաղտնի գիտումներով և իր բանակին ուժով։

Ուրեմն ունայն և անօգուտ եղաւ փորձ. Կր այն հաւատութիւնը, որ կրնար ա՛յնքան մեծ արդիւնքներ ունենալ։ Ցակոայի դատաւարութիւնը վերջացաւ, և, կա՛մ վախով, կամ համոզումով, Շամբըլէն կախուելու դատապարտեց զայն։ Ցակոա իր վերջին վայրկեաններուն մարտիրոսավայել համատամութիւն մը ցոյց տուաւ, ո՛չ թէ մեքենայօրէն մը թուլամորթութիւնը. բարձրաձայն պնդեց իր անմեղութեան վրայ, և խնդրեց մեռնելէ առաջ յայտարարութիւն մը ընել։ Կախաղանը կանգնած էր Կռէվի հրապարակին վրայ։ Տարին զինքը քաղաքապետարան, ուր մնաց մինչև գիշերը։ Ժողովուրդը կ՚ուզէր մարքիզի մը կախուիլը տեսնել, և անհամբեր կը սպասէր պատիժներու մէջ հաւասարութեան այս օրինակին։ Ցակոա յայտարարեց թէ յարաբերութիւններ ունեցած էր Պետական ջոջի մը հետ, որ զինքը մղած էր միաքերը տրամադրել իննսուն թագաւորին։ Որովհետև քանի մը ծախսերը ընել հարկ էր, այդ ջոջը իրեն տուած էր հարիւր լուի զոր ինք ալ ընդունած էր։ Վստահացուց թէ իր ոճիրը հոն կը սահմանափակուէր, և մէկուն անունը չտուաւ։ Սակայն հարցուց որ, եթէ անուններ տայ, կրնա՞յ ազատուիլ։ Իրեն տրուած պատասխանը զինքը գոհացուցած չըլլալով. «Այս պարագային, ըսաւ, գաղտնիքովս պիտի մեռնիմ։» Եւ քայլ առաւ դէպի սանդուղամարմը մեծ կորովով։ Կառափնարան վայրին վրայ գիշերը կը տիրէր, և լոյս վառած էին մինչև կախաղանին վրայ։ Ժողովը հրճուեցաւ այս տեսարանէն, հաւասարութիւնը մինչև կախաղանին վրայ խել զանելուն զոհ, կատաղի և վայրագ ծաղրանքներ խառնեց, և զանազան եղանակներով հեգնեց այդ տարաբախտին սանդուղները։ Ցակոայի մարմինը իր բնատնիքին յանձնուեցաւ, և նոր պատահարներ եկան ընդհուպ մոռցուցին իր մահը թէ՛ զայն պատմողներուն և թէ այդ մահը իրենց գործիք ընողներուն։

Յուսակտուր եղերը կը շարունակէր մանր մունր յուզումներ դրգռել Ֆրանսայի ամէն կողմերը։ Աղնուականութիւնը մեծ յոյս դրած էր Ժողովուրդին մէջ անոր աղդեցութեան վրայ։ Քանի որ Ժողովը հրովարտակով մը դոհացած էր եկեղեցական գոյքերը ազգին տրամադրութեան տակ դնելով, գործադրութիւնը յապաղեցնելով, եղերը յոյս ունեցած էր թէ գործադրութիւնը բնաւ տեղի պիտի չունենար. և զայն անօգուտ դարձնելու համար հազարումէկ միջոցներ կը թելադրէր գանձուն պէտքերը հոգալու։ Աբբա Մօրի տուրք մը առաջարկած էր պերճանքի վրայ, և Սալսէսի արքան պատասխանած էր անոր, առաջարկելով իր կարգին թէ ո և է եկեղեցական չէր կրնար հազար սկուտէ (էգիւ) աւելի հասոյթ ունենալ։ Հարուստ աբբան լսեց այսպիսի առաջարկութեան մը վրայ։ Ուրիշ անգամ մը, Պետութեան պարտքին վրայ վիճա-



ՖԱՎՐԱ ՄԱՐՔԻԶԻՆ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ

բանութեան միջոցին, Գաղղիա խորհուրդ յայտնած էր քննել ո՛չ թէ պարտամուրհակներուն օրինականութիւնը, այս նոյն իսկ պարտքը, անոր ծագումը, անոր չարժաութը · ասիկա սնանկութիւնը վերանորոգել էր անարգ և հինցած միջոցով մը։ Կղերը, որ թշնամի էր պետական առնելիքութիւններուն, որոնց ինքզինքը զոհուած կը կարծէր, այժմ տուաւ այս առաջարկութեան, հակառակ իր սկզբունքներուն խոստութեան ի մասին սեփականութեան։ Մօրի ուժգնօրէն գայրացած էր և ժողովի չէր գար, անոր անդամներէն մէկ մասին ըսելով թէ մինչև ամենայն քաջութիւնը չունին։ Ժողովը այս խօսքը իրեն նախատինք մը համարած էր, և կ՚ուզէր իր մէջէն վտարել զայն։ Բայց Միրապօ, որ կրնար յարձակումը իրեն դէմ ալ ուղղուած նկատել, իր պաշտօնակիցներուն զինել տուաւ թէ մէն մի երեսփոխան իր փոխանորդեալներուն կը վերաբերէր, և թէ իրաւունք չունէր մէկ հոգին իսկ վտարելու։ Այս չափաւորութիւնը համաձայն էր ճշմարիտ գերակայութեան մը որ յաջողեցաւ, և Մօրի արտաքսմանքով մը աւելի պատժուեցաւ քան ինչ որ պիտի չըլլար վտարումով։ Պետութեան առնելիքութիւնները իր տեղը զոհելու համար կղերին հնարած բոլոր այս միջոցները բնաւ օգուտ մը չունեցան իրեն. և ժողովը վճռեց պետական կալուածներէն և Եկեղեցին յատուկ գոյքերէն ծախու հանել 400 միլիոնի չափ։ Այն ատեն յուսահատած, կղերը գրուածներ ցրուեց ժողովուրդին մէջ և տարածեց թէ յեղափոխականներուն Ծրագիրն էր յարձակիլ կաթոլիկէ կրօնքին վրայ։ Ամենէն աւելի հարաւային գաւառներուն մէջ կը յուսար յաջողու-

թիւն գտնել։ Տեսանք որ առաջին տարագիրները դէպի Տուրինօ ուղղուած էին, և Լանկտօքի և Բուօվանսի ճամբով կը մշակէր իր գլխաւոր հաղորդակցութիւնները։ Երեւելիներու ժողովին մէջ ա՛յնքան հռչակաւոր եղող Դալօն տարագիր արքունիքին պաշտօնեան էր։ Երկու կուսակցութեան բաժնուած էին տարագիրները, մերին ազնուականութիւնը կ'ուզէր հաստատուն պահել իր իշխանութիւնը, և կը կարծէր դառնալ ազնուականութեան միջամտութեամբ և մանաւանդ, քաղքենի միջակ դասակարգին միջամտութեամբ։ Ուրիշ օտարին միայն կ'ուզէր դիմել դահը վերահաստատելու համար։ Գուստէն եկած պատուիրակները կ'առաջարկէին կրօնքն ալ պատրուակ բռնել, բայց ազնուականներուն ծիծաղելի կ'երեւար այս առաջարկութիւնը, քանի որ ամբողջ դար մը իրենք զուարճացած էին Վոլթէրի հեգնութիւններով ի մասին կրօնի։ Փոքր ազնուականներէն բաղկայեալ միւս կուսակցութիւնը, որուն մէջ կային տարագիր քաղքենիներ ալ, կ'ուզէր ազատութեան կիրքին դէմ մարտնչիլ ուրիշ աւելի զօրաւոր կիրքով մը, մոլեռանդութեան կիրքով, և յաղթել իր սեփական ուժերով առանց օտարին գործիք ըլլալու։ Այս կուսակցութիւնը կը պնդէր թէ իրաւ է որ քաղաքային պատերազմը արիւնահեղութիւն կը պատճառէ, բայց գոնէ պէտք չէր մատնութեամբ արատաւորուիլ։ Այս վերջինները, աւելի սրտոտ, աւելի հայրենասէր, այլ աւելի վայրագ, պիտի չյաջողէին արքունիքի մը մէջ ուր կ'իշխէր Դալօն։ Սակայն, որովհետեւ ամէն մարդու պէտք ունէին, զեկուցումները շարունակուեցան Տուրինոյի և հարաւային գաւառներուն միջեւ։ Որոշուեցաւ յեղափոխութեան դէմ յարձակիլ արտաքին պատերազմով և քաղաքային պատերազմով, և ասոր համար փորձեցին արթնցնել այդ կողմերուն հին մոլեռանդութիւնը(*)։

(*) Օգտակար կը համարիմ Մ. Ֆուօմանի Յիշատակագիրքէն մէջբերումներ ընել՝ տարագիրներուն և դաւանանք պաշտպանող կարծիքներուն մասին ճշգրիտ գաղափար մը տալու համար. Յեղափոխութեան վերաբերեալ զանազան գործերանց հաւաքածոյ կոչուած հատորի մը մէջ, Ֆուօման հետեւեալ կերպով կ'արտայայտուի, էջ 4 և յաջորդականք։

«Դաղտնի գացի Տուրինօ 1790 Յունուարին) Ֆրանսացի իշխաններու մօտ, իրենց հաւանութիւնը և աջակցութիւնը խնդրելու համար։ Երթալէս վերջ գումարուած խորհուրդի մը մէջ, իրենց պարզեցի թէ, եթէ կ'ուզէին զինել եկեղեցիին եւ գահուն կուսակիցները, եւ զուգընթաց քաղեցնել կրօնքին ու թագաւորութեան շահերը, դիւրին պիտի ըլլայ երկուքն ալ փրկել։ Թէեւ հայրերուս հաւատքին զօրեղապէս կապուած, ոչ-կաթոլիկներուն դէմ չէր որ պատերազմ ընել կ'ուզէր, այլ կաթոլիկութեան և թագաւորութեան յայտնի թշնամիներուն դէմ, անոնց դէմ, անոնց դէմ՝ որոնք բարձրաբարբառ կ'ըսէին թէ այլ եւս երկար եղաւ Յիսուսի Քրիստոսի և Պուրպօններուն խօսքը, անոնց դէմ՝ որ կը յաւակնէին թագաւորներուն վերջինը խեղդել քահանաներուն վերջինին աղիքներով։ Միապետութեան հաւատարիմ մնացած ոչ-կաթոլիկները զգած են միշտ իմ մէջս ամէնէն վստահ և դորովոտ քաղաքացին, իսկ ապստամբ կաթոլիկները՝ ամէնէն անողոք թշնամին։

«Իմ ծրագրիս միակ նպատակն էր կուսակցութիւն մը յօրել, և կարողութեանս չափով տարածում և ուղղութիւն տալ անոր։ Յեղափոխականներուն բուն փաստը բռնութիւնը ըլլալով, կը զգայի թէ դուն պատասխանն ալ բռնութիւն էր. այն ատեն, ինչպէս

Կղերը ոչ մէկ բան անտես ըրաւ աջակցելու համար այդ ծրագրին։ Բողոքականները այն երկրամասերուն մէջ կը գրգռէին կաթոլիկներուն նախանձը։ Կղերը այս տրամադրութիւններէն օգտուաքաղեց, և մանաւանդ՝ զատկական հանդիսաւոր առններէն։ Մոնբէլիէի, Նիմի և Մոնթօպանի մէջ, ամէն միջոցներով արծարծուեցաւ վաղեմի մոլեռանդութիւնը։

իմա, համոզուած էի այս մեծ ճշմարտութեան վրայ, թէ բանի կերպ մը ա՛լ անկէ բաւն կերպով մը միայն կարելի է խեղդել, եւ թէ կրօնական նախանձայուզութիւնը միայն կրնար խեղդել հանրապետական բանդագուշանքը։ Անկէց ի վեր Վանտէի և Սպանիոյ մէջ կրօնքի նախանձայուզութեան գործած հրաշքները կ՚ապացուցանեն թէ բոլոր կուսակցութեանց իմաստասիրողները և յեղափոխականները երբեք պիտի չյաջողէին քանի մը տարիներ Եւրոպայի մեծագոյն մասին վրայ հաստատել իրենց հակակրօն և հակընկերային դրութիւնը, եթէ Լուի ԺԶ.ի նախարարները իմինիս պէս ծրագիր մը երկնած ըլլային, կամ եթէ տարագիր իշխաններուն խորհրդականները անկեղծօրէն որդեգրած և իրապէս պաշտպանած ըլլային զայն։

«Բայց դժբախտաբար Լուի ԺԶ.ը և անոր տունին իշխանները վարող անձնաւորութիւններուն մեծագոյն մասը իմաստասիրական սկզբունքներու վրայ միայն կը պատճառաբանէին և կը գործէին, թէեւ յեղափոխութեան պատճառը կամ գործակալները իմաստասէրներն ու անոնց աշակերտներն էին։ Կը կարծէին որ, եթէ կրօնք բառը արտասանեն, պիտի ծաղրուէին և պիտի անպատուուէին, կամ եթէ կրօնքին ներկայացուցած զօրաւոր միջոցները գործածէին, զորս սակայն ամենամեծ քաղաքագէտները գործածած են ամէն ժամանակներու մէջ յաջողութեամբ։ Մինչ ազգային ժողովը կ՚աշխատէր ժողովուրդը մոլորեցնել և ուտտական իրաւունքներու, ատեանորդի, աղատուրքի, եւն. ջնջումով զայն իրեն կապել, ասոնք ալ ժողովուրդը իրենց հնազանդելու, հպատակելու կ՚ուզէին յորդորել՝ երեւան հանելով նոր օրէնքներուն անկարելիութիւնը, պատկերացնելով թագաւորին թշուառութիւնը, և ռամիկին հառողութենէն վեր գրուածներ հրատարակելով։ Այս միջոցներով կը կարծէին բոլոր Ֆրանսացիներուն սրտին մէջ ծնցնել մաքուր և անշահախնդիր սէր մը իրենց վեհապետին համար. կը կարծէին թէ դժգոհներուն խաժամուժ ամբոխը պիտի դադրեցնէ կուսակցականներու ձեռնարկութիւնները, և պիտի թոյլատրէ թագաւորին քալել ուղիղ իր ճամբէն ուզած նպատակին: Խորհուրդներուս արժէքը իմ անձիս չափովը գնահատուեցաւ հաւանաբար, իսկ արքունի աւագանիին կարծիքը անոնց ախտողին և անոնց հարստութեան չափով»։

Ֆռօման իր պատմուածքը կը շարունակէ, և կը յատկանշէ այլուր հետեւեալ կերպով փախստական արքունիքը երկպառակող կուսակցութիւնները, էջ 33.

«Այս պատուաւոր ախտողները և Տուրինոյի մէջ ընդհանրապէս իմ մասիս ցոյց տրուած յարգանքները թերեւս անցեալը մոռցնէին ինծի և ապագային համար փաղաքուշ յոյսեր յղանալ տային, եթէ իշխաններուն խորհրդականներուն վրայ տեսած ըլլայի մեծ միջոցներ և կատարեալ համաձայնութիւն մը մեր գործերուն ամէնէն աւելի ազդեցիկ մարդոց միջեւ. բայց ցաւ ի սիրտ կը տեսնէի տարագիրները երկու կուսակցութեանց բաժնուած, որոնցմէ մին օտար տէրութեանց օգնութեամբ

Շարլ Լամէթ բեմին վրայէն գանգատ յայտնեց թէ զատկի տասնըհինգ օրուան ատենքէն զեղծանեցաւ ժողովուրդը մոլորեցնելու և նոր օրէնքներուն դէմ գրգռելու համար պայն։ Այս

---

խօսքերուն վրայ կղերը ոտք ելաւ և ուզեց ժողովէն մեկնիլ։ Գլէռմոնի եպիսկոպոսը այս սպառնալիքը ըրաւ, և արդէն ոտքի վրայ եղող խումբ մը եկեղեցականներ դուրս ելլելու վրայ էին,

միայն կ'ուզէր հակայեղափոխութիւն փորձել, և միւսը երկրին ներքին արքայականներով:

Առաջին կուսակցութիւնը կը կարծէր թէ քանի մը գաւառներ օտար Տէրութեանց թողլով, անոնք Ֆրանսայի իշխաններուն բաւական բազմաթիւ բանակներ պիտի հայթայթէին կուսակցականները ընկճելու համար. թէ հետզհետէ ձեռք պիտի բերուէին կրկին բռնի առնուած զիջումները, և թէ արքունիքը ոևէ պարտաւորիչ յանձնառութիւն մը չունենալով Պետութեան ոևէ կազմակերպեալ մարմինի մը հանդէպ, կրնար օրէնքներ թելադրել բոլոր Ֆրանսացիներուն... Դրանիկները կը դողային որ նուաղկոտ միապետութիւնը իր կայքին վրայ վերահաստատելու պատիւը գաւառացի ազնուականներուն և միջնակարգի արքայականներուն ձեռքը չանցնի։ Կը զգային թէ այն ատեն իրենք պիտի չըլլան շնորհքի և պաշտօններու բաշխիչները, և թէ իրենց ազդեցութիւնը պիտի վերջանար ա՛յն օրէն երբ գաւառի ազնուականները իրենց արիւնին գնով վերահաստատէին արքայական հեղինակութիւնը, և ատով արժանանային իրենց վեհապետին բարիքներուն և վստահութեան։ Այս նոր կարգին երկիւղը կը միացնէր զիրենք հաւաքուելու, ոչ թէ փոխելու համար իշխաններուն միտքը որ ներսի արքայականները բնաւ չգործածեն, այլ գոնէ անոնց ուշադրութիւնը գլխաւորաբար սեւեռել տալու Եւրոպայի դաշնակիցներուն վրայ, և հակամէտ ընել զանոնք մեծ յոյսերնին օտարին օգնութիւններուն վրայ հիմնելու։ Այս երկիւղին մէկ հետեւանքով, գաղտնի կերպով ամէնէն արդիւնաւոր միջոցները կը բանեցնէին փճացնելու համար ներքին ուժերը, ձախողել տալու համար առաջարկուած ծրագիրները, որոնցմէ մէկ քանին պիտի կրնային կարգը վերահաստատել, եթէ իմաստնաբար ուղղուած և իրապէս պաշտպանուած ըլլային։ Այս բանին ես անձամբ վկայ եղած եմ. և օր մը ասիկա պիտի պարզեմ վաւերական իրողութիւններով և վկայութիւններով. բայց տակաւին ժամանակը եկած չէ։ Գրեթէ այդ թուականին տեղի ունեցած խորհրդակցական ժողովի մը մէջ թէ ի՛նչ կերպով կարելի էր օգտուիլ Լիոնցիներու և Ֆրանշ-Գոնթէցիներուն նպաստաւոր տրամադրութիւններէն, բացէ ի բաց պարզելէ թէ ի՛նչ միջոցներ պէտք էր գործածել, միևնոյն ժամանակ, Ժէվօտանի, Սէվէնի, Վիվարէի, Վընէսէն Կոմսութեան, Լանկտոքի և Բռօվանսի արքայականներուն յաղթանակը ապահովելու համար։ Վիճաբանութեան տաք միջոցին, մարէշալ մարգիզ տ'Օթիշան, օտար տէրութեանց միջամտութեան մեծ կուսակից, ըսաւ ինծի. «Բայց հարստահարեալները և զոհերուն ազգականները պիտի չուզե՞ն արդեօք վրէժ լուծել... — Է՛, ի՛նչ կարեւորութիւն ունի, ըսի անոր, բաւական է որ մեր նպատակին հասնինք։ — Տեսէ՛ք, գոչեց, ի՛նչպէս խոստովանել տուի իրեն թէ մասնաւոր վրիժառութիւններ պիտի գործուին։» Այս դիտողութեան վրայ զարմացած, գրեթէ զայրացած, ըսի քովս նստող մարքիզ տը լա Ռուվիէրի. «Չէի կարծեր թէ քաղաքային պատերազմ մը Գաբուչինեանց մէկ առաքելութեան պիտի նմանի եղեր։» Ահա այսպէս պալատականները,

բայց ի կարգ հրաւիրուեցաւ Շարլ Լամէթ, և խառնակութիւնը խաղաղեցաւ։ Սակայն կղերին գոյքերուն վաճառումը գործադրութեան դրուած էր. կղերը դառնացած էր ասկէց և իր քինախնդրութիւնը պայթեցնելու ոևէ առիթ չէր փախցներ։ Իր կրօնական և հայրենասիրական զգացումներու մէջ բարեմասնութեամբ տոգորուած վանական մը, Տոմ Ժէրլ, օր մը խօսք կ'ուզէ, և կ'առա-

իշխաններուն իրենց ամէնէն անողորմ թշնամիներուն առևլի ըլլալու երկիւղը ներշնչելով, կը մղէին զանոնք գործածելու միմիայն կէս-միջոցներ, որոնք իրաւ է թէ կը բաւէին ներսի արքայականներուն եռանդը գրգռելու, այլ խիստ անբաւական էին կուսակցական յեղափոխականներուն կատաղութենէն զանոնք երաշխաւորելու համար, անգամ մը որ գործին մէջ մաս ունենան։ Այնուհետև, իմացայ որ իշխաններուն բանակը Շամբանիի մէջ գտնուած պահուն, մարքիզ Տ'Օթըշանի թիկնապահ տը լա Բօռթ հանրապետական մը գերի բռնելով, կարծեց թէ իր զօրավարին դրութեան համեմատ հնազանդութեան պիտի բերէր զայն սրտայոյզ յորդոր մը կարդալով, և անոր զէնքերն ու ազատութիւնը վերադարձնելով, բայց հանրապետականը հազիւ քանի մը քայլ առաւ և զարկաւ գետին տապալեց իր յաղթականը։ Մարքիզ տ'Օթիշան այն ատեն Տուրինոյի մէջ յայտնած չափաւորութիւնը մոռնալով, կրակի տուաւ քանի մը գիւղեր իր անխոհեմ առաքեալին մահուան վրէժը լուծելու համար։

«Երկրորդ կուսակցութիւնը կը պնդէր թէ, քանի որ Տէրութիւնք քանիցս զէնք առած էին նուաճելու համար Գուրպօնները, և մանաւանդ արգելք ըլլալու համար որ Լուի ԺԴ. Սպանիոյ Թագը չպահանջէ իր Թոռան, ո՛չ թէ միայն պէտք չէ զանոնք մեր օգնութեանը կանչել, այլ ընդհակառակն արծարծել կղերին եռանդը, ազնուականներուն անձնուիրութիւնը և թագաւորին համար ժողովուրդին սէրը, և փութալ խեղդելու բնական կռիւ մը, որմէ թերևս օտարները փորձուէին օգտուիլ...

Տարագիրներու պետերուն միջև այս չարաղէտ երկպառակութեան, և Լուի ԺԶ.ի նախարարներուն անճարակութեան կամ նենգութեան կը պարտին թերևս յեղափոխականք իրենց առաջին յաջողութիւնները։ Աւելի հեռուն կ'երթամ, և կը պնդեմ թէ յեղափոխութիւնը ընողը Ազգային Ժողովը չէ, այլ թագաւորին և իշխաններուն չուրջը գտնուողները. կը պնդեմ թէ նախարարները Լուի ԺԶ.ը մատնեցին թագաւորութեան թշնամիներուն, ինչպէս դաւադիրք ոմանք իշխաններն ու Լուի ԺԷ.ը մատնեցին Ֆրանսայի թշնամիներուն. կը պնդեմ թէ Լուի ԺԶ. Լուի ԺԷ. թագաւորները և անոնց տունին իշխանները չըջապատող պալատականներուն մեծագոյն մասը չարակամներ, քաղաքական [illegible] ներքինիներ էին և են. թէ անոնց թուլամորթութեան, վատութեան կամ անոնց մատնութեան պէտք է վերագրել Ֆրանսայի կրած և համօրէն աշխարհի սպառնացող բոլոր չարիքները։ Եթէ մեծ անուն մը կրէի և Գուրպօններուն խորհրդակից ըլլայի, պիտի մեռնէի ամօթէս մտածելով որ գձուձ և վատ աւազակներու հրոսակ մը, որոնցմէ ո՛չ մին ոևէ սեռի մէջ ցոյց չէ տուած ո՛չ հանճար, ոչ բարձր տաղանդ մը, յաջողած ըլլան գահը տապալելու, իրենց ազդեցութիւնը տարածելու Եւրոպայի ամէնէն հզօր Պետութիւններուն մէջ, տիեզերքը դողացնելու, և երբ այս գաղափարը գլխս կը հալածէ, կը թաղուիմ անձիս աննշանութեանը մէջ, պարտաւանքէ զերծ մնալու համար, ինչպէս այդ աննշանութիւնը անկարող ըրաւ զիս կասեցնելու յեղափոխութեան յառաջդիմութիւնները։»

Ջարկէ Պետական միակ կրօնը հռչակել կաթոլիկ կրօնքը (նիստ Ապրիլ 12ի)։ Խումբ մը եկեղեցականներ ոտքի կ'ելլեն և կը պատրաստուին ծափահարութեամբ քուէարկել, ըսելով թէ ասիկա յարմար առիթն է Ժողովին հերքելու իրեն դէմ եղած ամ՛ն մեղադրանքը թէ յարձակում կը գործէ կաթոլիկ կրօնքին վրայ։ Սակայն ի՞նչ նշանակութիւն ունի այս տեսակ առաջարկութիւն մը։ Կա՛մ այն է որ հրովարտակին նպատակը պիտի ըլլար առանձնաշնորհում մը տալ կաթոլիկ կրօնքին, և ոչ մէկ պէտք է առանձնաշնորհում ունենար, կամ իրողութեան մը յայտարարութիւնն էր այն, այսինքն թէ Ֆրանսացւոց մեծամասնութիւնը կաթոլիկ էր, և այս իրողութիւնն ալ յայտարարուելու պէտք չունէր։ Ուրեմն այդ տեսակ առաջարկութիւն մը չէր կրնար ընդունուիլ։ Ուստի աղնուականներուն և կղերին ջանքերուն հակառակ վիճաբանութիւնը վաղուան յետաձգուեցաւ։ Ահագին բազմութիւն մը դիմած էր. Լաֆայէթ, իմանալով որ չարամիտներ պատրաստուած էին խռովութիւն յարուցանել, պահնորդներուն թիւը կրկնապատկեց։ Վիճաբանութիւնը կը բացուի. եկեղեցական մը կը սպառնայ բանադրել Ժողովը. Մօռի իր սովորական ճիչերը կ'արձակէ. Մընու հանդարտօրէն կը պատասխանէ Ժողովին եղած բոլոր մեղադրանքներուն, և կ'ըսէ թէ կարելի չէ բնաւ որ կերպով ամբաստանել Ժողովը թէ կ'ուզէր ջնջել կաթոլիկ կրօնքը ա՛ն պահուն՝ երբ իր պաշտամունքին ծախքերը հանրային ծախքերուն կարգը պիտի դասէ, ուրեմն կ'առաջարկէ օրակարգին անցնիլ։ Տօմ Ժէրլ, համոզուած, ետ կ'առնէ իր առաջարկը, և ներում կը խնդրէ այսպիսի շփոթութիւն մը յարուցանելուն համար։ Լա Ռօշֆուքօ նոր խմբագրութիւն մը կը ներկայացնէ, և իր առաջարկութիւնը կը յաջորդէ Մընուի առաջարկութեան։ Յանկարծ աջակողմեան անդամ մը կը գանգատի ազատ չըլլալուն վրայ, կը հարցապնդէ Լաֆայէթին, և կը հարցնէ թէ ինչո՞ւ համար կրկնապատկած է պահնորդներուն թիւը։ Շարժառիթը կասկածելի չէր, որովհետև Ժողովուրդէն վախցողը ձախակողմը չէր կրնար ըլլալ, և Լաֆայէթ իր բարեկամները պաշտպանելու պէտք չունէր։ Այս հարցապնդումը կ'աւելցնէ խառնաշփոթութիւնը, այսուհանդերձ վիճաբանութիւնը կը շարունակուի։ Այս պայքարին մէջ Լուի ԺԴ.ի անունը կը տրուի։ «Ձեզ զարմանար, կը գոչէ այն ատեն Միրապօ, որ Նանթի հրովարտակը յետս կոչող թագաւորին անունը կը յիշուի. բայց խորհեցէք որ այս խօսած բեմէս կը նշմարեմ այն մահապարտ պատուհանը՝ ուրկէց թագաւոր մը, իր հպատակներուն սպաննող, աշխարհի շահերը կրօնքի շահերուն հետ խառնելով, Ս. Բարթէլեմիի կոտորածին նշանը տուաւ»։ Այս զարհուրելի բացագանչութիւնը չի վերջացներ վիճաբանութիւնը, որ դեռ կ'երկարի։ Վերջապէս ընդունուեցաւ Լա Ռօշֆուքօ-Դուքսին առաջարկութիւնը։ Ժողովը կը յայտարարէ թէ իր զգացումները ծանօթ են, այլ թէ, ի յարգանս խղճերու ազատութեան, չի կրնար և պէտք ալ չունի խորհրդակցիլ իրեն ներկայացուած առաջարկութեան վրայ։

Հազիւ քանի մը օրեր անցած էին, և ահա ուրիշ միջոց մը գործածուեցաւ Ժողովին սպառնալու և զայն լուծելու համար։ Երկրին վարչական նոր կազմակերպութիւնը վերջացած էր, Ժողովուրդը պիտի հրաւիրուէր իր վարչական մարմինը ընտրելու, և խորհուեցաւ միեւնոյն ատեն նոր երեսփոխաններ ընտրել տալ անոր, արդի Ժողովը կազմողներուն տեղ։ Արդէն մերժուած էր ուրիշ անդամ մը առաջարկուած և վիճաբանուած այս միջոցը։ Կրկնուեցաւ 1790 Ապրիլին։ Յանձնառութեան անդա-

բանակներէն մէկ քանին իրաւասութիւնները մէկ տարուան սահմանած էր, և իրաւ մէկ տարին մօտ էր որ ժողովը կը գումարուէր։ 1789 Մայիսին բացուած, կը մնար 1790 Ապրիլ ամսուն մէջ։ Թէև այդ ընտրական տետրակները չեղեալ համարուած էին, թէև պատուոյ խօսք տրուած էր չհեռանալ Սահմանադրութեան աւարտումէն առաջ, այս մարդիկը, որոնց համար ո՛չ հրատարակուած հրովարտակը կարևորութիւն ունէր, ոչ տրուած երդումը, երբ խիղճերը իրենց նպատակին հասնելու վրայ էր, կ'առաջարկին ուրիշ երեսփոխաններ ընտրել տալ և պաշտօնը անոնց յանձնել։ Մօրի, որուն վրայ կը ծանրանար այդ օրուան բեռը, իր դերը կատարեց ամէն ժամանակէ աւելի տպաւորութեամբ, բայց իր սովորականէն աւելի ճարտարութեամբ։ Ինքն ինք ժողովուրդին վեհապետութեան ջատագով կը կանգնի, և կ'ըսէ թէ մարդ մը չի կրնար երկար ատեն ինքզինքը ազգին տէրը ընել, և ժամանակեայ միայն եղած իրաւասութիւնները երկարաձգել։ Կը հարցնէ թէ ինչ հանգամանքով մարդ վեհապետական իրաւասութիւններ կը զգենու. կը պնդէ թէ օրէնսդիր և սահմանադիր իշխանութեան միջև զանազանութիւնը ցնորական զանազանութիւն մըն է, թէ վեհապետական Դաշնադիր ժողով մը ի բացակայութեան ս և է կառավարութեան միայն կրնայ գոյութիւն ունենալ, և թէ, եթէ ազգային ժողովը այդ Դաշնադիր ժողով կոչուածն է, ա՛յն ատեն պէտք է գահընկէց ընէ թագաւորը և թափուր հռչակէ գահը։ Այս բաներուն վրայ աղաղակներ կ'ընդմիջեն զայն և կը յայտնեն ընդհանուր զայրոյթը։ Միրապօ այն ատեն ոտք կ'ելլէ ամբիոն. «Կը հարցուի թէ, ըսաւ, ե՞րբէն ի վեր ժողովուրդին երեսփոխանները ազգային Դաշնադիր ժողովի դարձած են. կը պատասխանեմ։ Ա՛յն օրը ուր իրենց նիստերուն մուտքը զինուորներով շրջապատուած գտնելով, գացին նիստ գումարել առաջին տեղը ուր կրցան հաւաքուիլ, երդում ըրին համար թէ կը նախընտրեն մեռնիլ քան մատնել և լքանել ազգին իրաւունքները։ Մեր իրաւասութիւնները, ինչ որ ալ եղած ըլլային, ա՛յդ օրը բնութիւն փոխեցին։ Մեր ի գործ դրած իրաւասութիւնները ինչ որ ալ ըլլան, մեր ջանքերը մեր աշխատութիւնները օրինականացուցին զանոնք։ Ամէնքդ ալ կը յիշէք խօսքը հին ժամանակներու ա՛յն մեծ մարդուն, որ օրինական ձևերը անտես ըրած էր հայրենիքը փրկելու համար։ Երբ կուսակցական տրիբուն մը հրաւէր կարդաց անոր ըսել թէ իր վարմունքը օրինակա՞ն էր։ Պատասխանեց. կ'երդնում որ հայրենիքը ազատեցի։ Պարոննե՛ր (կը գոչէ այն ատեն Միրապօ Դաշնադրական երեսփոխաններուն ուղղելով խօսքը), կ'երդնում որ դուք փրկեցիք Ֆրանսան»։

Այս հիանալի երդումին վրայ, կ'ըսէ Ֆէրիէռ, ամբողջ ժողովը, գոցցես յանկարծահաս ներշնչումէ մը քշուած, վիճաբանութիւնը կը փակէ, և կը վճռէ թէ ընտրական հաւաքումները պիտի չցրուին նոր երեսփոխաններու ընտրութեամբ։

Այսպէս այս նոր միջոցն ալ անօգուտ եղաւ, և ժողովը կրցաւ իր աշխատութիւնները շարունակել։ Բայց խռովութիւնները կը շարունակուէին նմանապէս բոլոր Ֆրանսայի մէջ։ Հրամանատար որ Վուաղէն ջարդուեցաւ ժողովուրդին կողմէ. ազգային պահնորդները գրաւեցին Մարսիլիոյ բերդերը։ Հակառակ խմբերով շարժումներ տեղի ունեցան Նիմի և Մոնթօպանի մէջ։ Տուրինոյէն ղրկուած պատուիրակներ գրգռած էին կաթոլիկները, խռովութիւններ ըրած էին, որոնցմով միապետութիւնը վտանգուած կը հռչա-

կ'ելէին, եւ կը պահանջէին որ կաթոլիկ կրօնքը Պետութեան կրօնք յայտարարուի։ Ի զուր արքայական արտայայտութիւն մը պատասխանած էր. անոնք ալ յանկարծ փոխադարձուցած էին։ Բողոքականները կաթոլիկներուն հետ կը կռուէին, եւ վերջինները՝ ի զուր սպասելով Տուրինոյէն խոստացուած օգնութիւններուն, վերջապէս վանուած էին։ Զանազան ազգային պահակներ շարժման մէջ դրուած էին, ապստամբներուն դէմ հայրենասէրներուն օգնելու համար, կռիւը այսպէս մղուած էր, դերակամս Միրաբօ, իր մեծանուն եղբօր յայտնի հակառակորդ, բեմին բարձունքէն անձամբ քաղաքային պատերազմը ծանուցանելով, կարծես ժողովին մէջ ալ նետեց զայն իր շարժումովը, իր ձեւերովը իր խօսքերովը։

Այսպէս, մինչ երեսփոխաններուն չափաւոր մասը կը ջանար յեղափոխական խանդը մեղմացնել, անխոհեմ ընդդիմադիր մաս մը տենդը՝ կը յուզէր՝ զոր դադար մը պիտի կրնար հանգարտեցնել, եւ պատրուակներ կը հայթայթէր ժողովրդային ամենաբուռն առաջնորդներուն։ Գլուպները աւելի ծայրայեղ կ'ըլլային։ Ժագոպէններու գլուպը, Պրըթօն գլուպէն ծնած, եւ նախ Վերսայլ ապա Բարիզ հաստատուած, միւսները կը գերազանցէր թիւով, մտքի կարողութիւններով եւ բռնակալ ուժգնութեամբ(*։ Իր նիստերը անընդհատ էին Ժողովին նիստերուն նման։ Կը կանխէր վիճաբանիլ Ժողովէն անցնելիք բոլոր հարցերուն վրայ, եւ որոշումներ կը յայտնէր, որոնք արդէն նախադեկոյց մըն էին օրէնսդիրներուն համար։ Հոն կը հաւաքուէին ժողովրդային գլխաւոր երեսփոխանները, եւ ամէնէն յամառները հոն կը գտնէին ոյժ եւ գրգռում։ Լաֆայէթ, այս ահաւոր ազդեցութեան դէմ մարտնչելու համար, միաբանած էր Պայիի եւ ամէնէն լուսամիտ մարդոց հետ, եւ 89ի կոչուած ուրիշ գլուպ մը կազմած էր, որ յետոյ կոչուեցաւ Ֆէօյեաններու գլուպ մայիս 12ին գոցուած)։ Բայց միջոցը անզօր էր. հարիւր հանդարտաբարոյ եւ բարեկիրթ մարդոց մէկ հաւաքումը չէր կրնար իրեն հրաւիրել խուժանը Ժագոպէններու գլուպին նման, ուր անձնատուր կ'ըլլային ժողովրդային կիրքերու բովանդակ ստահակութեան։ Միակ միջոցը պիտի ըլլար գլուպները գոցել, բայց արգելքը ա՛յնքան համարձակ եւ ա՛յնքան վստահելի չէր որ ժողովրդային կուսակցութիւնը զրկեցնէ նմանօրինակ ուժի աղբիւրի մը գործածութիւնը։ Լամէթները կը տիրապետէին Ժագոպէններու գլուպին մէջ։ Միրաբօ հաւասարապէս կ'երեւար մէկուն եւ միւսին մէջ. ամէնուն յայտնի էր թէ իր տեղը բոլոր կուսակցութիւններուն մէջ էր։ Շատ չանցած առիթ մը ներկայացաւ՝ ուր իր դերը աւելի լաւ մէջտեղ ելաւ, եւ ուր միապետութեան տարաւ յիշատակելի յաղթանակ մը, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։

Այս թուականին ուր հասած ենք, ֆրանսական յեղափոխութիւնը կը սկսէր օտար վեհապետներուն ակնարկները իրեն քաշել. իր լեզուն ա՛յնքան բարձր, ա՛յնքան անձկուն էր, ընդհանրականութեան նկարագիր մը ունէր՝ ա՛յնքան յարմարագոյն մէկէ աւելի ժողովուրդի, որ օտար իշխանները պարտաւորուեցան ահաբեկիլ անկէց։ Մինչեւ այն ատեն վաղանցիկ յուզում մը կարծուած էր, բայց Ժողովին յաջողութիւնները, անոր հաստատամտութիւնը, անոր անակնկալ յարատեւութիւնը, եւ

*) Սահմանադրասիրաց բացուած այս գլուպը 1789 Հոկտ.ին Բարիզ փոխադրուեցաւ, եւ այնուհետեւ ճանչցուեցաւ Ժագոպէններու գլուբ անունին տակ, որովհետեւ Ժագոպէններու վանքին մէկ սրահին մէջ կը գումարուէր, Սէնթ-Օնորէ փողոց։



ՖԱՎՐԱ ՄԱՐՔԻԶԻՆ ՄԱՀԸ

ժամանակն անոր առաջադրած ապագան, զոր բոլոր ազգերուն ալ կ'առաջադրէր, պարտաւորեցին աւելի յարգանք և աւելի ատելութիւն հրաւիրել և դահլիճները զբաղեցնելու պատիւն արժանացնել զայն: Եւրոպա այն ատեն երկու թշնամի դաշնակցութիւններու բաժնուած էր. մէկ կողմէն անգլեւպրուսիական դաշնակցութիւնը և միւս կողմէն կայսերական արքունիքները:

Ֆրետերիք Կիյեօմ Բրուսիոյ գահուն վրայ յաջորդած էր մեծն Ֆրետերիքի: Այս վեհապետը, յողդողդ և տկար, իր մեծահռչակ նախորդին քաղաքականութենէն հրաժարելով, Ֆրանսայի զինակցութիւնը լքած էր ի փոխարէն Անգլիոյ զինակցութեան: Այդ տէրութեան հետ միացած, կազմած էր ա՛յն նշանաւոր անգլեւպրուսիական դաշնակցութիւնը, որ մեծ բաներ փորձեց, բայց ոչ մին գործադրեց, որ Աւստրիոյ և Ռուսիոյ դէմ ոտք հանեց Շուէտը,

Լեհաստանը, Թուրքիան, յետոյ լքեց զամէն անոնք՝ զորս ոտք հանած էր, և նոյն իսկ նպաստեց աւարելով զանոնք, բաժնելով Բրուսիան։

Միացեալ Անգլիոյ և Բրուսիոյ ծրագիրն եղած էր Ռուսիան և Աւստրիան փճացնել, անոնց դէմ գրգռելով Շուէտը՝ ուր կը թագաւորէր ասպետահոգի Կիւսթաւ, Լեհաստանը՝ որ առաջին բաժանումէ մը կը հեծեծէր, և ռուսական արշաւանքներէն զայրագնած Թուրքիան։ Այս դաշնակցութեան մէջ Անգլիոյ մասնաւոր դիտաւորութիւնն էր վրէժ լուծել ամերիկեան գաղթականներուն Ֆրանսայի կողմէ եղած օգնութեանց, առանց պատերազմ հռչակելու անոր դէմ։ Ասոր միջոցը գտած էր իրարու հետ բանուիլ տալով Թուրքերն ու Ռուսերը։ Ֆրանսա այս երկու ժողովուրդներուն միջև չէր կրնար չեզոք մնալ առանց Թուրքերն իրմէ պաղեցնելու, որոնք յոյս դրած էին իրեն վրայ։ և հակառակ պարագային՝ պիտի կորսնցնէր Արևելքի մէջ իր առևտրական տիրապետութիւնը։ Միւս կողմէ պատերազմին մասնակցելով՝ Ռուսիոյ զինակցութիւնը կը կորսնցնէր, որուն հետ նոր կնքած էր յանհունս շահաւոր դաշնակցութիւն մը, որով ապահովուած էին Ֆրանսայի համար ատաղձը և բոլոր առարկաները՝ զորս Հիւսիս առատօրէն կը մատակարարէ նաւատորմին։ Այսպէս երկու պարագաներուն մէջ Ֆրանսա վնասի կ՚ենթարկուէր։ Մնաց որ Անգլիա իր ուժերը կը տրամադրէր և կը պատրաստուէր ի հարկին պարզել զանոնք։ Անկէց զատ, Ֆրանսայի ելմտական վիճակին մէջ անկարգութիւնը տեսնելով Երևելեաց ժողովին օրով, Սահմանադիր ժողովին օրով ալ ժողովրդային շփոթութիւնը, չէր կարծեր որ պատերազմի պէտք ունենար, և բաւած է թէ Անգլիա կը նախընտրէր Ֆրանսան խորտակել աւելի ներքին խռովութիւններով քան թէ զինու զօրութեամբ։ Ուստի ամբաստանուած է ան թէ միշտ հրահրած է մեր անմիաբանութիւնները։

Այս անգլեբրուսիական դաշնակցութիւնը քանի մը ճակատամարտներ մղուելու պատճառ եղած էր, որոնց յաջողութիւնը սակայն կեղակարծ եղաւ։ Կիւսթաւ դիւցազնաբար քաշուեցաւ դիրքէ մը՝ ուր մտած էր իբրև բախտախնդիր։ Ապստամբ Հոլանտա տեղը նստաւ անգլիական միջնորդութիւններուն և բրուսիական բանակներուն շնորհիւ։ Վարպետօրէն Անգլիա այսպէս Ֆրանսան զրկած էր ծովային հզօր զինակցութենէ մը. և բրուսիական վեհապետը, որ սնափառ յաջողութիւններ միայն կը փնտռէր, վրէժ լուծեց այսպէս Հոլանտայի խորհրդարանէն ա՛յն նախատինքին փոխարէն, որուն ենթարկուած էր խնամակալին կինը՝ որ Ֆրեդերիք Կիյոմի հարազատ քոյրն էր։ Լեհաստան կազմակերպուելով զէնք առնելու վրայ էր։ Թուրքիա յաղթուած էր Ռուսիայէն։ Սակայն Գերման կայսեր՝ Յօզէֆ Բ.ի մահը, 1790 յունուարին, պատերազմներուն կերպարանքը փոխեց։ Լէոփոլդ, այս լուսամիտ և խաղաղասէր իշխանը, որուն երջանիկ թագաւորութիւնը օրհնուած էր Թօսքանա, յաջորդեց Յօզէֆի։ Լէոփոլդ, ճարտար որքան խոհեմ, ուզեց վերջ տալ պատերազմին, և յաջողելու համար գործածեց հնարքի, պատրանքի միջոցները, որոնք խիստ կ՚ազդէին Ֆրեդերիք Կիյոմի ա՛յնքան յեղյեղուկ երևակայութեան վրայ։ Այս վեհապետին հասկցուցին հանգստութեան քաղցրութիւնները, իր ժողովուրդին վրայ երկար ատեն ի վեր ծանրացող պատերազմին չարիքները, և վերջապէս ա՛յնքան ազատարար սկզբունքներ հռչակող ֆրանսական յեղափոխութեան վտանգները։ Անոր մէջ արթնցուցին միահեծան իշխանութեան գաղափարները, նոյն իսկ անոր աչքին շողացուցին յոյս մը ֆրանսացի յեղափոխական-

նները պատմելու, ինչպէս պատմած էր Հոլանտայի յեղափոխականները, և համոզուեցաւ, ճիշդ ա՛յն վայրկեանին՝ երբ պիտի քաղէր առաւելութիւնները ա՛յն դաշնակցութեան, զոր ա՛յնքան խիզախօրէն յղացած էր իր նախարարը Հէրցպէրկ։ 1790 Յուլիսին հաշտութիւնը կնքուեցաւ Րայխընպախի մէջ։ Օգոստոսին Ռուսիա ևս իր հաշտութիւնը կնքեց Կիւսթավի հետ, և իրեն դէմ ունեցաւ միմիայն Լեհաստանը, ո՛չ այնքան երկիւղալի, և Թուրքերը՝ որոնք արդէն ամէն ուղղութեամբ յաղթահարուած էին։ Այս զանազան դէպքերը պիտի պատմենք վերջը։ Ուրեմն Տէրութեանց ուշադրութիւնը վերջապէս բոլորովին կ'ուղղուէր Ֆրանսական յեղափոխութեան վրայ։ Բրուսիոյ և Լէօբօլտի միջև հաշտութեան կնքումէն քիչ ժամանակ առաջ, երբ անգլեւբրուսիական դաշնակցութիւնը կը սպառնար երկու կայսերական արքունիքներուն, և կը հալածէր զաղտնի կերպով Ֆրանսան, ինչպէս նաև մեր յարատեւող և հաւատարիմ զինակիցը Սպանիան, անգլիական քանի մը մարտանաւեր Նօթքայի ծովախորշին մէջ գրաւուեցան Սպանիացիներէն։ Խիստ բուռն բողոքներ բարձրացան, որոնց հետեւանքով միեւնոյն ատեն ընդհանուր սպառազինութիւն մը տնօրինուեցաւ Անգլիոյ նաւահանգիստներուն մէջ։ Սպանիա, դաշնադրութիւնը մէջ բերելով, խնդրեց, և Լուի ԺԶ. հրամայեց տասնըհինգ մարտանաւ պատրաստել։ Անգլիան ամբաստանուեցաւ թէ այս առթիւ կ'ուզէ մեր նեղութիւնները աւելցնել։ Իրաւ է որ Լոնտոնի գլխաւորները քանիցս շնորհաւորեցին ազգային ժողովը. բայց անգլիական դահլիճը թոյլ կու տար որ քանի մը մարդասէրներ այնպիսի իմաստասիրական սրտազեղումներ և գդուանքներ թափէին, մինչ այդ միջոցին, կ'ըսեն, յատկապէս դրամ կը վճարէր կարգ մը զարմանալի դրդիչներու, որոնք սկսած էին դարձեալ ամենուրեք երեւնալ, և մեծ նեղութիւններ կը պատճառէին երկրին ազգային պաշտպանութեան։ Ներքին վրդովումները ա՛լ աւելի շատցան ընդհանուր սպառազինութեան պահուն, և անկարելի էր կապակցութիւն մը չտեսնել Անգլիոյ սպառնալիքներուն և անկարգութեանց վերածումին միջև։ Լաֆայէթ մանաւանդ, որ հանրային անդորրութիւնը շահագրգռող հարցերու մասին միայն խօսք կ'առնէր երբեմն, բեմին վրայէն բացէ բաց զաղտնի ազդեցութեան մը խօսքը ըրաւ. «Չեմ կրնար, ըսաւ, ինքզինքս զսպել և դիտել չտալ Ժողովին թէ նոր և միաձոյլ խմորում մը կը յայտնուի Սթրազպուրկէն Նիմ, Պրէսթէն Թուլոն։ Ժողովուրդին թշնամիները ի զուր կ'աշխատին այս գրգռումը ժողովուրդին վերագրել, երբ անիկա զաղտնի ազդեցութեան մը բոլոր նշանները կը կրէ։ Գաւառները կը կազմակերպենք, գիւղերը աւերուքանդ կ'ընեն. դրացի տէրութիւնները կը զինուին, և ահա իսկոյն անկարգութիւնը մեր նաւահանգիստներուն և մեր նաւարաններուն մէջ է»։ Արդարև քանի մը հրամատարներ սպաննուած էին, և դիպուածո՞վ թէ յատկապէս զոհուած էին մեր լաւագոյն ծովային սպաները։ Անգլիական դեսպանը իր արքունիքին յանձնարարութեամբ հերքեց այս ամբաստանութիւնները։ Բայց յայտնի է թէ ի՛նչ վստահութեան արժանի են այս պատգամները։ Գալօն ալ գրած էր թագաւորին Անգլիան արդարացնելու համար. բայց Գալօն կասկածելի էր ի դիմաց օտարին խօսելով։ Ի զուր կ'ըսէր թէ ամէն ծախք ծանօթ է խորհրդարանական կառավարութեան մը մէջ. թէ նոյն իսկ զաղտնի ծախքերը իբր այն գոնէ յայտնապէս կը խոստովանուին, և թէ անգլիական ելմտացոյցներուն մէջ

այդ տեսակ գաղտնի վարկ բնաւ չկայ։ Փորձով ապացուցուած է թէ դրամ չի պակսիր բնաւ նոյն իսկ պատասխանատու նախարարներուն։ Բայց խնդիրը այն է թէ ժամանակը, որ ամէն բան կը քօղազերծէ, այս մասին բան մը երեւան հանած չէ, և թէ Նէքէր, որ ասիկա գիտնալու ամէնէն յարմար անձն էր իր պաշտօնին բերմամբ, այս գաղտնի ազդեցութեան բնաւ չէ հաւատացած։

Թագաւորը, ինչպէս տեսանք, Ժողովին ազդարարած էր տասնըհինգ մարտնաւ պատրաստել, խորհելով, կ'ըսէր, թէ Ժողովը պիտի հաւանի այս կարգադրութեան և հարկ եղած ծախքերը պիտի քուէարկէ։ Ժողովը կատարելապէս ընդունեց արքայական յանձնարարագիրը. բայց սահմանադրական խնդիր մը տեսաւ անոր մէջ զոր հարկ համարեցաւ լուծել Թագաւորին պատասխան տալէ առաջ։ «Որոշումնիս որոշում է, ըսաւ Աղեքսանդր Լամէթ, մեր վիճաբանութիւնը չի կրնար յապաղեցնել զայն. ուրեմն պէտք է նախապէս հաստատել սա՛ կէտը թէ հաշտութիւն կամ պատերազմ ընելու իրաւունքը որո՞ւ պիտի վերապահուի, Թագաւորի՞ն թէ Ժողովին»։ Արդարեւ, ասիկա հաստատուելիք վերջին կարեւոր իրաւասութիւնն էր, և մին անոնցմէ՝ որոնք ամէնէն աւելի շահեկանութիւն պիտի յուզէր։ Երեւակայութիւնները լեցուած էին արքունիքին թերութիւններով, մերթ փառասիրութեան և մերթ տկարութեան անոնց փոփոխամտութեամբ, և չէր ուզուեր գահուն թողուլ կա՛մ ազգը վտանգաւոր պատերազմներու մէջ մղելու իշխանութիւնը, կամ վատութիւններով և թուլամորթութիւններով զայն անպատուելու իշխանութիւնը։ Սակայն պատերազմի և խաղաղութեան հոգը բոլոր կառավարական գործերէն աւելի կը պահանջէ գործունէութիւն, ուր գործադիր իշխանութիւնը ամէնէն աւելի ազդեցութիւն պարտաւոր է ի գործ դնել. ա՛յնպիսի գործ մըն է ուր պէտք է աւելի ազատ թողուլ զայն, որպէս զի գործէ յօժարակամ և լաւ։ Կանխաւ ծանուցուած էր Միրաբոյի կարծիքը, որուն համար կ'ըսուէր թէ շահուած է արքունիքին կողմէ։ Առիթը նպաստաւոր էր ատենապետին ձեռքէն խլելու համար այն ժողովրդականութիւնը՝ որ ամէնուն նախանձը կը շարժէր։ Լամէթները զգացած էին ասիկա, և Պառնավը լեցուցած էին որ ընկճէր Միրաբոն։ Աջակողմը քաշուեցաւ, եթէ կրնանք այսպէս ըսել, և ասպարէզը ազատ թողուց այդ երկու ախոյեաններուն։

Վիճաբանութեան կը սպասուէր անհամբեր։ Բացուեցաւ Մայիս 14էն 22 նիստերը։ Նախնական գաղափարները միայն պարզող քանի մը ատենաբաններէ վերջ, Միրաբոյի ձայնը լսուեցաւ, որ հարցը դրաւ բոլորովին նոր կերպով մը։ Իր կարծիքով պատերազմը գրեթէ միշտ յանկարծական է. թշնամութիւնները կը սկսին սպառնալիքներէն առաջ. Թագաւորը, որ հանրային փրկութեան գործով ծանրաբեռնուած է, պարտաւոր է վանել զանոնք, և այսպէս պատերազմը մղուած կ'ըլլայ արդէն երբ Ժողովը չէ կրցած միջամտել։ Պայմանագրութիւններուն համար ալ այսպէս է. Թագաւորը միայն կրնայ բուն վայրկեանը ըմբռնել բանակցելու, խորհրդակցելու, վիճելու Տէրութեանց հետ։ Ժողովը ձեռք բերուած պայմանները միայն կրնայ վաւերացնել։ Երկու պարագաներուն մէջ Թագաւորը միայն կրնայ գործել, և Ժողովը հաւանիլ կամ մերժել։ Ուրեմն Միրաբօ կ'ուզէ որ գործադիր իշխանութիւնը ազատ ըլլայ դիմադրել սկըսուած թշնամութիւններուն, և օրէնսդիր իշխանութիւնն ալ, ըստ պարագային, կը հանդուրժէ պատերազմին շարունակութիւնը, կամ հաշտութիւն կը պահանջէ։ Այս կարծիքը ծափահարուե-

ցաւ․ որովհետեւ Միրապոյի ձայնը միշտ կը ծափահարուէր։ Սակայն Պառնավ խօսք կ՚առնէ․ և անտես ընելով միւս ատենաբանները՝ կը պատասխանէ միմիայն Միրապոյի։ Իրաւ է որ, կ՚ըսէ, յաճախ սուրը քաշուած կ՚ըլլայ պատեանէն ազգին խորհրդակցութեան դիմուելէ առաջ․ բայց կը պնդէ թէ թշնամութիւնները պատերազմ ռազմ չեն․ թէ թագաւորը պէտք է վանէ զանոնք և իսկոյն իմացնէ ժողովին, որ այն ատեն վեհապետօրէն իր սեփական դիտումը կը հռչակէ։ Այսպէս բոլոր տարբերութիւնը բառերուն մէջ է, որովհետեւ Միրապօ ժողովին իրաւունք կու տայ պատերազմը մերժելու և հաշտութիւն պահանջելու, Պառնավ ալ՝ մին կամ միւսը յայտարարելու իրաւունքը․ բայց երկու պարագաներուն մէջ ալ ժողովին բաղձանքը հարկեցուցիչ էր, և Պառնավ եւս Միրապոյէն աւելի բան մը չէր տար անոր։ Այսու հանդերձ Պառնավ կը ծափահարուի և ժողովուրդին կողմէ յաղթանակաւ կը տարուի, զրոյց կը տարածուի թէ իր հակառակորդը ծախուած է։ Փողոցները բարձրագոչ կը պոռացնեն պարսաւագիր մը Միրապօ կոմսին մեծ մատնութիւնը մակագրով։ Առիթը վճռական էր, իւրաքանչիւր ոք ահարկու ըմբիշէն ձիգ մը կը սպասէր։ Կ՚ուզէ որ պատասխան տայ, խօսք կը տրուի իրեն, բեմ կ՚ելլէ զինքը մահիկ ընելու համար հաւաքուած ահագին բազմութեան մը առջեւ, և բեմ ելած ատեն կը յայտարարէ թէ մեռած կամ յաղթող վար պիտի իջնէ անկէ։ «Զիս ալ, ըսաւ սկսելով, յաղթանակաւ տարին ասկէց առաջ և սակայն այսօր կը պոռան Միրապօ կոմսին մեծ մատնութիւնը։ Այս օրինակին պէտք չունէի գիտնալու համար թէ Կապիտոլէն Տարպեան ժայռ մէկ քայլ կայ միայն։ Սակայն այս վարէն վեր հարուածները զիս չպիտի կասեցնեն իմ ասպարէզիս մէջ»։ Այս պատկառազդու Նախաբանէն վերջ, կը ծանուցանէ թէ Պառնավի միայն պիտի պատասխանէ, և սկիզբէն իսկ «Միտքերնիդ բացատրեցէ՛ք, ըսաւ անոր․ ձեր կարծիքով պարտաւորեցիք թագաւորը սկսուած թշնամութիւնները յայտագրելու, և ժողովին միայն իրաւունք տուիք այս մասին ազգային կամքը յայտնելու։ Ասոր վրայ կը կեցնեմ ձեզ և կը հրաւիրեմ մեր սկզբունքներուն, որոնք ազգային կամքին արտայայտութիւնը, կը բաժնեն ժողովին և թագաւորին միջեւ... Ձայն ժողովին միայն վերապահելով՝ Սահմանադրութեան դէմ գործեցիք և կարգ կը հրաւիրեմ ձեզ... Պատասխան չէք տար... կը շարունակեմ...»։

Իրաւցնէ պատասխանելիք ոչինչ կար։ Երկար ընդդիմախօսութեան մը միջոցին Պառնավ նշաւակ եղաւ Միրապոյի չանթահարիչ կշտամբանքներուն։ Միրապօ յօդուած առ յօդուած անոր կը պատասխանէ, և ցոյց կու տայ թէ իր հակառակորդը ժողովին իր տուածէն աւելի բան մը չտուաւ․ այլ թէ միայն․ թագաւորը պարզ զեկուցումի մը պարտաւորելով, զրկած էր զայն ազգային կամքին արտայայտութեան անհրաժեշտ եղող անոր աջակցութենէն․ վերջապէս կը լմցնէ պախարակելով Պառնավը իբրեւ պատասխանատու այսպիսի մեղապարտ մրցակցութեանց ա՛յսպիսի մարդոց միջեւ, որոնք, ըսաւ, պէտք է իբրեւ ճշմարիտ զինակից ընկերներ ապրին իրարու հետ։ Պառնավ իր կարծիքին կուսակիցները համրած էր․ Միրապօ ալ իրենները կը համրէ․ անոնց մէջ ցոյց կու տայ չափաւոր մարդիկը, Սահմանադրութեան առաջին հիմնադիրները, որոնք Ֆրանսայիներուն հետ ազատութեան վրայ կը խօսէին, զանոնք ազատութեան կը պատրաստէին, երբ այն անարգ ու ստորին զրպարտիչները արքունիքին կաթը կը ծծէին մասովը ցոյց կու տար Լամէթները, որոնք բա-

այդ տեսակ գաղտնի վարկ բնաւ չկայ։ Փորձով ապացուցուած է թէ դրամ չի պակսիր բնաւ նոյն իսկ պատասխանատու նախարարներուն։ Բայց խնդիրը այն է թէ ժամանակը, որ ամէն բան կը քօղազերծէ, այս մասին բան մը երեւան հանած չէ, և թէ Նէքէր, որ ասիկա դիմանալու ամէնէն յարմար անձն էր իր պաշտօնին բերմամբ, այս գաղտնի ազդեցութեան բնաւ չէ հաւատացած։

Թագաւորը, ինչպէս տեսանք, Ժողովին ազդարարած էր տասնըհինգ մարտանիւ պատրաստել, խորհելով, կ'ըսէր, թէ Ժողովը պիտի հաւանի այս կարգադրութեան և հարկ եղած ծախքերը պիտի քուէարկէ։ Ժողովը կատարելապէս ընդունեց արքայական յանձնարարագիրը. բայց սահմանադրական խնդիր մը տեսաւ անոր մէջ զոր հարկ համարեցաւ լուծել թագաւորին պատասխան տալէ առաջ։ «Որոշումնիս որոշում է, ըսաւ Ալեքսանդր Լամէթ, մեր վիճաբանութիւնը չի կրնար յապաղեցնել զայն. ուրեմն պէտք է նախապէս հաստատել սա՛ կէտը թէ հաշտութիւն կամ պատերազմ ընելու իրաւունքը որո՞ւ պիտի վերապահուի, Թագաւորի՞ն թէ Ժողովին»։ Արդարեւ, ասիկա հաստատուելիք վերջին կարեւոր իրաւասութիւնն էր, և մին անոնցմէ՝ որոնք ամէնէն աւելի շահեկանութիւն պիտի յուզէր։ Երեւակայութիւնները լեցուած էին արքունիքին թերութիւններով, մերթ փառասիրութեան և մերթ տկարութեան անոնց փոփոխամտութեամբ, և չէր ուզուեր գահուն թողուլ կա՛մ ազգը վտանգաւոր պատերազմներու մէջ մղելու իշխանութիւնը, կամ վատութիւններով և թուլամորթութիւններով զայն անպատուելու իշխանութիւնը։ Սակայն պատերազմի և խաղաղութեան հոգը, բոլոր կառավարական գործերէն աւելի կը պահանջէ գործունէութիւն, ուր գործադիր իշխանութիւնը ամէնէն աւելի ազդեցութիւն պարտաւոր է ի գործ դնել. ա՛յնպիսի գործ մըն է ուր պէտք է աւելի ազատ թողուլ զայն, որպէս զի գործէ յօժարակամ և լաւ։ Կանխաւ ծանուցուած էր Միրաբոյի կարծիքը, որուն համար կ'ըսուէր թէ շահուած է արքունիքին կողմէ։ Առիթը նպաստաւոր էր սահմանադրին ձեռքէն խլելու համար այն ժողովրդականութիւնը՝ որ ամէնուն նախանձը կը շարժէր։ Լամէթները զգացած էին ասիկա, և Պառնավը լեցուցած էին որ ընկճէր Միրաբօն։ Աջակողմը քաշուեցաւ, եթէ կրնանք այսպէս ըսել, և ասպարէզը ազատ թողուց այդ երկու ախոյեաններուն։

Վիճաբանութեան կը սպասուէր անհամբեր։ Բացուեցաւ Մայիս 14էն 22 նիստերը։ Նախնական գաղափարները միայն պարզող քանի մը ատենաբաններէ վերջ, Միրաբոյի ձայնը լսուեցաւ, որ հարցը դրաւ բոլորովին նոր կերպով մը։ Իր կարծիքով պատերազմը գրեթէ միշտ յանկարծական է. թշնամութիւնները կը սկսին սպառնալիքներէն առաջ. Թագաւորը, որ հանրային փրկութեան գործով ծանրաբեռնուած է, պարտաւոր է վանել զանոնք, և այսպէս պատերազմը մղուած կ'ըլլայ արդէն երբ Ժողովը չէ կրցած միջամտել։ Դաշնագրութիւններուն համար ալ այսպէս է. Թագաւորը միայն կրնայ բուն վայրկեանը ըմբռնել բանակցելու, խորհրդակցելու, վիճելու Տէրութեանց հետ։ Ժողովը ձեռք բերուած պայմանները միայն կրնայ վաւերացնել։ Երկու պարագաներուն մէջ Թագաւորը միայն կրնայ գործել, և Ժողովը հաւանիլ կամ մերժել։ Ուրեմն Միրաբօ կ'ուզէ որ գործադիր իշխանութիւնը ազատ ըլլայ դիմադրել սկըսուած թշնամութիւններուն, և օրէնսդիր իշխանութիւնն ալ, ըստ պարագային, կը հանդուրժէ պատերազմին շարունակութիւնը, կամ հաշտութիւն կը պահանջէ։ Այս կարծիքը ծափահարուե-

ցաւ․ որովհետեւ Միրաբոյի ձայնը միշտ կը ծափահարուէր։ Սակայն Պառնաւ խօսք կ՚առնէ․ եւ անտես ընելով միւս ատենաբանները՝ կը պատասխանէ միմիայն Միրաբոյի։ Իրաւ է որ, կ՚ըսէ, յաճախ սուրը քաշուած կ՚ըլլայ պատեանէն ազգին խորհրդակցութեան դիմուելէ առաջ․ բայց կը պնդէ թէ թշնամութիւնները պատերազմ բազմ չեն․ թէ Թագաւորը պէտք է վանէ զանոնք եւ իսկոյն իմացնէ ժողովին, որ այն ատեն վճռապէսօրէն իր սեփական դիտումը կը հաչակէ։ Այսպէս բոլոր տարբերութիւնը բառերուն մէջ է, որովհետեւ Միրաբօ ժողովին իրաւունք կու տայ պատերազմը մերժելու եւ հաշտութիւն պահանջելու, Պառնաւ ալ՝ մին կամ միւսը յայտարարելու իրաւունքը․ բայց երկու պարագաներուն մէջ ալ ժողովին բաղձանքը հարկեցուցիչ էր, եւ Պառնաւ եւս Միրաբոյէն աւելի բան մը չէր տար անոր։ Այսու հանդերձ Պառնաւ կը ծափահարուի եւ ժողովուրդին կողմէ յաղթանակաւ կը տարուի, զրոյց կը տարածուի թէ իր հակառակորդը ծախուած է։ Փողոցները բարձրագոչ կը պոռոցնեն պարսաւագիր մը Միրաբօ կոմսին մեծ մատնութիւնը մակագրով։ Առիթը վճռական էր, իւրաքանչիւր ոք ահարկու ըմբիշէն ճիգ մը կը սպասէր։ Կ՚ուզէ որ պատասխան տայ, խօսք կը տրուի իրեն, բեմ կ՚ելլէ զինքը մաքուր ընելու համար հաւաքուած ահագին բազմութեան մը առջեւ, եւ բեմ ելած ատեն կը յայտարարէ թէ մեռած կամ յաղթող վար պիտի իջնէ անկէց։ «Ձիս ալ, ըսաւ սկսելով, յաղթանակաւ տարին ասկէց առաջ եւ սակայն այսօր կը պոռան Միրաբօ կոմսին մեծ մատնութիւնը։ Այս օրինակին պէտք չունէի գիտնալու համար թէ Կապիտոլէն Տարպեան ժայռ մէկ քայլ կայ միայն։ Սակայն այս վարէն վեր հարուածները զիս չպիտի կասեցնեն իմ ասպարէզիս մէջ»։ Այս պատկառազդու Նախարարնէն վերջ, կը ծանուցանէ թէ Պառնաւի միայն պիտի պատասխանէ, եւ սկիզբէն իսկ «Միտքերնիդ բացատրեցէ՛ք, ըսաւ անոր․ ձեր կարծիքով պարտաւորեցիք Թագաւորը սկսուած թշնամութիւնները յայտագրելու, եւ ժողովին միայն իրաւունք տուիք այս մասին ազգային կամքը յայտնելու։ Ասոր վրայ կը կեցնեմ ձեզ եւ կը հրաւիրեմ մեր սկզբունքներուն, որոնք ազգային կամքին արտայայտութիւնը, կը բաժնեն ժողովին եւ Թագաւորին միջեւ... Զայն ժողովին միայն վերագրելով՝ Սահմանադրութեան դէմ գործեցիք, ի կարգ կը հրաւիրեմ ձեզ... Պատասխան չէք տար... կը շարունակեմ...»։

Իրաւցնէ պատասխանելիք ոչինչ կար։ Երկար ընդհմախօսութեան մը միջոցին Պառնաւ նշաւակ եղաւ Միրաբոյի չանթահարիչ կշտամբանքներուն։ Միրաբօ յօղուած առ յօղուած անոր կը պատասխանէ, եւ ցոյց կու տայ թէ իր հակառակորդը ժողովին իր տուածէն աւելի բան մը չտուաւ․ այլ թէ միայն․ Թագաւորը պարզ զինուորի մը պարտաւորելով, զրկած էր զայն ազգային կամքին արտայայտութեան անհրաժեշտ եղող անոր աջակցութենէն․ վերջապէս կը լմնցնէ պախարակելով Պառնաւը իբրեւ պատասխանատու այսպիսի մեղապարտ մրցակցութեանց ա՛յսպիսի մարդոց միջեւ, որոնք, ըսաւ, պէտք է իբրեւ ճշմարիտ զինակից ընկերներ ապրին իրարու հետ։ Պառնաւ իր կարծիքին կուսակիցները համրած էր․ Միրաբօ ալ իրենները կը համրէ․ անոնց մէջ ցոյց կու տայ չափաւոր մարդիկը, Սահմանադրութեան առաջին հիմնադիրները, որոնք Ֆրանսայիններուն հետ ազատութեան վրայ կը խօսէին, զանոնք ազատութեան կը պատրաստէին, երբ այն անարգ ու ստորին զրպարտիչները արքունիքին կաթը կը ծծէին՝ մատովը ցոյց կու տար Լամէնթները, որոնք բա-

րէք տեսած էին Թագուհիին ձեռքէն)։ «Մարդիկ, կը յարէր, որոնք մինչեւ իրենց գերեզմանը պիտի պատուէին իրենց բարեկամներէն և իրենց թշնամիներէն։»

Միաձայն ծափեր ողողեցին Միրաբոյին ձայնը։ Ժողովին մէջ երեսփոխաններու ստուար մաս մը կար որ ո՛չ աջին ո՛չ ձախին կը վերաբերէր, այլ, առանց ոեւէ կուսակցութեան, վարկեանին տպաւորութեան վրայ կը վճռէր։ Այս երեսփոխաններուն միջոցաւ էր որ կը տիրէին հանճարն ու բանականութիւնը, որովհետեւ մէկ կամ միւս կողմը հակելով մեծամասնութիւնը կը կազմէին։ Պառնաւ կ'ուզէ պատասխանել։ Ժողովը կ'ընդդիմանայ և կը պահանջէ քուէի դնել։ Միրաբոյին բանաձեւը, մեծապէս բարեփոխուած Շաբըլիէի կողմէ, մեծամասնութիւն կ'ունենայ, և վերջապէս կ'ընդունուի (Մայիս 22 1790) ընդհանուր գոհունակութիւն պատճառելով. վասն զի այս հակառակութիւնները իրենց ծնած շրջանակէն անդին չէին անցներ, և ժողովրդային կուսակցութիւնը ինքզինքը յաղթող կը կարծէր թէ՛ Միրաբոյի և թէ Լամէթներուն հետ։

Տրուած որոշումը թագաւորին և ազգին իրաւունք կու տար խաղաղութիւն և պատերազմ ընելու։ Թագաւորին տրամադրութեան կը յանձնուէր զինեալ ոյժը, Ժողովին կը ծանուցանէր թշնամութեանց սկիզբը, Ժողովը ի նիստ կը հրաւիրէր, եթէ չէր գումարուած արդէն, և կ'առաջադրէր հաշտութեան կամ պատերազմի վճիռը. Ժողովը կը խորհրդակցէր անոր բացորոշ առաջարկութեան վրայ, և թագաւորը յետոյ կը վաւերացնէր խորհրդակցութիւնը։ Շաբըլիէն էր որ յոյժ բանաւոր բարեփոխութեամբ մը պահանջած էր բացորոշ առաջարկութիւնը և վերջնական վաւերացումը։ Այս վճիռը, բանականութեան և արդէն իսկ հաստատուած սկզբունքներուն համաձայն, անկեղծ ուրախութիւն մը յուզեց սահմանադրականներուն մէջ, և խոլ յոյսեր հակայեղափոխականներուն մէջ, որոնք կարծեցին թէ համրային միտքը պիտի փոխուէր, և թէ Միրաբոյի այս յաղթութիւնը իրենցը պիտի ըլլար։ Լաֆայէթ, որ այս պարագային մէջ Միրաբոյի միացած էր, գրեց Պույիեէի, անդորրութեան և չափաւորութեան յոյսեր մշակել տալու անոր, և ջանաց, ինչպէս որ միշտ կ'ընէր, հաշտեցնել զայն նոր կարգին հետ։ Ժողովը իր ելմտական աշխատութիւնները կը շարունակէր։ Այս աշխատութեանց նպատակն էր կարելի եղածին չափ լաւ դատաւորել կղերին գոյքերը, որոնց վաճառումը, երկար ատենէ ի վեր վճռուած, չէր կրնար արգիլուիլ ո՛չ բողոքներով, ո՛չ խնդրագիրներով, ո՛չ դաւերով։ Ամենահզօր խմբակցութեան մը ձեռքէն առնել հողին մէկ մեծ մասը, կարելի եղածին չափ լաւ կերպով կրկին կատարել անոր բաժանումը, և ա՛յնպէս մը որ այս նոր բաժանումով ա՛լ աւելի պաղաբեր ըլլայ. այսպէս հողատէր ընել ժողովուրդին մէկ մասը՝ որ չէր. վերջապէս միեւնոյն գործողութեամբ Պետութեան պարտքերը գոցել, և ելեւմուտքին մէջ կարգ կանոն վերահաստատել. ա՛յս էր Ժողովին նպատակը, և ասոր օգտակարութեան վրայ ա՛յնքան համոզուած էր որ խոչընդոտներէն չէր սարսափեր բնաւ։ Ժողովը արդէն հրամայած էր Եկեղեցիին կալուածին գոյքերէն 400 միլիոնի չափ ծախել, բայց հարկ էր այս գոյքերը ծախելու միջոցը գտնել առանց մրցումով վարկաբեկ ընելու զանոնք, ամէնքը մէկ անգամուն սակարկելով։ Պայլի, Բարիզի քաղաքապետութեան անունով, առաջարկեց սքանչելիօրէն յղացուած ծրագիր մը, այսինքն այս գոյքերը փոխանցել քաղաքապետութիւններուն, որոնք պիտի գնէին զանոնք ամբողջովին՝ յետոյ մաս առ մաս քիչ

քիչ ծախսու համար, ա՛յնպէս որ աճուրդը կամ սակարկութիւնը մէկ անգամէն աւելի չունենայ։ Քաղաքապետութիւնները, պատրաստ դրամ չունենալով մէկէն ի մէկ վճարելու համար, պայմանաժամ պիտի տանէին, և պետական առնելիքաւորներուն պիտի վճարուէին թաղապետական գանձատոմսերով, որոնց վճարումը պիտի տանձնուէր յաջորդաբար։ Այս գանձատոմսերը, որոնք վճարանութեան միջոցին քաղաքապետական բոլոր կոչուեցան, թղթադրամի առաջին գաղափարը տուին։ Պայլիի ծրագրին հետևանքով, ձեռք դրուած կ'ըլլար եկեղեցական գոյքերուն վրայ․ կը տեղափոխուէին, կը բաժնուէին թաղապետութեանց միջև, և առնելիքաւորները իրենց դրուէին աւելի կը մօտենային քաղաքապետութեանց վրայ մուրհակ մը տալով քան Պետութեան վրայ։ Ուրեմն ապահովութիւնները կ'աւելնային, քանի որ վճարումը կը մօտենար․ նոյն խել առնելիքաւորներուն իրենց ձեռքն ալ վճարումը արդիւնաւորելը, քանի որ այդ գանձատոմսերով կրնային ստանալ ծախու հանուած գոյքերուն համեմատական արժէք մը։ Այսպէս շատ բան եղած էր առնելիքաւորներուն համար, բայց դեռ ամէնը չէր։ Կրնային իրենց գանձատոմսերը հողի չվերածել, խղճահարութեամբ կամ ուրիշ ոև է շարժառիթով, և այս պարագային այդ գանձատոմսերը՝ զորս պէտք էր որ պահէին իրենց քով, քանի որ իբրև դրամ չէր կրնար շրջաբերել, անոնց համար պարզ մուրհակներ էին անվճար։ Կը մնար տակ ընել վերջին կարգադրութիւն մը․ այսինքն այդ գանձատոմսերուն կամ մուրհակներուն շրջաբերութեան իրաւասութիւն տալ․ այն ատեն ճիշդ դրամ կ'ըլլային, և առնելիքաւորները, կարենալով իբրև վճարում ուրիշին տալ, ճիշդ ու ճիշդ իրենք ալ իրենց դրամը՝ գանձած կ'ըլլային։ Ուրիշ նկատում մըն ալ վճռական էր, դրամը կը պակսէր․ այդ սակաւութիւնը կը վերագրուէր տարագրութեան կամ գաղթականութեան որ շատ դրամ կ'առնէր կը տանէր, արտասահմանի մէջ ըլլալիք վճարումներուն, և վերջապէս չարակամութեան ալ կը վերագրուէր։ Բուն պատճառը խռովութիւններէն առաջ եկած վստահութեան պակասութիւնն էր։ Շրջաբերութեամբ է որ դրամ կ'ելլէ մէջտեղ․ երբ վստահութիւն ունի, փոխանակութիւններուն գործունէութիւնը կը սաստկանայ, դրամը արագ արագ կը քալէ, ամենուրեք կ'երեւնայ, և աւելի մեծաքանակ կը կարծուի, որովհետև աւելի կը ծառայէ․ բայց երբ ժողովրդական խռովութիւնները սարսափ տարածեն, դրամագլուխները կը մնան, դրամը դանդաղ կ'ընթանայ, յաճախ կը փախչի, և յանկարծ կ'ամբաստանուի իր բացակայութիւնը։

Ժողովին կողմէ ստացած համարուած մետաղադրամին պակասը լեցնելու փափաքը, առնելիքաւորներուն ձեռքը մեռած մուրհակի մը տալիք բան տպափոփոքը, ասկէց զատ խել մը ամպողական պէտքեր գոհացնելու հարկը այդ գանձատոմսերուն տալ տուաւ դրամի բնադրական ընթացք։ Առօլ առնելիքաւորը կը վճարուէր, քանի որ կրնար քշել իր ստացած թուղթը, և այսպէս համնիլ իր բոլոր յանձնառութիւններուն։ Եթէ ինք չէրուզած հող գնել, շրջաբերել թուղթը կրնէ ստացողները վերջ ի վերջոյ հող գնելու պարտաւոր պիտի ըլլային։ Այս ճամբով եկած բոլոր թուղթերը պիտի այրուէին հետզհետէ, այսպէս շատ չանցած կղերին հողերը պիտի բաշխուէին և թուղթը պիտի ջնջուէր։ Գանձատոմսերը օրական տա՛ չափ տոկոս մը կը բերէին, և արժէք մը կը ստանային ունեցողներուն ձեռքին մէջ մնալով։

Կղերը, որ իր գոյքերուն ստարացման համար մահապարտութեան միջոց մը կը տեսնէր ասոր մէջ, մերժեց զայն

ուժգնօրէն։ Իր դաշնակից ազնուականները և ուրիշներ, որոնք յեղափոխութեան գնացքը դիւրացնող ամէն բանի հակառակ էին, անոնք ալ ընդդիմացան և «Թղթադրա՛մ» դնելուն զզուանքով։ Բնականաբար անգլիացի նմանապէս Լօուի անունը ալսի թնդացնէին և անոր ձախողութեան յիշատակը ալսի վերադարձնել։ Սակայն բաղդատութիւնը ճիշդ չէր, որովհետեւ Լօուի թուղթը Հնդկաց Ընկերութեան ապագայ յաջողութիւններուն վրայ երաշխաւորուած կամ գրաւադիր էր, մինչ այս գանձատոմսերը հողային գրաւագրութեան մը վրայ կը հանգչէին, իրական և դիւրաւ գրաւելիք։ Լօու անգլիական արքունիքին համար ստուար խարդախութիւններ կամ սնոտի թուղթեր շինած էր, և ընկերութեան գրաւագրութեան ենթադրական արժէքին համեմատ շատ անցած էր. ընդհակառակը ժողովը իր հաստատած նոր ձեւերովը չէր կրնար կարծել թէ նմանօրինակ անիրաւութիւններ կրնային տեղի ունենալ։ Վերջապէս տարածուած գանձատոմսերուն գումարը անոնց յատկացուած դրամագլուխին մէկ շատ պզտիկ մասը միայն կը ներկայացնէր։ Բայց սա՛ ալ ճշմարիտ էր որ թուղթը, ո՛րքան ալ ապահով ըլլայ, իրականութիւն մը չէ դրամին պէս, և, Պայեռի բացատրութեան նման՝ Ֆիզիքական այժմէութիւն մը չէ։ Դրամը իրեն հետ կը կրէ իր իսկական արժէքը. թուղթը, ընդհակառակն, գործողութիւն մըն ալ կը պահանջէ, հողի գնում մը, իրականացում մը։ Ուստի դրամէն վար պէտք է ըլլայ, և քանի որ վար է, դրամը, զոր ո՛չ ոք կրնայ իբրեւ թուղթ տալ, կը պահուըտի և վերջապէս անհետ կ'ըլլայ։ ՍԹէ, ասկէ զատ, գոյքերու վարչութեան մէջ անկարգութիւններ, թուղթի անչափաւոր հրապարակումներ, շրջաբերող արժեթուղթերուն և դրամագլուխին միջեւ համեմատութիւնը ջնջեն, վստահութիւնը կ'անհետանայ. անուանական արժէքը կը պահուի, բայց իրական արժէքը ոչ ևս է. այս պայմանադրական դրամը տուողը զայն ընդունողը կողոպտած կ'ըլլայ, և մեծ տագնապ մը տեղի կ'ունենայ։ Այս ամէնը չըլլալիք բան չէր, և աւելի փորձառութեամբ յայտ ալ կ'երեւնար։ Ուստի գանձատոմսերու հրապարակումը, իբրեւ ազգանուիրական անօրինութիւն, շատ քննադատելի էր. բայց հարկաւոր էր իբրեւ քաղաքական անօրինութիւն, որովհետեւ պարագայական պէտքերու կը հասնէր, և սեփականութիւնը կը բաժնէր առանց ագարակային օրէնքի մը օգնութեան։ Ուրեմն ժողովը այլեւս չէր վարանիր, և հակառակ Մօրիի և իւրեններուն վճռեց բանի շրջաբերութեան հանել 400 միլիոնի տոկոսաւոր գանձատոմս (Ասինեա)։

Նէքէր երկար ատենէ ի վեր կորսնցուցած էր թագաւորին վստահութիւնը, իր պաշտօնակիցներուն հին պատկառանքը և ազգին խանդավառութիւնը։ Իր հաշիւներուն մէջ թաղուած, երբեմն ժողովին հետ կը վիճաբանէր։ Արտասովոր ծախքերու մասին իր վերադարձ մը պահանջել տուած էր կարմիր տետրակը, նշանաւոր տամարը, ուր կը գտնուէր, կ'ըսէին, բոլոր գաղտնի ծախքերուն ցանկը։ Լուի ԺԶ. դժուարաւ տեղի տուաւ, և կնքել տուաւ ա՛յն թերթերը՝ ուր իր նախորդին, Լուի ԺԵ.ի ծախքերը արձանագրուած էին։ Ժողովը յարգեց անոր փափկանկատութիւնը և այս թագաւորութեան ծախքերով միայն բաւականացաւ։ Թագաւորին համար անձնական բան մը չգտաւ հոն, շռայլութիւնները ամենքն ալ պալատականներուն վերաբերեալ էին։ Լամէթներուն համար 60,000 ֆր. նշանակուած էր, թագուհիին կողմէ անոնց դաստիարակութեան նուիրուած։ Այս գումարը կրկին տանելուին հանե



ԺԱԳՈՊԷՆՆԵՐՈՒՆ ԳԼԻՒՊԸ

բային գանձուն։ Հանդամանան թղթակ-ները զեղչուեցան ծառայութեանց և անձերուն հին վիճակին կրկին համե-մատութեամբ։ Ժողովը ամենուրեք մեծ չափաւորութիւն ցոյց տուաւ. Թագա-ւորէն խնդրեց որ ինք անձամբ հաս-տատէ անձնական գանձը, և ծափահա-րութեամբ քուէարկեց անոր խնդրած 25 միլիոնը։

Իր թիւովը, իր հմտութիւններովը, իր կարողութեամբը, իր որոշումներովը ցօրաւոր եղող այս Ժողովը Պետութեան բոլոր մասերը վերածնելու ահագին ծրագիրը յղացած էր, և քիչ առաջ ալ դատական նոր կարգադրութիւնը կա-նոնաւորած էր։ Դատարաններուն բաշ-խումը վարչութեանց բաժանումին հա-մեմատ կատարած էր, գաւառակի և գաւառի հաշուով։ Դատաւորները ժո-ղովրդային ընտրութեան թողուած էին։ Այս վերջին կարգադրութեան հակա-ռակ ուժգնօրէն մաքառեցան։ Հոս ալ

պարզուած էր քաղաքական ընտելացութիւնը, ապացուցանելու համար թէ դատական իշխանութիւնը կախում ունէր գործադիր իշխանութենէն, և թէ թագաւորը պէտք էր անուանէր դատաւորները։ Երկուստեք փաստեր գտած էին. բայց Ժողովին տալիք միակ փաստը, քանի որ սահմանադրական միապետութիւն մը հաստատել էր անոր նպատակը, սա՛ էր թէ թագաւորութիւնը, յաջորդաբար իր իրաւասութիւններէն մերկացած, պարզ ատենակութիւն մը կ'ըլլար, և Պետութիւնն ալ հանրապետութիւն մը։ Բայց խիստ մեծ յանդգնութիւն էր ըսել թէ ի՞նչ է միապետութիւնը. ան կը պահանջէ դիջումներ՝ զորս Ժողովուրդ մը բնաւ չի հաւանիր ընել դարթնումի առաջին վայրկեաններուն։ Ազգերուն բախտն է պահանջել կամ չափազանց կամ ոչինչ։ Ժողովը անկեղծօրէն կ'ուզէր թագաւորը, կը պատկառէր անորմէ, և անոր ապացոյցը կու տար ամէն վայրկեան. բայց անձը կը սիրէր, և առանց ասիկա միւսէն անցընելու կը խորտակէր իրը։

Արդարութեան և վարչութեան մէջ ներմուծուած այս միակերպութենէն վերջ, կը մնար կանոնաւորել կրօնքին սպասարկութիւնը, և միւսներուն պէս կազմակերպել զայն։ Արդէն, երբ հաստատուած էին մէն մի գաւառի մէջ վերաքննիչ ատեան մը և բարձրագոյն վարչութիւն մը բնական էր որ եպիսկոպոսութիւն մը հաստատուէր հոն։ Արդարև, ինչպէս հանդուրժել որ ինչ ինչ եպիսկոպոսութիւններ կամ դաւառական առաջնորդութիւններ հազար հինգ հարիւր քառակուսի փարսախ ընդարձակութիւն ունենային, մինչ ուրիշներ հազիւ քսան. որ ինչ ինչ աւագերէցութիւններ տասը փարսախ շրջանակ ունենային, մինչ ուրիշներ հազիւ տասնըհինգ ծուխ. որ շատ քահանաներ տարուան եօթը հարիւր ֆրանք ունենային, մինչ անոնց մօտիկը կը գտնուէին հազարաւոր քահանաներ, որոնք տասը, տասնըհինգ հազար ֆրանք եկամուտ կը հաշուէին։ Ժողովը, զեղծումները բարեկարգելով, ոտնձգութիւն չէր ըներ եկեղեցական վարդապետութեանց վրայ, ո՛չ ալ պապական հեղինակութեան վրայ։ Քանի որ շրջանակները, թեմերը միշտ աշխարհական իշխանութեան վերաբերած էին։ Ուրեմն նոր բաժանում մը կ'ուզէր կազմել, երբեմն եղածին պէս ժողովրդական ընտրութեան ենթարկել քահանաներն ու եպիսկոպոսները. և այս մասին ալ աշխարհական իշխանութեան վրայ ոտնձգութիւն կ'ընէր միայն. քանի որ եկեղեցական բարձր պաշտօնատարները թագաւորին կողմէ կ'ընտրուէին և Պապին կողմէ կը հաստատուէին։ Միւս կողմէ ամէնէն բարեկրօն երեսփոխաններու գործն էր այս ծրագիրը, որ անուանուեցաւ Քաղաքային կազմութիւն կղերի, և որ Ժողովին դէմ չարախօսութիւն առաջ բերաւ անոր ամէն բրածներէն աւելի։ Գամիւս և ուրիշ Յանսենականներն էին որ, ուզելով կրօնքը ամրապնդել Պետութեան մէջ, կ'աշխատէին ներդաշնակել զայն նոր օրէնքներուն հետ։ Ստոյգ է թէ, արդարութիւնը ամենուրեք վերահաստատուած ըլլալով տարօրինակ էր որ արդարութիւնը վերահաստատուած չըլլայ եկեղեցական վարչութեան մէջ՝ այլուր եղածին չափ։ Եթէ Գամիւս և ուրիշ քանի մը հոգիներ չըլլային, իմաստասէրներու դպրոցին մէջ սնած Ժողովին անդամները քրիստոնէութիւնը պիտի նկատէին Պետութեան մէջ ընդունուած միւս կրօնքներուն պէս և պիտի չզբաղէին անով։ Մխտեցան ա՛յնպիսի զգացումներու՝ որոնց դէմ մաքառիլ սովորութիւն չէ մեր նոր բարքերուն մէջ, երբ նոյն իսկ այդ զգացումները մերն ալ չըլլան։ Ուստի ոյժ տուին Գամիւսի կրօնական և անկեղծօրէն քրիստոնէական ծրագրին։ Կղերը ծառացաւ, պնդեց թէ ոտնձգութիւն կ'ըլլայ Պապին հոգեւոր

հոգեւորականութեան վրայ, և բողոքից Հռոմի։ Այսու հանդերձ ծրագրին գըլխաւոր խարխափինները ընդունուեցան (12 Յուլիս 1790) և իսկոյն մատուցուեցաւ Թագաւորին, որ ժամանակ խնդրեց քահանայապետին հաւանութեան համար։ Թագաւորը, իր լուսամիտ կրօնքովը այս յատակագծին իմաստութիւնը ճանչնալով, պապին գրեց անոր հաւանութիւնը առնելու, և ատով կղերին յարուցած բոլոր խոչընդոտները տապալելու անկեղծ փափաքով։ Ընդհուպ պիտի տեսնենք թէ ինչ մեքենայութիւններ խափանեցին իր փափաքին յաջողութիւնը։

Յուլիս ամիսը կը մօտենար․ քիչ ատենէն տարի մը պիտի ըլլար ՊասԹիյլի առումէն ի վեր, երբ ազգը ձեռք անցուցած բոլոր իշխանութիւնները, և իր կամքը կ'արտայայտէր Ժողովով, և զայն կը գործադրէր ինքնին, կամ իր հսկողութեան տակ գործադրել կու տար։ Յուլիս 14ը նկատուած էր նոր տարեգլուխ մը սկզբնաւորութեան օրը, և որոշուեցաւ անոր տարեդարձը տօնել մեծ հանդիսութեամբ։ Արդէն գաւառները, քաղաքները օրինակը տուած էին դաշնակցելու, միահաղոյն դիմադրելու համար յեղափոխութեան թշնամիներուն։ Բարիզի քաղաքապետութիւնը Յուլիս 14ին համար առաջարկեց բովանդակ Ֆրանսայի ընդհանուր դաշնակցութիւն մը, որ մայրաքաղաքին կեդրոնը տօնուի բոլոր ազգային պահնորդներուն և բոլոր զօրաբանակներուն պատուիրակներուն կողմէ։ Միաձայնութեամբ ընդունուեցաւ այս ծրագիրը, և անհամար պատրաստութիւններ տեսնուեցան տօնը իր նշանակին արժանի հանդիսացնելու համար։

Օտար ազգերը, ինչպէս տեսանք, երկար ատենէ ի վեր աչքերնին Ֆրանսայի դարձուցած էին, վեհապետները կը սկսէին առնել մեզ և մեղմէ վախնալ, ժողովուրդներն ալ յարգել մեզ։ Բուռական թիւով խանդավառ օտարականներ Ժողովին ներկայացան, իւրաքանչիւրը իր ազգին տարազով։ Իրենց առաջնորդը, Անաքարսիս Գլօց, ծննդեամբ Բրուսիացի, խոլ երեւակայութեամբ մը օժտուած, խնդրեց Դաշնակցութեան մասնակցիլ յանուն մարդկային ազգին։ Այս օտարականները՝ որ զանոնք չանանցներուն ծայրերէն կը թուէին, խորապէս կը յուզէին ներկաները։ Ժողովը ընդունեց խնդրանքը, և նախագահը այս օտարականներուն պատասխանեց թէ պիտի ընդունէին, որպէս զի կարենան իրենց տեսածները պատմել իրենց հայրենակիցներուն, և հասկցնեն ազատութեան ուրախութիւնները և բարիքները։

Այս տեսարանին պատճառած յաղումը ուրիշ մը առաջ բերաւ։ Լուի ԺԴ․ի ձիաւոր մէկ արձանը կը ներկայացնէր զայն իրր այն թէ ոտքով կը կոխէր քանի մը յաղթուած գաւառներու պատկերը։ «Ազատութեան օրերուն մէջ պէտք չէ հանդուրժել գերութեան այս յիշատակարաններուն, գոչեց Լամէթներէն մին։ Պէտք չէ որ Ֆրանշ-Գօնթցիները, Բարիզ եկած ատեննին, իրենց այսպէս շղթայակապ պատկերը տեսնեն»։ Մօրի մաքառեցաւ կարգադրութեան մը դէմ, որ մեծ կարեւորութիւն չունէր, զոր սակայն հարկ էր ընել հանրային ոգեւորութիւնը գոհացնելու համար։ Նոյն պահուն, ձայն մը առաջարկեց ջնջել կոմսի, մարքիզի, պարոնի, ևն․ տիտղոսները, արգիլել ազնուականներու սպասաւորներուն յատուկ համազգեստները, վերջապէս խափանել բոլոր ժառանգական պատուանունները։ Կրասեկն Մօնմօրանսի այժ տուաւ այս առաջարկութեան։ Ազնուական մը հարցուց թէ ինչ բան պիտի փոխանակուէր սա՛ բառերուն, Այսինչը կոմս եղաւ Պետութեան ծառայած ըլլալուն համար։ «Պարզապէս պիտի ըսուի թէ, պատասխանեց Լա-

ֆայէթ, այսինչը սխալութիւնը մինչեւ այսինչ օրը»: Բանաձեւն ընդունուեցաւ (Յունիս 16ի նիստ) հակառակ ազնուականներուն արտակարգ զայրոյթին, որոնք իրենց տիտղոսներու ջնջումէն աւելի կատղեցան քան յեղափոխութեան սկիզբէն ի վեր իրենց ըրած աւելի իրական կորուստներէն: Ժողովին աւելի չափաւոր մասը պիտի ուզէր որ տիտղոսները ջնջելով՝ ազատութիւն տրուի զանոնք կրել ուզողներուն: Լաֆայէթ փութաց արքունիքին իմացնելու վճիռին վաւերացուելէն առաջ, և դրդեց զայն կրկին ղրկել Ժողովին որ կը հաւանէր բարեփոխել: Բայց թագաւորը փութաց վաւերացնել և կարծուեցաւ ասոր մէջ տեսնել գործեր, աւելի գէշին տանելու յայտնի դիտաւորութիւն մը:

Դաշնակցութեան նպատակը եղաւ քաղաքացիական երդումը: Հարցուեցաւ թէ դաշնակցականք և Ժողովը երդումը թագաւորին առջե՞ւ պիտի ընէին, թէ թագաւորն ալ, իբրեւ հանրային առաջին պաշտօնատարը նկատուելով, միւսներուն հետ երդում պիտի ընէր հայրենիքին խորանին վրայ: Վերջին միջոցը նախամեծար համարուեցաւ: Ժողովը վերջապէս ձեւակերպութիւնը ներդաշնակեց իր օրէնքներուն հետ. և թագաւորը արարողականի մէջ եղաւ միայն ա՛յն ինչ որ էր Սահմանադրութեան մէջ: Արքունիքը, որուն չարունակ կասկածներ կը ներշնչէր Լաֆայէթ, սարսափահար եղաւ տարածուած լուրի մը վրայ, որուն համեմատ ան հրամանատար պիտի անուանուէր ամբողջ Ֆրանսայի բոլոր ազգային պահնորդներուն: Լաֆայէթը չճանչցողին համար այս կասկածները բնական չէին. և իր թըշնամիները ամէն կողմէ կ'աշխատէին աւելցնել այդ կասկածները: Արդարեւ ինչպէս համոզուիլ որ այդպիսի ժողովրդականութիւն վայելող մարդ մը, ա՛յնքան ստուար ուժի մը պետ, պիտի չուզէր չարաչար գործածել զայն: Սակայն չէր ուզեր, ան որոշած էր քաղաքացի ըլլալ միայն. և ըլլա՛յ առաքինութիւն, ըլլայ լաւ իմացուած փառասիրութիւն, արժանիքը միեւնոյնն է: Պէտք է որ մարդկային հպարտութիւնը տեղ մը հաստատուած ըլլայ. առաքինութիւնը կը կայանայ զայն ի բարին զետեղելուն մէջ: Լաֆայէթ, արքունիքին երկիւղը կանխելով, առաջարկեց որ միեւնոյն անհատը չի կրնար հրամայել գաւառի մը պահնորդներէն աւելին: Այս որոշումը ծափահարութեամբ ընդունուեցաւ և զօրավարին անշահախնդրութիւնը ոգեւորութեամբ: Սակայն Լաֆայէթ ստանձնեց տօնին բոլոր հոգը, և դաշնակցութեան պետ անուանուեցաւ բարիզեան պահակախումբերուն հրամանատարի իր տիտղոսին պատճառաւ:

Օրը կը մօտենար, և պատրաստութիւնները կ'ըլլային ամենամեծ գործունէութեամբ: Տօնը տեղի պիտի ունենար Արիսեան դաշտին մէջ, ընդարձակ դետին մը, որ կը տարածուի Զինուորական Վարժարանին և Սէնի ընթացքին միջեւ: Որոշուած էր մէջ տեղի հողը երկու կողմերուն վրայ փոխադրել, ամփիթատրոն մը կազմելու, ձեւով, որ կարենար բովանդակել հանդիսականներուն բազմութիւնը: Տասներկու հազար գործաւորներ անդադար կ'աշխատէին. և սակայն կը վախցուէր որ աշխատութիւնները չեն աւարտիր 14ին: Այն ատեն բնակիչները իրենք ալ ուզեցին միանալ գործաւորներուն: Մէկ վայրկեանի մէջ ամբողջ Ժողովուրդը գործաւորի փոխարկերպուեցաւ: Կրօնաւորներ, զինուորականներ, ամէն դասակարգի մարդիկ բահ ու բրիչ ձեռք առին. վայելչազգեստ կիներ ինքնին կը նպաստեն աշխատութեանց: Խանդավառութիւնը ընդհանուր և ընդփոյթ, հատուած առ հատուած կ'երթան այլագոյն դրօշներով և թմբուկի, չափորի ձայնով: Հոն հասնելով իրարու կը

խառնուրդն և միատին կ'աշխատին։ Գի-շերը գալուն և նշանը տրուելուն, իւրա-քանչիւրը կը միանայ իրեններուն և կը վերադառնայ իր տունը։ Այս անոյշ միաբանութիւնը մինչեւ աշխատու-թեանց վերջը տիրեց։ Այդ պահուն դաշնակցականք կը համակէին շարունակ, և կ'ընդունէին ամենամեծ փութկո-տութեամբ և սիրալիր ամփոփականու-թեամբ։ Սրտաշարժումը ընդհանուր էր, և ուրախութիւնը անկեղծ, հակառակ ա՛յն տագնապներուն զորս կը ջանային տարածել այս յուզումներուն անհաղորդ մնացած յոյժ սակաւաթիւ մարդիկ։ Կ'ըսէին թէ աւազակներ ժողովուրդին դաշնակցութեամբ զբաղած ատեն օգուտ պիտի քաղեն քաղաքը թալլելու համար։ Լոնտոնէն վերադարձող Օրլէանի դուք-սին շարաշուք ծրագիրներ կը վերա-գրուէին. սակայն ազգային զուարթու-թիւնը անայլայլելի եղաւ, և այդ չար մարգարէութիւններէն ո՛չ մէկուն հաւ-տացող չեղաւ։

14ը կը հասնի վերջապէս։ Գաւառ-ներէն և բանակէն պատուիրակ բոլոր դաշնակցականք, իրենց պետերուն և իրենց դրօշներուն տակ դասաւորուած, Պասթիլլի հրապարակէն կը մեկնին և Թիւյլըրի կ'երթան։ Պէտնի պատուի-րակները, Ֆէռօնըրիի փողոցէն անցած ատեն, ուր սպաննուած էր Հանրի Դ. անոր կը մատուցանեն յարգանք մը, որ յուզումի այս պահուն արցունքներով կը յայտնուի։ Դաշնակցականք, Թիւյ-լըրիի պարտէզը հասնելով, իրենց շար-քերուն մէջ կ'ընդունին քաղաքապե-տութիւնը և ժողովը։ Պատանի մա-նուկներու վաշտ մը, իրենց հայրերուն նման զինուած, ժողովականներուն առ-ջեւէն կ'երթար. ծերունիներու խումբ մը անոնց ետեւէն, և այսպէս կը յիշե-ցնէին Սպարտայի վաղեմի յիշատակ-ները։ Թափօրը կը յառաջանայ ժողո-վուրդին աղաղակներուն և ծափերուն միջեւ։ Տանիքները հանդիսականներով ծածկուած էին. տուները անոնցմով բեռնաւորուած։ Բանի մը օրուան մէջ Սէնի վրայ ձգուած կամուրջ մը ծաղկա-լից ճամբու մը վրայէն մէկ եզերքէն միւս կ'առաջնորդէր, և կը յանգէր դաշնակցութեան դաշտին դիմաց։ Թա-փօրը կ'անցնի մէջէն և իւրաքանչիւրը իր տեղը կը բռնէ։ Խորը յարդարուած հիանալի ամփիթատրոն մը ազգային իշխանութեանց վերապահուած էր։ Թա-գաւորն ու Նախագահը իրարու քով նստած էին ոսկեայ շուշանածաղիկներով ծածկուած հաւասար աթոռներու վրայ։ Թագաւորին ետեւ բարձրացուած պատշգամ մը կը կրէր թագուհին և արքունիքը։ Նախարարները թագաւորէն քիչ մը հեռու էին, և երեսփոխանները երկու կողմերը շարուած։ Չորս հարիւր հա-զար հանդիսատեսներ կողմնակի ամփի-թատրոնները կը լեցնէին. վաթսուն հա-զար զինեալ դաշնակցականներ իրենց շրջանական պտոյտները կ'ընէին միջնա-կայ դաշտին մէջ, և կեդրոնը, քսան հինգ ոտնաչափ խարիսխի մը վրայ, կը բարձրանար հայրենիքին հիասքանչ խորանը։ Ճերմակ շուրջառներ և եռա-գոյն կամարներ զգեցած երեք հարիւր քահանաներ այդ խորանին պատուան-դանները կը ծածկէին, և պատարագին պիտի սպասաւորէին։

Դաշնակցականներուն ժամանումը տեւեց երեք ժամ։ Այդ պահուն երկինք մութ ամպերով ծածկուած էր, և անձ-րեւ կը տեղար հեղեղաբար։ Այս եր-կինքը, որուն փայլը ա՛յնքան ճահա-բար կը համեմատուէր մարդոց ուրախու-թեան, ա՛յդ պահուն կը զլանար անոնց լոյս և զուարթութիւն։ Հանող վաշ-տերէն մին վար կը դնէ իր զէնքերը, և գաղափարը կ'ունենայ պար մը կազմե-լու. ամէնքն ալ իսկոյն անոր օրինա-կին կը հետեւին, և, մէկ վայրկենի մէջ, միջնակայ դաշտը կը խճողուի վաթսուն հազար մարդոցմով, զինուոր և քա-ղաքացի, որոնք խնդութիւնը կը հա-կադրեն փոթորիկին։ Հուսկ ուրեմն արարողութիւնը կը սկսի. երկինք, բա-րեբաշան դիպուածով մը, կը բացուի և

Իր շողով կը լուսափայլէ այս հանդիսաւոր տեսարանը։ Օթէօնի եպիսկոպոսը պատարագը կը սկսի. դպիրներ կ'ընկերանան գահերէցին ձայնին. թնդանօթը անոր կը խառնէ իր ուռնական որոտները։ Սուրբ պատարագէն վերջ՝ Լաֆայէթ ձիէն վար կ'իջնէ, գահուն պատուանդանին վրայէն կ'ելլէ և կ'երթայ ընդունիլ թագաւորին հրամանները։ Լուի ԺԶ. անոր կը յանձնէ երդումին բանաձեւը։ Լաֆայէթ խորան կը տանի զայն. և այդ պահուն բոլոր դրօշները կը շարժին, բոլոր թուրերը կը ճաճանչեն։ Զօրավարը, բանակը, նախագահը, երեսփոխանները կ'աղաղակեն. Կ'երդնո՛ւմ։ Թագաւորը, ձեռքը դէպ ի խորանը երկարելով, կ'ըսէ. Ես, թագաւոր Ֆրանսացւոց, կ'երդնում Պետութեան սահմանադրական օրէնքից ինձի տուած իշխանութիւնը գործածել ամուր պահելու Սահմանադրութիւնը, Ազգային Ժողովէն վճռուած եւ իմ կողմէ ընդունուած։ Այդ միջոցին թագուհին, ընդհանուր շարժումէն մղուած, իր թեւերուն մէջ կը բռնէ գահաժառանգ օգոստափառ մանուկը, և իր գահուած պատշգամէն ցոյց կու տայ զայն միաբանեալ ազգին։ Այս տեսարանին վրայ, հրճուանքի, սիրոյ, խանդավառութեան արտասովոր աղաղակներ կ'ուղուին դէպ ի մայրը և զաւակը, և բոլոր սիրտերը անոնցն են։ Նո՛յն այն պահուն է որ Ֆրանսա համօրէն, գաւառներուն ութսուն երեք գլխաւոր կեդրոններուն մէջ համախումբ, մի և նոյն երդումը կ'ընէր սիրելու թագաւորը ու զինք սիրէր զիրենք։ Բաբէ՛, այս վայրկեաններուն տեսութիւնը ինքնին կը գորովի, ամբաստանութիւնը տեղի կու տայ, ամէնքը երջանիկ են հասարակաց երջանկութեամբ, և ամէնուն պատկառանքով ամէնքն ալ հպարտ։ Միաբանութեան ա՛յսքան խորագունեցիկ այս հանդէսները ինչո՞ւ շուտ կը մոռցուին։

Այս վեհաշուք արարողութենէն վերջ՝ թափօրը կրկին բռնեց իր գնացքը, և ժողովուրդը ըմբոշխնեց ուրախութեան բոլոր ներշնչումները։ Ուրախճանութիւնները քանի մը օր տեւեցին։ Ցեսայ տեղի ունեցաւ դաշնակցականներուն մէկ ընդհանուր զօրահանդէսը։ Վաթսուն հազար մարդիկ զէնքի տակ էին և հիանալի տեսարան մը կը պարզէին, զինուորական և ազգային միանգամայն։ Երեկոյին Բարիզ սքանչելի հանդէս մը սարքեց։ Հաւաքումի գլխաւոր վայրն էր Արփեսեան դաշտը և Պաստիյլը։ Հինու հրապարակի փոխուած այդ հնօրեայ բանտին դետնին վրայ կը կարդացուէր. Հոս կը պարեն։ Դրօշանդաձեւ շարուած շողշողուն խարոյկներ արեւուն լոյսը կը փոխանակէին։ Փարթամներուն արգիլուած էր կառքերու դղրդիւնով խանգարել այս խաղաղաւէտ տօնը։ Ամէ՛ն մարդ ոտքով էր ժողովուրդ ըլլար, և այնպէս ըլլալուն համար ալ երջանիկ։ Ելիսեան դաշտերը սրտագրաւ տեսիլ մը կը պարզէին։ Անձինք որ կը շրջագայէին հոն անշշուկ, անխռով, անհամար, անխառնակ։ Բոլոր իրերաձոյլ դատակարգերը կը ճեմէին հոն լոյսերուն աղօտ փայլով, և գոհ կը թուէին որ միասին են։ Այսպէս, նոյնիսկ վաղեմի քաղաքակրթութեան ծոցին մէջ գոգցես վերադարձած էին նախնի երջանկութեան ժամանակը։

Դաշնակցականք, Ազգային Ժողովին պատկառելի միաբանութեանց, արքունի չքեղութեանց, Բարիզի հոյակապութեանց ներկայ գտնուելէ վերջ, վկայ ըլլալէ վերջ բարութեան թագաւորին՝ որուն ամէնքը այցելեցին, և որմէ ընդունեցին բարութեան սրտաճմլիկ արտայայտութիւններ, դարձան իրենց տեղերը, ցնծութեան արբեցութեամբ այլ յայլմէ, բարի զգացումներով և պատրանքներով լի։ Այնքան սրտակեղէք տեսարաններէ վերջ, անոնցմէ աւելի ահռելիներն ալ պատմելու յօժա-

րափոյթ, պատմիչը հաճոյքով կը կենայ այս յոյժ փախստեայ ժամերուն վրայ, ուր բոլոր սիրտերը լոկ մէ՛կ զգացում ունեցան. հանրային բարւոյն սէրը(*)։

---

(*) Ֆերիէռի Յիշատակագրքէն այդէն քանի մը հատուածներ յիշատակեցի. Կարգաժողովին առաջին նիստին վերաբերմամբ։ Որովհետեւ ամէնէն կարեւոր պարագան է հաստատել թէ ի՛նչ ճշմարիտ զգացումներ յեղափոխութիւնը արթնցուց սիրտերուն մէջ, հարկ կը համարիմ նոյն Ֆերիէռի կողմէ դաշնակցութեան նկարագրութիւնը տալ հոս։ Պիտի տեսնուի թէ ճշմարի՞տ էր խանդավառութիւնը, հաղորդակա՞ն էր, եւ թէ այս յեղափոխութիւնը ոմանց կարծածին պէս զզուելի՞ էր արդեօք։

«Այդ միջոցին դաշնակցականք Պետութեան ամէն կողմերէն կը հասնէին։ Կը տեղաւորուէին զանոնք մասնաւորներու տուները, որոնք կը փութային հայթայթել անկողին, սեղան, փայտ, եւ ամէն ինչ որ կրնար նպաստել մայրաքաղաքի բնակութիւնը հանգստաւէտ եւ հաճելի ընելու համար։ Քաղաքապետութիւնը նախազգուշական միջոցներ ձեռք առաւ որպէս զի պանդուխտներու ա՛յն քան անհագին բազմութիւն մը հանրային անդորրութիւնը չվրդովէ։ Տասներկու հազար գործաւորներ անդուլ կ'աշխատէին Մարսեան դաշտը պատրաստելու։ Որքան գործունէութիւն որ ցոյց տրուեցաւ այս աշխատութեան համար, դանդաղօրէն կը յառաջանար։ Կը վախցուէր որ չլմննար մինչեւ Յուլիս 14, տարեդարձութեան համար անդառնալի կերպով որոշուած օրը, որովհետեւ Բարիզի ապստամբութեան եւ Պասթիլլի առումին հոչակաւոր թուականն էր այն։ Այս շփոթութեան միջոցին, թաղապետական շրջանակները յանուն հայրենիքին կը հրաւիրեն բոլոր քաղաքացիները գործաւորներուն միանալ։ Այս քաղաքացիական հրաւէրը կ'ելեկտրականացնէ բոլոր գլուխները։ Կիները խանդավառութեան կը մասնակցին եւ կը տարածին զայն։ Կը տեսնուին վանական աշակերտներ, դպրոցականներ, գթութեան քոյրեր, միայնութեան մէջ ծերացած վանականներ, որոնք իրենց խորշերը թողլով Մարսեան Դաշտ կը վազեն բահը ուսերնուն վրայ, հայրենասիրական խորհրդանիշերով զարդարուած դրօշներ ի ձեռին։ Հոն, բոլոր քաղաքացիները, խառնուած, չփոթուած, անհագին եւ շարժական արհեստանոց մը կը ձեւացնեն՝ որուն մէն մի կէտը այլազան խումբ մը կը ներկայացնէ. Հերարձակ կիսաշխարհիկ կինը կը գտնուի կողք կողքի մաքրափոյթ քաղաքացի կնոջ, քափուչինեանը հողատայը կը քաշէ Ս. Լուիի ասպետին հետ, բեռնակիրը Արքայական Պալատին անտեսապետին հետ. հասարակաց ընկերավաճառուհին կը քշէ ձեռնասայլը, զոր լեցուցած է վայելչազգեստ եւ հաճոյալի կիներ. բարեկեցիկները, չքաւորները, չէք հագուածները, թափթփածները, ծեր, տղայ, դերասան, զուինկերիոյի արքայասպան, դրագիր, կ'աշխատին ու կը հանգչին, զարմանահար աչքերու ներկայացնելով կենդանի ու շարժուն լեցուն տեսարան մը. շարժական կառկղաններ, կրպակներ այս ընդարձակ եւ հիանալի պատկերին հրապոյրն ու պայծառութիւնը կ'աւելցնեն, երգերը, ուրախութեան աղաղակները, թմբուկներու դափիւնը, զինուորական գործիներուն դղրդիւնը, բրիչներուն, ձեռնասայլերուն ժխորը, զիրար կանչող, զիրար քաջալերող աշխատաւորներուն ձայները... Հոգին ինքզինքը ընկճուած կը զգար հեշտալի արբեցութեան մը ծանրութեան տակ՝ ի տես ժողովուրդի մը, որ կրկին իջած էր նախնական եղբայրութեան անոյշ զգացումներուն... Ժամը ինը հնչելուն

պէս խումբերը կը պարզուէին. մէն մի քաղաքացի նորէն կը հանէր իր խումբին յատկացուած վայրը, կը միանայ իր ընտանիքին, իր ծանօթներուն։ Խումբերը ճամբայ կ'ելլեն չափորներու ձայնով, Բարիզ կը վերադառնան ջահերու առաջնորդութեամբ, մերթ ընդ մերթ կծու հեգնութիւններ թափելով ազնուականներուն դէմ և երգելով հռչակաւոր եղանակը. գործը պիտի յաջողի։

Վերջապէս Յուլիս 14ին, օր դաշնակցութեան, կը հասնի, ոմանց յոյսերուն և այլոց տագնապներուն և սարսափներուն միջև։ Եթէ այս մեծարարողութիւնը չունեցաւ ազգային միանդամայն կրօնական տօնի մը լուրջ և վեհ նկարագիրը, նկարագիր՝ որ գրեթէ անհաշտ է ֆրանսական մտքին հետ, ընծայեց ուրախութեան և խանդավառութեան հազար անգամ աւելի սրտաճմլիկ քաղցրիկ և վառ պատկերը։ Դաշնակցականք, գաւառ առ գաւառ դասաւորուած, ութսուն երեք դրօշներու տակ, ճամբայ ելան Պաստիլլի գետինէն. ցամաքային զօրքերուն, ծովային զօրքերուն պատուիրակութիւնները, բարիզեան ազգային պահակութիւնը, չափորներ, նուագախումբեր կը բանային և կը գոցէին գնացքը։

Դաշնակցականները անցան Սէն Մարթէնի, Սէն Տընիի, Սէնդ Օնորէի փողոցներէն և Քուռ լա Ռէնի ճամբով գացին գետակին վրայ շինուած նաւամատոյց մը։ Իրենց անցքին վրայ ծափահարութեան խուռն բազմութենէ մը, որոնք գրուած էին փողոցներուն մէջ, տուներուն պատուհաններուն առջև, քարափներուն վրայ։ Անձրևը, որ հեղեղի պէս կուգար, գնացքը չխանգարեց, չդանդաղեցուց։ Դաշնակցականները, ջուրով և քրտինքով թաթաւուն կը պարէին և կը պոռային. Կ'եցցեն մեր բարիզցի եղբայրները։ Պատուհաններէն վար կ'իջեցնէին գինի, խոզերշիկ, պտուղ եւն.։ Օրհնութիւններ կը տեղային անոնց վրայ։ Ազգային Ժողովի անդամները Թիւիլրին միացան Լուի ԺԵ. հրապարակին վրայ և քալեցին վաղեմի զինուորներու և հայրենիքի նորատի աշակերտներու վաշտերուն մէջտեղէն, — նշանակալից պատկեր, որ կարծես թէ կը միացնէր բոլոր տարիքներն ու բոլոր շահերը։

Շան տը Մարս անուն ճամբան ծածկուած էր խուռն բազմութեամբ, որ կը ծափահարէր ու կ'երգէր։ Շէյյօյի քարափը և Բասսի բարձունքը կը ներկայացնէին երկար ամփիթատր մը, ուր զարդարանքին վայելչութիւնը, կիներուն հրապոյրն ու շնորհը աչքերը կը պարարէին և նոյն իսկ մէկուն կամ միւսին նախապատուութիւն տալու դիւրութիւն չէին ընծայեր։ Անձրևը կը շարունակէր գալ։ Ոչ ոք ուշադրութիւն կ'ընծայէր անոր։ Ֆրանսական զուարթութիւնը կը յաղթէր թէ՛ գէշ օդին, թէ գէշ ճամբաներուն և թէ գնացքին երկարութեանը։

Մ. տը Լաֆայէթ, հիանալի ձիու մը վրայ հեծած և թիկնապահներով շրջապատուած, հրամաններ կուտար և ժողովուրդին ու դաշնակցականներուն մեծարանքները կ'ընդունէր։ Քրտինքը ճակտէն կը վազէր։ Մարդ մը, զոր ո՛չ ոք կը ճանչնար, ամբոխը ճեղքեց և առաջացաւ, մէկ ձեռքը շիշ մը և միւս ձեռքը գաւաթ մը բռնած։ Զօրավա՛ր, տաքցած էք, գաւաթ մը խմեցէք, ըսաւ։ Այդ մարդը բարձրացուց շիշը, խոշոր գաւաթ մը լեցուց և Մ. տը Լաֆայէթի ներկայացուց, Մ. տը Լաֆայէթ առաւ գաւաթը, վայրկեան մը անծանօթին երեսը նայեցաւ և մէկ ումպով խմեց գինին։ Ժողովուրդը ծափահարեց։ Լաֆայէթ ժպտեցաւ և բազմութեան վրայ պտտցուց վստահալից ակնարկ մը։ Այս ակնարկը կարծես ըսել կ'ուզէր. Երբեք ո՛ և է կասկած պիտի չանցընեմ մտքէս, երբեք ո՛ և է մտահոգութիւն պիտի չունենամ, որչափ ատեն որ ձեր մէջը ըլլամ։



ՊԱՌՆԱՎ

Սակայն, Բարիզէն և շրջականերէն աւելի քան երեք հարիւր հազար այրեր ու կիներ, որոնք առաւօտեան ժամը 6էն ի վեր հաւաքուած էին Շան տը Մարսի հրապարակը, — ընդարձակ կրկէս մը ձեւացնող դալարազարդ նստարաններու վրայ բազմած, զիրենք ողողող ջուրի հեղեղներուն դէմ հովանոցներով զինուած, արեւի ճառագայթ մը անձկնաւն պէս դէմքերնին սրբելով — Ազգային ժողովի դաշնակցականներուն կը սպասէին, խնդալով և խօսելով։ Թագաւորին, արքայական ընտանիքին, դեսպաններուն և երեսփոխաններուն համար ընդարձակ ամֆիթատրոն մը կառուցած էին։ Առաջին անգամ հասնող դաշնակցականները կը սկսին պարել ձեռնադորը. անոնցմէ նոր եկողները կ'ընկերակցին և կը կազմեն շրջանակ մը որ քիչ առնէն կը գրաւէ Շան տը Մարսի հրապարակին մէկ մեծ մասը։ Իմաստասէր գիտողի մը արժանի տեսարան մըն էր այս. մարդիկ որ՝ Ֆրանսայի ամէն կողմերէն եկած, ազգային յատկանիշի գոգանակէն մղուած, անցեալի բոլոր յիշատակները իրենց մաքէն վառ-

բելով, ներկայի ամէն գաղափար, ապագայի ամէն երկիւղ մոռնալով, ինքզինքնին կուտային հաճելի անփութութեան մը, և 300,000 հանդիսականներ, ամէն տարիքէ, ամէն սեռէ, կը հետեւէին անոնց շարժումներուն իրենց ձեռքի զարկերով ռէմբօ կուտային, մոռնալով թէ անձրեւ կուգայ, թէ անօթի են, և երկար ատեն ոտքի վրայ մնալէ յոգնած են։ Վերջապէս, երբ ամբողջ թափօրը մտաւ Շան տը Մարս, պարը դադրեցաւ. Իւրաքանչիւր դաշնակցական իր դրօշին տակ կ'երթար։ Օթէօնի եպիսկոպոսը կը պատրաստուի պատարագ մատուցանել հնամենի մատուռի մը մէջ, որ կանգնած էր Շան տը Մարսի մէջտեղը։ Երեք հարիւր քահանաներ, սպիտակ շապիկներ հագած և եռագոյն գօտիներ կապած, կը շարուին մատուռին չորս բոլորը. Օթէօնի եպիսկոպոսը կ'օրհնէ ոսկեվառ դրօշը և ութսուն երեք գաւառադրօշները և «Զքեզ Աստուած գովաբանենք» աղօթքը կը գոռայնէ. հազար երկու հարիւր երաժիշտներ կը նուագեն այս եղանակը. Լաֆայէթ, Բարիզի քաղաքապահ զօրաց սպայակոյտին և ցամաքային ու ծովային զօրաց պատգամաւորներուն գլուխը կեցած, կը բարձրանայ խորանին առջեւ, և կ'երդնու, յանուն բանակին և դաշնակցականներուն, հաւատարիմ մնալ ազգին, օրէնքին, թագաւորին։ Զորս թնդանօթներ կը սկսին գոռալ, Ֆրանսայի ծանուցանելով այս հանդիսաւոր երդումը։ Հազար երկու հարիւր երաժիշտները զինուորական երգեր կը նուագեն. դրօշները կը շարժին, մերկացած սուրերը կը կայծկլտան։ Ազգային Ժողովի նախագահը միեւնոյն երդումը կը կրկնէ. Ժողովուրդը և երեսփոխանները կը պատասխանեն կ'երդնում աղաղակելով։ Այն ատեն թագաւորը ոտքի կ'ելլէ և ուժեղ ձայնով մը կ'ըսէ. «Ես, թագաւոր Ֆրանսացիներու, կ'երդնում ի գործ դնել այն իշխանութիւնը զոր ինծի կուտայ Պետութեան սահմանադրական օրէնքը, Ազգային Ժողովին հրամանագրած և ինձմէ ընդունուած Սահմանադրութիւնը պահպանել։ Թագուհին դահաժառանգը կ'առնէ իր գրկին մէջ, զայն ժողովուրդին կը ներկայացնէ և կ'ըսէ. «Ահա՛ իմ զաւակս. ան ալ ինծի հետ միեւնոյն երդումը կ'ընէ։» Այս անսպասելի արարքը վարձատրուեցաւ հազարաւոր բերաններէ թռած աղաղակներով. ամենքը կը գոչէին՝ կեցցէ՛ թագաւորը, կեցցէ՛ թագուհին, կեցցէ՛ դահաժառանգը։ Թնդանօթները կը շարունակէին իրենց փառապանծ ձայնը խառնել զինուորական երաժշտութեան եղանակներուն և ժողովուրդի ծափահարութեանց։ Օդը բացուած էր, արեւը կը շողշողար իր բոլոր պայծառութեամբը. կարծես թէ Յաւիտենականը ինքն ալ ուզեց վկայ ըլլալ այս փոխադարձ յանձնառութեան և իր ներկայութեամբը վաւերացնել զայն... Այո՛, անիկա տեսաւ զայն, լսեց զայն, և ո՛վ յաւիտենականօրէն գործօն և հաւատարիմ Նախախնամութիւն, այն օրէն ի վեր Ֆրանսայի վրայ թափած ահաւոր չարիքները արդար պատիժն են ուրացումի մը. դուն հարուածեցիր թէ՛ թագաւորը և թէ՛ հպատակները, որովհետեւ անոնք երկուքն ալ ուրացան իրենց երդումը։

Այս խանդավառութիւնը և հանդէսները դաշնակցութեան հռչակման օրը չկատարուեցան միայն։ Ամբողջ այն ժամանակը, երբ դաշնակցականները Բարիզ մնացին, շարունակ հացկերոյթ, պար և ուրախութիւն կը կատարուէր. կրկին անգամ գացին Շան տը Մարս, խմեցին, երգեցին և պարեցին հոն։ Մ. տը Լաֆայէթ զօրահանդէս մը ըրաւ գաւառներու ազգային պահակազօրքին և բանակին մէկ մասով։ Թագաւորը, թագուհին և դահաժառանգը ներկայ եղան այս զօրահանդէսին և ծափահարութեամբ ողջունուեցան. Թագուհին շնորհալի ձե-

ւով մը իր ձեռքը երկնցուց դաշնակցականներուն, որոնք համբուրեցին. անոնց ցոյց տուաւ գահաժառանգը: Դաշնակցականները, մայրաքաղաքէն մեկնելէ առաջ, գացին իրենց յարգանքները մատուցանելու Թագաւորին. ամէնքն ալ խորունկ յարգանք ցոյց տուին անոր և բոլորանուէր անձնուիրութեան խօսքեր ըրին: Գրըթօններուն պետը մէկ ծունկը գետինը դրաւ և իր սուրը Լուդովիկոս ԺԶ.ին ներկայացնելով ըսաւ.— «Տէ՛ր Արքայ, ձեզի կը յանձնեմ, այս մաքուր և նուիրական սուրը հաւատարիմ Գրըթօններուն. անիկա միայն ձեր թշնամիներուն արիւնովը պիտի ներկուի:» Ու Լուդովիկոս ԺԶ. պատասխանեց. «Այս սուրը աւելի լաւ ձեռքերու մէջ չի կրնար գտնուիլ քան իմ սիրելի Գրըթօններուս ձեռքին մէջ. ես վայրկեան մը իսկ չեմ կասկածած անոնց սիրոյն և հաւատարմութեանը վրայ. վստահացուցէք զանոնք, որ ես բոլոր Ֆրանսացիներուն հայրը, եղբայրը, բարեկամն եմ:» Այս ըսելով Թագաւորը ոտքի հանեց Գրըթօններուն պետը և սուրը կրկին անոր յանձնեց: Յետոյ, խորապէս յուզուած, ձեռքը սեղմեց և համբուրեց զայն: Փոխադարձ խանդաղատանք մը քանի մը վայրկեան երկարեց այս յուզիչ տեսարանը: Գրըթօններուն պետը դարձեալ խօսք առաւ և ըսաւ. «Տէ՛ր Արքայ, դատելով մեր սրտերէն, բոլոր Ֆրանսացիները կը սիրեն զձեզ և պիտի սիրեն, որովհետև քաղաքացի Թագաւոր մըն էք դուք:»

Բօրտոյի Քաղաքապետութիւնն ալ ուզեց հանդէս մը սարքել ի պատիւ դաշնակցականներուն. գետին վրայ նիզակամարտ կատարուեցաւ, ինչպէս նաև հրախաղութիւն, լուսավառութիւն, նաւահանդէս և կերուխում ցորենի շուկային մէջ և Պասթիլի հրապարակին վրայ ալ: Հանդիսավայրի կեդրոնին դրան վրայ խոշոր գիրերով գրուած էր. «Հոս կը պարեն»: Բարեբախտ զուգադիպութիւն, որ աչքառու կերպով մը հակապատկեր կը ձևացնէր՝ տակաւին և յուսահատութեան այն հին պատկերին հետ, զոր կը յիշեցնէր Պասթիլի զզուելի բանտը: Ժողովուրդը մէկ հանդիսավայրէն միւսը կ'երթար կուգար առանց նեղուելու, առանց հոգի: Ոստիկանութիւնը, որ կ'արգիլէր կառքերու անցքը, առաջքն առած կ'ըլլար այսպիսի հանդէսներու միջոցին սովորական եղող արկածներուն, և վերցուցած կ'ըլլար ձիերուն, անիւներուն, ու վա՛րտա գոչող կառապաններուն հանած աղմուկ, որ կը ձանձրացնէ և անհանգիստ կ'ընէ քաղաքացիները, ամէն վայրկեան զանոնք ոտնակոխ ընելու երկիւղը կը պատճառէ և ամէնէն փայլուն ու կանոնաւոր տօնին կու տայ փախուստի մը երևոյթը: Հասարակաց տօնախմբութիւնները գերազանցապէս ժողովուրդին համար են. միայն այս կէտը աչքի առջև ունենալ պէտք է. եթէ հարուստները կ'ուզեն այդ տօնին հաճոյքներուն մասնակից ըլլալ, թող այդ օրը ժողովուրդի զաւակներուն պէս ըլլան իրենք ալ. այդ կերպով պիտի ունենան անծանօթ զգացումներ, և չպիտի խանգարեն իրենց համաքաղաքացիներուն ուրախութիւնը:

Շան զ'Էլիզէի մէջ էր որ զգայնիկ մարդիկը ամէնէն աւելի գոհունակութեամբ վայելեցին այս ժողովրդային սիրուն տօնը. բոլոր ծառերէն լուսեղէն թելեր կախուած էին, կանթեղներու պսակներ զանոնք իրարու կը կապէին. տեղ տեղ կանգնուած հրախաղութեանց բուրգերը այնպիսի վառ լոյս մը կը սփռէին որ շրջակայ խաւարը աւելի ցայտուն կը դարձնէր իր հակապատկերովը: Ժողովուրդը լեցուած էր ծառուղիներուն մէջ և մարգագետիններուն վրայ. բարեկեցիկ դասակարգի հայրերը, իրենց կնոջ և զաւակներուն հետ նստած, կ'ուտէր, կը խօսակցէր, կը շրջագայէր և քաղցրօրէն կը վայելէր

կեանքը։ Ասդին, մանկամարդ աղջիկներ և երիտասարդներ կը պարէին մինչ բազմաթիւ նուագախումբեր բացատատաններուն մէջ հաստատուած կը նուագէին։ Անդին, մէկ քանի նաւաստիներ, մերկ և տափատ միայն հագած, ու զիրենք հետաքրքրութեամբ դիտող բազմաթիւ հանդիսականներէ շրջապատուած, կը ջանային մագլցիլ օծանուած մեծ կայմերու գագաթը, և չահիլ մրցանակը, որ սահմանուած էր անոր՝ որ պիտի յաջողէր առնել կայմին գագաթը ծածանող եռագոյն դրօշը։ Պէտք էր տեսնել այն ծիծաղները որոնք կը շուայլուէին մրցումէն վազ անցնողներուն, և այն քաջալերանքները որոնք կը տրուէին անոնց որ աւելի բաղդաւոր կամ ճարպիկ, կը թուէին հասնիլ նպատակակէտին...։ Քաղցր, զգացական ուրախութիւն մը տարածուած էր բոլոր դէմքերուն վրայ, ու կը փայլէր բոլորին ալ աչքերուն մէջ, վերյիշեցնելով հին դարերու Եղիսեան Դաշտին (Շան զ'Էլիզէ) երջանիկ ստուերներուն խաղաղ զուարճութիւնները։ Գեղեցիկ ծառուղիներուն ծառերուն տակ թափառող սպիտակազգեաց կիներուն բազմութիւնն ա՛լ աւելի կը խտացնէր պատրանքը։»

(Յերիերի Յիշատակները Բ. հատոր)։

## ՎԵՐՋ ԵՐՐՈՐԴ ԳԻՐՔԻ

# ՉՈՐՐՈՐԴ ԳԻՐՔ(*)

## 1791Ի ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ

*Նանսիի մէջ զինուորական ըմբոստութիւն. — Նեքերի գործէ քաշուիլը. — Արքունիքին եւ Միրաբոյի ծրագիրները. — Ժալէզի բանակատեղիին կազմութիւնը. — Եկեղեցականներուն վրայ պարտադրուած աշխարհական երդումներ. — Տարագրութեան ծագումը. — Ապստամբած ժողովուրդը կը յարձակի Վէնսանի բանտին վրայ. — «Դաշոյնի Ասպետ»ներուն դաւադրութիւնը. — Տարագրութեան դիմողներուն դէմ օրինագծին վրայ վիճաբանութիւն. — Մահ Միրաբոյի. — Հակայեղափոխական մեքենայութիւններ. — Թագաւորին եւ իր ընտանիքին փախուստը. կը ձերբակալուի Վարէնի մէջ եւ Բարիզ կը բերուի. — Օտար տէրութեանց տրամադրութիւնները. տարագիրներուն պատրաստութիւնները. — Բիլնիցի յայտարարութիւնը. — Պատերազմական օրէնքի հռչակում՝ Շան տը Մարսի մէջ. — Թագաւորը կ'ընդունի Սահմանադրութիւնը. — Սահմանադիր Ժողովի փակումը:*

Դաշնակիցներու(**) սարքած այնքան սրտայոյզ տօնը վաղանցուկ խանդավառութիւն մը պատճառած էր սոսկ։ Յաջորդ օրը, ամենուն սիրտը կը բաղձար ինչ որ ցանկացած էր նախորդ օրը, ու պայքարը վերսկսած էր. նախարարութեան հետ մանր մունր կռիւները սկսեր էին. դարձեալ կը գանգատէին որ ազատ անցք տրուած էր աւստրացի զօրքերուն, որոնք Լիէժ կ'երթային։ Սէն–Բրիսթ ամբաստանուեցաւ՝ հակայեղափոխական մեքենայութիւններով կասկածուած ամբաստանեալներէն շատերուն փախուստը դիւրացուցած ըլլալուն համար։ Ատոր փոխարէն, օրակարգի խնդիր եղած էր Շաթըլէի մէջ սկսած դատը, Հոկտեմբեր 5ի եւ 6ի հեղինակներուն դէմ։ Օրլէանի Դուքսը եւ Միրաբօ այդ դատին խառնուած էին. այս տարօրինակ դատը, զոր քանի մը անգամ լքելէ ետք կրկին ձեռք առած էին, կը զգացնէր այն զանազան ազդեցութիւնները որոնց տակ կատարուած էին հարցաքննութիւնները. լեցուն հակասութիւններ կային, եւ ո՛չ մէկ բաւարար ամբաստանութիւն կար

(**) Fédéré բառը որքան որ դաշնակցական թարգմանուած է նախորդ պրակներուն մէջ; բայց մենք կը նախընտրենք դաշնակից բառը. դաշնակցական կը թարգմանենք ֆրանս. fédéraliste բառը։ Ն. Թ.

*) Այս գիրքէն սկսեալ՝ Ֆրանս. Յեղ. Պատմութիւնը թարգմանուած է ԼԵՒՈՆ ԼԱՐԵՆՑ:

երկու գլխաւոր ամբաստանեալներուն դէմ։ Արքունիքը, Միրապօն հաշւեցնելով, անոր՝ նկատմամբ որոշ ծրագիր մը չունէր սակայն. փոխն ի փոխ կը մօտենար անոր և կը հեռանար անկէ, և ջանք կ'ընէր աւելի հանդարտեցնել զայն, քան թէ անոր խորհուրդներուն հետեւիլ։ Հոկտեմբեր 5ի և 6ի դատը վերստին ձեռք առնելով, Միրապօն չէր որ կ'ուզէին հալածել, այլ՝ Օրլէանի Դուքսը, որ Լոնտոնէն վերադարձին շատ ծախահարուած էր, և որուն խստօրէն մերժած էր Արքունիքը, երբ Դուքսը խնդրեր էր որ Թագաւորը ներէ իրեն։ Շաթըլէի պալատոն յանձնուած էր ժողովին առջեւ կարդացուելիք տեղեկագիրը պատրաստել, որովհետեւ Ազգային Ժողովը պիտի վճռէր թէ ամբաստանութեան տեղի կա՞յ թէ՝ չէ։ Արքունիքը կը բաղձար որ Միրապօ լուռ մնայ և առանձին ձգէ Օրլէանի Դուքսը, որովհետեւ ատոր դէմ միայն ոխ ունէր։ Եւ սակայն, Միրապօ խօսեցաւ ցոյց տալու համար թէ իրեն դէմ ուղղուած ամբաստանութիւնները որքա՛ն ծիծաղելի են։ Արդարեւ, կ'ամբաստանէին զինքը թէ իմացուցեր է Մունիէին, որ Բարիզ կը քալէ Վերսայլի վրայ և իբր թէ սա խօսքերն ալ ըսեր է. «Մենք կ'ուզենք թագաւոր մը, այո՛, բայց ի՞նչ փոյթ թէ այդ թագաւորը Լուդովիկոս ԺԶ.ն ըլլայ թէ Լուդովիկոս ԺԷ.ն»։ Կ'ամբաստանէին զինքը դարձեալ՝ թէ Ֆլանտրիոյ զօրագունդին առջեւ, սուր ի ձեռին աղաղակեր է, Օրլէանի Դուքսին մեկնած պահուն. «Սա՛ մարդուկն ալ չարժեր բնաւ իրեն համար քաշածնիս»։ Այս կարգի ամբաստանութիւններ սնոտի էին բոլորովին։ Միրապօ ցոյց տուաւ անոնց տխուր և ծիծաղելի կողմերը, Օրլէանի Դուքսին նկատմամբ քանի մը խօսք միայն ըսաւ և ի վերջոյ գոչեց. «Այո՛, այս դժոխային դատավարութեան գաղտնիքը վերջապէս յայտնուած է. հո՛ն է ամբողջովին (աջակողմը ցոյց տալով) այս դատը կը ծառայէ անո՛նց շահերուն, որոնց վկայութիւններով և զրպարտութիւններով հիւսուած է ան. այս դատը յեղափոխութեան թշնամիներուն հայթայթած աղբիւրներուն մէջն է. այս դատը մէջն է... մէջն է դատաւորներուն սրտին, ինչպէս որ քիչ ատենէն պիտի արձանագրուի պատմութեան մէջ, ամէնէն արդար և անխորտակելի վրէժխնդրութեամբ։

Մինչեւ որ Միրապօ բեմէն իջնելով իր տեղը գնաց, ծափահարութիւններ թնդացին. յետոյ Ժողովը ամբաստանութենէ զերծ հռչակեց երկու ամբաստանեալները, ու Արքունիքը անօգուտ փորձ մը բրած ըլլալու ամօթն զգաց։

Յեղափոխութիւնը պէտք էր ի կատար հասնէր ամէն կողմ, այնքան բանակին, որքան ժողովուրդին մէջ։ Բանակը, իշխանութեան վերջին ապաւէնը, ժողովրդային կուսակցութեան վերջին երկիւղն ալ էր։ Բոլոր զինուորական պետերը թշնամի էին յեղափոխութեան, որովհետեւ, իրենք ըլլալով աստիճաններու և շնորհներու բացարձակ տէրերը, կ'ուզէին արժանաւորներուն հետ զանոնք բաժնել։ Հակառակ պատճառներով, հասարակ զինուորները նոր կարգերու հաստատման կողմն էին, և անտարակոյս, ազատութեան շունչին ցանկալէ աւելի՝ անոնք մղուած էին կարգապահութեան դէմ իրենց ունեցած ատելութենէն և աւելի լեցուն ամսական մը առնելու փափաքէն։ Գրեթէ ամբողջ բանակին մէջ անհնազանդութեան վտանգաւոր նշաններ սկսած էին երեւան գալ. մանաւորաբար հետեւակ զինուորները, թերեւս ժողովուրդին հետ աւելի շփման մէջ ըլլալուն և ձիաւոր զինուորներէն նուազ ունենալով զինուորական վեհութիւն, կատարելապէս ընդվզումի մէջ էր։ Պուլէ, որ ցաւով կը տեսնէր թէ իր բանակը

ձեռքէն կ'ելլէ, ամէն կարելի միջոց ի գործ կը դնէր յեղափոխական ոգին այս վարակումը կասեցնելու համար. պատերազմական նախարար Լաթուր տիւ Բէնէն առած էր լայն իշխանութիւն. այս պարագայէն կ'օգտուէր, շարունակ տեղէ տեղ փոխադրելով իր զինուորները, և թոյլ չտալով որ անոնք ժողովուրդին հետ ընտելանան միևնոյն տեղը երկար ատեն մնալով։ Անոնց կ'արգիլէր մասնաւորապէս ակումբները յաճախել, և վերջապէս ոչ մէկ բան զանց կ'ընէր զինուորական կարգ ու կանոնը պահպանելու համար։ Պույէ, երկարատև դիմադրութենէ մը ետք, վերջապէս երդում ըրած էր Սահմանադրութեան վրայ, և որովհետև պատուաւոր մարդ մըն էր, այդ վայրկեանէն իսկ որոշեց հաւատարիմ մնալ թագաւորին և Սահմանադրութեան։ Իր զզուանքը՝ հանդէպ Լաֆայէթի, որուն անշահախնդրութիւնը չէր կրնար ուրանալ, արդէն անհետացած էր. ու հիմա աւելի տրամադիր էր անոր հետ համաձայնելու։ Իր հրամատարութեան տակ գտնուող ընդարձակ երկրին ազգային պահակազօրքը ուզեց զինքը հաշակել իբր իր զօրավարը. ի սկզբան մերժեց, բայց յետոյ զիջաց, խորհելով թէ որքա՜ն լաւ գործեր պիտի կարենար տեսնել, եթէ մերժած չըլլար։ Այսուհանդերձ, հակառակ ակումբներու մէկ քանի ամբաստանութիւններուն, ժողովրդային համակրանք կը վայելէր։

Ապստամբութիւնը ծագեցաւ նախ Մէցի մէջ. զինուորները բանտարկեցին իրենց սպաները, դրօշները և դրամարկղները գրաւեցին և ուզեցին մինչև իսկ դրամ տալ Քաղաքապետութեան։ Պույէ ամենամեծ վտանգին ենթարկելով ինքզինքը, յաջողեցաւ զսպել ըմբոստութիւնը։ Քիչ ժամանակ ետքը, նմանօրինակ ապստամբութիւն մը ծագեցաւ Նանսիի մէջ։ Զուիցերիական զօրագունդերը մասնակցեցան այս ըմբոստութեան, և եթէ օրինակը վարակիչ ըլլար, վախ կար որ ամբողջ թագաւորութիւնը քիչ ատենէն նշաւակ ըլլար զինուորական և խուժանային միացեալ ծայրայեղութեանց։ Ազգային ժողովն իսկ դողդողաց. ապայք մը պաշտօն յանձնուեցաւ ապստամբներուն դէմ տրուած վճիռը գործադրելու. բայց չյաջողեցաւ, և Պույէ հրահանգ ստացաւ քալելու Նանսիի վրայ, որպէս զի օրէնքին իշխանութիւնը պահպանուէր։ Պույէ շատ քիչ թուով զինուոր ունէր, որոնց վրայ կրնար վստահութիւն տածել։ Բարեբաղդաբար, դեռ քիչ ժամանակ առաջ, Մէցի մէջ ապստամբած զինուորները՝ իրենց մասին անվստահութիւն յայտնուելէն ազդուած, պատրաստակամութիւն յայտնեցին ըմբոստներուն դէմ քալելու։ Ազգային պահակազօրքն ալ նոյնը ըրաւ, ու այսպէս՝ Պույէ սկսաւ քալել Նանսիի վրայ, միացեալ ոյժերով և բաւական մեծաթիւ ձիաւոր զինուորներով։ Իր կացութիւնը վրդովեցուցիչ էր, որովհետև չէր կրնար հեծելազօրքին գործել տալ, իսկ հետևակ զինուորները բաւականաչափ չէին որպէս զի կարենար յարձակիլ ապստամբներուն վրայ, որոնց հետ կեցած էր խուժանը։ Այսուհանդերձ, Պույէ մեծ կորովով խօսեցաւ ամբոխին հետ, և յաջողեցաւ իր պայմանները ընդունիլ տալ. ապստամբներն ու խուժանը, մինչև իսկ անոր տալով քաղաքէն դուրս ելլելու վրայ էին, իր հրամանին համաձայն, երբ յանկարծ հրացանի հարուածներ արձակուեցան յայտնի չէ թէ ո՛ր կողմէն։ Այն ատեն, կռիւը անխուսափելի դարձաւ։ Պույէի զինուորները կարծելով թէ մատնուած են, մեծ քաջութեամբ կռուեցան. բայց դիմադրութիւնը ոչ նուազ կորովի էր, այս պատճառաւ քայլ առ քայլ միայն կրցան յառաջանալ, մահուան կրակի մը մէջէն (31 օգոստոս)։ Վերջ ի վերջոյ Պույէ զինուոր հրապարակները գրա-

ւելով, ապստամբները հնազանդեցուց, քաղաքէն դուրս հանել տուաւ բանտարկուած սպաները և կառավարական պաշտօնեաները ազատեց, գլխաւոր յանցաւորները զատեց ու յանձնեց Ազգային Ժողովին ։

Այս յաղթութիւնը ընդհանուր ուրախութիւն պատճառեց և հանդարտեցուց այն երկիւղները զորս ունեցած էին Թագաւորութեան անդորրութեանը մասին ։ Պուլէ թէ՛ Թագաւորէն և թէ Ազգ. Ժողովէն շնորհաւորութիւններ ու գովեստներ ընդունեց ։ Աւելի ետք, զայն զրպարտեցին և իր վարմունքը անգթութիւն անուանեցին. այլ սակայն իր ընթացքը մեղադրելի չէր բնաւ, և այդպէս ըլլալուն համար էր որ ամէն մարդ ծափահարած էր զինքը ։ Թագաւորը աւելի ընդարձակեց անոր հրամանատարութեան սահմանները, որոնք շատ մեծցան, որովհետև Զուիցերիայէն մինչև Սամպր կ'երկարէին, սահմանագլուխին մէկ մեծ մասը պարփակելով ։ Պուլէ՝ աւելի վստահութիւն ունենալով հեծելազօրքին՝ քան թէ հետևակ զինուորներուն վրայ, իրեն բանակատեղի ընտրեց Մէյլ գետին ափը. այնտեղ ընդարձակ դաշտավայրեր կային ուր իր հեծելազօրքը կրնար գործել, ձիերը կերակրելու համար առատ խոտ կար, բաւական ամրացեալ տեղեր կային դիրք բռնելու համար, և մանաւանդ՝ վախ պատճառող քիչ ժողովուրդ կար ։ Պուլէ վճռած էր Սահմանադրութեան դէմ ո՛չ մէկ քայլ առնել, բայց հայրենասէրներէն հեռու կը քաշուէր և նախազգուշութիւններ ձեռք կ'առնէր Թագաւորին օգնութեան հասնելու համար, եթէ պարագաները հարկադրէին այդպէս ընել ։

Ազգ. Ժողովը ջնջած էր աւագաժողովները, երդուեալ դատաւորները հաստատած էր, արհեստապետութիւնները բնաջինջ ըրած էր, ու նոր թղթադրամներ շրջաբերութեան հանել պիտի հրամայէր ։ Կղերին հարստութիւնը շատ մեծ դրամագլուխ մը ներկայացնելուն համար, ու թղթադրամները զայն մշտապէս տրամադրելի դարձնելով, բնական էր որ Ժողովը գործածէր զայն ։ Նախապէս եղած բոլոր առարկութիւնները բուռն կերպով մէջտեղ հանուեցան կրկին. մինչև իսկ Օթէօնի եպիսկոպոսը այս նոր շրջաբերութեան հակառակ խօսեցաւ և ճարտարութեամբ կանխատեսեց այս գործառնութիւնէն յառաջ գալիք դրամական յոռի հետևանքները(*) ։

Միրապօ, մանաւորաբար քաղաքական հետևանքները աչքի առջև ունենալով, յամառօրէն պնդեց իր տեսակէտին վրայ և յաջողութիւնը տարաւ ։ 800 միլիոն Ֆրանքի արժողութեամբ թղթադրամ հրապարակ հանուեցաւ, և այս անգամ որոշուեցաւ որ առանց տոկոսի ըլլան անոնք. արդարև, անօգուտ բան էր տոկոս աւելցնել դրամի մը վրայ. արժեթուղթի վրայ տոկոս բարդելը ճիշդ է, որովհետև արժեթուղթը շրջաբերութեան մէջ չըլլալով առանց շահ բերելու կը մնայ զայն պահող ձեռքերուն մէջ, բայց Ազգային Ժողովը երկրորդ անգամ չինկաւ նոյն սխալին մէջ, տոկոս բարդելով արժէքի մը վրայ, որ իրական կը դառնայ իր հարկադրեալ շրջաբերութեամբը ։ Նէքէր ընդդիմացաւ այս նոր գործողութեան և Ժողովին ղրկեց յիշատակագիր մը, որուն մտիկ ընող չեղաւ ։ Իրեն համար, ժամանակները շատ փոխուած էին և ինքը այլ ևս չէր այն նախարարը, որուն պաշտօնի վրայ մնալուն մէջ ժողովուրդը կը տեսնէր իր երջանկութիւնը, դեռ

*) Մ. տը Թալլէրան ալ շատ նշանակելի կերպով մը գուշակած էր թղթադրամին յառաջ բերելիք սղանաւորական հետևանքները, իր ճառովը կ'ապացուցանէ թէ ինչո՛ւ համար թղթադրամը մերձակայ ժամանակի մը մէջ արժէքէ պիտի իյնայ ։



ԱՌԱՋԻՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

տարի մը առաջ։ Թագաւորին վստահութենէն զրկուած, Մօնմօրէնէն զատ իր միւս պաշտօնակիցներուն հետ դէչ մարդ եղած ըլլալով, ժողովը կարեւորութիւն չէր տար իրեն, և իր ակնկալած յարգանքը չէր ընծայեր։ Նէքէրի սխալը այն էր որ, կը հաւատար թէ բանաւոր պատճառները բաւական են ամէն ինչ արդարացնելու, և թէ, երբ անոնք արտայայտուին զգացումով ու տրամաբանութեամբ խառն, պէ՛տք է որ յաղթանակեն ազնուականներու յամառութեան և հայրենասէրներու գը ր գռութեան։ Նէքէր ունէր մտածելու այն վէս եղանակը, որ կիրքերու մոլորութիւնները կը դատէ և կը դատապարտէ. բայց անիկա չունէր մտածելու այն միւս եղանակը, աւելի բարձր և նուազ գոռոզ, որ չի բաւականանար մոլորութիւնները նշաւակելով, այլ գիտէ նաև զանոնք ուղղել։

Ահա այս պատճառներով, անոնց մէջ տեղը մնացած, Նէքէր ամենուն համար եղաւ նեղութիւն պատճառող մը և եր-

քէք չկրցաւ ըլլալ սահմ մը։ Մունիէի և Տը Լալլիի մեկնումէն յետոյ, առանց բարեկամի մնացած էր և միայն անօգուտ Մալուէի բարեկամութիւնը պահած էր։ Անիկա վիրաւորած էր ժողովը, որովհետև անդադար և կշտամբանքներով յիշեցուցած էր ամենէն աւելի դժուարին գործը, նիւթական գործը։ Ասկէ զատ, ինքզինքին վրայ կը խօսէր այնպիսի եղանակով մը, որ ծիծաղելի դարձած էր ամենուն առջեւ. իր հրաժարականը, զոր տուաւ սեպտեմբեր 4ին, հաճոյքով ընդունուեցաւ բոլոր կուսակցութիւններէն ալ։ Ֆրանսայէն մեկնած միջոցին իր կառքը կեցուց նոյն այն ժողովուրդը որ քիչ ժամանակ առաջ յաղթականօրէն քաշած էր զայն. պէտք եղաւ որ ժողովը արտօնութիւն տայ, որպէս զի անիկա կարենայ ազատօրէն երթալ Զուիցերիա։ Նէքէռ այդ արտօնութիւնը շուտով ստացաւ և քաշուեցաւ Քոբէ, հեռուէն դիտելու համար յեղափոխութիւն մը, զոր առաջնորդելէ աւելի, դիտելու կարող էր։

Դահլիճն ալ թագաւորին պէս ոչընչութեան վերածուած էր, և առաւելին՝ անձնատուր կ'ըլլար կա՛մ անօգուտ և կամ յանցապարտ մեքենայութիւններու։ Սէն Բրիսթ կը թղթակցէր տարագիրներուն հետ. Լաթուռ տիւ Բէն գործիք կը դառնար զինուորական պետերու բոլոր ուզածներուն. Մօնմօրէն արքունիքին յարգանքը կը վայելէր, բայց ոչ՝ անոր վստահութիւնը, և զինքը կը գործածէին մեքենայութեանց մէջ, լարուած՝ ընդդէմ ժողովրդական պետերուն, որոնց հետ յարաբերութեան մէջ էր շնորհիւ իր չափաւորութեան։

Բոլոր նախարարներն ալ նոր դաւադրութեանց առթիւ ամբաստանուեցան։ Քազալէս գոչեց. «Ես ալ պիտի ամբաստանեմ զանոնք եթէ վեհանձն բան մը ըլլար հալածել այդքան տկար մարդիկը. պիտի ամբաստանէի նիւթական նախարարը, որ չէ պարզաբանած ժողովին առջեւ պետութեան իրական աղբիւրները և չէ վարած յեղափոխութիւն մը զոր գրգռած էր. պիտի ամբաստանէի պատերազմական նախարարը, որ թոյլ տուած է որ բանակը կազմալուծուի. պիտի ամբաստանէի գաւառներու նախարարը, որ յարգել չէ տուած թագաւորին հրամանները. վերջապէս՝ բոլոր նախարարներն ալ, իրենց ոչնչութեանը համար և իրենց տիրոջը տուած վատաբարոյ խորհուրդներուն համար։»

Անգործունէութիւնը ոճիր մըն է այն կուսակցութեանց աչքին, որոնք կ'ուզեն իրենց նպատակին հասնիլ. այս պատճառաւ աջակողմը կը դատապարտէր նախարարները, ո՛չ թէ անոնց ըրածներուն համար, այլ չըրած բաներուն համար։ Եւ սակայն Քազալէս և իրենները զանոնք դատապարտելով հանդերձ կ'ընդդիմանային որ թագաւորէն պահանջուի անոնց հեռացումը. որովհետև անոնք այնպէս կը համարէին թէ, այդպիսի խնդրանք մը ընելը թագաւորին իրաւունքներուն դէմ ոտնձգութիւն մը ընել է։ Այդ տեսակ պահանջ մը չեղաւ արդէն, բայց նախարարները իրարու ետեւէ հրաժարականնին տուին, ի բաց առեալ Մօնմօրէն, որ իր պաշտօնին վրայ պահուեցաւ։ Տիւբօռ տիւ Թէրթր, որ պարզ փաստաբան մըն էր, դատական նախարար եղաւ։ Տիւբորթայլ, զոր Լաֆայէթ նշանակած էր թագաւորին, եղաւ պատերազմական նախարար, և աւելի լաւ տրամադրութիւններ ցոյց տուաւ ի նպաստ ժողովրդական կուսակցութեան. իր կարգադրութիւններէն մին եղաւ՝ Պույէի ձեռքէն առնելը ամէն ազատութիւն զոր ան կը գործածէր իբր հրամանատար, և մանաւորաբար զայն զրկեց զինուորները ըստ կամս հոս հոն փոխադրելու իշխանութենէն, զոր Պույէ ի գործ կը դնէր, ինչպէս տեսանք, որպէս զի զինուորները չի կարենան եղբայրակցիլ ժողովուրդին հետ։

Թագաւորը մանաւանդ կերպով ուսումնասիրած էր Անգլիական Յեղափոխութեան պատմութիւնը։ Զարլս Ա.ի վիճակը եզական ազդեցութիւն մը ըրած էր իր վրայ, այնպէս որ չէր կրնար չունենալ տխուր նախազգացումներ։ Մանաւանդ դիտած էր թէ ինչ եղած է Զարլս Ա.ի դատապարտութեան պատճառը. քաղաքային պատերազմն էր այդ պատճառը։ Թագաւորը ատոր համար էր որ կը զգար անյաղթելի սոսկում մը բոլոր այն անօրինութեանց համար, որոնք կրնային արիւն հոսեցնել և չարունակ հակառակած էր փախուստի բոլոր այն ծրագիրներուն, զորս կ'առաջարկէին Թագուհին և պալատականները։

1790ի ամառը Սէն Քլուի մէջ անցուցած ժամանակը կրնար փախչիլ. բայց երբեք չուզեց լսել փախուստի խօսքեր։ Սահմանադրութեան բարեկամները իրեն պէս կը սոսկային այս միջոցէն, որ կարծես թէ պէտք էր յառաջ բերէր քաղաքային պատերազմը։ Միայն ազնուականներն էին որ այդ բանին կը բաղձային, որովհետեւ Թագաւորը Ժողովէն հեռացնելով անոր տէրերը պիտի ըլլային և անոր անունով պիտի կառավարէին, և օր մը անոր հետ պիտի վերադառնային օտարականներու գլուխը կեցած. տակաւին չէին գիտեր թէ օտարականներուն ո՛չ թէ առջեւէն, այլ ետեւէն միայն կարելի էր գալ։ Ազնուականներուն միացած էին Թերեւս քանի մը կանխահաս երեւակայողներ որոնք արդէն սկսած էին երազել հանրապետութիւնը, որուն վրայ ոչ ոք կը խորհէր տակաւին, որուն անունը երբեք արտասանուած չէր, ի բաց առեալ այն միջոցին, երբ Թագուհին կը բարկանար Լաֆայէթի և Ժողովին դէմ, զոր կ'ամբաստանէր հանրապետութեան ուղղած ըլլալուն համար իրենց բոլոր բաղձանքները։ Լաֆայէթ, սահմանադրական բանակին և ազատութեան բոլոր անկեղծ բարեկամներուն պէսը, յարատեւ կերպով կը հսկէր Թագաւորին անձին վրայ։ Այս երկու գաղափարները, Թագաւորին հեռացումը և քաղաքային պատերազմը, իրարու այնքան սերտ կերպով կապուած էին մտքերու մէջ՝ յեղափոխութեան սկիզբէն ի վեր, որ այդ մեկնումը ամենէն մեծ դժբաղդութիւնը կը համարուէր։

Սակայն և այնպէս, նախարարութեան վարումը Թագաւորը Ժողովին դէմ հանեց, և իրեն սա երկիւղը պատճառեց որ գործադիր իշխանութիւնը բոլորովին ձեռքէն կրնայ ելլել. այդ նախարարութիւնը եթէ չէր վայելեր Լուդովիկոս ԺԶ.ի վստահութիւնը, գոնէ իր ընտրութեամբը կազմուած էր։ Կրօնական խնդիրներու շուրջ նոր վիճաբանութիւնները, որոնք յառաջ եկան Կղերին չարակամութենէն՝ քաղաքային սահմանադրութեան առթիւ, իր երկիւղած խղճմտանքը սոսկումի մատնեցին, և այդ վայրկեանէն անոր մեկնումին վրայ խօսեցաւ։ 1790ի վերջերն է որ այս մասին գրեց Պույէի, որ ի սկզբան դէմ դրաւ, բայց յետոյ տեղի տուաւ, իր եռանդը կասկածելի չդարձնելու համար դժբաղդ Թագաւորին։ Իր կողմէն, Միրապօ, ծրագիր մը կազմած էր միապետութեան դատը պաշտպանելու համար։ Մօնմորէնի հետ շարունակական յարաբերութեան մէջ ըլլալով, մինչեւ այն ժամանակը լուրջ ձեռնարկ մը ըրած չէր, որովհետեւ արքունիքը, օտարականներուն, տարագիրներուն և ազգային կուսակցութեան միջեւ վարանելով, բացէ ի բաց ո՛չ մէկ բաղձանք կը յայտնէր, և առաջարկուած բոլոր միջոցներուն մէջէն մանաւորաբար կը սոսկար անկէ, որ զինքը ենթակայ պիտի ընէր Միրապօյի չափ անկեղծ սահմանադրական պետի մը։

Սակայն և այնպէս, արքունիքը այդ միջոցներուն բոլորովին համաձայ-

նեցաւ Միրապոյի հետ. իրեն խոստացաւ ամէն բան, եթէ յաջողէր, և կարելի եղած բոլոր աղբիւրները իր տրամադրութեան տակ դրուեցան։ Թալօն, Շադըլէի քաղաքային տեղակալը, և Լաբորդ, որ դեռ նոր կանչուած էր Թագաւորին մօտ, անձնական գանձը մատակարարելու համար, հրաման ստացան իրեն հետ տեսակցելու և իր ծրագիրներուն գործադրութեանը աջակցելու։ Միրապօ կը դատապարտէր Նոր Սահմանադրութիւնը. ըստ իրեն, այդ Սահմանադրութիւնը շատ ժողովրդավարական (տէմոքրաթիք) էր միապետութեան մը համար, իսկ եթէ հանրապետութիւն մըն էր, Թագաւորը աւելորդ էր։ Միրապօ երբ տեսաւ որ ժողովրդային գրգռութիւնը հետզհետէ կ'աւելնայ, որոշեց կասեցնել զայն։ Բարիզի մէջ, ամբոխին և ամենակարող ժողովի մը իշխանութեանը տակ ոևէ փորձ ընել անկարելի էր։ Ուրեմն միակ միջոց մը կար. այն էր՝ Թագաւորը Բարիզէն հեռացնել և Լիոն բնակեցնել զայն. հոն Թագաւորը ինքզինքը պիտի բացատրէր և կոչովի կերպով մը պիտի յայտնէր այն պատճառները, որոնց համար ինքը կը դատապարտէր Նոր Սահմանադրութիւնը, և պիտի տար ուրիշ սահմանադրութիւն մը որ արդէն կազմ ու պատրաստ էր։ Միեւնոյն ժամանակ առաջին օրէնսդիր ժողով մը պիտի գումարել տար։ Միրապօ, գրաւորապէս խորհրդակցելով ամենէն ժողովրդական անդամներուն հետ, ճարտարութիւնն ունեցած էր, անոնց բոլորէն ալ խլելու ներկայ Սահմանադրութեան մէկ յօդուածին մերժումը։ Իր հաւաքած կարծիքները եթէ իրարու քով բերուէին, Սահմանադրութիւնը ամբողջովին դատապարտուած կ'ըլլար իր իսկ հեղինակներուն ձեռքով(*). կ'ուզէր զանոնք գաղափարակից ընել Թագաւորին հանելիք յայտարարութեան, որպէս զի անոր յառաջ բերելիք տպաւորութեան նկատմամբ վստահ ըլլայ, և աւելի աղէկ զգացնէ Նոր Սահմանադրութեան մը անհրաժեշտութիւնը։ Իր գործա-

(*) Կարելի բան չէ որ հաւաքաբար կատարուած գործի մը մասին մեծ թուով մարդիկ տարակարծիք չըլլան։ Միաձայնութիւնը, մէկ քանի շատ հազուագիւտ կէտերէ դուրս, ուրիշ կէտի վրայ գոյութիւն չունենալով, իւրաքանչիւր կուսակցութիւն հակառակ էր անոնց, որոնք ընդդէմ քուէ տուած էին։ Այսպէս, 91ի Սահմանադրութեան իւրաքանչիւր յօդուածը պարտաւոր էր գտնել հակառակորդներ, յանձին նոյն ինքն այդ Սահմանադրութիւնը հեղինակողներուն. բայց այսուհանդերձ ամբողջութիւնը իրենց իրական և անվիճելի գործն էր. պատահածը անխուսափելի բան մըն էր ամէն խորհրդաժողովի համար, և Միրապոյի գործածած միջոցը խաբէութիւն մըն էր. մինչեւ իսկ կրնանք ըսել թէ իր ընթացքին մէջ շատ ազնուութիւն չկար, բայց պէտք է շատ բան ներել կարող և անհաւասարակշիռ մարդու մը, որուն համար նպատակին բարոյականութիւնը բաւական է որպէս զի միջոցներուն աչք գոցէ. նպատակին բարոյականութիւնը կ'ըսեմ, որովհետեւ Միրապօ անկեղծօրէն կը հաւատար սրբագրուած Սահմանադրութեան մը անհրաժեշտութիւնը. և թէեւ իր վատութիւնը և անձնական մանր մունր մրցակցութիւնները օգնեցին որ ժողովրդային կուսակցութենէն հեռանայ ինքը, բայց անկեղծօրէն կը վախնար որ անիշխանական վիճակ մը յառաջ կուգայ. ուրիշներ ալ աւելի արքունիքէն և ազնուականներէն կը վախնային, քան թէ ժողովուրդէն. այսպէս՝ տեսակէտի համաձայն՝ համոզումը կը փոխուի, և բարոյականն ալ, այսինքն անկեղծութիւնը, երկու հակառակորդ կողմերուն մօտ ալ հաւասարապէս կրնայ գտնուիլ։

գրութեան բոլոր միջոցները ծանօթ չեն. միայն յայտնի է որ, քաղաքային տեղակալ Թալօնի ոստիկաններուն միջոցով կրցած էր խուսափիլ պարսաւագիրներու, ակումբներու և խմբակցութեանց բեմբասացներուն յարձակումներէն. յայտնի էր նաև թէ, շնորհիւ իր ընդարձակածաւալ թղթակցութեանց, պիտի ապահովէր Հարաւային երեսուն և վեց գաւառները: Անտարակոյս կը մտածէր որ Պույէ կրնայ իրեն օգնել, բայց չէր ուզեր ինքզինքը ենթարկել զօրավարին քմահաճոյքին: Մինչ Պույէ Մօնմէտիի մէջ բնակած էր, ինքը կ'ուզէր որ Թագաւորը Լիօն կենայ. և ինքն ալ, պարագաներուն համաձայն պիտի երթար Լիօն կամ Բարիզ: Օտարազգի իշխան մը, բարեկամ Միրապոյի, տեսակցեցաւ Պույէի հետ, Թագաւորին կողմէն, և այս ծրագիրը յայտնեց անոր, բայց Միրապօ չէր գիտեր (*) և չէր մտածեր Մօնմէտիի վրայ, որուն ճամբան բռնեց Թագաւորը, աւելի ետքը: Պույէ, Միրապօի հանճարին վրայ հիանալով ըսաւ թէ պէտք է ամէն բան ընել այսպիսի մարդ մը բոլորովին ձեռք ձգելու համար, և թէ, իր մասին, պատրաստ էր իր բոլոր միջոցներովը օգնելու իրեն:

Մ. տը Լաֆայէթ տեղեակ չէր այս ծրագրին: Թէև անկեղծօրէն նուիրուած էր Թագաւորին անձին, բայց արքունիքին վստահութիւնը չէր վայելեր, և ասկէ զատ Միրապոյի նախանձը կը գրգռէր, որովհետև Միրապօ չէր ուզեր այդպիսի մրցակից մը ունենալ: Ասկէ զատ, Մ. տը Լաֆայէթ ճանչցուած էր իբր մարդ մը՝ որ շիտակ ճամբէն չի շեղիր, և այս ծրագիրը այնքան յանդուգն, այնքան մանրամասնապատ էր որ օրինական ճամբաները բաւական չէին անոր հասնելու: Ինչ որ ալ ըլլայ, Միրապօ ուզեց ըլլալ միակ գործադրիչն իր ծրագրին, և արդարեւ, բոլորովին մինակը վարեց գործերը, 1790-1791ի ձմրան ընթացքին: Չգիտցուիր թէ պիտի յաջողէ՞ր. բայց սա որոշ է որ, առանց ետ դարձնելու յեղափոխական յորձանքը, գոնէ պիտի ազդէր անոր ուղղութեան վրայ, և առանց անշուշտ փոխելու անխուսափելի հետևանքը մեծերին պէս յեղափոխութեան մը, իր զօրաւոր ընդդիմադրութեամբը փոփոխած պիտի ըլլար դէպքերը: Խնդիր է դարձեալ թէ, եթէ նոյն իսկ յաջողէր հպատակեցնել ժողովրդային կուսակցութիւնը, պիտի կարենա՞ր տիրապետել ազնուականութեան և արքունիքին: Իր բարեկամներէն մին այս վերջին դիտողութիւնն ալ կ'ընէր իրեն: Միրապօ կը պատասխանէր. — Ամէն ինչ ընել խոստացած են ինծի:

— Հապա երբ խոստումնին չպահե՞ն:

— Եթէ խոստումնին չպահեն, հանրապետութիւն կը հռչակեմ և թող տեսնեն:

Քաղաքային Սահմանադրութեան գլխաւոր յօդուածները, օրինակի համար՝ եպիսկոպոսական աթոռներու նոր բաժանումը և բոլոր եկեղեցական պաշտօնէաներու ընտրութիւնը լրացնելու հրաման տրուած էր: Թագաւորը այդ մասին հարցուցած էր կարծիքը Պապին՝ որ կէս մը խիստ կէս մըն ալ հայրական եղանակաւ մը իրեն պատասխանելէ ետք, իր կարգին Ֆրանսայի Կղերին կարծիքը հարցուցած էր: Կղերը այս առիթէն օգտուելով անմիջապ ձեւացուց թէ ժողովին որոշումներուն մէջ հոգեւորական տեսակէտը վտանգուած էր: Միեւնոյն ժամանակ պաշտօնաթերթներ ցրուեց և յայտարարեց թէ պաշտօնանկ եպիսկոպոսները է իրենց թեմերը պէտք լքէին

(*) Պույէ իր Յիշատակներուն մէջ այնպէս կ'ըսէ թէ ինքը կարծեր է որ Թագաւորին և Միրապոյի կողմէն կը յայտնեն այդ ծրագիրը բայց սխալ է, ոչ մէկ գնով Միրապօ կ'ուզէր Պույէի ձեռքն իյնալ:

միայն բռնի ույժի դէմ գանուած առեննին, և տուներ վարձելով պիտի չարունակէին կատարել իրենց եկեղեցական պաշտօնները. Թէ հաւատացեալները պարտաւոր էին միայն իրենց դիմել։ Կղերը մեքենայութիւններ կը լարէր մանաւորաբար Վանտէի մէջ և Հարաւի մէկ քանի գաւառներուն մէջ, ուր կը գործակցէր տարագիրներուն հետ։ Դաշնակցային բանակ մը կազմուած էր, սեպտեմբերին սկիզբները, Ժալէի մէջ, ուր, դաշնակիցները կ'ուզէին հաստատել ընդդիմադիր կեդրոն մը՝ Ժողովին որոշումներուն դէմ։ Ժողովրդային կուսակցութիւնը զայրացաւ այս արարքներուն դէմ, և զօրաւոր՝ իր ուժով, ու ձանձրացած՝ իր խոհեմութիւններէն, որոշեց վճռական միջոց մը գործածել։ Արդէն բացատրեցինք այն պատճառները, որոնց ազդեցութեան տակ ընդունուած էր քաղաքային Սահմանադրութիւնը։ Ժողովին ամենէն անկեղծ քրիստոնեաներն էին եղած այս սահմանադրութեան հեղինակները. ու ասոնք, անարդար դիմադրութենէն զայրացած, որոշեցին յաղթել անոր։

Յայտնի է թէ օրէնք մը կը հարկադրէր բոլոր հանրային պաշտօնատարները՝ երդում ընել Նոր Սահմանադրութեան վրայ։ Ամէն անգամ որ խնդիր եղած էր այս աշխարհական երդումին վրայ, Կղերը ուզած էր զանազանութիւն մը դնել քաղաքական Սահմանադրութեան և կրօնական Սահմանադրութեան միջև. ասկէ աւելին ալ կը պահանջուէր հիմա, այս անգամ Ժողովը որոշեց կղերականներէն պահանջել խիստ երդում մը, այնպէս մը որ հարկադրուած ըլլային հրաժարիլ, եթէ չընէին այդ երդումը, և կամ, եթէ ընէին, իրենց պաշտօնը խղճմտօրէն կատարէին։ Ժողովը խնամքը տարաւ յայտարարելու թէ ինք մտադիր չէ խղճմտանքներու վրայ բռնութիւն բանեցնելու, թէ պիտի յարգէր մերժումն անոնց, որ հաւատալով թէ Նոր օրէնքները կը վարկաբեկեն կրօնքը, չպիտի ուզէին երդում ընել. միայն թէ Ժողովը կ'ուզէր հասկնալ թէ որո՞նք են այսպէս կարծող կղերականները, որպէս զի անոնց չյանձնէ եպիսկոպոսական նոր թեմերը։ Այս բանին մէջ իր յաւակնութիւնները արդար և սրտաբաց էին։ Ժողովը կը յարէր թէ երդում ընել մերժողները պաշտօնէ և ամսականէ պիտի զրկուին. ասկէ զատ, օրինակ ըլլալու համար, կը հրամայէր որ բոլոր կղերական երեսփոխանները պարտաւոր են երդում ընել Ժողովին մէջն իսկ, Նոր օրէնքին վաւերացուելէն ութ օր ետք։

Աջակողմը հակառակեցաւ այս օրէնքին. Մօրի իր բոլոր բռնութիւնն ի գործ դրաւ և կրցածը ըրաւ, որպէս զի իր խօսքը կտրեն և ինքը գանգատելու պատճառ ունենայ։ Ալէքսանդր Լամէթ, որ կը գրաւէր նախագահական աթոռը, անոր խօսքը խափանել չտուաւ և զայն զրկեց բեմէն վռնտուելու հաճոյքէն։ Միրապօ, ամէն ժամանակէ աւելի պերճախօս, պաշտպանեց Ժողովը, ու գոչեց. — «Դո՛ւք, կրօնքին հալածիչները, դուք որ այնքան ազնիւ և յուզիչ յարգանք մը ընծայեցիք անոր, ձեր հրամանագիրներուն ամենէն գեղեցիկին մէջ. դո՛ւք՝ որ անոր պաշտամունքին կը ծախսէք հասարակաց դրամը, մինչ ձեր խոհեմականութիւնը և ձեր արդարութիւնը այնքան խնայող պիտի դարձնէր զձեզ. դուք՝ որ կրօնքը միջամտել տուիք Թագաւորութեան բաժանումը կատարելու համար և խաչին նշանը անկեցիք գաւառներու սահմանագլուխներուն վրայ. վերջապէս դո՛ւք որ գիտէք թէ մարդոց այնքան անհրաժեշտ է Աստուած՝ որքան ազատութիւնը»։

Ժողովը օրէնք հռչակեց երդմնատուութիւնը (27 Նոյեմբեր)։ Թագաւորը անմիջապէս Հռոմի կարծիքը հարցուց։ Էքսի արքեպիսկոպոսը, որ ի սկզբան հակառակած էր քաղաքային

սահմանադրութեան, զգալով խաղաղացման մը անհրաժեշտ պէտքը, միացաւ թագաւորին և իր չափաւորական պաշտօնակիցներէն մէկ քանիին, Պապին հաւանութիւնը խնդրելու համար: Դիւրէնի տարագիրները և Ֆրանսայի ընդդիմադիր եպիսկոպոսները Հռոմ գրեցին բոլորովին հակառակ իմաստով, և Պապը, զանազան պատճառաբանութիւններով իր պատասխանը ուշացուց:

Ժողովը, այս յապաղումներէն զայրանալով, պնդեց՝ ստանալու համար թագաւորին վաւերացումը. Թագաւորը թէեւ որոշած էր տեղի տալ, բայց տըկարներուն սովորական եղող հնարամտութիւններ կը բանեցնէր: Կ'ուզէր այնպէս ցոյց տալ թէ հարկադրութիւններու տակ և ո՛չ թէ ազատ կամքովը կը գործէ: վերջ ի վերջոյ, լսեց որ ժողովուրդը խռովութիւն պիտի հանէ, այդ պատճառաւ փութաց վաւերացնել օրէնքը:

Անմիջապէս որ օրէնքը վաւերացուեցաւ, Ժողովը ուզեց գործադրութեան դնել զայն, և ստիպեց որ կղերական երեսփոխանները Ժողովին մէջն իսկ երդում ընեն: Կինեք և այլք, որոնք մինչեւ այն ժամանակը կրօնքին հետ շատ թեթեւ կերպով կապուած էին, յանկարծ գործի ձեռնարկեցին, որպէս զի գրգռեն կղերականները՝ երդում չընելու համար(*): Քանի մը եպիսկո-

(*) Ֆերրիէր, այդ շրջանի էնթրիկներուն ականատես վկան, ինքն իսկ կը պատմէ, թէ որո՛նք գործիք եղան եկեղեցականները արգիլելու համար որ երդում ընեն. ահա իր խօսքերը, որոնք շատ շահեկան ըլլալնուն համար կ'արժէ մէջ բերել. — «եպիսկոպոսները և յեղափոխականները գըրգռում յառաջ բերին և միքենայութիւններ լարեցին, ասոնք՝ երդում ընել տալու համար, իսկ միւսները՝ արգիլելու համար: Երկու կուսակցութիւններն ալ կը զգային թէ մեծ ազդեցութիւն պիտի ընէ գաւառներուն վրայ՝ Ժողովին կղերականներուն բռնելիք ընթացքը: Եպիսկոպոսները իրենց ծխատէրներուն մօտեցան, բարեպաշտները և բարեպաշտուհիները գործի գլուխ անցան. բոլորին ալ խօսակցութիւնը միմիայն կղերականներուն ընելիք երդումին վրայ էր: Կարծես թէ Ֆրանսայի ճակատագիրը և բոլոր Ֆրանսացիներու բախտը այդ երդումին տրուելէն կամ չտրուելէն կախում ունէր: Իրենց կրօնական համոզումներովը ամենէն ազատամիտ եղող մարդիկ, իրենց բարքերովը տխրահռչակ եղող կիներ յանկարծ խստաբարոյ աստուածաբաններ կտրեցան ու եղան կաթոլիկ կրօնքին ամբողջութեանը և մաքրութեանը ջերմ պաշտպանները: Երեք թերթեր դիմեցին գռեհիկ միջոցներու, չափազանցութեան, ստի, զրպարտութեան: Խել մը գրութիւններ տարածեցին, որոնց մէջ հերձուածող, հերետիկոս և կրօնաքանդ կը հռչակուէր կղերին քաղաքային սահմանադրութիւնը: Բարեպաշտուհիները տունէ տուն կը պտըտցնէին այս գրութիւնները, և կը հալածէին կամ կը սպառնային, հակումներու և նկարագիրներու համաձայն: Ոմանց այնպէս ցոյց կու տային թէ կղերը յաղթանակած է արդէն, Ժողովը լուծուած է, անհաւատ կղերականները ընչազուրկ եղած են ու բանտարկուած, իսկ հաւատարիմ կղերականները փառքով պսակուած և հարստացած են. Պապը չանթեր պիտի տեղար սրբապիղծ ժողովին և հաւատուրաց եկեղեցականներուն վրայ. հաղորդութենէ զրկուած ժողովուրդը պիտի ապստամբէր, օտար տէրութիւնները Ֆրանսա պիտի մըտնէին, և անօրէնութեան ու ապիրատութեան այդ շէնքը իր հիմերուն վրայ պիտի փլչէր»:

(Ֆերրիէրի Յիշատակները, հատոր Բ.):

պոսներ և ծխատէր քահանաներ երդում լրին. բայց մեծամասնութիւնը ընդդիմացաւ չինծու չափաւորութեամբ մը և իրենց սկզբունքներուն յարած ըլլալու պատրուակով։ Բայց Ժողովը պնդեց որ նոր եպիսկոպոսներ և ծխատէրներ նշանակուին և վարչական մարմինները կատարելապէս ոյժ տուին իրենց։ Եկեղեցական հին պաշտօնատարներուն թոյլ տրուեցաւ իրենց պաշտամունքը կատարել առանձինն, և Պետութենէն վաւերացուած կրօնականները գրաւեցին եկեղեցիները։ Հերձուածողները Բարիզի մէջ վարձեցին Թէատէնի եկեղեցին, հոն կատարելու համար իրենց պաշտամունքը։ Ժողովը թոյլատրեց այս բանը, և ազգային պահակազօրքը կրցածին չափ պաշտպանեց զանոնք ժողովրդային զայրոյթին դէմ, որովհետև ժողովուրդը թոյլ չէր տար որ անոնք ամէն ատեն հանդիստ սրտով կատարեն իրենց առանձին պաշտամունքը։

Ժողովը դատապարտողներ եղան այս հերձուածը յառաջ բերելուն համար, ու արդէն իսկ գոյութիւն ունեցող բաժանման պատճառներուն վրայ հատ մը եւս աւելցուցած ըլլալուն համար։ Ամէնէն առաջ պէտք է ըսել թէ, ամէն արդարամիտ մարդու համար, Ժողովը իր իրաւանց սահմանէն դուրս չէր ելլեր Եկեղեցւոյ աշխարհականացման գործովը զբաղելով։ Գալով խոհեմ ըլլալու նկատումներուն, կրնանք ըսել որ աւելի մեծ բան մը չէր աւելցներ կացութեան ծանրութեանը վրայ։ Եւ, արդարև, արքունիքը, ազնուականներն ու կղերականները բաւական բան վրայ տուած էին, և ժողովուրդը ձեռք անցուցած էր բաւական բաներ, այնպէս որ իրարու անհաշտ թշնամիներ դարձած էին արդէն ու յեղափոխութիւնը պիտի տար իր անխուսափելի արդիւնքը, նոյն իսկ եթէ նոր հերձուածը ոևէ արդիւնք չունենար։ Բաց աստի, երբ բոլոր զեղծումները կը քանդուէին, միթէ Ժողովը կրնա՞ր հանդուրժել որ եկեղեցական հին կազմակերպութեան զեղծումները մնան այնպէս. կրնա՞ր հանդուրժել որ ծոյլերը ապրին ճոխութեան մէջ, մինչ ժողովուրդին հովիւները, միակ մարդիկը որ օգտակար կը հանդիսանային, չունէին նոյնիսկ անհրաժեշտ պէտք եղածը։

Ազգային կուսակցութեան և կղերականներու առանձնաշնորհեալ դասակարգին միջև սկսած վերջին երկարատև պայքարը, որուն գլխաւոր պարագաները պատմեցինք, վերջի վերջոյ ամէն բան բաժնեց իրարմէ։ Մինչ կղերականները մեքենայութիւններ կը լարէին արևմտեան և հարաւային նահանգներուն մէջ, Թիւրէնի մէջ ապստամբողները զանազան փորձեր կ՚ընէին, բայց անյաջող կը հանդիսանային, որովհետև ակար ու անիշխանական կացութեան մը մէջ էին։ Լիոնի մէջ դաւադրութեան մը փորձը եղաւ. հոն լուր հանուեցաւ թէ իշխանները հասած են և առատ պաշտօնաբաշխութիւն մը պիտի ըլլայ. մինչև իսկ Լիոնի խոստացան թագաւորութեան մայրաքաղաքն ըլլալ, փոխանակ Բարիզի, որ արքունիքին անարժան հանդիսացած էր։ Թագաւորին իմաց կուտային այս մեքենայութիւնները, բայց անիկա յաջող արդիւնք մը չակնկալելով, թերևս ալ չուզելով, որովհետև յաղթական ազնուականները կառավարելէ յուսահատած էր, կրցածը ըրաւ արգելք հանդիսանալու համար։ Այս դաւադրութիւնը երևան ելաւ 1790ի վերջերը, և գլխաւոր դրդիչները դատարան յանձնուեցան։ Այս վերջին ձախողութիւնը պատճառ եղաւ որ տարագիրները որոշեն Թիւրէնէն Քոպլէնց երթալ, ու հոն հաստատուիլ, Թրէվի կայսրընտիրին ծախքերովը։ Սկսէն տեսանք թէ Ֆրանսայէն փախած այս ազնուականութեան անդամները երկու կուսակցութեանց բաժնուած էին. մէկ մասը, նախկին



ՆԱՆՍԻԻ ԶԻՆՈՒՈՐՆԵՐՈՒՆ ԸՆԴՎԶՈՒՄԸ

ծառայողներ, շնորհներով լնած, և Արքունիք կոչուածը կազմելով, չէր ուզեր գաւառի ազնուականութեան վրայ յենլով, անոր հետ կիսել իր ազդեցութիւնը, և այս պատճառաւ է որ միայն արտասահման դիմել կը նախընտրէր. իսկ միւս կուսակցութիւնը, աւելի իր ուժին վրայ յոյս դրած, կը փափաքէր ոտքի հանել հարաւային նահանգները, հոն արթնցնելով մոլեռանդական զգացումներ: Առաջին կուսակցութեան մարդիկը յաղթանակը տարին, ու գային Թոայլենց, հիւսիսային սահմանագլուխին վրայ, հոն սպասելու օտար տէրութեանց: Հարաւային նահանգներուն մէջ մաքառիլ ուզողները ի զուր պնդեցին որ օգնեն Բրէմօնի, Զուիցերիոյ և Սպանիոյ, այս հաւատարիմ և անշահախնդիր դաշնակիցներուն, և ի զուր խնդրեցին որ իրենց մերձակաները կարեւոր պետ մը թողուն: Ազնուականութիւնը, որուն կ'առաջնորդէր Քալօն, չուզեց ընել այս բանը. այս ազնուականութիւնը փոխուած չէր Փրանսայէն մեկնելէն ետքն ալ. ունայնամիտ, գոռոզ, անկարող և չառյլ, այն-

քան Պոլինյի մէջ, որքան էին ի Վերսայլ, այդ ազնուականութիւնը շատ աւելի դիւրաւ երեւան հանեց իր մոլութիւնները տարագրութեան և քաղաքային պատերազմի նեղութիւններուն միջոցին: «Ձեր արտօնագրին մէջ պուրժուայական բան մը պէտք է» կ՚ըսէր ազնուականութիւնը այն յանդուգն մարդոց որոնք հարաւային նահանգներուն մէջ կռուելու համար պատրաստակամութիւն կը յայտնէին, և որոնք կը հարցնէին թէ ինչ տիտղոսի տակ պիտի ծառայեն:

Թիւրէնի մէջ միայն ստորադաս գործակալներ ձգուած էին. ասոնք Լիոնի վրայ նախանձելով, իրարու դէմ կը գործէին և յաջողութեան ո և է փորձ կը վիժեցնէին: Գոնտէի իշխանը, որ կը թուէր պահած ըլլալ իր բազուկին ամբողջ ոյժը, լաւ չէր դիտուեր բնաւ ազնուականութեան մէկ հատուածէն. անիկա հաստատուեցաւ Ռէն գետին մօտերը, բոլոր անոնց հետ, որոնք իրեն նման չէին ուզեր մեքենայութիւններ լարել, այլ կ՚ուզէին կռուիլ միայն:

Տարագիրները օր ըստ օրէ կը բազմանային, և ճամբաները լեցուն էին ազնուականներով որոնք կարծես նուիրական պարտականութիւն մը կը կատարէին, փութալով զէնք առնել հայրենիքին դէմ: Մինչեւ իսկ կիները կը կարծէին թէ պարտաւոր են, յեղափոխութեան դէմ իրենց ատելութիւնը յայտնելու համար, Ֆրանսական հողը լքել. ազգ մը որ ամէն բան կը կատարէ իրարմէ տարուելով, նորոյթ համարած էր տարագրութիւնը. հրաժեշտ առնելու ժամանակ իսկ չունէին, որովհետեւ կը կարծէին թէ ճամբորդութիւնը կարճատեւ և վերադարձը վերահաս պիտի ըլլար: Հոլանտայի յեղափոխականները, իրենց զօրավարէն մատնուած և իրենց զինակիցներէն լքուած, քանի մը օրուան մէջ տեղի տուին: Պրապանի յեղափոխականները աւելի երկար չդիմացան: Եւ ահա այսպէս, ըստ այս անխոհեմ տարագիրներուն, յեղափոխութիւնը պիտի ճզմուէր կարճատեւ կռիւով մը, և բացարձակ իշխանութիւնը պիտի վերածաղկէր սարկացած Ֆրանսայի մէջ:

Ժողովը, աւելի զայրացած քան թէ սարսափած՝ տարագիրներուն մեծախօսութիւններէն, առաջադրած էր միջոցներ, զորս յետաձգած էր միշտ: Թագաւորին հօրաքոյրները, իրենց կրօնական զգացումները խորապէս վտանգուած զգալով Բարիզի մէջ, կարծեցին թէ պարտաւոր են Պապէն իրենց փրկութիւնը խնդրել: Հռոմ մեկնեցան, և ճամբան ձերբակալուեցան Արնէյ-լը-Տիւքի թաղապետութեան ձեռամբ: Ժողովուրդը անմիջապէս վազեց Թագաւորին եղբօրը քով, որուն համար կ՚ըսէին թէ փախչելու կը պատրաստուի. անիկա ինքզինքը ցոյց տուաւ և խոստացաւ որ Թագաւորը չպիտի լքէր: Ժողովուրդը հանդարտեցաւ և Ժողովը խորհրդակցեցաւ Տիկիններուն (արքայազուն) մեկնումին վրայ. խորհրդակցութիւնը կ՚երկարէր, երբ Մընու սա զուարճալի խօսքով վերջացուց.— «Եւրոպան, ըսաւ, շատ պիտի զարմանայ, երբ գիտնայ թէ մեծ Ժողով մը մէկ քանի օր վատնեց, որոշելու համար թէ երկու պառաւ կնիկներ Հռոմի մէ՞ջ ներկայ պիտի ըլլան պատարագին, թէ չէ՝ Բարիզի մէջ:» Այլ սակայն, Սահմանադրութեան Յանձնախումբը պաշտօն առաւ օրէնք մը ներկայացնել հանրային պաշտօնատարներու բնակատեղիին և տարագրութեան վրայ: Այս օրէնքը, որ ընդունուեցաւ բուռն վիճաբանութիւններէ ետք, կը հարկադրէր հանրային պաշտօնատարները մնալու իրենց պաշտօնին վայրը. Թագաւորը, իբրեւ առաջին պաշտօնատարներուն, ստիպուած էր, իւրաքանչիւր խորհրդարանական նստաշրջանի, չհեռանալ Օրէնսդիր Մարմինէն [illegible] ո և է ժա-

մանակ՝ Թագաւորութենէն դուրս չելլել։ Այս օրէնքին դէմ գործող ոև է պաշտօնատար, պիտի ըլլար պաշտօնանկ։ Ուրիշ օրէնք մըն ալ պահանջուեցաւ Ցանձնաժողովէն, տարագրութեան դէմ։

Այդ միջոցին, Թագաւորը այլեւս չկարենալով հանդուրժել իր վրայ հարկադրուած ստիպումներուն և ժողովին կրել տուած իշխանութեան զրկումներուն, մանաւանդ թէ՝ կղերականներու դէմ նոր օրէնքին հաստատուելէն ի վեր խղճի հանդարտութիւն չունենալով, որոշած էր փախչիլ։ Ամբողջ ձմեռը պատրաստութեանց յատկացուեցաւ. Միրաբոյի եռանդը կը գրգռէին. առատ խոստումներ կու տային անոր, եթէ յաջողէր արքայական ընտանիքը ազատել. իր կողմէ, անիկա մեծ եռանդով յառաջ կը մղէր իր ծրագիրը։ Լաֆայէթ դեռ նոր խզած էր յարաբերութիւնը Լամէթներուն հետ. այս վերջինները կը տեսնէին որ անիկա շատ անձնուիրութիւն ցոյց կու տայ արքունիքին, և չկարենալով կասկածիլ անոր անկաշառութեան վրայ, ինչպէս Միրաբոյի վրայ, կը գանգատէին որ թոյլ կու տայ ազնիւներուն՝ չարաչար գործածել իր վստահութիւնը։ Լամէթներու թշնամիները զանոնք կ'ամբաստանէին որ կը նախանձին Լաֆայէթի զինուորական իշխանութեանը վրայ, ինչպէս նախանձած էին Միրաբոյի հռետորական կարողութեան։ Անոնք միացան, կամ այնպէս ընել թուեցան, Օրլէանի Դուքսին բարեկամներուն, և ոմանք կային թէ իրենցմէ մէկուն կ'ուզէին յանձնել ազգային պահակազօրքի հրամանատարութիւնը. կ'ըսէին թէ Շարլ Լամէթն է որ փառասիրութիւնն ունի այդ հրամանատարութիւնը ստանձնելու, և այս չարժամեթին վերագրեցին այն դժուարութիւնները, որոնք շարունակ կը յարուցէին անկէ ետք՝ Լաֆայէթին դէմ։

Փետրուար 28ին, ժողովուրդը, գրգռուած՝ կ'ըսէին, Օրլէանի Դուքսէն, գնաց Վէնսէնի բանտը, զոր Թաղապետութիւնը յատկացուցած էր բանտարկեալներու, Բարիզի բանտերուն մէջ խճողում յառաջ չբերելու համար։ Այս բանտին վրայ յարձակեցան, այնպէս՝ ինչպէս եթէ նոր Պասթիլ մը ըլլար անիկա։ Լաֆայէթ անոնցմէ վազեց հոն և Ֆօպուր Սէնթ Անթուանի հաւաքուածները ցրուեց, Սանթէռէն առաջնորդուած։ Մինչ ինքը կարգ կանոնը կը վերահաստատէր Բարիզի այդ մասին մէջ, իրեն համար ուրիշ դժուարութիւններ կը կը պատրաստուէին Թիւիլըրիի մէջ։ Խռովութիւն մը ելած ըլլալու զրոյցին վրայ, պալատը յաճախողներուն մէկ մեծ մասը Թիւիլըրի խուժած էր, քանի մը հարիւր հոգիով. ասոնք ունէին գաղտնի զէնքեր, որսի դանակներ և դաշոյններ։ Ազգային պահակազօրքը, այս խուժումէն սահմռկած, վախ զգաց, և փախստականները զինաթափ ընելով մէկ քանին ալ խոշտանգեց։ Վրայ հասաւ Լաֆայէթ, պալատը պարպել տուաւ և զէնքերը գրաւեց. անմիջապէս լուրը տարածուեցաւ ամէն կողմ. կ'ըսէին թէ դաշոյններ գտնուեցան փախստականներուն վրայ, և այս պատահարին անունն դրուեցաւ «Դաշոյնի ասպետներ։» Անոնք կը պնդէին թէ եկած էին Թագաւորին վտանգուած կեանքը պաշտպանելու համար. իրենց զինուորութիւն եղաւ թէ կ'ուզէին զայն փախցնել, և, ըստ սովորութեան, այս միջադէպը փակուեցաւ փոխադարձ զրպարտութիւններով։ Այս առթիւ ճշդուեցաւ Լաֆայէթի ճշգրիտ կացութիւնը. այս անգամ աւելի աղէկ տեսնուեցաւ որ, երկու գլխաւոր կուսակցութեանց մէջտեղը կեցած, Թագաւորին անձը և Սահմանադրութիւնը պաշտպանելու համար պատրաստ էր։ Իր կրկնակի յաղթանակը աւելցուց իր ժողովրդականութիւնը, իր զօրութիւնը և իր թշնամիներուն սաստութիւնը։

Միրաբօ որ արքունիքին տածած

անվստահութիւնը՝ իրեն մասին՝ աւելցնելու սխալը կ'ընէր, այդ վարմունքը խորապէս կեղծաւոր է՝ ըսաւ. ըստ իրեն Լաֆայէթի վարմունքը չափաւորութեան և բոլոր կուսակցութեանց դէմ կռուի ձեւին տակ կը ծածկէր բռնապետութեան։ Իր ոխին մէջ Լամէթները կը մատնանշէր իբրեւ չար և անմիտ, միացած Օրլէանականներուն և որոնք Ժողովին մէջ միայն երեսունի չափ կուսակից ունէին։ Գալով աջակողմին, կը յայտարարէր թէ անոնցմով բան մը չէր կրնար ընել և իր յոյսը կեդրոնացուցած էր երեք կամ չորս հարիւր անդամներուն վրայ որոնք ոեւէ յանձնառութիւն չէին ըրած և միշտ պատրաստ էին բան մը որոշելու իր յառաջ բերած պերճախօսութեան և տրամաբանութեան վայրկենական տպաւորութիւնը կրելով։

Միրաբոյի ներկայացուցած այս պատկերին մէջ ամենէն ճշմարիտ կէտերն էին, իւրաքանչիւր կուսակցութեանց յարաբերական ուժին գնահատումը և Ժողովը վարելու միջոցներուն վրայ իր ունեցած կարծիքները. ճիշդ է որ զայն կը կառավարէր տիրելով բոլոր անոնց վրայ որոնք ոեւէ յանձնառութիւն չունէին։ Գրեթէ վերջին անգամն ըլլալով նոյն այդ օրը, Փետրուար 28ին, իր ազդեցութիւնը կը գործէր և Լամէթներու դէմ ունեցած ատելութիւնը կը յայտնէր կիրարկելով իր ահարկու ուժը։

Պիտի վիճաբանուէր տարագրութեան դէմ օրէնքը. Յանձնախումբին կողմէ Շափըլիէ զայն ներկայացուց։ Կ'ըսէր որ այդ ֆրանսացիներուն հանդէպ որ իրենց հայրենիքը կը լքէին, ինքն ալ ընդհանուրին զայրոյթը ունէր, բայց կը յայտարարէր որ Յանձնախումբը քանի մը օր խորհրդածելէ ետքը հասկցեր էր որ անկարելի է օրէնք մը շինել տարագրութեան դէմ. արդարև դժուար էր այդպիսի օրէնք մը կազմել։ Նախ պէտք էր խնդիր ընել թէ ոեւէ իրաւունք կա՞յ մարդը երկրին կապելու։ Անշուշտ թէ իրաւունքը կայ, եթէ հայրենիքին փրկութիւնը այդպէս կը պահանջէ, բայց պէտք պիտի ըլլար որոշել ճամբորդներուն շարժառիթները ինչ որ հաւատաքննական բան մը կը դառնար. պէտք էր որոշել անոնց Ֆրանսացի կամ օտար, տարագիր կամ պարզ վաճառական մը ըլլալը։ Հետեւաբար եթէ այդ տեսակ օրէնք մը կազմել անկարելի չէր, գոնէ շատ դժուար էր։ Շափըլիէ աւելցուց որ Ժողովին հնազանդելու համար Յանձնախումբը օրէնք մը խմբագրած էր զոր եթէ կը փափաքէին, կը կարդար. բայց և այնպէս առաջուընէ կ'ազդարէր թէ այդ օրէնքը կը բռնաբարէր բոլոր սկզբունքները։ «Կարդացէ՛ք... մի՛ կարդաք» կը պոռային ամէն կողմէ. շատ մը երեսփոխաններ խօսք առնել ուզեցին. Միրաբօ ալ խօսք ուզեց իր կարգին, ստացաւ, և որ աւելին է, լռութիւն հրամայեց. այն ատեն շատ պերճախօս նամակ մը կարդաց որ ատենօք ուղղած էր Ֆրէտէրիք Կիյօմին և որուն մէջ տարագրութեան համար ազատութիւն կը պահանջէր իբր մարդուս ամենէն նուիրական իրաւունքներէն մէկը. մարդս արմատ կապած չըլլալով հողին մէջ, միայն երջանկութիւնը կրնար զինքը յարել անոր։ Միրաբօ, թերեւս արքունիքը գոհացնելու համար, բայց մանաւանդ համոզումով, բռնապետական կը համարէր բոլոր այն միջոցները որոնք երթեւեկը կ'արգիլէին և զանոնք կը մերժէր։ Անտարակուսելի է որ այդ միջոցին չարաչար կը գործածէին երթեւեկի ազատութիւնը. բայց Ժողովը իր ուժին կռթնած ներողամիտ եղած էր մամուլին իր խիստ հակառակ գործած ա՛յնքան ծայրայեղութիւններուն, կրած էր այնքան ուժգին փորձեր և զանոնք արհամարհելով հեռու մղած էր ա՛յնքան յաղթականօրէն, որ կարելի էր իրեն խորհուրդ տալ նոյն ձեւովը շա-

րունակելու։ Միրապոյի կարծիքը ծափահարութիւնով ընդունուեցաւ, բայց յամառեցան օրէնքի նախագծին ընթերցումը պահանջելու։ Վերջապէս Շարըլիէ կարդաց. այդ նախագիծը կ՚առաջարկէր, խառնակութեանց պարագային հաստատել բացարձակ իշխանութիւն ունեցող և երեք անդամներէ բաղկացած Յանձնախումբ մը, որուն իրենց ուզածին պէս և անուանական կերպով պիտի արձանագրէին զանոնք որ ազատութիւն ունին Ֆրանսայէն դուրս ելլելու։ Այս շատ դառն հեգնութեան հանդէպ, որ օրէնքի մը անկարելիութիւնը երեւան կը բերէր, դժգոհութիւններ բարձրացան։ «Ձեր մրմունջները զիս ամոքեցին, պոռաց Միրապօ, ձեր սիրտը իմինիս համապատասխան է և կը մերժէ այս անմիտ բռնապետութիւնը։ Գալով ինծի, ես ինքզինքս արձակուած կը զգամ ու և է երդումէ հանդէպ անոնց որ բացարձակ իշխանութեան տէր յանձնախումբ մը ընդունելու անարժանութիւնը կը գործեն։» Ձախակողմէն աղմուկ կը բարձրանայ։ «Այո՛, կը կրկնէ, կ՚երդնում....։» Կրկին կ՚ընդմիջուի. «Այն ժողովրդականութիւնը որուն փառասիրութիւնը ունեցայ, կը յարէ սրտառոց ձայնով մը, և զոր վայելեցի ինչպէս ուրիշ մը, տկար եղէգ մը չէ. խորունկ մը պիտի մխեմ զայն հողին մէջ.... և զայն պիտի ծլեցնեմ արդարութեան և բանականութեան դաշտին մէջ....։» Ծափահարութիւններ կը պայթին ամէն կողմէ. «Կ՚երդնում որ, կ՚աւելցնէ ատենաբանը, եթէ տարագրութեան դէմ օրէնք մը քուէարկուի, կ՚երդնում որ ձեզի անհնազանդ պիտի ըլլամ։»

Բեմէն իջաւ, ժողովը զարմացնելով և ինքզինքը սեպել տալով թշնամիներուն։ Սակայն վեհապանծութիւնը դեռ կ՚երկարէր. ոմանք կ՚ուզէին յետաձգել լաւագոյն օրէնք մը կազմելու ժամանակ ունենալու համար. ուրիշներ կը պահանջէին որ անմիջապէս յայտարարուի թէ այդպէս օրէնք չպիտի շինուի, ժողովուրդին յուզմունքը դադրեցնելու և յուզմունքը հանդարտեցնելու համար կը մրմռան, կը գոչեն, կը ծափահարեն։ Միրապօ անգամ մըն ալ խօսք կ՚ուզէ պահանջելու պէս. «Ի՞նչ է անունը Պ. այս Միրապոյի հոս ի գործ դրած բռնապետութեան» կը գոչէ Պ. Կուպիլ։ Միրապօ առանց մտիկ ընելու կը խոյանայ բեմը. «Խօսք չեմ առած, կ՚ըսէ նախագահը, թո՛ղ ժողովը որոշէ.» բայց առանց բան մը որոշելու ժողովը մտիկ կ՚ընէ. «Կը խնդրեմ որ, կ՚ըսէ Միրապօ, ընդմիջողները յիշեն թէ բոլոր կեանքիս մէջ բռնապետութեան դէմ կռուած եմ և պիտի կռուիմ ուր որ ալ հաստատուած ըլլայ։» Այս բառերն արտասանուած ատեն նայուածքը կը պտըտցնէր ամէն ձախ. բազմաթիւ ծափահարութիւններ իր ձայնին կ՚ընկերանան. Միրապօ կը շարունակէ. «Կը խնդրեմ որ Պ. Կուպիլ յիշէ թէ ժամանակով Կատիլինայի մը մասին սխալեցաւ(*)։ Կը խնդրեմ որ ժողովը անդրադառնայ թէ յետաձգման խնդիրը ըստ երեւոյթին պարզ, իր մէջ ուրիշ խնդիրներ կը պարունակէ, և, օրինակի համար ենթադրել կու տայ թէ կազմելիք օրէնք մը կայ։» Նորէն մրմունջներ կը բարձրանան ձախէն. «Լռութի՛ւն, երեսուն ձայնե՛ր» կը գոչէ ատենախօսը իր նայուածքը սեւեռելով Պառնավին և Լամէթներու աթոռին վրայ։ «Վերջապէս, կ՚աւելցնէ, եթէ կ՚ուզէք ես ալ քուէ կու տամ յետաձգուելուն, բայց այն պայմանաւ որ հրաման ըլլայ թէ այսօրուընէ մինչեւ այն ատեն խռովութիւն չպիտի ըլլայ։» Խանդավառութեան միաձայն աղաղակներ կը ծածկեն այս վերջին

---

(*) Պ. Կուպիլ ատենօք հետապնդելով Պ. Միրապոն, գոչած էր աջակողմին հետ թէ «Կատիլինա մեր դուռը հասած է։»

բառերը։ Այլ սակայն յետաձգումը կը քուէարկուի այնքան ջնջին մեծամասնութեամբ մը որ չեն ընդունիր արգիլինքը և կրկին փորձել կը պահանջեն։

Այս խնդրին մէջ Միրապօ գլխաւորապար հարուածեց, շնորհիւ իր յանդգնութեան. երբե՛ք թերեւս այնքան հզօրապէս չէր տիրապետած ժողովին. բայց իր վերջը մօտ էր և ասոնք իր հուսկ յաջողութիւններն էին. մահուան նախազգացումներ կը խառնուէին իր ընդարձակ ծրագիրներուն և երբեմն անոնց թռիչքը կը կասեցնէին։ Սակայն իր խղճմտանքը հանդիստ էր. ժողովրդական համարումը միանալով իրենին կ'ապահովցնէր զինքը որ եթէ դեռ բաւական բան չէր ըրած պետութեան փրկութեանը համար, գոնէ իր անձնական փառքը ապահոված էր։ Տժգոյն, աչքերը խորն ինկած, երեսին վրայ շատ փոխուած կ'երեւար և յաճախ կը բռնուէր յանկարծական նուաղումներէ։ Հաճոյքի և աշխատութեան ծայրայեղութիւնները, հռետորի յուզումները քիչ ատենի մէջ մաշած էին այս շատ զօրաւոր գոյութիւնը. Անդիկէ լուծաջուրով լոգանքները յառաջ բերած էին այն կանանչորակ գոյնը զոր թունաւորման կը վերագրէին։ Արքունիքը վախով համակուած էր, բոլոր կուսակցութիւնները զարմացած, և իր մահէն առաջ, պատճառը կը փնտռէին։ Վերջին անգամ մը հինգ զանազան անգամներ խօսք առաւ, սպառած մեկնեցաւ և այլ եւս չերեւցաւ։ Մահուան անկողինը զինքն ընդունեց և զայն յանձնեց Բանթէոնին. Բազմութիւն պահանջած էր որ բժիշկ չկանչեն. այլ սակայն զինքը մինակ չըրին. բայց երբ հասան, մահն արդէն մօտեցած էր և գրաւած էր ոտքերը. ամենէն վերջը գլուխը կրեց մահուան հարուածը իբր թէ բնութիւնը ուզած ըլլար որ իր հանճարը փայլի մինչեւ վերջին վայրկեանը։ Անհամար ժողովուրդ կը խռնուէր իր բնակարանին շուրջը և բոլոր ճամբաները կը խճողէր ամենախոր լռութիւն պահելով։ Արքունիքը սուրհանդակ սուրհանդակի վրայ կը ղրկէր. անոր առողջութեան տեղեկագիրը բերնէ բերան կ'անցնէր և ամէն անգամ որ ցաւը կը յառաջդիմէր, ամէն կողմ վիշտ կը տարածէր։ Ինքը՝ բարեկամներով շրջապատուած, իր ընդհատուած աշխատութիւններուն մասին ցաւ կը յայտնէր և կամ հպարտութիւն՝ անցեալի գործերուն վրայ։ «Բանէ՛, կ'ըսէր իր սպասաւորին, բանէ՛ այս գլուխը որ Ֆրանսայի ամէնէն զօրաւոր գլուխն է։» Ժողովուրդին փութկոտութենէն զգածուելով. իր թշնամիին, Պառնաւի այցելութիւնը որ Ժաքոբէններու կողմէ կը ներկայանար իրենն քաղցր յուզում մը պատճառեց։ Իր մտածումներուն մէկ մասը դարձեալ յատկացուց հասարակաց գործին։ Ժողովը պիտի զբաղէր կտակներու իրաւունքով. Պ. տը Թալէյրանը կանչեց և անոր յանձնեց ճառ մը որ նոր գրած էր. «Զուարճալի պիտի ըլլայ, ըսաւ անոր, երբ լսէք որ կտակներու վրայ կը խօսի մարդ մը որ այլ եւս գոյութիւն չունի և որ իրենը նոր ըրած է։» Իրաւ ալ արքունիքը ուզած էր որ իր կտակը ընէ ընէ, խոստանալով որ պիտի յարգէր անոր բոլոր տրամադրութիւնները։ Իր միտքը փոխադրելով Եւրոպայի վրայ և գուշակելով Անգլիոյ ծրագիրները. «Այդ Բիթը, ըսաւ, պատրաստութեանց նախարարն է. սպառնալիքներով կը կառավարէ. իրեն շատ նեղութիւն պիտի տայի, եթէ ապրէի։» Թեմին քահանան եկած ըլլալով իր ծառայութիւնները մատուցանելու, քաղաքավարութեամբ ճամբեց և անոր մերժելով ըսաւ թէ կամովին պիտի ընդունէր զանիկա եթէ իր տան մէջ լա՛ չըլլար իր կղերական պետ, տ'Օթէօն եպիսկոպոսը։ Պատուհանները բանալ տուաւ։ «Բարեկամս, ըսաւ Գապանիսին, այսօր պիտի մեռնիմ. այսեւս

պէտք է որ բուրումներով պատուէին, ծաղիկներով պսակէին և երաժշտութիւնով շրջապատէին, որպէս զի խաղաղութեամբ մտնեմ յաւիտենական քունին մէջ։» Սուր ցաւեր երբեմն կ'ընդհատէին այս այնքան ազնուական և հանդարտ խօսքերը։ «Խոստացած էիք, ըսաւ բարեկամներուն, ինծի խնայել աւելորդ ցաւերը։» Այսպէս ըսելով ափիոն ուզեց ըմպելու. երբ մերժեցին, պահանջեց իր սովորական ուժգնութեամբ։ Գոհացնելու համար զինքը, կը խաբեն և բաժակ մը կը ներկայացնեն ապահովցնելով թէ ափիոն կը պարունակէ։ Կ'առնէ բաժակը հանդարտութեամբ, մէկ ումպով կը խմէ ըմպելիքը զոր մահացու կը կարծէր և գոհացած կը թուի։ Վայրկեան մը ետքը հոգին կ'աւանդէ։ 1791 Ապրիլի 2ն էր։ Անմիջապէս գոյժը կը տարածուի արքունիքին, քաղաքին և ժողովին մէջ։ Բոլոր կուսակցութիւնները յոյս դրած էին իր վրայ և ամենքը, բաց ի նախանձորդները, վշտահար էին։ Ժողովը իր աշխատութիւնները կը դադրեցնէ, ընդհանուր սուգ մը կը հրամայուի և հոյակապ յուղարկաւորութիւն մը կը պատրաստեն. քանի մը երեսփոխաններ կ'ուզուին «ամենքս ալ պիտի երթանք» կը գոչեն։ Սէնդ-Ժընըվիէվ եկեղեցին Բանթէոնի կը վերածուի ու արձանագրութեամբ որ այս տողերս գրած պահուս այլ եւս չկայ.

### ՄԵԾ ՄԱՐԴՈՑ՝ ԵՐԱԽՏԱԳԱՐՏ ՀԱՅՐԵՆԻՔԸ

Տէքարդի քով Միրաբօ առաջին ընդունուածը եղաւ հոն։ Հետեւեալ օրը յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ։ Բոլոր իշխանութիւնները, նախարարութիւնը, թաղապետութիւնները, ժողովրդային ընկերութիւնները, ժողովը, բանակը կ'ընկերանային թափօրին։ Այս պերճ ատենախօսը աւելի պատիւ կը ստանար քան թէ այն շքեղ դագաղները որ ժամանակին Սէն-Տընի կ'երթային։ Այսպէս փախճանեցաւ այս տարօրինա՛կ մարդը որ յանդգնութեամբ յարձակելէ և յաղթելէ ետքը հիներուն, համարձակեցաւ իր ջանքերը դարձնել այն նորերուն դէմ որ իրեն օգնած էին յաղթելու համար. համարձակեցաւ զանոնք կեցնել իր ձայնով, զոր իրենց սիրելի դարձուց իրենց դէմ գործածելով իսկ. այս մարդը, վերջապէս, որ իր պարտականութիւնը կատարեց դրդուած բանականութենէն, հանճարէն, բայց ո՛չ այն քիչ մը ոսկիին համար որ իր կիրքերուն նուաստուած էր. անիկա եղական պատիւը ունեցաւ տեսնելու որ իր ժողովրդականութիւնը տեղի տուաւ միայն մահուան, երբ բոլոր միւսները կը վերջանային ժողովրդին զզուանքովը։ Բայց արդեօք համակրութիւն պիտի մնացնէ՞ր արքունիքի սիրտին մէջ և չափաւորութիւն՝ փառասէրներու սրտին մէջ։ Պիտի ըսէ՞ր այն ժողովրդական բեմասացներուն որ իրենց կարգին փայլ կ'ուզէին. Մնացէք միշտ արտաքսածներուն մէջ։ Պիտի ըսէ՞ր Տանդոնին, այն միւս ամբոխային Միրաբոյին. Կեցէ՛ք այդ բաժանումին մէջ եւ աւելի բարձր մի ելլէք։ Չենք գիտեր, բայց իր մեռնելու պահուն, բոլոր անապահով շահերը իր ձեռքը յանձնուած էին և իր վրայ յոյս դրած էին։ Երկար ատեն իր ներկայութիւնը փնտռեցին. մեծարանութեանց շփոթութեան մէջ նայուածքները կ'ուղղէին այն տեղին վրայ ուր կ'ըլլար, և կ'ոգեկոչէին զինքը որ կարող էր յաղթական բառով մը վերջացնել. «Միրաբոն այլեւս հոս չէ, գոչեց օր մը Մօրի, բեմ ելլելով, ինծի արգիլող չպիտի ըլլայ խօսելու։»

Միրաբոյի մահով արքունիքը բոլոր քաջութիւնը կորսնցուց։ Նոր դէպքեր փախուստի որոշումը փութացուցին։ 18 ապրիլին թագաւորը ուզեց Սէն-Քլու երթալ։ Լուր տարածուեցաւ որ Լուդովիկոս ԺԶ. չուզելով իր Զատկի կրօնական պարտականութիւններուն համար երդուեալ քահանայ մը գործածել,

որոշած էր Աւագ շաբաթը հիւսուն անցընել. ուրիշներ կը պնդէին թէ փախչիլ կ'ուզէ։ Անմիջապէս ժողովուրդը կը խռնուի և ձիերը կը կեցնէ։ Լաֆայէթ կը վազէ, կը պաղատի թագաւորին որ կառքին մէջ մնայ զայն ապահովցնելով թէ իրեն ճամբայ պիտի բանայ։ Սակայն թագաւորը կառքէն կ'իջնայ և թոյլ չի տար որ և է փորձ ընել. իր հին քաղաքականութիւնն էր ազատութիւնը կաշկանդուած ցուցնել։ Իր նախարարներուն խորհուրդին վրայ Ժողովին կ'երթայ իր կրած նախատինքէն գանգատելու համար։ Ժողովը զինքը կ'ընդունի իր սովորական փութկոտութիւնով, խոստանալով Թագաւորին ազատութիւնը ապահովել իրեն բոլոր կարելի միջոցներով։ Լուդովիկոս ԺԶ. կը մնէր ծածկահարութիւններու մէջ որ ամէն կողմէ կը լսուէին, բայց ի աջակողմէն։ Ապրիլ 23ին հետևելով խորհուրդի մը, Պ. Մօնմօրէնի միջոցաւ նամակ մը գրել կու տայ ուղղուած օտար դեսպաններուն որուն մէջ կը հերքէ այն դիտաւորութիւնները որ իրեն կը վերագրէին Ֆրանսայէն դուրս և պետութեանց կը յայտարարէ թէ Սահմանադրութեան երդում ըրած է և թէ տրամադիր է իր խօսքը պահել ու իրր. իր թշնամիները կը յայտարարէ բոլոր անոնք որ հակառակը հասկնալ կ'ուզեն։ Այս նամակին արտայայտելու եղանակը կամաւ չափազանցուած էր որպէս զի բռնի իրմէն խլուած ըլլալու ձևն ունենայ, ինչ որ Թագաւորը յայտարարից Լէօպոլտի դեսպանին։ Այս իշխանը այն ատեն Իտալիայէն կ'անցնէր և այդ պահուն Մանդուա կը գտնուէր։ Քալօն կը բանակցէր անոր հետ։ Դեսպան մը, Պ. Ալեքսանդր տը Տիւրֆօռ, Մանդուայէն եկաւ Թագաւորին և Թագուհիին մօտ, տեղեկանալու համար իրենց տրամադրութիւններուն։ Նախ զիրենք հարցաքննեց դեսպաններուն ուղղուած նամակին մասին, որուն պատասխանեցին թէ գործածուած լեզուէն յայտնի էր թէ բռնութեան տակ գըրուած էր. հարցուց նաև թէ ինչ յոյսեր ունէին. բայց անոնք ըսին թէ Միրաբոյի մահէն ի վեր ո և է յոյս չունին. վերջապէս տեղեկացաւ իրենց տրամադրութիւններուն Կոմս Տ'Արդուայի մասին որուն մասին ըսին թէ լաւագոյն զգացումները կը տածէին։

Այս հարցումներուն շարժառիթը հասկնալու համար պէտք է գիտնալ թէ պառոն տը Պրըթէօյ յայտնի թշնամին էր Քալօնին, թէ իր հակառակութիւնը չէր մնացած տարագրութեան մէջ և թէ Վիեննայի արքունիքին մէջ լիազօր ներկայացուցիչը ըլլալով Լուդովիկոս ԺԶ.ի, իշխաններուն բոլոր դիմումներուն հակառակը կ'ընէր. կ'ապահովցնէր Լէօպոլտը թէ Թագաւորը չուզեր ազատիլ տարագիրներու միջոցաւ, որովհետև կը վախնար անոնց պահանջումներէն և թէ Թագուհին անձնականապէս գրգռուած էր Կոմս տ'Արդուային հետ։ Գահին փրկութեան համար միշտ Քալօնի հակառակ առաջարկութիւններ կ'ընէր և բան մը չմոռնալով փճացուց այս նոր բանակցութեանց ազդեցութիւնը։ Կոմս տը Տիւրֆօռ Մանդուա վերադարձաւ և 1791 մայիս 20ին Լէօպոլտ խոստացաւ 35,000 զինուոր Ֆլանտրիոյ և 15,000 զինուոր Ալզասի մէջ ոտքի հանել։ Յայտնեց որ նոյնքան թուով զուիցերիացի զինուորներ պիտի երթային Լիոն. նոյնքան ալ Բիէմօնթէյի Տօֆինէի վրայ և թէ Սպանիա պիտի հաւաքէր 20,000 հոգի. կայսրը կը խոստանար Բրուսիոյ թագաւորին գործակցութիւնը և Անգլիոյ չէզոքութիւնը։ Բուրպոնեան Տան անունով կազմուած բողոքագիր մը պիտի ստորագրէին Նապոլիի Թագաւորը, Սպանիոյ Թագաւորը, Բարմայի իշխանազուն և տարագիր իշխանները։ Մինչև այն ատեն ամենամեծ գաղտնապահութիւն կը պահանջէր։ Յանձնարարած էին նաև Լուդովիկոս



ՄՕՐԻ

ԺԶ.ին հեռանալու վրայ չխորհիլ, հակառակ որ փափաք յայտնած էր. մինչ ընդհակառակը Պրիթէօյ խորհուրդ կուտար թագաւորին՝ մեկնիլ: Կարելի է որ այս խորհուրդները մէկ և միւս կողմէ կը տրուէին բարեմտութեամբ. բայց նշանակելի է որ իւրաքանչիւրին խորհուրդը իրչանհրուն համապատասխան էր: Պրիթէօյ որ կը պայքարէր Թալօնի բանակցութեան դէմ Մանդուի մէջ, մեկնումի կողմն էր. իսկ Թալոն որ Լուդովիկոս ԺԶ.ին սահմանադրուխը անցնելէն ետքը իշխանութեան գլուխ բարձրանելու յոյս չէր կրնար ունենալ, կը թելադրէր մնալու: Ինչ որ ալ ըլլայ թագաւորը որոշեց մեկնիլ և քանիցս սըրտմտութիւնով ըսաւ. «Այսպէս ուզողը Պրըդէօյն է:» Այն ատեն գրեց Պույէին

որ այլ եւս որոշած էր չը յետաձգել ։ Իր դիտաւորութիւնը թագաւորութենէն դուրս ելլել չէր, այլ Մօնմէտի քաղաքն ուրկէ ի հարկին կրնար Լիւքսէմպուրկի ապաւինիլ և օտար օգնութիւն ստանալ ։ Հակառակ Պուլյէի կարծիքին, նախընտրութիւն տրուեցաւ Շալօնի ճամբուն, Բլէրմօնէ և Վարէնէ անցնելով ։ Ամէն բան պատրաստ եղաւ 20 յունիսի օրը մեկնելու համար ։ Զօրավար Պուլյէ հաւաքեց այն գնդերը որոնց վրայ ամենէն աւելի վստահութիւն ունէր. Մօնմէտիի մէջ բանակատեղի մը պատրաստեց, չոր խոտ ամբարեց և իր այս բոլոր պատրաստութիւններուն իբր պատրուակ ցոյց տուաւ սահմանագլխի վրայ շարժում մը ։ Թագուհին յանձն առած էր ղեկավարել Բարիզէն Շալօն ըլլալիք պատրաստութիւններուն վրայ և Պուլյէ՝ Շալօնէ Մօնմէտի. ձիաւոր զինուորներ քիչ թուով խմբուած պիտի գտնուէին այլ և այլ կէտերու վրայ և գանձի մը փոխադրութեան հսկելու պատրուակին ներքեւ պիտի դիմաւորէին թագաւորը անոր անցած միջոցին ։ Պուլյէ ինքն ալ առաջադրած էր Մօնմէտիէն քիչ մը յառաջանալ ։ Թագուհին ապահոված էր գաղտնի դուռ մը, պալատէն դուրս ելլել կարենալու համար. արքայական ընտանիքը օտարականի անունով և կեղծ անցագրով պիտի ճամբորդէր. ամէն ինչ պատրաստ էր 20ին համար. բայց երկիւղ մը յապաղեցուց ճամբորդութիւնը մինչեւ 21, յապաղում՝ որ աղէտաբեր եղաւ այս քամբաղդ գերդաստանին համար ։ Պ. տը Լաֆայէթ բնաւ երբեք բան մը չէր գիտեր այս ճամբորդութեան մասին. Պ. տը Մօնմօրէն ինքն ալ, հակառակ արքունիքին տուած վստահութեանը, բացարձակապէս կ'անգիտանար. այս ծրագիրը հաղորդուած էր անո՛նց միայն, որոնք անհրաժեշտ անձերն էին անոր գործադրութեանը համար ։ Սակայն և այնպէս, հոս հոն լուր ելած էր փախուստին մասին, ո՛վ գիտէ, ծրագրին երեւա՛ն գալուն հետեւանքով, թէ՝ այն ժամանակները այնքան սովորական եղող իրարանցումներուն պատճառով ։ Ինչ որ ալ ըլլայ, խուզարկութեանց յանձնախումբին ականջը ինկած էր արդէն փախուստին լուրը և ազգային պահակազօրքին հսկողութիւնը կրկնապատկուած էր ։

Յունիս 20ին, կէս գիշերուան մօտ, թագաւորը, թագուհին, Տիկին Էլիզապէթ, Տիկին տը Թուրզէլ, Ֆրանսայի արքայազուն իշխաններուն դաստիարակուհին՝ կը ծպտին և իրարու ետեւէ կը մեկնին պալատէն ։ Տիկին տը Թուրզէլ, դէպ ի Փոքր Քարուզէլ կ'երթայ իշխաններուն հետ, և կը նստի կառք մը, զոր կը վարէր Պ. տը Ֆէրսէն, օտարազգի երիտասարդ ազնուական մը, որ իբր կառապան ծպտած էր ։ Քիչ ետք, թագաւորը գնաց միացաւ անոնց ։ Բայց թագուհին, որ առանձնապահ գունդով մը մեկնած էր, բոլորին ալ շատ մեծ մտահոգութիւններ պատճառեց. ո՛չ ինքը և ո՛չ ալ իր առաջնորդը չէին ճանչնար Բարիզի թաղերը. թագուհին ճամբան կը կորսնցնէ և միայն մէկ ժամ ետք կը գտնէ Փոքր Քարուզէլը. հոն դացած միջոցին, կը հանդիպի Պ. տը Լաֆայէթի կառքին. ջահերով կ'ընթանային Լաֆայէթի ծառաները. թագուհին կը ծածկուի Լուվրի կամարներուն տակ, և այս վտանգէն ազատած, կը հասնի այն կառքը, ուր այնքա՛ն անհամբերութեամբ կը սպասէին իրեն ։ Այսպէս, իրար գտնելէ ետք, ամբողջ ընտանիքը ճամբայ կ'ելլէ. երկար գնացքէ և երկրորդ մոլորումէ մը ետք, կը հասնի Բօրթ Սէն Մարդէն, և կը նստի վեց ձիերու լծուած դոց կառքը, որ հոն կը սպասէր արքայական ընտանիքին ։ Տիկին տը Թուրզէլ, Տիկին տը Քօրֆ ծածկանուամբ պիտի ներկայանար իբր մայր մը, որ կը ճամբորդէ իր զաւակներուն հետ. թագաւորը իր

Սակայն և այնպէս Թագաւորը հասաւ Սէնթ Մընըհուլ. հոն՝ գլուխը միշտ կառքին դռնակէն դուրս հանելով, ճանչցուեցաւ Տրուէի կողմէ, որ կարմիր յեղափոխական մըն էր, և՝ թղթատարական տնօրէնին որդին. այս երիտասարդը կառքը Սէնթ Մընըհուլի մէջ կեցնելու անկարող անմիջապէս Վարէն վազեց։ Հեծելազօրաց քաջ յիսնապետ մը, որ նշմարած էր անոր փութաջանութիւնը և կը կասկածէր չարժառիթներուն վրայ, անոր ետևէն վազեց ձերբակալելու համար, բայց չկրցաւ. Տրուէ այնքան արագ կ՚ընթանայ որ Վարէն կը հասնի քաղաքը ընտանիքէն աւելի առաջ, և անմիջապէս կ՚իմացնէ թաղապետութեան, ու առանց վայրկեան կորսնցնելու, բոլոր անհրաժեշտ միջոցները ձեռք կ՚առնէ ձերբակալման համար։

Վարէն հաստատուած է նեղ այլ խորունկ գետի մը ափին վրայ. Հուսարներու ջոկատ մը այնտեղ պահակ կենալու պաշտօնն ունէր. բայց սպան, տեսնելով որ ծանուցուած գանձը չի գար, զինուորները թաղերուն մէջ ձգած էր։ Վերջապէս կառքը կը հասնի և կամուրջը կ՚անցնի. հազիւ թէ մտած էր կամարի մը տակ, ուր պէտք էր անցնիլ, Տրուէ, ուրիշ մարդու մը հետ կեցուց կառքին ձիերը և գոչեց. «ո՞ւր է ձեր անցագիրը,» Միևնոյն ատեն, հրացանով մը սպառնալով ուղևորներուն, եթէ յամառէին ճամբանին շարունակել։ Այս հրամանին հնազանդեցան և անցագիրը ցոյց տուին. Տրուէ առաւ զայն, և ըսաւ թէ ընդհանուր դատախազին տանի է զայն քննելը. արքայական ընտանիքը առաջնորդուեցաւ դատախազին քով, որուն անունն էր Սօս։ Այս մարդը, անցագիրը քննելէ ետք, այնպէս ձևացուց թէ օրինաւոր է ան, և մեծ յարգանքով խնդրեց Թագաւորէն որ քիչ մը սպասէ։ Բաւական երկար ատեն սպասեցին. երբ Սօս վստահ եղաւ որ բաւականաչափ թուով ազգային պահակազօրք հաւաքուած է, իր կեղծիքը մէկ կողմ թողուց և յայտարարեց իշխանին թէ ճանչցուած է ու ձերբակալուած։ Վիճաբանութիւն մը սկսաւ. Լուդովիկոս պնդեց թէ կարծուած անձը չէ ինքը. երբ վիճաբանութիւնը սաստկացաւ, Թագուհին անհամբերութեամբ գոչեց. «քանի որ ճանչցաք թէ ձեր Թագաւորն է, ուրեմն խօսեցէք իրեն հետ այն յարգանքով զոր կը պարտիք։»

Թագաւորը, տեսնելով որ ո և է ուրացում անօգուտ է, այլ ևս մէկ կողմ ձգեց կեղծիքը։ Փոքրիկ սրահը լեցուն մարդ կար. խօսք առաւ և խօսեցաւ այնպիսի խանդաղատանօք մը որ՝ անմոռանալի չէր լինեն. ըսաւ որ իր դիտաւորութիւնները բարի են. ապահովցուց թէ Մոնմէտի երթալուն միակ պատճառն է աւելի ազատօրէն լսել ժողովուրդին բաղձանքները, Բարիզի բռնակալութենէն ազատելով. ի վերջոյ խնդրեց որ իրեն թոյլ տրուի ճամբան շարունակելու և մինչև իր երթալիք տեղը տանին զինքը։ Դժբաղդ Թագաւորը, յուզուած, համբուրեց Սօսը և անկէ խնդրեց որ իր կնոջն ու զաւակներուն կեանքին վրայ հսկէ. Թագուհին ալ հետևեցաւ անոր ընթացքին և գահաժառանգը իր գիրկը առնելով աղաչեց Սօսի, որ փրկէ զիրենք։ Սօս յուզուեցաւ, բայց ինքզինքը չկորսնցուց, և խորհուրդ տուաւ անոնց՝ որ Բարիզ վերադառնան, քաղաքային պատերազմի մը առաջքը առնելու համար։ Ընդհակառակը, Թագաւորը, այս վերադարձէն սոսկալով, պնդեց որ կ՚ուզէ դէպ ի Մոնմէտի երթալ։

Այդ պահուն վրայ հասան Պ. տը Տամաս և Կօկըլա, իրենց հրամանին տակ գտնուած ջոկատներով։ Արքայական ընտանիքը կը կարծէր թէ ազատած է, բայց նշաններուն վրայ կարելի չէր յոյս դնել։ Սպաները հաւաքեցին զօրքը և յայտարարեցին թէ Թագաւորը և ընտանիքը ձերբակալուած

են և թէ պէտք է ազատել զանոնք, բայց զինուորները պատասխանեցին թէ իրենք ալ գիտեն կռուիլ։ Միևնոյն ատեն, ազգային պահականորդքը, շրջականներէն հաւաքուելով Վարէնի մէջ լեցուեցան։ Ամբողջ գիշերը այսպէս անցաւ. առտուան ժամը 6ին, երիտասարդ Ռօտէօֆ հասաւ, հետը բերելով Ժողովին վճիռը. տեսաւ որ ինչ ձևով լծուած կառքը դէպի Բարիզ ճամբայ ելլելու վրայ է։ Կառք եկաւ և ցաւով յանձնեց հրամանագիրը. ամբողջ ընտանիքը աղաղակ մը բարձրացուց ընդդէմ Գ. տը Լաֆայէթի, որ զինքը ձերբակալել տուած էր։ Թագուհին մինչև իսկ, կը թուէր ապշահար որ ժողովուրդին ձեռքով վտանգուած չէ ան. երիտասարդ Ռօտէօֆ կը պատասխանէ թէ ինքը և իր հրամանատարը իրենց պարտականութիւնը կատարեցին զիրենք հալածելով, բայց յոյս ունէին որ իրենց չեն հասնիր։ Թագուհին առաւ հրամանագիրը, նետեց զաւակներուն անկողինին վրայ, յետոյ անկէ վերցուց, ըսելով թէ իր տղաքը պիտի պղծուէին անով. այն ատեն Ռօտէօֆ որ թագուհիին շատ անձնուէր մէկն էր, ըսաւ. «Տիկին, պիտի ուզէի՞ք որ ինձմէ զատ ուրիշ մը ականատես ըլլար ձեր այս դայրոյթին։» Այն ատեն թագուհին ինքզինքին եկաւ և իր խոհականութիւնը վերստին ձեռք ձգեց։

Այդ միջոցին, իմաց տուին թէ Պուլէ զօրավարին ձեռքով մերձակաները ղեկավարուած զօրքերը հասան. բայց քաղաքապետը հրամայեց որ մեկնումը տեղի ունենայ, ու այսպէս, արքայական ընտանիքը ստիպուեցաւ անմիջապէս կառք նստիլ և Բարիզի ճամբան բռնել, այդ աղետալից և այնքան վախցուած ճամբան։

Պուլէ որ կէս գիշերին իմացած էր պատահածը, ձիաւորներու զօրագունդ մը ճամբայ հանած, և «կեցցէ թագաւորը» գոչելով մեկնած էր։ Այս քաջ զօրավարը, անհամբերութենէն ինքզինքը ուտելով, վազելով առաջ գնաց և չորս ժամուան մէջ ինը մղոն ճամբայ կտրեց. Վարէնն հասնելուն, հոն գտաւ որ բազմաթիւ զօրագունդեր հաւաքուած են, բայց թագաւորը մեկնած է մէկ ու կէս ժամէ ի վեր. Վարէնի ամրացուած քաղաքը մնացեր էր և բանակին լաւ պաշտպանուած, որովհետև կամուրջները խորտակուած էին և գետը հունէն չանցնելի։

Ուրեմն, թագաւորը ազատելու համար Պուլէ պարտաւոր էր նախ և առաջ կռիւ մղել, պաշտպանները վերցնելու համար, յետոյ պէտք էր գետը անցնիլ, և ժամանակին այս մեծ կորուստը կրելէ յետոյ, պէտք էր հասնիլ կառքին, որ արդէն մէկ ու կէս ժամ յառաջ գացած էր։ Այս արգելքները անկարելի դարձուցին ոև է փորձ. և Պուլէի չափ ձեռներէց և անձնուէր մարդ մը միայն աչքառու անկարելութեան մը առջև էր որ կրնար կասիլ։

Երբ Բարիզի մէջ թագաւորին ձերբակալման լուրը առին, որ քէն վտանգէ զերծ կը համարէին զայն. Ժողովուրդը առատաձեռն ուրախութիւն մը զգաց։ Ժողովը ձախակողմի երեք հատուած-ներէն ընտրեց մէյ մէկ պատգամաւոր, որպէսզի ընկերանան թագաւորին և զայն Բարիզ բերեն, այդ պատգամաւորներն էին Պարնավ, Լաթուր-Մոպուր և Բէթիոն։ Անոնք գացին Շալոն, և անմիջապէս որ արքունիքին քով հասան, բոլոր հրամանները իրենք սկսան արձակել։ Տիկին տը Դուրզէլ անցաւ ուրիշ կառք մը Լաթուր-Մոպուրի հետ. Պարնավ և Բէթիոն նստան արքայական ընտանիքին կառքը. Լաթուր-Մոպուր, ազնուական անձնաւորութիւն մը, բարեկամն էր Լաֆայէթի և անոր նման անձնուէր էր այնքան Թագաւորին, որքան Սահմանադրութեան։ Իր երկու պաշտօնակիցներուն թողլով արքայական ընտանիքին քովը կենալու պատիւը, իր

նպատակն էր զանոնք հետաքրքրել թշուառ վեհափառութեանը։ Պառնավ նստաւ խոր, թագաւորին և թագուհիին մէջտեղը, Բէթիոն՝ առջևօք, Տիկին Էլիզաբէթի և Տիկին Թուրզէլի մէջտեղ։ Երիտասարդ դահաժառանգը փոխնիփոխ անոնց ծունկերուն վրայ կը նստէր։

Ահա՛ թէ ի՛նչ եղած էր դէպքերու առաջ ընթացքը. Երիտասարդ փաստաբան մը՝ քանի և մէկ քանի սպաներեան, նշանաւոր՝ միայն իր սաղաւարտով, ուրիշ մը՝ իր սիրտերուն յոյսովը այդ ժամանակներ խառնութեանը հովանաւոր, նստած էին քովերին այն իշխանին, որ դեռ քիչ ժամանակ առաջ Եւրոպայի ամենէն բարգաւաճ վեհապետն էր, և կը հրամայէին անոր բոլոր շարժումներուն։

Ճամբորդութիւնը դանդաղօրէն կը կատարուէր, որովհետև կառքը ազգային պահակազօրքին ետևէն կ՚երթար. Վառէնէն մինչև Բարիզ 8 օրէն եկան. տօթագին տաք կար. կիզիչ փոշի մը, զոր ժողովուրդը կը հանէր, ճամբորդները կը խեղդէր։ Առաջին վայրկեանները լռութեամբ անցան. Թագուհին չէր կրնար ծածկել իր վայրոյթը։ Վերջի ի վերջոյ թագաւորը խօսք ուղղեց Պառնավի. խօսակցութիւնը նախ դարձաւ բոլոր նիւթերուն վրայ, և վերջապէս կանգ առաւ դէպ ի Մոնմէդի փախուստին վրայ։ Թէ՛ մէկ և թէ միւս կողմը զարմանք կը պատճառէին իրարու։ Թագուհին երիտասարդ Պառնավի նուրբ քաղաքավարութեանը և ընտրողական ատողանդին վրայ զարմացաւ. շատ չանցած, քօղը վար առաւ և խօսակցութեան մասնակցեցաւ։ Պառնավ զգածուեցաւ թագաւորին յարութենէն և թագուհիին շնորհալի մեծանձնութենէն։ Բեթիոն աւելի կարծրասրտութիւն ցոյց տուաւ. խնք անոնց և անոնք ալ իրեն յարգանք չընծայեցին։

Երբ Բարիզ հասան, Պառնավ ինքզինք նուիրուած կը զգար այս դժբաղդ ընտանիքին, և թագուհին, երիտասարդ ընկերակցին սրտմանքէն և ազնուականութենէն հրապուրուած, իր յարգանքին հաւատալիքը ընծայած էր անոր։ Այս պատճառով, անկէ ետք, սահմանադրական երեսփոխաններուն հետ իր ունեցած յարաբերութեան ընթացքին, անոր վրայ դրաւ իր ամենագոյն վստահութիւնը։

Թագաւորական ընտանիքին Բարիզ վերադարձին նկատմամբ տիկին Կամպան իր Յիշատակներուն մէջ կը պատմէ հետևեալները, զորս թագուհիին բերնէն լսեր է. —

«Իմ Բարիզ հասած օրս իսկ թագուհին զիս ընդունեց իր ժամանատ սենեակը և ըսաւ թէ շատ ոյժեր պիտի ունենայ ինձ, Պ. Պ. Պառնավի, Տիւբորի և Ալէքսանդր Լամէթի հետ իր հաստատած յարաբերութեանց համար։ Ինծի յայտնեց թէ Պ. Ժ*** իր միջնորդն էր՝ սահմանադրական կուսակցութեան այդ բեկորներուն և իր միջև. ասոնք թէև բարի, բայց դժբաղդաբար ուշը մնացած՝ տրամադրութիւններ ունէին, ու ըսաւ ինծի թէ Պառնավ յարգանքի արժանի անձ մըն է։ Զարմացայ որ թագուհին այնքան բարեկամութեամբ կ՚արտասանէ Պառնավի անունը։ Երբ Բարիզէն մեկնած էի, մեծ թիւով մարդիկ արհամարհանքով կը խօսէին անոր մասին. այս դիտողութիւնս ըրի թագուհիին, որ ըսաւ զարմանք չյայտնեց, բայց ըսաւ թէ Պառնավ բոլորովին փոխուած էր հիմա, և թէ այդ երիտասարդը, արժանաւորութեամբ ու ազնուական զգացումներով լեցուն, դասակարգութեամբ նշանաւոր դարձած մարդոց դասակարգին կը վերաբերէր, ու մոլորած էր այն փառամոլութենէն զոր իրական արժանիք մը կը ծնցնէ։ Թագուհին ըսաւ նաև որ «Եթէ երբեք իշխանութիւնը կրկին մեր ձեռքը անց-

նի, Պառնավլի ներումը կանխապէս գրուած է մեր սրտին մէջ։» Անիկա յարեց թէ միեւնոյն կերպով չէր խորհեր այն ազնուականներուն նկատմամբ, որոնք յեղափոխութեան մէջ նետուած էին, իրենք՝ որ կ'ընդունէին ամէն տեսակ շնորհ, և յաճախ՝ ի վնաս ստորադաս աստիճանի մարդոց, որոնց մէջ կը գտնուէին մեծամեծ տաղանդներ։ Վերջապէս Թագուհին ըսաւ թէ ազնուականները, միապետութեան պատնէշն ըլլալու համար ծնած, այնքան յանցաւոր էին միապետութեան դատը լքած ըլլալնուն համար, որ արժանի չէին ներուելու։

«Թագուհին զիս հետզհետէ աւելի և աւելի կը զարմացնէր իր ցոյց տուած այն եռանդին համար, որով կը պաշտպանէր իր գոյացուցած նպաստաւոր կարծիքը՝ Պառնավլի մասին։ Ըսաւ նաեւ թէ Բարիզ վերադառնալու ժամանակ անոր ցոյց տուած վարմունքը անթերի էր, մինչ Բէղլիոնի հանրապետական անկրթութիւնը ըմբոստացուցիչ էր. անիկա Թագաւորին կառքին մէջ կ'ուտէր կը խմէր անմաքրութեամբ, հաւեղէնի ոսկորները կառքին դռնակէն դուրս նետելով, մինչև Թագաւորին երեսին զարնելու աստիճան անկրթութեամբ. անիկա իր գինիի գաւաթը կը բարձրացնէր, բաւական է ըսելու համար՝ առանց բառ մը արտասանելու, երբ Տիկին Էլիզապէթ գինի կը լեցնէր անոր գաւաթը. այս վիրաւորիչ ընթացքը յայտնապէս ցոյց կու տար, քանի որ դաստիարակութիւն ստացած մարդ մըն էր Բէղլիոն։ Պառնավ զայրացած էր Բէղլիոնի այս վարմունքին համար։ Երբ Թագուհին սրնգեր է Պառնավի որ բան մը հրամմէ, «Տիկի՛ն(*), պատասխաներ է Պառնավ, Ազգային ժողովի երեսփոխանները այսքան հանդիսաւոր առիթի մը մէջ, Ձեր Վեհափառութիւնը միայն իրենց պաշտօնին վերաբերեալ գործերով պէտք է զբաղեցնեն, և երբեք՝ իրենց պէտքերով։» Պառնավի ցոյց տուած այս յարգալիր վերաբերումը և փափկանկատութիւնը և ըրած բոլոր խօսքերը Տիկին Էլիզապէթի ալ սիրտը շարժած էին։

«Թագաւորը սկսած էր խօսիլ Բէղլիոնին, Ֆրանսայի կացութեան և իր վարմունքին տեղի տուող շարժառիթներուն մասին, որոնք հիմնուած էին անհրաժեշտ պէտքի մը վրայ, գործադիր իշխանութեան ձեռքը տալու այն անհրաժեշտ ոյժը, որ հարկաւոր էր սահմանադրական օրէնքին յարատեւ համար իսկ, քանի որ Ֆրանսա չէր կրնար հանրապետութիւն ըլլալ...։ «Ո՛չ տակաւին, պատասխանեց Բէղլիոն, որովհետև Ֆրանսացիները հասուն չեն հանրապետութեան մը համար։» Այս յանդուգն և անգութ պատասխանը լռութիւն հարկադրեց Թագաւորին, և մինչեւ Բարիզ անիկա լուռ կեցաւ։ Բէղլիոն իր ծունկերուն վրայ դրկած էր փոքրիկ գահաժառանգը, և կը զուարճանար իր մատներովը ոլորելով շահեկան մանուկին սիրուն խարտեաշ մազերը, և մերթ ընդ մերթ, խօսած միջոցին զանգուրները այնքան կը քաշէր որ մանկիկը կը պոռար...։ «Զաւակս ինծի տուէ՛ք, ըսաւ վերջապէս Թագուհին, անիկա սովոր է խնամքի և յարգանքի, ու վարժուած չէ այդքան ընտանի շարժ ու ձեւերու։»

«Տամպիէռ ասպետը Թագաւորին կառքին մօտը սպաննուած էր, Վարէնէն մեկնած պահուն. գիւղական խեղճ երէց մը, որ ոճիրը գործուած տեղէն քանի մը մղոն հեռու կը գտնուէր, անխոհեմութիւնն ունեցաւ Թագաւորին մօտենալու և հետը խօսելու. կառքը շրջապատող մարդասպանները յանկարծ վրան խուժեցին. Պառնավ գոչեց.

(*) Ֆրանսայի արքունիքին մէջ բոլոր արքայազունիները, աղջիկ ըլլային թէ ոչ, կը կոչուէին մատամ (տիկին), իսկ այրերը՝ մօնսիէօ (պարոն)։ Ս. Թ.



ԿՂԵՐԱԿԱՆ ԵՐԵՍՓՈԽԱՆՆԵՐԸ ԵՐԴՈՒՄ Կ'ԸՆԵՆ

«Վագրե՛ր, դադրեցէ՛ք Ֆրանսացի ըլլալ․ քաջերու ազգ մըն էիք, մարդասպաններու ժողովո՛ւրդ մը եղաք հիմա։» Այս խօսքերը բաւական եղան ազատելու համար գետինը տապալուած քահանան՝ ստոյգ մահուընէ։ Պառնավ, վերոգրեալ խօսքը ըրած միջոցին, գրեթէ դուրս նետուած էր կառքէն, և Տիկին Էլիզաբէթ, այս առնական թռիչքէն զգածուած, անոր զգեստէն քաշած էր որ դուրս չիյնէ։

«Թագուհին, այս միջադէպին վրայ խօսելով կ'ըսէ թէ, ամենէն մեծ տագնապներու միջոցին, տարօրինակ հակապատկերներ միշտ իր ուշադրութիւնը կը գրաւէին․ իրեն համար շատ զարմանալի թուած էր որ բարեպաշտուհի Էլիզաբէթը Պառնավի զգեստին ծայրէն բռնէ քաշէ, այդպիսի վայրկեանի մը մէջ. . ։ Երկու երեսփոխաններուն վարմունքը Թագուհիին առջև պարզեց թէ կատարեալ անջատում մը կայ հանրապետական և սահմանադրական կուսակցութեանց միջև։ Թագուհին իր

իջեւանած պանդոկներուն մէջ, մէկ քանի մասնաւոր տեսակցութիւններ ունեցաւ Պառնավի հետ, որ իրեն շատ խօսեցաւ այն սխալներուն մասին, զորս արքայականները գործեցին յեղափոխութեան միջոցին, և ըսաւ թէ արքունիքին շահերը այնքան տկար ու դէշ կերպով պաշտպանուած էին որ քանիցս փորձուեր էր իրթալ քաջամարտիկ մէկը ընծայել անոր, մէկը՝ որ հասկնար դարուն ոգին և նաև՝ ազգին ոգին։ Թագուհին հարցուցեր է անոր թէ ի՞նչ միջոցներ ի գործ դնելու խորհուրդ կու տայ։ — «Պէտք է ժողովրդականութիւն շահիլ, Տիկի՛ն։» — «Բայց ի՞նչպէս կրնամ ժողովրդականութիւն ունենալ, ձեռքէս առին։» — «Ա՛հ, Տիկին, ձեզի համար աւելի դիւրին էր վերստին ձեռք ձգել զայն, քան ինծի համար՝ զայն ունենալը։» Այս խօսքը մեկնութեան կարօտ է, բայց ես կը գոհանամ միայն այս հետաքրքրաշարժ խօսակցութիւնը հաղորդելով։»

Բարիզի մէջ, արքայական ընտանիքին ըլլալիք ընդունելութիւնը պատրաստուած էր. ամէն կողմ գրուած և պատերուն փակցուած էր սա ծանուցումը. «Ով որ ծափահարէ թագաւորը՝ ծեծ պիտի ուտէ, ով որ նախատէ զայն՝ պիտի կախուի։» Այս հրամանը կէտ առ կէտ գործադրուեցաւ, և ո՛չ ծափահարութիւն, ոչ ալ նախատական բառ մը լսուեցաւ։ Կառքը կողմնակի փողոցներէ գնաց Բարիզի մէջէն չանցնելու համար, մտաւ Շան զ'Էլիզէէն, որ շիտակ պալատ կ'առաջնորդէ։ Խուռներամ բազմութիւն մը լուռ ու մունջ և գլխարկը գլուխը՝ ընդունեց թագաւորական ընտանիքը։ Լաֆայէթ, մեծաքանակ պահակազօրքի մը գլուխը կեցած, մեծամեծ նախազգուշութիւններ ձեռք առած էր. այն երեք անձնապահ զինուորները որոնք օգնած էին փախուստին, կառապանին քովը նստեցուած էին, որպէս զի ժողովուրդը տեսնէ զիրենք և յայտնէ իր զայրոյթը՝ անոնց մասին, թէև ոչ մէկ դէշ վարմունքի ենթակայ չեղան։

Կառքը պալատ հասաւ թէ ոչ, շրջապատեցին զայն. արքայական ընտանիքը արագ քայլերով վար իջաւ և քալեց ազգային պահակազօրքերու կրկնակ շարքի մը մէջէն. այդ զինուորները զիրենք պաշտպանելու պաշտօնն ունէին։ Թագուհին որ ամենէն ետեւը մնացած էր, գրեթէ գրկելով ներս տարին Պ. Պ. տը Նոայլ և տ'Էկիլյօն, որոնք թէև թշնամի էին արքունիքին, բայց դժբաղդութեան վեհանձն բարեկամներն ալ էին։ Երբ թագուհին տեսաւ որ անոնք իրեն կը մօտենան, ի սկզբան քիչ մը կասկածեցաւ անոնց դիտաւորութեանց մասին, բայց յետոյ ինքզինքը յանձնեց, և ո՛ղջ առողջ հասաւ պալատ։

Ահա այսպէս վերջացաւ այս ճամբորդութիւնը, որուն աղխտաբեր ելքը արդարութիւն չէ վերագրել անոնց՝ որ պատրաստեցին զայն։ Դիպուած մը պատճառ եղաւ որ չյաջողի, ինչպէս որ դիպուած մը կրնար յաջողցնել զայն։ Օրինակի համար, եթէ Տրուէի ետեւէն վազողը կարենար հասնիլ անոր և ձերբակալէր, կառքը ազատած պիտի ըլլար։ Թերևս թագաւորն ալ պէտք եղած կորովը ցոյց չտուաւ, երբ ճանչցուեցաւ։ Ինչ որ ալ ըլլայ, ոչ ոք յանցաւոր է այս ճամբորդութեան համար, ոչ՝ խորհրդատուողները, և ոչ ալ՝ գործադրողները. անիկա արդիւնքն էր այն ճակատագրականութեան որ տկարութիւնը կը հալածէ յեղափոխական տագնապներու միջոցին։

Վարէնի ճամբորդութեան արդիւնքը սա եղաւ որ թագաւորին հանդէպ ո և է յարգանք չմնաց այլեւս, մարդիկ վարժուեցան նկատի չառնել զայն, և հանրապետութեան բաղձանքները սկսան ծնիլ։ Թագաւորին հասած առաւօտն իսկ,

ժողովը ամէն բանի մասին անօրինութիւններ ըրած էր հրամանագրով մը 25 յունիս շաբաթի նիստին մէջ։) Լուդովիկոս ԺԶ. դադրեցուցուած էր իր պաշտօնէն, և անոր անձին ու թագուհիին, ինչպէս նաև դահաժառանգին պահպանութիւնը հրամայուած էր։ Պահակազօրքը պատասխանատու էր անոնց կեանքին։ Երեք երեսփոխաններ՝ տ'Անտրէ, Դրօնշէ և Տիւբօր պաշտօն ստացան թագաւորին և թագուհիին յայտարարութիւնները լսելու։ Արտաքին ձեւերու և ոճերու մէջ մեծ զգուշաւորութիւն կ'ըլլար, որովհետև այս ժողովը երբէք չթերացաւ արտաքին ձեւականութեանց մէջ. բայց արդիւնքը ակներեւ էր, ու թագաւորը առժամաբար գահազուրկ եղած էր։

Ազգային պահակազօրքին վրայ դրուած պատասխանատուութիւնը զայն կը դարձնէր խստաբարոյ և յաճախ՝ նեղացուցիչ, թագաւորական ընտանիքին մօտ անդամներուն կատարած ծառայութեանց միջոցին։ Պահակները անդադար կը հսկէին անոնց դրան առջև, և երբէք չէին փախցներ իրենց աչքին առջևէն։ Թագաւորը օր մը ուզեց գիտնալ թէ իրօք բանտարկուա՞ծ է, ու դրան մը առջևը գնաց. պահակ զինուորը թող չտուաւ որ դուրս ելլէ. «Կը ճանչնա՞ք զիս» հարցուց թագաւորը. — «Այո՛, տէ՛ր Արքայ» պատասխանեց պահակը։ Այս կերպով թագաւորը ուրիշ բան չունէր ընելիք այլ առտուները պտըտիլ Թիւիլըրիի պալատան պարտէզին մէջ, մինչ հանրութեան առջև բացուած չէր ան։

Պարնավ և Լամէթ եղբայրները այն ատեն ըրին բան մը, զոր այնքան կը մեղադրէին Միրապոյին. անոնք օգնեցին գահին և համաձայնեցան Արքունիքին հետ. ճիշտ է որ դրամ չստացան ընաւ, բայց արդէն արքունիքին հետ զինակցութեան գինը չէր, այլ զինակցութիւնն իսկ էր զոր իրենք ալ մեղադրած էին Միրապոյի, և առնոք այնքան խիստ ըլլալէ ետք, հիմա ենթակայ կ'ըլլային այն օրէնքին որ հասարակաց է բոլոր ժողովրդային պետերուն. այդ օրէնքը զանոնք կը հարկադրէ իրարու ետևէ յարիլ իշխանութեան, այն չափով որ կը բարձրանան դէպ ի այդ իշխանութիւնը։ Այսու ամենայնիւ, իրաց վիճակին մէջ, ոչինչ գովելի էր այնքան, որքան Պարնավի և Լամէթ եղբարց մատուցած ծառայութիւնը՝ թագաւորին. անոնք ոչ մէկ առթիւ ցոյց տուած էին այդ աստիճան ճարտարութիւն, ոյժ և տաղանդ։ Պարնավ՝ թագաւորին տուն տուաւ այն պատասխանը, զոր պիտի հաղորդէր ժողովին կողմէ նշանակուած պատգամաւորներուն։ Այդ պատասխանագրով Լուդովիկոս ԺԶ. իր փախուստին իբր պատճառ ցոյց կուտար հանրայինկարծիքը աւելի լաւ ճանչնալու համար զգացած փափաքը. կը վստահացնէր թէ իր ճամբորդութեան միջոցին շատ աւելի աղէկ ուսումնասիրած էր զայն, և բոլոր իրողութիւններով կ'ապացուցանէ թէ Ֆրանսայէն դուրս ելլել չէր իր միտքը։ Գալով իր այն բողոքներուն զորս արտայայտած էր ժողովին յանձնուած յիշատակագրին մէջ, իրաւամբ կ'ըսէր թէ անոնք Սահմանադրութեան հիմնական սկզբունքներուն դէմ չէին, այլ կը գանգատէր իր ձեռքը թողուած գործադրութեան միջոցներէն։ Հիմա, կը յարէր, որ ընդհանուրին փափաքը յայտնի եղաւ իրեն, չէր վարաներ հպատակիլ անոր, և ամէն անհրաժեշտ զոհողութիւն ընել հասարակաց բարօրութեանն համար։ Ահաւասիկ թագաւորին պատասխանէն մէկ քանի հատուածներ, բառ առ բառ. — «Տեարք, ձեզի տրըւած պաշտօնին նպատակէն կը հասկնամ թէ զիս հարցաքննելու չէ որ եկած էք հոս, այս պատճառաւ սիրով կը պատասխանեմ ժողովին փափաքներուն. երբէք չեմ վախնար հրապարա-

կ'ըլլէ իմ վարմունքիս չուժառութիւնը. 18 ապրիլին, ինծի և ընտանիքիս եղած նախատինքներն ու սպառնալիքներն են որ պատճառ եղան Բարիզէն մեկնումիս. այնպէս կը կարծէի թէ այլ ևս ապահով ու պարկեշտ բան մը չէր ինծի համար, այս քաղաքին մէջ մնալը...։ Մօնմէտի քաղաքը երթալ նախընտրած էի, որովհետև ամրացեալ քաղաք մը ըլլալով ընտանիքս աւելի ապահովութեան մէջ էր հոն, ու սահմանագլուխին աւելի մօտ ըլլալով, աւելի ի վիճակի կ'ըլլայի դէմ դնելու Ֆրանսայի դէմ կատարուելիք ամէն տեսակ արշաւանքի, եթէ այդ կարգի ձեռնարկ մը ըլլար...։ Հետս ունէի միայն 3000 ոսկի դրամ և 56000 ոսկի թղթադրամ...։ Անհրաժեշտ էր որ անցագիր մը ունենամ ճամբորդութիւնս դիւրակատարելու համար. անոր մէջ դրուած էր թէ օտար երկիր կ'երթամ, պարզապէս սա պատճառով որ արտաքին գործոց պաշտօնատան մէջ, ներքին գաւառներու համար անցագիր չեն տար...։ Իմ ճամբորդութեանս միջոցին հակառակ որ հանրային կարծիքը ի նպաստ Սահմանադրութեան է. չէի կարծեր որ Բարիզի մէջ կրնայի վերահաս ըլլալ լուրին՝ հանրային կարծիքին. բայց ճամբորդութեանս միջոցին անձնականապէս քաղած ծանօթութիւններս ու համոզումը գոյացուցի թէ Սահմանադրութեան ամրապնդման համար պէտք է այժմ տալ իշխանութեանց, որոնք հաստատուած են կարգ կանոնը պահպանելու նպատակաւ...։»

Զօրավար Պույէ իր վրայ հրաւիրելու համար ժողովին ուշադրութիւնը, անոր ուղղեց նամակ մը, զոր կարելի էր անմիտ անուանել, եթէ դաւութիւն չսեպուէր իր վճռական դրդապատճառը։ Անիկա կը խոստովանէր թէ Թագաւորին ճամբորդութեան միակ հեղինակը ինքն է, թէև, ընդհակառակը, ինքը համամիտ իսկ չէր. յանուն վեհապետներուն անիկա կը յայտարարէր թէ Բարիզ պատասխանատու է արքայական գերդաստանին ապահովութեանը, և եթէ ամենափոքր չարիք մը հասցուի անոր, խստօրէն վրէժ պիտի առնէր։ Պույէ կը յարէր, հակառակ որ գիտէր թէ ըսածը ճիշդ չէ, թէ Ֆրանսայի զինուորական ոյժերը ցամքած են, և թէ գիտէր օտար արշաւանքին անցնելիք ճամբաները, և թէ ինքը անձամբ պիտի առաջնորդէր թշնամի բանակները դէպ ի հայրենիքի սիրտը։

Ժողովը ինքն ալ այս վեհանձն քաջագործութեան ենթակայ եղաւ և ամէն յանցանք Պույէի վրայ նետեց, որովհետև անիկա վախնալիք բան մը չունէր այլևս, քանի որ սահմանագլուխն անցած էր արդէն։

Սպանիոյ արքունիքը, վախնալով որ ամենափոքր ցոյցը կարող է դրգռել մուքերը և արքայական ընտանիքը մեծ վտանգներու ենթարկել, արգիլեց ընդվզում մը՝ որ արդէն պատրաստուած էր հարաւային սահմանագլուխին վրայ, և որուն պիտի գային օժանդակել Մալթայի ասպետները, երկու կրկնայարկ նաւերով։ Աւելի ուշ Սպանիա յայտարարեց Ֆրանսական կառավարութեան, թէ իր բարի տրամադրութիւնները փոխուած չեն հանդէպ Ֆրանսայի։ Հիւսիսային գաւառները շատ աւելի քիչ խոհականութիւն ցոյց տուին. այս կողմէն, ուղղութիւնները՝ տարագիրներէն գրգռուած՝ սպառնալից կը դառնային։ Թագաւորը պատգամաւորներ ղրկեց Պրիւքսէլ և Քոպլենց։ Անոնք պիտի ջանային համաձայնութիւն մը գալ տարագիրներուն հետ և ժողովին բարի տրամադրութիւնները հաղորդել անոնց, և յայս յայտնել նպատակաւոր կարգադրութիւն մը մասին։ Բայց պատգամաւորները հասան թէ ոչ, դէշ վարմունքի ենթարկուեցան և անմիջապէս Բարիզ վերադարձան։ Տարագիրները յանուն

թագաւորին զօրք հաւաքեցին և այս կերպով հարկադրեցին թագաւորը որ պաշտօնապէս ստանայ զիրենք։ Տարագիրները այնպէս կը ձևացնէին թէ թագաւորին եղբայրը, որ այն ժամանակ իրենց միացած էր, թագաւորութեան խնամակալն էր. թէ թագաւորը բանտարկուած ըլլալով, այլևս ազատ կամք չունէր, և անոր յայտնած կարծիքները զինքը հարստահարողներուն կարծիքներն էին։ Երբ Ռուսաց Կատարինէ կայսրուհին Օգոստոս ամսուն Թուրքերուն հետ հաշտութիւն կնքեց, իրենց անմիտ ուրախութիւնը շատցաւ ա՛լ աւելի, ու կարծեցին թէ Եւրոպայի բոլոր տէրութիւնները իրենց տրամադրութեան տակ կը գտնուէին։ Նկատի ունենալով ամրացեալ վայրերու զինաթափութիւնը, կազմալուծումը բանակին, զոր բոլոր սպաները լքած էին, անոնք հաւատացած էին որ արշաւանքը՝ շուտով կը սկսէր և կը յաջողէր։

Այլ սակայն, արդէն գրեթէ երկու տարի անցած էր այն օրէն ի վեր որ Փրանսան ձգած էին, և, հակառակ իրենց ամէն օրուան գեղեցիկ յոյսերուն, երբեք յաղթականօրէն Փրանսա մտած չէին կրկին, ինչպէս կը պարծենային։ Տէրութիւնք շատ բան կը խոստանային, բայց Բիթ կը սպասէր. Լէօբոլտ, պատերազմէն սպառած և տարագիրներէն դժգոհ, հաշտութիւն կը բաղձար. Բրուսիոյ թագաւորը շատ բան կը խոստանար, բայց իր խոստումները պահելուն մէջ ոևէ չափ չունէր. Կուսթավ կը փափաքէր Փրանսայի դէմ արշաւանք մը ընել, բայց շատ հեռուն կը գտնուէր, իսկ Կատարինէն, որ անոր պիտի օգնէր, նոր ազատած Թուրքերէն, դեռ Բոլոնիան ունէր ճնշելիք։ Բաց աստի, բաղձացուած գործակցութիւնը յառաջ բերելու համար, այնքան տարբեր շահեր պէտք էր հաշտեցնել, որ ո՛չ ոք կը յուսար յաջողիլ։

Բիլնիցի յայտարարութիւնը, որ տեղի ունեցաւ Օգոստոս 7ին, մանաւանդ պէտք էր որ հանգչնէր տարագիրներուն թէ վեհապետները փութկոտութիւն չունին։ Այս յայտարարութիւնը որ կազմած էին Բրուսիոյ թագաւորը և Լէօբոլտ կայսրը միասին, կը բովանդակէր սա պարագան թէ Փրանսայի թագաւորին կացութիւնը բոլոր վեհապետները կը շահագրգռէ և թէ անտարակուսելի է որ պիտի միանային Լուդովիկոս ԺԶ.ին միջոցներ տալու, որպէս զի գահուն և ժողովուրդէն շահերուն պատշաճող կառավարութիւն մը հաստատէր և թէ այս պարագային Բրուսիոյ թագաւորը և Լէօբոլտ կայսրը միւս իշխաններուն պիտի միանային նոյն նպատակին հասնելու համար։ Մինչև այն, իրենց զինուորները գործելու վիճակին մէջ պէտք էր դնէին։ Անկէց ի վեր իմացուեցաւ որ այս յայտարարութիւնը գաղտնի յօդուածներ կը պարունակէր։ Օրինակի համար՝ թէ Աւստրիա ոևէ արգելք չպիտի յարուցանէր Բոլոնիոյ մէկ մասին նկատմամբ Բրուսիոյ ըրած յաւակնութիւններուն։ Ասիկա անհրաժեշտ էր որպէս զի Բրուսիա մղուէր անփոյթ գտնուելու իր ամենէն հին շահերուն համար, կապուելով Աւստրիոյ հետ, Փրանսայի դէմ։ Ի՞նչ կարելի էր սպասել այսպիսի նախաձեռնութենէ մը որ նմանօրինակ միջոցներով հարկ կ'ըլլար գրգռել։ Եւ եթէ իր տրամադրութիւններուն մէջ այնքան վերապահ էր ի՞նչ պիտի ըլլար իր գործերուն մէջ։ Ճիշդ է որ Փրանսա զինաթափ էր, բայց երբ ամբողջ ժողովուրդ մը ոտքի ելած է շուտով կը զինուի, և ինչպէս աւելի ուշ հռչակաւոր Քարնօ կ'ըսէ, ի՞նչ անկարելի բան կայ 25 միլիոն մարդոց համար։ Ճիշդը այն էր որ սպաները կը քաշուէին բայց անոնցմէ շատը, երիտասարդ և կողմնակցութեամբ պաշտօնի անցած՝ զուրկ էին փորձառութենէ և անհաճոյ էին բանակին։ Արդէն այն թռիչքը որ պիտի տային բոլոր գործերուն, պիտի

արտադրէր սպաներ և զօրավարներ։ Սակայն, պէտք է ընդունիլ թէ նոյն իսկ առանց Քոպլէնցի մեծխօսիկութիւնը ունենալու, կարելի էր գուշակել այն դիմադրութիւնը զոր Ֆրանսա ըրաւ աւելի ուշ, օտարներու արշաւանքին։

Մինչև այն ատեն, ժողովը պատուիրակներ ղրկեց սահմանագլուխ և մեծ պատրաստութիւններ հրամայեց։ Ազգային պաշտպանութիւնը ամբողջովին յառաջ ընթանալ կ'ուզէր. բազմաթիւ զօրավարներ իրենց ծառայութիւնը կ'առաջարկէին, անոնց մէջ էր Տիւմուրիէ, որ աւելի ուշ Ֆրանսան ազատեց Արկօնի կիրճերուն մէջ։

Ժողովը իր ջանքերը ընելով հանդերձ պետութեան արտաքին ապահովութեանը համար, կը փութար իր սահմանադրական գործը վերջացնել, թագաւորին վերադարձնել իր պաշտօնները և եթէ կարելի էր, նոյն իսկ առանձնաշնորհումներէն մէկ քանին։

Ձախակողմին բոլոր չերտաւորուածները՝ բացի անոնցմէ որ հանրապետականի բոլորովին նոր անունը առած էին, միացած էին չափաւորական գործելակերպի մը մէջ։ Պարնավ և և Մալուէ միասին կ'ընթանային և համաձայնութեամբ կ'աշխատէին։ Բէդիօն, Ռօպէսպիէռ, Պիւզօ, և դեռ մէկ քանի ուրիշներ, հանրապետութիւնը ընդգըրկած էին, բայց թիւով քիչ էին։ Աջակողմը կը շարունակէր իր անխոհեմութիւնները և կը բողոքէր, փոխանակ միանալու չափաւորական մեծամասնութեան։ Սակայն, առանց անոնց ալ այդ մեծամասնութիւնը կը տիրէր ժողովին մէջ։ Իր թշնամիները որոնք զայն պիտի ամբաստանէին եթէ թագաւորը գահընկէց ընէր, հիմա ալ երեսին կու տային որ Լուդովիկոս ԺԶ.ը Բարիզ բերաւ և խախուտ գահի մը վրայ վերստին դրաւ։ Բայց այդ մեծամասնութիւնը ի՞նչ կրնար ընել. թագաւորին տեղ հանրապետութիւն մը դնել շատ վտանգալի էր։ Արքայական գերդաստանը փոխել անօգուտ էր, որովհետև եթէ հարկ էր թագաւոր մը ունենալ, լաւագոյն էր եղածը պահել։ Արդէն Օրլէանի Դուքսը արժանի չէր որ զինքը նախընտրէին Լուդովիկոս ԺԶ.էն. մէկ և միւս պարագային, այժմու թագաւորը գահագլուխ ընելը ընդունուած իրաւունքներու հանդէպ մեղանչել էր, և տարագրութեան ղրկել կը նշանակէր թանկագին պատանդ մը, որովհետև թագաւորը այնպիսի տիրողներ պիտի տանէր հետը զորս տարագիրները չունէին։ Ընդհակառակը՝ Լուդովիկոս ԺԶ.ի դարձնելով իր իշխանութիւնը, վերահաստատելով կարելի եղածին չափ շատ առանձնաշնորհումներ, սահմանադրական աշխատութիւնը կատարուած պիտի ըլլար և քաղաքային պատերազմի ամբողջ պատրուակները վերցուած. մէկ խօսքով, այսպէս ընելը պարտականութիւնը կատարել պիտի ըլլար, որովհետև ժողովին սահմանած բոլոր պարտականութիւնը, ըստ իրեն բոլոր յանձնառութիւններուն, ազատ՝ բայց միապետական կառավարութիւնը հաստատելն էր։

Ժողովը չվարանեցաւ բայց յաղթելիք մեծ դժուարութիւններ ունեցաւ։ Հանրապետութեան նոր անունը խայթած էր միապետութենէ և սահմանադրութենէ արդէն զզուած միտքերը։ Թագաւորին բացակայութիւնը կամ իշխանութեան ընդհատումը, տեսանք որ խորհիլ տուած էր թէ կրնային առանց անոր ալ ըլլալ։ Անմիջապէս թերթերը և ակումբները մէկ կողմ դրին այն յարգանքը որուն առարկայ կ'ընէին միշտ թագաւորին անձը։ Անոր մեկնումը, որ հանրային պաշտօնեաներու բնակավայրի վրայ եղած հրամանագրին համաձայն՝ գահընկէցութիւնը անմիջական կը դարձնէր, առիթ եղաւ որ ըսուէր թէ գահընկէց է։ Սակայն, ըստ նոյն հրամանագրին, գահընկէցութեան առիթ. -կրնար ալ թագաւորութենէ դուրս

եղելը և Օրէնսդիր Մարմնին ազդա-րարութիւններուն չանսալը. բայց այս պայմանները քիչ կնճռութիւն ու-նէին գրգռուած միտքերու համար, ո-րոնք կը յայտարարէին թէ թագաւորը յանցաւոր է և հրաժարած։ Ժաքոպէն-ները և Գորտըլիէները բուռն կերպով իրար կ'անցնէին և չէին կրնար հաս-կնալ որ թագաւորէն ազատելէ ետքը նորէն և կամովին զայն բերեն և գլուխ-նուն վրայ նստեցնեն։ Եթէ Օրլէանի Դուքսը յոյսեր ունէր, այդ միջոցին է որ արթնցան. բայց տեսած ըլլալու էր թէ իր անունը ինչքա՛ն տկար ազդեցու-թիւն ունէր և թէ մանաւանդ ինչպէ՛ս նոր վեհապետ մը, որքան ալ ժողովըր-դական ըլլար, քիչ կը պատշաճէր միտ-քերու վիճակին։ Իրեն հաւատարիմ քանի մը պարտուագիրներ, թերեւս առանց իր գիտութեան փորձեցին թագը իր գլուխը դնել, ինչպէս Անտոնիոս ըրած էր Կեսարին. իրեն առաջարկեցին խնամակալութիւնը, բայց տխրուած զգաց ինքզինքը մերժելու յայտարարու-թիւնով մը, որ այնքան չնչին նկատա-ռութեան ենթարկուեցաւ որքան իր անձը։ «Այլ եւս թագաւոր չենք ուզեր». ընդհանուր աղաղակն էր ու Ժաքո-պէններուն և Գորտըլիէներուն հանրային ակումբներու և հրատարակութեանց մէջ։

Կոչերը կը բազմապատկուէին. հատ մը փակցուցին Բարիզի բոլոր պատերուն և նոյն իսկ Ժողովին շէնքին վրայ. ստորագրուած էր երիտասարդ գնդա-պետի մը՝ Աշիլ Տիւշաթըլէի կողմէն. այդ կոչը ուղղուած էր Ֆրանսացինե-րուն. անոնց կը յիշեցնէր այն հանդար-տութիւնը զոր վայելած էին միապետին ճամբորդութեան միջոցին և կ'եզրա-կացնէր թէ իշխանին բացակայութիւնը ներկայութենէն նախամեծար էր. կ'ա-ւելցնէր թէ Լուդովիկոս ԺԶ.ի զառա-լքութիւնը հրաժարում մըն էր, թէ ազգը և թագաւորը արձակուած էին ամէն կապէ՝ իրարու հանդէպ. թէ՝ վերջապէս պատմութիւնը լեցուն էր թագաւորներու ոճիրներով և թէ պէտք էր հրաժարիլ նորէն թագաւոր մը ունե-նալէ։

Այս կոչը զոր կը վերագրէին երի-տասարդ Աշիլ Տիւշադըլէին, հեղինա-կութիւնն էր Թոմաս Բէյնի որ անգ-լիացի էր և գլխաւոր դերակատարնե-րէն մին՝ ամերիկեան յեղափոխութեան մէջ։ Այդ կոչը մատնանշեցին Ժողովին, որ բուռն վիճաբանութիւններէ ետք, մտածեց թէ պէտք էր օրակարգին անց-նիլ, և ինչպէս միշտ ըրած էին, անտար-բերութեամբ պատասխանեց ազգերուն և նախատինքներուն։

Վերջապէս, անոնք որ ստանձնած էին Վառէնի խնդրին տեղեկագիրը պատրաստել, զայն ներկայացուցին յու-լիս 16ին։ Ըսին որ ճամբորդութիւնը յանցապարտ բան մը չունէր. արդէն նոյն իսկ եթէ այդպէս ըլլար, թագա-ւորը անբռնաբարելի էր։ Վերջապէս անիկա գահընկէցութեան առիթ չէր կրնար ըլլալ քանի որ թագաւորը բաւական երկար ատեն հեռու չէր մնացած և չէր անտեսած Օրէնսդիր Մարմնին ազդա-րարութիւնները։

Ռոպէսփիէռ, Պիւզօ, Բէդիօն, ա-մենքն ալ կրկնեցին անբռնաբարելիու-թեան դէմ ծանօթ փաստերը։ Տիւբօռ, Պառնավ և Սալ անոնց պատասխանե-ցին և վերջապէս որոշուեցաւ որ թա-գաւորը չէր կրնար ամբաստանուիլ իր փախուստին համար։ Միայն, երկու յօդ-ուած աւելցուցին անբռնաբարելիու-թեան օրէնքին վրայ։ Հազիւ թէ այս որոշումը յայտնուած էր, երբ Ռոպէս-փիէռ կանգնեցաւ և վեհօրէն բողոքեց յանուն մարդկութեան։

Այս որոշումին նախորդ իրիկունը, Ժաքոպէններու ակումբին մէջ մեծ ի-րարանցում կար։ Հոն՝ Ժողովին ուղ-ղուած խնդրագիր մը շարադրեցին որ-պէս զի թագաւորը գահընկէց յայտա-րարուի, իբր խաբեբայ և դաւաճանող



ՄԻՐԱՊՈՅԻ ԹԱՂՄԱՆ ՀԱՆԴԻՍԸ

և ոչ ալ ժողովուրդին որ բան մը ձեռք բերել և աւելի բարձրանալ կ'ուզէր։ Պարիսով, ինչպէս երբեմն եղած էր Միրաբօ, այս խոհական և չափաւոր միջակարգին ատենախօսն էր և Լաֆայէթ զինուորական պետ։ Իսկ Տանթոն, Քամիլ Տէմուլէն՝ ատենախօսներն էին, ինչպէս որ Սանթէռ զօրավարն էր այս ամբոխին որ իր կարգին տիրապետել կ'ուզէր։ Քանի մը խանդավառ և մոլեռանդ միտքեր զայն կը ներկայացընէին թէ՛ ժողովին թէ նոր պաշտօնակալներուն մէջ և իրենց ճառերով կը փութայնէին անոր տիրապետութիւնը։

Շան տը Մարսի կատարածին համար շատ մեղադրուեցան Լաֆայէթ և Պայյի. բայց երկուքն ալ իրենց պարտականութիւնը սեպելով օրէնքի գործադրութեանը մէջ, իրենց ժողովրդականութիւնը և կեանքը զոհելով այդ բանին, բնաւ չցաւեցան և իրենց ըրածէն չզղջացան։ Իրենց ցոյց տուած կորովը զիրենք սպել տուաւ խուժադուժներուն։ Ամենէն ծանօթ դէմքերը արդէն միջոցներուն կը խորհէին զերծ մնալու համար այն հարուածներէն որոնք, կը կարծէին թէ, իրենց դէմ ուղղուած էին։ Ռոպէսպիէռ որ ցարդ սնանք թէ, ամենէն ծայրայեղ առաջարկութեանց ուժ կու տար, կը դողդողար իր խոնարհ բնակարանին մէջ. և հակառակ իր երեսփոխանի անձեռնմխելիութեան, ապաստան կը խնդրէր իր բոլոր բարեկամներէն։ Այսպէս՝ օրինակը իր ազդեցութիւնը գործեց և տան մը բոլոր գրգռուած երեւակայութիւնները վախնալով հանդարտեցան։

Այս միջոցին ժողովը որոշում մը տուաւ, որ քննադատուած է անկէց ի վեր, և որուն արդիւնքը այնքան վնասակար չեղաւ որքան կը կարծուէր։ Օրէնք դրաւ որ իր անդամներէն ո՛չ մէկը վերընտրելի ըլլայ։ Այս առաջարկութեան հեղինակը Ռոպէսպիէռն էր և ամէնս վերադրուեցաւ իր ընկերներէն նախանձերուն, որովհետեւ անոնց չար-

[illegible] գէմ. [illegible] էր նախկի[illegible] ազգայնակա[illegible] թէ կ'ուզէր [illegible]ութիւնը և [illegible] մարմինն՝ իր [illegible]. փութայ [illegible] պաշտ[illegible] [illegible] իր ան[illegible] բնաշր[illegible]: Այսպէսով, [illegible] մաս[illegible]ութիւնը [illegible] էր և որոնց օրէնսդրա[illegible] հաստատուած էր երեք [illegible]թեան մը: Սա[illegible]ելով յաջորդա[illegible]թիւններու պատճառը, [illegible] հասկցուի թէ ինչ [illegible] է [illegible]ութիւնը այս այնքան [illegible] դատապարտուած օրէնքին:

[illegible] հասած էր սահմանադրա[illegible] [illegible]ութիւնները աւարտելու և [illegible]ութեան մէջ վերջացնելու [illegible] փոթորկալի ասպարէզ մը: Ձախակողմը համաձայնած էր Սահմանադրութեան մէկ քանի մասերը սրբագրելու: Որոշուած էր՝ զայն ծայրէ ծայր կարդալ, ամբողջութիւնը դասելու և անոր զանազան մասերը ներդաշնակեցնելու համար: Ա՛յս է վերաքննութիւն անուանածը, և ինչ որ աւելի ու-չ, հանրապետական խանդավառութեան օրերուն աղետալի որոշում մը նկատուեցաւ: Բարնաւ և Լամէթ եղբայրները համաձայնած էին Մալուէին հետ՝ վերակազմելու համար քանի մը յօդուածները որոնցմով վնաս կը հասնէր թագաւորական առանձնաշնորհումներու և այն բանին զոր կը կոչէին պահուն հաստատունութիւնը: Ըսուեցաւ նոյնիսկ որ ծրագրած էին երեսփոխանական ժողովը և ծերակոյտը վերահաստատել: Համաձայնած էին որ այն պահուն որ ընթերցումը աւարտէր, Մալուէ յարձակումը պիտի ընէր. թէ յետոյ Բարնաւ անոր պիտի պատասխանէր քաջարի կերպով, աւելի լաւ ծածկելու համար իրենց դաւաճանութիւնները. բայց յօդուածներէն մեծ մասը պաշտպանելով մէկ երկուքը պիտի մերժէր իբր յայտնապէս վտանգաւոր և անհերքելի փորձառութիւնով մը դատապարտուած: Որոշուած պայմանները առանք էին, երբ լսեցին ծիծաղելի և վտանգաւոր բողոքները աջակողմին որ մտադրած էր այլեւս քուէ չտալ: Այն ատեն ո և է կարգադրութիւն անկարելի եղաւ: Ձախակողմը այլեւս բան մը մտիկ ընել չուզեց և երբ համաձայնուած փորձը տեղի ունեցաւ, ամէն կողմէ բարձրացող աղաղակները արգիլեցին որ Մալուէ և իրենները չարունակեն(*):

---

(*) Այս դէպքը լաւ հասկնալու համար պէտք է աչքի առջև ունենալ կամ այն Կամվէրնէի նամակը ուղղուած Գուայէի, զոր կը գտնենք այս վերջնոյն Յիշատակներուն մէջ: Այդ նամակին մէջ Կամվէրնէ կը գրէ թէ հակառակ իր նախապէս անուցած յոյսերուն Սահմանադրութեան վերաքննութեան մասին այլեւս յուսահատած է: Որովհետև կ'ըսէ թէ այն պահուն երբ նոյն խոկ ժողովրդավարները հասկցած էին իրենց սխալները, ազնուականներն են որ ո և է դարմանում անկարելի կը դարձնէին իրենց ձայնը զլանալով: Կը պատմէ թէ ինչպէս Թագաւորին մեկնած օրը և հետեւեալ օրերը Ժողովին ձախակողմը և աջակողմը զիրար կը դիտէին. Ժողովրդային մասը շատ յուսահատած էր և Թագաւորականները չափազանց մտահոգ էին. մեկնումին յաջորդ օրը Ժա-

Ուրեմն, սահմանադրութեան օրէնքը աւարտեցաւ քիչ մը աճապարանքով և ներկայացուեցաւ Թագաւորին, որպէս զի ընդունի։ Այդ վայրկեանէն իր ազատութիւնը իրեն դարձուցին, և եթէ կ'ուզէք, պալատին խիստ արգելքները վերցան և արքան ազատութիւն ունեցաւ քաշուելու ուր որ ուզէր՝ սահմանադրութեան օրէնքները քննելու և զայն ազատօրէն ընդունելու համար։ Այդ պահուն Լուդովիկոս ԺԶ. ի՞նչ կրնար ընել. Սահմանադրութիւնը մերժելը հրաժարիլ էր իշխանութենէն, ի նպաստ հանրապետութեան։ Ամենէն ապահով եղանակը, նոյն իսկ իր գործելակերպով, ընդունիլն էր և ժամանակի տեւողութենէն սպասել որ վերահաստատուի այն իշխանութեան մէջ որ կը կարծէր թէ իր իրաւունքն էր։ Հետեւաբար քանի մը օր ետքը յայտարարեց թէ կ'ընդունի Սահմանադրութիւնը (Սեպտեմբեր 13ին)։ Այս լուրը իմացուելուն պէս, արտակարգ ուրախութիւն մը պայթեցաւ. իրր թէ, կը վախնային որ արգելքներ յարուցուէր Թագաւորին կողմէն, և կարծես թէ անոր հաւանութիւնը անյուսալի զիջում մըն էր։ Թագաւորը գնաց Ժողովին, ուր, ինչպէս ամենէն գեղեցիկ օրերուն մէջ, ընդունելութիւն մը եղաւ իրեն. Լաֆայէթ որ բնաւ չէր մոռնար քաղաքական խռովութիւններէն յառաջ եկած անխուսափելի չարիքները դարմանել, առաջարկեց յեղափոխական գործերով բանտարկեալներուն ընդհանուր ներում մը։ Ուրախութեան աղաղակներու մէջ յայտարարուեցաւ այս ընդհանուր ներումը և բանտերուն դուռները անմիջապէս բացուեցան։ Վերջապէս, Սեպտեմբեր 30ին, Թուրէ, վերջին նախագահը, յայտարարեց որ Սահմանադիր Ժողովը իր նիստերը աւարտած է։

---

քոպէնները սկսան սպառնալիք դառնալ և սահմանադրականները՝ չափաւոր. այդ պահուն դեռ այս վերջինները մեծապէս բազմաթիւ էին քան առաջինները։ Համաձայնութեան մը վրայ կը խորհէին, երբ լսեցին Թագաւորին բռնուած ըլլալը և արդէն ամէն բան վերջացաւ. բայց այդ մէկ երկու օրուան մէջ կարծիքները յայտնուած էին և բաժանումը տեղի ունեցած էր։

Երբ աջակողմը իմացաւ թէ Թագաւորը ձերբակալուած է, որոշեց այլ եւս ձեռնպահ մնալ հակառակ Մալուէի ստիպումներուն, որ կը պնդէր թէ ընդհակառակը Ժողովին մէջ ամէն կարելի միջոցները պէտք էր գործածել միապետութիւնը պաշտպանելու համար. բայց հազիւ թէ կրցած էր 35-40 անդամներու համամտութիւնը շահիլ և այդ րոպէէն արդէն Մալուէ համոզուած էր թէ աջակողմին այս անխոհեմ որոշումը վնասակար պիտի ըլլայ Թագաւորին դատին։

Այդ միջոցին, կ'ըսէ Կուվէրնէ, Ժողովին ընդհանուր տրամադրութիւնները նպաստաւոր էին Թագաւորին, այնպէս որ անոր վերադարձէն ետք զայն պահելու պայմանները մեղմացնելու համար շատեր խօսք առին. խիստ հսկողութիւն մը ի գործ դնելու հրամանագիրը կարդացուած պահուն շատեր բողոքեցին, բայց պատասխանուեցաւ որ ո և է դիտաւորութիւն չկար Թագաւորը բանտարկելու. «իր և Թագաւորական ընտանիքին ապահովութեան համար է որ միջոցներ կ'առաջարկուին»։ Եւ միմիայն այս բացատրութեան վրայ է որ հրամանագիրը քուէարկուեցաւ, թէեւ բանտարկութիւնը իրական է և կը տեւէ անամօթաբար՝ մինչեւ այսօր։

Այս և նման ականատեսի պատմութիւններով Կուվէրնէ կը հաստատէ թէ աջակողմին ձեռնպահութիւնը աւելի վնասակար դարձաւ Թագաւորին քան թէ ձախակողմին կատաղութիւնը։

ՎԵՐՋ ԶՈՐՐՈՐԴ ԳԻՐՔԻ

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ԳԻՐՔ

## ՕՐԷՆՍԴԻՐ ԺՈՂՈՎ

*Սահմանադիր Ժողովին վրայ դատաստան. — Բացում երկրորդ Ազգային Ժողովին, որ «Օրէնսդիր Ժողով» կոչուեցաւ. իր կազմութիւնը. — Անդամներուն միտքը. իրենց ազդեցիկ անդամները. Պէթիոն՝ Փարիզի քաղաքապետ. — Պետութեանց քաղաքականութիւնը. — Տարագրութիւն. հրամանագիր տարագիրներուն եւ ոչ-երդուեալ քահանաներուն դէմ. — Նախարարութեան մէջ փոփոխութիւններ. — Պատերազմի պատրաստութիւններ. Թագաւորին միտքը. — Պատերազմի խնդրին վրայ կուսակցութիւններուն բաժանումը. Օրլէանի Դուքսին եւ իր կուսակիցներուն դերը. — Տարագիր իշխանները ամբաստանութեան տակ. — Ժիրոնտէն նախարարութեան մը կազմութիւնը. — Տիւմուրիէ, իր նկարագիրը. ընթացքը, ծրագիրները. — Սահմանադրութիւններ նոր նախարարներուն վրայ. — Տիւմուրիէի առաջարկութիւնը թագուհիին հետ:*

Սահմանադիր Ժողովը դեռ նոր աւարտած էր իր երկար և բազմաշխատ ասպարէզը և հակառակ իր ամենաքաջութեան, կատարեալ անաչառութեան, անսահման ուղղամտութեան, զայն կ'ատէին Քօպլէնցի մէջ իբր յեղափոխական և Փարիզի մէջ՝ իբրև ազնուապետական։ Այս յիշատակելի ժողովը որ այնքան մեծ և զանազան մտաւորական փառքեր միացած էին, որ այնքան յանդուգն և յարատեւ ջանքեր կ'ընէին և որ առաջին անգամ ըլլալով Թերես, ատեան որ ազգի մը բոլոր լուսաւոր մարդիկը միացած էին իմաստասիրութեան փափաքները իրագործելու համար և ոյժով. այս ժողովը դատելու համար պէտք էր նկատողութեան առնել թէ ինչ միջոցի մէջ գտած էր Ֆրանսան և թէ ինչ միջոցի մէջ զայն կը թողուր։

1789ին Փրանսական ազգը կը զգար և կը ճանչնար իր բոլոր ցաւերը, բայց զանոնք դարմանելու կարելիութիւնը չէր ըմբռներ։ Յանկարծ, Աւագաժողովի անդրանիկ պահանջին վրայ Համայնքները (Էթա-Ժէնէրօ) նիստի կը հրաւիրուին, Սահմանադիր Ժողովը կը կազմուի, և կը ներկայանայ գահուն, որ իր հին իշխանութիւնը հաստատած տրամադիր էր շատ շատ մէկ քանի զիջումներ ընելու հանդուրժել։ Այն ատեն Ժողովը ինքը կը դառնայ իր իրաւունքներուն, կ'ըսէ թէ ինքն է ազգը և կը համարձակի այսպէս ալ յայտարարելու զարմացած կառավարութեան։

Ազնուականութիւնը, արքունիքը և բանակը կը սպառնան իրեն, բայց ժողովը դեռ չխախտուած ժողովրդային ըմբոստութիւնները, ինքզինքը անպարտա-

բարելի կը յայտարարէ և իշխանութիւնը կ'արգիլէ իրեն դպչելէ. Իր իրաւունքներուն համոզումը տոգորուած կը դիմէր այնպիսի թշնամիներու որոնք իրենց իրաւունքներուն համոզումը չունէին և կը յաղթէ իր կամքին պարզ մէկ արտայայտութիւնովը, բազմաթիւ դարերու իշխանութեան մը և 30,000 հոգիով կազմուած բանակի մը։

Այս արարքին մէջ ամբողջ յեղափոխութիւնը կ'երևայ. անիկա առաջին արարուածը և ամենէն ազնիւն է. անիկա արդար է, հերոսական է, որովհետև երբեք ազգ մը չէ գործած աւելի իրաւունքով և աւելի վտանգով։

Անգամ մը որ իշխանութիւնը պարտուած էր, պէտք էր զայն վերակազմել արդար և պատշաճ կերպով մը։ Բայց աչքի առաջ ունենալով այն ընկերական սանդուղը որուն գագաթին վրայ ամէն բան առատօրէն կար, իշխանութիւն, պատիւ, հարստութիւն, մինչ վարի աստիճաններուն ամէն բան կը պակսէր, նոյն իսկ կեանքի անհրաժեշտ հացը՝ Սահմանադիր Ժողովը իր մտածումներուն մէջ ուժգին հակազդեցութիւն մը զգաց և ուզեց ամէն բան նոյն մակարդակին բերել։ Այսպիսով որոշեց որ կատարելապէս հաւասար եղած քաղաքացիներու զանգուածը իր կամքերը յայտնէր և թէ թագաւորը միայն պաշտօն ունենար զանոնք գործադրելու։

Այսպանին մէջ ինքը թագաւորութիւնը պարզ պաշտօնատարութեան մը վերածելը չէ, քանի որ թագաւորը օրէնքները պահպանելու համար դեռ բաւական իշխանութիւն ունէր աւելի քան հանրապետութեանց պաշտօնատարները, բայց սխալը՝ կարծելն էր որ թագաւոր մը իր անցեալի յիշատակով կրնար համակերպիլ և թէ նորազարթ ժողովուրդը որ հանրային իշխանութենէն մաս մը ձեռք անցուցած էր, չի փափաքիր զայն բոլորովին չահելու։ Իրաւ ալ պատմութիւնը կ'ապացուցանէ թէ անհունօրէն պէտք է բաժնել պաշտօնատարութիւնը, կամ եթէ միակ պետ մը հաստատուի, պէտք է զայն այնքան լու օժտել որ բռնաւորելու փափաքը չունենայ։

Երբ ազգերը, գրեթէ այլամերժօրէն զբաղած ըլլալով իրենց անձնական շահերով, պէտքը կը զգան կառավարութեան հոգերը պետի մը վրայ բեռցնել, լու կ'ընեն պետ մը ունենալով. բայց այն ատեն պէտք է որ այդ պետը անգլիացի թագաւորներուն հաւասար ըլլայ, կարենայ հրաւիրել կամ լուծել ազգային ժողովները, և անոնց կամքը ընդունելու հարկադրուած չըլլալով, վաւերացնէ զանոնք այն ատեն միայն երբ իրեն գործին կուգան, և միայն չատ չարիք ընելէ արգիլուած ըլլալով, իրապէս վեհապետութեան մեծագոյն մասին տէրն ըլլայ։

Այդպիսի կառավարութիւնով մը մարդուն արժանապատուութիւնը դեռ կարելի է պահպանել, երբ օրէնքը խտօրէն կը գործադրուի, երբ իւրաքանչիւր քաղաքացի կը զգայ իր արժէքը և գիտէ որ ակարութեան իբր զիջողութիւն է որ, այնքան մեծ իշխանութիւն մը թողուած է կառավարութեան պետին։

Բայց այն վայրկեանին որ ազգ մը յանկարծ կ'անդրադառնայ իր իրաւունքներուն, չի կրնար համաձայնիլ ինքզինքին երկրորդական դեր մը տալու և կամովին ամենազօրութիւնը յանձնելու պետի մը, որպէս զի բռնաւորելու փափաքը չունենայ ինքը։

Սահմանադիր Ժողովը բուն իսկ ազգէն աւելի կարող չէր իր իրաւունքներէն հրաժարելու։ Այս իսկ պատճառաւ թագաւորութիւնը վերածեց պարզ ժառանգական պաշտօնատարութեան մը յուսալով որ թագաւորը գոհ պիտի ըլ-

նար այս միճակէն, որ տակաւին շատ փայլուն էր պատիւներով, հարստութեամբ, իշխանութեամբ և զոր ժողովուրդը պիտի թողուր անոր։

Բայց ժողովը յուսար թէ ոչ, այս տարակոյսին մէջ կրնա՞ր ինքզինք լուծել մէկ անգամէն։ Կրնա՞ր թագաւորը ջնջել և կամ անոր տալ բոլոր իշխանութիւնը զոր Անգլիա կ՚ընծայէ իր միապետներուն։ Նախ որ չէր կրնար Լուդովիկոս ԺԶ.ը գահընկէց ընել, որովհետև եթէ միշտ ներելի է արդարութիւն ընել կառավարութեան մը մէջ, ներելի չէ անոր ձևը փոխել երբ հոն արդարութիւն կայ և մէկէն միապետութիւն մը հանրապետութեան վերածել։ Արդէն սահմանադրութիւնը յայտնի է. և եթէ ժողովը թագաւորութիւնը ընչազրկէր, ի՞նչ չպիտի ըսէին իր թշնամիները որոնք զինքը կ՚ամբաստանէին թէ սահմանադրութեան օրէնքը կը բռնաբարէր, որովհետև կը յարձակէր աւատական իրաւունքներուն վրայ։

Միւս կողմէ, չէր կրնար թագաւորին ընծայել բացարձակ վէթօի իրաւունքը, դատաւորներուն անուանումը և ուրիշ նման առանձնաշնորհումներ, որովհետև հանրային կարծիքը դէմ էր և այդ կարծիքը իր միակ ուժը կազմելուն համար, ստիպուած էր անոր հպատակիլ։

Գալով միակ ժողովի մը հաստատման, իր սխալը աւելի իրական էր թերևս բայց նոյնքան անխուսափելի։ Եթէ վտանգաւոր էր թագաւորին քով ձգել միմիայն յիշատակը այն իշխանութեան, զոր ամբողջովին իր ձեռքին մէջ ունեցած էր, և ինքնակալութեան ժողովուրդի մը որ անոր մինչև վերջին բեկորը յափշտակել կ՚ուզէր, սկզբունքով շատ աւելի սխալ էր ուրանալ ընկերական անհաւասարութիւնները և աստիճանները երբ նոյն իսկ հանրապետութիւնները զանոնք կ՚ընդունին, որոնց անունին մէջ ալ կը գտնենք կամ ընտրովի կամ ժառանգական ծերակոյտ մը։ Բայց ամէն մէկ ժամանակամիջոցի, մարդերէն և միաբերէն պէտք է պահանջել ինչ որ կրնան։ Ինչպէ՞ս կրնային դասակարգերու անարդարութեան դէմ եղած յեղափոխութեան մը մէջ ընդունիլ անոնց անհրաժեշտութիւնը։ Ինչպէ՞ս կրնային ազնուականութիւնը կազմել այն պահուն ուր կը կռուէին ազնուապետութեան դէմ։ Թագաւորութիւնը վերակազմելը աւելի դիւրին պիտի ըլլար, որովհետև ժողովուրդէն հեռու ըլլալով նուազ հակառակորդ եղած էր և նաև, որովհետև այնպիսի պաշտօն մը կը կատարէ որ աւելի անհրաժեշտ կը թուի։

Բայց, կը կրկնեմ որ եթէ նոյն իսկ այս սխալները չտիրէին ժողովին մէջ՝ անոնք կային ազգին մէջ և դէպքերու շարունակութիւնը պիտի ապացուցանէ որ եթէ թագաւորին և ազնուականութեան ձգէին այն բոլոր իշխանութիւնները զորս անոնցմէ առին, դարձեալ յեղափոխութիւնը տեղի պիտի ունենար իր բոլոր ծայրայեղութիւններով։

Այդ բանին համոզուելու համար պէտք է պարզել այն յեղափոխութիւնները որ կը պայթին երկար ատենէ ի վեր հլու ժողովուրդներու մէջ, զանազանել անոնցմէ որ յառաջ կուգան ազատ ժողովուրդներու մէջ, որոնք քաղաքական որոշ չափով գործունէութեան տէր են։ Հռոմի, Աթէնքի և ուրիշ տեղերու մէջ կը տեսնենք որ ազգերը և իրենց պետերը իրենց մէջ կը վիճին առնել կամ նուազ ազատութեան մը վրայ։ Արդի բոլորովին ընչազուրկ ժողովուրդները տարբեր ընթացքով մը կը յառաջանան։ Կատարելապէս ստրկացած ըլլալով, երկար ատեն կը քնանան։ Զարթնումը տեղի կ՚ունենայ նախ ամենէն լուսաւորուած դասակարգերուն մէջ, որոնք ըմբոստանալով, իշխանութեան մէկ մասը ձեռք կ՚անցընեն։ Զարթնումը յաջողական է, փառասիրութիւնն ալ,

և կը վարակէ մինչև յետին դատախազ-գերը և այսպէսով ամբողջ դանգուածը շարժումի մէջ կը դնէ ։ Անմիջապէս իրենց ձևով բերածէն գոհացող և լուսաւորուած դատախազները, կ'ուզեն կենալ, բայց այլևս չեն կրնար, և անդադար իրենց հետևողներուն ոտքի կոխան կ'ըլլան ։ Անոնք որ կը կենան, նոյն իսկ եթէ վերջինները ըլլան, վերջիններուն համար աղետաւորութիւն մըն են և այս դատախազական պայքարին մէջ իրարու վրայ գլորելով, պարզ միջակութիւնը կրնայ վերջապէս ազնուական համարուիլ աշխատութենէ և իր այն հալածուիլ ։ Սահմանադիր ժողովը մեզի կը ներկայացնէ այն սերունդը որ կը լուսաւորուի և առաջին անգամ ըլլալով պահանջներ կը ներկայացնէ դեռ անծանօթ իշխանութեան ։

Ըստ բնականին խոհական ըլլալով հասկնալու համար թէ ինչ կը պարտին անոնց որ ամէն բան ունէին և անոնց որ բան մը չունէին, կ'ուզէ առաջիններուն թողուլ իրենց ունեցածէն մաս մը, որովհետև միշտ ունեւոր եղած են և կ'ուզէ վերջիններուն մանաւանդ հայթայթել դատափարականութիւն և իրաւունքներ զոր կը սահմանէ անով ։ Բայց առաջիններուն մէջ ցաւ կայ և վերջիններուն մէջ փառասիրութիւն. ցաւզգացողները կ'ուզեն ամէն բան կրկին ձևով անցընել, փառասէրները ամէն բան շահիլ և բնաջնջման կռիւ մը յառաջ կուգայ ։ Ուրեմն Սահմանադիրները առաջին բարեացակամ մարդիկն են որ ստրկութիւնը թօթափելով կը փորձեն արդար կարգուսարք մը ձևով բերել, կը փորձեն անվախօրէն, նոյն իսկ գլուխ կը հանեն այս անհուն գործը, բայց կ'իյնան որովհետև կ'ուզեն հրաւիրել որ մէկ մասը աւելի տայ և միւս մասը ամէն բանի չցանկայ ։

Սահմանադիր ժողովը իր արդարակորով վերաբաշխումին մէջ ինկած էր նախկին սեպհականատէրերուն ։ Լուդովիկոս ԺԶ. Ֆրանսացիներու թագաւորի տիտղոսով, 30 միլիոն Ֆր. հասոյթով, բանակին հրամանատարութեամբ և այն իրաւունքով որ ունէր ազգային կամքը կասեցնելու, դեռ բաւական զեղեցիկ առանձնաշնորհումներու տէր էր ։ Բացարձակ իշխանութեան մնացածը չմիայն կրնայ ներկի դարձնել իրեն համակրողներ իշխանութեան այս փայլուն մնացորդին ։

Կղերականութիւնը, զրկուելով իր անսահման հարստութենէն զոր ժամանակաւ տուած էր խեղճերուն օգնելու պայմանաւ, ինչ որ չէր ըներ և պաշտամունքի յատուկ գործերը անանկ զոր թողած էր ծխատէր աղքատ քահանաներու խնամքին, կղերականութիւնը այլևս քաղաքական կարգ մը չէր ներկայացներ. բայց իր եկեղեցական բարձր աստիճանները պահուած էին իր վարդապետութիւնները յարգուած, իր գայթակղեցուցիչ հարստութիւնները բաւարար և նոյն իսկ կարելի է ըսել առատ հասոյթի փոխուած էին, որովհետև դեռ կարելի կը դարձնէր իրենց բաւական մեծ եպիսկոպոսական պերճանք մը ։ Ազնուականութիւնը այլևս դասակարգ մը չէր, այլևս որսի և ասոր նման բաներու բացարձակ իրաւունքները չունէր. այլևս զերծ չէր տուրքերէ ։ բայց այս բաներուն համար կրնա՞ր լրջօրէն ցաւիլ. իր անսահման սեպհականութիւնները իրեն թողուցած էին ։ Արքունիքի շնորհին փոխարէն վստահութիւնը ունէր վայելելու այն յաջողութիւնները որ արժանիքին կ'ընծայուին ։ Կրնար ընտրուիլ ժողովուրդէն և զայն ներկայացնել պետութեան մէջ, եթէ քիչ մը բարեացակամ և համակերպած երևալ ուզէր ։ Դատական և զինուորական պաշտօններու կրնար տիրանալ իր ընդունակութիւններով. ինչո՞ւ վեհանձն եռանդ մը զինքը չխանդավառեց յանկարծ ։ Անկարողութեան

ինչ խոստովանութիւններ չէր ըներ երբեմնի չորսները փնտռելով։

Խնայած էին հին Թոշակառուներուն՝ եկեղեցականներուն փառները փոխարինած էին և ամենուն հետ վարուած էին յարգանքով. այն վիճակը որ Սահմանադիր Ժողովը տուած էր ամենուն արդեօք այնքան ալ անտանելի՞ էր։

Սահմանադրութեան օրէնքը առաջարկած ըլլալով Թագաւորը ո և է յոյս չունէր միաձայնութիւններով ձեռք բերելու այն առանձնաշնորհումները զորս կորսնցուցած ըլլալուն կը ցաւէր. այլ եւս իրեն մէկ բան կը մնար ընելիք, այն էր համակերպիլ և հետևիլ Սահմանադրութեան. տարբեր խնդիր է եթէ օտար տէրութեանց վրայ յոյս դրած էր. բայց շատ քիչ բան կը յուսար անանց փութաջանութիւնէն և կը կասկածէր ատենադպիրներուն վրայ։ Ուրեմն Սահմանադրութեան ի նպաստ որոշում տուաւ, և, ինչ որ իր անկեղծութիւնը կ'ապացուցանէ, այն է որ կ'ուզէր Ժողովին բաց սրտով յայտնել այն ախտերը զորս կը գտնէր Սահմանադրութեան մէջ։ Բայց իր միտքը փոխել տուին և որոշեց ժամանակէն սպասել իշխանութեան այն վերահաստատութիւնները զորս կը կարծէր թէ իր իրաւունքներն էին. Թագուհին ալ նոյն ալ համակերպած չէր. «Քաջութիւն, ըսաւ Պերթրան Նախարարին՝ երբ իրեն ներկայացաւ, ամէն բան դեռ կորսուած չէ։ Թագաւորը կ'ուզէ Սահմանադրութեան հաւատարիմ մնալ. այս ընթացքն անշուշտ լաւագոյնն է։» Եւ ներելի է հաւաստել որ եթէ Թագուհին ալ իր մտածումները ունենար ապագայնելիք, չպիտի վարանէր Պերթրանի տը Մօլվիլի ներկայութեան *)։

Նախկին Ժողովը դեռ նոր ցրուած էր, անոր անդամները վերադարձան իրենց ընտանիքին ծոցը, կամ Բարիզի մէջ հոս հոն գացին։ Ամենէն նշանաւորներէն մէկ քանին, ինչպէս Լամէթ,

(*) Անհաւատալի թէ ինչ կարեւոր մանրամասնութիւններ կը պատմէ Պերթրան տը Մօլէվիլ իր Թագաւորին հետ ունեցած տեսակցութիւնէն. — «Պարագաներու և ժամանակին դժուարութիւններուն վրայ խօսելէ և յայտնելէ ետքը որ կը վախնայի սխալներ գործել այսպիսի ասպարէզի մը մէջ ուր փորձառութիւն չունէի, Թագաւորը ինծի ըսաւ. «Էհ լաւ, դեռ դժուարութիւն ունի՞ս ընելիք.» — Ո՛չ, Տէր Արքայ, Ձեր վեհափառութեան հնազանդիլ և հաճելի ըլլալը միակ զգացումն է զոր կը տածեմ բայց գիտնալու համար թէ կրնա՞մ պարծենալ Ձեր Վեհափառութեան օգտակար ծառայելով, անհրաժեշտ է որ բարութիւնը ունենաք ինծի յայտնելու թէ Սահմանադրութեան հանդէպ իր մտադրութիւնը ինչ է, և թէ ինչ տեսակ ուղղութիւն կը փափաքի որ ունենան իր նախարարները։ — Ճիշդ է որ, պատասխանեց Թագաւորը, այս Սահմանադրութիւնը գլուխ գործոց մը չեմ նկատեր ... կը կարծեմ թէ մեծ սխալներ կան հոն և եթէ ազատութիւնը ունենայի դիտողութիւններ ընելու Ժողովին, շատ օգտակար բարեփոխութիւններ կրնային յառաջ գալ. բայց այս օր այլ եւս ժամանակը անցած է. և ես զայն ընդունեցի ինչպէս որ էր. երդուեցի զայն գործադրել տալու. խիստ հաւատարիմ պէտք է ըլլամ երդումիս, մանաւանդ որ վստահ եմ թէ Սահմանադրութիւնը ճիշդ ու ճիշդ գործադրելը ամենաապահով միջոցն է՝ զայն ծանօթացնելու ազգին և նշմարել տալու այն փոփոխութիւնները զորս յարմար է հոն մտցնել։ Ասկէ ուրիշ ծրագիր ո՛չ ունիմ, ո՛չ ալ կրնամ ունենալ. ասկէ չպիտի շեղիմ անտարակոյս և կը փափաքիմ որ նախարարներս ալ համաձայն ըլլան։»



ԹԱԳԱՒՈՐԻՆ ՁԵՐԲԱԿԱԼՈՒՄԸ՝ ՎԱՐԷՆԻ ՄԷՋ

Տիւրօ, Պառնավ, որքանիքին հետ յարաբերութիւն հաստատած էին և իրենց խորհուրդները կու տային անոր: Բայց Թագաւորը, որքան որ վճռած էր հնազանդիլ Սահմանադրութեան, չէր կրնար իր ստացած խորհուրդներուն հետեւիլ, որովհետեւ իրեն կը յանձնարարէին ո՛չ միայն չբռնաբարել այդ Սահմանադրութիւնը, այլ նաեւ իր արարքներովը անանկ համոզում գոյացնել թէ անոր կապուած է հաւատարմօրէն: Նախկին ժողովին այս անդամները, որոնք Լաֆայէթի միացած էին վերաքննութենէն ի վեր, պետերն էին այն յեղափոխական սերունդին, որ տուած էր ազատութեան առաջին կանոնները և կ'ուզէր որ անոնք պահուէին: Անոնց այժմ կու տար ազգային պահակազօրքը, որ երկար ժամանակէ ի վեր Լաֆայէթի հրամանին տակ ծառայած ըլլալով, բոլորովին յարած էր այդ զօրավարին և անոր սկզբունքներուն: Այն ժամանակ Սահմանադիրները մէկ սխալ մը գործեցին. անոնք արհամարհեցին Նոր Ժողովը և յաճախ ցուցուցին զայն իրենց արհամարհանքովը: Այս առաջին օրէնսդիրները սխալ մը ազնուապետական մտաւորութիւն ունէին, և այնպէս կը թուէր թէ ամէն օրէնսդրական գիտութիւն իրենց հետ վերջացած է:

Նոր Ժողովը կազմուած էր զանազան դասակարգի մարդոցմով: Հոն էին առաջին յեղափոխութեան լուսամիտ կողմնակիցները՝ Բռիսօն, Ժիրոդուէն, Վօղլան, Տիւմօ, եւայլն, որոնք «Սահմանադրականները» կոչուեցան և կազմեցին աջակողմը, ուրեմն այլեւս չէր ընտրուեր ո՛չ մէկը՝ նախկին առանձնաշնորհեալներէն: Այսպէս, յեղափո-

ըլլալու կ'երթար այս նոր տեսարանին․ բոլոր ժողովներուն աթոռները կը գրաւէր, և այդ ժամանակէն իսկ շահաւոր գործ մը ձեռք ձգած էր առով, քանզի, սկսած էին վճարել ծախահատուցութիւնները։ Նախարար Պերթրան կը խոստովանի թէ ինքն ալ վճարած է։

Ակումբներուն ամենէն հինը, Ժաքոպէններու ակումբը արդէն ունէր արտաքոյ կարգի ազդեցութիւն մը։ Եկեղեցի մը հազիւ կը բաւէր իր անդամներուն և ունկնդիրներուն բազմութեանը․ ընդարձակ ամփիթատրոն մը կրկէսի ձևով բարձրացուած էր և կը գրաւէր Ժաքոպէններու եկեղեցիին խոշոր բակը․ մէջտեղը գրասեղան մը դրուած էր․ որուն առջև նստած էին նախագահ մը և քարտուղարներ, քուէները հոն կը հաւաքուէին, տումարի մը մէջ, հոն կը վաւերացնէին արձանագրութիւնները։ Անդադար ղըրկուած նամակներով եռանդ կը ներշնչէին այն ընկերութիւններուն՝ որոնք տարածուած էին ամբողջ Ֆրանսայի մակերեսին վրայ․ զանոնք կ'անուանէին կուսակցական ընկերութիւններ։ Ժագոպէններու ակումբը իր հնութեամբը և ուժգնութեամբը շարունակ յաղթական եղած էր բոլոր այն միւս ակումբներուն վրայ, որոնք ուզած էին աւելի չափաւոր կամ աւելի անվախ երևնալ։ Լամէթ եղբայրները, ինչպէս նաև բոլոր նշանաւոր անդամները անկէ բաժնուած էին, Վառէնի ճամբորդութենէն յետոյ, ու մտած էին Ֆէօյեաններու ակումբին մէջ։ Այս վերջնոյն մէջ էր որ կը ձուլուէին բոլոր չափաւորական ակումբներու փորձերը, որոնք երբէք չէին յաջողեր, որովհետև անոնք հակառակ էին նոյնինքն այն պէտքին որ ժողովուրդին վազել կուտար ակումբներուն մէջ, այսինքն՝ գրգռութեան։ Ֆէօյեաններու ակումբին մէջ է որ, այն ատենը, կը հաւաքուէին Սահմանադրականները կամ առաջին յեղափոխութեան կողմնակիցները։ Այսպէս՝ Ֆէօյան անունը եղած էր հալածանքի համարժէք տիտղոս մը, այն ժամանակ, երբ չափաւորական ըլլալը տիտղոս մը դարձած էր։

Ուրիշ ակումբ մը, Քորտըլիէններու Ակումբը, ուզած էր մրցիլ Ժաքոպէններուն հետ, իր բուռն արարքներովը․ անոնց գրագէտն էր Քամիյ Տէմուլէն; իսկ պետը՝ Տանդոն։ Այս վերջինը փաստաբանութեան մէջ չյաջողելով, ինքզինքը պաշտել տուած էր ամբոխին, զոր շատ կը յուզէր իր ըմբիշի ձևերովը, իր հնչեղ ձայնովը և շատ ժողովրդական յուզումներովը։ Քորտըլիէնները չէին կրցած, նոյն իսկ չափազանցելով, զայն յաղթանակել տալ իրենց մրցակիցներուն դէմ, որոնց քով սովորութիւնը հաւաքել կուտար մեծ բազմութիւն մը, բայց, միևնոյն ատեն, գրեթէ ամենքն ալ Ժաքոպէններու Ակումբէն էին, և, երբ որ պէտք ըլլար, հոն կ'երթային Տանդոնին հետևէն, մեծամասնութիւնը ի նպաստ իրենց հակեցնելու համար։

Ռոպէսփիէռ, որ, տեսանք թէ Սահմանադիր Ժողովին ժամանակ, ինքզինքը հռչակաւոր դարձուց իր սկզբունքներուն խստաբարոյութեամբը, դուրս ձգուած էր Օրէնսդիր Ժողովէն, համաձայն՝ վերընտրելի չըլլալու օրէնքին, որուն հաստատման ինքն անձամբ աշխատած էր։ Ռոպէսփիէռ յարած էր Ժաքոպէններուն, որոնց մէջ կը տիրէր բոլորովին, իր կարծիքներուն հեղինակաւորութեամբը և անկաշառ մարդու համբաւովը, որ իրեն շահեցուցած էր անապականելի տիտղոսը։ Ինչպէս տեսանք, փախէ բռնուած՝ վերաքննութեան ժամանակ, անիկա ատկէ հանդարտած էր և իր ժողովրդականութեան գործը կը շարունակէր։

Ռոպէսփիէռ իր դէմ հանած էր երկու մրցակիցներ, զորս կը սկսէր ատել․ անոնք կը կոչուէին Պրիսօ և Լուվէ։ Պրիսօ, առաջին Ժողովին բոլոր անդամներուն հետ յարաբերութիւն ունե-

ցող, Միրապոյի և Լաֆայէթի բարեկամ, իբր հանրապետական ճանչցուած և Օրէնսդիր Ժողովի ամենէն նշանաւոր անդամներէն մէկն էր. Նկարագրով թեթեւ էր, բայց մտաւորական որոշ յատկութիւններով աչքի կը զարնէր: Լուվէ ունէր տաքուկ սիրտ մը, շատ սրամտութիւն և մեծ յանդգնութիւն, և կը վերաբերէր անոնց դասին, որոնք Սահմանադիր Ժողովէն անդին անցնելով, հանրապետութիւնը կ'երազէին. այս պատճառաւ, բնականաբար ինքզինքը կը գտնէր Ժիրոնդականներուն մէջ նետուած: Շատ չանցած, Ռոպէսպիէռի դէմ մղած իր պայքարները զինքը ա՛լ աւելի կապեցին Ժիրոնդականներուն: Այս կուսակցութիւնը, աստիճանաբար և առանց մասնաւոր դիտաւորութեան՝ կազմուած էր այնպիսի մարդոցմէ՝ որոնք իրենց ունեցած արժանիքովը չէին կրնար դաշնակցիլ ամբոխին, և որոնք այնքան փայլ ունէին, որ նախանձի առարկայ կ'ըլլային ամբոխին և անոր պետերուն, և վերջապէս, այդ մարդիկը իրարու քով եկած էին աւելի իրենց կացութեան բերմամբ, քան թէ՝ մտաւոր համաձայնութեամբ. Ժիրոնդականներու կուսակցութիւնը կրնար փայլուն ըլլալ, բայց տկար էր, ու թերեւս կորսուէր իրեն շուրջը բարձրացող աւելի իրական հատուածներու միջեւ:

Ուրեմն այս էր Ֆրանսայի կացութիւնը. նախկին առանձնաշնորհեալները քշուած էին Հռենոս գետէն անդին. Սահմանադրութեան կուսակիցները դրուած էին Ժողովին աջակողմը, ազգային պահակազօրքը և Ֆէօյեաններու ակումբը: Ժիրոնդականները մեծամասնութիւն ունէին Օրէնսդիր Ժողովին մէջ, բայց ո՛չ ակումբներուն մէջ, ուր ամենաստար բռնութեան տակ կը յաղթուէին: Վերջապէս այս նոր շրջանին ծայրայեղները, Ժողովին ամենէն բարձր նստարաններուն վրայ բազմած, և այս իսկ պատճառաւ Մօնթանեէ (Լեռ) կոչուած, ամենակարող էին ակումբներուն մէջ և ամբոխին վրայ:

Լաֆայէթ, զինուորական ամէն ստիճաններէ հրաժարած ըլլալով, իր զինակիցներուն ցաւակցութիւնները և յարգանքի արտայայտութիւնները տարած էր հետը՝ իր ստացուածքներուն մէջ: Ընդհանուր հրամանատարի պաշտօնը յանձնուած չէր նոր զօրավարի մը, բայց զօրագունդերու վեց սպաներ փոխն ի փոխ կը վարէին ամբողջ պահակազօրքին հրամանատարութիւնը: Պայիի, որ Լաֆայէթի հաւատարիմ զինակիցը եղած էր վերջին երեք տարիներուն մէջ, ինքն ալ թողուց քաղաքապետութիւնը: Ընտրողներուն քուէները բաժնուեցան Լաֆայէթի և Բէդիոնի վրայ. բայց արքունիքը, որ ո՛չ մէկ գնով կ'ուզէր Լաֆայէթը, որուն տրամադրութիւնները նպաստաւոր էին սակայն, նախապատիւ համարեց Բէդիոնը, թէեւ հանրապետական մըն էր ան: Արքունիքը աւելի յոյս դրաւ այն տեսակ մը պարզութեան վրայ, զոր ապուշութեան տեղ կ'առնէր, թէեւ այդպէս չէր, և շատ դրամ ծախսեց որպէս զի Բէդիոնի ընտրութիւնը յաջողի: Արդարեւ, յաջողեցաւ, և Բէդիոն Բարիզի քաղաքապետ հռչակուեցաւ Նոյեմբեր 17ին: Անիկա, խստամիտ ուղեղով և ցուրտ՝ այլ հաստատ համոզումով, բաւական ճարտար մարդ մը ըլլալով, չարունակ հանրապետականներուն ծառայեց ընդդէմ արքունիքին, և Ժիրոնդականներուն յարած դասու ինքզինքը իր տեսակէտներուն համանմանութեամբը, և այն նախանձոտութեան հետեւանքով, զոր իր նոր պաշտօնը յառաջ բերաւ Ժաքօպէններուն մօտ:

Սակայն և այնպէս, եթէ, հակառակ կուսակցութեանց այս տրամադրութիւններուն, կարելի ըլլար վստահիլ թագաւորին վրայ, թերեւս Ժիրոնդականներուն կասկածոտութիւնները փարա-

տէին, և գրգռութեան շարժառիթ այլեւս գոյութիւն չունենալով, գրգռիչները այլեւս միջոց չունենային ամբոխը ոտքի հանելու։

Թագաւորին մտադրութիւնները ուղիղ էին. բայց իր անկարողութեան պատճառով, այդ մտադրութիւնները շարունակ կը փոխուէին. պէտք էր որ բանի մը ապացոյցը տար, որպէս զի կարելի ըլլար իրեն հաւատ ընծայել. և, մինչև որ այդ ապացոյցը երեւան գար, անիկա նախատինքներու նշաւակ կ'ըլլար։ Թագաւորին բնաւորութիւնը, թէև բարի էր, բայց տեսակ մը բարկութեան ենթակայ էր. այս պատճառով իր որոշումները դիւրաւ փոխուեցան Օրէնսդիր Ժողովին գործած առաջին սխալներուն հետեւանքով։

Ժողովը ինքզինքը կազմելով հանդիսաւոր կերպով երդում ըրաւ Սահմանադրութեան վրայ. իր առաջին հրամանագրով ջնջեց արարողութեանց պահուն գործածուած «տէր արքայ» և «վեհափառութիւն» տիտղոսները, զորս սովորաբար կուտային թագաւորին։ Անկէ զատ, Ժողովը հրամայեց որ Ժողովին ներկայացած ատեն, թագաւորը նստի բազկաթոռի մը վրայ, որ յար և նման ըլլայ նախագահին աթոռին։ Ասոնք՝ հանրապետական ուղղութեան առաջին արդիւնքն էին. ու Լուդովիկոս ԺԶ.ի հպարտութիւնը խորապէս վիրաւորուեցաւ անոնցմէ։ Որպէս զի չենթարկուի այն բանին, զոր ինքը նուաստացում կը համարէր, որոշեց բնաւ չերթալ Ժողովին, այլ իր նախարարները ղրկելով բանալ տալ Օրէնսդիր Ժողովին նստաշրջանը։

Իր այս առաջին թշնամական ցոյցին վրայ զղջալով, յաջորդ օրն իսկ Ժողովը ետ առաւ իր հրամանագիրը, և այս կերպով հազուադէպ օրինակ մը տուաւ յետս կոչումի։ Այն ժամանակ թագաւորը Ժողովին գնաց և շատ լաւ ընդունելութիւն մը ըրին իրեն։ Դժբաղդաբար որոշուած էր որ, եթէ թագաւորը նստէր, երեսփոխաններն ալ կրնան նըստիլ. այդպէս ալ ըրին, ու Լուդովիկոս ԺԶ. այդ վարմունքին մէջ տեսաւ նոր նախատինք մը։ Երեսփոխաններուն ծափահարութիւնները չկրցան բուժել իր զգացած վիշտը. պալատ վերադարձաւ դժգոյն և դիմագիծերը տակն ու վրայ։ Թագուհիին հետ առանձին եղաւ թէ չէ, բազկաթոռի մը վրայ նետուեցաւ և հեծկլտալով ըսաւ. — «Ա՜հ, Տիկի՛ն, դուք ականատե՞ս եղաք այս ստորնացումին. ի՛նչ, Ֆրանսա գալ, տեսնելու համար ...։» Թագուհին ջանաց մխիթարել զայն, բայց անոր սիրտը խորապէս վիրաւորուած էր, և իր բարի տրամադրութիւնները կրած նախատինքին հետեւանքով փոխուած էին։

Սակայն և այնպէս, եթէ այդ վայրկեանէն սկսեալ, թագաւորը օտարներուն օգնութեան ապաւինելու վրայ միայն խորհեցաւ, տէրութեանց տրամադրութիւնները քիչ յոյս կը ներշնչէին իրեն։ Բիլնիցի Յայտարարութիւնը ապարդիւն անցած էր. թէ՛ վեհապետներուն մօտ եռանդ չըլլալուն համար, և թէ՛, նաև, այն վտանգին համար որուն ենթարկուած էր Լուդովիկոս ԺԶ., Վառէնէն վերադարձէն ի վեր Սահմանադիր Ժողովին կողմէ բանտարկուած ըլլալով։ Սահմանադրութեան հռչակումը նոր շարժառիթ մըն էր սպասելու համար փորձառութեան հետեւանքներուն, և յետոյ գործելու. Լէօբոլտ և Քոնից դեսպանին կարծիքն այս էր։ Այս պատճառաւ, երբ Լուդովիկոս ԺԶ. ծանոյց բոլոր արքունիքներուն, որ Սահմանադրութիւնը ընդունած է և որոշած է հաւատարմօրէն հետեւիլ անոր, Աւստրիա շատ հաշտ պատասխան մը տուաւ. Բրուսիա և Անգլիա ալ նոյնը ըրին և իրենց բարեկամական տրամադրութիւնները յայտնեցին։ Պէտք է դիտել տալ, թէ դրացի պետութիւնները աւելի վերապահու-

թեամբ կը շարժէին քան թէ հնական աւերութիւններէ, օրինակի համար Շուէտ և Ռուսաստան, որոնց համամիանները աւելի ուղղակի կերպով ենթակայ էին պատերազմի հետեւանքներուն։ Կիւսթավ, որ կ'երազէր Ֆրանսայի վրայ գեղեցիկ արշաւանք մը ընել, այդ զեկոյցին պատասխանից թէ ինքը ազատ կամքի տէր մէկը չէր համարեր Թագաւորը։ Ռուսիա ոևէ բացատրութիւն չտուաւ։ Հոլանտա, Իտալական իշխանապետութիւնները, բայց մանաւանդ Զուիցերիա գոհացուցիչ պատասխաններ տուին։ Թրէվի և Մայանսի կայսրընտիր իշխանները, որոնց հողին վրայ էին տարագիրները, փախուստի ճամբայ փընտռողի պատասխաններ տուին։ Սպանիա, Բոպլէնցի պատգամաւորներէն պաշարուած, աւելի բան մը չըրաւ և յարեց թէ ժամանակի կարօտ էր, որպէս զի ապահով ըլլայ Թագաւորին ազատութեանը մասին, բայց միեւնոյն ատեն ապահովութիւն տուաւ թէ նպատակ չունէր բնաւ Թագաւորութեան անդորրութիւնը խանգարելու։

Այսպիսի պատասխաններ, որոնցմէ ո՛չ մին թշնամական էր, Անգլիոյ չէզոքութիւնը ապահովուած, Ֆրետէրիք Կիյոմ՝ տարտամութեան մէջ, Լէօփոլտի տրամադրութիւնները՝ խաղաղասէր և լաւ ծանօթ, վերջապէս ամէն ինչ նախատեսել կուտային թէ խաղաղութիւնը չպիտի խանգարուի։ Դժուար է գիտնալ թէ ինչ կ'անցնէր կը դառնար Լուդովիկոս ԺԶ.ի տարտամ հոգին մէջ, բայց իր ակներեւ շահը, և նոյն իսկ այն վախերը, զորս իրեն աւելի ետքը՝ ներշնչեց պատերազմը, մեզի մտածել կու տան թէ ինքն ալ խաղաղութեան պահպանումը կը ցանկար։ Այս ընդհանուր ներդաշնակութեան մէջ, միայն տարագիրներն էին որ յամառօրէն պատերազմի կը ցանկային և կը պատրաստէին զայն։

Անոնք կը շարունակէին Բոպլէնց երթալ խուռներամ. հոն եռանդով կը զինուէին, մթերանոցներ կը պատրաստէին, պաշար կը գնէին, զինուորական կազմեր կը կազմէին, որոնք չէին լրանար սակայն, որովհետեւ իրենցմէ ո՛չ մին կ'ուզէր հասարակ զինուոր ըլլալ. անոնք ախոռներ հաստատած էին, որոնք ծախու կը հանուէին, և, եթէ խոկալէս վտանգաւոր բան մը չէին փորձեր, միւս կողմէ այնքան մեծ պատրաստութիւններ կը տեսնէին, որ իրենք իսկ ահաւոր կը համարէին, և որոնցմէ պէտք էր, սակայն ժողովուրդին երեւակայութիւնը։

Ամենէն կարեւոր խնդիրը սա էր թէ, Լուդովիկոս ԺԶ. կ'օգնէ՞ անոնց թէ՝ ոչ։ Դժուար էր հաւատալ որ անիկա լաւ տրամադրուած չըլլար հանդէպ ազգականներու և ծառաներու, որոնք կը զինուէին, իր նախկին իշխանութիւնը իրեն վերադարձնելու համար։ Որպէս զի հակառակին համոզէր ժողովուրդը, պէտք կ'ըլլար որ անիկա բացարձակ անկեղծութեան մշտնջենական ցոյցեր ընէր։ Թագաւորին նամակները, ուղղուած՝ տարագիրներուն, կը պարունակէին հրաւէր, նոյն իսկ՝ հրաման, Ֆրանսա վերադառնալու. բայց անիկա ունէր նաև, կ'ըսեն, գաղտնի նամակներ, որոնք կը հերքէին իր յայտնի թղթակցութիւնները և անոնց տպաւորութիւնը կը ջնջէին (*)։ Անշուշտ, կարելի չէ կասկածիլ թէ անիկա գաղտնի նամակներ կը փոխանակէր Բոպլէնցի հետ, բայց չեմ կարծեր որ Լուդովիկոս ԺԶ. այդ նամակներով հերքած ըլլայ տարագիրներուն ուղղած իր յայտնի նամակներուն պարունակութիւնը։ Թագաւորին ակներեւ շահը կը պահանջէր որ անոնք Ֆրանսա դառնան։ Բոպլէնցի մէջ անոնց ներկայու-

---

* Տիկին Բամբան իր Յիշատակներուն մէջ կը վկայէ թէ Թագաւորը գաղտնապէս կը թղթակցէր Բոպլէնցի հետ։

թիւնը միայն այնքան օգտակար կրնար ըլլալ, որքան էր իրենց պատերազմի ծրագիրը. արդ, Լուդովիկոս ԺԶ. ամէն բանէ աւելի քաղաքային պատերազմէն կը սոսկար. անիկա չէր ուզեր որ տարագիրները իրենց զէնքը գործածեն Հռենոսի վրայ, այլ նախամեծար կը համարէր որ անոնք իր քովիկը ըլլան, որպէս զի, ի հարկին, անոնց դիմում ընէ և անոնց ջանքերը միացնէ սահմանադրականներու ջանքերուն, իր անձը և գահը պաշտպանելու համար։ Բաց աստի, տարագիրներուն ներկայութիւնն ի Գոբլէնց, պատճառ կ'ըլլար այնպիսի խիստ օրէնքներու հաստատման, զորս չէր ուզեր վաւերացնել. և երբ կը մերժէր վաւերացումը, գէշ մարդ կ'ըլլար ժողովին աչքին, և պիտի տեսնենք որ իր վէտօի իրաւունքը ի գործ դնելուն համար բոլորովին ինկաւ ժողովրդականութենէ և տարագիրներուն մեղսակից համարուեցաւ։

Տարօրինակ բան որ, Լուդովիկոս ԺԶ. չէր նշմարեր ճշմարտութիւնն այս տրամաբանութեան, զոր բոլոր նախարարները կը զգային։ Նախարարները միաձայնութեամբ կարծիք կը յայտնէին թէ տարագիրները պէտք է վերադառնան Թագաւորին անձին քով, զայն պաշտպանելու համար, և միանգամ ընդ միշտ դադրեցնելու խրարանցումները ու գրգռիչներուն ձեռքը ո և է պատրուակ չտալու համար։ Անիկա էր կարծիքը մինչև իսկ Պէրթրանի ու Մօլվիլի, որ սկզբունքով սահմանադրական էր։ Անիկա կ'ըսէր. — «Պէտք է ամէն կարելի միջոց գործածել, Թագաւորին ժողովրդականութիւնը աւելցնելու համար։ Այս միջոցին, ամենէն օգտակար և արդիւնաւոր բանը՝ տարագիրները ետ կանչելն է։ Անոնց վերադարձը, զոր կը բաղձան գրեթէ ամենքը, Ֆրանսայի մէջ պիտի վերակենդանացնէ արքայական կուսակցութիւնը, որ բոլորովին կազմալուծուած է տարադրութեան հետևանքով։ Այս կուսակցութիւնը, որ ժողովին վարկաբեկումը պիտի ուժովնայ և իր մէջ պիտի հաւաքէ բոլոր դժգոհները ու Սահմանադրական կուսակցութեան բազմաթիւ դասալիքները, քիչ ժամանակէն բաւական ոյժ պիտի ունենայ ի նպաստ Թագաւորին վճռական պայթում մը յառաջ բերելու, պայթում մը՝ աւելի կամ նուազ մօտաւոր, և որուն պէտք է սպասել։»

Լուդովիկոս ԺԶ. իր նախարարներուն այս խորհուրդին համակերպելով, հրաւէր ուղղեց բանակին գլխաւոր պետերուն և նաւատորմի սպաներուն, անոնց յիշեցնելու համար իրենց պարտականութիւնը և զիրենք իրենց պաշտօնին գլուխը կեցնելու համար։ Այլ սակայն, իր կոչերը ապարդիւն մնացին, և առանց ընդմիջումի, դասալքութիւնները շարունակուեցան։ Պատերազմական նախարարը ժողովին գալով ծանոյց թէ հազար ինը հարիւր սպաներ դասալիք եղած են. ժողովը չկրցաւ իր բարկութիւնը զսպել, և որոշեց շատ խիստ միջոցներ ձեռք առնել։ Վերջ ի վերջոյ Սահմանադիրը վճռեց պաշտօնանկութիւնն հռչակել այն հանրային պաշտօնեաներուն, որոնք Ֆրանսայէն դուրս կը մնային, առկէ զատ տարագիրներուն անշարժ կալուածները հասարակ տուրքի ենթարկեց, որպէս զի Պետութեան հատուցած ըլլան այն վնասը, զոր կը պատճառէին իրենց բացակայութեամբը։

Զանազան ծրագիրներ ներկայացուեցան։ Բրիսօ երեք դասակարգի բաժնեց տարագիրները. Ա.՝ դասալիքներու պետերը, Բ.՝ այն հանրային պաշտօնատարները, որոնք կը լքէին իրենց պաշտօնները, Գ.՝ անոնք, որ վախէ դրդուած փախած էին հայրենի հողէն։ Բրիսօ կ'ըսէր թէ խիստ միջոցներ պէտք էր ձեռք առնել առաջին դասակարգին դէմ, ու արհամարհելով գթալ միւս երկու կարգի մարդոց վրայ։

Յայտնի է որ մարդկային ազատութիւնը չի թոյլատրեր որ զինքը կապեն հողին. բայց երբ, խել մը պարագաներ կը վտանգեցնեն թէ իրենց հայրենիքը լքող քաղաքացիները՝ դուրս պիտի հաւաքուին, անտանելի պատերազմ հռչակելու համար հայրենիքին դէմ, ներելի է նախազգուշութիւններ ձեռք առնել այդ քան վտանգաւոր ծրագիրներու դէմ։

Այս խնդրին վրայ երկար և յամառ վիճաբանութիւն մը կատարուեցաւ։ Սահմանադրականները կ'ընդդիմանային առաջարկուած բոլոր պատիժներուն և կը պնդէին թէ պէտք էր արհամարհել տարագիրներուն զուր փորձերը, ինչպէս միշտ ըրած էին իրենց նախորդները։ Այլ սակայն, հակառակ կողմը տարաւ յաղթանակը, և եղաւ առաջին հրամանագիրը, որ կը հարկադրէր Թագաւորին եղբայրը երկու ամիսէն Ֆրանսա վերադառնալ, հակառակ պարագային, իր գահակալելու իրաւունքը պիտի կորսնցնէր։ Աւելի խիստ որոշում մը գրուեցաւ առհասարակ բոլոր տարագիրներուն դէմ. յայտարարուեցաւ թէ, Ֆրանսայի սահմանագլուխին անդին կողմ հաւաքուած Ֆրանսացիները, պիտի կասկածուէին իբրև դաւադրողներ ընդդէմ Ֆրանսայի, և եթէ, մինչև յառաջիկայ յունուար 1, տակաւին համախմբուած մնային հոն, դաւադրութեան յանցանքով պիտի ամբաստանուէին և իբր այդ դատուելով, մահուամբ պիտի պատժուէին. և թէ՝ ի բացակայութեան դատապարտուածներուն եկամուտը պիտի գանձուէր՝ ի նպաստ ազգային գանձին, առանց վնասելու կնանց և զաւակաց իրաւունքներուն և օրինաւոր պահանջատէրներուն. 28 Հոկտեմբերի և 9 Նոյեմբերի հրամանագիր։)

Ինքն ըստ ինքեան, տարագրութեան արարքը պատժի ենթակայ չէ, այդ պատճառաւ դժուար է որոշել թէ ո՛ր պարագային պատիժի արժանի կը դառնայ։ Ինչ որ կրնար ընել օրէնքը, կանխապէս իմացնել էր թէ այս ինչ պարագայի տակ տարագիրները յանցաւոր պիտի նկատուին, հետեւաբար, բոլոր անոնք որ չէին ուզեր յանցաւոր նկատուիլ, թո՛ղ հնազանդէին օրէնքին։ Անոնք որ, տեղեկանալով թէ այս ինչ թուականէն ետք Ֆրանսայէն դուրս մնացած ըլլալը ոճիր մը պիտի համարուի և դարձեալ չէին վերադառնար, արդէն իրենք հաւանած կ'ըլլային ոճրագործներ նկատուելու։ Անոնք, որ առանց պատերազմի նպատակ կամ քաղաքական ծրագիրներ ունենալու Ֆրանսայէն դուրս կը մնային, պէտք էր փութով ետ դառնային. արդարև, Պետութեան մը ապահովութեանը տեսակէտով, շատ պզտիկ զոհողութիւն մըն է շահու կամ հաճոյքի համբորդութիւն մը դադրեցնելը։

Լուդովիկոս ԺԶ., գոհ ձգելու համար ժողովը և հանրային կարծիքը, հաւանեցաւ այն հրամանագրին որ իր եղբօրը կը հրամայէր Ֆրանսա վերադառնալ, հակառակ պարագային՝ գահակալելու իրաւունքը կորսնցնելով, բայց տարագիրներու դէմ շինուած օրէնքին վէթօ ըսաւ։ Նախարարները պաշտօն ստացան ամենքը միասին ժողովին երթալ և Թագաւորին կամքը յայտարարել (Նոյեմբեր 12ին նիստ։) Նախ և առաջ կարդացին զանազան օրէնքներ, զորս վաւերացուցած էր Թագաւորը. երբ տարագիրներու օրէնքին ընթերցումը սկսաւ, ժողովը խորունկ լռութեան մէջ թաղուեցաւ, և երբ դատական նախարարը արտասանեց պաշտօնական բանաձևը՝ «թագաւորը պիտի քննէ», ամէն կողմէ դժգոհութեան նշաններ երևան եկան. Նախարարը ուզեց վէթօի պատճառները բացատրել. բայց բազմաթիւ ձայներ թող չտուին և ըսին անոր, թէ Սահմանադրութիւնը իրաւունք կու տայ Թագաւորին մերժել օրէնքի մը վաւերացումը, բայց ո՛չ թէ պատճառաբանել իր մերժումը։



ԹԱԳԱՒՈՐԸ ՓԱՐԻԶ ԿԸ ՎԵՐԱԴԱՐՁՆԵՆ

Հետեւաբար, նա արար հարկադրուեցաւ մեկնիլ, իր ետին թողլով շատ մեծ գրգռութիւն մը. թագաւորին ցոյց տուած այս առաջին ընդդիմութիւնը՝ ժողովին, վերջնական խզում մը յառաջ բերաւ. եւ թէեւ անիկա վաւերացուցած էր իր եղբայրը գահէն զրկող օրէնքը, բայց Գոպլէնցի ըմբոստներուն հանդէպ համակրանքի արտայայտութիւն մը համարուեցաւ երկրորդ օրէնքը վաւերացնելու մերժումը: Այն ատեն ժողովը ց թէ թագաւորը անոնց ազգականը, բարեկամը եւ կամ ձեւով մը շահակիցն էր. ու ասկէ եզրակացուց որ, թագաւորին համար անկարելի բան մըն էր անոնց չգործակցիլը, ընդդէմ ազգին:

Յաջորդ օրն իսկ, Լուդովիկոս ԺԶ. յայտարարութիւն մը հրատարակեց, ուղղեալ՝ տարագիրներուն եւ երկու մասնաւոր նամակներ ղրկեց, իր երկու եղբայրներուն: Թէ՛ անոնց եւ թէ ատոնց աչքին առջեւ պարզած պատճառաբանութիւնները հիմնալի էին, եւ բարեմտութեամբ արուած կը թուէին: Զանոնք կը հրաւիրէր, որ Ֆրանսա վերադառնան, եւ այդ կերպով վերջ մը տան այն անվստահութեան խօսքերուն, զորս չարամիտները կը սիրէին տարածել: Անոնցմէ կը խնդրէր որ զինքը չստիպեն խիստ միջոցներ անօրինել իրենց դէմ. գալով տարագիրներուն այն դիտողութեան, թէ թագաւորին ազատութիւնը կաշկանդուած է, երբ հակառակը ապացուցանող փաստ, անոնց մատնանիշ կ'ընէր, ինքնաստ իրենց արտասանած վէթօն:

Ինչ որ ալ ըլլայ, այս պատճառաբանութիւնները ո՛չ Գոպլէնցի եւ ո՛չ ալ Թուրինի մէջ յառաջ բերին այն տպա-

նային տեսնելով որ իրենց եկեղեցին գրաւուած է պաշտամունքով մը՝ զոր գէշ կը կարծէին, և իրենք հարկադրուած էին այնքան հեռաւոր տեղեր երթալ լու համարուածը գտնելու համար։ Յաճախ, անոնք կռիւի կը բռնուէին երդուեալ քահանաներուն և անոնց կուսակիցներուն հետ. քաղաքային պատերազմը վերահաս էր։ Ժողովը հետզհետէ նորանոր տեղեկութիւններ ստացաւ, և համոզուեցաւ որ վտանգը շատ աւելի մեծ է։ Այն ժամանակ, Սահմանադրութեան այս նոր թշնամիներուն դէմ ուզեց ձեռք առնել այնպիսի միջոցներ, որոնք նման էին անդր-Հռենոսեան զինեալ թշնամիներուն դէմ առնուածներուն. ու ահա այս կերպով, թագաւորին տրամադրութիւնները անգամ մըն ալ փորձուեցան։

Սահմանադիր Ժողովը հրամայած էր որ բոլոր քահանաները քաղաքային երդում ընեն։ Անոնք՝ որ կը մերժէին ընել այս երդումը, կը կորսնցնէին հանրային եկեղեցական պաշտօնեայ ըլլալու հանգամանքը, Պետութենէն վճարում չէին ստանար, և իբր պարզ եկեղեցականներ իրենց թոշակը կը պահէին, և անհատապէս կրօնական պաշտամունք կատարելու ազատութիւնն կը պահէին։ Այս զսպողական միջոցը շատ քաղցր և չափաւոր էր։ Օրէնսդիր Ժողովը անգամ մըն ալ պահանջեց որ երդում կատարեն եկեղեցականները. և մերժողներուն ո և է վճարում չընել որոշեց։ Որովհետև անոնք իրենց ազատութիւնը չարաչար կը գործածէին քաղաքային պատերազմ յառաջ բերելով, Ժողովը հրամայեց որ, համաձայն իրենց վարմունքին, տեղէ մը ուրիշ տեղ փոխադրուին անոնք և նոյն իսկ բանտարկութեան դատապարտուին, երբ մերժեն հպատակիլ Ժողովին որոշմանը։ Վերջ ի վերջոյ Ժողովը արգիլեց անոնց անհատապէս կատարած կրօնական պաշտամունքն ալ, և ուզեց որ վարչակա

մարմինները իրեն յանձնեն բոլոր եկեղեցականներուն մէկ ցուցակը, յարակից ծանօթագրութիւններով։

Այս որոշումը, ինչպէս նաև տարագիրներուն դէմ հանուած հրամանագիրը հետևանք էր այն երկիւղին՝ զոր կը զգան ապառնալիքներով շրջապատուած կառավարութիւնները. այդ երկիւղը զիրենք կը մղէ շրջապատելու ծայրայեղ զգուշաւորութիւններով։ Այլ ևս գոյութիւն ունեցող իրողութիւն մը չէ որ կը պատժեն, այլ ենթադրեալ յարձակումն է զոր կը հալածեն, և իրենց ձեռք առած միջոցները յաճախ կ՚ըլլան կամայական և անգութ,, կասկածին նման։

Այն եպիսկոպոսները և քահանաները որոնք Բարիզ մնացած և Թագաւորին հետ յարաբերութիւններն պահած էին, անմիջապէս յիշատակագիր մը ղրկեցին անոր, ընդդէմ այս նոր հրամանագրին։ Թագաւորը, որ արդէն խղճի խայթ ունէր Սահմանադիր Ժողովին օրէնքը վաւերացուցած ըլլալուն համար, քաջալերանքի պէտք չունէր իր վաւերացումը մերժելու համար. նոր օրինագծին մասին խօսելով, ըսաւ անիկա. —«Աւելի կը նախընտրեմ մեռնիլ, քան թէ այս օրէնքը վաւերացնել։» Նախարարները գրեթէ համաձայն էին իրեն. Պառնավ և Լամէթ, որոնց կարծիքը կը հարցնէր երբեմն Թագաւորը, խորհուրդ տուին վաւերացումը մերժել. բայց այս խորհուրդին հետ կու տային ուրիշներ ալ, որոնց հետևելու մասին որոշում մը չէր կրնար առնել Թագաւորը։ Անոնք խորհուրդ կու տային, հրամանագրին ընդդիմանալով հանդերձ իր դիտաւորութեան մասին ոև է կասկած չտալ, և այս պատճառաւ իր անձին ծառայութենէն արձակել այն քահանաները որոնք երդում ընել կը մերժէին, և միայն սահմանադրական եկեղեցականները իր ծառայութեան մէջ առնել։ Բայց, իրեն տրուած բոլոր խորհուրդներուն մէջէն Թագաւորը կը նախընտրէր միայն այն մասը, որ իր տկարութեան և աստուածպաշտութեան համաձայն կու գար։ Տիւբօռ-Տիւդէրդր, դատական նախարարը, և դահլիճին մէջ սահմանադրականներու բերանը, վաւերացնել տուաւ անոնց կարծիքը, և երբ Դահլիճը որոշեց, ի մեծ գոհունակութիւն Լուդովիկոս ԺԶ.ի, որ վեթօի ենթարկուի նոր օրէնքը, իբր անձնական կարծիք, դատական նախարարը յարեց թէ յարմար է որ Թագաւորին քովը եղող քահանաները կասկածելիներ չըլլան։ Այս առաջարկին դէմ, Լուդովիկոս ԺԶ., որ սովորաբար այնքան ճկուն էր, անընկճելի յամառութիւն մը ցոյց տուաւ, և ըսաւ թէ կրօնքի ազատութիւնը, որ ամենուն համար է, ինքն ալ կը վայելէ, և թէ ինքը ազատութիւն ունի իր յարմար դատած քահանաները հաւաքելու իր շուրջը։ Այլևս չպնդեց նախարարը, և, առանց Ժողովին իմաց տրուելու, վեթօն որոշուեցաւ։

Սահմանադրական կուսակցութիւնը, որուն, այդ պահուն կը յանձնուէր Թագաւորը, նոր օժանդակութիւն մը ընծայեց իրեն. գաւառային վարչութիւնն էր այդ։ Այս վարչութիւնը կը բաղկանար Սահմանադիր Ժողովին ամենէն նշանաւոր անդամներէն. անոր մէջ կը գտնուէր Լա Ռոշֆուքօ Դուքսը, տ՚Օթէօն եպիսկոպոսը, Տէյմէօնիէ, Անսօն, ևն.։ Այս վարչութիւնը աղերսագիր մը տուաւ Թագաւորին, ո՛չ թէ իբր վարչական մարմին, այլ իբրև աղերսարկուներու խումբ մը, և այս կերպով պատճառ եղաւ որ նոր օրէնքին դէմ Թագաւորը իր վեթօն արձակէ։ Խնդրագրին մէջ ըսուած էր թէ, Ազգային Ժողովը անտարակոյս աղէկ բան մը ընել կը փափաքէր. մենք կ՚ուզենք իր յանցապարտ չարախօսներէն վրէժ առնել հիմա. այս այսքան գովելի մտադրութիւնը զինքը մղեց որ Սահ-

մանադրութեան օրէնքներուն դէմ չէ, արդարամտութեան և խոհեմութեան հակառակ...։ Ժողովը հարկ կը դատէ որ, միայն երդուեալ եկեղեցականները Պետութենէն թոշակ առնեն, բայց Սահմանադրութիւնը մասնաւոր և գրաւոր կերպով մը ազգային պարտքերու հաշուոյն անցուցած է այդ թոշակները. արդ, կ'ըսէին խնդրարկուները, միթէ ո և է երդում մը ընելու մերժումը կրնա՞յ ջնջել ընդունուած պարտքի մը իրաւունքը։ Սահմանադիր Ժողովը կրցածը ըրած էր արդէն ոչ-երդուեալ քահանաներուն համար. անոնք մերժեցին երդում ընել Սահմանադրութեան վրայ և զրկուեցան իրենց հանրային պաշտօններէն, ու միայն թոշակ մը յատկացուեցաւ իրենց...։ Օրէնսդիր Ժողովը կ'ուզէ՝ որ բնաւ երդում չընող եկեղեցականները, կամ անոնք որ դրժեցին երդումնին, կարենան, կրօնական խառնակութեանց միջոցին, առժամապէս հեռացուիլ և բանտարկուիլ, եթէ իրենց տրուած հրամանին չհնազանդին։ Ասիկա կամայական օրէնքները վերահաստատել չի՞ նշանակեր միթէ, կ'ըսէին, քանի որ, ներելի պիտի ըլլար աքսորել և յետոյ ալ բանտարկել այն, որ տակաւին ո և է օրէնքի դէմ ընդվզած չէր համարուեր...։ Ազգային Ժողովը, քաղաքային երդում չընող եկեղեցականներուն անկախօրէն կրօնական պաշտամունք կատարելու ազատութիւն չի տար... արդ, ասիկա այնպիսի ազատութիւն մըն է, զոր ո՛չ ոքին ձեռքէն կարելի է խլել. անիկա յաւիտենական յաւիտենից նուիրագործուած է Իրաւունքներու Յայտարարութեամբ։

Այս դատաստանաբանութիւնները անհերքելի էին, բայց կարելի չէ դատաստանաբանութիւններով հանդարտեցնել կուսակցութիւնները ո՛չ մտքերը և ո՛չ ալ վախերը։ Ի՞նչպէս կարելի էր համոզել Ժողով մը որ պարտական է յանուն քահանաներու թոյլ տալ խռովութիւն և քաղաքական պատերազմ յառաջ բերել։ Վարչութիւնը նախատուեցաւ և թագաւորին ուղղած իր խնդրագրին դէմ պայքարեցան շատ մը ուրիշներ զրկելով Օրէնսդիր Մարմինին։ Քամիյ Տէմուլէն հատուածի մը գլուխ անցնելով հասցէ մը ներկայացուց որ շատ յանդուգն էր։ Անոր մէջ կարելի էր արդէն դիտել լեզուի՝ հետզհետէ սաստկացած ուժգնութիւնը, և տեսնել որ թագաւորին իշխանութեան համար մինչև այն ժամանակ գործածուած պաշտօնական յարգանքը մէկ կողմ կը դրուէր։ Տէմուլէն կ'ըսէր Ժողովին որ մեծ օրինակ մը պէտք էր, թէ պէտք էր Վարչութիւնը ամբաստանել... թէ պետերը պէտք էր ամենէն աւելի դատի ենթարկել... թէ պէտք էր հարուածը տալ գլխուն և կայծակնահար ընել դատաւորները... թէ թագաւորին վէթոյի ուժը սահման մը ունէր և թէ վէթոյով մը չէր կարելի պիտի ըլլար արգիլել Պաստիլի առումը...։

Լուդովիկոս ԺԶ. որոշած ըլլալով իր վաւերացումը մերժել, կը յետաձգէր սակայն այս բանը ծանուցանել Ժողովին. կ'ուզէր նախապէս քանի մը գործերով հանրային կարծիքը շահիլ. իր նախարարները ընտրեց Սահմանադրականներուն մէջէն. Մօնմօրէն 'որ յոգնած էր Սահմանադիր Ժողովի ատեն ունեցած իր բազմաշխատ ասպարէզէն և ամէն կուսակցութեանց հետ իր ունեցած տաժանելի բանակցութիւններէն, չէր ուզած ճակատել նոր օրէնսդրութեան մը փոթորիկները և հակառակ՝ թագաւորին պնդումներուն քաշուած էր։ Արտաքին գործոց նախարարութիւնը զոր զանազան անձնաւորութիւններ մերժեցին, ընդունեցաւ Տը-Լեսարի կողմէ, որ թողուց ներքին գործոց նախարարութիւնը։ Տրյէսար, խոհամիտ և անաչառ, սահմանադրականներու կամ Ֆէօյաններու ազդեցու-

թեան ներքեւ էր. բայց չափաւոր մարդ ըլլալով Թագաւորին կամքը չէր կարող կեդրոնացնել տալ օտար պետութեանց վրայ, և ներքին քաղաքական հաստատութիւններուն ինքզինքը չէր կարող սեպել տալ։ Քահիէ տը Ժէրվիլ, յայտնի հայրենասէր, բայց աւելի չոր քան թէ խանդավառող, ներքին գործոց նախարար եղաւ, դարձեալ հանրային կարծիքը գոհացնելու համար։ Նարպօն, գործունէութեամբ և եռանդով լեցուն երիտասարդ մը, նախանձախնդիր սահմանադրական, և ճարպիկ՝ ժողովըրդական դառնալու մէջ, ընտրուեցաւ այն ատենի նախարարութիւնը կազմող կուսակցութենէն իբր պատերազմական նախարար։ Նարպօն պիտի կրնար օգտակար ազդեցութիւն մը բանեցնել դահլիճին մէջ և ժողովը Թագաւորին կապել վերստին, եթէ իբր հակառակորդ չունենար Պէրթրան տը Մօլէվիլը, հակայեղափոխական նախարար և զոր արքունիքը նախամեծար կը համարէր։ Պէրթրան տը Մօլէվիլ, Սահմանադրութիւնը ատելով, ճարտարութեամբ կը ծածկուէր ատեանին մէջ, անոր ոգիին վրայ յարձակելու համար և անկեղծօրէն կ'ուզէր որ Թագաւորը զայն գործածէր, «բայց, որպէս զի, կ'ըսէր, հասկցուի որ անգործադրելի է։» Թագաւորը չէր կրնար զայն ճամբելու որոշումը տալ և այս խառնակ նախարարութիւնով է որ փորձեց իր ճամբան շարունակել։ Հանրային կարծիքին հաճոյ ըլլալ փորձելէ ետք իր կատարած ընտրութիւններով, ուրիշ միջոցներ ալ փորձեց, ա՛լ աւելի զայն իրեն կապելու համար և այնպէս թուեցաւ որ առաջարկուած բոլոր դիւանագիտական և զինուորական միջոցները պիտի գործադրէր Հռենոսի վրայ կազմուած զինուորական համախմբումներուն դէմ։ Վերջին գաղթական օրէնքները մերժուած էին վետոյով, և սակայն ամէն օր նոր ամբաստանութիւններ կ'ելլացնէին ժողովին՝ տարագիրներուն պատրաստութիւնները և սպառնալիքները։ Այն տեղեկութիւնները զոր սահմանագլխի մօտիկ քաղաքապետութիւնները և նահանգները կը ղրկէին և անդրՀռենոսէն եկող վաճառականներուն տեղեկագիրները կը վկայէին թէ տը Միրապօ դերկոմսը՝ եղբայր հռչակաւոր սահմանադրականին, Սթրազպուրկի եպիսկոպոսական թեմին մէջ 600 հոգիի գլուխը անցած էր, թէ Մայանսի կայսրընտիր իշխանին երկրին մէջ, Վորմսի մօտ, դասալիքներու բազմաթիւ խումբեր կը գտնուէին և որոնք Քոնտէի իշխանին հրամանին տակ էին. թէ՝ նոյնն էր Քօպլէնցի և Թրէվի ամբողջ երկրին մէջ, թէ՝ ծայրայեղութիւններ և բռնութիւններ գործուած էին Ֆրանսացիներու դէմ և թէ վերջապէս զօրավար Վիմբֆընի առաջարկուած է յանձնել Նէօֆ-Պրիզաքը։ Այս տեղեկագիրները միանալով այն լուրերուն, որոնք ժողովուրդին բերանն էին, ժողովը մղեցին վերջին աստիճանի գրգռութեան։ Անմիջապէս առաջարկուեցաւ օրէնքի նախագիծ մը, որով պիտի պահանջէին կայսրընտիր իշխաններու երկիրները գտնուող տարագիրներուն զինաթափութիւնը։ Որոշումը երկու օր յետաձգուեցաւ, որպէս զի շատ աճապարանքով կատարուած չերեւայ։ Երբ պայմանաժամը աւարտեցաւ, վիճաբանութիւնը բացուեցաւ։

Առաջին անգամ Իզնար երեսփոխանը խօսք առաւ և զգացուց որ Ֆրանսայի հանդարտութիւնը ապահովելը անհրաժեշտ է, ո՛չ թէ անցողակի, այլ տեւական կերպով մը. պէտք էր ինքզինքը սեպել տալ այնպիսի անմիջական և կորովի միջոցներով, որ ամբողջ Եւրոպայի առջեւ ապացուցանէին Ֆրանսայի հայրենասիրական որոշումները. — «Մի՛ վախնաք, կ'ըսէր, որ ձեզի դէմ պատերազմելու կը գրգռէք մեծ պետութիւնները. շահախնդրութիւնը արդէն

որոշած է անոնց մտադրութիւնները։ Ձեր գործածած միջոցները զանոնք չպիտի փոխեն, բայց պիտի ստիպեն զիրենք որ բացատրութիւն տան...։ Պէտք է որ Ֆրանսացիին վարմունքը համապատասխան ըլլայ իր նոր ճակատագրին։ Լուդովիկոս ԺԴ. ի ժամանակ ստրուկ ըլլալով հանդերձ, քաջ և մեծ եղաւ ան. այսօր որ ազատ է, արդեօք տկար և երկչո՞տ պիտի ըլլայ։ Մոնդէսքիէօ կ'ըսէ թէ, կը սխալին, եթէ կը կարծեն որ յեղափոխական ժողովուրդ մը յաղթուելու տրամադիր է. ընդհակառակը, պատրաստ է ուրիշներուն յաղթանակելու (ծափահարութիւններ)։ Ձեզի կ'առաջարկեն տեղի տալ. կ'ուզեն աւելցնել թագաւորական առանձնաշնորհումը, աւելցնել թագաւորին իշխանութիւնը, մարդու մը՝ որուն կամքը կրնայ անդամալուծել ամբողջ ազգին կամքը, մարդու մը՝ որ 30 միլիոն ֆրանք կը ստանայ, մինչ հազարաւոր քաղաքացիներ կը մեռնին անօթութեան մէջ. (կրկին ծափահարութիւններ։) Կ'ուզեն ազնուականութիւնը կրկին իշխանութեան գլուխ բարձրացնել...։ Եթէ նոյն իսկ աշխարհիս բոլոր ազնուականները մեր վրայ յարձակէին, Ֆրանսացիները, մէկ ձեռքով իրենց հարստութիւնը բռնած և միւսով՝ սուրը, պիտի պայքարին այդ գոռոզ դասակարգին դէմ և զայն պիտի հարկադրեն որ հաւասարութեան նեղութիւնները կրէ։ Նախարարութեան, թագաւորին և Եւրոպային խօսեցէք այն լեզուով որ կը վայլէ Ֆրանսայի ներկայացուցիչներուն. ըսէ՛ք Նախարարներուն որ, ցարդ շատ գոհ չէք եղած անոնց վարմունքէն և թէ դուք պատասխանատուութիւն ըսելով մահ կը հասկնաք (երկարատեւ ծափահարութիւններ)։ Ըսէ՛ք Եւրոպայի որ պիտի յարգէք բոլոր կայսրութիւններու սահմանադրութիւնները, բայց եթէ թագաւորները միանալով պատերազմ մը յառաջ բերեն Ֆրանսայի դէմ, դուք ալ պիտի սանձէք ժողովուրդներու պատերազմ մը՝ թագաւորներու դէմ։» Երբ ծափահարութիւնները կրկնուեցան, «Յարգեցէ՛ք, գոչեց ատենախօսը, յարգեցէք խանդավառութիւնս, անիկա ազատութեան խանդավառութիւնն է։ Ըսէ՛ք, թէ այն պատերազմները զորս ժողովուրդները կը մղեն բռնապետներու հրամանով, կը նմանին այն հարուածներուն որոնք երկու բարեկամներ, վատ խառնակիչէ մը գրգռուած՝ իրարու կու տան մութին մէջ։ Երբ լոյսը ծագի, զէնքը կը համբուրեն և վրէժ կը լուծեն անկէ՝ որ զիրենք կը խաբէր։ Նոյնպէս, այն պահուն ուր թշնամի բանակները պիտի կռուին մերիններուն հետ, եթէ իմաստասիրութիւնը աչքերնուն զարնէ, ժողովուրդները զիրար պիտի գրկեն գահազրկուած բռնապետներու աչքին, մխիթարուած՝ երկրին և գոհունակ երկինքին առջև։» (29 նոյեմբերի նիստ)։

Այս խօսքերուն յառաջ բերած խանդավառութիւնը այն աստիճանի հասաւ որ խռնուեցան ատենախօսին չուրջ զայն ողջագուրելու համար։ Իր պաշտպանած օրէնքը անմիջապէս ընդունուեցաւ. Գ. տը Վօպլանի պաշտօն տրուեցաւ որ քսանըչորս երեսփոխաններէ կազմուած պատգամաւորութեան մը գլուխը անցնելով զայն ներկայացընէ թագաւորին։ Այս օրէնքով ժողովը կը յայտարարէր թէ Թրէվի, Մայանսի և կայսրութեան ուրիշ իշխաններէն կը պահանջէր վերջ մը դնել սահմանագլուխի վրայ կազմուած զինուորական համախմբումներուն։ Միեւնոյն ատեն կը խնդրէր թագաւորէն որ փութացնէ սկսած բանակցութիւնները այն դրամական տուգանքներուն համար զորս կը պարտէին Ալզասի մէջ սեպհականատէր իշխաններուն։

Գ. տը Վօպլան այս օրէնքին ընկերացուց սեղմ և յարգալից ճառ մը որ շատ ծափահարուեցաւ ժողովէն։ «Տէր

Արքայ, կ՚ըսէր ան, այն Ֆրանսացիները որոնք Նանդի հրամանագրին ջնջումովը արտաքսուած՝ իրենց հայրենիքէն, սահմանագլուխներուն վրայ զինուած հաւաքուէին և եթէ պաշտպանուած ըլլային Գերմանիոյ իշխաններէն, Տէ՛ր Արքայ, ձեզի կը հարցնենք, ի՞նչ պիտի ըլլար Լուդովիկոս ԺԴ.ի վարմունքը։ Պիտի հանդուրժէ՞ր այդ համախմբումներուն. ինչ որ ան պիտի ընէր իր իշխանութեան համար, թող Ձեր վեհափառութիւնը ընէ Սահմանադրութեան պահպանմանը համար։»

Լուդովիկոս ԺԶ., որ, ինչպէս ըսինք, որոշած էր մեղմացնել վէթոյին ազդեցութիւնը այնպիսի գործերով որ հանրային կարծիքին հաճելի ըլլային, որոշեց Ժողովին երթալ և անձամբ պատասխանել անոր ղրկած գրութեանը այնպիսի ճառով մը որ կարող ըլլար զայն գոհացնելու։

Դեկտեմբեր 14ի երեկոյին, Թագաւորը գնաց հոն, առաւօտուն պարզ նամակով մը իր այցելութիւնը ծանուցանելէ ետքը։ Խորունկ լռութեան մը մէջ ընդունուեցաւ։ Ըսաւ որ Ժողովին պաշտօնագիրը լուրջ նկատողութեան արժանի էր և թէ այնպիսի պարագայի մը մէջ, ուր Ֆրանսական պատիւը վտանգի ենթարկուած է, կարծած էր պարտական ըլլալ, անձամբ ներկայանալու. թէ Ժողովին դիտաւորութիւնները բաժնելով, բայց վախնալով պատերազմի աղէտէն, փորձ ըրած էր մոլորուած Ֆրանսացիները ետ բերելու, թէ՝ բարեկամական խորհուրդները անօգուտ դարձած ըլլալով, նախատեսած էր պատգամաւորներուն գրութիւնը և իմացուցած էր կայսրընտիր իշխաններուն որ, եթէ Յունուար 15էն առաջ բոլոր համախմբումները չդադրեցնեն, Ֆրանսայի թշնամի պիտի նկատուին. թէ՝ կայսեր գրած էր պահանջելով որ՝ իբր կայսրութեան պետ միջամտէ, և թէ՝ այն պարագային որ գոհացում չստացուի, պատերազմ պիտի առաջարկէր։ Վերջացուց, ըսելով թէ ի զուր պիտի փորձէին զզուանքով պատել իր իշխանութեան գործադրութիւնը, թէ հաւատարմօրէն պիտի պահէր Սահմանադրութիւնը և թէ խորապէս կը զգար թէ ո՛րքան գեղեցիկ էր ազատ ժողովուրդի մը Թագաւորն ըլլալ։ Լռութեան տեղ այս անգամ ծափահարութիւնները տեղացին և Թագաւորը փոխարինութիւն գտնելով մխիթարուեցաւ այն ընդունելութենէն որ ըրեր էին մօտ ժամանակը։ Ժողովը առաւօտուն նկատած ըլլալով որ պաշտօնագրով մը պատասխան պիտի տանար. անմիջապէս չկրցաւ յայտնել Թագաւորին իր գոհունակութիւնը, բայց որոշեց որ անոր ճառը ղրկուի 83 նահանգներուն։ Պատերազմական նախարարը՝ Նարպոն՝ անմիջապէս վրայ հասաւ և յայտնեց ձեռք առնուած միջոցները, ապահովցնելու համար Կայսրութեան ուղղուած խիստ հրամաններուն ազդեցութիւնը։ 150,000 հոգի պիտի հաւաքուէին Հռենոսի վրայ, և ասիկա, կ՚աւելցնէր թէ, անկարելի չէ։ Երեք զօրավարներ պաշտօնի կոչուած էին հրամանատարութեան համար՝ Լիւքնէր, Ռոշամպօ և Լաֆայէթ։ Ծափահարութիւններ ծածկեցին երրորդ անունը։ Նարպոն կ՚աւելցնէր թէ չուտով պիտի մեկնէր սահմանագլուխները այցելելու համար, ապահովուելու բերդերուն վիճակին վրայ և ամենամեծ գործունէութիւն ներշնչելու ինքնապաշտպանութեան աշխատութիւններուն. բայց թէ անշուշտ Ժողովը պիտի տար հարկ եղած դրամագլուխը և թէ չպիտի սակարկէր ազատութիւնը։ «Ո՛չ, ո՛չ» գոչեցին ամէն կողմէ. վերջապէս հարցուց որ, թէև մարաջախտներու օրինական թիւը լրացած էր, Ժողովը չպիտի արտօնէր արդեօք Թագաւորին որ այս աստիճանը շնորհէ երկու զօրավարներու՝ Լիւքնէրի և Ռոշամպոյի, որոնք հայրենիքը ազատելու հոգովը

բեռնաւորուած էին։ Հաւանութեան ձայներ վկայեցին Ժողովին համաձայնութեանը և այն գոհունակութեան զոր երիտասարդ նախարարին գործունէութիւնը իրեն կը պատճառէր։ Այսպիսի վարմունքով մըն է որ Լուդովիկոս ԺԶ. սկսաւ յաջողէր ժողովրդական դառնալ և իրեն չահելու հանրապետականները, որոնք հանրապետութիւն կ'ուզէին միայն այն պատճառաւ որ կը կարծէին թէ թագաւոր մը անկարող է սիրել և պաշտպանել ազատութիւնը։

Այս ձեռք առնուած միջոցներուն յառաջ բերած գոհունակութենէն օգուտ քաղեցին ստորագրել տալու համար քահանաներու դէմ օրէնքին վրայ դրուած վէթօն։ Առաւօտուն դիւանը հրատարակեցին թերթերու մէջ պաշտօնանկութիւնը նախկին քաղաքական պաշտօնեաներու, որոնք իբր ազնուական ամբաստանուած էին և նորերու անուանումը։ Այս նախազգուշութիւններուն շնորհիւ պաշտօնագիրը ընդունուեցաւ անտրտունջ։ Արդէն, Ժողովը այդ բանին կը սպասէր և յառաջ բերած զգայնութիւնը այնքան նեղացուցիչ չեղաւ, որքան կը սպասուէր։ Տեսան թէ ինչ անհուն զգուշաւորութիւններ ընելու ստիպուած էր թագաւորը, գործածելու համար իր առանձնաշնորհումը և թէ ինչքան վտանգաւոր էր իրեն համար զայն գործածելը։ Սահմանադիր Ժողովը, զոր ամբաստանեցին թէ թագաւորը զրկելով պատճառ եղաւ անոր կորստեան, եթէ նոյն իսկ բացարձակ վէթօն անոր քով ըլլար, արդեօք թագաւորը աւելի ազդեցիկ պիտի ըլլա՞ր։ Առկախող վէթօն այս պարագային բացարձակ վէթոյի ազդեցութիւնը չէ՞ր ըներ։ Օրինական իշխանութիւնն էր որ կը պակսէր թագաւորին, թէ՝ կարծիքի ոյժը։ Արդիւնքէն իսկ կը տեսնուի որ, բաւական առանձնաշնորհումներու պակասը չէր որ կորստեան մատնեց Լուդովիկոս ԺԶ.ը, այլ իրեն ճիշդ ցածներուն չարաչար գործածութիւնը։

Ժողովին խոստացուած զինուորական գործունէութիւնը չդանդաղեցաւ։ Պատերազմական ծախքերու համար և երկու մարաջախտներուն՝ Լիւքնէրի և Ռոշամպոյի անուանումին համար առաջարկութիւնները առանց ընդհատելու իրարու յաջորդեցին։ Լաֆայէթ, դուրս բերուելով իր քաշուած անկիւնէն, ուր գացած էր հանգչելու իր երեք տարուան յոգնութիւնէն, սիրալիր կերպով մը ընդունուեցաւ։ Ազգային պահակախումբի զօրապետները անոր ընկերացան Փարիզէն դուրս ելած ատեն և ամէն բան իրեն ապացուցանեց թէ, Լաֆայէթ անունը չէր մոռցուած և թէ զինք կը նկատէին իբր ազատութեան հիմնադիրներէն մին։

Եւ սակայն, Լէօպոլտ, բնականէն խաղաղասէր, պատերազմ չէր ուզեր, որովհետև գիտէր որ պատերազմը յարմար չէր իր շահերուն, բայց կը փափաքէր որ գնահատելի ուժի մը կռթնած վեհաժողով մը գումարուի, հաշտութիւն մը յանգելու և Սահմանադրութեան մէջ կարգ մը բարեփոխութիւններ մտցնելու համար։ Տարագիրները ոչ թէ կը փափաքէին զայն բարեփոխել, այլ ջնջել. աւելի խոհական և լաւագոյն դաստիարակութեան մը տէր ըլլալով, կայսրը գիտէր որ ներողամիտ աչքով նայելու է նոր գաղափարներուն և թէ ինչ որ կրնային փափաքիլ, շատ շատ թագաւորին դարձնելն էր քանի մը առանձնաշնորհումներ և վերադարձնալ օրէնսդիր մարմինին կազմութեան՝ հաստատելով Երեսփոխանական Ժողովին հետ Ծերակոյտը, փոխանակ միայն Երեսփ. Ժողովի(*)։

---

(*) Պուլէի Յիշատակներուն մէջ կը գտնենք ուրուագիծը օտար պետութեանց սահմանադրութիւններուն։ Անիկա կ'ըսէ որ, Շուէտի թագաւորը շատ տարակոյսի մէջ էր կայսեր և անոր



ԹԱԳԱՒՈՐԸ Կ'ԵՐԴՆՈՒ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

*Այս վերջին ծրագիրն էր մանաւանդ որ ամենէն աւելի վախ կը ներշնչէր և զոր յաճախ Ֆէօյեաններու կամ սահմանադրականներու երեսին կը զարնէին։ Ճիշդ է որ այս կուսակցութիւնը սահմանադրութեան օրերուն, եթէ մերժած*

---

*զինակիցներուն իրական ծրագիրներուն վրայ. մինչ կայսրը մտադրած ըլլալու էր այլ ևս Ֆրանսայի գործերով չզբաղիլ։ Կայսրուհին այս բանէն տեղեկութիւն ունէր. Գուշէ կ'ըսէ թէ գիտէր որ այդ միջոցին անիկա իր բոլոր ազդեցութիւնը կը բանեցնէր վեհապետներուն վրայ, որոնցմէ մէկուն գրած էր նոյն իսկ շատ խիստ նամակ մը, ուր կը յայտնէր թէ ինչպէ՛ս Բրուսիոյ թագաւորը, իր քրոջը հանդէպ եղած պարզ անտարբերութեան մը համար բա-*

է Մերակոյտը, խրատուն վախնալով որ ազնուականութիւնը հոն կ'ապաստանի, այսօր իր վախերը նոյնը մնացած չէին. ընդհակառակը, սա խրատացի յոյսն ունէր որ գրեթէ ինքը մինակը պիտի կազմէր զայն։ Շատ մը սահմանադրականներ կատարեալ ոչնչութեան մը մէջ խորտակուած, հոն առիթ մը պիտի գտնէին քաղաքական բեմին վրայ վերերեւելու։ Եթէ ուրեմն, Մերակոյտը իրենց տեսակէտներուն մէջ չկար, անիկա գտնէ իրենց շահերուն համապատասխան էր։ Ճիշդ է որ թերթերը յաճախ կը խօսէին այս բանին վրայ և թէ այս շշուկը ամէն կողմ կը պտըտէր։ Յեղափոխութեան ընթացքը որքա՛ն արագ եղած էր։ Այսօր աջակողմը կազմուած էր նախորդ ձախակողմէն։ Ի՞նչ տարբերութիւն 89էն հետ. և ինչպէ՞ս յիմարական ընդդիմութիւն մը դէպքերը փութացուցած էր։

Լէօփոլտ, ուրեմն, Լուդովիկոս ԺԶ.ի համար միայն այս բարեօքումը կարելի կը տեսնէր։ Մինչեւ այդ, իր նպատակն որ բանակցութիւնները երկարաձգել և առանց Ֆրանսայի հետ յարաբերութիւնը խզելու, ինքզինքը անոր տալ հաստատականութեամբ։ Բայց իր պատասխանով նպատակէն շեղեցաւ։ Այդ պատասխանով անիկա յայտնեց թէ Ռատիզպոնի ժողովին եզրակացութիւնները կը մերժէին ոևէ փոխարինութիւն ընդունիլ Ալզասի ահյհականտէր իշխաններուն համար։ Ոչինչ այնքան ծիծաղելի է որքան այսպիսի պնդում մը, որովհետեւ միեւնոյն տիրապետութեան ներքեւ գտնուող ամբողջ երկիր մը միեւնոյն օրէնքներով պէտք է կառավարուի. եթէ Կայսրութեան իշխաններ հողեր ունէին Ֆրանսայի մէջ, պէտք էր որ ենթարկուէին ուստատեղն իրաւունքներու ջնջման օրէնքին. և Սահմանադիր Ժողովը արդէն շատ բան ըրած էր, անոնց դրամական փոխարինութիւններ ընծայելով։ Անոնցմէ ոմանք այս մասին արդէն բանակցած ըլլալով, Ռատիզպոնի ժողովը չեղ'ալ կը համարէր անոնց պայմանադրութիւնները և կ'արգիլէր ոևէ կարգադրութիւն ընդունիլ։ Այսպէսով Կայսրութիւնը կը յաւակնէր չճանչնալ յեղափոխութիւնը իրեն վերաբերած մէկ կէտին մէջ։ Գալով տարագիրներու համախմբումին, Լէօփոլտ, առանց բացատրութիւն տալու անոնց ցրուումին մասին, կը պատասխանէր Լուդովիկոս ԺԶ.ի թէ Թրէվի իշխանը ֆրանսական կառավարութեան խիստ հրամաններուն վրայ, շուտով թշնամութեանց ենթարկուէր թերեւս. այդ պատճառաւ մարաջախտ Պէնտէրի հրաման եղած է անոր օգնութեան հասնիլ։

Աւելի դէշ հաշուուած պատասխան մը չէր կրնար ըլլալ. անիկա կը ստիպէր Լուդովիկոս ԺԶ.ը, ինքզինքը կասկածելի չցուցնելու համար կորովի միջոցներ ձեռք առնել և պատերազմ առաջարկել։

Տըլէսար անմիջապէս Ժողովին զըրկեց այս պատասխանը տեղեկացնելու համար, և վկայելու թէ Լէօփոլտի կամանքը՝ զարմացում կը պատճառէր թագաւորին։ Նախարարը պահանջեց թէ հաւանականաբար Կայսրը խաբուած էին և թէ զայն սուտ տեղը համոզած էին թէ Թրէվի իշխանը լաւ դրացիի բոլոր պարտականութիւնները կատարած է։ Անկէ զատ Տըլէսար հաղորդեց այն պատասխանը զոր ղրկած էին Լէօփոլտին։ Անոր ազդարարած էին որ հակա-

---

նակ մը մացուցած էր Հոլանտա, մինչդեռ ինքն իսկ կը հանդուրժէր այն նախատինքներուն և լրութիւններուն, որուն կ'ենթարկէին Ֆրանսայի թագուհին, անոր՝ ստորճանէ և յարգանքէ վար իջնելուն և թագաւորի մը դահուն փճանալուն, թագաւորի մը որ իր փեսան էր և զինակիցը։

ռակ իր պատասխանին և մարաջախտ Պէնտէրին տրուած հրամաններուն, եթէ իշխանները որոշ պայմանաժամին, այսինքն Յունվար 15ին, Ֆրանսայի պահանջին գոհացում չտան, անոնց դէմ պիտի գործածուի զինու զօրութիւն։ «Եթէ այս յայտարարութիւնը, կ'ըսէր Լուդովիկոս ԺԶ. Դեկտեմբեր 31ին Ժողովին ղրկած նամակին մէջ, յուսացուած արդիւնքը չտայ, եթէ Ֆրանսայի ճակատագիրն է իր պաշտպաններուն և զինակիցներուն դէմ կռուիլ, Եւրոպայի ճանչցնել պիտի տամ մեր դատին արդարութիւնը. Ֆրանսական ժողովուրդը իր քաջութեամբը զօրավիգ պիտի ըլլայ անոր և ազգը պիտի տեսնէ թէ իմ ունեցած չահերս համապատասխան են իրեններուն, և թէ անոր արժանապատուութեան և ապահովութեան պահպանումը պիտի նկատեմ իբր ամենէն էական իմ պարտականութիւններուս։»

Այս բառերը որոնցմով Թագաւորը, ընդհանուր վտանգի միջոցին կը թուէր միանալ ազգին հետ, բուռն կերպով ծափահարուեցան։ Վաւերաթուղթերը յանձնուեցան դիւանագիտական յանձնախումբին, որպէս զի Ժողովին համար անմիջական տեղեկագիր մը պատրաստէ։

Թագուհին անգամ մըն ալ ծափահարուեցաւ Օբերայի մէջ, ինչպէս իր փայլուն և աղուեցիկ օրերուն, և վերադարձաւ բոլորովին ուրախ, ըսելու իր ամուսինին որ գիտքը ընդունած էին ինչպէս ժամանակաւ։ Բայց ասոնք համակրանքի վերջին ցոյցերն էին զորս կը ստանար այս ժողովուրդէն որ երբեմն այնքա՛ն պաշտած էր իր արքայական չնորհները։ Հաւատարութեան այն զգացում, որ այնքան երկար ատեն խեղդուած կը մնայ մարդոց մէջ և որ այնքան անդրդուելի է՝ երբ կ'արթննայ, կը յայտնուէր արդէն ամէն կողմերէ։ 1791ի վերջերն էր. Ժողովը Ջնջել ուզեց ամանորի հին սովորու-

թիւնը և որոշեց որ այն մեծարանքները որոնք կ'ըլլային Թագաւորին այդ հանդիսաւոր օրուան մէջ, այլ ևս տեղի չունենան։ Գրեթէ նոյն միջոցին, երեսփոխանական պատգամաւորութիւն մը գանգատեցաւ որ իր առջև դահլիճին երկու դուռները մէկէն չէին բացած։ Վիճաբանութիւնը զայթակղալի եղաւ, և Ժողովը Լուդովիկոս ԺԶ.ի նամակ մը գրելով վերցուց Տէր Արքայ և Վեհափառութիւն տիտղոսները։ Ուրիշ օր մըն ալ երեսփոխան մը Թագաւորին ներկայ մտաւ գլխարկը գլուխը և անպատչաճ արդուզարդով։ Այս վարմունքը յաճախ յառաջ կու գար արքունիքի մարդոց՝ երեսփոխաններուն բրած ընդունելութենէն, և այս ցոյցերուն մէջ մէկ կողմին հպարտութիւնը միւս կողմինէն երբեք ետ մնալ չէր ուզեր։

Նարպոն իր պաշտօնը կը շարունակէր հաստատուն գործունէութիւնով մը։ Սպառնալիքի ենթարկուած սահմանագլուխին վրայ երեք բանակներ հաստատուեցան։ Ռոչամպօ, ծերունի զօրավար, որ ժամանակաւ լաւ վարած էր պատերազմը, բայց այսօր հիւանդոտ, վշտացած և դժգոհ, հրամանատարութիւնը ունէր այն բանակին որ հիւսիսային կը կոչուէր և տեղաւորուած էր Ֆլանտրիոյ մէջ։ Լաֆայէթ կեդրոնի բանակը առած էր և Մէցի մէջ բանակած էր։ Լիւքնէր, հին պատերազմիկ, միջակ զօրավար, քաջ զինուոր և իր զուտ զինուորական բարքերով շատ ժողովրդականացած, հրամանատարութիւնը կ'ընէր Ալզասի մէջ գտնուող բանակին։ Ասոնք էին ինչ որ երկարատեւ խաղաղութիւն մը և ընդհանուր դասալքութիւն մը մեզի ձգած էր իբրև զօրավար։

Ռոչամպօ, դժգոհ՝ նոր վարչութենէն, բանակին մէջ տիրող անկարգապահութենէն զայրացած, չարունակ կը գանգատէր և ոև է յոյս չէր տար նախարարութեան։ Լաֆայէթ, երիտա-

սարդ, գործունեայ, նախանձախնդիր չուտով գնահատելու հայրենիքը պաշտպանելով, կարգապահութիւնը կը վերահաստատէր իր զօրագունդերուն մէջ և կը յաղթէր բոլոր դժուարութիւններուն որոնք կը ծագէին սպաներու դէշ տրամադրութենէն. սպաք բանակին ազնուականներն էին: Զինուորք հաւաքած էր և անոնց պատուոյ լեզուով խօսելով, ըսած էր որ պարտական են բանակէն հեռանալ եթէ հաւատարմօրէն ծառայել չէին ուզեր. թէ այդ պարագային, ինքը յանձն կ'առնէր ամենուն հայթայթել կա՛մ ապաստաններ Ֆրանսայի մէջ, կա՛մ անցագիրներ օտար երկիրներու համար. բայց եթէ կը յարատևէին ծառայել, իրենցմէ նախանձախնդրութիւն և հաւատարմութիւն կը սպասէր: Այսպէսով, յաջողած էր իր բանակին մէջ հաստատել լաւագոյն կարգ մը որ չէր տիրեր միւս բանակներուն մէջ: Գալով Լիւքնէրին, զուրկ քաղաքական համոզումէ, և հետևաբար, դիւրաւ յարմարող ամէն ռէժիմի, շատ բան կը խոստանար Ժողովին և իրաւ ալ յաջողեր էր իր զինուորները իրեն կապել:

Նարպոն ճամբորդեց ամենամեծ արագութեամբ և Յունվար 11ին եկաւ իր արագ հետախուզութեան հաշիւը տալու: Ծանոյց որ բերդերուն նորոգութիւնը շատ յառաջացած էր, որ Տիւնքերքէն մինչև Պըզանսոն բանակը կը ներկայացնէր 240 գումարտակի և 160 ձիաւոր վաշտերու գանգուած մը, որ իր հետ ունէր 200,000 հոգիի անհրաժեշտ թնդանօթները և վեց ամսուան համար պաշար: Ամենամեծ գովեստներ ըրաւ կամաւոր ազգային պահակախումբերուն վրայ, և ապահովցուց թէ քիչ ատենէն անոնց սպառազինութիւնը պիտի լրանայ: Երիտասարդ նախարարը անշուշտ կը տարուէր եռանդագին պատրանքէ մը, բայց իր դիտողութիւնները այնքան ազնիւ էին և իր աշխատութիւնները այնքան արագ, որ Ժողովը զայն ծածկեց ծափահարութիւններով, անոր տեղեկագիրը հանրային երախտապարտութեան ընծայեց և զայն ղրկեց բոլոր նահանգներուն. սակայն սովորական միջոց մըն էր իր գնահատումը յայտնելու բոլոր այն բաներուն համար որոնք զինքը գոհ ձգած էին:

1792 տարւոյ սկիզբը պատերազմը օրուան ամենամեծ խնդիրը դարձած էր, անիկա յեղափոխութեան համար նոյն իսկ գոյութեան խնդիր էր: Իր թշնամիները հիմա արտասահման փոխադրուած ըլլալով, հոն պէտք էր երթալ զիրենք փնտռելու և անոնց յաղթելու: Թագաւորը, բանակին պետը, արդեօք անկեղծօրէն պիտի գործէ՞ր իր ազգականներուն և իր նախկին դարպասականներուն դէմ: Այս էր այն կասկածը, որու մասին կարևոր էր ազգը վստահացնել: Պատերազմի այս խնդիրը ժաքոպէններուն մէջ յուզուած էր, որոնք ոչ մէկ խնդիր կը ձգէին առանց հոյակապ որոշում մը տալու անոր մասին: Ինչ որ եզական պիտի թուի, այն է որ, ծայրայեղ ժաքոպէնները և Ռոպէսփիէռ՝ իրենց պետը, խաղաղութեան կողմն էին, և չափաւոր ժաքոպէնները կամ ժիրոնտէնները՝ պատերազմի կուսակից: Ասոնք իրենց գլուխն ունէին՝ Պրիսօ և Լուվէ: Պրիսօ, իր տաղանդով և իր ազդեցութեամբը պատերազմին կողմը կը բռնէր. Լուվէի և բոլոր ժիրոնտէններուն հետ կը մտածէր թէ որ պատերազմը յարմար էր ազգին, որովհետև անիկա վտանգաւոր անորոշութեան մը վերջ պիտի դնէր և դիմակազերծ պիտի ընէր թագաւորին ճշմարիտ դիտաւորութիւնները: Այս մարդիկը որդինքը դատելով իրենց խանդավառութեան համեմատ, չէին կրնար հաւատալ որ, եթէ թագաւորին յանցանքով ազգը քանի մը անցողակի անյաջողութիւն կրէր, անմիջապէս պիտի լուսաբանուէր և գահընկէց պիտի ընէր անհաւատարիմ պետ մը: Ի՞նչպէս կ'ըլլար որ Ռոպէսփիէռ և

միւս Ժաքօպէնները չէին ուզեր այսպիսի վճռականութեան մը յանգիլ, որ այնքան շուտափոյթ և վերջնական ելք մը պիտի ունենար։ Այս բանը միայն նենգադրութիւններով կարելի է բացատրել։ Երկչոտ Ռոպէսփիէռ արդեօք կը վախնա՞ր պատերազմէն, կամ թէ կը պայքարէր թերեւս պատերազմին դէմ, որովհետեւ Պրիսօ, Ժաքօպէններու մէջ իր մրցակիցը՝ անոր կողմն էր և երիտասարդ Լուվէն պատերազմը ճարտարութեամբ պաշտպանած էր։

Ինչ որ ալ ըլլայ, խաղաղութեան կողմը կը բռնէր ծայրայեղ յամառութեամբ մը։ Քորտըլիէններէն անոնք որ միեւնոյն ատեն Ժաքօպէն էին, վճռականութեան ներկայ եղան և Ռոպէսփիէռին կարծիքը պաշտպանեցին։ Կարծես թէ ամենէն աւելի կը վախնային որ պատերազմը չար առաւելութիւններ կուտար Լաֆայէթին և անոր առիթ կ՚ընծայէր քիչ ատենէն զինուորական բռնապետութիւն հաստատելու. այս բանէն է որ Քամիլ Տէմուլէն շարունակ կը վախնար, անդադար զայն կ՚երեւակայէր յաղթական բանակի մը գլուխը, ջախջախելով Ժաքօպէն և Քորտըլիէ, ինչպէս ըրած էր Շան տը Մարսի մէջ։ Լուվէ և Ժիրոնտէնները ուրիշ նպատակ մըն ալ կը վերագրէին Քորտըլիէններուն և կը կարծէին որ յանձին Լաֆայէթի կը հալածէին նաև Օրլէանի Դուքսին թշնամին, որուն հետ կ՚ըսէին թէ Քորտըլիէնները գաղտնապէս միացած էին։

Այս Օրլէանի Դուքսը որ կը տեսնենք թէ նորէն երեւան կուգայ շատ աւելի իր թշնամիներուն կասկածներուն քան թէ յեղափոխութեան մէջ, այդ միջոցին գրեթէ անյայտացած էր։ Սկիզբները կցեր էին անոր անունը գործածել և ինքն ալ կրնար քիչ մը յոյս դնել անոնց վրայ, որոնց իր անունը փոխ տուած էր, բայց անկէ ի վեր ամէն բան շատ փոխուած էր, ինքն իսկ զգալով թէ ժողովրդային կուսակցութեան մէջ բնաւ տեղ չունէր, ջանացած էր արքունիքին նետուիլ սատանայ, Սահմանադիր ժողովին վերջին օրերուն և մերժուած էր։ Օրէնսդիր ժողովին ատեն զայն պահեցին ծովակալներու աստիճանին մէջ և նորէն թագաւորը շահելու փորձեր ըրաւ։ Այս անգամ անոր քով տարուելով բաւական երկար տեսակցութիւն մը ունեցաւ, և գէշ ընդունելութիւն չգտաւ։ Կրկին պալատ պիտի երթար. գնաց. թագուհիին սպասը դրուած էր և բոլոր արքունականները մեծ թուով հոն էին. հազիւ թէ զինքը նշմարեցին, ամենէն նախատալի բառերը արտասանուեցան։ «Ուշադրութի՛ւն ըրէք պնակներուն» կը գոչէին ամէն կողմէ, իբր թէ վախնային որ Դուքսը թոյն նետէր հոն։ Զայն կը հրէին, ոտքերուն վրայ կը կոխէին և ստիպեցին զինքը որ քաշուէր։ Սանդուղներէն իջած ատեն նոր նախատինքներ ընդունեց և դուրս ելաւ վիրաւորուած, կարծելով որ թագաւորն ու թագուհին իրեն պատրաստեր էին այս ստորնացուցիչ տեսարանը։ Սակայն թագաւորն ու թագուհին չամչցուեցան արքունականներուն այս անխոհեմութեան վրայ, որուն մասին կատարելապէս անտեղեակ էին։ Այս իշխանը առաւել քան երբէք զրգռուած ըլլալու էր, բայց այս պատճառաւ առաջուընէ աւելի գործունեայ, աւելի ճարպիկ կուսակցապետ չեղաւ։ Իր այն բարեկամները, որոնք Ժաքօպէններու և Ժողովին մէջ տեղ մը ունէին, անշուշտ քիչ մը աւելի եռանդուն ըրին. ասկէ կարծեցին որ իր խռովարար քաղաքականութիւնը կրկին մէջտեղ ելաւ և մտածեցին որ իր յաւակնութիւնները և յոյսերը կը վերածնէին զանոնց վտանգներուն հետ։

Ժիրոնտէնները կարծեցին որ, ծայրայեղ Քորտըլիէնները և Ժաքօպէնները խաղաղութիւնը կը պաշտպանէին, Լաֆայէթը՝ Օրլէանի դուքսին մրցակիցը՝ զրկելու համար այն յաջողութիւններէն

որ պատերազմը կրնար տայ անոր ։ Ինչ որ ալ ըլլայ, պատերազմը, զոր ժաքոպէնները կը մերժէին, բայց ժիրօնտէնները կը պաշտպանէին, ժողովին մէջ քուէ տացաւ, ուր այս վերջինները կը տիրապետէին ։ Ժողովը նախ և առաջ Ցունվար 1ին ամբաստանութեան ենթարկեց Թագաւորազուն իշխանը, Թագաւորին եղբայրը, տ'Արդուա կոմսը, տը Քօնտէ իշխանը, Քալօնը, Միրապօ կրտսերը, և Լաքէօր, իբր թշնամանող Ֆրանսայի դէմ. ամբաստանագիր մը վաւերացման ենթակայ չըլլալով այս անգամ վէթոյէն վախնալիք չունէին ։ Տարագիրներուն ինչքերուն գրաւումը և անոնց հասոյթներուն գանձումը Պետութեան ի նպաստ, որ հրամայուած էր այն օրէնքով որ չվաւերացուեցաւ, կրկին յայտարարուեցաւ ուրիշ օրէնքով մը որուն Թագաւորը ո և է դիմադրութիւն չըրաւ ։ Ժողովը հասոյթները կը գրաւէր, իբր պատերազմական տուգանք. Թագաւորազուն իշխանը գահակալ ըլլալու իրաւունքէն զրկուեցաւ ըստ նախապէս տրուած որոշումին ։

Կայսեր վերջին դիմումին վրայ տեղեկագիրը վերջապէս ներկայացուեցաւ ժողովին Ցունվար 14ին Ժանսօնէի միջոցաւ ։ Դիտել տրուեցաւ որ Ֆրանսա միշտ իր գանձը և զինուորները չխնայած էր Աւստրիոյ համար, առանց երբէք փոխարէնը ստանալու. Թէ 1756ին հաստատուած զինակցութեան դաշնագիրը բռնաբարուած էր Բիլնիցի և յաջորդ յայտարարութիւններով, որոնց նպատակն էր վեհապետներու զինուորական միութիւն մը յառաջ բերել. Թէ այդ դաշնագիրը բռնաբարուած էր մանաւանդ տարագիրներու ապաստանումով, որուն աչք կը գոցէին և նոյն իսկ կ'օգնէին կայսրութեան իշխանները ։ Ժանսօնէ աւելցուց նաև որ, թէև նոր հրամաններ տրուած էին համախմբումները ցրուելու համար, այս յայտնի հրամանները գործադրուած չէին. Թէ Հաւ-

նովէն անդին չէին դադրած ճերմակ զարդանշան կրելէ, Թէ ազգային գինանշանը նախատուած էր և ֆրանսացի ճամբորդներ նեղութեան ենթարկուած էին, Թէ՝ հետևաբար՝ պէտք էր կայսրէն վերջին բացատրութիւն մը պահանջել 1756ի դաշնագրութեան վրայ ։ Հրամայեցին այս տեղեկագիրը տպել և օրակարգ անցընել ։

Նոյն օրը Կուատէ ատեան բարձրացաւ. «Բոլոր այն եղելութիւններուն մէջ, ըսաւ, որոնք հաղորդուած են ժողովին, ամենէն աւելի իմ ուշս գրաւեց վեհաժողովի մը ծրագիրը որուն նպատակն է ֆրանսական Սահմանադրութեան մէջ փոփոխութիւններ մըտցընել. այդ յառաջագիծին մասին կասկած կար երկար ատենէ ի վեր և իբր կորիզի մատնանշուած է յանձնախումբերու և նախարարներու կողմէ» ։ Եթէ ճիշդ է, աւելցուց Կուատէ, որ այս դաւադրութեան կ'առաջնորդեն այնպիսի մարդիկ, որոնք անով կը կարծեն իրենց քաղաքական ոչնչութենէն դուրս ելլել, ուր նոր ինկած էին, եթէ ճիշդ է որ գործադիր իշխանութեան անդամներէն ոմանք իրենց յարաբերութիւններուն բոլոր ոյժովը կ'օգնեն այս զզուելի դաւադրութեան, եթէ ճիշդ է որ կ'ուզեն զմեզ մղել երկարաձգումներով և յուսախաբութիւններով ընդունիլ այս ամօթալի հաշտութիւնը, Ազգային Ժողովը պէ՞տք է որ աչք գոցէ այսպիսի վտանգներու ։ «Երդնո՛ւնք, կը գոչէ ատենախօսը, ամենքս ալ հոս մեռնիլ, քան թէ....։» Չեն ձգեր որ վերջացնէ. ամբողջ ժողովը ոտքի կ'ելլէ գոչելով. «Այո՛, այո՛, կ'երդնո՛ւնք.» և խանդավառութեան մէջ, անարժան և դաւաճան կը յայտարարուի ամէն Ֆրանսացի որ մասնակցի վեհաժողովի մը, որուն նպատակն է Սահմանադրութիւնը փոխել ։ Այս օրէնքը նախկին սահմանադիրներու և Տըլէսարին դէմ ուղղուած էր ։ Մանաւանդ այս վերջինն էր

զոր կ'ամբաստանէին թէ բանակցութիւնները կ'երկարաձգէր։ 17ին, Ժանսօնէի տեղեկագրին վրայ վիճաբանութիւնը կրկին ձեռք առին, և որոշուեցաւ որ, այլ եւս թագաւորը միայն յանուն ազգին պիտի բանակցէր և պիտի պահանջէր կայսրէն որ, յառաջիկայ Մարտ 1էն առաջ վերջնականապէս բացատրութիւն տայ։ Թագաւորը պատասխանեց որ, տասնեւհինգ օրէն աւելի կար որ դրական բացատրութիւններ ուզած է Լէօպոլտէն։

Այդ միջոցին, իմացուեցաւ որ Դրէվի իշխանը, սարսափելով ֆրանսական դահլիճին պնդումէն, նոր հրամաններ տուած էր որպէս զի համախմբումները ցրուին, և իր սահմաններուն մէջ հաստատուած զէնքի մթերանոցները ծախուին, զօրահանութիւնը և զինուորական փորձերը արգիլուին. այս հրամանները խրատ ու գործադրութեան դրուած էին։ Այն պատմագրութեանց մէջ, ուր կը գտնուէին, այսպիսի լուր մը գոհութեամբ ընդունուեցաւ։ Այդ բանին մէջ անանկ ուզեցին ունայն և ապարդիւն ցոյցեր, և յամառեցան Լէօպոլտի վճռական պատասխանը պահանջել։

Նախարարութեան մէջ պառակտումներ կային Պէրթրան տը Մոլէվիլի և Նարպօնի միջեւ. Պէրթրան կը նախանձէր պատերազմական նախարարին ժողովրդականութենէն և կը մեղադրէր զինքը՝ Ժողովին ըրած զիջումներուն համար։ Նարպօն կը գանգատէր Պէրթրան տը Մոլէվիլի վարմունքէն և անոր հակասահմանադրական արարքներէն և կ'ուզէր որ թագաւորը զայն հանէ նախարարութենէն։ Քահիէ տը Ժէրվիլ անոնց միջեւ հաշտարարութիւնը կ'ուզէր պահել, բայց առանց յաջողելու։ Յուակնեցան քաղ որ սահմանադրական կուսակցութիւնը կ'ուզէր Նարպօնը նախարարապետի աստիճանին հասցնել. կ'երեւայ նոյն իսկ որ թագաւորը լարեցին, զայն վախցուցին Նարպօնի ժողովրդականութենէն և փառասիրութենէն, անոր մէջ մասնանշեցին երիտասարդ յաւակնոտ մը որ դահլիճը կառավարել կ'ուզէր։ Թերթերը տեղեկացան այս պառակտումին. Պրիսօ և Ժիրօնտ եռանդով պաշտպանեցին շնորհազուրկ ըլլալու սպառնալիքին տակ եղող նախարարը և ուժգնօրէն յարձակեցան անոր ընկերակիցներուն և թագաւորին վրայ։ Նամակ մը, զոր Հիւսիսի երեք զօրավարները գրած էին Նարպօնին և որուն մէջ կը յայտնէին թէ կը վախնան անոր պաշտօնանկութենէն, զոր անխուսափելի կը նկատէին, հրատարակուեցաւ։ Թագաւորը անմիջապէս զայն պաշտօնանկ ըրաւ. բայց այս բանին ազդեցութիւնը մեղմացնելու համար Պէրթրան տը Մոլէվիլի հրաժարականն ալ ծանոյց։ Այլ սակայն առաջինին ազդեցութիւնը նուազ մեծ չեղաւ. արտակարգ իրարանցում մը անմիջապէս պայթեցաւ և Ժողովը ուզեց յայտարարել, ըստ այն բանաձեւին զոր ժամանակաւ Նէքէրի համար գործածուած էր, թէ Նարպօն իրեն հետ ազգին վստահութիւնը կը տանէր և թէ ամբողջ նախարարութիւնը չէր վայելեր իր վստահութիւնը։ Կ'ուզէին սակայն որ այս ընդհանուր դատապարտութեան մէջ բացառութիւն կազմէ Քահիէ տը Ժէրվիլ որ միշտ պայքարած էր Պէրդրան տը Մոլվիլի դէմ և որ քիչ ժամանակ առաջ անոր հետ ուժգին վիճաբանութիւն մը ունեցած էր։ Շատ մը իրարանցումներէ ետք Պրիսօ ուզեց ապացուցանել որ Տըլէսար ազգին վստահութիւնը մաշած է։ Այս նախարարը դիւանագիտական յանձնախումբին յանձներ էր իր՝ Քօնիցի հետ ունեցած թղթակցութիւնը ինչ որ անպատեհ բան մըն էր, և նոյն իսկ Քօնիցի աննպաստ գաղափար մը կու տար Ֆրանսայի վիճակին վրայ և կը թուէր որ քաջալերուած էր Լէօպոլտի վար-

*մունքը և լեզուն։ Պէտք է գիտնալ որ Տըլէսար և իր ընկերակիցը՝ Տիւբօռ-Տիւզէրդըր այն երկու նախարարներն էին որ աւելի մասնաւորապէս Ֆէօյեաններուն կը պատկանէին և որոնց դէմ ամենէն աւելի ոխ կար, որովհետեւ զիրենք կ'ամբաստանէին թէ վեհաժողովի ծրագրին համակարծիք էին։*

*Ժողովին ամենէն փոթորկալի նիստերէն մէկուն մէջ, անբաղդ Տըլէսար Պրիսոյէն ամբաստանուեցաւ որ ազգին արժանապատուութիւնը վտանգի կ'ենթարկէ, թէ ժողովը նախապէս չէր տեղեկացուած պետութիւններու համաձայնութեանը և Բիլնիցի յայտարարութեանը. թէ իր Յիշատակներուն մէջ հակասահմանադրական վարդապետութիւններ կը դաւանէր, թէ Քօնիցի սխալ գաղափար մը տուած էր Ֆրանսայի վիճակին վրայ, թէ բանակցութիւնները երկարաձգած էր և թէ զանոնք վարած էր հայրենիքի շահերուն հակառակ կերպով մը. Վէրժնիօ միացաւ Պրիսոյին և Տըլէսարին դէմ եղած դժգոհութիւններուն վրայ նորեր աւելցուց։ Զայն մեղադրեց թէ երբ Ներքին գործոց նախարար էր, շատ երկար ատեն թղթապանակի մէջ պահած էր այն հրամանագիրը, որով Քօնդան Ֆրանսայի կը միանար, և այսպէսով պատճառ եղած էր Աւինեոնի կոտորածներուն։ Յետոյ, Վէրժնիօ աւելցուց. «Այս ատենէն ուրկէ ձեզի կը խօսիմ, կը տեսնուի այն պալատը ուր ապականած խորհրդատուներ կը մոլորեցնեն և կը խաբեն թագաւորը, զոր Սահմանադրութիւնը մեզի տուաւ։ Կը տեսնեմ պալատին պատուհանները ուր հակայեղափոխութիւնը կը պատրաստեն և ուր միջոցներ կը հնարեն զմեզ վերստին խորասուզելու համար գերութեան մէջ։ Հին ժամանակներուն և բռնապետութեան անունով սարսափը յաճախ դուրս ելած է այդ հռչակաւոր պալատէն, թող այսօր անոր հոն մանէ օրէնքի անունով. թո՛ղ հոն թափանցէ ամէն սրտերու. թո՛ղ անոր բոլոր բնակիչները գիտնան որ մեր Սահմանադրութիւնը միայն թագաւորին կ'ընծայէ անբռնաբարելիութիւնը։»*

*Ամբաստանութեան ենթարկելու օրինագիծը անմիջապէս քուէի դրուեցաւ և ընդունուեցաւ (Մարտ 10ի նիստին) Տըլէսար դրկուեցաւ ազգային բարձրագոյն ատեանին, որ Օրլէանի մէջ հաստատուած էր և պաշտօն ունէր բոլոր Սահմանադրութեան, պետական ոճիրները դատելու։ Թագաւորը տեսաւ անոր մեկնիլը ամենամեծ վիշտով։ Իր վստահութիւնը ընծայած էր անոր և շատ կը սիրէր զայն անոր չափաւոր և խաղաղասիրական տեսակէտներուն պատճառաւ։ Տիւբօռ-Տիւզէրդը, սահմանադրական կուսակցութեան նախարարը, նոյնպէս ամբաստանութեան մը սպառնալիքին ներքեւ էր, բայց զայն կանխեց, խնդրեց որ ինքզինքն արձակեն, անպարտ արձակուեցաւ և անմիջապէս իր հրաժարականը տուաւ։ Քահիէ տը Ժէրվիլ ալ հրաժարեցաւ, և այսպէսով թագաւորը զրկուած եղաւ այն միակ նախարարութենէն, որ ժողովին առջեւ հայրենասիրութեան համբաւ ունէր։*

*Բաժնուելով այն նախարարներէն, զորս Ֆէօյեանները իրեն տուած էին և չգիտնալով թէ այս փոթորիկին մէջ որո՛ւ վրայ կրնար յենուլ, Լուդովիկոս ԺԶ. որ Նարպօնը ճամբած էր, որովհետեւ շատ ժողովրդական էր, մտածեց Ժիրօնտին կապուիլ որ հանրապետական էր. ճիշդ է որ այդպէս էր, թագաւորէն կասկածելուն համար. թագաւորը կրնար սիրաշահիլ, եթէ ինքզինքը յանձնէր Ժիրօնտին. բայց պէտք էր որ բաց սրտով ինքզինքը յանձնէր և բարեմտութեան այս յաւիտենական խնդիրը հոս ալ կը յարուցուէր, ինչպէս ամէն առիթներու մէջ։ Անշուշտ, Լուդովիկոս ԺԶ. անկեղծ էր, երբ կուսակցութեան*



ՏԻՒՄՈՒՐԻԷՅԻ ԵՒ ԹԱԳՈՒՀԻԻՆ ՏԵՍԱԿՑՈՒԹԻՒՆԸ

մը կը վստահէր․ բայց այդ բանը կ՚ընէր ցաւելով և նեղսրտութեամբ։ Այսպէս, անմիջապէս որ այդ կուսակցութիւնը դժուար, բայց անհրաժեշտ պայման մը առաջարկէր, կը մերժէր զայն․ կասկածը անմիջապէս կը ծնէր, կծուութիւնը կը յաջորդէր, և ահա՛ խզումը հետեւանքը կ՚ըլլար այս դժբաղդ միութիւններուն, որոնք տեղի ունեցած էին բոլորովին հակառակ շահերով գրաւուած այս սիրտերուն մէջ։ Այսպիսով է որ Լուդովիկոս ԺԶ․ իր մօտը ունենալէ ետքը Ֆէօյեան կուսակցութիւնը, նեղսրտութեամբ հեռացուցած էր Նարբօնը, որ անոնց ամենէն աչքի զարնող պետն էր, և փոթորիկը հանդարտեցնելու համար ինքզինք Ժիրոնտին յանձնելու վիճակին վերածուած էր։ Անգլիոյ օրինակը, ուր թագաւորը յաճախ իր նախարարները կ՚ընտրէ ընդդիմադիրներէն, Լուդովիկոս ԺԶ․է չարժամութիւններէն մէկը եղաւ։ Արքունիքը

այն ատեն յոյս մը ունեցաւ, որովհետև ամենէն դժբաղդ պարագաներուն մէջ իսկ միշտ յոյս մը կը սածենք. յաւակնեցաւ որ, Լուդովիկոս ԺԶ. անկարող և ծիծաղելի ամբոխավարներ ունենալով, համբաւը պիտի կորսնցնել տար այն կուսակցութեան ուրկէ պիտի ընտրէր զանոնք: Այլ սակայն, բնաւ այդպէս չեղաւ. և Նոր նախարարութիւնը չեղաւ այնպէս, ինչպէս կը փափաքէր արքունականներուն չարութիւնը:

Ամիսէ մը աւելի կար որ, Տըլէսար և Նարպօն՝ մարդ մը կանչած էին, որուն տաղանդը թանկագին կարծեր էին, և զայն տեղաւորցուցած էին իրենց քով, անկէ օգուտ քաղելու համար. այս մարդը Տիւմուրիէն էր, որ փոխն ի փոխ հրամանատար եղած ըլլալով Նորմանտիոյ և Վանտէի մէջ, ամէն տեղ ցոյց տուած էր հազուագիւտ հաստատակամութիւն մը և խելացիութիւն մը: Իր ծառայութիւնները երբեմն ընծայած էր արքունիքին, երբեմն Սահմանադիր Ժողովին, որովհետև ամէն կուսակցութիւն իրեն համար մէկ էր, կը բաւէր որ կարենար իր գործունէութիւնը և անօրինակ տաղանդը կիրարկել: Տիւմուրիէ, պղտիկցած՝ դարէն, կեանքին մէկ մասը անցուցած էր դիւանագիտական դաւադրութիւններու մէջ: Իր քաջագործութիւններովը, իր զինուորական և քաղաքական հանճարով, 50 տարեկանին, յեղափոխութիւնը ծագած ատենը, միայն փայլուն արկածախնդիր մըն էր: Սակայն, պահպանած էր երիտասարդութեան հուրքը և յանդգնութիւնը: Անմիջապէս որ պատերազմ մը կամ յեղափոխութիւն մը ծագէր, յատակագիծներ կը կազմէր, զանոնք կ'ուղղէր բոլոր կուսակցութիւններուն և պատրաստ էր ամենուն համար գործելու, կը բաւէր որ կարենար գործել: Այսպէսով վարժուած էր բանի տեղ չդնելու դաւի մը բնութիւնը. բայց թէև համոզումէ չառաջուրկ էր, վեհանձն, զգայուն բանի մը յարելու կարող էր, եթէ ոչ սկզբունքներու գոնէ անձերուն: Սակայն, իր այնքան շնորհալի, այնքա՛ն սուր և ընդարձակ միտքով, իր փոխն ի փոխ հանդարտ կամ խիզախող քաջութեամբ, հիանալի էր ծառայելու համար, բայց անկարող՝ տիրելու: Ո՛չ խորունկ համոզումի մը արժանապատուութիւնը ունէր, ոչ ալ բռնաւոր կամքի մը հպարտութիւնը, և միայն զինուորներու կրնար հրամայել. եթէ իր հանճարին հետ Միրապոյի հրայրքները ունենար, Քրոմուէլի մը կամքը, կամ միայն Ռօպէսբիէռի մը վարդապետականութիւնը, պիտի տիրապետէր յեղափոխութեան և Ֆրանսայի:

Տիւմուրիէ, Նարպօնի մօտ գալով անմիջապէս զինուորական ընդարձակ յատակագիծ մը կազմեց: Կ'ուզէր թէ՛ յարձակողական և թէ՛ պաշտպանողական պատերազմ: Բոլոր այն տեղերը ուր Ֆրանսա կը տարածուէր մինչև իր բնական սահմանները, Հռենոսը, Ալպեանները, Բիրենեան լեռները և ծովը, կ'ուզէր որ պաշտպանողականով գոհանային: Բայց Հոլանտայի մէջ, ուր մեր երկիրը մինչև Հռենոս չէր հասնէր, Սավուայի մէջ, ուր մինչև Ալպեանները չէր հասնէր, կ'ուզէր որ անմիջապէս յարձակում գործէին և բնական սահմաններուն հասնելով պաշտպանողականի դիմէին վերստին: Ասիկա մեր չահերը մեր սկզբունքներուն հետ հաշտեցնել էր, ասիկա՝ օգուտ քաղել էր պատերազմէ մը զոր մենք գրգռած չէինք, որպէս զի մեր սահմանները բնութեան ճշմարիտ օրէնքներովը գծուէին: Ասկէ զատ, առաջարկեց չորրորդ զօրաբանակի մը կազմութիւնը, որ յատկացուած պիտի ըլլար հարաւային Ֆրանսային. այդ զօրաբանակին հրամանատարութիւնը խնդրեց և իրեն խոստացան տալ զայն:

Տիւմուրիէ չահած էր ժամանակէն որ

անդամներէն մէկն էր այն պատուիրակութեան զոր Սահմանադիր ժողովը Վանտէ ղրկած էր. անկէց ի վեր Օրէնսդիր ժողովին մէջ երեսփոխան եղած էր, և Ժիրոնտի ամենէն ազդեցիկ անդամներէն մէկը։ Դիտած ըլլալով նաև որ Ժաքօպէնները տիրող ուժն էին, անոնց Ակումբը ներկայացած էր և հոն կարդացած էր զանազան յիշատակագիրներ, որոնք շատ ծափահարուած էին, բայց ատոնք արգելք չէին եղած որ հին բարեկամութիւնը շարունակէ Տըլաբորդի հետ, որ անձնական գանձուն վերակացուն էր և անձնուէր բարեկամը՝ Լուդովիկոս ԺԶ.ի։ Այսպէս, ձեռքին մէջ բռնելով զանազան ուժեր որոնք իրարու պիտի միանային, Տիւմուրիէ անպատճառ պիտի շահէր և նախարար պիտի անուանուէր։ Լուդովիկոս ԺԶ. անոր առաջարկեց արտաքին գործոց նախարարութիւնը, որ Տըլէսարի դէմ եղած ամբաստանագրէն ետք թափուր մնացած էր. բայց թագաւորը դեռ կապուած ըլլալով ամբաստանուած նախարարին, այդ պաշտօնը առաջարկեց փոխանորդաբար։ Տիւմուրիէ զգալով որ կրթնելիք զօրաւոր տեղեր ունէր և չուզելով Ֆէօյյան նախարարի մը տեղապահը ըլլալու ձեւ առնել, մերժեց այս պայմանով առաջարկուած պաշտօնը, և զայն ձեռք անցուց առանց փոխանորդութեան։ Նախարարութեան մէջ գտաւ միայն Քահիէ տը Ժէրվիլը և Տէկրավը. Քահիէ տը Ժէրվիլ թէեւ հրաժարած էր, բայց դեռ գործերը ձգած չէր. Տէկրավ Նարպօնի տեղը անցած էր. երիտասարդ էր, դիւրահաւան և անփորձ. Տիւմուրիէ յաջողեցաւ զայն գրաւել, և այսպէսով իր ձեռքին մէջ ունեցաւ արտաքին յարաբերութիւնները և զինուորական վարչութիւնը, այսինքն պատերազմին պատճառները և կազմակերպութիւնը։ Այս շատ յանդուգն հանճարին այսքանը բաւական էր։ Հազիւ թէ նախարար եղաւ, Տիւմուրիէ Ժաքօպէններու Ակումբին մէջ գլուխը դրաւ կարմիր գտակը որ Փախստականներէն ընդօրինակուած, նոր զարդն էր և ազատութեան խորհրդանշանը դարձած էր։ Անոնց խոստացաւ, իրենց համար և իրենցմով կառավարել։ Լուդովիկոս ԺԶ.ի ներկայանալով Ժաքօպէններու մէջ իր ցոյց տուած վարմունքին համար զայն արդարացուց. ջնջեց այն կասկածները զոր ներշնչած էր իր վարմունքը անձնուիրութեան արտայայտութիւններով, ճարտարութիւնը ունեցաւ յուզելու թագաւորը, և սրամտութեան միջոցաւ փարատել անոր մռայլ տխրութիւնը։ Զայն համոզեց որ եթէ ժողովրդականութիւն կը փնտռէր ինքը, գահուն շահելու և զայն հաստատուն դարձնելու համար էր։ Սակայն հակառակ իր բոլոր ակնածանքին, խնամքը ունեցաւ զգացնել տալու թագաւորին որ Սահմանադրութիւնը անխուսափելի էր և փորձեց զայն մխիթարել, ջանալով անոր ապացուցանելու որ թագաւոր մը սահմանադրութեամբ ալ շատ զօրաւոր կրնար ըլլալ։

Պետութիւններու ուղղած իր առաջին զեկոյցները, որոնք բանականութեամբ և հաստատակամութիւնով լեցուն էին, բանակցութիւններուն բնութիւնը փոխեցին, Ֆրանսայի տուին բոլորովին նոր դիրք մը, բայց պատերազմը վերահաս դարձուցին։

Բնական էր որ Տիւմուրիէ փափաքէր պատերազմը, քանի որ անոր հանճարը ունէր և 30 տարի խորհրդածած էր այդ մեծ արուեստին վրայ. բայց պէտք է ընդունիլ նաև որ Վիէննայի դահլիճին վարմունքը և ժողովին գրգռուած վիճակը զայն անխուսափելի դարձուցած էին։

Տիւմուրիէ, իր ունեցած վարմունքով Ժաքօպէններու Ակումբին մէջ, իր ծանօթ խնամութիւններով Ժիրոնտի հետ, պէտք էր որ գժտուէր Ֆէօյյաններուն հետ, նոյն իսկ եթէ ատելութիւն չունենար անոնց դէմ. արդէն անոնց

դիրքը կը խախտէր։ Ասոր համար յարատեւ հակառակութեան մէջ եղաւ այդ կուսակցութեան բոլոր պետերուն հետ։ Թո՛ղ որ բանի տեղ չդնելով ծայրայեղները և արհամարհանքները, որոնք կ'ուղղուէին ժաքօպէններու և ժողովին դէմ, որոնց հետապնդելով իր ասպարէզը իր սովորական ինքնավստահութիւնով։

Պէտք էր դաշինքն ամբողջացնել. կատարուելիք ընտրութիւններու մասին խորհուրդ հարցուեցաւ Բէթիոնի, Ժանսոնէի և Պրիսոյի։ Ըստ օրէնքին, չէին կրնար նախարարները ընտրել ներկայ և կամ նախկին ժողովէն. ուրիշն ընտրութեանց սահմանը վերին աստիճանի նեղ էր։ Տիւմուրիէ, ծովային նախարարութեան համար առաջարկեց նոյն նախարարութեան մէկ նախկին պաշտօնեան, Լաքօստը, որ փոքր աշխատող, յամառ հայրենասէր ըլլալով հանդերձ կարողացաւ Թագաւորին, սիրուեցաւ անկէ և անոր մօտ մնաց բոլոր միւսներէն աւելի երկար ատեն։ Դատական նախարարութիւնը կ'ուզէին յանձնել այն երիտասարդ Լուվէին, որ ժաքօպէններու մէջ դեռ նոր ինքզինքը համբաւաւոր դարձուցած էր և Ժիրոնտի հաւանութեան ալ արժանացած էր, այն օրէն ի վեր որ այնքա՛ն լաւ պաշտպանած էր Պրիսոյի կարծիքը՝ պատերազմի ի նպաստ. նախանձոտ Ռոպէսպիէռ զայն անմիջապէս մեղադրեց։ Լուվէ յաջողութեամբ արդարացաւ, բայց այնուհետեւ չուզեցին մարդ մը որուն ժողովրդականութիւնը տարակուսելի էր և ընտրեցին Տիւրանթօնը, Պորտօյի փաստաբան, խաղաղ մարդ, ուղղամիտ, բայց շատ տկար։ Կը մնային ելեւմտից և ներքին գործոց նախարարութիւնները։ Ժիրոնտը կրկին Քլավիէրը առաջարկեց, որ ծանօթ էր ելեւմտական խնդիրներու վրայ գնահատուած աշխատութիւններովը։ Քլավիէր շատ գաղափարներ ունէր, բոլոր յամառութիւնը խորհրդածութեան և աշխատութեան մեծ եռանդ մը։ Ներքին գործոց նախարար եղաւ Ռոլան ատենօք ճարտարարուեստական քննիչ, որ ծանօթ էր լաւ գրութիւններովը՝ ճարտարարուեստի և մեքենական արուեստներու վրայ։ Այս մարդը խստակրօն բարքերով, անճկելի վարդապետութիւններով և ցուրտ ու կարծր երեւոյթով, առանց զգալու իր կնոջը բարձր ազդեցութեան տակ մտած էր։ Տիկին Ռոլան, երիտասարդ և գեղեցիկ էր. քաշուած կեանքի մէջ՝ սնած էր փիլիսոփայական և հանրապետական գաղափարներով. անիկա իր սեռին համար գերազանց եղող մտածումներ յղացած էր և այն ժամանակի տիրող սկզբունքներով ինքզինքին խիստ կրօնք մը կազմած էր։ Իր ամուսնոյն հետ մտերիմ բարեկամութեան մը մէջ ապրելով, անոր կ'աշխատակցէր և անոր կը հաղորդէր իր աշխոյժէն մաս մը, և իր խանդավառութիւնը կը ներշնչէր ո՛չ միայն իր ամուսնոյն, այլ և բոլոր Ժիրոնտէններուն, որոնք ազատութեան և իմաստասիրութեան համար հրայրքն ունենալով, այդ կնոջ մէջ կը պաշտէին գեղեցկութիւնը, մտացիութիւնը և իրենց սեպհական կարծիքները։

Նոր նախարարութիւնը բաւական մեծ յատկութիւններ ունէր բարգաւաճելու համար. բայց հարկ էր որ շատ անհաճոյ չըլլար Լուդովիկոս ԺԶ.ին և պահպանէր իր կապերը՝ Ժիրոնտին հետ։ Այդ միջոցին կրնար այդ բանը իրականացնել. բայց կը վախցուէր որ ամէն բան կորսուի այն օրը, երբ կուսակցութեանց բնական անհամաձայնութիւնը գար միանար մարդոց կարգ մը սխալներուն, և ասիկա յայտնի էր որ անոնք պիտի ունենային շուտով։ Լուդովիկոս ԺԶ., զարմացած իր նախարարներուն գործունէութեան վրայ, անոնց լաւ դիտաւորութիւններուն և գործերու մէջ ցոյց տուած տաղանդին վրայ, վայրկեան մը շատ գոհ եղաւ. անոնց մանաւանդ անձնական բարեկարգու-

թիւնները իրեն հաճելի եղան, որովհետեւ միշտ սիրած էր այս կերպ բարիքը, որ ո՛չ իշխանութեան և ոչ սկզբունքի ո և է զոհողութիւն կը պահանջէր։ Եթէ, ինչպէս ի սկզբան եղաւ, միշտ կարենար ապահովել և բաժնել արքունիքի մարդիկներէն, դիւրաւ պիտի հանդուրժէր Սահմանադրութեան։ Այս բանը անկեղծօրէն կրկնեց նախարարներուն և յաջողեցաւ համոզել երկու ամենէն դժուարահաճ նախարարները, Ռօլանը և Բլամիէրը։ Մէկ և միւս կողմէ կատարեալ համոզում գոյացաւ։ Միրօնոր որ Թագաւորէն կասկածելու համար հանրապետական էր, այդ միջոցին դադրեցաւ ըլլալէ, և Վէրժնիօ, Ժանսօնէ, Բուատէ Թղթակցիլ սկսան Լուդովիկոս ԺԶ.ի հետ, ինչ որ աւելի ուշ ամբաստանութեան փաստ մը եղաւ իրենց դէմ։ Միայն, Ռօլանի անձկելի կինը կասկածի մէջ էր, և կը համարէր իր բարեկամները, ըստ իրեն, շատ դիւրահաճ ինքզինքնին յանձնելու։ Այս անվստահութեան պատճառը բնական է. անիկա չէր սիրեր Թագաւորը։ Նախարարները, ընդհակառակը, ամէն օր կը տեսակցէին անոր հետ և երբ պարկեշտ մարդիկ իրարու մօտիկնան, շուտով կ'ապահովուին. բայց այս վստահութիւնը չէր կրնար տեւել, որովհետեւ անխուսափելի խնդիրներ պիտի երեւան հանէին իրենց կարծիքներուն տարբերութիւնները։

Արքունիքը կը ջանար ծիծաղելի դարձնել նոր նախարարութեան քիչ մը հանրապետական պարզութիւնը և վայրենի կարծրութիւնը Ռօլանի, որ պալատ կը ներկայանար, առանց արծաթ օղակով կօշիկներու։ Տիւմուրիէ կը պատասխանէր ծաղրանքներուն և զուարթութիւնը խառնելով խիստ յարգանաւ աշխատանքի, հաճոյ կըլլար Թագաւորին, իր սրամտութիւնով զայն կը հրապուրէր և Թերեւս նաեւ միւսներէն աւելի անոր գործին կուգար իր կարծիքներուն ճկունութեամբը։ Թագուհին նշմարելով որ իր բոլոր ընկերակիցներէն ամենէն աւելի անիկա ազդեցութիւն ունէր Թագաւորին վրայ, ուզեց զայն տեսնել։ Տիւմուրիէ իր Յիշատակներուն մէջ կը պատմէ այս եզական տեսակցութիւնը և կը նկարագրէ յուզումները այս անբաղդ Թագուհիին, որ արժանի էր ուրիշ Թագաւորութեան մը, ուրիշ բարեկամներու և տարբեր բաղդի մը։

Թագուհիին սենեակը մտած ատեն, կ'ըսէ Տիւմուրիէ, զայն գտաւ մինակ, շատ կարմրած. անիկա կը պտտէր մեծ քայլերով ու այնպիսի յուզումով մը, որ գուշակել կուտար թէ շատ ուժգին խօսակցութիւն մը տեղի պիտի ունենար։ Տիւմուրիէ գնաց կեցաւ վառարանին անկիւնը, ցաւագինօրէն զգածուած Թագուհիին վիճակէն և այն սարսափելի զգացումներուն համար զորս կը կրէր։ Թագուհին դէպ ի իրեն եկաւ, վեհ և զայրացած ձեւով մը, և ըսաւ.

«Պարո՛ն, այս միջոցիս ամենակարող էք, բայց ատիկա եղած է շնորհիւ ժողովուրդին, որ շուտով կը ջախջախէ իր կուռքերը։ Ձեր գոյութիւնը կախում ունի ձեր վարմունքէն։ Կ'ըսեն թէ շատ տաղանդ ունիք։ Հասկնալու էք որ, ո՛չ Թագաւորը և ոչ ալ ես կրնանք հանդուրժել այս նորութեանց և Սահմանադրութեան։ Ձեզի կը յայտարարեմ ասիկա անկեղծօրէն. ձեր ընելիքը որոշեցէք։»

Տիւմուրիէ պատասխանեց.

«Տիկի՛ն, շատ կը ցաւիմ Ձեր վեհափառութեան ըրած տաժանելի խոստովանութեան վրայ։ Չպիտի մատնեմ զայն. բայց ես կեցած եմ Թագաւորին և ազգին միջեւ, ու կը պատկանիմ իմ հայրենիքիս։ Թոյլ տուէք ինծ ձեզի յայտնել որ Թագաւորին, ձեր և ձեր վեհափառ զաւակներուն փրկութիւնը կապուած է Սահմանադրութեան, ինչպէս նաեւ՝ իր օրինաւոր իշ-

«խանութեան վերահաստատման։ Թէ՛
«ձեզի և թէ Սահմանադրութեան դէշ
«ծառայութիւն ըրած պիտի ըլլայի, եթէ
«ուրիշ կերպ խօսէի ձեզի։ Երկուքդ ալ
«թշնամիներով շրջապատուած էք,
«որոնք զձեզ կը զոհեն իրենց յատուկ
«շահերուն։ Սահմանադրութիւնը, երբ
«անգամ մը գործադրութեան մէջ ըլ-
«լայ, թագաւորին դժբաղդութիւն ոչ
«միայն չի պատճառեր, այլ անոր եր-
«ջանկութիւնը և փառքը պիտի կազմէ.
«պէտք է որ թագաւորը աջակցի, որ-
«պէս զի անիկա շուտով և ամուր կեր-
«պով մը հաստատուի։»

Դժբաղդ Թագուհին, գայթակղելով որ Տիւմուրիէ իր գաղափարներուն կը բաղխի, ըսաւ բարկութեամբ ձայնը բարձրացնելով. «Այս վիճակը չպիտի տեւէ. զգուշացէ՛ք։»

Տիւմուրիէ պատասխանեց համեստ հաստատամտութիւնով մը. — «Տիկի՛ն,
«յիսուն տարեկանէն աւելի եմ, կեան-
«քիս մէջ շատ մը վտանգներ անցած
«եմ. և Նախարարութիւնը ստանձնե-
«լով, լաւ մը խորհեցայ որ պատաս-
«խանատուութիւնը՝ ինծի սպառնող
«վտանգներուն ամենէն մեծը չէ։»
— «Միայն այդ էր պակաս, գոչեց
«Թագուհին ցաւով, որ զիս զրպար-
«տէիք։ Կարծես կը հաւատաք որ
«կարող եմ զձեզ սպաննել տալու։» Եւ արցունքներ հոսեցան աչքերէն։

Անոր չափ խռովուած, Տիւմուրիէ ըսաւ. — «Հեռո՛ւ ինձմէ այսքան ան-
«գութ նախատինք մը ընելը. Ձեր վե-
«հափառութեան նկարագիրը մեծ և
«ազնիւ է. այդ բանին հերոսական օ-
«րինակներ տուաք, որոնք իմ հիա-
«ցումս գրաւեցին և զիս անոր կապե-
«ցին։» Անմիջապէս Թագուհին հանդարտեցաւ և անոր մօտեցաւ. Նախարարը շարունակեց. — «Հաւատացէ՛ք
«ինծի, Տիկին, որ ոև է շահ չունիմ
«ձեզի խաբելու։ Ձեզի չափ կ'ատեմ
«անիշխանութիւնը և ոճիրները։ Հա-
«ւատացէ՛ք խօսքիս. ես փորձառու
«եմ. Ձեր Վեհափառութենէն աւելի
«աղէկ կրնամ դատել դէպքերը, ասիկա
«ժողովրդային վայրկենական շարժում
«մը չէ, ինչպէս կը թուիք կարծել.
«ասիկա գրեթէ միակամ ապստամբու-
«թիւն մըն է մեծ ազգի մը, ընդդէմ
«արմատացեալ չարիքներու։ Զօրաւոր
«կուսակցութիւններ կը հրահրեն այս
«կրակը. ամենուն մէջ ալ ապերախտ-
«ներ և խենդեր կան. յեղափոխութեան
«մէջ միայն թագաւորը և ամբողջ ազգը
«աչքիս առջեւ ունիմ. ամէն ինչ որ
«զանոնք իրարմէ կը բաժնէ, փոխա-
«դարձ կործանում յառաջ կը բերէ.
«կրցածիս չափ կ'աշխատիմ զանոնք
«իրար միացնելու. ձեզի կ'իյնայ ինծի
«օգնել. եթէ ձեր ծրագիրներուն ար-
«գելք կ'ըլլամ, եթէ կ'ընդդիմանաք
«անոնց, ըսէ՛ք ինծի, անմիջապէս հրա-
«ժարական կը մատուցանեմ Թագա-
«ւորին, և անկիւն մը կը քաշուիմ իմ
«հայրենիքիս և ձեր ճակատագրին վրայ
«ողբալու։»

Այս տեսակցութեան վերջաւորութիւնը կատարելապէս հաստատեց Թագուհիին վստահութիւնը. անոնք միասին խորհրդակցեցան զանազան կուսակցութեանց վրայ։ Նախարարը թուեց ամենուն յանցանքներն ու ոճիրները, ապացոյցներ տուաւ թէ Թագուհին մատնուած էր ներսէն. անոր պատմեց այն խօսքերը, որոնք եղած էին իր մտերմական շրջանակներուն մէջ. Թագուհին վերջ ի վերջոյ համոզուած ցոյց տուաւ ինքզինքը և քաղցր ու հանդարտ եղանակով մը ճամբեց Նախարարը։ Թագուհին անկեղծ էր այդ միջոցին. բայց իր շուրջը գտնուողները և Մառայի ու Ժաքօպէններու հրատարակած սարսափելի ծայրայեղութիւնները զինքը վերստին մղեցին իր աղիտաբեր դրումանց մէջ։

Ուրիշ օր մը, Թագուհին ըսաւ Տիւմուրիէին, ի ներկայութեան Թագա-

ւորին. — «Զիս յուսահատած կը տեսնէք, չեմ համարձակիր պատուհանը ելլել՝ պարտէզին կողմէն. բակին վրայ նայող պատուհանը ելած էի, պահակ զինուոր մը կոշտ հոյհոյութիւն մը ըրաւ և ըսաւ. «Որքա՜ն պիտի ուզէի որ սա գլուխդ սուինիս ծայրը անցընէի:» Այս ահաւոր պարտէզին մէջ, մէկ կողմէ կը տեսնեմ աթոռի վրայ կանգնած մարդ մը, որ կը կարդայ մեզի դէմ գրուած սոսկալի բաներ. միւս կողմէ կը տեսնեմ զինուորական մը կամ աբբայ մը զոր լիճի մը մէջ կը նետեն, նախատինքներու և հարուածներու տակ ընկճելով զայն. ու այդ միջոցին, ուրիշներ օդապարիկով կը խաղան և հանգիստ սրտով կը պտըտաքին. ի՜նչ բնակավայր, ի՜նչ ժողովուրդ:»

Այսպէս, տեսակ մը ճակատագրականութեամբ, պալատին մէջ անցած դարձածներուն վրայ ենթադրութիւններ ընելով ժողովուրդին անվստահութիւնը և կատաղութիւնը կը գրգռուէր, և ժողովուրդին մռնչիւնները կ'աւելցնէին պալատին զգացած վիշտերը և կատարած անխոհեմութիւնները: Այո՛ այսպէս, յուսահատութիւնը կ'իշխէր թէ՛ ներսը և թէ՛ դուրսը. բայց ինչո՞ւ համար, կը հարցնեն ոմանք, բաց սրտով կատարուած լուսաբանութիւն մը այս չարիքներուն վերջ մը չէր դներ. ինչո՞ւ համար պալատը չէր հասկնար ժողովուրդին զգացած վախերը. ինչո՞ւ համար ժողովուրդը չէր ըմբռներ պալատին վիշտերը: Բայց ինչո՞ւ մարդիկ մարդիկ են...: Այս վերջին հարցումին առջև պէտք է կանգ առնել, համակերպիլ անոր, մարդկային բնութեան առջև գլուխ ծռել և այս տխուր պատմութիւնը չարունակել:

ՎԵՐՋ ՀԻՆԳԵՐՈՐԴ ԳԻՐՔԻ ՆԻ Ա. ՀԱՏՈՐԻ

# «ԼՈՒՍԱՐՁԱԿ»

## ԸՆԴԴԻՄԱԴԻՐ ՕՐԿԱՆ

ԿԸ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԻ ԱՐՇԱԼՈՅՍԻՆ

Պ Ա Տ Կ Ե Ր Ա Զ Ա Ր Դ

ՑԵՌԱՔԷ ԿԸ ԾԱԽՈՒԻ 40 ՓԱՐԱ ԹԻՒԸ

*Արտօնատէր* — *Գլխ.-Տնօրէն*

*Ս. ՉԷՕՄԼԷՔՃԵԱՆ* — *Ա. ԳԱԼՓԱՔՃԵԱՆ*

*Կը պարունակէ Ազգային Կեանք, Քաղաքական Կեանք, Ներքին Կեանք, Ընկերային Կեանք, Առեւտրական, Դրամական Հրապարակ. Ազգային եւ Եւրոպական Կեանքէ վէպեր: Կ'աշխատակցին նշանաւոր Հայ Գրողներ: Լուրերու մասին անմրցելի, բարձր եւ օրը օրին: Թղթակիցներ ունի ամէն տեղ: Շաբաթական Յաւելուածներ, Կանանց Բաժին եւն., եւն.:*

*Կաղանդի առթիւ Գրական թիւ մը կը պատրաստուի յուրջ աշխատութեամբ, ուր պիտի երեւան նշանաւոր բոլոր Հայ Գրողները՝ իրենց լուսանկարներով՝ շատ խնամքով տպուած:*

*Բաժանորդներ. — Տարեկան Պոլիս եւ Գաւառ 108 դրշ., Արտասահման 30 ֆր., Ռուսիա 12 րուբլի:*

*Տպարանը բաց է ցորեկ եւ գիշեր. Պոլիս, Պապը Ալի, Էպուսսուտ ճատտէսի. թիւ 27:*

---

## «ԿԻՒԹԷՄՊԷՐԿ» ՄԱՏԵՆԱՇԱՐԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ

| | | |
|---|---|---|
| Ա. ԱՆՏՕՆԵԱՆ-է | Ճշմարտութիւնը | 3 |
| Ա. ՏԻՄԱ-է | Երեք Հրացանակիրները | 20 |
| » » | Քսան Տարի Ետք | 20 |
| ԱՏԼԷՐ-ի | Մահուան պատիժ . . . | 2 |
| ԾԵՐԵՆՑ-է | Թորոս Լեւոնի | 7 |
| » | Երկունք (Թ. Դարու) | 8 |
| » | Թէոդորոս Ռշտունի | 8 |
| ՍՏ. ՊԱԼԱՍԱՆԵԱՆ-է | Հայոց Պատմութիւն (Պատկզրդ.) | 20 |
| ՎԻՔԹՕՐ ՀԻՒԿՕ-է | Իննսուն Երեք ( » ) | 20 |
| ԹՕԼՍԹՕ-է | «Պատերազմ եւ Խաղաղութիւն ( » ) | 32 |

---

**ԳԻՆ 10 ՂՐՈՒՇ**

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՖՐԱՆՍԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ

(ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ)

Գրեց
Ա. ՏՅՈՒԼ[illegible]ԹԻԷՌ

Թարգմանեց
ԼԵՒՈՆ ԼԱՐԵՆ




ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐ

"ԿԻՒԹԷՄՊԷՐԿ" ՄԱՏԵՆԱՇԱՐ, ԹԻՒ 22
Կ. ՊՈԼԻՍ, ՏՊԱԳՐ. ԿԻՒԹԷՄՊԷՐԿ

31

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՖՐԱՆՍԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ

## ՎԵՑԵՐՈՐԴ ԳԻՐՔ

### ՅՈՒՆԻՍ 20Ի ՕՐԸ

*Պատերազմի յայտարարութիւն՝ ընդդէմ Հունգարիոյ եւ Պոհեմիոյ թագաւորին. — Զինուորական առաջին գործողութիւններ. — Քիեվրէնի եւ Թուռնէի խուճապը. — Զօրավար Տիլլոնի սպաննութիւնը. — Ժիրոնտէն նախարարութեան մէջ երկպառակութիւն. — Աւստրիական ներքաղաքեայ քօմիթէն. — Բարիզի մօտ 20000 հոգինոց բանակի մը կազմութեան համար հրամանագիր. — Ռօլանի նամակը՝ թագաւորին. — Ժիրոնտէն նախարարներուն ճամբու դրուիլը. Հրաժարական Տիւմուրիէի. — Ֆէօյեան կուսակցութեան պաշտպանող նախարարութեան մը կազմութիւնը. — Սահմանադրական կուսակցութեան ծրագիրները. Լաֆայէթի նամակները՝ ուղղեալ Ժողովին. — Ժողովրդային կուսակցութեան եւ իր պետերուն դիրքը. Մարսէյլի գաւառներու երեւոխաններուն ծրագիրը. Պեթիոնի դերը՝ Յունիսի դէպքերուն մէջ. — 1792 Յունիս 20ի օրը. Արուարձանները կ'ապստամբին. Թիւիլրիի պալատին մէջ տեսարաններ. — Յունիս 20ի օրուան շարունակութիւնը. — Լաֆայէթի Բարիզ ժամանումը. իր գանգատները՝ Ժողովին. — Պատերազմի շշուկներ. Բրուսիացիներու մերձաւոր արշաւանքը. Վերժնիոյի ճառախօսութիւնը. — Յուլիս 7ին բոլոր կուսակցութիւնները կը հաշտուին Ժողովին մէջ:*

Լէօբոլտ Բ. մեռած էր. Եւրոպայի անդորրութեան համար այս իշխանը շատ հոգ կ'ընէր, և կարելի չէր նոյն խոհականութիւնը ակնկալել իր յաջորդէն և քեռորդիէն՝ Հունգարիոյ և Պոհեմիոյ թագաւորէն: Կիւսթավ, Շուէտի թագաւորը սպաննուած էր հանդէսի մը միջոցին: Ժաքօպէններու թշնամիները անոնց կը վերագրէին այս սպաննութիւնը. բայց շատ լաւ ապացուցուած էր որ այդ ոճիրը գործն էր ազնուականներուն, որոնք Շուէտի վերջին յեղափոխութեան միջոցին Կիւսթավի ձեռքով նուաստացած էին: Եւ ահա այսպէս, ազնուականութիւնը, որ Ֆրանսայի մէջ կը դատապարտէր ժողովրդային յեղափոխական պոռթկումները, հիւսիսի մէջ օրինակը կուտար թէ ժամանակին ինչ եղած էր ինքը, և թէ ինչ էր իր վիճակը դեռ այն երկիրներուն ուր քաղաքակրթութիւնը աւելի յետամնաց է: Լուդովիկոս ԺԶ.ին համար ի՜նչ լաւ դաս, և ի՜նչ օրինակ այդ սպաննութիւնը, եթէ այդ վայրկեանին կարենար հասկնալ: Կիւսթավի մահը վիժեցուց այն ձեռնարկը, զոր անիկա խորհած էր ընել ընդդէմ Ֆրանսայի, ձեռնարկ՝ որուն համար Կատարինէ զօրք պիտի տար, իսկ Սպանիա՝ դրամ: Կասկածելի է սակայն որ նենգամիտ Կատարինէն իր խոստումը գործադրէր, և Կիւսթավի մահը, որուն հետեւանքները չափա-

դանցեցին, իրականութեան մէջ քիչ կարեւոր դէպք մը եղաւ։

Տըլէսար ամբաստանութեան ենթարկուած էր իր հրամաններուն տկարութեանը համար. Տիւմուրիէի ո՛չ շահուն և ո՛չ ալ ճաշակին համաձայն էր տէրութեանց աչքին տկար երեւնալ. վերջին լուրերը կը թուէին գոհացուցած ըլլալ Լուդովիկոս ԺԶ.ը, իրենց պաշտպանութեամբը և կորովի ոճովը։ Պ. տը Նօայլ, դեսպան Վիեննայի ու քիչ անկեղծ պաշտօնատար, հրաժարական ղրկեց Տիւմուրիէին, ըսելով թէ չէր յուսար որ կրնայ Կայսրութեան պետին մտիկ ընել տալ իրեն ղրկուած հրահանգները։ Տիւմուրիէ անմիջապէս այս պարագան հաղորդեց Ժողովին, որ հրաժարականէն զայրացած, վայրկենապէս ամբաստանութեան տակ առաւ Պ. տը Նօայլը։ Անմիջապէս ուրիշ դեսպան մը ղրկուեցաւ նոր հրահանգներով։ Երկու օր յետոյ Նօայլ ետ առաւ հրաժարականը և ղրկեց այն վճռական պատասխանը, զոր պահանջած էր Վիեննայի արքունիքէն։ Պ. տը Քօպէնցլի խմբագրած այդ զեկուցագիրը, տէրութեանց գործած բոլոր սխալներուն մէջ ամենէն անքաղաքավարներէն ալ մէկն է։ Պ. տը Քօպէնցէլ կը պահանջէր, յանուն արքունիքին, ֆրանսական միապետութեան վերահաստատումը, 1789 յունիս 23ի արքայական յայտարարութեան գծած հիմերուն վրայ։ Ասիկա պահանջել էր վերահաստատումը երեք դասակարգերուն, կղերին ստացուածքին վերադարձումը և Քօնթա-Վընէսէնին՝ Պապին տրուիլը։ Բաց աստի, Աւստրիոյ Նախարարը կը պահանջէր որ Կայսրութեան իշխաններուն վերադարձուին Ալզասի հողերը, իրենց բոլոր աւատական իրաւունքներովը։ Ֆրանսան Քօպլէնցի կիրքերով միայն ճանչցող մը այսպիսի պայմաններ պիտի առաջարկէր։ Ասիկա պահանջել էր միանգամայն քանդումը այն Սահմանադրութեան, որուն վրայ երդում ըրած էին թագաւորը և ազգը, ու կը նշանակէր սնանկութիւն, քանի որ կղերին վաճառուած կինչքերուն վերադարձումը կը պահանջէր։ Եւ արդէն, ի՞նչ իրաւամբ էր որ կը դնէր այս բոլոր պահանջները. ի՞նչ իրաւունք ունէր մեր գործերուն միջամուխ ըլլալու, Ալզասի իշխաններուն դէմ ի՞նչ գանգատ կար ընելիք, քանի որ անոնց հողերը ենթարկուած էին ֆրանսական օրէնքին։

Թագաւորին և Տիւմուրիէի առաջին գործը եղաւ Ժողովին վազել այս զեկուցագիրը անոր հաղորդելու համար։ Ժողովը, ինչպէս որ պէտք էր արդէն, զայրացաւ. ամէն կողմէ մարտի հրաւէրներ կարդացուեցան։ Միայն թէ Տիւմուրիէ Ժողովին չհաղորդեց թէ Լիէժի մէջ յարուցուելիք նոր յեղափոխութեամբ մը սպառնացած էր Աւստրիոյ, որ այս խնդրին վրայ բանակցելու համար մասնաւոր մէկը ղրկած էր իրեն, թէ՝ այդ պատգամաւորին գործածած լեզուն բոլորովին տարբեր էր Աւստրիոյ դահլիճին բանեցուցած լեզուէն, և թէ, շատ հաւանականաբար, վերջին զեկուցագիրը հապճեպ և դրդումով տրուած որոշման մը արդիւնքն էր։

Ժողովը ետ առաւ ամբաստանութեան հրամանագիրը՝ ընդդէմ Նօայլի, և արագ տեղեկագիր մը պահանջեց։ Թագաւորը այլ եւս չէր կրնար նահանջել, այս աղէտաբեր պատերազմը վերջ ի վերջոյ պիտի յայտարարուէր, և ոչ մէկ պարագայի տակ այդ պատերազմը համաձայն չէր իր շահերուն։ Երբ Ֆրանսացիները յաղթող հանդիսանային, նոր օրէնքին կիրառութեանը համար աւելի պահանջկոտ և խիստ պիտի ըլլային. իսկ եթէ յաղթուող ըլլային, կառավարութեան վզին պիտի փաթթէին մեղքը, և պիտի ամբաստանէին զայն որ լաւ չվարեց պատերազմը։ Լուդովիկոս ԺԶ. կատարելապէս կը զգար այս կրկնակ

վտանգը, և այս որոշումը չատ սուղի նստաւ իրեն (*)։

Տիւմուրիէ տեղեկագիրը պատրաստեց իրեն սովորական արագութեամբ և տարաւ Թագաւորին, որ զայն պահեց երեք օր։ Պէտք է գիտնալ թէ, Թագաւորը որ Ժողովին հանդէպ նախաձեռնարկ ըլլալու սահմանուած ըլլալով, զայն պիտի հարկադրէր պատերազմ հռչակել, և կամ պիտի գոհանար այս մասին հարցնելով Ժողովին կարծիքը, զեկուցանելով թէ անցած դարձածներէն ետք, Ֆրանսա պատերազմական վիճակի մէջ էր։ Ռօլան և Կլավիէռ նախարարները առաջին կէտին համամտութիւն կը յայտնէին։ Ժիրօնտի բեմբասացները հաստատապէս կը պաշտպանէին այդ կէտը և կ'ուզէին տուն տալ գահաճառը։ Լուդովիկոս ԺԶ. զգուշանք կըզգար պատերազմ հռչակելէ, և նախամեծար կը համարէր որ պատերազմական վիճակի մէջ է Ֆրանսան ըսուի։ Տարբերութիւնը մեծ կարեւորութիւն չունէր, բայց իր արժանապատուութեանը նախամեծար էր այս ձեւը։ Կարելի էր գթալ իր կացութեան վրայ։ Տիւմուրիէ, նուաղ դժուարահաճ, ոչ մէկ նախարարի ականջ կախեց և Տըկրաւլի, Լաքօսթի ու Տիւրանթօնի օժանդակութեամբ Թագաւորին կարծիքը ընդունիլ տուաւ։ Այդպէսով առաջին անգամ ըլլալով տարակարծիք եղաւ Ժիրօնտին։ Թագաւորը ինքն իր ձեռքով խմբագրեց իր գահաճառը և անձամբ գնաց Ժողովին, ապրիլ 20ին, իր բոլոր նախարարներուն հետ։ Այդ նստին տպաւորութիւնը չատ աւելի խորունկ եղաւ, որովհետեւ հանդիսատեսներ մեծ թուով ներկայ եղան այդ օրուան նիստին, որ պիտի վճռէր Ֆրանսայի և Եւրոպայի ճակատագիրը։ Թագաւորին դիմագիծը փոխուած էր և խորունկ մտահոգութիւն մը կը մատնէր։

Տիւմուրիէ մանրամասն տեղեկագիր մը կարդաց Ֆրանսայի և Կայսրութեան մէջ եղած բանակցութիւններուն վրայ, ցոյց տուաւ որ 1756ի պայմանագրութիւնը խզուած էր իրականին մէջ, և թէ ծանօթ վերջնագրին համեմատ Ֆրանսա պատերազմի վիճակի մէջ կը գտնուէր։ Աւելցուց որ Թագաւորը Ժողովին հետ խորհրդակցելու համար իբր օրինաւոր միջոց ունենալով միայն պատերազմի պաշտօնական առաջարկութիւնը, կը համակերպէր այս ուղղութեամբ խորհրդակցելու։ Այն ատեն Լուդովիկոս ԺԶ. մեծ վայելուչ կերպով մը խօսք առաւ, բայց ձայնը յուզուած էր. «Պարոններ, ըսաւ, դեռ նոր լսեցաք այն բանակցութիւններուն արդիւնքը որ ունեցայ Վիեննայի արքունիքին հետ. տեղեկագրին եզրակացութիւնները իմ դահլիճիս միաձայն կարծիքն է. ես ինքս զանոնք ընդգրկեցի։ Անոնք Ազգային Ժողովին քանիցս ինծի յայտնած փափաքներուն համաձայն են և նաեւ այն զգացումներուն որ նոյնպէս վկայուած են Թագաւորութեան մէջ գտնուող այլ և այլ կուսակցութիւններու պատկանող մեծ թուով քաղաքացիներ։ Անոնք ալ պատերազմը կը նախընտրեն քան թէ աւելի երկար ատեն տեսնել որ Ֆրանսայի ժողովրդին արժանապատուութիւնը նա-

---

(*) Տիկին Քամփան իր յիշատակներուն մէջ կը պատմէ թէ Թագաւորը իր պալատին մէջ երկաթէ դարակ մը չինել տուած էր, ձեռամբ երկաթագործի մը զոր 10 տարիներէ ի վեր կը ճանչնար. վերջը այդ մարդն էր դարձեալ որ, երեւան հանեց թաքստոցը, որովհետեւ Ժաքոպէն մըն էր ինքը։ Թագաւորը այդ դարակին մէջ պահած էր կարգ մը գաղտնի վաւերաթուղթեր, որոնք կրնային գործածուիլ իբր փաստ Թագաւորին դէմ, երբ զայն դատելու ելլէին։ Թագուհին իմացած ըլլալով որ մէկ քանի պալատականներ գիտեն երկաթէ դարակին ո՛ւր ըլլալը, կարեւոր թուղթերը վերցնել տալով յանձնեց է Տիկին Քամփանին։

նիքին դաւադրական ընթացքը ուրիշ նպատակ չունեցաւ, բայց եթէ ճշմարտանմանութեան շուք մը տալու այս զրպարտութեան, որուն պէտք ունէին օտար պետութիւնները, իրենց ժողովուրդին աչքէն ծածկելու համար իրական դրդապատճառները այն անարդար յարձակումին, զոր պատրաստեցին Ֆրանսայի դէմ։

«Անիկա գիտէ որ այս մեղադրանքը պիտի կրկնեն նաեւ մեր Սահմանադրութեան և մեր օրէնքներուն ներքին թշնամիները, այն ոճրապարտ յոյսով որ հանրային բարեացակամութենէն պիտի զրկեն ազգին ներկայացուցիչները։

«Ժողովը իր վարմունքին մէկ պարզ բացատրութիւնը տալով, այդպէսով պատասխանը տուած կ'ըլլայ և զայն կ'ուղղէ հաւասար վստահութիւնով մը օտարներուն և Ֆրանսացիներուն, քանի որ բնութիւնը ամէն մարդոց սիրտին խորը դրած է նոյն արդարութեան զգացումները։

«Իւրաքանչիւր ազգ, միայն ինքը իշխանութիւն ունի ինքզինքին օրէնքներ դնելու և անբռնաբարելի իրաւունքը զանոնք փոխելու։ Այս իրաւունքը մէկուն առանձին չի պատկանիր, կամ ամենուն կը պատկանի ամբողջական հաւասարութիւնով մը. այդ իրաւունքին դէմ յարձակիլ՝ մէկուն մէջ, ասիկա յայտարարել է որ զայն չեն ճանչնար ուրիշներու մէջ ալ. ուժի միջոցաւ զայն յափշտակել օտար ժողովուրդէ մը՝ ասիկա ծանուցանել է որ անոնք չեն յարգուիր այն ժողովուրդին մէջ որուն քաղաքացին կամ պետն է. ասիկա իր հայրենիքին դաւաճանել է, մարդկային սեռին հակառակ հռչակել է ինքզինքը։ Ֆրանսական ազգը կը կարծէր որ այսքան պարզ ճշմարտութիւններ պիտի զգային բոլոր իշխանները, և թէ ԺԸ. դարու մէջ, ոչ ոք պիտի համարձակէր անոնց դէմ դնել բռնապետութեան հին բնաբանները. իր յոյսերը ի դերեւ ելան. իր անկախութեան դէմ ընկերակցութիւն մը կազմուեցաւ և անիկա նախընտրեց լուսաբանել իր թշնամիները իր դատին արդարութեան մասին, կամ անոնց դիմադրել զէնքով։

«Գիտնալով այդ սպառնալի ընկերակցութեան գոյութիւնը, բայց նախանձախնդիր՝ խաղաղութիւնը պահպանելու, Ազգային Ժողովը նախ հարցուց թէ այնքան երկար ատեն մրցակից եղող պետութեանց մէջ գոյացած համաձայնութեան նպատակը ի՞նչ էր, և պատասխանուեցաւ թէ անոնց դրդապատճառը ընդհանուր հանդարտութիւնը թագաւորներու ապահովութիւնը և պատիւը պահպանելն էր, և վախը՝ վերստին տեսնելու այն դէպքերը զոր Ֆրանսական յեղափոխութեան քանի մը ժամանակամիջոցները երեւան հանեցին։

Բայց ինչպէ՞ս Ֆրանսա պիտի սպառնար ընդհանուր հանդարտութեան, քանի որ հանդիսաւոր խոստում մը ըրաւ, ոեւէ արշաւանքի չձեռնարկել, ոեւէ ժողովրդի ազատութեան վրայ չյարձակիլ, քանի որ այն երկար և արիւնոտ պայքարին մէջ որ տեղի ունեցաւ Իոլանտայի և Լիէժի պետութիւններուն մէջ, կառավարութիւններու և քաղաքացիներու միջեւ ամենախիստ չէզոքութիւն պահեց անիկա։

«Անշուշտ թէ Ֆրանսական ազգը բարձրօրէն հռչակեց որ գերիշխանութիւնը միայն ժողովուրդին կը պատկանի, թէ իր գերագոյն կամքին գործադրութեան մէջ սահմանափակուած ըլլալով գալիք սերունդներու իրաւունքներէն անդառնալի իշխանութիւն չկրնար յանձնել. անշուշտ, բարձրօրէն ընդունեց թէ ոեւէ սովորութիւն, ոեւէ բացարձակ օրէնք, ոեւէ համաձայնութիւն, ոեւէ պայմանադրութիւն չեն կրնար մարդկային ընկերութիւն մը հպատակեցնել այնպիսի իշխանութեան մը զօրս բեկանելու իրաւունքը չունենային. բայց ինչ գաղափար ուրիշն ունէին իշխաննե-

[illegible] ոգիներու-
[illegible] ութեան վրայ, ո-
[illegible] ո՞չ է այս սկզ-
[illegible] կը ծնանին ի-
[illegible] ութեան դէմ
[illegible]

[illegible] անդորրութիւ-
[illegible] մէջ [illegible] Ֆրանսա-
[illegible] ութիւններով կամ
[illegible] գինու զօ-
[illegible] պիտի
[illegible] ութեան դէմ. ա-
[illegible] է բանականու-
[illegible] թիւններուն դէմ.
[illegible] որ ամէն տեղ Ֆրանսա-
[illegible] կերպով մը նա-
[illegible] թէ դրացի երկիրներու
[illegible] մեր նահանգները ո-
[illegible] հրապարակութիւններով
[illegible] էին դաւաճանու-
[illegible] բերելու և ըմբոստութիւն
[illegible] . երբ կը փչենք ա-
[illegible] յղացուած պաշտ-
[illegible] թեան և [illegible] թեան գոյ-
[illegible] պիտի համոզենք որ խաղաղու-
[illegible] մը, ոչ թէ ազատու-
[illegible] դէմ ատելութիւնը, թելադրած
[illegible] մեր [illegible] :

Համոզուած թէ Ֆրանսացիները փոր-ձեցին գրգռել դրացի ժողովուրդները [illegible] խորտակելու, անոնց իրաւունքները պահանջելու . . . բայց այն նախարարները որ այս դաւադրու-թիւնները կրկնեցին, [illegible] մերժելու միակ արարք մը որ իրենց խաղերը համաստէր, դիմեցին թէ ա-տոնք որոնց երեւակայական էին. և եթէ նոյն իսկ այդ փորձերը իրական ըլլային, այն պետութիւնները որոնք հանդուրժեցին մեր տարագիրներուն համախմբումներուն, որոնք անոնց օգնութիւն հասցուցին, ընդունեցին անոնց դեսպանները, զանոնք հրապարակաւ հրաւիրեցին ի-րենց խորհրդակցութեանց և [illegible] Ֆրանսացիները քաղաքային պատերազմի մղելու, զանգատելու ի-րաւունքէն զրկուած պիտի ըլլային. այլա-պէս, պէտք է ըսել թէ նեղելի է ստըր-կութիւնը տարածել, և ոճրապարտ է ազատութիւնը ծանօթացնել, թէ ամէն բան օրինաւոր է ժողովուրդներու դէմ և թէ միայն թագաւորները ճշմարիտ իրաւունքներ ունին: Երբէք գահուն գոռոզութիւնը այդ յանդգնութեամբ նախատած չպիտի ըլլար ազգերու վե-հափառութիւնը:

«Ֆրանսայի ժողովուրդը, ազատ ըլլալով իր Սահմանադրութեան ձեւը հաստատելու, այս իշխանութիւնը գոր-ծածելով չկրնար վիրաւորել օտար թա-գերուն ո՛չ պատիւը և ոչ ալ անդորրու-թիւնը: Ուրիշ երկիրներու պետերը իրենց առանձնաշնորհումներուն կարգին կը հաշուեն ուրեմն Ֆրանսական ազգը ստիպելու իրաւունքը որ կառավարու-թեան պետին տալ հաւասար իշխանու-թիւն իրենց պետութիւններուն մէջ իսկ գործադրուածին: Որովհետեւ, իրենք հպատակներ ունին, պիտի ուզէին ար-գիլել որ այլուր ազատ մարդիկ գըտ-նուին: Եւ ի՜նչպէս չպիտի անդրադառ-նային որ, ամէն ինչ ներելի համարե-լով այն բանին համար որ թագաւորներու անդորրութիւնը կը կոչեն, օրինաւոր յայտարարած կ'ըլլան ամէն ինչ, որուն ազգ մը կրնայ ձեռնարկել ի նպաստ ժո-ղովուրդներու ազատութեան:

«Եթէ Ֆրանսական յեղափոխութեան քանի մը շրջաններուն բռնութիւններ և ոճիրներ գործուեցան, ազգային կամ-քը ձեռքերնուն մէջ ունեցողներուն կը պատկանէր զանոնք պատժելու կամ մոռացութեան մէջ թաղելու իշխանու-թիւնը. ամէն քաղաքացի, ամէն ան-նակոյ, ինչ որ ալ ըլլայ իր սխալմանը, արդարութիւն պարտի խնդրել միայն իր երկրի օրէնքներէն և միայն անոնցմէ կրնայ սպասել զայն: Օտար պետու-թիւնները, որքան ատեն որ իրենց հպատակները չեն նեղուած այդ դէպ-



ՏԻՒՄՈՒՐԻԷ

քերուն հետեւանքով, չեն կրնար արդար պատճառ մը ունենալ ո՛չ անոնցմէ գանգատելու, ոչ ալ թշնամական միջոցներ ձեռք առնելու՝ անոնց վերադարձը արգիլելու համար։ Ազգականութիւնը, թագաւորներու մէջ եղած անձնական խնամութիւնները ոչինչ են ազգերու համար. գերի ըլլան թէ ազատ, հասարակաց շահերը զանոնք իրարու կը կապեն. բնութիւնը իրենց երջանկութիւնը դրած է խաղաղութեան, քաղցր եղբայրութեան մը փոխադարձ օգնութեան մէջ. ազգը ոխի գայրանար, եթէ համարձակէին նոյն կշիռքին մէջ դնել 20 միլիոն մարդոց ճակատագիրը և քանի մը անձերու համակրութիւնները կամ գոռոզութիւնը։ Դատապարտուա՞ծ ենք ուրեմն տակաւին տեսնելու որ ժողովուրդներու կամաւոր ստրկութիւն, երկրիս կեղծ աստուածներու սեղանները շրջապատէ մարդկային զոհերով։

«Այսպէս ուրեմն, Ֆրանսայի դէմ ընկերակցութեան մը ենթադրեալ զըր-

դատապարտուածները ամենքն ալ ուրիշ բաներ չէին, այլ նոր նախատինք մը իր անկախութեան դէմ։ Ֆրանսա իրաւունք ունէր պահանջելու որ, վիրաւորիչ պատրաստութիւններէ հեռ կենային և այդ բանը մերժելը՝ նկատելու էր թշնամութիւն մը. տանք եղան այն սկզբունքները որոնք Ազգային Ժողովին դիմումներուն ուղղութիւն տուին։ Անիկա միշտ խաղաղութիւնը ուզեց, բայց պարտական էր պատերազմը նախընտրել, ազատութեան համար վտանգաւոր դարձող համբերութենէ մը. անիկա չէր կրնար ծածկել որ, Ֆրանսայի թշնամիներուն միակ նպատակը Սահմանադրութեան մէջ փոփոխութիւն մտցնել էր, և անոր հիմունքը կազմող Հաւասարութիւնը բնաջնջել։ Անոնք ուզեցին զայն պատժել, ընդունելուն համար իր ամբողջ ընդարձակութեամբը այն իրաւունքները, որոնք բոլոր մարդերու համար նոյնն են. և ահա այն ատեն է որ Ժողովը այն երդումը ըրաւ, զոր կրկնեցին բոլոր Ֆրանսացիները, նախընտրելով մեռնիլ քան թէ հանդուրժել որ դոյզն հարուած մը կրէ քաղաքացիներու ազատութիւնը, ժողովրդին գերիշխանութիւնը, և մանաւանդ այն հաւասարութիւնը՝ առանց որուն ընկերութեանց համար ոչ արդարութիւն կայ, ոչ երջանկութիւն։

«Պիտի մեղադրէի՞ն Ֆրանսացիները որ, ուրիշ ժողովուրդներու իրաւունքները բաւական չեն յարգեր, որովհետեւ միայն նիւթական փոխարինութիւններ կ'ընծայեն, ըլլա՛յ Ալզասի մէջ սեպհականատէր Գերմանացիներուն, ըլլա՛յ Պապին։

«Դաշնագիրները ընդունած էին Ֆրանսայի գերիշխանութիւնը Ալզասի վրայ, և անիկա արդէն խաղաղօրէն կը գործադրուէր աւելի քան մէկ դարէ ի վեր։ Այն իրաւունքները որ այս դաշնագիրները վերապահած էին, առանձնաշնորհումներ էին միայն. այս վերապահումին իմաստը ուրեմն այն էր որ, Ալզասի սեպհականատէրերը զանոնք պիտի պահէին իրենց նախկին առանձնաշնորհումներով, որքան ատեն որ Ֆրանսայի ընդհանուր օրէնքները հանդուրժէին աւատականութեան զանազան ձեւերուն. այս վերապահումը կը նշանակէր նաեւ որ, եթէ աւատական առանձնաշնորհումները ընդհանուր քանդումի մը ենթարկուէին, ազգը պարտական պիտի ըլլար փոխարինութիւն մը ընելու սեպհականատէրերուն այն իրական առաւելութիւններուն համար, որոնք այդ բանին հետեւանքն էին. որովհետեւ այս է որ միայն կրնայ պահանջել սեպհականութեան իրաւունքը, երբ օրէնքին դէմ կը գտնուի, և հասարակաց շահուն հետ հակասութեան մէջ։ Ալզասի քաղաքացիները Ֆրանսացի են, և ազգը առանց ամօթի և անարդարութեան չի կրնար հանդուրժել որ անոնք զրկուած ըլլան իրաւունքներու պզտիկ մասնիկէ մը որոնք ընդհանուր են բոլոր անոնց որ Ֆրանսա պարտական է հաւասարապէս պաշտպանելու։ Պիտի ըսուի որ կրնանք, այս իշխաններուն փոխարինութիւն մը ընելու համար, անոնց լքել երկրին մէկ մասը։ Ո՛չ. վեհանձն և ազատ ազգ մը մարդիկ չի ծախեր բնաւ, գերութեան չիդատապարտեր, բնակիչներու չիմատներ երբէք զանոնք, որ անգամ մը ազատութիւնը վայելելու հրաւիրած է։

«Քօնդայի քաղաքացիները ազատ էին ինքզինքնուն Սահմանադրութիւն մը տալու. կրնային ինքզինքնին անկախ հռչակել. նախընտրեցին Ֆրանսացի ըլլալ և Ֆրանսա զիրենք որդեգրելէ ետք երբէք չպիտի լքէ։ Եթէ նոյն իսկ անոնց փափաքը գոհացնելու մերժէր, անոնց երկիրը Ֆրանսայի մէջ ընդելուզուած է և չպիտի կրնար ներել անոնց հարստահարիչներուն՝ ազատութեան երկրէն անցնիլ երթալ պատժելու համար մարդիկ որ համարձակած էին անկախ

դառնալ և իրենց իրաւունքներուն տէր կանգնիլ։ Ինչ որ Պապը ունէր այս երկրին մէջ՝ կառավարութեան պաշտօնեաներուն թոշակն էր. ժողովուրդը, պաշտօնները անկէ առնելով, գործադրեց իշխանութիւն մը զոր երկար գերութիւն մը ընդհատած էր, բայց չէր կարողացած անկէ յափշտակել. և Ֆրանսայի առաջարկած փոխարինութիւնը նոյն իսկ արդարութեան պահանջքը չէր։

«Այսպէսով, բնական իրաւունքներու բռնաբարում մըն է որ կը համարձակին պահանջել յանուն Պապին և Ալզասի սեպհականատէրերուն։ Դարձեալ, քանի մը մարդոց յաւակնութիւններուն համար է որ ազգերու արիւնը հոսեցնել տալ կ'ուզեն։ Եւ եթէ Աւստրիոյ Տան Նախարարները կուիւ յայտարարել ուզէին բանականութեան դէմ յանուն Նախապաշարումներու, ժողովուրդներու դէմ յանուն թագաւորներու, ուրիշ լեզու մը չպիտի կրնային գործածել։

«Հասկցնել ուզեցին որ Ֆրանսական ժողովուրդին իղձը՝ իր հաւասարութեան և անկախութեան պահպանումին պատրուակին տակ խռովութիւն յարուցանողներու իղձն էր... բայց Ֆրանսական ազգը Սահմանադրութիւն մը ունի, այդ Սահմանադրութիւնը, ընդունուած, որդեգրուած է քաղաքացիներէն. անիկա միայն կրնայ փոխուիլ ժողովուրդին փափաքովը և ըստ այն ձեւերուն զորս ինքն իսկ նախասահմանեց. որքան ատեն որ անիկա գոյութիւն ունի, անոր հաստատած իշխանութիւնները միայն իրաւունքը ունին ազգային կամքը յայտնելու և անոնց միջոցաւ է որ այդ կամքը յայտարարուած է օտար պետութիւններու, թագաւորն է որ Ազգային Ժողովին հրաւէրին վրայ, և կատարելով այն պաշտօնը զոր Սահմանադրութիւնը իրեն կուտայ, գանգատեցաւ տարագիրներուն ընծայուած պաշտպանութեանը համար և ի զուր պահանջեց որ վերցնեն զայն. ինքն էր որ բացատրութիւններ խնդրեց Ֆրանսայի դէմ կազմուած ընկերակցութեան վրայ. ինքն որ պահանջեց այդ ընկերակցութեան լուծումը և անշուշտ սիրտի զարմանան, երբ իմանան թէ ժողովուրդին հանդիսաւոր իղձը որ հրապարակաւ յայտնուած է իր օրինաւոր ներկայացուցիչներուն կողմէ, քանի մը խռովարարներու աղմուկը կը հռչակուի։ Ի՞նչ տիտղոս կրնան մէջտեղ բերել որ աւելի յարգելի ըլլայ այն թագաւորները որ մոլորուած ազգերը կ'ստիպեն կռուելու իրենց սեպհական ազատութեան շահերուն դէմ որոնք իրենց ալ իրաւունքներն են, Ֆրանսական Սահմանադրութեան բեկորներուն տակ խղդելու իրենց իսկ բաղդաւորութեան սերմերը և մարդկային սեռին ընդհանուր յոյսերը։

«Եւ արդէն, ի՞նչ է խռովարարութիւն մը զոր պիտի ամբաստանէին թէ մարդկային սեռին տիեզերական ազատութիւնը կը դաւադրէր։ Ուրեմն ամբողջ մարդկութիւնն է զոր ստրուկ նախարարներ կը համարձակին նախատել այս խորշելի անունով։

«Բայց, կ'ըսեն թէ, Ֆրանսացիներուն թագաւորը ազատ չէ... Է՜հ... ուրեմն ազատ ըլլալ չէ՞ իր երկրին օրէնքներէն միայն կախում ունենալը. այդ օրէնքներուն հակառակն ընելը, անոնցմէ խուսափիլը, անոնց դէմ օտար ոյժ մը հանելը, իրաւունք մը չպիտի ըլլար, այլ ոճիր մը։

«Այսպէս ուրեմն, մերժելով բոլոր այդ նենգաւոր առաջարկութիւնները, արհամարհելով այդ անամօթ յայտարարութիւնները, Ազգային Ժողովը իր բոլոր արտաքին յարաբերութիւններուն մէջ ներկայացած էր այնքան բարեկամ խաղաղութեան, որքան ժողովուրդին ազատութեան նախանձախնդիր. այսպէս, հանդէպ տարագիրներուն վնասաբեր ներողամտութեան մը շարունակութիւնը, անոնց համախմբումները ցրուելու համար եղած խոստումներուն բացէ ի բաց բռնաբարումը, յայտնապէս թշնամական եղող ընկերակցութենէ մը հեռ քաշուելու մերժումը, այս մեր-

ժումներուն ցոյց տրուած նախատալից դրդապատճառները, որոնք Ֆրանսայի Սահմանադրութիւնը ջնջելու փափաքը կը մատնէին, բաւական էին իրաւացի դարձնելու մեր կողմէն թշնամութիւնները, որոնք երբեք ուրիշ բան չպիտի ըլլային բայց միայն օրինաւոր ինքնապաշտպանութեան մը գործը. որովհետեւ յարձակիլ չէ մեր թշնամիին ժամանակ չթողուլը որ երկար պատրաստութիւններով մեր միջոցները սպառէ, իր բոլոր որոգայթները լարէ, հաւաքէ բոլոր ուժերը, իր առաջին զինակցութիւնները վերահաստատէ, նորեր փնտռէ, մեր մէջ իսկ եղածները գիտնալու միջոցը գտնէ և բազմապատկէ մեր գաւառներուն մէջ դաւադրութիւնները և դաւաճանութիւնները։ Յարձակողի անուան արժանի՞ կ'ըլլաս երբ սպառնալիքի տակ և զրգռուած անարդար և խարերայ թշնամիէ մը, զայն կը զրկես առաջին հարուածները տալու առաւելութենէն։ — Այսպէս, հեռու՝ պատերազմ փնտռելէ, Ազգային Ժողովը ամէն բան ըրաւ անոր առաջքը առնելու համար։ Նոր բացատրութիւններ ուզելով այնպիսի դիտաւորութիւններու վրայ որ տարակոյս չէին վերցներ, անիկա ցոյց տուաւ որ ցաւով կը զրկուէր դէպ ի արդարութիւն վերադարձի մը յոյսէն, և եթէ թագաւորներուն դատողութիւնը շռայլ է իրենց հպատակներուն արիւնին, ազատ ազգի մը ներկայացուցիչներուն մարդասիրութիւնը խնայող է, նոյն իսկ իր թշնամիներուն արիւնին։ Անզգայ բոլոր զրգռումներուն, բոլոր նախատինքներուն, նախկին յանձնառութիւններու հանդէպ եղած արհամարհանքին, նոր խոստումներու բռնաբարումին Ֆրանսայի դէմ լարուած դաւերուն ամօթալի ծածկամտութեանը, այդ խարերայ գթութեան, որուն ներքեւ կը ծածկէին օգնութիւնները, իրենց հայրենիքին դաւաճանող Ֆրանսացիներուն շռայլուած քաջալերանքին, դարձեալ Ժողովը պիտի ընդունէր խաղաղութիւնը, եթէ այն՝ որ իրեն կ'ընծայէին, համաձայն ըլլար Սահմանադրութեան պահպանումին, ազգային գերիշխանութեանը, անկախութեան և Պետութեանը ապահովութեան հետ։

Բայց ան վարագոյրը որ կը ծածկէր մեր թշնամիին դիտաւորութիւնները, վերջապէս պատռեցաւ։ Քաղաքացինե՛ր, ձեզմէ ո՞վ արդարեւ կրնայ ընդունիլ այս ամօթալի առաջարկութիւնները։ Աւատական գերութիւնը ստորնացնող անհաւասարութիւն մըն է, անանկութիւնը և տուրքերը որ մինակնիդ պիտի վճարէիք, տասանորդները և խուզարկութիւնները, ձեր սեպհականութիւնները որ գնած էք հանրութեան վստահելով, դարձուած՝ իրենց նախկին բռնատէրերուն, վայրենի կենդանիները վերահաստատուած ձեր դաշտերը աւերելու իրաւունքին մէջ, ձեր արիւնը վատնուած թշնամի Տան մը փառասիրական ծրագիրներուն համար, ահա՛ ատոնք են այն պայմանները դաշնագրին զոր կնքեցին Հունգարիոյ թագաւորը և դաւաճան Ֆրանսացիները։

«Այս է այն խաղաղութիւնը որ քեզի կ'առաջարկուի։ Ո՛չ, դուք երբեք զայն չպիտի ընդունիք. վատերը Քոպլէնցի մէջ են, և Ֆրանսա իր ծոցին մէջ ունի միայն ազատութեան արժանի մարդիկ։

«Հունգարիոյ թագաւորը իր և զինակիցներուն անունով կը ծանուցանէ յայտագիրը որով ֆրանսական ազգէն կը պահանջէ իր իրաւունքներուն լքումը. կը հասկցնէ որ այնպիսի զոհողութիւններ պիտի հրամայէ, որ միմիայն իր բնաջնջումի վախը ընդունիլ պիտի տայ... էհ, լաւ, ազգը երբեք չպիտի հպատակի այդ հրամաններուն։ Այդ վիրաւորիչ դատողութիւնը, հեռու զինքը վախցնելէ, ուրիշ բան չկրնար ըլլալ բայց եթէ իր քաջութիւնը գրգռել։ Ժամանակ պէտք է բռնապետութեան գերիները կարգապահութեան մէջ դնելու համար. բայց ամէն մարդ զինուոր է, երբ բռնապետութեան դէմ կը կռուի. յանուն վտանգի մէջ եղող հայրենիքին, ամէն

իր մթին Թագաւորներէն դուրս պիտի ելլայ. այս փառասէր և ցած մարդիկը, այս ապականութեան և նենգաւորութեան գերիները, ժողովուրդին այս վատ զրպարտիչները, որոնց ամօթալի օգնութիւնը կը յուսային մեր թշնամիները, պիտի կորսնցնեն կուրցած - կամ սնամիտ քաղաքացիներու նեցուկը զորս խաբած էին կեղծաւոր յայտարարութիւններով և Փրանսական կայսրութիւնը, իր ընդարձակ տարածութեան մէջ այլ ևս մեր թշնամիներուն պիտի ներկայացնէ միայն կամք մը, կամքը՝ յաղթելու կամ բոլորովին կործանելու Սահմանադրութեան և իր օրէնքներուն հետ։»

Պատերազմի լուրը ընդհանուր ուրախութիւն պատճառեց։ Հայրենասէրները անոր մէջ կը տեսնէին տարագիրներուն և Թագաւորին անկայուն վարմունքին պատճառած վախերուն վախճանը. չափաւորները որոնք մանաւանդ սարսափած էին պառակտումներու վտանգէն, կը յուսային որ հասարակաց վտանգը վերջ մը պիտի դնէր անոր և թէ պատերազմի դաշտը պիտի կրուէր բոլոր այդ աղմկալի մարդիկը, զորս յեղափոխութիւնը ծնած էր։ Քանի մը Ֆէօյեաններ միայն, որոնք շատ տրամադիր էին Ժողովին սխալներ վերագրելու, կը մեղադրէին զայն որ Սահմանադրութիւնը բռնաբարած է, ըստ որում Ֆրանսա երբեք յարձակողական դիրքի մէջ չպիտի ըլլար։ Բայց հոս շատ ակնյայտ է որ Ֆրանսան չէր յարձակող։ Այսպէս ուրեմն, Թագաւորէն և քանի մը գժգոհներէն զատ, պատերազմը ընդհանուրի իղձն էր։

Լաֆայէթ պատրաստուեցաւ քաջաբար ծառայելու իր երկրին, այս նոր ասպարէզին մէջ։ Ինքն էր որ մասնաւորապէս բեռնաւորուած էր Տիւմուրիէի յղացած ծրագիրը գործադրելու, որ ըստ երեւոյթին Տէկրավի հրամայածն էր։ Տիւմուրիէ իրաւամբ պարծենցած էր և բոլոր հայրենասէրներուն յոյս ներշնչած էր որ, Պելճիքայի վրայ արշաւելը շատ դիւրին պիտի ըլլար։ Այս երկիրը, դեռ նոր յեղափոխութիւնով մը խռովուած, զոր Աւստրիա զսպած էր, տրամադիր ըլլալու էր յեղափոխուելու առաջին անգամ որ Փրանսացիներ երեւային հոն. և այնատեն պիտի իրականանար այն խօսքը որ Ժողովը ղրկած էր վեհապետներուն. «Եթէ դուք մեզի պատերազմ ղրկէք, մենք ձեզի ազատութիւն պիտի ղրկենք։» Ասիկա, արդէն Տիւմուրիէի յղացած ծրագրին գործադրութիւնն էր, որ կը կայանար մինչև բնական սահմանագլուխները տարածուելուն մէջ։ Ռօշամպօ հրամանատարն էր այն բանակին որ ամենէն մօտն էր գործի դաշտին, բայց կարելի չէր այդ գործողութիւնը անոր յանձնել իր վշտոտ և հիւանդագին տրամադրութիւններուն պատճառաւ, և մանաւանդ, որովհետև նուազ կարող էր քան Լաֆայէթ, կէս զինուորական, կէս մըն ալ ժողովրդային արշաւանք մը ընելու։ Պիտի ուզէին որ Լաֆայէդ ընդհանուր հրամանատարը ըլլար, բայց Տիւմուրիէ մերժեց, անշուշտ չարակամութեամբ։ Պատճառ ցոյց տուաւ որ չէր կրնար մարաջախտի մը ներկայութեան այս զինուորական գործողութեան ընդհանուր հրամանատարութիւնը տալ պարզ զօրավարի մը։ Ասկէ զատ, ըսաւ թէ, Լաֆայէթ կասկածելի էր Ժաքօպէններուն և Ժողովին, ու այս պատճառաբանութիւնը նուազ դէշ էր։ Ճիշդ է որ երիտասարդ, գործունեայ, և բոլոր զօրավարներուն մէջ միակը, որ սիրուած ըլլար իր բանակէն, Լաֆայէթ կը սարսափեցնէր գերագրգռուած երեւակայութիւնները, և իր ազդեցիկութեամբը տեղի կուտար չարակամներու զրպարտութեանց։ Ինչ որ ալ ըլլայ, հաճոյակատարութեամբ ինքզինքը առաջարկեց գործադրելու դիւանագէտ և միանգամայն զինուորական

նախապատին ծրագիրը. 50,000 հոգի ուզեց, որոնցմով առաջացրեց մինչեւ Լիէժ երթալ, անցնելով Նամիւրէն և Մէօզէն, ուրկէ պիտի տիրէր Հոլանտայի: Այս բանիմաց ծրագիրը գնահատուեցաւ Տիւմուրիէէն. պատերազմը արդարեւ քանի մը օրէ ի վեր միայն յայտարարուած էր. Աւստրիա ժամանակ չէր ունեցած պաշտպանելու իր Պելճիգայի մէջ ունեցած սեպհականութիւնները և յաջողութիւնը ապահովուած կը թուէր: Հետեւաբար, Լաֆայէթ հրաման ստացաւ նախ փոխադրուելու 10,000 հոգիով Ժիվէէն Նամուրի վրայ, և Նամուրէն Լիէժի կամ Պրիւքսէլի վրայ. ամբողջ բանակը անմիջապէս պիտի հետեւէր իրեն: Մինչ այս շարժումը կը գործադրէր, տեղակալ զօրավար Պիրոն պէտք էր մեկնէր դէպի Վալանսիէն 10,000 հոգիով և ուղղուի Մոնսի վրայ: Ուրիշ սպայ մը հրաման առած էր քալելու Թուրնէի վրայ և զայն գրաւելու յանկարծ: Այս շարժումները, զորս Ռօշամպոյի սպաները պիտի կատարէին, ուրիշ նպատակ չունէին, բայց եթէ օգնել և ծածկել իրական յարձակումը, որ յանձնուած էր Լաֆայէթին:

Որոշուեցաւ որ այս յատակագիծը գործադրուէր Ապրիլ 20էն Մայիս 2ին: Պիրոն ճամբայ ելաւ, Վալանսիէնէն դուրս ելաւ, գրաւեց Քիէվրէնը, և Մոնսի մօտ գտաւ քանի մը թշնամի գումարտակներ: Յանկարծ իր վիշապազօրաց երկու զօրագունդերը, նոյն իսկ թշնամին չտեսնելով իրենց գլխուն վրայ, գոչեցին, մատնուած ենք. կը փախչին և ամբողջ զօրաբանակը իրենց հետ կը քաշեն. Ի զուր սպաները կ'ուզեն զիրենք կեցընել: Կ'սպառնան զանոնք հրացանազարկ ընել և կը շարունակեն փախչիլ: Բանակը մատնուած է և բոլոր զինուորական գոյքերը կը յափշտակուին կայսերականներու կողմէ: Մինչ այս դէպքերը կ'անցնէին Մոնսի մէջ՝ Թէօպալտ Տիյեօն, բաց ընդունուած յատակագիծին, երկու հազար հետեւակով և հազար հեծելազօրքով Լիլէն կը մեկնի: Այն ժամուն իսկ որ Պիրոնին դժբաղդութիւնը տեղի կ'ունենար, հեծելազօրքը, քանի մը աւստրիական գումարտակներ տեսնելով, ետ կը քաշուի գոչելով որ մատնուած է. իրեն հետ կը տանի հետեւակները և անգամ մըն ալ գոյքը կը լքուի թշնամիներուն: Թէօպալտ Տիյեօն և ամրաշէն սպայ մը Պէրթուա անունով, կը կոտորուին զինուորներէն և Լիլի բնակիչներէն որոնք զիրենք կ'ամբաստանեն իբր մատնիչ: Այդ միջոցին Լաֆայէթ, որ շատ ուշ տեղեկացած էր, Մէցէն Ժիվէ հասած էր աննկարագրելի դժուարութիւններ կրելէ և գրեթէ անանցանելի ճամբաներ կտրելէ ետքը: Իր զօրաբանակին խանդին միայն կը պարտէր այսքան քիչ ատենի մէջ կտրելը այն ահագին անջրպետը ուրկէ պէտք էր անցնիլ: Հոն իմանալով Ռօշամպոյի սպաներուն աղէտը, կարծեց որ պարտաւոր էր կենալ: Այս աղետալի դէպքերը տեղի ունեցան 1792ի Ապրիլի վերջերը:

Քիէվրէնի և Թուրնէի կռիւներուն դժբաղդ ելքին և զօրավար Տիյեօնի սպաննութեան լուրը, ընդհանուր վրդովմունք մը պատճառեց: Բնական էր ենթադրել թէ այս երկու դէպքերը նախապատրաստուած էին, դատելով այն բանէն որ մէկը միւսին օգնած էր և զուգադիպած էր: Բոլոր կուսակցութիւնները զիրար ամբաստանեցին: Ժաքոպէնները և գերադրգռուած հայրենասէրները պնդեցին որ ուզուած էր ազատութեան դատը մատնել: Տիւմուրիէ, Լաֆայէթը չէր ամբաստաներ, բայց կը կասկածէր Ֆէօյեաններէն և կարծեց որ իր յատակագիծը անյաջողութեան մատնել ուզեցին զինքը անժողովրդական դարձնելու համար: Լաֆայէթ դանդաղեցաւ, բայց նուազ դատնութեամբ, քան իր կուսակցութիւնը այն բանին համար որ զինքը շատ ուշ

տեղեկացուցած էին ճամբայ ելլելու համար, և թէ համնելու համար բոլոր միջոցները չէին հայթայթած։ Ասկէ զատ Ֆէօյյանները լուր տարածեցին թէ Տիւմուրիէ ուզած էր Ռօշամպօն և Լաֆայէթը կորստեան մատնել անոնց գծելով յատակագիծ մը, առանց զայն գործադրելու միջոցները տալու։ Այսպիսի դիտաւորութիւն մը կարելի չէր ենթադրել, որովհետև Տիւմուրիէ այսպէս պատերազմի յատակագիծեր չինելով և այս աստիճան հեռանալով իր արտաքին գործոց նախարարի դերէն, շատ ծանր վտանգի կ'ենթարկէր ինքզինքը, եթէ չի յաջողէր։ Արդէն Պելճիքան Ֆրանսայի և ազատութեան տալու ծրագիրը մաս կը կազմէր երկար ատենէ ի վեր մտածուած յատակագծի մը։ Ինչպէ՞ս կարելի է ենթադրել որ անոր յաջողութիւնը վտանգել ուզէր։ Յայտնի էր որ ո՛չ զօրավարները, ոչ ալ նախարարները չարակամութիւն կրնային ունել այս գործին մէջ, որովհետև ամենքն ալ յաջողութեան մէջ շահ ունէին։ Բայց կուսակցութիւնները միշտ մարդիկ կը դնեն պարագաներու տեղ, որպէս զի կարենան մէկուն օձիքը բռնել, իրենց պատահած չարիքներուն համար։

Տէկրամ, այս վերջին զինուորական դէպքերուն յառաջ բերած աղմուկէն սարսափած, ուզեց թօթափել այն բեռը որ շատոնց ի վեր զինքը կը ճնշէր և Տիւմուրիէ սխալը գործեց զայն կրել չուզելու։ Լուդովիկոս ԺԶ. միշտ Ժիրոնտի ազդեցութեան տակ, այս նախարարութիւնը յանձնեց Սէրվանին, նախկին նախարար, ծանօթ իր հայրենասիրական համոզումներով։ Այս ընտրութիւնը նոր ուժեր տուաւ Ժիրոնտին որ գրեթէ մեծամասնութիւն ունեցաւ դահլիճին մէջ, Սէրվանը, Գլավիէռը և Ռօլանը իր տրամադրութեան ներքեւ ունենալով։ Այս վայրկեանէն նախարարներու մէջ անմիաբանութիւնը սկսաւ պայթիլ։ Ժիրոնտը օրէ օր աւելի կասկածոտ և հետևաբար աւելի պահանջկոտ կը դառնար, որպէս զի Լուդովիկոս ԺԶ. իր բարեացակամութեան հաւատքը ընծայէր։ Տիւմուրիէ, որ քիչ կը հպատակէր կարծիքներու և որ զզուած էր Լուդովիկոս ԺԶ.ի վստահութենէն, միշտ անոր կողմը կը բռնէր. և Լաքոստ որ շատ ուժով կապուած էր թագաւորին, նոյնը կ'ընէր։ Տիւրանթօն չէզոք կը մնար, և որոշ նախասիրութիւն ցոյց կու տար միայն ամենէն ակար կուսակցութիւններուն։ Սէրվան, Գլավիէռ և Ռօլան անձկելի էին. բոլորովին տոգորուած՝ իրենց բարեկամներուն վախերով, ամէն օր աւելի դժուարահաճ և անհամբեր կը դառնային։ Վերջին պարագայ մը Տիւմուրիէն բոլորովին գժտեցուց Ժիրոնտի գլխաւոր անդամներուն հետ։ Արտաքին գործոց նախարարութիւնը ընդունած ատեն 6 միլիոն ուզած էր գաղտնի ծախսերու համար, և որուն մասին ստիպուած պիտի չըլլար հաշիւ տալու։ Ֆէօյեանները հակառակած էին, բայց Ժիրոնտը իր դիմումը յաջողցնել տուած էր և վեց միլիոն փրանքը իրեն տրուեցաւ։ Բէտիոն գրամագլուխ ուզած ըլլալով Բարիզի ոստիկանութեան համար, անոր 30,000 ֆր. կապած էր ամսական. բայց Ժիրոնտէն ըլլալէ դադրելով, հաւանեցաւ այդ գումարը միայն մէկ անգամ վճարելու։ Միւս կողմէ իմացուեցաւ, կամ կասկածեցան թէ 100,000 փրանք մխած էր իր հաճոյքներուն համար։ Ռօլան, որուն տունը կը հաւաքուէր Ժիրոնտը, այդ բանին վրայ զայրացաւ իրեններուն հետ։ Նախարարները փոխն ի փոխ մէկզմէկու տուն կ'ընթրէին, խօսակցելու համար հանրային գործերու վրայ։ Երբ Ռօլանի տունը հաւաքուէին, կինը և իր բոլոր բարեկամները ներկայ կ'ըլլային. և այն ատեն կարելի է ըսել թէ, Ժիրոնտն իսկ էր որ դահլիճը կը կազմէր։ Այս հա-

ւաքումներէն մէկուն մէջ էր որ Տիւմուրիէի յանդիմանութիւններ ըրին՝ իր գաղանի ծանօթուն վրայ. Նախ, անիկա պատասխանեց արամութիւնով և թեթեւութեամբ, յետոյ նեղացաւ և վճռական ձեւով մը դժուեցաւ Ռօլանին և Ժիրոնտէններուն հետ։ Այլ եւս չերեւցաւ սովորական հաւաքոյթներուն և իբր դրդապատճառ ցոյց տուաւ թէ, չէր ուզեր հանրային գործերով զբաղիլ, ոչ կնոջ մը և ոչ ալ Ռօլանի բարեկամներուն ներկայութեամբ։ Այլ սակայն, քանի մը անգամ գնաց Ռօլանին տունը, բայց գործերու վրայ չխօսեցաւ, կամ գոնէ՝ շատ քիչ։ Ուրիշ միաբանութիւն մը զայն բոլորովին բաժնեց Ժիրոնտէններէն։ Կուատէ, իր կուսակցութեան ամենէն եռանդունը, նամակի մը ընթերցումը ըրաւ, որով կ'ուզէր որ նախարարները թագաւորէն խօսք առնէին թէ, երդուեալ քահանայ մը ընտրէր իր խոստովանահայր։ Տիւմուրիէն պնդեց թէ նախարարները չէին կրնար միջամտել թագաւորին կրօնական պարտաւորութիւնները կատարելու ձեւին մէջ։ Ճիշդ է որ Վէրժնիօ և Ժանսօնէ հաւանեցան իրեն, բայց բանակռիւը նուազ ուժգին չեղաւ և խզումը վերջնական դարձաւ։

Թերթերը սկսան յարձակիլ Տիւմուրիէի վրայ։ Ֆէօյեանները որ արդէն իր դէմ էին, այն ատեն տեսան որ ժաքօպէնները և Ժիրոնտէնները կ'օգնեն իրենց. Տիւմուրիէ ամէն կողմէ յարձակում կրելով, հաստատ կեցաւ փաթօրիկին դէմ, և քանի մը օրագրողներ հալածել տուաւ։

Արդէն ամբաստանագիր մը հանած էին Մարայի դէմ Ժողովուրդին Բարեկամը հեղինակին, սարսափելի երկ մը, ուր յայտնապէս սպանութիւն կը պահանջէր և ամենէն յանդուգն նախատինքները կ'ուղղէր արքայական ընտանիքին և բոլոր այն մարդոց՝ որոնք կասկածելի էին իր զառանցող երեւակայութեան առջեւ։ Այս ամբաստանութեան ազդեցութիւնը հակակշռելու համար, ամբաստանեցին նաև Ռուաեուն, Թագաւորին Բարեկամը խմբագիրը որ կը հալածէր հանրապետականները նոյն անուժգնութեամբ, զոր Մարա կը յայտնէր թագաւորականներուն դէմ։

Երկար ատենէ ի վեր, ամէն տեղ կը խօսէին աւստրիական կուսակցութեան մը վրայ. հայրենասէրները անոր մասին կը խօսէին քաղաքին մէջ, ինչպէս արքունիքին մէջ կը խօսուէր Օռլէանական խռովարարական խումբի մը վրայ։ Այս կուսակցութեան գաղտնի և վտանգաւոր ազդեցութիւն մը կը վերագրէին, որ կը գործադրուէր թագուհիին միջոցաւ։ Եթէ Սահմանադիր Ժողովին ատեն բան մը գոյութիւն ունեցած էր, որ նմանէր աւստրիական կուսակցութեան մը, այդպիսի բան չկար Օրէնսդիր Ժողովի ատեն։ Այն ատեն մեծ անձնաւորութիւն մը որ Հօլանտայի մէջ կը գըտնուէր, կը թղթակցէր թագուհիին հետ և իր ընտանիքին անունով, բաւական խելացի խորհուրդներ կուտար, որուն, Փրանսայի միջնորդը, խոհեմութիւն կ'աւելցնէր իր բացատրութիւններով։ Բայց Օրէնսդիր Ժողովի օրով, այս գաղտնի հաղորդակցութիւնները գոյութիւն չունէին այլ եւս. Թագուհիին ընտանիքը իր թղթակցութիւնը շարունակած էր, բայց անօգուտ անոր խորհուրդ կուտային համբերել և համակերպիլ։ Միայն Պէրթրան տը Մօլէվիլ և Մօնմօրէն Պալատ կը յաճախէին դեռ՝ իրենց նախարարութենէ ելլելէն ետքն ալ։ Անոնց դէմ է որ կ'ուղղուէին բոլոր կասկածները և իրաւամբ ալ բոլոր գաղտնի գործառնութեանց միջնորդներն էին։ Մարա զիրենք ամբաստանեց։ Որոշած ըլլալով զայն հետապնդել իբր զրպարտիչ, հրամայեցին անոր երեւան հանել իր ամբաստանութիւնը ապացուցանող թուղթերը. օրագրողը ապաւինեցաւ երեք երեսփոխանի և անուանեց Շապօ,



ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՌՕԼԱՆ

Մէրլէն և Պազիր, իբր հեղինակ այն տեղեկութիւններուն՝ զորս հրատարակած էր: Լարիվիէռ դատաւորը, որ նուիրուած էր Թագաւորին դատին, շատ քաջութեամբ կը հետապնդէր այս գործը, յանդգնութիւնը ունեցաւ ձերբակալման հրամանագիր մը հանելու՝ երեք նշանակուած Երեսփոխաններուն դէմ: Ժողովը, վիրաւորուելով իր անդամներուն անբռնաբարելիութեան դէմ գործելու համարձակած ըլլալուն, դատաւորին պաշտօնանկ ամբաստանագիրով մը և անբաղդ Լարիվիէռը ղրկեց Օրլէան:

Այս դժբաղդ փորձը ուրիշ բան չըրաւ, բայց եթէ աւելցնել ընդհանուր վրդովմունքը և ատելութիւնը, որ կը տիրէր արքունիքին դէմ: Ժիրոնտը, այլեւս ինքզինքը Լուդովիկոս ԺԶ. ի տէրը չէր համարեր այն օրէն ի վեր, որ Տիւմուրիէ գրաւած էր զայն և վերադարձած էր իր ուժգին ընդդիմադիրի դերին:

Թագաւորին նոր սահմանադրական

պահակախումբը շատ ատեն չկար որ կազմուած էր։ Պէտք էր որ, ըստ օրէնքի, կազմէին նաև քաղաքային պաշտօնէութիւնը, բայց աղնուականութիւնը չէր ուզեր այդ ասպարէզը մտնել, ընդունած չըլլալու համար Սահմանադրութիւնը՝ անոր սահմանած պաշտօնները ստանձնելով։ Միւս կողմէ չէին ուզեր զայն կազմել՝ նոր մարդերով և վազ անցան։ «Ի՞նչպէ՞ս կ'ուզէք, Տիկի՛ն, կը գրէր Պարնավ՝ Թագուհիին, ամենափոքր կասկած մը ներշնչել այս մարդոց՝ ձեր զգացումներուն վրայ։ Երբոր հրաման կ'ընեն ձեզի զինուորական և քաղաքային պաշտօնէութիւն մը կազմելու, Լիքօմէդի աղջիկներուն մէջ գտնուող երիտասարդ Աքիլլէսի նման, անձապարանքով ձեռք կ'առնէք թուրը և կ'արհամարհէք պարզ զարդերը։» Նախարարները և Պէրթրան ինքն ալ իրենց կողմէ պնդեցին Պարնավի ուղղութեամբ. բայց չկրցան յաջողիլ և քաղաքային իշխանութեան կազմութիւնը մէկ կողմ դրուեցաւ։

Զինուորական պաշտօնէութիւնը, որ կազմուած էր Տըլէսարի առաջարկած յատակագիծին վրայ, կը բաղկանար մէկ երրորդ մասով՝ պատերազմիկ գումարտակներէ և երկու երրորդ մասով՝ երիտասարդ քաղաքացիներէ, որոնք ընտրուած էին ազգային պահակախումբին մէջէն։ Այս կազմութիւնը ապահովիչ պէտք էր ըլլար։ Բայց պատերազմիկ գումարտակներու սպաներն ու զինուորները այնպիսի ձեւով մը ընտրուած էին, որ հայրենասէրները վախու մէջ էին։ Անոնք միացած էին հակառակելու համար այն երիտասարդներուն, որոնք առնուած էին ազգային պահակախումբէն, զզուանքով կը լեցնէին զանոնք և նոյն իսկ՝ շատերը կը ստիպուէին քաշուիլ։ Հրաժարածներուն տեղը կ'անցնէին անմիջապէս վատահոգիները։ Վերջապէս, այս պահակախումբին թիւը շատ աւելցած էր. որովհետև օրէնքով որոշուած 1800 հոգիին տեղ կ'ըլլէին որ 6000ի կը հասնէր։ Տիւմուրիէ այս մասին տեղեկացուցած էր Թագաւորը, որ անդադար կը պատասխանէր թէ ծերուկ մը Պրիսաք դուքսը, այս զօրագունդին պետը, կարելի չէր դաւադիր մը նկատել։ Այլ սակայն, նոր պահակախումբին վարմունքը այնպէս մըն էր պալատին մէջ և այլուր, որ ամէն կողմէ կասկածները պայթեցան և աղմուկները անով գրգռուեցան։ Նոյն միջոցին 12 զուիցերիացի զինուորներ Նէօյիի մէջ ճերմակ գինանշաններ պարզեցին. մեծ քանակութեամբ թուղթեր այրուեցան Սէվրի մէջ(*) և ծանր կասկածներ ներշնչեցին։ Վտանգի վախը այն ատեն ընդհանուր եղաւ. ժողովը յարատև կերպով նիստի մէջ ըլլալը յայտարարեց, ինչպէս եթէ այն օրերուն մէջ գտնուէր՝ երբ 30,000 հոգի կը սպառնային Բա-

---

(*) Տիկին Քամբանի Յիշատակներուն մէջ կը գտնենք այս այրուած թուղթերուն պատմութիւնը։ Կը պատմէ որ, օր մը շատ յարգելի քահանայ մը եկաւ իմացնելու, որ տիկին Լամօլ նոր հրատարակութիւն մը ըրեր էր, որուն նիւթը կը կազմէր Թագուհիին անձը, թէ կարելի էր այդ հրատարակութեան տարածումը արգիլել՝ եթէ հեղինակը կաշառէին։ Տիկին Քանբան կը յայտնէ Թագուհիին այս բանը, որ կը մերժէ ու և է կերպով ծախու առնել այդպիսի պարսաւագիրներ։ Կ'ըսէ թէ՝ այն ժամանակ իսկ, երբ ազատ էր խստօրէն վարուիլ այդ կարգի մարդոց դէմ, ինքը արհամարհոտ եղած էր. իսկ հիմա զիրենք կաշառելը իրենցմէ վախնալ պիտի նշանակէր։ Բայց Թագաւորը իր կարգին իմանալով եղելութիւնը, առանց Թագուհիին գիտութեան, կը գնէ բոլոր օրինակները և այրել կու տայ Սէվրի յախճապակիի գործարանին փուռին մէջ. այս այրուած թուղթերն են որ զանազան կասկածներ ներշնչած են։

րիզի։ Ճիշդ է սակայն, որ ամէն կողմ խռովութիւններ կային, թէ՛ ոչ-երդուեալ քահանաներ կը գրգռէին ժողովուրդը հարաւային գաւառներու մէջ և խոստովանութեան գաղտնապահութիւնը չարաչար գործածելով մոլեռանդութիւնը կ՚արթնցնէին. թէ պետութիւններու համաձայնութիւնը ակներեւ էր. թէ Բրուսիա պիտի միանար Աւստրիոյ, թէ օտար բանակները սպառնալիք կը դառնային և թէ Լիլի և Մոնսի վերջին ալեկոծումներով բոլոր մտքերը պաշարուած էին։ Ճիշդ է նաև որ ժողովուրդին իշխանութիւնը քիչ հաւատք կը ներշնչէ, թէ մարդիկ չեն հաւատար անոր, մինչև որ անիկա չգործադրուի և թէ անկանոն ամբոխը, որքան ալ բազմաթիւ ըլլայ, չկրնար հակակշռել 6000 զինուած և մարզուած զինուորի ուժին։

Ժողովը, ուրեմն, աճապարեց ինքզինքը տեւական յայտարարել (Մայիս 18ի նիստ) և ճշգրիտ տեղեկագիր մը պատրաստեց Թագաւորին պահակազօրքին կազմութեան, թիւին, ընտրութեան և զայն կազմողներուն վարմունքին վրայ։ Հաստատելէ ետքը որ Սահմանադրութիւնը բռնաբարուած էր, արձակման հրամանագիր մը հանեց պահակախումբին դէմ, և ամբաստանագիր մըն ալ՝ տը Պրիսաք դուքսին դէմ, ու այս երկու հրամանագիրները ղրկեց Թագաւորին՝ վաւերացման։ Թագաւորը նախ ուզեց իր վէթօն գործածել։ Տիւմուրիէ անոր յիշեցուց իր թիկնապահները ճամբելը, որոնք շատ աւելի իր ծառայութեան մէջ հին էին, քան այս նոր զինուորական պահակախումբը և զայն հրաւիրեց շատ աւելի դիւրին զոհողութիւն մը կրկին կատարել։ Թագաւորին մատնանշեց նաև պահակախումբին խրական յանցանքները, և ձեռք անցուց հրամանագրին գործադրութիւնը։ Նախարարը անմիջապէս պնդեց որ պահակախումբը շուտով վերստին կազմուի, բայց Թագաւորը մերժեց արձակուած պահակախումբին տեղը նոր մը դնել, որովհետեւ թէ՛ վերադառնալով իր նախկին քաղաքականութեան, կ՚ուզէր ճնշման տակ ցոյց տալ ինքզինքը, և թէ՛ յոյս ունէր դեռ այս արձակուած պահակախումբին վրայ որուն թօշակը գաղտնապէս շարունակեց տալ և այսպէսով առանց պաշտպանութեան՝ ենթարկուած եղաւ ժողովրդային զայրոյթին։

Ժիրօնտը, յուսահատելով Թագաւորին տրամադրութիւններէն, հետապնդեց իր յարձակումը՝ յարատեւութեամբ։ Արդէն նոր հրամանագիր մը հանած էր քահանաներուն դէմ, փոխարինելու համար այն՝ զոր Թագաւորը մերժած էր վաւերացնել։ Որովհետեւ տեղեկագիրները անընդհատ կը յաջորդէին անոնց խռովարար վարմունքին վրայ, այս հրամանագրով զանոնք արտաքսումի կը դատապարտէր Ժողովը։ Ցանցաւորները որոշել դժուար ըլլալով, և այս հրամանին՝ ինչպէս բոլոր ապահովութեան միջոցներուն գործադրութիւնը կասկածներու վրայ հիմնուած ըլլալով, ձեւով մը իրենց համբաւին համեմատութեամբ էր որ քահանաները պատիժ կը կրէին և կ՚արտաքսուէին։ Քսան գործօն քաղաքացիի ամբաստանութեան վրայ և թեմին վարչութեան հաւանութեամբը՝ նահանգային վարչութիւնը կ՚արձակէր արտաքսումի վճիռը. դատապարտուած քահանան գաւառակէն պէտք էր մեկնիլ՝ 24 ժամուան մէջ, նահանգէն՝ 3 օրուան և Թագաւորութենէն՝ մէկ ամսուան մէջ։ Եթէ դրամ չունէր, մինչև սահմանագլուխ օրը 3 ֆրանք կու տային։ Այս խիստ օրէնքը ժողովին հետզհետէ աճող գրգռութեան մասին գաղափար մը կու տար. 27 Մայիսի այդ հրամանագրէն ետք, Յունիս 8ին ուրիշ հրամանագիր մը անմիջապէս յաջորդեց անոր. Սերվան նախարարը առանց Թագաւորէն այս մասին հրաման առնելու և առանց իր ընկեր-

ներուն հետ խորհրդակցելու, առաջարկեց Յուլիս 14ի յառաջիկայ դաշնակցութեան տօնին, 20,000 դաշնակիցներէ բանակ մը կազմել, որ յատկացուած պիտի ըլլար Ժողովը և մայրաքաղաքը պաշտպանելու։ Դիւրին է ըմբռնել թէ ի՛նչ փութաջանութեամբ այս ծրագիրը ընդունուեցաւ Ժողովին մեծամասնութենէն, որ Ժիրոնտէններէ կազմուած էր։ Այդ միջոցին ասոնց ազդեցութիւնը իր լրումին մէջ էր. Ժիրոնտէնները կը կառավարէին Ժողովը, ուր սահմանադրականները և հանրապետականները փոքրամասնութիւն կը կազմէին և ուր, անկողմնակալ կարծուածները, ինչպէս ամէն ժամանակի մէջ, միայն անտարբեր էին, և միշտ աւելի հոն կ՚ըլլային, քանի մեծամասնութիւնը ազդեցիկ կը դառնար։ Ասկէ զատ, Բարիզը իրենց տրամադրութեան ներքեւ էր Բէդիոն քաղաքապետին միջոցաւ որ ամբողջովին իրենց կը պատկանէր։ Իրենց յատակագիծն էր առանց անձնական փառասիրութեան, բայց կուսակցական և կարծիքի փառասիրութիւնով առաջադրուած բանակին միջոցաւ թագաւորին տէրը դառնալ, և այսպէսով պաշտպանուիլ անոր կասկածելի դիտաւորութիւններուն դէմ։

Հազիւ թէ Սէրվանի առաջարկութիւնը հասկցուեցաւ, Տիւմուրիէ անոր հարցուց Ժողովին մէջ և ամենամեծ ուժգնութեամբ թէ ի՛նչ համգամանքով այդպիսի առաջարկութիւն մը կ՚ընէր։ Պատասխանեց թէ անհատական հանգամանքով էր. «Այդ պարագային, ըսաւ Տիւմուրիէ, Սէրվան անունին քով պէտք չէ դնել պատերազմական նախարարի հանգամանքը։» Վիճաբանութիւնը այնքան բուռն եղաւ, որ եթէ թագաւորին ներկայութիւնը չըլլար, արիւն կրնար հոսիլ Ժողովին մէջ։ Սէրվան տրամադրութիւն յայտնեց առաջարկութիւնը ետ առնելու. բայց արդէն անօգուտ պիտի ըլլար, որովհետեւ, Ժողովը անոր տէր եղած էր և թագաւորը ուրիշ բան չահած պիտի չըլլար, բայց եթէ՝ բռնութիւն բանեցնող երեւալ իր նախարարին վրայ։ Ուրեմն, Տիւմուրիէ արգելք եղաւ. առաջարկութիւնը մնաց և անոր դէմ հանուեցաւ խնդրագիր մը, զոր ստորագրած էին 8000 ազգային պահակազօրքեր, որոնք վիրաւորուած էին, որ Ժողովը պաշտպանելու համար իրենց ծառայութիւնը անբաւական կը կարծուէր։ Այլ սակայն Սէրվանի առաջարկութիւնը հրամանագրի վերածեցին և ղրկեցին թագաւորին։ Այսպէսով երկու կարեւոր հրամանագիրներ կային վաւերացուելիք և արդէն կը կասկածէին որ թագաւորը իր հաւանութիւնը պիտի մերժէր։ Հոն կը սպասէին այդ բանին, անոր դէմ վերջնական վճիռ մը արձակելու համար։

Տիւմուրիէ Դահլիճին մէջ պնդեց որ այս միջոցը աղիտաբեր պիտի ըլլայ գահուն, բայց մանաւանդ Ժիրոնտէններուն, որովհետեւ, նոր բանակը պիտի կազմուէր ամենէն կատաղի Ժաքօպէններու ազդեցութեան ներքեւ։ Այլ սակայն, աւելցուց որ, թագաւորը զայն պէտք է ընդունի, որովհետեւ, եթէ մերժէր 20,000 հոգիի կանոնաւորապէս ընտրուելով հրաւիրուիլը, 40,000 հոգի ոտքի պիտի ելլէին ինքնաբերաբար և պիտի արշաւէին մայրաքաղաքին վրայ. Տիւմուրիէ ապահովցուց ալ որ այս բանը չեզոքացնելու միջոց մը ունէր և թէ յարմար ժամանակին պիտի իմացնէր։ Պնդեց նաև որ քահանաներու արտաքսումի հրամանագիրը պէտք էր վաւերացնել, որովհետեւ անոնք յանցաւոր էին, և թէ, արդէն, արտաքսումը զանոնք գերծ կը կացուցանէր իրենց թշնամիներուն կատաղութենէն։ Լուդովիկոս ԺԶ. դեռ կը վարանէր, և պատասխանեց որ աւելի լաւ պիտի խորհէր այդ բանին վրայ։ Նոյն նախարարաց խորհուրդին մէջ Ռօլան, թագաւորին ներկայութեանը ուզեց կարդալ նամակ մը՝

զոր արդէն անոր ուղղած էր և հետեւաբար աւելորդ էր անոր ուղղակի ընթերցումը ընել, քանի որ թագաւորը զայն գիտէր արդէն։ Այդ նամակը որոշուած էր գրել Տիկին Ռօլանի ազդեցութեամբ և անխմբագրած էր։ Գիտենք որ խնդիր եղած էր արդէն, նամակ մը գրել բոլոր նախարարներուն կողմէ։ Ասոնք մերժած ըլլալով, Տիկին Ռօլան պնդած էր իր ամուսնոյն. և այս վերջինը որոշած էր ղրկումը ընել իր անունով. ի զուր, Տիւրանդոն՝ որ ակար էր բայց խոհուն, իրեն դիտել տուաւ որ նամակին չեչոր, փոխանակ թագաւորը համոզելու, զայն պիտի թթուեցնէր նախարարներուն դէմ, որոնք հանրային վստահութիւնը կը վայելէին և թէ ատկից գահուն և ժողովրդային կուսակցութեան միջեւ աղէտալի խզում մը յառաջ պիտի գար։ Ռօլան իր կնոջը և բարեկամներուն կարծիքէն դրդուած՝ յամառեցաւ. իրաւ ալ Ժիրօնտը բացատրութիւն կ'ուզէր և խզում մը կը նախընտրէր տարակոյսէն։

Ուրեմն, Ռօլան կարդաց այդ նամակը թագաւորին և զայն ենթարկեց, դահլիճին մէջ, ամենէն խիստ յանդիմանութեանց։

Անաւասիկ այդ հռչակաւոր նամակը. —

« Տէր Արքա՛յ, Ֆրանսայի այժմու վիճակը աւելի երկար չի կրնար տեւել. ատիկա տագնապալի վիճակ մըն է, որուն ուժգնութիւնը ամենաբարձր աստիճանի հասած է. պէտք է որ ատիկա վերջանայ այնպիսի յանկարծական կերպով մը, զոր պարտի չահագրգռել Ձեր վեհափառութիւնը այնքան, որքան կը հետաքրքրէ ամբողջ Պետութիւնը։

« Ձեր վստահութեամբը պատուուած և այնպիսի պաշտօնի մը անցած, ուր ձեզի պարտական եմ ճշմարտութիւնը յայտնել, պիտի համարձակիմ զայն ամբողջովին ընել. ատիկա ստիպողականութիւն մըն է, զոր դուք իսկ վրաս դրած էք։

« Ֆրանսացիները ինքզինքնուն Սահմանադրութիւն մը տուին. անիկա դժգոհներ և ըմբոստներ յառաջ բերաւ։ Ազգին մեծամասնութիւնը կ'ուզէ զայն պահել. անիկա երդում ըրաւ զայն պաշտպանելու իր արեան գնով և ուրախութեամբ նայեցաւ պատերազմին, որ իրեն մեծ միջոց մը կ'ընծայէր՝ զայն ապահով դարձնելու։ Սակայն փոքրամասնութիւնը, կռթնելով յոյսերու վրայ, իր բոլոր ջանքերը միացուց յաղթանակելու համար։ Անկէ յառաջ եկաւ այն ներքին պայքարը օրէնքներու դէմ, այս անիշխանութիւնը, որուն տակ կը հեծեն բարի քաղաքացիները, որմէ կը ջանան օգտուիլ չարամիտները, նոր րէժիմը դրպարտելու համար. անկէ յառաջ եկած է այն պառակտումը, որ ամէն կողմ կը տարածուի և կը խմորուի, որովհետեւ ո՛չ մէկ տեղ անտարբերութիւն կայ. կ'ուզեն կա՛մ յաղթանակը և կամ Սահմանադրութեան փոփոխումը. կը գործեն կա՛մ զայն պաշտպանելու և կա՛մ զայն աւրելու համար։ Պիտի չքննեմ թէ ի՛նչ է անիկա ըստ ինքեան, և նկատել պիտի տամ միայն թէ պարագաները ի՞նչ կը պահանջեն և ինքզինքս օտար դարձնելով անոր, որքան որ կարելի է, պիտի փնտռեմ թէ, ի՞նչ կրնանք սպասել և ի՞նչ բան պատշաճ է նպաստաւորել։

« Ձերդ վեհափառութիւնը մեծ աւանձնաշնորհումներ՝ կը վայելէր, զորս կը կարծէր թէ թագաւորութեան կը պատկանին, զանոնք պահպանելու գաղափարովը դաստիարակուած ըլլալով Ձերդ վեհափառութիւնը հաճոյքով չտեսաւ այդ աւանձնաշնորհումներէն զրկուիլը. զանոնք վերստին ձեռք ձգելու փափաքը այնքան բնական էր, որքան անոնց ջնջումէն սրտնեղած ըլլալու ցաւը։ Այս զգացումները, որոնք մարդկային սրտին բնութեան յատուկ են, հաշուի առած ըլլալու են յեղափոխութեան թշնամիները. ուրեմն, գաղտ-

նի օգնութեան մը վրայ յոյս դրին, մինչեւ որ պարագաները յայտնի պաշտպանութիւն մը ներելի դարձնէին։ Այս տրամադրութիւնները չէին կրնար նոյն իսկ ազգին ուշադրութենէն վրիպիլ, և ասոնք զայն կասկածի մէջ պահեցին։

«Ուրեմն, ձերդ վեհափառութիւնը շարունակապար կը տարուբերուէր, իր նախկին սովորութիւններուն, իր մասնաւոր համակրութիւններուն անցի տալու և կամ զոհողութիւններ ընելու մէջ, որոնք թելադրուած էին իմաստութենէ և պահանջուած՝ անհրաժեշտութենէն. հետեւապար, կը տարուբերուէր ըմբոստները յանդուգն դարձնելով ազգը հոգի մէջ ձգելու, կամ հանդարտեցնելով անոր հետ միանալուն մէջ։ Ամէն բան վախճան մը ունի. և տարակոյսի ժամը հասած է վերջապէս։

«Ձեր վեհափառութիւնը այսօր կրնա՞յ յայտնապէս միանալ անոնց, որոնք կ'ուզեն թէ Սահմանադրութիւնը պիտի բարեփոխուի, կամ արդեօք պարտական չէ՝ վեհանձնօրէն նուիրուիլ, անվերապահ կերպով մը զայն յաղթանակել տալու համար։ Այս է ճշմարիտ խնդիրը, որուն լուծումը անխուսափելի դարձած է իրերու ներկայ դրութեամբ։ Գալով այն շատ բնազանցական խնդրին, գիտնալու թէ Ֆրանսացիները հասո՞ւն են Ազատութեան համար, տալ վիճաբանութիւնը հոս իմաստ չունի, որովհետեւ խնդիրը այն չէ թէ, ի՞նչ եղած պիտի ըլլայինք դարու մը մէջ, այլ տեսնել թէ՝ ի՞նչ բանի կարող է ներկայ սերունդը։

«Այն խռովութիւններուն մէջէն, ուր կ'ապրինք չորս տարիէ ի վեր, ի՞նչ պատահած է։ Ժողովուրդին վրայ ծանրող խիստ ծանր առանձնաշնորհումներ ջնջուեցան. արդարութեան և հաւասարութեան գաղափարները ամէն կողմ տարածուեցան. անոնք թափանցեցին ամէն տեղ. ժողովուրդին իրաւանց կարծիքը արդարացուց իր իրաւունքներուն զգացումը. ժողովուրդին զանոնք ընդունիլը հանդիսաւորապէս, նու իրական վաւերականութիւն մը դարձաւ. ազնուականութեան դէմ ատելութիւնը, զոր երկար ատենէ ի վեր աւատականութիւնը ներշնչած էր, գերագրգռուած է այն յայտնի ընդդիմութեան պատճառաւ, զոր ազնուականներէն շատերը ըրին Սահմանադրութեան դէմ, որ աւատականութիւնը կը ջնջէր։

«Յեղափոխութեան առաջին տարուոյն տեւողութեանը, ժողովուրդը այս ազնուականները կը համարէր մարդիկ, որոնք զզուելի դարձած են իրենց վայելած հարստահարիչ առանձնաշնորհումներով, բայց պիտի դադրէր զանոնք ատելէ այդ առանձնաշնորհումներուն ջնջումէն ետքը, եթէ ազնուականութեան վարմունքը այդ թուականէն ի վեր զօրացուցած չըլլար իրր անհաշտ թշնամի անկէ զգուշանալու և անոր դէմ պայքարելու բոլոր կարելի պատճառները։

«Սահմանադրութեան հանդէպ սէրը աճեցաւ նոյն համեմատութեամբ. ոչ միայն ժողովուրդը անոր կը պարտէր զգալի բարիքներ. այլ և անիկա հասկցաւ որ աւելի մեծ բարիքներ կը պատրաստէր իրեն համար, քանի որ անոնք՝ որ սովոր էին ժողովուրդին կրել տալ բոլոր բեռները, այնքան ալ ուժգնօրէն կը ջանային զայն ջնջել կամ բարեփոխել։

«Իրաւունքներու Յայտարարութիւնը քաղաքական աւետարան մը դարձած է, և ֆրանսական Սահմանադրութիւնը՝ կրօնք մը՝ որուն համար ժողովուրդը պատրաստ է կեանքը զոհելու։

«Այսպիսով է որ եռանդը արդէն քանիցս օրէնքի տեղը բռնեց և երբ օրէնքը բաւական զօրաւոր չէր խռովարարներուն արգելք ըլլալու չափ, քաղաքացիները, ինքնիրենուն ներեցին զանոնք պատժել իրենց ձեռքով։

«Այսպիսով է, որ տարագիրներու-

սեպհականութիւնները ենթարկուեցան աւերումի, վրէժխնդրութեան ազդեցութեամբը. ահա՛ թէ ինչո՛ւ այնքա՛ն նահանգներ սարսուած կարծեցին ինքզինքնին քահանաներու դէմ ելլելու, որոնք հանրային կարծիքով աքսորեալներ էին և որոնք կրնային զոհ ըլլալ։

«Տանելու այս բաղխումին մէջ, բոլոր զգացումները հրայրքի չափը անցան. հայրենիքը բառ մը չէ բնաւ, զոր երևակայութիւնը հաճած ըլլար գեղեցկացնել. անիկա էակ մըն է, որուն համար զոհողութիւններ բրած են, որուն հետզհետէ աւելի կը կապուին իր պատճառած հոգերով, զոր ստեղծած են մեծ ջանքերով, որ կը բարձրանայ մտահոգութիւններու մէջէն և զորս կը սիրեն թէ այն համեմատութեամբ, որ կ'արժէ և թէ անկէ սպասուած ակնկալութեանց համար. բոլոր հարուածները, զորս հայրենիքին կու տան, միջոցներ կը դառնան անոր համար, եղած խանդավառութիւնը արծարծելու։ Մինչև ո՛ր աստիճանին պիտի բարձրանայ այդ խանդավառութիւնը, այն պահուն, երբ թշնամի ուժերը միանալով դուրսը, կը համաձայնին ներքին դաւադրութեանց հետ ամենէն վնասակար հարուածները տալու համար։ Ֆրանսայի ամէն մասերուն մէջ դրգռութիւնը ծայրայեղ է. անիկա սարսափելի եղանակով մը պիտի պայթի բաց ի այն պարագայէն, որ Ձեր վեհափառութեան դիտաւորութիւններուն վրայ բանաւոր վստահութիւն մը կարենայ վերջապէս զայն հանդարտեցնել. բայց այս վստահութիւնը չի կրնար հաստատուիլ յայտարարութեանց վրայ. այլեւս անիկա իր հիմ կրնայ ունենալ միմիայն գործի։

«Ֆրանսական ազգին համար ակներև է որ իր Սահմանադրութիւնը կրնայ գործ տեսնել, և թէ կառավարութիւնը պիտի ունենայ իրեն անհրաժեշտ եղող ամբողջ ույժը, երբ Ձեր Վեհափառութիւնը, բացարձակապէս կամենալով այս Սահմանադրութեան յաղթանակը, զօրավիգ ըլլայ Օրէնսդիր Մարմինին, իր ձեռքն եղող ամբողջ գործադիր ույժովը, և այս կերպով փարատին ժողովուրդին զգացած մտահոգութիւնները, և դժգոհներն ալ յոյսերնին կորեն։

«Օրինակի համար, երկու կարևոր հրամանագիրներ եղան. երկուքն ալ էականապէս հանրային անդորրութեան և պետութեան փրկութեանը հետ կապ ունենալուն համար, անոնց թագաւորական վաւերացման յապաղումը անվստահութիւն կը ներշնչէ. եթէ այդ վաւերացումը շատ յապաղի, դժգոհութիւն պիտի պատճառէ. և, պարտաւոր եմ ըսել, թէ մտքերու այս գրգռուած վիճակին մէջ ամէն բան կրնայ յառաջ գալ դժգոհութիւններէն։

«Այլ ևս ետ դառնալու ժամանակը չէ. մինչև իսկ հնարը չկայ ժամանակ շահելու. յեղափոխութիւնը կատարուած է մտքերու մէջ. անիկա պիտի գանէ իր լրումը արեան գնով և անով պիտի շաղախուի, եթէ խոհականութիւնը առաջքը չառնէ այն դժբաղդութեանց, որոնցմէ խուսափիլ կարելի է դեռ։

«Գիտեմ թէ միտքերնէն անցընողներ կան ծայրայեղ միջոցներով ամէն բան տակնուվրայ ընել և զսպել. բայց երբ բանի ույժ գործածուի ժողովը բռնադատելու համար, և երբ Բարիզի մէջ սոսկում տարածողներ ըլլան, ու շրջականերուն մէջ պառակտում և սահմռկում յառաջ գայ, ամբողջ Ֆրանսան զայրոյթով ոտքի պիտի կանգնի, և ինքզինքը պատառ պատառ ընելով քաղաքային պատերազմի մը սոսկումներուն մէջ, ցոյց պիտի տայ այն մեծ կորովը, մայր՝ առաքինութեանց և ոճիրներու, ու միշտ աղէտաբեր՝ անոնց համար, որոնք գրգռած են զայն։

«Պետութեան փրկութիւնը և Ձեր Վեհափառութեան երջանկութիւնը շաղկապուած են իրարու. ո՛չ մէկ ույժ

կրնայ զանոնք խրատէ բառնալ. առաւօր անձկութիւններ և ախոյանի պժգագութիւններ կը շրջապատեն ձեր գահը, եթէ անիկա ձեր ձեռքին իսկ յենած չըլլայ Սահմանադրութեան հիմերուն վրայ, և հաստատուն չդառնայ այն խաղաղութեամբ, զոր վերջ ի վերջոյ պէտք ձեռք ձգենք անշուշտ։ Ահա այսպէս, մտքերու վիճակը, իրերու ընթացքը, քաղաքական պատճառներ, Ձեր Վեհափառութեան չափ անհրաժեշտ կը դարձնեն Օրէնսդիր Մարմնին հետ մէկ ըլլալը, և ազգային իղձերուն գոհացում տալու պարտաւորութիւնը։ Անոնք անհրաժեշտութիւն մը կը կազմեն այն բանով զոր սկզբունքներ իբր պարտականութիւն կը ներկայացնեն։ Բայց այս սիրալիր ժողովուրդին բնական զգայնութիւնը պատրաստ է այդ բանին մէջ գտնելու երախտագիտութեան դրդապատճառ մը։

«Տէ՛ր Արքայ, զձեզ անգթօրէն խաբեր են, ժողովուրդէն հեռացնելով և անվստահելի նկատել տալով այդ ժողովուրդը, որ այնքան դիւրահաւան է։ Ձեզ յաւխտենապէս անհանգիստ ընելով, ահա հաւաքոյթին այնպիսի վիճակի մը, որ կրնայ երկիւղ պատճառել այդ ժողովուրդին։ Թո՛ղ անիկա տեսնէ թէ դուք վճռած էք անվթար պահել այս Սահմանադրութիւնը, որուն հիմքը յարած է հաւատարմօրէն, և քիչ ատենէն դուք պիտի ըլլաք անոր երախտագիտական ցոյցերուն առարկան։

«Շատ տեղերու մէջ կղերականներուն ցոյց տուած վարմունքը, այն բարբանքները, զորս կը հայթայթէր դժգոհներուն մոլեռանդութիւնը, խոստովանողներուն դէմ խստատուն օրէնք մը ընել տուին. Ձեր Վեհափառութիւնը թո՛ղ վաւերացնէ զայն. հնազանդութիւնը այդպէս կը պահանջէ, ու քահանաներուն փրկութիւնն ալ այդ բանին կը կարօտի։ Եթէ այս օրէնքը գործադրութեան չդրուի, գաւառները հարկադրուած պիտի ըլլան, ինչպէս կ'ընեն արդէն ամէն կողմէ, անոր տեղ բռնի միջոցներ ի գործ դնել, ու գրգռուած ժողովուրդը ծայրայեղութեանց պիտի մղուի։

«Մեր թշնամիներուն կատարած փորձերը, մայրաքաղաքին մէջ երևան եկած գրգռութիւնները, ձեր անձնական պահակազօրքին վարմունքին յառաջ բերած մեծ մտահոգութիւնները, որոնք դեռ կը շարունակուին Ձերդ Վեհափառութեան անունով յայտնուած գոհունակութեանց հետևանքով, շնորհիւ այն յայտարարութեան, որ տրուած պատգամներուն առկ իրապէս անքաղաքագիտական էր. վերջապէս՝ Բարիզի կացութիւնը, անոր՝ սահմանադրութեան մօտ ըլլալը պէտքը զգացուցին որ անոր մերձակայքը բանակատեղի մը հաստատուի. այս որոշումը, որուն խոհականութիւնը և օրինականութիւնը անհերքելի է բոլոր բարեմիտ մարդոց համար, տակաւին Ձեր Վեհափառութեան վաւերացման կը սպասէ. ինչո՞ւ համար այնպիսի յապաղումներ վշտացնեն ժողովուրդը, մինչ, արագ գործելով կարելի էր արժանանալ անոր երախտագիտութեան։

«Բարիզի ազգային պահակազօրքին սպայակոյտին խլրտումները՝ այդ որոշման դէմ՝ արդէն իսկ տարակոյս արթնցուցած են թէ, ուրիշ վերէն ներշնչում մը կայ զանոնք. մէկ քանի ծայրայեղ ամբոխավարներու ճառախօսութիւնները արդէն իսկ կասկած կը յարուցանեն թէ անոնք յարաբերութեան մէջ են Սահմանադրութեան տապալումին շահ ունեցողներու հետ։ Հանրային կարծիքը Ձեր Վեհափառութեան դիտաւորութիւնները կասկածի տակ կը ձգէ արդէն. եթէ քիչ մըն ալ յապաղիք, վշտացեալ ժողովուրդը՝ յանձին իր թագաւորին՝ պիտի կարծէ նշմարել դաւադիրներուն մեղսակից մը և անոնց բարեկամ մը։



ՖՈՒԼՕՆ ԵՒ ՊԷՐԹՈՒԱՆ ԿԸ ՍՊԱՆՆԵՆ ԼՈՒԼԻ ՄԷՋ

«Տէ՛ր Աստուած, երկրային իշխա-յին իշխանութիւնները կուրացուցա՞ծ ես դուն, և անոնց սխալ տուիր միայն ա՞յնպիսի խորհուրդներ, որոնք սխալ քաշկռտեն զանոնք դէպ ի կործանում։

«Ես գիտեմ, թէ ճշմարտութեան խօսող լեզուն քիչ անգամ ընդունելութիւն կը գտնէ Դուռին մօտ. գիտեմ նաեւ թէ այդ լեզուն գրեթէ բնաւ հոն չխօսուելուն համար է որ յեղափոխութիւնները անհրաժեշտ կը դառնան. գիտեմ մանաւանդ, թէ ես պարտաւոր եմ ճշմարտութեան լեզուով խօսիլ Ձերդ Վեհափառութեան, ո՛չ միայն իբր քաղաքացի մը, որ օրէնքներուն կը հնազանդի, այլ և իբր Ձեր վստահութեամբը պատուած նախարար, կամ այդ վստահութեան ենթադրել տուած հանգամանքներովը բեռնաւոր. և ինծի համար չկայ բան մը, որ արգիլէ զիս

[illegible] որուն [illegible] կրկ- [illegible] թէ ան- [illegible] գործ ընել [illegible] քար- [illegible] մէջ. [illegible] անքան [illegible] գործադ- [illegible] էր հե- [illegible] բայց ան- [illegible] ձեռք առնել [illegible] թիւնները ընե- [illegible] և ան- [illegible] պատասխա- [illegible] պէտք է միջոց [illegible] վաւերացնելու [illegible] գրութիւնը գոյու- [illegible] ըլլայ. այս պահու [illegible] խօսէի Ձեր Վեհա- [illegible]

[illegible] է այն մարդուն հա- [illegible] պարտականութիւնները [illegible] կը դառնէ. բայց, եթէ [illegible]թիւնը լրացուցած ըլլալու [illegible] եռք. մարդ տակաւին [illegible] է միայն սա մտածումին թէ [illegible]թեամբ կատարած է զայն, [illegible] պարտաւորութիւն մըն է [illegible] քաղծիքի մը համար։»

[illegible] Յունիս 1792.

Աշխատութեան Դ. տարին

(Ազատութեան) ՌՈԼԱՆ»

Թագաւորը ծայրայեղ համբերու- [illegible] մտիկ ըրաւ այս նամակին [illegible], և գլուխ երու, ըսելով թէ [illegible] [illegible]ութիւնները պիտի գիտ- [illegible]. Տիւմուրիէ պալատ կանչուեցաւ. [illegible]ագաւորը և թագուհին քով քովի էին. [illegible] ըսին. «Ինչ երկար ատեն պիտի [illegible] այս երեք նախարարներուն լըր-բութիւնը։

— Ո՛չ, պատասխանեց Տիւմուրիէ։

— Դուք կը ստանձնէ՞ք զինք ազատել անոնց ձեռքէն, յարեց թագաւորը։

— Այո՛, տէր արքայ, պատասխանեց յանդուգն նախարարը, բայց այդ բանին մէջ յաջողելու համար պէտք է որ Ձերդ Վեհափառութիւնը ընդունի պայման մը. ես ժողովրդականութիւն չունիմ այլ ևս. ա՛լ աւելի անժողովրդական պիտի դառնամ, երբ համբեմ երեք պաշտօնակիցներս, որոնք զօրաւոր կուսակցութեան մը պետերն են. որպէս զի ժողովուրդը համոզուի թէ անոնք իրենց հայրենասիրութեանը համար չէ որ համբուեցան, մէկ բան մը կայ ընելիք։

— Ո՞րն է ան, հարցուց թագաւորը։

— Այդ միջոցը՝ երկու օրէնքները վաւերացնելն է, պատասխանեց Տիւմուրիէ։

Այդ առթիւ անիկա կրկնեց այն պատճառաբանութիւնները զորս տուած էր Դիւպլիսի նիստին միջոցին։

Թագուհին պատասխանեց թէ անիկա չար խիստ պայման մըն է. բայց Տիւմուրիէ ջանաց թագաւորին հասկցնել թէ 20,000 մարդոցմէ վախնալու բան մը չկար, թէ օրէնքը չէր նշանակեր այն տեղը՝ ուր անոնք պիտի բանակէին, և թէ, օրինակի համար, կարելի էր Սուասոն ղրկել զանոնք, և հոն զինուորական մարզանքներով զբաղեցնել, ու յետոյ, կամաց կամաց, բանակներու մէջ մղել զանոնք, երբ պէտքը զգալի ըլլար։

Թագաւորը ըսաւ. — Բայց այն ատեն պէտք է որ պատերազմական նախարարը դուք ըլլաք։

— Հակառակ վրաս ծանրաբեռնուած պատասխանատուութեան, կը հաւանիմ, պատասխանեց Տիւմուրիէ, բայց պէտք է որ Ձեր Վեհափառութիւնը վաւերացնէ կղերականներուն դէմ չինուած օրէնքը. միայն սա պայմանով կրնամ ծառայել Ձեզի։ Այդ օրէնքը ո՛չ միայն չի վնասեր կղերականներուն, այլ և զանոնք կ՚ազատէ ժողովուրդին կատաղութենէն. պէտք էր Ձեր Վեհափառութիւնը ընդդիմանար Սահմանադիր

Ժողովի այն առաջին որոշման, որ կը հրամայէր կղերականներուն՝ երդում ընել Սահմանադրութեան վրայ. հիմա այլեւս չէք կրնար նահանջել։

— Ես այն ժամանակ սխալեցայ, անգամ մըն ալ պէտք չէ որ սխալիմ, գոչեց Լուդովիկոս ԺԶ.։

Թագուհին, որ իր ամուսնոյն բարեպաշտական բծախնդրութիւնները չունէր, Տիւմուրիէին հետ խօսք մէկ եղաւ, եւ, եկաւ վայրկեան մը երբ թագաւորը թուեցաւ թէ իր հաւանութիւնը կու տայ։

Տիւմուրիէ այն ատեն նշանակեց նոր նախարարները, որոնք պիտի առնուէին Սէրվանի, Քլավիէռի եւ Ռօլանի տեղը. Ներքին գործոց նախարար պիտի ըլլար Մուրկ. ելմտականը՝ Պօլիէօ. պատերազմական նախարարութիւնը յանձնուեցաւ Տիւմուրիէին, որ, առ այժմ, երկու նախարարութիւն կը վարէր, բայց աւելի ուշ արտաքին գործոց ուրիշին պիտի տրուէր։ Անմիջապէս թագաւորը արձակեց հրամանագիրը, եւ 13 յունիսին՝ Ռօլան, Քլավիէռ եւ Սէրվան պաշտօնապէս ստացան իրենց հրաժարեցուցման գիրը։

Ռօլան, որ իր կնոջ յանդուգն մտքին յղացածները գործադրութեան դնելու համար անհրաժեշտ եղող կորովը ունէր, անմիջապէս Ժողովին գնաց, եւ հոն կարդաց իր ծանօթ նամակը՝ ուղղեալ թագաւորին, որուն համար ճամբուած էր։ Բնականաբար այս վարմունքը ներելի էր, քանի որ երկու կողմերը իրարու թշնամացած էին. միայն թէ, անգամ մը թագաւորին խոստում տալէ ետք որ նամակը գաղտնի պիտի պահէ, զայն հրապարակաւ կարդալը շատ վեհանձն արարք մը չէր։

Ժողովը բուռն ծափահարութեամբ ողջունեց Ռօլանի նամակը, եւ որոշեց որ անիկա հրատարակուելով ղրկուի 83 նահանգներուն. բաց աստի, յայտարարեց թէ շնորհակալ եղած երեք նախարարները ազգին վստահութիւնը կը վայելեն։ Այդ վայրկեանին էր որ, Տիւմուրիէ, առանց երբէք վախնալու, համարձակեցաւ բեմ ելել, պատերազմական նախարարի իր նոր տիտղոսովը։ Աճապարանքով պատրաստած էր պատճառաբանեալ տեղեկագիր մը բանակին կացութեանը ինչպէս նաեւ Ժողովին վարչական սխալներուն շուրջ. Տիւմուրիէ շատ խստութեամբ կը դատէր զանոնք, որ գիտէր թէ տրամադիր են գէշ ընդունելութիւն մը ընելու իրեն։ Հազիւ թէ բեմ ելած էր, Ժաքօպէն երեսփոխանները աղմուկ բարձրացուցին, մինչ Ֆէօյեանները խոր լռութիւն պահեցին։ Տիւմուրիէ նախ եւ առաջ Լաֆայէթի տարած պզտիկ յաղթանակին վրայ խօսեցաւ, յետոյ ծանրացաւ Կուվիօնի մահուան պարագային վրայ. այս անձը, որ սպայ էր եւ երեսփոխան ու բարեգործ միանգամայն, հայրենիքին դժբաղդ կացութենէն յուսահատած, կամովին սպաննած էր ինքզինքը։ Ժողովը ցաւակցութիւն յայտնեց այս վեհանձն քաղաքացիին մահուանը առթիւ, եւ Տիւմուրիէի ցաւակցական խօսքերը ցրտութեամբ մտիկ ըրաւ, մանաւանդ երբ բաղձանք յայտնեց միեւնոյն աղէտներէն խուսափելու նմանօրինակ մահով մը։ Բայց երբ յայտարարեց թէ իր տեղեկագիրը իբր պատերազմական նախարար է որ կը կարդայ, ամէն կողմէ մերժեցին զինքը մտիկ ընել։ Տիւմուրիէ պաղարեամբ խօսք ուզեց, եւ վերջ ի վերջոյ յաջողեցաւ լսցնել Ժողովը. իր դիտողութիւնները զայրացուցին մէկ քանի երեսփոխաններ. Կուատէ գոչեց. «Կը լսէ՞ք կոր, դաս կու տայ մեզի։»

— Եւ ինչո՞ւ չէ, պատասխանեց հանդարտօրէն՝ յանդուգն Տիւմուրիէ։

Հանդարտութիւնը վերահաստատուեցաւ. իր տեղեկագրին ընթերցումը աւարտեց, եւ փոխն ի փոխ սուլուեցաւ ու ծափահարուեցաւ. հազիւ թէ աւարտած էր, ծալլեց տեղեկագիրը եւ երթալու պատրաստուեցաւ։

կատարելէ
գիտակցու
«Միև
նեմ Ձեր
հրամեյ
այն օրլ
սաւզալ
սուկ
հզօրա
րուԹ
տեւ
հրա
զա
լա
հր
նա
[illegible]

... Թէ ... իր ... այն ... մը ... ձեր ... Թագա- ... «Այս ... [illegible]

... չենթարկեմ զանոնք:» ... անարդար էր, որով- ... րէ հաւանած էր իր պաշ- ... ն հրաժարելէն ետք գործը ... միայն այն պայմանով որ ... գիտի վաւերացնէր երկու ... ալ: Լուդովիկոս ԺԶ. տես- ... նար հետ և հարցուց Թէ կը ... իր հրաժարականին վրայ: Տիւ- ... ոնձիելի միայ. «Այդ պարա- ... յարեց Թագաւորը, կ'ընդունիմ ... հրաժարականը:» Միւս Նախարար- ... ալ հրաժարած էին արդէն. սա- ... և այնպէս, Թագաւորը անդեց ... րգի և ՏիւրանԹօնի որ չհրաժա- ... Նոր Նախարար անուանուեցան՝ ... նժար, Շամպօնա և Թէրիէ տը Մօն- ... թէլ. Ֆէօյեան կուսակցուԹենէն բո- ... րն ալ:

Տիկին Ռօնըան իր Յիշատակներուն Բ. Հատորին մէջ կ'ըսէ Թէ «Թագաւորը այդ միջոցներուն այնպիսի յուսահատուԹեան մը մէջ ինկաւ, որ ֆիզիքական անկարողուԹեան ենԹարկուեցաւ: Ամբողջ 10 օրեր, բառ մը չկըրցաւ արտասանել մինչեւ՝ իսկ իր ընտանիքի անդամներուն քովը. միայն, իրիկուան ճաշէն ետք, տիկին Էլիզաբէթի հետ սակ մը Նարտ խաղացած միջոցին կը խօսէր քիչ մը. ան ալ, խաղին մէջ անհրաժեշտ եղող քանի մը բառերը միայն արտասանելու համար: Թագուհին զայն ազատեց այս դրուԹենէն, որ այնքան աղխատելի էր տագնապի այդ միջոցներուն, երբ իւրաքանչիւր վայրկեան գործելու անհրաժեշտուԹիւնը կը բերէր իրեն հետ. Թագուհին այս բանը կարենալ ընելու համար, անոր ոտքերը ինկաւ, երբեմն զայն վախցնելով, երբեմն ալ իր գորովը յայտնող խօսքեր ընելով: Թագուհին կը պահանջէր որ Թագաւորն ալ ցոյց տայ իր սէրը՝ համոզելով իր ընտանիքին, և մինչեւ անգամ բառ մը, որ եԹէ պէտք էր փճանալ, պատուով փճանա-

լու է, և առանց սպասելու՝ որ դան զիրենք մէկիկ մէկիկ խեղդեն իրենց յարկաբաժնին տախտակամածին վրայ։»

Դիւրին է գուշակել թէ ինչ եղած ըլլալու են Լուդովիկոս ԺԶ.ի մտքին տրամադրութիւնները, երբ ինքզինքին եկաւ և իր գործերուն խնամք տանելու սկսաւ։ Անգամ մը որ Ֆէօյեան կուսակցութիւնը լքած և ժիրոնտէններուն յարած էր, այլ ևս չէր կրնար առաջիններուն վերադառնալ լաւ ճաշակով և յոյսով. թէ՛ մէկուն և թէ՛ միւսին հետ անհամաձայն եղած ըլլալուն կրկնակ փորձառութիւնը ունէր, և, ինչ որ աւելի գէշ էր, անոնց ամենուն ալ ընել տուած էր այդ փորձը։ Այդ վայրկեանէն, ամէն ժամանակէ աւելի սկսաւ խորհիլ արտասահմանի վրայ և իր ամբողջ յոյսը անոր վրայ դնել։ Այս մտածումը ամէն մարդու համար ակներեւ էր, և իրար անցուց զանոնք՝ որ Ֆրանսայի նուաճումին մէջ կը տեսնէին ազատութեան անկումը, անոր ախոյեաններուն պատժուիլը, և թերևս թագաւորութեան բաժանումը կամ անդամահատումը։ Լուդովիկոս ԺԶ. իր ըրածին մէջ այս բանը չէր տեսներ, որովհետև մարդ միշտ կը ծածկէ իր փափաքած մէկ բանին անպատեհ կողմը։ Մօնսի և Թուրնէի խուճապէն յառաջ եկած շփոթութենէն ահաբեկած, անիկա Մալէ-տիւ-Բանը Գերմանիա ղրկած էր և ինքնագիր նամակով մըն ալ հրահանգներ տուած էր անոր։ Թագաւորը իր նամակին մէջ կը յանձնարարէր վեհապետներուն՝ զգուշութեամբ յառաջանալ, իրենց անցած գաւառներուն բնակիչներուն հանդէպ ամենամեծ հոգածութիւն ցոյց տալ, և այդ գաւառներէն անցնելէն առաջ յայտարարութիւն մը հանել ու յայտնել իրենց հաշտարար և խաղաղ տրամադրութիւնները(*)։

*) Շատ կարևոր պարագայ մըն է այն պաշտօնը, զոր Թագաւորը տուաւ Մալէ-տիւ-Բանին, և այս մասին ոև է կասկած չկայ Պէրթրան տը Մօլվիլի Յիշատակներուն նայելով. այս վերջինը, որ այդ շրջանին նախարար էր, կատարելապէս տեղեակ ըլլալու է անցուդարձին, և ըլլալով հակայեղափոխական նախարար, աւելի պէտք էր ծածկէր այդ պարագան, քան թէ յայտնէր։ Մալէ-տիւ-Բանի տրուած պաշտօնը կ՚ապացուցանէ թագաւորին չափաւորութիւնը, բայց նաև այն իրողութիւնը թէ անիկա յարաբերութիւններ ունէր արտասահմանի հետ։ Պէրթրան տը Մօլվիլ իր Յիշատակներուն մէջ կ՚ըսէ. — «Թագաւորը հայրենասիրական տպաւորութեան մէջ չէր զգար երբէք ինքզինքը, այլ ամենախորունկ վշտով կը տեսնէր որ Ֆրանսա անարդար և արիւնահեղ պատերազմի մը մէջ ինկած է, պատերազմ մը, զոր կարելի պիտի չըլլար շարունակել թերևս, փրանս. բանակին կազմալուծուած ըլլալուն հետևանքով, և որ ամէն ժամանակէ աւելի մեր սահմանագլուխները նուաճման վտանգին կ՚ենթարկէր։ Ն. Վեհափառութիւնը ամէն բանէ աւելի կ՚ահաբեկէր քաղաքային պատերազմէն, և չէր կասկածեր որ ատիկա պիտի պայթէր, անմիջապէս որ փրանս. բանակը պարտուէր տարագիրներէ կազմուած զօրագունդերէն, որոնք աւստրիական զինուորներուն հետ կը գործակցէին. արդարև, զօրաւոր պատճառներ կային վախնալու որ կատղած ժողովուրդը արիւնահեղ վրէժխնդրական արարքներ պիտի գործէր Ֆրանսա գտնուող քահանաներուն և ազնուականներուն դէմ։ Այս մտահոգութիւնները, զորս թագաւորը հաղորդեց ինծ՝ իրեն հետ ունեցած ամենօրեայ թղթակցութեանս միջոցով, զիս մղեցին առաջարկել Ն. Վեհափառութեան որ վստահելի մէկու մը պաշտօն յանձնէ և ղրկէ Կայսեր ու Բրուսիոյ թագաւորին մօտ,

Թագաւորին ծրագրածը որքան ալ չափաւոր ըլլար, այսուհանդերձ չէր դադրեր օտարներուն հրաւէր մը ըլլալէ Ֆրանսայի վրայ քալելու. անկէ զատ, եթէ Թագաւորին խղճը այս էր, արդեօք նո՞յնն էր նաեւ Ֆրանսայի թշնամի օտարազգի իշխաններուն և գաղթած տարագիրներուն խղճը։ Լուդովիկոս ԺԶ. արդեօք վստա՞հ էր որ իր դիտաւորութենէն աւելի ուրիշ բաներ ընել պիտի չտային իրեն. Բրուսիոյ և Աւստրիոյ նախարարները իրենք իսկ յայտնեցին Մալէ-տիւ-Բանին այն անհանգստութիւնը որ իրենց կը պատճառէր տարագիրներու խրարանցումը, և այնպէս կը թուի թէ Լուդովիկոս ԺԶ.ի պատգամաւորը դժուարութիւն կրեց այս մասին զանոնք վստահացնելու։ Թագուհին ալ նոյնքան անվստահութիւն կը յայտնէր անոնց մասին. մասնաւորաբար կը սոսկար Քալօնէն, իբր ամենէն վտանգաւորն իր թշնամիներուն. բայց սակայն արգելք մը չէր ըլլար որ թախանձէր իր ընտանիքին՝ ամենամեծ արագութեամբ շարժելու, որպէս զի ազատի ինքը։

Այդ րոպէէն սկսեալ, ժողովրդային կուսակցութիւնը հարկադրուեցաւ թըշնամիի տեղ դնել արքունիքը, որմէ շատ աւելի պէտք էր վախնալ, քանի որ անիկա իր տրամադրութեան տակ ունէր պետութեան բոլոր ոյժը, և մըղուելիք կռիւը մահու և կենաց կռիւ մը պիտի ըլլար։ Թագաւորը, իր նոր դահլիճը կազմած միջոցին, ոչ մէկ ականաւոր անձնաւորութիւն չընտրեց. իր մօտակայ ազատումին սպասելով անիկա կը խորհէր սանկ նանկ քանի մը օր անցընել, ու այս բանին համար կը բաւէր իրեն՝ ամենէն աննշան նախարարութիւնը։

Ֆէօյեանները առիթէն օգուտ քաղել ուզեցին արքունիքին հետ կապուելու համար, պէտք է ըսել, ոչ այնքան կուսակցական փառամոլութենէ մղուած, որքան՝ Թագաւորին շահուն համար։ Անոնք երբեք չէին խորհեր օտարներու արշաւանքին վրայ, ու մեծ մասամբ այդ

---

որպէս զի ջանայ անոնց հաւանութիւնն ստանալ որ միայն յուսահատական վայրկեանին յարձակողական դիրք բռնեն, և իրենց բանակը Ֆրանսա մտցնելէ առաջ յայտարարեն լաւ խմբագրուած զեկոյցով մը թէ՝ «Կայսրը և Բրուսիոյ «թագաւորը, իրենց դէմ եղած անի-«րաւ յարձակման առթիւ պատերազ-«մելու բռնադատուած ըլլալով, ոչ թա-«գաւորին և ոչ ալ ազգին կը վերա-«գրեն իրենց զեկուցուած պատերազմի «յայտարարութիւնը, այլ՝ այն ոճրա-«պարտ խուովարարներուն, որոնք կը «հարստահարեն թէ՛ Թագաւորը և թէ՛ «ժողովուրդը. և թէ, հետեւաբար, «զիրենք Ֆրանսայի ու Թագաւորին «միացեալ զգացումները առանց երբէք «պաղեցնելու, Նոքին Վեհափառու-«թիւնք պիտի կռուին միմիայն զիրենք «ազատելու համար վայրագ բռնակա-«լութենէ մը, և օգնելու համար անոնց՝ «որ վերահաստատեն ուքի կրնան «եղած օրինաւոր իշխանութիւնը, կարգ «կանոնը և անդորրութիւնը, և այս «բոլորը պիտի ընեն, առանց երբէք «միջամտելու կառավարական կազ-«մուածքին, այլ միայն՝ Ֆրանս. ազ-«գին ազատութիւն տալու համար, «որպէս զի իրեն յարմար գտած ձեւը «նախընտրէ...։» Լուդովիկոս ԺԶ. Մալէ-տիւ-Բանի կարողութիւնը և պարկեշտութիւնը շատ յարգելուն համար, անոր յանձնեց պատուիրակի պաշտօնը, որուն շատ յարմար էր մանաւանդ ան պատճառաւ որ պալատին մէջ բնաւ չէր երեւցած, պալատականներուն հետ յարաբերութիւններ չունէր, և մանաւանդ որ Ժընեւի ճամբան բռնելով ոեւէ կասկած չէր արթնցներ, որովհետեւ յաճախ կ'երթար այն կողմերը։»

թանին մէջ կը տեսնէին յարձակում մը, նոյն իսկ վտանգ մը՝ որ ահաւոր էր այնքան արքունիքին, որքան ազգին համար։ Անոնք խուսափելով կը նախատեսէին որ Թագաւորը պիտի ճըզմուէր, մինչեւ որ օգնութիւն հասնի դուրսէն. իսկ, օտարներու արշաւանքէն հոգ կը վախնային վայրագ վրիժառութիւններէն, գուցէ՝ երկրին անդամահատումէն եւ անկասկած՝ ամէն կարգի ազատութեանց վերնալէն։

Լալի-Թօլէնտալ, որ՝ տեսանք թէ՝ Ֆրանսայէն հեռացաւ, անմիջապէս որ անկարելի դարձաւ Երեսփ. ժողով ու Ծերակոյտ ունենալը, Մալուէ՝ որ վերաքննութեան միջոցին անգամ մըն ալ փորձած էր զանոնք, Տիւբօր, Լամէթ, Լաֆայէթ եւայլն, որոնք կ՚ուզէին պահպանել ինչ որ գոյութիւն ունէր, միացան վերջին ճիգ մը ընելու համար։ Այս կուսակցութիւնը, նման ամէն կուսակցութեան, ինքզինքին հետ շատ հաշտ չէր. բայց անիկա կազմուած էր միակ նպատակ մը ունենալով, այն է՝ Թագաւորը ազատել գործած սխալներէն եւ անոր հետ Սահմանադրութիւնը փրկել։

Այն բոլոր կուսակցութիւնները, որոնք հարկադրուած են մութի մէջ գործել, կը հարկադրուին առնել քայլեր, որոնք էնթրիկ կ՚անուանուին, երբ յաջող չհանդիսանան։ Այս տեսակէտով, Ֆէօյեանները էնթրիկ լարեցին։ Անմիջապէս որ տեսան Սէդանի, Վալլիէնի եւ Ռօյանի ճամբու դրուիլը, ձեռամբ Տիւմուրիէի, Ֆէօյեանները մօտեցան այս վերջնոյն, եւ անոր առաջարկեցին իրեն զօրավիգ ըլլալ, պայմանաւ որ քահանաներուն դէմ չինուած օրէնքը վէթոյի ենթարկէր։ Թերեւս քմահաճոյքով, թերեւս ալ անոնց սրտածագ միջոցներուն վրայ չվստահելով՝ Տիւմուրիէ մերժեց այս առաջարկը, մանաւանդ որ յանձնառու եղած էր այդ օրէնքը վաւերացնել տալ, եւ գնաց բանակին գլուխն անցաւ, այն փափաքով որ, ինչպէս կը գրէր ժողովին, թնդանօթի հարուած մը կը միացնէ իր մասին գոյացած բոլոր կարծիքները։

Ֆէօյեաններուն կը մնար Լաֆայէթը, որ, առանց մանակից ըլլալու անոնց դաւադրողի գործերուն, անոնց պէս գէշ տրամադրուած էր Տիւմուրիէի դէմ, եւ մանաւանդ կը փափաքէր Թագաւորը ազատել, առանց փոխելու Սահմանադրութիւնը։ Իրենց ոյժը տկար էր. նախ եւ առաջ, արքունիքը, զոր կը ջանային ազատել, չէր ուզեր իրենց ձեռքով ազատիլ։ Թագուհին որ սիրայօժար կը վստահէր Պարնավին, մինչ մեծ զգուշութիւններ ձեռք կ՚առնէր զայն տեսնելու համար եւ միայն գաղտագողի կ՚ընդունէր։ Տարագիրները եւ արքունիքը երբեք չպիտի ներէին անոր՝ սահմանադրականներուն հետ տեսնուած ըլլալուն համար. արդարեւ, իրեն կը յանձնարարէին երբեք գործ չունենալ անոնց հետ եւ ուրիշ նախամեծար համարել ժաքօպէնները, որովհետեւ, կ՚ըսէին, պէտք պիտի ըլլար խուսախոհութեան մը յանգիլ առաջիններուն հետ եւ վերջիններուն հանդէպ ոչ մէկ պարտաւորութիւն ստանձնած կ՚ըլլար։

Այս յաճախ արուած խորհուրդներուն վրայ թո՛ղ աւելցուի նաեւ Թագուհիին Լաֆայէթի դէմ ունեցած անձնական ատելութիւնը, եւ պիտի հասկցուի որ արքունիքը ո՛րքան քիչ տրամադիր էր թոյլ տալու համար որ սահմանադրականները կամ Ֆէօյեանները իրեն ծառայէին։ Անոնց հանդէպ արքունիքին ունեցած այս դժկամակութենէն զատ, պէտք է նկատողութեան առնել նաեւ տկարութիւնը այն միջոցներուն զորս կրնային գործածել ժողովրդային կուսակցութեան դէմ։ Ճիշդ է որ Լաֆայէթ իր զինուորներէն պաշտուած էր եւ կրնար հաշուել իր բանակին վրայ, բայց իր դէմը թշնամին ունէր եւ չէր կրնար սահմանագլուխը թողուլ երկրին ներսերը փոխադ-

Թագ
չափաւ
դադրիլ
Ֆրանսա
եթէ թա
եօք նո
օտարազ
տարագի
ԺԶ. ար
ւորութե
պիտի չ
արեաց Ն
նեցին Ա
գըսաւէ
տարագի
պէս կը
պատգա
այս մա
Թագուհ
թիւն կը
նաւորա
ամենէն
բուն. բ
ըլլար ո

որպէս ղ
սահմա
կեանքի
և իրեն
ուղ
զեկոյց
«թա
«բա
«մեր
«գո
«զը
«յ

քաղաքներու փոխանակութիւն մը ազա-տութեան բարեկամներուն միջեւ։ Նամակը թուականն հասաւ Յունիս 18ին։ Լամարթին նամակին սկիզբը, Նախարարութեան վարմունքը պարսաւելէ ետքը ըսելով թէ զայն կ'ամբաստանէ ան պատճառաւ իր անոր հրաժարեցուած ըլլալը իմացած էր՝ կը շարունակէր սա բառերով. —

«Բաւական չէ որ կառավարութեան ձիւղը ազատած ըլլայ միատակար ազդեցութենէ մը, հանրային գործը վտանգի մէջ է. Ֆրանսայի ճակատագիրը գլխաւորապէս իր ներկայացուցիչներուն ձեռքն է. ազգը անանցմէ կը սպասէ իր փրկութիւնը. բայց ինքզինքին տալով Սահմանադրութիւն մը, անոնց նախադծեց միակ ուղղութիւնը որով պէտք է ազատել Ֆրանսան։»

Յետոյ յայտարարելով իր անբանաբերելի անձնուիրութիւնը երդուեալ օրէնքին համար, կը ներկայացնէր Ֆրանսայի վիճակը զոր նետուած կը տեսնէր երկու տեսակ թշնամիներու միջեւ, արտաքին և ներքին թշնամիները։

«Պէտք է ջնջել թէ՛ մէկը և թէ միւսը. բայց դուք այնքան ուժ պիտի ունենաք՝ որքան որ սահմանադրական և արդար ըլլաք...։

«Նայեցէք ձեր շուրջը... կրնա՞ք ծածկել որ խռովարարներու խումբ մը և ոև է տարտամ ամբաստանութենէ զգուշանալու համար ըսեմ՝ Ժաքօպէններու խմբակը՝ բոլոր անկարգութեանց պատճառ եղած են։ Անիկա է որ կ'ամբաստանեմ բարձրօրէն. առանձին իշխանութեան մը պէս կազմակերպուած, իր կեդրոնով և շարքերով, կուրօրէն զեկավարուած մէկ քանի փառասէր պետերէ, այդ աղանդը որոշ ընկերակցութիւն մը կը կազմէ Ֆրանսայի ժողովուրդին մէջ, որուն իշխանութեան վրայ կը բռնանայ, հպատակեցնելով անոր երեսփոխանները և լիազօրները։



ՌՕԼԱՆ ԻՐ ՆԱՄԱԿԸ ԿԸ ԿԱՐԴԱՑ ԹԱԳԱՒՈՐԻՆ

« Հոն է որ, հրապարակային նիստերու մէջ, օրէնքներու սէրը ազնուականութիւն կոչուի և անոնց դէմ գործելը՝ հայրենասիրութիւն. հոն՝ Տէգլիի մարդասպանները կը փառաւորուին. Ժուրտանի ոճիրները գովաբանողներ կը գտնուին. հոն՝ այն մարդասպանութեան պատմութիւնը որ պղծեց Մէց քաղաքը, կուգայ դեռ դժոխային հաւանութիւններ գրգռելու:

« Կը կարծեն արդեօք թէ, կրնա՞ն ազատիլ այս մեղադրանքներէն, պարծենալով աւստրիական յայտարարութեամբ մը, ուր այս աղանդաւորները յիշուած են: Արդեօք նուիրակա՞ն դարձած են, անոր համար որ Լէօպոլտ իրենց անունը արտասանեց: Եւ որովհետեւ պարտական ենք կռուիլ օտարներու դէմ՝ որոնք մեր վէճերուն կը խառնուին, ազա՞տ ենք մեր հայրենիքը ընտանեկան բռնապետութենէ մը փրկելու պարտականութենէն: »

Յետոյ յիշեցնելով իր նախկին ծառայութիւնները՝ ազատութեան դատին համար, թուելով այն դրաւականները զորս հայրենիքին տուած էր, զօրավարը խօսք կուտար իր և բանակին կողմէ, և կը յայտարարէր որ Ֆրանսական ազգը, եթէ տիեզերքի ամենէն առաջին ազգը չէ, կրնար և պարտական էր դիմադրել թագաւորներու դաշնակցութեան որ միացած էին Ֆրան-

տայի դէմ։ «Բայց, աւելցուց, որպէս զի մենք, ազատութեան զինուորներս՝ արդիւնաւոր կերպով մը պայքարինք և մեռնինք անոր համար, պէտք է որ հայրենիքի պաշտպաններուն թիւը անմիջական կերպով մը համեմատի իր հակառակորդներուն թիւին հետ և ամէն կարգի պարենաւորումներ բազմապատկուին և մեր զինուորական շարժումները դիւրացնեն. զինուորներուն բարօրութիւնը, անոնց պարէնները, վճարումները, անոնց առողջութեան հետ կապ ունեցող խնամքները այլեւս ենթարկուած չըլլան աղխատաբեր դանդաղութեանց եւլն.։» Ցետոյ կուտար ուրիշ խորհուրդներ, որոնց գլխաւորը և վերջինը ահաւասիկ. — «Թող ակումբներու տիրապետութիւնը ձեր միջոցաւ ջնջուելով՝ տեղի տայ օրէնքի տիրապետութեան, իրենց բռնաւորութիւնը՝ սահմանադրական իշխանութեանց հաստատ և անկախ գործունէութեան, իրենց կազմալուծող բնաբանները՝ ազատութեան ճշմարիտ սկզբունքներուն, իրենց ցնորական կատաղութիւնը՝ տեղի տայ հանդարտ և յարատեւող քաջութեանը ազգի մը, որ իր իրաւունքները կը ճանչնայ և զանոնք կը պաշտպանէ. վերջապէս իրենց հատուածական մեքենայութիւնները՝ հայրենիքին ճշմարիտ շահերուն. հայրենիքը վտանգի այս պահուն պարտական է հաւաքել բոլոր անոնք, որոնց համար հայրենիքին գերութիւնը և աւերումը անհունի հրճուանքի մը և զզուելի շահատակութեան մը առարկաները չեն։»

Ասիկա գրգռուած կիրքերուն ըսել էր՝ «կեցէ՛ք»․ իսկ կուսակցութիւններուն՝ «զոհուեցէ՛ք կամովին» և վերջապէս հոսանքի մը՝ «այլ եւս մի հոսիր»։ Բայց, թէեւ խորհուրդը անօգուտ ըլլար, պարտականութիւն մը ըլլալէ չէր դադրեր։ Լաֆայէթի նամակը շատ շատ ծափահարուեցաւ աջակողմէն. ձախակողմը լռեց։ Հազիւ թէ անոր ընթերցումը աւարտած էր, երբ խնդիր եղաւ անմիջապէս զայն տպելու և նահանգներուն ղրկելու։

Վէրնիօ խօսք ուզեց և ստացաւ։ Ըստ իրեն, կարեւոր էր ազատութեան համար, զոր Պարոն տը Լաֆայէթ մինչեւ այն ատեն այնքա՛ն լաւ պաշտպանած էր, զանազանութիւն մը դնել պարզ քաղաքացիներու խնդրագրին, որոնք կարծիք մը կը յայտնէին կամ արդարութեան գործ մը կը պահանջէին, և զինուած զօրավարի մը դասերուն միջեւ։ Այս վերջինը պարտական էր արտայայտուիլ միայն նախարարութեան բերնով, այլ թէ ոչ՝ ազատութիւնը կորսուած էր։ Հետեւաբար, պէտք էր օրակարգին անցնիլ։ Թէվընօ պատասխանեց որ Ժողովը Լաֆայէթի բերնէն պէտք էր լսէր այն ճշմարտութիւնները զորս չէր համարձակած ինքզինքին ըսել։ Այս վերջին դիտողութիւնը մեծ աղմուկ յառաջ բերաւ։ Քանի մը անդամներ ուրացան նամակին Լաֆայէթէն գրուած ըլլալը։ «Նոյն իսկ եթէ ստորագրուած չըլլար, գոչեց Գ. Քուպէ, միայն Լաֆայէթ կրնայ զայն գրել։»

Կուատէ խօսք ուզեց դիտողութեան մը համար և պնդեց որ նամակը չէր կրնար Լաֆայէթէն ըլլալ, որովհետեւ անիկա կը խօսէր Տիւմուրիէի հրաժարականին վրայ, որ ամսոյն 16ին տըրուած էր, և նամակին ալ ճիշդ այն թուականը կը կրէր։ «Անկարելի պիտի ըլլար ուրեմն, աւելցուց, որ ստորագրողը խօսի եղելութեան մը վրայ, որ իրեն ծանօթ չէր կրնար ըլլալ։ Կա՛մ ստորագրութիւնը իրը չէ, կա՛մ ձերմակ թուղթին վրայ ստորագրութիւն դրած է և խռովարարական խումբի մը տրամադրութեան ներքեւ դրուած է որպէս զի կարենայ գործածել զայն ըստ կամս։» Այս խօսքերուն վրայ մեծ աղմուկ բարձրացաւ։ Կուատէ, շարունակելով, աւելցուց որ Պ. տը Լաֆայէթ անկա-

րող էր ըստ իր ծանօթ զգացումներուն, այդպիսի նամակ մը գրելու. «Պէտք էր գիտնար որ, ըսաւ, երբ Քրոմուէլ...» Տիւմա երեսփոխանը այս վերջին խօսքերուն չկրնար այլ եւս ինքզինքը զսպել և խօսք կ'ուզէ. երկարատեւ ժխոր մը կը պայթի ժողովին մէջ։ Այլ սակայն Կուատէ կրկին կը գրաւէ ատեանը և կը կրկնէ. «Կ'ըսէի թէ....։» Նորէն զինքը կ'ընդհատեն «խօսքերնիդ Քրոմուէլի վրայ էր» կ'ըսեն։

— «Պիտի հոն գամ կրկին, ...կ'ըսէի որ Պ. տը Լաֆայէթ պէտք է գիտնայ որ երբ Քրոմուէլ այդպիսի լեզու մը կը գործածէր, ազատութիւնը կորսուած էր Անգլիոյ մէջ։ Պէտք է կա՛մ վստահ ըլլալ որ վատ մը Պ. տը Լաֆայէթի անունը գործածած է, և կամ ապացուցանել ֆրանսական ժողովուրդին, մեծ օրինակով մը՝ որ դուք զուր երդում մը չէ որ ըրած էք Սահմանադրութիւնը պահպանելու երդում ընելով։»

Շատ մը անդամներ կը վկայեն որ կը ճանչնան Լաֆայէթի ստորագրութիւնը և հակառակ այս բանին, անոր նամակը կը զրկուի Տասներկուներու յանձնաժողովին անոր վաւերականութիւնը հաստատելու համար։ Այսպէսով նամակը չի տպուիր և նահանգներուն չի զրկուիր։

Այս վեհանձն քայլը, ուրեմն, բոլորովին անօգուտ եղաւ և այդպէս ալ պիտի ըլլար միտքերու այդ վիճակին մէջ։ Այդ վայրկեանէն սկսեալ զօրավարը գրեթէ այնքան անժողովրդական դարձաւ, որքան էր արքունիքը. եթէ Ժիրոնի պետերը, ժողովուրդէն աւելի լուսաւորուած ըլլալով չէին հաւատար որ Լաֆայէթ կարող է իր երկիրը մատնել, ժաքօպէններու վրայ յարձակած ըլլալուն համար ժողովրդային զանգուածը զայն կարող կը կարծէր, որովհետեւ այդ բանը շա՛տ լսած էր ակումբներուն, թերթերուն և հասարակաց վայրերուն մէջ։

Այսպէս, արքունիքին՝ ժողովրդային կուսակցութեան ներշնչած վտանգի զգացումին միացան անոնք, զորս Լաֆայէթ զրգռեց իր սեպհական դիմումներով։ Այն ատեն, այդ կուսակցութիւնը բոլորովին յուսահատեցաւ և որոշեց արքունիքը հարուածել, մինչ անիկա տակաւին գործադրութեան չէր դրած այն դաւադրութիւնները որոնցմով կ'ամբաստանէին զայն։

Արդէն տեսանք թէ ժողովրդային կուսակցութիւնը ի՛նչպէս կազմուած էր։ Քանի կը յառաջանար՝ նշանաւոր կը դառնար, այնքան աւելի յատկանշական կ'ըլլար և նոր անձնաւորութիւններ հոն ուշադրութիւն կը գրաւէին։ Ռոպէսբիէռ արդէն ինքզինքը ծանօթ դարձուցած էր Ժաքօպէններու մէջ և Տանդօն՝ Քորտըլիէներու մէջ։ Ակումբները, քաղաքապետութիւնը և պաշտօնատուններ շատ մարդիկ ունէին, որոնք իրենց նկարագրին և կարծիքներուն եռանդովը պատրաստ էին ամէն բանի ձեռնարկելու։ Ասոնց կարգէն էին Սէրժան և Բանի, որոնք աւելի ուշ իրենց անունը կապեցին ահաւոր դէպքի մը։ Արուարձաններուն մէջ կը դիտուէր որ գումարտակներու բազմաթիւ պետեր ահազդեցիկ կը դառնային. անոնց գլխաւորը Սանդէր անունով գարեջուրի գործարանատէր մըն էր։ Իր հասակով, ձայնով և խօսելու տեսակ մը դիւրութիւնով հաճելի էր ժողովուրդին և տեսակ մը տիրապետութիւն ձեռք ձգած էր Ֆօպուռ Սէնդ-Անդուանի մէջ, որուն պահակախումբին հրամանատարն էր։ Սանդէր արդէն նշանաւոր դարձած էր Վէնսէնի յարձակումին մէջ, զոր 1791 փետրվարին ետ քշած էր Լաֆայէթ, և ինչպէս բոլոր հաճոյակատար մարդիկը, ան ալ ըոպէական ներշնչումներով կրնար շատ վտանգաւոր դառնալ։ Հեռաւոր արուարձաններուն մէջ տեղի ունեցած բոլոր խորհրդակցութիւններուն ներկայ կ'ըլլար։

մանակաւ իր Պուրժի Թագաւորութիւնը ընդարձակած էր։ Նախկին Նախարար Սէրվանի հետ կը քննէին աշխարհացոյց քարտէսը, և կ'ըսէին մէջերնին, որ Հռենոսի վրայ և անկէ անդին յաղթելով ազատութիւնը պիտի նահանջէր Վօժ լեռանց Լուար գետին ետեւ. թէ իրենց դիրքերէն ետ մղուելով կը մնար դեռ արեւելքէն Տուպը, Էնը, Հռենոսը. արեւմուտքէն՝ Վիէնը, Տորտօնեըն. կեդրոնը՝ Լիմուզէնի ժայռերը և գետերը։ «Աւելի հեռուն դեռ, կ'աւելցնէ ինքն իսկ Պարպարու, ունէինք Օվէրնեը, իր ցից բլուրներով, ձորերով, իր հին անտառներով և Վէլէյի լեռները որոնք երբեմն հրդեհուած էին, և հիմա ծածկուած են եղեւիններով, վայրի տեղեր ուր մարդիկ ձիւնը կը հերկեն, բայց ուր անկախ կ'ապրին։ Սէվէնները մեզի կ'ընծայէին նաեւ շատ հռչակաւոր ապաստան մը, որ չէր կրնար բռնապետութեան վախ չներշնչել։ Եւ հարաւային Ֆրանսայի ծայրերը իբր սահմանագիծ կը գտնէինք Իզէրը, Տիւրանսը, Հռենոսը՝ Լիոնէն մինչեւ ծովը, Ալպեանները և Դուլօնի պարիսպները։ Վերջապէս, եթէ բոլոր այս կէտերը տեղի տային, մեզի կը մնար Քորսիքան, ուր Ճենովացիները և Ֆրանսացիները չկրցան բռնապետութիւնը հաստատել. Քորսիքան՝ որ բազուկներու կը սպասէ արգաւանդ ըլլալու համար և փիլիսոփաներու՝ լուսաւորուելու համար։ (Պարպարուի Յիշատակներ։)

Բնական էր որ հարաւային Ֆրանսայի բնակիչները խորհէին իրենց գաւառները ազատագրել, եթէ հիւսիսը նուաճուած ըլլար։ Սակայն, անփոյթ չէին հիւսիսային գաւառներու համար, որովհետեւ համաձայնեցան գրելու իրենց նահանգներուն, որպէս զի ինքնաբերաբար 20,000 հոգիի բանակ մը կազմեն, թէեւ այս բանակին վերաբերեալ հրամանագիրը դեռ վաւերացուած չէր։ Շատ յոյս դրած էին Մարսիլլոյ վրայ, հարուստ քաղաք, շատ բազմամարդ և եռանդնօրէն ժողովրդավար։ Մարսիլիացիներն էին որ Միրապօն ընտրեցին Էքսի Ժէնէրալին և անկէ ի վեր բոլոր հարաւային գաւառներու մէջ տարածեցին այն սկզբունքները որոնցմով խանդավառուած էին։ Մարսիլլոյ քաղաքապետը Պարպարուի բարեկամն էր և անոր համակարծիք։ Պարպարու անոր գրեց որ ցորենահատիկ ամբարէ, վստահելի մարդիկ ղրկէ դրացի նահանգներուն մէջ, ինչպէս նաեւ Ալպեաններու, Իտալիոյ և Պիրենեան բանակներուն, անոնց մէջ հասունցնելու համար հանրային կարծիքը, Մօնդէսքիուի՝ Ալպեաններու բանակին զօրավարին կարծիքը շօշափելու և անոր փառասիրութիւնը ծառայեցնելու համար ազատութեան ի նպաստ. վերջապէս, որպէս զի համաձայնի Բաօլիի և Քորսիքացիներուն հետ, այնպէս որ վերջին օգնութիւն մը և վերջին ապաստան մը պատրաստուած ըլլայ։ Անկէ զատ, այս նոյն քաղաքապետին յանձնարարեցին տուրքերուն արդիւնքը վար դնել, անկէ զրկելու համար գործադիր իշխանութիւնը և ի հարկին տուրքերը գործածելու անոր դէմ։ Ինչ որ Պարպարու կ'ընէր Մարսիլլոյ համար, ուրիշներ նոյնը կ'ընէին իրենց նահանգներուն համար և ապաստան մը պատրաստելու վրայ կը խորհէին։ Այսպէս՝ անվստահութիւնը յուսահատութեան փոխուելով, ընդհանուր ըմբոստութիւնը կը պատրաստէր և ըմբոստութեան այս պատրաստութեանց մէջ անհամաձայնութիւն մը կը հաստատուէր արդէն Բարիզի և նահանգներուն միջեւ։

Բէթիօն քաղաքապետը որ կապուած էր բոլոր Ժիրօնտէններուն հետ և աւելի ուշ, անոնց կարգը անցած և անոնց հետ արտաքսուած էր, իր պաշտօնին իսկ բերումով աւելի յաճախակի յարաբերութեան մէջ կը գտնուէր Բարիզի խռովարարներուն հետ։

Շատ հանդարտութիւն ունէր, ցրտութեան երեւոյթ մը զոր իր թշնամիները ապուշութիւն նկատեցին և այնպիսի խղճմտութիւն մը, զոր իր կուսակիցները ջատագովեցին և որուն մասին երբեք բան մը չկրցան ըսել իր հակառակորդները։ Ժողովուրդը որ մակդիր մը կուտայ բոլոր անոնց՝ որոնցմով կը զբաղի, զայն կը կոչէր Բէդիօն առաքինութիւնը։

Իր մասին արդէն խօսեցանք Վարէնի ճամբորդութեան առթիւ և այն նախագահութեան մասին՝ որ արքունիքը իրեն տուաւ Լաֆայէթի վրայ, Բարիզի քաղաքապետութեան համար։ Արքունիքը փափաքեցաւ զայն կաշառել, և խաբեբաներ խոստացան այդ բանը յաջողցնել։ Գումար մը ուզեցին և զայն իրենց պահեցին, առանց նոյն իսկ այդ մասին Բէդիօնին խօսք բանալու, ինչ որ իր ծանօթ բնաւորութիւնը անկարելի կը դարձնէր։ Այն ուրախութիւնը որ արքունիքը զգաց, կարծելով որ ինքզինքին նեցուկ մը տուած էր և ժողովրդական պաշտօնատար մը կաշառած էր, կարճատեւ եղաւ. անմիջապէս հասկցաւ որ զինքը խաբած էին և իր հակառակորդներուն առաքինութիւնները այնքան շահախնդիր չէին, որքան երեւակայած էր։

Բէդիօն առաջիններէն եղած էր մտածող՝ որ բացարձակ ծնած թագաւորի մը հակումները երբեք չեն փոխուիր։ Ինքը հանրապետական էր, երբ դեռ ո՛չ ոք կը խորհէր Հանրապետութեան վրայ. և Սահմանադիր ժողովին մէջ համոզումով եղաւ այն բանը՝ զոր Ռոպէսփիէռ բնաւորութեան դանդաղութիւնով եղած էր։ Օրէնսդիր ժողովի ժամանակ՝ ա՛լ աւելի համոզուեցաւ արքունիքին անուղղայ ըլլալուն վրայ։ Անիկա համոզում գոյացուց որ օտարները ներս կը հրաւիրէր, և ի սկզբան համոզումով հանրապետական էր թէեւ, բայց այն ատենը եղաւ՝ հանրապետական ըլլալուն մէջ ապահովութեան միջոց մը գտնելու համար։ Այդ վայրկեանէն խորհեցաւ, կ՚ըսէ, նոր յեղափոխութեան մը օգնելու։ Անիկա կը կասեցնէր գէշ ուղղուած շարժումները, ընդհակառակը՝ կը նպաստէր լաւ շարժումներուն և մանաւանդ կը ջանար զանոնք հաշտեցնել օրէնքին հետ, որուն ամենախիստ պահապանն էր և զոր չէր ուզեր բռնաբարել, բայց միայն ծայրայեղ պարագային։

Առանց լաւ ճանչնալու Բէդիօնի մասնակցութիւնը այն շարժումներուն մէջ որոնք կը պատրաստուէին, առանց գիտնալու թէ արդեօք իր ժիրօնտի բարեկամներուն հետ խորհրդակցեցա՞ւ այդ շարժումներուն նպաստելու համար, կարելի է ըսել որ, իր վարմունքէն դատելով, բան մը չըրաւ զանոնք արգիլելու համար։ Ըսողներ կան թէ յունիսի վերջերը Ռոպէսփիէռին, դատախազ Մանուէլին, նախկին սահմանադիր Սիլլէրիի, և նախկին քապուչին ու երեսփոխան Շապօի հետ Սանդէրին տունը գնաց, թէ՝ անիկա խօսեցաւ Բէնգ-Վէնի խումբին և անոր ըսաւ թէ ժողովը իրեն կը սպասէր։ Ինչ որ ալ եղած ըլլան այս դէպքերը, անտարակուսելի է որ խորհրդակցութիւններ տեղի ունեցան և հաւատալի չէ որ վերոյիշեալ անձնաւորութիւնները քաշուած ըլլան այդ ժողովներուն ներկայ ըլլալէ, նկատողութեան առնելով իրենց ծանօթ կարծիքները և իրենց նախապէս ունեցած վարմունքը։ Այդ վայրկեանէն սկսեալ, արուարձաններուն մէջ խօսեցան թէ՝ յունիս 20ին Գնդախաղի երդումին տարեդարձի օրը, ատենախմբութիւն մը պիտի ըլլայ։ Կ՚ըսէին թէ ազատութեան ծառ մը պիտի տնկուի Ֆէօյեաններու Ակումբին պատշգամին վրայ, և ժողովին ու թագաւորին խնդրագիր մը պիտի ուղղուի. այս խնդրագիրը զինեալ պիտի ներկայացուէր. այս բանէն բաւականին կը հասկցուէր թէ ծրագրին իրական նպատակն էր պալատը

վախցնել 40,000 տիգաւորներ ցոյց տա-լով հոն։

Յունիս 16ին պաշտօնական խնդրագիր մը ուղղուեցաւ Թաղային Խորհուրդին, որպէս զի Փօպուռ Սէնդ-Անդուանի քաղաքացիները արտօնուին զէնուիլ յունիս 20ին և Ժողովին ու Թագաւորին ուղերձ մը մատուցանեցին։ Խորհուրդը անցուց օրակարգին և վճռեց որ իր որոշումը հաղորդուի վարչութեան ու քաղաքապետական մարմնին։ Խնդրամատոյցները ինքզինքնին դատապարտեալ չնկատեցին, և բարձրօրէն յայտարարեցին որ առանց Խորհուրդի հաւանութեան ալ իրենք պիտի հաւաքուին։ Քաղաքապետ Բէդիօն, յունիս 16ին ընդունեց զեկոյցը 18ին միայն բրաւ. ասկէ զատ՝ նահանգային վարչութեան և ո՛չ թէ քաղաքապետական մարմնին հաղորդեց այդ զեկոյցը։

Յունիս 19ին, նահանգային վարչութիւնը որ, ինչպէս տեսանք, ամէն առթիւ խռովարարներուն դէմ կ'ելլէր, որոշեց արգիլել բոլոր զինեալ համախմբումները, և հրահանգ տալ ընդհանուր հրամանատարին ու քաղաքապետին՝ անհրաժեշտ միջոցները ի գործ դնել զանոնք ցրուելու համար։ Այդ որոշումը հաղորդուեցաւ Ժողովին, ձեռամբ ներքին գործոց նախարարին և անմիջապէս խնդիր եղաւ թէ որոշմնագիրը պիտի կարդացուի՞։

Վէրնիօ կը հակառակէր ընթերցման, բայց չյաջողեցաւ. որոշումը կարդացուեցաւ և օրակարգ անցուեցաւ։

Ժողովին մէջ երկու բաւական կարեւոր դէպքեր պատահած էին։ Թագաւորը վէթօյի ենթարկած էր այն երկու որոշումները, որոնցմէ մին կը վերաբերէր երդուեալ կղերականներուն, իսկ միւսը՝ 20,000 հոգինոց զօրաբանակի մը հաստատման խնդրոյն։ Նահանգային վարչութեան զեկոյցը խորին լռութեան մէջ մտիկ ըրած էին. միւնոյն ժամանակ, Մարսիլիացիներ Ժողովին առջեւ ներկայանալով խնդրագիր մը կարդացուցած էին. քիչ առաջ տեսանք թէ Պարպարու ի՛նչ կարգի յարաբերութիւններ ունէր անոնց հետ. գրգռուած՝ անոր խորհուրդներէն, անոնք գրած էին Բէդիօնի, իրենց ամբողջ՝ աջակցութիւնը խոստանալով անոր, և այս խոստումին կցած էին Ժողովին ուղղեալ խնդրագիր մը, որով՝ ի մէջ այլոց կ'ըսէին. —

«Ֆրանսայի ազատութիւնը վտանգի տակ է, բայց հարաւային նահանգներու հայրենասիրութիւնը պիտի փրկէ Ֆրանսան... Ժողովուրդի զայրոյթին օրը հասած է... օրէնսդիրնե՛ր, ձեր ձեռքերուն մէջն է ժողովուրդին ոյժը. գործածեցէ՛ք զայն. Ֆրանսական հայրենասիրութիւնը ձեզմէ կը խնդրէ մեծագոյն ոյժով բախել դէպի հայրենիքը և դէպի սահմանադրութիւնը... Դուք չպիտի մերժէք արտօնել Օրէնքը՝ անոնց համար, որոնք կ'ուզեն մեռնիլ՝ զայն պաշտպանելու համար։»

Այս գիրին ընթերցումը երկար վիճաբանութեան դուռ բացաւ Ժողովին մէջ. աջակողմեան երեսփոխանները կը պնդէին թէ այս խնդրագիրը գաւառները զրկելը՝ զանոնք ապստամբութեան հրաւիրել կը նշանակէր։ Այսուհանդերձ, առաքումը որոշուեցաւ, այս շատ ճիշդ խորհրդածութեանց հակառակ, որոնք սակայն անօգուտ անցան՝ քանի որ ամէն համոզումը գոյացած էր որ միայն նոր յեղափոխութիւն մը կրնայ փրկել Ֆրանսան և ազատութիւնը։

Ահա ասոնք էին յունիս 19ի դէպքերը։ Միւս կողմէ, արուարձաններուն մէջ շարժումները յառաջ կ'երթային, և կ'ըսուի թէ ասպէս կը խօսէր Սանթէռ իր զինակիցներուն, որոնք վարչութեան որոշումէն քիչ մը սասանած էին. «Ի՞նչ կը վախնաք. ազգային պահակազօրքը զէնք պարպելու հրաման պիտի չունենայ, իսկ Պէթիոն հոն պիտի ըլլայ:»

Կէս գիշերին, քաղաքապետը՝ թերեւս կարծելով որ յառաջ եկած շար-

ժումը անդիմադրելի է, և թերևս ալ կարծելով թէ պարտաւոր է օժանդակել անոր, ինչպէս ըրաւ աւելի ուշ՝ օգոստոս 10ին, գրեց վարչութեան և խընդրեց անկէ որ օրինականացնէ զինուորներու հաւաքումը, թոյլ տալով ազգային պահակախումբին որ արուարձաններու քաղաքացիները իր շարքերուն մէջ առնէ։ Այս միջոցը կատարելապէս կը գոհացնէր տեսակէտներն անոնց, որոնք, առանց ոև է անկարգութիւն ցանկալու, սակայն և այնպէս կ'ուզէին պարտադրել թագաւորին. և ամէն բան կ'ապացուցանէ թէ արդարև ասոնք թէ՛ Բէզիօնի և թէ ժողովրդային սեներուն տեսակէտներն էին։ Վարչութիւնը պատասխանեց յունիս 20, առաւօտեան ժամը 5ին, թէ ինքը կը յամառէր մնալ իր նախկին որոշումներուն վրայ։ Այն ատեն Բէզիօն հրամայեց գործօն ծառայութեան մէջ գտնուող ընդհ. հրամանատարին՝ պահականոցները լեփ լեցուն զինուոր պահել և Թիւիլըրիի պալատին պահակազօրքը կրկնապատկել. բայց ասկէ աւելի բան մը չըրաւ. և չուզելով ո՛չ վերանորոգել Շան տը Մարսի դէպքը, ոչ ալ համախմբումը ցրուել, սպասեց մինչև առաւօտեան ժամը 9, որպէս զի քաղաքային մարմինը նիստ գումարէ։ Այս նիստին մէջ, վարչութեան տուած որոշման հակառակ որոշում մը առնել տալով ազգային պահակազօրքը հրահանգ ստացաւ իր շարքերը բանալ այն զինեալ քաղաքացիներուն առջև, որոնք կ'ուզէին պահակագունդին մէջ մտնել։ Բէզիօն, չընդդիմանալով վճիռի մը, որ վարչական նուիրապետութիւնը ոտնակոխ կ'ընէր, այդ կերպով գործած եղաւ տեսակ մը օրինազանցութիւն, որ աւելի ետք իրեն երեսին տրուեցաւ։ Բայց, այդ որոշումին յատկանիշը ինչ որ եղած ըլլայ, իր տրամադրութիւնները անօգուտ դարձան, որովհետև ազգային պահակազօրքը ժամանակ չունեցաւ կազմուելու, և քիչ ատենէն համախըմբումը այնքան մեծ եղաւ որ, այլ ևս անկարելի դարձաւ փոխել անոր թէ՛ ձևը և թէ՛ ուղղութիւնը։

Առաւօտեան ժամը 9 էր։ Ժողովը դեռ նոր գումարուած էր մեծ դէպքի մը սպասելով. գաւառային անդամները գացին ժողովին, հասկցնելու համար թէ իրենց ջանքերը անօգուտ են։

Դատախազ Ռէօտէրէր խօսք առաւ, և պարզեց թէ քաղաքացիներու արտասովոր հաւաքոյթ մը տեղի ունեցած է, հակառակ օրէնքին, և ընդդէմ՝ իշխանութեան զանազան արգելքներուն. թէ այս համախմբումին նպատակը կը թուի ըլլալ յունիսի 20ի տարեդարձը տօնելը և ժողովին յայտնել երախտագիտական նոր ուղերձ մը, բայց թէ՝ եթէ այս է մեծագոյն մասին նպատակը, գուցէ չարամիտներ ուզեն օգտուիլ այս համախմբումէն, ուղերձ մը մատուցանելու համար թագաւորին, որ պարտաւոր է զայն ընդունիլ միմիայն իբր պարզ խնդրագիր։ Այնուհետև յիշեցնելով վարչութեան և թաղային խորհուրդին որոշումները, զինեալ հաւաքումներու դէմ գրուած օրէնքները և նաև այն որոշումները, որոնցմով միմիայն քսան քաղաքացիներ կրնան հաւաքուիլ և խնդրագիր մատուցանել, անիկա հրաւիրեց Ժողովը որ այդ օրէնքները ի գործ դնէ. «որովհետև, յարեց, այսօր զինեալ խնդրարկուներ հոս կու գան քաղաքային նպատակով մը. բայց վաղը գուցէ հաւաքուի չարամիտներու խումբ մը, և այն ատեն, կը հարցնեմ ձեզի, պարոններ, ի՞նչ ըսելիք պիտի ունենանք անոնց...։»

Աջակողմին ծափահարութեանց և ձախակողմին դժգոհութեան աղմուկներուն միջև Վէրնեօ բեմ բարձրացաւ. ձախակողմը՝ գաւառներու տագնապը և կանխատեսութիւնը ըմբռնելով յայտնապէս ապստամբութիւնը կը ջատագովէր,




ԽՆԴՐԱՄԱՏՈՅՑՆԵՐԸ ԿԸ ԽՈՒԺԵՆ ԺՈՂՈՎԻՆ ՎՐԱՅ

Վէրնիօ դիտել տուաւ թէ, այն օրէնքի բռնաբարումը, որմէ կը վախնայ դատախազ Ռէօտէրէր, ապագային համար, արդէն իսկ գոյութիւն ունի ներկայիս. թէ քանիցս ընդունած են արդէն զինեալ խնդրարկուներ, և անոնց թոյլ տրուած է զօրանցք ընել ժողովարանին մէջ. թէ գուցէ անցեալին մէջ սխալ գործուած է, բայց այսօր խնդրարկուները գանգատելու իրաւունք պիտի ունենային, եթէ ուրիշներուն ցոյց տրուածէն տարբեր վերաբերում մը ցոյց տրուի իրենց. և թէ, ինչպէս կ'ըսէին, եթէ անոնք թագաւորին ուղերձ մը մատուցանել կ'ուզէին, անտարակոյս՝ անզէն խնդրարկուներ պիտի ղրկէին անոր, և, վերջապէս, եթէ թագաւորին վտանգ մը հասնելու մասին վախցողներ կան, թո՛ղ հսկողութիւն կատարուի անոր վրայ և 60 անդամոց պատգամաւորութիւն մը ղրկուի։

Տիւմօլար կ'ընդունի ամէն ինչ որ կ'ըսէ Վէրնիօ, կը խոստովանի թէ

օրէնքին դէմ զեղծում կատարուած է արդէն, բայց կը պնդէ որ պէտք է դադրեցնել այդ զեղծումը, մանաւանդ ներկայ պարագային, եթէ չուզուիր որ Ժողովը և Թագաւորը, Եւրոպայի աչքին առջեւ երեւան իբր գերիները՝ աւերիչ խռովարարական ընկերութեանց: Վէրնեօյի նման կը պահանջէ պատգամաւորութեան մը ուղարկումը, բայց սա յաւելուածական պահանջն ալ կ'ընէ որ քաղաքապետութիւնը և նահանգային վարչութիւնը պատասխանատու ըլլան օրէնքի պահպանութեան համար ձեռք առնուած միջոցներուն:

Ժողովին մէջ աղմուկը հետզհետէ աւելցաւ. կ'իմացնեն թէ Սանդէրէն նամակ մը եկած է. կը կարդան զայն, բոլոր երեսփոխաններուն ծափահարութեանց միջեւ. այդ նամակը կ'ըսէր. — «Փօպուր Սէնդ Անդուանի բնակիչները կը տօնեն Յունիս 20ը. զիրենք զրպարտեցին, և հիմա անոնք կը պահանջեն Ժողովին ներկայանալ, իրենց զրպարտիչները շփոթեցնելու և ապացուցանելու համար թէ իրենք միշտ Յուլիս 14ի մարդիկներն են:»

Վերնիօ պատասխանեց Տիւմօլանի, թէ եթէ օրէնքը բռնաբարուած է, օրինակը նոր չէ որ կը տրուի, և թէ՝ այս անգամ անոր ընդդիմանալ ուզողը Շան տը Մարսի արիւնահեղ դէպքը կրկնել պիտի նշանակէր, և թէ, վերջապէս, խնդրարկուներուն զգացումները ոչինչ ունին այպանելի. «ապագային նկատմամբ իրաւացիօրէն անհանգիստ, յարեց Վէրնեօ, անոնք կ'ուզեն ապացուցանել թէ, ազատութեան դէմ լարուած բոլոր մեքենայութիւններուն հակառակ, իրենք միշտ պատրաստ են պաշտպանելու այդ ազատութիւնը:»

Ինչպէս կը տեսնուի, հոս օրուան ճշմարիտ մտածումը կը յայտնուէր վիճաբանութեան հասարակ մէկ արդիւնքովը: Աղմուկը շարունակուեցաւ: Ռամոն խօսք ուզեց, բայց որոշում մը պէտք էր որպէս զի խօսք տրուէր իրեն: Այդ պահուն կը ծանուցանեն թէ խնդրարկուները 8000 հոգի են: Բայլէ կ'ըսէ. «Անոնք ութը հազար մարդ են, իսկ մենք՝ միայն եօթը հարիւր քառասուն և հինգ հոգի. ուրեմն եա քաշուինք մենք:» Ամէն կողմէ կը գոչեն. «Ի կա՛րգ, ի կա՛րգ:» Բայլէ ի կարգ կը հրաւիրուի և կը ստիպեն Ռամոնը որ խօսի, որովհետեւ 8000 քաղաքացիներ կը սպասեն. «Եթէ, կ'ըսէ, ութը հազար քաղաքացիներ կը սպասեն, ինծի ալ 24 միլիոն Ֆրանսացիներ կան սպասող: Այն ատեն, իր աջակողմեան բարեկամներու տուած պատճառաբանութիւնները կը կրկնէ: Յանկարծ՝ խնդրարկուները ժողովարան կը խուժեն. Ժողովը՝ զայրացած՝ նիստը կը դադրեցնէ, Նախագահը գլխարկը գլուխը կը դնէ. հլուօրէն եա կը քաշուին խնդրարկուները: Այն ատեն Ժողովը գոհացում տուած ըլլալով կը հաւանի զանոնք ընդունել:

Այդ խնդրագիրը որուն շեշտը շատ յանդուգն էր, կը յայտնէր այդ շրջանի բոլոր խնդրագիրներուն գաղափարը. անիկա կ'ըսէր. «Ժողովուրդը պատրաստ է. միայն ձեզի կը սպասէ. տրամադրութիւն ունի մեծ միջոցներ գործածել, որպէս զի գործադրութեան դրուի Իրաւունքներու Յայտարարութեան երկրորդ յօդուածը՝ ընդդիմութիւն հարստահարութեան դէմ... Ձեր մէջէն այն փոքր թուով մարդիկը որոնք չեն միանար ձեր և մեր զգացումներուն, թո՛ղ ձգեն ազատութեան երկիրը ու երթայ Գօպլէնց... փնտռելու համար պատճառն այն չարիքներուն, որոնք կը սպառնան մեզի և թէ այդ պատճառը գործադիր իշխանութենէն կը բղխի, թո՛ղ ոչնչանայ անիկա...:»

Ժողովին Նախագահը, պատասխանելէ վերջ թէ երեսփոխանները կը խոստանան խնդրարկուներուն՝ աչալուրջ կերպով հսկել, զանոնք կը հրաւիրէ հպատակիլ օրէնքին և յանուն Ժողովին անոնց թոյլտուութիւն կու տայ զօրանցք մը ընել:

Այն ատեն ժողովարանին դուռները բացուեցան, և Թափորը որ այդ պահուն առնուազն 30000 հոգիէ կը բաղկանար, սրահէն անցաւ. դիւրաւ կարելի է երեւակայել թէ երբ ժողովուրդ մը ինքզինքին ձգուի, անոր երեւակայութիւնը ինչե՜ր կը ստեղծէ։ Թափորին առջեւէն կը տարուէին հսկայական տախտակներ, որոնց վրայ նշանակուած էր Իրաւունքներու Յայտարարութիւնը. կիներ, տղաքներ կը պարէին այս տախտակներուն շուրջ, ձիթենիի ճիւղեր և նիզակներ շարժելով, այսինքն ըսել կ'ուզէին թէ թշնամիին կը թողուն պատերազմելու կամ խաղաղութիւնը պահելու ընտրութիւնը։ Անոնք խմբովին կ'երգէին հռչակաւոր երգը՝ Այս բանը պիտի ըլլայ։ Յետոյ կուգային շուկայի բեռնակիրները, ամէն դասակարգի պատկանող գործաւորները հին ու մին հրացաններով, թուրերով և սուր երկաթի կտորներով, որոնք հաստատուած էին խոշոր գաւազաններու վրայ։ Սանդէռ և Սէնթ Հիւրիւկի մարքիզը, որոնք արդէն նշանաւոր հանդիսացած էին Հոկտեմբեր 5ին և 6ին, կ'երթային անոնց առջեւէն՝ սուսերամերկ։

Ետեւէն կուգային ազգային պահակազօրքի վաշտերը կանոնաւոր գնացքով և իրենց ներկայութեամբը աղմուկը լռեցնելու համար։ Յետոյ՝ դարձեալ կիներ, որոնց ետեւէն կուգային զինեալ մարդիկ. ծածանող դրօշներու վրայ սա բառերը գրուած էին. Կա՜մ Սահմանադրութիւն կամ Մահ։ Պատառոտած վարտիքներ բարձրացուած էին օդին մէջ, և ամէն կողմէ կը գոչէին. Կեցցե՜ն անվարտիքները։ Վերջապէս, վայրագ պատկեր մը եկաւ կատարելութիւնը աւելցնել այս տեսարանին անհեթեթութեանը. նիզակի մը ծայրը անցուած էր հորթի սիրտ մը՝ սա արձանագրութեամբ. Արիստոկրատներու սիրտը։ Այս պատկերը երեւան գալուն պէս գայրոյթ և զայ-յայտնեցին ամէն կողմէ. վայրկենապէս անհետ եղաւ այդ սարսափելի խորհրդանշանը, բայց ուրիշ անգամ մըն ալ երեւան գալու համար Թիւիլըրիի պալատին առջեւ։

Տարաձայնութիւնները, սրահէն անցնող ժողովուրդին աղաղակները, պատերազմաշունչ երգերը, խառնաշփոթ աղաղակները, Ժողովին անձկալիր սպասումը, այս բոլորը կը ձեւացնէին տարօրինակ և սրտամորմոք պատկեր մը նոյն խիկ յաչս այն երեսփոխաններուն, որոնք յանձին ամբոխին օժանդակ կը փնտռէին։ Աւա՜ղ, ինչո՞ւ համար պէտք կ'ըլլայ որ անհամաձայնութեան այդ վայրկեանին բանականութիւնը չի բաւէ. ինչո՞ւ համար անոնք՝ որ հիւսիսի կարգապահ բարբարոսները կը կանչէին, իրենց հակառակորդները կը հարկադրէին կոչել այն միւս անկարգապահ բարբարոսները, որոնք, փոխն ի փոխ զուարթ կամ կատաղի, կը վխտան քաղաքներուն մէջ և կը փտին ամենէն փայլուն քաղաքակրթութեան ներքեւ։

Այս զօրանցքի տեսարանը 3 ժամ տեւեց։ Ի վերջոյ, Սանդէռ կրկին անգամ ներս մտաւ Ժողովին յայտնելու համար ժողովուրդին շնորհակալութիւնը և նուիրեց դրօշ մը՝ ի նշան երախտագիտութեան ու անձնուիրութեան։

Այդ պահուն ամբոխը կ'ուզէր մտանել Թիւիլըրիի պալատին պարտէզը, որուն վանդակորմը գոց էր։ Ազգային պահակազօրքի բազմաթիւ գումարտակներ պաշարած էին պալատը, և մէկ գծի վրայ շարուած՝ Ֆէօյեաններէն մինչեւ գետը, պատկառազդու ճակատ մը կը պարզէին։ Թագաւորը հրամայեց և պալատին պարտէզին դուռը բացուեցաւ։ Ժողովուրդը, անմիջապէս հոն խուժելով, պալատին պատուհաններուն տակ զօրանցք մը կատարեց, ազգային պահակազօրքի շարքերուն առջեւ, առանց ոևէ թշնամական ցոյցի, այլ գոչելով. «Անկցի՜ վէթօն, կեցցե՜ն անվարտիքները։»

Սակայն և այնպէս, քանի մը հոգիներ Թագաւորին վրայ խօսելով կը հարցնէին. «Ի՞նչու ինքզինքը ցոյց չի տար... մենք ո և է չարիք չենք ուզեր հասցնել իրեն։» Սա հին խօսքը՝ զինքը կը խաբեն՝ քանի մը անգամ բաւեցաւ նորէն, բայց շատ հազուադէպ կերպով։ Ժողովուրդը, իր պետերուն կարծիքը ընդունելու յօժարակամ, անոնց պէս յուսահատած էր։

Ամբոխը դուրս ելաւ պարտէզին այն դուռնէն, որ Բօն Ռուայեալ կը տանի, գետեզերքին ի վեր բարձրացաւ և Լուվրի դուռները անցնելով եկաւ կանգ առնել Քարուզէլի հրապարակին վրայ։ Այդ հրապարակը, որ այսօր այնքա՜ն ընդարձակ է, այն ժամանակ բազմաթիւ փողոցներով բռնուած էր. դղեակին և վանդակորմին միջև տարածուող այդ անսահման հրապարակին տեղը և մէկ թևէն մինչև միւսը, կային պզտիկ անջատ հրապարակներ, որոնք իրարմէ զատուած էին պատերով և տուներով։ Հնամենի դուռներ կը բացուէին Քարուզէլի վրայ։ Ամբոխը ողողեց շուրջ բոլորը և արքայական դրան առջև ներկայացաւ. իրեն թոյլ չտրուեցաւ ներս մտնել. քաղաքապահ զօրաց սպաներ ազդարարեցին ամբոխին, որ թուեցաւ թէ որոշեց նահանջել։

Կ'ըսուի թէ, այդ պահուն, Սանդէռ որ ժողովէն ամենէն ուշ դուրս ելած էր դրօշ մը նուիրելու զբաղած ըլլալով, վերարծարծեց արդէն իսկ դանդաղած ժողովուրդին տրամադրութիւնները և թնդանօթը դրան առջև զետեղել տուաւ։ Ժամը 4ի մօտ էր. երկու սպաներ յանկարծ վերցուցին մուտքի արգելքը(*). այն ժամանակ, պահակազօրքը որ այդ կէտին վրայ բաւական ուժով էր, և կը բաղկանար թէ՛ ազգային պահակախումբի գումարտակներէ և թէ ոստիկան զինուորներէ, անգործութեան դատապարտուեցաւ։ Ժողովուրդը՝ խառն ի խուռն խուժեց պարտէզին մէջ և անկէ անցաւ պալատին գաւիթը։ Կ'ըսուի թէ այդ պահուն երկու հոգի Սանդէռի սպառնացան որ զինքը պիտի ամբաստանեն իբր բռնաբարիչը թագաւորական բնակարանին. Սանդէռ պատասխանեց՝ գոչելով յարձակողներուն. «Վկայեցէ՛ք թէ ես կը մերժեմ թագաւորին յարկաբաժինին մէջ մտնել։»

Բայց այս խօսքը չկասեցուց այն ամբոխը, որ անգամ մը խանդավառած էր. անիկա տարածուեցաւ պալատին ամէն կողմը, բոլոր սանդուղներէն վեր ելաւ և բաղուկի ոյժով թնդանօթ մը տարաւ մինչև առաջին յարկը։ Նոյն վայրկեանին՝ յարձակողները սկսան ուրի և կացինի հարուածներով կոտրել այն դուռները որոնք գոցուած էին իրենց վրայ։

Այդ միջոցներուն, Լուդովիկոս ԺԶ. իր վտանգաւոր բարեկամներուն մեծ մասը ճամբած էր. ասոնք, առանց զինքը փրկել կարենալու, այնքան անգամներ զինքը վտանգի ենթարկած էին։ Անոնք վազած եկած էին, բայց Թագաւորը զանոնք դուրս հանեց Թիւիլըրիէն, ուր՝ իրենց ներկայութիւնը միայն գրգռելու կը ծառայէր ժողովուրդին բարկութիւնը։ Անիկա միացած էր ծերունի մարաջախտի Մուշիի և իր տան մէկ քանի ծառաներուն հետ. ազգային պահակազօրքի բազմաթիւ անձնուէր սպաներ ալ հոն միացած էին։ Այդ պահուն յանկարծ լսեցան ժողովուրդին աղաղակները և կացինի հարուածներուն ձայնը։ Անմիջապէս, անձնապահ գունդին սպաները շրջապատեցին Թագաւորը և խոստացան անոր՝ իր քովը մեռնիլ, և խնդրեցին անկէ որ ինք-

(*) Բոլոր ականատես վկաները համաձայն են այս խնդրութեան մասին. միայն՝ սպաներուն ո՛վ ըլլալուն նկատմամբ տարակարծիք են։

զինքը ցոյց տայ։ Թագաւորը չվարանեցաւ և հրամայեց որ դուռները բանան. նոյն վայրկեանին դուռին տախտակները իր ոտքերուն տակ ինկան բուռն հարուածէ մը։ Վերջապէս բացին և տեսնուեցաւ որ նիզակներու և սուիններու անտառ մը ձեւացած է. «Ահա՛ հոս եմ» ըսաւ Լուդովիկոս ԺԶ. ինքզինքը ցոյց տալով զայրացած ամբոխին. իր քովը եղողները կը խմբուին չուրջը և իրենց մարմիններով պատնէշ մը կը շինէին իրեն, գոչելով. «Յարգեցէ՛ք ձեր Թագաւորը։» Եւ ամբոխը, որ անտարակոյս որոշ նպատակ մը չունէր, և որուն միայն սպառնալիք արշաւանք կատարել յանձնարարած էին, սկսաւ վարանիլ։ Մէկ քանի մարդիկ ծանուցին թէ խնդրագիր մը կայ, և պահանջեցին որ անոր ընթերցումը մտիկ ըլլուի։ Այն ատեն, Թագաւորին չուրջը եղողները խնդրեցին իրեն որ աւելի ընդարձակ սրահ մը երթայ, որպէս զի կարենայ մտիկ ընել այդ խնդրագիրը։ Ժողովուրդը, երբ տեսաւ որ իր խօսքը բանի տեղ կը դնեն, գոհ եղաւ և գնաց Թագաւորին ետեւէն, և բարեբաղդ մտածումն ունեցան զայն կեցնելու պատուհանի մը բացուածքին մէջ։ Աթոռի մը վրայ բարձրացուցին զայն. ուրիշ աթոռներ ալ չարեցին առջեւը. սեղան մըն ալ աւելցուցին. Թագաւորին հետ եղողները բոլորն ալ չուրջանակի չարուեցան. պահակազօրաց նռնաձիգ զինուորներ, Թագաւորական տան սպաներ եկան աւելցնել իր պաշտպաններուն թիւը և կազմեցին պատնէշ մը, որուն ետեւէն անիկա կրնար աւելի քիչ վտանգով լսել այս ահաւոր խնցեվճիռը։ Աղմուկի և աղաղակներու մէջէն կը լսուէին սա յաճախ կրկնուող քառեակը. Վէրօ չենք ուզեր քեռա, քանանեայ չենք ուզեր երբեք, ազնուական չենք ուզեր քեռա. քանակը Բարիզի տրամադրութեան տակ պէտք է դրուի:

Մսավաճառ Լըժանդր յառաջ եկաւ և ժողովրդային լեզուով մը պահանջեց որ օրէնքը վաւերացուի. Թագաւորը հաստատակամութեամբ պատասխանեց. «Հոս ո՛չ տեղն է և ոչ ալ ատենն է հիմա այդ բանին. ամէն ինչ որ Սահմանադրութեան պահանջքն է, պիտի ընեմ։» Այս ընդդիմախօսութիւնը ունեցաւ իր արդիւնքը. յարձակողները գոչեցին կեցցէ՛ ազգը, կեցցէ՛ ազգը։ Լուդովիկոս ԺԶ. յարեց. «այո՛, կեցցէ՛ ազգը. ես անոր լաւագոյն բարեկամն եմ։»

— «Լաւ ուրեմն, տո՛ւր ապացոյցը,» ըսաւ մէկն այդ մարդոցմէն, Թագաւորին ներկայացնելով կարմիր գտակ մը՝ նիզակի մը ծայրը անցուցած։ Մերժումը կրնար վտանգաւոր ըլլալ, և անտարակոյս՝ Թագաւորը իր արժանապատուութիւնը պահելու համար չէր կրնար, պարապ ձեւակերպութեան մը պատճառաւ, ինքզինքը մեռցնել տալ. իր արժանապատուութիւնը կը կայանար, ինչպէս ըսաւ արդէն, անյողդողդ կերպով ամբոխին յարձակման դէմ դնելուն մէջ։ Եւ այսպէս, անիկա գլուխը դրաւ կարմիր գդակը, ընդհանուր ցնծութեան մէջ։ Որովհետեւ օդին և բազմութեան պատճառաւ շատ կը նեղուէր տաքութենէն, կէս գինով մարդոցմէն մէկն, որ ձեռքը շիշ և գաւաթ մը ունէր, ջուր հրամցուց անոր։ Թագաւորը երկար ատենէ ի վեր կը վախնար թունաւորուելէ. այսուհանդերձ, առանց վարանումի խմեց և ամբոխը բուռն կերպով ծափահարեց զայն։

Այդ միջոցին, Տիկին Ելիզաբէթ, որ իր եղբայրը գորովագին կերպով կը սիրէր, և որ, ընտանիքի անդամներուն մէջէն միակը եղած էր մինչեւ իրեն քովը հասնող, պատուհասէ պատուհան կը հետեւէր, անոր վտանգներուն մասնակից ըլլալու համար։ Երբ ամբոխը տեսաւ զայն, Թագուհին կարծեց և ահաւոր եղանակով մը ահա՛ Աւստրուհին աղաղակեց։ Ազգային պահակազօրաց նռնաձիգները որոնք չրջապատած էին

իշխանուհին, կ'ուզէին ժողովուրդին հասկցնել իր սխալը. բայց այդ վեհանձն քոյրը ըսաւ. «Ձգեցէք զայն իր սխալանքին մէջ և ազատեցէ՛ք թագուհին։»

Իր զաւակներուն շրջապատուած, թագուհին չէր կրցած միանալ իր արքայական ամուսնոյն. անիկա փախչելով վարի յարկաբաժիններէն, խորհրդակցութեան սրահը հասած էր, բայց չէր կրնար դալ մինչև թագաւորին քովը, որովհետև ամբոխը փակած էր պալատին բոլոր ճամբաները։ Թագուհին կ'ուզէր Լուդովիկոս ԺԶ.ի քովը երթալ և ուժգնօրէն կը պնդէր որ զինքը տանին անոր գտնուած սրահը։ Վերջապէս յաջողեցան իր միտքը փոխել տալ, և, մէկ քանի նռնաձիգ զինուորներու հետ խորհրդակցութեան սեղանին ետին կեցած, կը դիտէր ժողովուրդին անցքը, սիրտը երկիւղով լեցուն և աչքերը խոնաւցած այն արցունքներէն, զորս թոյլ չէր տար որ հոսին։ Իր քովը, աղջիկը կուլար, իսկ իր պզտիկ որդին, թէև նախ վախցած էր, բայց շուտով փարատած էր վախը և իր տարիքին երջանիկ անգիտակցութեամբը կը խնդար։ Իրեն ներկայացուցած էին կարմիր գդակ մը, զոր թագուհին անոր գլխուն վրայ դրած էր։ Սանթէռ, որ պալատին այդ կողմը կը գտնուէր, ժողովուրդին կը յանձնարարէր յարգանքով վերաբերուիլ, և կ'ապահովցնէր թագուհին։ Անիկա կը կրկնէր սովորական խօսքը, որ դժբաղդաբար անօգուտ դարձած էր. «Տիկի՛ն, կը խաբեն ձեզ, կը խաբեն ձեզ։» Յետոյ տեսնելով որ երիտասարդ իշխանը կը հեղձուէր կարմիր գդակին տակ, ըսաւ. «այս տղան կը խեղդուի կոր» և այդ ծիծաղելի գլխանոցը հանեց նետեց։

Զանազան երեսփոխաններ պալատին սպառնացող վտանգները իմանալով թագաւորին քովը վազած եկած էին, և ժողովուրդը կը հրաւիրէին որ յարգանք ընծայէ անոր. ուրիշ երեսփոխաններ ալ ժողովին գացած էին, անցած դարձածին մասին տեղեկութիւն տալու համար. ժողովին մէջ յուզումը շատ սաստկացած էր, աջակողմին յայտնած դայրոյթով և ձախակողմին բրած ջանքերով, որոնք կ'ըլլային վեհապետին պալատին վրայ կատարուած յարձակումը արդարացնելու համար։ Առանց ընդդիմութեան որոշուեցաւ պատգամաւորութիւն մը ղրկել, և 80 երեսփոխաններ գացին թագաւորին շուրջը բոլորուելու համար. ամէն կէս ժամը անգամ մը պատգամաւորութիւնը պիտի նորոգուէր, որպէս զի ժողովը միշտ տեղեկութիւն ստանայ անցած դարձածին վրայ։ Պատգամաւոր երեսփոխանները փոխն ի փոխ խօսեցան, նռնաձիգ զինուորներուն ուսերուն վրայ բարձրանալով։ Այնուհետև Բէթիօն մէջտեղ եկաւ և ամբաստանուեցաւ շատ ուշ եկած ըլլալուն համար. անիկա վստահացուց թէ ժամը 4ին կատարուած յարձակման մասին միայն չորսուկէսին տեղեկութիւն առած էր, թէ հազիւ կէս ժամէն կրցած էր պալատ հասնիլ, և ճամբան ալ շատ արգելքներու հանդիպած էր, այնպէս որ հազիւ ժամը 5ուկէսին կրցած էր հասնիլ թագաւորին քովը։

Բէթիօն մօտենալով Լուդովիկոս ԺԶ.ի, ըսաւ անոր. «Մի՛ վախնաք ոչ մէկ բանէ, ժողովուրդին մէջտեղը կը գտնուիք։»

Թագաւորը այն ատեն նռնաձիգ զինուորի մը ձեռքը բռնեց և իր սրտին վրայ դնելով ըսաւ. —

«Նայեցէք թէ սովորականէն աւելի ուժգին կերպով կը բաբախէ՞ անիկա։»

Այս վեհանձն պատասխանը շատ ծափահարուեցաւ։ Վերջապէս՝ Բէթիօն թիկնաթոռի մը վրայ բարձրացաւ և ժողովուրդին ուղղելով խօսքը, ըսաւ թէ թագաւորին ներկայացնելէ վերջ ձեր դիտողութիւնները, կը մնար միայն առանց աղմուկի քաշուիլ երթալ և այնպիսի ձևով մը որ այդ օրուան յիշա-

տակը չաղարտի։ Մէկ քանի վկաներ կ'ըսեն թէ Բէդիօն ըսաւ «Ձեր արդար դիտողութիւնները։» Բայց եթէ այս բառերը արտասանած ալ ըլլայ, ասիկա՛ ժողովուրդը չվիրաւորելու պէտքէն մղուած պիտի ըլլայ։ Սանդէռ ալ իր ազդեցութիւնը ի գործ դրաւ և քիչ ատենէն պալատը պարպուեցաւ։ Ամբոխը մեկնեցաւ հանդարտութեամբ և կարգապահութեամբ. իրիկուան ժամը 7ի միջոցներն էր։

Անմիջապէս, Թագաւորը, Թագուհին, քոյրը և զաւակները հաւաքուեցան և հեկեկանօք արցունք թափեցին։ Թագաւորը՝ օրուան անտարբերէն վրդոված, տակաւին իր գլխուն վրայ կը կրէր կարմիր գդակը. երկար ժամերէ ի վեր առաջին անգամն ըլլալով նշմարեց ասիկա և զայրոյթով գետինը նետեց։ Այդ միջոցին Նորմանտի երեսփոխաններ եկան պալատին կացութեան մասին տեղեկութիւն առնելու։ Թագուհին, անոնց ընկերանալով ցոյց տուաւ խորտակուած դուռները, կոտրած կահկարասիները և մեծ ցաւով կը խօսէր կատարուած բռնութեանց վրայ։ Ամենէն եռանդուն հանրապետականներէն մին՝ Մէրլէն տը Թիոնվիլ ներկայ եղող երեսփոխաններուն մէջն էր. Թագուհին տեսաւ որ անոր աչքերը կ'արցունքոտին, և ըսաւ. —

«Դուք կու լա՞ք որ Թագաւորը և իր ընտանիքը այսքան անգութ վարմունքի մը ենթարկուեցան ձեռամբ ժողովուրդի մը, զոր միշտ ուզեցին երջանիկ ընել։»

— «Ճշմարիտ է, Տիկին, պատասխանեց Մէրլէն, ես կու լամ գեղեցիկ, զգայուն և ընտանիքի մայր եղող կնոջ մը կրած դժբաղդութեանց վրայ. բայց զիս սխալ՝ մի՛ հասկնաք. իմ արցունքներէս ո՛չ մէկ հատը Թագաւորին ու Թագուհիին համար է. ես կ'ատեմ Թագաւորներն ու Թագուհիները։» (Տես Տիկին Քամփանի Յիշատակները։

Յունիս 20ի այս ապստամբական օրուան յաջորդ օրը Բարիզ տակաւին սպառնալից երեւոյթ մը ունէր, և բոլոր կուսակցութիւնները շատ աւելի բուռն կերպով խռովուած էին. մենք նկարագրեցինք Յունիս 20ի գլխաւոր պարագաները։ Թագաւորին կուսակիցները մանաւանդ շատ զայրացած ըլլալու էին, որովհետև իրենք համոզուած էին որ պալատին ազատութիւնը բռնաբարուած էր. նոյնքան զայրացած ըլլալու էին սահմանադրականները, որոնց տեսակէտով՝ այս արշաւանքը յարձակում մըն էր հանրային անդորրութեան և օրէնքին դէմ։ Անտարակոյս, Յունիս 20ին մեծ խառնակութիւններ տեղի ունեցած էին, բայց ատոնք ալ կը չափազանցուէին. ենթադրողներ կային թէ Թագաւորը սպաննելու մտադրութիւն կար և այս դաւադրութիւնը վիժած էր, սակայն բարեբաղդ դիպուածի մը բերմամբ։ Եւ ահա այսպէս, ընական յեղաշրջութեամբ մը, բոլորն ալ արքայական ընտանիքին կողմն անցած էին, քանի որ անիկա առջի օրը ենթակայ եղած էր այնքան վտանգներու և նախատինքներու. իսկ խառնակութեանց ենթադրեալ հեղինակներուն դէմ ծայրայեղ կերպով աննպաստ հոսանք մը յառաջեկած էր։

Ժողովին մէջ բոլորին ալ դէմքը հախ էր, մէկ քանի երեսփոխաններ բուռն կերպով խօսեցան առջի օրուան դէպքերուն վրայ։ Պ. Պիկօ օրէնք մը առաջարկեց զինեալ խնդրարկուներու հաւաքման դէմ և ժողովարանին մէջ զինեալ խումբերուն զօրանցք կատարելու սովորութեան դէմ։ Թէև այս մասին օրէնքներ կային արդէն, որոշմամգրով մը վերանորոգուեցան անոնք։ Պ. Տավէրհու կը փափաքէր որ խառնակարարներուն դէմ միջոցներ ձեռք առնուին. «Ինչպէ՞ս կարելի է 40,000 հոգի պատժել» ըսին իրեն։

— «Լաւ ուրեմն, յարեց, եթէ քաղաքին հազար հոգիներուն մէջ յան-

ցաւորները չէ կարելի զանազանել, պատմեցէ՛ք պահակազօրքը, որ ինքզինքը չպաշտպանեց, բայց վերջապէս ո և է կերպով գործեցէք։»

Ցետոյ եկան նախարարները, որոնք տեղեկագիր մը կարդացին անցած դարձին վրայ. և ահա վիճաբանութիւն մը ծայր տուաւ թէ ի՛նչ էր դէպքերուն բնոյթը։ Աջակողմեան երեսփոխան մը, այն հիման վրայ թէ Վէրնիօ կասկածելի չէր և թէ անիկա ականատես եղած էր պատահածին, ուզեց որ խօսի իր տեսածներուն մասին։ Բայց Վէրնիօ այս հրաւէրին չպատասխանեց և լուռ կեցաւ։

Սակայն և այնպէս, ձախակողմի ամենէն յանդուգն երեսփոխանները արհամարհեցին այս ճնշումները և նիստին վերջաւորութեամբ վերստին ձեռք ձգեցին իրենց քաջութիւնը։ Անոնք մինչեւ իսկ համարձակեցան առաջարկել որ քննուի սա կէտը թէ՝ խնդրոյ առարկայ նոր օրէնքներուն համար արդեօք անհրաժեշտ է վէթօն։ Բայց այս առաջարկը ստուար մեծամասնութեամբ մերժուեցաւ։

Իրիկուան դէմ, վախցան որ նախորդ օրուանին պէս դէպքեր պիտի պատահին կրկին։ Ժողովուրդը մեկնած պահուն ըսած էր թէ պիտի վերադառնայ, և հաւատացին որ անիկա իր խօսքը պիտի գործադրէ. բայց այս լուրը շուտով հերքուեցաւ, ո՛վ գիտէ, թերեւս նախորդ օրուան յուզումներուն մէկ մնացորդն ըլլալուն, և կամ թերեւս նոր ապստամբութիւն մը ժողովրդային կուսակցութեան պետերուն կողմէ հաւանութիւն գտած չըլլալուն համար։

Բէդիօն պալատ վազեց թագաւորին հաղորդելու թէ անդորրութիւնը վերահաստատուած է, և ժողովուրդը իր տրտունջները իրեն ներկայացնելէ ետք խաղաղ և գոհ էր։

— Ըսածնիդ հաճելի չէ, պատասխանեց թագաւորը։

— Տէ՛ր արքայ...

— Լռեցէ՛ք։

— Ժողովուրդին պաշտօնատարը չի կրնար լռել, իր պարտականութիւնը կատարած և ճշմարտութիւնը յայտնած միջոցին։

— Բարիզի անդորրութեան պատասխանատու էք ձեր գլուխով։

— Ես իմ պարտականութիւնս կը ճանչնամ և պիտի կատարեմ զայն։

—. Բաւակա՛ն է. գացէ՛ք կատարեցէ՛ք. երթա՛ք բարով։

Թագաւորը, հակառակ իր յետին ծայր բարեսրտութեանը, կը բարկանար երբեմն. այս բարկութիւնը կոտանք կ'անուանէին պալատականները։ Երբ անիկա տեսաւ Բէդիօնը, զոր կ'ամբաստանէին իբր խրախուսող՝ առջի օրուան դէպքը, գայրացաւ և վերը յիշատակուած խօսքերը ըրաւ։ Ամբողջ Բարիզ՝ շատ չանցած՝ տեղեկութիւն առաւ այդ խօսակցութեան վրայ։ Անմիջապէս երկու յայտարարութիւններ հրապարակ հանուեցան, մին՝ թագաւորին կողմէ և միւսը՝ քաղաքապետութեան. ու այնպէս թուեցաւ թէ այս երկու իշխանութիւնները կը բաղխէին իրարու։

Քաղաքապետութիւնը կը հրաւիրէր քաղաքացիները՝ հանդարտ մնալ, յարգել թագաւորը և յարգել տալ Ազգային Ժողովը, ըլլալ համախմբումներ չկատարել, ըստ որում օրէնքը կ'արգիլէր այդ բանը, և մանաւանդ՝ ականջ չկախել այն չարամիտներուն, որոնք կը ջանային ժողովուրդը դարձեալ ոտքի հանել։

Արդարեւ, լուրեր տարածողներ կային թէ արքունիքը կը ջանար անգամ մըն ալ ոտքի հանել ժողովուրդը, որպէս զի առիթ ունենայ զայն թնդանօթի բռնելու։ Եւ այսպէս, պալատը կ'ենթադրէր թէ թագաւորը սպաննելու ծրագիր կայ, իսկ արուարձանները կ'ենթադրէին թէ զիրենք կոտորածի ենթարկելու մտադրութիւն կայ։



ՍԱՆԴԷՌ

Թագաւորը կ՚ըսէր. — «Ֆրանսացիները ցաւով պիտի լսեն թէ մէկ քանի խռովարարներէ մոլորած ժողովուրդ մը զէն ի ձեռին մտաւ թագաւորական բնակարանին մէջ... Թագաւորը խռովարարներու սպառնալիքներուն և նախատինքներուն դէմ դրաւ միմիայն իր խղճմտանքը և հասարակաց բարւոյն համար ունեցած սէրը։

«Թագաւորը չի գիտեր թէ խռովարարները ո՛ւր կանգ պիտի առնեն. բայց ինչ ծայրայեղութեան մէջ որ ալ իյնան, երբեք չպիտի կրնան իրմէ խլել հաւանութիւն մը այն ամէն բաներուն համար՝ զորս ինքը հակառակ կը համարէ հասարակաց բարւոյն համար, ևն.։

«Անոնք, որ միապետութիւնը տապալելու համար եթէ ոճիր մը աւելի գործել կ՚ուզեն, կրնան գործել...։

«Թագաւորը կը հրամայէ բոլոր վար-

չական և քաղաքապետական մարմիններու՝ հակել անձերու և ինչքերու ապահովութեան վրայ։»

Այս խրատու հակառակ իմաստով խօսքերը համապատասխան էին այն երկու կարգի կարծիքներուն, որոնք այդ միջոցին կը կազմուէին։ Բոլոր անոնք, որ յուսահատած էին արքունիքին ընթացքէն, շատ աւելի զայրացան անոր դէմ և աւելի վճռական եղան ամէն կարելի միջոցներով անոր ծրագիրները ջուրը ձգելու համար։ Ժողովրդային ընկերութիւնները, քաղաքապետութիւնները, Նիզակակիր զինուորները, ազգային պահակազօրքին մէկ մասը, Ժողովին ձախակողմեան երեսփոխանները շատ լաւ հասկցան Բարիզի քաղաքապետին յայտարարութեան իմաստը և միաբերնին զրին խոհեմ ըլլալ միայն այն չափով որ պէտք էր, առանց վճռական արդիւնքի մը թնդանօթի չբռնուելու համար։ Անոնք տակաւին որոշած չէին թէ ի՛նչ միջոցներ ձեռք պիտի առնեն, և կը սպասէին նոյն անվստահութեամբ ու նոյն ատելութեամբ լցուած։

Իրենց առաջին գործը եղաւ հարկադրել նախարարները՝ Ժողովին առջեւ ելլել, հաշիւ տալու համար այն զգուշական միջոցներուն մասին, զորս ձեռք առած էին երկու կարեւոր խնդիրներու նկատմամբ.

1. Քահանաներուն ձեռամբ յարուցուած կրօնական խռովութեանց նկատմամբ,

2. Ապահովութեան խնդիրը մայրաքաղաքին, զոր Թագաւորին չվաւերացուցած 20,000 հոգինոց բանակը պարտ էր պաշտպանել։

Անոնք, զորս ազնուական կը կոչէին, անկեղծ սահմանադրականները, ազգային պահակազօրքին մէկ մասը, մէկ քանի գաւառներ, և մանաւանդ գաւառային վարչութիւնը այս առթիւ յայտնեցին իրենց կարծիքը և շատ բուռն կերպով մը։ Օրէնքները բռնաբարուած ըլլալով, անոնք ամէն ազատութիւն կը վայելէին խօսելու, և այս ազատութիւնը լայնօրէն գործածեցին։ Բազմաթիւ ուղերձներ հասան Թագաւորին։ Ռուանի, Բարիզի մէջ պատրաստեցին խնդրագիր մը, զոր ստորագրեցին 20,000 հոգի. ասի, Ժողովրդային ատելութեան հետեւանքով, չփոթուեցաւ այն միւս աղերսագրին հետ, զոր ութը հազար Բարիզցիներ ստորագրած էին արդէն, ընդդէմ Բարիզի մէջ բանակելիք նոր զօրագունդին։

Վերջապէս, գաւառային վարչութիւնը հրամայեց հետապնդել քաղաքապետ Բէթիոնը և դատախազ Մանուէլը, երկուքն ալ ամբաստանելով որ իրենց անգործութեամբը օժանդակած են Յունիս 20ի խռովութեանց։ Այդ պահուն հիացումով կը խօսէին Թագաւորին ցոյց տուած վարմունքին վրայ. ընդհանուր կերպով փոխուած էր կարծիքը Թագաւորին բնաւորութեանը մասին, որովհետեւ առաջինները կասկած կը յայտնէին թէ անիկա շատ տկար մէկն է։ Բայց շատ չանցած անտեսուեցաւ որ այդ կրաւորական քաջութիւնը որ կ'ընդդիմանայ, չի նմանիր այն միւս ներգործական քաջութեան, որ ձեռներէց է և կը նախատեսէ վտանգները, փոխանակ համակերպելով սպասելու անոնց։

Սահմանադրական կուսակցութիւնն ալ շատ մեծ գործունէութիւն մը ցոյց տալ սկսաւ. բոլոր անոնք՝ որ Լաֆայէթի շուրջը բոլորուած էին, անոր հետ խորհրդակցաբար գրելու համար Յունիս 16ի նամակը, անգամ մըն ալ իրար եկան, մեծ փորձ մը ընելու համար։ Լաֆայէթ զայրացած էր պալատին վրայ կատարուած յարձակումը լսելով, որով կատարելապէս տրամադիր գտան զինքը։ Իր զօրագունդերէն շատերն ալ իրեն ուղերձներ ղրկելով յայտնեցին նոյն զայրոյթը։ Այդ ուղերձները թելադրեալ ըլլան թէ ինքնաբուղխ, զա-

նոնք ընդհանուր հրամանագրով մը և խոստացաւ որ ինքը անձամբ պիտի յայտնէ ամբողջ բանակին զգացումները։ Այդ պատճառաւ որոշեց գալ և օրէնսդիր մարմնին կրկնել այն՝ զոր գրած էր Յունիս 16ին։

Լիւքնէրի հետ համաձայնեցաւ. ատենկա՝ ըլլալով հնամենի զօրական մը և բանակէն դուրս ելած չըլլալով բնաւ, դիւրաւ կը ղեկավարուէր։ Անոր գրել տուաւ նամակ մը՝ ուղղեալ Թագաւորին, և յայտնող նոյն այն զգացումները զորս ինք անձամբ պիտի լսելի ընէր օրէնսդիր մարմնին բեմէն։ Յետոյ բոլոր անհրաժեշտ միջոցները ձեռք առաւ որպէս զի իր բացակայութիւնը վնաս մը չհասցնէ զինուորական գործողութեանց և դժուարաւ բաժնուեցաւ իր սիրաղեղ զինուորներէն, երթալու համար Բարիզ՝ մեծամեծ վտանգներու մէջ։

Լաֆայէթ իր յոյսը դրած էր ազգային հաւատարիմ պահակազօրքին, և իր կողմէ ցոյց տրուելիք նոր թռիչքի մը վրայ։ Յոյս ունէր նաև պալատին վրայ, որուն թշնամութենէն չէր վախնար, քանի որ անոր համար զոհուելու կու գար։ Ազատութեան համար իր ասպետական սէրը ապացուցանելէ ետք, կ՚ուզէր ապացուցանել իր անկեղծ սէրը՝ Թագաւորին, և իր հերոսային խանդավառութեանը մէջ հաւանական է որ իր սիրտը կը տրոփէր նաև այս կրկին անձնուիրութեան փառքին համար։

Յունիս 28ի առտուն Լաֆայէթ Բարիզ հասաւ, անմիջապէս տարածուեցաւ իր ժամանման լուրը, և ամէն կողմ զարմացմամբ ու հետաքրքրութեամբ կ՚ըսէին թէ զօրավար Լաֆայէթ Բարիզի մէջ կը գտնուի։

Անոր հասնելէն առաջ, ժողովը յուզուած էր, որովհետև հակիմաստ խնդրագիրներ՝ մեծ թիւով տուած էր. Ռուանի, Հավրի, Լ՚Էնի, Սէն է Ուազի, Բա տը Քալէի, Էնի ժողովուրդները կը բողոքէին Յունիս 20ի չափազանցութեանց դէմ. իսկ Արրասի, Հէրոյի խնդրարկուները դրէթէ կը ջատագովէին զայն. մէկ կողմէ կարդացած էին Լիւքնէրի նամակը՝ ուղղեալ Թագաւորին. իսկ միւս կողմէ ահաւոր հրապարակութիւններ՝ անոր դէմ։ Այս զանազան ընթերցումները մէկ քանի օրեր յուզում պատճառած էին ժողովին։

Յունիս 28ին, շատ մեծ բազմութիւն մը գացած էր ժողովի, յուսալով որ Լաֆայէթ, որուն ծրագիրները տակաւին կ՚անգիտանային, թերևս հոն կու գայ։ Եւ իրօք, ժամը մէկ ու կէսին կը յայտարարէին թէ անիկա կը փափաքի բեմ ելլել. Լաֆայէթ ընդունուեցաւ աջակողմին ծափահարութեանց և օթեակներուն ու ձախակողմին լռութեանը մէջ։

«Տեա՛րք, ըսաւ, նախ և առաջ պարտաւոր եմ ապահովցնել զձեզ, որ մարաջախտ Լիւքնէրի և իմ միջև եղած կարգադրութեանց համաձայն, հոս տեղ ներկայութիւնս վտանգի չենթարկեր ո՛չ մեր բանակին յաջողութիւնը և ոչ ալ ապահովութիւնն այն բանակին, որուն հրամանատարն ըլլալու պատիւն ունիմ։»

Յետոյ զօրավարը ծանոյց այն շարժառիթները որոնք զինքը Բարիզ բերել տուին։ Ըսողներ եղած էին թէ յունիս 16ի նամակը իրը չէր. եկած է խոստովանելու որ ինքը գրած էր զայն, և այս խոստովանութիւնն ընելու համար դուրս ելած է իր բանակէն, ուր իր զինուորներուն սիրովը շրջապատուած է։ Բայց աւելի կարևոր պատճառ մը գոյութիւն ունէր իր Բարիզ գալուն մէջ. յունիս 20ը իր բանակին զայրոյթը գրգռած է, ու շատ սպաներ բազմաթիւ ուղերձներ մատուցած են իրեն. անոնց արգիլեց այդ բանը շարունակել, միայն թէ խոստացաւ իր զինուորներուն կողմէ խօսիլ Ազգ. Ժողովին առջև. «Արդէն իսկ, ըսաւ, զինուորները

[illegible] կը հաղորդեն թէ իրօք ա-[illegible]թեան և Սահմանադրութեան [illegible] է այս զօր կը պաշտպանեն։»

Լաֆայէթ [illegible] ժողովին՝

Ա. Յանձնել 20ի դէպքին գրգռիչները հետապնդել.

Բ. Բնաջինջ ընել այն խմբակը, որ [illegible] զինուորականութեան դէմ կը [illegible], և որուն հրապարակային մի-[illegible]թիւնները ոչ մէկ կապուած չեն [illegible] իր ծրագիրներուն վայրագութեան մասին.

Գ. Վերջապէս, յարգել տալ իշխանութիւնները և զինուորներուն վստահութիւն ներշնչել որ Սահմանադրութեան դէմ ներքին ոչ մէկ յարձակում պիտի ըլլայ, մինչ իրենք կը թափեն իրենց արիւնը, զայն պաշտպանելու համար արտաքին թշնամիին դէմ։

Նախագահը պատասխանեց թէ ժողովը հաւատարիմ պիտի մնայ երդուեալ օրէնքին և պիտի քննէ իր խնդրագիրը. Լաֆայէթը հրաւիրեցին պատուոյ անդը. զօրավարը կ'երթայ նստիլ աջակողմի աթոռի մը վրայ. Թէյրուէն երեսփոխանը դիտել կու տայ թէ անիկա խնդրարկուներու անդը պէտք է նստի. ամէն կողմէ կը գոչեն «այո՛, ո՛չ։» Զօրավարը համեստօրէն ոտքի կանգնելով կ'երթայ խնդրարկուներուն անդը. հազիւ թէ հոն գացած էր, մեծ թուով մարդիկ կը ծափահարեն զինքը։

Խօսք կ'առնէ Կուատէ. ամենէն առաջ և ճարտար դարձուածք մը գործածելով, ինքզինքին կը հարցնէ թէ արդեօք օտար թշնամին յաղթուա՞ծ է, թէ հայրենիքը ազատա՞ծ է, քանի որ Լաֆայէթ Բարիզ դարձած է։ — Ո՛չ, կը պատասխանէ ինքզինքին, հայրենիքը փրկուած չէ, մեր կացութիւնը փոխուած չէ, և սակայն մեկնող մեր բանակներէն միայն հրամանատարը Բարիզ եկած է. Պատճառ մը Լաֆայէթ, որ ֆրանսական ժողովուրդին մէջ կը տեսնէ իշխանութիւնները պաշտպանող և անոնց սպառնացող խռովարարներ, արդեօք ինքն ալ շրջապատուած չէ՞ զինքը նեղը դնող սպայակոյտէ մը. բայց ես չպիտի քննեմ այս կէտը, այլ դիտել պիտի տամ Պ. տը Լաֆայէթի որ, Սահմանադրութեան հակառակ կը գործէ խօսելով յանուն բանակի մը որ օրինաւորապէս անկարող է խորհրդակցելու, և ինքը, հաւանականաբար, զինուորական իշխանութեանց նուիրապետութեան կարգն ու սարքն ալ ոտնակոխ ըրած է, առանց պատերազմական նախարարին թոյլտուութեանը Բարիզ գալով։

Հետևաբար, Կուատէ կը խնդրէ որ պատերազմական նախարարը յայտարարէ թէ արձակուրդ տուա՞ծ է Պ. տը Լաֆայէթի, և ասկէ զատ, ըսաւ, արտասովոր յանձնաժողովը թո՛ղ տեղեկագիր մը պատրաստէ պարզելու համար սա խնդիրը թէ զօրավար մը կրնա՞յ ժողովը զբաղեցնել զուտ քաղաքական խնդիրներով։

Ռամօն յառաջ կու գայ՝ Կուատէին պատասխանելու համար. Նախ շատ բնական և յաճախ գործածելի սա դիտողութիւնը կ'ընէ թէ, պարագաներու բերմամբ, օրէնքներու մեկնութիւնը շատ կը տարբերի. «երբեք, ըսաւ, այսքան բծախնդիր եղած չէինք խընդրագիր տալու իրաւունքին գոյութեան մասին. երբ՝ դեռ վերջերս՝ զինեալ ամբոխ մը ներկայացաւ հոս, անոր չհարցուեցաւ բնաւ թէ ի՛նչ է իր առաքելութիւնը, զայն մեղադրող չեղաւ որ զէնքերու ցուցադրութեամբ ժողովին անկախութիւնը կը բռնաբարէ. իսկ երբ Պ. տը Լաֆայէթ, որ իր ամբողջ կեանքին մէջ, Ամերիկայի ու Եւրոպայի համար ազատութեան դրօշակիրը եղած է, կը ներկայանայ այս ժողովին, կասկածներ կը յարուցուին...։ Եթէ երկու չափ և երկու կշիռ կ'ուզէք գործածել, դէպքերը նկատի առնելու համար եթէ երկու եղանակ կայ, թո՛ղ

ուրեմն ներելի ըլլայ քաղաքութիւն մը ընել ազատութեան անդրանիկ զաւկին ի նպաստ…։»

Այնուհետեւ Ռամոն առաջարկեց Լաֆայէթի խնդրագիրը դրկել արտասովոր յանձնաժողովին, քննելու համար ո՛չ թէ Լաֆայէթի վարմունքը, այլ նոյն ինքն իր ուղերձը։ Երկարատեւ ժխորէ ու կրկնակի քուէարկութենէ մը ետք Ռամոնի առաջարկը ընդունուեցաւ։

Լաֆայէթ ժողովէն դուրս ելաւ երեսփոխաններու և ազգային պահակազօրաց մեծ բազմութենէ մը շրջապատուած, իր քովն էին նաեւ բոլոր իր կուսակիցները և նախկին զինակիցները։ Իրեն համար վճռական վայրկեան մըն էր այդ. նոյն բանն էր արքունիքին և ժողովրդային կուսակցութեան համար։ Լաֆայէթ պալատ գնաց. պալատական շրջանակներուն մէջ իր մասին ամենէն նախատալից խօսքերը կ՚ըլլային։ Թագաւորը և թագուհին ցրտութեամբ ընդունեցին զայն որ եկած էր իր կեանքը զոհելու իրենց համար։ Լաֆայէթ մեկնեցաւ պալատէն եղած ընդունելութենէն սիրտը ցաւած, ո՛չ թէ ինքզինքին այլ՝ արքայական ընտանիքին համար։

Թիւիլըրիի պալատէն դուրս ելած միջոցին խուռներամ ամբոխ մը դիմաւորեց զինքը և մինչեւ բնակարանը ընկերացաւ իրեն, կեցցէ՛ Լաֆայէթ գոչելով, իսկ իր տանը դրան առջեւ յաղթական կամար մը կանգնեց։ Հին օրերէ մնացած անձնուիրութեան այս ցոյցերը յուզեցին զօրավարը և վախ պատճառեցին ժաքոպէններուն։ Բայց պէտք էր օգտուիլ անձնուիրութեան այս բեկորներէն և զանոնք աւելի ալ գրգռել, որպէս զի արդիւնաւոր ըլլային։

Արքայական ընտանիքին մասնաւոր կերպով նուիրուած մէկ քանի պահակազօրաց սպաներ պալատ դիմեցին, գիտնալու համար թէ ի՛նչ ընթացք բռնելու է. Թագաւորը և թագուհին կարծիք յայտնեցին թէ պէտք չէ օգնել Լաֆայէթի։ Ուրեմն անիկա ինքզինքը լքուած տեսաւ ազգային պահակազօրքի այն մասէն, որուն վրայ կարելի էր տակաւին կռթնիլ։ Սակայն և այնպէս, ուզելով թագաւորին ծառայել հակառակ անոր կամքին ալ, անոր բարեկամներուն հետ համաձայնեցաւ։ Բայց ասոնք ալ իրենց միջեւ համերաշխ չէին. ոմանք, մասնաւորապէս Լալի Թօլէնտալ՝ կը փափաքէին որ Լաֆայէթ արագ կերպով գործէ ժաքօպէններուն դէմ, և զինու զօրութեամբ յարձակի անոնց ակումբին վրայ. ուրիշներ, որոնք կառավարական պաշտօնեաներ և երեսփոխաններ էին, անդադար օրէնքին կռթնելով ու միայն անկէ սպասելով ամէն ինչ, չէին ուզեր որ բռնութիւն ի գործ դրուի և կը հակառակէին բացէ ի բաց յարձակման մը։

Լաֆայէթ նախընտրեց այս երկու խորհուրդներուն ամենէն յանդուգնը. իր կուսակիցներուն հետ ժամադրութիւն մը նշանակեց, միասին երթալու համար ժաքօպէններուն Ակումբը և զանոնք վանելու հոնկէ, և դուռը պատով հիւսելու։ Ժամադրավայրը որոշուեցաւ, բայց քիչ թուով մարդիկ միայն գացին, որով Լաֆայէթ անկարող եղաւ գործ մը տեսնելու։ Միւս կողմէ, սակայն, մինչ ինքը յուսահատած էր գրեթէ առանձին ձգուած ըլլալուն համար, ժաքօպէնները որոնք իրեններուն ապիկարութենէն լուր չունէին, սարսափահար եղած իրենց Ակումբը ձգեցին գացին, և ապաստանեցան Տիւմուրիէի մօտ, որ տակաւին մեկնած չէր զինուորական քննութիւնը կատարելու. զայն սախրեցին որ իրենց գլուխն անցնի և քալէ Լաֆայէթի դէմ, բայց Տիւմուրիէ չանսաց այս խորհուրդին։

Լաֆայէթ դեռ օր մըն ալ մնաց Բարիզ, ամբաստանութեանց, սպառնալիքներու և սպաննութեան ծրագիրներու մէջ թաղուած, և վերջապէս,

յուսահատելով իր անօգուտ անձնուիրութեանցը ու պալատին ազնուարեր յամառութեանցը, նյաւ գնաց։ Եւ ճիշդ այս մարդն է ահա՛ զոր ամբաստանեցին թէ մատնեց Լուդովիկոս ԺԶ․ ը, մինչ անիկա եկած էր իր կեանքը վտանգելու և թագաւորը ազատելու համար։ Պալատին պատմագիրները կ'ըսեն թէ՝ իր ձեռք առած միջոցները լաւ կարգադրուած չէին․ անտարակոյս, աւելի դիւրին և ապահով գործ մըն էր, գոնէ ըստ երեւոյթին, 80,000 Բրուսիացիներուն դէմ կռուիլ․ բայց Բարիզի մէջ և օտարները Ֆրանսա չհրաւիրելու ծրագիրը ունենալով ի՞նչ կարելի էր ընել աւելի, եթէ ոչ՝ ազգային պահակազօրքին գլուխը անցնիլ և Ժաքօպէնները ցրուել։

Լաֆայէթ մեկնեցաւ, տակաւին թագաւորին ծառայութեան մասնակցելու մտադրութեամբ, և, եթէ կարելի էր, Բարիզէն հեռանալու համար միջոցներ ընծայել անոր։ Ժողովին նամակ մը գրեց և շատ աւելի ուժգնօրէն կրկնեց, ինչ որ ըսած էր արդէն իր խռովարար անուանածներուն դէմ։

Հազիւ թէ ժողովրդային կուսակցութիւնը խալըսեցաւ այն երկիւղներէն զորս զգացած էր զօրավարին ներկայութեամբ և ծրագիրներուն հետեւանքով, վերսկսաւ յարձակիլ պալատին վրայ ու անդէց խիստ հաշիւ մը պահանջելով այն միջոցներուն նկատմամբ, որոնք ձեռք պիտի առնուէին Ֆրանսական հայրենիքը պաշտպանելու համար։ Թէև գործադիր իշխանութիւնը զեկոյց մը չէր ըրած Ժողովին, բայց գիտէին արդէն թէ Բրուսիացիները չէզոքութեան պայմանները խզած էին և կը յառաջանային Քօպլենցի վրայ, 80,000 հոգիով, բոլորն ալ Մեծն Ֆրեդերիկի ծերունի զինուորները և հրամանատարութեամբ հռչակաւոր զօրավար՝ դուքս Պրունսվիքի։

Մի քնէր շատ քիչ զինուոր ունենա-

լուն և Պելճիգացիներուն վրայ մեծ յոյս մը դրած չըլլալնուն համար, հարկադրուած էր նահանջել Լիլի ու Վալանսիէնի վրայէն։ Քուրթրէէն նահանջած ատեններին սպայ մը այրած վառած էր քաղաքին արուարձանները և կարծուեցաւ թէ այս վայրագ ձեռնարկին նպատակն էր Պելճիգացիները օտարացնել։ Կառավարութիւնը ոչ մէկ բան կ'ընէր մեր բանակին ոյժը աւելցնելու համար․ այդ բանակը, արդէն, շատ շատ, 230,000 հոգիէ միայն կը բաղկանար, և եր սահմանագլուխներուն վրայ բաժնուած։ Կառավարութիւնը ձեռք չէր առներ ո՛չ մէկն այն զօրաւոր միջոցներէն, որոնք ազգի մը եռանդը և խանդավառութիւնը կ'արթնցնեն։ Վերջապէս, թշնամին կարող էր վեց շաբաթէն Բարիզ մտնել։

Թագուհին կը յուսար այս բանին վրայ, և իր մտերմական կիներէն մէկուն խօսեցաւ այդ մասին․ անիկա գիտէր թէ տարագիրները և Բրուսիոյ թագաւորը ինչ ճամբաներէ պիտի անցնէին․ գիտէր թէ այս ինչ օրը անոնք կրնան ըլլալ Վէրտէօն, այն ինչ օրը՝ Լիլ, զոր պատրաստուէր էին պաշարման ենթարկել։ Այս դժբաղդ թագուհին կ'ըսէր թէ կը յուսար մինչեւ մէկ ամիս ազատիլ (տե՛ս Տիկին Քամփանի Յիշատակները։)

Աւա՜ղ, ինչո՞ւ չէր հաւատար իր այն անկեղծ բարեկամներուն, որոնք իր աչքին առջեւ կը պարզէին օտարներէն գալիք անօգուտ օգնութեան անպատեհութիւնները․ այդ օգնութիւնը պիտի հասնէր այնքան շուտով որ թագուհին վտանգի պիտի ենթարկուէր, ու այնքան ուշ՝ որ այլեւս կարելի պիտի չըլլար փրկել զինքը։ Ինչո՞ւ գոնէ հաւատ չէր ընծայեր իր անձնական երկիւղներուն՝ զորս կը զգար այս մասին, և ինչո՞ւ չէր հաւատար նաեւ՝ երբեմն իր վրայ խուժող նախազգացումներուն։

Տեսանք արդէն թէ ազգային կուսակցութիւնը ամենէն աւելի կը պնդէր

որ 20,000 դաշնակիցներու պահեստի զօրք մը գտնուի Բարիզի տրամադրութեան տակ։ Թագաւորը, ինչպէս ըսինք արդէն, այս ծրագրին հակառակ էր. իրեն ազդարարուեցաւ, իր նախարարներուն միջոցաւ, բացատրութիւն ալ այն նախազգուշական ձեռնարկներուն մասին, զորս ձեռք առած էր չվաւերացուած օրէնքին տեղը լրացնելու համար։ Թագաւորը պատասխանեց, առաջարկելով նոր օրինագիծ մը, որով Սուասոն պիտի առնուէր ազգային կամաւորներու քառասուն երկու վաշտերու պահեստի զօրք մը, բնելու համար տեղը նախկին պահեստի զօրքերուն, որոնք սպառած էին երկու գլխաւոր բանակներուն պակասները լրացնելու առթիւ։ Զգալի տարբերութեամբ մը, հայրենասէրները շատ կարեւոր կը նկատէին առաջին օրինագիծը, որուն համաձայն պահեստի նոր բանակը պիտի կազմուէր Բարիզի և սահմանագլուխին միջեւ, և ո՛չ թէ նոյն ինքն Բարիզի մէջ. այս ծրագիրը գանգատներով լսուեցաւ և յղուեցաւ զինուորական գործոց յանձնաժողովին։

Բայց անդին, մէկ քանի գաւառներ և քաղաքապետութիւններ, Բարիզի հետ իրենց ունեցած թղթակցութիւններովը գրգռուած, որոշեցին իգործ դնել 20,000 հոգինոց բանակի մը կազմութեան օրինագիծը, հակառակ անոր՝ որ անիկա դեռ վաւերացուած չէր։ Գուշ տիւ Ռօնի, Ժիրօնտի և Հէրօյի նահանգները առին առաջին օրինակը և շուտով ուրիշներ ալ հետեւեցան իրենց։ Ապստամբութիւնը առ՛ այս ձեւով սկսաւ։

Անմիջապէս որ այս ինքնագլուխ ընդվզմանց լուրը ստացաւ, Ժողովը թագաւորին առաջարկած 42 նոր վաշտեր կազմելու ծրագիրը փոխելով, որոշեց, որ՝ այն զօրավաշտերը, որոնք իրենց փութկոտութեամբը արդէն իսկ ճամբայ ելած էին, առանց օրինաւորապէս կանչուած ըլլալու, Բարիզէն անցնին, տեղւոյն քաղաքապետութեան մէջ արձանագրուելու համար, և յետոյ երթան Սուասոն, հոն բանակելու. որոշեց նաեւ որ, անոնք՝ որ կրնային Բարիզ գտնուիլ Յուլիս 14էն առաջ, որ Դաշնակցութեան օրն էր, պիտի մասնակցէին ազգային հանդիսութեանց։ Այդ հանդէսը տեղի ունեցած չէր 1791էն, թագաւորին՝ Վառէն փախած ըլլալուն պատճառով, այնպէս որ կ՚ուզէին 92ին տօնել մեծ շուքով։ Ժողովը յարեց թէ՛ հանդիսութիւններէն անմիջապէս ետք դաշնակիցները պիտի երթան իրենց յատկացեալ վայրերը։

Ասիկա միանգամայն վաւերացնել էր ապստամբութիւնը և գրեթէ վերանորոգել կը նշանակէր չվաւերացուած օրէնքը։ Միակ տարբերութիւնը սա էր որ, դաշնակիցները Բարիզէն կ՚անցնէին միայն։ Բայց կարեւոր կէտը գտնուիլ հոն ըլլալն էր՝, և անգամ մը որ հոն հասնէին, հազար պատճառներ կրնային ծագիլ և զանոնք հոն վար դնել։ Նոր օրէնքը անմիջապէս թագաւորին ղրկուեցաւ և յաջորդ օրն իսկ վաւերացման ենթարկուեցաւ։

Այս կարեւոր որոշման հետ ուրիշ որոշում մըն ալ առին. վստահութիւն չկար ազգային պահակազօրքի մէկ մասին վրայ, մանաւանդ սպայակոյտի անդամներուն, որոնք, գաւառային վարչութեան օրինակին հետեւելով, և իրենց աստիճաններուն բերմամբ իշխանութեան բարձր շրջանակներուն մօտենալով, աւելի անոնց կողմը հակած էին։ Մասնաւորաբար կ՚ուզէին Բարիզի ազգային պահակազօրքին նախէն դալ. բայց որովհետեւ ուղղակի բան մը չէին կրնար ընել, որոշեցին որ 50,000 հոգիէ աւելի բնակչութիւն ունեցող քաղաքներուն մէջ սպայակոյտերը լուծուին և վերստին ընտրուին։ Ֆրանսա այնպիսի խռովեալ կացութեան մը մէջ կը գտնուէր, որ ամենէն եռանդուն

մարդոց համար դիւրին պիտի ըլլար յարաճուն ազդեցութիւն մը ձեռք ձգել, որով անոնց ունենալիք վերընտրութիւնը ապահովաբար անձնուէր հատուածներ պիտի ունենար ժողովրդային և հանրապետական կուսակցութեանց վրայ։

Բոլոր ասոնք մեծ յաղթանակներ էին, տարուած՝ պայքարին սկզբնական դէմ։ Այսու հանդերձ, բոլոր ասոնք դեռ բաւական ապահով չէին համարեր հայրենասէրները, ընդդէմ այն անմիջական վտանգներուն, որոնց սպառնալիքին ենթարկուած կը կարծէին ինքզինքնին։ Քառասուն հազար Բրուսիացիներ, նոյնպէս ալ Աւստրիացիներ կը քալեն մեր սահմանագլխաներուն վրայ. պալատ մը ունինք որ հաւանականաբար համաձայն է թշնամիին հետ, և որ ոչինչ կ'ընէ բանակը ստուարացնելու կամ ազգային հասոյթը բազմապատկելու համար, այլ ընդհակառակը իր վեթօն ի գործ կը դնէ Օրէնսդիր Մարմինին ձեռք առած միջոցները ջր'լու համար, և անձնական գանձանախարարութիւնը կը խաղցնէ, Ֆրանսայի մէջ կուսակիցներ շահելու համար։ Միւս կողմէ, գաղութիւն ունէր գործավար մը, որուն մասին չէին ենթադրեր թէ կապուած է տարագիրներուն միանալ՝ Ֆրանսայի թշնամիներուն յանձնելու համար, բայց որ ինքզինքը տրամադիր ցոյց կու տար ժողովուրդին դէմ ելլել պալատը պաշտպանել։ Բոլոր այս պարագաները մտքերու վրայ սոսկում կը սփռէին և խորապէս կը յուզէին զանոնք։

Հայրենիքը վտանգի մէջ է. ա՛ս էր ընդհանուր աղաղակը. բայց ինչպէ՞ս առաջքն առնել այս վտանգին, այդ էր դժուարինը։ Մինչեւ իսկ համաձայն չէին վտանգը յառաջ բերող պատճառներուն մասին, սահմանադրականները և պալատին կուսակիցները, հայրենասէրներուն չափ իրենք ալ սոսկալով, վտանգին անոր առողները խառնակարարները կը համարէին. անոնք Թագաւորութեան համար դող կ'եղային և միայն անիշխանութեան մէջ կը տեսնէին վտանգը։ Ընդհակառակը, հայրենասէրները կ'ըսէին թէ վտանգը միայն օտարներու արշաւանքին մէջն է, և այս մասին կ'ամբաստանէին մի միայն պալատը, անոր մերձաւորները, դանդաղութիւնները և գաղտնի դաւադրութիւնները։ Ինքնագիրները զիրար կը խաչաձեւէին. անոնք ամէն յանցանք ժողովներուն վրայ կը նետէին, որպէսզի պալատին կը վերագրէին, և զայն կ'անուանէին դղեակ, գործադիր իշխանութիւն, վետօ։ Ժողովը կը կարդար բոլոր այս գիրերը, և զանոնք կը յղէր Տասներկուներու արտասովոր յանձնաժողովին, որ երկար ատենէ ի վեր պաշտօն առնուած էր, փնտռել ու գտնել փրկութեան միջոցները։ Անհամբերութեամբ կը սպասուէր իր առաջարկելիք յատակագծին։

Միւս կողմէ, ամենուրեք, սպառնալից հրապարակութիւններ կը փակցուէին պատերուն վրայ. կարգ մը թերթեր, յայտարարութեանց չափ յանդուգն, միմիայն՝ բռնադատեալ գահընկէցութեան մը վրայ կը խօսէին, սակայն նիւթը կը կազմէր բոլոր խօսակցութեանց, և միայն ժողովին մէջ քիչ մը չափաւոր լեզու կը գործածէին։ Այնտեղ, Թագաւորութեան դէմ ուղղուած յարձակումները դեռ անուղղակի կերպով կ'ըլլային. օրինակի համար, առաջարկուեցաւ վեթօն ջնջել արտասովոր պարագաներու տակ. քանիցս խնդիր եղած էր Թագաւորին անձնական թոշակը, և ըսուած էր թէ գէշ կերպով կը մատակարարուի ան, և խօսք անցած էր կա՛մ զայն զեղչելու, հակառակ պարագային՝ կառավարական միւս ծախքերուն նման հակակշռի ենթարկել զայն։




### ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԿԸ ՀԱՇՏՈՒԻՆ

Պալատը երբեք մերժած չէր անոր տալ Ժողովին անդամներուն, և Նիւթականապէս աւելցնել պաշտպանութեան միջոցները։ Եւ արդէն այս բանը չափով կարենար ընել առանց յայտնապէս ինքզինքը վտանգելու. ասկէ զատ, շատ չէր վախնար զինուորներու թուական յաւելումէն, որովհետեւ անանկ կը հաւատար թէ բանակը կատարելապէս կազմալուծուած է։ Ընդհակառակը, ժողովրդային կուսակցութիւնը կը փափաքէր ձեռք առնել այնպիսի արտասովոր միջոցներ, որոնք մեծ յուզում մը կը յայտնեն, և որոնք յաճախ կը յաջողցնեն ամենէն աւելի յուսահատական դատերը։ Ահա այս միջոցներն էին որ Տասներկուներու Յանձնաժողովը երկար աշխատութիւններէ վերջ ծրագրեց և առաջարկեց Ժողովին։ Յանձնաժողովը համաձայնած էր աս ծրագրին վրայ. —

Երբ վտանգը ծայրայեղ ըլլար, Օրէնսդիր Մարմինը այդ բանը ինքն իսկ պիտի յայտարարէր սա հանդիսաւոր բանաձեւով. Հայրենիքը վտանգի մէջ է:

Այս յայտարարութիւնը ըլլալէն ետք, բոլոր տեղական իշխանութիւնները, համայնքային խորհուրդները, և շրջանային ու գաւառական վարչութիւնները, վերջապէս՝ Ժողովը ինքն իսկ, իբր առաջինը բոլոր իշխանութեանց, ինքզինքնին յարատեւ կերպով գործունէութեան վրայ պիտի համարէին և առանց ընդհատելու նիստ գումարէին պիտի: Բոլոր քաղաքացիները, պարտաւոր էին իրենց զէնքերը յանձնել իշխանութեանց, հակառակ պարագային՝ ծանր պատիժներու պիտի ենթարկուէին, իշխանութիւնք իրենց յարմար դատած եղանակով պիտի բաշխէին զէնքերը: Բոլոր այր մարդիկ, ծեր թէ երիտասարդ, զինուոր ըլլալու վիճակին մէջ եթէ կը գտնուին, պարտաւոր են ազգային պահականորքի շարքերուն մէջ մտնել: Անոնք պիտի տարուէին գաւառական իշխանութեանց տրամադրութեան տակ ծառայելու, որպէս զինուորներ ալ պիտի ղրկուէին ամենուրեք որ հայրենիքի պէտքը պահանջէր, թէ՛ ներսէն և թէ՛ դուրսէն: Անոնք որ համազգեստ մը շինելու չափ դրամ չունէին, պիտի կրնային զինուոր ըլլալ առանց համազգեստի: Բոլոր այն ազգային պահականորքերը, որոնք իրենց ծննդավայրէն դուրս տեղ մը կը ղրկուէին, պիտի ստանային կառավարութենէ սահմանուած թոշակը: Իշխանութիւնք պարտաւոր էին ռազմամթերք հայթայթել: Երբ մասնաւոր դիտաւորութեամբ ապստամբութեան դրօշ պարզէր որ և է մէկը, մահուամբ պիտի պատժուէր: Եռագոյն դրօշէն և զարդանշանէն զատ ուրիշ ամէն դրօշ և զարդադրօշ կրողը պիտի համարուէր:

Այս ծրագրին համաձայն, ամբողջ ազգը ոտքի պիտի ելլէր և զինեալ պիտի ըլլար. անիկա միջոցը ունէր խորհրդակցելու և ամենուրեք պատերազմելու, ամէն վայրկեան: Անիկա կրնար կառավարութեան անգործունէութեան տեղը բռնել. ամբոխային զանգուածներուն այն աննպատակ գրգռումները կանոնաւորուած և օրինականացուած էին: Եթէ, վերջապէս, այս կոչէն ետքն ալ Ֆրանսացիները չպատասխանէին, այլ եւս ոչինչ պիտի ըլլուէր ազգի մը, որ ինքզինքին համար բան մը չէր ըներ:

Ինչպէս դիւրին է երեւակայել, անմիջապէս բուռն վիճաբանութիւն մը ծագեցաւ այս ծրագրին վրայ. երեսփոխան Բասդօրէ նախնական տեղեկագրութիւնը բրաւ Յունիս 30ին. անիկա ոչ ոքին գոհացում պատճառեց, ամենուն ալ յանցանք վերագրելով, մէկը միւսով փոխարինելով և դրական եղանակաւ մը չորոշելով այն միջոցները որոնք ձեռք պիտի առնուէին հասարակաց վտանգին դէմ դնելու համար:

Բասդօրէէն ետք, երեսփոխան Ժան տը Պրի չափաւորութեամբ և յստակ կերպով պատճառաբանեց յանձնաժողովին ծրագիրը: Երբ անգամ մը վիճաբանութիւնը բացուեցաւ, շուտով վերածուեցաւ փոխադարձ մեղադրանքներու. այդ վիճաբանութիւնը թռիչք տուաւ հին և նոր ու կանխահաս երեւակայութեան, որոնք ուղղակի ծայրայեղ միջոցներու կը դիմեն: Հասարակաց փրկութեան մեծ օրէնքը, այսինքն բռնապետութիւնը, այսինքն ամէն բան ընելու կարողութիւնը, զայն անգթօրէն՝ բայց հզօրապէս գործածելու պատահականութեամբ, այդ օրէնքը, որ միայն Քոնվանսիոնի մէջ պէտք էր հրամանագրուէր, Օրէնսդիր Ժողովին առաջարկուեցաւ սակայն:

Պ. Տըլօնէյ տ'Անժէ առաջարկեց Ժողովին յայտարարել որ, մինչեւ վտանգին հեռացումը, Ժողովը հասարակաց փրկութեան գերագոյն եւ տիրական օրէնքին միայն խորհուրդ պիտի հարցնէր:

Անիկա կը նշմարէր, վերացական և խորհրդաւոր բանաձեւով մը, յայտնապէս բնաջինջ ընել թագաւորութիւնը և յայտարարել թէ ժողովը գերագոյն վեհապետն է։ Պ. Տըլօնէյ կ'ըսէր որ, յեղափոխութիւնը դեռ աւարտած չէ և սխալ է այնպէս կարծելը, և թէ պէտք էր անխախտ պահել օրէնքները, փրկուած յեղափոխութեան համար, և ո՛չ թէ փրկելիք յեղափոխութեան համար։ Մէկ խօսքով, անիկա կ'ըսէր ամէն ինչ որ առ հասարակ կ'ըսեն բռնատիրութեան ի նպաստ, որուն գաղափարը կը ներկայանայ միշտ վտանգի վայրկեաններուն։

Աջակողմեան երեսփոխաններուն տուած պատասխանը յստակ էր. ըստ իրենց Սահմանադրութեան վրայ եղած երդումը կը բռնաբարուէր, ստեղծելով հեղինակութիւն մը, որ կանոնաւոր ու հաստատուած իշխանութիւնները կուլ կուտար։ Անոնց հակառակորդները կը պատասխանէին, ըսելով թէ բռնաբարման օրինակը տրուած էր արդէն և թէ պէտք չկար սպասելու և յանկարծակիի գալու, ինքնապաշտպանութեան դիմելու համար։

— Բայց ապացուցէ՛ք ուրեմն, կը յարէին պալատին կուսակիցները, թէ այդ օրինակը տրուած է և Սահմանադրութիւնը մատնուած։

Այս հրաւէրին կը պատասխանէին պալատին դէմ նոր ամբաստանութիւններ ընելով, ու այս ամբաստանութիւնները իրենց կարգին ետ կը մղուէին գրգռիչներուն դէմ եղած մեղադրանքներով։

Մէկ կողմը կ'ըսէր միւսին.

— Դուք գրգռիչներ էք։

— Դուք ալ մատնիչներ էք, կը պատասխանէին։

Յաւիտենապէս այս փոխադարձ մեղադրանքները կ'ըլլային իրարու. լուծուելիք խնդիրն ալ այս էր։

Պ. տը Ժօքուռ կ'ուզէր առաջարկը ժաքօպէններուն յղել, որովհետեւ շատ բուռն կը գտնէր զայն։ Պ. Իսնար, որուն եռանդին համաձայն կուգար այդ առաջարկութիւնը, կը պահանջէր որ անիկա նկատի առնուի և Պ. Տըլօնէյի ճառը ղրկուի գաւառները, դէմ դիմաց դըրուելու համար Պ. Բառդօրէի ճառին, որ հոգեվարքի մը տրուած ամփոփելի դեղապատի մըն էր միայն։

Պ. տը Վօպլան յաջողեցաւ իր ձայնը լսելի ընել տալ, ըսելով թէ Սահմանադրութիւնը միայն Սահմանադրութեամբ կը փրկուի, թէ Պ. տը Ժան Դըբրիի յատակագիծը այս բանը կ'ապացուցանէ, և թէ պէտք էր տպել Պ. Տըլօնէյի ճառը, եթէ կ'ուզէին, բայց գոնէ գաւառները ղրկել պէտք չկար, և վերադառնալ յանձնաժողովի առաջարկին։ Արդարեւ, վիճաբանութիւնը յետաձգուեցաւ յուլիս 3ին։

Բայց երեսփոխան մը կար որ տակաւին խօսած չէր. ատիկա՝ Վէրնիօն էր, անդամ՝ Ժիրօնտի. անոր ամենէն մեծ հռետորն էր թէպէտ, բայց անկախ դիրք մը ունէր։ Ըլլա՛յ անփութութեամբ, ըլլա՛յ ճշմարիտ մեծութեամբ, իր բարեկամներուն կիրքերէն վեր կը թուէր ինքը. անոնց հայրենասիրական եռանդին մասնակից ըլլալով հանդերձ, անոնց մտահոգութիւններուն և բարկութեանց չէր մասնակցեր միշտ. երբ խնդրի մը մասին վճռական որոշում մը տար, իր պերճախօսութեամբը և իր յայտնի անկողմնակալութեամբը իրեն հետ կը տանէր ժողովին այն տարուբերող մասը, զոր ատենօք Միրապօ կը տիրապետէր իր հռետորութեամբը և յանդգնութեամբը։ Ամենուրեք, տարտամ զանգուածները տաղանդաւորին և ողջախոհին կողմը կ'անցնին։

Ծանուցուեցաւ թէ Վէրնիօ պիտի խօսէր յուլիս 3ին. խուռն բազմութիւն մը վազած եկած էր, լսելու համար այս բանախօսը՝ խնդրի մը վրայ, զոր վճռական կը նկատէին։

ւորեն իրենց գլուխովը, քանի որ զայն ապահովելու միջոցները ունին։

«Արտաքին վտանգներու առաջքը առնելու համար, Ժողովը պահեստի բանակի մը վրայ խորհեցաւ։ Թագաւորը զայն մերժեց։ Իրեն նախատինք ընել պէտք ըլլար եթէ հաւատայինք որ կ'ուզէ Ֆրանսան մատնել. ուրեմն բաւականաչափ ուժեր պէտք է ունեցած ըլլայ երկիրը պաշտպանելու համար։ Ուրեմն իր նախարարները իրենց գլուխովը պարտական են մեզի երաշխաւորել հայրենիքին փրկութիւնը։»

Մինչև հոս, ատենապետը, ինչպէս կը տեսնուի, կը մնայ նախարարական պատասխանատուութեան վրայ և կը բաւականանայ զայն աւելի սպառնալի դարձնելով. «Բայց, կ'աւելցնէ, բաւական չէ նախարարները նետել այն վիհին մէջ, զոր իրենց չարութիւնը կամ անկարողութիւնը փորած պիտի ըլլայ... Ինծի մտիկ ըրէք համդարտութեամբ, մի՛ աճապարէք մտածումս գուշակելու....։»

Այս բառերուն վրայ, ուշադրութիւնը կը կրկնապատկուի. խոր լռութիւն մը կը տիրէ Ժողովին մէջ. «Յանուն թագաւորին է որ, կ'ըսէ, Ֆրանսացի իշխանները փորձեցին Եւրոպան ոտքի հանել. թագաւորին արժանապատուութեան վրէժը լուծելու համար է որ Բիլնիցի դաշնագիրը կնքուեցաւ. թագաւորին օգնութեան հասնելու համար է որ Գոհեմիոյ և Հունգարիոյ վեհապետը մեզի հետ կը պատերազմի, և Պրուսիան դէպի մեր սահմանագլուխը կը յառաջանայ։ Արդ, կը կարդամ Սահմանադրութեան մէջ. — «Եթէ թագաւորը բանակի մը գլուխն անցնի և անոր ուժերը ուղղէ ազգին դէմ, կամ եթէ որոշ և խիստ գործով մը չընդդիմանայ այսպիսի ձեռնարկի մը, որ կը գործադրուի իր անունով, անոր պէտք ըլլայ համարել որ թագաւորութենէն հրաժարած է։»

«Ի՞նչ է դիմադրութեան որոշ և խիստ գործ մը։ Երբ հարիւր հազար Աւստրիացի կը քալեն Ֆլանտրայի վրայ, հարիւր հազար Պրուսիացիք՝ դէպի Ալզաս և երբ թագաւորը անոնց դէմ դնէ տասը կամ քսան հազար մարդ, ըրա՞ծ պիտի ըլլայ դիմադրութեան որոշ և խիստ գործ մը:

«Եթէ թագաւորը, յանձնառու ըլլալով խմաց տալ վերահաս թշնամութիւնները, պրուսիական բանակին շարժումները գիտնալով, ոև է ծանօթութիւն չի տար Ազգային Ժողովին. եթէ առաջարկուած ըլլար պահեստի բանակ մը, թշնամիին դէպի երկրին ներսերը յառաջխաղացութիւնը արգիլելու համար անհրաժեշտ, և թագաւորը անոր տեղ դնէր անորոշ և շատ երկար գործադրելի յատակագիծ մը. եթէ թագաւորը բանակի մը հրամանատարութիւնը ձգէր նենգամիտ և ազգին համար կասկածելի զօրավարի մը ձեռքը. եթէ ուրիշ զօրավար մը արքունիքի ապականութենէն հեռու սնած և յաղթանակի վարժ, օգնութիւն ուզէր և եթէ մերժումով մը, թագաւորը ըսէր քեզի կ'արգիլեմ յաղթել. պիտի կրնայի՞նք ըսել որ թագաւորը դիմադրութեան որոշ և խիստ գործ մը ըրած է։

«Շատ մը դէպքեր չափազանցելի, կ'աւելցնէ Վէրնիօ, զուտ ենթադրական մեկնութեան բոլոր պատրուակները վերցնելու համար։ Բայց, եթէ Ֆրանսա արիւնի մէջ լողար, եթէ թագաւորը ձեզի ըսէր. «Ճիշդ է որ թշնամիները կը յաւակնին իմ անունովս, իմ արժանապատուութեանս, իմ իրաւունքներուս համար գործել, բայց ես ապացուցի որ իրենց մեղսակիցը չէի. բանակը պատերազմելու վիճակի մէջ դրի. այդ բանակը շատ տկար էր, բայց Սահմանադրութիւնը անոր ուժին աստիճանը չորոշեր. շատ ուշ զայն հաւաքեցի, բայց Սահմանադրութիւնը չորոշեր անոնց հաւաքման ժամանակը. զօրավար մը յաղթելու վրայ էր, կեցուցի զայն, բայց Սահմանադրութիւնը յաղ-

թութիւնները չի հրամայեր. այնպիսի նախարարներ ունեցայ, որոնք ժողովը կը խաբէին և կառավարութիւնը կը կաշառուէին. բայց անոնց անուանումը ինծի կը պատկանէր. ժողովը օգտակար օրինագիծեր տուաւ, զորս չվաւերացուցի, բայց այդ բանը իմ իրաւունքս էր, քանի՝ ինչ որ Սահմանադրութիւնը ինծի նախագծած է. ուրեմն կարելի չէ տարակուսիլ անոր մասին ունեցած հաւատարմութեանս վրայ։ »

Բուռն ծափահարութիւններ կը պայթին ամէն կողմէ։

«Եթէ, ուրեմն, կը շարունակէ Վէրնիօ, Թագաւորը ձեզի այսպէս խօսէր, իրաւունք չպիտի՞ ունենայիք իրեն պատասխանելու։ Ո՜վ Թագաւոր, որ Լիզանտր բռնապետին պէս կարծեցիք թէ ճշմարտութիւնը սուտէն աւելի չէր արժեր, որ օրէնքները սիրել ձեւացուցիք միայն իշխանութիւնը պահպանելու համար, որով ձեզի պիտի ծառայէին այդ օրէնքներուն դէմ ելլելու. մեզի պաշտպանե՞լ էր, օտար զինուորներու դիմադրելը այնպիսի ուժով մը՝ այնքան անբաւական՝ որ նոյն իսկ կասկածի չէր կարելի ենթարկել անոնց անյաջողութիւնը։ Մեզի պաշտպանե՞լ էր երկրին ներքին մասը զօրացնելու ձգտող ծրագիրը մերժելը։

«Մեզի պաշտպանե՞լ էր չպատժելը այնպիսի զօրավար մը, որ Սահմանադրութիւնը կը բռնաբարէր և քաջութիւնը կապտելը անոնց՝ որոնք Սահմանադրութեան կը ծառայէին։ Սահմանադրութիւնը նախարարներու ընտրութիւնը ձեզի թողուց, մեր երջանկութեա՞ն թէ մեր կորուստին համար։ Ձեզի բանակներուն պետ ըրաւ, մեր փառքի՞ն թէ մեր ամօթին համար։ Վերջապէս, ձեզի տուաւ վաւերացումի իրաւունքը, անձնական գանձ մը և այնքան առանձնաշնորհումներ, որպէս զի սահմանադրականօրէն կորուստի՞ մատնէք Սահմանադրութիւնը և Պետութիւնը։ Ո՛չ, ո՛չ... մա՛րդ, որ Ֆրանսացիներու վեհանձնութիւնը չկրցաւ զգայուն դարձնել, որ միմիայն զգածուեցաւ բռնապետութեան սիրով... դուք այլ եւս ոչինչ էք այս Սահմանադրութեան համար, զոր այնքան անարժանօրէն բռնաբարեցիք, այս ժողովուրդին համար՝ զոր այնքան վատօրէն դաւաճանեցիք։

«Բայց ո՛չ, կ՚աւելցնէ ատենաբանը, եթէ մեր բանակը կատարեալ չէ, այդ բանին համար անշուշտ Թագաւորը յանցաւոր չէ. անտարակոյս, անհրաժեշտ միջոցները ձեռք պիտի առնէ մեզ ազատելու համար. անտարակոյս, Բրունսվիքին յառաջխաղացումը այնքան յաղթական չպիտի ըլլայ որքան կը յուսան. բայց հարկ էր ամէն բան նախատեսել և ամէն բան ընել, որովհետեւ անկեղծութիւնը միայն կրնայ զմեզ ազատել։»

Վէրնիօ վերջացուց առաջարկելով որ պատուիրակ մը ղրկուի Լուդովիկոս ԺԶ.ի, հաստատակամ բայց յարգալիր պատուիրակ մը, որ զայն ստիպէ ընտրութիւն մը ընել Ֆրանսայի և օտարին միջեւ, և անոր հասկցնէ որ Ֆրանսացիները որոշած են մեռնիլ կամ յաղթանակել Սահմանադրութեամբ։ Ասկէ զատ ատենախօսը ուզեց որ հայրենիքը վտանգի մէջ յայտարարուի, սրտերու մէջ արթնցնելու համար այն մեծ համակրութիւնները, որոնք խանդավառած են մեծ ժողովուրդները, և որոնք անշո՛ւշտ թէ կան Ֆրանսացիներուն մէջ. որովհետեւ, ըսաւ, 89ի վերածնեալ Ֆրանսացիներուն մէջ չէ որ նկարագիրը ինկած պիտի յայտնուէր։ Վերջապէս կ՚ուզէ որ վերջ մը դրուի անհամաձայնութիւններու որոնց բնոյթը չարագուշակ կը դառնայ և միանան անոնք որ Հռոմի մէջ են և Աւանդէն լերան վրայ։

Այս վերջին բառերը արտասանած

ժամանակ ատենախօսին ձայնը խռովուած էր եւ յուզմունքը ընդհանուր դարձած. ունկնդիրները, ձախակողմը, աջակողմը, ամենքը կը ծափահարէին. Վէրնիօ ատեանէն իջաւ եւ շրջապատուեցաւ բազմութիւնով մը, որ կը փութար զինքը շնորհաւորելու։ Մինչեւ այն ատեն ինքը միայն համարձակած էր ժողովին մէջ խօսելու դաշնակցութեան վրայ, որուն մասին ամէն ոք կը խօսէր հանրութեան մէջ, բայց զայն ներկայացուցած էր ենթադրական եղանակով մը եւ դեռ յարգալիր ձեւերով, եթէ իր խօսքերը բաղդատենք այն լեզուին, զոր կը գործածէին ժամանակին կիրքերէն ներշնչուելով։

Տիւմա կ'ուզէ պատասխանել։ Վէրնիոյէն ետք եւ այնպիսի ունկնդիրներու առաջ, որոնք դեռ բոլորովին յուզուած էին իրենց զգացմներով, կը փորձէ յանպատրաստից խօսիլ։ Քանի մը անգամ լռութիւն կը պահանջէ եւ ուշադրութիւն մը՝ որ այլեւս չկար իրեն համար։ Կը ծանրանայ այն մեղադրանքներուն վրայ, որոնք ուղղուած էին գործադիր իշխանութեան։ «Լիւքնէրի նահանջը պատերազմներու ճակատագրին հետեւանքն է, կ'ըսէ, զոր չէ կարելի ուղղել աշխատութեան խուցերու խորը։ Անշուշտ վստահութիւն ունիք Լիւքնէրի վրայ։» — «Այո՛, այո՛» կը գոչեն։ Եւ Փէթիոնէն հրամանագիր մը կը պահանջէ որ յայտարարէ թէ Լիւքնէրը ազգային վստահութիւնը կը շարունակէ ունենալ։ Հրամանագիրը կը տրուի, եւ Տիւմա կը շարունակէ։ Իրաւամբ կ'ըսէ որ եթէ վստահութիւն կայ այդ զօրավարին վրայ, իր նահանջին դիտաւորութիւնը չէ կարելի յանցապարտ կամ կասկածելի նկատել. թէ, դալով զինուորական ուժի պակասին, ուրկէ կը գանգատին, մարաջախտը, ինքն իսկ գիտէ որ այդ ձեռնարկին համար հաւաքուեցան այդ միջոցին տրամադրելի բոլոր զինուորները. թէ, արդէն, ամէն բան պատրաստուած պէտք էր ըլլար նախկին ժիրոնտէն Դահլիճէն, յարձակողական պատերազմին հեղինակը, եւ թէ բաւականաչափ միջոցներ չըլլալուն յանցանքը միայն այդ նախարարութեան կը վերաբերէր, եւ նոր նախարարները չէին կրցած ամէն բան դարմանել քանի մը նամակներով, եւ թէ վերջապէս լիազօրութիւն տուած էին Լիւքնէրին եւ անոր իշխանութիւն տուած էին գործելու, պարագաներուն եւ անցքին համեմատ։

«Քսան հազար հոգիի բանակը մերժուեցաւ, կ'աւելցնէ Տիւմա. բայց նախ վերջին համար պատասխանատու չեն նախարարները, եւ յետոյ անոր տեղ դրած ծրագիրնին աւելի կ'արժէր քան թէ այն՝ որ ժողովը առաջարկեց, որովհետեւ չէր անդամալուծեր զօրահանութեան միջոցները։ Քահանաներու դէմ հրամանագիրը մերժուեցաւ, բայց նոր օրէնքներու պէտք չկայ հանրային անդորրութիւնը պահպանելու համար. միայն պէտք է հանդարտութիւն, պաշտօնութիւն, յարգանք անհատական ազատութեան, եւ կրօնքի ազատութիւն։ Ամենուրեք ուր այս ազատութիւնները յարգուած են, քահանաները խռովարար չեն եղած։» Վերջապէս Տիւմա կ'արդարացնէ թագաւորը, դիտել տալով թէ պահակազմը չէր ուզեր եւ Լաֆայէթը՝ փչացնելով որ միշտ սիրած է անձին ազատութիւնը։

Տասներկուներու յանձնաժողովին առաջարկած հրամանագիրը, որով պիտի կարգադրուէին այն ձեւերը որոնց համաձայն հայրենիքը վտանգի մէջ պիտի յայտարարուէր, ուղարկուեցաւ բուռն ծափահարութեանց մէջէն։ Բայց յետաձգուեցաւ վտանգի յայտարարութիւնը, որովհետեւ չկարծեցին որ պարագական են դեռ զայն յայտարարելու։ Թագաւորը, անշուշտ գրգռուած բոլոր ըսուածներէն, ժողովին իմաց տուաւ Բրուսիոյ վերահաս թշնամութիւնները, զորս

վերագրեց Բրինիքի համաձայնութեան, ըմբոստներուն եղած ընդունելութեան, Ֆրանսայի վաճառականներուն հանդէպ գործադրուած բռնութիւններուն, մեր նախարարութեան ճամբուներուն և Բրուսիայի դեսպանին Բարիզէն մեկնելուն վրայ, վերջապէս՝ Բրուսիայի 52000 զինուորներուն յառաջխաղացումին վրայ: «Ամէն բան ինծի կ'ապացուցանէ, կ'աւելցնէր Թագաւորին զեկուցագիրը՝ Վիէննայի և Պէռլինի միջև դաշնակցութիւն մը: (Այս բառերուն վրայ խնդացին:) Ըստ Սահմանադրութեան, կը ծանուցանեմ այս բաները Օրէնսդիր ժողովին:

— «Այո՛, կը պատասխանեն բազմաթիւ ձայներ, երբ Բրուսիացիները Քօպլէնցի մէջ են:» Զեկուցագիրը ղրկուեցաւ Տասներկուներու յանձնաժողովին:

Հայրենիքը վտանգի մէջ յայտարարելու ձևին վրայ վիճաբանութիւնը շարունակուեցաւ: Հրամանագրուեցաւ որ այս յայտարարութիւնը պարզ զեկոյց մը նկատուի, և հետևաբար, չպիտի ենթարկուի թագաւորական վաւերացուման, ինչ որ շատ ճիշդ չէր. քանի որ իր մէջ կը պարփակէր օրէնսդրական տրամադրութիւններ: Բայց այդէն, առանց զայն ծանուցանել ուզելու հասարակաց փրկութեան օրէնքին կը հետևէին:

Վիճաբանութիւնները օրէ օր աւելի թունաւոր կը դառնային: Վէրնիոյի ճառը որ Հռոմի և Ավանդինի լերան վրայ գտնուողները հաւաքել էր, չէր կրականանար. — Այն վախերը, զորս փոխադարձաբար իրարու կը ներշնչէին, անհաշտ ատելութեան մը կը փոխուէին:

Ժողովին մէջ Լամուրէթ անուն եպիսկոպոս մը կար, Լիոնի սահմանադրական եպիսկոպոսը, որ ազատութեան մէջ ուրիշ բան չէր տեսած՝ բայց եթէ նախնական ժամանակներու եղբայրութեան վերադարձը, և որ կը ցաւէր այնքան, որքան կը զարմանար, իր եղբայրակիցներուն պառակտումներուն վրայ: Անիկա չէր հաւատար որ ոև է ճշմարիտ ատելութիւն կրնայ ըլլալ անոնց միջև և կ'ենթադրէր թէ միայն անարդար կասկածներ ունէին: Յուլիս 7ին, այն պահուն երբ վիճաբանութիւնը պիտի շարունակուէր հայրենիքի վտանգին վրայ, խօսք ուզեց օրակարգի խնդրի մը համար. և իր եղբայրակիցներուն ուղղելով խօսքը, շատ համոզկեր շեշտով և շատ ազնիւ դէմքով անոնց ըսաւ որ, ամէն որ իրենց կ'առաջարկուէր սարսափելի միջոցներ հայրենիքի վտանգին առաջքը առնելու համար. թէ, ինքը հաւատք ունի աւելի քաղցր և աւելի վճռական միջոցներու վրայ: Ներկայացուցիչներուն պառակտումն է որ բոլոր չարիքները կը պատճառէ և այս անմիաբանութիւնն է որ պէտք է դարմանել: «Օ՛հ, կը գոչէ արժանայարգ հովիւը, անիկա որ պիտի յաջողէր զձեզ միացնել, անիկա ճշմարիտ յաղթականը պիտի ըլլար Աւստրիոյ և Քօպլէնցի դէմ: Ամէն օր կ'ըսուի թէ խնդիրները այնպիսի վիճակի մը հասած են, որ ձեր միացումը անկարելի է... Ա՜հ, կը դողամ այդ բանին վրայ. բայց ատիկա նախատինք մըն է, ոճիրը և ապաքինութիւնը միայն անհաշտելի են: Բարի մարդիկը բուռն կերպով կը վիճաբանին, որովհետև իրենց կարծիքներուն անկեղծ համոզումը ունին, բայց չեն կրնար զիրար ատել: Պարոննե՛ր, հասարակաց փրկութիւնը ձեր ձեռքերուն մէջն է, ինչո՞ւ կ'ուշանաք զայն գլուխ հանելու:

«Ժողովին երկու կուսակցութիւնները ի՞նչ կը վերագրեն իրարու: Մէկը միւսը կ'ամբաստանէ թէ կ'ուզէ Սահմանադրութիւնը փոխել օտարներու ձեռքով և այս կուսակցութիւնը կ'ամբաստանէ առաջինը թէ կ'ուզէ միապետութիւնը տապալել, հանրապետութիւն հաստատելու համար: Է՜հ, լաւ, պարոններ նոյն բանադրանքով չանթա-



ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԹԱԳԱՒՈՐԻ ՊԱԼԱՏԻՆ ՄԷՋ

հարեցէք թէ՛ հանրապետութիւնը և թէ Երկու Ժողովները, զանոնք հասարակաց զզուանքին ենթարկեցէք վերջին և անդառնալի երդումով մը։ Երդնունք թէ միակ ոգի մը, միակ զգացում մը պիտի ունենանք. երդնունք յաւիտենական եղբայրութիւն։ Թո՛ղ թշնամին գիտնայ թէ, ամէն ինչ որ կ՚ուզենք՝ ամենքս միասին կ՚ուզենք, և հայրենիքը փըրկուա՛ծ է։ »

Հազիւ թէ ատենախօսը այս վերջին բառերը արտասանեց, և ահա Ժողովին երկու կողմերը կանգնած էին ծափահարելով այս վեհանձն զգացումները և կը փութային իրենց փոխադարձ թշնամութիւններէն պարպուելու։ Ընդհանուր գոհունակութեան աղաղակներու մէջտեղ հանրային զզուանքին ենթարկեցին բոլոր այն ծրագիրները, որոնք կը միտէին Սահմանադրութիւնը եղծա-

նել երկու ժողովներ հաստատելով, կամ՝ հանրապետութեամբ, և հակընդդէմ նստարաններէն կը խուժեն զիրար համբուրելու համար։ Անոնք որ յարձակած էին Լաֆայէթի, վերոյին, անձնական գանձուն, խավարարներուն և դատաւորներուն վրայ, և անոնք որ զանոնք պաշտպանած էին, իրարու գրկին մէջ ինկան, բոլոր կարծիքի տարբերութիւնները կը չփոթուին, և կը տեսնուի որ Պ. Բասդօրէ և Քօնտօրսէ զիրար կը համբուրեն, մինչ անոնք նախորդ օրը թերթերու մէջ իրարու վրայ յարձակած էին։ Այլ ևս աջակողմ և ձախակողմ չկայ և բոլոր երեսփոխանները առանց խտրութեան նստած են մէկը միւսին քով։ Տիւմա՝ Պազիրի քովն է, Ժօքուր՝ Մէրլէնի, և Ռամօն՝ Շապոյի քով։

Անմիջապէս կ'որոշեն տեղեկացնել դատարաններուն, բանակին և թագաւորին այս բարեբաղդ դէպքը։ Պատգամաւորութիւն մը, զոր կ'առաջնորդէր Լամուրէթ, պալատ կ'երթայ։ Լամուրէթ կը վերադառնայ, ծանուցանելով որ թագաւորին ժողովին կու գայ, ինչպէս 1790 Փետրվար 4ին՝ իր գոհունակութիւնը յայտնելու ժողովին և անոր ըսելու՝ որ չկարենալով համբերել պատգամաւորութեան մը, կը փութար իրենց մէջ ըլլալու։

Այս բաներով խանդավառութիւնը իր լրումին կը հասնի և եթէ հաւատք ընծայուէր միաձայն ողջագուրին, հայրենիքը փրկուած է։

Արդեօք հոն կային թագաւոր մը և 800 կեղծաւոր երեսփոխաննե՞ր, որոնք յանպատրաստից ինքզինքնին խաբելու ծրագիր մը կազմելով, անանկ կը ձեւացնէին թէ մոռցած են իրենց դէմ եղած նախատինքները, աւելի ուշ, աւելի ապահովութեամբ ինքզինքնին մատնելու համար։ Անտարակոյս՝ ո՛չ. այդպիսի ծրագիր մը չի կազմուիր ձեռամբ այդքան մեծ թուով մարդոց, յանկարծակիօրէն, առանց նախընթաց խորհրդածութեան։

Բայց ատելութիւնը ճնշող ծանրութիւն մը ունի. որքա՜ն քաղցր է ազատիլ անոր բեռէն. և արդէն, ամենէն աւելի սպառնալի դէպքերուն ի տես, ո՞րն էր այն կուսակցութիւնը, որ յաղթութեան անորոշութեանը մէջ, սիրայօժար չպիտի հաւանէր իրաց վիճակը պահելու այնպէս՝ ինչպէս որ էր, կը բաւէ որ ապահով վիճակ մը ըլլայ։

Այս խորութիւնը ի մէջ այլոց, կ'ապացուցանէ թէ անվստահութիւնը և երկիւղը յառաջ կը բերէին բոլոր ատելութիւնները, և թէ մէկ վայրկեանի մը վստահութիւնը զանոնք կ'անհետացնէր, և թէ հանրապետական կոչուած կուսակցութիւնը՝ հանրապետութեան վրայ չէր մտածեր իբր դրութիւն, այլ՝ իբր յուսահատական միջոց։ Ինչո՞ւ համար, թագաւորը իր պալատը վերադառնալուն պէս չէր գրեր Բրուսիոյ և Աւստրիոյ։

Այդ գաղտնի ձեռնարկներուն ինչո՞ւ չէր միացներ հանրային և վսեմ ձեռնարկ մը. ինչո՞ւ իր պաշտօնը՝ Լուդովիկոս ԺԴ.ի նման, ի տես թշնամիին չէր ըսեր. մենք ամենքնիս ալ պիտի երթանք։

ՎԵՐՋ ՎԵՑԵՐՈՐԴ ԳԻՐՔԻ

# ԵՕԹՆԵՐՈՐԴ ԳԻՐՔ

## 10 ՕԳՈՍՏՈՍ

*Հայրենիքը վտանգի մէջ կը յայտարարուի. — Կառավարութիւնը պաշտօնանկ կ'ընէ քաղաքապետ Բէդիոնը. — Թագաւորութեան դէմ սպառնական ուղերձներ. — Լաֆա-յէթ թագաւորին կ'առաջարկէ փախուստի ծրագիր մը. — Յուլիս 14ի երրորդ տարե-դարձը. Նկարագրութիւն հանդէսին. — Նոր ապստամբութեան մը նախատօնակը. — Ա-պստամբական յանձնախումբ. — Այդ շրջանի ամենէն նշանաւոր յեղափոխականներուն վրայ մանրամասնութիւններ. Քամիյ Տէմուլէն, Մարա, Ռոպէսպիէռ, Տանթոն. — Թագաւորին բարեկամներուն ծրագիրը՝ զայն ազատելու համար. — Ժիրոնտէն երեսփոխաններուն կատարած ձեռնարկները, ապստամբութեան մը առաջքը առնելու համար. — Մարսի-լիացիները Բարիզ կը հասնին. Շան զէլիզէի մէջ հացկերոյթ եւ արիւնալի ընդհարում-ներ. — Դուքս Պրունսվիքի յայտարարագիրը. — Բարիզի մասնաճիւղերը կը պահանջեն որ թագաւորը գահընկէց ըլլայ. — Թագաւորը կը մերժէ փախչիլ. — Ժողովը չընդուներ Լաֆայէթը ամբաստանութեան տակ առնելու առաջարկը. — Ապստամբութեան պատ-րաստութիւններ. պալատին պաշտպանութեան համար միջոցներ. — Օգոստոս 10ի ընդ-վզումը. ապստամբները կը տիրեն Թիւիլըրիի պալատին, արիւնալից կռուէ մը ետք. թագաւորը Ժողովին կ'ապաստանի. թագաւորական իշխանութիւնը կը վերջանայ. ազգ. համագումար ժողով մը կը գումարուի. — Օգոստոս 10ի օրուան շարունակութիւնը եւ վերջաւորութիւնը :*

Այս հաշտութեան օրուան իրիկունն իսկ, Ժողովին ծանուցուեցաւ արդիւնքը՝ Բէդիոնի և Մանուէլի դէմ կատարուած դատական հետապնդման. վճռուած էր այս երկու պաշտօնատարները դադարեալ հռչակել։ Աւելի ուշ, նոյն ինքն Բէդիոնի բերնէն իմացուածին նայելով, հաւանականաբար ինքը կըրնար առաջքը առնել Յունիս 20ի դէպքին, քանի որ, աւելի ուշ, ուրիշ դէպքերու առաջքը առաւ։ Ճիշդը խօսելով, այդ միջոցին յայտնուած չէր այս պարագան, և, ասկէ զատ, զինքը կը մեղադրէին օրէնքին դէմ առնուած մէկ քանի քայլերու համար, ինչպէս, օրինակի համար, մեծ դանդաղութիւն ցոյց տուած էր կառավարական զանազան մարմիններուն հետ իր ունեցած յարաբերութիւններուն մէջ, և թոյլատրած էր որ Համայնքային խորհուրդը վարչութեան դէմ որոշում մը տայ, վճռելով որ խնդրարկուները ընդունուին ազգային պահակազօրաց շարքերուն մէջ։ Ուրեմն, վարչութեան վճիռը՝ Բէդիոնի պաշտօնանկութեան մասին, օրինաւոր և յանդուգն էր ; բայց՝ անքաղաքագիտական։ Առտուան հաշտութենէն յետոյ, անխոհեմութիւն չէ՞ր նոյն իրիկունն իսկ, պաշտօնէ դադրեցնել երկու պաշտօնատարներ, որոնք մեծ ժողովրդականութիւն կը վայելէին։

Ճիշդ է որ թագաւորը Ժողովին

*համանութիւնը կ'ուզէր առնել այս մասին, բայց ժողովը չի ծածկեց իր դժգոհութիւնը և վճիռը անոր վերադարձուց, որպէսզի ինքը արձակէ։*

*Ունկնդիրներու օթեակներէն կրկին սկսան լսելի ըլլալ սպառնական աղաղակները. բազմաթիւ խնդրամատոյցներ եկան պահանջել Բեդիօնը կամ մահ. իսկ երեսփոխան Կրանժընէօվ, որ անձնականապէս նախատինքի ենթարկուած էր, պահանջեց յարձակման հեղինակին դէմ ամբաստանագիր մը։ Եւ ահա այսպէս, արդէն մոռցուեցաւ հաշտութիւնը։*

*Պրիսօ, որուն կարգը եկած էր, խօսելու համար հանրային վտանգին վրայ, ժամանակ ուզեց իր ճառին արտայայտութիւնները մեղմացնելու համար, քանի որ հաշտութիւն գոյացած էր. այսուհանդերձ չկրցաւ ինքզինքը արգիլել՝ յիշեցնելէ արքունիքին վերագրուած դանդաղութեան և դանցառութեան բոլոր պարագաները. այնպէս որ, հակառակ արտաքնական համերաշխութեան, վերջ ի վերջոյ պահանջեց, որ պաշտօնապէս քննութեան առնուի դաշնակցութեան խնդիրը, և նախարարները ամբաստանուին, քանի որ Բրուսիոյ թշնամական ընթացքը այսքան ուշ իմաց տուած էին, և եօթը հոգիէ բաղկացած դաղտնի յանձնաժողով մը կազմուի, հասարակաց անդորրութեան վրայ հսկելու համար, տարագիրներուն ինչքը ծախել, ազգային պահակազօրաց կազմակերպութեան գործը փութացնել, և, վերջապէս, առանց յապաղման յայտարարել թէ հայրենիքը վտանգի մէջ է։*

*Միևնոյն ժամանակ իմացուեցաւ, նախկին ազնուական Տիւսայեանի դաւադրութիւնը. այս մարդը, մէկ քանի տարագիրներու գլուխն անցած, գրաւած էր Պաննի ամրոցը, Արտէշի գաւառին մէջ և կը սպառնար ամբողջ շրջակայքին։ Նախարարութիւնն ալ ժողովին առջև պարզեց տէրութեանց տրամադրութիւնները։ Աւստրիա, իրեն հետ քշելով Բրուսիան, զայն մղած էր յառաջ ընթանալ, ընդդէմ Ֆրանսայի։*

*Սակայն Ֆրէտէրիքի աշակերտները կը տրտնջային այս անքաղաքագիտական զինակցութեան դէմ։ Կայսրընտիր իշխանութիւնները, ամենքն ալ՝ մեր յայտնի կամ ծածուկ թշնամիներն էին։ Ռուսիա, առաջինը եղած էր յեղափոխութեան դէմ ինքզինքը յայտնող. արդէն համաձայն գտնուած էր Բիլնիցի դաշնագրութեան, Կիւսթավի ծրագիրները խրախուսած և տարագիրներուն օգնած էր. բոլոր այս բաները ըրած էր, խաբելու համար Բրուսիան և Աւստրիան, և այդ երկու տէրութիւնները գրգռելու համար Ֆրանսայի դէմ, մինչ ինք կը գործէր Բոլոնիոյ դէմ։ Այդ պահուն կը բանակցէր Պ. տը Նասոյի և Պ. տ'Էսթէրհազիի հետ, որոնք տարագիրներուն պետերն էին. սակայն, հակառակ իր առատ խոստումներուն, Ռուսիա անոնց տրամադրած էր երկյարկանի նաւ մը միայն, Բեդրսպուրկէն զանոնք ճամբելու համար։ Շուէտ անշարժ էր Կիւսթավի մահուընէն ի վեր, և մեր նաւերը կ'ընդունէր. Տանըմարքան կատարեալ չէզոքութիւն մը կը խոստանար. կրնային պատերազմի մէջ նկատել ինքզինքնին Թիւրէնի արքունիքին հետ։ Պապը իր չանթերը կը պատրաստէր. Վենետիկ չէզոք էր, բայց կը թուէր որ կ'ուզէ պաշտպանել Թրիէսթը, անոր ծովային զօրութենէն։ Սպանիա առանց ուղղակի մտնելու զինակցութեան մէջ, տրամադիր չէր թուեր սակայն ընտանեկան դաշինքը գործադրելու և Ֆրանսայի ընծայելու այն օգնութիւնը, զոր անկէ ընդունած էր։ Անգլիա չէզոքութեան յանձնառու կ'ըլլար և այդ բանին համար նոր ապահովութիւններ կու տար։ Միացեալ Նահանգները պիտի ուզէին մեզի օգնել իրենց բոլոր միջոցներով, բայց իրենց*

միջոցները ոչինչ էին, իրենց հետեւորութեան եւ ժողովուրդին ակարութեանը պատճառով։

Այս պատկերին հանդէպ, Ժողովը կ'ուզէր անմիջապէս Հայրենիքը վտանգի մէջ յայտարարել. սակայն, յայտարարութիւնը յետաձգուեցաւ մինչեւ որ հասնէր բոլոր միացեալ յանձնաժողովներու նոր տեղեկագիրը։

Յուլիս 11ին, այդ տեղեկագիրները լսելէ ետք, խոր լռութեան մէջ, Նախագահը արտասանեց հանդիսաւոր բանաձեւը. ՔԱՂԱՔԱՑԻՆԵ՛Ր, ՀԱՅՐԵՆԻՔԸ ՎՏԱՆԳԻ ՄԷՋ Է։

Այդ վայրկեանէն սկսեալ նիստերը մշտատեւ հռչակուեցան. Թնդանօթի հարուածներ, որոնք ամէն վայրկեան կը թնդային, ծանուցին այս մեծ տագնապը. բոլոր քաղաքապետութիւնները, բոլոր նահանգային եւ դատական մարմինները նիստ ունեցան անընդհատ. բոլոր ազգային պահակախումբերը շարժման մէջ մտան։ Ամփիթատրոններ բարձրացած էին հանրային հրապարակներու մէջտեղ եւ քաղաքապահ զօրաց սպաներ հոն կ'ընդունէին թմբուկներու վրայ կեցած սեղանի մը առջեւ, անունները անոնց՝ որոնք կ'ուզէին կամաւոր արձանագրուիլ. զինուորագրուողներուն թիւը մէկ օրուան մէջ մինչեւ 15,000ի բարձրացաւ։

Յուլիս 7ի հաշտութիւնը եւ երդումը որ անոր հետեւած էր, ինչպէս տեսանք, ո՛չ մէկ կասկած չէր ամոքած։ Միշտ կը խորհէին զգուշական միջոցներ ձեռք առնել պալատին ծրագիրներուն դէմ եւ թագաւորը գահընկէց ընելու կամ զայն հրաժարիլ ստիպելու գաղափարը կը ներկայանար բոլորին ալ մտքին, իբր միակ կարելի դարմանը այն չարիքներուն, որոնք կը սպառնային։ Վէրնիօ այդ գաղափարը միմիայն մատնանշած էր, եւ այն ալ վարկածային եղանակով մը. ուրիշներ, եւ մանաւանդ երեսփոխան Դօմէ, կ'ուզէին որ Վէրնիոյի ենթադրութիւնը գրական առաջարկութիւն մը նկատուի։ Ֆրանսայի ամէն կողմերէն հասած խնդրագիրներ եկան հանրային կարծիքի օգնութիւնը տալու այն յուսահատական ծրագրին զոր հայրենասէր երեսփոխաններ կազմեր էին։

Արդէն, Մարսիլիոյ քաղաքը սպառնալի խնդրագիր մը ղրկած էր, զոր կարդացին Յունիս 19ի Ժողովին մէջ. տակաւ վերը յիշած ենք։ Այն պահուն որ հայրենիքը վտանգի մէջ յայտարարուեցաւ, բազմաթիւ ուրիշ խնդրագիրներ ալ հասան։ Մէկը կ'առաջարկէր ամբաստանել Լաֆայէթը, վետօն ջնջել որոշ պարագաներու մէջ, թագաւորական գանձի գումարը զեղջել եւ Մանուէլն ու Բէդիոնը վերահաստատել իրենց քաղաքապետական պաշտօններուն մէջ։ Ուրիշ մը կը խնդրէր վետոյի ջնջումին հետ, նախարարաց նիստի արձանագրութեանց հրատարակումը։ Բայց Մարսիլիոյ քաղաքը, որ առաջին օրինակը տուած էր այս յանդուգն գործունէութեան, շուտով ծայրայեղութեան հասաւ. կոչ մը ըրաւ, որով կը հրաւիրէր Ժողովը՝ թագաւորութիւնը դադարեալ հռչակել տիրող շառաւիղին մէջ, եւ անոր տեղ դնել ընտրովի թագաւորութիւն մը եւ առանց վետոյի, այսինքն ճշմարիտ գործադիր իշխանութիւն մը, ինչպէս որ կայ հանրապետութեանց մէջ։ Այս գիրին ընթերցումին յառաջ բերած ապշութեան անմիջապէս յաջորդեց ունկնդիրներու ծափահարութիւնները եւ Ժողովին անդամներէն մէկուն զայն տպագրելու առաջարկը։ Սակայն, կոչը ղրկուեցաւ Տասներկուներու Յանձնաժողովին, եւ թերթուելու համար այն օրէնքին, որ անարժան կը յայտարարէր բոլոր այն ծրագիրները, որոնք Սահմանադրութիւնը կը փոխէին։

Ահ ու սարսափ կը տիրէր արքունիքին ինչպէս նաեւ հայրենասէր կուսակցութեան մէջ, որոնք հանգիստ չէին

մնալ այս յանդուգն խնդրագիրներուն համար: Թագաւորը կը կարծէր թէ իր անձին դէմ ոխ ունէին. կ'երեւակայէր որ Յունիս 20ը սպաննութեան անյաջող փորձ մըն էր, և անտարակոյս կը սխալէր, որովհետեւ այդ ոճիրին գործադրութենէն դիւրին բան չկար, եթէ անիկա ծրագրուած ըլլար իրօք: Թունաւորումէ մը վախնալով, ինքը և իր ընտանիքը կը ճաշէին Թագուհիին վըստահութիւնը վայելող տիկնոջ մը սենեակը, ուր ուրիշ սնունդ չէին տանիր, բայց միայն պալատին մէջ պատրաստուածը (*):

Որովհետեւ Դաշնակցութեան օրը կը մօտենար, Թագուհին պատրաստել տուած էր Թագաւորին համար կրծկալ մը, որ բազմաթիւ կերպասեայ աստառներէ կազմուած էր և կրնար դաշոյնի առաջին հարուածի մը դիմադրել: Սակայն, քանի ժամանակը կ'անցնէր և ժողովուրդին յանդգնութիւնը կ'աւելնար, առանց մարդասպանութեան ոև է փորձ անոր ունենալու, Թագաւորը կը սկսէր աւելի լաւ հասկնալ իր ենթարկուած վտանգներուն բնոյթը. կ'ընդնշմարէր արդէն որ դաշոյնի հարուածի մը վախը չէր որ կար իրեն համար, այլ դատաստանական դատապարտութեան մը. և Զարլս Ա.ի (*) վախճանը շարունակաբար կը հալածէր իր ցաւագին երեւակայութիւնը:

Արքունիքէն խստօրէն մերժուած էր թէեւ, բայց Լաֆայէթ միշտ վճռած էր Թագաւորը ազատել, այնպէս որ, անոր ներկայացնել տուաւ շատ յանդգնօրէն կազմուած փախուստի ծրագիր մը: Նախ և առաջ գրաւած էր Լիւքնէրը և ծերունի մարաջախտին թուլութենէն կորզած էր մինչեւ իսկ Բարիզի վրայ քալելու խոստում մը: Հետեւաբար, Լաֆայէթ կ'ուզէր որ Թագաւորը զինքը և Լիւքնէրը կանչէր, այն պատրուակաւ որ զիրենք կ'ուզէր ներկայ ընել հանդիսութեանց: Իրեն այնպէս կը թուէր որ երկու զօրավարներու ներկայութիւնը պէտք էր ազդէր ժողովուրդին վրայ և առաջքը առնէր բոլոր վտանգներուն, որոնց մասին վախ կար այդ օրուան մէջ: Լաֆայէթ կ'ուզէր որ հանդէսին հետեւեալ օրը Լուդովիկոս ԺԶ. հրապարակաւ Բարիզէն մեկ-

(*) Տիկին Քամբանի Յիշատակներուն մէջ կը գտնենք այս վախերուն և կասկածներուն մանրամասն պատմութիւնը: Տիկին Քամպան կը պատմէ որ Լաբորդի ոստիկանութիւնը 1791ի վերջերը իմացուց որ Թագաւորին ծառայող մարդերէն մէկը, որ խմորեղէններ կը պատրաստէր և նոր պաշտօնի մտած էր պալատին մէջ, կատաղի ժաքօպէն մը ըլլալով ըսած էր, թէ Ֆրանսայի մեծ բարիք մը ըրած կ'ըլլայ մէկը, եթէ Թագաւորին օրերը վերջացնէ: Թէեւ խոհանոցի պետերը կը հսկէին իր վրայ, բայց միշտ կը վախցուէր որ նուրբ թոյնով մը անիկա յաջողի իր նպատակին հասնելու: Այդ բանին առաջքը առնելու համար Տիկին Քամպան ինք անձամբ կը հայթայթէր Թագաւորական ընտանիքին սնունդը, բայց գաղտնապէս կ'ուտէին, և այնպէս մը կը ձեւացնէին, որ պալատին խոհանոցէն ծառայուածը կ'ուտեն: Այսպէսով, կը կարծէին թէ պիտի յաջողին կասկած չի ներշնչել իրենց վախերուն մասին, ինչ որ կրկնապէս վտանգաւոր կը նկատէին: Այս վիճակը տեւեց երեք կամ չորս ամիս, մինչեւ որ, պալատին ոստիկանութեան համոզումը այն եղաւ որ, այլ եւս վախնալիք բան չկար Թագաւորին կեանքին մասին, թէ յատակագիծը բոլորովին փոխուած էր. և այն հարուածները, զորս կ'ուզէին տալ, այնքան ուղղուած էին գահուն դէմ, որքան միապետին անձին դէմ:

(*) Թագաւոր Անգլիոյ, զոր գլխատեցին Անգլիացիք: Ծ. Թ.

նէր, այն պատրուակաւ որ Գօմբիէներ կ'երթայ իր ազատութիւնը ապացուցանելու Եւրոպայի աչքին։ Երբ ընդդիմութիւն ըլլար, միայն 50 անձնուէր ձիաւոր զինուոր կ'ուզէր, զայն Բարիզէն խլելու համար։ Գոմբիէնիէն ձիաւորներու պատրաստ գումարտակներ զայն պիտի առաջնորդէին ֆրանսական բանակին մէջ, ուր Լաֆայէթ իր պարկեշտութեանը վրայ կը յուսար նոր կարգ ու սարքերու պահպանման համար։ Վերջապէս, այն պարագային որ այս միջոցներէն ո՛չ մէկը յաջողէր, զօրավարը որոշած էր Բարիզի վրայ քալել իր բոլոր զօրքերով (*)։

Այս ծրագրին գործադրութիւնը Լուդովիկոս ԺԶ.ի կողմէ թերեւս մեծ յանդգնութիւն մը պահանջելուն համար, կամ Լաֆայէթի մասին թագուհիին զգացած զզուանքին հետեւանքով, որով անկէ չէր ուզեր Լաֆայէթէն ո և է աջակցութիւն ստանալ, թագաւորը անգամ մըն ալ մերժողական պատասխան տուաւ, և բաւական ցուրտ գիր մը ուղղել տուաւ անոր, ինչ որ ընաւ համապատասխան չէր զօրավարին յայտնած անձնուիրութեան։ Թագաւորը ինք իր ձեռքովը գրեց թէ «Պ. տը Լաֆայէթի արուեստը բաւական պատասխանն է, միշտ ծառայել իբր հովանոր մը խռովարարներուն դէմ, իր զօրավարի արհեստը լաւ ի գործ դնելով. այս կերպով, հետզհետէ ուժի պիտի շահի իր բանակին վստահութիւնը, և ի հարկին պիտի օգտուի անկէ, այն ձեւով որ ուզէ։ Պէտք է իրեն պատասխանել թէ ես անհունօրէն զգածուած եմ ինծի համար ցոյց տուած հոգածութենէն, միայն թէ իր առաջարկած փախուստի եղանակը գործնական չի թուիր ինծի...։»

Դաշնակցութեան օրը կը մօտենար. ժողովուրդը և ժողովը կ'ուզէին որ Բէթիօն անպատճառ ներկայ ըլլայ Յուլիս 14ի հանդիսադրութեանց։ Թագաւորը արդէն իսկ ուզած էր ժողովին վրայ թեցնել վարչութեան որոշումը վաւերացնելու կամ ընկենլու հոգը. բայց, ինչպէս տեսանք, ժողովն ալ զայն հարկադրած էր որ ինք անձամբ որոշում մը տայ. ժողովը ամէն օր կը ստիպէր թագաւորը որ վճռէ իր վճիռը, որպէս զի այս խնդիրը փակուած ըլլայ Յուլիս 14էն առաջ։ Յուլիս 12ին թագաւորը վաւերացուց պաշտօնանկութեան վճիռը։ Այս լուրը աւելցուց դժգոհութիւնը. հետեւեալ օրն իսկ ժողովը փութաց իր կարգին ցոյց տալ ինքզինքը և անմիջապէս կրկին պաշտօնի կոչեց Բէթիօնը. միայն թէ, յարգանքի ընկեր մը տալուին ունենալուն համար, յետաձգեց իր որոշումը Մանուէլի մասին, որ յունիս 20ի դէպքին օրը տեսնուած էր համաձայնաւոր պարտքը ամբոխին մէջ, առանց երբեք ի գործ դնելու իր իշխանութիւնը։

Վերջապէս, 1792 Յուլիս 14ը հասաւ. ժամանակները որքան փոխուած էին 1790 Յուլիս 14էն ի վեր։ Այլեւս չկային ո՛չ երեք հարիւր քահանաներու սպասարկութեամբը չքեղացած խորանը, ո՛չ այն ընդարձակ դաշտը, զոր կ'ողողէին 60,000 ազգային պահակազօրքեր, պերճօրէն զգեստաւորուած և կանոնաւորապէս կազմակերպուած. այլեւս չկային ո՛չ այն կողմնակի աստիճանաստախտերը, որոնց վրայ կը խռնուէր անհամար բազմութիւն մը, հաճոյքէ և ուրախութենէ գինովցած.

(*) Երբ Պ. տը Լաֆայէթ Օլմուցի մէջ փակուեցաւ, Պ. տը Լալի Թօլէնտալ, անոր ի նպաստ շատ պերճախօս նամակ մը գրեց Բրուսիոյ թագաւորին. այդ նամակին մէջ կը թուէր ամէն ինչ որ զօրավարը ըրած էր Լուդովիկոս ԺԶ.ը ազատելու համար, ու զայս ապացուցանող փաստեր կը յիշատակէր։ (Ծ. Թ. — Ատենցմէ մէկ քանին թէեւ հրատարակած է Թիէռ, բայց մենք զանց ըրինք թարգմանել, որովհետեւ մասնակի շահեկանութիւն մը միայն ունին։

վերջապէս, չկար նաեւ այն պատշգամը, ուրկէ նախարարները, արքայական ընտանիքը և ժողովը հանդիսատես եղած էին առաջին դաշնակցութեան։

Ամէն ինչ փոխուած էր. գիրար կ'ատէին, ինչպէս կ'ատեն կեղծ կերպով հաշտուողները, և բոլոր նշանները ցոյց կու տային թէ կռիւը պիտի պայթի. 83 վրաններ կանգնած էին 83 գաւառներու կողմէ. ամէն մէկուն քովը անկուած էր կաղամախի մը, որուն կատարին վրայ կը ծածանէին եռագոյն դրօշներ։ Շատ մեծ վրան մը յատկացուած էր ժողովի անդամներուն և թագաւորին, իսկ ուրիշ մըն ալ՝ Բարիզի վարչական մարմինին։ Այսպէս, ամբողջ Ֆրանսան կարծես թէ կը բանակէր թշնամիին դէմ յանդիման։ «Հայրենիքի խորանը» այլեւս ծայրը կոտրուած սիւնի մը վերածուած էր միայն, և դրուած էր դաշտին այն աստիճանաւորներուն, որոնք տակաւին կեցած էին Շան տը Մարսի հրապարակին վրայ, առաջին հանդիսութենէն ի վեր։ Մէկ կողմը կանգնած էր յուշարձան մը, սահմանագլուխին վրայ մեռնողներուն և մեռածներուն համար, իսկ միւս կողմը՝ հսկայ ծառ մը, որ կը կոչուէր «աւատականութեան ծառը.» անիկա կը բարձրանար ընդարձակ խարոյկի մը վրայէն, և իր ճիւղերուն վրայ դրուած էին թագեր, կապոյտ զարդանշաններ, խոյրեր, կարդինալներու գլխանոցներ, Ս. Պետրոսի բանալիները, սպիտակ աքիսէ վերարկուներ, աստուածաբաններու գդակներ, դատական թուղթերու տոպրակներ, ազնուականութեան տիտղոսներ, զինանշաններ, վահանակներ, եւն.։ Թագաւորը պիտի հրաւիրէին որ այս բոլոր բաները կրող ծառը կրակի տայ։

Երդումը պիտի արտասանուէր կէս օրին. Թագաւորը գացած էր զինուորական վարժարանը. հոն կը սպասէր ազգային Թափօրը, որ գացած էր դետեղել առաջին քարն այն սիւնին, զոր կ'ուզէին կանգնել նախկին Պաստիլի աւերակներուն վրայ։ Թագաւորը հանգարտ մեծվայելչութիւն մը ունէր. թագուհին կը ջանար շատ ակներեւ եղող իր վիշտին յաղթահարել. քոյրը և զաւակները շրջապատած էին զինքը. զինուորական վարժարանը գտնուած տեղերնին մէկ քանի յուզիչ տեսարաններ պարզուեցան, և ներկաներէն շատերը լացին։

Վերջապէս, Թափօրը եկաւ։ Մինչեւ այդ պահը, Շան տը Մարս գրեթէ պարապ մնացած էր. յանկարծ բազմութիւնը խուժեց այն պատշգամին տակէն, ուր կեցած էր Թագաւորը, զորանցք մը կատարեցին, խառն ի խուռն, կիներ, տղաքներ, զինով մարդիկ, գոչելով. «Կեցցէ՛ Բեդիոն. կա՛մ Բեդիոն կամ մահ։» Իրենց գլխարկներուն վրայ ալ գրած էին իրենց արտասանած բառերը։ Այդ ամբոխին մէջ էին նաեւ դաշնակիցներ, որոնք իրարու թեւ մտած՝ Պաստիլէն քանդակ մը կը տանէին, ու հետերնին ունէին մամուլ մը, զոր ատեն ատեն վար կը դնէին և հայրենասիրական երգեր տպելով կը ցրուէին։

Անոնց ետեւէն կու գային ազգային պահակազօրաց գունդերը, կանոնաւոր բանակի զինուորները, այս յարաշարժ ամբոխին մէջ դժուարաւ պահելով իրենց շարքերուն կարգ կանոնը։ Ամենէն վերջ կու գային կառավարական մարմինները և ժողովին անդամները։

Թագաւորը կառքէն վար իջաւ, և, իր շուրջը բոլորուած զինուորներով և Թափօրին հետ յառաջացաւ դէպի Հայրենիքի Խորանը։ Շան տը Մարսի մէջ շատ մեծ բազմութիւն մը կար, որով դանդաղօրէն միայն յառաջանալ կարելի կը դառնար. զօրքերուն թափած մեծ ջանքերուն շնորհիւ Թագաւորը հասաւ մինչեւ Խորանին աստիճաններուն առջեւ



Վ Ե Ր Ն Ի Օ

Թագուհին, կեցած այն պատշգամին վրայ, զոր չէր թողուցած, հեռադիտակով մը կը դիտէր այս տեսարանը։ Միջոց մը այնպէս թուեցաւ թէ շփոթութիւնը կ'աւելնայ խորանին չուրջ, և կարծուեցաւ որ թագաւորը աճապարանքով վար կ'իջնէ սանդուղներէն. այս տեսարանին առջև. Թագուհին աղաղակ մը արձակեց և իր չուրջիններուն սոսկում պատճառեց։

Սակայն և այնպէս, արարողութիւնը վերջացաւ առանց միջադէպի. հազիւ թէ երդումի արարողութիւնը աւարտած էր, փութացին գացին աւատականութեան ծառին մօտ։ Կ'ուզէին հոն տանիլ թագաւորն ալ, որպէս զի կրակի տայ. բայց անիկա փախուստ տուաւ, ու յարմար պատասխանը տալով թէ այլևս աւատականութիւն չէ մնացած։ Յետոյ չարունակեց իր գնացքը՝ դէպ ի զինուորական վարժարանը. զինուորները, զայն ազատած՝ ըլլալնուն համար ուրախ, քանիցս գոչեցին՝ կեցցէ թագաւորը։ Ամբոխը, որ մինչև խանդա-

վերջապէս, չկար նաեւ այն պատշգամը, ուրկէ նախարարները, արքայական ընտանիքը և ժողովը հանդիսատես եղած էին առաջին դաշնակցութեան։

Ամէն ինչ փոխուած էր. զիրար կ՚ատէին, ինչպէս կ՚ատեն կեղծ կերպով հաշտուողները, և բոլոր նշանները ցոյց կու տային թէ կռիւը ղլխի պայթի. 83 դրօշներ կանգնած էին 83 գաւառներու կողմէ. ամէն մէկուն քովը անկուած էր կաղամախի մը, որուն կատարին վրայ կը ծածանէին եռագոյն դրօշներ։ Շատ մեծ դրան մը յատկացուած էր ժողովի անդամներուն և թագաւորին, իսկ ուրիշ մըն ալ՝ Բարիզի վարչական մարմինին։ Այսպէս, ամբողջ Ֆրանսան կարծես թէ կը բանակէր թշնամիին դէմ յանդիման։ «Հայրենիքի խորանը» այլեւս ծայր կտրուած սիւնի մը վերածուած էր միայն, և դրուած էր դագաթն այն աստիճանաստախտերուն, որոնք տակաւին կեցած էին Շան տը Մարսի հրապարակին վրայ, առաջին հանդիսութիւններէն ի վեր։ Մէկ կողմը կանգնած էր յուշարձան մը, սահմանադրութեան վրայ մեռնողներուն և մեռածներուն համար, իսկ միւս կողմը՝ հսկայ ծառ մը, որ կը կոչուէր «աւատականութեան ծառը.» անիկա կը բարձրանար ընդարձակ խարոյկի մը վրայէն, և իր ճիւղերուն վրայ դրուած էին թագեր, կապոյտ զարդանշաններ, խոյրեր, կարդինալներու գլխանոցներ, Ս. Պետրոսի բանալիները, ազնուակ աքիսէ վերարկուներ, աստուածաբաններու գդակներ, դատական թուղթերու տոպրակներ, ազնուականութեան տիտղոսներ, զինանշաններ, վահանակներ, ևն.։ Թագաւորը պիտի հրաւիրէին որ այս բոլոր բաները կրող ծառը կրակի տայ։

Երդումը պիտի արտասանուէր կէս օրին. թագաւորը գացած էր զինուորական վարժարանը. հոն կը սպասէր ազգային թափօրը, որ գացած էր զետեղել առաջին քարն այն սիւնին, զոր կ՚ուզէին կանգնել նախկին Պաստիլի աւերակներուն վրայ։ Թագաւորը հանդարտ մեծվայելչութիւն մը ունէր. թագուհին կը ջանար շատ ակներեւ եղող իր վիշտին յաղթահարել. քոյրը և զաւակները շրջապատած էին զինքը. զինուորական վարժարանը գտնուած տաներնին մէկ քանի յուզիչ տեսարաններ պարզուեցան, և ներկաներէն շատերը լացին։

Վերջապէս, թափօրը ելաւ։ Մինչեւ այդ պահը, Շան տը Մարս գրեթէ պարապ մնացած էր. յանկարծ բազմութիւնը խուժեց. այն պատշգամին տակէն, ուր կեցած էր թագաւորը, զօրանցք մը կատարեցին, խառն ի խուռն, կիներ, տղաքներ, գինով մարդիկ, գոչելով. «Կեցցէ՛ Բեդիոն. կամ Բեդիոն կամ մահ։» Իրենց գլխարկներուն վրայ ալ գրած էին իրենց արտասանած բառերը։ Այդ ամբոխին մէջ էին նաեւ դաշնակիցներ, որոնք իրարու թեւ մտած՝ Պաստիլէն քանդակ մը կը տանէին, ու հետերնին ունէին մամուլ մը, զոր տեղն տեղն վար կը դնէին և հայրենասիրական երգեր տպելով կը ցրուէին։

Անոնց ետեւէն կու գային ազգային պահակազօրաց գունդերը, կանոնաւոր բանակի զինուորները, այս յառաջարդ ամբոխին մէջ դժուարաւ պահելով իրենց շարքերուն կարգ. կանոնը։ Ամենէն վերջ կու գային կառավարական մարմինները և ժողովին անդամները։

Թագաւորը կառքէն վար իջաւ, և, իր շուրջը բոլորուած զինուորներով և թափօրին հետ յառաջացաւ դէպի Հայրենիքի Խորանը։ Շան տը Մարսի մէջ շատ մեծ բազմութիւն մը կար, որով դանդաղօրէն միայն յառաջանալ կարելի կը դառնար. զօրքերուն թափած մեծջանքերուն շնորհիւ թագաւորը հասաւ մինչեւ Խորանին աստիճաններուն առջեւ



ՎԵՐՆԻՕ

Թագուհին, կեցած այն պատշգամին վրայ, զոր չէր թողուցած, հեռադիտակով մը կը դիտէր այս տեսարանը։ Միջոց մը այնպէս թուեցաւ թէ չփոթութիւնը կ'աւելնայ խորանին շուրջ, և կարծուեցաւ որ թագաւորը անապարանքով վար կ'իջնէ սանդուղներէն. այս տեսարանին առջև թագուհին աղաղակ մը արձակեց և իր շուրջիններուն սարսուռ պատճառեց։

Սակայն և այնպէս, արարողութիւնը վերջացաւ առանց միջադէպի. հազիւ թէ նշմարելի արարողութիւնը աւարտած էր. փութացին զայն ապահովութեան ձեռքին մէջ։ Կ'ուզէին հոն առնել թագաւորն ալ, որպէս զի կրակի տակ. բայց անիկա փախուստ, ու քայլերը արագացուցած [illegible] թէ այլևս [illegible] մնացած։ Ձեռքը շարունակեց իր [illegible] քը՝ դէպի դիմադրական [illegible] դիմադրիները. զայն [illegible] համար ալ գալու, զինուոր [illegible] բազմաց՝ Ամբոխը որ [illegible]

վառուելու պէտք կը զգայ, կրկնեց այս աղաղակը, և այնքան պատրաստակամութեամբ պատուեց Թագաւորը, որքան, քիչ ժամանակ առաջ, փութացած էր նախատելու զայն։

Տարաբաղդ Լուդովիկոս ԺԶ. քանի մը ժամ ալ թուեցաւ թէ կը սիրուի. Ժողովուրդը և ինքն ալ այդպէս կարծեցին վայրկեան մը. բայց պատրանքներն իսկ դիւրին չէին, և արդէն սկըսած էին այլ ևս չկարենալ խաբուիլ։ Թագաւորը պալատ մտաւ, գոհունակ որ կրցաւ ազատիլ այն վտանգներէն, զորս շատ մեծ կը կարծէր, բայց նորէն շատ վրդոված էր այն վտանգներուն մասին, զորս կը նախատեսէր ապագային համար։

Սահմանադրախմբէն ամէն օր հասնող լուրերը կ'աւելցնէին վախերը և գրգռութիւնը. Հայրենիքը վտանգի մէջ է յայտարարութիւնը ամբողջ Ֆրանսան շարժման մէջ դրած էր, և խել մը դաշնակիցներու մեկնումին պատճառ եղած էր։ Անոնք, դաշնակցութեան օրը, Բարիզի մէջ միայն 2000 հոգի էին. բայց անդադար կը հասնէին և իրենց Բարիզ գալու եղանակը կ'արդարացնէր թէ՛ այն յոյսերը և թէ այն երկիւղները զորս զգացած էին իրենց՝ մայրաքաղաքին մէջ ներկայութեան մասին։

Բոլորն ալ կամաւոր արձանագրուած, անոնք կը բաղկանային Ֆրանսայի Ակումբներուն մէջ գտնուած ամենէն խելայեղ տարրերէն. Ժողովը անոնց իւրաքանչիւրին յատկացուց օրական 30 մէթալիք և ժողովասրահի օթեակները միմիայն անոնց վերապահեց։ Շատ չանցած, իրենց աղաղակներով և ծափահարութիւնով սկսան օրէնք մը շինել։ Կապուած ըլլալով Ժաքոպէններուն, և հաւաքուելով ակումբի մը մէջ, որ մէկ քանի օրուան մէջ բոլոր միւս ակումբները գերազանցեց իր բուռն հանգամանքովը, անոնք պատրաստ էին առաջին նշանին իսկ ապըստամբելու։ Անոնք այսպէս ըլլալը յայտարարեցին արդէն Ժողովին, մասնաւոր ուղերձով մը, և ըսին թէ Բարիզէն չպիտի մեկնին, մինչև որ ներքին թշնամիները չփճացուին։ Եւ ահա այսպէս, Բարիզի մէջ ապստամբական բանակ մը հաւաքելու ծրագիրը բոլորովին իրականացած էր, հակառակ պալատին ընդդիմութեանը։

Այս պարագային վրայ ուրիշներ ալ աւելցան։ Ֆրանսական պահակազօրաց նախկին զինուորները զօրագունդերուն մէջ բաժնուած էին. Ժողովը հրամայեց որ անոնք հաւաքուին և ոստիկան-զինուորաց գունդ մը կազմեն. անոնց տրամադրութիւնները կասկածի տակ չէին կրնար ըլլալ, ըստ որում յեղափոխութիւնը անոնք սկսած էին։ Ի զուր առարկողներ եղան թէ այս զինուորները, գրեթէ ամենքն ալ ենթասպաներ ըլլալով, բանակին գլխաւոր ոյժը կը ձևացնէին։ Ժողովը բան մը մտիկ ընել չուզեց, որովհետև չա՛տ աւելի կը սոսկար ներքին թշնամիէն, քան թէ արտաքինէն։ Ինքզինքին համար ոյժ մը գոյացնելէ ետք, հարկ էր պալատին ոյժերն ալ տկարացնել, ահա՛ այս նպատակով, Ժողովը հրամայեց որ բոլոր զօրագունդերը հեռացուին։ Մինչև այդ րոպէն, Սահմանադրութեան համաձայն շարժած կ'ըլլար, բայց, զանոնք հեռացնելը բաւական չի սեպելով, զանոնք ստիպեց որ սահմանագլուխին վրայ երթան. ու ահա ա՛յս հրամանովը, Թագաւորին վերաբերող իրաւունք մը բռնաբարած եղաւ։

Այս հրամանին նպատակն էր մասնաւորաբար Զուիցերիացի զինուորները հեռացնել, որովհետև անոնց հաւատարմութիւնը՝ հանդէպ Թագաւորին՝ կասկածի տակ չէր։ Այս ձեռնարկին դէմ դնելու համար, դահլիճը գրգռեց անոնց հրամանատարը՝ Պ. տ'Աֆրին, որ իր առանձնաշնորհումներուն վրայ

յենլով մերժեց Թարխըլէն հեռանալ. Ժողովը այնպէս ձեւացուց թէ անոր մէջ բերած նկատումները պիտի քննէ, բայց միեւնոյն ժամանակ հրամայեց որ առժամապէս մեկնին երկու ղուբերնական վաշտեր։

Իրաւ է որ Թագաւորը իր վէթօն ունէր ձեռք առնուած այս միջոցներուն դիմադրելու համար, բայց ամէն ազդեցութիւն կորսնցուցած էր և այլ եւս չէր գործածեր իր առանձնաշնորհումը. Ժողովն ալ մինչև չէր կրնար դիմադրել իր անդամներէն ոմանց ըրած առաջարկութեանց, որոնց մինչև նեցուկ կ'ըլլային օթեակներէն եկած ծափահարութիւնները։

Ժողովը երբեք չէր գլանար չափաւորութեան կողմը հակելու երբ ատիկա կարելի էր. և երբ մէկ կողմէն անիկա կը գիջանէր ամենէն ապստամբական միջոցներուն՝ կը տեսնէին որ միւս կողմէ կը գնահատէր և կ'ընդունէր ամենէն չափաւոր խնդրագիրները։

Ձեռք առնուած միջոցները, խնդրագիրներ, այն լեզուն, զոր կը գործածէին խօսակցութեանց մէջ, մտաւոր յեղափոխութիւն մը կը ծանուցանէին։ Ժիրոնտէնները այդ բանը կը նախատեսէին և անոր կը ցանկային, բայց պայծառօրէն չէին որոշեր միջոցները, և հետեւանքին նկատմամբ վախ ունէին։ Իրենցմէ վար եղողները անոնց անգործութենէն կը գանգատէին, զիրենք կ'ամբաստանէին իբր թոյլ և անկարող։ Ակումբներու և մասնաճիւղերու բոլոր պետերը, ապարդիւն պերճախօսութենէ մը յոգնած, մեծ աղմուկով կը պահանջէին գործօն և եզական ուղղութիւն մը, որպէս զի ժողովրդային ջանքերը անպտուղ չի մնան։ Ժաքօպէններու ակումբին մէջ սրահ մը կար թըղթակցութեանց աշխատութիւններուն համար։ Հոն հաստատած էին դաշնակիցներու կեդրոնական յանձնաժողով մը, խորհրդակցելու և համաձայնելու համար։ Որպէս զի որոշումները աւելի ղաղտնի և աւելի կորովի ըլլան, այս յանձնաժողովը վերածեցին հինգ անդամի և անիկա իրենց մէջ առացաւ ապստամբական Յանձնաժողովի անունը։ Այս հինգ անդամները կը կոչուէին Վօժուա՝ եպիսկոպոսական փոխանորդ, Տըպէսէ՝ Տրօմ քաղաքէն, Կիյեօմ՝ Քանի մէջ ուսուցիչ, Սիմօն՝ Սթրազպուրկի մէջ օրագրող, Կալիսօ, Լանկրը քաղաքէն։ Քիչ ատենէն ասոնց վրայ աւելցուցին Քառա, Կօրսա, Ֆուրնիէ Ամերիկացին, Վուէստէրման, Քինլին Սթրազպուրկցի, Սանդէռ, Ալեքսանտր՝ Ֆօպուռ Սէն-Մարսօի հրամանատարը, Բոլոնիացի մը՝ Լազուսքի անունով, որ Սէն Մարսոյի զօրաբաժնին թնդանօթաձիգներու հարիւրապետն էր, նախկին սահմանադիր մը՝ Անդուան, Մէց քաղաքէն, երկու ընտրող՝ Լակրէյլի և Կարէն։

Յետոյ ասոնց միացան և յանձնաժողովին մէջ մեծ ազդեցութիւն բանեցուցին Մանուէլ, Քամիյլ Տէմուլէն և Տանդոն(*)։

---

(*) Օգոստոս 10ի դէպքերու մասին կը գտնենք հետեւեալ մանրամասնութիւնները «Քառա» ստորագրութեամբ Անեալ Բոլիտիք թերթի նոյ. 30ի թիւին մէջ. —

« . . . Այս վարչութեան առաջին նիստը տեղի ունեցաւ պզտիկ գինետան մը մէջ Օ Սօլէյլ տ'Օր անունով, որ կը գտնուէր Սէնդ-Անդուան փողոցին մէջ Պասթիլի մօտ, յուլիս 26 հինգշաբթիէն ուրբաթի գիշերը, Պասթիլի վայրին վրայ դաշնակիցներու ի պատիւ տրուած քաղաքացիական հանդէսէն ետքը։ Երբ կէս գիշերէն ետքը ժամը 2ին սրճարանէն դուրս կ'ելլէինք, հայրենասէր Կօրսան երեւցաւ մեզի տանելու համար Ազատութեան Սիւնին մօտ, Պասթիլի վայրը, հոն մեռնելու հայրենիքին հա-

Համաձայնեցան Պարպարուին հետ, որ գործակցութիւնը խոստացաւ իր Մարսիլիացիներուն, որոնց ժամանումին անհամբերութեամբ կը սպասուէր։ Բէդիոն քաղաքապետին հետ հաղորդակցութեան մէջ մտան և անկէ խոս-

---

մար՝ եթէ հարկ ըլլար։ Այս Սոլէյլ տ'Օռի գինետունին մէջ է որ Ձուրնիէ Ամերիկացին մեզի բերաւ կարմիր դրօշակը, որուն գաղափարը և վրայի սա բառերը ես տուած էի. գերիշխան ժողովուրդին պատերազմական օրէնքը՝ գործադիր իշխանութեան ըմբոստութեան դէմ: Նաև այս նոյն գինետան մէջ էր որ հինգ հարիւր օրինակ բերի այն ծանուցումէն ուր այս բառերը գրուած էին. Անոնք որ գնդակ արձակեն ժողովուրդին շարքերուն վրայ՝ անմիջապէս պիտի մեռցուին: Այս ծանուցումը, որ տպուած էր Պիւխոն դրավաճառին խանութը, բերուած էր Սանդէռին, ուրկէ գացի առի կէս գիշերին։ Քաղաքապետին խոհեմութեան հետեւանքով այս անգամ մեր ծրագիրը ջուրը ինկաւ. անիկա կ'երեւայ թէ զգաց այդ պահուն ի վիճակի չըլլալնիս. և վարչութեան երկրորդ գործօն նիստը չհաւաքուեցաւ օգոստոս 4ին։

« Այս նիստին ներկայ էին գրեթէ նոյն անձերը, որոնցմէ զատ կար նաև Քամիյ Տէմուլէն։ Այս նիստը տեղի ունեցաւ Պուլըվառին վրայ Քատրան Պլէօի մէջ, և իրիկուան ժամը 8ին ատեններ փոխադրուեցաւ Անդուանի՝ նախկին սահմանադիրին սենեակը, որ կը գտնուէր Սէնդ-Օնորէ փողոցը Ասոմբսիոն եկեղեցիին դիմաց և ճիշդ այն տան մէջ ուր Ռոպէսփիէռ կը բնակէր։ Ռոպէսփիէռի տանտիրուհին այնքան սարսափեցաւ այս խորհրդակցութիւններէն որ ժամը 11ին ժամանակները եկաւ և հարցուց Անդուանին որ արդեօք Ռոպէսփիէռը մեզմէն՝ տալ կ'ուզէր։ «Եթէ մէկը պիտի մեռցուի, բաւ Անդուան, անտարակոյս մենք պիտի ըլլանք. խնդիրը Ռոպէսփիէռին վրայ չէ, թող պառկի : »

« Այս երկրորդ գործօն նիստի միջոցին էր որ իմ ձեռքովս գծեցի ապըստամբութեան բոլոր յատակագիծը, շարքերուն ընթացքը և պալատին վրայ յարձակումը։ Սիմօն ընդօրինակեց այս յատակագիծը և կէս գիշերին դէմ զայն ղրկեցինք Սանդէռին և Ալեքսանդրին. բայց երկրորդ անգամ մըն ալ մեր ծրագիրը չիրականացաւ, որովհետև Ալեքսանդր և Սանդէռ դեռ բաւական պատրաստուած չէին և ուզէին սպասել թագաւորը գահընկէց ընելու վճարանութեան՝ որ յետաձգուած էր օգոստոս 10ին։

« Վերջապէս այս վարչութեան երրորդ գործօն նիստը տեղի ունեցաւ օգոստոս 9էն 10ի գիշերը, այն պահուն երբ ահազանգը հնչեց, և երեք զանազան տեղերու մէջ՝ այսինքն Ձուրնիէ Ամերիկացին քանի մը ընկերներու հետ կը գտնուէր Ֆօպուռ Սէն-Մարսօ, Վուէսդէրման, Սանդէռ և երկու ուրիշներ՝ Ֆօպուռ Սէնդ-Անդուան. Քարէն, Սթրազպուրկցի օրադրող և ես՝ Մարսիլիացիներու զօրանոցին մէջ՝ և նոյն իսկ հրամանատարին սենեակը, ուր բոլոր վաչար մեզ տեսաւ . . . ։

« Այս նկարագրութեան մէջ, որ ամենէն ճշգրիտ իրականութիւնը կը ներկայացնէ և որուն ամենադոյզն մանրամասնութիւններն իսկ կասկածի ենթարկող չկրնար գտնուիլ, կը տեսնուի որ խնդիրը ոչ Մառային վրայ է, ոչ Ռոպէսփիէռին և ոչ ալ այն շատ մը ուրիշ մարդիկներուն, որոնք այս գործին մէջ իբր դերակատար կ'ուզեն ներկայանալ. և թէ անոնք որ օգոստոս 10ի հռչակաւոր օրուան փառքը կրնան ուղղակի ինքզինքնուն վերագրել, անոնք են որոնց անունը տուի և որոնք դաշնակիցներու գաղտնի վարչութիւնը կազմած էին։ »

 

[illegible] տալէն որ [illegible]ութիւնը չպիտի արգիլէր։ Փոխարէն՝ խառնացան իր բնակարանը պահպանել և զինքը հոն արգելքի տակ դնել, որպէս զի եթէ այս ձեռնարկը չյաջողէր, իր անդորրութիւնը բանի եղածի ձեւը ունենար։ Վերջնականապէս և որոշուած ծրագիրը այն էր որ զինուած պալատ երթային և Թագաւորը գահընկէց ընէին։ Բայց պէտք էր ժողովուրդը շարժման մէջ դնել. և այդ բանը յաջողցնելու համար արտակարգ պարագայ մը անհրաժեշտ էր։ Կը ջանային այդ պարագան յառաջ բերել և այդ մասին կը խօսէին ժաքօպէններու ակումբին մէջ։

Երեսփոխան Շապօ իր խառնուածքին հրայրքովը կը ծանրանար մեծ որոշումի մը անհրաժեշտութեանը վրայ՝ և կ'ըսէր որ զայն յառաջ բերելու համար ցանկալի էր որ արքունիքը մահափորձ մը կատարէր երեսփոխանի մը վրայ։ Կրանժընէօվ երեսփոխան ինքն՛ալ մտիկ կ'ընէր այս խօսքը. անփկա միջակ միտքով բայց անձնուէր նկարագրով մարդ մըն էր։ Շապօն մէկ կողմ քաշեց. «Իրաւունք ունիս, ըսաւ անոր, պէտք է որ երեսփոխան մը մեռնի. բայց արքունիքը այնքան ճարպիկ է, որ մեզի այդքան դիւրեցիկ առիթ մը չի հայթայթեր։ Պէտք է արքունիքին ըներքը ընել. զիս սպաննել պալատին շրջակայքը։ Գաղտնիքը պահեցէք և միջոցները պատրաստեցէք։»

Շապօ, խանդավառուած, անոր կ'առաջարկէ բազդակից ըլլալ։ Կրանժընէօվ կ'ընդունի, ըսելով անոր թէ երկու սպաննուած աւելի ազդեցութիւն պիտի ընեն քան թէ մէկը։ Կը համաձայնին օրուան, ժամուան վրայ և այն միջոցներուն՝ որով ինքզինքնին պիտի սպաննեն և ոչ թէ խեղանդամեն, կ'ըսեն, և իրարմէ կը բաժնուին որոշած ըլլալով ինքզինքնին զոհել հասարակաց դատին յաջողութեանը համար։ Կրանժընէօվ, խօսքը պահելու վճռած ըլլալով, կարգի կը դնէ իր ընտանեկան գործերը, և երեկոյեան ժամը տասն ու կէսին կ'երթայ ժամադրութեան տեղը. Շապօ հոն չէր։ Կը սպասէ։ Որովհետեւ չէր գար, Շապօ կ'երեւակայէ որ անիկա որոշումը փոխած է, բայց կը յուսայ որ գոնէ ծրագիրը պիտի գործադրուի իր անձին վրայ։ Բազմաթիւ անգամներ կ'երթայ կու գայ, սպասելով մահացու հարուածին. բայց կը ստիպուի ողջ առողջ տուն վերադառնալ առանց կարենալու ինքզինքը զոհել զրպարտութեան մը համար։

Ուրեմն անհամբերութեամբ կը սպասէին այն առիթին որ չէր ներկայանար և փոխադարձաբար զիրար կ'ամբաստանէին թէ ուժ, ճարպիկութիւն և միութեան զգացում չունին։ Ժիրոնտէն երեսփոխանները, Բէդիօն քաղաքապետը, վերջապէս բոլոր յայտնի մարդիկը, որոնք ըլլա՛յ բեմերէն, ըլլա՛յ իրենց պաշտօններուն մէջ, ստիպուած էին օրէնքի լեզուն գործածել, միշտ աւելի մեկուսի կը կենային և կը դատապարտէին այս շարունակական խռովութիւնները, որոնք զիրենք կը վտանգէին առանց արդիւնք մը յառաջ բերելու։

Անոնք կը մեղադրէին ստորադաս խռովարարները թէ մանուկի և անօգուտ շարժումներու մէջ իրենց ուժերը կը սպառէին և թէ ժողովուրդը վտանգի կ'ենթարկէին առանց վճռական դէպք մը յառաջ բերելու։ Անոնք ալ, ընդհակառակը, որոնք իրենց շրջանակներուն մէջ կրցածնին կ'ընէին, երեսփոխաններուն և քաղաքապետ Բէդիօնի հրապարակային ճառերը կը քննադատէին և զանոնք կ'ամբաստանէին որ ժողովուրդին կորովը կը կասեցնեն։ Այսպէս, երեսփոխանները կը մեղադրէին ամբոխը կազմակերպուած չըլլալուն համար և աս վերջինն ալ կը գանգատէր երեսփոխաններէն, զիրենք կազմակերպած չըլլալուն համար։ Ամենէն աւելի պետ մը ունենալու անհրաժեշտութիւնը կը զգային։ Մարդ մը պէտք է. ընդհանուր աղաղակը այս էր. բայց ո՞րը. և-

րեսփոխաններուն մէջ ոչ ոք կը տեսնէին։ Անոնք ամէնքը աւելի հռետորներ էին, քան թէ գործադիրներ. և արդէն իրենց բարձրութիւնն ու կենցաղը զիրենք շատ կը հեռացնէր ամբոխէն, որուն վրայ պէտք էր ազդեցութիւն գործել։ Նոյն բանն էր Ռօլանի և Սէրվանի համար, բոլոր այս մարդոց, որոնց քաջութիւնը կասկածելի չէր, բայց անոնց դիրքը ժողովուրդէն շատ վեր կը դնէր զիրենք։ Պէթիոն իր պաշտօնին բերումով, պիտի կրնար դիւրաւ հաղորդակցութեան մէջ ըլլալ ամբոխին հետ. բայց Պէթիոն ցուրտ և պաղարիւն էր և աւելի կարող էր մտածելու քան գործելու։ Իր դրութիւնն էր պզտիկ խռովութիւնները զսպել ի նպաստ մեծական ապստամբութեան մը. բայց այդ դրութեան ի հարկին միայն հետևելով, ամէն օրուան շարժումներուն կը հակառակէր և ամէն համակրանք կը կորսնցնէր խռովարարներուն քով, զորս կ'անդամալուծէր առանց անոնց տիրապետելու։ Անոնց պէտք էր պետ մը, որ դեռ ամբոխին գիրկէն դուրս ելած չըլլալով անէն ազդեցութիւն կորսնցուցած չըլլար և որ բնութենէն ստացած ըլլար խանդավառելու հանճարը։

Ակումբներու, մասնաճիւղերու և յեղափոխական թերթերու մէջ ընդարձակ ասպարէզ մը բացուած էր։ Շատ մը մարդիկ հոն հանրածանօթ դարձած էին, բայց ոչ մէկը դեռ ստացած չէր նշանակելի գերազանցութիւն մը։ Քամիյ Տէմուլէն հռչակաւոր եղած էր իր գրգռուած երեւակայութեամբ, անպատկառութեամբ, յանդգնութեամբ և այն շուտափութութեամբ որով կը յարձակէր բոլոր անոնց վրայ, որոնք յեղափոխական ասպարէզին մէջ դանդաղիլ կը թուէին։ Ամենէն առջին դատախազներէն ճանչցուած էր. բայց ո՛չ ժողովրդային առաջնորդի մը թափերը ունէր, և ո՛չ ալ կուսակցութեան մը պետի գործունէութիւնն ու խանդավառող ուժը։

Ուրիշ օրագրող մը ահարկու հռչակի մը տիրացած էր. Մառան էր անիկա, ժողովուրդի բարեկամ անունին տակ ծանուցուած և որ դարձած էր սպանութեան ի նպաստ ըրած թելադրութիւններովը տեսլումի առարկայ մը՝ բոլոր այն մարդոց համար, որոնք դեռ քիչ մը չափաւորութիւն պահած էին։ Մառա ծնած էր Նէօշաթէլի մէջ և հետևած էր բնագիտական և բժշկական ուսումներու. յանդգնութեամբ յարձակած էր շատ հաստատուն դրութեանց վրայ և, եթէ այսպէս կարելի է ըսել, մտային ջղաձգական գործունէութեան մը ապացոյցը տուած էր։ Կոմս տ'Արդուայի ախոռներուն մէջ բժիշկ էր։ Երբ յեղափոխութիւնը սկսաւ, առանց վարանելու նետուեցաւ այս նոր ասպարէզին մէջ և շուտով ինքզինքը նշանաւոր դարձուց իր մասնաճիւղին մէջ։ Անոր հասակը միջակ էր, գլուխը շատ խոշոր, դիմագծերը ցայտուն, գոյնը տժգոյն, աչքերը բոցեղ և իր անձը անխնամ։ Անիկա միայն ծիծաղելի կամ խորշելի գուցէ երեւար, բայց յանկարծ այս արտակարգ մարմինէն լսեցին արտառոց և ահռելի սկզբունքներ ելլելը, որոնք կ'արտասանուէին կարծր շեշտով մը և լրբենի ընտանութեամբ մը։ Պէտք է, կ'ըսէր, քանի մը հազար գլուխներ ջախջախել և ջնջել բոլոր ազնուականները, որոնք ազատութիւնը անկարելի կը դարձնեն։ Զարհուրանքը և արհամարհանքը դիզուեցան իր շուրջը։ Զինքը կը հրէին, ոտքերուն վրայ կը կոխէին և իր ողորմելի անձին հետ կը խաղային. բայց վարժուած ըլլալով գիտական պայքարներու և ամենէն արտառոց հաստատումներուն, սորված էր արհամարհել զինքը արհամարհողները և զանոնք կը մեղքնար իբր անկարող զինքը հասկնալու։ Այն ատենէն՝ իր թերթին մէջ ներկայացուց այն ահռելի վարդապետութիւնը, որով տոգորուած էր։ Ստորերկրեայ կեանքը՝ որուն դա-

տապարուած էր դատական հետապնդումէ խուսափելու համար, գերադրգռած էր իր խառնուածքը և հանրային զարհուրանքի արտայայտութիւնները զինքը ա՛լ աւելի կը գրգռէին։ Մեր քաղաքավար բարքերը իրեն աչքին մոլութիւններ էին միայն, որոնք արգելք կ՚ըլլային հանրապետական հաւասարութեան. և արգելքներու համար իր ունեցած բուռն ատելութեամբը, փրկութեան մէկ միջոց մը կը տեսնէր միայն, բնաջնջումը։ Ֆիզիքական մարդուն վրայ ըրած իր ուսումնասիրութիւնները և փորձերը զինքը վարժեցուցած ըլլալու էին ցաւի տեսքին յաղթահարելու, և ոչ մէկ զգայնականութեան բնազդ չկեցնելով իր եռանդագին մտածումը, անիկա ուղղակի կ՚երթար իր նպատակին՝ արիւնի ճամբաներէն։ Բանդումով գործելու այս նոյն գաղափարը տակաւ առ տակաւ դասաւորուած էր իր գլխուն մէջ։ Բռնապետ մը կ՚ուզէր, ոչ թէ ամենակարողութեան հաճոյքը անոր հայթայթելու համար, այլ զայն ստիպելու որ ընկերութիւնը մաքրագործելու սարսափելի բեռը ստանձնէ։

Այս բռնապետը չղթայ մը ունենալու էր ոտքին, միշտ ժողովուրդին ձեռքին տակ ըլլալու համար. պէտք էր որ անոր միակ կարողութիւն մը թողուած ըլլար, այն է՝ զոհերը մատնանշել և իբր միակ պատիժ մահ հրամայել։ Մարատ միայն այս դատապարտութիւնը կ՚ընդունէր, որովհետև իր նպատակը պատժել չէր, այլ արգելքը մէջտեղէն վերցնել։

Տեսնելով որ ամենուրեք ազնուականները ազատութեան դէմ կը դաւադրէին, ասդիէն անդիէն կը քաղէր բոլոր այն դէպքերը որոնք իր կիրքը կը յագեցնէին. կատաղութեամբ կը մատնանշէր և այնպիսի թեթևութեամբ մը որ իր կատաղութեանն խակ արդիւնքն էր, բոլոր այն անունները զորս իրեն կ՚իմացնէին և որոնք յաճախ գոյութիւն չունէին։ Զանոնք կը մատնանշէր առանց անձնական ատելութեան, առանց վախի և առանց նոյն իսկ վտանգի՝ ինքզինքին համար, որովհետև մարդկային ամէն յարաբերութիւններէ դուրս էր և նախատողի և նախատողի յարաբերութիւնները գոյութիւն չունէին իր և իր նմաններուն միջև։

Քիչ ժամանակ առաջ, Ռուսսոյի՝ թագաւորին բարեկամին հետ վճռագիրի մը ենթարկուած ըլլալով, անծանօթ և թշուառ փաստաբանի մը տան մէջ ծածկուած էր որ զինքը հիւրընկալեր էր։ Պարզատու իր քով կանչուեցաւ։ Անիկա զբաղած էր բնագիտութեամբ, և ժամանակաւ ճանչցած էր Մարատ։ Չկրցաւ անոր խնդրանքը մերժել, և զայն մահի ենթարկել կարծեց որ անոր ուղեղը խանգարուած էր։ Ըստ այդ սարսափելի մարդուն կարծիքին, Ֆրանսացիները փոքր յեղափոխականներ էին միայն։ «Տուէ՛ք ինծի, կ՚ըսէր, 200 Նափոլիցի, դաշոյնով զինուած և որոնք վահանի տեղ ձախ թևերնուն վրայ թեւնոց մը կրեն, անոնց հետ պիտի կրնայի ամբողջ Ֆրանսան շրջագայիլ և յեղափոխութիւնը կատարել։» Կ՚ուզէր որ ազնուականները յայտնի ընելու համար, ժողովը անոնց հրամայէ թևերնուն վրայ ճերմակ ժապաւէն մը կրել և թող տար զանոնք սպաննելու, եթէ երեք հոգի միացած գտնուէին։ Ազնուականի անուան ներքև կը հասկնար թագաւորականները, Ֆէօյեանները, Ժիրոնտէնները. և երբ դիպուածով իրեն խօսուէր զանոնք ճանչնալու դժուարութեանը վրայ, «կարևոր չէ, կ՚ըսէր, սխալիլ. պէտք է յարձակիլ անոնց վրայ որոնք կառքեր, սպասաւորներ, մետաքսեայ հագուստներ ունին և թատրոններէ դուրս կ՚ելլեն. ասոնք անպատճառ ազնուականներ են։»

Պարզատու մեկնեցաւ ահաբեկած։

Մառա դրուած իր անձնի մեծութով, հոգ չէր ըներ ըմբոստութեան միջոցները. արդէն անկարող էր զանոնք պատրաստելու: Իր ոճրային երազանքներուն մէջ Մարսիլիա քաշուելու գաղափարը հաճելի էր իրեն: Այդ քաղաքին հանրապետական խանդավառութիւնը իրեն յոյս կը ներշնչէր որ հոն աւելի աղէկ պիտի հասկցուէր և լաւ պիտի ընդունուէր: Ուստի հոն ապաստանիլ խորհեցաւ և կ'ուզէր որ Պարպարու զինքը Մարսիլիա զրկէր իր յանձնարարութեամբ. բայց Պարպարու չէր ուզեր այդպիսի ընծայ մը զրկել իր ծննդավայրին և հոն ձգեց այդ խելառը, որուն օր մը փառաւորութիւնը չէր կրնար գուշակել դեռ այն ատեն:

Մեթոտաւոր և օրինաւորու Մառան, ուրեմն, այն գործօնեայ պետը որ կարող պիտի ըլլար միացնել բոլոր ժողովրդային ցրուած զանգուածները, որոնք չփոթ կերպով մը կը խմորուէին: Ռոպէսփիէռ այդ բանին համար աւելի կարող էր, որովհետև Ժաքօպէններու մէջ շահած էր որոշ թուով ունկնդիրներ, որոնք ամբարար աւելի գործօնեայ կ'ըլլան քան ընթերցող յաճախորդները. բայց ան ալ անհրաժեշտ բոլոր յատկութիւնները չունէր:

Ռոպէսփիէռ որ Արասի միջակ փաստաբան մըն էր, այդ քաղաքէն երեսփոխան ընտրուեցաւ Էթա Ժէնէրօյին. հոն կապուեցաւ Բէդիոնի և Պիւզոյի հետ և խստութեամբ պնդեց այն կարծիքներուն վրայ, զորս անոնք կը պաշտպանէին խորունկ և համոզուած համոզումով մը: Սկիզբները, ծիծաղելի թուեցաւ խօսելու եղանակին ծանրութեամբը և իր արտայայտութեան խեղճութեամբը. բայց իր յամառութիւնը ամենց ուշադրութիւնը գրաւեց, մանաւանդ սահմանադրութեան վերաքննութեան միջոցին: Երբ, Շան տը Մարսի դէպքէն ետք, տարաձայնութիւն ելաւ որ Ժաքօպէններու խնդրագիրը ստորագրողները դատի պիտի ենթարկուին, իր սարսափը և երիտասարդութիւնը հետաքրքրութիւն պատճառեցին Պիւզոյի և Ռոլանի, որոնք իրեն ապաստան մը ընծայեցին: Բայց շուտով ապահովուեցաւ և ժողովը ցրուած ըլլալով ապաւէն գտաւ Ժաքօպէններու մօտ, ուր շարունակեց իր վարդապետական և ուռուցիկ ճառախօսութիւնները: Ընդհանուր դատախազ ընտրուած ըլլալով, մերժեց այս նոր պաշտօնը և այլ ևս միտքը դրաւ միայն անկաշառելի հայրենասէրի և ազատախօս ամբոխավարի կրկնակ համբաւը շահիլ:

Իր առաջին բարեկամները՝ Բէդիոն, Պիւզօ, Պրիսօ զինքը կ'ընդունէին իրենց տունը և նեղուելով կը տեսնէին անոր ցուցային գոռոզութիւնը որ կը յայտնուէր իր նայուածքներուն և բոլոր շարժումներուն մէջէն: Իրենք կը շահագրգռուէին և կը ցաւէին որ անիկա հաստատակաց դատին վրայ ալ նոյնքան կը խորհէր: Սակայն, շատ քիչ կարեւորութիւն ունէր, և այդ պատճառաւ ոխ չունէին իր հզօրութեան համար և իրեն կը ներէին, որովհետև միջակ և խանդոտ էր: Դիտած էին մանաւանդ որ բոլոր հաւաքումներու մէջ յամառութեամբ և հաստատուն կերպով իր կարծիքը յայտնող մըն էր, և առաջինը կ'ըլլար հետեւեալ օրը հրապարակաւ արտայայտելու այն գաղափարները, զորս քաղած էր ուրիշներէն: Այդ բանին վրայ դիտողութիւն ըրին իրեն, առանց զինքը յանդիմանելու, և քիչ ատենէն ատեց այն հոյակապ մարդիկներու հաւաքոյթը, ինչպէս ատած էր Սահմանադիրներու հաւաքոյթը:

Այն ատեն, բոլորովին քաշուեցաւ Ժաքօպէններուն մէջ, ուր, ինչպէս տեսանք, կարծիքի տարբերութիւն ունեցաւ Պրիսոյի և Լուվէի հետ՝ պատերազմի խնդրին վրայ և անուանեց, թերևս կարծեց, դէշ քաղաքացինեմ



ՊՐԻՍՕ

որովհետեւ իրմէ տարբեր կը մտածէին և իրենց կարծիքները պերճախօսութեամբ կը պաշտպանէին։ Բարեմասնութեա՞մբ էր արդեօք որ անմիջապէս կը կասկածէր անոնց վրայ, որոնք զինքը վիրաւորած էին, թէ՝ կը զրպարտէր զանոնք գիտակցաբար։ Անոնք հոգիներու խորհրդաւոր կողմերն են։ Բայց անիկա, իր անձուկ և հասարակ իմացականութեամբ և ծայրայեղ զգայնականութիւնովը շատ տրամադիր էր բարկանալու և դժուարաւ կը լուսարանուէր. և անկարելի չէ որ հպարտութեան ատելութիւն մը իր մէջ չփոխուէր սկզբունքներու ատելութեան, և անիկա չար չինկատէր բոլոր անոնք, որոնք զինքը վիրաւորած էին։

Ինչ որ ալ ըլլայ, այն ատորոգաս շրջանակին մէջ, ուր ինքզինքը դրած էր, խանդավառութիւն յառաջ բերաւ իր վարդապետականութեամբը և իր անկաշառելիութեան համբաւովը։ Այս-

պէսով, իր ժողովրդականութիւնը կը հիմնէր կոյր կիներու և միջակ միտքերու վրայ: Խստակեցութիւնը և ցուրտ վարդապետականութիւնը կը գերէին խանդագին նկարագիրները, նոյնիսկ յաճախ՝ բարձր իմացականութիւնները: Իրաւ ալ կային մարդիկ, որոնք տրամադիր էին Ռոպէսփիէռին ճշմարիտ կորով մը և իր ունեցածէն գերազանց տաղանդ մը վերագրելու: Քամիյլ Տէմուլէն զայն իր Արիստիտէսը կը կոչէր և զայն շատ պերճախօս կը գտնէր:

Ուրիշներ զայն անտաղանդ համարելով հանդերձ ենթարկուած էին անոր իմաստակութեանը, և կը շարունակէին կրկնել թէ այս այն մարդն էր որ յեղափոխութեան գլուխը պէտք էր դնել, և թէ առանց այս գերիշխան պետին յեղափոխութիւնը չպիտի կրնար յառաջ ընթանալ: Ռոպէսփիէռ թոյլատրելով իր կուսակիցներուն բոլոր այս խօսքերը, երբեք չէր երեւար դատաւորներուն ժողովներուն մէջ. նոյնիսկ գանգատեցաւ որ վտանգի ենթարկուած է, որովհետեւ դատաւորներուն մէկը իր տանը մէջ բնակելուն համար, մէկ քանի անգամ հոն հաւաքուած էր ապստամբական յանձնաժողովը: Ուրեմն Ռոպէսփիէռ պահուած կը կենար, թողլով իրենց գործին զինքը գովաբանողները, Բոնիարը, Սէրժանը, Օտլենը և մասնաճիւղերու և քաղաքապետական խորհուրդներու ուրիշ անդամներ:

Մառա, որ գերիշխան պետ մը կը կը փնտռէր, ուզեց ապահովուիլ թէ Ռոպէսփիէռ կրնա՞ր ըլլալ այդ անձը: Մառայի անխնամ և լրբենի անձը կը հակասէր Ռոպէսփիէռի անձին հետ, որ շատ վերապահ և խնամոտ էր ինքզինքին համար: Աշխատութեան չքեղ խուցի մը մէջ քաշուած, ուր իր պատկերը ամէն ձեւերով գծուած էր, իւղաներկով, քանդակով, արձանագործութեամբ, ինքզինքը տուած էր յամառ աշխատութեան մը և անդադար կը կարդար Ռուսօ, իր ճառերը անոր շնորհիւ շարադրելու համար: Մառա երբ զայն տեսաւ, անոր մէջ ուրիշ բան չգտաւ, բայց միայն պզտիկ անձնական ատելութիւններ և բնա՛ւ մեծ մեթոտներ, բնա՛ւ այն արիւնարբու յանդգնութիւնը, զոր կը քաղէր իր հրէշային համոզումներէն, վերջապէս՝ բնա՛ւ հանճար չգտաւ: Մեկնեցաւ արհամարհանքով լեցուն այս պզտիկ մարդուն համար, զայն անկարող յայտարարեց Պետութիւնը փրկելու, և ա՛լ աւելի համոզուեցաւ որ ինքը միայն տէրն էր ընկերական մեծ մեքենային:

Ռոպէսփիէռի կուսակիցները շրջապատեցին Պարպառուն, և զայն ուզեցին առաջնորդել անոր տունը, ըսելով որ մարդ մը պէտք էր, և թէ միայն Ռոպէսփիէռ այս մարդը կրնար ըլլալ: Խօսելու այս ձեւը անհաճոյ եկաւ Պարպառուին, որուն հպարտութիւնը՝ բացարձակ պետի մը գաղափարին առջեւ դժուարաւ կը հակէր, և որուն խանդագին երեւակայութիւնը արդէն հրապուրուած էր Ռօլանի առաքինութենէն և անոր բարեկամներուն տաղանդէն: Այլ սակայն, գնաց Ռոպէսփիէռին տունը: Տեսակցութեան միջոցին խօսքն եղաւ Բէզիոնի, որուն ժողովրդականութիւնը կը նեղէր Ռոպէսփիէռը, և որուն համար կ'ըսէին թէ՝ անկարող է յեղափոխութեան ծառայելու: Պարպառու զայրոյթով պատասխանեց այն մեղադրանքներուն, որոնք կ'ուղղուէին Բէզիոնին, և ուժգնօրէն պաշտպանեց այդ նկարագիրը, որ հիացում կը ներշնչէր իրեն: Ռոպէսփիէռ խօսեցաւ յեղափոխութեան վրայ և իր սովորութեան համեմատ կրկնեց որ անոր ընթացքը փութացուցած էր: Ամենուն պէս ինքն ո՛չ գերիշխան պետ կ'ուզէր, ո՛չ թագաւոր: Ֆրէրոն յարեց թէ Պրիսօ ինքը կ'ուզէր ըլլալ այդ պետը: Այսպէս, իրարու վրայ նետեցին յանցանքը և

չհամաձայնեցան։ Երբ իրարմէ բաժնուեցան, Բանիս ուզելով այս տեսակցութեան գէշ տպաւորութիւնը մեղմել, Պարպառուին ըսաւ որ գործը լաւ ըմբռնած չէր, թէ խնդիրը ժամանակաւոր լիազօրութեան մը վրայ է և Ռոպէսպիէռ միակ անձն էր, որուն այդ հեղինակութիւնը կարելի էր տալ։ Այս տարտամ խօսքերը, այս պզտիկ մրցակցութիւններն էին, որ Ժիրոնտէններու մէջ սա սխալ համոզումը յառաջ բերին թէ՝ Ռոպէսպիէռ բռնատիրել կ՚ուզէ։ Անոր մէջ եղած ուժգին նախանձը փառասիրութիւն նկատուեցաւ, բայց ատիկա այն սխալներէն մէկն էր զոր կուսակցութեանց պղտոր նայուածքը միշտ կը գործէ։ Ռոպէսպիէռ որ շատ շատ արժանիքը առնելու կարող էր, ո՛չ ոյժը, ո՛չ ալ հանճարը ունէր փառասիրութեան, և իր կուսակիցները իրեն համար այնպիսի յաւակնութիւններ կը մտուցանէին զորս Ռոպէսպիէռ ինքզինքին համար յղանալու չպիտի համարձակէր։

Ո և է անձէ աւելի Տանդօն կարող էր ըլլալ այն պետը, զոր բոլոր երեւակայութիւնները կը ցանկային, համերաշխութիւն մը դնելու համար յեղափոխական շարժումներուն մէջ։ Ժամանակաւ, փաստաբանութիւն փորձած էր և չէր յաջողած։ Աղքատ, և կիրքերէ վարուած, նետուած էր քաղաքական խռովութեանց մէջ, եռանդով և հաւանականաբար յոյսերով։ Տգեղ էր, բայց օժտուած էր գերազանց խելքով մը և հզօր երեւակայութիւնով մը. իր ըմբշական ձեւերը, տափակ և քիչ մը ափրիկեան դիմագծերը, որոտացող ձայնը, անհեթեթ բայց մեծ այլաբանութիւնները, Քօրտըլիէններուն և մամանձիգներուն ունկնդիրները կը հրապուրէին։ Իր դէմքը փոխն ի փոխ կ՚արտայայտէր անսանձական կիրքեր, զուարթութիւն և նոյնիսկ բարեացակամութիւն։ Տանդօն մէկը չէր ատեր և ոչ ոքէ կը նախանձէր. բայց իր յանդգնութիւնը տարօրինակ էր, և երբեմն խանդավառութեան վայրկեաններու մէջ կարող էր գործադրել ամէն ինչ որ Մառայի ահռելի խելքը կրնար յղանալ։

Յեղափոխութիւն մը, որուն անակընկալ բայց անվրիպելի արդիւնքը եղած էր ընկերութեան ստորին դասակարգերը ընդվզեցնել բարձր դասերուն դէմ, անշուշտ պիտի արթնցնէր նախանձոտութիւն, դրութիւններ պիտի ստեղծէր և անասնային կիրքերը շղթայազերծել պիտի տար։ Ռոպէսպիէռ նախանձոտը եղաւ, Մառա՝ մեթոտաւորը և Տանդօն՝ եղաւ կիրքոտ մարդը, բուռն, յարաշարժ և փոխն ի փոխ անգութ ու վեհանձն։

Եթէ առաջին երկուքը կը հալածուէին, մէկը՝ տառապող նախանձէ մը, միւսը՝ չարագուշակ մեթոտներէ, շատ քիչ չափով ենթարկուած էին այն բաներուն, որոնք մարդը ապականութեան մատչելի կ՚ընեն. Տանդօն, ընդհակառակը; կիրքերով լեցուն, վայելքի ծարաւի, բնաւ անկաշառելի չէր։ Դանլիճին իբր փաստաբան, նախկին պաշտօնի մը փոխարժէքը հատուցանելու պատրուակին տակ արքունիքը անոր բաւական կարեւոր գումարներ տուաւ. թէեւ արքունիքը յաջողեցաւ անոր վճարել, բայց զայն շահիլ չկրցաւ։ Տանդօն դարձեալ շարունակեց ճառախօսել և ակումբներու ամբոխը գրգռել պալատին դէմ։ Երբ իր երեսին կը զարնէին թէ՝ իր առած դրամին համաձայն չէր ըրածը, կը պատասխանէր որ արքունիքին ծառայել կարենալու համար, պէտք էր, ըստ երեւոյթին, զայն թշնամի նկատել։

Ուրեմն, Տանդօն, ամենէն անհեզ պետերէն մէկն էր այն խումբերուն, զորս կը շահէին և կ՚ուղղէին հեռաւորութեամբ։ Բայց, թէեւ յանդուգն ու վճռական վայրկեանին խանդավառող, Տանդօն չէր կրնար ունենալ այն մշտատեւ խնամքը, որ գլխելու փափաքը կը

պահանջէ․ Թէեւ շատ ազդեցիկ դատաւորներուն վրայ՝ տակաւին ի վիճակի չէր զանոնք կառավարելու։ Միայն կարող էր, վտարանդի պահու մը մէջ անոնց կենդանութիւն տալ և անոնք դէպի նպատակը վճռական դրդումով մը։

Ապստամբական յանձնաժողովին զանազան անդամները դեռ չէին կրցած համաձայնիլ։ Արքունիքը, տեղեկանալով անոնց ամենապզտիկ շարժումներուն իսկ, իր կողմէն միջոցներ ձեռք կ՚առնէր յանկարծական յարձակումի մը դէմ պաշտպանուելու և ինքզինքին ժամանակ տալու համար ապահովութեան մէջ սպասելու զինակից պետութեանց ժամանման։ Պալատին մօտ կազմած և հաստատած էր ակումբ մը, «Ֆրանսական Ակումբ» անունով, որուն անդամներն էին գործաւորները և ազգային պահակախումբին զինուորները։ Ամէնքն ալ իրենց զէնքերը պահած էին իրենց ժողովատեղիին մէջ և սահմանական պարագայի մը կրնային օգնութեան հասնիլ թագաւորական ընտանիքին։ Այս միակ Ակումբը ամենական գանձուն օրական 10,000 ֆրանքի կը նստէր։ Լէօզօ անունով Մարսիլեացի մը, ասկէ զատ, խումբ մը կը պահէր որ փոխն ի փոխ կը գրաւէր Ժողովին օթեակները, հրապարակները, սրճարանները, զինետուններն, Թագաւորին ի նպաստ խօսելու և դիմադրելու համար հայրենասէրներու շարունակական խռովութեանց։ Ամէն տեղ, իրաւ ալ, կը վճարուէին և դրեթէ միշտ խօսքերէն հարուածներու կ՚անցնէին․ բայց հակառակ՝ արքունիքին բոլոր ջանքերուն իր կուսակիցները շատ ցանցառ էին և ազգային պահակախումբին այն մասը, որ արքունիքին նուիրուած էր, շատ մեծ յուսախաբութեան մատնուած էր։

Մեծ թուով հաւատարիմ ծառաներ, որոնք մինչեւ այդ ատեն հեռացած էին գահէն, կը փութային՝ Թագաւորը պաշտպանելու համար և իրենց մարմիններովը պատուար մը կազմելու համար անոր։ Անոնք յաճախակի և մեծ թուով կը հաւաքուէին պալատին մէջ և կ՚աւելցնէին հասարակաց անվստահութիւնը։ Անոնք կը կոչուէին դաշոյնի ասպետներ, 1791 փետրուարի դէպքէն ի վեր։ Հրաման տրուած էր գաղտնապէս հաւաքելու սահմանադրական պահակախումբը, որ թէեւ ազատ արձակուած՝ միշտ իր թոշակները ստացած էր։ Այս միջոցին այլ և այլ խորհուրդներ կը տրուէին Թագաւորին և անոր տկար և բնականէն անկայուն մտքին մէջ շատ ցաւագին վարանումներ յառաջ կը բերէին։ Իմաստուն բարեկամներ՝ որոնց թիւէն էր Մալզհէրպ, իրեն խորհուրդ կուտային հրաժարիլ։ Ուրիշներ, և ասոնք աւելի մեծ թիւ կը կազմէին, կ՚ուզէին որ փախչէր․ Թէեւ, ասոնք ալ համաձայն չէին ո՛չ միջոցներուն, ոչ տեղին և ոչ ալ փախուստի հետեւանքին վրայ։ Այս զանազան յատակագիծներուն մէջ միութիւն մը դնելու համար Թագաւորը ուզեց որ, Պէրդրան տը Մօլէվիլը համաձայնի Տիւրօս ամանակիրին հետ։ Թագաւորը շատ վստահութիւն ունէր այս վերջինին վրայ և ստիպուեցաւ Պէրդրանին գրական հրաման մը տալ, որովհետեւ անիկա կ՚ըսէր թէ չուզեր ոեւէ յարաբերութիւն ունենալ Տիւրօսի պէս սահմանադրականի մը հետ։ Այս յանձնախումբին մէջ դեռ կը գտնուէին Լալի-Թօլէնտալ, Մալուէ, Քլէրմօն-Տօնէռ, Կուվէռնէ և ուրիշներ, ամէնքն ալ անձնուէր՝ Լուդովիկոս ԺԶ․ի, բայց այս կէտէն դուրս բաւական տարբեր կարծիքներու բաժնուած էին Թագաւորութեան դէմ բռնուելիք ընթացքի մասին, եթէ յաջողէին զայն ազատել։ Այդ ժողովին մէջ որոշեցին որ Թագաւորը փախչի և ապաստանի Կայեօնի դղեակը, Նորմանտիոյ մէջ։ Տը Լիանքուր դուքսը, Լուդովիկոս ԺԶ․ի բարեկամը, որ

անոր վստահութիւնը կատարելապէս կը վայելէր, հրամանատարն էր Նորմանտիոյ, կ'երաշխաւորէր իր զինուորներուն և Ռուանի բնակիչներուն կողմէ, որոնք Յունիս 20ի դէմ արտայայտուած էին կորովի կոչով մը։ Դուքը կ'առաջարկէր Թագաւորական ընտանիքը ընդունիլ և զայն առաջնորդել Կայեօն, կամ զայն յանձնել Լաֆայէթին, որ Թագաւորական ընտանիքը փոխադրէ իր բանակին մէջ։ Ասկէ զատ տը Լիանքուր իր հարստութիւնը կը տրամադրէր այս ծրագրին գործադրութեան օժանդակելու համար և կ'ուզէր իր զաւակներուն վերապահել միայն 100 ոսկիի եկամուտ մը։ Այս յատակագիծը կը յարմարէր յանձնաժողովի սահմանադրական անդամներուն, որովհետև փոխանակ Թագաւորը տարագիրներուն յանձնելու, զայն տեղաւորած կ'ըլլային դուքս տը Լիանքուրի և Լաֆայէթի քով։ Նոյն այս պատճառով անհաճոյ էր միւսներուն և հաւանական էր որ Թագաւորին ու Թագուհիին հաճելի չըլլար։ Կայեօնի դղեակը այն առաւելութիւնը ունէր որ ծովէն հազիւ թէ 36 մղոն հեռու էր և կարելութիւնը կ'ընծայէր, Նորմանտիայէն, որ Թագաւորին կուսակից գաւառ մըն էր, դէպի Անգլիա դիւրաւ փախուստ մը ընելու։ Ուրիշ առաւելութիւն մըն ալ Բարիզէն 20 մղոն միայն հեռու ըլլալն էր։ Հետևաբար Թագաւորը կրնար հոն երթալ առանց դրժելու սահմանադրական օրէնքին, և ասիկա շատ բան էր իրեն համար, որովհետև մասնաւորապէս կը փափաքէր յայտնի խաբեբայութեան վիճակի մէջ չիյնալ։

Գ. տը Նարպօն և Նէքէրի աղջիկը, Տիկին տը Սթաէլ ալ փախուստի ծրագիր մը խորհեցան։ Տարագիրներն ալ իր իրենց կողմէն ծրագիր մը առաջարկեցին, որ էր՝ Թագաւորը փոխադրել Քօմբիէնը, և անկէ՝ Հոլանտի ափունքը Արտէնի անտառներէն անցնելով։ Ամէն մէկը կ'ուզէր խորհուրդ տալ տկար Թագաւորի մը, որովհետև իւրաքանչիւրը կը ձգտէր անոր տալու կամք մը զոր ինքը չունէր։ Այնքան հակասական թելադրութիւններ կ'առնէին Լուդովիկոս ԺԶ.ի բնական վարանոտութեան վրայ, և այս դժբաղդ Թագաւորը՝ պաշարուած խորհուրդներէ, ոմանց տրամաբանութենէն մտահոգ, ոմանց կիրքերէն խանդավառուած, իր ընտանիքին կացութեան մասին վախով չարչարուած, իր խղճմտանքին կասկածներովը յուզուած, հազար տեսակ ծրագիրներու մէջ կը վարանէր և ժողովուրդի յորձանքին հասնիլը կը տեսնէր և չէր համարձակիր ոչ անոր դէմ կենալ, ոչ փախչիլ։

Ժիրոնտէն երեսփոխանները որ այնքան յանդգնօրէն ձեռք առած էին գահընկէցութեան խնդիրը, հիմա՝ ըմբոստութեան մը վաղորդայնին, անորոշ կը մնային. Թէև արքունիքը գրեթէ զինաթափ էր և ամենակարողութիւնը ժողովրդին կողմն էր, այլ սակայն Բրուսիացիներուն մերձեցումը և այն վախը զոր միշտ կը ներշնչէ նախակին իշխանութիւն մը, նոյն իսկ ուժաթափ ըլլալէն ետքը, համոզում գոյացուցին իրենց մէջ, որ դարձեալ աւելի ազնիւ էր փոխադարձ զիջողութիւններ ընելով արքունիքին հետ կարգադրութեան մը յանգիլ, քան թէ յարձակում մը վտանգներուն ենթարկուիլ։ Այն պարագային իսկ, որ այդ յարձակումը յաջող ըլլար, կը վախնային որ օտարներուն շատ մօտիկ ատենի մէջ հասնիլը պիտի ջնջէր պալատին դէմ շահուած յաղթանակի մը բոլոր արդիւնքները, և սոսկալի վրէժ մը յաջորդէր վայրկեանի մը յաջողութեան։ Սակայն, հակառակ իրենց այս համաձայնելու տրամադրութեան, Ժիրոնտէնները այս նիւթին վրայ ո և է բանակցութիւն չըրին և չհամարձակեցան նախաձեռնարկ ըլլալ. միայն թէ մտիկ ըրին Գօզ անուն

մէկը, Թագաւորին նկարիչը, և շատ կապուած Թիէրրի հետ, որ Լուդովիկոս ԺԶ.ի սպասաւորն էր։ Պօղ նկարիչը սարսափած հանրային դատին վտանգներէն, հրաւիրեց Ժիրոնտէնները որ գրեն ինչ որ յարմար կը դատեն, ծայրայեղ պարագայի մը մէջ, Թագաւորը և ազատութիւնը փրկելու։ Այս բանին վրայ Ժիրոնտէնները նամակ մը գրեցին զոր ստորագրեցին Կուատէ, Ժանսոնէ, Վէրնիօ. այդ նամակը կը սկսէր սա բառերով. «Մեզի կը հարցնէք, պարոն, թէ ինչ է մեր կարծիքը Ֆրանսայի արդի վիճակին վրայ...։» Այս սկզբնաւորութիւնը կ'ապացուցանէր արդէն թէ բացատրութիւնը դրդումի մը արդիւնքն էր։ Երեք երեսփոխանները Պօղի կ'ըսէին թէ այլ ևս Թագաւորը ինքզինքին բան ծածկելու ժամանակը անցած է և շատ պիտի սխալէր եթէ չի տեսնէր որ իր վարմունքն էր պատճառը ընդհանուր խռովութեան և ակումբներու այն բուռն ոգւոյն, որմէ անդադար կը գանգատէր. իր կողմէն նոր ուրացումներ անօգուտ պիտի ըլլային և նոյն պիտի թուէին. հիմակ, այն վիճակին մէջ որ են խնդիրները, միայն վճռական քայլեր պէտք է առնել ժողովուրդը ապահովցնելու համար. օրինակի համար, ամէն մարդ հաստատօրէն կը կարծէր թէ Թագաւորին կառավարութեան մէջն էր օտար բանակներու հեռացնելը. ուրեմն, պէտք էր որ նախ սկսէր այդ հեռացումը հրամայելով, յետոյ պէտք էր ընտրել հայրենասէր դահլիճ մը, ձամբել Լաֆայէթը, որ իրեն այս վիճակին մէջ չէր կրնար օգտակարապէս ծառայել, օրէնք մը հանել երիտասարդ գահաժառանգին սահմանադրական դաստիարակութեան համար, անձնական գանձը ենթարկել հանրային հակակշիռի մը և հանդիսաւորապէս յայտարարել, որ ինքզինքին համար միմիայն այն տան իշխանութեան ընդարձակում պիտի ընդունէր, որ ազգը ազատօրէն համամիտ ըլլար այդ բանին։ Այս պայմաններով, կ'աւելցնէին Ժիրոնտէնները, յուսալի էր որ դղրդումը ամոքուէր և ժամանակի ընթացքին ու այս ուղղութեան մէջ յառաջանալով, Թագաւորը վերստանար այն վստահութիւնը, զոր այսօր բոլորովին կորսնցուցած էր։

Անտարակոյս, Ժիրոնտէնները այդ միջոցին շատ մօտ էին իրենց նպատակին հասնելու, եթէ իրօք մինչև այդ վայրկեանը և երկար ատենէ ի վեր դաւադրուած ըլլային հանրապետութիւն մը հաստատելու համար. և կ'ուզէին որ յաջողելու վայրկեանին, յանկարծ կանգ առնեն, նախապատուութիւնը տալու համար իրենց պարկեշտներէն երեք հոգիի։ Ասիկա չկրնար ըլլալ, և յայտնի կը դառնայ որ հանրապետութեան ցանկային միայն միապետութենէն յուսահատած ըլլալնուն համար, թէ անիկա երբեք ճշմարիտ ծրագիր մը չեղաւ, և նոյն իսկ զայն ձեռք բերելու վաղորդայնին, անոնք, որոնք կ'ամբաստանուին զայն երկարօրէն պատրաստած ըլլալու համար, չէին ուզեր հասարակաց դատը զոհել այդ դրութեան յաղթանակին համար և կը համակերպէին սահմանադրական միապետութիւնը պահել, կը բաւէ որ անիկա շրջապատուած ըլլայ ըստ բաւականի ապահովութիւններով։ Ժիրոնտէնները պահանջելով որ զինուորները հեռանան, կ'ապացուցանէին որ ներկայ վտանգը զիրենք կը զբաղեցնէր. այն ուշադրութիւնը զոր կ'ընծայէին գահաժառանգին դաստիարակութեան համար, բաւական է ապացուցանելու նաև որ միապետութիւնը իրենց համար անտանելի ապագայ մը չէր։

Ըսին նաև որ Պրիսօ իր կողմէն առաջարկներ ըրած էր գահընկէցութիւնը արգիլելու և այս բանին համար իրր պայման դրած է շատ մեծ գումար մը։ Այս հաստատումը ըրած է Պէրդ-

բան մը Մօլէմի, որ երկու պատճառով միշտ զրպարտած է. սրտի չարութիւն և մատուորական կիրծիք։ Բայց այս հաստատումին ոև է ապացոյց չի տար. և Գրիսոյի ծանօթ աղքատութիւնը, իր գերագրգռուած համբաւ մը պէտք է վկայեն իրեն ի նպաստ։ Անշուշտ, անկարելի չէ որ արքունիքը դրամ տուած ըլլայ Գրիսոյի համար, բայց ասիկա չապացուցաներ որ դրամը ինքը խնդրած, կամ առած էր։ Բէղբոնի կաշառակերութեան մասին վերը յիշուած դէպքը, որ զեկծարարներու միջոցաւ արքունիքին խառնուած էր, այդ դէպքը և ուրիշ նոյն կարգի շատ մը ուրիշ դէպքեր բաւական կը ցուցնեն թէ ինչ հաւատ պէտք է ընծայել այն ընչաքաղցութեան ամբաստանութեանց, որոնք այնքան յաճախ և դիւրաւ մէջ կը բերուին։ Արդէն, ինչ որ ալ ըլլայ Գրիսոյի խնդիրը, երեք երեսփոխանները, Ժանսոնէ, Կուատէ, Վէրնիօ, նոյն իսկ ամբաստանուած չեն, և անոնք էին որ միայն ստորագրած էին այն նամակը որ Գօզին յանձնեցին։ Թագաւորին վերաւոր սիրտը ոև է առնէ նուաղ կարող էր հետեւելու անոնց խմատուն կարծիքներուն։ Թիէրրի Թագաւորին ներկայացուց նամակը, բայց անիկա խստութեամբ մերժեց և իր երկու սովորական պատասխանները տուաւ թէ ինքը չէր, այլ հայրենասէր դահլիճը որ պատերազմը գրգռեց. գալով Սահմանադրութեան, ինքը անոր կը հետեւէր հաւատարմութեամբ, մինչ ուրիշները ամէն ջանք կ'ընէին զայն ջնջելու։

Այս պատճառաբանութիւնները շատ օրինաւոր չէին, որովհետեւ, թէեւ ինք չէր պատերազմը գրգռողը, բայց ասիկա պէտք չէր արգիլեր զինքը՝ զայն աղէկ վարելը պարտականութիւն մը համարելը։ Գալով օրէնքի առաջին խղճմտօրէն հաւատարիմ եղած ըլլալուն, միմիայն ընագիրը յարգելը բաւական չէր. պէտք էր Սահմանադրութիւնը վտանգի չենթարկել, օտարները Ֆրանսա հրաւիրելով։

Ժիրոնտէնները կը յուսային որ Թագաւորը պիտի անսայ իրենց խորհուրդներուն. այս իսկ պատճառով անոնք վերապահ վարմունք մը ցոյց տուին, երբ Ժողովին մէջ յարուցուեցաւ գահընկէցութեան խնդիրը, որ արդէն ամէն օր կը ծեծուէր ակումբներուն, մամուլներուն և խնդրագիրներուն մէջ։ Ամէն անգամ որ, յանուն Տասնեկիւներու Յանձնաժողովին, խօսէին հայրենիքին ենթարկուած վտանգին և զայն դարմանելու միջոցներուն վրայ, պատճառին վրայ խորհեցէք, կ'ըսէին.

— Պատճառի՛ն վրայ, կը կրկնէին օթեակներէն։

Վէրնիօ, Գրիսօ և Ժիրոնտէնները կը պատասխանէին թէ Յանձնաժողովը բաց աչքով կը նայէր պատճառին վրայ, և թէ, երբ առնոր գար, քօղը վար պիտի առնուէր, բայց հիմա, հարկ չկար անհամաձայնութեան նոր խնդիրներ յարուցանելու։ Բայց վճռուած էր որ բոլոր փորձերը և ձեռնարկները վիժին, և աղէտը, նախատեսուած ու վախցուած, հասաւ քիչ ատենէն, ինչպէս պիտի տեսնենք քիչ յետոյ։

Դաշնակիցներուն ի պատիւ տրուած հանդէսէ մը ետք, Ապստամբական յանձնախումբը որոշեց որ անոնք ճամբայ ելլեն Յուլիս 26ի առտուն, երեք կարգի վրայ շարուած, դէպ ի արքայական պալատը, կարմիր դրօշը պարզած, և անոր վրայ սա տողը արձանագրած. «Անոնք որ ժողովուրդի բանակին դէմ զէնք պարզեն, անմիջապէս մահուամբ պիտի պատժուին։» Այս յարձակումը նպատակ ունէր գերի բռնել Թագաւորը և զայն բանտարկել Վէնսէնի մէջ։ Վերսայլի ազգային պահակագորքին դիմում եղած էր այս յարձակումին օժանդակել. բայց այնքան ուշ իմաց տրուած էր անոնց, և իրարու

հետ ալ համերաշխ չըլլալնուն համար, անոր սպաները Բարիզի քաղաքապետարանը եկան նոյն առտուն, հասկնալու համար թէ ի՛նչ պէտք էր ընել։

Այս յարձակման լուրը ծածուկ չի մնաց. պալատը իրար անցաւ. ամէն ոք հոն լեցուած էր ու արքայական ընտանիքը՝ ոտքի վրայ։ Բէյլիօն, տեսնելով որ միջոցները պէտք եղած կերպով ձեռք առնուած չէին, և մատնութենէ մը վախնալով, և մանաւանդ՝ նկատի առնելով որ Մարսիլեացիները տակաւին ժամանած չէին երբեք, աճապարանքով գնաց արուարձանները՝ յարձակողներուն մօտ, և ջանաց կասեցնել շարժում մը, զոր ժողովրդային կուսակցութիւնը կորուստի պիտի մատնէր, եթէ չի յաջողէր։

Արուարձաններուն մէջ զարհուրելի խռովութիւն մը կար. ամբողջ գիշերը ահազանգը հնչեցուցած էին. ժողովուրդը գրգռելու համար, լուր հանած էին թէ պալատին մէջ մեծաքանակ զէնք կար, զոր պէտք էր երթալ և առնել։ Բէյլիօն մեծ դժուարութեամբ յաջողեցաւ կարգ կանոնը հաստատել, դատական նախարար Տամբիոն ալ Սիւէ, որ իր կողմէն գացած էր արուարձանները, ուրիշ հարուածներ տուաւ։ Վերջ ի վերջոյ, ժողովուրդը հաւանեցաւ ետ քաշուիլ, և ապստամբութիւնը յետաձգուեցաւ։

Անընդհատ շարունակուեցան այն կռիւներն ու մանրամասնութեանց վրայ վիճաբանութիւնները, որոնցմով սովորաբար կը սկսին վերջնական խռովութիւնները։ Թագաւորը յունիս 20էն ի վեր փակել տուած էր Թիւիլըրիի պալատին պարտէզին դուռները. միմիայն Ֆէօյեաններու ակումբին սարահարթը, որ Ժողովին կը տանէր, բաց կը մնար, պահակներ հրաման տուած էին այդ կողմէն ոչ մէկը մտցնել պարտէզ։ Տ'էպրէմէնիլ այնտեղ տեսնուեցաւ, որ բուռն կերպով կը վիճաբանէր երեսփոխանի մը հետ. զայն սուլեցին, դէպի պարտէզ քշեցին, ու մինչեւ Բոյլ Ռուայալի առջեւ տարին, ուր բազմաթիւ վէրքեր ստացաւ։ Պարտէզին մէջ չմտնելու համար տրուած հրամանը սահակոխ եղած ըլլալով, խնդիր եղաւ այդ մասին հրամանագիր մը արձակել. սակայն այս հրամանագիրը չարձակուեցաւ. միայն առաջարկուեցաւ նշանատախտակ մը դնել, սա բառերով. արգիլուած է օտար հողի վրայ ոտք կոխելը։ Այս նշանատախտակը կախուեցաւ և բաւական եղաւ որ ժողովուրդը պարտէզէն ներս ոտք չկոխէ, հակառակ որ թագաւորը վերցուցած էր արգելքը։ Ահա այսպէս, այլեւս չէին խնայեր թագաւորին. օրինակի համար, Նանսիէն եկած նամակ մը կը պատմէր թէ քաղաքին մէջ ինչե՛ր անցած դարձած էին. անմիջապէս՝ Ժողովը թագաւորին զրկեց այդ նամակին ընդօրինակութիւնը։

Վերջապէս, յուլիս 30ին, Մարսիլեացիները Բարիզ ժամանեցին. հինգ հարիւր հոգի էին, և իրենց մէջ ունէին հարաւային գաւառներու ամենէն տաքգլուխ մարդիկը, և բոլոր այն արկածախնդիր տարրերը, որոնք վաճառականութեան համար Մարսիլիա կ'երթան։ Պարպարու անոնց ընդառաջ գնաց Շարանթոնի մէջ։ Այս առթիւ Սանթէռի հետ նոր ծրագիր մը կազմեցին. Մարսիլեացիներուն ընդառաջ երթալու պատրուակին տակ, կ'ուզէին միացնել արուարձաններու ապստամբները, և յետոյ կանոնաւոր բանակով երթալ Քարրուզէլ, ու հոն բանակիլ առանց աղմուկի, մինչեւ որ Ժողովը գահընկէց ընէր թագաւորը կամ թէ ան ինքնաբերաբար հրաժարէր գահէն։

Այս ծրագիրը հաճոյ կը թուէր կուսակցական մարդասէրներուն, որոնք կ'ուզէին այս յեղափոխութիւնը վերջացնել առանց արիւն թափելու։ Սակայն և այնպէս, չյաջողեցաւ այս ծրագիրն ալ, որովհետեւ Սանթէռ չկրցաւ



ԿԱՄԱՒՈՐ ԶԻՆՈՒՈՐ Կ'ԱՐՁԱՆԱԳՐՈՒԻՆ

ի մի հաւաքել արուարձանները, և քիչ թուով մարդիկ միայն տարաւ Մարսիլիացիներուն ընդ առաջ: Սանդէռ անմիջապէս անոնց հրամցուց ճաշ մը, Շան զ'Էլիզէի մէջ: Միեւնոյն օրը և միեւնոյն ժամուն, Ֆիյ Սէն-Թոմայի վաշտին պատկանող ազգային պահակազօրաց հաւաքոյթ մը, և անոնց հետ գրագէտ ու զինուորական ուրիշ անձնաւորութիւններ, բոլորն ալ պալատին կուսակից, ճաշ կուտար շատ մօտերն այն տեղին, ուր կ'ողջունուէին Մարսիլիացիները: Անտարակոյս, այս հացկերոյթը յատկապէս պատրաստուած չէր Մարսիլիացիներուն ճաշը խանգարելու համար, ըստ որում, այս վերջիններուն խնջոյքը վերջին վայրկեանին միայն կազմակերպուած էր, ու հացկերոյթի տեղ ապստամբութեան մը վրայ խորհուած էր ի սկզբան:

Սակայն և այնպէս, անկարելի բան էր որ այնքան հակառակորդ դրացիներ կարենային խաղաղութեամբ աւարտել իրենց ճաշը: Ամբոխը նախատե

թագաւորականները, որոնք ուզեցին ինքզինքնին պաշտպանել. հայրենասէրները, զորս օգնութեան կոչեց ամբոխը, անմիջապէս վազեցին եկան ու անոր կռիւը սկսաւ։ Բայց երկար չտեւեց այս կռիւը. Մարսիլիացիները, իրենց հակառակորդներուն վրայ խուժելով զանոնք փախցուցին, անոնցմէ մին սպաննեցին և մէկ քանին ալ վիրաւորեցին։ Մէկ ամսուան մէջ Բարիզ խռովութեան մատնուեցաւ։ Դաշնակիցները կը պարտէին բոլոր փողոցները, ժապաւէնէ զարդանշանները վար կ'առնէին, ըսելով թէ բուրդէ պէտք էր ընել անոնց տեղը։

Կռիւէն փախչողներէն մէկ քանին արիւնաներկ վիճակի մէջ գացին Թիւիլըրիի պալատը, ուր փութկոտ ընդունելութիւն մը եղաւ իրենց. անձնուիրութեան այդ զոհերուն շատ մեծ խնամք տարուեցաւ, և ասիկա բնական էր։

Ազգային պահակազօրքերը, որոնք պալատին ծառայութեան մէջ կը գտնուէին, այս մանրամասնութիւնները հաղորդեցին, թերեւս ալ վրայ դիրքերին, և ահա՛ նոր դրդիչներ և նոր ատելութիւններ սկսան շրջան ընել ընդդէմ արքայական ընտանիքին և պալատական տիկիններուն, որոնք, կ'ըսէին, իրենց թաշկինակներովը սրբած էին վիրաւորներուն քրտինքն ու արիւնը։ Այս բանէն մինչեւ իսկ հետեւցնողներ եղան թէ դէպքը յառաջագոյն պատրաստուած էր. և ահա այս պատճառով Թիւիլըրիի դէմ նոր ամբաստանութիւն մը երեւան եկաւ։

Բարիզի ազգային պահակազօրքը պահանջեց որ Մարսիլիացիները անմիջապէս հեռացուին, բայց օթեակները սուլեցին այս պահանջը, և այս խնդրագիրը ոեւէ յաջողութիւն չգտաւ։

Այս պարագաներուն տակ էր որ գրութիւն մը շրջաբերութեան հանուեցաւ. ասիկա ի սկզբան վերագրուեցաւ Պրունսվիքի դուքսին և քիչ վերջ ալ յայտնուեցաւ թէ հեղինակը ան է։ Արդէն խօսեցանք Մալէ տիւ Բանի առաքելութեան մասին. ասիկա, յանուն թագաւորին, տուած էր գաղափարը և ձեւը յայտարարութեան մը. բայց այդ գաղափարը շուտով աղաւաղեցին. ուրիշ յայտարարութիւն մը, զոր ներշնչեցին Քօպլէնցի կիրքերը, Պրունսվիքի անունով հրատարակուեցաւ, բրուսիական բանակին ընդ առաջ։ Այդ գրութիւնը սա պէս խմբագրուած էր. —

« Ն. Վեհափառութիւնք կայսրը և Բրուսիոյ թագաւորը ինծի յանձնած ըլլալով Ֆրանսայի սահմանագլուխին վրայ հաւաքուած միացեալ բանակներուն հրամանատարութիւնը, ուզեցի ազդարարել այս թագաւորութեան բնակիչներուն՝ այն շարժառիթները, որոնք երկու վեհապետները մղեցին ձեռք առնել ծանօթ միջոցները, զանոնք առաջնորդող դիտաւորութիւնները։

«Ալզասի և Լօրրէնի Գերմանացի իշխաններուն իրաւունքները ու ստացուածքները կամայական եղանակով մը բռնաբարելէ ետք, ներքին անդորրութիւնը և օրինաւոր կառավարութիւնը խանգարելէ ու տապալելէ յետոյ, թագաւորին նուիրական անձին և անոր օգոստափառ ընտանիքին դէմ բռնութիւններ ու յարձակումներ ի գործ դնելէ և օր ըստ օրէ զանոնք կրկնապատկելէ ու վերանորոգելէ ետք, անոնք՝ որ կառավարութեան դէմ եկան, վերջ ի վերջոյ ա՛լ չափը անցուցին, անարդար պատերազմ մը յայտարարելով Ն. Վ. կայսեր դէմ և յարձակելով անոր հոլանտական ստացուածքներուն վրայ։ Գերման կայսրութեան մէկ քանի ստացուածքներն ալ նշաւակ եղան այս հարստահարութեանց, և ուրիշներ նոյն վտանգէն ազատեցան, պարզապէս տեղի տալով տիրող կուսակցութեան և անոր գործակալներուն հրամայական սպառնալիքներուն։

Ն. Վ. Բրուսիոյ Թագաւորը, որ կապուած է Ն. կայսերական վեհափառութեան հետ, սերտ և պաշտպանողական կապերով, և ինքն ալ գերմանական գերդաստանին մէկ անդամը ըլլալով, չի կրնար չքալել իր դաշնակից պետութեանց ի պաշտպանութիւն. և այս կրկին կապերուն ոյժովն է որ անիկա կը ստանձնէ պաշտպանութիւնը այս Թագաւորին ու Գերմանիոյ։

«Այս մեծ շահերուն յարակից կերպով գոյութիւն ունի նոյնքան կարեւոր նպատակ մը, որուն սրտանց կը փափաքին, այն է՝ դադրեցնել Ֆրանսայի մէջ տիրող անիշխանական վիճակը, գահուն և սրբութեանց դէմ կատարուած յարձակումները կասեցնել, օրինաւոր իշխանութիւնը վերահաստատել, Թագաւորին ապահովութիւնը և ազատութիւնը՝ որոնցմէ զրկուած է, իրենց վերադարձնել, և զայն ի վիճակի ընել ի գործ դնելու օրինաւոր իշխանութիւնը, որ իր իրաւունքն է։

«Համոզուած ըլլալով՝ որ ֆրանսական ազգին ողջամիտ դասակարգը զզուանք կը զգայ զինքը հարստահարող խմբակի մը չարաշահութիւններէն, և թէ Ֆրանսացիներու մեծագոյն մասը անհամբերութեամբ կը սպասէ օգնութեան վայրկեանին, բացէ ի բաց արտայայտուելու համար ընդդէմ զիրենք հարստահարողներու ձեռնարկներուն, Ն. Վ. կայսրը և Ն. Վ. Բրուսիոյ Թագաւորը զանոնք կը կոչեն և կը հրաւիրեն անյապաղ վերադառնալ բանականութեան և արդարութեան, կարգապահութեան ու խաղաղութեան ճամբուն մէջ։ Այս տեսակէտներով է որ, ես, ստորագրեալս, երկու բանակներու հրամանատար զօրապետ, կը յայտարարեմ

«1. Թէ անդիմադրելի պարագաներէ ներկայ պատերազմին մղուած ըլլալով, երկու դաշնակից արքունիքները միմիայն իրենց աչքին առջեւ ունին Ֆրանսայի բարօրութիւնը, և յաւակնութիւնը չունին հարստանալու նոր յաղթանակներով.

«2. Թէ անոնք բնաւ մտադիր չեն խառնուելու Ֆրանսայի կառավարական ներքին գործերուն, այլ միմիայն կ'ուզեն ազատել Թագաւորը, Թագուհին և արքայական ընտանիքը՝ իրենց մատնուած գերութեան վիճակէն. ու Ն. Քրիստոնեայ Վեհափառութեան հայթայթել այն ապահովութիւնը որ անհրաժեշտ է, որպէս զի կարենայ, առանց արգելքի, առանց վտանգի գումարել տալ բոլոր այն ժողովները, զորս ինքը յարմար պիտի դատէ, և որպէսզի կարենայ աշխատիլ՝ ապահովելու իր հպատակներուն երջանկութիւնը, համաձայն՝ իր խոստումներուն և այն չափով՝ որ իրմէ կախում ունենայ.

«3. Թէ միացեալ բանակները պիտի պաշտպանեն քաղաքները, գիւղաքաղաքներն ու գիւղերը և կեանքն ու ինչքը բոլոր անոնց որոնք կը հպատակին Թագաւորին, ու անոնք պիտի ջանան անմիջապէս վերահաստատել կարգ կանոնը և ոստիկանութիւնը՝ ամբողջ Ֆրանսայի մէջ.

«4. Թէ ազգային պահակազօրքը կը հրաւիրուի ժամանակաւոր հսկել քաղաքներու և գիւղերու անդորրութեանը, բոլոր Ֆրանսացիներու կեանքին ու ինչքին ապահովութեանը, մինչեւ որ ժամանեն Ն. Վ. կայսերական և արքայական զինուորները, կամ մինչեւ որ ուրիշ կարգադրութիւն մը ըլլայ. այլապէս՝ ազգային պահակազօրքը անձնականապէս պատասխանատու պիտի բռնուի, հակառակ պարագային՝ ազգային պահակազօրքէն անոնք որ զինակից պետութեանց բանակներուն դէմ կռուին, և դէն ի ձեռին բռնուին, թշնամի պիտի համարուին, և պիտի պատժուին իբր ապստամբ իրենց Թագաւորին դէմ, և իբր խանգարողներ հանրային անդորրութեան։

«5. Թէ՝ Ֆրանսական կանոնաւոր բանակին զօրավարները, սպաները, ենթասպաները և զինուորները հաւասարապէս կը հրաւիրուին վերստին ցոյց տալ իրենց նախկին հաւատարմութիւնը, և անմիջապէս հնազանդիլ Թագաւորին, որ իրենց օրինաւոր վեհապետն է.

«6. Թէ՝ կառավարական պաշտօնատանց անդամները, գաւառական վարչութեանց և քաղաքապետարանի պաշտօնեաները հաւասարապէս պատասխանատու պիտի համարուին, իրենց գլուխով և ինչքերով, բոլոր այն յանցանքներուն, հրձիգութեանց, սպաննութեանց, աւարառութեանց և չարագործութեանց, զորս թոյլ տան և յայտնի կերպով մը զանոնք արգիլելու համար չպիտի ընդդիմանան իրենց սեպհական շրջանակներուն մէջ. Թէ՝ անոնք հաւասարապէս պարտաւոր պիտի ըլլան առժամաբար շարունակել իրենց պաշտօնները, մինչեւ որ Ն. Քրիստոնեայ Վեհափառութիւնը, գտած ըլլալով իր լիակատար ազատութիւնը, այդ մասին միջոցներ ձեռք առնէ, և կամ ուրիշ կարգադրութիւն մը ըլլայ, մինչեւ այդ ժամանակը, իր անուամբը.

«7. Թէ՝ քաղաքներու, գիւղաքաղաքներու և գիւղերու այն բնակիչները, որոնք համարձակութիւնն ունենան Ն. Վ. կայսերական և արքայական զինուորներուն դէմ կռուելու, և անոնց վրայ զէնք պարպելու, ըլլա՛յ բաց դաշտի մէջ, ըլլա՛յ պատուհաններէն, դուռներէն և իրենց տանը բացուածքներէն, անմիջապէս պիտի պատժուին պատերազմական օրէնքին խստութեամբը, ու իրենց տուները պիտի քանդուին կամ պիտի վառուին։ Ընդհակառակը, յիշեալ քաղաքներու, գիւղաքաղաքներուն և գիւղերուն բոլոր այն բնակիչները, որոնք փութան հպատակիլ իրենց Թագաւորին, իրենց դուռները բանալով Ն. Վեհափառութեանց զինուորներուն առջեւ, անմիջապէս պիտի վայելեն անոնց պաշտպանութիւնը. անոնց կեանքը, ինչքը և գոյքերը պիտի դրուին օրէնքին պաշտպանութեանը տակ, և հոգ պիտի տարուի անոնց ամենուն ու անոնցմէ իւրաքանչիւրին ընդհանուր ապահովութիւնը.

«8. Բարիզ քաղաքը և իր բոլոր բնակիչները, առանց խտրութեան, պարտաւոր պիտի ըլլան անմիջապէս և անյապաղ հնազանդութիւն յայտնել Թագաւորին, այս իշխանը կատարեալ ու անթերի ազատութեան մէջ դնել, և անոր ապահովել, ինչպէս նաև արքայական ընտանիքի բոլոր անդամներուն այն անբռնաբարելիութիւնը և յարգանքը, զորս հպատակները պարտական են ցոյց տալ, համաձայն՝ բնութեան և մարդկային օրէնքներու. անոնք իրենց գլուխով անձնականապէս պատասխանատու պիտի ըլլան պատահած բոլոր դէպքերուն համար, և պիտի դատուին զինուորական օրէնքին համաձայն, առանց ներման արժանանալու յոյսն ունենալու. Ազգային Ժողովի բոլոր անդամները, կառավարական պաշտօնեաները, գաւառական վարչութիւնները, Բարիզի քաղաքապետութիւնը և ազգային պահակազօրքը, հաշտարար դատաւորները և բոլոր անոնք՝ որոնց անկ է։ Բաց աստի, վերոյիշեալ վեհափառութիւնք կը յայտարարեն, իրենց կայսերական ու թագաւորական պատիւին ու խօսքին վրայ թէ, եթէ Թիւիլըրիի պալատը դրաւուի, կամ նախատինքի ենթարկուի, եթէ ամենափոքր բռնութիւն, կամ անարգանք ըլլայ Ն. Վ. Թագաւորին, թագուհիին և արքայական ընտանիքին, եթէ անմիջապէս հոգ չտարուի անոնց ապահովութեանը, պահպանմանը և ազատութեանը, իրենք և յաւէտ անմոռանալի վրէժ մը պիտի լուծեն, Բարիզ քաղաքը ենթարկելով զինուորական խստութեան՝ ձեռամբ բանակին, և այն ապստամբները, որոնք

ճիր մը գործած են, իրենց արժանի պատիժը պիտի գտնեն։ Ասոր հակառակ, Ն. կայսերական և արքայական վեհափառութիւնները թող կու տան Բարիզ քաղաքի բնակիչներուն՝ խնդրամատոյց ըլլալ Ն. Քրիստոնեայ վեհափառութեան մօտ, իրենց յանցանքներուն և սխալումներուն համար ներողութիւն խնդրելու, և կը խոստանան ամենախիստ միջոցներ ձեռք առնել անոնց կեանքը և ինչքը ապահովելու համար, եթէ անոնք շուտ ընդ փոյթ և ճշդիւ հնազանդին վերոյիշեալ հրամանին։

« Վերջապէս, - Ն. Վեհափառութիւնք, Ֆրանսայի մէջ չճանչնալով ուրիշ օրէնք քան այն որ կը բղխի լիակատար ազատութիւն վայելող Թագաւորէն, կանխաւ կը բողոքեն ընդդէմ վաւերականութեանը այն բոլոր յայտարարութիւններուն, որոնք գուցէ կատարուին յանուն Ն. Քրիստոնեայ վեհափառութեան, այնքան ատեն որ անոր նուիրական անձը, ու Թագուհիին և ամբողջ արքայական ընտանիքին կեանքը իրականօրէն ապահովութեան մէջ չըլլան. այս պատճառաւ, Ն. կայսերական և արքայական վեհափառութիւնք կը թախանձեն Ն. Քրիստոնեայ վեհափառութեան, որ իր թագաւորութեանը մէջէն նշանակէ քաղաք մը, որ ամենէն մօտն ըլլայ սահմանագլուխին, և ուր ինքը յարմար կը դատէ քաշուիլ Թագուհիին ու ընտանիքին հետ, զօրաւոր և ապահով պահակազօրքով մը, որ իրեն պիտի ղրկուի այս նպատակաւ, որպէս զի Ն. Քրիստոնեայ վեհափառութիւնը կարենայ կատարեալ ապահովութեամբ իր մօտը կանչել այն նախարարները և խորհրդականները, որոնք հաճոյ են իրեն, և որպէս զի ի վիճակի ըլլայ իր յարմար դատած խորհրդակցութիւնները կատարել, կարգ կանոնի վերահաստատման հոգ տանիլ և իր Թագաւորութեան վարչութիւնը կարգի դնել։

« Վերջապէս, կը յայտարարեմ և կը ստանձնեմ, իմ անձնական անունովս, և իմ վերոգրեալ հանգամանքովս, ամենուրեք խիստ ու լաւ կարգապահութիւն մը ի գործ դնել իմ հրամանիս տակ դտնուող զինուորներուն վրայ, ու կը խոստանամ քաղցրութեամբ և չափաւորութեամբ վարուիլ այն բարեմիտ հպատակներուն հետ, որոնք խաղաղ և հանդարտ կը մնան. և բունի ոյժ պիտի գործածեմ միայն ընդդէմ անոնց, որոնք յանցաւոր պիտի ըլլան կա՛մ դիմադրելով կամ չարակամութեամբ։

« Այս պատճառներուն համար է որ Թագաւորութեան բոլոր բնակիչներուն կոչ կ'ընեմ, ուժգին և հաստատակամ կերպով մը, չընդդիմանալ իմ հրամանատարութեանս տակ գտնուող զինուորներուն յառաջխաղացութեանը և գործողութեանց, այլ անոնց հայթայթել ամենուրեք ազատ անցք և ցոյց տալ բարի տրամադրութիւններ, օգնութիւն և օժանդակութիւն, ամէն անգամ որ հարկը պահանջէ։

« Տրուած՝ Քօպլէնցի ընդհանուր ապայակոյտին մէջ, 1792 յուլիս 25ին.

(Ստորագրութիւն)
ՇԱՐԼ ԿԻՅՕՄ ՖԵՐՏԻՆԱՆՏ
Դուքս Պրունսվիք-Լիւնէպուրկի։ »

Այս յայտարարութեան ամենէն աւելի ապշեցուցիչ կէտը այն էր որ, յուլիս 25ին Քօպլէնցի մէջ գրուած ըլլալով հանդերձ, յուլիս 28ին հասաւ Բարիզ և հրատարակուեցաւ բոլոր արքայական թերթերուն մէջ։ Արտաքոյ կարգի տպաւորութիւն մը յառաջ բերաւ. կիրքերը կիրքերու վրայ բարդուեցան։ Ամէն ոք երդում ըրաւ դիմադրել թշնամիի մը, որուն բանեցուցած լեզուն այնքան դոռոզ էր և սպառնալիքները՝ ահաւոր։

Բնական էր որ, միտքերու ծանօթ վիճակին մէջ Թագաւորը և արքունիքը ամբաստանուէին այս նոր յանցանքին համար։ Լուդովիկոս ԺԶ. փութաց յատուկ գրով մը հերքել այս յայտարարու-

թիւնը, և անտարակոյս խղճի մտօք կատարեց այս հերքումը, քանի որ զօրավարին ազդարարագիրը իր առաջարկածէն այնքա՛ն տարբեր էր. բայց անիկա այս օրինակէն պէտք էր հասկնար արդէն, թէ իր կուսակցութիւնը ինչքա՛ն աւելի ամբոխին պէտք ունենար իր փափաքներէն, եթէ երբեք յաղթող հանդիսանար։

Ո՛չ Թագաւորին հերքումը, ոչ ալ այդ առթիւ իր ըրած խօսքերը կրցան ժողովին սիրտը առնել. խօսելով այն ժողովուրդին մասին, որուն երջանկութիւնը միշտ թանկագին եղած էր իրեն, Թագաւորը կ'ըսէր. «Որքա՛ն վիշտեր պիտի մոռցուէին, եթէ ժողովուրդը ամենապզտիկ նշանը տար թէ դէպի Թագաւորը կը դառնայ։»

Այս յուզիչ խօսքերը այլ եւս յառաջ չէին բերեր այն խանդավառութիւնը, զոր ժամանակաւ ծնեցնելու ձիրքն ունէին. ժողովուրդը այդ խօսքերուն մէջ տեսաւ խաբեբայութիւն մը, և բազմաթիւ երեւակայածներ այժ ատեն ժողովուրդին այս տպաւորութիւնը, որպէսզի, ըսին, հրապարակաւ հակասութիւնը՝ Թագաւորին խօսքերուն և գործերուն միջեւ։

Այդ վայրկեանէն սկսեալ, գրգռումը առաւելցաւ, և զօրագունդերը ծանրակշիռ դարձան։ Տեղեկութիւն առնուեցաւ թէ Պուշ տը Ռօնի գաւառը իր հաւաքած տուրքերը վար կը դնէր, որպէսզի կարենար հոգալ Սավուացիներուն դէմ իր ղրկած զինուորները. այդ գաւառը կ'ամբաստանէր ժողովը, որ ձեռք առնուած միջոցները անբաւական են. անիկա Պարալասուլի ազդեցութեան տակ կատարուած գործ մըն էր։

Ժողովը բեկանեց Պուշ տը Ռօնի գաւառին որոշումները, բայց չկրցաւ արգիլել անոնց գործադրութիւնը։ Մի և նոյն ժամանակ, լուր եկաւ թէ՝ Սարտերը, որոնք յառաջ կ'ընթանային, 50,000 հոգի էին. պէտք եղաւ որ արտաքին գործոց նախարարը ինքը անձամբ ժողովին գայ, և ապահովցնէ թէ զօրախմբութիւնները չատ չատ 11 կամ 12 հազար հոգիէ կը բաղկանային։ Այս գրոյցին յաջորդեց ուրիշ մըն ալ. ըսին թէ Սուասօն գացած դաշնակիցներուն փոքր խումբը թունաւորուած է իրենց հացին մէջ ապակիի կտորուանք խառնուած ըլլալով, մինչեւ իսկ կը հաստատէին թէ 160 հոգի մեռած էին և 800 հիւանդ կար։ Տեղեկատուութեանց դիւանին դիմեցին և լուր տուին թէ՝ ալիւրի պարկերը կը գտնուէին եկեղեցիի մը մէջ, որուն ապակիները կոտրելով քանի մը կտոր ինկեր էր ալիւրին մէջ. բայց ո՛չ մեռեալ և ոչ ալ հիւանդ կար։

Յուլիս 25ին հանուած հրամանագիր մը մշտապէս կերպով նիստի կը հրաւիրէր Բարիզի բոլոր քաղաքական խմբակցութիւնները. անոնք ժողով գումարած էին և Պէթիոնի պաշտօն յանձնած էին իրենց անունով հռչակել Լուդովիկոս ԺԶ.ի գահընկէցութիւնը։ Օգոստոս 3ի առտուն, Բարիզի քաղաքապետը այս պահանջքներէն մէկ առած, ներկայացաւ ժողովին, ուղերձ մը մատուցանելու յանուն Բարիզի քառասուն և ութ մասնաճիւղերուն։ Պէթիոն պարզեց Լուդովիկոս ԺԶ.ի վարմունքը՝ յեղափոխութեան ծագումէն ի վեր, այդ չիջանի բառերով, գծեց ազգին ցոյց տուած բարիքը՝ հանդէպ Թագաւորին, և միապետին ապերախտութիւնը։ Անիկա ուրուագծեց այն վտանգները, որոնց սուկումին տակ կը գտնուէին բոլոր երեւակայութիւնները, օտարներուն ժամանումը, ինքնապաշտպանութեան միջոցներուն ոչնչութիւնը, ժողովին դէմ զօրավարի մը ընդվզումը, դաւաճանական փոխ մը վարչութեանց ցոյց տուած ընդդիմութիւնը և յանուն Պրունսվիքի կատարուած սարսափելի ու անհեթեթ սպառնալիքները. Հետեւաբար, եզրակացուց թէ պէտք էր պա-

հրճուեց ընկեր Թագաւորը, և խնդրեց ժողովէն, այս կարեւոր խնդիրը օրակարգը անցնել։

Այս մեծ առաջարկը, որ մինչեւ այն ատենը միայն ակումբներուն, դաշնակիցներուն և արուարձաններուն կողմէ կատարուած էր, ուրիշ հանգամանք մը կը ստանար հիմա որ կը ներկայացուէր յանուն Բարիզի և իր քաղաքապետին կողմէ։ Այս առաջարկը աւելի զարմանք պատճառեց քան թէ հաւանութիւն ստացաւ ատեանին նիստին մէջ։ Բայց իրիկունը վիճաբանութիւնը սկսաւ, և ժողովին մէկ մասին եռանդը անսանձ կերպով արտայայտուեցաւ։ Ոմանք կ՚ուզէին անմիջապէս վիճաբանութեան ձեռնարկել. ուրիշներ՝ յետաձգումը կը պահանջէին։ Վերջապէս, յետաձգեցին Օգոստոս 9 հինգշաբթի օրուան, և շարունակեցին ընդունիլ ու կարդալ այն ուղերձները, որոնք քաղաքապետէն շատ աւելի բուռն կերպով կ՚արտայայտէին միեւնոյն բաղձանքը և նոյն զգացումները։

Մօքոնսէյլի մասնաճիւղը, միւսներէն ա՛լ աւելի յառաջ երթալով, գահընկէցութիւնը խնդրելով գոհ չմնաց, կատարեալ հեղինակութեամբ հռչակեց զայն։ Անիկա յայտարարեց թէ այլեւս Լուդովիկոս ԺԶ.ը չէր ճանչնար Թագաւոր Ֆրանսայի և քիչ ատենէն պիտի երթար հարցնել օրէնսդիր մարմինին, թէ վերջապէս միտք ունի՞ Ֆրանսան փրկելու. բաց աստի, անիկա հրաւիրեց բոլոր մասնաճիւղերը կայսրութեան (զոր այլեւս թագաւորութիւն չէր անուաներ) իր օրինակին հետեւիլ։

Ինչպէս արդէն տեսանք, ժողովը ապստամբական շարժումին չէր հետեւեր այնքան արագ կերպով, որքան կը հետեւէին ատրադաս իշխանութիւնները, որովհետեւ, անիկա օրէնքներուն վրայ հսկելու պաշտօն ունենալով, հարկադրուած էր ա՛լ աւելի յարգել զանոնք։ Ժողովը յաճախ կը տեսնէր որ ժողովրդային պահանջումները իրմէ աւելի առաջ կ՚անցնին և այսպէսով իշխանութիւնը կը խուսափէր իր ձեռքերէն։ Այս պատճառաւ, Մօքոնսէյլի մասնաճիւղին որոշումը ընկալաւ. Վէրնիօ և Քամպօն շատ խիստ լեզու մը գործածեցին այս արարքին դէմ, և զայն անուանեցին ժողովրդային գերիշխանութեան դէմ բռնաւորութիւն։ Բայց այնպէս կը թուի թէ, Մօքոնսէյլի մասնաճիւղի արարքին մէջ անոնք աւելի կը դատապարտէին խնդրարկուներուն արագ գործունէութիւնը քան թէ սկզբունքներու բռնաբարումը, և մանաւանդ՝ Ազգային ժողովին հանդէպ անոնց բանեցուցած լեզուին անպատշաճ հանգամանքը կը դատապարտէին։

Բոլոր անստուգութեանց վախճանը կը մօտենար. միեւնոյն օրուան մէջ ժողով ունէին դաշնակիցներու ապստամբական յանձնաժողովը, և թագաւորին բարեկամները, որոնք անոր փախուստը կը պատրաստէին։ Գահընկէցութեան խնդիրը վիճաբանելիք օրուան յետաձգուեցաւ յանձնաժողովը. այսինքն՝ օգոստոս 9ի իրիկունը և 10ի առաւօտ։

Միւս կողմէ, թագաւորին բարեկամները կը խորհրդակցէին անոր փախուստին վրայ, Պ. տը Մօնմօրէնի պարտէզին մէջ։ Պ. Պ. տը Լիանքուր և Լաֆայէթ կրկին և կրկին ինքզինքնին կը տրամադրէին. ամէն ինչ պատրաստ էր մեկնումին համար. միայն՝ դրամ չկար։ Պէրթրան տը Մօլվիլ ի զուր տեղը սպառած էր թագաւորին անձնական գանձը, վճարելու համար արքայական ակումբներուն, բեմբասացներուն և կեղծ հրապուրիչներուն, որոնք ո՛չ զոք կը հրապուրէին, այլ սակ ինքզինքնուն համար վար կը դնէին պալատին դրամները։ Դրամ չգտնելով, զիջում ըրին փախստութեան, զոր առատաձեռն հպատակներ փութացին տալ թագաւորին։ Պ. տը Լիանքուր

նուէրին մասին խօսեցանք արդէն, անիկա տուաւ բոլոր այն գումարները զորս կրցաւ հայթայթել։ Ուրիշներ ալ իրենց ունեցածը տուին։ Անձնուէր բարեկամներ պատրաստուեցան հետեւիլ այն կառքին, որ պիտի փոխադրէր արքայական ընտանիքը, և, եթէ պէտք ըլլար, անոր քով պիտի զոհէին իրենց կեանքը։ Ամէն ինչ պատրաստուած ըլլալով, Մօնմօրէնի մօտ հաւաքուած խորհրդականները որոշեցին որ մեկնումը տեղի ունենայ, ամբողջ գիշերը տեւող խորհրդակցութենէ մը ետք։ Թագաւորը, որ անմիջապէս ետքը տեսաւ Մօնմօրէնը, հաւանեցաւ այս որոշումին, և հրամայեց որ համաձայնին Պ. Պ. տը Մօնսիէլի և տը Սէնդ Քրուայի հետ։ Այս ձեռնարկին շուրջ համախմբուած մարդոց անձնական կարծիքները ինչ որ ալ եղած ըլլան, իրենց համար մեծ ուրախութիւն մըն էր պահ մը կարծելը թէ Թագաւորին փրկութիւնը մօտալուտ է։

Բայց հետեւեալ օրը ամէն բան փոխուած էր, Թագաւորը պատասխանել տուաւ որ չպիտի մեկնէր բնաւ, որովհետեւ չէր ուզեր որ քաղաքային պատերազմը վերսկսէր։ Ամէն անոնք որ շատ գնալուն զգացումներով հաւատարապէս կը շահագրգռուէին Թագաւորին անձով, ապարդիւն եղան։ Իմացան որ իրական գլխաւոր պատճառը Թագաւորին ցոյց տուածը չէր։ Ճշմարիտ՝ նախ զօրավար Պրիւնսուիքի ժամանումն էր, որուն համար կ'ըսէին թէ շատ մօտալուտ է, յետոյ, ապստամբութեան յաղթանակը և մանաւանդ՝ Թագուհիին մերժումը՝ սահմանադրականներուն վստահելու։ Անիկա կորովով արտայայտած էր իր մերժումը, ըսելով որ լաւագոյն էր մեռնիլ քան թէ այնպիսի մարդերու յանձնուիլ, որոնք այնքան գէշութիւն ըրած էին իրենց։

Այսպէս, սահմանադրականներուն բոլոր ջանքերը և վտանգները անօգուտ եղան։ Լաֆայէթ ծանրապէս յանցաւոր դարձած էր։ Գիտէին որ Լիւքնէրը համոզած էր ի հարկին մայրաքաղաքին վրայ քալելու։ Այս վերջինը Ժողովին մօտ կանչուած ըլլալով ամէն բան խոստովանած էր Տասներկուներու Յանձնաժողովին առջեւ։ Ծերունի Լիւքնէրը թոյլ և փոփոխամիտ էր։ Երբ մէկ կուսակցութենէ մը ուրիշ կուսակցութեան մը ձեռքը անցնէր, թող կուտար որ իրմէ խլէին նախորդ օրը իր բոլոր յանձներուն կամ ընտանիքներուն խոստովանութիւնը, վերջէն ինքզինքը կ'արդարացնէր իր թուլութեանը համար, ըսելով որ ֆրանսերէն չէր գիտեր, կու լար և կը գանգատէր որ միայն խռովարարներ կային իր շուրջը։ Կուատէ ճարտարութիւնը ունեցաւ Լաֆայէթի առաջարկութիւնները խոստովանցնել տալու իրեն. և Պիւռօ՝ տը Բիւզի, որ ամբաստանուած էր իբր միջնորդ, դատի կանչուեցաւ։

Սակայն Լաֆայէթի բարեկամներէն և սպաներէն մէկն էր. ամէն բան ուրացաւ համարձակութեամբ և այնպիսի չեչոտ մը, որ համոզեց թէ իր զօրավարին բանակցութիւնները իրեն անծանօթ էին։ Լաֆայէթը պէ՞տք էր ամբաստանութեան ենթարկել թէ ոչ, այս հարցը նորէն յետաձգուեցաւ։

Գահընկէցութեան վճռադրութեան համար նշանակուած օրը կը մօտենար, ապստամբութեան յատակագիծը որոշուած և ծանօթ էր։ Մարսիլիացիները իրենց շատ հեռաւոր զօրանոցը ձգելով փոխադրուած էին Քորտըլիէներու մասնաճիւղը, ուր կը գտնուէր նոյնանուն ակումբը։ Այսպէսով Բարիզի կեդրոնը կը գտնուէին և գործողութեան վայրին շատ մօտ։

Երկու քաղաքապահ զօրաց սպաներ բաւական յանդգնութիւնը ունեցած էին փամփուշտներ բաշխելու դաշնակիցներուն. ամէն բան վերջապէս պատրաստուած էր Օգոստոս 10ին համար։



Մ Ա Ռ Ա

Օգոստոս 8ին վիճաբանեցան Լաֆայէթին վրայ։ Ստուար մեծամասնութիւն մը զայն ամբաստանութենէ զերծ համարեց։ Քանի մը երեսփոխաններ, զայրացած՝ անպարտութեան վճիռէն անուանական քուէարկութիւն կը պահանջեն և այս երկրորդ փորձին, չորս հարիւր քառասուն և վեց հոգի քաջութիւնը կ'ունենան զօրավարին ի նպաստ քուէ տալու, ընդդէմ երկու հարիւր ութսունի։ Ժողովուրդը այս լուրէն ըմբոստացած, ժողովասրահին դրան առաջքը հաւաքուեցաւ և նախատեց դուրս ելլող երեսփոխանները, մասնաւորապէս նեղելով անոնք որոնք ծանօթ էին իբր ժողովին աջակողմին պատկանող, ինչպէս Վօպլան, Ժիրարտէն, Տիւմա, եւն.։ Ամէն կողմէ կը բարկանան երեսփոխանական մարմնին դէմ և բարձրաձայն կը կրկնեն որ ժողովի մը համար՝ որ դաւաճան Լաֆայէթը անպարտ արձակած է, այլ եւս փրկութիւն չկայ։

Հետեւեալ օրը, Օգոստոս 9ին, տարօրինակ յուզում մը կը տիրէ երեսփո-

պատասխանեց Շապօ, և գծեց պիտի արգիլեն գործելէ։

Իրաւամբ միտքերը չատ գրգռուած ըլլալնուն համար, Բէզիօն չէր կրնար իր կասկածները հասկցնել և իր ազդեցութիւնը ի գործ դնել։ Ընդհանուր գրգռում մը կը տիրէր Բարիզի մէջ. Թմբուկը զինուորեալները հաւաքելու համար կը զարնուէր բոլոր թաղերուն մէջ. ազգային պահակախումբի վաշտերը կը հաւաքուէին և իրենց պահականոցները կ'երթային չատ այլազան տրամադրութիւններով։

Մասնաճիւղերը կը լեցուէին ո՛չ թէ քաղաքացիներու հոծ թիւովը, այլ ամենէն տաքգլուխներով։ Ապստամբական Յանձնաժողովը նիստ գումարած էր երեք կէտերու վրայ։ Յուանիէ և ուրիշ քանի մը հոգի Ֆօպուռ Սէն-Մարսօ էին, Սանդէռ և Ռէյսդէրման գրաւած էին Ֆօպուռ Սէնթ-Անդուանը. վերջապէս՝ Տանդօն, Քամիլ Տէմուլէն և Ֆաբռ, Մարսիլիոյ վաշտին հետ Քորտըլիէներու Ակումբն էին։ Պարպառու ժողովին և պալատին համար լրատուներ դնելէ ետք սուրհանդակներ առած էր իր տրամադրութեանը տակ, որոնք պատրաստ էին. Հարաւային Ֆրանսա մեկնելու։ Ասկէ զատ թոյն պատրաստած էր ինքզինքին համար, որովհետեւ այնքա՛ն անվստահ էին յաջողութեան վրայ և Քորտըլիէներու Ակումբին մէջ կը սպասէր ապստամբութեան արդիւնքին։ Չի գիտցուիր թէ ո՛ւր էր Ռօպէսպիէռ. Տանդօն պահած էր Մառան մասնաճիւղին մէկ նկուղին մէջ և յետոյ գրաւած էր Քորտըլիէներու օթեակը։ Ամէն մարդ կը վարանէր, ինչպէս մեծ որոշումի մը նախընթօրին, բայց Տանդօնի յանդգնութիւնը դէպքին ծանրութեանը համեմատութեան հասցնելով իր որոտացող ձայնը կը թնդացնէր. կը թուէր այն բանտը, զորս «արքունիքին ոճիրները կ'անուանէր» կը յիշեցնէր պալատին ապերախտութիւնը Սահմանադրութեան դէմ, խաբող խօսքերը, անոր խաբեբայ խոստումները, որոնք միշտ դըրժուած էին իր վարմունքով. և վերջապէս կը թուէր անոր յայտնի մեքենայութիւնները, օտար պետութիւնները Ֆրանսա բերելու համար։ «Այլ եւս, կ'ըսէր, ժողովուրդը միայն ինքզինքին կրնայ դիմել, որովհետեւ Սահմանադրութիւնը անբաւական է և Ժողովը անպարտ հռչակեց Լաֆայէթը. ուրեմն միայն դուք կաք ինքզինքնիդ փրկելու համար։ Օ՛ն, անապարեցէք, որովհետեւ այս իրիկուն իսկ պալատին մէջ դաւանի արբանեակներ յարձակում մը պիտի ընեն ժողովուրդին վրայ և զայն պիտի ջարդեն, Բարիզէ մեկնելէ և Քօպլէնց երթալէ առաջ։ Ինքզինքնիդ պաշտպանեցէք ուրեմն, ի զէ՛ն, ի զէ՛ն։»

Այդ վայրկեանին, հրացանի հարուած մը կը թնդայ Առեւտրական Ծննեակին մէջ. ի զէ՛ն աղաղակը չուտով ընդհանուր կը դառնայ. ապստամբութիւնը հռչակուած է։ Այդ պահուն ժամը տասնըմէկ ու կէսն էր։ Մարսիլիացիները չարք կը կազմեն Քորտըլիէներուն Ակումբին դրան առջեւ. կը գրաւեն թնդանօթները և հոծ ամբոխ մը որ իրենց կողմը կ'անցնի, զիրենք կը սատարացնէ։

Քամիլ Տէմուլէն և ուրիշներ կը փութան երթալ ահազանգը հնչեցնել տալու համար. բայց զանազան մասնաճիւղերու մէջ նոյն եռանդը չէին գտներ։ Կը ջանան անոնց եռանդը արթընցնել. քիչ յետոյ մասնաճիւղերը կը միանան և պատուիրակները կ'ընտրեն, անոնք պէտք էր Քաղաքապետարան երթային և նախկին քաղաքապետութիւնը հեռացնելով գրաւէին վարչութիւնը։ Վերջապէս, զանգակներուն վրայ կը խոյանան, զանոնք բռնի կը գրաւեն և ահազանգը կը սկսի հնչել։ Այս չարագուշակ աղմուկը մայրաքաղաքին անսահման տարածութեանը մէջ կը թընդայ. փողոցէ փողոց, չէնքէ չէնք կը

փոխանցում, կը կանչէ երեսփոխանները, պաշտօնատարները, քաղաքացիները իրենց պաշտօններուն գլուխը. վերջապէս ահազանգը պալատին կը հասնի և կը ծանուցանէ որ դժխեմ գիշերը հասած է. սարսափելի գիշեր, խուլքի և արեան գիշեր, որ միապետին անցուցած վերջին գիշերը պիտի ըլլար՝ իր նախահարց պալատին մէջ։

Արքունիքի սուրհանդակներ եկան Թագաւորին լուր տալու թէ աղէտին ժամը կը մօտենար. մինչ Քօրտըլիէներու ակումբի նախագահին խօսքը կ'իմացնէին. նախագահը ըսած էր իր մարդոց թէ Յունիս 20ին պէս խնդիրը քաղաքացիական պարզ պտոյտ մը ըլլալուն վրայ չէր. այսինքն, եթէ Յունիս 20ը պատրաստութիւն էր, Օգոստոս 10ը վճռական հարուածը պէտք էր ըլլար։ Այդ բանին վրայ, արդարեւ, այլ եւս չէին տարակուսեր։ Թագաւորը, Թագուհին, իրենց երկու զաւակները, իրենց քոյրը՝ Տիկին Էլիզապէթ, պառկած չէին և ճաշէն ետք խորհրդակցութեան սրահը անցեր էին, ուր կը գտնուէին բոլոր նախարարները և մեծ թուով բարձրաստիճան սպաներ։ Հոն, իրարանցումի մէջ, կը խորհրդակցէին թագաւորական ընտանիքը փրկելու միջոցներուն վրայ։ Դիմադրութեան միջոցները տկար էին, որովհետեւ անոնք գրեթէ ջնջուած էին թէ՛ ժողովին հրամանագիրներով, և թէ՛, նոյն իսկ, արքունիքին սխալ գործելակերպին հետեւանքով։

Սահմանադրական պահակախումբը, ժողովին մէկ հրամանագրովը լուծուած ըլլալով, Թագաւորը անոր տեղը ուրիշ մը դրած չէր, այլ նախընտրած էր Սուիսներուն թոշակները շարունակել, քան թէ նոր պահակախումբ մը կազմել. այս պատճառով 1800 հոգի նուազ կար պալատին մէջ։

Այն զօրագունդերը, որոնց տրամադրութիւնները Թագաւորին նպաստաւոր թուեցան վերջին դաշնակցութեան միջոցին, Բարիզէն հեռացուած էին հրամանագիրներու սովորական միջոցաւ։

Չէին կրցած զուիցերիական զինուորները հեռացնել իրենց վայելած մասնաւոր իրաւանց շնորհիւ, բայց զանոնք զրկեր էին հրետանիէն. և արքունիքը, երբ միջոց մը որոշած էր Նորմանտիա փախչիլ, հոն ղրկած էր այս հաւատարիմ վաշտերէն մէկը, ցորենահատիկներու ժամանումին հսկել տալու պատրուակին տակ։ Այս վաշտը դեռ ետ չէր կանչուած։ Քանի մը զուիցերիացի զինուորներ միայն, որոնք Քուրպըվուայի մէջ էին, Բէզիոնի հրամանով ետ դարձած էին, և անոնք ալ մէկ ութէն ինը հարիւր հոգիի հազիւ կը հասնէին։ Ոստիկան զինուորները կազմուած էին ֆրանսական պահակախումբի նախկին զինուորներէն, որոնք Յուլիս 14ի հեղինակներն էին։

Վերջապէս, ազգային պահակախումբը ոչ նոյն ոգին ունէր, ո՛չ նոյն կազմակերպութիւնը, ոչ ալ 1789 Հոկտեմբեր 6ի անձնուիրութիւնը։ Սպայակոյտը, ինչպէս տեսանք, վերակազմուած էր։ Շատ մը քաղաքացիներ զինուորական ծառայութենէն զզուած էին և անոնք որ պատալիք եղած չէին, երկչոտ դարձած էին ամբոխին կատաղութենէն։ Ազգային պահակախումբը, ինչպէս պետութեան միւս մարմինները, ուրիշ կազմուած էր, յեղափոխական նոր սերունդով մը։ Ինչպէս ամբողջ Ֆրանսան՝ ան ալ բաժնուած էր սահմանադրականի և հանրապետականի։ Ֆիյ-Սէն-Թոմայի ամբողջ վաշտը և Բըդի-Բէռի վաշտին մէկ մասը անձնուէր էին թագաւորին. միւսները կա՛մ անտարբեր, կա՛մ թշնամի էին։ Մանաւանդ թնդանօթաձիգները, որ գլխաւոր ուժը կը կազմէին, վճռական հանրապետականներ էին։ Այն յոգնու-

թիւնը, զոր այս վերջիններուն զէնքերուն տեսակը կը պատճառէր, հեռացուցած էր, հարուստ միջակարգը. այսպէսով դարբիններ և երկաթագործներ թնդանօթներուն տիրացած էին և ժողովուրդին զգացումները ունէին, քանի որ անոր մէկ մասը կը կազմէին:

Ուրեմն, Թագաւորին կը մնար 8 կամ 900 զուիցերիացի զինուոր և ազգային պահակախումբէն ալ մէկ վաշտէն քիչ աւելի բան մը:

Կը յիշուի որ Լաֆայէթի հրաժարելէն ի վեր, ազգային պահակախումբի հրամանատարութիւնը փոխն ի փոխ կ'անցնէր բանակին վեց պետերուն: Այդ պահուն Մանտա հրամանատարին ձեռքն էր, նախկին զինուորական, իր սահմանադրական համոզումներուն համար գէշ աչքով դիտուած արքունիքէն, բայց Մանտա արքունիքին կը ներշնչէր բացարձակ վստահութիւն, իր հաստատակամութեան, լռամտութեան և պարտականութեան հանդէպ ունեցած անձնուիրութեան պատճառով: Մանտա, որ ընդհանուր հրամանատար էր, այս չարաբաստիկ գիշերը աճապարանքով ըրած էր կարելի եղած պատրաստութիւնները միայն:

Արդէն, այն մեծ նրբանցքին տախտակամածը որ Լուվրի պալատը Թիւիլըրիին կը միացնէ, որոշ տարածութեան մը վրայ կտրուած էր, յարձակողներուն անցքը արգիլելու համար: Ուրեմն, Մանտա չխորհեցաւ պալատին այս թեւը պաշտպանել և իր բոլոր ջանքերը կեդրոնացուց բակերուն, պարտէզին և յարկաբաժիններուն կողմը:

Հակառակ՝ թմբուկի միջոցով եղած զինուելու հրաւէրին, քիչ թուով ազգային պահակախումբ հաւաքուած էր: Վաշտերը ամբողջացած չէին և ամենէն եռանդուները անհատապէս կուգային պալատ, ուր Մանտա զանոնք զինուորագրած և բաժնած էր, և Զուիցերիացի զինուորները բակերուն պարտէզին և յարկաբաժիններուն մէջ դրած էր: Զուիցերիացի զինուորներուն բակին մէջ թնդանօթ մը դրած էր, երեք հատ մէջտեղը և երեք հատ ալ իշխանաց բաժնին մէջ:

Դժբախտաբար այս թնդանօթները յանձնուած էին ազգային պահակախումբի թնդանօթաձիգներուն և այսպէսով թշնամին տեղւոյն վրայ կը գտնուէր: Բայց Զուիցերիացի զինուորները որոնք եռանդով ու հաւատարմութեամբ տոգորուած էին, զանոնք աչքէ չէին փախցներ և պատրաստ էին, առաջին շարժումին դրուելու և թնդանօթներն ու թնդանօթաձիգները պալատին շրջապատէն դուրս նետել:

Ասոնցմէ զատ Մանտա զետեղած էր ոստիկան զինուորներու յառաջապահ զինուորներու քանի մը խումբեր Լուվրի սիւներուն երկայնքին և Քաղաքապետարանին մէջ: Բայց այս ոստիկան զինուորները, ինչպէս ըսինք, նախկին Ֆրանսական պահակախումբէն կազմուած էին:

Պալատին այս պաշտպաններուն պէտք է աւելցնել շատ մը հին ծառայողներ, որոնց տարիքը և խոհականութիւնը արգելք եղած էր տարագրելու և վտանգի պահուն պալատ փութացած էին, ոմանք Քօպլէնց գացած չըլլալնին քաւելու համար, և ոմանք ալ վեհանձնօրէն մեռնելու Թագաւորին քով: Աճապարանքով զինուած էին բոլոր այն զէնքերով, զորս կրցած էին հայթայթել պալատին մէջ. ունէին հին սուրեր, ատրճանակներ, զորս իրենց գօտիին կապած էին թաշկինակներով, մէկ քանին նոյն իսկ վառարաններուն թիերն ու ունելիները առած էին. այսպէս ուրեմն, այդ չարագուշակ վայրկեանին կատակները չմոռցուեցան, երբ արքունիքը գոնէ անգամ մը հարկ էր որ լուրջ ըլլար: Անօգուտ մարդոց այս բազմութիւնը, հեռու՝ կարենալ ծառայելէ, կը նեղացնէր ազգային պա-

հակախուժումը, որ անոնցմէ կը կասկածէր եւ այսպէսով կ'աւելցնէր արդէն մեծ եղող խառնակութիւնը։

Վարչութեան բոլոր անդամները պալատ եկած էին։ Առաջինի դուքս դը լա Ռոշֆուքօ հոն էր. հոն էր նաեւ Ռէօտէրէր, դատախազը. կանչած էին Բէդիօնը, որ հասաւ երկու քաղաքապահական պաշտօնեաներով։ Ստիպեցին Բէդիօնը որ ուժը ուժի միջոցաւ ետ մղելու հրամանը ստորագրէ եւ անիկա ստորագրեց ապստամբութեան մեղսակից չերեւալու համար։ Ուրախ էին զինքը պալատին մէջ ունենալնուն եւ իր անձովը ժողովուրդին սիրելի պատանդ մը ունենալուն համար. Ժողովը այս ծրագրին տեղեկանալով հրամանագրով մը զայն ժողովարան կանչեց. Թագաւորը, որուն խորհուրդ կու տային պատանդը պահել, չուզեց որոշել, եւ այսպէս, Բէդիօն Թիւիլըրիէն մեկնեցաւ առաւօտեան 6 եւ է արգելքի։

Անգամ մը որ բանակցութիւնը բանակցութեամբ ետ մղելու հրամանը տուած, զանազան կարծիքներ յայտնուեցան զայն գործածելու եղանակին վրայ։ Այս դժուարին միջակին մէջ, մէկէ աւելի անիմաստ ծրագիրներ ներկայացուած ըլլալու են մտքերու։ Հատ մը կար որ բնական յանդուգն էր, եւ հաւանականաբար կրնար յաջողիլ. առաջարկ էր՝ յարձակումին առաջքն առնել ապստամբները ցրուելով, քանի դեռ անոնք բազմաթիւ չէին, եւ Մարսիլիացիներուն հետ հազիւ թէ քանի մը հազար հոգիի խումբ մը կը կազմէին։ Իրաւ ալ, այդ վայրկեանին Ֆօպուր Սէն-Մարսօն դեռ հաւաքուած չէր։ Սանդէռ Ֆօպուր Սէնթ-Անթուանի մէջ կը վարանէր. միայն Տանթօն, եւ Մարսիլիացիները համարձակած էին ժողովուիլ Գօռդըլիէներու ակումբը, եւ անհամբերութեամբ Սէն Միշէլի կամուրջին վրայ կը սպասէին միւս յարձակողներուն։

Ուժեղ յարձակում մը պէտք կ'ըլլար զանոնք ցրուելու, եւ, վարանումի պահուն, սարսափ տարածում մը անմիջական կերպով պէտք արգիլէր ապստամբութիւնը։ Մանտա ուրիշ աւելի ապահով եւ աւելի օրինական յատակագիծ մը ներկայացուց. անիկա համակարծիք էր սպասելու որ ապստամբները յառաջ խաղան եւ անոնց վրայ յարձակիլ երկու վճռական կէտերէ, անմիջապէս որ շարժման մէջ մտնեն։ Նախ կ'ուզէր որ, երբ մէկ քանին երեւային Քաղաքապետարանի հրապարակին վրայ Սէն-Ժանի կամարէն, յանկարծական հրացանաձգութիւն մը ըլլայ եւ նոյն բանը ընէին Լուվրի մէջ ընդդէմ անոնց, որ Նոր Կամուրջէն պէտք գային Թիւիլըրիի քարափին երկայնքին։ Այս դիտմամբ ոստիկան զինուորներուն հրամայած էր թողուլ որ ապստամբները անցնին, եւ յետոյ հրացան պարպել անոնց ետեւէն, մինչ Քարուզէլի մէջ կեցած ոստիկան զինուորները անոնց վրայ պիտի խուժէին Լուվրի դռներէն եւ պէտք յարձակէին շարքերուն գլուխին վրայ. այս կարգի միջոցներու յաջողութիւնը գրեթէ ապահով էր։ Արդէն՝ զանազան պահականոցներու հրամանատարները, մանաւանդ Քաղաքապետարանի պահականոցինը Մանտայէն ստացած էին անհրաժեշտ հրամանները։

Արդէն, տեսանք որ նոր քաղաքապետութիւն մը կազմուած էր Քաղաքապետարանին մէջ. միայն պահուած էին Տանթօն եւ Մանուէլ։ Մանտային հրամանը կը ցուցնեն այս ապստամբ քաղաքապետութեան, որ անմիջապէս կ'ազդարարէ հրամանատարին՝ ներկայանալ Քաղաքապետարան։ Ազդարարագիրը կը տանին պալատ, ուր կ'անգիտանային քաղաքային իշխանութեան նոր կազմութիւնը։ Մանտա կը վարանի. բայց զինքը շրջապատողները եւ նոյն իսկ նախարարութեան անդամ-

ները, չգիտնալով թէ ի՛նչ անցած դարձած էր, և մտածելով որ տակաւին պէտք չէր անտեսել օրէնքին ներկայանալ մերժելով հրամանատարը, խորհուրդ կու տան հնազանդիլ: Մանդատ որոշում մը կու տայ. Բէթիոնի ստորագրած հրամանը, որ էր բռնութիւնը ետ մղել բռնութեամբ, կը յանձնէ իր տղուն, որ իրեն հետ պալատին մէջ էր, և կը հնազանդի քաղաքապետութեան ազդարարութեան: Մօտաւորապէս առաւօտեան ժամը չորսն էր. հազիւ թէ Քաղաքապետարան կը հասնի, երբ հոն յանկարծակիի կու գայ նոր վարչութիւն մը գտնելով: Անմիջապէս զայն կը շրջապատեն, կը հարցաքննեն տուած հրամանին մասին և յետոյ զինքը կը ճամբեն, և ճամբած միջոցնին նախագահը չարագուշակ շարժում մը կ'ընէ, որ մահուան վճիռ մը կ'ըլլայ: Իրաւ ալ, հազիւ թէ դժբախտ հրամանատարը դուրս ելած էր, և ահա զինքը պաշարեցին ու ատրճանակի հարուածով մը գետին ձգեցին, զինքը մերկացուցին հագուստներէն, բայց գրպաններուն մէջ չգտան այն հրամանը, որ իր տղուն յանձնած էր, և իր մարմինը նետեցին գետը, ուր այնքան ուրիշ դիակներ շուտով իրեն պիտի հետեւէին:

Այս արիւնոտ արարքը, անդամալուծեց պալատին պաշտպանութեան բոլոր միջոցները, ամէն կարգի գործակցութիւն քանդեց, և արգիլեց որ պաշտպանութեան յատակագիծը գործադրուի: Սակայն, դեռ ամէն բան կորսուած չէր, և ապստամբութիւնը ամբողջովին կազմակերպուած չէր: Մարսիլիացիները, անհամբերութեամբ սպասելէ ետք Ֆոպուր Սէնթ-Անթուանի ժողովուրդին, որ չէր հասնէր, միջոց մը կարծեր էին որ օրը կորսուեցաւ: Բայց Ուէսթերման, սուրը Սանթէռին կուրծքին տնկելով, զայն ստիպած էր յառաջ ընթանալ: Այն ատեն, յաղթադրօշակ, արուարձաններու ապստամբները հասան, ոմանք Սէնթ-Օնորէ փողոցէն, ոմանք ալ Նէօֆ և Ռուայեալ կամուրջներէն, և Լուվրի անցքերէն: Մարսիլիացիները շարքերուն գլուխն անցած կը քալէին Պրըտոնցի դաշնակիցներուն հետ, և իրենց զէնքերը ուղղած էին պալատին վրայ: Մեծ թուով ապստամբներուն՝ որոնք ամէն վայրկեան կը ստուարանային, միացած էր հետաքրքիրներու ամբոխ մը. և թշնամին ա՛լ աւելի ահագին կ'երեւար քան ինչ որ էր իրականութեան մէջ:

Այն միջոցին որ դէպի պալատ կ'երթային, Սանթէռ փութացած էր Քաղաքապետարան, ազգային պահակախումբին ընդհանուր հրամանատարը անուանել տալու համար ինքզինքը, և Ուէսթէրմանի պատերազմի դաշտին վրայ մնացած էր, մարտիկները վարելու համար:

Ամենուրեք, ուրեմն, տարօրինակ խառնակութիւն մը կար, այն աստիճան որ Բէթիոն համաձայնուած յատակագծին համեմատ, թէեւ պէտք էր իր տանը մէջ փակուած ըլլալ ապստամբներուն ձեռամբ, բայց, դեռ կը սպասէր պահակազօրքերուն, որոնք իր պատասխանատուութիւնը պիտի սքօղէին ձեւական բռնութեամբ մը: Ինքն իսկ լուր ղրկեց Քաղաքապետարան, և վերջապէս քանի մը հարիւր հոգի ղրկին իր դրան առաջքը, որպէս զի բանտարկուած վիճակի մէջ երեւայ:

Այդ միջոցին պալատը բոլորովին պաշարուած էր: Պաշարողները հրապարակին վրայ կը դառնէին. և ծագող արշալոյսին հետ, անոնք կը տեսնէին բակերուն հին դռներուն մէջերէն, կը նշմարուէին պատուհաններէն, ինչպէս անոնց հրացանները որոնք ուղղուած էին պալատին, կը լսէին իրենց շփոթ աղաղակները և սպառնալի երգերը:

Ապստամբներուն առաջքը կտրելու յատակագծին ուզեցին վերադառնալ՝

բայց երբ Մոնտայնի մահը իմացան, նախարարները և վարչութիւնը համակարծիք եղան յարձակումին սպասելու, որպէս զի օրէնքի սահմաններուն մէջ զէնք առնելու ստիպուած ըլլան։

Ռոպեսպիեռ նոր աչքէ անցուցած էր այս գինուորներուն շարքերը, և Ջաքո-բինական գինուորներուն, ինչպէս ազգային պահակութեան օրինական յաջողութիւնը ըրած էր արդիւնքով յարձակելու, բայց խօսքի կը յուսայէր քանի մը օր եւ մէկ քանի ամսով։ Թագաւորն ալ հրաւիրեցին որ անձամբ կառավարէ հաստատութիւններուն գործողքը, որոնք պատրաստ էին զինքը պաշտպանելու։ Այս դժուար Թագաւորը զի-չերն ի բուն մահէ ըրած էր այն գանագան խորհուրդներ, որոնք իր շուրջը կը խաչաձեւուէին և ինքնամփոփումի հազուագիւտ վայրկեաններուն աղօթած էր իր Թագաւորութեան կեանք, իր զաւակներուն և իր քրոջը համար, որոնք իր վախին առարկաները էին։ «Վեհափառ, բաւ է իրեն Թագուհին կորովով, ինքզինքնիդ ցուցնելու վայրկեանը եկած է»։ Կը հաստատեն նոյն իսկ որ ատրճանակ մը խլելով ծերունի մ'Աֆրիի մէջքէն, Թագուհին զայն երկնցուց ներկայացուց Թագաւորին։ Մարի-Անտուանէթի աչքերը արցունքներէն կարմրած էին, բայց ճակատը բարձրացած կը թուէր, իր ռունգները ուռած էին բարկութենէն և հպարտութենէն։ Գալով Թագաւորին, իր անձին համար բնաւ մը չէր վախնար, նոյն իսկ, այս մեծագոյն վտանգի միջոցին, մեծ պաղարիւն մը կը ցուցնէր, բայց անհկա մտահոգ էր իր ընտանիքին համար և զայն այդ քան վտանգի ենթարկուած տեսնելու ցաւէն իր գլխագծերը այլայլած էին։ Այլ սակայն հաստատակամութիւն ցոյց տուաւ։ Մանիշակագոյն հագուստ մը հագած էր, սուր մը կը կրէր և իր մազերուն յարդարանքը որ նախորդ օրէն ի վեր չէր շտկուած, կիսովին խանգարուած էր։ Պաշտպանմէն երեւալով, նշմարեց որ առաջին Թնդանօթ մը ուղղուած էր պալատին վրայ։ Իր ներկայութիւնը անգամ մըն ալ վերարծարծեց խանդավառութեան բեկորները։ Նռնաձիգներուն գդակները յանկարծ բարձրացան սուիններուն և սուիններուն ծայրը. Նախկին կեցցէ՛ թագաւորը աղաղակը վերջին անգամ մը խնդաց հայրական պալատին կամարներուն ներքեւ։ Վերջին միացեալ քաջութիւն մը վերածնեցաւ, յուսալքեուած սիրտերը տաքցան, և զէտ վստահութեան ու յոյսի վայրկեան մը ունեցան։

Այս միջոցին է որ ազգային պահակութեան քանի մը նոր վաշտեր հասան, որոնք մինչեւ աւելի ու կամուած էին և Մանտայի նախապէս տուած հրամանին կ'անսային։ Այն միջոցին մտան պալատին պարտէզը՝ երբ կեցցէ՛ թագաւորը աղաղակները կը թնդային։ Ասոնք միացան անոնց, որոնք այսպէսով միապետին ներկայութիւնը կ'ողջունէին, ասոնք ալ, որ նոյն զգացումները չունէին, վտանգի մէջ կարծեցին ինքզինքնին և յիշելով այն ժողովրդական սպառնալիքները՝ զորս կը պատմէին, երեւակայեցին որ դաւաճանի ապահովներուն ձեռքը պիտի իյնային։ Անմիջապէս գուշակեցին որ թշուառական Մանտան զիրենք մատնած է և տեսակ մը շփոթութիւն յառաջ բերին։ Թնդանօթաձիգները այս օրինակին հետեւելով իրենց զէնքերը դարձուցին պալատին դէմ։ Անմիջապէս վիճաբանութիւն մը սկսաւ անձնուէր վաշտերուն հետ. Թնդանօթաձիգները զինաթափ եղան և ջոկատ մը յանձնուեցան ու դէպի պարտէզ ուղղեցին նորեկ զինուորները։

Այդ վայրկեանին, Թագաւորը՝ պատշգամբ երեւալէ ետք, սանդուղներէն կ'իջնար զինուորական քննութիւն ընելու համար պարտէզին մէջ. Թագաւորին դուռը կը ծանուցանեն.



ՏԵՍԱԿՑՈՒԹԻՒՆ ՄԱՌԱՑԻ ԵՒ ՌՈԲԷՍՓԻԷՌԻ

իւրաքանչիւր զինուոր կարգի կը մտնէ. Թագաւորը կ՚անցնի անոնց մէջէն հան-դարտ երեւոյթով մը և ամենուն վրա պտըտցնելով արտայայտիչ նայուածք-ներ, որոնք սիրտերու կը թափանցեն։ Զինուորներուն ուղղուելով, վստահ ձայնով մը անոնց կ՚ըսէ որ զգածուած է անոնց անձնուիրութենէն, թէ ա-նոնց կողքին սիրով կենայ եւ թէ իր անձը պաշտպանելով զինուորները իրենց կիները և զաւակները պաշտպանած կ՚ըլլային։ Յետոյ կ՚անցնի զաւիթէն պարտէզ երթալու համար, բայց նոյն վայրկեանին կը լսէ՝ Անկցի՛ Վէթօն ա-ղաղակը, զոր նոր հասնող վաշտերէն մին կ՚արձակէր։ Երկու սպաներ, որոնք իր քովը էին, կ՚ուզեն այն ատեն զին-քը արգիլել պարտէզին զինուորական քննութիւնը ընելէ, ուրիշներ զինքը կը հրաւիրեն Բօն-Դուրնանի պահականոցը այցելել. Թագաւորը քաջութեամբ այս բանին կը համաձայնի։ Բայց կ՚առաջ-

բայց երբ Մանտային մահը իմացուն, նախարարները և վարչութիւնը համակարծիք եղան յարձակումին սպասելու, որպէս զի օրէնքի սահմաններուն մէջ զէնք առնելու առիթ տուած ըլլան։

Ռէօտէրէր նոր աչքէ անցուցած էր այս զինուորներուն շարքերը, և Զուիցերիական զինուորներուն, ինչպէս ազգային պաշտպանութեան օրինական յայտարարութիւնը ըրած էր արգիլելով յարձակիլ, բայց խիստ կը հրամայէր բանի ուժը ետ մղել բանի ուժով։ Թագաւորն ալ հրաւիրեցին որ անձամբ կատարէր հաւատարիմներուն զօրանցքը, որոնք պատրաստ էին զինքը պաշտպանելու։ Այս դժբաղդ թագաւորը գիշերն ի բուն մտիկ ըրած էր այն զանազան խորհուրդն'ըը, որոնք իր շուրջը կը խաչաձեւուէին և ինքնամփոփումի հաղուադէպ վայրկեաններուն աղօթած էր իր թագաւորական կնոջ, իր զաւակներուն և իր քրոջը համար, որոնք իր վախին առարկաներն էին։ «Վեհափառ, բառ իրեն Թագուհին կարդալով, ինքզինքնիդ ցուցնելու վայրկեանը եկած է։». Կը հաստատեն նոյն իսկ որ ատրճանակ մը խլելով ծերունի տ'Աֆրիի մէջքէն, Թագուհին զայն ետ առնելով ներկայացուց Թագաւորին։ Մարի-Անտուանէթի աչքերը արցունքներէն կարմրած էին, բայց ճակատը բարձրացած կը թուէր, իր ռունգերը ուռած էին բարկութենէն և հպարտութենէն։ Գալով Թագաւորին, իր անձին համար բանէ մը չէր վախնար, նոյն իսկ, այս մեծագոյն վտանգի միջոցին, մեծ պաղարիւն մը կը ցուցնէր, բայց անիկա մտահոգ էր իր ընտանիքին համար և զայն այդ քան վտանգի ենթարկուած տեսնելու ցաւէն իր գիմագծերը այլայլած էին։ Այլ սակայն հաստատամութիւն ցոյց տուաւ։ Մանիշակագոյն հագուստ մը հագած էր, սուր մը կը կրէր և իր մազերուն յարդարանքը որ նախորդ օրէն ի վեր չէր շակուած, կիսովին խանգարուած էր։ Պատշգամէն երևալով, նշմարեց որ անհաշին թնդանօթ մը ուղղուած էր պալատին վրայ։ Իր ներկայութիւնը անգամ մըն ալ վերարծարծեց խանդավառութեան կոչերը։ Նռնաձիգներուն գնդակները յանկարծ բարձրացան սուրերուն և սուիններուն ծայրը. նախկին կեցցէ՛ թագաւորը աղաղակը վերջին անգամ մը ինչող հայրական պալատին կամարներուն ներքեւ։ Վերջին մնացորդ քաջութիւն մը վերածնեցաւ, յուսահատուած սիրտերը տաքցան, և դեռ վստահութեան ու յոյսի վայրկեան մը ունեցան։

Այս միջոցին է որ առաջային պաշտպանութեան քանի մը նոր վաշտեր հասան, որոնք միւսներէն աւելի ալ կազմուած էին և Մանտայի նախապէս տուած հրամանին կ'անսային։ Այն միջոցին մտան պալատին պարտէզը՝ երբ կեցցէ՛ թագաւորը աղաղակները կը թնդային։ Ասոնք միացան անոնց, որոնք այսպէսով միապետին ներկայութիւնը կ'ողջունէին, ասոնք ալ, որ նոյն զգացումները չունէին, վտանգի մէջ կարծեցին ինքզինքնին և յիշելով այն ժողովրդական տատանումները՝ զորս կը պատմէին, երևակայեցին որ դաւաճան սպաներուն ձեռքը պիտի իյնային։ Անմիջապէս գոչեցին որ թշուառական Մանտան զիրենք մատնած է և տեսակ մը շփոթութիւն յառաջ բերին։ Թնդանօթաձիգները այս օրինակին հետեւելով իրենց զէնքերը դարձուցին պալատին դէմ։ Անմիջապէս վիճաբանութիւն մը սկսաւ անձնուէր վաշտերուն հետ. Թնդանօթաձիգները զինաթափ եղան և ջոկատի մը յանձնուեցան ու դէպի պարտէզ ուղղեցին նորեկ զինուորները։

Այդ վայրկեանին, Թագաւորը՝ պատշգամէն երեւալէ ետք, սանդուղներէն կ'իջնար զինուորական քննութիւն ընելու համար պարտէզին մէջ. Թագաւորին դալը կը ծանուցանեն.



ՏԵՍԱԿՑՈՒԹԻՒՆ ՄԱՌԱՏԻ ԵՒ ՌՈԲԷՍՊԻԷՌԻ

խուռաքանչիւր զինուոր կարգի կը մանէ. Թագաւորը կ՚անցնի անոնց մէջէն հան-դարտ երեւոյթով մը և ամենուն վրա պտըտցնելով արտայայտիչ նայուածք-ներ, որոնք սիրտերու կը թափանցեն։ Զինուորներուն ուղղուելով, վստահ ձայնով մը անոնց կ՚ըսէ որ զգածուած է անոնց անձնուիրութենէն, թէ ա-նոնց կողքին միշտ կենայ եւ թէ իր անձը պաշտպանելով զինուորները իրենց կիները և զաւակները պաշտպանած կ՚ըլլային։ Յետոյ կ՚անցնի զաւիթէն պարտէզ երթալու համար, բայց նոյն վայրկեանին կը լսէ՝ Անկցի՜ Վէթօն ա-ղաղակը, զոր նոր հասնող վաշտերէն մին կ՚արձակէր։ Երկու ազաներ, որոնք իր քովն էին, կ՚ուզեն այն ատեն զին-քը արգիլել պարտէզին զինուորական քննութիւնը ընելէ, ուրիշներ զինքը կը հրաւիրեն Բօն-Դուրնանի պահականոցը այցելել. Թագաւորը քաջութեամբ այս բաներն կը համաձայնի։ Բայց կ՚առաջ-

ուի անցնիլ Ֆէօյեաններու ակումբին պարահարթին երկայնքէն որ բռնաւորուած էր բազմութեամբ։ Ճամբէն անցած միջոցին Թագաւորը կառքի ամբոխէն բաժնուած էր միայն եռագոյն ժապաւէնով մը. հակառակ ասոր, կը յառաջանայ և ամէն տեսակ նախատինք և հայհոյութիւն կը լսէ. կը տեսնէ նոյն իսկ որ իր աչքին առջև վաշտերը կ'անցնին պարտէզէն և անկէ դուրս կ'ելլեն, երթալ միանալու համար յարձակողներուն՝ Կարուզէլի հրապարակին վրայ։

Այս դաւաճանութիւնը և թնդանոթաձիգներուն դաւաճանութիւնը, և անկէ վերջ ազդակները Թագաւորին բոլոր յոյսերը մարեցին։ Այդ պահուն իսկ նռնաձիգները, որ Լուվրի սիւներուն տակ և ուրիշ տեղեր հաւաքուեր էին, կամ ցրուած էին, կամ միացած՝ ժողովուրդին։ Ազգային պահակախումբը, իր կողմէն, որ պալատին յարկաբաժինները կը գրաւէր և որուն վրայ կը կարծէին թէ կրնան յոյս դնել, դժգոհ էր ազնուականներու հետ գտնուելուն համար և այնպէս կը թուէր որ կը կասկածէր անոնցմէ։ Թագուհին վստահացուց պահակախումբը. «Նըռնաձիգնե՛ր, գոչեց. այդ ազնուականները ցոյց տալով, ասոնք ձեր ընկերներն են, եկած են ձեզի հետ մեռնելու։» Սակայն, հակառակ այս առերևոյթ քաջութեան, յուսահատութիւնը Թագուհիին հոգւոյն մէջ մտած էր։ Այդ զինուորական քննութիւնը ամէն բան կորսնցնել տուած էր և Թագուհին կը գանգատէր որ Թագաւորը ոևէ կորով ցոյց չտուաւ։ Պէտք է կրկնել որ այս դժբաղդ Թագաւորը բնաւ չէր վախնար ինքզինքին համար։ Արդարև, անիկա մերժած էր, ինչպէս Յուլիս 16ին, կըրծակալ մը հագնիլ, ըսելով որ կռուի օր մը կուրծքը բաց ըլլալու էր, ինչպէս իր յետին ծառային։ Ուրեմն քաջութիւնը իրեն չէր պակսեր և այնուհետև բաւական ազնիւ և բաւական բարձր քաջութիւն մը յայտնեց. բայց իրեն կը պակսէր յարձակողականի յանդգնութիւնը, ինքը հետևողական չէր, և, օրինակի համար, պէտք չէր վախնար արիւն հոսեցնելէ, երբ կը համաձայնէր որ օտար դեսպանութիւնները Ֆրանսա մտնէին։ Ճիշդ է որ, ինչպէս յառաջ ըսուեցաւ, եթէ ձի մը հեծնէր, և իրեններուն գլուխը անցած գնդակ արձակէր, ապստամբութիւնը ցրուած պիտի ըլլար։

Այդ միջոցին վարչութեան անդամները պալատին ընդհանուր անկարգութիւնը տեսնելով և դիմադրութեան յաջողութենէն վհատած, Թագաւորին ներկայացան և անոր խորհուրդ տուին որ Ժողովին ապաստանի։ Այս խորհուրդը, որ, ինչպէս Թագաւորներուն տրուած բոլոր խորհուրդները, երբ մանաւանդ չեն յաջողիր, այնքա՛ն գըրպարտութեան ենթարկուած է, միակ պատշաճ խորհուրդն էր այդ պահուն։ Այս նահանջով առաջքը կ'առնուէր արեան թափուելուն և Թագաւորական ընտանիքը կը խուսափէր յայտնի մահէ մը, եթէ պալատը յարձակումով առնուէր։ Իրաց այդ վիճակին մէջ, յարձակումին յաջողութիւնը տարակուսելի չէր, և նոյն իսկ, եթէ ըլլար, տարակոյսը բաւական էր որպէսզի ինքզինքնին այդ վտանգին չենթարկէին։

Թագուհին ուժգնօրէն հակառակեցաւ այդ ծրագրին. «Տիկի՛ն, ըսաւ անոր Ռէօտէրէր, դուք ձեր ամուսնոյն և ձեր զաւակներուն կեանքը վտանգի կ'ենթարկէք, խորհեցէ՛ք, այն պատասխանատուութեան վրայ զոր կ'առանձնէք։» Հակաճառութիւնը բաւական բուռն եղաւ. վերջապէս Թագաւորը որոշեց Ժողովին մէջ ապաստանիլ և համակերպած ձևով մը՝ «Մեկնի՛նք» ըսաւ իր ընտանիքին և անոնց՝ որ զինքը կը շրջապատէին։

— Պարո՛ն, ըսաւ Թագուհին Ռէօտէրէրին, դուք պատասխանատու էք

Թագաւորին և իմ զաւակներուս կեանքին։

— Տիկի՛ն, յարգեց անիկա, կը խոստանամ իրենց հետ մեռնիլ, բայց աւելի, ոչինչ կրնամ խոստանալ»։

Այն ատեն ճամբայ ելան Ժողով երթալու համար, անցնելով պարտէզէն, Թէօյլըրիներու ակումբին սարահարթէն և Մանէժի բակէն։ Պալատին բոլոր ազնուականները և ծառաները կը փութային Թագաւորին հետեւելու համար և կրնային զայն վտանգի ենթարկել ժողովուրդը գրգռելով և գէշ տրամադրելով Ժողովը, իրենց ներկայութեամբ։ Ռէօտէրէր ունայն ջանքեր կ'ընէր զանոնք կեցնելու համար և իր բոլոր ուժովը կը կրկնէր անոնց, որ սպաննել պիտի տային Թագաւորական ընտանիքը։ Վերջապէս յաջողեցաւ անոնցմէ մեծ թուով մարդիկ հեռացնել, և մեկնեցան։ Զուիցերիական զինուորներու ջոկատ մը և հատ մըն ալ ազգային պահակախումբէն կ'ընկերանային Թագաւորական ընտանիքին։ Ժողովէն պատգամաւորութիւն մը եկաւ զայն դիմաւորել և առաջնորդելու իր ծոցին մէջ։ Այդ պահուն այնպիսի մեծ խռնում մը կար որ, ամբոխը անթափանցելի էր։ Բարձրահասակ Նռնաձիգ մը խլեց գահաժառանգը և իր բազուկներուն մէջ զայն բարձրացնելով բազմութիւնը անցաւ, գլխէն վեր բռնելով զայն։ Թագուհին, այս տեսնելով, կարծեց որ իր զաւակը կը յափշտակեն և ճիչ մը արձակեց, բայց զինքը ապահովցուցին. Նռնաձիգ զինուորը ժողովարան մտաւ և եկաւ Թագաւորական մանկիկը զետեղեց Ժողովին սեղանին վրայ։

Այն ատեն, Թագաւորը և իր ընտանիքը մտան Ժողով, իրենց կը հետեւէին երկու նախարարներ. «Ես եկայ, ըսաւ Լուդովիկոս ԺԶ., մեծ ոճիրի մը առաջքը առնելու համար և կը մտածեմ, Պարոններ, որ ոչ մէկ տեղ աւելի ապահովութեան մէջ կրնամ ըլլալ որքան ձեր մէջը։»

Վէրնիօ կը նախագահէր. Միապետին պատասխանեց որ կրնար վստահ ըլլալ Ազգային Ժողովին հաստատակամութեան վրայ, և թէ անդամները երդում ըրած են մեռնիլ, պաշտպանելով գոյութիւն ունեցող իշխանութիւնները։

Թագաւորը նստեցաւ նախագահին քով. բայց Շապօ դիտողութիւն ըրաւ որ անոր ներկայութիւնը կրնար վիճաբանութեանց ազատութեանը վնասել. այն ատեն Թագաւորը տեղաւորեցուցին նիստերը արձանագրող գրագիրին օթեակին մէջ։ Քանդեցին անոր երկաթեայ վանդակապատը, որպէս զի, եթէ օթեակը յարձակումի ենթարկուէր, կարենար իր ընտանիքին հետ առանց արգելքի խուժել Ժողովին մէջ։ Թագաւորը իր ձեռքերով այս աշխատութեան օգնեց. վանդակապատը ինկաւ և նախարարները, ազնուականները կրցան աւելի ազատօրէն հասնիլ գահազուրկ միապետին վերջին ապաստանարանին։

Այն ատեն, Ռէօտէրէր կը պատմէ անցած դարձածը, կը նկարագրէ ամբոխին կատաղութիւնը և այն վտանգները որոնց ենթարկուած է պալատը, որուն բակերը արդէն ողողուած է ժողովուրդով։ Ժողովը կը հրամայէ որ իր պատգամաւորներէն քանի հոգի երթան ժողովուրդը հանդարտեցնելու։ Պատգամաւորները կը մեկնին։ Յանկարծ, կը լսուին թնդանօթի հարուածներ. ահ ու սարսափը կը տարածուի սրահին մէջ։ «Ձեզի կը զգուշացնեմ, կ'ըսէ Թագաւորը, որ քիչ առաջ Զուիցերիական զինուորներուն արգիլեցի գնդակ արձակել։» Բայց նորէն թնդանօթի հարուածներ կը լսուին. հրացանաձգութեան աղմուկը անոր կը միանայ. սոսկումը իր լրումին կը հասնի։ Շուտով կ'իմացնեն որ Ժողովէն ղրկուած պատգամաւորները ցիր ու ցան եղած են,

*Նոյն պահուն սրահին դրանը վրայ կը յարձակին եւ կը թնդացնեն ահուելի հարուածներով, զինուած քաղաքացիներ կ'երեւան դռնէ մը։ «Բռնութեան ենթարկուած ենք» կը գոչէ քաղաքապահ սպայ մը։ Նախագահը գլխարկը գլուխը կը դնէ, շատ մը երեսփոխաններ իրենց նստարաններէն կ'ելլեն յարձակողները հեռացնելու համար. վերջապէս, խռովութիւնը կը խաղաղի եւ հրացանաձգութեան ու թնդանօթի որոտմանց անդադրում աղմուկին մէջ երեսփոխանները կը գոչեն, «Կեցցէ ազգը, ազատութիւնը, հաւասարութիւնը։»*

*Ամենէն մահացու կռիւը սկսած էր պալատին մէջ։ Թագաւորը զայն թողած ըլլալով, բնականօրէն կարծուած էր որ ժողովուրդը կատաղութեամբ չպիտի յարձակէր լքուած բնակարանի մը վրայ. արդէն, այն շփոթութիւնը, որուն մէջ կը գտնուէին, կ'արգիլէր անով զբաղիլ եւ ոեւէ հրաման տուած չէին զայն պաշտպանելու. միայն պալատին ներքին մասին մէջ մացուցին պարտէզը գրաւող բոլոր զինուորները, որոնք խառնակ կերպով մը ցրուեցան յարկաբաժիններուն մէջ, սպասաւորներուն, ազնուականներուն եւ սպաներուն հետ։ Պալատին մէջ բազմութիւնը շատ մեծ էր, եւ հազիւ թէ կարելի էր անոնց մէջ շարժիլ, հակառակ՝ տեղին ընդարձակ տարածութեանը։*

*Ժողովուրդը, որ դեռեւս կ'անգիտանար Թագաւորին մեկնումը, բաւական երկար ատեն սպասելէ ետք գլխաւոր դրան առաջ, վերջապէս յարձակեցաւ դրանը վրայ, զայն խորտակեց կացինի հարուածներով եւ խուժեց թագաւորական պարտէզին մէջ։ Այն ատեն, շարք կազմեց եւ պալատին դէմ դարձուց թնդանօթները, որոնք անխոհեմաբար բակին մէջ ձգուած էին զինուորներու նահանջէն ետք։ Սակայն, յարձակողները դեռ գործի չէին սկսած. բարեկամական ցոյցեր կ'ընէին պատուհաններէն նայող զինուորներուն։ «Պալատը մեզի յանձնեցէ՛ք, կը գոչեն, եւ մենք բարեկամներ պիտի ըլլանք իրարու։» Զուիցերիական զինուորները հաշտարար դիտաւորութիւններ կը յայտնեն եւ փամփուշտները կը նետեն պատուհաններէն վար։ Քանի մը յանդուգն յարձակողներ շարքերէն կ'անջատուին եւ կը յառաջանան մինչեւ պալատին գաւիթը։ Մեծ սանդուղին տակ փայտեայ ղանգուած մը դրած էին պատնէշի ձեւով եւ որուն ետեւ խառն ի խուռն ապաստանած էին Զուիցերիացի զինուորներ եւ ազգային պահակազօրքեր։ Անոնք որ դուրսէն մինչեւ հոս հասած էին, կ'ուզէին աւելի առաջ անցնիլ եւ արգելքը վերցնել։ Բաւական երկար վիճաբանութենէ մը ետք, որ սակայն տակաւին կռիւ յառաջ չի բերեր, արգելքը կը վերցուի։ Այն ատեն, յարձակողները կը մտնեն սանդուղին մէջ, կրկնելով որ պէտք է պալատը իրենց յանձնել։ Կը հաւատեն որ այդ պահուն Նիզակաւոր զինուորները, որոնք բակին մէջ մնացած էին, կեռերով կը բռնեն Զուիցերիացի պահակները, որոնք դուրսը կեցած էին եւ զանոնք կը սպաննեն. կ'ըսեն նաեւ թէ հրացանի հարուած մը քաշուեցաւ պատուհաններուն դէմ եւ Զուիցերիական զինուորները զայրացած, փոխադարձաբար կրակեցին։ Իրաւամբ, անմիջապէս սարսափելի հրացանազարկ մը թնդաց պալատին մէջ, եւ անոնք որ հոն մնացած էին, փախան, գոչելով որ մատնուած են։ Դժուար է այս շփոթութեան մէջ աղէկ հասկնալ թէ ո՞ր կողմէն արձակուեցան առաջին հարուածները։ Յարձակողները կը պնդեն որ բարեկամաբար յառաջացան, եւ անգամ մը որ պալատ մտած էին, յանկարծակիի եկան, եւ դաւաճանութեամբ հրացանի բռնուեցան. սակայն շատ ճըշմարտանման չէ, որովհետեւ Զուիցերիական զինուորները բաւական զօրաւոր դիրքի մէջ չէին։ Թագաւորին մեկնե-*

չէն ետք կռուելու ոեւէ պարտաւորութիւն չունենալով, միայն փախչելու վրայ խորհելու էին և դաւաճանութիւն մը այդ բանին չէր նպաստեր։ Արդէն, նոյն իսկ եթէ նախայարձակ ըլլալը բան մը կրնար փոխել այս դէպքերուն բարոյական նկարագրէն, պէտք է ընդունիլ որ առաջին և իրական յարձակումը, այսինքն պալատին դէմ յարձակումը ապստամբներէն կուգար։ Մնացածը այլ եւս միայն անխուսափելի արկած մըն էր և միայն դիպուածին վերագրելի։

Ինչ որ ալ ըլլայ, անոնք որ գաւիթը մտած էին և մեծ սանդուղին վրայ կը գտնուէին, յանկարծ կը լսեն հրացաններու համազարկը, և փախած ատենին իսկ սանդուղներուն վրայ գնդակներու կարկուտ մը կը տեղայ վրանին։ Այն ատեն Զուիցերիական զինուորները կարգապահութեամբ վար կ'իջնեն, և երբ վերջին աստիճաններուն կը հասնին, թագաւորական պարտէզին գաւիթէն դուրս կը սպրդին, հոն, բակին մէջ եղած թնդանօթներէն մէկը ձեռք կ'անցընեն և հակառակ սարսափելի հրացանաձգութեան մը, զայն կը դարձնեն և կը պարպեն Մարսիլիացիներուն վրայ, որոնցմէ մեծ թիւով մարդիկ կ'իյնան։ Մարսիլիացիները այն ատեն կը նահանջեն և կրակը շարունակելով, պարտէզը կը ձգեն կ'երթան։ Անմիջապէս, սարսափը կը տարածուի ժողովուրդին մէջ. ամէն կողմէ կը փախչին և կը հասնին արուարձանները։ Եթէ, այդ պահուն, Զուիցերիացիները իրենց յաջողութիւնը շարունակէին, եթէ ուրիշ զինուորները, որոնք Լուվրի հրապարակը կեցած էին, փոխանակ իրենց դիրքերը լքելու՝ կրակ ընէին ետ մղուած յարձակողներուն վրայ, լմնցած էր, եւ յաղթանակը կը մնար պալատին։

Բայց այդ պահուն կը հասնի թագաւորին հրամանը, որ յանձնուած էր Գ. տ'Էրվիյի, որով կ'արգիլէր կրակ ընել։ Գ. տ'Էրվիյի գաւիթ հասաւ այն պահուն, երբ Զուիցերիացիները նոր ետ մղած էին յարձակողները։ Զանոնք կեցուց և թագաւորին կողմէ հրամայեց իրեն հետեւիլ և ժողովին երթալ։ Այն ատեն բաւական մեծ թիւով Զուիցերիական զինուորներ կը հետեւին Գ. տ'Էրվիյի մինչև Ֆէօյեան ակումբը երթալու համար ամենախիստ հրացանաձգութեան մէջէն։ Այսպէսով պալատը կը զրկուէր զինքը պաշտպանողներու մեծ մասէն. սակայն, ըլլա՛յ սանդուղին վրայ, ըլլա՛յ յարկաբաժիններու մէջ կը մնան դեռ բաւական մեծ թիւով դժբաղդ Զուիցերիական զինուորներ, որոնց չէր հասած հրամանը, եւ որոնք, քիչ ատենէն, դիմադրութեան առանց ոեւէ միջոցի պիտի ենթարկուէին ամենէն սարսափելի վտանգներուն։

Այդ միջոցին յարձակողները վերստին հաւաքուած էին։ Մարսիլիացիները Պրըտօններուն հետ մէկ եղած կը զայրանային տեղի տուած ըլլալնուն համար. զինքը կը գրգռեն և կատաղութեամբ լեցուած, կը վերսկսին։ Ուէսդէրման, որ այդ օրէն սկսեալ ճշմարիտ տաղանդ մը ցոյց տուաւ, անոնց ջոկերը կը վարէ իմաստութեամբ, կը խուժեն եռանդով, մեծ թիւով կ'իյնան, բայց վերջապէս գաւիթը կը հասնին, կ'անցնին սանդուղը և պալատին կը տիրանան։ Իրենց ետեւէն նիզակներով զինուած ամբոխը կը խուժէ և այս տեսարանին միացած մասը շուտով ջարդ մը կ'ըլլայ։ Դժբաղդ Զուիցերիական զինուորներ ի զուր գթութիւն կը խնդրեն զէնքերնին նետելով. անխղճօրէն կ'սպաննուին։ Կրակ կը ձգեն պալատին մէջ. հոն գտնուող շատ մը ծառաներ կը հալածուին, ոմանք կը փախչին, ոմանք կը զոհուին։ Բազմութեան մէջ վեհանձն յաղթականներ կան, «Գթացէ՛ք կիներուն, կը գոչէ անոնցմէ մէկը, ազգը մի՛ անպատուէք», և կ'ազատեն թագուհիին պատուական աղախիններէն ո-

մանք, որոնք ծունկի եկած էին իրենց գլխուն վրայ բարձրացած սուրերուն դիմաց։ Շատ զոհեր ալ եղան. ոմանք ալ ճզմուելով եղան փախչելու մէջ, երբ այլ եւս ինքզինքնին պաշտպանելու քաջութիւնը չունէին. Նոյն իսկ, այս կատաղի յաղթականները առաքինի վարմունք մը ցոյց տուին, եւ պալատին մէջ գտնուած դրամը, ըլլա՛յ ժողովրդային անապարծութեամբ, ըլլա՛յ գերագրգռութենէ յառաջ եկած անշահախնդրութեամբ, տարուեցաւ Ժողովին։

Ժողովը անձկութեան մէջ մնացած էր, կախուած հետեւանքին սպասելով։ Վերջապէս ժամը տասներկուքին, կը լսեն յաղթութեան հազարաւոր անգամ կրկնուած աղաղակները։ Դուռները կը բացուին ուրախութենէ և կատաղութենէ արբեցած ամբոխի մը ջանքերուն առջեւ։ Սրահը կը լեցուի հոն բերուած բեկորներով, գերի բռնուած Զուիցերիական զինուորներով, որոնց կեանքը կը բաշխեն ժողովրդային այս ողորմածութեամբ՝ Ժողովը մեծարելու համար։ Այս միջոցին Թագաւորը և իր ընտանիքը, քարտուղարին անձուկ օթեակին մէջ ապաստանած, ներկայ կ'ըլլային իրենց գահուն քայքայումին և յաղթանակներու ուրախութեան։ Վէրնեօ րոպէ մը թողած էր նախագահութեան աթոռը, գահընկեցութեան հրամանագիրը խմբագրելու համար. սրահ մտաւ կրկին և Ժողովը արձակեց սա հռչակաւոր հրամանագիրը, որուն համեմատ՝

« Լուդովիկոս ԺԶ. առժամապէս դադրեցուցուած է թագաւորութենէն,

« Դաստիարակութեան ծրագիր մը հրամայուած է Թագաւորազուն իշխանին համար,

« Ազգային Դաշնադրութիւն մը (Քօն-վանսիօն) մը հրաւիրուած է ժողով գումարելու։ »

Միապետութիւնը քայքայելը անոր վերջի թողուած ծրագիրն մըն էր ուրին, քանի որ միայն առժամապէս կը դադրեցնէին թագաւորը և իշխանին դաստիարակութիւնը կը պատրաստէին։ Ընդհակառակը, ինչ վախով կը դպէին այս հնամենի իշխանութեան. ինչ տեսակ վարանումով կը մօտենային այն հին բունին, որուն ներքեւ Ֆրանսական սերունդներ փոխն ի փոխ երջանիկ եւ դժբաղդ եղած էին, բայց որուն տակ վերջապէս ապրած էին։

Սակայն եւ այնպէս, ժողովրդային երեւակայութիւնը սրաթռիչ է, քիչ մը ժամանակ իրեն բաւական պիտի ըլլար, հնամենի յարգանքի մը մնացորդները ջնջելու համար, և դադարեալ միապետութիւնը քիչ ատենէն տապալեալ միապետութիւնը պիտի ըլլար։ Անիկա պիտի ջնջուէր ոչ թէ յանձին Լուդովիկոս ԺԱ.ի մը, Կարոլոս Թ.ի մը, Լուդովիկոս ԺԴ.ի մը, այլ յանձին Լուդովիկոս ԺԶ.ի, մէկն այն ամենէն պարկեշտ թագաւորներէն, որ երբեք բազմած ըլլայ գահու վրայ։

Զուիցերիական զինուորները քաջութեամբ պաշտպանած էին Թիւյլըրին, բայց իրենց դիմադրութիւնը անօգուտ եղաւ. մեծ սանդուղը գրաւուած էր, և պալատը առնուած էր։ Այլ եւս յաղթական ժողովուրդը ամէն կողմէ կը մտնէր թագաւորութեան այս բնակարանին մէջ, ուր ենթադրուած էր միշտ թէ խիստ մեծ դաւեր գոյութիւն ունին. անասելի երջանկութիւն մը, ահարկու ուժ մը և չարագուշակ դաւադրութիւններ ենթադրուած էին։ Ինչքան վրէժներ կային մի և նոյն ատեն լուծելիք հարստութեան, մեծութեան և իշխանութեան դէմ։

Ութսուն Զուիցերիական նռնակաձիգներ, որոնք փախչելու ատեն չէին ունեցած, կորովի կերպով կը պաշտպանեն իրենց կեանքը և անգթօրէն կը սպաննուին։ Յետոյ ամբոխը կը խուժէ յարկաբաժիններուն մէջ և իր կատաղութիւնը ի գործ կը դնէ այն անօգուտ բարեկամներուն վրայ, որոնք փութա-

ցած էին Թագաւորը պաշտպանել և կը հետապնդուէին ժողովրդային ատելութիւններէն դաշոյնի սուրին անունին տակ: Իրենց ապիկար պէնքերը կը ծառայէին միայն յաղթականները զայրացընելու և աւելի ծիծաղաշարժ դարձնելու այն ծրագիրները զորս արքունիքին կը վերագրէին: Բոլոր գոց դուռները կը խորտակուէին: Երկու սենեկապաններ ուզելով մեծ սրահին մուտքը արգիլել, զոհուելով ձեւակերպութեան՝ վայրկեանէն կը ջարդուէին: Թագաւորական ընտանիքին շատ մը ծառաները, ընդարձակ նրբանցքներէն կը փախչէին աղմկայոյզ կերպով մը, կը նետուէին պատուհաններէն դուրս, կամ պալատին անտառաստանութեանը մէջ ծածուկ անկիւն մը կը փնտռեն իրենց կեանքը պաշտպանելու համար: Թագուհիին նաժիշտները անոր յարկաբաժիններէն մէկուն մէջ կ'ապաստանէին և ամէն րոպէ կը սպասէին իրենց ապաստանին մէջ յարձակման ենթարկուելու: Տը Դիւրանդէ իշխանուհին յարկաբաժնին դուռները կը բանայ զինուորութեանը ամբոխին զայրոյթը չաւելցնելու համար: Յարձակողները կը ներխուժեն և կիներէն մէկը կը բռնեն. արդէն սուրը բարձրացած է գլխուն վրայ «Կիներուն գթացէ՛ք, կը գոչէ ձայն մը, մի՛ անպատուէք ազգը:» Այս խօսքին վրայ սուրը կը խոնարհի, Թագուհիին նաժիշտները խռովուած եւ պաշտպանուած, պալատէն դուրս կ'առաջնորդուին այս նոյն մարդիկներուն ձեռամբ, որոնք քիչ մը առաջ զանոնք սպանել ուզէին և որ ժողովրդային փոփոխականութեամբ հիմակ Թափօր կը կազմեն անոնց շուրջը, և զանոնք ազատելու համար ամենէն հնարամիտ միջոցները կը գործածեն:

Ջարդելէ ետք, ամբոխը կ'աւերէ. կը խորտակեն այն սքանչելի կահկարասիները և հանդերձները կը ցրուեն ընկերները: Ժողովուրդը կը տարածուի Թագուհիին յատուկ յարկաբաժինները եւ հոն ինքզինքը կուտայ շատ անպարկեշտութեան մը. կը մտնէ ամենէն ծածուկ անկիւններուն մէջ, կը փնտռէ թուղթերու գզրոցները, կը խորտակէ բոլոր կղպանքները և գոհացած կուտայ իր հետաքրքրութեան և աւերումի կրկին հաճոյքներուն: Սպաննութեան և թալանի գործողութիւնքին կուգայ կը միանայ հրդեհը: Արդէն բազրը, լափելէ ետք արտաքին բակերուն կից խանութները, կ'սկսի հասնիլ շէնքին և կ'սպառնայ կատարելապէս փճացնել Թագաւորութեան այս պատկառելի բնակարանը: Աւերածութիւնը չի սահմանափակուիր այս ոճիր շրջափակին, այլ աւելի հեռուներն ալ կը տարածուի: Փողոցներուն մէջ իրարու վրայ դիզուած կը կենան կարասիի բեկորները և դիակները. ով որ փախչի, կամ կարծուի թէ կը փախչի, հրացանի հարուած մը կ'ընդունի. Հրացանաձգութեան գրեթէ շարունակական աղմուկ մը կը յաջորդէ թնդանօթի թնդիւններուն և ամէն վայրկեան նոր սպաննութիւն մը կատարուած ըլլալը կ'իմացնէ:

Ինչպէս մարդ զզուանք կըզգայ այսպիսի յաղթութեան մը հետեւանքներէն, որոնք որ ալ ըլլան պարտուածները, յաղթականները, և այն դատը՝ որուն համար մարտնչեցան:

ՎԵՐՋ ԽՕԹՆԵՐՈՐԴ ԳԻՐՔԻ

մանք, որոնք ծունկի եկած էին իրենց գլխուն վրայ բարձրացած սուրերուն դիմաց։ Քիչ զոհեր ալ եղան. ոմանք ալ ճարպիկ եղան փախչելու մէջ, երբ այլ եւս ինքզինքնին պաշտպանելու քաջութիւնը չունէին. Նոյն իսկ, այս կատաղի յաղթականները առաքինի վարմունք մը ցոյց տուին, և պալատին մէջ գտնուած դրամը, ըլլա՛յ ժողովրդային անապարծութեամբ, ըլլա՛յ գերագրգռութենէ յառաջ եկած անշահախնդրութեամբ, տարուեցաւ ժողովին։

Ժողովը անձկութեան մէջ մնացած էր, կռուին հետեւանքին սպասելով։ Վերջապէս ժամը տասներկուքին, կը լսեն յաղթութեան հազարաւոր անգամ կրկնուած աղաղակները։ Դուռները կը բացուին ուրախութենէ և կատաղութենէ արբեցած ամբոխի մը ջանքերուն առջեւ։ Սրահը կը լեցուի հոն բերուած բեկորներով, գերի բռնուած Զուիցերիական զինուորներով, որոնց կեանքը կը բաշխեն ժողովրդային այս ողորմածութեամբ՝ Ժողովը մեծարելու համար։ Այս մէջոցին Թագաւորը և իր ընտանիքը, քարտուղարին անձուկ օթեակին մէջ ապաստանած, ներկայ կ՚ըլլային իրենց գահուն քայքայումին և յաղթականներու ուրախութեան։ Վէրնիօ բոպէ մը թողած էր նախագահութեան աթոռը, գահընկեցութեան հրամանագիրը խմբագրելու համար. սրահ մտաւ կրկին և Ժողովը արձակեց սա հռչակաւոր հրամանագիրը, որուն համեմատ՝

« Լուդովիկոս ԺԶ. առժամապէս դադրեցուցուած է թագաւորութենէն,

« Դաստիարակութեան ծրագիր մը հրամայուած է Թագաւորազուն իշխանին համար,

« Ազգային Դաշնադրութիւն մը (Գօն-վանսիօն) մը հրաւիրուած է ժողով գումարելու։ »

Միապետութիւնը քայքայելը աւելի վերջի թողուած ծրագի՞ր մըն էր ուրեմն, քանի որ միայն առժամապէս կը դադրեցնէին Թագաւորը և իշխանին դաստիարակութիւնը կը պատրաստէին։ Ընդհակառակը, ինչ վախով կը դպէին այս հնամենի իշխանութեան. ինչ տեսակ վարանումով կը մօտենային այն հին բունին, որուն ներքեւ Ֆրանսական սերունդներ փոխն ի փոխ երջանիկ եւ դժբաղդ եղած էին, բայց որուն տակ վերջապէս ապրած էին։

Սակայն եւ այնպէս, ժողովրդային երեւակայութիւնը սրաթռիչ է, քիչ մը ժամանակ իրեն բաւական պիտի ըլլար, հնամենի յարգանքի մը մնացորդները ջնջելու համար, և դադարեալ միապետութիւնը քիչ ատենէն տապալեալ միապետութիւնը պիտի ըլլար։ Անիկա պիտի ջնջուէր ոչ թէ յանձին Լուդովիկոս ԺԱ.ի մը, Կարոլոս Թ.ի մը, Լուդովիկոս ԺԴ.ի մը, այլ յանձին Լուդովիկոս ԺԶ.ի. մէկն այն ամենէն պարկեշտ թագաւորներէն, որ երբեք բազմած ըլլայ գահու վրայ։

Զուիցերիական զինուորները քաջութեամբ պաշտպանած էին Թիւլըրին, բայց իրենց գլխաւորութիւնը անօգուտ եղաւ. մեծ սանդուղը գրաւուած էր, և պալատը առնուած էր։ Այլ եւս յաղթական ժողովուրդը ամէն կողմէ կը մտնէր թագաւորութեան այս բնակարանին մէջ, ուր ենթադրած էր մինչեւ թէ խիստ մեծ դանձեր գոյութիւն ունին. անսահման երջանկութիւն մը, ահարկու ուժ մը և չարագուշակ դաւադրութիւններ ենթադրած էին։ Ինչքան վրէժներ կային մի և նոյն ատեն լուծելիք հարստութեան, մեծութեան և իշխանութեան դէմ։

Ութսուն Զուիցերիական նռնաձիգներ, որոնք փախչելու ատեն չէին ունեցած, կորիւնի կերպով կը պաշտպանէին իրենց կեանքը և անգթօրէն կը սպաննուէին։ Ցասկոտ ամբոխը կը խուժէ յարկաբաժիններուն մէջ և իր կատաղութիւնը ի գործ կը դնէ այն անօգուտ բարեկամներուն վրայ, որոնք փութա-

ցած էին Թագաւորը պաշտպանել եւ կը հետապնդուէին ժողովրդային ատելու-թիւններէն դաշոյնի ասպետ անունին տակ : Իրենց ամփոփ զէնքերը կը ծա-ռայէին միայն յաղթականները զայրացը-նելու եւ աւելի ճշմարտանման դարձնե-լու այն ծրագիրները զորս արքունիքին կը վերագրէին : Բոլոր դոց դուռները կը խորտակուէին : Երկու սենեկապաններ ուզելով մեծ սրահին մուտքը արգիլել, զոհուելով ձեւակերպութեան՝ վայրկեա-նին կը ջարդուէին : Թագաւորական ըն-տանիքին շատ մը ծառաները, ընդար-ձակ նրբանցքներէն կը փախէին աղմկա-յոյզ կերպով մը, կը նետուէին պատու-հաններէն դուրս, կամ պալատին ան-սահմանութեանը մէջ ծածուկ անկիւն մը կը փնտռէին իրենց կեանքը պաշտ-պանելու համար : Թագուհիին նաժիշտ-ները իրար յարկաբաժիններէն մէկուն մէջ կ'ապաստանէին եւ ամէն րոպէ կը դո-ղային իրենց ապաստանին մէջ յար-ձակման ենթարկուելու : Տը Թարանդ իշխանուհին յարկաբաժնին դուռները կը բանայ ազնուականութեամբ ամբոխին զայրոյթը չմեծցնելու համար : Յարձա-կողները կը ներկայանան եւ կիներէն մէկը կը բռնեն . արդէն սուրը բարձ-րացած է գլխուն վրայ «Կիներո՛ւն գթա-ցէ՛ք, կը գոչէ ձայն մը, մի՛ անպատ-ուէք ազգը : » Այս խօսքին վրայ սուրը կը խոնարհի, Թագուհիին նաժիշտները խնայուած եւ պաշտպանուած, պալա-տէն դուրս կ'առաջնորդուին այս նոյն մարտիկներուն ձեռամբ, որոնք քիչ մը առաջ զանոնք պիտի զոհէին եւ որ ժո-ղովրդային փոփոխականութեամբ հի-մակ Թափօր կը կազմէին անոնց շուրջը, եւ զանոնք ազատելու համար ամէնէն հնարամիտ միջոցները կը գործածէին :

Ջարդելէ ետք, ամբոխը կ'աւրէ . կը խորտակէին այն արքունիքի կահկարա-սիները եւ հեռուները կը ցրուէին բեկոր-ները : Ժողովուրդը կը տարածուի Թա-գուհիին յատուկ յարկաբաժինները եւ հոն ինքզինքը կու տայ շատ անպարկեշտ ուրախութեան մը . կը մտնէ ամէնէն ծածուկ անկիւններուն մէջ, կը փնտռէ Թուղթերու գզրոցները, կը խորտա-կէ բոլոր կղպանքները եւ զուարճացած կու տայ իր հետաքրքրութեան եւ աւե-րումի կրքին հաճոյքներուն : Սպաննու-թեան եւ Թալանի զարհուրանքին կու-գայ կը միանայ հրդեհը : Արդէն բազ-մը, լափելէ ետք պալատին բակերուն կից խանութները, կ'սկսի համնիլ շէնքին եւ կ'սպառնայ կատարելապէս փճացնել Թագաւորութեան այս պատ-կառելի բնակարանը : Աւերածութիւնը չի սահմանափակուիր այս [illegible] շրջա-փակին, ո՛չ աւելի հեռուներն ալ կը տարածուի : Փողոցներուն մէջ իրարու վրայ դիզուած կը կենան կարասիի բե-կորները եւ դիակները . ով որ փախչի, կամ կարծուի թէ կը փախչի, հրացանի հարուած մը կ'ընդունի . հրացանաձգու-թեան գրեթէ շարունակական աղմուկ մը կը յաջորդէ Թնդանօթի Թնդիւննե-րուն եւ ամէն վայրկեան նոր սպաննու-թիւն մը կատարուած ըլլալը կ'իմացնէ :

Ինչպէս մարդ զզուանք կ'զգայ այսպիսի յաղթութեան մը հետեւանք-ներէն, որոնք որ ալ ըլլան պարտուած-ները, յաղթականները, եւ այն դատը որուն համար մարտնչեցան :

ՎԵՐՋ ԵՕԹՆԵՐՈՐԴ ԳԻՐՔԻ

# ՈՒԹԵՐՈՐԴ ԳԻՐՔ

## ՎԱԼՄԻ

*Ժիրոնտէն դահլիճը կրկին պաշտօնի գլուխ կ'անցնի, Դանթօն դատական նախարար կ'ըլլայ. — Արքայական ընտանիքին վիճակը. — Օգոստոս 10 էն ետք կուսակցութեանց դիրքը Ժողովին մէջ եւ անկէ դուրս. — Համայնքային Խորհուրդի կազմակերպութիւնը եւ ազդեցութիւնը, անոր պահանջած բազմատեսակ իշխանութիւնները. Ժողովին դէմ ցոյց տուած անկախութիւնը. — Ոճրագործ արտասովոր դատարանի մը կազմութիւնը. — Բանտերուն վիճակը՝ Օգոստոս 10 էն ետք. — Լաֆայէթ կ'ընդդիմանայ նոր կառավարութեան. — Անիկա, ամբաստանութեան ենթարկուելով, կը թողու իր բանակը եւ Ֆրանսան. Աւստրիացիները շղթայակապ կ'ընեն զայն. — Տիւմուրիէի կացութիւնը. — Տէրութեանց դաշնադրութիւնները եւ փոխադարձ կացութիւնը միացեալ բանակներուն ու Ֆրանսական բանակին. — Բրուսիացիները կը գրաւեն Լոնվին. այս յաղթին վրայ Բարիզ խռով կ'անցնի. — Համայնքային Խորհուրդի ձեռք առած յեղափոխական միջոցները. կասկածելիները կը ձերբակալուին. — Կոտորած՝ բանտերուն մէջ՝ Սեպտեմբեր 2 ին, 3 ին, 4 ին. 5 ին եւ 6 ին. այս արիւնալի օրերուն գլխաւոր անձնաւորութիւնները եւ պարագաները. — Արկօնի արշաւանքը. — Տիւմուրիէի զինուորական յատակագծերը. — Բրուսիացիները կը գրաւեն Կրան Բրէի բանակատեղին. — Վալմիի յաղթանակը. — Միացեալ բանակներուն նահանջը. այս նահանջին պատճառներուն վրայ զրոյցներ:*

Լուդովիկոս ԺԶ.ի գահընկեցութեամբ գործադիր իշխանութիւնը լուծուած ըլլալով, այլ եւս Բարիզի մէջ կը մնային երկու իշխանութիւն, Համայնքայինը եւ Ժողովինը: Ինչպէս տեսնուեցաւ Օգոստոս 10ի պատմութենէն, մասնաճիւղերու երեսփոխանները, քաղաքապետարանին մէջ հաւաքուելով, գրաւած էին քաղաքային իշխանութիւնը, նախկին պաշտօնակալները վռնտելով, եւ ապստամբութիւնը ղեկավարած էին ամբողջ գիշերը եւ Օգոստոս 10ի օրը: Անոնք, իրականութեան մէջ, ձեռք անցուցած էին արդէն բուն ոյժը, ամենքն ալ յաղթութենէն խանդավառուած էին, եւ կը ներկայացնէին այն յեղափոխական դասակարգը, նոր ու եռանդուն, որ դեռ նոր մաքառած էր ամբողջ Նախաշրջանի միջոցին, ընդդէմ անդորրութեանն այն միւս դասակարգի մարդոց, որոնք թէեւ աւելի դաստիարակուած, բայց նուազ գործունեայ էին, եւ որոնցմէ կը բաղկանար Օրէնսդիր Ժողովը:

Մասնաճիւղերու երեսփոխաններուն առաջին գործը եղաւ պաշտօնազուրկ ընել բոլոր բարձր իշխանութիւնները, որոնք գերագոյն իշխանութեան աւելի մօտ ըլլալով աւելի յարած էին անոր: Անոնք պաշտօնանկ ըրած էին ազգային պահակազօրաց սպայակոյտը եւ կազմալուծեցին Թիւյլըրիի պալատը պաշտպանող բանակը: Մանտան խլելով հոնկէ եւ Սանդէրը հաշակելով ազգային պահակազօրաց հրամանատար: Ոչ նուազ



ԱՐԻՒՆԱՀԵՂ ԸՆԴՀԱՐՈՒՄՆԵՐ ՇԱՆ Զ'ԷԼԻԶԷԻ ՄԷՋ

փութկոտութիւն ցոյց տալով դաւանող հնչակերս նախապատուութիւնը, որ իր գտնուած բարձր դիրքէն միշտ կը հակառակէր ժողովրդային բաղձանքներուն, որոնց մասնակից չէր ինքը:

Գաղղ. քաղաքականութեան, անոր ալ փորձական մարմինը ջնջած էին, իրենք անցած էին այդ իշխանութեան գլուխը, պաշտօնի վրայ պահելով միմիայն քաղաքապետ Բէյիոնը և Մանուէլը և 16 քաղաքապետական փա-

ռիչները: Այս բոլորը ի գլուխ հանուած էր պալատին վրայ կատարուած յարձակման միջոցին: Տանդոն յանդգնօրէն կազմակերպած էր այս փոթորկալի նիստը, և երբ, Զուիցերիացի զինուորներուն թնդանօթը հու մղած էր ամբոխը, գետին քարուն ի վեր, մինչև քաղաքապետարանը, Տանդոն դուրս ելած էր բակով. «Մեր եղբայրները օգնութեան կը խնդրեն. երթանք օգնենք իրենց:» Իր ներկայութեան շնորհիւ ժողովուրդը

անմիջապէս կռիւի դաշտը վերադարձած էր եւ յաղթութիւն շահած էր։

Կռուին վերջանալէն յետոյ, խնդիր եղաւ Բէզիոնի արձակել իր պաշտօնէն եւ կրկին քաղաքացի ընել զինքը։ Սակայն եւ այնպէս, ըլլա՛յ իր անձին ճշմարիտ շահերուն համար, կամ թերեւս ինքզինքնուն չտալու մօտ չառ խորհամիտ օրեր մը, ստորադասութեան առաջին վայրկեաններուն, որչափ մէկ երկու օր ալ դեռ պահել զայն իր պաշտօնին մէջ, անոր կեանքը պահպանելու պատրուակին տակ։

Վարչական մարմնի խորհրդակցութեան սրահին մէջէն, միեւնոյն ժամանակ, վերցուցած էին Լուդովիկոս ԺԶ-ի, Պայիի եւ Լաֆայէթի կիսանդրիները։ Նոր դասակարգը, որ երեւան կու գար, ահա՛ այսպէս կը հեռացնէր յեղափոխութեան առաջին տրամադրութիւնները, անոնց տեղ դնելու համար ուրիշները։

Քաղաքային իշխանութեան ատեանները պարտաւոր էին միջոցներ գտնել, ժողովին հետ յարաբերութեան մէջ մտնելու համար․ զայն կը մեղադրէին որ վարանոտ է եւ նոյն իսկ արքայական ուղղութիւն մը կը բռնէ, բայց անոնք դեռ կը շարունակէին, յանձին ժողովին անանց միակ գերագոյն իշխանութիւնը որ գոյութիւն ունէր, քնաւ տրամադիր չէին զայն չճանչնալու։

Օգոստոս 10ի ատենէն իսկ, պատգամաւորութիւն մը ներկայացաւ ժողովին, յայտնելու համար թէ ապստամբական մարմին մը կազմուած է, եւ պարզելու՝ անոր կատարածները։ Տանդօն որ մաս կը կազմէր այս պատգամաւորութեան՝ ըսաւ․ «Այն ժողովուրդը, որ զմեզ կը ղրկէ դէպ ի ձեզ, պաշտօն տուաւ մեզի՝ յայտարարել ձեզի թէ, միշտ վստահութեան արժանի կը համարէ զձեզ, սակայն եւ այնպէս, հարկադրութենէ մղեալ ձեռք առնուած արտասովոր միջոցներուն մասին միմիայն Ֆրանսական ժողովուրդը կը հանչնայ իբր դատաւոր, ժողովուրդը՝ ձեր եւ մեր վեհապետը, որ հաւաքուած է նախնական ժողովներուն մէջ։»

Ժողովը, իր նախագահին բերնով պատասխանեց այս պատգամաւորութեան, թէ բոլոր եղածները կը վաւերացնէր եւ անոնց կը յանձնարարէր կարգ կանոն եւ անդորրութիւն պահպանել։ Անկէ զատ, ժողովը պատգամաւորութեան հաղորդեց նոյն օրը արուած որոշումները, հրատարակելով որ զանոնք առած է։ Այնուհետեւ, խմբագրեց յայտարարութիւն մը, յիշեցնելու համար թէ ամէն ով պարտաւոր է յարգել ինչքերը եւ կեանքերը, ու իր անդամներէն մէկ քանիին պաշտօն յանձնեց ժողովուրդին հաղորդելու այս յայտարարութիւնը։

Այդ պահուն, ժողովին գլխաւոր հոգը պէտք էր ըլլար քանդուած թագաւորութեան տեղը անցնիլ։ Նախարարները, որոնք մղուած էին Գործադիր իշխանութեան անուան տակ, առժամապէս պաշտօն առին իրմէ՝ վարչական գործերը ի գլուխ հանել եւ օրէնքները գործադրել։ Դատական նախարարը, պետութեան կնքապահը, պաշտօն առաւ կնիքը դնել օրէնքներուն վրայ եւ զանոնք հրատարակել, յանուն օրէնսդիր իշխանութեան։ Յետոյ, պէտք եղաւ ընտրել այն մարդիկը, որոնք Դահլիճը պիտի կազմէին․ ամենէն առաջ խորհեցան պաշտօնի կոչել Ռօլանը, Քլավիէրը եւ Սէրվանը, որոնք պաշտօնանկ եղած էին ժողովուրդի դատին նուիրուած ըլլալնուն համար, որովհետեւ նոր յեղափոխութիւնը պէտք էր ուզէր բոլոր այն բաները, զորս չէր ուզած թագաւորութիւնը։

Այս պատճառաւ, այս երեք նախարարները միաձայնութեամբ վերահաստատեցան իրենց պաշտօններուն մէջ. Ռօլան եղաւ ներքին գործոց նախարար, Սէրվան՝ պատերազմական եւ Քլավիէռ՝ ելմտական։ Պէտք էր դեռ նշա-

նակել դատական, արտաքին գործոց և ծովային նախարարները։ Այս մասին՝ ընտրութիւնը ազատ էր, և համեստ արժանիքի տէր անձերը, կամ իրենց եռանդուն հայրենասիրութեամբը պալատին անհաճոյ եղող անձերը հիմա պաշտօնի կրնային կոչուիլ առանց ո և է արգելքի։ Տանդօն, որ ամբոխին վրայ այնքան մեծ իշխանութիւն ունէր, և վերջին 48 ժամուան ընթացքին կրցած էր այնքան մարդիկ իր ետեւէն քաշել տանիլ, նախարարութեան մը կոչուելու անհրաժեշտ համարուեցաւ, և թէև ժիրոնտէնները չէին սիրեր զինքը, ամբոխին ընտրեալն ըլլալուն համար, բայց 284 քուէի մէջէն 222 քուէ շահելով դատական նախարար անուանուեցաւ։

Ժողովուրդին տալէ ետք այս գոհացումը, և կորովի մարդու մը այդ պաշտօնը հայթայթելով, խորհեցան գիտնական մէկը ծովային նախարար անուանել։ Ընտրուեցաւ չափագէտ Մօնժ, զոր կը ճանչնար և կը գնահատէր Քօնտորսէ, որ արդէն առաջարկը բերողն ալ էր։ Վերջապէս՝ Լըպրէօնը արտաքին գործոց նախարար ըրին, և յանձին իրեն, վարձատրած եղան մէկն այն բազմաշխատ մարդերէն, որոնք առաջինները, իրենք էին կատարողը բոլոր այս գործերը, որոնց պատիւը կը վայելէին նախարարները։

Գործադիր իշխանութիւնը ամբողջացնելէ ետք, Ժողովը յայտարարեց թէ, բոլոր այն օրէնքները, որոնց դէմ Վէթօ ըսած էր Լուդովիկոս ԺԶ. վաւերացեալ պիտի համարուին, անմիջապէս հրաման ելաւ որ Բարիզի մէջ նոր բանակ մը կազմուի. ինչպէս կը յիշուի առիթ մէկն էր այն օրէնքներէն, որոնք այնքան բուռն դիմադրութիւններ յառաջ բերին. նոյն օրն իսկ ամբաչէն զինուորները հրահանգ ստացան Մօնմարդրի սարահարթին վրայ շինութիւններ սկսիլ։

Բարիզի մէջ յեղափոխութիւնը ի կատար հանելէ ետք, պէտք էր զայն ապահովել նաև գաւառներուն մէջ, մանաւանդ բանակներուն մէջ, որոնց կը հրամայէին անվստահելի զօրավարներ։ Ժողովէն ընտրուած պատուիրակներ պաշտօն ստացան երթալ գաւառները և բանակները, որպէս զի անոնց բացատրեն Օգոստոս 10ի դէպքերը, և անոնց իշխանութիւն տրուեցաւ, ի հարկին քաղաքային ու զինուորական նոր պէտեր կարգել։

Քանի մը ժամուան մէջ տրուած էին այս որոշումները, և մինչ Ժողովը զբաղած էր այս որոշումները տալու, ուրիշ գործեր ալ անդադար կընդհատէին անոր գործերը։ Թիւլըրիի պալատէն վերցուած արժէքաւոր առարկաները փոխադրուեցան ժողովարան, Զուիցերիացի զինուորները, պալատին ծառաները, և բոլոր այն անձերը որոնք ձերբակալուած էին փախած ատեննին կամ կատաղի ժողովուրդին ձեռքէն խլուած էին, ժողովարան առաջնորդուեցան, իբր ապահով տեղ մը։ Բազմաթիւ խնդրարկուներ իրարու ետեւէ կուգային պատմել իրենց տեսածները և ըրածները, ու կը յայտնէին թէ պալատին ենթադրեալ դաւադրութիւնները երեւան հանուած են։ Ամէն տեսակ ամբաստանութիւններ և թշնամական խօսքեր կ'ըլլային արքայական ընտանիքին դէմ, որ այս բոլորը մտիկ կ'ընէր այն նեղ օթեակէն, ուր բանտարկուած էր։ Ատիկա, քարտուղարին օթեակն էր։ Լուդովիկոս ԺԶ. համեստօրէն մտիկ կ'ընէր բոլոր խօսուածները և ատեն ատեն կը խօսակցէր Վէրնեօյի և ուրիշ երեսփոխաններու հետ, որոնք իրեն մօտը նստած էին։ Տասն և հինգ ժամէ ի վեր այդ օթեակին մէջ փակուած ըլլալով, քիչ մը ուտելիք խնդրած էր, և կերած էր իր կնոջը և զաւակներուն հետ. եղան մարդիկ, որոնք այս առթիւ զզուելի դիտողութիւններ ըրին, իր ուտելու ճաշակին մասին։ Յաղթական

կուսակցութիւնները որքա՜ն քիչ կը խնային դժբաղդութեան։

Պզտիկ գահաժառանգը, մօրը գիրկը պառկած, խորունկ կը քնանար, հեղձուցիչ տաք օդէն վաստակաբեկ, Թագաւորազուն իշխանուհին և Տիկին Էլիզաբէթ, աչքերնին լալէն կարմրած, թագուհիին քովը կեցած էին, օթեակին խորը կը գտնուէին մէկ քանի անձնուէր ազնուականներ, որոնք չէին լքած դժբաղդութիւնը։ Յիսուն մարդիկ, որոնք առնուած էին արքայական ընտանիքը պալատէն ժողով տանող պահակազօրաց մէջէն, այդ օթեակին պահպանութիւնը կ'ընէին։ Այդ տեղէն էր որ գահընկէց թագաւորը կը դիտէր իր պալատին բեկորները, ականատես կ'ըլլար նախկին իշխանութեանը անդամահատման և անոր բեկորներուն բաշխումը կը տեսնէր ժողովրդային զանգուածի մարմիններու միջև։

Իրարանցումը կը շարունակէր սաստկութեամբ մը, ժողովուրդին քէյֆին համաձայն, բաւական չէր թագաւորութիւնը դադարեալ հռչակելը, այլ պէտք էր նաև քանդել զայն. այս մասին առաջարկներ կը տեղային, և պատասխանի մը սպասելով ամբոխը կը գրգռուէր ժողովարանէն դուրս, անոր նրբանցքները ողողած էր, դուռները պաշարած էր և 2-3 անգամ այնքան ուժգնօրէն յարձակեցաւ այդ դուռներուն վրայ, որ կարծեցին թէ կը խորտակեն զանոնք, և վախ զգացին այս դժբաղդ ընտանիքին համար, զոր պահպանել խոստացած էր Ժողովը։ Հանրի Լարիվիէռ, որ ուրիշ պատգամաւորներու հետ դրկուեցաւ, ժողովուրդը հանդարտեցնելու համար, այդ պահուն վերադարձաւ ժողովարան և պոռաց ուժգնօրէն.

«Այո՛, պարոննե՛ր, ես գիտեմ, ես գիտեմ, ես տեսայ, ես կ'ապահովցնեմ զձեզ, հաւաքուած ժողովուրդը վճռուած է հազար անգամ մեռնիլ, քան թէ ազատութիւնը անպատուել անմարդկային ո և է արարքով. և ապահովաբար, հոս ներկայ եղողներուն մէջ չկայ ո և է մէկը — անշուշտ կը հասկընաք խօսքս — որ չկարենայ վստահիլ Ֆրանսական պատուաւորութեան վրայ»։

Այս վստահացուցիչ և քաջարի խօսքերը ծափահարուեցան։ Վէրնիօ իր կարգին խօսք առաւ և պատասխանեց այն խնդրարկուներուն, որոնք կ'ուզէին որ թագաւորութեան առժամեայ դադարում մը գահընկէցութեան փոխուի։ —«Ես շատ գոհ եմ որ, ըսաւ, ինծի առիթ կը տրուի բացատրելու ժողովին մտադրութիւնը, ի ներկայութեան քաղաքացիներու։ Ժողովը վճռեց գործադիր իշխանութեան դադարեալ հռչակումը և անուանեց Ազգային ընդհ. ժողով մը, որ վճռական որոշում մը պիտի արձակէ գահընկէցութեան շուրջ խնդրին մասին։ Այս մասին, ժողովը սահմանափակուեցաւ իր իրաւասութեան մէջ որ ի տես թող չէր տար դատել թագաւորութիւնը. ժողովը միայն հոգ տարաւ պետութեան փրկութեան գործին. Վտանգը անկարող վիճակի մը մէջ դնելով գործադիր իշխանութիւնը։ Ժողովը այս կերպով գոհացում տուած եղաւ բոլոր պէտքերուն, իր իրաւասութեան սահմանին մէջ մնալով մէկտեղ։»

Այս խօսքերը աղէկ տպաւորութիւն մը յառաջ բերին, և իրենք՝ խնդրարկուներն իսկ, այդ տպաւորութեան տակ հանդարտած, պաշտօն ստանձնեցին խնդիրը բացատրել ժողովուրդին և զայն հանդարտեցնել։

Պէտք էր վերջացնել այս նիստը որ այնքան երկար տևած էր։ Որոշուեցաւ որ պալատէն փրկուած գոյքերը Համայնքային Խորհուրդին յանձնուին, Զուիցերիացի զինուորները և բոլոր ձերբակալուած մարդիկը կա՛մ պահին Ֆէօյեաններու ակումբին մէջ, և կամ զանազան բանտեր փոխադրուին։ Վերջապէս, որոշուեցաւ այս արքայական

ընտանիքը Լիւքսէմպուրկի պալատին մէջ պահուըտեցաւ մինչեւ գումարումը Ազգ. ընդհանուր ժողովին, բայց Լիւքսէմպուրկի մէջ մինչեւ որ հարկ եղած պատրաստութիւնները առնուէին, Թագաւորական ընտանիքը պիտի մնայէր ժողովուրդին մէջն իսկ։

Օգոստոս 11ի չաբաթ օրը ժամը 4ին, արքայական ընտանիքը փոխադրուեցաւ իրեն յատկացուած բնակարանին մէջ, որ կը բաղկանար նախկին Ֆէօյեաններուն չորս յարկերէն։ Թագաւորէն չբաժնուող ազնուականները միայն առաջին յարկին մէջ, Թագաւորը առաւ երկրորդը, Թագուհին, իր քոյրը եւ զաւակները միայն միւս երկու յարկերուն մէջ։ Դռնապաններն կինը կը սպասաւորէր իշխանուհիներուն, եւ կը կատարէր գործն այն պալատական բազմաթիւ տիկիններուն, որոնք, դեռ օր մը առաջ, Թագուհիին ծառայելու պատիւը իրարու ձեռքէ կը խլէին։

Ժողովին նիստը դադրեցաւ առաւօտ ժամը 3ին։

Բարիզի մէջ դեռ կը շրջէին սարսափի զանազան զրոյցներ։ Յառնակութեանց առաջքն առնելու համար, յաւելուած էին պալատին շրջակաները եւ քաղաքայիններուն մեծ մասը զինեալ պահապան կեցած էին։

Ահա՛ ասոնք եղած էին այս նշանաւոր օրուան անմիջական հետեւանքները։ Թագաւորը եւ Թագուհին բանտարկուած էին Ֆէօյեաններու մէջ եւ երեք պաշտօնանկ նախարարները կրկին իրենց պաշտօնին կոչուած էին։ Տանթոն, որ օր մը առաջ դեռ ծածկուած կը մնար խաւարին ակումբի մը մէջ, դատական նախարար եղած էր։ Բէդիոնը անոր յանձնուած էին, բայց իր անձնական իրաւասութեամբը կը ծափահարուէր եւ ժողովուրդին հայրը կ'անուանէին զայն։ Մարատ, դուրս եկած այն մթին Թաքստոցէն ուր Տանթոն պահած էր զայն՝ յարձակումի մը միջոցին, հիմա, սուրով մը զինուած, կը պտըտէր Բարիզի մէջ, մարսիլիական վաշտին գլուխն անցած։

Ռոպէսփիէռ, որ այս աղմկալի տեսարաններուն միջոցին մէջտեղը չկար, Ժաքոպէնները կը հրահրէր, եւ իրեն հետ եղող մէկ քանի երեսփոխաններու հետ կը խորհրդակցէր թէ ի՛նչպէս պէտք է օգտուիլ յաղթութենէն, թէ անհրաժեշտ էր Ներկայ Ժողովին տեղ ուրիշ մը դնել եւ Լաֆայէթը ամբաստանութեան տակ առնել, հանդարտեցնելու համար ժողովուրդը, որ ոտքի ելլելով չէր դադրեր կոտորելէ այն մարդիկը զորս փախստական ազնուականներ կը կարծէր։

Ժողովը վերջապէս նիստը գումարեց Օգոստոս 11ին, առաւօտ ժամը 7ին. արքայական ընտանիքը, նորէն զետեղեցին քարտուղարին օթեակին մէջ, ներկայ գտնուելու համար այն որոշումներուն, զորս պիտի տային, եւ ականատես ըլլալու այն տեսարաններուն որոնք պիտի պարզուէին Ժողովին մէջ։ Բէդիոն, ազատ արձակուած եւ բազմաթիւ ժողովուրդ մը ետեւը ձգած, եկաւ գաղափար մը տալու Բարիզի կացութեան մասին, ինքը պահուած էր քաղաքին մէջ եւ ջանացած էր քաղաքին մէջ հանդարտութեան եւ խաղաղութեան ոգին տարածել։ Քաղաքացիներ իրեն պահապան ըլլալով կը հսկէին անոր կեանքին վրայ։

Ժողովը շատ լաւ ընդունեց Բէդիոնը, անիկա անմիջապէս մեկնեցաւ նորէն, իր հաշտարար քարոզութիւնները շարունակելու համար։ Նախորդ օրը՝ Ֆէօյեաններու ակումբը ղրկուած Զուիցերիացի զինուորներուն պատսպանելիք ընկերներ կային. ամբոխը բարձրաձայն աղաղակելով անոնց մահը կը պահանջէր եւ զանոնք կը կոչէր պալատին մեղսակից ու ժողովուրդին մարդասպանները։

Յաջողեցան խաղաղեցնել ամբոխը,

յայտարարելով որ Զուիցերիացի զինուորները պիտի դատուին, և թէ պատերազմական ատեան մը պիտի կազմուէր, պատժելու համար զանոնք, որ աւելի ուշ անուանուեցան օգոստոս տասնի դաւաճաններ։ Զայրացկոտ Շապօ գոչեց. «Ես կը պահանջեմ որ անոնք Աբպէյ(*) տարուին ու դատուին... Հաւասարութեան երկրին մէջ, օրէնքը պէտք է հնձէ բոլոր գլուխները, նոյն իսկ անոնցը, որոնք նստած են գահերու վրայ։»

Արդէն, Զուիցերիացի զինուորներուն սպաները փոխադրուած էին Աբբայարան. անոնց ետեւէն զինուորներն ալ տարուեցան, անվերջանալի նեղութիւններ կրեց Ժողովը այս մասին, և պէտք եղաւ խոստանալ ժողովուրդին, որ անոնք անմիջապէս պիտի դատուին։

Ինչպէս կը տեսնուի, Թագաւորին բոլոր պաշտպաններէն վրէժ լուծելու և զանոնք պատժելու գաղափարը արդէն սկսած էր հաստատուիլ մտքերու մէջ, և շատ չանցած աղետալի պատահումներ յառաջ պիտի բերէր։ Ապստամբութեան յառաջխաղաց շարժումներուն հետեւելով արդէն տեսանք թէ բաժանումի ծիլեր սկսած էին ծլիլ ժողովրդային կուսակցութեան ծոցին մէջ։ Արդէն տեսնուեցաւ, որ Ժողովը, զարգացեալ և հանդարտաբարոյ անձերէ բաղկացած, հակառակ էր ամբոխներուն և քաղաքապետութեանց ուր կը հաւաքուէին ստորին դասակարգութեան և տաղանդի տէր մարդիկ, որոնք սակայն, իրենց գիրքերն իսկ և իրենց քիչ ազնուական բարքերովը և գերագոյն փառասիրութիւններովը կը մղուէին ազդելու դէպքերուն վրայ և զանոնք փութացնել։ Տեսանք նաև թէ, օգոստոս 10ի նախընթօրին, Շապօ կարծիքի անհամաձայնութիւն ունեցաւ Բէդիօնի հետ, որ, Ժողովին մեծամասնութեան հետ համախորհուրդ, կ'ուզէր որ նախապատիւ համարուի գահընկէցութեան հրամանագիր մը, բանի ուժով յարձակումէ մը։ Այս մարդիկը, որոնք կարելի եղած մեծագոյն կորովը ցոյց տալ կը թելադրէին, ուրեմն յաջորդ օրն իսկ կը գտնուէին ներկայութեանը Ժողովին, հպարտ այն յաղթանակէն, որ տարուած էր գրեթէ հակառակ իրեն, և յիշեցնելով անոր երկիմաստ յարգանքի արտայայտութիւններով, որ Ժողովը անպարտ արձակած էր, բայց պէտք չէր վտանգել նաև իր տկարութեամբը, ժողովուրդի փրկութեան գործը։

Անոնք լեցուցած էին համայնքային խորհուրդը, խառնուելով փառասէր բարեկեցիկներու, տորրադաս գրգռիչներու և ամբոխականներու։ Անոնք գրաւած էին Ժաքօպէններու և Քորտըլիէներու ակումբները, և իրենցմէ մէկ քանին բազմած էին օրէնսդիր մարմիններու ծայրայեղ նստարաններուն վրայ։ Կաբուչին Շապօ, ամենէն աւելի եռանդունը, փոխն ի փոխ կ'երթար Ժողովէն Ժաքօպէններուն ակումբը և միշտ կը սպառնար նիզակներով ու ահազանգով։

Ժողովը թագաւորութեան դադարումը վճռած էր, իսկ այս աւելի պահանջկոտ մարդիկը գահընկէցութիւն կը պահանջէին. Ժողովը գահաժառանգին համար դաստիարակ մը կարգելով այն սպասորութիւնը ձգեց թէ Թագաւորութիւնը պահել կ'ուզէ, իսկ իրենք՝ հանրապետութիւն կ'ուզէին։ Ժողովը մեծամասնութեամբ կը կարծէր թէ պէտք էր պաշտպանել Ֆրանսան բուռն կերպով՝ ընդդէմ օտար թշնամիին, բայց ներել պարտուածներուն. իսկ անոնք, ընդհակառակը, կը պնդէին թէ պէտք էր ոչ միայն դիմադրել օտար թշնամիին, այլ և խիստ միջոցներ ձեռք առնել ընդդէմ անոնց՝ որոնք պարտ-

* Բանտ մը Բարիզի մէջ։ Տ. Թ.

ուած որոշումները, շնորհիւ իրենց ունեցած իշխանութեան քաղաքապետարանին մէջ։

Քաղաքապետական ընդհանուր ժողովը հինգն ու տասը մը ժողով եղած էր, օրէնսդիր մարմնին չափ բազմաթիւ. ունէր իր օթեակները, գրասենեակը, շատ աւելի աղմկալի ծափահարութիւնները և աւելի զօրաւոր ոյժ մը։ Քաղաքապետը ժողովին նախագահն էր. դատախազ Մանուէլ պաշտօնական բեմբասացը, որ պաշտօն ունէր կատարելու բոլոր անհրաժեշտ պահանջները։ Բէթիոն այնքա չէր երեւար ժողովին եւ դատախազ Մանուէլ, իւրաքանչիւր օր յեղափոխական ալիքէն աւելի հեռաւորուելով, ամէն օր այնանց խելի կ'ընէր իր ձայնը։ Բայց այն անձը որ ամենէն աւելի կը տիրապետէր այս ժողովին վրայ, Ռոպէսպիէռն էր։ Օգոստոս 10 ի յաջորդող 3 օրերու ընթացքին մէկ կողմ մնալով հոն պացած էր տպաւորութիւնը մարելէն ետք և արձանագրութեան դիւանը ներկայանալով իր պաշտօնը վաւերացնել տալէն ետք, այնպէս թուած էր թէ աւելի եկած է ետք կանգնելու անոր, քան թէ իր տիրապետը յայտնելու։ Իր մէջ բնաւորութիւնը, ոչ միայն անհաճոյ չէր թուած, այլ և աւելցուցած էր այն յարգանքը, որով կը շրջապատէին զինքը։ Իր տաղանդաւոր, անկաշառ և յարատեւող մարդու համբաւը լուրջ ու յարգելի անձնաւորութիւն մը դարձուցած էր զինքը այնպէս որ հոն հաւաքուող բարեկեցիկ մարդիկը հպարտ էին զինքն իրենց մէջ ունենալնուն համար։ Յաջողելով Ազգ. Ընդհանուր ժողովի դամարման, որուն անկասկած պիտի անդամակցէր ինքը, եկած էր քաղաքապետարանին մէջ ի գործ դնել աւելի խորական ազդեցութիւն մը, քան այն կարծիքի իշխանութիւնը զոր կը վայելէր ժակոպէններու ակումբին մէջ։

Քաղաքապետարանի տուաջին գործը եղաւ ոստիկանութեան տէր ըլլալ. արովհեան քաղաքային պատերազմի ժամանակ, թշնամիները կարենալ ձերբակալելը և գաղտնի ենթարկելը շատ կարեւոր ու բաղձալի իշխանութիւն մըն է։ Հաշտարար դատաւորները, որոնք մասամբ իրաւասութիւն ունէին այս գործը տեսնելու, դժգոհ ձգած էին հանրային կարծիքը, ժողովուրդին դրդըութիւններուն դէմ իրենց կատարած հետապնդումներովը, և այս կերպով, կամայ թէ ակամայ, հայրենասէրներուն հետ թշնամացած էին։ Մանաւորապէս մարքիզին պահած էին այն դատաւորը, որ Պէրթրան տը Մոլվիլի և օրագրող Բառայի դատին մէջ համարձակած էր վկայութեան կանչել երկու նախարարները։

Այս պատճառներով, հաշտարար դատաւորները պաշտօնանկ եղան և քաղաքապետական իշխանութեանց յանձնուեցան ոստիկանութեան հետ վերաբերութիւն ունեցող ամէն գործերը։ Այս խնդիրին մէջ Բարիզի քաղաքապետարանին հետ համաձայն ըլլալով, ժողովը վճռեց որ ոստիկանութիւնը, որ ընդհանուր ապահովութեան կ'անուանուէր, ենթարկուի վարչական, դատական և քաղաքապետական իշխանութեանց։ Անոր պաշտօնը պիտի ըլլար պետութեան ներքին եւ արտաքին ապահովութեան պատահացող բոլոր յանցաւորները փնտռել, գտնել, իրենց վարմունքովը կամ կարծիքներովը կասկածելի հանդիսացող քաղաքացիներուն վիճակագրութիւնը պատրաստել, զանոնք ամժամապէս ձերբակալել, մինչեւ իսկ ցրուել և զինաթափ ընել զանոնք, եթէ հարկ ըլլայ։ Այս կերպով քաղաքապետական խորհուրդները իրենք էին որ նախարարութեան գործը կը տեսնէին, և քաղաքացիներու ամբողջ զանգուածը կը հրաւիրուէր լրտեսել, մատնանիշ ընել և հալածել թշնամի կուսակցութիւնը։



ՏԱՆԴՕՆ

Դիւրաւ կարելի է հասկնալ թէ որքա՜ն գործունեայ, բայց խիստ և կամայական կըլլար այս ժողովրդավարական ոստիկանութիւնը։ Ամբողջ խորհուրդը կը ստանար մատնանիչ ընդհանուր տեղեկատուութիւնները, վերստուգիչ յանձնախումբ մը կը քննէր զանոնք և ձերբակալութիւնը գործադրել կուտար։ Ազգային պահակազօրքերը առանձնապէս ծառայութեան մէջ էին և 20,000 հոգիէ աւելի բնակիչ ունեցող քաղաքներու քաղաքապետութիւնները կրնային մասնաւոր տրամադրութիւններ աւելցնել այս ընդհանուր ապա[illegible] [illegible] օրէնքին վրայ։ Անտարակոյս, օրէնսդիր ժողովը մաքէն չէր անցըներ թէ այս կերպով կը պատրաստէ այն արիւնահեղ գլխատումները, որոնք տեղի ունեցան աւելի վերջը, անիկա, ներսէն և դուրսէն թշնամիներով շըր-

ջարդատուած ըլլալով, բոլոր քաղաքացիները օգնութեան կը կոչէր, անոնց վրայ հսկելու համար, ինչպէս որ զանոնք բոլորը կանչած էր կառավարելու և կռուելու համար։

Բարիզի քաղաքապետարանը փութաց ի գործ դնել իր նոր իշխանութիւնը և բազմաթիւ մարդիկ ձերբակալեց։ Բարիզի Համայնքին Վերստուգիչ յանձնախումբը ամենէն ծայրայեղ մարդոցմէ կազմուեցաւ։ Մարատ, որ յեղափոխութեան միջոցին այնքան յանդգնօրէն յարձակած էր մարդոց դէմ, այս յանձնախումբին պետը կարգուեցաւ, և ուրիշ ոև է անձէ աւելի, անիկա ամենէն ահռելին էր այսպիսի պաշտօնի մը գլուխը։

Այս գլխաւոր յանձնախումբէն զատ, Բարիզի համայնքային խորհուրդը մասնաճիւղերուն մէջ հաստատեց անոնցմէ մէյմէկ հատ, որոշեց որ անցագիրները տրուէին միայն մասնաճիւղերու ժողովներուն խորհրդակցութեամբ. որոշեց նաև որ ճամբորդներուն ընկերանան, ըլլա՛յ քաղաքապետարանին մէջ, ըլլա Բարիզի դուռներուն առջև, երկու վկաներ, որոնք պիտի հաստատէին ինքնութիւնը այն անձին, որ անցագիր պահանջած էր Ֆրանսայէն մեկնելու համար։ Այս կերպով Բարիզը կը ջանար արգիլել փախուստը այն կասկածելի անձանց, որոնք կեղծ անուններով կրնային ճամբորդել։

Այնուհետև հրամայեց, որ յեղափոխութեան թշնամիներուն մէկ ցուցակը պատրաստուի, և յայտարարութեամբ մը հրաւիրեց բոլոր քաղաքացիները որ մատնացոյց ընեն Օգոստոս 10ի յանցապարտները։ Ձերբակալել տուաւ այն օրագրողները, որոնք արքայականներուն դատը պաշտպանած էին և անոնց մամուլը տուաւ հայրենասէր լրագրողներուն։ Մարատ ինքզինքին վերադարձնել տուաւ չորս հատ մամուլ, որոնց համար կ'ըսէր թէ դատաւոր Լաֆայեթի հրամանով առած էին իր ձեռքէն։ Յատուկ պաշտօնատարներ գացին բանտերէն դուրս հանեցին այն բանտարկեալները, որոնք պալատին դէմ գործած ըլլալնուն համար յանցաւոր համարուած էին։ Վերջապէս, ամէն կողմ հանելու պատրաստակամութեամբ, Համայնքային Խորհուրդն ալ, Ժողովին նման պատգամաւորներ ղրկեց, որպէս զի յուսադրեն և իրենց կողմը դարձնեն Լաֆայէթի բանակը, որ կը վրդովէր զիրենք։

Ասոնցմէ զատ, համայնքային Խորհուրդին ա՛լ աւելի կարևոր պաշտօն մը յանձնուեցաւ, այն է՝ արքայական ընտանիքին պահպանումը։ Ժողովը ի սկզբան հրամայած էր որ անիկա Լիւքսէմպուրկ փոխադրուի, բայց դիտել տրուած ըլլալով որ այդ պալատը պահպանել դժուար էր, որոշուեցաւ դատական նախարարութեան պաշտօնատան մէջ բնակեցնել զայն։ Բայց Համայնքային Խորհուրդը, որ արդէն իր ձեռքին մէջ ունէր մայրաքաղաքին ոստիկանութիւնը և մանաւանդ իրեն պարտականութիւն կը համարէր թագաւորը պահպանելը, առաջարկեց որ արքայական ընտանիքը Թամբլի մէջ բնակեցուցուի, և յայտարարեց թէ միայն այն ժամանակ կը ստանձնէ այս պահպանութիւնը, երբ այս նախկին Արքայարանի պատերէն ներս մտցուի թագաւորական ընտանիքը։ Ժողովը հաւանեցաւ այս առաջարկին և օգոստոսի բանտարկեալները յանձնեց քաղաքապետին և ընդհանուր հրամանատար Սանթէռին, անոնց անձնական պատասխանատուութեան տակ։ Թագաւորը և իր ընտանիքը Թամբլ առաջնորդուեցան Օգոստոս 30ի գիշերը։ Ընդհանուր Ժողովի 12 պատուիրակներ անընդհատ պէտք էր որ հսկողութիւն կատարէին Թամբլի վրայ. շէնքին արտաքին մասը կառուցուած պատերով՝ անիկա ամրացեալ շէնքի մը

փոխուած էր։ Ազգային պահակազօրաց բազմաթիւ գումարտակներ փոխն ի փոխ պահակութիւն կ'ընէին, և կարելի չէր մտնել Թանփլի մէջ, առանց քաղաքապետարանի արտօնութեան։ Ժողովը որոշեց նաև որ պետական գանձէն 500,000 ֆրանք տրուի արքայական ընտանիքին ապրուստին համար, մինչև գումարումը վերահաս Ազգ. Ընդհ. Ժողովին։

Ինչպէս կը տեսնուի, Համայնքային Խորհուրդին պաշտօնները շատ լայնարձակ էին. անիկա տեղաւորուած պետութեան կեդրոնին մէջ, հոն՝ ուր ի գործ կը դրուին մեծ իշխանութիւնները, իր կորովին շնորհիւ իր ձեռքովը կը կատարէր բոլոր այն բաները, զորս կը կարծէր թէ բարձրագոյն իշխանութիւնները շատ կակղամորթութեամբ կ'ընէին. այս կերպով անիկա կը մղուէր չարունակ ոտնակոխ ընելու ուրիշները։

Ժողովը, զգալով անհրաժեշտութիւնը զայն որոշ սահմաններու մէջ պարփակելուն, հրամայեց որ նոր վարչութեան մը ընտրութիւնը կատարուի, յաջորդելու համար անոր՝ որ ապստամբութեան օրը լուծուեցաւ։ Համայնքային Խորհուրդը, տեսնելով որ գերագոյն իշխանութեան մը լուծը կը սպառնայ իրեն, և որ անիկա, հաւանականաբար, պիտի կասեցնէր իր թռիչքը, ինչպէս եղած էր առաջին անգամ, զայրացաւ այս հրամանին դէմ և մասնաճիւղերուն հրահանգ տուաւ կասեցնել արդէն սկսած ընտրութիւնները։ Դատախազ Մանուէլ անմիջապէս Քաղաքապետարանէն Ֆէօյեաններուն ղրկուեցաւ, որպէս զի քաղաքապետութեան պահանջները ներկայացնէ. «Բարիզի քաղաքացիներուն երեսփոխանները, լսաւ անիկա, անսահման իշխանութեան պէտք ունին. եթէ իրենց և ձեր միջև նոր իշխանութիւն մը հաստատուի, պառակտումի սերմերը միայն պիտի ցանէ։ Պէտք պիտի ըլլայ որ ժողովուրդը իր գերիշխանութիւնը քանդող այս ուժէն ազատելու համար, անգամ մըն ալ զինուի իր վրէժխնդրութեամբ։»

Ահա ասոնք էին այն սպառնական խօսքերը, զորս կը համարձակէին արդէն լսելի ընել Ժողովին, որ իրմէ պահանջուածը տուաւ, և, թերևս դիմադրելը անկարելի կամ անխոհեմ նկատելով, և թերևս ալ այդ միջոցին ժողովուրդին կորովը կասեցնելը վտանգաւոր համարելով, Ժողովը որոշեց, որ նոր վարչութիւնը ո և է իշխանութիւն չունենայ քաղաքապետութեան վրայ, այլ ըլլայ միայն ելմտական պարզ յանձնախումբ մը, որ պաշտօն պիտի ունենար Սէնի գաւառին տուրքերը հաւաքել։

Ուրիշ աւելի լուրջ խնդիր մը կ'ըզբաղեցնէր միտքերը, եւ առաւել ուժգնութեամբ պիտի երևան բերէր զգացումներու այն տարբերութիւնը, որ գոյութիւն ունէր քաղաքապետութեան և Ժողովին միջև։ Համայնքին ներկայացուցիչները բարձրաղաղակ կը պահանջէին պատժուիլը անոնց՝ որոնք զէնք պարզած էին ժողովուրդին վրայ, և պատրաստ էին գլուխնին դուրս հանել, անմիջապէս որ թշնամին մօտենայ։ Զանոնք կ'անուանէին Օգոստոս 10 ի դաւադիրները կամ՝ մատնիչները։

Օգոստոս 11 ին հաստատուած պատերազմական ատեանը, որ Զուիցերիական զինուորները պիտի դատէր, բաւարար չէր երևար, որովհետև ինք միայն այդ զինուորները դատելու իրաւասութիւն ունէր։ Սէնի ոճրապարտ ատեանը շատ դանդաղաշարժ ձևակերպութեանց ենթակայ կը թուէր, և ասկէ զատ, Օգոստոս 10 էն առաջ գոյութիւն ունեցող բոլոր իշխանութեանց վրայ կասկած կար։ Այս պատճառներով Համայնքային Խորհուրդը, Օգոստոս 13 ին պահանջեց որ մասնաւոր դատարան մը կազմուի Օգոստոս 10 ի ոճիրները դատելու համար, և որ բաւական իրաւա-

սութիւն ունենար մասնիկ կոչուածներուն հախէն գալու համար։ Ժողովը խնդրագիրը ղրկեց իր արտասովոր յանձնաժողովին, որ Յուլիս ամիսէն ի վեր պաշտօն ունէր հայրենիքի փրկութեան միջոցները որոնելու։

Օգոստոս 14 ին քաղաքապետարանի կողմէ նոր պատգամաւորութիւն մը ներկայացաւ Ժողովին, արտասաւոր դատարանի վերաբերեալ հրամանագիրը պահանջելու համար, յարելով որ եթէ պատրաստ չէ, պիտի սպասեն որ պատրաստուի։ Երեսփոխան Կառոն քանի մը կծու դիտողութիւններ կ'ընէ պատգամաւորութեան և մէկ կողմ կը քաշուի։ Ժողովը կը յամառի մերժել արտասավոր դատարանի մը կազմութիւնը և գոյութիւն ունեցող դատարաններուն կը յանձնարարէ Օգոստոս 10 ի ոճիրները դատել միայն։

Այս լուրը իմացուելուն պէս բուռն խրարանցում մը կը տարածուի Բարիզի մէջ։ Բէնզվէնի մասնաճիւղը Համայնքային ընդհանուր Խորհուրդին կը ներկայանայ և կը զեկուցանէ որ ահազանգը պիտի հնչուի Ֆօպուռ Սէնդ-Անդուանի մէջ՝ եթէ պահանջուած հրամանագիրը անմիջապէս չի տան։ Այն ատեն Ընդհ. Ժողովը նոր պատգամաւորութիւն մը կը ղրկէ, որուն գլուխը կը գտնուի Ռոպէսպիէռ, անիկա յանուն քաղաքապետութեան խօսք կ'առնէ և երեսփոխաններուն շատ լիրբ յանդիմանութիւններ կ'ուղղէ։ «Ժողովուրդին հանդարտութիւնը, կ'ըսէ անիկա, կախում ունի յանցաւորներուն պատժուելէն և սակայն զանոնք հարուածելու համար դուք բան մը չըրիք։ Ձեր հրամանագիրը անբաւական է. բնաւ չի բացատրեր պատիժի ենթակայ ոճիրներուն բնոյթը և կարեւորութիւնը, որովհետեւ անիկա միայն կը խօսի Օգոստոս 10ի ոճիրներուն վրայ եւ յեղափոխութեան թշնամիներուն ոճիրները Օգոստոս 10էն և Բարիզէն շատ աւելի անդին կը տարածուին։ Այդպիսի բանաձեւով մը դաւաճան Լաֆայէթը պիտի ճողոպրէր օրէնքի հարուածէն։ Գալով դատարանի ձեւին, ժողովուրդը այլեւս չկրնար հանդուրժել այն ձեւին՝ զոր պահպանած էք. Դատավարութեան կրկնակ աստիճանները անվերջանալի յապաձգումներ կը պատճառեն, և արդէն բոլոր նախկին իշխանութիւնները կասկածելի են. Նորեր պէտք են, հարկ է որ պահանջուած դատարանը կազմուած ըլլայ մասնաճիւղերէն առնուած երեսփոխաններով, և որոնք կարողութիւնը ունենան գերիշխանօրէն և անվերաքննելի կերպով մը դատելու յանցաւորները։»

Այս ափրական խնդրագիրը ալ աւելի կարծր թուեցաւ Ռոպէսպիէռի չեչտովը։ Ժողովը Բարիզի ժողովուրդին պատասխանեց կոչով մը՝ որուն մէջ անիկա կը մերժէր բացառիկ յանձնաժողովի եւ հաւատաքննական դատարանի ոեւէ ծրագիր, իբր անարժան ազատութեան և իբր յատուկ միայն բռնապետութեան։

Այս բանաւոր դիտողութիւնները ոեւէ արդիւնք չունեցան, զայրոյթը ալ աւելի մեծցաւ։ Ամբողջ Բարիզի մէջ միայն ահազանգի վրայ կը խօսէին և հետեւեալ առաւօտէն իսկ Համայնքային Խորհուրդէն ներկայացուցիչ մը ժողովարան ներկայանալով բսաւ Ժողովին. «Իբր քաղաքացի, իբր ժողովուրդի պաշտօնատար կուգամ ձեզի ծանուցանել որ այս իրիկուն, կէս գիշերին ահազանգը պիտի հնչէ և ամէն կողմ թմբուկ պիտի զարնուի։ Ժողովուրդը ձանձրացած է, վրէժը լուծուած չըլլալուն։ Զգուշացէ՛ք, որ ինքն իսկ արդարութիւնը չկատարէ։ Կը պահանջեմ, առեւցուց յանդուգն ներկայացուցիչը, որ անմիջապէս հրամանագիր մը տաք, որով իւրաքանչիւր մասնաճիւղէ քաղաքացի մը նշանակուի ընտրական ատեան մը կազմելու համար։»

Այս սպառնական խօսուածքը խըռովեց Ժողովը և մանաւանդ Շա-

տիէօ և Թիւրիօ երեսփոխանները՝ որոնք բուռն կերպով յանդիմանեցին համայնքային խորհուրդին ներկայացուցիչը։ Սակայն և այնպէս վիճաբանութիւնը սկսաւ և համայնքին առաջարկութիւնը որ ժողովին եռանդուն անդամներէն ուժեղ կերպով կը պաշտպանուէր, վերջապէս հրամանագրի վերածուեցաւ։ Ընտրական մարմին մը ստիպուեցաւ ժողովուիլ բացառիկ ատեանի մը անդամները ընտրելու համար զանոնք որ պիտի դատէին Օգոստոս 10ի օրուան մէջ կատարուած ոճիրները և ոճրիչ ոճիրներ որոնք այդ օրուան կը վերաբերին, պարագաները եւ հետեւանքները : Այս ատեանը որ երկու մասնաճիւղի բաժնուած էր, պէտք էր որ դատէր վճռական և անբեկանելի կերպով մը։ Այսպէս եղաւ յեղափոխական ատեանին առաջին փորձը և առաջին հապճեպ եղանակը զոր վրէժխնդրութիւնը տուաւ արդարութեան ձեւերուն։ Այս դատարանը կոչուեցաւ Օգոստոս 17ի ատեանը։ Տակաւին կ՚անգիտանային թէ վերջին յեղափոխութիւնը և Օգոստոս 10ի հրամանագիրներուն ի՛նչ եղանակով ընդունուած ըլլալը ի՛նչ ազդեցութիւն յառաջ բերած էր բանակին մէջ։ Ասիկա ամենէն կարեւոր կէտն էր և ուրկէ կախում ունէր նոր յեղափոխութեան ճակատագիրը։ Սահմանագլխին վրայ երեք զօրաբանակներ կային. հիւսիսի, կեդրոնի և հարաւային Ֆրանսայի զօրաբանակները։ Լիւքնէր հիւսիսի հրամանատարն էր, Լաֆայէթ կեդրոնի և Մօնդէսգիու հարաւային Ֆրանսայի։ Մօնսի և Դուրնէյի դժբախտ պարտութիւններէն ի վեր, Լիւքնէր՝ Տիւմուրիէէն մղուելով անգամ մըն ալ փորձեր էր յարձակողականը Հոլանտայի վրայ, բայց նահանջեր էր և Քուրդրէյը պարպելով անոր արուարձանները այրած էր, ինչ որ ամբաստանութեան ծանր չարժառիթ մը եղած էր նախարարութեան դէմ, դաւընկէցութեան վարորդայնին։ Անկէց ի վեր զօրաբանակները ամենակատարեալ անգործութեան մէջ մնացեր էին ապրելով պատսպարուած բանակատեղիներու մէջ և հազիւ թէ թեթեւ ընդհարումներ ընելով։ Տիւմուրիէ, նախարարութիւնը ձգելէն ետքը Լիւքնէրի քով դացած էր իբր տեղակալ և դէշ ընդունելութիւն գտած էր բանակէն ուր Լաֆայէթի կուսակցութեան ոգին կը տիրէր։ Լիւքնէր այդ պահուն բոլորովին ենթարկուած ըլլալով այդ ազդեցութեան Տիւմուրիէն քշեց իր բանակատեղիներէն մէկուն՝ Մօլտի մէջ և հոն ձգեց սակաւաթիւ զինուորներու, հետ որպէս զի պատուարներ չինելով և ընդհարումներով զբաղի։

Լաֆայէթ, Թագաւորին սպառնացող վտանգներուն պատճառաւ ուզելով Բարիզի մօտենալ, կը փափաքէր հիւսիսի հրամանատարութիւնը ստանձնել։ Սակայն և այնպէս չէր ուզեր բաժնուիլ իր զինուորներէն որոնք զինքը շատ կը սիրէին և Լիւքնէրի հետ համաձայնեցաւ դիրքերնին փոխել իւրաքանչիւրը իր զօրաբաժինով և երկուքն ալ ճամբայ ելան մէկը հիւսիս՝ և միւսը կեդրոնը երթալու համար։ Բանակներու այս տեղափոխութիւնը, թշնամիին ներկայութեան՝ կրնար իր վտանգները ունենալ, եթէ, շատ բարեբախտաբար պատերազմը բոլորովին ընդհատուած չըլլար։ Ուրեմն Լիւքնէր Մէց գացած էր և Լաֆայէթ՝ Սըտան։ Խաչաձեւող չարժումներու միջոցին Տիւմուրիէ իր քիչ զինուորներովը ստիպուած ըլլալով հետեւիլ Լիւքնէրի բանակին, որուն կը պատկանէր, յանկարծ կեցաւ դէմը թշնամիին որ յարձակելու սպառնալիք ըրեր էր, և հարկադրուած եղաւ իր բանակատեղին մէջ մնալու, ապա թէ ոչ Ֆլանտրի մուտքը բացած պիտի ըլլար Սաքս-Դէշէնի դուքսին։ Հաւաքեց այն միւս զօրավարները որ իրեն մօտ

առանձին բանակատեղիներու գլուխը կը գտնուէին. համաձայնեցաւ Տիյեօնի հետ որ Լաֆայէթի զօրաբաժնին մէջ հատուածովը կը հասնէր և Վալանսիէնի մէջ պատերազմական ատեան մը կազմելու պնդեց՝ ինքզինքը արդարացնելու համար Լիւքնէրի հանդէպ ըրած անհնազանդութեանը նկատմամբ, մէջ բերելով անհրաժեշտութիւնը։ Այս միջոցին Լիւքնէր Մէց և Լաֆայէթ՝ Սըտան հասած էին. և եթէ Օգոստոս 10ի դէպքերը չըլլային Տիւմուրիէ իր յառաջ ընթանալու մերժումին համար, թերեւս պիտի ենթարկուէր ձերբակալութեան մը և զինուորական դատապարտութեան։

Այս էր բանակին կացութիւնը երբ որ գահին տապալման լուրը անոր հասաւ։ Օրէնսդիր Ժողովին առաջին հոգը եղաւ բանակին ղրկել, ինչպէս տեսանք, երեք պատգամաւոր իր հրամանագիրները ղրկելու և նոր երդումը ընել տալու համար զինուորներուն։ Երեք պատգամաւորները Սըտան հասնելով ընդունուեցան քաղաքապետութենէն որ Լաֆայէթէն հրաման առած էր զանոնք ձերբակալել տալու։ Քաղաքապետը զիրենք հարցաքննեց Օգոստոս 10ի դէպքին վրայ, պահանջեց որ ամբողջ եղելութեանց պատմութիւնը ընեն և ըստ Լաֆայէթի գաղտնի հրահանգներուն, յայտարարեց որ անտարակուսելի է թէ Օրէնսդիր Ժողովը այլեւս ազատ չէր, երբ թագաւորին գահընկեցութեան վճիռը արձակեց. թէ անոր պատգամաւորները, ուրիշ բան չէին բայց եթէ խռովարարական խումբի մը առաքեալները և թէ յանուն Սահմանադրութեան պիտի բանտարկուէին։ Իրաւ ալ բանտարկուեցան. և Լաֆայէթ այդ հրամանը գործադրողները վտանգէ զերծ ընելու համար ձերբակալումը իր առանձին պատասխանատուութեան ներքեւ առաւ։ Անմիջապէս ետքը, իր զօրաբաժինին մէջ վերստին երդում ընել տուաւ օրէնքին և թագաւորին հաւատարմութեան և հրամայեց որ նոյն երդումը կրկնել տրուի այն բոլոր վաշտերուն մէջ, որոնք իր հրամանատարութեան ներքեւ կը գտնուէին։ Անիկա յոյս դրած էր եօթանասուներհինգ նահանգներուն վրայ որոնք իր Յունիս 16ի նամակին համակարծիք էին և կ՚առաջադրէր Օգոստոս 10ի շարժումին հակառակ շարժում մը փորձել։ Տիյեօն որ Վալանսիէնի մէջ Լաֆայէթի հրամանին ներքեւ կը գտնուէր, և որ Տիւմուրիէէն գերազանց հրամանատարութիւն մը ունէր, իր զօրապետին հնազանդեցաւ, օրէնքին և թագաւորին հաւատարմութեան երդում ընել տալու իր զինուորներուն և հրաւիրեց Տիւմուրիէն նոյնը ընել իր Մօլտի բանակատեղին մէջ։ Տիւմուրիէ աւելի ճիշդ նախատեսելով ապագան, և արդէն զայրացած ըլլալով Ֆէօյեաններուն դէմ որոնց ազդեցութեան ներքեւ կը գտնուէր՝ այս առիթէն օգուտ քաղեց անոնց դիմադրելու և նոր կառավարութեան համարումը շահելու, երդումը մերժելով ինքզինքին և իր զինուորներուն համար։

17ին, այն օրն իսկ, երբ նոր ոճրադատ ատեանը այնքան աղմկայոյզ կերպով մը հաստատուեցաւ, նամակի մը միջոցաւ իմացան որ Լաֆայէթի բանակը ղրկուած պատգամաւորները, անոր հրամանով ձերբակալուած էին և թէ Լաֆայէթ օրէնսդիր իշխանութիւնը անգոսնած էր։ Այս լուրը աւելի գրգռութիւն առթեց քան թէ վախ. Լաֆայէթի դէմ աղաղակները առաւել քան երբեք ուժով թնդացին. պահանջեցին որ անիկա ամբաստանուի և Ժողովը մեղադրեցին աւելի կանուխէն Լաֆայէթի ամբաստանութիւնը արտասանած չըլլալուն համար։ Անյապաղ հրամանագիր մը տրուեցաւ Արտէնի նահանգին դէմ. նոր պատգամաւորներ փութացուցին, իրենց նախորդներուն

իշխանութիւններով և յանձնարարեցին իրենց ազատել երեք բանտարկեալները։ Ուրիշ պատգամաւորներ ալ ղրկեցին Տէյեօնի զօրաբաժնին։ 19ին, առաւօտեան, ժողովը Լաֆայէթը յայտարարեց դաւաճան հայրենիքին և անոր դէմ հանեց ամբաստանութեան հրամանագիր մը։

Պարագան ծանր էր և եթէ այդ դիմադրութիւնը պարտութիւն չկրէր, նոր յեղափոխութիւնը վիժած պիտի ըլլար։ Ֆրանսան բաժնուելով իր ներքին հանրապետականներուն, և բանակին սահմանադրականներուն միջև, պառակտուած կ'ըլլար թշնամիին առջև, հաւասարապէս ենթարկուած արշաւանքի մը և սարսափելի յետաշրջական շարժումի։ Լաֆայէթ Օգոստոս 10ի յեղափոխութեան մէջ ատելու էր 91ի Սահմանադրութեան տապալումը, ազնուապետական բոլոր մարգարէութիւններուն լրացած ըլլալը և արքունիքին ատելութեան ուղղած բոլոր մեղադրանքներուն արդարացումը։ Ժողովրդապետութեան այս յաղթանակին մէջ ան միայն կը տեսնէր անշուշտ արիւնոտ անիշխանութիւն մը և անվերջանալի խառնակութիւն մը։ Մեզի համար, այդ խառնակութիւնը վերջ մը ունեցաւ և գոնէ երկիրը պաշտպանուեցաւ օտարին դէմ. Լաֆայէթին համար ապագան անելի և անծանօթ էր, քաղաքական ջղաձգութիւններու մէջ ահա երկիրը նուազ պաշտպանելի կը դառնար, և փափաքը ունեցած ըլլալու էր այս քաօսին դէմ դնել զինուելով երկու թշնամիներուն դէմ արտաքին և ներքին։ Բայց իր կացութիւնը դժուար էր՝ և ոևէ մարդ չպիտի կրնար այդ դժուարութեանց յաղթել։ Իր զինուորները իրեն անձնուէր էին բայց բանակները անձնական կամք չունէին և միայն այն կամքը կրնան ունենալ, զոր բարձրագոյն իշխանութիւնը իրենց կը հաղորդէ։ Երբ յեղափոխութիւն մը 89ին ուժգնութեամբը կը պայթի, այն ատեն կուրօրէն մղուած, երես կը դարձնեն իշխանութեան, որովհետև նոր մղումը ամէնէն զօրաւորն է. բայց հոս խնդիրը նոյնը չէր։ Արտաքսուած, հրամանագրի մը հարուածին ներքև՝ Լաֆայէթ չէր կրնար իր զինուորականութեան միակ ժողովրդականութեամբը իր զինուորները հանել ներքին իշխանութեան դէմ, ոչ ալ իր անձնական մղումովը պայքարիլ Բարիզի յեղափոխական ազդեցութեան դէմ։ Երկու թշնամիի մէջտեղ մնացած, և իր պարտականութեանց մասին անստոյգ ըլլալով, բնականաբար պիտի վարանէր։ Ժողովը՝ ընդհակառակը չվարանելով, իրարու ետևէ հրամանագիրներ ղրկեց, հորալի պատգամաւորներու միջոցաւ զանոնք ստորագրել տալով կըրցաւ առաւելութիւն ունենալ զօրավարին վարանումին վրայ և զինուորները վճռական քայլի մը մղեց։ Իրաւամբ Լաֆայէթի զօրամասերը յաջորդաբար խախտեցան և կարծես թէ զինքը լքեցին։ Քաղաքային իշխանութիւնները, երկչոտած, անցի տուին նոր պատգամաւորներուն։ Տիւմուրիէի օրինակը որ Օգոստոս 10ի յեղափոխութեան ի նպաստ արտայայտուեցաւ, վերջապէս ամէնքը այն ուղղութեան մղեց և ընդդիմադիր զօրավարը միակ մնաց իր սպայակոյտին հետ, որ կազմուած էր Ֆէօյեան կամ սահմանադրական սպաներով։

Պույյէ, որուն կորովը կասկածելի չէր, Տիւմուրիէ, որուն մեծ ընդունակութիւնները կարելի չէ տարակոյսի ենթարկել, նոյնպէս, զանազան ժամանակներու մէջ չկրցան ուրիշ կերպ ընել և ստիպուած զգացին ինքզինքնին փախչելու։ Լաֆայէթ աւելի երջանիկ չեղաւ։ Նամակ գրելով այլ և այլ քաղաքային իշխանութեանց՝ որոնք օգնած էին իր դիմադրութեանը՝ իր վրայ

տուաւ ժողովին պատգամաւորներուն դէմ տրուած հրամաններուն պատասխանատուութիւնը և իր բանակատեղիէն հեռացաւ։ Օգոստոս 20ին, քանի մը սպաներու հետ, որոնք իր բարեկամները և իր զէնքի և կարծիքի ընկերներն էին։ Պիւրօ տը Բիւզի, Լադուռ-Մօպուր, Լամէթ իրեն կ'ընկերանային։ Աւստրիական բանակատեղիէն հեռացան իրենց մէկ աւստրիական թռչակը միայն ունելով հետերնին և քանի մը սպասաւորներ։ Լաֆայէթ իր բանակին մէջ ամէն բան կարգին թողուց և խնամք տարաւ, անհրաժեշտ տրամադրութիւնները ընելու, որպէսզի կարենային յարձակումի պարագային՝ դիմադրելու թշնամիին։ Եւ ղրկեց այն քանի մը ձիաւորները, որոնք իրեն կը հետևէին Ֆրանսան չզրկելու համար զայն պաշտպաններուն մէկ հատէն իսկ։ Եւ 21ին իր բարեկամներուն հետ Հոլանտայի ճամբան բռնեց։

Երբ հասան Աւստրիացիներուն յառաջապահ խումբերուն, ընկել հոս այնպիսի ձանրողութիւն մը, որ իրենց ձիերուն հողին բերանը բերած էր, ազատութեան այս առաջին տարագիրները, հակառակ մարդկային իրաւանց, ձերբակալուեցան և ենթարկուեցան պատերազմական գերիի վիճակին։ Ուրախութիւնը մեծ եղաւ երբ Լաֆայէթի անունը թնդաց միացեալ բանակներուն մէջ եւ երբ իմացան որ Լաֆայէթ ազնուապետական ընկերակցութեան գերին էր։ Զարչարել յեղափոխութեան առաջին բարեկամներէն մէկը, և կարենալ յեղափոխութեան իսկ վերագրել անոր առաջին հեղինակներուն հալածանքը, տեսնալ որ կ'իրականանան այն բոլոր ծայրայեղութիւնները զորս նախատեսած էին, պէտք եղածէն աւելի էր, որպէսզի ընդհանուր գոհունակութիւն մը տարածուէր Եւրոպայի ազնուականութեան մէջ։

Լաֆայէթ ինքզինքին և իր բարեկամներուն համար ազատութիւն պահանջեց, ինչ որ իրեն կը մերժէին, բայց ի զուր։ Ազատութիւնը իրեն առաջարկեցին ուրացումի մը գնով, ոչ թէ իր բոլոր կարծիքներուն, այլ միայն մէկուն, այն որ կը վերաբերէր ազնուականութեան ջնջմանը։ Անիկա մերժեց, նոյն իսկ սպառնալով որ եթէ իր խօսքերուն սխալ բացատրութիւն տային, հանրային պաշտօնեայի մը ներկայութեանը, հերքում մը պիտի տար։ Ուրեմն չղթաները ընդունեց իր հաստատակամութեան փոխարէն և այն ատեն իսկ երբ կը կարծէր թէ ազատութիւնը Եւրոպայի և Ֆրանսայի մէջ կորսուած էր, մտային ո և է խանգարում չունեցաւ, և չդադրեցաւ ազատութիւնը նկատել իբր ամենաթանկագին հարըստութիւնը։ Այդ բանը յայտարարեց դեռ, թէ՛ իր ծնողներուն, որոնք զինքը բանտերու մէջ կը պահէին, թէ իր հին բարեկամներուն, որոնք Ֆրանսա մնացած էին։ «Սիրեցէ՛ք, կը գրէր այս վերջիններուն, միշտ սիրեցէք ազատութիւնը, հակառակ իր փոթորիկներուն, և ծառայեցէք ձեր երկրին։» Թո՛ղ բաղդատեն այս դասալքութիւնը Պույէնին, որ իր երկրէն մեկնեցաւ հոն վերադառնալու համար թշնամի վեհապետներու հետ, Տիւմուրիէի դասալքութեան, որ գժտուեցաւ ոչ թէ սկըզբունքի համար, այլ զայրոյթով, Քօնվանսիօնին հետ, որուն ծառայած էր և արդար պիտի ըլլան այն մարդուն հանդէպ, որ Ֆրանսան լքեց միայն այն ատեն, երբ իր հաւատացած ճշմարտութիւնը հոնկէ հալածական էր և որ բնաւ զայն չպիտի անիծէ, չպիտի ուրանայ թշնամի բանակներուն մէջ, այլ ընդհակառակը այդ ճշմարտութիւնը կը կը յայտարարէ և զայն կը պաշտպանէ բանտերու մէջ ալ։

Սակայն չատ չմեղադրենք Տիւմուրիէն ալ, որուն յիշատակելի ծառայութիւնները քիչ ատենէն պիտի գնահա-



1792 ՕԳՈՍՏՈՍ 10

ան։ Այս՜ ձևուն և ճարպիկ մարդը շատ լաւ գուշակած էր նոր ծնած զօրութիւնը. Գրեթէ անկախ դառնալէ ետքը Կոմունէրին հնազանդելու մերժումովը և Մօլտի բանակատեղին հեռանալովը։ Տիյեօնի հրամայած երդումը մերժելէ ետք անմիջապէս իր անձնուիշխանութիւնը վարձատրեցին իրեն յանձնելով հիւսիսի և կեդրոնի զօրաբաժիններուն ընդհանուր հրամանատարութիւնը։ Տիյեօն, քաջ, խիզախ, բայց կոյր, նախապէս հրաժարեցուցին Լաֆայէթին հնազանդած ըլլալուն համար, բայց իր հրամանատարութեան մէջ վերահաստատեցաւ Տիւմուրիէի վարկովը, որ ուզելով իր նպատակին համնիլ և այդ ընթացքին մէջ կարելի եղածին չափ քիչ մարդ վիրաւորել, փութաց Տիյեօնը պաշտպանել ժողովին պատգամաւորներուն ներկայութեան։ Ուրեմն Տիւմուրիէ ամբողջ առհմանագլուխին ընդհանուր հրամանատարն էր Մէյէն մինչև Տիւնքերք։ Կիւսթին Մէց էր իր երբեմնի հիւսիսային զօրաբաժինով. Նախ Լաֆայէթէն ներշնչուելով Օգոստոս 10ին դիմադրել թուեցաւ. բայց շուտով անցի տալով իր զօրաբաժնին և ժողովին պատգամաւորներուն, հաւանեցաւ հրամանագիրներուն, և անգամ մըն ալ յալէ ետքը հնազանդեցաւ իրեն հաղորդուած նոր ուժին։

Օգոստոս 10ը և եղանակին յառաջացումը շարժառիթներ էին որպէս զի միացեալ բանակը որոշէր վերջապէս պատերազմը մղել եռանդով։ Պետութեանց տրամադրութիւնները բնաւ փոխուած չէին հանդէպ Ֆրանսայի։ Անգղիա, Հոլանտա, Տանիմարքա և Զուի-

ցերիա միշտ կը խոստանային կատարեալ չէզոքութիւն մը։ Կիւսթավի մահուընէն ի վեր Շուէտ չէզոքութեան կը միտէր անկեղծօրէն. Իտալական իշխանապետութիւնները շատ գէշ տրամադրուած էին մեզի համար, բայց բարեբաղդաբար շատ անկարող էին։ Սպանիա դեռ իր դիրքը չէր որոշեր և հակառակ մեքենայութիւններու ենթարկուած կը մնար։ Կը մնային իբր յայտնի թշնամի՝ Ռուսիան և Գերմանիոյ երկու գլխաւոր արքունիքները։ Բայց Ռուսիա դեռ անբաւական միջոցներ գործածելու վիճակին մէջ կը մնար և կը սահմանափակէր իր թշնամութիւնը մեր դեսպանը հոն ղրկելու մէջ։ Բրուսիա և Աւստրիա միայն իրենց զինու ուժը կը բերէին մեր սահմանագլուխին վրայ։ Գերման պետութիւններուն մէջ, երեք կայսրընտիր եկեղեցականները եւ երկու Հէսերու հողատէր իշխանները կային, որոնք գործօն բաժին մը ունէին միացեալ բանակին մէջ. միւսները կը սպասէին որ հոն մտնելու ստիպուած ըլլային։ Իրաց այս վիճակին մէջ 138,000 շատ լաւ կազմակերպուած եւ կարգապահ զինուորներ կը սպառնային Ֆրանսայի, որ անոնց դէմ կրնար հանել առաւելն 120,000 հոգի, որոնք ցրուած էին անհուն սահմանագլուխի մը վրայ, որոնք ոչ մէկ կէտի վրայ չէին կազմեր բաւարար զանգուած մը, զրկուած էին իրենց սպաներէն, ոչ մէկ վստահութիւն ունէին ինքզինքնուն, ոչ ալ իրենց պետերուն վրայ և մինչև այն ատեն յաղթուած էին այն մանր մունր կռիւներուն մէջ ուր մղած էին։

Միացեալ բանակներուն ծրագիրն էր յանդգնօրէն արշաւել Ֆրանսայի վրայ Արտէնի նահանգէն ներս մտնելով և Շալոնի ճամբէն Բարիզ հասնելով։ Բրուսիոյ և Աւստրիոյ երկու վեհապետները անձնապէս եկած էին Մայանս։ 60,000 Բրուսիացի, Ֆրետերիքի փառքին աւանդութեանց ժառանգորդները, մէկ շարքով մը կը յառաջանային մեր կեդրոնին վրայ։ Լիւքսէմպուրկի ճամբով ալ կը յառաջանային Լոնվիի վրայ։ 20,000 Աւստրիացիներ, զօրավար Գլէրֆէյտի հրամանատարութեան ներքև աջ կողմէն կ՚օգնէին անոնց Սդէնէյը գրաւելով։ 16,000 Աւստրիացիներ, Հօէնլօհէ-Գիրշպէրկ իշխանին հրամանատարութեամբ և 10,000 Հէսցիներ կը պաշտպանէին Բրուսիացիներուն ձախակողմը։

Տը Սաքս-Դէշէն դուքսը կը գրաւէր Հոլանտան և կը սպառնար բերդերուն։ Քօնտէի իշխանը 6000 Ֆրանսացի տարագիրներու հետ փոխադրուած էր Ֆրիպուրկ։ Ուրիշ շատ մը տարագիրներու խումբեր ցրուուած էին բրուսիական և աւստրիական զանազան զօրաբաժիններուն հետ։ Օտար արքունիքները, որոնք չէին ուզեր տարագիրները միացընելով թողուլ որ շատ ազդեցութիւն ստանային, նախապէս ծրագրած էին զանոնք խառնել գերմանական զօրքերու մէջ և յետոյ համաձայնեցան թողուլ որ առանձին խումբեր ունենան, բայց ցրուած ըլլան միացեալ բանակին մէջ։ Այդ խումբերը լեցուն էին սպաներով, որոնք համակերպած էին զինուոր դառնալու. փայլուն հեծելազօրք մը կը կազմէին, բայց աւելի կարող էին վըտանգաւոր օրուան մը մէջ մեծ արժէք մը ի յայտ բերելու, քան թէ երկար պատերազմի մը դիմանալու։

Ուժերու այսպիսի զանգուածի մը դիմադրելու համար Ֆրանսական զօրաբաժինները շատ դժբաղդ եղանակով մը կազմակերպուած էին։ Երեք զօրավարներ, Պուրնըվիլ, Մորըլօն և Տիւվալ երեք առանձին բանակատեղիներու Մօլտ, Մօպէօժ և Լիլ, 30,000 հոգի ունէին հաւաքուած։ Այս էր ամբողջ ֆրանսական ուժը հիւսիսային սահմանագլխի և Հոլանտայի վրայ։ Լաֆայէթի զօրաբաժինը որ կազմակերպուած էր իր զօրավարին մեկնումովը և ենթար-

կուած էր զգացումներու ամենամեծ անստուգութեան, բանակած էր Սըտանի մէջ և 23,000 հոգիի ուժ մը ունէր։ Տիւմուրիէ անոր հրամանատարութիւնը պիտի ստանձնէր։ Լիւքնէրի զօրաբաժինը 20,000 զինուորէ բաղկացած՝ գրաւած էր Մէցը, և ինչպէս բոլոր միւսները, նոր զօրավար մը ունեցած էր. անիկա Քէլլէրմանն էր։ Ժողովը, դժգոհ ըլլալով հանդերձ Լիւքնէրէն, չէր ուզեր զայն հրաժարեցնել, և անոր հրամանատարութեան պաշտօնը ուրիշին յանձնելով, անոր վերապահած էր մեծ զօրավարի տիտղոսին ներքև պահեստի նոր բանակ կազմակերպելու հոգը և զօրավարներու խորհրդատուի զուտ պատուակալ պաշտօնը։ Կը մնար Քիւսդինը, որ 15,000 հոգիով կը գրաւէր Լանտօն և վերջապէս Պիրօն՝ որ 30,000 հոգիով Ալզասի մէջ տեղաւորուած ըլլալով պատերազմի գլխաւոր վայրէն շատ հեռացած էր և չէր կրնար ազդեցութիւն ունենալ կռիւին ճակատագրին վրայ։

Երկու միակ համախմբումները, որոնք տեղաւորուած էին միացեալ մեծ բանակին ճամբուն վրայ, Լաֆայէթին լքած 23,000 մարդիկն էին և Քէլլէրմանի 20,000 զինուորները, որոնք շարուած էին Մէցի չուրջ։ Եթէ արշաւանքի մեծ բանակը իր շարժումները համեմատելով իր նպատակին, արագօրէն ընթանար Սըտանի վրայ, մինչ Լաֆայէթի գումարտակները առանց զօրավարի անկարգապահութեան ենթարկուած էին, և դեռ գրաւած չըլլալով Տիւմուրիէն, առանց միութեան և առանց ուղղութեան էին, պաշտպանողականի գլխաւոր բանակը յաղթուած պիտի ըլլար։ Արտէնի գաւառը պիտի բացուէր և միւս զօրավարները, ստիպուած պիտի ըլլային արագօրէն նահանջել միանալու համար Մառնի ետև։ Թերևս ժամանակ չունենային Լիլէն և Մեցէն Շալօն և Ռէյմս գալու։ Այն ատեն Բարիզ անպաշտպան ըլլալով նոր կառավարութեան կը մնար միայն Բարիզի մէջ բանակ մը կազմելու անիմաստ ծրագիրը կամ Լուարէն անդին փախուստը։

Բայց եթէ Ֆրանսա ինքզինքը կը պաշտպանէր յեղափոխութեան մը բոլոր անկարգութեամբը, օտար պետութիւններն ալ կը յարձակէին զինակցութեան մը յատուկ բոլոր անստուգութիւններով և տեսակէտներու զանազանութիւնով։ Բրուսիոյ թագաւորը որ գինովցած էր դիւրին յաղթանակի մը գաղափարովը, շողոքորդուած ու դարագիրներէն խաբուած, որոնք արշաւանքը իրեն կը ներկայացնէին իբր պարզ զինուորական պտոյտ մը, ամենէն յանդուգն գործողութիւնը կը պահանջէր։ Բայց դեռ շատ խոհեմներ կային իր քովիկը, յանձին Պրիւնսվիքի դուքսին և իր յաւակնութիւնը գոնէ յանդգնութեան և շուտափութութեան բարեբաղդ արդիւնքը չունեցաւ։ Պրիւնսվիքի դուքսը կը տեսնէր թէ եղանակը շատ յառաջացած էր, երկիրը տարագիրներուն ըսածէն ուրիշ կերպ տրամադրուած. անիկա արդէն յեղափոխական կռիւը կը դատէր Օգոստոս 10ի ապստամբութեամբ, կը մտածէր որ լաւագոյն էր Մօզէլի վրայ գործողութեան հաստատ հիմ մը ապահովել պաշարելով Մէցը և Թիօնվիլը և յառաջիկայ եղանակին թողուլ թշնամութեանց վերանորոգումը, նախապէս ըստացուած յաղթանակներու առաւելութեամբ։ Վեհապետին աճապարանքին և զօրավարին խոհեմութեան միջև եղած պայքարը, Աւստրիացիներու դանդաղութիւնը որոնք Հօէնլօհէ իշխանին հրամանատարութեան ներքև 18,000 հոգի կը ղրկէին միայն, փոխանակ 50,000ի, արգելք եղան ոևէ վճռական շարժումի։ Սակայն բրուսիական բանակը շարունակեց ընթանալ դէպի կեդրոնը և 20ին գտնուեցաւ Լօնվիի առաջք որ այդ սահմանագլուխին ամե-

նէն յառաջացած բնդդաքաղաքներէն մէկն էր։

Տիւմուրիէ, որ մինչև հաստատած էր որ Հոլանտայի մէջ արշաւանք մը՝ հոն յեղափոխութիւն մը պայթեցնել պիտի տար, և թէ այդ արշաւանքը Ֆրանսան պիտի ազատէր Գերմանիոյ յարձակումներէն, ամէն բան պատրաստած էր յառաջանալու համար այն օրն իսկ երբ ստացաւ երկու զօրաբանակներուն ընդհանուր հրամանատարի պաշտօնը։

Արդէն յարձակողականի պիտի բռնէր Սաքս-Գէշէնի իշխանին դէմ, երբ որ Ուէստէրման, որ այնքան գործունեայ եղած էր Օգոստոս 10ին և իբր պատգամաւոր ղրկուած էր Լաֆայէթի զօրաբանակէն, եկաւ իրեն իմացնելու ինչ որ կ'անցնէր կը դառնար մեծ արշաւանքի թատերավայրին վրայ։ 22ին Լօնվի իր դուռները բացած էր Բրուսիացիներուն առջև, քանի մը ժամուան ռմբակոծութենէ ետքը։ Պահակազօրքին անկարգութիւնը և հրամանատարին տկարութիւնը այդ բանին պատճառ եղած էին։ Այս յաղթանակէն և Լաֆայէթը գերի բռնելէն հպարտ՝ Բրուսիացիները ամէն ժամանակէ աւելի արագ յարձակողականի մը ծրագրին կը հաւնէին։ Լաֆայէթի բանակը կոտորուած էր, եթէ նոր զօրավարը չի գար իր ներկայութեամբ զայն վստահացնելու և անոր շարժումները վարելու օգտակար եղանակով մը։

Տիւմուրիէ, ուրեմն, լքեց իր սիրելի ծրագիրը և 25ին կամ 26ին գնաց Սըտան ուր իր ներկայութիւնը նախ միայն անվստահութիւն և մեղադրանքներ ներշնչեց։ Անիկա թշնամին էր Լաֆայէթին զոր կը սիրէին դեռ. Տիւմուրիէի կը վերագրէին արդէն այս դըժբաղդ պատերազմը, որովհետև իր նախարարութեան միջոցին յայտարարուած էր անիկա, վերջապէս ինքը նըկատուած էր գրչի մարդ մը և ոչ՝ պատերազմի մարդ մը։ Այս խօսքերը բանակատեղիին մէջ ամենուրեք կը պտտէին և յաճախ մինչև զօրավարին ականջը կը հասնէին։ Տիւմուրիէ չի շուարեցաւ։ Նախ սկսաւ զինուորները վստահացնել, հաստատ և հանդարտ դէմք մը ձևացնելով և քիչ ատենէն անոնց զգացնել տալու աւելի ուժեղ հրամանատարութեան մը ազդեցութիւնը։ Սակայն և այնպէս, կազմալուծուած 23,000 զինուորներու դրութիւնը կատարելապէս կարգադրուած 80,000 զինուորի դէմ բոլորովին յուսահատական էր։ Բրուսիացիները Լօնվին առնելէ ետքը՝ Թիօնվիլը պաշարած էին և կը յառաջանային Վէրտէօնի վրայ որ Լօնվիէն աւելի նուազ դիմադրելու կարող էր։

Տիւմուրիէի հաւաքած բոլոր զօրավարները կը մտածէին որ պէտք չէր Սըտանի մէջ Բրուսիացիներուն սպասել, այլ արագօրէն նահանջել Մառնի ետև, հոն կարելի եղածին չափ լաւ պաշտպանուիլ, սպասելու համար որ միւս զօրաբանակները գան միանան և այսպէսով պաշտպանեն մայրաքաղաքը որ թշնամիէն բաժնուած էր միայն քառասուն մղոնով։ Ամենքն ալ կը մտածէին որ եթէ արշաւանքին դիմադրել ուզելով յաղթուելու վտանգին ենթարկուէին, թէ՛ փախուստը կատարեալ պիտի ըլլար, թէ ջլատուած բանակը Սըտանէն մինչև Բարիզ չպիտի դադրէր փախելէ և թէ Բրուսիացիները մայրաքաղաքին վրայ պիտի ընթանային ուղղակի և յաղթանակողի քայլերով։ Այս էր մեր զինուորական կացութիւնը և այն կարծիքը զոր մեր զօրավարները ունէին անոր մասին։

Այդ կացութեան մասին մէջ Բարիզի մէջ գոյացած կարծիքը, յուսադրող չէր և վտանգին հետ գրգռութիւնը կ'աւելնար։ Սակայն, այս անհուն մայրաքաղաքը որ երբեք թշնամին չէր տեսած իր ծոցին մէջ և որ կրնար յառաջ

ուժին մասին իր տարածութեանը և ժողովուրդին համեմատութեամբ գաղափար մը կը կազմէր, դժուարաւ կ'երեւակայէր որ կարենային իր պարիսպներէն ներս մնալ, շատ աւելի նուազ կը վախնար զինուորական վտանգէն, զոր չէր նշմարեր և որ դեռ հեռու էր իրմէն. աւելի կը վախնար աւաժամապէս պարտուած Թագաւորականներուն կողմէ ըլլալիք յետաշրջութեան մը վտանգէն: Մինչ սահմանագլխին վրայ զօրավարները միայն Բրուսիացիները կը տեսնէին, երկրին ներսը միայն կը տեսնէին ազնուականները, որոնք գաղտնաբար կը դաւադրէին ազատութիւնը քանդելու համար:

Կը մտածէին որ Թագաւորը բանտարկուած էր, բայց իր կուսակցութիւնը նուազ գոյութիւն չունէր ատով և կը դաւադրէր, ինչպէս Օգոս. 10էն, առաջ Բարիզի դուռները բանալու համար օտարներու առջև: Կ'երեւակայէին որ մայրաքաղաքին բոլոր մեծ տուները լեցուն են զինուած համախմբումներով և անոնք պատրաստ են առաջին նշանին դուրս ելլել, ազատել Լուդովիկոս ԺԶը, տէր ըլլալ կառավարութեան և անպաշտպան Փրանսան յանձնել տարագիրներու և զինակիցներու բռնութեան: Այս հաղորդակցութիւնը ներքին թշնամիին և արտաքին թշնամիին միջև կը գրաւէր բոլոր միտքերը. պէտք է, կը մտածէին դաւաճաններէն ազատիլ և արդէն կը կազմուէր յաղթուածները ջնջելու սարսափելի գաղափարը, որ մեծ թուով մարդոց մէջ միայն երեւակայութեան գրգռում մըն էր, և որ, ոմանց մէջ, ըլլային շատ արիւնարբու, կամ աւելի եռանդուն, կամ գործելու աւելի պատրաստ, կրնար իրական և խորհրդածուած ծրագրի մը փոխուիլ:

Արդէն տեսանք որ խնդիր եղած էր Օգոստոս 10ին ժողովուրդին ստացած հարուածներուն վրէժը լուծել և թէ Ժողովին և համայնքին միջև բուռն վէճ մը տեղի ունեցած էր բացառիկ ատեան մը կազմելու առթիւ: Այս ատեանը որ Տանկրըմօնին և անձնական գանձուն վերակացու՝ դժբախտ Լաբօրթին գլուխը կտրել տուած էր, բաւական արագ չէր գործեր, համաձայն կատաղի և գերագրգռուած ժողովուրդի մը փափաքին, որ ամենուրեք թշնամի կը տեսնէր: Այդ ժողովուրդին աւելի անմիջական եղանակ մը պէտք էր դաւաճանները պատժելու համար, և մանաւանդ կը պահանջէր դատապարտութիւնը ամբաստանեալներուն, որոնք Օրլէանի բարձրագոյն ատեանին յանձնուած էին: Ասոնք, մեծ մասամբ նախարարներ և բարձրաստիճան պաշտօնատարներ էին, որոնք, ինչպէս յայտնի է, ամբաստանուած էին իբր դաւաճան. Տըլէսար, արտաքին գործոց նախարարը անոնց մէջ էր: Ամէն կողմէ կը գանգատէին դատավարութեանց դանդաղութեան վրայ, կ'ուզէին որ բանտարկեալները Բարիզ փոխադրուէին և աճապարանքով դատուէին Օգոստոս 17ի ատեանէն: Ժողովը՝ որուն խորհուրդ հարցուցած էին այս մասին, կամ աւելի ճիշդը ստիպած էին որ հասարակաց իղձին տեղի տայ, փոխադրութեան հրամանագիր մը տալով, Ժողովը քաջ դիմադրութիւն մը ըրած էր: Անիկա կ'ըսէր որ ազգային բարձրագոյն ատեանը սահմանադրական հաստատութիւն մըն էր, զոր չէր կրնար փոխել, որովհետև սահմանադիր իշխանութիւն չունէր և որովհետև ամէն ամբաստանեալ իրաւունք ունէր դատուելու մինչեւ այն ժամանակի օրէնքներով: Այս խնդիրը նորէն երեւան հանած էր շատ մը խնդրագիր ներկայացնողներ և Ժողովը միեւնոյն ատեն ստիպուած եղաւ դիմադրելու եռանդուն փոքրամասնութեան մը, համայնքին և կատաղած մամանձիղերուն: Ժողովը զիջաւ աւելի ա-

բաղացնելով դատաւորութեան քանի մը ձեւերը, բայց՝ հրամանագրեց որ բարձրագոյն ատեանի առաջ դատուող ամբաստանեալները Օրլէան ղրկուին այն դատաստանական իրաւունքէն, զոր Սահմանադրութիւնը իրենց ապահոված էր։

Այսպէսով երկու հոսանք կը կազմուէր. մէկ կողմը կ'ուզէր որ յաղթուածները յարգուէին, առանց սակայն նուազ կորով գործածելու օտարին դէմ, և միւս կողմը կ'ուզէր որ նախ՝ զոհուին թաքուն թշնամիները, երթալէ առաջ այն թշնամիներուն դէմ որոնք զինուած կուգային Բարիզի վրայ։ Այս վերջին մտածումը կարծիք մը ըլլալէ աւելի կոյր և վայրագ զգացում մըն էր, վախով և բարկութեամբ կազմուած, և որ վտանգին հետ պիտի աճէր։

Բարիզցիները այնքան աւելի զայրացած էին, որքան որ վտանգը աւելի մեծ էր իրենց քաղաքին համար, բոլոր ապստամբութեանց վառարանը և թշնամի բանակներուն յառաջխաղացութեան գլխաւոր նպատակը ըլլալով։ Կ'ամբաստանէին Ժողովին գաւառացի երեսփոխանները, թէ կ'ուզէին գաւառները քաշուիլ։ Մանաւանդ Ժիրոնտէնները՝ որ մեծ մասով հարաւային Ֆրանսայի գաւառներէն էին և որոնք կը կազմէին այն չափաւորական մեծամասնութիւնը որ զզուելի էր Քաղաքապետարանին, մանաւանդ Ժիրոնտէնները կ'ամբաստանուէին թէ կ'ուզեն Բարիզը զոհել, մայրաքաղաքը ատելուն համար։ Այսպէսով անոնց կը վերագրէին բաւական բնական զգացումներ, զորս Բարիզցիները կրնային կարծել թէ գրգռած են. բայց՝ Ժիրոնտէն երեսփոխանները շատ անկեղծութեամբ կը սիրէին իրենց հայրենիքը և անոր դատը, և չէին խորհեր Բարիզը լքել։ Ճիշդ է թէ միշտ խորհած էին որ, հիւսիսը կորսուելէն ետք կարելի է քաշուիլ հարաւային Ֆրանսա. ճիշդ է որ, այդ պահուն իսկ իրենցմէ ոմանք խոհեմութիւն կը նկատէին կառավարութեան կեդրոնը Լուարէն անդին փոխադրել. բայց աւելի քաղաք մը զոհելու տենչանքը և կառավարութիւնը փոխադրելը այնպիսի վայրերու մէջ, ուր տէրը պիտի ըլլային, բնաւ իրենց մտքին մէջ չկար։ Անոնք շատ հոգեկան բարձրութիւն ունէին, և արդէն դեռ շատ ազդեցիկ էին և յոյսերնին դրած էին յառաջիկայ Քոնվանսիօնի գումարումին վրայ, և չէին կրնար արդէն խորհած ըլլալ Բարիզէն անջատուիլ։

Ուրեմն, միևնոյն ատեն կ'ամբաստանէին Ժիրոնտէններու ներողամտութիւնը՝ դաւաճաններուն նկատմամբ և անոնց անտարբերութիւնը մայրաքաղաքին շահերուն հանդէպ։ Անոնք ըստիպուած ըլլալով ամենաբուռն մարդոց դէմ պայքարիլ, պիտի հարկադրուէին տեղի տալ իրենց հակառակորդներուն գործունէութեան և կորովին, նոյն իսկ իրենց կողմը ունենալով մեծամասնութիւն, և խելամտութիւնը։ Գործադիր Ժողովին մէջ մէկի դէմ հինգ էին, որովհետև իրենց ծոցէն առնուած երեք նախարարներէն զատ՝ Սէրվան, Քլավիէռ և Ռօլան, երկու միւսները Մօնժ և Լըպրէօն իրենք ընտրած էին։ Բայց մի միայն Տանդօնը, որ առանց իրենց անձնական թշնամին ըլլալու, չունէր ո՛չ իրենց չափաւորութիւնը, ոչ ալ իրենց կարծիքները, Տանդօն, մինակը կը տիրապետէր դահլիճին և իրենցմէ կը խլէր ամէն ազդեցութիւն։ Մինչ Քլավիէռ կը ջանար քիչ մը հասոյթներ քով քովի բերել, մինչ Սէրվան կ'աճապարէր օգնութիւններ հասցնել զօրավարներուն, մինչ Ռօլան շատ իմաստուն շրջաբերականներ կը տարածէր գաւառները լուսաբանելու համար, տեղական իշխանութիւնները վարելու, անոնց իշխանութեան ոտքի տակ երթալը արգիլելու և ամէն կարգի բռնութիւններ

կեցնելու՝ Տանդօն զբաղած էր երկրին վարչութեան մէջ տեղաւորելու իր մարդիկը։ Ամէն կողմ կը ղրկէր իրեն հաւատարիմ Քորտըլիէները այսպէսով բազմաթիւ նեցուկներ կը հայթայթէր, և իր բարեկամները մասնակից կ'ընէր յեղափոխութեան շահերուն։ Խանդավառելով կամ սարսափեցնելով իր ընկերակիցները, միայն արգելքի կը հանդիպէր Ռօլանի անձկելի կարծրութեան առջև, որ յաճախ կը մերժէր այն միջոցները կամ այն անձերը, զորս Տանդօն կ'առաջարկէր. Տանդօն այս բանէն կը նեղուէր, առանց սակայն Ռօլանի հետ խզուելու և կը ջանար, որչափ կարելի էր շատ մարդ պաշտօնի գլուխ անցընել եւ որոշումներ խլել։

Տանդօն, որուն ճշմարիտ տիրապետութիւնը Բարիզի մէջ էր, կ'ուզէր զայն պահպանել և վճռած էր Լուարէն անդին ոևէ փոխադրութիւն արգիլել։ Արտակարգ յանդգնութիւնով մը օժտուած, ապստամբութիւնը յայտարարած էր Օգոստոս 10 ի նախընթօրին, երբ դեռ ամենքը կը վարանէին. ետ քաշուող մարդ չէր և կը խորհէր որ յաւաղոյն է մայրաքաղաքին մէջ թաղուիլ։ Դանկիճին տէրը, Մառային հետ և քաղաքապետութեան հսկողութեան յանձնաժողովին հետ կապուած, ակումբներու մէջ իր խօսքը լսելի ընող, վերջապէս ապրելով ամբոխին մէջ, ինչպէս տարրի մը՝ զոր ուզած ատենը կը խառնէր, Տանդօն՝ Բարիզի ամենէն զօրաւոր մարդն էր. և այս զօրութիւնը հիմնուած ըլլալով բուռն բնութեան մը վրայ, որ զինքը յարաբերութեան մէջ կը դնէր ժողովուրդին կիրքերուն հետ, Տանդօն շատ անհապդեցիկ ըլլալու էր յաղթուողներուն։ Իր յեղափոխական եռանդին մէջ, Տանդօն կը հակէր այն բոլոր վրէժխնդրութեան գաղափարներուն, զորս Ժիրօնտէնները կը մերժէին. անիկա պետն էր այն Բարիզեան կուսակցութեան, որ կ'ըսէր. — «Մենք չպիտի նահանջենք, մենք պիտի մնանք մայրաքաղաքին մէջ և անոր աւերակներուն ներքեւ. բայց մեր թշնամիները մեզմէ առաջ պիտի մեռնին։» Այսպէսով հոգիներու մէջ կը պատրաստուէին սոսկալի նախազգացումներ և ահռելի տեսարանները անոնց քամնելի արդիւնքը պիտի ըլլային։

Օգոս. 26 ին Լօնվիի գրաւման լուրը արագօրէն տարածուեցաւ և Բարիզի մէջ ընդհանուր յուզում մը պատճառեց։ Օրն ի բուն վիճաբանեցան այդ լուրին ճշմարտանմանութեան վրայ. վերջապէս կարելի չեղաւ զայն հերքել եւ իմացուեցաւ որ քաղաքը իր դուռները բացած էր քանի մը ժամուան ռմբակոծութենէ ետք։ Խռովութիւնը այնքան մեծ եղաւ, որ Ժողովը հրամանագրեց մահուան պատիժի ենթարկել ոևէ քաղաքացի՝ որ պաշարուած վայրի մը մէջ, անձնատուութեան մասին կը խօսի։ Համայնքին պահանջման վրայ, հրաման եղաւ որ Բարիզ և մերձակայ նահանգները հայթայթեն քանի մը օրուան մէջ, 30,000 հոգի, սպառազինուած և պարենաւորուած։ Այնպիսի խանդավառութիւն մը կը տիրէր որ այս զօրահանութիւնը դիւրին կը դառնէր և անոնց թիւը վտանգի դէմ ապահովութիւն մըն էր։ Չէին երեւակայեր որ 100,000 Բրուսիացիներ կարենան յաղթել քանի մը միլիոն մարդու, որոնք ինքզինքնին պաշտպանել կ'ուզէին։ Բարիզի մէջ բանակատեղի մը կազմելու համար նոր խանդով մը աշխատեցան և բոլոր կինները հաւաքուեցան եկեղեցիներու մէջ օգնելու համար բանակի անհրաժեշտ նիւթերուն պատրաստութեանը։

Տանդօն Համայնքային Խորհուրդին գնաց և իր առաջարկութեան վրայ, անոնք ամենէն ծայրայեղ միջոցներուն դիմեցին։ Որոշեցին մասնաճիւղերու մէջ բոլոր կարօտեալներուն թուահամարը պատրաստել և անոնց թոշակ մը ու զէնքեր տալ. ասկէ զատ հրամայեցին

րագացնելով դատաւորութեան քանի մը ձեւերը, բայց հրամանագրեց որ բարձրագոյն ատեանի առաջ դատուող ամբաստանեալները Օրլէան մնան և զրկուին այն դատաստանական իրաւունքէն, զոր Սահմանադրութիւնը իրենց ապահոված էր։

Այսպէսով երկու հոսանք կը կազմուէր. մէկ կողմը կ'ուզէր որ յաղթուածները յարգուէին, առանց սակայն նուազ կորով գործածելու օտարին դէմ, և միւս կողմը կ'ուզէր որ նախ՝ զոհուին թաքուն թշնամիները, երթալէ առաջ այն թշնամիներուն դէմ որոնք զինուած կուգային Բարիզի վրայ։ Այս վերջին մտածումը կարծիք մը ըլլալէ աւելի կոյր և վայրագ զգացում մըն էր, վախով և բարկութեամբ կազմուած, և որ վտանգին հետ պիտի աճէր։

Բարիզցիները այնքան աւելի գայրացած էին, որքան որ վտանգը աւելի մեծ էր իրենց քաղաքին համար, բոլոր ապստամբութեանց վառարանը և թշնամի բանակներուն յառաջխաղացութեան գլխաւոր նպատակը ըլլալով։ Կ'ամբաստանէին Ժողովին գաւառացի երեսփոխանները, թէ կ'ուզէին գաւառները քաշուիլ։ Մանաւանդ Ժիրոնտէնները՝ որ մեծ մասով հարաւային Ֆրանսայի գաւառներէն էին և որոնք կը կազմէին այն չափաւորական մեծամասնութիւնը որ զզուելի էր Քաղաքապետարանին, մանաւանդ Ժիրոնտէնները կ'ամբաստանուէին թէ կ'ուզեն Բարիզը զոհել, մայրաքաղաքը ատելնուն համար։ Այսպէսով անոնց կը վերագրէին բաւական բնական զգացումներ, զորս Բարիզցիները կրնային կարծել թէ գրգռած են. բայց Ժիրոնտէն երեսփոխանները չափ անկեղծութեամբ կը սիրէին իրենց հայրենիքը և անոր դատը, և չէին խորհեր Բարիզը լքել։ Ճիշդ է թէ միշտ խորհած էին որ, հիւսիսը կորսուելէն ետք կարելի է քաշուիլ հարաւային Ֆրանսա. ճիշդ է որ, այդ պահուն իսկ իրենցմէ ոմանք խոհեմութիւն կը նկատէին կառավարութեան կեդրոնը Լուարէն անդին փոխադրել. բայց ատելի քաղաք մը զոհելու տենչանքը և կառավարութիւնը փոխադրելը այնպիսի վայրերու մէջ, ուր տէրը պիտի ըլլային, բնաւ իրենց մտքին մէջ չկար։ Անոնք շատ հոգեկան բարձրութիւն ունէին, և արդէն դեռ շատ ազդեցիկ էին և յուսերնին դրած էին յառաջիկայ Քոնվանսիոնի գումարումին վրայ, և չէին կրնար արդէն խորհած ըլլալ Բարիզէն անջատուիլ։

Ուրեմն, միևնոյն ատեն կ'ամբաստանէին Ժիրոնտէններու ներողամտութիւնը՝ դաւաճաններուն նկատմամբ և անոնց անտարբերութիւնը մայրաքաղաքին շահերուն հանդէպ։ Անոնք ընտրուած ըլլալով ամենաբուռն մարդոց դէմ պայքարելու, պիտի հարկադրուէին տեղի տալ իրենց հակառակորդներուն գործունէութեան և կորովին, նոյն իսկ իրենց կողմը ունենալով մեծամասնութիւն և խելամտութիւնը։ Գործադիր Ժողովին մէջ մէկի դէմ հինգ էին, որովհետև իրենց ծոցէն առնուած երեք նախարարներէն զատ՝ Սէրվան, Քլավիէռ և Ռօլան, երկու միւսները Մօնժ և Լըպրէօն իրենք ընտրած էին։ Բայց մի միայն Տանդօնը, որ առանց իրենց անձնական թշնամին ըլլալու, չունէր ո՛չ իրենց չափաւորութիւնը, ոչ ալ իրենց կարծիքները, Տանդօն, մինակը կը տիրապետէր դահլիճին և իրենցմէ կը խլէր ամէն ազդեցութիւն։ Մինչ Քլավիէռ կը ջանար քիչ մը հասոյթներ քով քովի բերել, մինչ Սէրվան կ'աճապարէր օգնութիւններ հասցնել զօրավարներուն, մինչ Ռօլան շատ իմաստուն շրջաբերականներ կը տարածէր գաւառները լուսաբանելու համար, տեղական իշխանութիւնները վարելու, անոնց իշխանութեան ոտքի տակ երթալը արգիլելու և ամէն կարգի բռնութիւններ

կեցնելու՝ Տանդօն զբաղած էր երկրին վարչութեան մէջ տեղաւորելու իր մարդիկը։ Ամէն կողմ կը ղրկէր իրեն հաւատարիմ Քորտըլիէները այսպէսով բազմաթիւ նեցուկներ կը հայթայթէր, և իր բարեկամները մասնակից կ'ընէր յեղափոխութեան շահերուն։ Խանդավառելով կամ սարսափեցնելով իր ընկերակիցները, միայն արգելքի կը հանդիպէր Ռօլանի անճկելի կարծրութեան առջև, որ յաճախ կը մերժէր այն միջոցները կամ այն անձերը, զորս Տանդօն կ'առաջարկէր. Տանդօն այս բանէն կը նեղուէր, առանց սակայն Ռօլանի հետ խզուելու և կը ջանար, որչափ կարելի էր շատ մարդ պաշտօնի գլուխ անցընել եւ որոշումներ խլել։

Տանդօն, որուն ճշմարիտ տիրապետութիւնը Բարիզի մէջ էր, կ'ուզէր զայն պահպանել և վճռած էր Լուարէն անդին ո և է փոխադրութիւն արգիլել։ Արտակարգ յանդգնութիւնով մը օժտուած, ապստամբութիւնը յայտարարած էր Օգոստոս 10 ի նախընթօրին, երբ դեռ ամենքը կը վարանէին. նա քաշուող մարդ չէր և կը խորհէր որ յաւագոյն է մայրաքաղաքին մէջ թաղուիլ։ Դահլիճին տէրը, Մառային հետ և քաղաքապետութեան հսկողութեան յանձնաժողովին հետ կապուած, ակումբներու մէջ իր խօսքը լսել ընող, վերջապէս ապրելով ամբոխին մէջ, ինչպէս տարրի մը՝ զոր ուզած ատենը կը խառնէր, Տանդօն՝ Բարիզի ամենէն զօրաւոր մարդն էր, և այս զօրութիւնը հիմնուած ըլլալով բուռն բնութեան մը վրայ, որ զինքը յարաբերութեան մէջ կը դնէր ժողովուրդին կիրքերուն հետ, Տանդօն շատ անհազդեցիկ ըլլալու էր յաղթուողներուն։ Իր յեղափոխական եռանդին մէջ, Տանդօն կը հակէր այն բոլոր վրէժխնդրութեան գաղափարներուն, զորս Ժիրօնտէնները կը մերժէին. անիկա պետն էր այն Բարիզեան կուսակցութեան, որ կ'ըսէր. — «Մենք չպիտի նահանջենք, մենք պիտի մեռնինք մայրաքաղաքին մէջ և՝ անոր աւերակներուն ներքեւ. բայց մեր թշնամիները մեզմէ առաջ պիտի մեռնին։» Այսպէսով հոգիներու մէջ կը պատրաստուէին սոսկալի նախազգացումներ և՝ ահաւելի սարսափները անոնց քստմնելի արդիւնքը պիտի ըլլային։

Օգոս. 26 ին Լօնվիի գրաւման լուրը արագօրէն տարածուեցաւ և Բարիզի մէջ ընդհանուր յուզում մը պատճառեց։ Օրն ի բուն վիճաբանեցան այդ լուրին ճշմարտանմանութեան վրայ. վերջապէս կարելի չեղաւ զայն հերքել եւ իմացուեցաւ որ քաղաքը իր դուռները բացած էր քանի մը ժամուան ռմբակոծութենէ ետք։ Խռովութիւնը այնքան մեծ եղաւ, որ ժողովը հրամանագրեց մահուան պատիժի ենթարկել ո և է քաղաքացի՝ որ պաշարուած վայրի մը մէջ, անձնատուութեան մասին կը խօսի։ Համայնքին պահանջման վրայ, հրաման եղաւ որ Բարիզ և մերձակայ նահանգները հայթայթեն քանի մը օրուան մէջ, 30,000 հոգի, սպառազինուած և պարենաւորուած։ Այնպիսի խանդավառութիւն մը կը տիրէր որ այս զօրահանութիւնը դիւրին կը դառնէր և անոնց թիւը վտանգի դէմ ապահովութիւն մըն էր։ Զէին երեւակայեր որ 100,000 Բրուսիացիներ կարենան յաղթել քանի մը միլիոն մարդու, որոնք ինքզինքնին պաշտպանել կ'ուզէին։ Բարիզի մէջ բանակատեղի մը կազմելու համար նոր խանդով մը աշխատեցան և բոլոր կիները հաւաքուեցան եկեղեցիներու մէջ օգնելու համար բանակի անհրաժեշտ նիւթերուն պատրաստութեանը։

Տանդօն Համայնքային Խորհուրդին գնաց և իր առաջարկութեան վրայ, անոնք ամենէն ծայրայեղ միջոցներուն դիմեցին։ Որոշեցին մասնաճիւղերու մէջ բոլոր կարօտեալներուն թուահամարը պատրաստել և անոնց թօշակ մը ու զէնքեր տալ. ասկէ զատ հրամայեցին

որ կասկածելիները զինաթափ ըլլան և ձերբակալուին, ու կասկածելի համարեցին բոլոր անոնք որ Յունիս 20ի խընդրագրին և Փարիզի մէջ բանակ մը կազմելու հրամանագրին հակառակ ստորագրած էին։ Այս զինաթափութիւնը եւ ձերբակալումը գործադրելու համար, բնակարաններու խուզարկութիւնը հնարեցին, զոր ամենէն ահռելի եղանակով մը կազմակերպեցին։ Քաղաքին դուռները պէտք էր գոցուէին 48 ժամու չափ, Օգոստոս 27 ի երեկոյէն սկսեալ և ո և է պատճառաւ դուրս ելլելու արտօնագիր բնաւ չպիտի տրուէր։ Պահնորդներ դրած էին Սէն գետին վրայ, այդ կողմէն ո և է փախուստ արգիլելու համար։ Շրջակայ գաւառները պաշտօն ունէին ձերբակալելու ով որ յանցանք գործէր գիւղերուն մէջ կամ ճամբաներուն վրայ։ Թմբուկը պիտի ծանուցանէր խուզարկութիւնները և այդ նշանին վրայ իւրաքանչիւր քաղաքացի ստիպուած էր տունը մնալ, հակառակ պարագային պիտի կասկածէին թէ հաւաքումի մը կը մասնակցի, եթէ ուրիշի մը տունը գտնէին։ Այս պատճառաւ բոլոր մասնաճիւղերուն ժողովները եւ նոյն իսկ մեծ ատեանը պիտի դադրէր այս երկու օրուան միջոցին։ Համայնքի պատգամաւորները, զինուած իշխանութեան օգնութեամբ պաշտօն ունէին խուզարկութիւնները ընելու և գրաւելու զէնքերը ու ձերբակալելու կասկածելիները, այսինքն վերոյիշեալ խընդրագիրները ստորագրողները, ուչ, երդուեալ քահանաները, այն քաղաքացիները, որոնք իրենց յայտարարութեան մէջ կը ստէին, անոնք՝ որոնց դէմ ամբաստանութիւններ կային, ևն. ևն.։ Յերեկուան ժամը 10 ին, կառքերը պիտի դադրէին երթևեկել և քաղաքը պիտի լուսաւորուէր ամբողջ գիշերը։

Ասոնք էին ձեռք առնուած այն միջոցները, ձերբակալելու համար, կ'ըսէին, այն յոռի քաղաքացիները որ Օգոստոս 10էն ի վեր պատրաստուած էին։ Օգոստ. 27 ի կէսգիշերէն իսկ սկսան այս խուզարկութիւնները ընել, և կուսակցութիւն մը, որ ուրիշ մէկ կուսակցութեան ամբաստանութեան մատնուած էր, ամբողջովին բանտարկութեան ենթարկուեցաւ։ Ամէն անոնք որ կը վերաբերէին նախկին արքունիքին, ըլլա՛յ պաշտօնով, ըլլայ դասակարգով և կամ պալատ յաճախելով, բոլոր անոնք որ թագաւորականներու զանազան շարժումներու միջոցին արքունիքին ի նպաստ յայտնուած էին. բոլոր անոնք որ վրան թշնամիներ ունէին, կարող՝ մատնութեամբ մը վըրէժ լուծելու, բանտ նետուեցան, 12 էն 15,000 հոգի։ Համայնքին հսկողութեան յանձնաժողովն էր որ կը նախագահէր այս ձերբակալութիւններուն և զանոնք գործադրել կուտար իր աչքին առաջ։ Անոնք որ ձերբակալուած էին, նախ՝ կ'առաջնորդուէին իրենց բնակարանէն մասնաճիւղին յանձնախումբը և անկէ ալ համայնքային յանձնախումբին։ Հոն կարճառօտ կերպով մը կը հարցաքննուէին իրենց զգացումներուն և գործերուն նկատմամբ, որով կ'ապացուցանէին թէ ինչ պատճառաւ յանցաւոր են։ Յաճախ, յանձնախումբին մէկ անդամը զանոնք կը հարցաքննէր, մինչ միւս անդամները քանի մը օրերու հսկումէն ընկճուած, աթոռներու կամ սեղաններու վրայ կը քնանային։

Ձերբակալուած անձերը՝ նախ կը յանձնուէին Քաղաքապետարան, ուրկէ զիրենք կը ղրկէին այն բանտերը, ուր դեռ տեղ մնացած էր։ Հոն կը գտնուէին արգելափակուած այն բոլոր գաղափարի տէր անձերը, որոնք մինչև Օգոստոս 10 իրարու յաջորդած էին. հոն էին բոլոր այն դասակարգերը, որ տապալուած էին և պարզ քաղքենիներ, որ արդէն դուքսերու և իշխաններու չափ ազնուական կը համարուէին։

Սարսափը կը տիրէր Փարիզի մէջ։ Անիկա դրութիւն ունէր բռնակալան



ՌՕՊԷՍԲԻԷՌ

բանակին ապաւնալիքին ներքեւ գըտնուող հանրապետականներուն մէջ և հանրապետականներուն ապաւնալիքին ներքեւ եղող թագաւորականներուն մէջ։ Ընդհանուր պաշտպանութեան յանձնաժողովը, որ Ժողովին մէջ հաստատուած էր, թշնամիին դիմադրելու միջոցներ հայթայթելու համար, ժողովուեցաւ 30ին և իր նիստին հրաւիրեց Գործադիր իշխանութիւնը, խորհրդակցելու համար հանրային փրկութեան միջոցներուն վրայ։ Շատ մարդիկ կային Ժողովին մէջ, որովհետեւ յանձնաժողովի անդամներուն միայն շատ մը երեսփոխաններ, որոնք այս նիստին ներկայ ըլլալ կ'ուզէին։ Զանազան կարծիքներ յայտնուեցան։ Նախարար Սէրվան ոեւէ հաւատք չունէր բանակին վրայ և չէր կարծեր որ Տիւմուրիէ կարենար այն 23,000 հոգիով, զորս Լաֆայէթ թողած էր, Բրուսիացիները կասեցնել։ Անոնց և Բարիզի մէջ ոչ

մէկ դիրք կը տեսնէր, որ բաւական զօրաւոր ըլլար անոնց դիմադրելու և յառաջխաղացութիւնը արգիլելու։ Ամէն ոք իրեն պէս կը մտածէր այս մասին և առաջարկելէ ետք որ բոլոր ժողովուրդը զինուած Բարիզի պարիսպներուն ետեւ փոխադրուէր հոն յուսահատօրէն կռուելու համար՝ խօսուեցաւ ի հարկին Սօմիւր քաշուիլ, թշնամիին և ազգային գերիշխանութեան աւանդապահ իշխանութեանց միջեւ նոր անջրպետներ և նոր արգելքներ դնելու համար։ Վէրնիօ և Կուատէ Բարիզը ձգել երթալու գաղափարին դէմ ելան։ Իրենցմէ ետք Տանդօն խօսք առաւ։ «Ձեզի կ'առաջարկեն, ըսաւ, Բարիզէն հեռանալ։ Գիտէք որ, թշնամիին կարծիքով Բարիզը Ֆրանսան կը ներկայացնէ և այս կէտը թշնամիին թողուլը յեղափոխութիւնը անոնց ձեռքը յանձնել է։ Նահանջելը, մեզի համար կորսուիլ է։ Պէտք է ուրեմն, որ հոս ինքզինքնիս պահենք բոլոր միջոցներով և փրկուինք յանդգնութեամբ։

«Առաջարկուած միջոցներուն մէջ ո՛չ մէկը ինծի վճռական թուեցաւ։ Պէտք չէ մեզմէ ծածկենք այն կացութիւնը, որուն մէջ մեզ դրաւ Օգոստոս 10ը, մեզի բաժնեց հանրապետական և թագաւորական կուսակցութիւններու. առաջինը սակաւաթիւ է, իսկ երկրորդը բազմաթիւ։ Այս տկար վիճակին մէջ, մենք, հանրապետականներս, երկու կրակի ենթարկուած ենք, թշնամիին՝ որ դուրսը կը գտնուի և թագաւորականութեան որ ներսն է։ Թագաւորական վարչութիւն մը կայ որուն կեդրոնը գաղտնապէս Բարիզի մէջ է և կը թղթակցի բրուսիական բանակին հետ։ Ձեզի ըսել թէ ո՛ւր կը հաւաքուին, որո՞նք կը կազմեն. այդ վարչութիւնը, նախարարի մը համար անկարելի է։ Բայց զայն ցրուելու և անոր՝ օտարին հետ ունեցած վնասակար յարաբերութիւնները արգիլելու համար պէտք է . . . պէտք է վախցնել թագաւորականները։»

Այս բառերը, որուն բնաջնջումի շարժում մը կ'ընկերանար, սարսափ նկարել տուին դէմքերու վրայ։ «Պէտք է, կ'ըսեմ ձեզի, շարունակեց Տանդօն, թագաւորականները վախցնել . . . Բարիզի մէջ իսկ կարեւոր է որ դիրք բռնէք, և անապահով կռիւներու մէջ ուժերնիդ սպառելով չէ որ այդ բանին պիտի յաջողիք . . . ։»

Անմիջապէս, ապշութիւնը տիրեց ժողովին։ Ոչ մէկ բառ աւելցնող եղաւ այս խօսքերուն վրայ և ամէն մէկը քաշուեցաւ, առանց որոշապէս նախատեսելու, և առանց նոյն իսկ թափանցել համարձակելու ինչ որ նախարարը կը պատրաստէր։

Տանդօն անմիջապէս գնաց համայնքային հսկողութեան յանձնաժողովին որ գերիշխանօրէն կը տրամադրէր ամէն քաղաքացիներու անձերը և ուր Մարա կը տիրապետէր։ Մարայի տգէտ և կոյր ընկերակիցներն էին Բանիս և Սէրժան, որոնք արդէն հռչակի ստացած էին Յունիս 20ին և Օգոստոս 10ին և Ժուրտէօյ, Տիւբլէն, Լը Ֆօռ, և Լանֆան կոչուածները։ Հոն, Օգոստոս 30 հինգշաբթիէն ուրբաթ 31ը ահռելի ծրագիրներ յղացան Բարիզի բանտերուն մէջ արգելափակուած դժբախտներուն դէմ։ Ցաւալի և սարսափելի օրինակ՝ քաղաքական զայրոյթներու։ Տանդօն, որ տեսանք թէ միշտ ատելութիւն կը սնուցանէր իր անձնական թշնամիներուն դէմ և յաճախ ընդունակ էր գթութեան, իր յանդգնութիւնը տրամադրեց Մարայի ահռելի մղձաւանջներուն։ Երկուքը միանալով դաւադրութիւն մը կազմեցին, որուն օրինակը տուած էին բազմաթիւ դարեր և որ սակայն Ժ.Ը. դարուն վերջերը չէ կարելի արդարացնել ժամանակին տգիտութեամբ և բարքերու վայրագութեամբ։ Տեսանք որ, երեք տարի ա-

ռազ, Մայեար անունով մէկը ըմբոստացած կիներուն գլուխը անցած էր 5 և 6 Հոկտեմբերի հռչակաւոր օրերուն մէջ։ Այս Մայեառը որ նախկին դռնապան, խելացի և արիւնարբու մարդ մըն էր, խումբ մը կազմած էր կոպիտ և ամէն բանի համարձակելու ընդունակ մարդոցմէ. այնպիսիներէ, որոնք կը գտնուին այն դասակարգերուն մէջ՝ ուր դաստիարակութիւնը լուսաբանելով չէ մաքրած բնական հակումները։ Անիկա ճանչցուած էր իբր այդ խումբին պետը և եթէ նոր յայտնութեան մը հաւատք ընծայենք, իրեն իմաց տրուեցաւ որ առաջին նշանին գործելու պատրաստ գտնուի, օգտակար և վստահ կերպով մը տեղաւորուի, լախտեր պատրաստէ, և միջոցներ ձեռք առնէ զոհերուն աղաղակները արգիլելու համար, և հայթայթէ քացախ, ձախաւելներ, չմարած կիր և գոց կառքեր, ևն.։

Այդ վայրկեանէն սկսեալ սարսափելի ջարդի մը շշուկը յամրօրէն տարածուեցաւ։ Զերբակալուածներուն ծնողքները անձկութեան մէջ էին, և դաւադրութիւնը, ինչպէս Օգոստոս 10ին, Յունիս 20ին և բոլոր միւսները, առաջուց կը պայթէր չարագուշակ նշաններով։ Ամէն կողմէ կը կրկնէին որ պէտք էր, ահռելի օրինակով մը սարսափեցնել այն դաւադիրները, որոնք բանտերու խորերէն համաձայնութիւն կը կնքէին օտարին հետ։ Կը գանգատէին դանդաղութենէն դատարանին որ պաշտօն ունէր Օգոստոս 10ի յանցաւորները պատժելու և մեծ աղմուկով շուտափոյթ արդարութիւն կը պահանջէին։

Օգոստ. 31ին, նախկին նախարար Մօնմօրէն անպարտ կ'արձակուի Օգոս. 17ի ատեանէն և լուր կը տարածայնեն որ ամէն կողմ դաւաճանութիւն կայ և թէ յանցաւորներուն անպատիժ մնալը ապահովուած է։ Նոյն օրուան մէջ՝ կը վստահացնեն որ դատապարտեալ մը յայտնութիւններ ըրած է, որով կ'իմացնէ թէ գիշերը բանտարկեալները պիտի փախին արգելարաններէն, պիտի զինուին, տարածուին քաղաքին մէջ, ահռելի վրիժառութիւն մը պիտի ընեն հոն և յետոյ թագաւորը փախցնելով Բարիզի դուռները պիտի բանան Բրուսիացիներուն առջև։ Սակայն և այնպէս, այս ամբաստանուած ձերբակալեալները կը դողային իրենց կեանքին համար, իրենց ազգականները յուսահատած էին և թագաւորական ընտանիքը Թանբլի աշտարակին խորէն մահուան կը սպասէր միայն։

Ժաքօպէններու ակումբին, մասնաճիւղերուն, Համայնքային Խորհուրդին և Ժողովին փոքրամասնութեան մէջ շատ մը մարդիկ կային, որ այս ենթադրեալ դաւադրութիւններուն կը հաւատային և կը համարձակէին բանտարկեալներուն ջնջումը օրինաւոր յայտարարելու։ Անտարակոյս, բնութիւնը այնքա՛ն հրէշներ չստեղծեր մէկ օրուան մը համար, և միայն կուսակցական ոգին կրնայ միանգամայն մոլորեցնել այդքան մարդիկ։ Տխուր դաս մը՝ ժողովուրդներուն համար։ Կը կարծեն որ վտանգներ կան, կը յամառին որ պէտք է այդ վտանգները վանել, այդ բանը կը կրկնեն, անով կը գինովնան. և մինչ տեսակ մը մարդիկ թեթեւութիւնով կը յայտարարեն թէ պէտք է հարուած իջեցնել, ուրիշներ կը հարուածեն արիւնռուշտ յանդգնութեամբ մը։

Շաբաթ օրը, Սեպտեմբեր 1, քաղաքին դուռներուն փակումին և բնակարաններու խուզարկութեան համար նշանակուած 48 ժամերը թաւալած էին և հաղորդակցութիւնները վերահաստատուեցան։ Բայց յանկարծ օրուան մէջ Վէրտէօնի առումին լուրը կը տարածուի։ Վէրտէօն միայն պաշարուած է դեռ, բայց կը կարծեն որ այդ վայ-

րը գրաւուած է, և թէ նոր դաւաճանութեամբ մը մատնուած է ան, ինչպէս Լօնվին։

Տանդօն անմիջապէս հրամանագրել կու տայ Համայնքային Խորհուրդին, որ հետեւեալ օրը, 2 Սեպտեմբեր, թմբուկը զարնել տան ամէն տեղ, ահազանգը հնչէ, վտանգը ազդարարող թնդանօթը արձակուի և բոլոր տրամադրելի քաղաքացիները զինուած երթան Շան տը Մարս, հոն բանակին օրուան միացած ժամանակը և հետեւեալ օրը մեկնին Վէրտէօնի պարիսպներուն ներքեւ երթալու համար։ Այս սարսափելի պատրաստութեանց ընթացքին բացայայտ եղաւ որ խնդիրը ընդհանուր զօրահանութենէ տարբեր բանի մը վրայ էր։ Սեզգականներ կը վազեն և ջանքեր կ'ընեն բանտարկեալները արձակել տալու համար։ Մանուէլ, ընդհանուր դատախազը, վեհանձն կնոջ մը պաղատանքին վրայ կ'ըսուի թէ կ'արձակէ Լաթրէ Մոսյ ընտանիքին երկու բանտարկեալներ։ Ուրիշ կին մը, Տիկին Ֆօս-Լանտրի, կը յամառի և կ'ուզէ իր մօրեղբօր Աբբա տը Ռասթինեաքի բանտարկութեան ընկերանալ և Սէրժան անոր կը պատասխանէ. «Անխոհեմութիւն մըն է ըրածնիդ, բանտերը ապահով չեն։»

Հետեւեալ օրը, Սեպտ. 2 կիրակի օր մըն էր. անգործութիւնը կ'աւելցնէր ժողովրդային խռովութիւնը։ Սատար համախմբումներ կ'երեւային ամէնուրեք և լուր կը տարածէին որ թշնամին երեք օրուան մէջ Բարիզ կրնար հասնիլ. Համայնքային Խորհուրդը կը տեղեկացնէ ժողովին այն միջոցները զորս ձեռք առած էր քաղաքացիներուն ընդհանուր զօրահանութեան մասին։ Վէրնիօ, հայրենասիրութեան խանդավառութենէ մը բռնուած, անմիջապէս խօսք կ'առնէ, կը շնորհաւորէ Բարիզցիները իրենց քաջութեան համար, զանոնք կը գովէ որ առաջարկներ ընելու եռանդը աւելի գործօն և աւելի օգտակար եռանդի մը, այսինքն՝ կռիւի վերածեցին։ «Կ'երեւայ թէ աւելցուց, թշնամիին յատակագիծն է ուղղակի մայրաքաղաքին վրայ քալել, բերդերը թողլով իր ետեւը։ Է՛հ, լաւ, այս ծրագիրը մեր փրկութեան և իր կորուստին պատճառ պիտի ըլլայ։ Մեր բանակը, որ շատ տկար էր թշնամիին դիմադրելու համար, բաւական զօրաւոր պիտի ըլլայ զինքը նեղացնելու համար ետեւէն. և մինչ անիկա պիտի հասնի մեր գումարտակներէն հալածական, իր դէմ պիտի գտնէ Բարիզեան բանակը, կռուի կեցած՝ մայրաքաղաքին պարիսպներուն ետեւ և հոն ամէն կողմէ պաշարուած ըլլալով, այս հողը զոր պղծած էր, զինքը պիտի լափէ։

«Բայց այս քաղցր յոյսերուն մէջտեղ, վտանգ մը կայ, զոր պէտք չէ որ ծածկենք. անիկա փոխանցուող սարսափին վտանգն է։ Մեր թշնամիները այդ բանին վրայ յոյս դրած են և ոսկի կը ցանեն սոսկումը յառաջ բերելու համար. և, դուք գիտէք, մարդիկ կան որ այնքան ցեխոտ կաւով մը շինուած են, որ ամենափոքր վտանգի գաղափարէն կը կազմալուծուին. Պիտի ուզէի որ կարելի ըլլար մատնանշել այդ անհոգի և մարդկային դէմքով արարածները, որոնք մէկ հաւաքել քաղաքի մը մէջ, օրինակի համար Լոնվիի մէջ, զոր վատերու քաղաքը պիտի կոչեն և հոն, զզուանքի առարկայ դառնալով սարսափ չպիտի կրնային սերմանել իրենց քաղաքացիներուն մէջ, այլ եւս չպիտի կրնային գաճաճները իբր հսկայ ներկայացնել և այն փոշին որ կը բարձրանայ Պրուսիականներու զօրագունդի մը առջեւէն զինուած գումարտակներ չկարծէ։

«Բարիզցինե՛ր, այսօր է որ պէտք է մեծ կռիւով մը մէջտեղ հանել. ինչո՞ւ բանակատեղիին ամրութեանց գործը աւելի յառաջացած չէ. ո՞ւր են այն բահերը, բրիչները, որոնք դաշնակցու-

թեան խորանը շինեցին և Շան տը Մարսը հարթեցին։ Մեծ եռանդ մը ցոյց տուիք համդէսներու համար. անշուշտ նուազ եռանդ չպիտի ցուցնէք կռուի համար. ազատութիւնը երգեցիք եւ հռչակեցիք. պէտք է զայն պաշտպանել։ Խնդիրը այլեւս արոյրէ թագաւորներ տապալելուն վրայ չէ, այլ կենդանի և իրենց զօրութեամբ զինուած թագաւորներու վրայ. կը պահանջեմ ուրեմն, որ Ազգային Ժողովը առաջին օրինակը տայ և սահմաներու պատգամաւորներ ղրկէ, ո՛չ թէ որպէս զի անոնք ճառեր խօսին, այլ որպէս զի իրենք իսկ աշխատին և իրենց ձեռքերով հողը փորեն բոլոր քաղաքացիներուն դիմաց։»

Այս առաջարկը ամենամեծ խանդավառութեամբ կ'ընդունուի։ Տանդօն կը յաջորդէ Վէրնիօին, կը հաղորդէ ձեռք առնուած միջոցները և նոր միջոցներ կ'առաջարկէ։ «Ժողովուրդէն մաս մը, կ'ըսէ, սահմանագլուխ պիտի փոխադրուի, ուրիշ մաս մը նիզակներով մեր քաղաքներուն ներսերը պիտի պաշտպանէ։ Բայց ասիկա բաւական չէ. պէտք է ամենուրեք պատգամաւորներ և սուրհանդակներ ղրկել, որպէս զի ամբողջ Ֆրանսա մղուի Բարիզի պէս ընելու։ Հրամանագիր մը տալու է, որ ամէն քաղաքացի ստիպուած ըլլայ, իր անձով ծառայելու կամ զինաթափ ըլլալու. հակառակ պարագային ենթարկուի մահուան պատիժի։» Տանդօն կ'աւելցնէ. «Այն թնդանօթի հարուածը որ պիտի լսէք, վտանգ ազդարարող թընդանօթի հարուածը չէ, այլ հայրենիքին թշնամիներուն վրայ եղած յարձակում մըն է։ Անոնց յաղթելու, զանոնք տապալելու համար ի՞նչ պէտք է. Յանդգնութիւն. դարձեա՛լ յանդգնութիւն, եւ միշտ յանդգնութի՛ւն։»

Նախարարին խօսքերը և արարքը խորապէս յուզեցին նիստականները։ Իր առաջարկը կ'ընդունուի և ինքը կը մեկնի կ'երթայ հաղորդութեան յանձնախումբին։ Բոլոր իշխանութիւնները, բոլոր մարմինները, Ժողովը, Համայնքային Խորհուրդը, մասնաճիւղերը, ժաքօպէնները նիստի մէջ էին։ Նախարարները հաւաքուած էին ծովային պաշտօնատան մէջ և Տանդօնին կը սպասէին խորհըրդակցելու համար։ Ամբողջ քաղաքը ոտքի վրայ էր։ Խորունկ սարսափ մը կը տիրէր բանտերու մէջ։

Բանտերի մէջ, թագաւորական ընտանիքը անձկութեամբ այս մեծ յուզմունքին պատճառը կը հարցնէր, որովհետև գրգռութիւնները բոլոր միւս բանտարկեալներէն աւելի անոր կը սպառնային։ Այլ և այլ բանտերու մէջ բանտապահները յուսահատած կը թուէին։ Ապպէյի բանտապահը առաւօտէն արդէն իր կինը եւ տղաքը հեռացուցած էր։ Ընթրիքը սովորական ժամանակէն երկու ժամ առաջ տուին, և բոլոր սեղանի դանակները վերցուցած էին բանտարկեալներու՝ անձեռոցներէն։ Այս պարագաներէն մտահար՝ անոնք յամառօրէն կը հարցափորձէին իրենց պահապանները, որոնք չէին ուզեր պատասխանել։ Վերջապէս, ժամը երկուքին թմբուկը սկսաւ զարնուիլ ամէն տեղ, ահազանգը հնչեց և աղէտը ծանուցանող թընդանօթը թնդաց մայրաքաղաքին շրջափակին մէջ։ Քաղաքացիներու խումբեր կ'երթային դէպ ի Շան տը Մարս, ուրիշ խումբեր կը շրջապատէին Համայնքային Խորհուրդը, Ժողովը և կը լեցնէին հանրային հրապարակները։

Քաղաքապետարանին մէջ քանի չորս քահանաներ կային, որոնք երդում ըրած չըլլալնուն համար ձերբակալուած էին, և որոնք բանտի սրահէն պիտի փոխադրուէին Ապպէյի բանտը։ Կա՛մ դիտաւորութեամբ, կամ դիպուածի բերումով այդ վայրկեանը ընտրեցին զանոնք փոխադրելու համար։ Կը տեղաւորուին վեց կառքերու մէջ, որոնց կը հետեւէին Պրըթոնցի և Մարսիլիացի դաշնակիցներ և կամաց կամաց կ'ուղղուէին Ֆօպուռ Սէն-Ժէրմէն՝ գետափէն

Բօն Նէօֆէն և Տօֆին փողոցէն անցնելով: Ձիրենք կը չրջապատեն և նախատինքներ կը տեղան: «Անհաւատիկ, կ'ըսեն դաշնակիցները, այն դաւադիրները, որոնք մեր կիները և զաւակները պիտի ջարդէին, երբ մենք սահմանագլխին վրայ ըլլայինք:» Այս բառերը կ'աւելցնեն իրարանցումը: Կառքերուն դռնակները բաց էին. դժբաղդ քահանաները կ'ուզեն զանոնք փակել զերծ ըլլալու համար գէչ վարմունքէ, բայց զիրենք կ'արգիլեն և ստիպուած կ'ըլլան համբերութեամբ տոկալու հարուածներուն և նախատինքներուն: Վերջապէս կը հասնին Աբպէյի բակին մէջ, ուր արդէն չատ մեծ ամբոխ մը հաւաքուած էր: Այս բակը դէպ ի բանտ կ'առաջնորդէր և կը հաղորդակցէր այն սրահին հետ, ուր Թաղըր-Նասիօնի մասնախումբը իր նիստերը կ'ընէր: Առաջին կառքը կը հասնի յանձնախումբի դրանը առաջ և կը չրջապատուի չատ մը կատաղի մարդիկներէ: Մայեառ ներկայ էր. դռնակը կը բացուի, բանտարկեալներուն առաջինը կը յառաջանայ իջնելու և յանձնախումբին երթալու համար, բայց բազմաթիւ հարուածներ զինքը կը ծակծկէին: Երկրորդը ետ կը նետուի կառքին մէջ, բայց զինքը հոնկէ դուրս կը քաշեն բռնութեամբ և նախորդին պէս կը զոհուի: Երկու միւս բանտարկեալները իրենց կարգին կը զոհուին և ջարդարարները կը ձգեն առաջին կառքը, միւսներուն վրայ երթալու համար: Կառքերը՝ մէկը միւսին ետևէն կը հասնին չարաբաստիկ բակին մէջ և քսանըչորս քահանաները կը մորթուին կատաղի ժողովուրդի մը ոտներուն մէջ (*):

Այս միջոցին, վազելով կը հասնի Պիյեօ-Վարէն, Համայնքային Խորհուրդին անդամ, միակը այս ջարդերուն կազմակերպողներէն, որ միչտ հաւանութիւն յայտնած էր կոտորածին, եւ համարձակած և խիզախ անզգութիւնով մը անոր տեսքին տոկացած էր: Անիկա կուգայ պաչտօնական գօտին դրած, կը քալէ արիւնին մէջէն և դիակներուն վրայէն, կը խօսի, կոտորողներու ամբոխին և կ'ըսէ. — «Ժողովո՛ւրդ, դուն քու թշնամիներդ կը զոհես, քու պարտականութիւնդ կը կատարես:» Պիյեօի խօսքերէն ետքը ձայն մը կը բարձրանայ. Մայեարն է: «Այլ ևս հոս բան մը չկայ ընելիք. կը գոչէ, Թարմ եղբայրք:»

Իր խումբը իրեն կը հետևի այն ատեն և ամենքը մէկ կը փութան դէպ ի Թարմի եկեղեցին, ուր երկու հարիւր քահանայ բանտարկուած էին: Կը մտնեն եկեղեցին և կը ջարդեն դժբաղդ քահանաները, որոնք կ'աղօթէին եւ մահուան մերձաւորութեան մէջ զիրար կը համբուրէին: Ջարդողները մեծ աղաղակներով Արլ. Արքեպիսկոպոսը կը պահանջեն, զայն կը փնտռեն, կը ճանչնան և սուրի հարուած մը տալով զանկին, զայն կը սպաննեն: Իրենց սուրերը գործածելէ ետք, հրացաններ կը գործածեն և ընդհանուր գնդակահարութիւն մը կ'ընեն սրահներուն խորերը, պարտէզին մէջ, պատերուն և ծառերուն վրայ, ուր զոհերէն ոմանք կը ջանային խուսափիլ:

Մինչ կոտորածը կը վերջանայ Թարմի մէջ, Մայեառ Աբպէյ կը վերադառնայ իրեններուն մէկ մասին հետ. արիւնով և քրտինքով թրծուած էր. Թաղըր-Նասիօնի մասնաճիւղին յանձնախումբին կը ներկայանայ և գինի կ'ուզէ այն քու աշխատաւորներուն համար, որոնք ազգը կ'ազատեն իր թշնամիներէն: Յանձնախումբը ղրկելով անոնց կուտայ 24 ընդդոյ գինի:

Գինի կը մատուցանեն բակին մէջ և այն սեղաններուն վրայ, որոնք չըրջապատուած էին կէս օրէ ետք ջարդուածներու դիակներով: Կը խմեն եւ

(*) Մէկը միայն, Աբբա Սիքար, ազատեցաւ հրաչքով:

յանկարծ բանտը ցուցնելով Մայեար կը գոչէ․ «Դէպ ի Ապպ՛էյ։»

Այս բառերուն վրայ իրեն կը հետեւին եւ կը յարձակին դուռներուն վրայ։ Սարսափահար բանտարկեալները կը լսեն ոռնոցները, որոնք իրենց մահը կը ծանուցանէին։ Դուռները կը բացուին․ առաջին ներկայացած բանտարկեալները կը բռնուին, ոտքերնէն կը քաշուին եւ արիւնաթաթ կը նետուին բակին մէջ։ Մինչ առանց խորութեան առաջին ներկայացողները կը զոհուին, Մայեար եւ իր արբանեակները կղպանքները եւ զանազան բանտերու բանալիները կը պահանջեն։ Անոնցմէ մէկը դէպ ի մուտքի դուռը յառաջանալով պզտիկ սեղանի մը վրայ կը բարձրանայ եւ խօսք կ՛առնէ․

— «Բարեկամներս, կ՛ըսէ, դուք կ՛ուզէք ջնջել ազնուականները, որոնք ժողովուրդին թշնամիներն են եւ որոնք պիտի ջարդէին ձեր կիները եւ զաւակները, մինչ դուք սահմանագլուխը պիտի ըլլայիք։ Իրաւունք ունիք, անտարակոյս․ բայց դուք բարի քաղաքացիներ էք, դուք արդարութիւնը կը սիրէք եւ անշուշտ չատ պիտի ցաւէիք, եթէ ձեր ձեռքերը թրջէին անմեղի արիւնով։»

—Այո՛, այո՛, կը գոչեն կատաղիները։

—Է՛հ լաւ, ձեզի կը հարցնեմ որ, երբ կ՛ուզէք, առանց բան մը մտիկ ընելու, կատղած վագրերու պէս յարձակիլ ձեզի անծանօթ եղող մարդիկներու վրայ, անմեղները յանցաւորներէն հետ չփոթելու չէ՞ք ենթարկուիր։

Այս խօսքերը կ՛ընդմիջուին ներկաներէն մէկուն կողմէն, որ սուրով մը զինուած իր կարգին կը գոչէ․

—Դո՞ւք ալ կ՛ուզէք մեզ քնացնել, եթէ Բրուսիացիները եւ Աւստրիացիները Փարիզ հասած ըլլային, յանցաւորները որոշել պիտի ջանայի՞ն։ Կին մը եւ զաւակներ ունիմ ես, որոնք չեմ ուզեր վտանգի մէջ թողուլ։ Եթէ կ՛ուզէք, ղէնքեր տուէք այս խայտառակներուն, հաւասար թիւով իրարու հետ կռուինք եւ մեր մեկնելէն առաջ Փարիզ մաքրուած պիտի ըլլայ։

—Իրաւունք ունի, պէտք է մտնել, կ՛ըսեն իրարու միւսները․ կը հրեն եւ կը յառաջանան։ Սակայն եւ այնպէս, զիրենք կը կասեցնեն եւ կը ստիպեն որ տեսակ մը դատաստանի համաձայնին։ Որոշուած է որ բանտարկեալներու արձանագրութիւնը առնեն, եւ իրենցմէ մէկը նախագահի պաշտօնը պիտի կատարէ, անունները եւ բանտարկութեան պատճառները պիտի կարդայ, եւ վայրկեանին իսկ վճիռ պիտի արձակէ։ «Մայեա՛րը․ Մայեարը նախագա՛հ» կը գոչեն չատ մը ձայներ եւ անիկա անմիջապէս պաշտօնի կ՛անցնի։ Այս սարսափելի նախագահը անմիջապէս կը նստի սեղանի մը առաջք, աչքին տակ կը դնէ բանտարկեալներուն արձանագրութիւնը, դիպուածով ընտրուած քանի մը մարդ չուրջը կը դնէ, կարծիքներն առնելու համար, քանի մը հատ ալ բանտին մէջ կը դնէ բանտարկեալները բերել տալու համար եւ միւսները դուռը կը ձգէ, որպէս զի ջարդը լրացընեն։ Սրտաճմլիկ տեսարաններ խնայելու համար ինքզինքին, համաձայնած է որ պիտի արտասանէ սա բառերը․ «Պարոն, Ֆօռսի բանտը պիտի երթաք», եւ այն ատեն դուռնէն դուրս նետուելով բանտարկեալը առանց կասկածելու պիտի յանձնուի իրեն սպասող սուրերուն։

Նախ կը բերեն այն զուիցերիական զինուորները, որոնք Ապպէյի մէջ բանտարկուած էին եւ որոնց սպաները Քօնսիէրժըրիի բանտը տարուած էին։

—«Դո՞ւք էք, իրենց ըսաւ Մայեար, որ ժողովուրդը սպաննեցիք Օգոստոս 10ին։

—Յարձակումի ենթարկուած էինք, կը պատասխանեն այս դժբախտները,

և մենք մեր պետերուն կը հնազանդէինք։

— Մնաց որ, կը կրկնէ Մայեար ցրտութեամբ, խնդիրը միայն ձեզի Ֆուս առաջնորդելու վրայ է։

Բայց այս դժբախտները որ սպառնական սուրերը ընդնշմարած էին դրան միւս կողմէն, չեն խօսիր։ Պէտք է դուրս ելել, կենկրկին, ետեւ կը նետուին։ Իրենցմէ մէկը աւելի հաստատ կեցուածքով, կը հարցնէ թէ ո՞ւրկէ պէտք է անցնիլ։ Դուռը կը բանան իր դէմ և գլխիկոր կը նետուի սուրերուն և նիզակներուն մէջտեղ. միւսները կը սպանեն իր ետեւէն և նոյն բաղդին կ'ենթարկուին։

Զարդարարները կը վերադառնան բանտ, կիները կը դիզեն սրահի մը մէջ, և նոր բանտարկեալներ կը բերեն։ Քանի մը հոգի, որոնք կեղծ թղթադրամներ շինած ըլլալու ամբաստանութեան ներքեւ էին, առաջին զոհերը կ'ըլլան։ Իրենցմէ ետքը կուգայ հռչակաւոր Մօնմօրէնը, որուն անպարտ արձակուիլը այնքան աղմուկ հանած էր և իրեն ազատութիւն ընծայած չէր։ Արիւնոտ նախագահին դիմաց բերուելով, կը յայտարարէ որ կանոնաւոր ատեանի մը ենթակայ ըլլալով, ուրիշ դատաստան չի ճանչնար։

— «Թո՛ղ այդպէս ըլլայ, կը պատասխանէ Մայեար. ուրեմն դուք Ֆուս պիտի երթաք նոր դատավարութեան մը սպասելու։» Նախ հին նախարարը խաբուելով կառք մը կ'ուզէ։ Իրեն կը պատասխանեն որ հատ մը պիտի գտնէ դրան առաջք. մանր մունր բաներ կ'ուզէ, կը յառաջանայ դէպ ի դուռը և մահը կ'ընդունի։

Յետոյ կը բերեն Թիէրրին, թագաւորին սենեկապանը. Անանկ տիրոջ սանիկ սպասաւոր, կ'ըսէ Մայեար, և դժբախտը կ'սպաննուի։ Յետոյ կուգան հաշտարար դատաւորներ, Պիւօլ և Պօքիյեօն, որոնք ամբաստանուած են Թիւյըրիի դղեակի յանձնախումբին մասնակցած ըլլալու յանցանքով։ Այս պատճառաւ կը մորթուին։

Գիշերը կը յառաջանայ և իւրաքանչիւր բանտարկեալ, լսելով մարդասպաններուն ոռնոցը, կը կարծէ որ իր վերջին ժամը հասած է։

Ի՞նչ կ'ընէին այդ պահուն գոյութիւն ունեցող իշխանութիւնները, բոլոր հաւաքուած մարմինները, բոլոր Բարիզի քաղաքացիները։ Այս անսահման մայրաքաղաքին մէջ, հանդարտութիւնը, մխոռը, անդորրութիւնը, սարսափը միասին կրնան ապրել, այնքան մէկ մասը միւսէն անջատուած է։ Ժողովը շատ ուշ միայն լսած էր բանտերուն դժբախտութիւնները և ապշահար եղած, երեսփոխաններ ղրկած էր ժողովուրդը հանդարտեցնելու և զոհերը ազատելու համար։ Համայնքային վարչութիւնը պատգամաւորներ ղրկած էր պարտքի համար բանտարկուածները արձակելու և զատելու համար զանոնք, որ կը կոչէր անմեղները և յանցաւորները։ Վերջապէս, Ժաքօպէնները թէև նիստի մէջ էին և գիտէին անցած դարձածը, կարծես թէ համաձայնութիւն մը կը պահէին։ Նախարարները, որոնք հաւաքուած էին ծովային նախարարութեան մէջ, խորհուրդ ընելու համար, դեռ տեղեկութիւն մը չունէին և Տանդօնին կը սպասէին որ հսկողութեան յանձնախումբին մէջ կը գտնուէր։ Համայնական Խորհուրդին կ'ըսէր որ՝ ընդհանուր հրամանատար Սանդէռ, հրամաններ տուած էր, բայց իրեն չէին հնազանդեր և գրեթէ իր բոլոր մարդիկը զբաղած էին քաղաքին պարիսպները պաշտպանելու։ Ճիշդ է որ անծանօթ և հակառակ հրամաններ կային, և թէ գաղտնի և հանրային իշխանութեան ու ընդդիմադիր իշխանութեան մը գոյութեան նշանները յայտնուած էին։



ՔԻՒՍԹԻՆ

Ասպէյի բանտին բակին մէջ կը գտնուէր ազգային պահակազօրաց պահականոց մը, որ հրաման ունէր նորս մտնել, բայց ոչ ոք թողուլ դուրս ելլելու: Ուրիշ տեղեր, պահակազօրքեր հրամանի կը սպասէին, բայց տուող չկար: Սանթէռ կորսնցուցա՞ծ էր արդեօք իր խելքը, ինչպէս Օգոստոս 10ին, կամ արդեօք դաւադրութեան մէ՞ջն էր: Մինչ Թաղաքապետարանի կողմէ յայտանի կերպով զրկուած պատգամաւորներ կուգային հանդարտ միաբան խորհուրդ տալ, և ժողովուրդը կը ձերբակալէին, նոյն Թաղաքապետարանի վարչութեան ուրիշ անդամներ կը ներկայանային Թամբլ-Նաւոնի յանձնախումբին, որ կատարածներուն քաղը նոր գումարած էր, և կ՚ըսէին. «Հոս ալ Բարմի պէս ամէն ինչ կարգին է. Համայնքային Խորհուրդը գնաց դրկեց, որպէս զի

ձեզի օգնութիւն ընծայենք, եթէ պէտք ունիք :»

Ժողովին և Քաղաքապետարանի կողմէ ղրկուած այն պատգամաւորները, որոնք ջանացին սպաննութիւնները կասեցնել, անկարող մնացին։ Անոնք տեսած էին որ անհուն բազմութիւն մը խռնուած էր բանտին շրջակաները եւ այս ահռելի տեսարանին ականատես կ'ըլլար, կեցցէ՛ Ազգը, գոչելով։ Ծերունի Տիւսօ, աթոռի մը վրայ ելլելով փորձեց գթութեան խօսքեր ընել, բայց զինքը մտիկ ընող չեղաւ։ Պաշիւ, աւելի ճարտար, այնպէս ձեւացուցած էր որ թէ ինք ալ կ'ըզգայ ամբոխին զայրոյթը, բայց զինքն ալ մտիկ չըրին, անմիջապէս որ տեսան թէ գութի զգացումներ արթնցնել կ'ուզէ։

Մանուէլ, Քաղաքապետարանի դատախազը, սիրտը գէշ եղած, ինքզինքը մեծամեծ վտանգներու ենթարկած էր, առանց կարենալ ազատելու միակ զոհ մը։ Այս լուրերուն վրայ, Համայնքային Խորհուրդը քիչ մը աւելի յուզուած, երկրորդ պատգամաւորութիւն մը փութացուց, միտքերը հանդարտեցնելու եւ ժողովուրդին բացատրելու համար իր իրական շահերը։ Այս պատգամաւորութիւնը, առաջինէն չափ անկարող, քանի մը կիներ և պարտականներ միայն կրցաւ ազատել։

Կոտորածը շարունակուեցաւ այդ մահասարսուռ գիշերուան միջոցին։ Կոտորողները փոխն ի փոխ դատաւոր եւ դահիճ կ'ըլլան։ Մի և նոյն ատեն կը խմեն եւ սեղանի մը վրայ կը դնեն իրենց արիւնաներկ գաւաթները։ Այս սրածութեան միջոցին, սակայն և այնպէս կը խնայեն մէկ քանի զոհերու, և անոնց կեանք տալով աներեւակայելի ուրախութիւն մը կ'ըզգան։ Երիտասարդ մը, զոր մասնաճիւղ մը կը պահանջէր եւ ազնուականութենէ ազատուած ըլլալը յայտարարուեցաւ, կեցցէ՛ Ազգը, աղաղակներով ազատ արձակուեցաւ։ Պատկառելին Սոմպրէօյլ, Էնվալիտի կառավարիչը, իր կարգին հանուեցաւ յեղափոխական ատեանին առջեւ և դատապարտուեցաւ Ֆօրս ղրկուելու։ Իր աղջիկը բանտին մէջտեղէն նշմարեց զայն. նիզակներուն եւ թուրերուն մէջէն սլացաւ անցաւ, իր հայրը գիրկը առաւ, և այնքան ուժգնօրէն փարեցաւ անոր ու սպանիչներուն աղաչեց, այնքա՛ն արցունք թափելով ու սրտամորմոք շեշտերով, որ անոնց ապշահար կատաղութիւնը կանգ առաւ։

Այն ատեն կարծես նոր փորձի մը ենթարկելու համար զիրենք յուզող այս զգայնիկ աղջիկը, խմէ՛ ըսին, այդ անձնուրաց աղջկան, ազնուականներուն արիւնն է, խմէ՛. ու անոր ներկայացուցին արիւնով լեցուն անօթ մը։ Աղջիկը խմեց, և իր հայրը ազատեցաւ։

Քազօթի դուստրն ալ յաջողեցաւ առնել իր հայրը թեւերուն մէջ. անձնուէր Օրիորդ Սոմպրէօյլի նման աղաչեց, անոր նման սիրտ չդիմացող խօսքեր ըրաւ, և աւելի բարեբաղդ, իր հայրը ազատեց, բայց իրմէ ալ չպահանջեցին անանկ ահաւոր փորձութիւն մը։ Այս վայրագ մարդոց աչքերէն արցունքները կը հոսին, և անոնք դա՛րձեալ եկան զոհեր պահանջելու։ Անոնցմէ մէկը բանտ կը վերադառնայ, բանտարկեալները դէպ ի մահ առաջնորդելու համար. կ'իմանայ որ իր դեռ խողխողած դժբաղդ էակները 22 ժամ խմելու ջուր չեն ունեցած, և կ'ուզէ երթալ մեռցնել բանտապահը։ Ուրիշ մէկը կը շահագրգռուի այն բանտարկեալով, զոր դատելու վրայ է, ինչո՞ւ, որովհետեւ անիկա կը խօսի իր գաւառին լեզուն.

— «Ինչո՞ւ համար հոս կը գտնուիս» ըսաւ, Պ. Ժուրնիա տը Սէն Մէառի, «եթէ դաւաճան մը չես, նախագահը՝ որ յիմար մը չէ, քեզի հետ արդարու-

թեամբ պիտի վարուի։ Մի՛ դողդղար, և լաւ պատասխաններ տո՛ւր։»

Գ. տը Ժուրնիա կը ներկայացուի Մայեարի, որ կը դիտէ բանտարկեալը ու կ՚ըսէ.

— «Ա՜հ, դո՞ւք էք, Գ. Ժուրնիա, որ կը գրէիք Արքունիքին և Քաղաքապետարանի թերթին մէջ։»

— «Ո՛չ, պատասխանեց բանտարկեալը, զրպարտութիւն մըն է այդ, ես երբէք գրած չեմ հոն։»

— «Չըլլա՜յ որ խաբէք մեզի, յարեց Մայեառ, որովհետև սուտ խօսողը մահուամբ կը պատժուի հոս։ Վերջերս դուք չէի՞ք որ Բարիզէն բացակայեցաք, տարագիրներու բանակը երթալու համար։»

— «Ահաւասիկ ուրի՛շ զրպարտութիւն մըն ալ. վկայագիր մը ունիմ, որ կը հաստատէ թէ 23 ամիսէ ի վեր Բարիզէն դուրս ելած չեմ։»

— «Ո՞վ տուած է այդ վկայաթուղթը, ստորագրութիւնը վաւերակա՞ն է։»

Բարեբաղդ էր Գ. տը Ժուրնիաք, որ արիւնռուշտ ներկաներուն մէջ մէկը գտնուեցաւ որ կը ճանչնար անձնականապէս վկայագրին ստորագրութիւնը։ Արդարև այդ ստորագրութիւնը կը քննուի և կը յայտարարուի թէ վաւերական է։

— «Կը տեսնէք որ, կը յարէ Գ. տը Ժուրնիաք, զրպարտութեան մը զոհն եմ։»

— «Եթէ զրպարտիչը հոս գտնուէր, կը յարէ Մայեառ, սարսափելի պատիժ մը պիտի կրէր. բայց պատասխանեցէք, ձեզ բանտարկելու ո և է պատճառ չունէի՞ն։»

— «Այո՛, ունէին, իբր ազնուապետական ճանչցուած էի։»

— «Ազնուապետակա՞ն։»

— «Այո՛, ազնուապետական, բայց դուք հոս չէք եկած համոզումները դատելու, դուք միայն արարքները դատել պարտաւոր էք. իմ վարմունքս ո և է մեղադրանքի ենթակայ չէ. ես ո և է դաւադրութիւն չեմ կատարած. այն զօրագունդին մէջ, որուն կը հրամայէի, իմ զինուորներս կը պաշտէին զիս, և Նանսիի մէջ ինծի պաշտօն յանձնեցին երթալ Մալսէնեըն զրաւել։»

Այսքան կորովի խօսքերէ ազդուած, դատաւորները իրարու նայեցան և Մայեառ անպարտութեան նշանը տուաւ. անմիջապէս, կեցցէ՜ Ազգը բացագանչութիւնները կը բարձրանան ամէն կողմէ. բանտարկեալը կը գրկեն, երկու մարդիկ ձեռք կ՚անցընեն զայն, եւ իրենց բազուկներովը ծածկելով ողջ առողջ կը տանին զայն նիզակներու եւ թուրերու սպառնալից ցանկապատին մէջէն։ Գ. տը Ժուրնիաք դրամ տալ կ՚առաջարկէ, բայց անոնք կը մերժեն, և միայն կը խնդրեն զինքը համբուրել։

Ուրիշ բանտարկեալ մը, նոյնպէս ազատած, իր տունը կը տարուի յար և նման փութկոտութեամբ. արիւնաթաթաւ կոտորողները կը փափաքին ներկայ ըլլալ իր ընտանիքին երջանկութեանը, և անմիջապէս յետոյ, կը վերադառնան նախճիրին։

Այս ջղաձգական վիճակին մէջ, մարդկային սրտին մէջ իրարու կը յաջորդեն բոլոր յուզումները. փոխն ի փոխ քաղցր և կատաղի, անիկա կուլայ և կը խողխողէ։ Արիւնի մէջ թաթխուած միջոցին իսկ յանկարծ կը յուզուի անձնուիրութեան գեղեցիկ պատկերէ մը, ազնիւ կորովի արտայայտութենէ մը, արդար երեւալու պատուին հոգ կը տանի և ուղղամիտ կամ անշահախնդիր երեւալու փառասիրութիւնն ունի։ Եթէ, Սեպտեմբերի այդ ողբալի օրերուն ընթացքին, տեսնըուեցան այդ վայրենիներէն ոմանք որ միանգամայն մարդասպանութիւն և գողութիւն կ՚ընեն, կային նաեւ ուրիշներ, որոնք Ապպէյի յանձնախումբին սեղանին առջեւ բերին դրին բանտար-

կեպլներու վրայ գտնուած արիւնոտ գոհարեղէնները։

Այս աՀաւոր ջարդերուն միջոցին, զինուորները բաժան բաժան եղած և աւերումը տարածած էին Բարիզի միւս բանտերուն մէջ. Շաթըլէի, Ֆորսի, Քոնսիէրժըրիի, Պէրնարտէնի, Սէն Ժէրմէնի, Սալբէդրիէռի, Պիսէթրի բանտերուն մէջ միեւնոյն կոտորածները տեղի ունեցած էին, և արիւնի կոհակներ հոսած էին՝ ինչպէս Աբպէյի մէջ։

Յաջորդ օրը, Սեպտեմբեր 3 երկուշաբթի, լոյս ցերեկով լուսաւորուեցաւ ջարդերուն աՀաւոր Նախճիրը, և սուգը տիրեց Բարիզի մէջ. Պիյօ Վառէն Նորէն երեւաց Աբպէյի, ուր առջի օրը, ինքը խրախուսած էր զանոնք՝ որ աշխատողներ կ'անուանէր։ Դարձեալ խօսք ուղղեց անոնց. «Բարեկամներս, ըսաւ անոնց, չարագործները խողխողելով դուք ազատած եղաք Հայրենիքը. Ֆրանսա յաւիտենական երախտիք մը կը պարտի ձեզի» և Քաղաքապետութիւնը չի գիտեր թէ ինչպէս փոխարինելու է ձեր ըրածը։ Ձեզմէ իւրաքանչիւրին 24 ոսկի կը նուիրէ Քաղաքապետութիւնը, և այս գումարը վճարելի պիտի տրուի ձեզի։»

Այս խօսքերը ծափահարութիւններով ընդունուեցան, և Պիյօ Վառէնի ունկնդիրները անոր ետեւէն գացին, որպէս զի խոստացուած դրամը ստանան։ Քաղաքապետարանի յանձնախումբին նախագահը ըսաւ. «Ո՞ւրկէ դրամ գտնենք այս մարդոց վճարելու համար։» Այն ատեն Պիյօ կոտորածներուն մէկ նոր գովեստը ըրաւ և պատասխանեց նախագահին թէ Ներքին գործոց Նախարարին քով դրամ ըլլալու է այս նպատակին համար։

Վազեցին Ռօլանի քով, որ լուսնալուն պէս իմացեր էր ջարդերուն ոճիրները. անիկա զայրոյթով մերժեց դրամ տալ ոճրագործներուն։ Քիչ յետոյ, մարդասպանները ներկայացան յանձնախումբին, և իրենց աՀաւոր աշխատութեան վարձքը պահանջեցին, մահուան սպառնալիքով, այնպէս որ յանձնախումբին ամէն մէկ անդամը հարկադրուեցաւ իր դրպանները պարպել, անոնց գոհացում տալու համար։ Վերջապէս Քաղաքապետութիւնը վճարեց այս պարտքը, և իր ծախքերու արձանագրութեանց տետրակին մէջ կարելի է կարդալ յիշատակութիւնը այն գումարներուն, զորս վճարեց Սեպտեմբերի մարդասպաններուն։ Բաց աստի, այդ տետրակներուն մէջ նշանակուած է, Սեպտեմբեր 4 թուականով, 1,463 ոսկիի գումարը, որ միեւնոյն նպատակին ծախսուած է։

Այսքան աՀաւոր ոճրագործութեանց պատմութիւնը տարածուած է Բարիզի մէջ, և շատ մեծ սոսկում մը յառաջ բերած էր։ Ժաքօպէնները կը շարունակէին լուռ մնալ։ Քաղաքապետարանին մէջ կը սկսէին զգածուիլ, բայց չէին մոռնար աւելցնել թէ ժողովուրդը իրաւունք ունէր, թէ միայն ոճրապարտները սպաննած էր, և թէ իր վրէժխնդրութեանը միջոցին, միայն օրէնքի սուրին ընդառաջ գացած ըլլալու յանցանքը գործած էր։

Համայնքային Խորհուրդը նոր պատգամաւորներ ղրկած էր, գրգռութիւնը Հանդարտեցնելու եւ մոլորածները ուղիղ ճամբուն մէջ բերելու համար: Հանրային իշխանութեան գործածած բացատրութիւնը այս էր։ Ամէնուրեք կը հանդիպէին մարդոց, որոնք տարաբաղդ զոհերուն կրած տառապանքներուն վրայ գթալով կ'աւելցնէին. «Եթէ զանոնք ողջ ձգէինք, մէկ քանի օրուան մէջ զմեզ պիտի խողխողէին.» Ուրիշներ ալ կ'ըսէին. «Եթէ Բրուսիացիները յաղթեն մեզի և սպաննեն մեզ, գոնէ անոնք մեզմէ առաջ մեռած կ'ըլլան։» Ահա ասոնք են աՀաւոր հետեւանքները այն երկիւղին, զոր կուսակցութիւնները ի-

թարու կը նեղչնչեն, և արգիւնքները այն ատելութեան, որ վախէն յառաջ կուգայ։

Ժողովը, այս անհաւասար խառնակութեանց մէջ, խորապէս վրդովուած էր, հրամանագիր հրամանագրի վրայ կը հանէր Բարքայի կացութեան մասին Համայնքային Խորհուրդէն հաշիւ պահանջելու համար, ու Խորհուրդը կը պատասխանէր թէ իր բոլոր կրցածը կ'ընէր կարգ կանոնը և օրէնքին գործադրութիւնը ապահովելու համար։

Սակայն և այնպէս, Ժողովը՝ կազմուած՝ այն Ժիրոնտէններէն որոնք այնքան քաջարի կերպով հետապնդեցին Սեպտեմբերի մարդասպանները, և այնքան անձնուիրօրէն միւսն անոնց դէմ յարձակած ըլլալնուն համար, Ժողովը միտքէն չանցուց ամբողջովին փոխադրուիլ բանտերուն մէջ, և զոհերուն և մարդասպաններուն մէջտեղը նետուիլ։ Թէև այս վեհանձն գաղափարը չներկայացաւ իր մտքին, ու Ժողովականները չելան իրենց նստարաններէն, և տանիլ սպաննութեանց թատերավայրին վրայ, պատճառը պէտք է վերագրել այս ահաբեկումին, իր անկարողութեանը գիտակցումին, և թերևս ալ այն անբաւական անձնուիրութեան, զոր կը ներշնչէ թշնամիին վախը, վերջապէս պէտք է վերագրել այն աղետաբեր կարծիքին, զոր ունէին մէկ քանի երեսփոխաններ, թէ սպաննուածները դաւադիրներ էին, որոնք եթէ չմեռցուէին, իրենք պիտի սպաննէին միւսները։

Այդ օրը, մարդ մը վեհանձն նկարագիր մը ի յայտ բերաւ, և ազնուական կորովով մը ծառացաւ մարդասպաններուն դէմ. երեք սարսափելի օրերու տիրապետութեան միջև, երկուշաբթի առտու, ճիշդ այն վայրկեանին, որ իմացաւ գիշերը գործուած ոճիրները, գրեց քաղաքապետ Բէդիոնին, որ տակաւին չէր ճանչնար զինքը, գրեց Սանդէռին, որ դեռ անգործ կը կենար, ու երկուքին ալ ամբաստանական պահանջներ դրաւ։ Ժողովին անմիջապէս ուղղեց նամակ մը, որ ծափահարութիւններով ողջունուեցաւ։ Այդ բարի մարդը, որ այնքան անիրաւ կերպով զրպարտուած է կուսակցութիւններէն, Ռոլանն է։

Անիկա իր նամակով կը դատապարտէ բոլոր անոնք՝ որ կարգ կանոնը խանգարեցին, համայնքային իշխանութիւնը ի չարը գործածեցին, ամբոխին կատաղութեան դէմ կը բողոքէ և ազնուականօրէն կ'ըսէ, թէ ինքը նախամեծար պիտի համարէր տեսնել այն տեղը, զոր օրէնքը սահմանած է իրեն։ Սակայն և այնպէս, եթէ կ'ուզուի գաղափար մը կազմել այդ տրամադրութեան և կատաղութեան վրայ, որ կը տիրէր դաւաճան կոչուածներուն դէմ, և եթէ կ'ուզուի գաղափար մը գոյացնել որ ինչքան շրջահայեաց պէտք էր ըլլալ՝ սանձարձակ կիրքերուն դէմ խօսուած միջոցին, հետեւեալ հատուածը կարդացէք։ Անտարակոյս կարելի չէ կասկածիլ քաջութեանը վրայ այն մարդուն, որ առանձինն և հրապարակաւ բոլոր իշխանութիւնը պատասխանատու կը հռչակէր կատարածներուն համար, և սակայն ահաւասիկ թէ այդ նոյն մարդը ինչ ձևով արտայայտուելու հարկադրուած էր. —

« Երէկ այնպիսի օր մըն էր, որուն միջոցին պատահածներուն վրայ թերևս քող մը նետել պէտք է։ Գիտեմ թէ ժողովուրդը, որ ահաւոր է իր վրէժխնդրութեանը մէջ, տեսակ մըն ալ արդարութիւն ցոյց կուտայ, անիկա իր կատաղութիւնը կը պայթեցնէ ընդդէմ անոնց, զորս երկար ատենէ ի վեր խնայուած կը համարէ օրէնքին հատուածէն և թէ պարագաներու վտանգը իրեն այնպէս կը հաւատացնէ թէ պարտաւոր է զոհելու զանոնք, առանց վայրկեան մը իսկ կորսնցնելու։ Բայց

գիտեմ որ ապիրատները, դաւաճանները դիւրաւ ի չարը կը գործածեն այս խանդավառութիւնը, և թէ պէտք է ձերբակալել զանոնք։ Գիտեմ, թէ ամբողջ Ֆրանսայի պարտաւոր ենք ընել սա յայտարարութիւնը, թէ գործադիր իշխանութիւնը չէր կրնար ո՛չ կանխատեսել և ոչ ալ արգիլել գործուած չափազանցութիւնները։ Գիտեմ, թէ պաշտօնի գլուխ գտնուող իշխանութիւնները, պարտաւոր են վերջ մը դնել անոնց և կամ ինքզինքնին փճացած համարել։ Գիտեմ նաև, թէ այս բացատրութիւնս զիս ենթակայ կ'ընէ մէկ քանի գրգռիչներու կատաղութեանը, թո՛ղ առնեն հոգիս. ես միայն ազատութեան և հաւասարութեան համար կ'ապրիմ. եթէ ատոնք բռնաբարուին կամ քանդուին, ըլլա՛յ օտար բռնակալներու իշխանութեամբ, ըլլա՛յ ապօրէն ժողովուրդի մը մոլութեան հետևանքով, ես բաւական կը սեպեմ որքան ապրեցայ, բայց մինչև վերջին շունչս, պարտականութիւնս պէտք է կատարեմ. ասիկա միակ փառասիրութիւնն է որ ունիմ, և զոր աշխարհի վրայ ո՛չ մէկ ոյժ չի կրնար իմ ձեռքէս խլել։»

Ժողովը ծափահարութիւններով ընդունեց այս նամակը, և Լամուրէթի առաջարկով հրամայեց որ Համայնքային Խորհուրդը տեղեկութիւն տայ Բարիզի կացութեան մասին։ Խորհուրդը կրկին անգամ պատասխանեց թէ, անդորրութիւնը վերահաստատուած էր։ Տեսնելով Ներքին գործոց նախարարին քաջասրտութիւնը, Մառա և իր Կոմիթէն զայրացան և համարձակեցան անոր դէմ ձերբակալման հրամանագիր մը հանել։ Իրենց կատաղութեան կուրութիւնը այն աստիճանի հասած էր որ, կը համարձակէին յարձակիլ նախարարի մը վրայ և ընդդէմ մարդու մը, որ դեռ այդ պահուն կը վայելէր իր ամբողջ ժողովրդականութիւնը։ Տանդօն, երբ իմացաւ ձերբակալման հրամանագրի լուրը, ուժգնօրէն բողոքեց Կոմիթէի այն անդամներուն դէմ, զորս կատղածներ անուանեց։ Թէև ամէն օր Տանդօն կը նեղանար Ռօլանի անճրկելի բնաւորութեան դէմ, բայց հեռու էր զայն ատելէ. բաց աստի, իր ահաւոր քաղաքականութեան մէջ կը սոսկար այն բոլոր բաներէն, զորս անօգուտ կը կարծէր և ծայրայեղ չափազանցութիւն մը կը համարէր իր պաշտօնին վրայ գտնուող նախարար մը ձերբակալել ուզելը։

Տանդօն գնաց Քաղաքապետարան, յետոյ վազեց Կոմիթէին մօտ և Մառային դէմ բուռն կերպով պոռթկաց։ Սակայն և այնպէս, զայն հանդարտեցուցին, հաշտեցուցին Մառայի հետ եւ անոր յանձնեցին ձերբակալման հրամանագիրը, զոր անմիջապէս ցոյց կուտայ Բէդիօնի, պատմելով իր ըրածը. «Տեսէ՛ք, ըսաւ անոր, թէ այս կատղածները ի՛նչ բաներ ընելու կարող են, բայց ես պիտի գիտնամ զանոնք խելքի բերել։»

— «Կը սխալիք, պատասխանեց ցրտութեամբ Բէդիօն, այս արարքը միայն իր հեղինակներուն կորստեան պատճառ պիտի ըլլայ։»

Իր կողմէ, Բէդիօն, թէև Ռօլանէն աւելի ցուրտ, նուազ քաջութիւն ցոյց տուած չէր։ Գրած էր Սանդէռին, որ, ըլլա՛յ անկարողութեամբ, ըլլա՛յ մեղսակցութեամբ, կը պատասխանէր թէ իր սիրտը պատառ պատառ կ'ըլլար, բայց չէր կրնար գործադրել տալ իր հրամանները։ Յետոյ անձամբ գացած էր սպանութեանց զանազան վայրերուն վրայ։ Ֆօրսի բանտին մէջ, իրենց արիւնոտ ամպիոններէն վար քաշած էր երկու քաղաքապահական զօրաց սպաներ, որոնք իրենց պաշտօնական գօտին մէջքերնին կապած կը կատարէին այն գործը, զոր Մայեառ ի գլուխ կը հանէր Աբբէյի մէջ։

Բայց հազիւ թէ դուրս ելած էր հանկէ, ուրիշ տեղեր երթալու համար, և ահա նոյն սպաները վերադարձած էին և իրենց սպանութիւնները շարունակած։ Բէզիօն ամենուրեք բան մը չկարենալով ընել, Ռօլանի քով վերադարձաւ, Ռօլան իր վիշտէն հիւանդացած էր։ Յաջողած էին միայն Թանըլըն ապահովել, որովհետեւ անոր բանտը կը գրգռէր ժողովրդային զայրոյթը։ Սակայն և այնպէս, այդ տեղի զինեալ ույժը աւելի բարեբաղդ եղած էր, և եռագոյն ժապաւէն մը՝ բանտին պատերուն և ամբոխին միջեւ պարզուած՝ բաւական եղած էր խռնուած ժողովուրդը հեռացնելու և արքայական ընտանիքը փրկելու։

Այս հրէշային արարածները, որոնք կիրակիէն ի վեր արիւն կը թափէին, ինքզինքնին տուած էին այս զարհուրելի գործին և ստացած էին սովորութիւն մը, զոր այլեւս չէին կրնար լքել։ Անոնք մինչեւ անգամ տեսակ մը կարգ կանոն հաստատած էին իրենց ոճրագործութեանց մէջ. ատեն ատեն կը դադրեցնէին, դիակները փոխադրելու և իրենց ճաշը ընելու համար։ Մինչեւ անգամ կիներ, որոնք ուտեստ կը տանէին, բանտերը կ'երթային իրենց ամուսիններուն ճաշը տանելու, քանի որ անոնք զբաղած էին Ապպէյի մէջ։

Ֆօրսի, Պիսէթրի, Ապպէյի բանտերուն մէջ կոտորածները շարունակուեցան ուրիշ ամէն տեղերէ աւելի երկար ժամանակ։ Ֆօրսի բանտին մէջ էր, որ կը գտնուէր տարաբաղդ իշխանուհին Լամպալ, որ արքունիքին մէջ հռչակ հանած էր իր գեղեցկութեամբը, և թագուհիին հետ ունեցած սերտ յարաբերութեամբը։ Զայն մահամերձ վիճակի մէջ տարին բանտին ահաւոր դրանը առջեւ.

— Ո՞վ էք դուք, ըսին անոր դատաւորինեալ դահիճները։

— Լուիզ տը Սավուան եմ, իշխանուհի տը Լամպալ։

— Պալատին մէջ ի՞նչ դեր ունէիք. ծանօ՞թ էք արքունիքին դաւադրութիւններուն։

— Ոեւէ դաւադրութեան տեղեակ չեմ։

— Երդո՛ւմ ըրէք որ ազատութիւնը և հաւասարութիւնը պիտի սիրէք. երդում ըրէք. որ թագաւորը, թագուհին և միապետութիւնը պիտի ատէք։

— Առաջին երդումը կ'ընեմ, բայց երկրորդը չեմ կրնար ընել. սիրտիս հակառակ չեմ կրնար գործել։

— «Ըրէ՛, ըրէ՛, երդում ըրէ» գոչեց ներկաներէն մին, որ կ'ուզէր ազատել զայն։

Բայց դժբաղդ աղջիկը, այլեւս ոչինչ կը լսէր, և ոչինչ կը տեսնէր։ Հարցաքննիչ դատաւորը ըսաւ.

— Ազա՛տ արձակեցէք Տիկինը։

Հոս ալ, ինչպէս Ապպէյի մէջ, բան մը հնարած էին մահուան պատիժը տալու համար։ Այդ տարաբաղդ կինը տարին, և ինչպէս կը վկայեն մէկ քանի պատմիչներ, մտադիր չէին մահուան զրկել, և չիտակն ալ կ'ուզէին ազատել։ Սակայն և այնպէս, դրան առջեւ մարդասպանութեան ծարաւի, կատաղի մարդիկ կը դիմաւորեն զայն։ Թուրի առաջին հարուածը, զոր կու տան անոր գլխուն ետեւէն, արիւնը կը ժայթքեցնէ։ Հակառակ ասոր, կռթնած երկու մարդոց վրայ, որոնք թերեւս զինքը ազատել կ'ուզէին, անիկա կը քալէր. բայց քիչ մը անդին, վերջնականապէս գետին կ'իյնայ վերջին հարուածի մը տակ։ Անոր գեղեցիկ մարմինը պատառ պատառ կ'ըլլայ։ Մարդասպանները կը նախատեն զայն, կտոր կտոր կ'ընեն, և մարմինին բեկորները մէջերնին կը բաժնեն։ Գլուխը, սիրտը, մարմինին միւս մասերը նիզակներու ծայրը անցուցած կը պտտցնեն Բարիզի փողոցներուն մէջ։ Պէտք է որ, ըսեն

այս մարդիկը իրենց վայրենիի լեզուով, այդ կտորները ուսերնին զանուելէ պատառոտանելէ ետք:

Կը վազեն կ'երթան Թամբլ և զարհուրելի աղաղակներով կ'արթնցնեն դժբաղդ բանտարկեալները, որոնք՝ սոսկումով կը հարցնեն թէ, ինչ է պատահեր: Քաղաքապահ զօրաց սպաները չեն ուզեր թոյլ տալ՝ որ կատաղի մարդոց թափօրը անցնի արքայական ընտանիքին բնակած յարկէն, պատուհաններուն առջևէն և անոր ցոյց տրուի նիզակի մը ծայրը անցուած արիւնոտ գլուխը: Ազգային պահակազօրքը վերջ ի վերջոյ ըսաւ Թագուհիին. «Լամպալ իշխանուհիին գլուխն է. զոր չեն ուզեր ձեզի ցոյց տալ:

Այս խօսքին վրայ Թագուհին կը նուաղի: Տիկին Էլիզապէթ, Թագաւորը և սենեկապան Քլէրի՝ կը սանեն այս տարաբաղդ Թագուհին և վայրագ զինուորներուն աղաղակները տակաւին երկար ատեն կը շարունակեն լսուիլ Թամբլի պատերուն շուրջ:

Սեպտ. 3 ի օրը և 3 էն 4 ի գիշերը աղարտեցան այս կոտորածներով: Մանաւանդ Պիսէթրի մէջ՝ ուրիշ ոեւէ տեղէ աւելի զարհուրելի կոտորած մը ըրին: Այդ տեղի բանտին մէջ կային քանի մը հազար բանտարկեալներ, որոնք, ինչպէս յայտնի է, ամէն տեսակ յանցանքներով բանտը նետուած էին: Անոնց վրայ յարձակում գործուեցաւ, բայց ուզեցին ինքզինքնին պաշտպանել, եւ թնդանօթ պէտք եղաւ գործածել, զանոնք անկարողութեան մատնելու համար: Համայնքային Խորհուրդի անդամներէն մին համարձակեցաւ մինչեւ իսկ զօրք ուզել, ինքզինքնին պաշտպանող զինուորները բնաջինջ ընելու համար: Բայց զինքը մտիկ չըրին: Բէդիոն անգամ մըն ալ Պիսէթր գնաց, բայց արդիւնք մը ձեռք չկրցաւ ձգել:

Արիւնի ծարաւը խանդավառած էր այս ամբոխը, պայքարելու և կոտորելու կատաղութիւնը փոխակերպուած էր քաղաքական մոլեռանդութեան, այնպէս որ անխնայ կը սպաննէր, սպաննուած ըլլալու համար: Կոտորածը տեւեց մինչեւ Սեպտեմբեր 5 ի չորեքշաբթի օրը:

Վերջապէս, գրեթէ բոլոր նշանակուած զոհերը սպաննուած էին: Բանտերը պարպուած էին. կատաղի մարդիկները տակաւին արիւն կը պահանջէին. բայց այնքան սպանութեանց անխնայ հրամայողները մերթ ընդ մերթ գթութիւն ունենալ կը թուէին: Համայնքային Խորհուրդի պատասխանատուութիւնները սկսած էին մեղմանալ: Անոնք կ'ըսէր թէ խորապէս յուզուած բանտարկեալներուն դէմ ի գործ դրուած խստութիւններէն, նոր հրահանգներ տրուած է զանոնք դադրեցնելու համար. և այս անգամ աւելի հնազանդեցան իրեն: Սակայն և այնպէս, հազիւ մէկ քանի դժբախտներ մնացած էին, որոնց օգտակար պիտի կրնար դառնալ իր գթութիւնը:

Զոհերուն թիւին հաշիւը կը տարբերի այն ժամանակուան տեղեկագիրներուն մէջ. ոմանք 6, ոմանք ալ 12 հազար է, կ'ըսեն, Բարիզի բանտերուն մէջ սպաննուածներուն թիւը:

Բայց եթէ այս սպանութիւնները ահաբեկում յառաջ բերին, այն յանդգնութիւնը, որով այդ ոճիրները խոստովանուեցան եւ անոնց հետեւիլ յանձնարարուեցաւ, շատ աւելի ահաբեկում պատճառեց քան նոյն ինքն սպանութիւնները: Քաղաքապետարանի հսկողութեան կոմիթէն յանդգնեցաւ շրջաբերական մը ցրուել Ֆրանսայի բոլոր համայնքներուն. պատմութիւնը պարտաւոր է պահել այդ վաւերաթուղթը իր կրած եօթը ստորագրութիւններով: Ահա այդ հրաշակերտական վաւերաթուղթը. —



ԹԱՆԲԼԸ, ՈՒՐ ԲԱՆՏԱՐԿՒԵՑԻՆ ԹԱԳԱՒՈՐԸ

*Բարիզ, 2 Սեպտ. 1792*

*« Եղբայրներ եւ բարեկամներ, ահաւոր դաւադրութիւն մը կազմակերպած էր արքունիքը, փրանս. կայսրութեան բոլոր հայրենասէրները սպաննելու համար. այդ դաւադրութիւնը, որուն մէջ մաս ունի Ազգային Ժողովի անդամներուն մէկ մեծ մասը, անցեալ ամսուն 9 էն հարկադրեց Բարիզի քաղաքապետութիւնը ցաւալիօրէն բռնադատել Ժողովրդային ոյժը գործածելու, ազատելու համար ազգը, և ո՛չ մէկ բան պակաս թողուց հայրենիքին արժանի հանդիսանալու համար: Այն հաւատումներէն յետոյ, զորս Ազգային Ժողովը ինքն իսկ տուած էր իրեն, կարելի՞ էր մտածել թէ նորանոր դաւադրութիւններ կը սարքուին բանտին մէջ, և թէ անոնք պիտի պայթին ճիշդ այն վայրկեանին, ուր, Ազգային Ժողովը, մոռնալով որ յայտարարած էր թէ Բարիզի քաղաքապետութիւնը փըր-*

կած է հայրենիքը, կը փութար զայն պաշտօնանկ ընել, իբր վարձատրութիւն իր եռանդուն հայրենասիրութեան։ Երբ այս լուրը ելաւ, ամէն կողմէ բարձրացած ժողովրդային բողոքներ զգացուցին Ազգ. Ժողովին, թէ ստիպողաբար անհրաժեշտ էր մէկ ըլլալ ժողովուրդին հետ, և Համայնքային Խորհուրդին վերադարձնել այն իշխանութիւնը, որուն տէր ըրած էր ժողովը։

«Հպարտ ենք՝ որ իր կատարեալ լրումին մէջ կը վայելենք ազգային վստահութիւնը, որուն պիտի ջանանք հետզհետէ աւելի արժանի ըլլալ. մինքկեցած ենք բոլոր դաւաճանութեանց վտարանին մէջ և վճռած ենք մեռնիլ հասարակաց փրկութեանն համար. մենք այն ժամանակ պիտի պարծինք՝ մեր պարտականութիւնը կատարած ըլլալնուս համար, երբ ստանանք ձեր հաւանութիւնը, որը մեր բոլոր ըղձանքներուն առարկան է, և որուն մասին այն ժամանակ միայն վստահութիւն պիտի գոյացնենք, երբ բոլոր դաւառները համամտութիւն յայտնեն մեր ձեռք առած միջոցներուն՝ հայրենիքի փրկութեան համար։ Ամենակատարեալ հաւասարութեան սկզբունքները դաւանելով, ուրիշ բանի չցանկալով քան պատնէշին վրայ ներկայանալու մէջ առաջինն ըլլալը, մենք պիտի փութանք ինքզինքնիս ենթարկել կայսրութեան ամենէն սակաւաթիւ համայնքի ատեանին, անմիջապէս որ այլևս վախնալու պատճառ մը չունենանք։

«Բարիզի Համայնքային Խորհուրդս տեղեկութիւն ստացած ըլլալով որ բարբարոս խուժաններ կը յառաջանային իրեն դէմ, Բարիզի համայնքը կը փութայ զեկուցանել բոլոր գաւառներու իր եղբայրներուն թէ, բանտերու մէջ գտնուող վայրագ դաւադիրներուն մէկ մասը սպաննուեցաւ ժողովուրդին ձեռամբ. ասոնք արդարութեան այնպիսի արարքներ են, որ անհրաժեշտ թուեցան իրեն, սոսկում ազդելով զսպելու համար դաւաճաններու լեգէոնները, որոնք իր պատերուն մէջ փակուած էին այն պահուն, ուր ինքը թշնամիին դէմ պիտի քալէր։ Եւ անտարակոյս, Ազգը մատնութիւններու այն երկար շարքէն յետոյ, որ զինքը անդունդին եզերքը գլորեց, պիտի փութայ գնահատել այս այնքա՛ն օգտակար և այնքա՛ն անհրաժեշտ միջոցը ; և բոլոր Ֆրանսացիները Բարիզցիներուն նման պիտի ըսեն. մենք կը քալենք թշնամիին դէմ, և մենք մեր ետին չենք ձգեր աւազակներ, որպէս զի խողխողեն մեր կիները և զաւակները։

«(Ստորագրած են) ՏԻՒԲԼԷՆ, ԲԱՆԻՍ, ՍԷՐԺԱՆ, ԼԱՆՖԱՆ, ՄԱՌԱ, ԼԸՖՕՌ, ԺՈՒՐՏԷՕՅԼ, Քաղաքապետարանի մէջ կազմուած Հսկողութեան Քոմիթէին վարիչները :»

Այս վաւերաթուղթին ընթերցումը գաղափար մը կու տայ, թէ վտանգին մերձաւորութիւնը ի՜նչ աստիճան մոլեռանդութեան մղած էր մտքերը։ Բայց ժամանակ է արդէն մեր աչքերը դարձնելու պատերազմի դաշտին վրայ, ուր սակ փառաւոր յիշատակներ կը գտնենք։

Արդէն, ինչպէս տեսանք, Տիւմուրիէ Սըտանի մէջ պատերազմական խորհուրդ մը գումարած էր. Տիյօն այդ ժողովին մէջ կարծիք յայտնած էր Շալօն նահանջելու, Մառն գետը մեր և թշնամիին միջև դնելու և անոր անցքը պաշտպանելու համար։ Տիւմուրիէի մօտ թողուած 23,000 զինուորներուն անկարգ վիճակը, այն անկարողութիւնը, որուն մէջ կը գտնուէին լաւ կազմակերպուած և ռազմական 80,000 Բրուսիացիներու դիմադրելու համար, թըշնամիին վերագրուած այն ծրագիրը, թէ արագ արշաւանք մը պիտի ընէ առանց կանգ առնելու ամրացեալ քաղաքներուն առջև, բոլոր ասոնք պատճառներ

էին, որոնք Տիյեօնը կը մղէին այնպէս կարծել թէ կարելի չէր կասեցնել Բրուսիացիները, և թէ պէտք էր փութով նահանջել անոնց առջեւէն, աւելի ամուր դիրքեր փնտռելու համար, և այս կերպով մեր բանակին գէշ վիճակը և տկարութիւնը դարմանելու։ Պատերազմական Խորհուրդը այն ատեն ազդուեցաւ այս պատճառաբանութիւններէն, որ միաձայնութեամբ համամիտ գտնուեցաւ Տիյօնի կարծիքին, և Տիւմուրիէ, որուն, իբր ընդհանուր հրամանատարի՝ անկ էր որոշում մը տալ, պատասխանեց թէ՝ պիտի մտածէ ատոր վրայ։

Օգոստոս 28ի իրիկունն էր. այդ պահուն տուին որոշում մը, որ Ֆրանսան ազատեց։ Բազմաթիւ մարդիկ ատոր պատիւը իրենց յատկացնել կ'ուզեն, բայց ամէն ինչ կ'ապացուցանէ թէ ատոր պատիւը Տիւմուրիէին կը վերաբերի։ Մնաց որ, այդ որոշումին գործադրութիւնն ալ ամբողջովին իրեն կը պատկանի և անոր ամբողջ փառքին արժանի է ինքը։

Ինչպէս յայտնի է, Ֆրանսա արեւելքի կողմէն պաշտպանուած է Հռենոս գետով և Վօժ լեռներով, իսկ հիւսիսէն՝ շարք մը ամրութիւններով, որոնք Վօպանի հանճարին կը պարտէին, ինչպէս նաև Մէօզ, Մօզէլ գետերով և ուրիշ ջուրի ընթացքներով, որոնք ամրութիւններուն հետ միանալով կը բաղկացնէին արգելքներու ամբողջութիւն մը, որ բաւական էր պաշտպանելու այդ սահմանագլուխը։

Թշնամին Ֆրանսա մտած էր հիւսիսէն, եւ իր ընթացքը գծած էր Սըտանի և Մէցի միջև, Հոլանտայի ամրութեանց վրայ յարձակելու գործը թողլով Սաքս Թէշէնի դուքսին, Մէցն ու Լոռէնը զօրաբաժինով մը ծածկելով։ Այս ծրագրին համեմատ, պէտք պիտի ըլլար արագօրէն յառաջ ընթանալ, Ֆրանսացիներուն կազմալուծումէն օգտուիլ, զանոնք ահաբեկեցնել վճռական հարուածներով, նոյն իսկ Լաֆայէթի 23,000 զինուորները գրաւել, երբ ուրիշ նոր զօրավար մը դեռ չէր համախմբած զանոնք և անոնց մէջ վստահութիւնը չէր ծնեցուցած։ Բայց Բրուսիոյ թագաւորին յանդգնութեան և Պրունսվիքի խոհեմութեան միջև մղուող պայքարը արգելք կ'ըլլար ո և է վճռական որոշում առնելու, և միացեալ բանակները կ'արգիլէր կա՛մ բացէ ի բաց յանդուգն և կամ խոհեմ ըլլալու։

Վէրտէօնի գրաւումը աւելի դրդեց Ֆրէտէրիք-Կիյօմի փառասիրութիւնը և տարագիրներուն խանդը, բայց անիկա չաւելցուց գործունէութիւնը Պրինսվիքի, որ բնաւ համամիտ չէր արշաւանք մը ընելու այն միջոցներով, զօրս ունէր և նուաճուած երկրին ունեցած տրամադրութիւններուն մէջ։ Վէրտէօնի գրաւումէն ետք, Սեպտեմբեր 2ին, միացեալ բանակը քանի մը օրերու միջոցին տարածուեցաւ Մէօզ գետին եզերքը գտնուող դաշտավայրին մէջ, բաւականացաւ Ստընէյը գրաւելով եւ դէպ ի յառաջ քայլ մը չառաւ. Տիւմուրիէ Սըտան էր, և իր զօրաբաժինը բանակած էր շրջականները։

Սըտանէն Բասավան կը տարածուի անտառ մը, որուն անունը յաւէտ հռչակաւոր պիտի ըլլայ մեր տարեգրութեանց մէջ։ Արկոնի անտառն է ատիկա, որ 13 էն 15 մղոն տեղ կը ծածկէ և որ իր հողին անհարթութիւններովը, ծառաստաններու և գետակներու խառնուրդովը՝ բանակի մը համար բոլորովին անթափանցելի է, բաց ի մէկ քանի գլխաւոր անցքերէ։ Այս անտառէն էր որ թշնամին պիտի մտնէր Շալօն երթալու և անկէ Բարիզի ճամբան բռնելու համար։ Այսպիսի ծրագրով մը, զարմանալի է որ Պրինսվիք դեռ չէր խորհած այդ անտառին գլխաւոր անցքերը գրաւել և դիրք բռնել Տիւմուրիէէն առաջ, որ իր Սըտանի դիր-

կած է հայրենիքը, կը փութար զայն պաշտօնանկ ընել, իբր վարձատրութիւն իր եռանդուն հայրենասիրութեան։ Երբ այս լուրը ելաւ, ամէն կողմէ բարձրացած ժողովրդային բողոքներ զգացուցին Ազգ. Ժողովին, թէ ստիպողաբար անհրաժեշտ էր մէկ ըլլալ ժողովուրդին հետ, և Համայնքային Խորհուրդին վերադարձնել այն իշխանութիւնը, որուն տէր ըրած էր Ժողովը։

«Հպարտ ենք՝ որ իր կատարեալ լրումին մէջ կը վայելենք ազգային վստահութիւնը, որուն պիտի ջանանք հետզհետէ աւելի արժանի ըլլալ. մնքկեցած ենք բոլոր դաւադրութեանց վառարանին մէջ ու վրճռած ենք մեռնիլ հասարակաց փրկութեան համար. մենք այն ժամանակ պիտի պարծինք՝ մեր պարտականութիւնը կատարած ըլլալնուս համար, երբ ստանանք ձեր հաւանութիւնը, որը մեր բոլոր ըղձանքներուն առարկան է, և որուն մասին այն ժամանակ միայն վստահութիւն պիտի գոյացնենք, երբ բոլոր գաւառները համամտութիւն յայտնեն մեր ձեռք առած միջոցներուն՝ հայրենիքի փրկութեան համար։ Ամենակատարեալ հաւասարութեան սկզբունքները դաւանելով, ուրիշ բանի չցանկալով քան պատնէշին վրայ ներկայանալու մէջ առաջինն ըլլալը, մենք պիտի փութանք ինքզինքնիս ենթարկել կայրութեան ամենէն սակաւաթիւ համայնքի աստիճանին, անմիջապէս որ այլևս վախնալու պատճառ մը չունենանք։

«Բարիզի Համայնքային Խորհուրդս տեղեկութիւն ստացած ըլլալով որ բարբարոս խուժաններ կը յառաջանային իրեն դէմ, Բարիզի համայնքը կը փութայ զեկուցանել բոլոր գաւառներու իր եղբայրներուն թէ, բանտերու մէջ գտնուող վայրագ դաւադիրներուն մէկ մասը սպաննուեցաւ ժողովուրդին ձեռամբ. ասոնք արդարութեան այնպիսի արարքներ են, որ անհրաժեշտ թուեցան իրեն, սոսկում սփռելով զսպելու համար դաւաճաններու լէգէոնները, որոնք իր պատերուն մէջ փակուած էին այն պահուն, ուր ինքը թշնամիին դէմ պիտի քալէր։ Եւ անտարակոյս, Ազգը մատնութիւններու այն երկար շարքէն յետոյ, որ զինքը անդունդին եզերքը գլորեց, պիտի փութայ գնահատել այս այնքա՛ն օգտակար և այնքա՛ն անհրաժեշտ միջոցը՝ և բոլոր Ֆրանսացիները Բարիզցիներուն նման պիտի ըսեն. մենք կը քալենք թշնամիին դէմ, և մենք մեր ետին չենք ձգեր աւազակներ, որպէս զի խողխողեն մեր կիները և զաւակները։

«(Ստորագրած են) ՏԻՒԲԼԷՆ, ԲԱՆԻՍ, ՍԷՐԺԱՆ, ԼԱՆՖԱՆ, ՄԱՌԱ, ԼԸՖՈՌ, ԺՈՒՐՏԷՕՅԼ, Քաղաքապետարանի մէջ կազմուած Հսկողութեան Կոմիթէին վարիչները։»

Այս վաւերաթուղթին ընթերցումը գաղափար մը կուտայ, թէ վտանգին մերձաւորութիւնը ինչ աստիճան մոլեռանդութեան մղած էր մտքերը։ Բայց ժամանակ է արդէն մեր աչքերը դարձնելու պատերազմի դաշտին վրայ, ուր սոսկ փառաւոր յիշատակներ կը գտնենք։

Արդէն, ինչպէս տեսանք, Տիւմուրիէ Սըտանի մէջ պատերազմական խորհուրդ մը գումարած էր. Տիյօն այդ ժողովին մէջ կարծիք յայտնած էր Շալօն նահանջելու, Մառն գետը մեր և թշնամիին միջև դնելու և անոր անցքը պաշտպանելու համար։ Տիւմուրիէի մօտ թողուած 23,000 զինուորներուն անկարգ վիճակը, այն անկարգութիւնը, որուն մէջ կը գտնուէին լաւ կազմակերպուած և ռազմական 80,000 Բրուսիացիներու դիմադրելու համար, թըշնամիին վերագրուած այն ծրագիրը, թէ արագ արշաւանք մը պիտի ընէ առանց կանգ առնելու ամրացեալ քաղաքներուն առջև, բոլոր ասոնք պատճառներ

էին, որոնք Տիյեռնը կը մղէին այնպէս կարծել թէ կարելի չէր կասեցնել Բրուսիացիները, և թէ պէտք էր փութով նահանջել անոնց առջևէն, աւելի առատ դիրքեր փնտռելու համար, և այս կերպով մեր բանակին գէշ վիճակը և անկարութիւնը դարմանելու։ Պատերազմական Խորհուրդը այն աստիճան ազդուեցաւ այս պատճառաբանութիւններէն, որ միաձայնութեամբ համամիտ գտնուեցաւ Տիյօնի կարծիքին, և Տիւմուրիէ, որուն, իբր ընդհանուր հրամանատարի՝ անկ էր որոշում մը տալ, պատասխանեց թէ՝ պիտի մտածէ ատոր վրայ։

Օգոստոս 28ի իրիկունն էր. այդ պահուն տուին որոշում մը, որ Ֆրանսան ազատեց։ Բազմաթիւ մարդիկ ատոր պատիւը իրենց յատկացնել կ'ուզեն, բայց ամէն ինչ կ'ապացուցանէ թէ ատոր պատիւը Տիւմուրիէին կը վերաբերի։ Մնաց որ, այդ որոշումին գործադրութիւնն ալ ամբողջովին իրեն կը պատկանի և անոր ամբողջ փառքին արժանի է ինքը։

Ինչպէս յայտնի է, Ֆրանսա արեւելքի կողմէն պաշտպանուած է Հռենոս գետով և Վօժ լեռներով, իսկ հիւսիսէն՝ շարք մը ամրութիւններով, որոնք Վօպանի հանճարին կը պարտէին, ինչպէս նաև Մէօզ, Մօզէլ գետերով և ուրիշ ջուրի ընթացքներով, որոնք ամրութիւններուն հետ միանալով կը բաղկացնէին արգելքներու ամբողջութիւն մը, որ բաւական էր պաշտպանելու այդ սահմանագլուխը։

Թշնամին Ֆրանսա մտած էր հիւսիսէն, եւ իր ընթացքը գծած էր Սըտանի և Մէցի միջև, Հոլանտայի ամրութեանց վրայ յարձակելու գործը թողլով Սաքս Թէշէնի դուքսին, Մէցն ու Լոռէնը զօրաբաժինով մը ծածկելով։ Այս ծրագրին համեմատ, պէտք պիտի ըլլար արագօրէն յառաջ ընթանալ, Ֆրանսացիներուն կազմալուծումէն օգտուիլ, զանոնք ահաբեկեցնել վճռական հարուածներով, նոյն իսկ Լաֆայէթի 23,000 զինուորները գրաւել, երբ ուրիշ նոր զօրավար մը դեռ չէր համախմբած զանոնք և անոնց մէջ վստահութիւնը չէր ծնեցուցած։ Բայց Բրուսիոյ Թագաւորին յանդգնութեան և Պրունսվիքի խոհեմութեան միջև մղուող պայքարը արգելք կ'ըլլար որ և է վճռական որոշում առնելու, և միացեալ բանակները կ'արգիլէր կա՛մ բացէ ի բաց յանդուգն և կամ խոհեմ ըլլալու։

Վէրտէօնի գրաւումը աւելի գրգռեց Ֆրէտէրիք-Կիյօմի փառասիրութիւնը և տարագիրներուն խանդը, բայց անիկա չաւելցուց գործունէութիւնը Պրիւնսվիքի, որ բնաւ համամիտ չէր արշաւանք մը ընելու այն միջոցներով, զորս ունէր և նուաճուած երկրին ունեցած տրամադրութիւններուն մէջ։ Վէրտէօնի գրաւումէն ետք, Սեպտեմբեր 2ին, միացեալ բանակը քանի մը օրերու միջոցին տարածուեցաւ Մէօզ գետին եզերքը գտնուող դաշտավայրին մէջ, բաւականացաւ Ստէնէյը գրաւելով եւ դէպ ի յառաջ քայլ մը չառաւ. Տիւմուրիէ Սըտան էր, և իր զօրաբաժինը բանակած էր շրջակաները։

Սըտանէն Բասավան կը տարածուի անտառ մը, որուն անունը յաւէտ հռչակաւոր պիտի ըլլայ մեր տարեգրութեանց մէջ։ Արկոնի անտառն է ատիկա, որ 13 էն 15 մղոն տեղ կը ծածկէ և որ իր հողին անհարթութիւններովը, ծառաստաններու և գետակներու խառնուրդովը՝ բանակի մը համար բոլորովին անթափանցելի է, բաց ի մէկ քանի գլխաւոր անցքերէ։ Այս անտառէն էր որ թշնամին պիտի մտնէր Շալօն երթալու և անկէ Բարիզի ճանբան բռնելու համար։ Այսպիսի ծրագրով մը, զարմանալի է որ Պրիւնսվիք դեռ չէր խորհած այդ անտառին գլխաւոր անցքերը գրաւել և դիրք բռնել Տիւմուրիէէն առաջ, որ իր Սըտանի դիր-

քին մէջ՝ անտառին բոլոր երկարութեամբը հոսու էր անիկէ։

Իրիկունը, պատերազմական ժողովին նիստէն ետքը, Ֆրանսայի զօրավարը, աշխարհացոյցը կը դիտէր սպայի մը հետ, որուն ընդունակութեանց մասին մեծ հաւատք ունէր։ Անիկա Թուվընօն էր։ Տիւմուրիէ, մատովը անոր Արկօնը և անոր վրայ երեւցող բացատանները ցուցնելով «ասոնք են, ըսաւ սպային, Ֆրանսայի Թէրմօպիլէնները, եթէ ես կարենամ հոն հասնիլ Բրուսիացիներէն առաջ, ամէն բան փրկուած է։»

Այս խօսքը մտրակեց Թուվընոյի հանճարը և երկուքն ալ սկսան այս գեղեցիկ յատակագծին մանրամասնութեանց վրայ խորհիլ։ Առաւելութիւնները անսահման էին. ո՛չ միայն չէին նահանջեր, և ոչ միայն իբրեւ պաշտպանութեան վերջին գիծ, Մառնի չէին ապաւիներ, այլ նաև թշնամիին կորսնցնել կուտային թանկագին ժամանակ մը. կը ստիպէին զայն որ խեղճուկ Շամբանի մէջ մնար, որուն հողը, յուսահատական, ցեխոտ, ամուլ, չէր կրնար բանակ մը սնուցանել. Ֆրանսացիները չէին թողուր որ թշնամին, ինչպէս Շալօն քաշուելով, տեղաւորուէր Երեք-Եպիսկոպոսական թեմերուն մէջ, որոնք հարուստ և բեղմնաւոր երկիր մը կը ներկայացնէին, և ուր Բրուսիացիները շատ լաւ պիտի կարենային ձմեռը անցընել նոյն իսկ այն պարագային, որ Մառնի վրայ չյարձակէին։ Եթէ թշնամին, ժամանակ կորսնցնելէ ետքը անտառին առջեւ՝ ուզէր անոր շուրջը դառնալ և դէպի Սըտան ուղղուիլ, իր դէմ կը գտնէր Հոլանտայի ամրոցները և հաւանական չէր որ անոնց յաղթէր։ Եթէ անտառին միւս ծայրը նետէր Մէցին և կեդրոնի զօրաբաժիններն կը հանդիպէր, այն ատեն զինքը պիտի հալածէին և միանալով Քէլլերմանի զօրաբաժնին կրնային 50,000 հոգիի զանգուած մը կազմել, և ապաւինիլ Մէցին, ինչպէս նաև զանազան ամրացեալ քաղաքներու. ամէն պարագայի մէջ անոր ընթացքը կասեցուցած էին և այդ արշաւանքը կորսնցնել տուած էին, որովհետև արդէն Սեպտեմբերի մէջ էին, ու այդ միջոցին տակաւին կը սպասէին որ ձմեռը անցնի։

Այս ծրագիրը սքանչելի էր, բայց պէտք էր զայն գործադրել և Բրուսիացիները, Արկօնի անտառին երկայնքին շարուած ըլլալով, մինչ Տիւմուրիէ միւս ծայրերէն մէկը կը գտնուէր, կրնային անոր անցքերը գրաւած ըլլալ։ Այսպէս ուրեմն, այս մեծ ծրագրին և Ֆրանսայի բաղդը կախում ունէր դիպուածէ մը և թշնամիին մէկ սխալմունքէն։

Հինգ կիրճեր կը կտրէին Արկօնը. ասոնք էին Շէն-Բօբիւլէօ, Քրուա-Օ-Պուա, Շալատ, Կրան Բրէ, և Իլէզ. ամենէն կարեւորները այս վերջին երկուքն էին և դժբաղդաբար Սըտանէն հեռու՝ ինչպէս թշնամիին ամենէն մօտն էին. Տիւմուրիէ որոշեց որ իր բոլոր զօրքերովը այդ երկու կիրճերը փոխադրուի։ Մի եւ նոյն ատեն հրամայեց Տիւպուքէ զօրավարին՝ որ թողու հիւսիսի նահանգը և գայ գրաւէ Շէն-Բօբիւլէօի անցքը, որ շատ կարեւոր էր, բայց շատ ալ մօտ Սըտանի և որուն գրաւումը նուազ ստիպողական էր։ Երկու ճամբաներ կը ներկայանային Տիւմուրիէին, Կրան-Բրէի և Իլէզի կիրճերը երթալու համար. մէկը անտառին ետև և միւսը առաջքը, թշնամիին դէմ։ Առաջին ճամբան, անտառին ետեւէն անցնելով աւելի ապահով էր, բայց աւելի երկար էր. անիկա թշնամիին կը յայտնէր մեր ծրագիրները և ժամանակ կուտար անոնց առաջքը կտրելու։ Երկրորդ ճամբան աւելի կարճ էր, բայց նոյնպէս կը մատնէր մեր նպատակը և զօրքերը անցած ատեննին կ'ենթարկուէին ահագին բանակի մը հարուածներուն։ Իրաւամբ, պէտք էր յառաջանալ անտառին երկայնքին և Ստէնէյի

առաջքէն անցնիլ, ուր Քլէրֆէյդ կը գտնուէր իր Աւստրիացիներուն հետ։ Սակայն և այնպէս Տիւմուրիէ, այս ճամբան նախընտրեց և ամենէն յանդուգն յատակագիծը յղացաւ։ Կը մտածէր որ, աւստրիական խոհեմութեամբ՝ զօրավարը, Ֆրանսացիները տեսնելով, անպատճառ պիտի քաշուէր Գրուէնի սքանչելի բանակատեղին, և թէ այդ միջոցին անկէ պիտի խուսափէին Կրան-Բրէի և Իլէդի կիրճերը երթալու համար։

Իրաւ ալ, 30ին Տիյօն շարժման մէջ մտաւ, և 8,000 հոգիով մեկնեցաւ դէպ ի Սդէնէյ, Մէօզի և Արկօնի մէջտեղէն երթալով։ Քլէրֆէյդի հանդիպեցաւ որ գետին երկու եզերքները կը գրաւէր 25,000 Աւստրիացիներով։ Միացէնաքի զօրավարը 15,000 հոգիով յարձակեցաւ Քլէրֆէյդի յառաջապահներուն վրայ, մինչ Տիյօն, ետեւը դիրք բռնելով՝ օգնութեան կը հասնէր իր բոլոր զօրաբաժնով։ Կռիւը սկսաւ ուժգնութեամբ, և Քլէրֆէյթ անմիջապէս Մէօզը անցնելով, գնաց Գրուէն տեղաւորուեցաւ, ինչպէս շատ բարեբախտաբար Տիւմուրիէ գուշակած էր։ Այս միջոցին Տիյօն յանդգնութեամբ Մէօզի և Արկօնի մէջտեղէն ճամբան կը շարունակէր։ Տիւմուրիէ անմիջապէս անոր հետեւեցաւ իր զօրաբաժինը կազմող 15,000 զինուորներով, և երկուքն ալ կը յառաջանան դէպ ի նշանակուած վայրերը։ Սեպտեմբեր 2ին, Տիւմուրիէ Գէֆիւ էր և քիչ ճամբայ ունէր Կռան-Բրէի կիրճը հասնելու համար։ Նոյն օրը Տիյօն Բիէրմօն էր, և կը շարունակէր Իլէդի կիրճին մօտենալ՝ ծայրայեղ յանդգնութեամբ մը։ Բարեբախտաբար իրեն համար, Կալպօ զօրավարը՝ որ ղրկուած էր Վէրտէնի պահակախումբը ուժեղացնելու համար, շատ ուշ մնացած էր և Իլէդի մէջ ամփոփուած էր, որով կիրճը կը բռնէր առաջուընէ։ Տիյօն հոն հասաւ 4ին, իր 8,000 հոգիովը, հոն հաստատուեցաւ և անկէ զատ պահպանել տուաւ Շալոնը, որ իրեն յանձնուած ուրիշ երկրորդական անցք մըն էր։ Միեւնոյն ատեն Տիւմուրիէ հասաւ Կռան-Բրէ, դիրքը պարապ գտաւ և զայն գրաւեց 3ին։ Այսպէսով՝ Սեպտ. 3ին և 4ին, անցքերը բռնած էին մեր զինուորները, և Ֆրանսայի փրկութիւնը շատ յառաջացած էր։

Այս յանդուգն ընթացքով, որ գոնէ այնքան գնահատելի էր, որքան Արկօնը գրաւելու գաղափարը՝ Տիւմուրիէ արշաւանքին դիմադրելու վիճակին մէջ դրաւ ինքզինքը։ Բայց ամէնքն այս չէր. պէտք էր այս անցքերը անառիկ դարձնել, և այս բանին համար դեռ պէտք էր անթիւ կարգադրութիւններ ընել, որոնց յաջողութիւնը խել մը դիպուածներէ կախում ունէր։

Տիյօն քաշուեցաւ Իլէդի կիրճին մէջ, շատ մը ծառեր կտրել տուաւ, սքանչելի պատնէշներ բարձրացուց և ճարտարօրէն տրամադրելով ֆրանսական հրետանին, որ ճոխ և սքանչելի էր, թնդանօթներու շարքը այնպէս մը զետեղեց, որ անցքը անառիկ դառնար։ Միեւնոյն ատեն գրաւեց Շալոնը, այսպէսով աւերը դարձաւ այն երկու ճամբաներուն, որոնք Սէնդ-Մէնըհուլտ կ'առաջնորդէին և անկէ ալ Շալոն։ Տիւմուրիէ տեղաւորուեցաւ Կրան-Բրէի կիրճին մէջ, այն բանակատեղին, որ բնութիւնը և արուեստը անհաղթելի ըրած էին։ Ամֆիթատրոնի ձեւով բարձրութիւններ կը կազմէին այն հողը, որուն վրայ կը գտնուէր բանակը։ Այս բարձրութեանց ստորոտը կը տարածուէին ընդարձակ մարգեր, որոնց առաջքէն Էրր կը հոսէր բանակատեղիին գլուխը կազմելով։ Երկու կամուրջներ կային Էր գետին վրայ. շատ զօրաւոր երկու յառաջապահ գունդեր հոն տեղաւորուած էին, և պատրաստ էին, յարձակումի պարագային, կամուրջները այրելով ետ քաշուիլ։ Թշնամին այս յառաջապահ գունդերը, իրենց դիր-

քիրէն հեռանալէ ետքը, պէտք էր որ Նէյը անցնէր առանց կամուրջները ձեռք ունենալու, և մեր հրետանիին արձակած կրակին ներքև։ Գետէն անցնելէն ետքը պէտք էր որ անցնէր մարգագետիններու աւազանէ մը, ուր հազարաւոր գնդակներ զիրար պիտի խաչաձևէին, և վերջապէս թշնամին հարկադրուած պիտի ըլլար գահավէժ և գրեթէ անմատչելի պատուարներու յաղթել։ Այն պարագային, որ այսքան արգելքներ կարենային փրցնել, Տիւմուրիէ գրաւած բարձրութիւններէն քաշուելով, կ'իջնար սարահարթին վրայ որուն սարոտը Էնը կը գտնար, ուրիշ դետ մը, որ իրենց ետևէն կ'երկարէր, կ'անցնէր ուրիշ երկու կամուրջներէ զորս կը քանդէր և անգամ մըն ալ գետ մը կը դնէր իր և Բրուսիացիներուն մէջտեղ։ Այս բանակատեղին կարելի էր անառիկ նկատել, և հոն Ֆրանսացի զօրավարը բաւական ապահովութեան մէջ էր։ Կրնար հանդարտօրէն զբաղիլ պատերազմի ամբողջ թատերաբեմով։

7ին, Տիւպուքէ զօրավարը 6,000 հոգիով գրաւեց Շէն-Բօբիւլէօի անցքը։ Աղտա կը մնար միայն շատ աւելի նուազ կարևոր Քրուա-օ-Պուաի անցքը, որ Շէն-Բօբիւլէօի և Կրան-Բրէի կիրճերուն մէջտեղ կը գտնուէր։ Տիւմուրիէ ճամբաները անանցանելի դարձնելէ և ծառերը կտրել տալէ ետք, հոն գնդապետ մը դրաւ, երկու գումարտակով և երկու հեծելազօրաց վաշտով։ Այսպէսով անառին կեդրոնը և անառիկ բանակատեղիի մը մէջ կեցած, անոր գլխաւոր անցքը կը պաշտպանէր 15,000 հոգիով. իր աջ կողմը, և չորս մղոն հեռաւորութեամբ ունէր Տիյօնը, որ Իլէդը և Շալատը կը պաշտպանէր 8,000 հոգիով. իր ձախ կողմը ունէր Տիւպուքէն, որ կը պաշտպանէր Շէն-Բօբիւլէօն՝ 6,000 հոգիով, և Շէն-Բօբիւլէօի ու Կրան-Բրէի մէջտեղ գնդապետ մը, որ քիչ մը զինուորով կը հսկէր Քրուա-օ-Պուայի ճամբան, որուն շատ երկրորդական կարևորութիւն մը կու տային։

Այսպէսով Տիւմուրիէի պաշտպանողական յատակագիծը հաստատուած ըլլալով, ժամանակ ունէր օգնութեան սպասելու, և փութաց ըստ այնմ հրամաններ տալու։ Պէօրնօնվիլին հրահանգ ղրկեց Հոլանտայի սահմանագլուխը թողուլ, ուր Սաքս-Դէշէնի դուքսը կարևոր բան մը չէր ընէր, և Սեպտեմբեր 13ին Ռէթէլ գտնուիլ 10,000 հոգիով։ Շալօնը նշանակեց իբր մթերանոց պարէնի և զէնքի, և ժամադրավայր՝ նորակոչներու և օգնութեան հասնող զինուորներու, զորս իրեն կը ղրկէին։ Այսպէսով իր ետևը կը հաւաքէր բաւարար դիմադրութիւն մը կազմելու բոլոր միջոցները։ Մինչևոյն ատեն Գործադիր իշխանութեան զեկոյց մը ղրկեց, որով կը յայտնէր Արկօնը գրաւած ըլլալը։ «Կրան-Բրէ և Իլէդ, կը գրէր, մեր Թէրմօպիլէներն են, բայց ես Լէօնիտասէն աւելի բարեբախտ պիտի ըլլամ։» Կ'ուզէր որ մէկ քանի զօրագունդեր անջատէին Հռենոսի զօրաբաժինէն, որ սպառնալիքի ներքև չէր, և զանոնք միացնէին կեդրոնի զօրաբաժինին, որ այլևս Քէլլէրմանի յանձնուած էր։ Բրուսիացիներուն ծրագիրը, Բարիզի վրայ քալելը ըլլալով յայտնապէս, քանի որ Մօնմէտէն և Թիօնվիլէն կ'անցնէին առանց հոն կենալու, կ'ուզէր որ Քէլլէրմանին հրամայուէր թշնամիին ձախ կողմը քերել Լիններէն և Պար-լը-Տիւքէն և այսպէսով զիրենք բռնել կ'ուզէր կողէն և ետևէն իրենց յարձակողական ընթացքի միջոցին։ Ըստ բոլոր այդ տրամադրութեանց, եթէ Բրուսիացիները Արկօնի վրայ յարձակելէ վազ անցնելով, աւելի վեր ելլէին, Տիւմուրիէ Ռըվինեի մէջ իրենցմէ առաջ կ'անցնէր, և հոն կը գտնէր Քէլէրմանը, որ կեդրոնի

զօրաբաժինովը Մէցէն հասած պիտի ըլլար։ Երբ թշնամին դէպ ի Սըտան իջնէր, Տիւմուրիէ դարձեալ անոնց ետեւէն կ'երթար, հոն կը հանդիպէր Պուրնօնվիլի 10,000 մարդուց, և Էնի ափունքին վրայ կը սպասէր Քէլլէրմանին և երկու պարագային ալ զօրաբաժիններու միացումը 60,000 հոգիի զանգուած մը յառաջ կը բերէր, որ կարող պիտի ըլլար բաց դաշտի մէջ երեւան գալու։

Գործադիր իշխանութիւնը բան մը չմոռցաւ, Տիւմուրիէին օգնելու համար իր աքանչելի տրամադրութիւններուն մէջ։ Սէրվան, պատերազմական նախարարը, թէեւ հիւանդոտ, անդադար կը հսկէր զօրաբաժիններու պարենաւորման, զէնքերու և գոյքերու առաքման և նորակոչներու հաւաքման վրայ։ Ամէն օր Բարիզէն 1500-2000 կամաւոր կը մեկնէին։ Դէպ ի բանակը մղումը ընդհանուր էր, և մարդիկ զինուորագրուելու կը վազէին խումբերով։ Հայրենասիրական ընկերութիւններ, Համայնքային Խորհուրդներ ժողովին մէջէն չարունակ կ'անցնէին ինքնաբերաբար զինուորեալ խումբեր, և կ'երթային դէպ ի Շալօն, որ կամաւորներուն ընդհանուր ժամադրավայրն էր։ Այս երիտասարդ զինուորներուն կը պակսէր միայն կարգապահութիւնը և պատերազմի դաշտի վարժութիւնը, զոր դեռ բնաւ չունէին, բայց զոր կրնային շուտով ստանալ ճարպիկ զօրավարի մը հրամանին ներքեւ։

Ժիրօնտէնները Տիւմուրիէի անձնական թշնամիներն էին և քիչ վստահութիւն կ'ընծայէին անոր, այն օրէն ի վեր որ զինքը վռնտած էր նախարարութենէն. նոյն իսկ ուզած էին որ ընդհանուր հրամանատարութիւնը իրենց անդ յանձնեն Կրիմեար անուն սպայի մը։ Բայց իրեն հետ մէկ եղած էին այն օրէն ի վեր որ կը թուէր թէ հայրենիքին ճակատագրովը բեռնաւորուած էր։ Ռօլան, լաւագոյնը և նախարարներուն մէջէն ամենէն անաչառախոհը Տիւմուրիէին գրեց սրտառուչ նամակ մը, զինքը ապահովցնելու համար որ ամէն բան մոռցուած էր և թէ իր բոլոր բարեկամները կը փափաքէին միայն իր յաղթանակները հռչակելու առիթը ունենալ։

Ուրեմն Տիւմուրիէ զօրեղապէս գրաւած այդ սահմանագիծը և ընդարձակ զինուորական շարժումներու, որոնք մինչեւ այն ատեն շատ դանդաղ և շատ ցրուած էին, կեդրոնը դարձուցած էր ինքզինքը, յաջողութեամբ բռնած էր Արկոնի կիրճերը, և այնպիսի դիրքի մը տէր դարձած էր որ զօրաբաժիններուն ժամանակ կու տար իր ետեւ խմբուելու և կազմակերպուելու. յաջորդաբար բոլոր զինուորական խումբերը բերել կու տար պատկառելի զանգուած մը կազմելու համար. Քէլլէրմանը անհրաժեշտութեան մէջ կը դնէր գալու իր հրամանները ստանալու համար. կորովով կը հրամայէր, արագութեամբ կը գործէր, և զինուորներուն ուժ կը ներշնչէր, անոնց մէջ երեւալով, անոնց շատ վստահութիւն յայտնելով և ջանալով որ զինուորները փափաքէին մօտալուտ բաղխում մը ունենալ թշնամիին հետ։

Այսպէսով հասած էին Սեպտեմբեր 10ին. Բրուսիացիները մեր կայաններուն շրջանը բռին, ընդհարումներ ունեցան մեր բոլոր դիրքերուն ճակատէն և ամէն կողմէ ետ մղուեցան։ Տիւմուրիէ գաղտնի հաղորդակցութիւններ հաստատած էր անտառին ներքին մասին մէջ և յապաղումի ենթարկուած կէտերուն անսպառելի օգնութիւններ կը հասցնէր, ինչ որ թշնամիին կարծել կու տար թէ, մեր բանակին իրական ուժին կրկինը ունէինք։ 14ին, յարձակման ընդհանուր փորձ մը եղաւ Կրան-Բրէի դէմ, բայց Միրանտա զօրավարը, որ Մորդօմ անդաւորուած էր և

Սդէնքէլ զօրավարը, որ Սէն-Ժուվէ էր, բոլոր յարձակումները ետ մղեցին բացարձակ յաջողութեամբ։ Շատ մը կէտերու վրայ, զինուորները իրենց կացութենէն և ոյժերու վարմունքէն ապահովուած, իրենց դիրքերէն դուրս ցատկեցին և սուիններով ընդ առաջ գացին յարձակողներուն։ Այս կռիւները կ'զբաղեցնէին բանակը, որ երբեմն առանց ուտելի կը մնար, յանպատրաստից կազմակերպուած գործի մը անխուսափելի անկարգութեան հետեւանքով։ Բայց զօրավարին գուարթութիւնը, որ ինքզինքը զինուորներէն աւելի լաւ չէր խնամեր բնաւ, կը դրդէր որ ամենքը համակերպէին և հակառակ թանչքի հիւանդութեան, բաւական լաւ վիճակի մէջ էին Կրան-Բրէի բանակին մէջ։ Բարձրաստիճան սպաները միայն, որ կը կասկածէին թէ, կարելի պիտի ըլլա՞ր դիմադրել երկար ատեն, նախարարութիւնը՝ որ նոյնպէս թերահաւատ էր, կը խօսէին Մառնի ետեւ ապաստանելու վրայ և Տիւմուրիէն կը պաշարէին իրենց խորհուրդներով, և անիկա կարմի նամակներ կը գրէր նախարարներուն և իր սպաները կը լռեցնէր անոնց ըսելով, որ եթէ կարծիքներ հաւաքել ուզէր, պատերազմական խորհուրդ մը կը կազմէր։

Մարդ մը միշտ իր յատկութիւններուն անպատեհութիւնները կ'ունենայ։ Տիւմուրիէի հանճարին ծայրայեղ սրընթացութիւնը յաճախ զինքը պիտի մղէր անխորհուրդ գործունէութեան։ Ցղանալու իր եռանդին մէջ, իրեն արդէն պատահած էր որ իր ծրագիրներուն նիւթական արգելքները հաշուի չառնէր, մասնաւորապէս երբ Լաֆայէթին հրամայեց Մեցէն Ժիվէ փոխադրուիլ։ Հոս ալ գլխաւոր սխալ մը գործեց, որ կրնար պատերազմին կորսնցնելուն պատճառ ըլլալ, եթէ ինքը նուազ մտքի ուժ և պաղարիւնութիւն ունենար։ Շէն-Բօբիւլէօի և Կրան-Բրէի մէջտեղ, ինչպէս ըսինք, երկրորդական անցք մը կար, որուն կարեւորութիւնը շատ միջակ նկատուած էր, և այդ անցքը պաշտպանուած էր միայն երկու գումարտակով և հեծելազօրաց երկու վաշտերով։ Անսահման գործի տակ ճնշուած ըլլալով՝ Տիւմուրիէ ինքը անձամբ չէր գացած դատելու այդ անցքին կարեւորութիւնը։ Արդէն տրամադրելի քիչ մարդ ունենալով, դիւրաւ հաւատացած էր որ քանի մը հարիւր հոգի պիտի կրնային այդ անցքը պահպանել։ Ի լրումն դժբաղդութեան՝ այն գնդապետ որ զինուորներուն գլուխը անցած էր, ապահովցուց Տիւմուրիէն որ, նոյն իսկ կրնար հոն գտնուող զինուորներուն մէկ մասը առնել, և թէ ճամբաները աւրելով քանի մը կամաւորներ բաւական պիտի ըլլային պաշտպանողական դիրքը պահելու համար։ Տիւմուրիէ խաբուեցաւ այս գնդապետէն, որ ծերունի զինուորական մըն էր, և վստահութեան արժանի նկատուած

Այս միջոցին, Պրիւնսվիք քննել տուած էր մեր զանազան կայանները և վայրկեան մը ծրագիր կազմած էր անտառին երկայնքէն մինչև Սըտան հասնիլ այդ ծայրէն անտառին միւս կողմը դառնալու համար։ Կ'երեւայ թէ այդ շարժումի միջոցին լրտեսները երեւան հանեցին Ֆրանսացի զօրավարին անփութութիւնը։ Քրուա-Օ-Պուան յարձակում ենթարկուեցաւ Աւստրիացիներուն և տարագիրներուն կողմէ, որոնց հրամանատարն էր տը Լինեը իշխանը։ Ծառերը հազիւ թէ սկսած էին կտրել, ճամբաները աւրշտկած չէին եւ կիրճը գրաւուեցաւ առանց դիմադրութեան, Սեպտ. 13ին առաւօտուն։ Հազիւ թէ Տիւմուրիէ այս չարաբաստիկ լուրը առաւ, Շազօ զօրավարը ղրկեց, որ մեծ քաջութեան տէր մարդ մըն էր, երկու վաշտով, հեծելազօրաց վեց գունդով և չորս թնդանօթներով, որպէս զի կրկին գրաւեն անցքը և անկէ հեռացնեն Աւստրիացիները։



ԶԱՐԴԱՐԱՐՆԵՐՈՒ ԽՄԲԱԿ ՄԸ

Հրամայեց որ ամենամեծ արագութեամբ անոնց վրայ յարձակին սուիններով, առանց ժամանակ թողլու թըշնամիին՝ նահանջելու։ 13 ի օրը անցաւ և 14 Սեպտեմբերն ալ, երբ Շասօ զօրավարը դեռ չէր կրցած այդ հրամանը գործադրել։ Վերջապէս 15 ին անիկա յարձակեցաւ ուժգնութեամբ, եւ մղեց թշնամին և անկէ խլեց դիրքը և պետը՝ որ Լինեի իշխանը։ Բայց երկու ժամ ետքը ինքն ալ իր կարգին յարձակում կրելով զինուորական շատ աւելի մեծ ուժէ մը, և դեռ կարողացած չըլլալով նահանջել, կրկին եւ մղուեցաւ և Քրուա-Օ-Պուան բոլորովին ձեռքէն առին։ Ասկէ զատ Շազօի առջև Կրան-Բրէի ճանբան կտրած էր և չէր կրնար ապաստանիլ գլխաւոր զօրաբաժնին մէջ, որ այսպէսով տկարացած էր։ Վուզիէ քաշուեցաւ անմիջապէս։ Տիւմուրիէ

զօրավարը, Շէն-Սօրիւլէօ կիրճին հրամանատար, որ մինչեւ ցարդ իր դիմադրութեան մէջ քաջաբար եղած էր, տեսնելով որ Կրան-Բրէէն բաժնուած է, մտածեց որ թշնամիին կողմէ պաշարուելու վտանգին պէտք չէ ենթարկուիլ, որովհետեւ անիկա Քրուա-Օ-Պուային գիծը կտրած ըլլալով անկէ դուրս պիտի խոյանար մեծ բազմութեամբ։ Զօրավարը որոշեց խուսափիլ եւ Սդէնեյի եւ Սօմ-Բիւի ճամբով քաշուիլ Շալօն։ Այսպէսով այնքան յանդուգն կարգադրութիւններու եւ քաջաբար դիպուածներու արդիւնքը կորսուած էր. միակ արգելքը, որ կրնային արշաւանքին դէմ դնել, Արկօնն էր, եւ թշնամին անցած ըլլալով անկէ, Բարիզի ճամբան բացուած էր։

Տիւմուրիէ՝ Շազօէն եւ Տիւպուքէէն բաժնուած ըլլալով, այլ եւս միայն 15,000 հոգի ունէր, եւ եթէ թշնամին արագօրէն խոյանալով Քրուա-Օ-Պուայէն, Կրան-Բրէի դիրքէն դառնար եւ գար գրաւէր իր գետին անցքերը, որ, ինչպէս ըսինք, մեր բանակատեղիին ետեւի ելքերը կը կազմէին, Ֆրանսայի զօրավարը կորսուած էր։ 40,000 Բրուսիացի պիտի ունենար իր ճակատին կողմը, եւ 25,000 Աւստրիացի՝ ետեւէն. այսպէսով 15,000 հոգիով բանտարկուած պիտի ըլլար 65,000 զինուորներէ, երկու ջուրի հոսանքներու եւ անտառին մէջ, եւ այլ եւս միայն զինաթափ ըլլալ կը մնար իրեն, կամ ի զուր սպաննել տալ իր բոլոր զինուորները։ Միակ զօրաբաժինը, որուն վրայ Ֆրանսա յոյսը դրած էր, փճացած պիտի ըլլար եւ միացեալ բանակները կրնային այն ատեն մայրաքաղաքին ճամբան բռնել։

Այս յուսահատական կացութեան մէջ զօրավարը քաջութիւնը չկորսնցուց, եւ հիանալի պաղարիւն մը պահեց։ Առաջին հոգն եղաւ նոյն օրն իսկ նահանջել, որովհետեւ ամէնէն ստիպողականն էր թշնամիին ծայրայեղ պայմաններուն չենթարկուիլ։ Նկատեց որ իր աջ կողմէն մօտ էր Տիյօնին, եւ դեռ տէրը կը մնար Իլէդի կիրճին եւ Սէնդ-Մէնըհուլդի ճամբուն. մտածեց որ անոր զօրաբաժինին ետեւը ամփոփուելով եւ իր բանակին կռնակը անոր կռնակին կռթնցնելով երկուքը մէկ՝ մին Իլէդի մէջ, միւսը Սէնդ-Մէնըհուլտէն դէմ պիտի դնէին թշնամիին, եւ այսպէսով երկու պաշտպանուած ճակատ պիտի ներկայացնէին։ Հոն պիտի կրնային սպասել որ երկու զօրավարները՝ Շազօ եւ Տիւպուքէ, որ պատերազմող բանակէն անջատուած էին՝ միանային, ինչպէս Պուրնոնվիլ, որ Ֆլանտրայէն կանչուած էր ամսոյն 12 ին Ռէթէլ գտնուելու համար, Քէլլէրման, որ տասը օրէ ի վեր ճամբայ ելած ըլլալով, չէր կրնար ուշանալ։ Այս յատակագիծը լաւագոյնն էր եւ ամէնէն պատշաճը Տիւմուրիէի դրութեան, որ կը հաստատէր պէտք է ի ներս բաց երկրի մէջ չքաշուիլ, այլ կենալ դժուարամուտ երկրի մը մէջ, հոն ժամանակ վաստկելով ի վճակի ըլլալ միանալու կեդրոնի զօրաբաժինին։ Եթէ, ընդհակառակը, Շալօն քաշուէին, պիտի հալածուէին իբր փախստական, եւ այնպիսի նահանջ մը պիտի ընէին առաւելութիւններէ զրկուած, ինչ որ սկիզբէն օգտակար կրնային ընել. եւ մանաւանդ անկարելի պիտի ըլլար որ Քէլլէրման գար միանար իրենց։ Մեծ յանդգնութիւն մըն էր, Քրուա-Օ-Պուային պատահած արկածէն ետքը, յամառիլ իր դրութեան մէջ, եւ այդ պահուն այնքան հանճար պէտք էր, որքան կորով՝ Մարնի ետեւ քաշուելու, այնքան կրկնուած խորհուրդին տեղի չտալու համար։ Բայց որքա՛ն քաջաբար դիպուածներու պէտք կար այդքան դժուարին նահանջի մը մէջ յաջողելու համար երբ այնքա՛ն հսկողութիւն կար վրանին եւ այնքան քիչ էին թուով, շատ զօրաւոր թշնամիի մը դէմ։

Տիւմուրիէ անմիջապէս հրամայեց

Պէօրնօնվիլին, որ ուղղուած էր արդէն Ռեթէլ, Շազօին ուրկ! գոհացուցիչ լուրեր ստացած էր քիչ առաջ. Տիւպուքէյին, որ Աթինիի քաշուած էր, որպէս զի ամէնքն ալ Սէնթ-Մէնըհուլտ երթան: Միաժամանակ նորէն Քէլլէրմանին ղրկեց որ իր ճամբան շարունակէ, որովհետեւ կրնար վախնալ որ Քէլլէրման կիրճերուն կորուստը լսելով, չուզէր Մէց վերադառնալ: Տիւմուրիէ բոլոր կարգադրութիւնները ընելէ եւ Բրուսիացի սպայ մը ընդունելէ ետք, որ բանակցիլ կ'ուզէր եւ որուն ցոյց տուաւ բանակը ամենամեծ կարգ ու կանոնի մէջ, կէս գիշերին պատրաստուեցաւ եւ լռութեան մէջ ընթացաւ դէպ ի երկու կամուրջները, որ Կրան-Պրէի բանակին իբր մուտք կը ծառայէին: Բարեբաղդաբար, իրեն համար՝ թշնամին դեռ չէր խորհած Քրուա-Օ-Պուայէն մտնել եւ խուժել Ֆրանսական դիրքերուն վրայ: Երկինքը փոթորկալի էր եւ իր մթութիւնով կը ծածկէր Ֆրանսացիներուն նահանջը: Բոլոր գիշերը, անընդհատ ճամբաներէ քալեցին, եւ բանակը, որ ժամանակ չէր ունեցած սարսափէ բռնուելու, նահանջեց, առանց գիտնալու դիրքի այս փոփոխութեան պատճառը: Հետեւեալ օրը, 16ին, առաւօտեան ժամը ութին, բոլոր զինուորները Էն գետը անցած էին արդէն. Տիւմուրիէ ազատուած էր եւ Օդրիի բարձրութեանց վրայ, Կրան-Պրէէն չորս մղոն հեռու, պատերազմի կեցած էր: Իրեն հետեւող չկար, կը կարծէր որ փրկուած է եւ կը յառաջանար դէպ ի Տամմարդէն-սիւր-Հանս, որպէս զի հոն օրուան համար բանակատեղի մը ընտրէ, երբ յանկարծ կը լսէ որ փախստականներ կը վազեն եւ կը գոչեն թէ ամէն բան կորսուած է, թէ թշնամին մեր ետեւէն իյնալով բանակը փախուստի մատնեց: Տիւմուրիէ վազեց իր յետսապահին վերադարձաւ, եւ Բէրիւվիլէն Մէրանտայէն եւ ծերունի Տիւվալ զօրավարը գտաւ, որոնք փախստականները կը կ'եցնէին, մեծ հաստատակամութեամբ բանակին շարքերը կը վերահաստատէին, չորս Բրուսիացի զինուորները միջոց մը յանկարծակիի եկեր եւ խռովեր էին: Մեր երիտասարդ զինուորներուն անփորձութիւնը եւ դաւաճանութեան մը վախը, որ այն ատեն բոլոր մտքերը գրաւած էր, փախստական սարսափը շատ դիւրին եւ շատ յաճախադէպ կը դարձնէին: Սակայն եւ այնպէս, ամէն բան դարմանուեցաւ շնորհիւ երեք զօրավարներուն, Մէրանտա, Տիւվալ եւ Սդէնժէլ, որոնք յետսապահը առաջնորդուած էին: Տամմարդէն բացօթեայ կայանք ըրին այն յոյսով, որ շուտով Իլէդի պէտի կրթընին եւ յաջողութեամբ պիտի վերջացընեն այս վտանգալի նահանջը:

Տիւմուրիէ քանի ժամէ ի վեր ձիու վրայ էր: Իրիկուան ժամը վեցին ոտքը գետին կը դնէր, երբ յանկարծ լսեց դարձեալ կրցողը փախչի աղաղակներ, անէծքներ զօրավարներու դէմ, որ կը դաւաճանէին, եւ մանաւանդ զօրապետին դէմ, որուն համար կ'ըսէին թէ թշնամիին կողմը անցած էր քիչ առաջ. Թնդանօթաձիգները հեծած էին եւ բարձրութեան մը վրայ ապաստանիլ կ'ուզէին. բոլոր զինուորները իրարու խառնուած էին: Տիւմուրիէ մեծ կրակներ վառել տուաւ եւ հրամայեց որ այդ վայրին վրայ մնան բոլոր գիշերը: Այսպէսով տասը ժամ մնացին ցեխին եւ մթութեան մէջ: 1,500է աւելի փախստականներ, դաշտերու մէջերէն խուսափելով գացին Բարիզ, եւ ամբողջ Ֆրանսայի մէջ լուր տարածելու թէ հիւսիսի զօրաբաժինը, հայրենիքին վերջին յոյսը, կորսուած էր եւ թշնամիին մատնուած:

Հետեւեալ օրն իսկ ամէն բան դարմանուեցաւ: Տիւմուրիէ գրեց Ազգային Ժողովին իր սովորական ինքնավստահութիւնով. — «Ստիպուած էի Կրան-Պրէի

բանակատեղին լքել։ Նահանջը կատարուած էր երբ փոխանցական սարսափ մը տիրեց բանակին մէջ. 10,000 հոգի փախան 15,000 Բրուսիացի զինուորներու դիմացէն. կորուստը 50 հոգիէ և քիչ մը բան աւելի չէ։ Ամէն բան դարմանուած է, եւ կ'երաշխաւորեմ ամէն բան։» Այս ապահովութիւնները անհրաժեշտ էին ամոքելու համար սարսափները Բարիզի և գործադիր իշխանութեան, որ նորէն պիտի ստիպէր զօրավարը՝ Մառնը անցնելու։

Սէնդ-Մէնըհուլտ, ուր կը դիմէր Տիւմուրիէ կը գտնուի Էն գետին վրայ, մէկը այն երկու գետերէն, որոնք կը շրջապատէին Կրան-Բրէի բանակատեղին։ Ուրեմն Տիւմուրիէ գետին հոսանքին պիտի հետեւէր և հոն հասնելէ առաջ պէտք էր երեք բաւական խորունկ առուներ անցնիլ, Տուպը, Պիոնը և Օվը, որոնք Էնի մէջ կը միանան։ Այս երեք առուներէն անդին կը գտնուէր այն վայրը, զոր պիտի գրաւէր։ Սէնդ-Մէնըհուլտին դիմաց շրջանակաձեւ կը բարձրանան երեք քառորդ մղոնի բարձրութիւններ։ Իրենց ստորոտը խորութիւն մը կը տարածուի, որուն մէջ Օվը ճահիճներ կը կազմէ Էն գետը նետուելէ առաջ։ Այդ խորութիւնը աջ կողմէն եզերուած էր Հիրօնի, դիմացէն Լիւնի և ձախէն Ժիզօքուրի բարձրութիւններէն։ Աւազանին կեդրոնը կը գտնուին զանազան բարձրութիւններ որոնք սակայն Սէնդ-Մէնըհուլտի բարձրութիւններէն ստորադաս են։

Վալմիի ջաղացքը անոնցմէ մէկն է և Լիւնի բլուրներուն անմիջապէս դէմը կ'իյնայ։ Շալօնէն Սէնդ-Մէնըհուլտ տանող մեծ ճամբան այս աւազանին մէջէն կ'անցնի, գրեթէ Օվի գիծին զուգընթացաբար։ Սէնդ-Մէնըհուլտի մէջ և այս աւազանին վերեւ է որ տեղաւորուեցաւ Տիւմուրիէ։ Իր շուրջի ամենէն կարեւոր դիրքերը բռնել տալու և կուժնեցաւ Տիյօնի, անոր յանձնարարելով ամուր կենալ թշնամիին դէմ։ Այսպէսով Բարիզի մեծ ճամբան կը գրաւէր երեք կէտէ. Իլէդի կիրճը, Սէնդ-Մէնըհուլտ և Շալօն։

Սակայն և այնպէս Բրուսիացիները կրնային Կրան-Բրէէն անցնելով Տիւմուրիէն թողուլ Սէնդ-Մէնըհուլտի մէջ և վազել Շալօն։ Ուրեմն Տիւմուրիէ հրամայեց Տիւպուքէին, որուն ողջամբ Շալօն ժամանելը իմացած էր, իր զօրաբաժինին հետ տեղաւորուիլ Էբինի բանակատեղին, հոն հաւաքել նորահաս կամաւորները, Շալօնը պաշտպանելու նպատակաւ, ո եւ է ձեռնարկի մը դէմ։ Յետոյ եկան միացան իրեն Շազօ և վերջապէս Պէօրնօնվիլ. այս վերջինը 15ին մեկնած էր Սէնդ-Մէնըհուլտ հասնելու համար։ Բանակ մը տեսնելով լաւ վիճակի մէջ, ենթադրած էր որ թշնամին է, որովհետեւ չէր կրնար հաւատալ որ Տիւմուրիէն, որուն համար կ'ըսէին թէ յաղթուած էր, կարենար այնքան շուտով և այնքան լաւ, դժուարութեան մէջէն ելած ըլլալ։ Այս գաղափարով Շալօն քաշուած էր և հոն ճշմարտութեան տեղեկանալով, վերադարձած և 19ին դիրք բռնած էր Մաֆրըքուրի մէջ, բանակատեղիին աջակողմը։ Անիկա կը բերէր այն 10,000 քաջերը, զորս Տիւմուրիէ ամսուան մը մէջ մարզած էր Մօլտի բանակատեղիին մէջ շարունակական մանր մունր կռիւներ ընել տալով։ Զօրեղացած՝ Պէօրնօվիլի և Շազօի կողմէ Տիւմուրիէ տրամադրելի կունենար 35 հազար հոգի։ Այսպէսով, շնորհիւ իր հաստատակամութեան և մտքի արթնութեան, շատ զօրաւոր դիրքի մը մէջ կը գտնուէր, և ի վիճակի էր բաւական երկար ատեն դեռ ժամանակ անցընելու։ Բայց եթէ թշնամին աւելի արագ շարժելով զինքը ետեւ ձգէր և դէպ ի առաջ Շալօնի վրայ վազէր, ինչ կ'ըլլար իր Սէնդ-Մէնըհուլտի բանակը։

Այս նոյն վախը կար միշտ, և Էբլինի բանակատեղիին համար իր ըրած նախապատրաստութիւնները հեռու էին այդպիսի վտանգի մը առաջքը առնել կարենալու։

Երկու շարժումներ շատ յամրօրէն կը կատարուէին իրենց շուրջը, Գրիւնավիքի շարժումը որ իր ընթացքին մէջ կը վարանէր և Քէլլէրմանինը որ 4ին Մէցէն մեկնած ըլլալով, համաձայնուած կէտին դեռ չէր հասած, 15 օրուան ճամբորդութենէ մը ետքը։ Բայց եթէ Գրիւնավիքի դանդաղութիւնը օգտակար էր Տիւմուրիէէին Քէլլէրմանինը եզականօրէն զինք վտանգի կ'ենթարկէր։ Քէլլէրման թէև շատ քաջ, բայց խոհեմ և վարանոտ ըլլալով, փոխն ի փոխ յառաջացած և ընկրկած էր, Բրուսիական բանակին ընթացքին համեմատ. և 17ին խակ, կիրճերուն կորուստին լուրը առնելով դէպ ի ետ շարժում մը ըրած էր։ Սակայն և այնպէս 19ի երեկոյին իմացընել տուաւ Տիւմուրիէէին որ Սէնդ-Մէնըհուլտէն 10 մղոն միայն հեռու էր։ Տիւմուրիէ իրեն վերապահած էր Ժիզօքուրի բարձրութիւնները, որոնք իր ձախակողմը կը գտնուէին և կը տիրապետէին Շալօնի ճամբուն և Օվի առուակին։ Անոր զեկուցած էր որ կռիւի մը պարագային, կրնար տարածուիլ երկրորդական բարձրութեանց վրայ և Վալմիի վրայ փոխադրուիլ Օր էն անդին։ Տիւմուրիէ ժամանակ չունեցաւ ինքն անձամբ երթալ տեղաւորցնելու իր պաշտօնակիցը։ Քէլլէրման 19ին գիշերուան մէջ Օվր անցնելով աւազանին կեդրոնը՝ Վալմի հասաւ և երեսի վրայ թողուց Ժիզօքուրի բարձունքը որ Սէնդ-Մէնըհուլտի բանակատեղիին ձախակողմը կը կազմէր և կը տիրապետէր Լիւնի բարձունքը որոնց վրայ կը հանէին Բրուսիացիները։

Այդ վայրկեանին, իրաւամբ, Բրուսիացիները Կրան-Բրէէն խուժելով Ֆրանսական բանակին աչքին առջև հասած էին և Լիւնի բարձունքն ի վեր ելլելով կը տեսնային արդէն այն հողամասը որուն գագաթը կը գրաւէր Տիւմուրիէ։ Կ'ըսեն որ Շալօնի վրայ արագօրէն խոյանալէ հրաժարելով, ուրախ էին երկու Ֆրանսացի զօրավարները միացած գտնալնուն որովհետև կը խորհէին երկուքն ալ յաղթել մէկ հարուածով։ Իրենց նպատակն էր Շալօնի ճամբուն տէրը դառնալ, Վիդրի փոխադրուիլ, Իլէդի մէջ Տիյօնը նեղը դնել, այդպէսով Սէնդ-Մենըհուլտը պաշարել ամէն կողմէն և ստիպել որ երկու զօրաբանակները զինաթափ ըլլան։

20 ի առաւօտուն Քէլլէրման, որ փոխանակ Ժիզօքուրի բարձունքը գրաւելու՝ փոխադրուած էր աւազանին կեդրոնը, Վալմիի ջաղացքը, տեսաւ որ իր դէմէն, Լիւնի բարձունքէն թըշնամիէն գրաւուած էր, իրեն կը տիրէին։

Մէկ կողմէն, Հիրոնը ունէր որ Ֆըրանսացիներու ձեռքն էր, բայց կրնային կորսնցնել, միւս կողմէս Ժիզօքուրը որ ինք գրաւած չէր և ուր Բրուսիացիները շուտով կը տեղաւորուէին։

Պարտութեան մը պարագային, անիկա պիտի իյնար Օվի ճահիճներուն մէջ, որոնք կը գտնուէին Վալմիի աղօրիքին առջև, և անիկա պիտի յաղթուէր, այդ ամփիթատրոնին խորը Տիւմուրիէէին հետ միանալէ առաջ։

Անմիջապէս իր քովը կանչեց պաշտօնակիցը, բայց Բրուսիոյ թագաւորը, Ֆրանսական բանակին մէջ մեծ շարժում մը տեսնելով, և կարծելով որ զօրավարներուն ծրագիրն էր Շալօնի վըրայ քալել, ուզեց անմիջապէս փակել անոր ճամբան և հրամայեց որ յարձակումի սկսին։ Բրուսիական բանակին յառաջապահը Շաչօնի ճամբան հանդիպեցաւ Քէլլէրմանի յառաջապահին, այս վերջինը իր զօրաբանակին հետ կը գըտնուէր Վալմիի բարձրութեանց վրայ։ Բուռն յարձակում մը գործեցին և

Ֆրանսացիները թէեւ ի սկզբան ետ մղուեցան, բայց յետոյ վերադարձան և օժանդակութեամբը զօրավար Վալանսի հրացանաձիգներուն, Լիւնի լեռներուն վրայ յարձակեցան, մեր հրետանին բուռն կերպով պատասխանեց Բրուսիացիներու թնդանօթներուն։

Սակայն եւ այնպէս, Քէլլէրմանի դիրքը շատ վտանգաւոր էր։ Իր զինուորները ամենքն ալ խառն ի խուռն հաւաքուած էին Վալմիի բարձրութեանց վրայ, և շատ յարմարութիւններ չունէին կռուելու համար։ Լիւնի բարձրութեանց վրայէն զայն թնդանօթի կը բռնէին. Ժիզօքուռի բարձրութեանց վրայէն Բրուսիացիներուն կրակը կը նեղէր իր բանակին ձախակողմը։ Հիրոնը, որ իր աջ կողմը կ'եզերէր, խրամին մէջ Ֆրանսացիներէն գրաւուած էր։ Բայց Քլէրֆէյդ, այդ կայանին վրայ 25,000 Աւստրիացիներով յարձակելով կրնար տէր ըլլալ անոր. այն ժամանակ, ամէն կողմէ կայծակնահար եղած, Քէլլէրման Վալմիէն Օվի մէջ կրնար նետուիլ, առանց որ Տիւմուրիէ կարենար անոր օգնութեան հասնիլ։

Տիւմուրիէ անմիջապէս զօրավար Ստէնժէլը դրկեց զօրաւոր բանակով մը, որպէս զի օգնութեան հասնի Հիրոնի վրայ գտնուող Ֆրանսացիներուն, եւ հոն ապահովէ Վալմիի աջակողմը։ Պէօրնօնվիլլի հրամայեց Ստէնժէլի օգնել 16 վաշտով, Շազօն ալ դրկեց ինը վաշտով եւ ութը գումարտակով Շալօնի ճամբուն վրայ, որպէս զի գրաւէ Ժիզօքուռը և Քէլլէրմանի ձախակողմը անցնի։ Բայց Շազօ, Վալմիի մօտ հասնելուն պէս, Քէլլէրմանէն հրահանգ խնդրեց, փոխանակ Ժիզօքուռի վրայ քալելու, և Բրուսիացիներուն ժամանակ տուած եղաւ զայն գրաւելու, և մեզի համար մահացու եղող կրակ մը հաստատելու։ Այսուհանդերձ, թէ՛ աջէն և թէ ձախէն օգնութիւն ստացած, Քէլլէրման կրնար լինքզինքը բռնել Վալմիի աղօրիքին վրայ։ Դժբաղդաբար, վառօդի սնտուկի մը վրայ ինկած ռումբ մը զայն օդը հանեց, եւ հետեւակազօրաց մէջ շփոթութիւն յառաջ բերաւ. Լիւնի բարձրութեանց վրայ հաստատուած թնդանօթները ա՛լ աւելի մեծցուցին այդ խանգարումը, և արդէն իսկ առաջին գիծը սկսած էր կքիլ։ Քէլլէրման, այս շարժումը նշմարելով վազեց շարքերուն մէջ, զանոնք կարգի բերաւ և կարգապահութիւնը վերահաստատեց։ Այդ պահուն, Պրունսուիք խորհեցաւ թէ պէտք էր մագլցիլ լեռն ի վեր և սուինով կռուիլ Ֆրանսացի զինուորներուն հետ։

Կէս օր էր, թանձր մշուշ մը, որ մինչեւ այն ժամանակը շրջապատած էր երկու բանակները, փարատած էր. որոշ կերպով կը տեսնէին զիրար, և մեր երիտասարդ զինուորները կը նշմարէին Բրուսիացիներուն յառաջանալը՝ երեք շարքի վրայ, տարէց և վարժ պատերազմիկի վստահութեամբ։ Առաջին անգամն էր որ 100,000 հոգիով կը գտնուէին պատերազմի դաշտին վրայ, եւ սուինով պիտի կռուէին։ Տակաւին չէին ճանչնար ո՛չ ինքզինքնին և ո՛չ ալ թշնամին, և անհանգստութեամբ իրարու կը նայէին։ Քէլլէրման մտաւ խրամներուն մէջ, իր զինուորները մէկ շարքի վրայ շարեց և անոնց հրամայեց որ, երբ Բրուսիացիները բաւական մօտեցած ըլլան, անոնց գալուն չըսպասեն, այլ անոնց ընդ առաջ երթան սուինը ի ձեռին։ Յետոյ բարձրացուց ձայնը եւ գոչեց. կեցցէ՛ Ազգը։ Այդ վայրկեանին՝ մարդ կա՛մ քաջարի և կա՛մ վատաբարոյ կրնար ըլլալ։ Կեցցէ՛ Ազգը աղաղակը միայն քաջեր կը ծնեցնէ, և մեր երիտասարդ զինուորները, խանդավառուած, յառաջ կ'ընթանան կեցցէ՛ Ազգը աղաղակը կրկնելով։ Այս տեսարանին առջեւ, Պրունսուիք, որ չուզելով կը կատարէր արդէն յարձակումը, և արդիւնքին մասին մեծ վախ ունէր, վարանե-

ցաւ, իր զինուորները կեցուց եւ վերջ ի վերջոյ անոնց հրամայեց վերադառնալ իրենց բանակատեղին։

Այս փոքր վճռական արդիւնք մը տուաւ։ Այդ վայրկեանէն սկսեալ, հաւատացին թէ բան մը կ՚արժեն այն կօշկակարները եւ դերձակները, որոնցմէ բաղկացած էր Փրանսական բանակը, ըստ տարագիրներուն։ Տեսած էին լաւ հագուած, լաւ մարզուած քաջարի մարդիկ, տեսած էին պատուանշաններով զարդարուն և փորձառու սպաներ, տեսած էին զօրավար Տիւվալ մը, որուն գեղեցիկ հասակը և ճերմակ մազերը յարգանք կը ներշնչէին. վերջապէս՝ տեսած էին Քէլլերմանը, Տիւմուրիէն, ու այնքան հաստատակամութիւն և ճարտարութիւն ցոյց կուտար այնքան գերադանց թշնամիի մը ներկայութեանը։

Այդ վայրկեանին Փրանսական յաղթանակութեան վրայ կարծիք մը գոյացուցին, եւ մինչեւ այդ ժամանակ ծիծաղելի համարուած խանդրձադանձը այլ եւս ուրիշ բան չէր թուեր, այլ կորովի անհուն թռիչք մը։

Ժամը 4ին, Պրիւնսվիք նոր յարձակում մը փորձեց. մեր զինուորներուն անվրդով երեւոյթը անգամ մըն ալ անյաջողութեան մատնեց զինքը, եւ երկրորդ անգամ ըլլալով նահանջեց։ Արմանքէ զարմանք գլորելով, իրեն իմաց տրուած բոլոր տեղեկութիւններուն սուտ ըլլալը հասկնալով Բրուսիացի զօրավարը մեծ չըջահայեցութեամբ կը յառաջանար, և թէև զինքը մեղադրողներ եղած են յարձակումը աւելի բուռն կերպով կատարած չըլլալուն, եւ Քէլլերմանը ճնշած չըլլալուն համար, բայց ողջախոհ դատողները կը կարծեն թէ անիկա իրաւունք ունէր խոհեմ ըլլալու։ Քէլլերման՝ թէ՛ աջէն եւ թէ՛ ձախէն ամբողջ Փրանսական բանակը իրեն սլջակից ունենալով կրնար դիմադրել։ Եւ եթէ Պրունսվիք անգամ մը թխմուէր նեղկուկ եւ զզուելի երկրի մը մէջ եւ յաղթուէր, ամբողջովին բնաջնջ ըլլալու վտանգին ենթարկուած կ՚ըլլար։ Մնաց որ, այն օրուան կռիւներուն արդիւնքովը, անիկա գրաւած էր Շալօնի ճամբան. Փրանսացիներուն կապը՝ իրենց մթերանոցին հետ՝ խզուած էր և կը յուսար որ պիտի կրնայ հարկադրել զանոնք՝ թողուլ իրենց դիրքերը մէկ քանի օրուան համար։ Անիկա նկատի չէր առներ, թէ անգամ մը Վիթրիի առէր ըլլալէ ետք, այլ եւս կարելիութիւն չունէր աւելի երկար շրջան մը ընելը, և իրենց գոյքերուն փոխադրութեան մէջ յառաջ դալիք յապաղումը։

Ահա՛ այսպէս անցաւ 1792 Սեպտեմբեր 20ի նշանաւոր օրը, երբ աւելի քան 20,000 թնդանօթի հարուածներ արձակուեցան, այդ օրը անկէ ի վեր կոչուած է Վալմիի թնդանօթաձգութիւնը։ Կորուստ՝ երկու կողմէն հաւասար եղաւ. իւրաքանչիւր բանակ կորսնցուց 8—9 հարիւր մարդ։ Բայց Փրանսական բանակին մէջ կը տիրէր զուարթութիւնը և վստահութիւնը, իսկ Բրուսիականին մէջ՝ մեղադրանքներ ու զղջում միայն կը լսուէին։ Կը հաւաստեն թէ նոյն իրիկուն իսկ տարագիրները չատ խիստ դիտողութիւններ ընդունեցին Բրուսիոյ Թագաւորին կողմէ, և հետզհետէ նուազեցաւ ազդեցութիւնը Քալօնի, տարագիր նախարարներէն ամենէն յաւակնոտին, և որ չափազանցեալ խոստումներ տալու ու հերքուած լրատուութեանց մէջ ամենէն բեղմնաւորն էր։

Նոյն գիշերն իսկ, Քէլլերման կրկին անցաւ Օվ գետը անաղմուկ կերպով, և եկաւ բանակել Ժիզօքուրի լեռներուն վրայ, զորս առաջին օրէն պարտ էր գրաւել արդէն, և որմէ՝ Բրուսիացիները օգտուած էին ցորեկին։ Բրուսիացիները Լիւնի բարձրութեանց վրայ մնացին։ Անոնց դէմը կը գտնուէր Տիւ-

մուրիէ, և այս վերջինին ձախակողմը՝ Քէլլէրման, այն լեռներուն վրայ, զորս դեռ նոր ձեռք անցուցած էր վերստին։ Այդ եզական դիրքին մէջ, Ֆրանսացիները Ֆրանսայի դէմ կանգնելով, զայն նուաճելու երեւոյթն ունէին, իսկ Բրուսիացիները, որոնք Ֆրանսայի կոխնած էին, կարծես թէ զայն կը պաշտպանէին։

Այդ միջոցին է որ Տիւմուրիէն սկըսաւ կորովի ու հաստատակամ գործերու նոր շարք մը, թէ՝ թշնամիին դէմ, և թէ սեպհական սպաներուն և Ֆրանսական իշխանութեանց դէմ։ Աւելի քան 70,000 հոգիով զօրաւոր բանակատեղիի մը մէջ, ուտեստէ զուրկ չըմնալով անիկա կրնար սպասել։ Ընդհակառակը Բրուսիացիները ուտեստ չունէին, հիւանդութիւնները սկսած էին աւեր սփռել անոնց բանակին մէջ, և այդ կացութեան մէջ ժամանակ անցընելով շատ բան կը կորսնցնէին։ Սարսափելի եղանակ մը. քարոտ և խոնաւ հողի մը մէջ, թոյլ չէր տար իրենց՝ աւելի երկար ատեն մնալ հոն։ Եթէ շատ ուշ վ'րստանալով արշաւանքին կորովը և արագութիւնը, ուզէին քալել Բարիզի վրայ, Տիւմուրիէ ի վիճակի էր անոնց ետեւէն երթալու և զանոնք պաշարելու, երբ ա՛լ աւելի առաջ կռիւի ձեռնարկէին։

Այս տեսակէտները ճշգրտութեամբ և խոհեմութեամբ լեցուն էին։ Բայց բանակատեղիին մէջ, ուր սպաները կը նեղանային իրենց կրած զրկանքներէն, և ուր Քէլլէրման շատ գոհ չէր գերագաս իշխանութիւն մը գտնելով Բարիզի մէջ, ուր ինքզինքնին անջատուած կըզգային գլխաւոր բանակէն, ուր ոչինչ կը նշմարէին իրենց և Բրուսիացիներուն միջեւ, և ուր մինչև իսկ կը տեսնէին որ Ուհլանները մինչև 15 մղոն կը մօտենան, յորմէհետէ Արկօնի անտառը բացուած էր, Բարիզի մէջ չէին կրնար գնահատել Տիւմուրիէի ծրագիրը։

Ժողովը և Դանլինճը, կը գանգատէին անոր յամառութենէն և անոր կը գրէին շատ հրամայողական նամակներ, որպէս զի լքել տայ իր դիրքը և Մարնի գետը կրկին անցնի։ Մօնմարդըրի մէջ բանակատեղի մը և Շալօնի ու Բարիզի միջեւ բանակ մը արդէն կրկնակ պատնէշներ էին առաջարկած երեւակայութիւններուն համար։ Տիւմուրիէ կը գրէր. «Ուհլանները կը նեղե՞ն զձեզ. լաւ ուրեմն, սպաննեցէք զանոնք, անիկա իմ գործս չէ. ես իմ յատակագիծս չեմ կրնար փոխել քանի մը ձիաւորներու համար։

Սակայն և այնպէս, տխրութիւնները և հրամանները կը շարունակէին. բանակին մէջ սպաները չէին դադրեր դիտողութիւններ ընելէ։ Մինակ զինուորները, զօրավարին ուրախութենէն խանդավառուած էին, որովհետև անիկա կը պտըտէր շարքերուն մէջ, զանոնք կը քաջալերէր, և անոնց կը բացատրէր Բրուսիացիներուն տագնապալից կացութիւնը. այս կերպով զինուորները համբերատարութեամբ կը տոկային անձրեւներուն և զրկանքներուն։ Անգամ մը, Քէլլէրման ուզեց մեկնիլ, և պէտք եղաւ որ Տիւմուրիէ խոստանայ իր բանակին վրանները քակել, եթէ որոշ թուով օրերու մէջ Բրուսիացիները չնահանջէին։

Զինակիցներու գեղեցիկ բանակը արդարև ողբալի վիճակի մէջ կը գտնուէր. անիկա կը փճանար սովէն, եւ մանաւանդ՝ թանչքի սարսափելի հետեւանքներէն։ Տիւմուրիէի տրամադրութիւնները այդ մասին շատ զօրեղապէս նպաստած էին. բանակին յառաջակողմի հրացանաձգութիւնները անօգուտ կը համարուէին, որովհետև ոևէ արդիւնքի չէին յանգեր. այս պատճառաւ երկու բանակներն ալ որոշեցին զանոնք դադրեցնել։ Բայց Տիւմուրիէ պայման դրաւ որ միայն բանակին ճակատին վրայ կատարուած հրացանաձգութիւնը դադրի։



ՄԱՅԵԱՑԻ ԱՀԱՐԵԿԻՉ ԱՏԵԱՆԸ

Անմիջապէս, իր բոլոր հեծելազօրքերը արձակեց, մանաւանդ՝ Նորագիրները, և զանոնք ղրկեց շրջակայ երկիրներուն մէջ, որպէս զի թշնամիին հասած պաշարներուն ճամբան կտրեն. անոնք Կրան-Բրէի անցքէն անցնելով և մեր Նահանջի գծին հետևելու համար Էն գետը բարձրանալով ստիպուած էին մի և նոյն դարձուածքները ընել տալ իրենց պաշարներու կարաւանին:

Մեր հեծելազօրքերը համ առած էին այս հարստացնող պատերազմէն և մեծ յաջողութեամբ յառաջ կընթանային: Սեպտեմբերի վերջին օրերը հասած էին. Բրուսիական բանակին մէջ հիւանդութեանց գործած աւերը այլ ևս անտանելի կը դառնար, սպաներ ղըրկուած էին Ֆրանսական բանակը, որպէսզի բանակցութեանց սկսին: Նախ և առաջ, խնդիր եղաւ միայն պատերազմական գերիները փոխանակել. Բրուսիացիները պահանջք ըրին այդ փոխանակութեամբ նպաստաւորել նաև տարագիրները, բայց մերժման բախեցան: Երկու կողմէն ալ մեծ քաղաքավարութեամբ վարուեցան: Պատերազմական գերիներու փոխանակութեան խնդրէն խօսակցութիւնը տարուեցաւ պատերազմի չարժառիթներուն վրայ, և Բրուսիացիները գրեթէ խոստովանեցան՝ որ պատերազմը անքաղաքագիտական բան մըն էր: Տիւմուրիէի նկարագիրը այս տեղ ամբողջովին երևան եկաւ կրկին: Այլևս պատերազմ մղելու առիթ չունենալով, Բրուսիոյ թագաւորին համար յիշատակագիրներ կը պատրաստէր, և անոր կ՚ապացուցանէր թէ որքա՛ն քիչ նպաստաւոր էր իրեն համար՝ միանալ

Աւստրիոյ՝ ընդդէմ Ֆրանսայի։ Միեւնոյն ժամանակ, անոր ղրկեց 6 քիլօ խահուէ, այսինքն՝ երկու բանակատեղիներուն մէջ միացած ամբողջ խահուէն։ Իր յիշատակագիրները, որոնք չէին կրնար չգնահատել, այնուամենայնիւ շատ գէշ ընդունելութիւն մը գտան, և այդպէս ալ պէտք էր ըլլար։ Ցանուն Բրուսիոյ Թագաւորին Պրունսվիք պատասխանեց տասնեինին չափ դուռող յայտարարութեամբ մը, և բոլոր բանակցութիւնները խզուեցան։ Ժողովը, որուն խորհուրդ հարցուցած էր Տիւմուրիէ, պատասխանեց Հռոմէական Ծերակոյտին պէս թէ թշնամիին հետ այն ժամանակ միայն պիտի բանակցէին, երբ անիկա դուրս ելած ըլլար Ֆրանսայէն։

Այս բանակցութիւնները միայն սա արդիւնքը ունեցան որ զօրավարը զրպարտութեան տակ ինկաւ և այդ ժամանակէն սկսեալ կասկածեցան իր վրայ, թէ արտասահմանի հետ գաղտնի յարաբերութիւններ ունի. այս կերպով իր վրայ հրաւիրեց գոռոզ Թագաւորի մը ձեւակերպական արհամարհանքը և պատերազմին հետեւանքներուն արժէքը նուազեցուց։ Բայց Տիւմուրիէ այնպիսի մէկն էր որ, քաջութեան ամէն տեսակները և խելացութեան բոլոր եղանակները ունենալով հանդերձ, իրեն կը պակսէր այն պատկառելի ու արժանայարգ հանգամանքը, որ մարդոց վրայ տիրապետութիւն կը գործէ, մինչ տաղանդը միայն կը գրաւէ զանոնք։ Սակայն և այնպէս ինչպէս նախատեսած էր Ֆրանսացի զօրավարը, Հոկտեմբեր 1 էն սկսեալ Բրուսիացիները սովին և հիւանդութեանց չկարենալով դիմանալ, սկսան բանակնին վերցնել։

Այս բանը Եւրոպայի մէջ մեծ զարմանք պատճառեց, շատ մը խօսքեր և ենթադրութիւններ ըրին, երբ տեսան որ այսքան հզօր և գովաբանուած բանակ մը գլուխը ծռած կը քաշուի այդ գործաւորներուն և ընդվզած միջակորեարին առջեւէն, որոնք իբր թէ թմբկահարութեամբ իրենց քաղաքները պիտի դարձուէին, և անկէ դուրս ելած ըլլալնուն համար պիտի պատժուէին։ Բրուսիացիներուն ետեւէն հալածանքը շատ տկար ըլլալուն, և Արկօնի կիրճերէն կրկին անցած ատեննին անոնց անպատիժ մնալը ենթադրել տուաւ թէ՝ գաղտնի համաձայնութիւններ կան, եւ մինչեւ իսկ սակարկութիւն մը եղած է Բրուսիոյ Թագաւորին հետ։ Զինուորական իրողութիւնները, բոլոր այս ենթադրութիւններէն աւելի պիտի բացատրեն զինակից բանակներու նահանջը։

Այսքան թշուառ դիրքի մը մէջ մնալը կարելի չէր։ Նուաճելը անժամանակ դարձած էր, ա՛յնքան յառաջացած եւ գէշ եղանակի մը մէջ։ Ուրեմն միակ միջոցը քաշուիլն էր դէպ ի Լիւքսէմպուրկ և Լօռէն, և զայն ընել գործողութեանց ամուր կռուան մը, յաջորդ տարի կռիւը վերսկսելու համար։ Բաց աստի, տեղի կայ կարծելու թէ՝ այդ միջոցին Ֆրէտէրիք Կիյեօմ կը մտածէր Բոլոնիայէն իր բաժինը բրցնել, որովհետեւ այն ժամանակ է որ այդ Թագաւորը, Բոլոնիացիները Ռուսիոյ եւ Աւստրիոյ դէմ գրգռելէ յետոյ կը պատրաստուէր բաժնել անոնց կողոպուտը։ Այսպէս, եղանակին և տեղին վիճակը, վիժած ձեռնարկի մը դէմ զգացուած զզուանքը, Ֆրանսայի դէմ Աւստրիոյ արքունիքին հետ միացած ըլլալու զղջումը, և վերջապէս հիւսիսի մէջ երեւան ելած նոր շահեր բաւականաչափ շարժառիթներ էին Բրուսիոյ Թագաւորին համար որ վճռէ նահանջել։

Այդ նահանջը կատարուեցաւ մեծ կարգապահութեամբ, որովհետեւ, այդ թշնամին, որ կը հալածէր մեկնիլ, դեռ բաւական զօրաւոր էր։ Ուզել՝ որ անոր նահանջի գիծերը կտրեն, և զայն բռնադատել որ յաղթութեան մը միջո-

ցով ինքզինքին ճամբայ բանայ, պիտի ըլլար այնպիսի անխոհեմութիւն մը, զոր Տիւմուրիէ չպիտի գործէր: Պէտք էր բաւականանալ թշնամին նեղելով, և ահա ճիշդ այս բանը ըրաւ տկար գործունէութեամբ մը, թէ՛ իր և թէ Քէլլէրմանի յանցանքին բերմամբ:

Վտանգը անցած էր, արշաւանքը աւարտած, և ամէն ոք ինքզինքին և ծրագիրներուն վերադարձած էր: Տիւմուրիէ կը խորհէր Հոլանտայի մէջ ընելիք իր ձեռնարկին վրայ, Քէլլէրման՝ Մէցի հրամանատարութեան մասին, այնպէս որ Բրուսիացիները հալածելու գործը երկու զօրավարներուն կողմէ ալ չարժանացաւ այն ուշադրութեան, որուն արժանի էր: Տիւմուրիէ՝ զօրավար տ'Արվիյը Շէն Բօբիւլէօ ղրկեց, տարագիրները պատժելու համար, հրամայեց զօրավար Միացինսքիի, իրենց սպասել Ապէնէյի մէջ՝ անցքին բերանը, զանոնք շուտով բնաջինջ ընելու համար. Շազօն փութով ղրկեց մի և նոյն կողմը Լօնվիի ճամբան գրաւելու համար. զօրավարներ՝ Պէօրնօնվիյը, Սթէնժէլը և Վալանսը, աւելի քան 25,000 հոգիով զետեղեց բրուսիական բանակին ետեւները, որպէս զի զայն եռանդով հետապնդեն, և մի և նոյն ժամանակ հրաւիրեց Տիյօնը, որ միշտ Իլէդ մնացած էր մեծ յաջողութեամբ, յառաջանալ Քլէրմօնէն և Վառէնէն, որպէս զի Վէրտէօնի ճամբան կտրէ:

Անտարակոյս, ձեռք առնուած այս միջոցները շատ աղէկ էին, բայց պէտք էր որ զօրավարը ինքը անձամբ ի գլուխ հանէր զանոնք. անիկա պարտաւոր էր, Պ. Ժօմինիի շատ ճիշդ և բարձր դատողութեան համաձայն, ուղղակի Հռենոսի վրայ յարձակիլ, և յետոյ իր ամբողջ բանակին հետ գետն ի վար իջնել: Յաջողութեան այդ վայրկեանին, իր առջև ամէն ինչ տապալելով, մէկ քայլով կրնար նուաճել Պելճիգան, բայց անիկա միտքը դրած էր Բարիզ գալ, եւ արշաւանք մը կազմակերպել Լիլի ճամբով:

Միւս կողմէ, Սթէնժէլ, Պէօրնօնվիյ և Վալանս, երեք զօրավարները իրար շատ աղէկ չհասկցան և շատ տկարութեամբ հալածեցին Բրուսիացիները: Վալանս, որ կախում ունէր Քէլլէրմանէն, յանկարծ հրաման ստացաւ անմիջապէս գալ և միանալ իր զօրավարին, Հալօնի մէջ, որպէս զի Մէցի ճամբան բռնէ: Պէտք է ըսել թէ այս շարժումը շատ տարօրինակ կերպով յղացուած էր, քանի որ Քէլլէրմանը կը տանէր դէպ ի ներսերը, այնուհետև Լօրէնի սահմանագլուխին ճամբան բռնելու համար: Բնական ճանապարհն էր ընթանալ Վիթրիէն կամ Քլէրմօնէն, և անիկա համաձայն էր Բրուսիացիներու ետեւէն հալածանքին՝ այն ձեւով, որ Տիւմուրիէ հրամայած էր:

Հազիւ թէ Քէլլէրման իմացաւ Վալանսի տրուած հրամանը, զայն հրաւիրեց իր ճամբան շարունակել՝ ըսելով թէ, այնքան ատեն որ կը տեւէր հիւսիսային և կեդրոնական բանակներուն գործակցութիւնը, գերագոյն հրամանատարութիւնը միմիայն իրեն կը պատկանէր:

Այս մասին Քէլլէրմանի հետ բաղխում մը ունեցաւ. այս վերջինը իր առաջին որոշման յանգեցաւ կրկին և հաւանեցաւ ճամբայ ելլել Սէնդ-Մինըհուլտէն և Քլէրմօնէն: Սակայն և այնպէս, դարձեալ հալածանքը շատ թուլութեամբ կատարուեցաւ: Մինակ Տիյօն նեղեց Բրուսիացիները, եռանդուն կռուով եւ այնքան խանդավառութեամբ անոնց ետեւէն ինկաւ, որ քիչ մնաց կռիւի պիտի բռնուէր հետերնին:

Զօրավարներուն միջև տիրող անհամաձայնութիւնը, և վտանգին անցնելէն ետք անոնց վայելած անձնական ժամանցները անտարակոյս միակ պատճառը եղաւ այն բանին, որ Բրուսիացիներուն թոյլադրեց այնքան դիւրին

նահանջ մը ընել։ Ըսողներ եղան թէ անոնց մեկնումը կաշառքով կատարուեցաւ, թէ անիկա վճարուած էր հասոյթովը մեծ գողութեան մը, որուն մասին պիտի խօսինք քիչ յետոյ, թէ այդ նահանջին մասին Տիւմուրիէի հետ համաձայնութիւն գոյացած էր, եւ թէ սակարկութեան պայմաններէն մին էր Բրուսիացիներուն աղատ մեկնումը. վերջապէս կ'ըսէին թէ, Լուդովիկոս ԺԶ. այդպէս ուզած էր իր բանտին խորէն։

Արդէն տեսանք թէ, այս նահանջը բնական չարժառիթներով ըստ բաւականի կը բացատրուի. բայց դեռ ուրիշ շատ մը պատճառներ կ'ապացուցանեն եղած ենթադրութեանց անհեթեթութիւնը։ Օրինակի համար, հաւատալի բան չէ որ թագաւոր մը, որ գծուած ընչաքաղցութեան մոլութիւնները չունէր, թոյլ տայ որ զինքը կաշառեն. մարդ չի հասկնար թէ ինչո՞ւ համար, համաձայնութեան մը պարագային Տիւմուրիէ չպիտի կրնար ինքզինքը արդարացնել յաչս զինուորականներուն, թշնամին հալածած չըլլալուն համար, խոստովանելով թէ՝ համաձայնութիւն մը կնքուած է, որուն մէջ ոչինչ կար իրեն համար ամօթալի։ Վերջապէս՝ թագաւորին սենեկապանը՝ Քլէրին կը վստահացնէ թէ Լուդովիկոս ԺԶ.ի առ Ֆրէտէրիք Կեյեօմ ուղղած ենթադրեալ նամակին մէջ այդպէս բան մը չկար։ Ուրեմն բոլոր ասոնք ստութիւններ են, և միացեալ բանակներուն նահանջը պարզապէս արդիւնքն էր պատերազմի բընական հետեւանքին։

Տիւմուրիէ, հակառակ իր սխալներուն ու Կրան-Բրէի մէջ անցուցած ժամանցներուն, հակառակ՝ նահանջի միջոցին իր ցոյց տուած անփութութեան, կրկին եղաւ Ֆրանսայի աղատարարը և փրկիչը յեղափոխութեան մը, որ թերեւս քանի մը դար առաջ տարաւ Եւրոպան։ Ինքն է որ, կազմալուծուած, կարկամոտ, դիւրագրգիռ բանակի մը գլուխն անցնելով, անոր տուաւ միութիւն եւ հաւատք, ամբողջ այդ սահմանագլուխին վրայ հաստատելով միութիւն եւ կորով, եւ երբէք չյուսահատեցաւ ամենէն աղէտալի պարագաներուն մէջն անգամ, իր չարքերուն պարտութենէն ետք, անլուր պաղարիւնի օրինակը տալով, հաստատ մնաց իր ժամանակ չահելու սկզբնական գաղափարներուն վրայ, հակառակ վտանգին, հակառակ իր բանակին եւ կառավարութեան, այնպիսի ձեւով մը, որ կ'ապացուցանէ իր դատողութեան և նկարագրին կորովը։ Ինքն է որ, կ'ըսենք, աղատեց մեր հայրենիքը օտարներէն և հակայեղափոխական զայրոյթէն, ու ա՛յնքան վսեմ օրինակը տուաւ մարդու մը, որ կ'աղատէ իր հայրենակիցները, հակառակ անոնց։ Յաղթանակը, որքան ալ տարածուն ըլլայ, ո՛չ աւելի գեղեցիկ, եւ ոչ ալ աւելի բարոյական է։

## ՎԵՐՋ ՈՒԹԵՐՈՐԴ ԳԻՐՔԻ

# ԻՆՆԵՐՈՐԴ ԳԻՐՔ

## ԱԶԳԱՅԻՆ ՔՈՆՎԱՆՍԻՈՆԸ

*Վերսայլի բանտարկեալներուն նոր կոտորածը. — Իշխանութեան զեղծում եւ Համայնքային Խորհուրդին վատնումները. — Քոնվանսիոնի երեսփոխաններուն ընտրութիւնը. — Բարիզի պատգամաւորութեան կազմը. — Ժիրոնտեններուն դիրքն ու ծրագիրները, այս կուսակցութեան պետերուն նկարագիրը. դաշնակցականութեան մասին. — Բարիզեան կուսակցութեան եւ քաղաքապետութեան վիճակը. — Ազգային Քոնվանսիոնի բացումը՝ 1792 Սեպտ. 20 ին. Թագաւորութեան բեկանումը. Հանրապետութեան հաստատումը. — Ժիրոնտեններուն եւ Մոնթանեարներուն միջեւ. Ռոպեսպիեռի եւ Մարայի ամբաստանութիւնները. — Հանրապետութիւնը մի եւ անբաժանելի կը հռչակուի. — Քոնվանսիոնի մէջ կուսակցութեանց բաժանումը եւ ոյժը. — Գործադիր իշխանութեան մէջ փոփոխութիւններ. — Տանթոն կը թողու Դատէիճը. — Զանազան վարչական յանձնաժողովներ եւ Սահմանադրութեան Յանձնախումբ մը կը կազմուին։*

Մինչ Ֆրանսական բանակները կը կասեցնէին զինակիցներուն յառաջխաղացումը, Բարիզ կը գտնուէր չարունակական իրարանցումի և չփոթութեան մէջ։ Արդէն գիտենք թէ Համայնքային Խորհուրդը ի՛նչ ծայրայեղութեանց մէջ ինկաւ, թէ որքան երկար տեւեցին Սեպտեմբերի վայրագութիւնները, և թէ այդ աղէտալի օրերու միջոցին իշխանութիւնք ու ոստիկանութիւնը որքա՛ն անգործ կեցան։ Տեսանք արդէն որ Քաղաքապետարանի հսկողութեան յանձնաժողովը որպիսի յանդգնութեամբ պարծենցաւ կոտորածներ սարքած ըլլալուն, և հրաւէր ուղղեց Ֆրանսայի միւս համայնքներուն՝ իր օրինակին հետեւելու։

Սակայն և այնպէս, Համայնքային Խորհուրդի կողմէ ղրկուած պատգամաւորները ամէն կողմէ մերժումի բաղխեցան, որովհետեւ Ֆրանսան չէր բաժներ այն կատաղութիւնը, զոր գրգռած էր վտանգը՝ մայրաքաղաքին մէջ։

Բայց Բարիզի չրջականները կատարուած բոլոր սպաննութիւնները մինակ անոնք չեն, որոնց պատմութիւնն ըրինք։ Այս քաղաքին մէջ կազմուած էր մարդասպաններու խմբակ մը, որ արիւնին վարժուած էր Սեպտեմբերի կոտորածներուն չնորհիւ, և որ տակաւին նոր արիւն թափելու պէտք ունէր։ Քանի մը հարիւր հոգի մեկնած էին Օրլէանի բանտերէն դուրս քաշելու համար այն մարդիկը, որոնք պետութեան դէմ գործած ըլլալու յանցանքով ամբաստանուած էին։

Այս դժբաղդները, նոր հրամանագրի մը համաձայն, պիտի տարուէին Սօմիւր։ Սակայն և այնպէս, ճամբան փոխուեցաւ իրենց երթալիք տեղը, անոնք դէպ ի Բարիզ ճամբայ հանուեցան։ Սեպտեմբեր 9 ին լուսցաւ որ 10ին Վէրսայլ կը ժամանեն։ Անմիջապէս, կա՛մ մարդասպաններուն նոր հրահանգներ տրուած ըլլալով և կամ այս բանտարկեալներուն ժամանման լուրը

բուական ըլլալով արթնցնելու իրենց արիւնռուշտ զգացումները, անոնք Վերսայլի վրայ խուժեցին Սեպտ. 9 ին և 10 ին։ Անմիջապէս լուր տարածուեցաւ թէ նոր կոտորածներ տեղի պիտի ունենան։

Վերսայլի քաղաքապետը ամէն նախազգուշական միջոց ձեռք առաւ նոր դժբաղդութեանց առաջքն առնելու համար։ Ոճրագործ ատեանի նախագահը Բարիզ վազեց դատական նախարարին իմաց տալու թէ բանտարկեալները ի՞նչ վիճակի մէջ են, բայց սա պատասխանը միայն ստացաւ. «Այդ մարդիկը շատ յանցաւոր են։»

— Լա՛ւ, յարեց նախագահ Ալքիէ, բայց միայն օրէնքը պէտք է ըլլայ անոնց դատաւորը։

— Է՛հ, գոչեց Տանդոն անհարկու ձայնով մը, չէ՞ք տեսներ թէ ձեզի ուրիշ կերպ պիտի պատասխանէի, եթէ կարենայի։ Ձեզի ի՞նչ այդ բանտարկեալները. ձեր պաշտօնին գլուխը դարձէք, և այլեւս անոնցմով մի՛ զբաղիք։

Յաջորդ օրը, բանտարկեալները Վերսայլ ժամանեցին. մեծ թուով անծանօթ մարդիկ յարձակեցան կառքերուն վրայ, յաջողեցան զանոնք շրջապատել և բաժնել պահակազօրքէն, հրամանատար Ֆուրնիէն ձիէն վար գլտորեցին, քաղաքապետը առեւանգեցին, մինչ անիկա անձնուիրօրէն կ'ուզէր ինքզինքը սպաննել իր պաշտօնատեղին մէջ, և յետոյ կոտորեցին տարաբաղդ բանտարկեալները, որոնք 52 հատ էին։ Հոն մեռան Տըլէսար և Տապանքուռ, որոնք իբր նախարար ամբաստանուած էին, և Պրիսաք՝ իբր սահմանադրական պահակազօրաց պետը, որ Օրէնսդիր Ժողովի որով պաշտօնէն արձակուած էր։

Այս կոտորածներէն անմիջապէս յետոյ, մարդասպանները վազեցին քաղաքին բանտերը և Սեպտեմբերի առաջին օրերուն տեսարանները վերանորոգեցին, գործածելով յար և նման միջոցներ, և Բարիզի մէջ եղածին նման դատական ձեւեր ի գործ դնելով։ Այս վերջին դէպքը, որ առաջինէն 5 օր ետք տեղի ունեցաւ, ընդհանուր սոսկում մը սփռեց։ Բարիզի մէջ հսկողութեան յանձնախումբը իր գործունէութիւնը չդանդաղեցուց բնաւ, մինչ բանտերը կը պարպուէին կոտորածներուն բերմամբ, սկսան կրկին լեցնել զանոնք, ձերբակալման նոր հրահանգներ արձակելով։ Այդ հրամանագիրները այնքան մեծ թուով էին, որ ներքին գործոց նախարարը՝ Ռոլան, Ժողովին հաղորդելով այս կամայական նոր արարքները, կրցաւ Ժողովի սեղանին վրայ զետեղել 5—600 հրամանագիրներ, որոնցմէ մէկ քանին ստորագրած էր միակ անձ մը, իսկ ուրիշներ՝ երկու երեք անձեր, և մեծ մասամբ պատճառաբանեալ չէին, ու շատերն ալ հայրենիքը չսիրելու պարզ կասկածով ձերբակալուած էին։

Մինչ քաղաքապետարանը իր ազդեցութիւնը ի գործ կը դնէր Բարիզի մէջ, միւս կողմէ պատգամաւորներ կը ղրկէր գաւառները, իր ընթացքը արդարացնելու համար և խորհուրդ տալու որ իրեն հետեւին, իր նախընտրած թեկնածուները երեսփոխանութեան յանձնարարելու համար և դատապարտելու զանոնք որ Օրէնսդիր Ժողովին մէջ իրեն դէմ եղած էին։ Ասկէ զատ, Քաղաքապետարանը մեծ քանակութեամբ դրամ ձեռք ձգած էր, թագաւորին անձնական գանձուն գանձապահին քով գտնուած գումարները գրաւելով, եկեղեցիներուն արծաթեայ առարկաները իւրացնելով և տարագիրներուն ճոխ կահկարասին յափշտակելով, սա պատրուակով որ բանակին պէտքերուն և օգնութեան սնտուկին դրամ պէտք է։ Բարիզի բանտերուն մէջ և Վերսայլի ճամբուն վրայ խողխողուած բոլոր դժբաղդներուն գոյ-

քերը գրաւուեցան և հոլովոյթեան յանձնախումբին ընդարձակ սրահներուն մէջ զետեղուեցան։

Քաղաքապետարանը երբէ՛ք չուզեց մէջտեղ հանել ո՛չ այս առարկաները, ո՛չ ալ անոնց արժէքը. մինչեւ իսկ այս մասին իրեն ուղղուած հարցումներուն պատասխան չտուաւ, թէ՛ ներքին գործոց նախարարութեան և թէ գաւառային վարչութեան մէջ, որը, ինչպէս յայտնի է, վերածուած էր հարկահաւաքութեան պարզ յանձնաժողովի մը։ Քաղաքապետարանը ուղղին ալ բրաւ, և սկսաւ իր կամքին համաձայն ծախել մեծ շէնքերու կահկարասիները, որոնց վրայ կնիք դրուած էր տէրերուն մեկնումէն ի վեր։ Ի զուր գերադաս իշխանութիւնը արգելք կը յարուցանէր. հրամանները գործադրելու սահմանուած բոլոր ստորադաս պաշտօնեաներու դասակարգը կա՛մ Քաղաքապետարանին կը պատկանէր և կամ շատ տկար էր ու գործ մը չէր կրնար տեսնել։ Այս կերպով հրամանները գործադրող չէր ըլլար։

Ազգային պահակազօրքը, զինեալ խումբեր անուան տակ վերակազմուած և ամէն տեսակ մարդոցմով լեցուած, կատարեալ կազմալուծման մը մէջ էր, յաճախ անձնատուր կ'ըլլար գէշ արարքներու, երբեմն ալ զանցառութեամբ գէշութիւններ կը գործէր։ Պահականոցները բոլորովին երեսի վրայ ձգուած էին, որովհետեւ պահակ զինուորները, չնորոգուելով մինչեւ իսկ 48 ժամուան ծառայութենէ մը վերջ, զզուանքով և յոգնած կ'ելլէին կ'երթային։ Բոլոր խաղաղաբարոյ քաղաքացիները լքած էին այս պահակախումբը, որ դեռ քիչ ժամանակ առաջ այնքան կանոնաւոր, այնքան օգտակար էր, և Սանդէռ, որ անոր հրամանատարն էր, շատ տկար և քիչ մտացի էր, այնպէս որ չէր կրնար վերակազմել զայն։

Ուրեմն, Բարիզի ապահովութեան գործը յանձնուած էր դիպուածին, և մէկ կողմէ Համայնքային Խորհուրդը, միւս կողմէ ամբոխը, կարող էին ամէն ձեռնարկ կատարել։ Թագաւորութեան բեկորներուն մէջ ամենէն թանկագինները, և հետեւաբար ամենէն ցանկացուածները անոնք էին որ կը գտնուէին Կարտ Մէօպլի մէջ (Արքայական Հանդերձարանի) այդ ճոխ մթերանոցը բոլոր առարկաներուն, որոնք առանձինք դահուն զարդերը կը կազմէին։ Օգոստոս 10էն ի վեր, այս մթերանոցը ամբոխին ընչաքաղցութիւնը գրգռած էր, և քանի քանի առիթներով, հաստատութեան վերատեսուչը սյէսը ստիպուած էր հսկողութիւնը կրկնապատկել։ Անիկա կրկին և կրկին խնդրած էր որ բաւականաչափ պահակազօրք տրուի իրեն, բայց, ըլլա՛յ տիրող անկանոնութիւններէն, ըլլա՛յ բոլոր պահականոցներուն բաժնելու դժուարութենէն, կամ վերջապէս՝ կամաւոր զանցառութեան հետեւանքով երբէք իրեն չտուին ուզած զինուորները։

Սեպտեմբեր 16ի գիշերը Կարտ Մէօպլի մէջ գողեր մտան և անոր պարունակածներուն մեծ մասը ինկաւ անծանօթ ձեռքերու մէջ. այս նոր դէպքը վերագրեցին այն մարդոց, որոնք գաղտնապէս հրամայած էին կոտորած սարքել։ Սակայն և այնպէս, այլեւս ո՛չ մոլեռանդութենէ և ոչ ալ արիւնռուշտ քաղաքականութենէ մը գրգռուած էին, և ենթադրելով որ իրենց գողութեան շարժառիթը յայտնի է, Քաղաքապետարանի մթերանոցներուն մէջ բաւականաչափ բան ունէին արդէն, իրենց մեծամեծ փառասիրութիւնը գոհացնելու համար։ Արդարեւ, ըսողներ կան թէ այս գողութիւնը ըրին, որպէս զի Բրուսիոյ Թագաւորին կարենան դրամ տալ և անիկա նահանջէ. բայց ասիկա անհեթեթ խօսք մըն

է. ըսին նաեւ թէ կուսակցական ծախքերը ճարելու համար, ինչ որ աւելի հաւանական է, բայց ոչ մէկ կերպով ապացուցուած է։

Մնաց որ Համայնքային Խորհուրդները եւ իրենց պետերը դատած ատեններս պէտք է քիչ ազդուիլ Կարա-Մէօպլէի կողոպուտէն։ Թէեւ նուազ ճշմարիտ չէ որ անսահման արժէքաւոր առարկաներու աւանդապահը ըլլալով՝ Համայնքային Խորհուրդը երբեք ոեւէ հաշիւ չտուաւ անոնց մասին. թէ՝ դարաններու վրայ դրուած կնիքները խորտակուեցան, առանց որ կղպանքները բանի բացուած ըլլային, ինչ որ առարկաներուն վերցուած ըլլալը կը յայտնէ եւ բնա՛ւ ժողովրդային թալան մը, եւ թէ՛ այնքան թանկագին առարկաներ ս. ռ. յաւէտ աներեւութացան։ Մաս մըն ալ անամօթաբար գողցուեցան ստորադասներէ, ինչպէս Սէրժան, որ Ակատ կ՚անուանուէր, թանկագին գոհարեղէնի մը պատճառաւ զոր իւրացուցած էր։ Ուրիշ մաս մը ծառայից համայնքին հաստատած բացառիկ կառավարութեան ծախքերուն։ Ասիկա հին ընկերութեան դէմ մղուած կռիւ մըն էր եւ ամէն կռիւ կը պղծուի սպանութեամբ եւ թալանով։

Այս էր Բարիզի կացութիւնը այն միջոցին ուր Ազգային Քօնվանսիօնի ընտրութիւնները կ՚ըլլային։ Այս Նոր Ժողովէն էր որ պարկեշտ քաղաքացիները, կարգ ու կանոնը վերահաստատելու համար անհրաժեշտ ուժը եւ կորովը կը սպասէին. կը յուսային որ Օգոստոս 10էն ի վեր անցած խառնակութեան եւ ոճիրներու 40 օրերը, յեղափոխութեան մէկ արկածը պիտի ըլլար միայն, ցաւալի բայց անցաւոր արկած։ Նոյն իսկ Օրէնսդիր Ժողովին այնքան թուլութեամբ մասնակցող երեսփոխանները իրենց կորովը կը պահէին ընտրութեանց աւարտումին այդ Քօնվանսիօնին, որուն վրայ բոլոր կուսակցութիւնները դրած էին իրենց յոյսերը։

Ամբողջ Ֆրանսայի մէջ ընտրութեանց համար յիրար անցած էին։ Ակումբները այդ մասին մեծ ազդեցութիւն մը կը գործէին։ Բարիզի Ժաքօպէնները տպել եւ ցրուել տուած էին Օրէնսդիր Ժողովի նստաշրջանին տրուած բոլոր քուէներուն ցանկը, որպէս զի ընտրողները անո՛նք մտաջնորդուին։ Այն երեսփոխանները, որոնք ժողովրդական կուսակցութեան փափաքած օրէնքներուն դէմ քուէ տուած էին, եւ մանաւանդ անոնք որ Լաֆայէթը անպարտ հռչակած էին, մանաւորապէս մատնանշուած էին։ Այլ սակայն գաւառներու մէջ ուր դեռ մայրաքաղաքին պառակտումները չէին թափանցած, Ժիրօնտէնները, նոյն իսկ անոնք, որ ամենէն աւելի զզուելի էին Բարիզի խառնակիչներուն, կ՚ընտրուէին իրենց ծանօթ ընդունակութեանց պատճառաւ։ Գրեթէ բոլոր անդամները Նոր Ժողովին վերընտրուած էին։ Շատ մը սահմանադիրներ, զորս հրամանագրով մը առաջին Օրէնսդիր Ժողովը վերընտրելի չէր ըրած, կոչուեցան այս Քօնվանսիօնին անդամակցելու։ Ի մէջ այլոց կը տեսնուէին Պիւզօ եւ Բէդիօն։ Նոր անդամներուն մէջ բնականաբար կ՚երեւային այն մարդիկը, որ իրենց մասնաճիւղերուն մէջ նշանաւոր դարձած էին իրենց կորովով եւ խանդավառութեամբ, կամ այն գրողները, որոնք, ինչպէս Լուվէ, ինքզինքնին իրենց տաղանդով ծանօթ դարձուցած էին մայրաքաղաքին եւ գաւառներուն մէջ։

Բարիզի մէջ, այն բուռն խռովարարներու խումբը, որ Օգոստոս 10էն ի վեր կը տիրապետէր, ընտրութեանց տէրը դարձաւ եւ իր նախասիրած բոլոր մարդիկը առաջ քշեց։ Ռօպէսպիէռ, Տանդօն, առաջին ընտրուածները եղան։



ՕՐԻՈՐԴ ՍՕՆՊՐԷՕՅԼ ԴԱՀԻՃՆԵՐՈՒՆ ՁԵՌՔԸ

*Ժաքօպէնները և Համայնքային Խորհուրդը այս լուրը ընդունեցան ծափահարութիւններով։ Անոնցմէ նաքը ընտրուեցան Քամիյ Տէմուլէն, որ իր գրութիւններով հռչակուոր էր, Տավիտ՝ իր նկարներով, Ֆապրը տ'Էկլանդին իր երգիծական գրուածքներով, և այն կա-ր'ւոր մասնակցութեամբը, զոր ունեցած էր յեղափոխական խառնակութեանց մէջ. Լըժանդր, Բանիս, Սէրժան, Պիյեօ-Վարէն, Համայնքային Խորհուրդի մէջ իրենց ունեցած վարմունքով։ Անոնց վրայ աւելցուցին ընդհանուր դատախազ Մանուէլը, Ռօպէսպիէռ՝ Կրտսերը, հռչակաւոր Մաքսիմիլիէնի եղբայրը, Քօլօ - տ'Էրպուա՝ նախկին դերասան, Օրլէանի դուքսը՝ որ հրաժարած էր իր տիտղոսներէն, և կը կոչուէր Ֆիլիփ-Հաւասարութիւն։ Վերջապէս այս բոլոր անուններէն ետք, զարմացումով տեսան վերերևումը ծերունի Տիւսօի, որ 1789ի ընտրողներէն մէկն էր, որ այն-*

քան ընդդիմացած էր ամբոխին կատաղութեանց, որ այնքան արցունք թափած էր ամբոխին ծայրայեղութեանց վրայ և որ վերընտրուեցաւ իբր վերջին յիշատակ 89 ի, և իբր բարի և անմեղ մարդ մը բոլոր կուսակցութեանց համար։ Այս տարօրինակ համախմբումին մէջ կը պակսէր անպատկառ և արիւնարբու Մառան։ Այս արտառոց մարդը իր գրուածքներուն յանդգնութեամբը ապշեցնող բան մը ունէր, նոյն իսկ այն մարդոց համար, որ Սեպտեմբերի օրերը տեսած էին։ Քարուչին Շապօն՝ որ ժաքօպէններու մէջ կ՚իշխէր իր խօսելու եռանդովը և հոն կը ջանար ստանալ այն յաղթանակները, զորս իրեն մերժած էին Օրէնսդիր ժողովին մէջ, ստիպուած եղաւ Մառայի գովասանքը ընելու. և որովհետև ժաքօպէններու քլիւպին մէջ է որ ամէն բան վիճաբանութեան կը դրուէր առաջուընէ, ակումբին մէջ իր ընտրութիւնը առաջարկուած ըլլալով, շուտով իրականացաւ ընտրողական ժողովին մէջ ալ։ Մառա, ուրիշ օրագրող մը՝ Ֆրէրօն և քանի մը անծանօթ անհատներ, այս հռչակաւոր պատգամաւորական մարմինը ամբողջացուցին՝ որ իր մէջ ունենալով վաճառականներ, մսագործ մը, դերասան մը, փորագրիչ մը, նկարիչ մը, փաստաբան մը, երեք կամ չորս գրող, անկեալ իշխան մը, շատ լաւ կը ներկայացնէր Ֆրանսայի անսահման մայրաքաղաքին մէջ եռացող շփոթութիւնը և գոյութեանց զանազանութիւնը։

Երեսփոխանները յաջորդաբար Բարիզ կը ժամանէին եւ հետզհետէ՝ երբ իրենց թիւը աւելի կը մեծնար, եւ այնքան խորունկ սարսափ մը յառաջ բերող օրերը կը հեռանային, կը սկսէին ապահովուիլ, և մայրաքաղաքին անկարգութեանց դէմ ձայն բարձրացնել։ Արկօնի մէջ Տիւմուրիէի ունեցած դիրքը կը նուազեցնէր իրենց վախը թշնամիէն. ազնուականներու դէմ եղած ատելութիւնը գթութեան կը փոխուէր այն օրէն ի վեր՝ ուր Բարիզի և Վէրսայլի մէջ զանոնք այնքան ահռելիօրէն զոհած էին։ Այս խժդժութիւնները, որոնք այնքան մոլորած գնահատողներ, կամ ա՛յնքան երկչոտ քննադատներ ունեցած էին, այս խժդժութիւնները, որ աւելի քստմնելի դարձած էին սպանութեանց վրայ աւելցած թալանով, ընդհանուր դատապարտութեան կ՚արժանանային։

Ժիրոնտէնները, այդքան ոճիրներէ վշտացած և զայրացած այն անձնական թշնութենէն, որուն ենթարկուած էին ամբողջ ամիս մը, աւելի հաստատակամ և աւելի կորովի կը դառնային։ Անոնք տաղանդով և քաջութեամբ փայլելով յաչս Ֆրանսայի, արդարութեան եւ մարդկային զգացումներու կոչ ընելով, անոնք հանրային կարծիքը իրենց կողմը ունենալու էին և արդէն այդ բանով ուժգնօրէն կ՚սպառնային իրենց հակառակորդներուն։

Սակայն և այնպէս, եթէ Ժիրոնտէնները հաւասարապէս ձայն կը բարձրացնէին Բարիզի ծայրայեղութեանց դէմ, չէին զգար և չէին գրգռեր բոլոր այն անձնական թշնամութիւնները, որոնք կը թունաւորէին կուսակցական ատելութիւնները։ Օրինակի համար, Պրիսօ՝ ժաքօպէններու ակումբին մէջ անդադար պերճախօսութեամբ պայքարելով Ռօպէսփիէռի դէմ՝ անոր խորունկ ատելութիւն մը ներշնչած էր։ Պրիսօ իր ընդունակութիւններով և լուսամտութեամբ մեծ տպաւորութիւն յառաջ կը բերէր. բայց ո՛չ բաւական անձնական յարգանք կը վայելէր, ոչ ալ բաւական ճարպիկութիւն ունէր կուսակցութեան պետ ըլլալու համար և Ռօպէսփիէռի ատելութիւնը զայն կը մեծցնէր, անոր այդ դերը վերագրելով։ Երբոր ապստամբութեան նախօրեակին Ժիրոնտէնները նամակ մը գրեցին Պօզի՝ թագաւորին նկարչին, դաշնագրութեան մը

լուրը տարածուեցաւ և յաւակնեցան որ Պրիւսօ, ոսկիով բեռնաւորուած, Լոնտոն պիտի մեկնէր։ Այդպէս բան չի կար. բայց Մառա, որ ամբաստանութիւն մը ընելու համար բաւ կը համարէր ամենէն աննշան և նոյն իսկ ամենէն լաւ հերքուած շշուկները, Պրիսոյի դէմ ձերբակալման հրամանագիր մը հանած էր այն պահուն, որ Օգոստ. 10 ի ենթադրեալ դաւադիրները ընդհանուր բանտարկութեան կ'ենթարկէին։ Այդ բանին վրայ մեծ աղմուկ յառաջ եկաւ և ձերբակալման հրամանը չգործադրուեցաւ։ Բայց դա՛րձեալ Ժաքօպէնները կ'ըսէին որ՝ Պրիսօ Պրիւնսվիքի ծախուած էր. Ռոպէսպիէռ այս բանը կը կրկնէր և կը հաւատար անոր, ա՛յնքան իր ծուռ խելքը տարուած էր յանցաւոր նկատելու զանոնք որ կ'ատէր։ Լուվէ Ռոպէսպիէռի նոյնքան ատելութիւն ներշնչած էր Ժաքօպէններու ակումբին և Լա Սանտինէլ թերթին մէջ Պրիսօյի աջակցելով։ Լուվէ ընդունակութեամբ և յանդգնութեամբ լեցուն՝ ուղղակի կը յարձակէր մարդոց վրայ։ Այն դէմքերու պատկերները, զորս ամէն օր օրագրի մը միջոցաւ կը նկարագրէր ուժեղապէս խայթող ոճով, զայն ամենէն վտանգաւոր և ամենէն ատուած թշնամին դարձուցած էին Ռոպէսպիէռի կուսակցութեան։

Նախարար Ռօլան տհաճոյ եղած էր ամբողջ Ժաքօպէն եւ Համայնքային կուսակցութեան և Սեպտեմբեր 3 ի քաջ նամակովը եւ իր դիմադրութեամբը Համայնքային իշխանութեան ոտնձգութիւններուն. բայց ո և է անհատի հետ մրցակից չըլլալով՝ կարծիքի բարկութիւն մը միայն կը ներշնչէր։ Անձնականապէս միայն Տանդօնը վիրաւորած էր Դահլիճին մէջ, անոր ընդդիմանալով, ինչ որ շատ վտանգաւոր չէր, որովհետեւ ամէն մարդ է աւելի Տանդօնին թշնամութիւնը նուազ վախնալիք բան էր։ Բայց Ռօլանի անձին մէջ գըլխաւորաբար իր կինը կ'ատէին, իր հպարտ, խիստ, քաջասիրտ, սրամիտ կինը, որ իր շուրջը համախմբելով այդ այնքան դաստիարակուած, այդ այնքան փայլուն Ժիրօնտէնները, զանոնք կը խանդավառէր իր նայուածքներով, զանոնք կը վարձատրէր իր համարումով և իր շրջանակին մէջ կը պահպանէր հանրապետական պարզութեան հետ քաղաքավարութիւն մը, որ մութ խաւերու պատկանող և կոպիտ մարդոց խորշելի է։

Արդէն կը ջանային Ռօլանի դէմ ծիծաղելիութեան համբաւ տարածել։ Կ'ըսէին որ իր կինը իր տեղ կը կառավարէր, իր բարեկամները կը վարէր և նոյն իսկ զանոնք կը վարձատրէր իր շնորհներով։ Իր զզուելի լեզուով՝ Մառա զայն կուսակցութեան մոլորակ կոչեց։

Կուատէ, Վէրնիօ, Ժանսօնէ Թէեւ Օրէնսդիր Ժողովին մէջ մեծ փայլ մը ունեցած էին, և ընդդիմադիր եղած էին Ժաքօպէններու կուսակցութեան, դեռ չէին արթնցուցած այն բոլոր ատելութիւնը, զոր աւելի ուշ գրգռած էին։ Կուատէ՝ Լաֆայէթի և արքունիքին դէմ ըրած յանդուգն յարձակումներով նոյն իսկ հաճոյ եղած էր կորովի հանրապետականներուն։ Անիկա, դիւրագրգիռ և առաջ նետուելու փութացող, ամենամեծ խանդավառութենէն՝ ամենամեծ պաղարիւնի մը կ'անցնէր, եւ բեմին վրայ ինքզինքին տէր՝ հոն կը փայլէր իր սրամտութիւնով և շարժումներով։ Այսպէս ուրեմն, ինչպէս բոլոր մարդիկ, սիրելու էր խօսիլը, որուն մէջ այնքան սքանչելի էր, զայն չարաչար կը գործածէր և շատ հաճոյք կ'զգար խօսքով ջախջախելու կուսակցութիւն մը, որ քիչ ատենէն մահուամբ պիտի պատասխանէր իրեն։

Վէրնիօ ալ, ինչպէս Կուատէ, շատ յաջողութիւն չէր գտած բուռն ոգիով մարդոց քով, որովհետեւ արքունիքին դէմ երբէք մեծ եռանդ չէր ցուցներ.

բայց նաև զանոնք վիրաւորելու նուազ ենթարկուած էր, որովհետև իր թուլութեամբ և մեղկութեամբ իր Կուատէ բարեկամէն նուազ կը բաղխէր մարդոց։ Կիրքերը շատ չէին ցնցեր այս ատենաբանը, ինքը թմրած կը մնար կուսակցական գրգռութիւններու մէջտեղ եւ զայն չմղելով մարդոց դէմ, բնաւ զինքը չէին ենթարկեր անոնց ատելութեան։ Սակայն և այնպէս, բնաւ անտարբեր չէր։ Ազնիւ սիրտ մը, գեղեցիկ և պայծառ իմացականութիւն մը ունէր, և իր էութեան դանդաղ հուրքը երբեմն հոն փոխադրուելով, զայն կը տաքցնէր, զայն կը բարձրացնէր մինչև ամենէն վսեմ կորովը։ Անիկա չունէր Կուատէի ակնարկութիւններուն սրընթացութիւնը, բայց կ'ոգեւորուէր բեմին վրայ, ճոխ պերճախօսութիւն մը կը զեղուր հոն և շնորհիւ խօսելու կարողութեան արտակարգ ճկունութեան մը, իր մտածումները կը յայտնէր այնպիսի դիւրութեամբ մը, արտայայտութեանց բեղունութեամբ մը, որոնց ոչ ոք հաւասարած է։ Միրապոյի խօսելու եղանակը իր նկարագրին պէս, անհաւասար եւ զօրեղ էր։ Վէրնիոյինը՝ միշտ պերճ եւ ազնուական, պարագաներուն հետ մեծ և կորովի կը դառնար։ Բայց Ռօլանի կնոջ բոլոր խրախոյսները չէին յաջողեր միշտ արթնցնելու այս ըմբիշը, որ յաճախ մարդոցմէ զզուած, յաճախ ընդդիմադիր իր բարեկամներուն անխոհեմութեանց, մանաւանդ շատ համոզուած չէր խօսքին օգտակարութեանը ուժին դէմ։

Ժանսոնէ՝ շատ ողջախոհ և տրամաբանի, բայց արտայայտելու միջակ դիւրութեամբ մը օժտուած, և միայն կարող՝ լաւ տեղեկագիրներ պատրաստելու, քիչ անգամ դեռ երևցած էր բեմին վրայ. սակայն և այնպէս իր զօրաւոր կիրքերը, յամառ նկարագիրը իր բարեկամներուն մօտ իրեն կ'ընծայէին մեծ ազդեցութիւն, և իր թշնամիներուն մէջ ատելութիւն, որուն՝ նկարագիրը միշտ աւելի կ'ենթարկուի քան թէ տաղանդը։

Քօնտօրսէ որ ժամանակաւ մարքիզ էր և միշտ փիլիսոփայ, բարձր և անաչառ միտք, շատ լաւ դատող իր կուսակցութեան սխալները, քիչ ընդունակ՝ ժողովրդային սարսափելի գրգռութիւններուն, հազուադէպ կերպով ինքզինքը առաջ կը դնէր, դեռ իր հաշւոյն ոչ մէկ թշնամի չունէր, և ինքզինքը կը վերապահէր այն ամէն տեսակ աշխատութեանց, որոնք խորունկ խորհրդածութիւններ կը պահանջէին։ Բիւզօ՝ ողջախոհութեամբ, հոգեկան բարձրութեամբ, քաջութեամբ լի՝ գեղեցիկ դէմքի մը կը միացնէր հաստատուն և պարզ առողջութիւն մը, կիրքերը կ'ենթարկէր իր անձին բոլոր ազնուականութեան ազդեցութեանը, և իր շուրջը ծնունդ կ'առնէր ամենամեծ բարոյական հեղինակութիւն մը։

Պարպառու՝ որ իր համաքաղաքացիներէն ընտրուած էր, Հարաւային Ֆրանսայէն նոր հասած էր իր բարեկամներէն մէկուն հետ, որ իրեն պէս երեսփոխան ընտրուած էր ազգային Քօնվանսիօնին։ Այդ բարեկամը Ռըպէքի կը կոչուէր։ Անիկա քիչ դաստիարակուած, բայց յանդուգն, ձեռներէց մարդ մըն էր և Պարպառուին անձնուէր։ Կը յիշուի որ այս վերջինը կը պաշտէր Ռօլանը և Բէդիօնը, եւ Մառան անհունի խենդ մը կը նկատէր, Ռօպէսփիէռը իբր փառասէր մը, մանաւանդ այն օրէն ի վեր որ Բանիս զայն իրեն առաջարկած էր իբր անհրաժեշտ բռնատէր մը։ Իր բացակայութենէն ի վեր տեղի ունեցած ոճիրներէն ընդվզած Պարպառու կամովին զանոնք կը վերագրէր այն մարդոց, զորս արդէն կ'ատէր և ժամանելուն պէս այնպիսի կորովով մը իր կարծիքը յայտնեց, որ ոևէ հաշտութիւն անկարելի դարձուց։ Իր հոգիով իր բարեկամներէն տարբեր՝ բայց խելքով և դիւրութեամբ

օժտուած, գեղեցիկ, հերոսական, ըսպառնալիքներ չուայլեց և քանի մը օրուան մէջ այնքան ատելութիւն չահեցաւ որքան անոնք որ, Օրէնսդիր մարմնին ամբողջ տեւողութեանը չէին դադրած կարծիքներ և մարդիկ վիրաւորելէ։

Այն անձնաւորութիւնը, որուն շուրջը կը բոլորուէին բոլոր կուսակցութիւնները և որ ընդհանուր համարում մը կը վայելէր, Բէդիոնն էր։ Օրէնսդիր մարմնին իշխանութեան ժամանակ քաղաքապետ ըլլալով, արքունիքին հետ իր ունեցած պայքարով, անսահման ժողովրդականութիւն մը ստացած էր։ Իրաւ է որ Օգոստոս 9ին, Ժողովին մէջ վիճաբանութիւն մը նախընտրած էր կռիւէն. անկէ ի վեր Սեպտեմբերի դէպքերուն հակառակ յայտնուած էր և Համայնքային Խորհուրդէն բաժնուած էր, ինչպէս Պայեի՝ 1790ին. բայց այս հաստատ և լռին դիմադրութիւնը, առանց զինքը գժտեցնելու խռովարարական խումբին հետ զինքը, վտանգաւոր նկատել տուած էր անոր աչքին։ Բէդիոն, լուսամիտ, հանդարտ, քիչ խօսող, չէր ուզած տաղանդով ու և է անձի հետ մրցիլ և ամէն մարդու վրայ, և նոյն իսկ Ռօպէսպիէռի վրայ կը գործէր, ցուրտ, արդար և ամենէն յարգուած բանականութեան մը ազդեցութիւնը. Թէև Ժիրօնտէն համարուած էր, ամէն կուսակցութիւնները իր ընտրութիւնը կ'ուզէին, ամենքն ալ իրմէն կը վախնային և նոր Ժողովին մէջ իր կողմը ունէր ոչ միայն աջակողմը, այլ և բոլոր կեդրոնի զանգուածը և նոյն իսկ շատեր՝ ձախակողմէն։

Այս էր ուրեմն Ժիրօնտէններուն կացութիւնը բարիզեան խռովարարներուն հանդէպ, իրենց կողմն էր ընդհանուրին կարծիքը որ կը մեղադրէր ծայրայեղութիւնները։ Անոնք շահած էին երեսփոխաններուն մէկ մեծ մասը, որոնք ամէն օր Բարիզ կը հասնէին, իրենց կողմը ունէին բոլոր նախարարները, բացի Տանդօնէն, որ յաճախ կը տիրապետէր Դանլիճին, բայց իր ազդեցութիւնը չէր գործածեր անոնց դէմ, վերջապէս իրենց գլուխը կեցած կը ցուցնէին Բարիզի Քաղաքապետը, այդ պահուն ամենէն աւելի յարգուած մարդը։ Բայց Բարիզի մէջ օտար էին, իրենց թշնամիներուն մէջտեղը կը գտնուէին և պէտք էր որ զգուշանային բուռն արարքներէն ստորին դասակարգերու, որոնք իրենց ստորոտը կը խռովուէին, մանաւանդ պէտք էր զգուշանային ապագայի բուռն շարժումներէն, որոնք հետզհետէ պիտի աճէին յեղափոխական կիրքերու հետ։

Առաջին մեղադրանքը զոր ուղղեցին Ժիրօնտէններուն, Բարիզը զոհել ուզելնին էր։ Աւելին անոնց վերագրած էին Լուարէն անդին գաւառներու մէջ ապաստանելու գաղափարը։ Բարիզի՝ իրենց հանդէպ ունեցած յանցանքները 2 և 3 Սեպտեմբերէն ի վեր աւելի մեծ ըլլալով աւելի ևս ենթադրեցին որ դիտաւորութիւն ունին Բարիզը լքելու և յաւակնեցան որ ուզած էին Քօնվանսիօնը ուրիշ տեղ հաւաքել։

Հետզհետէ կասկածները դասաւորուելով աւելի կանոնաւոր ձև մը առին։ Զիրենք կը մեղադրէին որ կ'ուզէին ազգային միութիւնը քանդել, և ութսուն նահանգներէն ութսուն պետութիւն կազմել, որոնք ամենքն ալ իրարու մէջ հաւասար ըլլային և միացած՝ դաշնակցական պարզ կապով մը։ Կ'աւելցնէին թէ այդպէսով կ'ուզէին չքացնել Բարիզի գերադասութիւնը և իրենց յատուկ նահանգներու մէջ անձնական տիրապետութիւն մը ապահովել։ Այդ միջոցին է որ դաշնակցականութեան զրպարտութիւնը երևակայեցին։ Ճիշտ է որ, երբ Ֆրանսա բրուսիական բանակին սպառնալիքին ներքև էր, Ժիրօնտէնները խորհած էին որ ծայրայեղ պարագայի մը տակ պատսպարուէին

հարաւային Ֆրանսայի նահանգներուն մէջ. ճիշդ է նաև որ Բարիզի ծայրայեղութիւնները և բռնութիւնները տեսնելով երբեմն իրենց մտածումը հանդչեցուցած էին նահանգներու վրայ, բայց այդ բանէն՝ դաշնակցական ըէժիմի մը ծրագիրը դեռ շատ հեռաւորութիւն կար։ Եւ արդէն դաշնակցական կառավարութեան մը և միակ ու կեդրոնական կառավարութեան բոլոր տարբերութիւնը կայանալով առաւել կամ նուազ ուժեղութեանը մէջ տեղական իշխանութեանց, այդպիսի գաղափարի մը ոճիրը շատ տարտամ էր, եթէ գոյութիւն իսկ ունէր։ Մնաց որ Ժիրոնտէնները այդ խնդրին մէջ ո՛և է բան չգտնելով ինքզինքնին չէին պաշտպաներ և իրենցմէ շատերը, նեղուած այն անմտութենէն, որով կը հալածէին այդ դրութիւնը, կը հարցնէին վերջապէս, թէ Նոր-Ամերիկան, Հոլանտան, և Զուիցերիան արդեօք աւելի երջանիկ և ազատ չէի՞ն դաշնակցական ըէժիմով և թէ արդեօք մեծ սխալ մը, կամ մեծ յանցա՞նք մըն էր Ֆրանսայի այդպիսի վիճակ մը պատրաստելը։ Մանաւանդ Պիւզօ յաճախ կը պաշտպանէր այս վարդապետութիւնը, և Պրիսօ, որ մեծ հիացող մըն էր Ամերիկացիներուն, զայն կը պաշտպանէր հաւասարապէս, աւելի իբր փիլիսոփայական կարծիք քան իբր Ֆրանսայի համար գործադրելի ծրագիր։ Այս խօսակցութիւնները ընդհանրանալով աւելի կշիռք տուին դաշնակցականութեան զրպարտութեան։ Ժաքօպէններու ակումբին մէջ, դաշնակցութեան հարցը բուռն կերպով մէջտեղ դրին և Ժիրոնտէններու դէմ շատ բուռն զայրոյթներ յառաջ բերին։ Ցաւակնեցան որ անոնք կ'ուզէին յեղափոխական զօրութեան ցանցը քանդել, զայն դրկել այն միութենէն, որ անոր ուժը կը կազմէր եւ ասիկա, ինքզինքնին թագաւոր ընելու համար իրենց նահանգներուն մէջ։

Ժիրոնտէնները իրենց կողմէ պատասխանեցին աւելի իրական մեղադրանքներով, բայց որոնք դժբախտաբար նոյնպէս ծայրայեղ էին, և որոնք իրենց ուժը կը կորսնցնէին իրենց ճշմարտութենէն կորսնցնելով։ Անոնք կը մեղադրէին Համայնքային Խորհուրդը որ գերիշխան դարձած էր, թէ իր բռնաւորութեամբը ոտնակոխ ըրած էր ազգային գերիշխանութիւնը և ինքզինքին վերապահած էր իշխանութիւն մը որ միայն ամբողջ Ֆրանսայի կը պատկանէր։ Անոնք համայնքը կը մեղադրէին որ կ'ուզէ Քոնվանսիոնին տիրել ինչպէս որ ճնշած էր Օրէնսդիր Ժողովը։ Կ'ըսէին որ ազգային պատգամաւորները անոր մէջ նիստ կազմելով, ապահովութեան մէջ չէին և թէ անոնք Սեպտեմբերի մարդասպաններուն մէջ նիստ կազմած պիտի ըլլային։ Կ'ամբաստանէին համայնքը թէ անպատուած էր յեղափոխութիւնը Օգոստոս 10ին յաջորդող քառասուն օրերու միջոցին, և թէ Բարիզի երեսփոխանութիւնը լեցուցած էր այդ աւելի արիւնարբութեանց միջոցին նշանաւոր դարձած մարդերով։ Մինչեւ հոս ամէն բան ճիշդ էր։ Բայց կ'աւելցնէին այնքան տարտամ մեղադրանքներ, որքան տարտամ էր դաշնակցականութեան մեղադրանքը, որոնց ենթական իրենք իսկ էին։ Ժիրոնտէնները բարձրօրէն կ'ամբաստանէին Մարան, Տանթոնը և Ռոպէսպիէռը, իբր գերագոյն իշխանութեան թեկնածու. Մարան, որովհետեւ ամէն օր կը գրէր թէ բռնապետ մը պէտք էր ընկերութիւնը զտելու համար այն՝ անմաքուր անդամներէն, որոնք զայն կ'ապականէին, Ռոպէսպիէռը, որովհետեւ վարդապետականացած էր Համայնքային Խորհուրդին մէջ, և լրջութեամբ խօսած էր Ժողովին մէջ, և որովհետեւ Օգոստոս 10ի նախօրեակին Բանիս զայն Պարպարուին առաջարկած էր իբր

քունայեա։ Տանդօնը՝ վերջապէս, որովհետեւ նախարարութեան և ժողովըրդին մէջ և ամենուրեք ուր կ'երեւար, հզօր էակի մը ազդեցութիւնը կը գործէր։ Ժաքօպէնները՝ զանոնք եռապետները կ'անուանէին և սակայն բնաւ միութիւն չկար իրենց մէջ. Մառա կանոնաւոր խենդ մըն էր, Ռօպէսբիէռ դեռ միայն նախանձոտ մըն էր, բայց բաւական մեծութիւն չունէր փառասէր անձ մը ըլլալու. վերջապէս, Տանդօն գործունեայ անձ մըն էր յեղափոխութեան նպատակին համար խանդավառուած և որ ձեռքը ամէն բանի վրայ կը դնէր աւելի եռանդոտութեամբ, քան թէ անձնական փառասիրութեամբ։ Բայց այս մարդոց մէջ դեռ ո՛չ բռնաւոր մը կար, ոչ ալ իրարու մէջ համաձայնած դաւադիրներ, և անխոհեմութիւն էր այնպիսի հակառակորդներու՝ որոնք իրենցմէ աւելի զօրաւոր էին արդէն, անարդարութեամբ ամբաստանուած ըլլալու առաւելութիւնը տալ։ Սակայն և այնպէս Ժիրօնտէնները աւելի Տանդօնին հետ զգուշութեամբ կը վարուէին, որովհետեւ անոր և իրենց մէջ անձնական բան մը չկար, և Մառան շատ արհամարհելուն ուղղակի չէին յարձակեր անոր վրայ. բայց անգթօրէն կը յարձակէին Ռօպէսպիէռի վրայ, որովհետեւ ինչ որ կ'անուանէին անոր առաքինութեան և պերճախօսութեան յաջողութիւնը, զիրենք ալ աւելի կը գրգռէր։ Անոր համար ունէին այն տհաճութիւնը, որ ճշմարիտ գերազանցութիւնը կը զգայ գոռոզ և շատ գովուած միջակութեան դէմ։

Սակայն և այնպէս, ջանացին համաձայնիլ Ազգային Քօնվանսիօնի բացումէն առաջ և զանազան համախըմբումներ տեղի ունեցան, որոնց մէջ առաջարկուեցաւ անկեղծօրէն բացատրել և վերջ մը դնել չարաբաստիկ վէճերու։ Տանդօն շատ անկեղծութեամբ կը հաւանէր, որովհետեւ ո՛չ մէկ հըպարտութիւն կը դնէր այդ բանին մէջ եւ ամէն բանէ առաջ յեղափոխութեան յաջողութիւնը կը մաղթէր։ Բէդիօն շատ ցրտութիւն և խոհականութիւն ցոյց տուաւ, բայց Ռօպէսբիէռ վիրաւորուած մարդու մը պէս դառն եղաւ. Ժիրօնտէնները հպարտ և խիստ եղան, ինչպէս անմեղ և զայրացած մարդիկ, և որոնք կը կարծեն թէ ձեռքերնուն մէջ ունած են իրենց ապահոված վրէժխնդրութիւնը։ Պարպառու բան որ ոև է խնամութիւն կարելի չէր ոճիրին եւ առաքինութեան միջեւ և մէկ ու միւս կողմէն ցրուեցան աւելի հեռացած հաշտութենէ մը, որքան էին իրարու հետ տեսակցելէ առաջ։ Բոլոր Ժաքօպէնները բոլորուեցան Ռօպէսբիէռի շուրջ, Ժիրօնտէնները և իմաստուն ու չափաւոր զանգուածը՝ Բէդիօնի շուրջ։ Այս վերջնոյն և ողջամիտ մարդոց կարծիքն էր ամէն ամբաստանութիւն դադրեցնել, քանի որ անկարելի էր Սեպտեմբերի ջարդերուն և Կարտ-Մէօպլի կողոպուտին հեղինակները բռնել, այլեւս չխօսիլ եռապետներու վրայ, որովհետեւ անոնց փառասիրութիւնը ո՛չ բաւական ապացուցուած և ոչ ալ բաւական յայտնի էր և չէր կրնար զանոնք պատժել, արհամարհել քանի չափ անպիտաններ, որոնք Բարիզի ընտրութիւններով Ժողովին մէջ մտած էին, վերջապէս փութալ Քօնվանսիօնի նպատակը իրագործելու, սահմանադրութիւն մը կազմելով և Լուդովիկոս ԺԶ.ի բաղդը որոշելով։ Այս էր պաղարիւն մարդոց կարծիքը, բայց ուրիշներ նուազ հանդարտ, սովորականին պէս ծրագիրներ շինեցին, որոնք դեռ գործադրելի չըլլալով, իրենց հակառակորդները գրգռելու և նախազգուշացնելու վտանգը կը ներկայացնէին։ Առաջարկեցին քաղաքապետութիւնը լուծել, ի հարկին Քօնվանսիօնը տեղափոխել, անոր նիս-

ները Բարիզէ տարբեր տեղ մը փոխադրել, զայն արդարութեան ատեանի մը վերածել, անվերաքննելի կերպով դատելու համար դաւադիրները, վերջապէս ութսուն նահանգներէն առնուած մարդոցմով մանաւոր պահակազօրք մը կազմել Քօնվանսիօնը պաշտպանելու համար։ Այս ծրագիրները ոևէ հետեւանք չունեցան և միայն կիրքերը գրգռելու ծառայեցին։ Ժիրոնտէնները յոյսերնին դրին հանրային խղճմտանքին վրայ, որ, ըստ իրենց, պիտի յուզուէր իրենց պերճախօսութեան շեշտերէն և այն ոճիրներու պատմութիւններէն զորս պարտաւոր էին հրապարակել։ Իրարու ժամադրութիւն տուին Քօնվանսիօնի բեմին վրայ, հոն իրենց հակառակորդները ջախջախելու համար։ Վերջապէս Սեպտեմբեր 20ին Քօնվանսիօնի երեսփոխանները հաւաքուեցան Թիւյլըրիի մէջ, նոր ժողովը հաստատելու համար։ Իրենց թիւը բաւականաչափ ըլլալով առժամանակեայ կերպով նիստ կազմեցին, ստուգեցին իրենց իշխանութիւնները, և անմիջապէս դիւանի ընտրութեան ձեռնարկեցին։ Բէդիօն գրեթէ միաձայնութեամբ նախագահ հռչակուեցաւ։ Պրիսօ, Քօնտօրսէ, Ռապօ, Սէնդ-Էդիէն, Լասուրս, Վէրնիօ և Քամիւս քարտուղար ընտրուեցան։ Այս ընտրութիւնը կ'ապացուցանէ թէ այդ միջոցին Ժիրոնտէն կուսակցութեան ազդեցութիւնը ի՞նչ էր ժողովին մէջ։

Օրէնսդիր ժողովը որ Օգոստոս 10էն ի վեր մշտական նիստ ունէր, 21ին պատգամաւորութեան մը միջոցաւ իմացաւ որ Ազգային Քօնվանսիօնը կազմուած էր, և թէ օրէնսդրութիւնը աւարտած էր։ Երկու ժողովներուն կը մնար իրարու հետ խառնուիլ և Քօնվանսիօնը գնաց Օրէնսդիր Ժողովին սրահը գրաւել։

21 էն սկսեալ Մանուէլ, Համայնքային իշխանութեան ընդհանուր դատախազը, որ Յունիս 20 էն ետք Բէդիօնի հետ պաշտօնանկ եղած էր, և որուն պատճառաւ շատ ժողովրդական դարձած, և ի տես Ապպէյի ջարդերուն մօտեցած էր Ժիրոնտէններուն, Մանուէլ նոյն օրն իսկ առաջարկութիւն մը կ'ընէ որ Ժիրոնտի թշնամիներուն մէջ մեծ տրտունջ յառաջ կը բերէ. «Քաղաքացի ներկայացուցիչներ, կ'ըսէ, պէտք է որ հոս ամէն բան արժանաւորութեան եւ մեծութեան նկարագիր մը ստանայ, որ կարենայ ամենուն յարգանք հարկադրել։ Կը պահանջեմ որ Ֆրանսայի Նախագահը Թիւյլըրիի Ազգային պալատին մէջ բնակի, իրմէ առաջ երթան հանրային իշխանութիւնը և օրէնքի պաշտօնեաները և քաղաքացիները ոտքի կենան, երբ երեւայ։» Այս խօսքերուն Քափիւզին Շապօ և Համայնքին քարտուղարը Դալիէն ուժգնօրէն դէմ խօսեցան այս ձեւակերպութեան, որ թագաւորութենէն ընդօրինակուած էր։ Շապօ կ'ըսէ որ ժողովուրդին ներկայացուցիչները նման ըլլան քաղաքացիներու, որոնց շարքերէն ելած են, նման ըլլան անվարտիններուն, որոնք ազգին մեծամասնութիւնը կը կազմեն։ Դալիէն կ'աւելցնէ որ Քօնվանսիօնի նախագահը պիտի երթան գտնել հինգերորդ յարկի մը մէջ, եւ թէ հոն է որ կը բնակին հանճարը եւ առաքինութիւնը։ Ուրեմն Մանուէլի առաջարկութիւնը մերժուեցաւ և Ժիրոնտի թշնամիները յաւակնեցան որ կուսակցութիւնը իր պետին, Բէդիօնի ուզեց ընծայել վեհապետական պատիւներ։

Այս առաջարկութենէն ետք, խել մը ուրիշներ յաջորդեցին անընդհատ։ Ամէն կողմէ կ'ուզէն անձնական յայտարարութիւններով հաստատել այն զգացումները, որոնք կը խանդավառեն ժողովը և Ֆրանսան. կը պահանջեն որ Նոր Քօնվանսիօնը հիմնուի բացարձակ հաւասարութեան վրայ, որ հրամանագրով մը ժողովուրդին գերիշխանութիւնը



ՖՐԱՆՍԱՑԻՆԵՐԸ ԿԸ ՅԱՐՁԱԿԻՆ ԲՐՈՒՍԻԱՑԻՆԵՐՈՒՆ ԴԷՄ

հռչակուի, թէ տակաւին երդում ընեն Թագաւորութեան, բռնապետութեան, եռապետութեան և ամէն անհատական իշխանութեան դէմ, եւ թէ մահուան պատիժ հրամանագրուի ոև է անձի դէմ որ այդպիսի բան մը առաջարկէ ։ Դանդօն վերջ դրաւ բոլոր ապողական առաջարկներուն հրամանագրել տալով, որ Նոր Գօնվանսիօնը ժողովուրդէն վաւերացուելէ ետքը միայն պիտի կարենայ գործել ։ Կ'աւելցուի որ, գոյութիւն ունեցող օրէնքները առժամապէս պիտի շարունակեն ազդել, որ այն իշխանութիւնները, որոնց տեղը նոր չէ եկած՝ առժամապէս պիտի պաշպանուին և թէ տուրքերը պիտի հաւաքուին՝ ինչպէս անցեալին մէջ, սպասելով որ հարկահաւաքութեան նոր դրութիւնները հաստատուին ։ Այս առաջարկութիւններէն և այս հրամանագիրներէն ետք, Մանուէլ, Գօլօ-տ'Էրպուա, Կրէկուար, ձեռք կ'առնեն Թագաւորութեան հարցը, և կը պահանջեն որ անմիջապէս անոր տապալումը յայտարարեն ։ Ժողովուրդը, կ'ըսեն, քիչ առաջ գերիշխան հռչակուեցաւ, բայց իրապէս այդպէս պիտի չըլլայ, մինչեւ որ զինքը չազատէք մրցակից իշխանութենէ մը, թագաւորներուն իշխանութենէն ։ Ժողովը և օթեակները ոտքի կ'ելնէն միաձայն մերժում յայտնելու թագաւորութեան դէմ ։ Սակայն և այն-

պէս Պազիր կ'ըսէ, թէ պիտի ուզէր որ հանդիսաւոր վիճաբանութիւն մը տեղի ունենար, այդքան կարեւոր խնդրի մը վրայ։ «Ի՞նչ պէտք կայ վիճաբանելու, կը յարէ Կրէկուառ՝ երբ ամէն ոք համաձայն է։ Արքունիքները ոճիրի գործարաններ և ապականութեան վառարաններ են. թագաւորներու պատմութիւնը ազգերու մարտիրոսագրութիւնն է։ Այն վայրկեանէն որ մենք ամենքս հաւասարապէս տոգորուած ենք այս ճշմարտութիւններով, ի՞նչ պէտք կայ վիճաբանելու։

Իրաւ ալ վիճաբանութիւնը կը փակուի. խոր լռութիւն մը կը տիրէ, եւ Ժողովին միաձայն յայտարարութեան վրայ, Նախագահը կը յայտարարէ, որ թագաւորութիւնը տապալուած է Ֆրանսայի մէջ. այս հրամանագիրը կ'ընդունին միահամուռ ծափահարութիւններով, կը հրամայեն զայն անմիջապէս հրատարակել, ինչպէս նաև զայն ղրկել զօրաբաժիններուն և բոլոր քաղաքապետութեանց։

Երբոր Հանրապետութեան այս հաստատումը հռչակուեցաւ, Բրուսիացիները դեռ երկրին կը սպառնային. Տիւմուրիէ՝ ինչպէս տեսանք, Սէնդ-Մէնըհուլդ փոխադրուած էր և 21 ի թնդանօթաձգութիւնը, որ այնքան բարեբաղդեղած էր մեր զինուորներուն համար, դեռ իմացուած չէր Բարիզի մէջ։ Հետեւեալ օրը 22 ին, Պիյեօ-Վարէն առաջարկեց թուագրել, ոչ թէ ազատութեան Դ. տարին՝ այլ Հանրապետութեան Ա. տարին։ Այս առաջարկութիւնը ընդունուեցաւ. 1789 ը այլ եւս չնկատուեցաւ ազատութիւնը սկսող տարին եւ հանրապետական նոր թուականը բացուեցաւ այդ օրն իսկ 1792 Սեպտեմբեր 22 ին։

Իրիկունը Վալմիի թնդանօթաձգութիւնը իմացան և ուրախութիւնը սկսաւ տարածուիլ։ Օրլէանի քաղաքացիներու խնդրանքին վրայ, որոնք կը գանգատէին իրենց պաշտօնատարներէն, հրամանագրեցին որ պաշտօնավարական մարմիններու և դատարաններու բոլոր անդամները վերընտրուին, և թէ 91 ի Սահմանադրական ժողովին որոշած ընտրելիութեան պայմանները չեղեալ պիտի նկատուին։

Այլ եւս անհրաժեշտ չէր որ դատաւորները ընտրուէին օրէնսգէտներէն, ոչ ալ պաշտօնատարները սեպհականատէրներու որոշ դասակարգէ մը։ Օրէնսդիր Ժողովը արդէն ջնջած էր այն ժամանակուան դրամը, և բոլոր չափահաս քաղաքացիներու ընտրական իրաւունք տուած էր։ Քօնվանսիօնը վերջ ի վերջոյ ջնջեց մնացեալ իտրութիւնները, բոլոր քաղաքացիները կոչելով զանազան բոլոր պաշտօններուն։ Այսպէսով սկսաւ բացարձակ հաւասարութեան դրութիւնը։

23 ին, բոլոր նախարարներուն ունկնդրեցին Ժողովին մէջ. Գամպոն երեսփոխանը տեղեկագիր մը ներկայացուց ելեւմուտքի վիճակին վրայ։ Նախորդ Ժողովները 2 միլիար 700 միլիոնի թղթադրամ շինելու հրամանագիր տուած էին. 2 միլիար 500 միլիոնը ծախսուած էր. կը մնար 200 միլիոն, որուն 160 միլիոնը դեռ չինուած չէր, և որուն 24 միլիոնը գանձին մէջ կը գտնուէր։ Նահանգները տուրքերը վար դրած էին ցորենահատիկ գնելու համար, ինչպէս հրամայած էր վերջին Ժողովը. նոր, արտակարգ հասոյթներ պէտք էին. ազգային ստացուածքներու քանակութիւնը ամէն օր կ'աւելնար տարագրեալներուն պատճառաւ, այդ ստացուածքները ներկայացնող արժէթուղթեր հրապարակ հանելու չէին վախնար, և չվարանեցան այդպէս ընելու. ուրեմն թղթադրամներու նոր շրջաբերութիւն մը հրամայուեցաւ։

Ռօլան խօսեցաւ Ֆրանսայի և մայրաքաղաքի վիճակին վրայ։ Նոյնքան խիստ և աւելի յանդուգն՝ որքան եղած

էր Սեպտ. 3 ին, կորովով ներկայացուց Բարիզի անկարգութիւնները, պատճառները և անոնց առաջքը առնելու միջոցները։ Շուտով հաստատել յանձնարարեց զօրաւոր և կորովի կառավարութիւն մը, իբր ազատ պետութիւններու մէջ կարգ ու կանոնը պահպանող միակ միջոցը։ Իր տեղեկագիրը հաճոյքով մտիկ ըրին, շատ մը ծափահարեցին, այլ սակայն ո՛չ մէկ պոռթկում յառաջ բերաւ անոնց մէջ, որոնք ինքզինքնին ամբաստանուած կը նկատէին, անմիջապէս որ խնդիրը Բարիզի խռովութեանց վրայ ըլլար։

Բայց հազիւ թէ այս առաջին ակնարկը նետած էին Ֆրանսայի կացութեան վրայ երբ լուր հասաւ որ անկարգութիւնը կը տարածուէր մէկ քանի նահանգներու մէջ։ Ռօլան Թօնվանսիօնին նամակ մը գրեց, անոր մասնանշելու համար նոր ծայրայեղութիւնները և անոնց զսպումը պահանջելու համար։ Անմիջապէս որ այս նամակին ընթերցումը աւարտեցաւ, Քէրսէն, Գիւզօ, երեսփոխանները ատեան խոյացան ամբաստանելու համար ամէն կարգի բռնութիւնները, որոնք կը սկսէին ամէնուրեք տեղի ունենալ. «Մարդասպանութիւնները, կ'ըսեն, նահանգներու մէջ ալ հետեւողներ կ'ունենան։ Այդ բանին համար անիշխանութիւնը պէտք չէ ամբաստանել, այլ նոր տեսակի բռնաւորները, որոնք կը յայտնուին հազիւ թէ ազատագրուած Ֆրանսայի մէջ։ Բարիզէն է որ ամէն օր կը մեկնին ոճիրի այդ չարաբաստիկ ներշնչումները։ Մայրաքաղաքին բոլոր պատերուն վրայ ծանուցումներ կը կարդանք, որոնք սպանութեանց հրդեհումի և թալանի կը գրգռեն. և աքսորեալներու ցանկեր՝ ուր ամէն օր նոր զոհեր նշանակուած են։ Ինչպէ՞ս կարելի պիտի ըլլայ ժողովուրդը անհուն թշուառութեան մը դէմ պաշտպանել, երբ այնքան քաղաքացիներ դատապարտուած են իրենց գոյութիւնը ծածկելու։ Ինչպէ՞ս կարելի է Ֆրանսայի Սահմանադրութեան մը յոյսը տալ, եթէ Թօնվանսիօնը, որ զայն պիտի հրամանագրէ, իր խորհրդակցութիւնները կը կատարէ դաշոյններու ներքեւ։ Պէտք է յեղափոխութեան պատուին համար, այդ ծայրայեղութիւնները կասեցնել և պէտք է տարբերութիւն մը դնել այն քաղաքացիական քաջութեան որ Օգոստոս 10 ին ճակատեցաւ բռնապետութեան և այն անգթութեան միջեւ, որ Սեպտեմբեր 2ին և 3ին ծառայեց համր և թագուն բռնաւորութեան մը։

Հետեւաբար ատենախօսները կը պահանջեն հաստատուիլը յանձնաժողովի մը, որ պաշտօն ունենայ։

1. Հաշիւ տալ հանրապետութեան և մասնաւորապէս Բարիզի վիճակին վրայ։

2. Օրինագիծ մը ներկայացնել ջարդի և մարդասպանութեան գրգռութիւններու դէմ։

3. Տեղեկագիր մը տալ այն միջոցներուն, որով Ազգային Թօնվանսիօնը իր տրամադրութեան տակ պիտի ունենայ հանրային ուժ մը, զոր պիտի առնէ ութսուն նահանգներէն։

Այս առաջարկութեան վրայ, ձախակողմի բոլոր անդամները ուր հաւաքուած էին նոր Ժողովին ամենէն եռանդուն միտք ունեցողները, խառնաշփոթ աղաղակներ կ'արձակէին։ Ըստ իրենց, կը չափազանցէին Ֆրանսայի ցաւերը։

Այն կեղծաւոր տրտունջները, զորս քիչ առաջ լսեցին, կու գան բանտերու խորերէն, ուր շատ արդարացիօրէն նետուած էին կասկածելիները, որոնք երեք տարիէ ի վեր քաղաքային պատերազմ կը հրահրէին իրենց հայրենիքին վրայ։ Այն չարիքները որոնցմէ կը գանգատին, անխուսափելի էին, ժողովուրդը յեղափոխական վիճակի մէջ

է և ստիպուած էր կորովի միջոցներ ձեռք առնել իր փրկութեանը համար։ Այսօր այդ տագնապալի վայրկեանները անցած են և այն յաջողութիւնները, զորս Քոնվանսիոնը քիչ առաջ ըրաւ, բաւական պիտի ըլլան խռովութիւնները խաղաղեցնելու համար։ Արդէն ի՞նչ հարկ բացառիկ միջոցներու դիմել։ Հին օրէնքները գոյութիւն ունին և բաւական են սպանութեան գործիչները պատժելու համար։ Արդեօք նորէն Պատերազմական Ատեա՞ն մը կ՚ուզէին հաստատել ...։

Կուսակցութեանց մէջ սովորական եղող հակասութեամբ մը անոնք որ Օգոստոս 17 ի բացառիկ դատարանը ուզած էին, անոնք որ յետոյ յեղափոխական ատեանը պիտի պահանջէին, դէմ կը կենային այդպիսի օրէնքի մը, որուն համար կ՚ըսէին, թէ արիւնի օրէնք՝ մըն էր։ «Արիւնի օրէ՛նք մը, կը պատասխանէ Քէրսէն, երբ ընդհանուրը կ՚ուզեմ արիւն թափուելու առաջքը առնել։» Սակայն և այնպէս, բուռն կերպով յետաձգումը կը պահանջեն։ «Սպանութեանց զսպումը յետաձգելը, կը գոչէ Վէրնիօ, զայն արտօնե՛լ է. Ֆրանսայի թշնամիները զէն ի ձեռին կեցած են մեր երկրին վրայ և կ՚ուզուի որ Ֆրանսայի քաղաքացիները, փոխանակ կռուելու, զիրար սպաննեն, ինչպէս Կադմոսի զինուորները ...։»

Վերջապէս Քէրսէնի և Պիւզոյի առաջարկը ամբողջովին կ՚ընդունուի։ Կը հրամանագրեն որ օրէնք մը պատրաստուի սպաննութեան գործիչները պատժելու և Նահանգային պահակախումբի մը կազմակերպման համար։

Սեպտ. 24 ի այս նիստը մեծ յուզում յառաջ բերած էր միտքերու մէջ. սակայն և այնպէս, ո՛չ մէկ անուն արտասանուած էր և ամբաստանութիւնները ընդհանուր մնացած էին. հետեւեալ օրը իրարու կը հանդիպին նախընթաց օրուան դժգոհութիւններով, մէկ կողմէ կը մրմռան տրուած հրամանագիրներուն դէմ, և միւս կողմէ կը ցաւին որ պէտք եղածը չըրին կազմալուծող կոչուած խռովարարական խումբին դէմ։ Մինչ ոմանք կը յարձակին հրամանագիրներուն վրայ, կամ զանոնք կը պաշտպանեն, Մէրլէն, որ ժամանակաւ դատական պաշտօնեայ և Թիօնվիլի մէջ քաղաքապետական պաշտօնեայ եղած էր, յետոյ երեսփոխան Օրէնսդիր Ժողովին, ուր ինքզինքը ծանօթացուց իբր ամենէն զայրացուն հայրենասէրներէն մէկը, Մէրլէն, հռչակաւոր իր եռանդով և քաջարտութեամբ, խօսք ուզեց։ «Օրակարգի խնդիր է, ըսաւ, բացորոշել թէ, ի՞նչպէս երէկ Լասուրս զիս ապահովցուց, Ազգային Քոնվանսիոնի ծոցին մէջ խռովարարական խումբ մը կայ, որ կ՚ուզէ եռապետութիւն մը կամ բռնապետութիւն մը հաստատել. պէտք է որ կա՛մ անվստահութիւնները դադրին և կամ Լասուրս ցոյց տայ յանցաւորները և կ՚երդնում որ զանոնք կը դաշունահարեմ Ժողովին աչքին առջև։»

Լասուրս, զոր բուռն կերպով հրաւիրեցին որ ինքզինքը բացատրէ, համարեց իր խօսակցութիւնը Մէրլէնի հետ, և առանց անուններն տալու կրկին ակնարկեց այն փառասէրները, որոնք կ՚ուզէն բարձրանալ կործանած թագաւորութեան աւերակներուն վրայ։ «Անոնք են որ սպանութիւն և աւար յառաջ բերին, Օրէնսդիր Ժողովի անդամներուն դէմ ձերբակալման հրամանագիրներ արձակեցին, որոնք դաշոյնով ցոյց կուտան Քոնվանսիոնի քաջարի անդամները, և որոնք ժողովուրդին կը վերագրեն այն ծայրայեղութիւնները, զորս իրենք իսկ կը հրամայեն։ Երբ ժամանակը գայ, պիտի բզկտէ այն քօղը, զոր հիմա կը վերցնէ միայն, ու այս բանը պիտի ընէ, եթէ մինչև իսկ անոնց հարուածներուն տակ մեռնիլ պէտք ըլլայ։»

Սակայն և այնպէս, եռապետները

չէին մատնանշուէր. Օսլին բեմ կը բարձրանայ և կ'անուանէ Բարիզի պատգամաւորութիւնը, որուն անդամ է ինքն ալ. կ'ըսէ թէ այդ պատգամաւորութեան դէմ է որ կ'ուզեն անվստահութիւն յարուցանել, և թէ ինք ո՛չ շատ խորապէս ագէտ ու ոչ ալ խորապէս ապիրատ մէկն է որ եռապետութեան և բռնապետութեան ծրագիրներ յղանայ։ Ընդհակառակը՝ երդում կ'ընէ, և կը պահանջէ որ անիծուի ու մահուամբ պատժուի այն առաջին մարդը, որ նմանօրինակ ծրագիրներ կը յղանայ։ Անիկա կը յարէ.— «Թո՛ղ իւրաքանչիւր ոք իմ ետեւէս բեմ բարձրանայ և հոն ընէ նոյն այս յայտարարութիւնը։» — Այո՛, կը գոչէ Ռըպէքի, Պարպառուի քաջարի բարեկամը, այո՛, բռնապետական ծրագիրներով ամբաստանուած այս կուսակցութիւնը գոյութիւն ունի, և ես կու տամ անոր անունը. Ռոպէսփիէռի կուսակցութիւնն է այդ։ Մարսիլեան կը ճանչնայ զայն և հոս կը ղրկէ մեզի որպէս զի պայքարինք անոր դէմ։»

Այս յանդուգն խօսքը մեծ իրարանցում յառաջ բերաւ ժողովին մէջ, աչքերը Ռոպէսփիէռի վրայ ուղղուեցան։ Տանդօն կը փութայ խօսք առնել այս տեսակցութիւնները վերջացնելու համար և փարատելու այն ամբաստանութիւնները որոնք գիտէր թէ մասամբ իրեն դէմ ուղղուած էին։ «Հանրապետութեան համար, ըսաւ, գեղեցիկ օր մը պիտի ըլլայ այն օրը, երբ բաց սիրտ և եղբայրական լուսաբանութիւն մը փարատէ բոլոր անվստահութիւնները։ Բռնապետներու, եռապետներու վրայ կը խօսին, բայց այս ամբաստանութիւնը տարտամ է, պէտք է ստորագրութիւն դնել տակը։»

— Ես կ'ստորագրեմ, գոչեց կրկին Ռըպէքի դէպ ի բեմ խոյանալով։

—Լաւ, ըսաւ Տանդօն, եթէ յանցաւորներ կան, թող զոհուին, նոյն իսկ եթէ մեր լաւագոյն բարեկամներն ըլլան անոնք։ Իմ մասիս, ես իմ կեանքս կը ճանչնամ. հայրենասիրական ընկերութիւններու մէջ, Օգոստոս 10 ին, Գործադիր Ժողովին մէջ ծառայեցի ազատութեան դատին, առանց ո և է անձնական դիտում ունենալու և իմ խառնուածքիս կորովը։ Հետեւաբար, իմ մասիս, չեմ վախնար ամբաստանութիւններէ, բայց կուզեմ որ ամէն մարդ ալ ամբաստանութեան տակ չիյնայ. կընդունիմ թէ Բարիզի երեսփոխանութեան մէջ մարդ մը կայ, զոր կարելի է կոչել հանրապետականներու Ռոյայոն, այդ մարդը Մառան է. յաճախ ամբաստանած են զիս որ անոր բուռն յօդուածներուն թելադրիչը ես եմ. բայց ես կոչում կ'ընեմ Նախագահին վկայութեանը, և կը խնդրեմ իրմէ որ յայտարարէ թէ Քաղաքապետարանին ու մասնաճիւղերուն մէջ չի տեսա՞ւ որ յաճախ Մառային հետ կռուի բռնուած եմ ես։ Բաց աստի, այս այնքան ամբաստանուած գրագէտը իր կեանքին մէկ մասը անցուց ստորերկրեայ տեղերու և թաքստոցներու մէջ. տառապանքը փոխած է անոր բնաւորութիւնը, պէտք է ներել անոր զայրոյթներուն։ Բայց մէկ կողմ ձգեցէք զուտ անձնական վիճաբանութիւնները և ջանացէք որ անոնք օգտակար ըլլան հասարակաց գործին. մահու պատիժը արձակեցէք ամէն անոնց դէմ, որոնք բռնապետութիւն կամ եռապետութիւն կ'առաջարկեն։»

Այս խօսքերը ծափահարութեամբ ընդունուեցան։

— «Դեռ խօսքս չաւարտեցի, յարեց Տանդօն, ժողովուրդին մէջ տարածուած է ուրիշ վախ մըն ալ, և պէտք է փարատել զայն. ըսողներ կան թէ երեսփոխաններուն մէկ մասը դաշնակցական ռէժիմ հաստատել կը խորհի, և Ֆրանսան բաժնել մեծ թուով հատուածներու։ Մեզի համար շատ կա-

բեւոր է ամբողջութիւն մը կազմել։ Ուրեմն ուրիշ հրամանագրով մըն ալ յայտարարեցէք Ֆրանսայի ու իր կառավարութեան անբաժանելիութիւնը։ Անգամ մը այս հիմերը դնելէ վերջ, այլեւս թո՛ղ փարատին մեր կասկածամտութիւնները, միանանք իրարու եւ քալենք դէպ ի մեր նպատակը։»

Պիւզօ պատասխանեց Տանդօնին, թէ բռնապետութիւնը կը հռչակուի, եւ ոչ թէ կը խնդրուի, եւ թէ ծիծաղելի է այդ բանին դէմ օրէնքներ կազմել. գալով դաշնակցական դրութեան, ո՛չ ոք խորհած է անոր մասին, եւ թէ գաւառական պահակազօրք մը կազմելու առաջարկը միութիւն հաստատելու համար է, քանի որ բոլոր գաւառները պիտի հրաւիրուին հաւաքաբար պաշտպանել ազգային ներկայացուցչութիւնը. սակէ զատ, ըսաւ, կրնայ աղէկ ըլլալ օրէնք մը չընել այս մասին, բայց պէտք է հասուն կերպով խորհիլ անոր վրայ, եւ հետեւաբար, Տանդօնի առաջարկները պէտք է ղրկել նախորդ օրը կազմուած Վեցերու Յանձնախումբին։

Ռոպէսփիէռ, որ անձնականապէս ամբաստանուած էր, իր կարգին խօսք ուզեց. նախ եւ առաջ ըսաւ թէ ինքզինքը չէ որ պիտի պաշտպանէ, այլ հասարակաց դատը, որ յարձակում կրած է յանձին իրեն. իր խօսքը ուղղելով Րըպէքիի, ըսաւ. «Քաղաքացի՛, որ չէք վախնա՛ր զիս ամբաստանելէ, շնորհակալ եմ ձեզի. ձեր քաջութենէն կը հասկնամ թէ դուք կը պատկանիք այն նշանաւոր քաղաքին, որ զձեզ պատգամաւոր ղրկեց հոս։ Հայրենիքը, դուք եւ ես, ամենքս ալ պիտի շահինք այս ամբաստանութենէն։ Կ՚ըսուի թէ կուսակցութիւն մը կայ որ նոր բռնապետութիւն մը հաստատել կը խորհի, եւ կ՚ըսեն թէ պետն ալ ես եմ։ Ամբաստանութիւնը սարսամ է, բայց, ես ազատութեան համար մեծ ծառայութիւններ մատուցած ըլլալուս, դիւրին պիտի ըլլայ ինծի պատասխանել անոր։ Ես եմ որ, Սահմանադիր Ժողովի օրով երեք տարի պայքարեցայ այդ խռովարարական խումբերուն դէմ, ինչ անունի տակ որ ալ գործեցին անոնք. ես եմ որ մաքառեցայ արքունիքին դէմ, արհամարհեցի անոր նուէրները. ես եմ որ...

— Խնդիրը ատոնց վրայ չէ՛, կը պոռան մէկ քանի երեսփոխաններ։

— Պէտք է որ ինքզինքը արդարացնէ կը պատասխանէ Դալիէն։

— Քանի որ կ՚ամբաստանեն զիս, կը յարէ Ռոպէսփիէռ, թէ հայրենիքին դէմ դաւաճանած եմ, իրաւունք չունի՞մ ամբողջ կեանքովս անոր հակառակելու։

Անուհետեւ Ռոպէսփիէռ կը վերըսկսի թուել իր կրկնակ ծառայութիւնները՝ ընդդէմ ազնուապետականութեան եւ այն կեղծ հայրենասէրներուն, որոնք ազատութեան դիմակը դրած էին երեսնին։ Այս խօսքերը ըսած միջոցին Քօնվանսիօնի աջ կողմը կը ցուցնէր։ Օսլէն ինքն ալ այս թուումէն նեղուած, կ՚ընդմիջէ Ռոպէսփիէռը, եւ անկէ կը խնդրէ աւելի որոշ բացատրութիւն մը տալ. Լըքուանդ Բիւրալօ կ՚ըսէ իրեն. «խնդիրն այն չէ թէ ինչ ըրած ես, այլ այն՝ թէ ի՞նչ բանով ամբաստանուած ես այսօր։»

Այն ատեն Ռոպէսփիէռ կը կոչէ կարծիքներու ազատութեան, ինքնապաշտպանութեան նուիրական իրաւունքին, հասարակաց դատին, որ իր անձին չափ վտանգի ենթարկուած էր այդ ամբաստանութիւններով։ Զայն կը հրաւիրեն ա՛լ աւելի կարճ խօսիլ, բայց անիկա կը շարունակէ նոյն երկարաբանութեամբ։ Յիշատակելով այն հռչակաւոր հրամանագիրները, զոր հանել տուաւ Սահմանադիրներու վերընտրութեան դէմ եւ երեսփոխաններուն՝ կառավարական պաշտօններ ստանձնելու դրութեան դէմ, հարցուց թէ ատոնք փաստերու-

թեան ապացոյցնե՞ր են։ Այնուհետեւ իր հակառակորդները մեղադրելով, դաշնակցականութեան ամբաստանութիւնը կրկին անգամ մէջտեղ հանեց. խօսքը վերջացուց, Տանդօնի առաջարկած օրէնքներուն ընդունումը խնդրելով եւ իրեն դէմ եղած զրպարտութեանց մասին լուրջ քննութիւն մը կատարել առաջարկելով։

Պարպառու, անհամբերութեամբ, ատեան խռովայոյզ եւ գոչեց.

— «Մարսիլիացի Պարպառուն հոս կը ներկայանայ, ստորագրելու համար Ռոպէսփիէռի դէմ Ռըպէքիի ըրած ամբաստանութիւնը։»

Այն ատեն պատմեց շատ աննշան պատմութիւն մը, որ յաճա՛խ կրկնուած է, եւ որ հետեւեալն է. — Օգոստոս 10 էն առաջ Բանիս զինքը առաջնորդեց Ռոպէսփիէռի մօտը, եւ տեսակցութիւնը աւարտելուն Բանիս իրեն ներկայացուց Ռոպէսփիէռը՝ իբր միակ անձը, միակ բռնապետը, որ կարող էր փրկել հայրենիքը. Պարպառու այս խօսքին պատասխանած էր թէ Մարսիլիացիները երբէք գլուխ չպիտի ծռեն ո՛չ Թագաւորի մը եւ ոչ ալ բռնապետի մը առջեւ։

Արդէն խօսած ենք այս բաներուն վրայ, եւ թող դատեն, թէ Ռոպէսփիէռի բարեկամներուն այս տարտամ եւ աննշան խօսքերը կրնա՞ն ծառայել իբր հիմ՝ ամբաստանութեան մը։ Պարպառու մէկիկ մէկիկ ձեռք կ'առնէ Ժիրօնտէններուն ուղղուած մեղադրանքները. կը պահանջէ որ հրամանագրով մը դատապարտեն դաշնակցականութիւնը եւ Ազգային Քօնվանսիօնի բոլոր անդամները երդում ընեն փակուած մնալ մայրաքաղաքին մէջ եւ հոն մեռնիլ, այլ երբէք չլքել Բարիզը։

Երկարատեւ ծափահարութիւններէ վերջ, Պարպառու շարունակեց իր խօսքը եւ բսաւ թէ, գալով բռնատիրութեան ծրագիրներուն գոյութեան, կարելի չէ հակառակը պնդել. Համայնքային Խորհուրդի ձեռնձգութիւնները, Ազգային Ժողովի անդամներուն դէմ արձակուած ձերբակալման հրամանագիրները, գաւառները զրկուած պատուիրակները, այս բոլորը կ'ապացուցանեն թէ բռնատիրելու ծրագիր մը կայ. Պարպառու բսաւ սակայն թէ, Մարսիլիա քաղաքը կը հսկէ ներկայացուցիչներու ապահովութեան վրայ, թէ անիկա, մինչ պատարատ՝ կանխելու օգտակար հրամանագիրները, դաշնակիցներու վաշտ մը զրկեց, հակառակ Թագաւորին վէթօին, եւ թէ հիմա ալ ստակովն իր քաղաքացիներէն 800 հատը կը զրկէ. անոնց հայրերը տուած են մէյ մէկ ատրճանակ, թուր մը, հրացան մը եւ հինգ ոսկինոց թղթադրամ. ասկէ զատ, Մարսիլիա կուտայ 200 ձիաւոր զինուոր, կազմ ու պատրաստ, եւ թէ այս ուժը պիտի ծառայէ սկիզբը դնելու այն գաւառական պահակախումբին, զոր կազմել առաջարկուած է, Քօնվանսիօնի ապահովութեանն համար։

«Գալով Ռոպէսփիէռին, յարեց Պարպառու, մեծ վշտով է որ զայն կ'ամբաստանեմ, որովհետեւ ատեն մը կը սիրէի ու կը յարգէի զայն։ Այո՛, մենք ամենքս ալ կը սիրէինք եւ կը յարգէինք զայն, եւ սակայն կ'ամբաստանենք զայն։ Բայց թո՛ղ անիկա ճանչնայ իր սխալները, ու մենք ետ կ'առնենք մեր ամբաստանութիւնները. թո՛ղ անիկա դադրի գանգատելէ. որովհետեւ, եթէ իր գրութիւններով ազատութիւնը փրկեց, մենք ալ մեր անձերովը պաշտպանեցինք զայն։ Քաղաքացինե՛ր, երբ վըտանգի օրը հասնի, այն ատեն պիտի դատեն զմեզ, այն ժամանակ պիտի տեսնենք թէ պարսաւանքներ գրող ու ցրուողները մեզի հետ պիտի կրնա՞ն մեռնիլ։»

Բուռն ծափահարութիւններ կ'ընկերանան Պարպառուին, մինչեւ իր տեղը երթալը. «պարսաւագիր» բառը լսելուն պէս, Մառա խօսք կ'ուզէ. իրմէ վերջ

Դանթոն խօսք կ'ուզէ և ուրիշ առաջ կը ստանայ, ու կը դատապարտէ այն պարատագրութիւնները, որոնց մէջ կ'առաջարկուի բռնատիրութիւնը՝ իբր անհրաժեշտ բան մը, և զորս ստորագրած է Մառա: Այս խօսքին վրայ ամէն մարդ կը հեռանայ Մառայէն, որ ժպիտով մը կը պատասխանէ իրեն ցոյց տրուած արհամարհանքին:

Դանթոնին կը յաջորդեն ուրիշներ, որոնք Մառան և Համայնքային Խորհուրդը կ'ամբաստանեն: Մառա երկարօրէն ջանքեր կ'ընէ խօսք ստանալու համար, բայց Բանիս իրմէ առաջ խօսք կ'առնէ, Գարգառուի ակնարկութիւններուն պատասխանելու համար: Բանիս անճարակ կերպով կ'ուրանայ ճշմարիտ բայց քիչ ապացուցիչ իրողութիւնները, զորս լաւագոյն էր խոստովանիլ, անոնց նուազագոյն արժէքը ցուցնելով: Այն ատեն Պրիսօ ընդմիջեց զինքը և հարցուց թէ ինչ պատճառաւ ձերբակալման հրամանագիր արձակուած էր իր անձին դէմ: Բանիս կ'ապաւինի այն պարագաներուն, զորս, կ'ըսէ թէ շատ դիւրաւ մոռցած է, նաև՝ այն սոսկումին եւ անկարգութեան որ կը տիրէր այն ժամանակ՝ մտքերու մէջ, մէջ կը բերէ Օգոստոս 10 ի դաւադիրներուն դէմ եղած ամբաստանութեանց շատութիւնը, Պրիսոյի դէմ տարածուած զրոյցներուն արժէքը և զանոնք լուսաբանելու անհրաժեշտութիւնը:

Այս երկարապատում բացատրութիւններէն յետոյ, որոնք ամէն վայրկեան կ'ընդմիջուէին և կը շարունակուէին, Մառա միշտ պնդելով որ խօսք տան իրեն, վերջապէս խօսք առաւ առաւ անանկ ատեն մը, երբ այլեւս կարելի չէր իրեն մերժել:

Առաջին անգամն էր որ բեմին վրայ կ'երեւար. իր տեսքը զայրոյթի շարժում մը յառաջ բերաւ և իրեն դէմ զարհուրելի աղմուկ մը բարձրացաւ, ամէն կողմէ գոչեցին՝ վա՛ր իջիր, վա՛ր իջիր:

Բայց Մառա, զգեստները անխնամ, գլուխը դրած՝ գլխարկ մը, զոր սեղանին վրայ զետեղեց, իր ունկնդիրներուն վրայ ջղաձգական ու արհամարհոտ ժպիտ մը նետելով և ըսաւ.

— Այս ժողովին մէջ մեծ թուով անձնական թշնամիներ ունիմ:

— Ամէ՛նքս ալ, ամէ՛նքս ալ թշնամիներ են, գոչեցին երեսփոխանները մեծամասնաբար:

— Ես այս ժողովին մէջ, կրկնեց Մառա նոյն հաստատամտութեամբ, ունիմ մեծ թուով անձնական թշնամիներ, զորս կը հրաւիրեմ պարկեշտութեան. թո՛ղ խնայեն կատաղի յարձակումները մարդու մը դէմ, որ ծառայած է ազատութեան դատին և իրենց իսկ, քանի որ չեն խորհիր այդ բանին վրայ: Եռապետութեան, բռնապետութեան մասին կը խօսին, և այս նպատակները կը վերագրեն Բարիզի երեսփոխանութեան. ես յանուն արդարութեան կը յայտարարեմ թէ իմ պաշտօնակիցներս, մանաւորապէս Ռօպէսբիէռ և Տանթօն միշտ հակառակած են այդպիսի ծրագրի մը և թէ այս մասին շարունակ մաքառած եմ ես: Առաջինը և միակը եղած եմ Ֆրանսայի բոլոր քաղաքական գրողներուն մէջ, այդ տեսակ ծրագրի մը վրայ մտածող, զայն նկատելով միակ միջոցը ճշմելու համար մատնիչները և դաւադիրները: Միա՛յն զիս պէտք է պատժել, բայց պատժելէ առաջ՝ մտիկ ընելու է:

Այս միջոցին, քանի մը հոգի կը ծափահարեն: Մառա կը շարունակէ.

— Նենգամիտ թագաւոր մը, զզուելի արքունիք մը և կեղծ հայրենասէրներ յաւիտենական մեքենայութիւններ կը լարէին. անոնք՝ երկու ժողովներուն մէջ ալ, հասարակաց ազատութիւնը կը ծախէին. ուրեմն պիտի մեղադրէ՞ք զիս,



ՆԱՒԲՏ ՄԻՋՕՊԻ ԳՈՂՈՒԹԻՒՆԸ

Եթէ մարքէս անցուցեր եմ, փրկութեան իբր միակ միջոց, վրէժխնդիր ըլլալ ոճրագործներէն. ո՛չ, որովհետեւ ժողովուրդը պիտի հակառակէր ձեզի. անիկա զգաց որ միայն այս միջոցը մնացած էր իրեն, և ինքն իսկ ինքզինքը բռնապետ հռչակելով է որ մատնիչներէն ազատուեցաւ: Ես ալ ուրիշներէ աւելի դողդողացի այս սոսկալի արարքներուն վրայ խորհելով, և որպէս զի յաւիտենապէս պարապը չերթան անոնք, ես կը փափաքէի որ արդար ու հաստատակամ ձեռք մը վարէր զանոնք: Եթէ Պասթիլլի առման ժամանակ այս բաները ընելու անհրաժեշտութիւնը հասկընային, իմ մէկ խօսքիս վրայ 500 ապիրատներու գլուխը պիտի իյնար և խաղաղութիւնը այդ ժամանակէն պիտի հաստատուէր: Բայց որովհետեւ ի գործ չդրուեցաւ այդ այնչափ իմաստուն որքան անհրաժեշտ միջոցը, 100,000 հայրենասէրներ խողխողուեցան, և նոյնքան

ալ խողխողուելու վտանգին ենթակայ ենք։ Անկէ զատ, ես երբէք չեմ փափաքած այդ տեսակ բանտապետ մը, հսկող մը, եւապետ մը (բառերը նշանակութիւն չունին) ըլլալ. միայն յիմար մը կրնար երեւակայել այդ տեսակ բան մը. իբր հայրենիքին նուիրուած զոհ մը, որուն բաղդակից ըլլալ չվախի ուզէր ոեւէ փառասէր անձ, ես կ'ուզէի որ բանտապետութիւնը քանի մը օր միայն տեւէր, որ անոր իշխանութիւնը սահմանափակուէր մասնիկները դատապարտելու գործին մէջ, եւ մինչեւ իսկ կ'ուզէի որ այդ միջոցին ծանր քար մը կապեն անոր ոտքին, որպէս զի մի՛շտ ժողովուրդին ձեռքին տակը ըլլար։ Իմ գաղափարներս, որքան ալ ընդվզեցուցիչ թուին ձեզի, հայրենիքի բարօրութեան համար յղացուած են, եթէ դուք այնքան վեհոգի չէք որ կարենաք հասկնալ զիս, աւելի գէշ ձեզի համար։

Այն խոր լռութիւնը որ տիրած էր մինչեւ այն ժամանակ, ընդմիջուեցաւ մէկ քանի հոգիներու խնդալովը, բայց բեմբասացը չխռովուեցաւ, եւ աւելի անազդեցիկ քան թէ ծիծաղելի դառնալով շարունակեց. —

Ա՛յս էր իմ կարծիքս, գրաւորապէս ստորագրուած եւ հրապարակաւ պաշտպանուած. եթէ սխալ էր այդ կարծիքը, պէտք էր պայքար մղել անոր դէմ, զիս լուսաբանել, բայց երբեք՝ ամբաստանել զիս իբր բանտապետ։ Կ'ամբաստանեն զիս թէ փառասէր եմ. բայց նայեցէք եւ դատեցէք զիս. եթէ միայն ուզէի ծախել իմ լռութիւնս, ոսկիով խեղդուած կ'ըլլայի, բայց հինգ փարայ չունիմ այսօր։ Անդադար հալածուած, ստորերկրեայ նկուղէ նկուղ թափառեցայ եւ ճշմարտութիւնը քարոզեցի գլխատուելու վտանգով։ Գալով ձեզի, բացէ՛ք աչքերնիդ. ձեր ժամանակը փոխանակ աշխատելու գայթակղալից վիճաբանութիւններով, կատարելագործեցէք Իրաւանց Յայտարարութիւնը, հաստատեցէք Սահմանադրութիւնը եւ դրէք հիմերը արդար ու ազատ կառավարութեան մը, որ ձեր աշխատութեանց իրական նպատակն է։

Այս սարօրինակ մարդուն ընդհանուր ուշադրութիւն մը ընծայուած էր, եւ Ժողովը՝ այնքան սահմռկեցուցիչ եւ հաշուուած սիսթէմէ մը սարսափահար՝ լուռ կեցած էր. Մառայի մէկ քանի կուսակիցները, այս լռութենէն քաջութիւն առած, ծափահարեցին. բայց միւսները ծափ չի զարկին, եւ Մառա իր տեղը վերադարձաւ, առանց ծափահարութեան եւ առանց զայրոյթի արտայայտութիւն մը ընդունելու։

Վէրնիօ, Ժիրոնտէններու ամենէն մաքուրը եւ խոհականը, ինքզինքը պարտական զգաց խօսելու, Ժողովին զայրոյթը արթնցնելու համար. անիկա ցաւ յայտնեց որ դժբաղդութիւնն ունի պատասխանելու մարդու մը, որուն վրայ այնքան ամբաստանութիւններ կը ծանրանան։ Շապօ եւ Դալիէն այս բառերուն վրայ կը դոչեն եւ կը հարցնեն թէ արդեօք Շապըլէէն արձակուած վճիռներն են, Լաֆայէթը դիմակաթափ ընելուն համար։ Վէրնիօ կը պնդէ իր խօսքերուն վրայ եւ կ'ողբայ որ հարկադրուած է պատասխանել մարդու մը, որ քաւած չէ այն վճիռները, որոնց տակ բեռնաւորուած է, եւ որուն վրայէն գրպարտութիւններ եւ արիւն կը կաթկթեն։

Աղմուկը կրկին կը բարձրանայ, բայց անիկա կը շարունակէ հաստատակամութեամբ, եւ Բարիզի երեսփոխանութեան մէջէն Տավիտը, Տիւսօն եւ ուրիշ մէկ քանի երեսփոխաններ նշանակելէ ետք, ձեռք կ'առնէ Համայնքային Խորհուրդի այն նշանաւոր շրջաբերականը, զոր արդէն յիշատակեցինք, եւ զայն կը կարդայ ծայրէ ծայր։ Սակայն եւ այնպէս, որովհետեւ ծանօթ էր արդէն, այնքան տպաւորու-

թիւն չի գործեր այս, որքան ուրիշ վաւերաթուղթ մը զոր իր կարգին կը կարդայ երեսփոխան Պուալօ. ատիկա Մառայի մէկ թերթն էր, նոյն օրն իսկ տպուած, և որուն մէջ ըսուած է.—

«Միակ մտածում մը կը ճնշէ զիս. աս է թէ՝ ժողովուրդը փրկելու համար թափած բոլոր ջանքերս ոչինչի պիտի յանգին, մինչեւ որ նոր ապստամբութիւն մը չծագի. Քոնվանսիոնի երեսփոխաններուն մեծ մասին վրայ նայելուս պէս կը յուսահատիմ հայրենիքի փրկութենէն: Եթէ առաջին 8 ժողովներուն մէջ Սահմանադրութեան հիմերը չդրուին, այլեւս այս ժողովէն բան մը մի սպասէք. յիսուն տարուան անիշխանութիւն մը կը սպասէ ձեր դրան առջեւ, և միայն բռնապետի մը շնորհիւ պիտի կրնաք դուրս ելլել այդ վիճակէն, ու այդ բռնաւորը ըլլալու է ճշմարիտ հայրենասէր և պետական մարդ... Ով շատախօս ժողովուրդ, եթէ գիտնայի՜ր գործել...:»

Այս յօդուածին ընթերցումը յաճախ ընդմիջուեցաւ ղայրոյթի աղաղակներով. հազիւ թէ վերջացած էր, բազմաթիւ երեսփոխաններ յարձակեցան Մառայի վրայ. ոմանք սպառնալից կը գոչէն. Ապտէ՜յ տարէք, կառափնա՛տ ղրկեցէք: Ուրիշներ արհամարհանքի խօսքերու տակ կ'ընկճէին զայն, բայց Մառա, բոլոր այս յարձակումներուն կը պատասխանէ ժպիտով մը միայն: Պուալօ ամբաստանութեան հրամանագիր մը հանել կ'առաջարկէ և ժողովին մեծամասնութիւնը քուէի դնել կ'ուզէ: Մառա պաղարիւնութեամբ կը պնդէ որ պէտք է զինքը լսել. ատեանին վրայ միայն ելլելու է, որպէս զի զինքը մտիկ ընեն. և ահա ատեան կը բարձրանայ և իր սովորական բացատրութեամբը, իր թշնամիները պարկեշտութեան կը հրաւիրէ: Գալով այն վճռագիրներուն, զորս չեն ամչցած իրեն դէմ արձակելու, կ'ըսէ թէ կը պարծի անոնցմով, որովհետեւ անոնք իր քաջութեան վարձատրութիւնը կը կազմեն: Անկէ զատ կ'ըսէ, ժողովուրդը զինքը այս Ազգային ժողովին ղրկելով, ջնջած եղաւ իրեն դէմ եղած վճիռները, և իր ու իր ամբաստանիչներուն միջեւ ընտրութիւն մը ըրած: Գալով այն յօդուածին զոր քիչ առաջ կարդացին, կ'ըսէ թէ կը հաստատէ անոր մէջ յայտնուած գաղափարները, որովհետեւ, կ'ըսէ սուտ երբէք չմոտեցաւ իր շրթունքներուն, և վախ ըսուած բանը ի՛նչ է չի գիտեր. «Ինձմէ պահանջել, որ յետս կոչում մը ընեմ, յարեց, կը նշանակէ պահանջել որ չտեսնեմ այն բանը, զոր կը տեսնեմ, չը զգամ այն՝ զոր կը զգամ, և արեւին տակ ո՛չ մէկ զօրութիւն կայ որ կարող ըլլայ գաղափարներու այս յեղաշրջումը յառաջ բերել. Ես կրնամ երդնուլ որ սիրտս մաքուր է, բայց չեմ կրնար իմ մտածումներս փոխել. ատոնք են այն մտածումները՝ զոր իրաց բնոյթը կը թելադրէ:»

Այնուհետեւ Մառա կ'իմացնէ ժողովին, թէ այդ յօդուածը, որ 10 օր առաջ, երբ յայտարարութիւն տպուած էր, վերստին տպուած է այս օր՝ հակառակ իր կամքին, ձեռամբ իր տպագրիչին. կ'ըսէ թէ Հանրապետութեան Օրագիրին առաջին թիւին մէջն իսկ՝ իր սկզբունքներուն նոր մէկ բացատրութիւնը պիտի տայ, որմէ ապահովաբար ժողովը գոհ պիտի մնայ, եթէ ուզէ զինքը լսել:

Արդարեւ կը հաւանին կարդալ այս նոր յօդուածը, և ժողովը, Մառայի չափաւոր արտայայտութիւններէն համոզուած, ու իր նոր ճամբան յօդուածէն գոհ, նուազ խստութեամբ կը վարուի հետը, մինչեւ իսկ ոմանք գոհունակութեան նշաններ կը յայտնեն: Բայց քիչ յետոյ, Մառա կրկին բեմ կը բարձրանայ իր սովորական յանդգնութեամբը և կը յաւակնի իր պաշտօնակիցներուն դաս մը տալ շուտով վրդովուելու

վտանգին վրայ․ եթէ իր թերթը նոյն օրը լոյս տեսած չըլլար, և զինքը չարդարացնէր, կուրօրէն բանտ պիտի ղրկէին զինքը․ «Բայց, ըսաւ, ցոյց տալով ատրճանակ մը, զոր միշտ գրպանը կը պահէր և զայն ճակտին սեւեռելով, եթէ զիս ամբաստանութեան տակ առնէիք, ես այս բեմին վրայէն իսկ կը պայթեցնէի իմ ուղեղս։ Ահաւասիկ իմ աշխատութիւններուս, կրած վտանգներուս և քաշած տառապանքներուս պտուղը․ լաւ ուրեմն, ձեր միջեւ պիտի մնամ որպէս զի ճակատեմ ձեր կատաղութեանց։»

Այս վերջին բառերուն վրայ Մառայի պաշտօնակիցները կրկին զայրանալով կը գոչեն թէ խենդ մը, ապիրատ մըն է անիկա, և երկարատեւ խառնակութիւն մը յառաջ կը բերեն։

Վիճաբանութիւնը քանի մը ժամ շարունակած էր, բայց ի՛նչ հասկցուած էր։ Ոչինչ՝ եռապետութիւն մը հաստատելու համար ենթադրեալ բռնապետական ծրագրի մը մասին, բայց շատ բան՝ կուսակցութեանց նկարագրին և անոնց փոխադարձ ոյժին նկատմամբ։ Տեսած էին Տանդօնը, դիւրահաղորդ և իր պաշտօնակիցներուն հանդէպ հաճոյակատար, պայմանաւ որ զինքը անհանգիստ չընեն իր վարմունքին մասին․ տեսած էին Ռօպէսփիէռը՝ ախունով և գոռոզութեամբ առլի, Մառան՝ լրբութեամբ և յանդգնութեամբը սահմռկեցուցիչ, մինչեւ իսկ իր կուսակցութենէն մերժուած, բայց միշտ ջանք ընելով մտքերը վարժեցնելու իր վայրագ դրութեանց։ Վերջապէս՝ տեսած էին որ երեքն ալ յեղափոխութեան մէջ յաջողութիւն կը գտնեն այլազան մոլութիւններով, երբեք իրարու հետ հաշտ չըլլալով, փոխադարձաբար զիրար ուրանալով, և տակաւին ունենալով բոլոր մարդոց վրայ ազդեցութիւն մը գործելու այն փափաքը, որ դեռ բռնապետութեան ծրագիր մը չի համարուիր։

Ժիրօնտէններուն հետ համաձայնեցան Սեպտեմբերը և իր արհաւիրքը դատապարտելու համար․ անոնց ընծայեցին իրենց կարողութեանց և ուղղամտութեան վայել յարգանքը․ բայց անոնց ամբաստանութիւնները չափազանցեալ և անխոհեմ գտան․ և մարդ ինքզինքը չի կրնար արգիլել անոնց զայրոյթին մէջ տեսնելէ անձնական զգացումներ։ Այդ վայրկեանէն սկսեալ Ժողովը աջ և ձախ կողմերու բաժնուեցաւ, ինչպէս եղած էր Սահմանադիր Ժողովի առաջին օրերուն։ Աջ կողմը անցան բոլոր Ժիրօնտէնները, և անոնք՝ որ առանց անձնականապէս յարած ըլլալու Ժիրօնտէններուն, անոնց վեհանձն զայրոյթին մասնակից էին։ Կեդրոնին մէջ հաւաքուած էին մեծ թուով պարկեշտ այլ խաղաղաբարոյ երեսփոխաններ, որոնք իրենց տաղանդով և իրենց բնաւորութեամբը միայն քուէով կ՚ուզէին մասնակցիլ կուսակցական պայքարներուն և որոնք բազմութեան մէջ կորսուելով չէին ուզեր ձայն հանել, այլ՝ ապահովութեան մէջ ըլլալ։ Իրենց կազմած մեծամասնութիւնը՝ Ժողովին մէջ, այն փութկոտութիւնը, զոր Ժաքօպէն և քաղաքապետական կուսակցութիւնը ցոյց կու տար անոնց աչքին առջեւ՝ ինքզինքնին արդարացնելու համար, այս բոլորը զիրենք կը վստահացնէր։

Անոնք կը սիրէին հաւատալ թէ Քօնվանսիօնի հեղինակութիւնը պիտի կրնար, ժամանակ անցնելով, գրգռիչները հանդարտեցնել․ անոնք զայրացած չէին կոմունի գործունէութիւնը յետաձգուելուն համար և Ժիրօնտէններուն կարենալ ըսելուն համար թէ իրենց ամբաստանութիւնները խնդրական էին։ Ինքզինքնին բանաւոր և անկողմնակալ ցոյց կու տային, երբեմն՝ քիչ մը նախանձոտ, աջակողմին շատ յաճախակի և փայլուն պերճախօսութեանն համար։ Բայց շատ չանցած,

բռնակալութեան առջեւ անոնք տկար և վատաբարոյ պիտի դառնային։ Զանոնք անուանեցին դաշտը, և փոխադարձաբար՝ ձախակողմը լեռ կոչեցին, ուր բոլոր Ժաքօպէնները լեռ մը ձեւացուցած էին իրարու վրայ դիզուելով։

Այս լերան աստիճաններուն վրայ կը տեսնուէին Բարիզի երեսփոխանները, և գաւառական երեսփոխաններէն անոնք, որ իրենց ընտրութիւնը կը պարտէին ակումբներուն թափած աշխատութեանց, կամ որոնք, իրենց ժամանումէն ի վեր սա գաղափարին յարած էին թէ ո՛չ մէկ զիջողութիւն պէտք էր ընել յեղափոխութեան թշնամիներուն։ Անոնց մէջը կային նաև մէկ քանի ականաւոր մտաւորականներ, որոնք ճշգրիտ, խիստ և դրական էին, և որոնց անհաճոյ կը թուէր Ժիրոնտէններուն վարկածները և մարդասիրութիւնը, իբր անօգուտ վարդապետութիւններ։

Սակայն և այնպէս Մոնթանեարները (Լեռնական) շատ բազմաթիւ չէին տակաւին։ Բլէնը (Դաշտային) ստուար մեծամասնութիւնը կը կազմէր, և միանալով աջակողմին, նախագահութիւնը տուած էր Բէդիօնին. անոնք համամիտ էին Սեպտեմբերի դէմ Ժիրոնտէններուն գործած յարձակմանց, միայն թէ շատ կանխահաս և շատ քիչ հիմնական կը գտնէին Ժիրոնտէն անձնաւորութիւնները։

Երկու կուսակցութեանց փոխադարձ ամբաստանութիւնները օրակարգի անցուցած էին. բայց անխախտ պահած էին նախորդ օրուան որոշումը և երեք կէտի վրայ վճիռ գոյացուցած էին. 1. Ներքին գործոց նախարարութենէն պահանջել ճշգրիտ և հաւատարիմ տեղեկագիր մը՝ Բարիզի կացութեան մասին. 2. Սպանութիւն և թալան դրդող գրգռիչներուն դէմ օրինագիծ մը խմբագրել. 3. Քոնվանսիոնի շուրջ գաւառական պահակազօրք մը հաւաքելու միջոցներուն վրայ խորհիլ։

Բարիզի կացութեան մասին տեղեկագիր մը պատրաստելու խնդիրը յայտնի է թէ ի՛նչ ուղղութեամբ պիտի կատարուէր, քանի որ Ռօլանին յանձնուած էր այդ գործը։ Գրաւոր գրգռութիւններու դէմ և պահակազօրքի կազմութեան համար կազմուած յանձնաժողովն ալ ոչ նուազ յոյս կը ներշնչէր, ըստ որում ամբողջութեամբ Ժիրոնտէններէ կը բաղկանար, Պիւզօ, Լասուրս, Քէրսէն անդամ էին անոր։

Մասնաւորաբար այս վերջին երկու ծրագիրներուն դէմ էր որ ելած էին Մոնթանեարները. կը հարցնէին թէ կ'ուզեն պատերազմական վճի՞ռը և Շան տը Մարսի կոտորածնե՞րը վերանորոգել, և թէ արդեօք Քոնվանսիոնը կը փափաքէ՞ր ինքզինքին մոլորակներ և պահակախումբեր ստեղծել, ինչպէս վերջին թագաւորը։ Ինչպէս Ժիրոնտէնները կ'ըսէին, այս կերպով անոնք կը վերանորոգէին արքունիքին տուած բոլոր պատճառաբանութիւնները՝ Բարիզի մէջ բանակատեղի մը հաստատելու ծրագրին դէմ։

Ձախակողմի անդամներէն շատերը, նոյն իսկ ամենէն եռանդուններ, Քոնվանսիոնի անդամի իրենց հանգամանքովը շատ բուռն կերպով կ'արտայայտուէին Համայնքային Խորհուրդի ձեռնձգութեանց դէմ, և Բարիզի երեսփոխաններէն զատ ոչ ոք կը պաշտպանէր զայն, երբ անոր վրայ յարձակում մը ըլլար, ինչ որ ամէն օր կը պատահէր։ Այս պատճառաւ, հրամանագիրները իրարու կը յաջորդէին։ Ըստ որում Համայնքային Խորհուրդը իր վերակազմութիւնը կը յապաղեցնէր, հիմնուելով այն օրէնքին վրայ, որ կը տրամադրէր բոլոր վարչական մարմիններու վերակազմութիւը, հրամայեցին գործադիր իշխանութեան՝ հսկել անոր վերանորոգման և այդ մասին, երեք օրուան մէջ հաշիւ տալ Ժողովին։ Վեց հոգիէ բաղկացեալ յանձնախումբ մը անուանուե-

ցաւ, ընդունելու համար յայտարարութիւնը բոլոր անոնց, որոնք իրենց գոյքերը ի պահ դրած էին Քաղաքապետարանին մէջ, և այդ գոյքերուն ինչ եղած ըլլալը ստուգելու, կամ հասկնալու համար թէ քաղաքապետութիւնը ինչ ըրած էր զանոնք։

Գաւառային վարչութիւնը, զոր ապստամբական Համայնքային Խորհուրդը վարչական պարզ մարմնի մը դիրքին և հանգամանքին վերածած էր, իր բոլոր իշխանութիւններուն մէջ վերահաստատուեցաւ և վերստացաւ իր «Վարչութիւն» տիտղոսը։ Համայնքային ընտրութիւնները, քաղաքապետին, քաղաքապետութեան և ընդհանուր ժողովին նշանակմանն համար, զորս Ժաքօպէնները դեռ քիչ առաջ կ'ուզէին բաց քուէով կատարել, ախոյնները վախցնելու համար, կրկին գաղտնի քուէարկութեամբ կատարուեցան, գոյութիւն ունեցող օրէնքին մէկ հաստատութեամբը։

Այս ապօրէն դրութեամբ արդէն իսկ կատարուած ընտրութիւնները չեղեալ համարուեցան և մասնաճիւղերը համակերպեցան նոր որոշուած ձեւով վերսկսիլ ընտրութիւնները։ Վերջապէս՝ հրամանագրուեցաւ որ առանց ձերբակալման հրամանի բանտարկուածները անմիջապէս ազատ արձակուին. ասիկա զօրաւոր հարուած մըն էր, տրուած՝ հսկողութեան յանձնախումբին, որ մանաւորաբար անձերու վրայ կը թափէր իր կատաղութիւնը։

Բոլոր այս հրամանագիրները տըրուած էին Հոկտեմբերի առաջին օրերուն, և Համայնքային Խորհուրդը, խստօրէն մղուած, ինքզինքը բանադատուած կը զգար Քոնվանսիօնի ազդեցութեան տակ խոնարհելու։ Սակայն և այնպէս հսկողութեան յանձնախումբը չէր ուզած առանց դիմադրութեան յաղթահարուիլ։ Իր անդամները ներկայացած էին ժողովին, ըսելով թէ՝ իրենց թշնամիները պիտի չփոթեն. անոնք ի ձեռին ունէին այն թուղթերը, զորս գտած էին Լաքօրդի քով, Թագաւորին անձնական գանձուն վերակացու, և, ինչպէս կը յիշուի, դատապարտուած Օգոստոս 17 ի ատեանէն. կ'ըսէին անոնք թէ ձեռքերնին ունին նամակ մը, ուր բացատրուած էր թէ ի՞նչ արժած էին մէկ քանի հրամանագիրներ, որոնք արձակուած էին նախընթաց ժողովներուն մէջ։ Անոնք եկած էին դիմակազերծ ընել արքունիքին ծախուած երեսփոխանները, և ապացուցանել անոնց հայրենասիրութեան կեղծ ըլլալը։

— Անուննի՞ն տուէ՛ք, գոչեց ժողովը, զայրոյթով։

— Տակաւին չենք կրնար տալ անոնց անունը, պատասխանեցին յանձնախումբի անդամները։

Անմիջապէս, այդ զրպարտութիւնը մերժելու համար կազմուեցաւ 24 երեսփոխանէ բաղկացեալ յանձնախումբ մը, որուն անդամները առնուեցան Սահմանադիրին և Օրէնսդիրին չմասնակցած երեսփոխաններէն. պաշտօն տուին ըստուգել ներկայացուած վաւերաթուղթերուն ճշդութիւնը և տեղեկագիր մը պատրաստել այդ մասին։ Մառա, որ այս ամբաստանութեան հնարիչն էր, իր թերթին մէջ հրատարակեց որ, Համայնքային Խորհուրդի ամբաստանիչ՝ Իօլանականներուն վերադարձուցած էր իրենց դրամը, և ծանոյց որ, իբր թէ ժիրօնտէններու դաւադրութիւն մը երեւան ելած է։

Այլ սակայն, թուղթերը քննելով տեսնուեցաւ որ նոր երեսփոխաններէն ո՛չ մին յանցանքի տակ չէ, այնպէս որ հսկողութեան յանձնախումբը զրպարտիչ հռչակուեցաւ։ Թուղթերը այնքան բազմաքանակ էին որ, 24 երեսփոխանները չկարենալով անոնց քննութիւնը Քաղաքապետարանի մէջ շարունակել, զանոնք փոխադրեցին ժողովին յանձնախումբե-

րէն մէկուն մէջ. Մառա տեսնելով որ այս կերպով կը զրկուի իր ամենօրեայ ամբաստանութիւնները քաղելու ճոխ մթերանոցէն, սաստիկ զայրացաւ և իր թերթին մէջ գրեց որ բոլոր մատնութեանց ապացոյցները ճնշել կ՚ուզուի։

Համայնքային Խորհուրդի ատենագրութիւնները այս կերպով զսպելէ յետոյ Ժողովը զբաղեցաւ գործադիր իշխանութեամբ, և որոշեց որ Նախարարները այլ ևս չկարենան առնուիլ իր մէջէն։ Տանդօն, որ հարկադրուած էր ընտրութիւն մը ընել դատական Նախարարի և Քոնվանսիոնի անդամակցութեան պաշտօններուն միջև, Միրապոյի նման նախընտրեց այն պաշտօնը, որով պիտի կրնար ապահովել բեմը, և հրաժարեցաւ Նախարարութենէն, առանց հաշիւ տալու գաղտնի ծախսերու մասին, ըսելով թէ այդ հաշիւը դահլիճին տուած էր. ասիկա շատ ճիշտ չէր, բայց բարակը չփնտռեցին և անցան վրայէն։

Ֆրանսուա տը Նէօֆշաթօ մերժած ըլլալով դատական Նախարարի պաշտօնը, Կառա, Նշանաւոր գրագէտ և մտացի գաղափարապաշտ, ու Ժուռնալ տը Բարիի սքանչելի հրատարակութեամբ հռչակաւոր դարձած, գրաւեց դատական Նախարարի աթոռը։ Սէրվան, քրտնաջան վարչութենէ մը յոգնաբեկ, որ եթէ ոչ իր կարողութիւններէն՝ գոնէ իր ոյժերէն վեր էր, նախընտրեց հրամանատարն ըլլալ այն բանակին, զոր կը կազմէին Պիրէնեան լեռներու երկայնքին։

Նախարար Լըպրէօնի առժամապէս պաշտօն յանձնուեցաւ պատերազմական Նախարարութեան հետ արտաքին գործոցն ալ ստանձնել։ Վերջապէս, Ռօլան իր հրաժարականը տուաւ, յոգնած՝ այն անիշխանութենէն, որ այնքան հակառակ կուգար իր պարկեշտութեանը և կարգ կանոնի մասին իր ունեցած անձկելի սիրոյն։ Ժիրոնտէնները Ժողովին առաջարկեցին հրաւիրել զայն՝ որ իր Նախարարական պաշտօնէն հրաժարի. Մոնթանեառները, մասնաւորաբար Տանդօն, որուն շատ հակառակ էր Ռօլան, ընդդիմացան այս քայլին, իբր անարժան Ժողովին արժանապատուութեան։ Տանդօն կը գանգատէր որ Ռօլան ակար մէկն էր ու իր կնոջը ձեռքով կը կառավարուէր. ակարութեան այս մեղադրանքին պատասխանեցին Սեպտեմբեր 3 ի նամակով, և տակաւին կրնային պատասխանել յիշատակելով այն ընդդիմութիւնը՝ որուն ինք՝ Տանդօն հանդիպած էր դահլիճին մէջ։

Այսուհանդերձ օրակարգին անցան։ Ռօլան՝ Ժիրոնտէններուն և բարի մարդոց սաստման վրայ մնաց Նախարարութեան մէջ. անիկա Ժողովին գրեց ազնուականօրէն. «Ես կը մնամ դահլիճին մէջ, որովհետև զրպարտութիւնը հոն կը յարձակի իմ վրաս, որովհետև հոն վտանգներ կը սպասեն ինծի, քանի որ Քոնվանսիոնը կը թուի փափաքիլ որ ես հոն մնամ դեռ։» Ի վերջոյ կը յարէր. «Շատ փառաւոր բան մըն է որ զիս մեղադրեն միայն անոր համար, որ առաքինութեան և քաջութեան հետ մէկ եղած եմ։»

Այնուհետև Ժողովը զանազան յանձնախումբերու բաժնուեցաւ. կազմեց հսկողութեան յանձնաժողով մը, որ կը բաղկանար 30 անդամներէ. ուրիշ մը, պատերազմական գործերու համար՝ բաղկացած 24 հոգիէ. երրորդ մը, հաշուակալութեան համար, 15 անդամներէ. չորրորդ մը՝ ոճրադատ և քաղաքային օրէնքներու համար, բաղկացեալ 48 անդամներէ. հինգերորդ մը՝ թղթադրամներու, դրամներու և ելմտական գործերու համար, 42 հոգի։ Վերջապէս, բոլոր միւսներէն աւելի կարևոր, վեցերորդ յանձնախումբ մը կազմուեցաւ, որպէս զի ի գլուխ հանէ Քոնվանսիոնի գումարման նպատակը, այսինքն Սահմանադրութեան ծրագիր մը պատրաստել։ Անոր անդամները առնուեցան զանազան տեսակէտով հռ-

չափաւոր մարդերէ, եւ գրեթէ ամէնքն ալ ընտրուած՝ աջակողմի չափաւորներուն համաձայն։ Իմաստասիրութիւնը այդ յանձնաժողովին մէջ ունեցաւ իր ներկայացուցիչը յանձին Սիյէսի, Քօնտօրսէի եւ Ամերիկացի Թոմաս Բէյնի, որ դեռ նոր եկած էր Ֆրանս. քաղաքացի եւ Ազգ. Քոնվանսիոնի անդամ. Ժիրոնդը նոյն յանձնախումբին մէջ մասնաւորաբար ներկայացուեցաւ Ժանսոնէով, Վէրնիոյով, Բէթիոնով եւ Պրիսոյով։ Կեդրոնի կողմէ ներկայացուցիչներ էին Պառէր, իսկ Մոնթաններու կողմէ՝ Տանդոն։

Անշուշտ զարմացողներ պիտի ըլլան որ այս այնքան յարաշարժ, այլ այնքան քիչ իմաստասէր հաւաքը ստանուած է զուտ փիլիսոփայական յանձնախումբի մը մէջ, եւ այնպէս կը թուի թէ՝ Ռուսոյականի նկարագիրը, եթէ ոչ իր կարողութիւնները գլխքը ունէին արժանի կը համարէին այս գործին։ Անուրանալի է որ, Ռուսոյականը շատ աւելի կը ձգտէր այս գիրքին, եւ իրաւցէս միաւորուեցաւ զայն ձեռք ձգած չըլլալուն համար. Նախապատուութիւն տուին Տանդոնին, որուն բնական ուղղամտութիւնը գիտքը ամէն բանի յարմար կը համարէին, եւ ոչ մէկ խորունկ հակառակութիւն դեռ գիտքը չէր բաժներ իր պաշտօնակիցներէն։ Այս յանձնախումբին կազմութիւնն էր որ պատճառ եղաւ Սահմանադրութեան գործին այսքան ետ մնալուն։

Այս կերպով, մայրաքաղաքին մէջ կարգ կանոնը հաստատելէ, գործադիր իշխանութիւնը կազմակերպելէ, յանձնախումբերու աշխատութիւնները բաժնելէ եւ Սահմանադրութեան պատրաստութիւնները տեսնելէ յետոյ, կը մնար կարգադրելիք վերջին խնդիր մը, մէկն այն լուրջ խնդիրներէն, որոնցմով Ժողովը հարկադրուեցաւ զբաղիլ. այն է Լուդովիկոս ԺԶ.ի եւ իր ընտանիքին վիճակը։

Ժողովին մէջ այս մասին շատ խորունկ յուզութիւն տիրած էր. ամէն կողմ, Ժաքօպէններու ակումբներուն մէջ, Համայնքային Խորհուրդին, մանաւանդ եւ հասարակաց վայրերու մէջ կը խօսէին. Միայն Քոնվանսիոնի մէջ էր որ լուռ կը կենային։ Տարագիրներ զէն ի ձեռին բռնուած էին, եւ Բարիզ տարուած էին ոճրագործ օրէնքները ի գործ դնելու համար անոնց վրայ։ Այս խնդրին շուրջ, ձայն մը բարձրացաւ. առաջին ձայնն էր ատիկա, որ հարցուց թէ փոխանակ տարագրաց յանցաւորներով զբաղելու, աւելի օգտակար չէ՞ր Թամպլի մէջ բանտարկուած բարձր դասու յանցաւորներով զբաղիլ։

Այս բանախօսն վրայ խորունկ լռութիւն մը տիրեց Ժողովին մէջ. ամէնէն առաջ խօսք առաւ Պարպարու, եւ ըսաւ որ գիտնալէ առաջ թէ Քոնվանսիոնը պիտի դատէ՞ Լուդովիկոս ԺԶ.ն, պէտք է որոշել թէ Քոնվանսիոնը դատական մարմին պիտի ըլլա՞յ. որովհետեւ ուրիշ յանցաւորներ ունէր ան, որոնք պէտք էր դատել, Թամպլի մէջ գտնուողները դատել առաջ։ Այս խնդիրը յարուցանելով Պարպարու կ'ակնարկէր այն ծրագրին, որուն համաձայն Քոնվանսիոնը արտասովոր ատեան մը պիտի վերածուէր, իր ձեռքովը դատելու համար գրգռիչները, եռապետները, եւն։ Կարճ վիճաբանութենէ մը յետոյ, առաջարկը ղրկուեցաւ օրէնսդրական յանձնախումբին, քննելու համար այն հարցերը, որոնց ծնունդ կու տար այդ առաջարկը։

ՎԵՐՋ ԻՆՆԵՐՈՐԴ ԳԻՐՔԻ

# ՏԱՍՆԵՐՈՐԴ ԳԻՐՔ

## ԺԷՄՄԱՓ

Զինուորական կացութիւնը 1792 Հոկտեմբերի վերջերը. — Լիլի ռմբակոծումը Աւստրիացիներէն. Վորմսի եւ Մայանսի գրաւումը Քիւստինի կողմէ. — Մեր զօրավարներուն սխալները. — Քիւստինի գէշ գործողութիւնները. — Ալպեաններու զօրաբանակը. — Սաւոյայի եւ Նիսի առումը. — Տիւմուրիէ Փարիզ կ'երթայ. Իր դիրքը՝ կուսակցութեանց հանդէպ. — Ազդեցութիւնը եւ կազմակերպութիւնը Ժաքոպեն Ակումբին. — Ֆրանսական ընկերութեան վիճակը. Փարիզի սալոնները. — Մառայի եւ Տիւմուրիէի տեսակցութիւնը. — Մանրավէպեր. — Ժիրոնտեններուն երկրորդ պայքարը Մոնթանեաններուն դէմ. — Լուվէ Ռոպեսփիերը կ'ամբաստանէ. Ռոպեսփիերի պաշտպանութիւնը. Ժողովը անտեսելով կը թողու անոր ամբաստանութիւնը. — Առաջին տագնապ Լուդովիկոս ԺԶ.ի դատավարութեան. — Տիւմուրիէի զինուորական գործողութեանց շարունակութիւնը. — Բելժիքայի նախայարձակութեան մէջ. Բաշ՝ պատերազմական նախարար. — Ժեմմափի յաղթանակը. — Բարոյական եւ քաղաքական կացութիւնը Պելճիքայի մէջ. Տիւմուրիէի քաղաքական կացութիւնը. — Կանտ. Մոնս. Պրիւքսէլ. Նամիւրի եւ Անվերսի առումը. Պելճիքայի գրաւումը մինչեւ Մէօզ. — Զինուորական վարչութեան մէջ փոփոխութիւն, Տիւմուրիէի անհամաձայնութիւնը Քոնվանսիոնի եւ նախարարութեանց դէմ. — Մեր կացութիւնը Ալպեաններու եւ Պիրենեան լեռներուն մէջ:

Այս միջոցին, Ֆրանսայի զինուորական կացութիւնը շատ փոխուած էր: Հոկտեմբերի կէսին կը հասնէինք. թշնամին արդէն եա մղուած էր Շամպանիէն և Ֆլանտրիայէն և օտար հողը արշաւանքի ենթարկուած էր երեք կէտերու վրայ, Բալաթինան, Սավուան և Նիսի կոմսութիւնը:

Տեսանք որ Բրուսիացիները քաշուեցան Լիւնի բանակատեղիէն, Արկոնի ճամբան վերստին բռնեցին, կիրճերը խճողելով մեռեալներով և հիւանդներով և ամբողջական փճացումէ մը խալըսեցան մեր զօրավարներու անփութեան հետեւանքով, որոնցմէ իւրաքանչիւր ոք տարբեր նպատակի մը կը հետապնդէր: Սաքս-Թեշէն դուքսը շատ չէր յաջողած իր Հոլանտայի վրայ ըրած յարձակումին մէջ: Մինչ Բրուսիացիները Արկոնի վրայ կը քալէին, այդ իշխանը չուզելով եա մնալ, կարծած էր որ պարտական է փայլուն ձեռնարկ մը ընել: Այլ սակայն, թէեւ մեր հիւսիսի սահմանագլուխը դատարկ էր, իր միջոցներն ալ մերիններէն շատ մեծ չէին և հազիւ թէ կրցաւ 15,000 հոգի հաւաքել շատ քիչ պաշարով մը: Այն ատեն ամրոցներու ամբողջ երկայնքին վրայ կեղծ յարձակումներ ձեւացնելով, մեր պզտիկ

բանակատեղիներէն մէկուն պարտութիւնը գրգռեց և յանկարծ Լիլի վրայ եկաւ, փորձելու համար պաշարում մը զոր ամենէն մեծ զօրավարները հզօր բանակներով և ահագին ռազմական գործիներով չէին կրցած գործադրել։ Միայն յաջողութեան հաւանականութիւնն է որ պատերազմի մը մէջ արդարացի կը դարձնէ անգութ ձեռնարկները։ Դուքը հազիւ թէ քաղաքին մէկ կէտին կրցաւ մօտենալ և հոն հաստատեց թնդանօթներ, որոնք վեց օր շարունակ Լիլը ռմբակոծեցին, և երկու հարիւր տունէ աւելի հրդեհեցին։ Կ'ըսեն որ Մեծ-Դքսուհի Քրիստին, ուզեց անձամբ ներկայ ըլլալ այս ահռելի տեսարանին։ Եթէ իրաւ է, անիկա միայն ականատես եղաւ պաշարեալներուն հերոսութեան և աւստր. բարբարոսութեան անօգուտ ձեռնարկներուն։ Լիլցիները ազնիւ յուսահատութեամբ մը դիմադրելով, բնա՛ւ անձնատուր ըլլալու չհամակերպեցան. և հոկտեմբեր 8ին, մինչ Բրուսիացիները Արկոնը կը ձգէին, Դուքս Ալպէռ ստիպուած էր Լիլէն հեռանալ։ Լապուրտոնէ զօրավարը Սուասօնէն և Պուրնօնվիլ՝ Շամբանիէն վերադառնալով բանադատեցին զայն արագօրէն հեռանալու մեր սահմանագլխէն և Լիլցիներու դիմադրութիւնը, ամբողջ Ֆրանսայի մէջ իմացուելով, միայն աւելցնելու ծառայեց ընդհանուր խանդավառութիւնը։

Մօտաւորապէս նոյն ժամանակները Քիւսդին Բալադինայի մէջ յանդուգն ձեռնարկներ կը փորձէր, որոնց հետեւանքները աւելի փայլուն էին, քան թէ հաստատ։ Կապուած ըլլալով Պիրօնի զօրաբանակին որ Հռենոսի երկայնքին վրայ բանակած էր, 17,000 հոգիով տեղաւորուած էր Սպիրէն քիչ մը հեռու։

Արշաւանքի մեծ բանակը Ֆրանսայի ներսերը յառաջանալով տկար կերպով մը պաշտպանուած էր իր յետսակողմը։ Տկար ջոկատներ կը ծածկէին Սպիրը, Վորմսը և Մայանսը։ Քիւսդին անիկա նշմարեց։ Սպիրի վրայ քալեց և Սեպտեմբեր 30ին մտաւ հոն, առանց դիմադրութեան հանդիպելու։ Այս յաջողութենէն քաջալերուած, Հոկտեմբեր 7ին մտաւ Վորմս, ուր աւելի դժուարութեան չհանդիպելով 2700 հոգիի զօրագունդ մը ստիպեց զինաթափ ըլլալու։ Յետոյ գրաւեց Ֆրանքընթալը և անմիջապէս ուշադրութիւնը դարձուց Մայանսի կարեւոր կէտին վրայ, որ Բրուսիացիներուն նահանջին ամենակարեւոր կէտերէն մէկն էր և ուր անխոհեմութիւնը ունեցած էին միայն միջակ պահակախումբ մը թողլու։

Քիւսդին 17,000 հոգիով և առանց մթերքի չէր կրնար պաշարում մը ընել, բայց ձեռնարկ մը ուզեց փորձել։ Այն գաղափարները որոնք յեղափոխած էին Ֆրանսան, կը խռովէին ամբողջ Գերմանիան և մանաւորապէս համալսարանական քաղաքները. Մայանս անոնցմէ մէկն էր և Քիւսդին հաղորդակցութիւն հաստատեց քաղաքին հետ։ Պարիսպներուն մօտեցաւ, յետոյ հեռացաւ, երբ աւստրիական զօրագունդի մը հասնիլը իմացուեցաւ սուտ տեղը, նորէն պարիսպներուն մօտեցաւ և մեծ շարժումներ ընելով թշնամին խաբեց իր բանակին ուժին վրայ։ Տեղւոյն վրայ խորհրդակցեցան։ Անձնատուր ըլլալու ծրագիրը բուռն կերպով պաշտպանեցին Ֆրանսացիներու կուսակիցները և հոկտեմբեր 21ին քաղաքին դուռները բացին Քիւսդինի առջեւ։ Զօրագունդը զինաթափ եղաւ, ութը հարիւր Աւստրիացիներէ զատ, որոնք միացան մեծ բանակին։ Այս յաջողութիւններուն լուրը շուտով տարածուեցաւ և տարօրինակ ցնցում մը յառաջ բերաւ։ Անտարակոյս դիւրին յաջողութիւններ էին ասոնք, շատ քիչ արժէք ունէին բաղդատմամբ Լիլցիներու յարատեւութեան և Սէնդ-Մէ-

Նըհուլոֆ մէջ ցոյց տրուած հիանալի պաշարինութեան հետ. բայց ամէնքն ալ սքանչացած էին, տեսնելով որ պարզ դիմագրութենէ մը յաղթանակի անցած են։ Մինչեւ հոդ, ամէն բան լաւ էր Քիւսդինի կողմէն, եթէ իր դիրքը գնահատելով, գիտնար պատերազմը վերջացնել այնպիսի շարժումով մը, որ կարելի և վճռական ըլլար։

Այդ միջոցին, Տիւմուրիէի, Քէլլէրմանի և Քիւսդինի երեք բանակները բարեբաղդ դիպուածով մը այնպիսի ձեւով մը տեղաւորուած էին, որ կրնային Բրուսիացիները բնաջինջ ընել և մէկ յառաջխաղացումով մը գրաւել Հռենոսի բոլոր գիծը, մինչեւ ծովը։ Եթէ Տիւմուրիէ, նուազ մտազբաղ ըլլալով ուրիշ գաղափարով մը, Քէլլէրմանը պահէր իր հրամանին ներքեւ և Բրուսիացիները հալածէր իր 80,000 հոգիով, եթէ նոյն այդ միջոցին Քիւսդին Մայանսէն Քօպլէնց՝ Հռենոսը իջնելով, իյնար թշնամիին ետեւի կողմէն, անվրիպելիօրէն զանոնք պիտի ընկճէին։ Ցետոյ, հետեւելով Հռենոսի գիծին, մինչեւ Հոլանտա, Ալպէր դուքսը գերի կը մնային հակառակ կողմէն, զայն կը ստիպէին զինաթափ ըլլալու և ճամբայ բանալով. ամբողջ Հոլանտան գրաւուած էր։ Դրէվ և Լիւքսէնպուրկ, որոնք նկարագրած գիծերնուս մէջ են, բնականաբար կը յաղթուէին, մինչեւ Հռենոս, Ֆրանսա կը դառնար և պատերազմը վերջացած կ'ըլլար մէկ ամսուան մէջ։

Տիւմուրիէի հանճարը առատաբուխ էր, բայց իր գաղափարները ուրիշ ընթացք մը առած էին։ Անհամբեր Պելճիքա վերադառնալու վրայ կը խորհէր, միայն ուզելով հոն ընթանալ, Լիլի օգնութեան համնելու և դուքս Ալպէրի ճակատի բանակը ետ մղելու համար։ Ուրեմն Քէլլէրմանը մինակ թողուց Բրուսիացիները հալածելու համար։ Անիկա դեռ կրնար Քօպլէնց փոխադրուիլ, Լիւքսէնպուրկի և Դրէվի մէջտեղէն անցնելով, մինչ Քիւսդին Մայանսէն պիտի իջնէր։ Բայց Քէլլէրման նախաձեռնութեան ոգի քիչ ունենալով, շատ չվստահեցաւ իր զինուորներուն, որոնք յոգնած կը թուէին և բանակեցաւ Մէցի շուրջ։ Քիւսդին, իր կողմէն ուզելով անկախ դառնալ և փայլուն արշաւանքներ ընել, ոեւէ փափաք չունէր Քէլլէրմանին միանալու և Հռենոսի սահմանին մէջ փակուելու։ Ուրեմն բնաւ չխորհեցաւ Քօպլէնց դալու։ Այսպէսով անգործութեան ենթարկուեցաւ այս գեղեցիկ յառաջագիծը, զոր այնքան լաւ ըմբռնած և ընդլայնած է մեր զինուորական պատմագիրներէն ամէնէն մեծը, Ժօմինի։

Քիւսդին, մտացի ըլլալով, խրոխտ դիւրագրգիռ և փոփոխամիտ էր։ Կը ձգտէր մանաւանդ անկախ դառնալու. Պիրոնէն կամ ուրիշ ոեւէ զօրավարէ մը, և գաղափարը ունեցաւ յաղթանակելու իր շուրջը։ Մէնհայմը գրաւելով կայսընտիր իշխանին չեզոքութիւնը բռնաբարած կ'ըլլար, ինչ որ իրեն արգիլած էր գործադիր իշխանութիւնը. ուրեմն մտածեց Հռենոսը լքել յառաջանալու համար Գերմանիոյ մէջ։ Ֆրանքֆորդ սիւռ Մայն իրեն նախանձելի որս մը թուեցաւ և որոշեց անոր վրայ քալել։ Այլ սակայն այս քաղաքը, ազատ, վաճառաշահ, զանազան պատերազմներու մէջ միշտ չէզոք մնացած և լաւ տրամադրուած՝ Ֆրանսացիներուն համար, արժանի չէր այս անպատեհ նախասիրութեան։ Բնաւ պաշտպանուած չըլլալով, դժուար չէր հոն մտնելը, բայց դժուար էր հոն կենալը, և հետեւաբար անօգուտ էր զայն գրաւել։ Այս զինուորական արշաւանքը միայն մէկ նպատակ կրնար ունենալ, այն է՝ տուրքի ենթարկել քաղաքը, և բոլորովին անարդար էր, հարկեր դնել ժողովուրդի մը վրայ, որ սովորաբար չէզոք էր, որ հազիւ թէ

Իշխիր ունէր, և որ իր իշխերումն խիստ Ֆրանսայի բարեացակամութեան արժանի էր, որովհետև մեր սկզբունքները կը ջատագովէր և անոնց յաջողութիւնը կը փափաքէր: Քիւստին այդ քաղաքը մտնելու սխալը գործեց: Օգոստոս 27ին էր: Հարկեր հաւաքեց, նեղացուց բնակիչները, զորս Ֆրանսայի դէմ թշնամիներ դարձուց, և այսպէս, Մայնի գետին վրայ խոյանալով ինքզինքը ենթարկեց Հռենոսէն կտրուելու վտանգին, ըլլա՛յ Բրուսիացիներէն, եթէ մինչև Պինժէն ելլէին, ըլլա՛յ կայսրընտիր իշխանէն, որ չէզոքութիւնը բռնաբարելով Մանհայմէն դուրս ըլլար ելլէր:

Թշնամի հողին վրայ այս յառաջխաղացութեանց լուրը չարունակեց մեծ ուրախութիւն պատճառել Ֆրանսայի, որ շատ զարմացած էր յաղթանակներ տանելուն, ինքն իսկ նուաճուելու այնքան վախնալէն քանի մը օր առաջ: Բրուսիացիները, վախնալով, շարժուն կամուրջ մը ձգեցին Հռենոսի վրայ, աջ գետափին երկայնքին ի վեր բարձրանալու և Ֆրանսացիները վանելու համար: Բարեբաղդաբար՝ Քիւստինի համար, 12 օրէն միայն կրցան գետը անցնիլ: Յուսահատութիւնը, հիւանդութիւնները, և Աւստրիացիներէն բաժնուած ըլլալնին այս բանակը 50,000 հոգիի վերածած էր: Քլէրֆէյդ, իր 18.000 Աւստրիացիներով մեր զինուորներուն դէպ ի Ֆլանտրիա ըրած ընդհանուր շարժումին հետևած էր, և օգնութիւն կը հասցնէր դուքս Ալպէռին: Տարագիրները արձակուած էին և այդ փայլուն զօրախումբը միացած էր Քօնտէի գունդին և կամ ուրիշ ծառայութեան մէջ անցած էր:

Այն միջոցին որ այս դէպքերը տեղի կունենային Հիւսիսի և Հռենոսի սահմանագլխին վրայ, ուրիշ յաջողութիւններ ձեռք կ'անցընէինք Ալպեաններու սահմանագծին վրայ: Մօնդէսքիու՝ որ հարաւային զօրաբանակին մէջ էր, Սավուան կը նուաճէր և Նիսի կոմսութիւնը գրաւել կուտար իր տեղակալներէն մէկուն միջոցաւ: Այս զօրավարը, որ Սահմանադիր Ժողովին մէջ պետական մարդու մը բոլոր լուսամտութիւնը ցոյց տուած էր, և որ ժամանակ չունեցաւ զինուորականի մը յատկութիւնները յայտնելու, որոնցմով կ'ըսեն թէ օժտուած էր, Օրէնսդիր Ժողովին առջև կանչուած էր իր վարմունքին հաշիւը տալու, շատ դանդաղ շարժած ըլլալու ամբաստանութեամբ: Յաջողած էր իր ամբաստանիչները համոզելու որ իր յապաղումները միջոցներու պակասութեանց հետևանքներն էին և ո՛չ թէ նախանձախնդրութեան պակասի, և վերադարձած էր Ալպեաններ:

Սակայն և այնպէս, յեղափոխական առաջին սկզբունքին կը պատկանէր, և այսպէսով անհամաձայն էր նոր սկզբունքին հետ: Անգամ մըն ալ կանչուելով, պիտի հրաժարեցնէին զինքը, երբ վերջապէս իր Սավուա մտնելը լսեցին: Իր հրաժարականը այն ատեն յետաձգուեցաւ և իրեն թոյլ տուին որ յաղթանակը շարունակէ:

Ըստ Տիւմուրիէի յղացած յատակագիծին, երբ արտաքին գործոց նախարարի հանգամանքով մի և նոյն ատեն դիւանագիտութիւնը և պատերազմը կը վարէր, պէտք էր որ Ֆրանսա իր զօրաբանակները մղէր մինչև իր բնական սահմանները, մինչև Հռենոս և Ալպեաններու բարձր շղթան: Այս բանին համար պէտք էր գրաւել Պելճիքան, Սավուան և Նիսը: Ֆրանսա՝ մտնելով իր քաղաքականութեան բնական սկզբունքներուն մէջ, այսպէսով առաւելութիւնը ունէր վնաս հասցնելու միայն իր երկու թշնամիներուն, որոնք իրեն հետ կը պատերազմէին, Աւստրիոյ գերդաստանը և Թուրինոյի արքունիքը: Մօնդէսքիու պիտի գործադրէր մէկ մասն այս յատակագծին, որ Ալպէրին

վիժած էր Պելճիքայի մէջ, և մինչև այն ատեն յետաձգուած էր Սավուայի մէջ։ Մաս մը զինուոր առաւ զօրավար Անսէլմին, Վար գետը անցնելու և արուած նշանի մը վրայ Նիս երթալու համար. ինքն իսկ ընթացաւ իր զօրաբանակին ամենամեծ մասին հետ՝ Կրընօպլէն Շանպէրի, Սէն-Ժընիի ճամբով Սարտցի զօրախումբերուն սպառնաց և ինքն իսկ յառաջանալով Պարրոյի ամրոցէն, Մօնմէլյանի վրայ, յաջողեցաւ զանոնք բաժնելու և հովիտին մէջ քշելու։ Մինչ իր տեղակալները զանոնք կը հալածէին, ինքը հասաւ Շամպէրի, Սեպտ. 28 ին, և հոն իր յաղթական մուտքը գործեց, ի մեծ գոհունակութիւն բնակիչներուն, որոնք իբր ճշմարիտ սարորդիներ կը սիրէին ազատութիւնը և Ֆրանսան, իբր մարդիկ, որոնք նոյն լեզուն խօսելով, նոյն բարքերը ունէին և մի և նոյն աւազանին կը պատկանէին։ Մէնդէսքիու անմիջապէս Սավուայիներէ ժողով մը կազմեց, որպէս զի հոն վիճաբանին խնդրի մը վրայ, որ տարակոյս չէր վերցըներ, այն էր Ֆրանսայի միանալը։

Այդ նոյն միջոցին, Անսէլմ, զօրացած 1000 Մարսիլիացիներով, զորս պահանջած էր իբր օժանդակ, մօտեցած էր Վարին որ անհաւասար հեղեղ մըն է, ինչպէս բոլոր անոնք, որոնք բարձր լեռներէ կ'իջնան. անիկա փոխն ի փոխ անսահման կամ չոր էր և նոյն իսկ հաստատուն կամուրջ մը չէր կրնար ունենալ։ Անսէլմ շատ յանդգնութեամբ Վարը անցաւ և գրաւեց Նիսը, զոր կոմս Սէնդ-Անտրէ նոր լքած էր, և տեղւոյն պաշտօնատարները զինքը ստիպած էին քաղաք մտնել զսպելու համար ամբոխին խառնակութիւնները, որոնք աւերելի թալան մը կ'ընէին։ Սարտցի զօրքերը բարձր հովիտները նետուեցան։ Անսէլմ զանոնք հալածեց, բայց կեցաւ վտանգաւոր դիրքի մը առաջ, Սաօրժիոյի դիրքը՝ ուրկէ երբէք չկրցաւ Բիէմոնդէցիները վանել։ Այդ միջոցին Դրիւկէ ծովակալին նաւարամիղը իր շարժումները միացնելով զօրավար Անսէլմի շարժումներուն, Վիլ-Ֆրանշի յանձնումը յաջողցուցած էր և դարձած էր Օնէյի պզտիկ իշխանութեան դէմ։ Շատ մը ծովահէններ ընդհանրապէս ապաստան կը գտնէին այս նաւահանգստին մէջ, և այս պատճառաւ անօգուտ չէր զայն գրաւելը։ Բայց, մինչ ֆրանսական մակոյկ մը կը յառաջանար բանակցելու համար, շատ մը մարդիկ, հակառակ մարդկային իրաւունքներու, ընդհանուր գնդակահարութեամբ մը սպաննուեցան։ Ծովակալը, այն ատեն իր նաւերը խարըսխելով նաւահանգիստներուն դէմ, զայն ջախջախեց իր հրացանաձգութեամբ և յետոյ քանի մը ջոկատ զինուոր դուրս հանեց, որոնք չահատակութիւններ ըրին քաղաքին մէջ, և մեծ ջարդ մը տուին վանականներուն, որոնցմէ մեծ թուով կային հոն և որոնք եղած են, կ'ըսէին այդ խարդախութեան դըրդիչները։

Այդպէս է զինուորական օրէնքներու խստութիւնը, և Օնէյի դժբաղդ քաղաքը ենթարկուեցաւ անոր՝ առանց գթութեան։ Այս ապստամբութենէն ետք ֆրանսական նաւարամիղը Նիսի առջեւ վերադարձաւ, ուր Անսէլմ, Վար գետի ջուրերով բաժնուած իր բանակին մնացեալ մասէն, մեծապէս վտանգի ենթարկուած էր։ Սակայն և այնպէս, Սաօրժիոյի դիրքին դէմ ինքզինքը լաւ պաշտպանելով, և բնակիչներուն աւելի լանալով քան առաջ, իր կացութիւնը տանելի էր և կրնար իր յաղթանակը պահպանել։

Այս միջոցին, Մօնդէսքիու Շամպէրիէն Ժընէվի վրայ կը յառաջանար և քիչ ատենէն Զուիցերիոյ դիմաց պիտի ըլլար, որ շատ զանազան տրամադրութիւններ ունէր Ֆրանսացիներուն նկատմամբ, և որ Սավուայի արշաւանքին մէջ իր չէզոքութեան համար վտանգ մը կը կարծէր տեսնել։

[illegible] ուղղա- [illegible] տալ- [illegible] [illegible] կը գ[illegible] [illegible] Մա- [illegible] Սպէյմէր [illegible] կ'առնէին , [illegible] Վորմ [illegible] Մայն- [illegible] կը գրաւէր ։ Զուիցե- [illegible] քաղաքա- [illegible] Նեփլեալ դեսպանէն [illegible] կ'ու- [illegible] Օգոստ . 10 ին [illegible] Զուիցերիական պահա- [illegible] էջքի մէջ զօրա- [illegible] ըլլալը , և մեր- [illegible] Բարանդրուցի անգլե- [illegible] Պայլի հիւպատոսութեան կը [illegible] Պիրտի գրաւել տուած [illegible] փախչելու համար ։

Վտանգաւոր կասկածութիւնը չահեցա[illegible] և [illegible] որ զինեալ չէ- [illegible] մը պահեն ։ Պէրնի գաւառը , [illegible] և [illegible] կասկածոտ , [illegible] մը գրեց Լիոն և այն պատ- [illegible] որ Ժընէվի պաշտօնատարները [illegible] մը բրած են , այդ քաղաքին մէջ պահակագունդ դրաւ ։ Ըստ նախկին դաշնագրիներու , Ֆրանսայի եւ Սաւոյի մէջ պատերազմի մը պարագային , Ժընէվ ո՛չ մէկ և ո՛չ ալ միւս պետութենէն պահակագունդ պէտք էր ստանար ։ Մեր դեսպանը անհէ մեկնեցաւ անմիջապէս և գործադիր իշխանութիւնը , գրգռուած Քլավիէրէն , որ ժամանակաւ աքսորուած էր Ժընէվէն և նախանձախնդիր էր հոն յեղափոխութիւնը մացնելու , հրամայեց Մոնդէսքիուի , որ դաշնադրութիւնները գործադրել տայ ։ Ասկէ զատ , իրեն պատուէր տրուեցաւ , որ ինքն իսկ պահակագունդ դնէ նոյն անդր , այսինքն Պէրնցիներուն վերագրուած սխալին հետեւիլ ։

Մոնդէսքիու նախ կ'զգար որ Ժը[illegible]նէվը գրաւելու համար այդ պահուն միջոցներ չունէր և յետոյ , չէզոքութիւնը խզելով և Զուիցերիոյ հետ կռուի մտնելով , Ֆրանսայի արեւելեան կողմը բացուած կ'ըլլար և մեր պաշտպանողականին աջակողմը մերկացուած ։ Որոշեց մէկ կողմէն երկիւղ ազդել Ժընէվին , մինչ միւս կողմէն ալ տալ ջանար խօսք հասկցնել գործադիր իշխանութեան ։ Ուրեմն , վէսօրէն Պէրնցի զինուորներուն մեկնումը պահանջեց , և ջանաց համոզել ֆրանսական նախարարութիւնը , որ աւելին կարելի չէր պահանջել ։ Իր ծրագիրն էր , ծայրայեղ պարագային , Ժընէվը ռմբակոծել և յանդուգն ընթացքով մը փոխադրուիլ Վոյի գաւառը , զայն յեղափոխելու համար ։ Ժընէվը համաձայնեցաւ Պէրնցի զինուորներու մեկնումին , այն պայմանաւ որ՝ Մոնդէսքիու քաշուէր տասը մղոն հեռու , ինչ որ անմիջապէս գործադրեց ։ Այլ սակայն Բարիզի մէջ մեղադրեցին այս զիջումը և Մոնդէսքիու , Քարուժի մէջ կեցած , ուր զինքը կը շրջապատէին Ժընէվցի աքսորեալներ , որոնք իրենց երկիրը վերադառնալ կ'ուզէին , անիկա կը գըտնուէր Ֆրանսան Զուիցերիոյ հետ գէշ մարդ ընելու վախէն և անհնազանդութեան միջև հանդէպ գործադիր իշխանութեան , որ կ'անգիտանար ամենէն իմաստուն զինուորական և քաղաքական տեսակէտները ։ Այս բանակցութիւնը որ անցերու հետաւորութեան պատճառաւ երկարաձգուած էր , դեռ վերջանալու մօտ չէր , թէև Հոկտեմբերի վերջերն էին ։

Այս էր ուրեմն , 1792 հոկտեմբերին Տիւնքէրքէն մինչև Պալ , և Պալէն մինչև Նիս մեր զինուորական կացութիւնը ։ Շամբանեի սահմանագլուխը ազատած էր մեծ արշաւանքէն . զօրքերը այս գաւառէն դէպի Ֆլանտրիա կը փոխադրուէին Լիլի օգնութեան հասնելու և Պելճիքան նուաճելու համար ։ Քէլլէրման իր բանակատեղին կ'ընտրէր Լօրրէնի մէջ ։ Բիւսթին Պիրոնի ձեռքէն

փախչելով, Մայանսի տիրացած, և անխոհեմաբար Բալադինայի մէջ ընթանալով և մինչև Մայն, Ֆրանսան կ՚ուրախացնէր իր յաղթանակներով, Գերմանիան կը սարսափեցնէր և անխոհեմաբար իր ճամբան կտրելու վտանգին կ՚ենթարկուէր Բրուսիացիներէն, որոնք Հռենոսի աջակողմեան ափունքն ի վեր կ՚ելլէին, հիւանդ եւ ընկճուած, բայց բազմաթիւ զօրքերով և դեռ կարող՝ Ֆրանսական պզտիկ զօրաբանակը պաշարելու։ Պիրոն մինչ կը բանակէր Հռենոսի երկայնքին վրայ։ Մօնթէսքիու Բիէմօնցիներուն նահանջովը, տէրը ըլլալով Սավուայի, Ալպեաններէն անդին և նոր յարձակումներէ պաշտպանուած ձիւներով, պէտք էր մնալ, զուիցերիական չէզոքութիւնը կա՛մ զինու զօրութեամբ և կամ բանակցութեամբ։ Վերջապէս Անսէլմ, Նիսի տէրը, որուն կ՚օժանդակէր նաւարամին մը, կրնար իր դիրքին մէջ դիմադրել, հակառակ Վարի յորդումներուն և հակառակ Բիէմօնցիներուն, որոնք իրմէ բարձր Սաօրժիայի դիրքին մէջ խմբուած էին։

Մինչ պատերազմը Շամբանիէն Պելճիքա պիտի փոխադրուէր, Տիւմուրիէ թոյլտուութիւն ուզած էր Բարիզ գալու միայն երկու կամ երեք օրուան համար, որպէսզի նախարարներուն հետ խորհրդակցէր Հոլանտայի արշաւանքին և բոլոր զինուորական գործողութեանց ընդհանուր յատակագիծին վրայ։ Իր թշնամիները լուր տարածեցին որ կու գար ծափահարուելու համար և թէ իր հրամանատարութեան գործը կը թողուր ունայնամտութեան թեթեւսոլիկ գոհունակութեան մը համար։ Այս մեղադրանքները չափազանցուած էին, որովհետեւ Տիւմուրիէի հրամանատարութիւնը այս բացակայութենէն չէր վնասուեր և զինուորներու պարզ տեղափոխութիւններ առանց իրեն ալ կրնային կատարուիլ։ Իր ներկայութիւնը, ընդհակառակը, շատ օգտակար ըլլալու էր դահլիճին մէջ, ընդհանուր յատակագիծի մը որոշումին համար, և արդէն կարելի էր իրեն ներել փառասիրութեան անհամբերութիւն մը, որ այնքան ընդհանուր է մարդոց մէջ և այնքա՛ն ներելի՝ եթէ անիկա պարտականութեանց չի վնասեր։

Հոկտ. 11ին Բարիզ հասաւ։ Իր կացութիւնը նեղացուցիչ էր, որովհետեւ երկու կուսակցութիւններէն ոչ մէկին հետ աղէկ կրնար զգալ ինքզինքը։ Ժաքօպէններու բռնութիւնը իրեն զզուելի էր և Ժիրօնտէններու հետ խզուած էր քանի մը ամիս առաջ, զանոնք արտաքսած ըլլալով նախարարութենէն։ Սակայն և այնպէս, շատ լաւ ընդունելութիւն գտած ըլլալով Շամբանիի մէջ, ա՛լ աւելին գտաւ Բարիզի մէջ, մանաւանդ նախարարներէն և նոյն ինքն Ռօլանէն, որ իր անձնական ատելութիւնները կ՚ոչնչացնէր, երբ խնդիրը հայրենիքի գատին վրայ էր։

Տիւմուրիէ 12 Հոկտեմբերին Քօնվանսիօնին ներկայացաւ։ Հազիւ թէ զինքը ծանուցած էին, երբ ամէն կողմէ ծափահարութիւններ, ո՛չ միայն ատենակալներու հետ խառն, բարձրացան։ Պարզ և կորովի ճառ մը խօսեցաւ, ուր համառօտակի նկարագրուած էին Արկօնի բոլոր կռիւները և ուր իր զինուորները և նոյն իսկ Քէլլէրման ամենամեծ գովեստով յիշուած էին։ Յետոյ իր սպայակոյտը դրօշակ մը ներկայացուց որ տարագիրներէն խլուած էր և զայն ընծայեց ժողովին իբր անոնց ծրագիրներուն ունայնութեան յիշատակարանը։ Անմիջապէս յետոյ, երեսփոխանները զինքը շրջապատեցին և նիստը դադրեցուցին, ազատ ասպարէզ տալու համար շնորհաւորութեանց։ Մանաւանդ, Բլէնի բազմաթիւ երեսփոխանները, անկախները, ինչպէս զիրենք կը կոչէին, որոնք իրեն դէմ ո՛չ խզումի և ոչ ալ յեղափոխական զաղջութեան մեղադրանք ունէին, ամենէն

բուռն և ամենէն անկեղծ փութկոտութիւնը յայտնեցին։ Ժիրոնտէնները եւս չմնացին. սակայն և այնպէս՝ ըլլայ Տիւմուրիէի յանցանքով, ըլլայ իրենց յանցանքով, հաշտութիւնը կատարեալ չեղաւ և իրենց միջև կրցան նշմարել, ցրտութեան մը հետքը։ Մոնդանեաուները որ վայրկեան մը իրեն մեղադրած էին Լուդովիկոս ԺԶ.ի հետ բարեկամութիւն ունենալը և որ զինքը իր ձեւերով, իր արժանիքով և իր բարձրութեամբ արդէն շատ նման կը գտնէին Ժիրոնտէններուն, անոնց կողմէ ստացած համակրանքի արտայայտութիւններուն համար նեղացան իրեն դէմ և այս արտայայտութիւնները աւելի նշանակիչ ենթադրեցին, քան ինչ որ էին իրականութեան մէջ։

Քօնվանսիօնէն ետք, կը մնար Ժաքօպէններուն այցելել, որոնց զօրութիւնը այն ատեն այնքա՛ն կարեւոր դարձած էր որ յաղթական զօրավարը անոր մեծարանք յայտնելը չէր կրնար զանց ընել։ Հոն էր որ խմորուող հանրային կարծիքը իր բոլոր ծրագիրները կը կազմէր և իր վճիռները կուտար։ Եթէ խնդիրը կարեւոր օրէնքի մը, քաղաքական բարձր հարցի մը, յեղափոխական մեծ ձեռնարկի մը վրայ էր, Ժաքօպէնները, միշտ արագաշարժ, կը փութային վճռաբանութիւնը բանալու և իրենց կարծիքը յայտնելու։ Անմիջապէս ետքը, կը ցրուէին Համայնքային Խորհուրդներու, մասնաճիւղերու մէջ և կը գրէին բոլոր իրենց հետ կապուած ակումբներուն, և այն կարծիքը զոր յայտնած էին, այն խղճը զոր կազմած էին Ֆրանսայի ամէն կէտերէն կոչի և գնուած խնդրարկուներու ձեւին ներքեւ, Բարիզի բոլոր թաղերէն կուգային կը հանէին։ Երբ որ քաղաքապետական խորհուրդներու, մասնաճիւղերու և ն. և. է. իշխանութիւն ունեցող ժողովի մը մէջ դեռ կը վարանէին խնդրի մը վրայ, օրէնդրութեան մասին պահած յարգանքի ձեւացորդով մը, Ժաքօպէնները որ ինքզինքնին մասնումին չափ ազատ կը համարէին, այդ խնդիրը կը լուծէին յանդգնութեամբ և ամէն ապստամբութիւն իրենց մէջ երկար ատենէ առաջ որոշուած կ'ըլլար։ Ամբողջ ամսուան մը ընթացքին խորհրդակցած էին Օգս. 10 ի ապստամբութեան վրայ։ Ի բաց առեալ այս նախաձեռնարկ ոգին՝ բոլոր հարցերու մէջ, ինքզինքնուն կուտային դեռ, կառավարութեան բոլոր մեքենամանութեանց մէջ, անագորոյն հաւատաքննութեան մը իրաւունքը։ Անմիջապէս որ նախարար մը, դիւանապետ մը, հայթայթիչ մը ամբաստանուէր, Ժաքօպէնները պատգամաւորներ կը ղրկէին, դիւանները բանալ կու տային և խիստ հաշիւ կը պահանջէին, զորս անոնք իրենց կու տային առանց գթութեան, արհամարհանքի և անհամբերութեան։ Ամէն մէկ քաղաքացի երբ կը կարծէր թէ ն. և. է. արարքէ մը դանգատելու իրաւունք ունի, կրնար ներկայանալ Ժաքօպէններուն և հոն պաշտօնական պաշտպաններ կը գտնէր, որոնք իրեն գոհացում տալ կը ստիպէին։ Օր մը զինուորներ կուգային, որոնք իրենց սպաներէն կը գանգատէին, գործաւորներ՝ իրենց վարպետէն. ուրիշ օր մը անմոռնալու դերասանուհի մը, որ արդարութիւն կը պահանջէր իր տնօրէնին դէմ. անգամ մը նոյն իսկ Ժաքօպէն մը եկաւ իր ընկերակիցներէն մէկուն, իր կնոջը հետ գործած անհաւատարմութեան յանցանքին դէմ դանգատելու համար։ Ամէն ոք կը փութար արձանագրուելու ընկերութեան տոմարին մէջ, իր հայրենասիրական եռանդը ապացուցանելու համար։ Գրեթէ բոլոր Բարիզ նոր հասնող երեսփոխանները փութացած էին հոն ներկայանալու. շաբթուան մը մէջ հարիւր տասներեք հոգի հաշուած էին և անոնք որ նիստերուն հետեւելու



ՔԵԼԼԵՐՄԱՆ

դիտաւորութիւն չունէին, չէին թերանար խնդրելու որ զիրենք ընդունին կուսակցութեան շարքերուն մէջ: Գաւառներու խորերէն իրենց կապուած ընկերութիւնները կը գրէին տեղեկանալու համար, թէ արդեօք իրենց նահանգներուն երեսփոխանները ինքզինքնին ընդունիլ տուա՞ծ էին և թէ կը յաճախէի՞ն: Մայրաքաղաքին հարուստները կը ջանային իրենց փարթամութիւնը հանդուրժել տալ Ժաքօպէններու ակումբը երթալով և գլուխնին դնելով կարմիր գտակը և իրենց կուրծքերը կը խճողէին այս հաւասարութեան բնակարանին դուռը: Մինչ սրահը լեցուն կըլլար իր անդամներուն մեծ թուով, մինչ օթեակները լեցուն էին ժողովուրդով, մեծ բազմութիւն մը հարուստներու կառքերուն հետ խառնուած, դրանը առջև կըսպասէր, և բարձրաձայն կ'ուզէր ներս մտնել: Երբեմն այս ամբոխը կը գոչէր, երբ Բարիզի եր-

կեանքին ներքեւ այնքան յաճախադէպ անձրեւը, կ'աւելցնէր սպառումի ձանձրոյթը, եւ այն ատեն անգամ մը կը խնդրէր ներս մտնէ թարի ժողովուրդը, որ կը տանջուէր որահին դռներուն առաջք։

Մառա նման ատեններու մէջ յաճախ պահանջած էր։ Եւ երբ կը համաձայնէին ժողովուրդը ընդունելու, երբեմն նոյն իսկ առաջ, մարդոց եւ կանանց անսահման բազմութիւն մը կուգար կը հեղեղէր ընկերութիւնը եւ կը խառնուէր անոր անդամներուն հետ։ Օրուան վերջին ժամերուն կը հաւաքուէին։ Քօնվանսիօնի մէջ գրգռուած եւ զայրացած բարկութիւնը կուգար հոն ազատօրէն պայթելու։ Գիշերը, ներկաներու բազմութիւնը, ամէն բան, կը նպաստէին գլուխները տաքցնելու. յաճախ նիստը երկարաձգուելով, անելի ժխորի մը կը փոխուէր եւ մասնակիցները հոնկէ կը քաղէին հետեւեալ օրուան համար ամենէն յանդուգն ձեռնարկներու համար քաջութիւն։

Սակայն ամբոխավարութեան մէջ այնքա՛ն յառաջացած այս ընկերութիւնը դեռ այն չէր՝ ինչ որ եղաւ աւելի ուշ։ Տակաւին կը հանդուրժէին ակումբին դրան առջեւ, անոնց անձնական կառքերուն, որոնք կուգային վիճակներու անհաւասարութիւնը ուրանալու։ Քանի մը անդամներ ի զուր ջանացած էին գլխարկնին գլուխնին խօսիլ հոն. զանոնք ստիպած էին գլխարկնին հանելու։ Ճիշդ է որ Պրիսօն նոր արտաքսած էին հանդիսաւոր որոշումով մը. բայց Բէդիոն կը շարունակէր նախագահելու, ծափահարութեանց մէջեւ։ Շապօ, Քօլօ տ'Էրպուա, Ֆապր տ'Էկլանդին հոն անոր սիրուած ատենաբաններն էին։ Մառա դեռ իրենց արտակարգ կը թուէր, եւ Շապօ՝ միջավայրին լեզուին համեմատ, կ'ըսէր որ Մառա ոգին մըն էր, զոր կարելի չէր քանել ու մէկ կողմէն։

Տիւմուրիէ ընդունուեցաւ Տանդօնէն, որ նիստին կը նախագահէր։ Բազմաթիւ ծափահարութիւններ լսուեցան իր մտած ատենը եւ զայն տեսնելով իրեն ներեցին ժիրօնտէններու հետ ունեցած ենթադրեալ բարեկամութիւնը։ Կացութեան պատշաճող քանի մը խօսքեր արտասանեց անիկա եւ խոստացաւ, ամիսը լրանալէ առաջ, 60,000 հոգիի գլուխը անցնելով յառաջ բերելու՝ յարձակելու համար թագաւորներուն վրայ եւ ժողովուրդները փրկելու բռնապետութենէն։

Տանդօն, նման ոճով մը պատասխանելով իրեն, ըսաւ որ, Ֆրանսացիները միացընելով Սէնդ-Մէնըհուլդի բանակին՝ հայրենիքի երախտիքին արժանացած էր. բայց թէ նոր ասպարէզ մը կը բացուէր, թէ պէտք էր խոնարհեցնէր թագերը՝ կարմիր դդակին առջեւ, որով ընկերութիւնը զինքը պատուած էր, եւ թէ այն ատեն իր անունը՝ Ֆրանսայի ամենապանծալի անուններու շարքին մէջ պիտի երեւար։ Քօլօ-տ'Էրպուա յետոյ ուղերձ մը ըրաւ անոր եւ ճառ մը խօսեցաւ, որ ցոյց կուտայ թէ՛ այդ ժամանակին լեզուն եւ թէ՛ այդ պահուն տրամադրութիւնները զօրավարին նկատմամբ։

«Թագաւոր մը չէ, որ քեզի պաշտօնի կոչեց, ո՛վ Տիւմուրիէ, այլ քու համաքաղաքացիներդ։ Յիշէ որ հանրապետութեան զօրավար մը միմիայն ազգին ծառայելու է։ Թեմիստոկլէսի մասին լսած ես անշուշտ, Յունաստանը նոր փրկած էր Սալամինի մէջ, բայց զրպարտուելով իր թշնամիներէն, ստիպուած զգաց ինքզինքը՝ բռնաւորներու մօտ ապաստան մը փնտռելու։ Իրեն առաջարկեցին հայրենիքին դէմ ծառայել. իբր միակ պատասխան իր թուրը սրտին մէջ մխեց։ Տիւմուրիէ՛, դուն թշնամիներ ունի՛ս, պիտի զրպարտեն զքեզ. Թեմիստոկլէսը յիշէ՛։

«Գիրի ժողովուրդներ կ'սպասեն որ իրենց օգնութեան հասնիս. քիչ ատեն-

նէն զիրենք պիտի ազատես։ Ինչ փառայեղ առաքելութիւն... Սակայն և այնպէս պէտք է որ ինքզինքդ զերծ պահես քու թշնամիներուդ հանդէպ ծայրայեղ վեհանձնութենէ մը։ Դուն Բրուսիոյ թագաւորը եւ դարձուցիր քիչ մը շատ Ֆրանսական եղանակով մը ... բայց, կը յուսանք որ, Աւստրիան կրրկինը պիտի հատուցանէ։

«Դուն Գրիւքսէլ պիտի երթաս, Տիւմուրիէ... քեզի բան մը չունիմ ըսելիք ... Սակայն և այնպէս, եթէ հոն գտնայիր դարչելի կին մը, Լիլի պարիսպներուն ներքև, որ եկած է կարմիր ռումբերու տեսքովը իր վայրագութիւնը յագեցնելու... Բայց այդ կինը քեզի չսպասել ...

«Գրիւքսէլի մէջ ազատութիւնը պիտի ծնի քու քայլերուդ ներքևէն։ Քաղաքացիներ, աղջիկներ, կիներ, տղաքներ, քու չուրջդ պիտի հաւաքուին. ինչ երանութիւն պիտի վայելես, Տիւմուրիէ ... կինս Գրիւքսէլցի է, ան ալ զքեզ պիտի համբուրէ։»

Տանդօն այնուհետեւ դուրս ելաւ Տիւմուրիէին հետ, զոր գրաւած էր և որուն ձեւով մը նոր հանրապետութեան պատուասիրութիւնը կ'ընէր։ Տանդօն Բարիզի մէջ այնքան հաստատ վարմունք մը ցոյց տուած ըլլալուն որքան ըրած էր Տիւմուրիէ Սէնդ Մէնըհուլտի մէջ, մէկին և միւսին կը նայէին իբր երկու ազատարարները յեղափոխութեան և զանոնք կը ծափահարէին միասին՝ բոլոր թատրոններու մէջ ուր կ'երեւային։ Տեսակ մը բնազդ կը մօտիկցնէր այս երկու մարդիկը, հակառակ իրենց սովորութեանց տարբերութեան։ Ասոնք երկու ուժիմներու ապականուածներն էին, որոնք միեւնոյն հանճարով, հաճոյքներու համար միեւնոյն ճաշակով կը միանային, բայց տարբեր տեսակ ապականութիւն մը ունէին։ Տանդօն ժողովուրդինը ունէր և Տիւմուրիէ արքունիքներունը. բայց իր ընկերակիցէն աւելի բարեբաղդ, այս վերջինը հայրենիքին ծառայած էր վեհանձնօրէն և զէն ի ձեռին, և Տանդօն դժբաղդութիւնը ունեցած էր մեծ նկարագիր մը պղծելու Սեպտեմբերեան վայրագութիւններով։

Այն շատ փայլուն սալօնները, ուր ժամանակաւ հռչակաւոր մարդիկ փառք կը վայելէին, ուր՝ վերջին դարուն ամբողջ ընթացքին մտիկ ըրած և ծափահարած էին Վօլթէր, Տիտըրօ, տ'Ալամպէր, Ռուսօ, այդ սալօնները այլեւս գոյութիւն չունէին։ Կը մնար տիկին Ռօլանի պարզ և ընտրեալ ընկերութիւնը ուր կը հաւաքուէին բոլոր Ժիրոնտէնները, գեղեցիկ Պարպարուն, մտացի Լուվէն, քաջ Պիւզօն, փայլուն Կուատէն, խանդավառող Վէրնիօն և ուր դեռ կը տիրէր մոքուր լեզու մը, չահեկանութեամբ լի տեսակցութիւններ և պերճ ու յղկուած բարքեր։ Հոն կը հաւաքուէին նախարարները շաբաթը երիու անգամ և հոն ճաշ մը կ'ընէին որ միակ ծառայի մը սպասարկութեամբ։

Այսպէս էր հանրապետական նոր ընկերութիւնը որ նախկին Ֆրանսայի շըքնորհներուն կը միացնէր նորին լրջութիւնը և որ չուտով պիտի անհետանար ամբոխավարական բրտութեան առջեւ

Տիւմուրիէ ներկայ եղաւ այս այնքան պարզ հացկերոյթներէն մէկուն, նախ քիչ մը անհանգիստ զգաց ինքզինքը իր նախկին բարեկամներուն հանդէպ զորս վանտած էր նախարարութենէն. այս կնոջ՝ որ իրեն շատ խիստ կը թուէր և որուն ինքը շատ արձակուն կ'երեւար. բայց այս կացութեան մէջէն ելաւ իր սովորական մտացիութեամբ և մանաւանդ զգածուեցաւ Ռօլանի անկեղծ բարեկամութենէն։

Ժիրոնտէններու ընկերութենէն հտքը, արուեստագէտներունը միակն էր որ նախկին ազնուականութեան ցիրուցան ըլլալէն ետքը կանգուն մնացած էր։

Գրեթէ բոլոր արուեստագէտները ջերմօրէն հակած էին յեղափոխութեան

մը որ իրենց վրէժը կը լուծէր ազնըւական արհամարհանքներէ, և որ կը խոստանար միայն ճշմարիտ հանճարները նպաստաւորելու։ Իրենց կարգին ընդունեցին Տիւմուրիէն և անոր հանդէս մը սարքեցին ուր հաւաքուեցան մայրաքաղաքին մէջ գտնուող բոլոր տաղանդաւորները։ Բայց հանդէսին մէջ իսկ, արտառոց դէպք մը եկաւ զինքը ընդհատելու և այնքան նողկանք, որքան զարմացում պատճառելու։

Մարա որ միշտ փութաջան էր յեղափոխական կասկածները կանխելու, բնաւ գոհ չէր զօրավարէն։ Կատաղի ամբաստանիչն ըլլալով բոլոր այն մարդոց որոնք հանրային համարում մը կը վայելէին, մի՛շտ իր գարշելի նախատինքներով գրգռած էր ժողովրդական պետերու կրած վարկաբեկումը։ Միրապօ, Պայի, Լաֆայէթ, Բէդիոն ժիրոնտէնները երբ դեռ իրենց բոլոր ժողովրդականութիւնը կը վայելէին իր նախատինքներովը ճնշած էր։ Օգոստոսի 10էն ի վեր մանաւանդ իր մտքին բոլոր անկարգութեանց անձնատուր եղած էր. և թէև ողջամիտ և պարկեշտ մարդոց համար ընդվզեցուցիչ, և գոնէ արտառոց՝ եռանդուն յեղափոխականներուն համար, անիկա քաջալերուած էր յաջողութեան մը սկզբնաւորութեամբը։ Այսպէսով չէր եւս կրնար ինքզինքը ձեւով մը հանրային մարդ նկատել և էական՝ իրաց նոր վիճակին մէջ։ Իր կեանքին մէկ մասը կ'անցընէր զրոյցներ հաւաքելու և զանոնք տարածելու իր թերթով, ինչպէս նաև պատելու դիւանները, ուզելու համար պաշտօնատներու հանդէպ ժողովուրդին ունեցած սխալները։ Հանրութեան, ինքնակենսագրութիւնը ընելով օր մը կ'ըսէր, իր թերթին մէկ թիւին մէջ (93րդ թիւ, 9 Յունվ. 1793) թէ իր զրպարտումները շատ ծանր էին. թէ օրուան քսանեւչորս ժամերէն երկուքը միայն կը յատկացնէր քունի և մէկը միայն ճաշելու և

տեսակին գործերու. Թէ իր երեսփոխանի պարտականութեանց յատկացուցած ժամերէն զատ, վեց ժամ կանոնաւորապէս կը գործածէր հաւաքելու և կարեւորութիւն ընծայել տալու խեղճ մը դժբաղդներու և զրկուածներու գանգատներուն. Թէ մնացեալ ժամերը կը յատկացնէր շատ մը նամակներ կարդալու և անոնց պատասխանելու և իր դիտողութիւնները գրելու դէպքերու վրայ, ամբաստանութիւններ ընդունելու, ամբաստանեալներու ճշգրտութիւնը հասկնալու և վերջապէս իր թերթը խմբագրելու և մեծ աշխատութեան մը տպագրութեան հսկելու։ Կ'ըսէր որ երեք տարիէ ի վեր, քառորդ ժամ մը արձակուրդ չէր առած. և մարդ կրնայ երեւակայել թէ ի՛նչ կրնայ յառաջ բերել յեղափոխութեան մը մէջ այսքան անկարգ խելք մը, այս լափող գործունէութեամբ։

Մարա կ'ըսէր որ Տիւմուրիէի անձին մէջ պէտք է տեսնել միայն դէշ բարքերով ազնուական մը, ուրկէ պէտք էր կասկածիլ։ Ամէն բանի վրայ, լսեց որ Տիւմուրիէ անմնամեծ խստութեամբ նոր պատժած էր կամաւորներու երկու գումարտակներ, որոնք տարագիր դասալիքներ ջարդած էին։ Անմիջապէս Ժաքոպէններու Ակումբը գնաց, անոր բեմէն զօրավարը ամբաստանեց, և երկու պատգամաւոր ուզեց, երթալ զինքը հարցաքննելու համար իր վարմունքին մասին։ Անմիջապէս իրեն ընկերացուցին Մոնդօ և Պէնդապօլ կոչուած մարդիկը և առանց վայրկեան կորսնցնելու մեկնեցան անոնց հետ։ Տիւմուրիէ իր բնակարանը չէր. Մարա վազեց այլ և այլ թատրոններ և վերջապէս իմացաւ որ Տիւմուրիէ կը գտնուի երեկոյթի մը մէջ զոր իրեն ի պատիւ սարքած էին արուեստագէտները օրիորդ Թալմայի տունը, որ այն ատեն հռչակաւոր կին մըն էր։ Մարա չվարանեցաւ հոն երթալու, հակառակ իր զզուե-

լի հագուստին։ Անձնական կառքեր, ազգային պահակախումբի ջոկատներ, զօրս գտաւ հանդէսը տեղի ունեցած տանը դրանը առջեւ, հրամանատար Սանդէռի եւ խել մը երեսփոխաններու ներկայութիւնը, խնձոյքի մը պատրաստութիւնը, զինքը զայրացուցին։ Ցանդըգնօրէն յառաջացաւ եւ Տիւմուրիէին հարցուց։ Տեսակ մը շշուկ բարձրացաւ երբ զինքը տեսան, իր անունը արտասանուելուն պէս շատ մը դէմքեր կ'անհետանան, որոնք, կ'ըսէր, ամբաստանիչ աչքերէ կը խուսափէին։ Ուղիղ երթալով դէպ ի Տիւմուրիէի, զայն կը հարցապնդէ բուռն կերպով, եւ իրմէ հաշիւ կը պահանջէ՝ երկու գումարտակներու հանդէպ ունեցած վարմունքին մասին։ Զօրավարը անոր կը նայի. յետոյ կ'ըսէ արհամարհական հեռաքըրքրութեամբ մը։ «Ա՜հ, դո՞ւք էք Մառա կոչուածը։»

Անգամ մըն ալ զայն կը դիտէ ոտքերէն մինչեւ գլուխը։ Կռնակը կը դարձնէ, առանց անոր խօսք ուղղելու։ Այլ սակայն այն ժաքօպէնները, որոնք Մառայի կ'ընկերանային՝ աւելի քաղցր եւ աւելի քաղաքավար երեւալով, Տիւմուրիէ անոնց քանի մը բացատրութիւններ կուտայ եւ զանոնք կը ճամբէ գոհացուցած։ Մառա՝ որ գոհացում առած չէր, բարձրաձայն կը պոռայ նախասենեակներուն մէջ, Սանդէռը կը յանդիմանէ որ, կ'ըսէր, զօրավարին քով սպասաւորի պաշտօնը կ'ընէր. կը խօսի ազգային պահակախումբին դէմ, որոնք կը նպաստէին հանդէսին փայլին եւ կը քաշուի իր բարկութեամբը սպառնալով բոլոր ազնուականները, որոնք հաւաքոյթը կը կազմէին։ Անմիջապէս կը փութայ նկարագրելու իր օրաթերթին մէջ այս ծիծաղելի դէպքը, ուր այնքա՛ն լաւ կը նկարագրէ Տիւմուրիէի կացութիւնը, Մառայի կատաղութիւնները եւ այդ ժամանակուան բարքերը։

Տիւմուրիէ չորս օր անցուցած էր Բարիզի մէջ եւ այս միջոցին չէր կրցած համաձայնիլ Ժիրոնդէններուն հետ, թէեւ անոնց մէջ ունէր մտերիմ բարեկամ մը, յանձին Ժանսոնէի։ Գոհացած էր այս վերջինին խորհուրդ տալով Տանդոնի հետ հաշտուելու, իբր ամենէն ազդեցիկ մարդը եւ այն որ, հակառակ իր մոլութիւններուն, ամենէն օգտակարը կրնար ըլլալ բարեկացական մարդոց։ Տիւմուրիէ չէր համաձայնած նաեւ Ժաքօպէններու հետ, որոնցմէ զզուած էր եւ որոնց աչքին կասկածելի էր իր՝ Ժիրոնտէններուն հետ ունեցած ենթադրեալ բարեկամութեանը պատճառաւ։ Ուրեմն իր Բարիզ գալը երկու կուսակցութեանց հանդէպ իրեն օգուտ չէր ունեցած, բայց իրեն աւելի օգտակար եղած էր զինուորական տեսակէտով։ Ըստ իր սովորութեան ընդհանուր յատակագիծ մը յղացած էր, զոր որդեգրած էր գործադիր իշխանութիւնը։ Այս յատակագծին համեմատ՝ Մոնթէսքիու պիտի մնար Ալպեաններու երկայնքին վրայ եւ մեծ լեռնաշղթան իբր սահմանագիծ պահելով, լրացնելով Նիսի նուաճումը եւ ջանալով պահպանել զուիցերիական չէզոքութիւնը։ Պիրօնը պէտք էր զօրացընել, որպէս զի Հռենոսը պահպանէր Պալէն մինչեւ Լանտօ, 12,000 հոգիի զօրագունդ մը Մէօնիէ զօրավարին հրամաններուն ներքեւ յատկացուած էր Քիւսթինին ետեւի կողմը փոխադրուելու, անոր հաղորդակցութիւնները պաշտպանելու համար։ Քէլլէրմանի հրաման տուած էր իր դիրքերը թողուլ, արագօրէն անցնիլ Լիւքսէմպուրկի եւ Դրէվի մէջտեղէն վազել երթալու համար Քօպլէնց եւ պաշարում կատարելու համար այն՝ զոր արդէն իրեն խորհուրդ տուած էին, եւ ինչ որ ինքը եւ Քիւսթին արդէն կատարած ըլլալու էին երկար ատենէ ի վեր։

Վերջապէս ինքն ալ 80000 հոգիով յարձակողականի սկսելով Տիւմուրիէ պարտ էր լրացնել Ֆրանսա՛ն հողա‑

մասը, Պէլժիքայի ծրագրեալ գրաւմամբ։ Այսպէս, յարձակողական դիրք բռնելով հոգին բնական վիճակովը պաշտպանուած բոլոր սահմանագլուխներուն վրայ, յանդգնօրէն կարելի կըլլար յարձակիլ միմիայն բաց սահմանագլուխին՝ Հոլանտայի վրայ, այսինքն հոն՝ ուր, ինչպէս կ'ըսէր Տիւմուրիէ, կարելի չէր ինքնապաշտպանութիւն ընել առանց պատերազմը չանելու։

Շնորհիւ Սանդէսին, Տիւմուրիէ կըրցաւ յաջողցնել որ Բարիզի մէջ բանակատեղի մը կազմուելու անհեթեթ ծրագիրը լքուի, որ իրենց հաւաքած բոլոր զինուորները, թնդանօթները, ռազմամթերքները և բանակատեղիի գոյքերը տարուին Ֆլանտրիա, որպէսզի գործածուին իր բանակին պէտքերուն, որովհետև այդ բանակը բան մը չունէր։

Հոկտեմբեր 16ի միջոցները մեկնեցաւ, քիչ մը յուսախաբ եղած այն բանէն զոր հանրային երախտագիտութիւն կը կոչեն, կուսակցութեան հետ նուազ համերաշխ քան առաջ, և իր ճամբորդութիւնը չատ չատ օգտագործած՝ գործադիր իշխանութեան հետ կատարած մէկ քանի զինուորական կարգադրութիւններով։

Այդ միջոցին, Քօնվանսիոնը չարունակած էր գործել ընդդէմ Համայնքային Խորհուրդին, ստիպելով զայն՝ որ վերակազմուի և հսկելով անոր բոլոր արարքներուն վրայ։ Բէդիոն քաղաքապետ ընտրուած էր 13899 ձայնի առաւելութեամբ մը, մինչ Ռոպէսպիէռ միայն 23 քուէ առած էր, Պիյօ Վառէն՝ 14 Բանիս՝ 80 և Տանդօն 11 քուէ։ Սակայն եւ այնպէս, Ռոպէսպիէռի եւ Բէդիոնի ժողովրդականութիւնը պէտք չէ չափել քուէներու թիւին այս տարբերութենէն, որովհետև սովոր էին յանձին Բէդիոնի տեսնել քաղաքապետ մը, և յանձին Ռոպէսպիէռի՝ երեսփոխան մը, և իւրաքանչիւրին ուրիշ պաշտօն տալ չէին մտածեր։ Բայց այս ստուար մեծամասնութիւնը կ'ապացուցանէ թէ ինչքան ժողովրդականութիւն կը վայելէր դեռ Ժիրօնտէն կուսակցութեան գլխաւոր պետը։ Զմոռնանք ըսել թէ Պայի ստացաւ երկու քուէ, եղական յիշատակ՝ տրուած 1879ի այս առաքինի պաշտօնակալին։

Բէդիոն մերժեց քաղաքապետութեան պաշտօնը, որովհետև յոգնած էր համայնքային գործերու ջղաձգումներէն և կը նախընտրէր Ազգային Քօնվանսիոնի երեսփոխանի պաշտօնը։

Սեպտեմբեր 24ի հռչակաւոր նիստին մէջ ծրագրուած երեք գլխաւոր որոշումները կը կազմէին օրէնք մը ընդդէմ մարդասպանութեան գրգռումներուն, ինչպէս նաև հրամանագիր մը՝ գաւառական պահակախումբ մը կազմելու, և երրորդ՝ Բարիզի մասին ճշգրիտ տեղեկագիր մը պատրաստել տալու համար։ Առաջին երկուքը, որ յանձնուած էր Ինններու Յանձնաժողովին, չարունակական խռովութեան տեղի կուտային Ժաքօպէններու ակումբին մէջ, Քաղաքապետարանին և մասնաճիւղերուն մէջ։ Բայց ասով հանդերձ, Ինններու Յանձնաժողովը կը չարունակէր իր աշխատութիւնները և զանազան գաւառներէ, ի մէջ այլոց՝ Մարսիլիայէն և Քալվատոսէն կը հասնէին ինքնաբուխ և Օգոստոս 10էն առաջ եղածին նման բազմաթիւ վաշտեր, որոնք կը կանխէին գաւառական պահակախումբերու մասին տրուած հրամանագիրը։

Ռոլան, որ պաշտօն ունէր երրորդ խնդրով զբաղելու, այսինքն մայրաքաղաքին կացութեան մասին տեղեկագիր մը տալու խնդրովը, առանց տկարանալու խիստ ճշգրտութեամբ մը բրաւ այդ գործը։ Ուրուագծեց և չքմեղեց առաջին ապստամբութեան անխուսափելի չփոթութիւնը, բայց կորովի կերպով յետադարձ ակնարկ մը նետեց Օգոստոս 10ի յեղափոխութեան յաջոր-

դող Սեպտեմբեր 2 ի ոճիրներուն վրայ, զորս դատապարտեց։ Անիկա ցոյց տուաւ Համայնքային Խորհուրդի բոլոր ձեռնարկութիւնները, իշխանութեան չարաչար գործածումը, կամայական բանտարկութիւնները և անսահման վտանգները։ Ռօլան վերջացուց սա խօսքերով. —

«Իմաստուն այլ քիչ կարող գաւառ, գործունեայ և բանակայ համայնք, հիանալի մաղձոտութ., որուն ազդեցութ մէկ մասը երկիւղի կամ տխրման տակ կը կը գործէ տակայն, մինչ միւս մասը շողոքորթներու ձեռքը խաղալիք եղած է, և գրգռութիւն ընելու մարմաջէն բռնուած է. իշխանութեանց խառնակում, կառավարութեան համեստ արհամարհանք և իշխանութեան չարաչար գործածում. կառավարական այժմ տկար և ոչնչացած դէպ հրամանատարութեան մը տակ, ահա՛ Փարիզը։»

Ռօլանի տեղեկագիրը ծափահարեց ամբողջական մեծամասնութիւնը, հակառակ որ ընթերցման միջոցին մէկ քանի մրմունջներ բարձրացան դէպ ի Մօնթանը։ Սակայն և այնպէս, նամակ մը, զոր մասնաւոր անհատ մը ուղղած էր կառավարական պաշտօնեայի մը և այս վերջինն ալ ղրկած էր գործադիր իշխանութեան, և որով քաղաներ կ'ըլլար Նոր Սեպտեմբեր 2 ի մը ծրագիրը՝ ընդդէմ Թօնմանիօնի մէկ մասին, մեծ գրգռում յառաջ բերաւ։ Այդ նամակին մէկ պարբերութիւնը դաւադիրներուն ակնարկելով կ'ըսէր. «Անոնք միայն Ռօպէսպիէռի մասին կ'ուզեն որ խօսիք :» Այս բառերուն վրայ, ամէնքին ալ նայուածքը յառեցան Ռօպէսպիէռի վրայ, ոմանք սկսան զայրոյթ յայտնել, ուրիշներ զինքը գրգռեցին որ բացատրութիւն տայ։

Ռօպէսպիէռ խօսք առաւ Ռօլանի տեղեկագրին պատասխանութիւնը ջնջելու համար. այդ տեղեկագիրը կոչեց անուանարկիչ վէպ մը, և պնդեց որ պէտք չէր հրատարակել, մինչև որ անոր մէջ ամբաստանուածները և մասնաւորաբար ինքը՝ չլսուէին։ Այնուհետև իր անձին վերաբերեալ խնդիրներով երկարօրէն զբաղեցաւ և սկսաւ ինքզինքը արդարացնել, բայց իր ձայնը լսելի չէր ըլլար, ժողովին մէջ տիրող աղմուկին պատճառով։

— «Խօսէ՛, կ'ըսէր անոր Տանդօն, խօսէ՛, բարի քաղաքացիները հոս մտիկ կ'ընեն քեզի։»

Ռօպէսպիէռ, որ վերջ ի վերջոյ յաջողեցաւ աղմուկը լռեցնել, վերսկսաւ ինքզինքին զովեստ հիւսել և հրաւէր կարդալ իր հակառակորդներուն՝ զինքը ճակատ առ ճակատ ամբաստանելու, և իրեն դէմ միակ գրաւոր փաստ մը մէջտեղ հանելու։

Այդ հրաւէրին վրայ Լուվէ յանկարծ ոտքի կանգնելով գոչեց. — «Ե՛ս եմ զքեզ ամբաստանողը։»

Այս բառերը հազիւ թէ արտասանուած էին, և ահա՛ Լուվէ խոյացաւ դէպ ի բեմը, և Պարպարու ու Րեպէքի անոր ետևէն գացին, այժմ տալու համար ամբաստանութեան։ Այս տեսնելով, Ռօպէսպիէռ յուզուեցաւ և դէմքին գոյնը նետեց, պահանջեց որ զինքը ամբաստանողը լսեն և անկէ ետքն ալ զինքը լսեն։

Իսկ վերջ տուաւ եկաւ Տանդօն, և գանգատեցաւ այն գրպարտութեանց դէմ, որ կազմակերպուած էր Փարիզի քաղաքապետարանին և երեսփոխանութեան դէմ, և Մառայի ուղղելով խօսքը, որովհետև ան էր գլխաւոր աղբիւրը բոլոր ամբաստանութեանց, ըսաւ անոր՝ զոր յայտարարած էր արդէն, այսինքն թէ զինքը չէր սիրեր, թէ համբերած էր անոր [illegible], և թէ եռապետական խմբակցութեան մը գաղափարը անհեթեթ էր։ Եզրակացուց, խնդրելով որ օր մը նշանակուի, տեղեկագրին վրայ վիճաբանելու համար։ Ժողովը հրամա-

յից տպագրել զայն, բայց յետաձգեց անոր ցրուումը՝ բոլոր գաւառներուն, մինչև որ Լուվէի և Ռօպէսբիէռի բախւմները լմնին։

Լուվէ շատ յանդուգն ու քաջ էր, իր հայրենասիրութիւնը անկեղծ էր. բայց Ռօպէսբիէռի դէմ իր ունեցած ատելութեան մէջ խառնուած էր անձնական հակառակութենէ մը յառաջ եկած ախտակալութիւնը, որ կը սկսէր ժողովըրդներէն, որ չարաշահուած էր յա Սանթիէկի մէջ, վերանորոգուելով բնական ժողովին մէջ և ա՛լ աւելի բուռն եղած էր, յորմէհետէ դէմ առ դէմ կը գտնուէր Ազգային Քոնվանսիոնի իր նախանձոտ մրցակիցին։ Լուվէ շատ եռանդուն բնաւորութեան մը հետ ունէր երևակայութեան և գիրքերու սիրոյ մը, որ զինքը կը մղէին և իրեն այնպէս կարծեցնել կուտար թէ համախոհութիւն և դաւադրութիւն կայ հոն՝ ուր միայն կիրքերու ինքնաբուխ արդիւնքը գոյութիւն ունէր։ Անիկա կը հաւատար իր անձնական ենթադրութիւններուն և կ'ուզէր բռնադատել իր բարեկամները, որ մի և նոյն կերպով հաւատ ընծային անոր։ Բայց երբ կը բաղխէր Բէթիոնի և Ռօլանի ցուրտ ողջախոհութեանը և Վէրնիոյի թոյլ անկողմնակալութեանը, ինքզինքը կը գտնէր դէմ յանդիման թշնամութեան մը, որ կը յուսահատեցնէր։

Պիւզօ, Պարպարու, Կուատէ առանց նոյնքան դիւրախաբ ըլլալու, և առանց ենթադրելու այդքան բուռն մեքենայութիւններ, կը հաւատային թէ իրենց հակառակորդները չարութիւններ ի գործ կը դնեն և Լուվէի յարձակումներուն ուժ կուտային՝ թէ՛ զայրոյթ և թէ քաջութիւն յայտնելով։ Մէօրթ գաւառի երեսփոխանը՝ Սալ, Օրէնսդիր Ժողովի և Քոնվանսիոնի անիշխանականներուն կատաղի թշնամին, Սալ, որ մռայլ և բուռն երևակայութեամբ մը օժտուած էր, միակն էր որ հաղորդակից կ'ըլլար Լուվէի բոլոր ենթադրութիւններուն, և անոր նման կը հաւատար թէ Համայնքային Խորհուրդին մէջ մեծ դաւադրութիւններ կը լարուին, որոնց ծայրը մինչև արտասահման կը հասնի։

Ազատութեան անձնուէր բարեկամներ, Լուվէ և Սալ չէին կրնար հաւանիլ անոր այնքան չարիք վերագրելու, և անոնք նախամեծար կը համարէին հաւատալ որ Մոնթանեանները, մանաւանդ Մառա վարձուած էին օտարներէն և Անգլիոյէն, որպէս զի յեղափոխութիւնը մղեն դէպ ի ծայրայեղութիւն, դէպ ի անպատուութիւն և ընդհանուր խառնակութիւն։ Ռօպէսբիէռի մասին ա՛լ աւելի առաջացած ըլլալով, յանձին անոր կը տեսնէին անուանի բռնակալ մը, որ փառասիրութեամբ և գոռոզութեամբ լեցուն է, և ամէն գնով կ'ուզէ ձեռք ձգել գերագոյն իշխանութիւնը։

Լուվէ, որ վճռած էր յանդգնօրէն յարձակիլ Ռօպէսբիէռի վրայ, և զայն երբեք հանգիստ չձգել, իր ճառը կազմ ու պատրաստ, պահած էր գրպանին մէջ այն օրուան համար, երբ Ռօլան իր տեղեկագիրը պիտի բերէր ժողովին. այս պատճառաւ բոլորովին պատրաստ էր իր ամբաստանագիրը մէջ բերելու՝ երբ իրեն խօսք տային. անիկա անմիջապէս սկսաւ խօսիլ Ռօլանէն վերջ։

Արդէն ժիրոնտէնները ըստ բաւականի կը մղուէին գէշ կերպով դատել դէպքերը և ոճրապարտ ծրագիրներ ենթադրել հոն՝ ուր միայն շատ եռանդուն կիրքեր գոյութիւն ունէին. իսկ դիւրահաւան Լուվէին համար շատ աւելի ակներև և լաւ կերպով կազմուած էր դաւադրութիւնը։ Ժագօպէններու յարաճուն չափազանցութեանց մէջ, 1792ին Ռօպէսբիէռի ամբաստանութեան ձևով ձգած յաջողութեան մէջ անիկա կը կարծէր տեսնել դաւադրութիւն մը, զոր սարքած էր փառասէր տրիբունը։



ԿՕՆՏՕՐՍԷ

Լաւ է զայն մատնանշել, շրջապատուած մոլորամիտներով, ինքն իսկ կռապաշտական կրօնքի մը առարկան դարձած և Օգոստոս 10էն առաջ ամէն կողմ ըսել տալով թէ միայն ինքն է որ կրնայ փրկել ազատութիւնը և Ֆրանսան, և Օգոստոս 10էն յետոյ ինքզինքը ծածկելով ու վտանգին անցնելէն երկու օր վերջ երեւան գալով, ուղղակի դէպի քաղաքապետարան երթալով և հակառակ որ խոստացած էր որ և է պաշտօն չստանձնել, իր լիազօր իշխանութեամբը նստելով Ընդհ. Ժողովի ատեանին առջեւ, հոն իր ձեռքին մէջ առնելով կայր միջակորեարը, զայն ըստ կամս մեկնելով ամէն ծայրայեղութեան, անոր համար Օրէնսդիր Ժողովը նախատելով և այդ ժողովէն պահանջելով հրամանագիրներ, հակառակ պարագային ահազանգը հնչեցնելու սպառնալիք ընելով, առանց յայտնի ընելու հրաման ընելով որ գործադրուին Սեպտեմբերի բոլոր կոտո-

բաժնները ու թաղանները, քաղաքապետական իշխանութեան ուժ տալու համար ահաբեկիչ միջոցներով, յետոյ ամբողջ Ֆրանսայի մէջ ղրկելով պատգամաւորներ, որոնք կ'երթային խորհուրդ տալու որ նոյն ձեւերը հոն ալ գործածուին և գաւառները հրաւիրելով որ ընդունին Բարիզի իշխանութեան գերագահութիւնը. այս բոլորը ընելով, յարեց Լուվէ, Ռոպէսպիէռ կ'ուզէր քանդել Ազգ. Երեսփոխանութիւնը, անոր տեղ դնելու համար Համայնքային Խորհուրդը և մեզի տալու Հռոմի կառավարութեան ձեւը, որուն համաձայն գաւառները կը հնազանդէին մայրաքաղաքի իշխանութեան։ Այսպէսով տէր եղած Բարիզի, որ ինքն ալ իր կարգին Ֆրանսայի տէրը պիտի ըլլար, անիկա պիտի յաջորդէր կործանած թագաւորութեան։ Այդ ատեն, անանկով որ նոր ժողովի մը գումարման վայրկեանը կը մօտենար, անիկա Ընդհանուր Ժողովէն անցած էր ընտրական ժողովին և իր նախընտրած մարդիկը ահաբեկումի շնորհիւ ատոր անցուցած էր, որպէս զի Բարիզի երեսփոխանութեան միջոցաւ տէր ըլլայ Գօնվանսիոնին։

Ինքն էր, Ռոպէսպիէռը, որ ընտրողներուն նշանակած էր այդ արիւնարբու մարդը, որուն հրավառ պոռռաւագրութիւնները Ֆրանսան կը ձգէին ապշումի և ահաբեկումի տակ։ Այդ պարսաւագիրը, որուն անունը բերանն իսկ չէր ուզեր առնել, կ'ըսէր Լուվէ, որպէս զի իր շրթունքները չաղտոտին, պարզապէս, մարդասպանութեան մոլորեալ որդին էր, որ ձեր քարոզելու և ամենէն անարատ քաղաքացիները զրպարտելու համար օժտուած էր քաջութեամբ մը, որ կը պակսէր նենգամիտ Ռոպէսպիէռին։

Գալով Տանդօնին, Լուվէ զայն չէր առներ ամբաստանութեան տակ, և կը զարմանար նոյն իսկ, որ անիկա ատենոն խոյացած էր մերժելու համար ամբաստանութիւն մը, որ երբէք ուղղուած չէր իրեն դէմ։ Այսուհանդերձ զայն չէր բաժներ Սեպտեմբերի գործերէն, որովհետեւ այդ դժբաղդ օրերուն, երբ բոլոր իշխանութիւնները, ժողովը, նախարարները, քաղաքապետը ի զուր կը խօսէին կոտորածները դադրեցնելու համար, միմիայն դատական նախարարը՝ Տանդօն՝ բերանը չէր բանար։ Որովհետեւ, վերջապէս, հաշակուոր պատասխանատուութեան մէջ, միմիայն իր անունն էր որ չէին խառներ այն ամբաստանութեան, զոր կը տարածէին ամենէն մաքուր քաղաքացիներուն դէմ։

— «Եւ զա՞ն կրնաս, ո՛վ Տանդօն, կը գոչէր Լուվէ, կրնա՞ս մաքրել այս անպատասխանատուութեան բացառութիւնը կազմած ըլլալուդ համար, յաչս ապագայ սերունդին»։

Այս ակնարկն վճռականն, որքան անխոհեմ խօսքերը ծանրախոհութեամբ ընդունեցան։ Այս ամբաստանութիւնը թէև յաճախ ծանրահարուած էր, բայց մեծ ու բարոքներով ընդհատուած էր. միայն թէ՝ ժողովին մէջ յաճախ կրկնուած բառ մը գիրենք յուզուցած էր. Լուվէ բռնած էր նախադասին. «վստահացուցէք զիս թէ աղմուկ համեղ պիտի չըլլայ, որովհետեւ մատս վէրքին վրայ պիտի դնեմ, և թերեւս պատասխանն ըլլան»։

— Դի՛ր մատդ, բաւ Տանդօն, մատդ դի՛ր վէրքին վրայ։

Անկէ ետք, ամէն անգամ որ աղմուկ բարձրացողներ կըլլային, յարբե՞լ, կը գոչէին, ո՞ւր կեցէք, վիրաւորեալնե՞րը...։

Վերջապէս, Լուվէ սապէս կ'ամփոփէ իր ամբաստանութիւնը. —

«Ռոպէսպի՛էռ, կ'ըսէ, կ'ամբաստանեմ զքեզ, որ ամենէն անարատ քաղաքացիները զրպարտեցիր, և պարզապէս մէկ կողմ թողուած զրպարտութիւնները հրապարակեցիր. կ'ամբաստանեմ զքեզ

որ դուն ինքդ պաշտամունքի առարկայ մը դարձուցիր զքեզ և լուր տարածեցիր թէ դուն միակ մարդն ես՝ կարող՝ Ֆրանսան ազատելու: Կ'ամբաստանեմ զքեզ որ ստորնացուցիր, նախատեցիր և հալածեցիր ազգային երեսփոխանութիւնը, Բարիզի ընտրական ժողովին վրայ բռնութիւն բանեցուցիր և գերագոյն իշխանութեան ձգտեցար զրպարտութեամբ, բռնութեամբ և ահաբեկչութեամբ: Ու ես հիմա կը պահանջեմ յանձնախումբէն որ քու արարքներդ քննութեան ենթարկէ »:

Լուվէ առաջարկեց նաև օրէնք մը, որով աքսորի պիտի դատապարտուէին բոլոր անոնք, որ պառակտում կը սերմանէին քաղաքացիներուն միջև. փափաք յայտնեց որ Իններու Յանձնաժողովին պատրաստած նախագծին միջոցներուն վրայ աւելցուի ուրիշ մը, այն է՝ գլխաւոր ոյժը ներքին գործոց նախարարին տրամադրութեանը տակ դնել:

« Վերջապէս, ըսաւ, կը պահանջեմ որ անմիջապէս Մարայի դէմ ամբաստանութեան հրամանագիր մը արձակուի. աստուածնե՜ր, գոչեց, աստուածնե՜ր, անոր անունը տուի »:

Ռոպէսպիէռ, վրդոված՝ այն ծափահարութիւններէն, զորս չխնայեցին իր հակառակորդին, կ'ուզէ խօսք առնել. իրեն դէմ բարձրացող աղմուկին և բողոքներուն մէջ պահ մը կը վարանի. իր դիմագծերը և ձայնը կ'այլայլին. այսուհանդերձ, կը յաջողի ինքզինքը լսել ընել և պայմանաժամ մը կ'ուզէ ինքնապաշտպանութիւնը պատրաստելու համար: Այդ պայմանաժամը կուտան իրեն, և պաշտպանողականը կը յետաձգուի Նոյեմբեր 5ին. այս յետաձգումը օգտակար էր ամբաստանեալին համար, որովհետև Լուվէէն գրգռուած, ժողովը այդ օրը բուռն զայրոյթ մը կը զգար:

Նոյն գիշերը, շատ բուռն ոգևորութիւն մը կը տիրէր Ժագոպէններուն մէջ, ուր ամէն իրիկուն հակակշիռ ի գործ կը դրուէր Քոնվանսիոնի նիստերուն: Բազմաթիւ Ժագոպէններ վազեցին եկան և խելայնոր պատմեցին զզուելի վարմունքը Լուվէին, ու պահանջեցին որ անիկայ վտարուի: Անիկա զրպարտած էր Ժագոպէն ընկերակցութիւնը, մեղադրած՝ Տանթօնը, Սանթէռը, Ռոպէսպիէռը և Մարան. անիկա վերջին երկուքին դէմ ամբաստանութեան հրամանագիր մը պահանջած էր, արիւնռուշտ օրէնքներ առաջարկած էր, որոնք մամուլի ազատութեան բռնաբարում կը նշանակէին, և վերջապէս, անիկա Աթենական խեցեվճիռ առաջարկած էր: Կրժանար ըսել որ, անիկա կանխամտածուած դաւադրութիւն մըն էր, քանի որ Լուվէ, կազմ ու պատրաստ ճառը բռնած էր իր ձեռքը, և թէ շատ հաւանականաբար, Ռօլանի տեղեկագիրը ուրիշ նպատակ չունէր, այլ՝ առիթ մը հայթայթել այս դատափետումին:

Ֆապր տ'Էկլանդին կը գանգատի որ գաղթականութիւնները օր ըստ օրէ կ'աւելնան, և Բարիզն ու հայրենասէրները զրպարտելու ջանք կ'ըլլայ. կ'ըսէ թէ պզտիկ հետևութիւնները կը կապեն մանր ենթադրութեանց, որոնցմէ մեծ դաւադրութիւն մը երևան կը հանուի, և ո՛չ միայն կ'ըսեն թէ ո՞ւր է այդ դաւադրութիւնը, և ո՛չ ալ՝ թէ որո՛նք են անոր գործակալները ու միջոցները: Եթէ կար մարդ մը, որ ամէն բան տեսած և գնահատած պէտք էր ըլլար թէ՛ մէկ և թէ միւս կուսակցութեան մէջ, չէինք կրնար կասկածիլ թէ այդ մարդը, ճշմարտութեան բարեկամ մը, շատ յարմար էր այդ ճշմարտութիւնը հրապարակելու: Այդ մարդը Բէդիօն է. բռնադատեցէք իր առաքինութիւնը, որ ըսէ բոլոր այն բաները զորս տեսած է, և վճիռ մը տայ հայրենասէրներուն վերագրուած ոճիրներուն մասին: Իր բարեկամներուն համար որքան ալ զիջողութիւններ ընէ, կը համարձակիմ ըսել

թէ դաւադրութիւնները զայն չէին ապականած ըլլար։ Բէզիօն միշտ մաքուր և անկեղծ մնացած է. անիկա այսօր խօսիլ կ'ուզէր. ստիպեցէք զինքը որ խօսի։»

Յեղափոխական ամենէն պաղարիւն և անկողմնակալ միտքերուն շարքին մէջ պէտք է յիշատակել Բէզիօնը. ոչ ոք անոր չափ բանիմաց կերպով չէ քննած երկու կուսակցութիւնները, որոնք Գօնվանսիօնը բաժնած էին։ Անոր արդարամտութիւնը այնքան ծանօթ էր որ, երկու կողմերն ալ կը համաձայնէին անոր վճիռին առջև գլուխ ծռել։ Ժողովին բացուած պահուն կատարուած ամբաստանութիւնները բուռն վիճաբանութիւններ յառաջ բերին ժաքօպէններուն մէջ։ Ֆապր տ'Էկլանդին առաջարկեց Բէզիօնի դիմել, վճիռ մը արձակելու համար։ Եւ ահա՛ թէ անիկա ի՛նչ կերպով պատասխանեց. —

«Ուրիշ միջոց մը կայ, զոր ես օգտակար կը կարծեմ, և որ մեծ տպաւորութիւն յառաջ պիտի բերէ գո՛նէ միշտ. երբ լայն հիման վրայ դաւադրութիւն մը սարքել պէտք եղած է, ոյժի կարօտութիւն զգացուած է, մեծ ճիգեր ընել հարկադրուած է, անձնական վարկ մը գոյացնելու համար։ Եթէ գոյութիւն ունեցած ըլլար մարդ մը, որ ամէն բան տեսած ու զննած ըլլար թէ՛ մէկ և թէ միւս կուսակցութեան մէջ, չէ՞ինք կրնար կասկածիլ որ այդ մարդը, բարեկամ ճշմարտութեան, շատ յարմար է հրապարակելու այդ ճշմարտութիւնը. արդ, կ'առաջարկեմ որ հրաւիրէք այդ մարդը, անդամ ձեր ընկերակցութեան, որ վճիռ մը տայ հայրենասէրներուն վերագրուած ոճիրներուն մասին. հարկադրեցէք իր պարկեշտութիւնը, որ ըսէ բոլոր այն բաները, զորս տեսած է. այդ մարդը Բէզիօնն է։ Այս առտու կ'ուզէր խօսիլ բեմէն, անիկա չի կրնար չի գրել ձեզի ինչ որ կը մտածէ, և պիտի տեսնենք թէ մեքենայութիւն լարողները կարո՞ղ պիտի ըլլա՛ն զինքը մոլորեցնելու։ Նկատի առէ՛ք, քաղաքացիներ, թէ միայն այս տեսակ ձեռնարկ մը պիտի ապացուցանէ թէ դուք միմիայն ճշմարտութեան կը ցանկաք. կը խնդրեմ որ առաջարկը քուէի դրուի։» (ծափեր)։

Հոս պէտք է յիշատակել նաև այն գրութիւնը, զոր Բէզիօն՝ դրկեց Լուվէի և Ռօպէսփիէռի միջև մղուած պայքարի միջոցին. այս գրութիւնը շատ թանկագին տեղեկութիւններ կը պարունակէ այդ ժամանակի մարդոց նկարագրին և վարմունքին վրայ։ Ահաւասիկ Բէզիօնի նամակը. —

«Քաղաքացինե՛ր, միտքս դրած էի բացարձակապէս լուռ մնալ Օգոստոս 10էն ի վեր տեղի ունեցած անցուդարձերու մասին. փափկանկատութիւնը և հասարակաց շահը ինծի վճռել տուած էին այս կերպ ընել։ Բայց անկարելի է որ աւելի երկար ատեն լուռ մնամ. մէկ և միւս կողմէ իմ վկայութեանս կոչում կ'ընեն. իւրաքանչիւր ոք կը ստիպէ զիս, կարծիքս յայտնել. ուրեմն անկեղծօրէն պիտի ըսեմ ինչ որ գիտեմ մէկ քանի մարդոց վրայ և թէ ի՛նչ կը խորհիմ իրաց վիճակին մասին։

«Մօտէն ականատես եղայ յեղափոխութեան պարզած տեսարաններուն, դաւերը, մեքենայութիւնները, բռնապետութեան և ազատութեան, մոլութեան և առաքինութեան միջև մղուած մոլեգին պայքարները։ Երբ մարդկային կիրքերու շարժառիթները երևան կու գան, երբ կը նշմարուին այն գաղտնի զսպանակները, որոնք ամենէն կարևոր գործողութիւնները վարած են, երբ դէպքերը ու անոնց տեղի տուող շարժառիթները քով քովի բերենք, երբ անդրադառնանք բոլոր այն վտանգներուն, որոնց ենթարկուեցաւ ազատութիւնը, երբ թափանցենք ապականութեան այն վիհին որ ամէն վայրկեան կը սպառնար կուլ տալ զմեզ, մարդ ապշութեամբ կը

հարցնէ ինքզինքին, թէ ինչ հրաշքով հասանք հոն՝ ուր կը գտնուինք այսօր։

« Յեղափոխութիւնները պէտք է հեռուէն դիտել. այս բանը շատ անհրաժեշտ է իրենց. դուրսը կը ջնջեն զանոնք մթագնող արատները։ Յետագայ սերունդները միմիայն արդիւնքները կը նշմարեն. մեր եղբօրորդիները զմեզ մեծ պիտի կարծեն, զիրենք մեզմէ աւելի աղէկ ընենք ուրեմն։ Ես չի պիտի զբաղիմ հիմա նախընթաց դէպքերովը այն յաւէտ յիշատակելի օրուան, որ ազատութիւնը կանգնեց բռնապետութեան աւերակներուն վրայ և որ միապետութիւնը հանրապետութեան փոխեց։ Այն մարդիկը, որոնք ինքզինքնուն վերագրեցին այդ օրուան փառքը, ամենէն քիչը արժանի են անոր. այդ փառքը կը պարտինք անոնց՝ որ այդ օրը պատրաստեցին. իրաց հրամայական բնոյթին կը պարտինք. քաջարի դաշնակիցներուն և անոնց գաղտնի վարչութեանը կը պարտինք, որը երկար ատենէ ի վեր կը ծրագրէր յեղափոխութեան յատակագիծը. դայն կը պարտինք ժողովուրդին, վերջապէս՝ կը պարտինք այն խնամակալ ոգիին, որ շարունակաբար կ'իշխէ Փրանսայի ճակատագրին վրայ, իր ներկայացուցիչներուն առաջին գումարումէն ի վեր։

«Պէտք է ըսել, թէ պահ մը յաջողութիւնը անորոշ մնաց. և անոնք որ վաւերական տեղեկութիւններ ունին այդ օրուան մանրամասնութեանց վրայ, գիտեն թէ որո՛նք եղան հայրենիքին անձնուէր պաշտպանները, որ արգիլեցին զուիցերիական զինուորները և բռնապետութեան բոլոր բանակները կռուոյ դաշտին մէջ յաղթող հանդիսանալէ, և թէ որո՛նք էին որ մեր քաղաքացիներու փաղանգները, պահ մը տարտղնած, վերստին ամփոփեցին...։ Եթէ, մասնաճիւղերու պատուիրակները իմաստութիւնն ունենային իրենց պաշտօնը ըմբռնելէ յետոյ հրաժարիլ իշխանութենէ, ու իրենց կատարած գեղեցիկ գործերէն յետոյ վերստին մտնէին պարզ քաղաքացիի շարքերուն մէջ, անոնք փառքով պիտի պսակուէին. բայց չկրցան դիմանալ իշխանութեան հրապոյրին և տիրապետելու տենչանքը գրաւեց զիրենք։

«Ազատութեան յաղթանակին առթած գինովութեան առաջին վայրկեաններուն, և այնքան բուռն յեղաշրջումէ մը յետոյ, անկարելի էր որ ամէն ինչ մէկ վայրկեանէն մտնէ կարգ կանոնի մէջ. անարդար պիտի ըլլար այսպիսի բան մը պահանջել. բայց մասնաճիւղերու պատուիրակները մեղադրանքի արժանի հանդիսացան, երբ իրենք երկարաձգեցին յեղափոխական շարժումը իր պայմանաժամէն աւելի։ Ազգային Ժողովը վճիռը արձակած էր. անիկա վայելուչ հանդամանք մը առած էր, և արձակած էր կայսրութիւնը փրկող հրամանագիրներ, անիկա դադարած հռչակած էր թագաւորը, և ջնջած էր այն սահմանագիծը որ կը բաժնէր քաղաքացիները՝ երկու մասի. Քոնվանսիոնը գումարուած էր. Թագաւորական կուսակցութիւնը յաղթահարուած էր, պէտք էր անմիջապէս Քոնվանսիոնին մօտենալ, զայն կազդուրել և վստահութեամբ պատել. պարտականութիւնը և ողջամիտ քաղաքականութիւնը այսպէս կը պահանջէին...։

« Եւ սակայն Համայնքային Խորհուրդը ջանաց մրցակից մը ըլլալ Ժողովին. ոմանց յաջողած էին հաւատցնել թէ այնքան ատեն որ յեղափոխական վիճակը տիրէ, իշխանութիւնը իր աղբիւրէն աւելի վեր եղած էր, թէ Ազգ. Ժողովը նկարագիր չունէր, անոր գոյութիւնը խնդրական էր և թէ Համայնքային Խորհուրդները միայն միակ օրինաւոր ու զօրեղ իշխանութիւններն են։ Ուրիշներու ալ այնպէս հասկցուցած էին որ Ազգ. Ժողովի հոսանքներու պետերը

նենգամիտ ծրագիրներ ունին, թէ կ'ուզեն ազատութիւնը սպաննել և հանրապետութիւնը օտարներուն ձեռքը յանձնել։ Այնպէս որ, Համայնքային Խորհուրդին անդամներուն մէկ մեծ մասը կը կարծէր օրինաւոր իրաւունք մը ի գործ դնել իշխանութեան դէմ ելլելով, կը կարծէր թէ բռնապետութեան դէմ է որ կը կանգնի երբ օրէնքին կ'ընդդիմանայ, և կը կարծէր հայրենասիրական գործ մը կատարել, քաղաքացիական պարտականութիւններուն մէջ թերանալով։ Սակայն և այնպէս, այս անիշխանութեան մէջանց Համայնքային Խորհուրդը մերթ ընդ մերթ ողջամիտ որոշումներ ալ կու տար։ Ես պահուած էի պաշտօնիս մէջ, բայց անիկա այլեւս անիմաստ տիտղոս մըն էր. ի զուր անդը փնտռեցի իմ կատարելիք գործերս, անոնք ցիր ու ցան եղած էին ամէնուն ձեռքերուն մէջ, և իւրաքանչիւրը ի գործ կը դնէր զանոնք...։ Ես չուզեցի որ իմ անունս խառնուի այսքան անկանոն գործերու, որոնք այնքան հակառակ էին սկզբունքի։

« Մի և նոյն չափով զգացի թէ որքա՛ն իմաստուն և օգտակար բան մըն էր իմ ներկայութեամբս չգնահատել եւույժ չափ անցած դարձածներուն։ Անոնք որ, Համայնքային Խորհուրդին մէջ կը վախնային զիս հոն տեսնելէ, անոնք՝ որոնց համար նեղացուցիչ էր իմ երեւոյթս, շատ ուժգնօրէն կը փափաքէին որ ժողովուրդը, որուն վստահութիւնը կը վայելէի, կարծէ թէ ես կը նախագահեմ իր գործառնութեանց, և թէ ամէն ինչ իմ համաձայնութեամբս կ'ըլլար։ Այս մասին իմ ցոյց տուած վերապահութիւնս անձնցուց երենց թշնամութիւնը. բայց անոնք չհամարձակեցան բացէ ի բաց յայտնուիլ իբր թշնամի, վախնալով որ անհաճոյ կ'ըլլան ժողովուրդի մը, որուն բարեկամութիւնը կը փնտռէին...։ Քաղաքապետարանի վարչութիւնն սկսաւ անկանոն դառնալ. ես փիչ անգամ պաշտօնատեղի կ'երթայի. Քաղաքապետարանը այլ ևս միութեան կեդրոն մը չէր. բոլոր թելերը կտրուեցան ձեռքիս մէջէն. իշխանութիւնը ցիր ու ցան եղաւ. հսկողութեան կործը ապարդիւն մնաց. ճնշումի գործողութիւնները ալ՝ նոյնպէս։

« Այն ատեն Ռոպէսպիէռ գերակշիռ դեր մը բռնեց Խորհուրդին մէջ, եւ որուած պայմաններուն մէջ, անկարելի էր որ ուրիշ կերպ ըլլար. ճառ մը խօսեցաւ որ տիրեցուց հոգին. անիկա իր քովերուն տակ գահավէժներ կը նշմարէր. ազատութեան դէմ դաւադրութիւններ կ'երեւակայէր. ենթադրեալ դաւադիրները մատնանիշ ըրաւ, կոչ ըրաւ ժողովուրդին, միտքերը հրահրեց, և գինքը յաղթներուն մէջ մեծ գրգռում յառաջ բերաւ։ Այդ ճառին պատասխանեցի ես, անդորրութիւնը վերահաստատելու և մայր պատրանքները փարատելու համար, և վիճաբանութիւնը բերելու այն միակ կէտին վրայ, որ պէտք էր զբաղեցնէր ժողովը։ Ռոպէսպիէռ և իր կուսակիցները այսպէսով Համայնքային Խորհուրդը անխորհուրդ քայլեր առնելու կը մղէին. ես Ռոպէսպիէռի դիտաւորութեանց վրայ չէի կասկածեր. կ'ամբաստանէի աւելի անոր գլուխը՝ քան թէ սիրտը, բայց այս սեւ մղձաւանջներուն հետեւանքները ինծի ո՛չ նուազ երկիւղ կը պատճառէին...։ Համայնքային Խորհուրդի հսկողութեան յանձնախումբը շարունակ մարդ ձերբակալելով բանտերը կը լեցնէր. կարելի չէ ծածկել որ, եթէ այս ձերբակալութիւններէն ոմանք իրաւացի և անհրաժեշտ էին, շատերն ալ օրէնքի հակառակ էին բոլորովին. ի մէջ այլոց, մարդ մը կար, որուն միայն անունը նախատինք մը եղած էր, որուն միմիայն անունը սակայն կը սփռէր խաղաղարարոյ քաղաքացիներու հոգիին մէջ, այդ մարդը ձեռքն առած էր ոստիկանութիւնը, բոլոր հրապարակային բանախօսութիւն-

ներուն ներկայ կը գտնուէր, ամէն գործի կը խառնուէր, կը խօսէր, կը հրամայէր իբր միապետ. այդ մարդուն դէմ բուռն կերպով գանգատելոյ Համայնքային Խորհուրդին մէջ, և խօսքս սա բառերով վերջացուցի. Մարդս կամ մարդոց ամենէն անխիղճն է, եւ կամ ամենէն ապիրատը։ Անկէ ի վեր, երբէք խօսած չեմ իր մասին...։

« Եւ ահա՛ Սեպտեմբեր 2 ը կը հասնի. վտանգի թնդանօթը կը գոռայ. ահազանգը կը հնչէ. ո՛վ սուգի օր. այդ մահապարտ և ահարկելի ձայնին ի լուր մարդիկ կը հաւաքուին, բանտերուն վրայ կը յարձակին, կը խուժեն, կըսպաննեն. Մանուէլ, Ազգային Ժողովի բազմաթիւ երեսփոխաններ սպանութեանց վայրը կը փութան, բայց իրենց թափած ջանքերը ապարդիւն կը մնան. մինչև իսկ իրենց գիրկին մէջ գտնուող զոհերը կըսպաննեն։ Ես կեղծ ապահովութեան մը մէջ էի. այդ անգթութիւններուն տեղեկութիւն չունէի. ամենէ մը ի վեր ինծի բան մը չէին ըսեր։ Բայց վերջ ի վերջոյ ամէն ինչ իմացայ. ինչպէ՞ս. սարսափ, անողորմ և խեղաթիւրուած ձևով մը. միևնոյն ատեն ինծի ըսին թէ ամէն ինչ վերջացած է...։ Բանտերու մէջ կատարուած այդ մարդասպանութիւնները արդեօք մէկ քանի մարդոց հրամանո՞վ եղան. եթէ իբր դատաւոր վճիռ մը արձակելու հարկին տակ գտնուէի, չպիտի կարենայի ըսել. ահա՛ յանցաւորը։ Իմ կարծիքովս, այդ ոճիրները այդքան ծաւալ չպիտի գտնէին, եթէ անոնց առաջքն առնող մը գտնուէր, եթէ, իրենց ձեռքին մէջ իշխանութիւն ունեցողները սոսկումով նայէին անոնց վրայ. բայց պարտաւոր եմ ըսել, որովհետև ճշմարտութիւնն է, թէ այդ հանրային մարդոցմէ շատերը, հայրենիքի այդ պաշտպանները կը կարծէին թէ այդ աղետալից ու անպատուաբեր օրերը անհրաժեշտ էին, թէ անոնց շնորհիւ կայսրութիւնը կը մաքրագործուէր վտանգաւոր թըշնամիներէն. այդ կերպով դաւադիրներուն հոգիին մէջ սարսափ կը սփռուէր, և թէ այդ ոճիրները, որոնք բարոյական տեսակէտով զզուելի էին, քաղաքականութեան մէջ օգտակար կը համարուէին։ Ահա՛ այս մտածումն էր որ կասեցուց եռանդը անոնց, որոնց օրէնքով վստահուած էր կարգ կանոնի պահպանումը ու անձի և ստացուածքի պաշտպանութիւնը...։

« Կը վերադառնամ այն դէպքերուն որոնց համառօտ մէկ ուրուագիծն ըրի. այդ դէպքերը, ինչպէս նաև մէկ քանին անոնցմէ, որոնք Օգոստոս 10ի հռչակաւոր օրուընէ առաջ պատահեցան, դէպքերու և խել մը պարագաներու զուգադիպութիւնը կարծել տուին թէ միաբանութիւն յարուցնել ուզէին անիրաւ մոլորութիւն, որպէս զի մոլորութիւն հաստ իշխանութեան տէր կանգնին. այս ծրագրին իբր հեղինակ Ռոպէսպիէռ մատնանիշ ըրին, անոր յարաբերութիւնները քննեցին, վարմունքը տարրալուծեցին. հաւաքեցին այն խօսքերը, որոնք՝ կըսուի թէ՝ իր բարեկամներէն մէկուն բերնէն փախցուցեր է, և եզրակացուցին թէ Ռոպէսպիէռ անմիտ փառասիրութիւնն ունեցած է իր երկրին բռնապետն ըլլալու։ Ռոպէսպիէռի նկարագիրը կը մեկնաբանէ իր արարքը։ Անիկա ծայրայեղօրէն մռայլ և թերահաւատ է. ամէն կողմ դաւադրութիւններ, մատնութիւններ, անդունդներ կը նշմարէ. իր մաղձոտ խառնուածքը, իր մռայլ երևակայութիւնը ամէն ինչ մութ գոյներու տակ կը ներկայացնեն իրեն։ Իր կարծիքներուն մէջ հրամայողական, միմիայն ինքզինքը մտիկ ընող, հակաճառութեանց չհանդուրժող, երբէք չներող անոր՝ որ իր արժանապատուութիւնը վիրաւորած է, իր յանցանքները երբէք չճանչցող, թեթևութեամբ ուրիշները յանցաւոր բռնող, ամենէն փոքր կասկածէն գըր-



ՄԱՌՍՕ ԿԸ ԽՕՍԻ ԺՈՂՈՎԻՆ ԱՏԵԱՆԻՆ

Այն ատեն կը հաւաքուին Ռօպէսփիէռ Կրտսերին չուրջ, ու անոր կը խոստանան հսկել իր եղբօրը վրայ, կ'որոշուի որ դաւաճաններու մէջ բարեկամ կամ ազգական ունեցողները հարկ եղածը գրեն մտքերը լուսաբանելու համար։

Ռօպէսփիէռ Կրտսեր, բեմէն վար իջած միջոցին, չի մոռնար զրպարտութիւն մը աւելցնելու. կ'ըսէ թէ Անաքարսիս Քլուց զինքը վստահացուցած է որ ամէն օր Ռօլանի տանը մէջ, դաշնակցականութեան մասին բուռն վիճաբանութիւններ կ'ըլլային։

Յետոյ, իր կարգին, խօսեցաւ եռանդոտ Շապօ։ Լաւվէի ճառին մէջ զինքը ամենէն աւելի վիրաւորող բանը այն է որ Օգոստոս 10ը ինքզինքին և իր բարեկամներուն կը վերագրէ, և Սեպտեմբեր 2ը՝ 200 մարդասպաններու. «Ես, ըսաւ Շապօ, կը յիշեմ թէ

Օգոստոս 9ի գիշերը խօսքս ուղղեցի աջակողմեան պարոններուն, ապստամբութիւն առաջարկելու համար իրենց և անոնք ինծի պատասխանեցին իրենց քիթին տակէն խնդալով. արդ, չեմ հասկնար թէ ի՛նչ իրաւունք ունին Օգոստ. 10ը ինքզինքնուն վերագրելու։ Գալով Սեպտեմբեր 2ին, անոր ալ հեղինակը նոյն այն ժողովուրդն է որ Օգոստոսի 10ը ի գլուխ հանեց, ի հեճուկս իրենց, և որ յաղթութենէն յետոյ ուզեց վրէժ լուծել. Լուվէ կ'ըսէ թէ հազիւ 200 մարդասպաններ կային, իսկ ես կը վստահեցնեմ թէ Օրէնսդիր ժողովի պատգամաւորներուն հետ 10000 Թուրերու կամարի մը տակէն անցայ. աւելի քան 150 դաշնակից տեսայ. յեղափոխութեան մէջ ոճիր չկայ բնաւ. Մառա, որ այնքան կ'ամբաստանուի, միմիայն յեղափոխական արարքներու համար հետապնդուած է, այսօր կ'ամբաստանեն Մառան, Տանդոնը, Ռոպէսփիէռը, վաղը՝ կարգը պիտի գայ Սանդէօնի, Շապօյին, Մէրլէնին, ևն.։»

Այս յանդուգն խօսքերէն զայրացած, դաշնակից մը, որ նիստին ներկայ էր, ըրաւ բան մը, որ մինչև այն ատենը ոչ ոք համարձակած էր հրապարակաւ ընել. անիկա յայտարարեց թէ կը գործէր բանտերուն մէջ, և իր ընկերներէն շատերուն հետ, այն հաւատքով թէ դաւաճաններ կը սպաննէ, կեղծ թղթադրամ շինողները կը խողխողէ, ու Բարիզը կը փրկէ հրդեհէ ու կոտորածէ. աւելցուց թէ շնորհակալ է ընկերութեան, այն բարեացակամութեան համար, զոր ցոյց տուաւ ամենքին, թէ յաջորդ օրն իսկ կը մեկնին դէպի բանակը և իրենց հետ կը տանին միայն սա վիշտը թէ, հայրենասէրները այսքան մեծ վտանգներու մէջ կը թողուն։

Այս անհաւոր յայտարարութիւնը եկաւ վերջ մը դնել նիստին։ Ռոպէսփիէռ բնաւ երևցած չէր. ու ամբողջ այդ շաբաթը երևան չեկաւ, որովհետև իր պատասխանը կը պատրաստէր և ժամանակ կուտար իր կուսակիցներուն որ հասարակաց կարծիքը դէպ ի լաւը տրամադրեն։ Մի և նոյն ժամանակ, Բարիզի քաղաքապետութիւնը կը յամառէր մնալ իր վարմունքին և դրութեան վրայ. կըսէին թէ, մինչև 10 միլիոն ֆրանք իւրացուցած է Սէրթէօյի գանձէն, որ թագաւորին անձնական գանձարանն էր։ Նոյն այդ միջոցին իսկ, քաղաքապետութիւնը շրջաբերական մը կը ղրկէր բոլոր քաղաքապետութեանց, Գոնվանսիօնին ի սպաս պահակազօրք տալու ծրագրին դէմ։

Անմիջապէս, Պարպարու առաջարկեց չորս անհաւոր ու շատ լաւ յղացուած հրամանագիրներ։ Առաջին՝ մայրաքաղաքը պէտք էր կորսնցնէր ազգային ներկայացուցչութիւնը իւրացնելու իրաւունքը, եթէ չկարենար զայն պաշտպանել նախատինքներու կամ բռնութեանց դէմ։ Երկրորդ՝ դաշնակիցները և ազգային ոստիկան-զինուորները պարտաւոր էին Բարիզի զինեալ մասնաճիւղերուն հետ գործակցաբար, ազգային ներկայացուցչութիւնը և հանրային շէնքերը պահպանել։ Երրորդ՝ Գոնվանսիօնը պէտք էր դատական ատեանի վերածուէր, դաւադիրները դատելու համար։ Չորրորդ՝ Գոնվանսիօնը դադարեալ կը հռչակէր Բարիզի քաղաքապետութիւնը։

Այս չորս հրամանագիրները շատ լաւ կը յարմարէին պարագաներուն և այդ ժամանակին ճշմարիտ վտանգներուն կը պատշաճէին. բայց զանոնք արձակելու համար պէտք էր ունենալ այն կատարեալ իշխանութիւնը, որ այդ հրամանագիրներէն կրնար յառաջ գալ։ Կորովի միջոցներ առնելու համար կորով պէտք է, և ամէն չափաւոր կուսակցութիւն որ կ'ուզէ բուռն կուսակցութիւն մը զսպել, կը գտնուի անել դրութեան մը մէջ, ուրկէ երբեք չի կրնար դուրս ելնել։ Անշուշտ մեծամասնութիւնը՝ Ժիրոնտէններուն կող-

մը հակելով կրնար հրամանագիրները տալ. բայց իր չափաւորութիւնն էր որ զինքը անոնց կողմը հակել կու տար, և այդ չափաւորութիւնն իսկ էր, որ խորհուրդ կու տար սպասելու, ժամանակ անցընելու, ապագային վրայ յոյս դնելու և հնարելու բոլոր այն միջոցները, որոնք շատ կանխահաս կերպով կորմլի են։ Ժողովը մերժեց նոյն իսկ նուազ ուժգին հրամանագիր մը. ասիկա առաջինն էր անոնցմէ, որոնց խմբագրութիւնը յանձնուած էր Իններու Յանձնախումբին։

Պիւզօ զայն կ'առաջարկէր և անիկա կապ ունէր սպաննութեան և հրձիգութեան գրգռութիւններու։ Ամէն ուղղակի գրգռում մահուամբ կը պատժուէր և անուղղակի գրգռում տասը տարուան շղթայակիր աշխատանքով։ Ժողովը դատեց որ ուղղակի գրգռումը շատ խիստ պատիժի ենթարկուած է և անուղղակի գրգռումը շատ տարտամօրէն սահմանուած և դժուարաւ բանուելիք էր։ Պիւզօ ի զուր ըսաւ թէ յեղափոխական և հետևաբար կամայական միջոցներ անհրաժեշտ էին այն հակառակորդներուն համար, որոնց դէմ պայքարիլ կ'ուզուէր. մտիկ չըրին զինքը և անիկա չէր կրնար լսելի ըլլալ, իր խօսքը ուղղելով այնպիսի մեծամասնութեան մը, որ բուռն կուսակցութեան յեղափոխական միջոցներն իսկ կը դատապարտէր և հետևաբար շատ յարմար չէր զանոնք գործածելու իր թշնամիներուն դէմ։ Օրէնքը յետաձգուեցաւ. և Իններու Յանձնախումբը որ հաստատուած էր կարգ ու կանոնը պահպանելու միջոցները ճարելու, գրեթէ անօգուտ դարձաւ։

Այլ սակայն, Ժողովը քիչ մը ուրիշ կերպով ցոյց կու տար, երբ խնդիրը Համայնքային Խորհուրդին ոտնձգութիւնները զսպելու վրայ էր։ Այն ատեն կը թուէր որ իր իշխանութիւնը կը պաշտպանէր տեսակ մը նախանձախնդրութեամբ և ուժով։ Համայնքային Ընդհանուր Ժողովը, որ հարցաքննութեան կանչուած էր դաւադրական պահակախումբ մը կազմելու ծրագրին դէմ յայտարարութիւն մը հանած ըլլալուն պատճառաւ, եկաւ ինքզինքը արդարացնելու։ Անիկա կ'ըսէր որ այլ ևս Օգոստոս 10ինը չէր։ Քանի մը խռովարարներ խառնուեր էին իր անդամներուն, իրաւունք ունեցած էին զանոնք ամբաստանելու, բայց անոնք այլևս իրենց ծոցին մէջ չէին. «Մի՛ չփոթէք, կ'աւելցնէր, անմեղները և յանցաւորները։ Մեզի կրկին ընծայեցէք այն վստահութիւնը, որուն պէտք ունինք։ Կ'ուզենք որ Քոնվանսիոնի անհրաժեշտ անդորրութիւնը վերադառնայ, որպէս զի լաւ օրէնքներ հաստատուին։ Գալով այդ խնդրագրին առաքման, մասնաճիւղերը այդպէս ուզեցին, մենք միայն իրենց պատգամաւորներն ենք. բայց զիրենք հրաւիրեցինք անկէ ետ կենալու։»

Այս համակերպութիւնը նոյն իսկ Ժիրոնտէնները զինաթափ ըրաւ և Ժանսոնէի առաջարկին վրայ Ժողովը պատիւներ ընծայեց Համայնքային Ընդհանուր Խորհուրդին. վարչական մարմնի անդամներուն այս հնազանդութիւնը կրնար շատ գոհացնել Ժողովին հպարտութիւնը, բայց անիկա անկարող էր Բարիզի ճշմարիտ տրամադրութիւններուն վրայ ազդելու։

Խառնաշփոթութիւնը կ'աւելնար, քանի կը մօտենար Նոյեմբեր 5ը, Ռօպէսբիէռը լսելու համար նշանակուած օրը։ Նախորդ օրը զանազան ձևով դըրոյցներ հրապարակ ելան։ Խումբեր կ'անցնէին Բարիզի փողոցներէն, որ մէկը գոչելով «Կառափնատի՜ն, Ռօպէսբիէռը, Տանդօնը, Մառան». ուրիշներ կը գոչէին «Ի մա՜հ, Ռօլանը, Լասուրսը, Կուատէն։» Այդ բանին համար գանգատեցան ժաքօպէններու ակումբին մէջ, ուր միայն խօսուեցաւ Ռօ-

պէտրուէրի, Տանդօնի և Մառայի դէմ արձակուած աղաղակներուն վրայ։ Այդ աղաղակներուն համար կ'ամբաստանէին վիշապագործները և դաշնակիցները, որոնք այդ ժամանակ դեռ անձնուէր էին Բոնմանիօնին։ Նոյնէն Ռօպէսփիէռ Կրտսերը բեմին վրայ երեւցաւ, ողբաց որ անմեղութեան վանդակի ենթարկուած է, մերժեց ընկերութեանց անդամներէն մէկուն առաջարկած հաշտութեան մէկ ծրագիրը, ըսելով որ ընդդիմադիր կուսակցութիւնը յայտնապէս հակայեղափոխական էր, որուն հետ ո՛չ խաղաղութիւն և ո՛չ զինադադար կարելի էր կնքել, թէ անշուշտ անմեղութիւնը պիտի մնայր սրտերուն մէջ, բայց թէ հարկ էր որ անիկա զոհուէր, և ձգէին որ Մաքսիմիլիէն Ռօպէսփիէռ յաղթահարուէր, որովհետև միակ հնարքի մը կորուստը յառաջ չպիտի բերէր ազատութեան կորուստը։ Բոլոր ժաքօպէնները ծափահարեցին այս գեղեցիկ զգացումները՝ Ռօպէսփիէռ Կրտսերը ապահովցնելով որ՝ բան մըն ալ չպիտի ըլլար և թէ իր եղբայրը չպիտի սպաննուէր։

Բոլորովին տարբեր գանգատներ լսուեցան ժողովին մէջ և հոն մատնանշեցին Ռօլանի, Լասուրսի, Կուատէի և այլոց դէմ արձակուած աղաղակները։ Ռօլան գանգատեցաւ որ իր օրէնքի համեմատ ըրած պահանջումները՝ նախարարութեան և համայնքին գլխաւորական ուժ ձեռք ձգելու համար ապարդիւն կը մնային։ Շատ վիճաբանեցան, գերբար մեղադրեցին և օրը անցաւ առանց որ ոևէ միջոց ձեռք առնէին։ Հետեւեալ օրը, Նոյեմբեր 5ին, վերջապէս Ռօպէսփիէռ բեմին վրայ երեւցաւ։

Ամենքն ալ չահագրգռուած էին և անհամբերութեամբ կ'սպասէին այս հանդիսաւոր վիճաբանութեան արդիւնքին։ Ռօպէսփիէռի ձայնը շատ մեծ էր և խնամքով պատրաստուած։ Լուվէի ամբաստանութեանց պատասխանեց այնպէս՝ ինչպէս նման պարագաներու մէջ սովորաբար կը պատասխանեն։

«Դուք զիս կ'ամբաստանէք որ, ըստ, բռնապետութեան կը ձգտիմ. բայց այդ բանին հասնելու համար, միջոցներ պէտք են և ո՞ւր են իմ գանձերս և զօրքերս։ Դուք կը կարծէք թէ ժաքօպէններու ակումբին մէջ իմ իշխանութեանս շէնքը բարձրացուցի. բայց ինչո՞վ կ'ապացուցանէք։ Անո՞ր համար որ ինծի աւելի մտիկ կ'ընէին, անոր համար որ թերևս ես ձեզմէ աւելի լաւ կերպով կոչում կ'ընէի այդ ընկերութեան բանականութեան և թէ դուք այս պարագային, ձեր արժանապատուութեան կրած ձախողանքներուն վրէժը լուծել կուզէք միայն։ Դուք կը յաւելնէք կարծելու թէ այդ հաշակաւոր ընկերութիւնը դէպ ի գէշը փոխուած է, բայց ամբաստանութեան հրամանագիր մը ուղեցէք անոր դէմ, այն ատեն զայն արդարացնելու հոգը վրաս պիտի առնեմ և պիտի տեսնենք որ դուք Լէօփոլտէն և Լաֆայէթէն աւելի բարեպաշտ կամ համոզկեր պիտի ըլլա՞ք։ Դուք կ'ըսէք թէ Օգոստոս 10էն երկու օր ետք միայն երեւցայ Համայնքային Խորհուրդին մէջ և թէ այն ատեն ես ինքնիրենս դիւանին գլուխը անցայ։ Բայց նախ, աւելի առաջ չկանչուեցայ հոն և երբ դիւանին ներկայացայ, հոն անդամակցելու համար չէր, այլ իմ պաշտօնիս իրաւասութիւնը քաւելու համար։ Դուք կ'աւելցնէք թէ Օրէնսդիր ժողովը նախատեցի, թէ անոր սպառնացայ ահազանգը հնչեցնել տալ, ասիկա սուտ է։ Մէկը որ մօտս կը գտնուէր, ինծի ամբաստանելով թէ ահազանգը հնչել կուտայի, ինծի հետ խօսողին պատասխանեցի որ ահազանգը հնչողները անոնք էին, որ անարդարութեամբ միտքերը կը դառնացնէին, և այն ատեն իմ ընկերակիցներէս մէկը, նուազ վերապահ, աւելցուց որ պիտի հնչուէր անիկա։ Անհաւատի

այն միակ դէպքը որուն վրայ հիմնեց այս զրպարտութիւնը իմ ամբաստանիչս։ Ընտրական ժողովին մէջ խօսք սուր, բայց համաձայնուած էր խօսք առնել. հոն քանի մը դիտողութիւններ ներկայացուցի և չաստիր միևնոյն խրատները գործածեցին։ Ես ո՛չ մէկը ամբաստանած եմ և ոչ ալ մէկը յանձնարարած։ Այն մարդը որուն համար կըսէք թէ գործածած եմ, Մատան, երբէք ոչ իմ բարեկամս եղած է, ոչ ալ իմ յանձնարարեալս։ Եթէ զինքը դատէի անանցնալ որ իր վրայ կը յարձակին, անպարտ զինքը ըլլար, բայց այդ մասին կարծիք չեմ յայտներ։ Միայն կ'ըսեմ թէ չտրտմանակարար ինծի հետ մտերիմ չէր անիկա. թէ մէկ անգամ իմ տունս եկաւ, թէ իրեն կարգ մը դիտողութիւններ ըրի իր գրութիւններուն և անոնց ծայրայեղութեանց վրայ և իրեն ըսի թէ հայրենասէրները ցաւ կըզգային որ մեր դատը կը վտանգուէր իր կարծիքներուն բուռն հանգամանքին հետևանքով. բայց անիկա դաւ որ նեղմիտ քաղաքագէտ մըն էր և այդ քանը հրատարակելէ հետևեալ օրը։ Ուրեմն զրպարտութիւն մըն է զիս այդ մարդուն գործակից կամ գործիչը ենթադրելը։»

Այս անձնական ամբաստանութիւններէն անցնելով ընդհանուր ամբաստանութիւններուն, որոնք ուղղուած էին համայնքին դէմ, Ռոպէսփիէռ իր բոլոր պաշտպաններուն հետ կը կրկնէ թէ Սեպտեմբեր 2ը Օգոստոս 10ին շարունակութիւնն էր. թէ կարելի չէ կատարուած խռովութենէ մը ետքը նշանակել այն որոշ կէտը, ուր պէտք է դային ջախջախումի ժողովրդային արդարադատութեան ալիքները. թէ անշուշտ պատժանութիւնները ապօրէն էին, բայց թէ ուրանց ապօրէն միջոցներու անկարելի էր բանադատութիւնը թօթափել. թէ հարկ կ'ըլլար այս նոյն միջադրանքը ընել ամբողջ յեղափոխութեան, որովհետև անոր մէջ ամէն բան ապօրէն էր, թէ՛ դահին տապալումը, թէ՛ Պասթիլի առումը։

Այնուհետև կը նկարագրէ Բարիզի վտանգները, քաղաքացիներուն զայրոյթը, անոնց գործակցութիւնը բանտերուն մէջ, անոնց անդիմադրելի կատաղութիւնը, երբ կը խորհէին թէ իրենց եօթն դաւադիրներ կը ձգէին որոնք իրենց ընտանիքները պիտի ջարդէին։

«Կը պնդեն թէ անմեղ մը զոհուեցաւ, կը գոչէ ատենախօսը ուռուցիկ ոճով, մէկ հատ մը, անիկա շատ շատ է, անշուշտ։ Քաղաքացինե՛ր, լացէք այդ անգութ սխալմունքին վրայ. մենք շատոնց ի վեր լացած ենք արդէն, անիկա բարի քաղաքացի մըն էր, մեր բարեկամներէն մէկը։ Նոյն իսկ լացէք այն զոհերուն վրայ, որոնք օրէնքի վըրէժխնդրութեան վերապահուած էին և որոնք ժողովրդային արդարութեան թուրին հարուածը կրեցին։ Բայց թո՛ղ ձեր ցաւը վերջ մը ունենայ, ինչպէս բոլոր մարդկային բաները։ Քիչ մը արցունք պահենք աւելի յուզիչ աղէտներու համար, լացէ՛ք հարիւր հազար հայրենասէրներու վրայ, զորս բռնակալութիւնը զոհեց. լացէ՛ք մեր քաղաքացիներուն վրայ, որոնք հոգեվարք առին իրենց հրդեհուած երդիքներուն ներքև. ու այն քաղաքացիներուն զաւակներուն վրայ, որոնք կոտորուեցան իրենց օրօրոցներուն կամ իրենց մօրը բազուկներուն մէջ։ Լացէ՛ք բռնապետներու լուծին տակ ճնշուած մարդկութեան վրայ... բայց մխիթարուեցէք, եթէ լռութեան հարկադրելով բոլոր ստորին կիրքերը, կ'ուզէ՛ք ապահովել ձեր երկրին երջանկութիւնը և աշխարհի երջանկութիւնը պատրաստել։

«Այն զգայնոտութիւնը որ կը հեծեծէ գրեթէ բացառապէս ազատութեան թշնամիներուն համար, ինծի կասկածելի է։ Դադրեցէք իմ աչքերուս առջև

չարժելէ բռնապետին արիւնոտ զգեստը ապա թէ ոչ պիտի կարծեմ թէ Համը կրկին շղթաներու մէջ առնել կուզէք»։

Այս խորամանկ տրամաբանութեան և յեղափոխական արդարութեան խառնուրդով է որ Ռօպէսփիէռ յաջողեցաւ իր ունկնդիրները հրապուրելու և միաձայն ծափահարութիւններ շահելու։ Ինչ որ իր անձին կը պատկանէր ճիշդ էր, և Ժիրոնտէններու կողմէ անխոհեմութիւն էր, բռնապետութեան ծրագիր մը մատնանշել հոն, ուր միայն ազդեցութեան փառասիրութիւն մը կար դեռ, զոր նախանձոտ նկարագիրովը վշտալի կը դարձնէր. անխոհեմութիւն էր համայնքին գործերուն մէջ ընդարձակ դաւադրութեան մը ապացոյցը գտնել ուզելը, երբ միայն ժողովրդական կիրքերու ցեղումին բնական հետևանքները կային։ Այսպէսով Ժիրոնտէնները ժողովին առիթը կը հայթայթէին ախոյեաններուն դէմ իրենց իրաւունք չտալու։

Կարելի է ըսել՝ չողոքորթուած, դաւաղիրներու ենթադրեալ պետը ինքզինքը արդարացնելու հարկին մէջ տեսնելէն, չափազանց գոհ՝ որ բոլոր ոճիրներուն բացատրութիւնը այլ ևս անկարելի դարձած ըմբոստութեան մը, և յուսալոյն ապագայ մը երազելուն մէջն է, Քօնվանսիօնը կարծեց որ աւելի արժանաւոր, աւելի խոհեմ էր այս բոլոր անձաւորութիւնները ոչինչի վերածել։ Ուրեմն առաջարկեցին օրակարգի անցնիլ։ Անմիջապէս Լուվէ խոյացաւ պայքարելու համար և պատասխանել ուզեց։ Խել մը ատենախօսներ ներկայացան և ուզեցին խօսիլ օրակարգին վրայ, թեր ու դէմ։ Պարպարու յուսահատելով ինքզինքը լսելի ընելէ, բեմին առաջքը խոյացաւ գնաց իբր ինքզինքը լսելի ընելու համար։ Լանժուինէ առաջարկեց որ վճռաբանութիւնը սկսի այն կարևոր խնդիրներուն վրայ որոնք Ռօլանին տեղեկագրին մէջ կը գտնուէին։

Վերջապէս, Պառէր կը յաջողի խօսք առնելու։

— «Քաղաքացինե՛ր․ կ'ըսէ, եթէ հանրապետութեան մէջ մարդ մը գոյութիւն ունենար որ ծնած ըլլար Կեսարի հանճարով կամ Քրոմուէլի յանդգնութեամբ, մարդ մը որ Սիլլայի տաղանդով, անոր վտանգաւոր միջոցները իր ձեռքը ունենար, եթէ հոս գոյութիւն ունենար մեծ հանճարով օրէնսդիր մը, ընդարձակ փառասիրութիւնով և խորունկ նկարագրով մը. օրինակի համար զօրավար մը, ճակատը դափնեպսակով, և որ ձեր մէջ վերադառնար ձեզի օրէնքներ պարտադրելու կամ ժողովուրդի իրաւունքները արհամարհելու, այն ատեն ամբաստանութեան հրամանագիր մը պիտի առաջարկէի անոր դէմ։ Բայց թէ այդ պատիւը ընէիք մէկ օրուան անցեալ ունեցող մարդոց, ընդվզումի փոքրիկ ձեռնարկուներու, անոնց՝ որոնց քաղաքացիական փառապսակները նոճիով խառն են, ահաւասիկ այս բանն է որ չեմ կրնար ըմբռնել։»

Այս եզական հաշտարարը առաջարկեց սապէս պատճառաբանել բանաձևը։ Նկատելով որ ազգային Քօնվանսիօնը պարտական է զբաղիլ միայն հանրապետութեան շահերով... «Ձեր բանաձևը չեմ ուզեր, գոչեց Ռօպէսփիէռ, եթէ այնպիսի յառաջաբան մը պիտի ունենայ որ ինծի համար նախատալի է»։ Ժողովը ընդունեց պարզ բանաձև մը։ Ժաքոպէններու ակումբը փութացին այս յաղթութիւնը հռչակելու համար և Ռօպէսփիէռ հոն ընդունուեցաւ իբր յաղթական։ Հազիւ թէ երևցած էր երբ երկարօրէն ծափահարեցին։ Անգամ մը խնդրեց որ խօսք տան իրեն, որպէսզի օրուան դէպքերուն պատմութիւնը ընէ։ Ուրիշ մը պնդեց որ իր համեստութիւնը զինքը պիտի արգիլէր և չպիտի ուզէր խօսիլ։ Ռօպէսփիէռ յանկեայն վայելելով այս խանդավառութիւնը, ու-

րէչի մը կը թողու գոլեստներով լեցուն պատմութիւն մը ընելու հոգը։ Անիկա Արփաղիոնէս կոչուեցաւ։ Իր միամիտ եւ ռամկական արկածախօսութիւնը գովուեցաւ այնպիսի չափազանցութեամբ մը որ կ՚ապացուցանէ թէ որքա՛ն գիտէին իր ճաշակը գրական գոլեստներու համար։ Քոնվանսիօնը վերահաստատուեցաւ իր դիրքին մէջ, ընկերութեան համարումը շահեցաւ եւ յաւակնեցան կարծելու թէ ճշմարտութեան յաղթանակը կ՚սկսէր եւ թէ այլ եւս պէտք չէր յուսահատիլ հանրապետութեան փրկութեան մասին։

Պատէրը հարցափնդեցին որպէսզի բացատրութիւն տայ այն եղանակին վրայ որով արտայայտուած էր խռովութեան պզտիկ զրգռիչներու նկատմամբ. եւ ինքզինքը ամբողջովին բացատրեց յայտարարելով որ ուզած էր, այդ խօսքերով, մատնանշել ո՛չ թէ ջերմ հայրենասէրները, որոնք Ռոպէսփիէռի հետ ամբաստանուած էին, այլ իրենց հակառակորդները։

Այսպէս վերջացաւ այս հռչակաւոր ամբաստանութիւնը. անիկա ճշմարիտ անխոհեմութիւն մը եղաւ։ Ժիրօնտէններուն բոլոր վարմունքը կը յատկանշուէր այս ձեռնարկով։ Անոնք վեհանձն զայրոյթ մը կ՚զգային եւ զայն կ՚արտայայտէին տաղանդով. բայց այդ բանին մէջ բաւական անձնական ատելութիւն, բաւական սխալ գուշակութիւններ, երեւակայական ենթադրութիւններ կը խառնուէին, այնպէս որ առիթ կը հայթայթէին անոնց որ կը սիրեն սխալիլ՝ իրենց չհաւատալու, անոնց որ կը վախնան կորովի գործողութենէ մը, պատճառ մը՝ զայն յետաձգելու եւ վերջապէս անոնց որոնք անաչառութիւն կը ձեւացնէին, պատրուակ մը՝ իրենց երբակցութիւնները չորոշելու, եւ այս երեք դասակարգերը կը կազմէին ամբողջ Բլէնը։

Այլ սակայն, անոնց անդամներէն մէկը, իմաստուն Բէզիօնը երբեք համակարծիք չեղաւ այս ծայրայեղութեանց. անիկա սակայն տուաւ իր պատրաստած ճառը, ուր ամէն բան խոհականութեամբ գնահատուած էր։ Վէրնիօ՝ որուն բանականութիւնը եւ արհամարհոտ թուլութիւնը զինքը կիրքերէ վեր կը դնէին, նոյնպէս զերծ էր իրենց սխալներէն եւ խոր լռութիւն մը պահեց։ Այդ պահուն Ժիրօնտէններու ամբաստանութիւնը միայն այն արդիւնքը ունեցաւ որ ո եւ է հաշտութիւն վերջնականապէս անկարելի եղաւ, անօգուտ պայքարի մը մէջ սպառած եղան իրենց միջոցներուն ամէնէն զօրաւորը եւ միակը, խօսքը եւ զայրոյթը. եւ իրենց թշնամիներուն ատելութիւնը եւ կատաղութիւնը աւելցուցած եղան առանց բան մը շահելու։

Վա՛յ յաղթուողներուն, երբ յաղթողները կը պառակտին։ Անոնք իրենց մասնաւոր կռիւէն ուշադրութիւննին անդին կը դարձնեն, մանաւանդ կը ջանան զիրար գլել անցնիլ նախաձեռնութեամբ իրենց ինկած թշնամիները ճնշելով։ Տամփլի մէջ բանտարկեալներ կային որոնց վրայ պիտի թափէր յեղափոխական կիրքերու բոլոր թափը։ Միապետութիւնը, ազնուականութիւնը, վերջապէս բոլոր անցեալը որոնց դէմ յեղափոխութիւնը կը պայքարէր կատաղութեամբ, կարծես թէ դժբաղդ Լուդովիկոս ԺԶ.ը կ՚անձնաւորէր իր մէջ։ Եւ այն եղանակը որով պիտի վարուէին գահընկէց իշխանին հետ իւրաքանչիւրին համար ապացոյց մը պիտի ըլլար թէ ի՛նչ կերպով կ՚ատէին հակայեղափոխութիւնը։ Օրէնսդիր ժողովը շատ մօտ ըլլալով Սահմանադրութեան, որ թագաւորը անբռնաբարելի կը յայտարարէր, չէր համարձակած անոր բաղդը վճռել. Օրէնսդիր ժողովը թագաւորը գահընկէց ըրած եւ Տամփլի մէջ արգելափակած էր. նոյն իսկ անիկա թագաւորութիւնը չէր տապալած եւ

Քօնվանսիոնին թողած էր հին միապետութեան անձինքը և գոյքերը դատելու հոգը։ Թագաւորութիւնը տապալած և հանրապետութիւնը յայտարարած և Սահմանադրութեան աշխատութիւնը յանձնուած ըլլալով Ժողովին ամենէն յայտնի մտքերուն հաշտարար ոգին, կը մնար Լուդովիկոս ԺԶ.ի վիճակովը զբաղիլ։ Ամիս ու կէս անցած էր և անվերջանալի գործեր, պաշտօններու մատակարարութիւնը, բանակներու հրակողութիւնը, ապրուստի հոգը որ այդ միջոցին ինչպէս ամէն խռովութեանց ժամանակներու մէջ կը պակսէին, ոստիկանութիւնը և բոլոր մանրամասնութիւնները կառավարութեան զոր թագաւորութեան անկումէն ետքը ծայրայեղ կասկածոտութեամբ մը յանձնած էին խորհուրդի մը, վերջապէս բուռն կռիւներ, ի սկզբան սրդիկեցին Պարիզի բանտարկեալներով զբաղելու։ Անգամ մը անոնք խնդրոյ առարկայ եղած էին, և ինչպէս տեսանք, առաջարկութիւնը զրկուեցաւ օրէնսդրութեան յանձնաժողովներուն։

Այդ միջոցին ամենուրեք անոնց վրայ կը խօսէին։ Ժաքօպէններու ակումբին մէջ ամէն օր Լուդովիկոս ԺԶի դատավարութիւնը կը պահանջէին և կ'ամբաստանէին Ժիրօնտէնները որ զայն կը հետաձգեն կռիւներով, որոնցմով իւրաքանչիւրը այնքա՛ն կը չահագրգռուէին, որքան Ժիրօնտէնները։ Նոյեմբեր 1 ին Ռօպէսփիէռի ամբաստանութենէն մինչև անոր փառաւորուելու միջոցին մասնաճիւղ մը զանգատած ըլլալով նոր պարաւագրութեանց մասին որոնք բռնաւորութեան և խռովութեան դրդումներ կուտային, պահանջեցին, ինչպէս միշտ կ'ընէին, Մառայի դատավարութիւնը։ Ժիրօնտէնները կը պնդէին որ ան և անոր ընկերակիցներէն ոմանք էին բոլոր խառնակութեանց պատճառ, և իւրաքանչիւր նոր դէպք մը պատահելուն պէս կ'առաջարկէին զանոնք հետապնդել։ Իրենց թշնամիները, ընդհակառակը կ'ըսէին որ խռովութեանց պատճառը Պարիզի մէջ էր. թէ նոր հանրապետութիւնը այն ատեն միայն հիմնական պիտի ըլլայ և հանդարտութիւնը ու անդորրութիւնը հոն պիտի տիրէ, երբ նախկին թագաւորը զոհուի և թէ այս սարսափելի հարուածով դաւադիրներու բոլոր յոյսերը չքանան։ Ժան տը Պրի, այն երեսփոխանը որ Օրէնսդիր ժողովին մէջ ուզած էր միայն հանրային փրկութեան օրէնքը իբր վարուելակերպ ծառայեցնելն, այս խնդրին մասին խօսք առաւ և առաջարկեց որ միեւնոյն ատեն դատեն Մառան և Լուդովիկոս ԺԶ.ը։ «Մառան, ըսաւ, մարդակերի ախորժակը չա՞ւ'ցաւ. անիկա արժանի է թագաւոր ըլլալու։ Անիկա այն խառնակութեանց պատճառն է որոնց պատրուակն է Լուդովիկոս ԺԶ. Երկուքը մէկ ատեն դատենք և հանրային անդորրութիւնը ապահովենք այս կրկնակի օրինակով։»

Հետևաբար Քօնվանսիոնը հրամայեց որ Մառայի դէմ եղած ամբաստանութեանց տեղեկագիրը անմիջապէս կարդացուի և ամենէն ուշ ութ օրի մէջ օրէնսդրական Յանձնաժողովը իր կարծիքը յայտնէ Լուդովիկոս ԺԶ.ի դատավարութեան մէջ գործածուելիք ձևերուն վրայ։ Եթէ ութ օրէ ետք յանձնաժողովը ներկայացուցած չըլլար իր տեղեկագիրը, ամէն մէկ անդամ իրաւունք պիտի ունենար բեմը ներկայանալու այս մեծ խնդրին մասին խօսելու համար։ Նոր կռիւներ և նոր հոգեր արգելք եղան Մառայի դէմ կազմուելիք տեղեկագրին, որ նոյն իսկ չատ ուշ ներկայացուեցաւ և օրէնսդրական Յանձնաժողովը իր տեղեկագիրը պատրաստեց Պարիզի մէջ բանտարկուած վեհափառ և դժբաղդ ընտանիքին վրայ։

Այս միջոցին Եւրոպայի աչքը Ֆրանսայի վրայ սեւեռած էր։ Զարմացումով կը գիտէին որ նախապէս այնքան տկար



ԼԻԼ ՔԱՂԱՔԻ ՌՄԲԱԿՈԾՈՒԹԻՒՆԸ

համարուած այդ մարդիկը՝ հիմակ յաղթական և փառապանծ զօրքեր էին և բուռական յանդուգն էին՝ սպառնալու համար բոլոր գահերուն։ Անհանգստութեամբ կը դիտէին անոնց ընելիքը և դեռ կը յուսային որ անոնց յանդգնութիւնը շուտով վերջ մը պիտի ունենայ։ Այլ սակայն զինուորական դէպքերը կը պատրաստուէին, որոնք պիտի կրկնապատկէին իրենց արիութիւնը և պիտի աւելցնէին աշխարհիս զարմացումը և սարսափը։

Տիւմուրիէ Հոլանտայի վերջերը մեկնած էր Պելճիքա և 25 ին Վալանսիէն կը գտնուէր։ Իր ընդհանուր յառաջագիծը կազմեց իր միտքը զրուցով զօրավարին հանճարով, որով կ՚ուզէր թշնամիին վրայ ճակատէն յարձակիլ՝ օգուտ քաղելով այն թուական մեծ առաւելութենէն, զոր ունէին անոր վրայ. Տիւմուրիէ պիտի կրնար Մէօզի վրայ քալելով իր ուժերուն ամենամեծ մասովն հետ, արգիլել միացումը Գլէրֆէյդի, որ

Շամբանեըէն կը հասնէր, պիտի կրնար դուքս Ալպէռի վրայ հակառակ կողմէն յարձակիլ և այսպէսով ընել այն՝ զոր սխալը գործած էր սկիզբէն չընելու Հաեննոսի վրայ ընթանալու անփոյթ գտնուելով և այդ գետին հետեւելով մինչև Քլէվ. բայց իր նպատակը ուրիշ էր եւ գիտական յատակագիծէ մը կը նախընտրէր փայլուն գործ մը, որպէս զի կրկնապատկուի զինուորներուն քաջութիւնը, որ արդէն չատ խանդավառած էր Վալմիի թնդանօթաձգութենէն, և ջնջէ Եւրոպայի մէջ յիսուն տարիէ ի վեր հաստատուած այն կարծիքը թէ՝ Ֆրանսացիները սքանչելի ըլլալով յանկարծակի կռիւներու մէջ, անկարող էին կանոնաւոր կռիւ մը չահելու։ Թիւի գերազանցութիւնը իրեն թոյլ կուտար այդպիսի փորձ մը ընելու և այդ գաղափարը այնքան լրջութիւն ունէր, որքան այն գործողութիւնները, զորս կատարած չըլլալուն համար զինքը մեղադրեցին։

Սակայն և այնպէս անփոյթ չմնաց թշնամիին դարձուածներ ընելու և զայն բաժնելու Քլերֆէյդէն. Վալանս՝ որ այս պատճառաւ Մէօզի երկայնքին վրայ տեղաւորուած էր, պէտք էր որ Ժիվէէն Նամիւր և Լիէժ գար Արտէնի զօրաբաժինով, որ 18,000 հոգիով զօրացած էր. տ'Արվիլ, 10,000 հոգիով հրաման առած էր չարժման մէջ մտնել մեծ բանակին և Վալանսին մէջտեղ թշնամիին խաղեր խաղալու համար աւելի մօտէն։ Ասոնք էին Տիւմուրիէի տրամադրութիւնները իր աջակողմին համար. ձախ կողմէն Լապուրտօնէ պարտական էր Լիլէն մեկնելով Ֆլանտրիան եզերել և գրաւել բոլոր նաւային կայանները։ Անվէրս հասնելուն՝ իրեն հրամայուած էր հոլանտական սահմանագլուխը երկննալ և Մէօզի հասնիլ Ռիւրըմօնտի մէջ։ Այսպէսով Պէլճիքա փակուած կ'ըլլար չրջանակի մը մէջ, Տիւմուրիէ կը գրաւէր անոր կեդրոնը 40 հազար հոգիի բանակով մը եւ կրնար թշնամին ընկճել այն առաջին կէտին վրայ, ուր պիտի ուզէին Ֆրանսացիներուն վրայ յարձակիլ։

Տիւմուրիէ անհամբերութեամբ կ'ուզէր կռիւի սկսիլ և ձեռնարկել այն ընդարձակ ասպարէզին, ուր կը մղուէր իր վառվռուն երեւակայութիւնը. այս պատճառաւ փութացնել կուտար պաչարները, զորս խոստացած էին իրեն՝ Բարիզի մէջ, և որոնք 25ին պէտք էր Վալանսիէն հասած ըլլային։

Սէրվան ձգած էր պատերազմական նախարարի պաչտօնը, վարչական խառնաշփոթ գործերէ ա՛լ աւելի նախապատուութիւն տալով բանակի մը հրամանատարութեան աւելի հանդարտ պաչտօնին։ Անիկա իր գլուխը և առողջութիւնը կը դարմանէր Պիրէնեան լեռներու բանակատեղիին մէջ։ Ռօլանի առաջարկով իրեն յաջորդ կարգուած էր Բաչ, պարզունակ, լռամիտ, ժրաջան մարդ, որ ատենօք Ֆրանսան ձգած ըլլալով, Զուիցերիա ապրելու համար, վերադարձած էր յեղափոխութեան չըրջանին, Մարաջախտ Քասթրիէն ստացած թոչակը ետ դարձուցած էր և Ներքին գործոց նախարարութեան մէջ նշանաւոր դարձած էր իր հազուագիւտ իմաստութեամբն ու փութաջանութեամբը։ Իր գրպանին մէջ կտոր մը հաց ունէր միչտ, և նոյն իսկ ճաչելու համար պաչտօնատունէն չէր մեկնէր, ամբողջ օրեր կ'աչխատէր, և Ռօլանը հրապուրած էր իր սովորութիւններովն ու եռանդովը։ Սէրվան ուզած էր օգտուիլ Բաչի ծառայութիւններէն, Օգոստոսի և Սեպտեմբերի իր դժուարին օրերուն, և Ռօլան համակերպած էր մեծ ցաւով և միայն ի նկատի ունենալով պատերազմական աչխատութեան կարեւորութիւնը։

Բաչ իր նոր պաչտօնին մէջ մատոյց առաջինին չափ ծառայութիւններ. և երբ, պատերազմական նախարարի պաչ-

տօնը Թափուր մնաց, անմիջապէս զինքը առաջարկեցին, իբր մէկն այն խորհրդաւոր, այլ Թանկագին մարդոցմէն, որոնց՝ արդարութիւնը և հանրային շահը պարտաւոր էին արագ օժանդակութիւն մը ընծայել։ Բաշ, քաղցր և համեստ, ամէն մարդու հաճելի էր, ու չէր կրնար մերժումի բաղխիլ։ Ժիրօնտէնները բնականաբար յոյսերնին դրած էին այսքան հանդարտաբարոյ մարդու մը քաղաքական խոհականութեանը վրայ, մանաւանդ որ անիկա իրենց կը պարտէր իր դիրքը։ Ժաքօպէնները, որոնք կը տեսնէին Թէ Բաշ յարգանքով լեցուն է իրենց հանդէպ, կը փառաբանէին անոր համեստութիւնը, և զայն կը բաղդատէին այն բանին՝ զոր կը կոչէին Ռօլանի գոռոզութիւնը և կարծրասրտութիւնը։ Իր մասին, Տիւմուրիէ գոհ եղաւ նախարարէ մը, որ Ժիրօնտէններէն աւելի դիւրամատոյց էր և աւելի տրամադիր՝ իր տեսակէտները ընդունելու։ Արդարև, անիկա Ռօլանի դէմ նոր գանգատներ ունէր։ Ցանուցն դահլիճին Ռօլան գրած էր իրեն նամակ մը որով գանգատ կը յայտնէր որ իր յատկագիծները նախարարութեան վրայ հարկադրել կ'ուզէ, և անոր կը յայտնէր այնքան աւելի շատ անվստահութիւն, որքան շատ կարողութիւն կ'ենթադրէին Տիւմուրիէի։

Ռօլան պարիկեշտ մէկն էր և ինչ որ կ'ըսէր իր նամակներուն մէջ գաղտնապէս, հրապարակաւ ալ կարող էր պաշտպանել զայն։ Տիւմուրիէ, չգիտնալով Ռօլանի պարկեշտ դիտաւորութիւնը, գանգատ յայտնած էր Բաշի, որ զանոնք ընդունած էր և իր շողոքորթ խօսքերովը անոր մոռցնել տուաւ իր պաշտօնակիցներուն յայտնած անվստահութիւնը։ Ահա այս էր պատերազմական նոր նախարարին կացութիւնը. Ժաքօպէններուն, Ժիրօնտէններուն և Տիւմուրիէի միջև կեցած, մտիկ ընելով անոնց իրարու դէմ յայտնած գանգատները զանոնք բոլորն ալ կը շահէր իր խօսքերովը և յարգանքովը, և բոլորին յուսալ կ'ուտար որ իր մէջ օժանդակ մը և բարեկամ մը պիտի գտնեն։

Տիւմուրիէ պաշտօնատան վերակազմութեանը վերագրեց այն յապաղումները, զորս կը կրէր իր բանակի պաշարներուն հայթայթման գործը։ Խոստացուած ռազմամթերքին և պաշարին կէսը միայն հասած էր բայց անիկա ճամբայ ելաւ առանց մնացեալին սպասելու, միայն գրեց Բաշին, որ իրեն անհրաժեշտ պէտք էր 30 հազար զոյգ կօշիկ, 25000 վերմակ, 40000 զինուորի բանակատեղիին համար գոյքեր, և մանաւանդ 2000000 Ֆրանքի հնչուն դրամ, որպէսզի կարելի ըլլար փոխադրութիւն ընել, և անոնք, մտնելով երկիր մը, ուր Թղթադրամները չէին անցնիր, կարենային արծաթ դրամով վճարել իրենց գնած բոլոր բաները։

Այս բոլորը խոստացան, ու Տիւմուրիէ, իր զինուորներուն եռանդը գրգռելով, և զանոնք քաջալերելով մօտակայ ու փառաւ յաղթանակի մը հեռանկարով, զանոնք դէպ յառաջ քշեց, հակառակ որ ձմեռնային արշաւանքի մը անհրաժեշտ բաներէն զուրկ էին, և ցրտաշունչ եղանակ մը կը տիրէր։

Վալանսի յառաջխաղացումը, որ յապաղած էր Լօնվիի մասին գոյացած կարծեաց անհամաձայնութեան մը հետևանքով, և զինուորական պիտոյքներու չգոյութեան պատճառաւ, ասոնք միայն նոյեմբերի ամսուն մէջ հասան, և ասոր շնորհիւ Քլէրֆէյդ կրցաւ առանց արգելքի Լիւքսէմպուրկէն պելճիքա անցնիլ և Դուքս Ալպէռին միանալ 12000 հոգիով։ Տիւմուրիէ առ այժմ Վալանսի ծառայութենէն հրաժարելով, անոր մօտեցուց զօրավար տ'Արվիլի զօրաբաժինը և իր զինուորները Քարուայի և Բիէվրէնի մէջէն անցընելով, փութաց մօտենալ Թշնամի բանակին։

Դուքս Ալպէռ, աւստրիական զօրութեան հրամանատարն, շղթայ մը կազմած էր Դուռնէյէն մինչեւ Մօնս, և հակառակ որ 30000 հազար մարդ ունէր, հազիւ 20 հազար հոգի կրցաւ հաւաքել Մօնս քաղաքին առջեւ։ Տիւմուրիէ, զայն նեղը դնելով Նոյեմբեր 3ին հասաւ Պուսիւի աղօրիքին առջեւ և հրամայեց իր յառաջապահ մասին, որուն հրամանատարն էր քաջն Պէօրնօնվիլ, վանել լեռներուն վրայ բնակած թշնամին։ Յարձակումը ի սկզբան յաջողեցաւ, բայց յետոյ ետ մղուելով մեր յառաջապահ մասը ստիպուեցաւ նահանջել։ Տիւմուրիէ, զգալով թէ որքա՛ն կարեւոր էր չի նահանջել ի սկզբան, Պէօրնօնվիլը դէպ յառաջ մղեց, թշնամի բոլոր պահականոցները վերցնել տուաւ և Նոյեմբեր 5ի իրիկունը ինքզինքը գտաւ ի ներկայութեան Աւստրիացիներուն, որոնք ամրացած էին Մօնս քաղաքի շուրջը գտնուող բարձրութեանց վրայ։

Այս զօրաւոր բանակին դիմացը ահա՛ հաստատուեցաւ Տիւմուրիէ. Իր բանակը կիսաշրջանակի ձեւով կազմեց, թշնամիին դիրքերուն զուգահեռաբար զօրավար տ'Արվիլ, որ զօրաբանակին հետ եկած միացած էր, Նոյեմբեր 5ի գիշերը յանկայացուեցաւ զինուորական շարժումներ ընելու մեր գծին ծայրայեղ աջակողմը...։

Նոյեմբեր 5էն 6ի գիշերը զօրավար Պոլիէօ կարծիք յայտնեց խրամներէն դուրս ելլել և յանկարծակի կերպով մը խոյանալ Ֆրանսացիներուն վրայ, զանոնք յանկարծակիի բերելու համար գիշերային և անակնկալ յարձակումով մը։ Այս կորովի կարծիքին ականջ չկախեցին, և Նոյեմ. 6ին, առաւօտեան ժամը 8էն Ֆրանսացիները կռուի սկսան, քաջութեամբ և յոյսով լի, թէեւ մահացու կրակի մը ենթարկուած էին ու գրեթէ անմերձենալի խրամներու առջեւ կը գտնուէին։ Վաթսուն հազար զինուորներ ծածկած էին պատերազմի դաշտը, և երկու ճակատին վրայ հարիւր թնդանօթի բերաններ կը գոռային։

Առտուն կանուխէն թնդանօթաձգութիւնը սկսաւ. Տիւմուրիէ հրամայեց զօրավարք Ֆէռանի և Պէօրնօնվիլի, յարձակումի ձեռնարկել, մին աջ և միւսը ձախ կողմէն, մինչ ինքն ալ կեդրոնի մէջ պիտի սպասէր գործի սկսելու վայրկեանին, մինչ տ'Արվիլ, Պոլիէօյի դիրքերուն երկայնքն ի վեր երթալով պիտի երթար փակել նահանջի գիծը։

Ֆէռան շատ ուժգնօրէն չյարձակեցաւ և Պէօրնօնվիլ չյաջողեցաւ Աւստրիացիներուն կրակը մարել։ Ժամը տասնեմէկն էր, և թշնամին իր կողերուն վրայ ըստ բաւականի սպառուած չէր, որպէս զի կարելի ըլլար անոր ճակատին մօտենալ։

Այն ատեն Տիւմուրիէ իր հաւատարիմ Թուվընօն զրկեց ձախ թեւին, որպէս զի յաղթանակը վճռէ։ Թուվընօ, անօգուտ թնդանօթաձգութիւն մը կասեցնելով, անցաւ Քառէնեօնը, դարձաւ Ժէմմափի շուրջը, և գլուխը վայրահակ քալելով, սուինը հրացանին ծայրը անցուցած, լեռն ի վեր մագլցեցաւ և Աւստրիացիներուն կողմն հասաւ։ Տիւմուրիէ, այս շարժումէն անտեղեկութիւն ունենալով, որոշեց յարձակումը սկսիլ ուղղակի ճակատէն և բանակին կեդրոնը փոխադրեց Ժէմմափի դէմ։ Իր հետեւակազօրքը չորս չորս յառաջ տարաւ։ Մեր զինուորները առանց միջանկեալ ապրածութեան առջեւ վարանելու, յառաջ խաղացին։ Սակայն և այնպէս, ջոկատ մը, բացուածքէ մը տեսնելով որ աւստրիական հեծելազօրքը դուրս կը խոյանայ, կսկսի վարանիլ և ետ կը դառնայ։ Այդ միջոցին, երիտասարդ Պաթիստ Ռընար, Տիւմուրիէյի սպասաւորը, մղուելով քաջութեան և իմաստութեան ներշնչումէ մը, վազեց այդ ջոկատին հրամանատարին,

անոր վախկոտութիւնը երեսին տուաւ, վտանգը մատնանշեց և զայն կրկին բերաւ խրամատին մէջ։

Ամբողջ կեդրոնին մէջ սոյն խառնաշփոթութիւն մը յառաջ եկած էր, և մեր վաշտերը կըսկսէին մոլորուիլ թնդանօթներուն կրակին տակ։ Շարդրի դուքսը շարքերուն մէջ նետուեցաւ, զանոնք վերակազմեց, իր շուրջը կազմեց նոր վաշտ մը, զոր Ժէմմաբի վաշտը անուանեց և զայն կորովի կերպով մը թշնամիին դէմ մղեց։ Այս կերպով պատերազմիկները կազդուրուեցան և Բլէրֆէյթ որ արդէն յարձակում կրած էր իր կողէն, ու ճակատի կողմէն սպառնալիքի տակ էր, հերոսական կորովամտութեամբ մը դիմադրեց։

Տիւմուրիէ, որ բոլոր այս շարժումներուն ականատես կըլլար, բայց յաջողութեան մասին ապահով չէր, վազեց աջակողմը, ուր պայքարը վճռական հանգամանք մը չէր առներ, հակառակ Պէօրնօնվիլի ջանքերուն։ Իր նպատակն էր յանկարծակի կերպով մը վերջ տալ յարձակման, և կամ իր աջ թեւը հաւաքելով կեդրոնի նահանջը կասեցնել, եթէ երբէք յետադարձ շարժում մը անհրաժեշտ ըլլար։ Պէօրնօնվիլ զուր ճիգեր թափած էր Քիւէզմ գիւղին դէմ և ետ քաշուելու վրայ էր երբ Տանփիէռ, որ յարձակման կէտի մը կը հրամայէր, իրեն հետ առաւ քանի մը գումարտակ և յանդգնօրէն խոյացաւ կռուի ամենէն տաք կէտին վրայ։ Տիւմուրիէ նոյն վայրկեանին իսկ հասաւ, մինչ Տանփիէռ այս քաջարի ձեռնարկը ընելու վրայ էր։ Տեսաւ որ իր վաշտերուն մնացեալ մասը առանց պետի է ու ահաւոր կրակի մը ենթարկուած է, այնպէս որ վարանոտ դիրք մը բռնած է հանդէպ այն կայսերական հուսարներուն, որոնք կը պատրաստուէին յարձակում գործել։ Այս վաշտերը անոնք էին, որոնք Մօնի բանակատեղիին մէջ այնքան սրտիւ փարած էին Տիւմուրիէի։

Տիւմուրիէ անոնց հաւատ ներշնչեց և թշնամիին հեծելազօրքին դէմ քաջութեամբ կռուելու մղեց։ Արդարև լաւ հրացանաձգութիւն մը կասեցուց այս հեծելազօրքը, և Պէրշէնիի հուսարները, որոնք յարմար պահուն, անոր վրայ արձակուեցան, զայն փախցնել տուին։

Այն ատենն Տիւմուրիէ իր վաշտերուն գլուխն անցած և անոնց հետ Մարսիլիացիներուն ազգ. երգը գոռացնելով, զանոնք իր ետեւէն կը տանի դէպի խրամատները, առջեւը գտնուած ամէն ինչ կը տապալէ և Քիւէզմ գիւղը կ'առնէ։

Հազիւ այս յաղթութիւնը աւարտած, Տիւմուրիէ, միշտ անհանգիստ կեդրոնին համար, սրարշաւ կը մեկնի կրկին քանի մը զօրագունդ առնելով հետը։ Բայց մինչ ինքը վազելու վրայ էր, երիտասարդ դուքս Մօնբանսիէ իրեն դէմ կ'ելլէ անոր աւետելու համար կեդրոնին յաղթանակը, որ մասնաւորաբար իր եղբօրը՝ Շարդրի դուքսին ձեռքովը շահուած էր։ Այս կերպով, Ժէմմաբ թէ՛ առջեւէն և թէ կողերէն նուաճուելով, Քիւէզմ գրաւուելով, Բլէրֆէյթ այլեւս չէր կրնար դիմադրել, և պատրաստ էր նահանջել։ Այս պատճառաւ, գեղեցիկ դիմադրութենէ մը յետոյ, տեղի կուտայ և Տիւմուրիէին կը թողու շատ սուղ կերպով գնուած յաղթանակ մը։

Ժամը երկուքն էր. մեր զինուորները, յոգնաբեկ ըլլալով, վայրկեան մը հանգչիլ կուզէին. Տիւմուրիէ տուաւ այդ հանգիստը, և նոյն ինքն Ժէմմաբի և Քիւէզմի լեռներուն վրայ կանգ առին։ Անիկա կը յուսար որ տ'Արվիլ պիտի յարձակի թշնամիին վրայ, որ պաշտօն ունէր Աւստրիացիներուն նահանջի գիծը կտրել։ Բայց հրամանը լաւ բաւականին յստակ չըլլալուն և սխալ հասկցուած ըլլալով, տ'Արվիլ, Պէրթէմօնի դէմը եկած էր և պարապ տեղը թնդանօթի բռնած էր լեռները։ Այս պատ-

ճամբան, Քլէրֆէյդ նահանջեց Պօլիէօի պաշտպանութեան տակ, և երկուքն ալ բռնեցին Գրիւքսէլի ճամբան, զոր ա'Ալվինց չէր փակած իրենց առջև։

Պատերազմին մէջ Աւստրիացիները ձգած էին 1500 գերի, 4500 մեռեալ կամ վիրաւոր. Ֆրանսացիներն ալ դրեթէ նոյնքան կորուստ ունէին։ Տիւմուրիէ ծածկեց իր կորուստին քանակը և ըսաւ թէ քանի մը հարիւր մարդ մեռաւ։ Զինքը մեղադրեցին, որ իր աջակողմին վրայ քալած միջոցին չյարձակեցաւ թշնամիին վրայ, զայն ետեւի կողմէն գերի բռնելու համար, փոխանակ յամառօրէն յարձակելու ձախակողմին և կեդրոնին վրայ։ Իր եռանդուն՝ ոգին, որ յաճախ արգելք կըլլար իրեն խորհրդածելու, և փայլուն ձեռնարկ մը կատարելու փափաքը նախապատուութիւն տալ տուին Ժէմմաբի, իբր ուղղակի յարձակում։ Ասկէ զատ, գործունէութեան միջոցին մտքի արթնութեամբ և եռանդով առլի, անիկա մեր զինուորներուն ներշնչած էր հերոսական կորով մը։ Այս նշանաւոր յաղթանակին արձագանգը հրաշալի եղաւ. Ժէմմաբի յաղթութիւնը մէկ րոպէի մէջ Ֆրանսան ուրախութեամբ լեցուց, ու Եւրոպա նոր անակնկալի մը առջև գըտաւ ինքզինքը։ Ամէն կողմ խնդիր եղաւ այն կորովը և պաղարիւնը, որով դէմ դրուած էր թնդանօթաձգութեան, և որով կարելի եղած էր մագլցիլ ամբոյակներէն վեր։ Մինչև իսկ չափազանցեցին վտանգն ու յաղթանակը, և բովանդակ Եւրոպայի մէջ մեծ պատերազմներ շահելու կարողութիւնը նորէն Ֆրանսացիներուն մենաշնորհն ըլլալը հաստատուեցաւ։

Բարիզի մէջ, բոլոր անկեղծ հանրապետականները այս լուրէն անհունօրէն ուրախացան և տօնախմբութիւններ պատրաստեցին։ Տիւմուրիէի սպասաւորը՝ երիտասարդ Պատիսդ Ռընար, Քոնվանսիօնին ներկայացուեցաւ, և անկէ ստացաւ հայրենասէրի պսակ մը և սպայի ուսնոց մը. Ժիրոնտէնները, հայրենասիրօրէն, և արդարամտօրէն ծափահարեցին զօրավարին յաջողութիւնը։ Ժաքօպէնները, թէև կասկածով կը նայէին անոր, բայց ծափահարեցին, յեղափոխութեան յաղթանակին վրայ հիանալու պէտքէն մղուած։ Մինակ Մառան էր որ բոլոր Ֆրանսացիները մեղադրելով իրենց ցոյց տուած զմայլանքին համար, պնդեց թէ Տիւմուրիէ մեռելներուն թիւը ճիշդ ըսած չէ, թէ կարելի չէր լերան դէմ յարձակում գործել այդքան դիւրութեամբ, թէ անիկա ո՛չ գոյք և ոչ ալ թնդանօթ ունէր, թէ Աւստրիացիները անվրդով կերպով իրենց բանին գործին կ'երթային, թէ եղածը աւելի նահանջ մըն էր քա՛ն յաղթանակ մը, և քէ, վերջապէս, Տիւմուրիէ կրցած էր տարբեր կերպով թշնամիին քիթէն բռնել. Մառա այս ճարտարամտութեան խառնելով զրպարտութեան վայրագ կատաղութիւն մը, կը յայտնէր թէ ճակատէն յարձակումը կատարուած էր միմիայն զոհելու համար Բարիզի քաջարի վաշտերը, թէ իր պաշտօնակիցները՝ Քոնվանսիօնի և Ժաքօպէններուն մէջ և համայն Ֆրանսացիները, որոնք այնքան փութկոտ էին հիանալու մէջ, խելքերնին կորսնցուցած էին։ Մառա յայտարարեց նաև թէ, ըստ իրեն Տիւմուրիէ այն ատեն միայն լաւ զօրավար մը պիտի ըլլար, երբ բովանդակ Պելճիքա գլուխ ծռէր, առանց որ միակ Աւստրիացի մը փախուստ տայ. իսկ աղէկ հայրենասէր մը այն ատեն միայն պիտի համարէ զայն, երբ Պելճիքա իր խորքերուն մէջ յեղափոխուի և բոլորովին ազատ հռչակուի։

— Դուք, Ֆրանսացիներ, ըսաւ, ամէն բանի վրայ մէկէն ի մէկ հիանալու այդ տրամադրութեամբ ենթակայ էք նոյնքան փութով զղջալու ձեր ըրածին վրայ. այս ինչ որ կը դատապարտէք Մոնդէսքիւն. ձեզի կ'իմացնեմ

թէ անիկա Սալոնան նուաճած է, և ահա կը ծախահարէք զայն։ Ցետոյ կըրկին կը դատապարտէք և այս փոփոխամտութեամբ ամենուն ծաղրին նշաւակ կըլլաք։ Իսկ ես, միշտ կը կանխածիմ և մի՛շտ կ՚ամբաստանեմ. գալով այս տրամադրութեան գէշ կողմերուն, անոնք անբաղդատելիօրէն աւելի քիչ են, քան հակառակ տրամադրութեան անպատեհութիւնները, որովհետև անոնք երբէք չեն վտանգեր հայրենիքի փրկութիւնը. անտարակոյս, իմ այս վարմունքովս մէկ քանիներու անվստահութեան կ՚արժանանամ, բայց ի՛նկատի ունենալով դարուս ապականութիւնը, և դաստիարակութեամբ, սկզբունքով և չափերով՝ ազատութեան թշնամի եղող մարդոց մեծ թիւը, բացէ ի բաց յայտնի է որ անոնց կողմը չեմ կրնար հակիլ. ըստ որում զանոնք կը նկատեմ դաւադրութիւններ լարելու միշտ պատրաստ սրիկաներ և խառնակիչներ։ Ուրեմն ես հազար անգամ նուազ ենթակայ եմ խաբուելու հանրային պաշտօնատարներու մասին. և մինչ, անոնց մասին տածուած աղխատեր վստահութիւնը զանոնք ի վիճակի կը դարձնէ թէ՛ յանդգնութեամբ և թէ ապահովութեամբ մեքենայութիւններ լարելու հայրենիքին դէմ, յաւիտենական անվստահութիւնը, որով զանոնք պիտի շրջապատէր հասարակութիւնը, ըստ իմ սկզբունքներուս, թոյլ չպիտի տար որ անոնք քայլ մը իսկ առնէին առանց վախի որ դիմակաթափ կ՚ըլլան և կը պատժուին։ »

Այս պատերազմը Պելճիքան կը բանար Ֆրանսացիներուն առջև, բայց հոն՝ արտասովոր դժուարութիւններ կ՚ելլէին Տիւմուրիէի դէմը և երկու ուշագրաւ պատկերներ կը ներկայանային իրեն, նուաճուած հողամասին վրայ, Ֆրանսական յեղափոխութիւնը ազդեցութիւն կը բանեցնէր գլխացի յեղափոխութեանց վրայ, զանոնք փութացնելու կամ խրացնելու համար. և մեր բանակին ամբոխավարութիւնը մտնելով վարչական պաշտօնատանց մէջ զանոնք կը կազմալուծէր մաքրագործելու համար։

Պելճիքայի մէջ մէկէ աւելի կուսակցութիւններ կային. առաջինը՝ ազնուականաց տիրապետութեան կողմնակիցները՝ գոյութիւն ունէին միմիայն Տիւմուրիէի ձեռամբ վտարուած կայսերական բանակներուն մէջ. երկրորդը կը բաղկանար ամբողջ ազգէն, ազնուականներէն, կղերականներէն, պաշտօնակալներէն, ժողովրդային դատակարգերէն. այս կուսակցութիւնը միաձայնութեամբ կը մերժէր օտար լուծը և կ՚ուզէր ձեռք ձգել պելժ ազգին անկախութիւնը. բայց այս կուսակցութիւնն ալ կը ստորաբաժանուէր ուրիշ երկու կուսակցութեանց — կղերականները և առանձնաշնորհեալները կ՚ուզէին պահպանել նախկին դատակարգերը, նախկին հաստատութիւնները, դատակարգերու և նահանգներու սահմանագիծերը, վերջապէս՝ ամէն բան, ի բաց առեալ աւստրիական տիրապետութիւնը, և իրենց կողմը ունէին դեչափ աւելորդապաշտ ժողովրդեան մէկ մասը, որ կղերականներուն յարած էր սրտով։ Վերջապէս, կային ամբոխավարները կամ պելժիական ժաքոպէնները, որոնք կ՚ուզէին լիակատար յեղափոխութիւն մը և ժողովրդային գերիշխանութեան հաստատումը։

Այս վերջինները կը պահանջէին Ֆրանսայի մակարդակին համնիլ և բացարձակ հաւասարութիւն։ Ահա այսպէս, իւրաքանչիւր ոք յեղափոխութենէն կ՚որդեգրէր այն բանը որ իր գործին կուգար. առանձնաշնորհեալները անոր մէջ կը փնտռէին միայն իրենց նախկին վիճակին ստացումը. ժողովրդավարականները՝ ամբոխավարութիւն և ամբոխին տիրապետութիւնը կ՚ուզէին։

Այս զանազան կուսակցութեանց միջեւ, այնպէս կարծեցին թէ Տիւմուրիէ իր հակումներովը միջին ճամբան պիտի բռնէր։ Եւ մինչ Աւստրիան, որուն հետ կը պայքարէր իր զինուորներովը, առանձնաշնորհեալներուն բացառիկ յաւակնութիւնները դատապարտելով հանդերձ, չէր ուզեր սակայն Պրիւքսէլ փոխադրել Բարիզի ժաքօպէնները, և հոն Շապօնը ու Մարատը ծնեցնել։ Ուրեմն իր նպատակն էր, երկրին նախկին կազմակերպութեան խնայելով, բարեկարգել անոր խիստ ռամկական բարքերը։ Ժողովուրդին յուսահատ դասակարգը այս տեսակէտները դիւրաւ կընդունէր. բայց դժուար էր անոնցմէ ամբողջութիւն մը ձեւացնել, որովհետև քաղաքները և գաւառները իրարու հետ միութեան կապ մը չունէին։ Ասկէ զատ, երբ ժողով՝մը կազմուէր, ամենէն բուռն կուսակցութեան կողմէ յաղթուելու վախը կար։ Այն պարագային ալ պիտի կրնար յաջողիլ, Տիւմուրիէ կը խորհէր, ըլլա՛յ զինակցութեամբ, ըլլայ համաձայնութեամբ մը, Պելճիքան կապել Ֆրանսական կայսրութեան և այս կերպով լրացնել մեր հողամասը։ Մանաւանդ որ կը փափաքէր՝ մխումները արգիլել, Պելճիքայէն մեծ նպաստներ ապահովել պատերազմին համար, և ո՛չ մէկ դասակարգի անհանգստութիւն չպատճառել, որպէսզի իր բանակը ապստամբութեամբ մը պատառ պատառ՝ չըլլայ։ Անիկա գլխաւորաբար կը մտածէր շահիլ կղերը, որ տակաւին մեծ ազդեցութիւն ունէր ժողովուրդին մտքին վրայ։ Վերջապէս, անիկա կ'ուզէր այնպիսի բաներ, որոնց անկարելի ըլլալը կ'ապացուցանէ յեղափոխութեանց փորձառութիւնը, և որոնցմէ պէտք է հրաժարի առաջուընէ ամէն քաղաքական եւ վարչական միտք, լիակատար համակերպութեամբ մը։ Աւելի ուշ պիտի տեսնենք անոր ծրագիրներուն և յատակագիծերուն ընդլայնումը։

Պելճիքա մտնելու ատեն անիկա յայտարարութեամբ մը խոստացաւ յարգել սովորութիւնները, կեանքերը և՝ ազգային անկախութիւնը։ Անիկա հրամայեց որ ամէն ինչ եղածին պէս պահուի, կառավարական պաշտօնեաները մնան իրենց պաշտօնին մէջ, տուրքերը հաւաքել շարունակեն, և անմիջապէս, նախապատրաստական ժողովներ գումարուին, կազմելու համար Ազգային Քոնվանսիոն մը, որ Պելճիքայի ճակատագրին մասին որոշում մը պիտի տար։

Իրեն համար այսպէս ծանր դժուարութիւններ կը պատրաստուէին. քաղաքական, հանրային բարօրութեան և մարդկութեան դրդապատճառներ կրնային իրեն փափաքիլ տալ որ Պելճիքայի մէջ խոհեմ ու կշռուած յեղափոխութիւն մը յառաջ բերէ, բայց պէտք էր որ իր բանակը ապրեցնէր, և անիկա անձնական գործ մըն էր։ Ինքը զօրավար մըն էր, և ամէն բանէ առաջ հարկադրուած էր յաղթական հանդիսանալու։ Այս բանին համար իրեն հարկաւոր էին կարգապահութիւն և նիւթական միջոցներ. Մոնս մտնելով նոյեմբեր 7ի առտուն, ինքզինքը գտաւ Պրապանտօններուն ուրախութեան մէջ, որոնք իրեն սահմանեցին պսակ մը, ինչպէս նաև քաջարի Տանրիէօին. անիկա ինքզինքը շատ նեղ դրութեան մէջ զգաց։ Իր պատերազմական պաւիրակները Վալանսիէն կը գտնուէին. իրեն խոստացուած բաներէն ո՛չ մէկը կը հասնէր։ Իր կիսամերկ զինուորներուն պէտք էր զգեստ, պաշարեղէն, թնդանօթներուն համար ձի, շատ դործունեայ սայլորդներ, աշուանքին շարժումներուն օգնելու համար, մանաւանդ այնպիսի երկրի մը մէջ ուր փոխադրութեան միջոցները ծայրայեղօրէն դժուարին էին։ Վերջապէս, հնչուն դրամի պէտք ունէր, զինուորներուն վճարելու



ՄԱՌԱՑԻ ԵՒ ՏԻԽՄՕՆԻ Ի ՏԵՍԱԿՑՈՒԹԻՒՆԸ

համար, որովհետեւ Պեշտիզայի մէջ դիւրաւ չէին ընդունէր Ֆրանսը. Թղթադրամները: Տարադիրները մեծ քանակութեամբ կեղծ թղթադրամներ տարածած ըլլալով, անոնց վարկը կորած էր. անկէ զատ, ո՛չ մէկ ժողովուրդ կ'ուզէ ժամանակից ըլլալ ուրիշ ժողովուրդի մը հաչերուն, իրր դրամ ընդունելով թուղթ մը, որ պարապ կը ներկայացնէ:

Տիւմուրիէի նկարագրին յանդգնութիւնը որ մինչեւ անխոհեմութեան կ'երթար, թայլ չի տար հաւատալ թէ Յունվ. 7 էն 11 Մանս մնացած ըլլայ, և Դուքս Սաքս Դէշէնը թողած ըլլայ անվրդով կերպով նահանջել, եթէ վարչական մանրամասնութիւններ զինքը հոն վար դրած չըլլային հակառակ իր կամքին, և գրաւած չըլլային իր ուշադրութիւնը, որ պէտք էր սեւեռած ըլլար միմիայն զինուորական մանրամասնութեանց վըրայ: Անիկա կովմեց շատ լաւ յղացուած յատակագիծ մը, որ էր՝ Պեշտիզայցիներուն հետ ինքն անձնապէս գընումներ ընել՝ պաշարի, խոտի և մըթերքի:

Այս կերպ ընելով բազմաթիւ առաւելութիւններ ունէր. պատերէք առարկաները տեղւոյն վրայ էին, և յապաղումներ վախնալու պատճառ չկար: Այս գնումները շատ կը շահագրգռէին Պեշտիզայցիները, ինքնակալութեան Ֆրանսական բանակին: Վաճառորդներուն երբ թղթադրամ տրուէր, անոնք պիտի հարկադրուէին իրենց ձեռքովը օգնել անոնց շրջաբերութեան. այսպէսով զերծ կը կացուցանէին ինքզինքնին բանաթեան առնել թղթադրամը շրջաբերութեան համար, և առիկա կարեւոր կէտ մըն էր, որովհետեւ իր բաքանչիւր մարզ

երբ բռնադատեալ կերպով դրամ մը ձեռք կը ձգէ, ինքզինքը զրկուած կը կարծէ՝ վայն հարկադրող իշխանութեան ձեռքով. և ատիկա ժողովուրդ մը վիրաւորելու շատ ախեղերական միջոց մըն է։

Բայց սակայն, Տիւմուրիէ խորհած էր դրամ փոխ առնել կղերականներէն, Ֆրանսայի երաշխաւորութեան տակ։ Այս փոխառութիւններով ինքը պիտի կարենար հայթայթել հնչուն դրամ, և կղերականները, թէև առժամապէս սուրբ կ'ենթարկուէին, ինքզինքնին վստահ կըզգային իրենց կեանքին և ինչքին մասին։ Վերջապէս, որովհետև Ֆրանսա Պելճիքացիներէն դրամական փոխարինութիւն պիտի պահանջէր, ազատաբար պատերազմի մը ծախքերուն համար, այդ վճարումները պիտի ըլլային ի հաշիւ փոխառութեան և եթէ իւրաքանչիւրը պզտիկ թոշակ մը վճարէր, ամբողջ պատերազմին ծախքերը կը հատուցուէին, և Տիւմուրիէ, ինչպէս արդէն յայտարարած էր, Պելճիքայի ըրած ծախքերովը ապրած պիտի ըլլար, առանց վայն նեղը դնելու կամ կազմալուծելու։

Բայց բոլոր ասոնք հանճարեղ ծրագիրներ էին, և յեղափոխութեան ժամանակ, ինչպէս կը թուի թէ հանճարեղ մարդիկ պէտք է վճռական ուղղութիւն մը բռնեն։ Անիկա պարտաւոր էր կա՛մ նախատեսել խառնաշփոթութիւնները և անոնց յաջորդող բռնութիւնները ու անմիջապէս նահանջել, և կամ՝ զանոնք նախատեսելով, համակերպիլ և հաւանիլ խիստ ըլլալ, օգտակար հանդիսանալու համար բանակին կամ պետութեան գլուխը։

Տիւմուրիէ իր գնումներուն և դրամական գործառնութեանց միջոցին գործածած էր Մալիւսը, պատերազմական նախարարութեան մատակարար, որ շատ կը յարգէր, որովհետև վայն ճարտար և գործունեայ գտած էր, առանց շատ հոգ ընելու որ շահո՞ւր էր թէ ոչ՝ իր շահերուն մէջ։ Տիւմուրիէ գործածած էր նաև դ'Էսպանեաք կոչուածը, նախկին ազատախոհ աբբայ, և մէկն այն հին ըէժիմի ապականած սրամիտներէն, որոնք ամէն տեսակ անհատ ի գործ կը դնէին շատ շնորհալիութեամբ և ճարտարութեամբ, և ամենուն մէջ կասկածելի համբաւ մը կը ձգեն։

Տիւմուրիէ վայն փութով դրկեց նախարարին, իր յատակագիծները բացատրելու, իր ստանձնած բոլոր յանձնառութիւնները վաւերացնել տալու համար. Արդէն անոր վրայ բուռն ազդեցութիւն ի գործ կը դնէր իր վարչական բանագիտութեամբը և այն յեղափոխական չափաւորութեամբը զոր ցոյց կուտար Պելճիքացիներուն հանդէպ, առանց իր ընկերակցութեամբը վտանգի ենթարկուելու արդէն կասկածելի մարդոց հետ, որոնք, եթէ կասկածելի չէին, շուտով պիտի ըլլային։ Այդ միջոցին արդարև, ընդհանուր գժգոհութիւն մը կը բարձրանար նախկին պաշտօնատանց դէմ, որոնք, կ'ըսէին թէ, ստահակներով և ազնուականներով լեցուած են։

Տիւմուրիէ իր զինուորներուն հարկեցած խնամքը ցոյց տալէ յետոյ զբաղեցաւ Լապուրտոնէի յառաջխաղացումը փութացնելու գործով։ Այս զօրավարը, դէպի եա Մեալու յամառելէն յետոյ, շատ վերջը միայն մտած էր Դուրնէ, և հոն յառաջ կը բերէր ժաքօպէններու վայել ակումբներ և տուրք կը հաւաքէր։ Տիւմուրիէ անոր հրաման ըրաւ փութով քալել Կանի և Էնքօի վրայ, երթալու համար Անվէրս, և անկէ ի գլուխ հանել Պելճիքայի շուրջ կատարելիք շրջանը....

Նոյեմբեր 14ին Մօնսէն մեկնեցաւ, թշնամի բանակին շատ դանդաղօրէն միացաւ. ան ալ կանոնաւոր նահանջ մը կընէր, բայց ծայրայեղ դանդաղութեամբ մը։ Իր փոխադրութեան միջոցները գէշ ըլլալով չկրցաւ պէտք եղած արագու-

թեամբ համիլ, վրէժ լուծելու համար այն յապաղումներէն, զորս ստիպուած էր կրել։

Նոյեմբեր 13ին, ինքն ալ յառաջ խաղալով պարզ յառաջապահ գունդով մը, քիչ մնաց որ թշնամիին կողմէ պաշարուէր. բայց իր սովորական ճարտարութեամբը և հաստատակամութեամբը, իր փոքրիկ բանակը կռուի պատրաստեց, մէկ քանի թնդանօթները մեծ ճարտարութեամբ գործածեց, և Աւստրիացիներուն այն համոզումը ներշնչեց թէ իր բովանդակ բանակովը կը գտնուէր պատերազմի դաշտին վրայ։ Այս կերպով յաջողեցաւ զանոնք կասեցնել և ժամանակ շահեցաւ, որպէս զի իր զինուորները օգնութեան հասնին. այս վերջինները իմանալով թէ որքա՛ն տագնապալի կացութեան մը մէջ կը գտնուի, վազած եկած էին զինքը ազատելու համար։

Նոյեմբեր 14ին Պրիւքսէլ մտաւ, և նորէն հոն ստիպուեցաւ կանգ առնել մատակարարական դժուարութեանց համար, որովհետև ո՛չ դրամ ունէր, և ո՛չ ալ պէտք եղած միջոցները իր զինուորներուն ապրուստին համար։ Այն տեղ իմացաւ որ դահլիճը մերժած էր վաւերացնել իր վերջին գնումները, ի բաց առեալ մէկ հատը, և թէ զինուորական բոլոր հին վարչութիւնները կը վերանորոգուէին և անոնց տեղը կը դրուէր Գնումներու յանձնախումբ մը։

Ցառաջիկային, միայն այս յանձնախումբը իրաւունք պիտի ունենար գընումներ ընել բանակի պէտքերուն համար, առանց որոյ զօրավարները իրաւունք չունենային այդ գործին խառնուելու։ Ասիկա սկիզբն էր յեղափոխութեան մը, որ կը պատրաստուէր պաշտօնատանց մէջ, և որ զանոնք ժամանակուան մը համար լիակատար կազմալուծման պիտի ենթարկէր։

Այն վարչութիւնները, որոնք երկարատեւ փորձառութիւն և մասնաւոր ջանադրութիւն մը կը պահանջեն, սովորաբար անոնք են, որ յեղափոխութիւն մը ամենէն վերջը կը մանէ, որովհետև անոնք նուազ կը գրգռեն փառասիրութիւնը, և ասկէ զատ, անոնց մէջ կարող մարդիկ պահելու անհրաժեշտութիւնը զանոնք կապահովէր վերանորոգման յախուռն փորձերու դէմ։ Այս պատճառաւ, գրեթէ ո՛չ մէկ փոփոխութիւն մտցուած էր սպայակոյտերուն, բանակին գիտական մարմիններուն, զանազան նախարարութեանց դիւաններուն, պաշարի նախկին ռէժիին և մանաւանդ ծովային պաշտօնատան մէջ, որ զինուորական արուեստին մէջ ամենէն աւելի մասնագիտութիւն կը պահանջէ։ Հետեւաբար, շարունակ կը պոռային այն ազնուականներուն երեսին, որոնցմով լեցուն էին այդ պաշտօնատունները, և գործադիր իշխանութիւնը կը մեղադրէին որ անոնց տեղը ուրիշներ պաշտօնի չի կոչեր։

Ամենէն աւելի զայրոյթ կը պատճառէր պաշարեղէնի վարչութիւնը. արդարացի դիտողութիւններ կ'ուղղէին հայթայթիչներուն, որոնք, իրենց բնաւորութեամբը և մանաւանդ՝ այդ խառնաշփոթ վայրկեանէն օգտուելով, իրենց բոլոր ծախսերուն համար շատ բարձր գիներ կը պահանջէին, զինուորներուն կուտային ամենէն գէշ տեսակ ուտելիքները, և անպարկեշտօրէն կը գողնային պետութիւնը։ Անոնց կատարած զեղծումներուն դէմ ամէն կողմէ մէկ աղաղակ միայն կը բարձրանար. մանաւորապար երեսփոխան Քամպօն որ Մօնբէլիէ աննուաճելի հակառակորդ մըն էր անոնց. ելմտական և տնտեսական խնդիրներու սիրահար, այս երեսփոխանը մեծ ազդեցութիւն մը շահած էր այս կարգի նիւթերու վիճաբանութեան միջոցին, և կը վայելէր Ժողովին բովանդակ վստահութիւնը։ Թէև յայտնի ժողովրդավարական մըն էր, բայց

երբ բանագատաբար կերպով դրամ մը ձեռք կը ձգէ, ինքզինքը գողցուած կը կարծէ՝ վայն հարկադրող իշխանութեան ձեռքով. և ասիկա ժողովուրդ մը վիրաւորելու չափ տիեղերական միջոց մըն է։

Բաց աստի, Տիւմուրիէ խորհած էր դրամ փոխ առնել կղերականներէն, Ֆրանսայի երաշխաւորութեան տակ։ Այս փոխառութիւններով ինքը պիտի կարենար հայթայթել հնչուն դրամ, և կղերականները, թէև առժամապէս տուրքի կ'ենթարկուէին, ինքզինքնին վստահ կըզգային իրենց կեանքին և ինչքին մասին։ Վերջապէս, որովհետև Ֆրանսա Պելճիքացիներէն դրամական փոխարինութիւն պիտի պահանջէր, ազատարար պատերազմի մը ծախքերուն համար, այդ վճարումները պիտի ըլլային ի հաշիւ փոխառութեան և եթէ իւրաքանչիւրը պզտիկ թոշակ մը վճարէր, ամբողջ պատերազմին ծախքերը կը հատուցուէին, և Տիւմուրիէ, ինչպէս արդէն յայտարարած էր, Պելճիքայի բրած ծախքերովը ազատած պիտի ըլլար, առանց զայն նեղը դնելու կամ կազմալուծելու։

Բայց բոլոր ասոնք հանճարեղ ծրագիրներ էին, և յեղափոխութեան ժամանակ, ինչպէս կը թուի թէ հանճարեղ մարդիկ պէտք է վճռական ուղղութիւն մը բռնեն։ Անիկա պարտաւոր էր կամ նախատեսել խառնաշփոթութիւնները և անոնց յաջորդող բռնութիւնները ու անմիջապէս նահանջել, և կամ՝ զանոնք նախատեսելով, համակերպիլ և հաւանիլ խիստ ըլլալ, օգտակար հանդիսանալու համար բռնակլին կամ պետութեան գլուխը։

Տիւմուրիէ իր գնումներուն և դրամական գործառնութեանց միջոցին գործածած էր Մալիւսը, պատերազմական նախարարութեան մատակարար, որ շատ կը յարգէր, որովհետև զայն ճարտար և գործունեայ գտած էր, առանց շատ հոգ ընելու որ շահուօր էր թէ ոչ՝ իր շահերուն մէջ։ Տիւմուրիէ գործածած էր նաև ա Էսպանեաք կոչուածը, նախկին ազատախոհ աբբայ, և մէկն այն հին րէժիմի ապականած սրամիտներէն, որոնք ամէն տեսակ անհեստ ի գործ կը դնէին շատ շնորհալիութեամբ և ճարտարութեամբ, և ամենուն մէջ կասկածելի համբաւ մը կը ձգէին։

Տիւմուրիէ զայն փութով դրկեց նախարարին, իր յատակագիծները բացատրելու, իր առանձնած բոլոր յանձնառութիւնները վաւերացնել տալու համար. Արդէն անոր վրայ բաւական ազդեցութիւն ի գործ կը դնէր իր վարչական բանիմացութեամբը և այն յեղափոխական չափաւորութեամբը զոր ցոյց կուտար Պելճիքացիներուն հանդէպ, առանց իր ընկերակցութեամբը վտանգի ենթարկելու արդէն կասկածելի մարդոց հետ, որոնք, եթէ կասկածելի չէին, շուտով պիտի ըլլային։ Այդ միջոցին արդարև, ընդհանուր դժգոհութիւն մը կը բարձրանար նախկին պաշտօնատանց դէմ, որոնք, կ'ըսէին թէ, ստահակներով և ազնուականներով լեցուած են։

Տիւմուրիէ իր գնումներուն հարկ եղած խնամքը ցոյց տալէ յետոյ զբաղեցաւ Լապուրտոնէի յառաջխաղացումը փութացնելու գործով։ Այս զօրավարը, դէպի ետ մնալու յամառելէն յետոյ, շատ վերջը միայն մտած էր Դուրնէ, և հոն յառաջ կը բերէր ժաքօպէններու վայել ատեաններ և տուրք կը հաւաքէր։ Տիւմուրիէ անոր հրաման բրաւ փութով քալել Կանի և Էնքօի վրայ, երթալու համար Անվէրս, և անկէ ի գլուխ հանել Պելճիքայի շուրջ կատարելիք շրջանը...։

Նոյեմբեր 11ին Մօնսէն մեկնեցաւ, թշնամի բանակին շատ դանդաղօրէն միացաւ. ան ալ կանոնաւոր նահանջ մը կընէր, բայց ծայրայեղ դանդաղութեամբ մը։ Իր փոխադրութեան միջոցները դէշ ըլլալով չկրցաւ պէտք եղած արագու-

թեամբ հանիլ, վրէժ լուծելու համար այն յապաղումներէն, զորս ստիպուած էր կրել։

Նոյեմբեր 13ին, ինքն ալ յառաջ խաղալով պարզ յառաջապահ գունդով մը, քիչ մնաց որ թշնամիին կողմէ պաշարուէր. բայց իր սովորական ճարտարութեամբը և հաստատակամութեամբը, իր փոքրիկ բանակը կռուի պատրաստեց, մէկ քանի թնդանօթները մեծ ճարտարութեամբ գործածեց, և Աւստրիացիներուն այն համոզումը ներշնչեց թէ իր բովանդակ բանակովը կը գտնուէր պատերազմի դաշտին վրայ։ Այս կերպով յաջողեցաւ զանոնք կասեցնել և ժամանակ շահեցաւ, որպէս զի իր զինուորները օգնութեան հասնին. այս վերջինները իմանալով թէ որքա՛ն տագնապալի կացութեան մը մէջ կը գտնուի, վազած եկած էին զինքը ազատելու համար։

Նոյեմբեր 14ին Պրիւքսէլ մտաւ, և նորէն հոն ստիպուեցաւ կանգ առնել մատակարարական դժուարութեանց համար, որովհետև ո՛չ դրամ ունէր, և ո՛չ ալ պէտք եղած միջոցները իր զինուորներուն ապրուստին համար։ Այն տեղ իմացաւ որ դաշինքը մերժած էր վաւերացնել իր վերջին գնումները, ի բաց առեալ մէկ հատը, և թէ զինուորական բոլոր հին վարչութիւնները կը վերանորոգուէին և անոնց տեղը կը դրուէր Գնումներու յանձնախումբ մը։

Ցառաջիկային, միայն այս յանձնախումբը իրաւունք պիտի ունենար գնումներ ընել բանակի պէտքերուն համար, առանց որոյ զօրավարները իրաւունք չունենային այդ գործին խառնուելու։ Ասիկա սկիզբն էր յեղափոխութեան մը, որ կը պատրաստուէր պաշտօնատանց մէջ, և որ զանոնք ժամանակուան մը համար լիակատար կաղմալուծման պիտի ենթարկէր։

Այն վարչութիւնները, որոնք երկարատև փորձառութիւն և մասնաւոր ջանադրութիւն մը կը պահանջեն, առ հասարակ անոնք են, ուր յեղափոխութիւն մը ամենէն վերջը կը մտնէ, որովհետև անոնք նուազ կը գրգռեն փառասիրութիւնը, և ասկէ զատ, անոնց մէջ կարող մարդիկ պահելու անհրաժեշտութիւնը զանոնք կը պահէր վերանորոգման յախուռն փորձերու դէմ։ Այս պատճառաւ, գրեթէ ո՛չ մէկ փոփոխութիւն մտցուած էր ռազմակայաներուն, բանակին զինական մարմիններուն, զանազան նախարարութեանց դիւաններուն, պաշարի նախկին ընժիին և մանաւանդ ծովային պաշտօնատան մէջ, որ զինուորական արուեստին մէջ ամենէն աւելի մասնագիտութիւն կը պահանջէ։ Հետևաբար, շարունակ կը պոռային այն ազնուականներուն երեսին, որոնցմով լեցուն էին այդ պաշտօնատունները, և գործադիր իշխանութիւնը կը մեղադրէին որ անոնց տեղը ուրիշներ պաշտօնի չի կոչեր։

Ամենէն աւելի զայրոյթ կը պատճառէր պաշարեղէնի վարչութիւնը. դառացի դիտողութիւններ կ'ուղղէին հայթայթիչներուն, որոնք, իրենց ընաւորութեամբը և մանաւանդ՝ այդ խառնաշփոթ վայրկեանէն օգտուելով, իրենց բոլոր ծախսերուն համար շատ բարձր գիներ կը պահանջէին, զինուորներուն կուտային ամենէն գէշ տեսակ ուտելիքները, և անպարկեշտօրէն կը գողնային պետութիւնը։ Անոնց կատարած զեղծումներուն դէմ ամէն կողմէ մէկ աղաղակ միայն կը բարձրանար. մանաւորաբար երեսփոխան Քամբօն մը Մօնբէլիէ անուանելի հակառակորդ մըն էր անոնց. ելմտական և տնտեսական խնդիրներու սիրահար, այս երեսփոխանը մեծ ազդեցութիւն մը շահած էր այս կարգի նիւթերու վիճաբանութեան միջոցին, և կը վայելէր Ժողովին բովանդակ վստահութիւնը։ Թէև յայտնի ժողովրդավարական մըն էր, բայց

Ժիրոնտէն նախարարներուն իրեն հանդէպ ունեցած անվստահութենէն․ Գօնվանսիօնին կը ծանօթացնէր այն ստիպողական պահանջները որոնց մերժուելու պարագային զօրավարը իր հրաժարականը կ'ուտար։ Ոչ զոք մեղադրելով բայց ո՛չ մէկ բան բացատրելով և իր յարաբերութեանց մէջ խղճամիտ հաւատարմութիւն մը ձեւացնելով, Բաշ՝ թող տուաւ որ ամէն բան իր յունեգոյն արդիւնքը տայ։ Ժիրոնտէնները, Գօնվանսիօնը, Ժաքօպէնները, իւրաքանչիւրը իր կարգին զայրացաւ զօրավարին հըպարտութեանը վրայ։ Քանպօն որոտաց Մալիւսի, տ'Էսբանեաքի և Բըղիժանի դէմ, յիշեց անոնց վաճառման գիները որոնք ծայրայեղ էին, նկարագրեց տ'Էսբանեաքի անհաշիւ պերճանքը, Բըղիժանի նախկին զեղծումները, և երկուքին համար ալ Մոդոլէն ամբաստանագիրներ տալ տուաւ։ Ըսաւ որ Տիւմուրիէ խարդախ մարդերով շրջապատուած էր, որոնցմէ պէտք էր զայն ազատել․ պնդեց որ Գնումներու Յանձնաժողովը սքանչելի հաստատութիւն մըն էր․ թէ սպառման նիւթերը պատերազմի վայրին վրայ գնելը Ֆրանսայի գործաւորները աշխատելէ զրկել և զանոնք անգործութեան հետեւանքով ընդվզումներու ենթարկել կը նշանակէ․ դալով թղթադրամներուն, բնաւ անհրաժեշտ չէր ճարտարութիւն բանեցնել զանոնք տարածելու համար․ թէ զօրավարը սխալ կը գործէր զանոնք բանի ընդունիլ չտալով և Պելճիքայի մէջ չփոխադրելով ամբողջ յեղափոխութիւնը իր վարչութեամբ, իր դրամներով, և թէ Պելճիքացիները, որոնց ազատութիւն կը տրուէր, պէտք էր որ ընդունէին անոր առաւելութիւնները և անպատեհութիւնները։

Գօնվանսիօնի բեմէն Տիւմուրիէ իր գործակալներու միջոցաւ խաբուած մը մը միայն նկատուեցաւ․ բայց, Ժաքօպէններու ակումբին և Մարայի թերթին մէջ պարզապէս ըսին որ իր գործակալներուն հետ համաձայն և շահակից էր, և այս բանին իբր ապացոյց ունէին միայն զօրավարներու յաճախադէպ օրինակը։

Արդէն, Տիւմուրիէ ստիպուած եղաւ երեք գործակալները ձեռք տալու և զանոնք ձերբակալել տալու. Նախատինքը ըրին իրեն հակառակ այն ապահովութեան որ ինքը անոնց տուած էր։ Բաշ դրեց զօրավարին իր սովորական քաղցրութեամբ, թէ իր պահանջումները պիտի քննուին, թէ իր պիտոյքները պիտի հոգացուին և թէ Գնումներու Յանձնաժողովը այդ բանին համար շատ մեծ գումարներ պիտի յատկացնէր։

Տիւմուրիէ որ զանոնք չէր ստանար անդադար կը գանգատէր․ այնպէս որ եթէ մէկ կողմէն նախարարին նամակները կարդացուէին, պէտք էր կարծել թէ ամէն բան առատօրէն կար և միւս կողմէ զօրավարին նամակները կարդալով պէտք էր հաւատալ թէ բացարձակապէս ոչինչ գոյութիւն ունի։ Տիւմուրիէ կողմնակի միջոցներու դիմեց, եկեղեցականներէ փոխառութիւն ըրաւ, ապրեցաւ Մալուսի մէկ գնումովը զոր իրեն թողած էին ընել ստիպողականութեան պատճառաւ և ատով հանդերձ Պրիւքսէլ մնալու ստիպուեցաւ Նոյեմբեր 14 էն մինչեւ 19։

Այդ միջոցին, Սղէնմէլ, յառաջապահի բանակէն բաժնուելով Մայէնը գրաւած էր, ատիկա կարեւոր գրաւում մըն էր այն պատճառաւ որ վառօդի և ամէն կարգի զէնքերու մթերք մը կար այդ դիրքին մէջ, ինչ որ զայն Պելճիգայի զինարանը կը դարձնէր։ Լապուռտոնէ 13ին Անվէրս մտնելով կը կազմակերպէր ակումբները, Պելճիգացիները գէշ կը տրամադրէր քաջալերելով ժողովրդական խումբերը և հակառակ բոլոր ատոնց, ու և է կորով չէր դընէր դղեակին պաշարման մէջ։ Տիւմուրիէ, չկրնալով այլեւս յարմարիլ այնպիսի անդեկավարի մը, որ շատ դրդած էր

տկումներով և շատ քիչ պատերազմով, անոր տեղը անցուց Միրանտան, քաջութեամբ լեցուն Բէրուցի մը որ Ֆրանսա եկած էր յեղափոխութեան շրջանին և բարձր աստիճանի մը տիրացած էր Բէթիոնի բարեկամութեան շնորհիւ։

Լասուրսոնէ իր զօրաբաժանէն զըրկուած և հիւսիսի նահանգը բերուելով, եկաւ Ժաքօպէններու հաւանքը գրգռել կեաոր Տիւմուրիէի դէմ։ Ասիկա այն ատենն էր որ արդէն կ'սկսէին ատել զօրավարին։

Այս միջոցին, ամբողջ Պելճիքա մինչև Մէօզ գրաւուած էր, բայց կը մնար յաղթահարել երկրին՝ մինչև Հոլանտա և մեծ արգելքներ կը ներկայանային դեռ Տիւմուրիէի։ Ըլլա՛յ փոխադրութեանց դժուարութիւնէն, ըլլա՛յ պաշտօնատանց անփութութենէն, ոչ մէկ բան կը հասնէր իր բանակին և թէև Վալանսիէնի մէջ բաւական առատ մթերք կար, Մէօզի վրայ ամէն բան կը պակսէր։ Բայց, Ժաքօպէնները գոհացնելու համար, անոնց ցոյց տուած էր իր դիւանները և ամենամեծ անկարգութիւն կը տիրէր հոն։ Նախարարութիւնը անփութութեան մատնուած էր, և հոն անուշադրութեամբ ամենէն հակառակն հրամանները կուտային։ Այսպէսով ոև է ծառայութիւն գրեթէ անկարելի կը դառնար և մինչ նախարարը կը կարծէր որ փոխադրութիւնները կատարուած էին, անոնք կատարուած չէին։ Գնումներու Յանձնաժողովին հաստատումը աւելի շատցուցած էր անկարգութիւնը։ Նոր մատակարարը՝ Ռօնսէն, որ Մալիւսի և տ'Էսպանեաքի տեղը անցած էր զանոնք մատնելով, ամենամեծ շուարումի մէջ էր։ Շատ գէշ ընդունուած ըլլալով բանակին մէջ, ստիպուած էր իր պաշտօնէն և Տիւմուրիէի հրամանին վրայ շարունակեց գնումները ընել առջի այն վրայ, հակառակ վերջին որոշումներուն։ Այդ կերպով բանակը հաց և միս ունեցած եղաւ. բայց հանդերձեղէն, փոխադրութեան միջոցներ, հնչուն դրամ, և չոր խոտ կատարելապէս կը պակսէին և բոլոր ձիերը անօթութենէ կը մեռնէին։ Ուրիշ աղէտ մը կը հարուածէր այս բանակը. դասալքութիւնն էր այդ։ Կամաւորները որոնք առաջին խանդավառութեան մէջ Շամբանիա վազած էին, վտանգի պահը անցնելուն պէս պաղեր էին։ Թո՛ղ որ ամէն կարգի զրկանքներ կրելով զզուած էին և խումբ խումբ դասալիք կ'ըլլային։ Միայն Տիւմուրիէի զօրաբանակը առնուազն 10000ի չափ կորսնցուցած էր և ամէն օր աւելի կը կորսնցնէր։ Պելճիական զօրահանութիւնը չէր կատարուեր, որովհետև անկարելի էր կազմակերպել երկիր մը, որ ժողովուրդին զանազան դասակարգերը և երկրին զանազան գաւառները բնաւ տրամադիր չէին համաձայնելու։ Լիէժ, յեղափոխական սկզբունքով շատ հարուստ էր, բայց Բրապանդ և Ֆլանտրիա կասկածով կը նայէին Ժաքօպէններու յայտնուելուն ակումբներուն մէջ գործ փորձած էին հաստատել Կանտի, Անվէրսի, Բրիւքսէլի, ևն.ի մէջ։ Պելճիքայի ժողովուրդը շատ հաշտ չէր մեր գինուորներուն հետ որոնք թղթադրամով վճարել կ'ուզէին. ոչ մէկ տեղ կ'ուզէին ընդունիլ մեր թղթադրամը և Տիւմուրիէ կը մերժէր բռնի կերպով զայն տարածել։ Այսպէսով թէև պատերազմին մէջ յաղթական և տէր՝ բանակը դժբաղդ կացութեան մը մէջ կը գտնուէր սովին, դասալքութեան և բնակիչներուն վարանոտ և գրեթէ անհնազանդ տրամադրութիւններուն պատճառաւ։

Գօնվանսիօնը, որուն վրայ կը տեղային զօրավարին հակառակ տեղեկագիրները, որոնցմով հայրաբարօրէն կը գանգատէր, և նախարարինը, որ համեստօրէն բայց վստահութեամբ կը պնդէր որ ամենէն առատ առաքումները կատարուած էին, չորս պատգամաւորներ ընտրելով իր մէջէն փութացուց, որպէս զի

երթան իրենց ուժերովը հաստատելն իրաց ձեռնարկու վիճակը: Այդ չորս պատգամաւորներն էին՝ Տանդօն, Գամիւ, Լաքրուա և Գոսիէն:

Պրիւքսէլցիներու մէջ կատարեալ անչափաւորութիւն մը կը տիրէր և Սէրվան միջոցներէ զրկուած ըլլալով շատ մեծ դժուարութիւն կը կրէր փոխադրութեան համար հետևակութեան բանակը: Հակառակ առնուած 180 էն 200 միլիոնի առաջին ծախքերուն, Պրիւքսէլցիները, Անվերսցիները և Մօզէլի բոլոր զօրաբանակները նոյն թշուառութեան մէջ էին, գործակալութեանց կաշառակերութեան և պատերազմական նախարարութեան մէջ տիրող խառնակութեան պատճառաւ: Այս թշուառութեան մէջ յաղթական զինւորութիւնը և հպարտութիւնը աներեր էին: Այդ վայրկեանին միտքերը գերագրգռուած Ժէմափի յաղթութեամբ, Ֆրանքֆորդի առումով, Սավուայի և Նիսի գրաւումով, Եւրոպական կարծիքին յանկարծակի մեզի ի նպաստ դառնալուն համար, կարծեցին միաբանութեան խաղաղիկը լսել, և վայրկեան մը երեւակայեցին որ ժողովուրդները գահերը պիտի տապալեն և հանրապետութիւններ պիտի հաստատեն. — Այո, եթէ ճիշդ է որ, կը գոչէր Ժաքոպէն մը՝ Սավուայի Ֆրանսայի հետ կցուելուն առիթով, եթէ ճիշդ է որ ժողովուրդներու զարթնումը հասած է. եթէ ճիշդ է որ բոլոր գահերուն տապալումը մեր զօրաբանակներուն յաղթանակներուն և յեղափոխական հրաբուխին անմիջական հետևանքը պիտի ըլլայ. եթէ ճիշդ է որ վերջապէս հանրապետական առաքինութիւնները աշխարհիս վրէժը պիտի լուծեն թագաւորական ոճիրներէն. թէ ամէն հոգածուր ազատ ըլլալով, այն ատեն բնութեան իրեն նշանակած սահմանուն այդ մեծ ազատութեան համեմատ կառավարութիւն մը պիտի կազմէ, եւ թէ բոլոր այդ Ազգային Գօնվանսիոններէն ընտրուած որոշ թուով պատուաւոր պատուիրակներ աշխարհիս կեդրոնին մէջ ընդհանրական Գօնվանսիոն մը պիտի կազմեն, որ ամեն ազգաց պիտի հսկէ մարդկային իրաւանց պահպանման, վաճառականութեան ընդհանուր ազատութեան և մարդկային սերին խաղաղութեան վրայ ....:» Գօնվանսիոնի երեսփոխան Միլհոյի ձայնն է այս, զոր արտասանեց Ժաքոպէններու ակումբին մէջ, 1792 Նոյեմբերին:

Այս միջոցին Գօնվանսիոնը յանկարծ որ Դուքօ ու Տէօ-Բօն իր հաստատելիքներէն մէկ քանին նստած էր, խանդավառութեան թռիչքի մը մէջ հետևեալ հրամանագիրը արձակեց. —

«Ազգային Գօնվանսիոնը կը յայտարարէ որ օգնութիւն և եղբայրութիւն պիտի ընծայէ այն բոլոր ժողովուրդներուն, որոնք իրենց ազատութիւնը ձեռք բերել կ'ուզեն, և գործադիր իշխանութեան վրայ պարտք կը դնէ Ֆրանսական բանակին զօրավարներուն հրամաններ տալ՝ օգնելու համար այն քաղաքացիներուն, որոնք նեղութիւն կրած են կամ պիտի կրեն ազատութեան դատին համար:

«Ազգային Գօնվանսիոնը կը հրամայէ Ֆրանսական բանակին զօրավարներուն՝ ներկայ հրամանագիրը տպել և պատերուն փակցնել տալ՝ ամէն այն տեղերուն մէջ, ուր հանրապետութեան զինուորական ոյժը տարած պիտի ըլլան: Բարիզ, 19 Նոյեմբեր, 1792:» (1)

ՎԵՐՋ ՏԱՍՆԵՐՈՐԴ ԳԻՐՔԻ ԵՒ Բ. ՀԱՏՈՐԻ

(1) Թիէռի բնագրէն մէկ քանի հատուածներ, որ պատերազմական գործողութեանց մանրամասնութեանց վրայ խօսուած էին, զանց ըրած ենք: Ծ. Թ.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՖՐԱՆՍԱԿԱՆ
# ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ

(ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ)

ԳՐԵՑ
ԱՏՈԼՖ ԹԻԷՌ

ԹԱՐԳՄԱՆԵՑ
ԼԵՒՈՆ ԼԱՐԵՆՑ




ԵՐՐՈՐԴ ՀԱՏՈՐ

"ԿԻՒԹԷՄՊԷՐԿ" ՄԱՏԵՆԱՇԱՐ, ԹԻՒ 22
Կ. ՊՈԼԻՍ, ՏՊԱԳՐ. ԿԻՒԹԷՄՊԷՐԿ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՖՐԱՆՍԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ

## ՏԱՍՆԵՒՄԷԿԵՐՈՐԴ ԳԻՐՔ

### ՄԱՀ ԼՈՒԴՈՎԻԿՈՍ ԺԶ.Ի

*Լուդովիկոս ԺԶ.ի դատին մէջտեղին կուսակցութեանց վիճակը. — Այդ շրջանի դահլիճին անդամներուն նկարագիրը եւ կարծիքները. Ռօլան, Բաշ, Լըպրէօն, Կառա, Մօնժ եւ Քլավիէռ. — Տաճարի աշտարակին մէջ արքայական ընտանիքին ներքին կեանքին վրայ մանրամասնութիւններ. — Լուդովիկոս ԺԶ.ը դատելու մասին վիճաբանիլ կ'ըսկսին. Համառօտագրութիւն վիճաբանութեան. Սէն Ժիւսդի կարծիքը. — Ռուսե-տեղէնի յատ վիճակը. քաղաքական տնտեսութեան խնդիրներ եւ մանրամասնութիւններ. — Ռօպէսպիէռի ճառը թագաւորին դատին վրայ. — Քոնվանսիոնը կը վճռէ որ թագաւորը դատուի իր ձեռքով. — «Երկաթեայ պահարան»ին մէջ գտնուած թուղթերը. — Լուդովիկոս ԺԶ.ի առաջին հարցաքննութիւնը՝ Քոնվանսիոնին մէջ. — Դատապաշտպանութեան մէջտեղին կարծեաց եւ շահերու բաղխումներ. Ժաքօպէններու անհանգստութիւնը. — Օրլէանի դուքսին կացութիւնը. կ'առաջարկեն զայն աքսորել. — Լուդովիկոս ԺԶ.ի դատապարտութեան շարունակումը. Իր պաշտպանողականը. — Քոնվանսիոնին մէջ աղմըկալից վիճաբանութիւններ. — Ժիրօնտէնները կ'առաջարկեն դիմում ընել ժողովուրդի քուէին. երեսփոխան Սալի կարծիքը, Ռօպէսպիէռի պատախօսութիւնը, Վէրնիոյի ճառը. — Հարցեր կը դրուին. Լուդովիկոս ԺԶ. յանցաւոր կը ճանչցուի եւ մահուան կը դատապարտուի, առանց ժողովրդեան քուէին դիմում ըլլալու եւ վճռին գործադրութիւնը կը հրամայուի. վիճաբանութեանց եւ քուէարկութեան վրայ մանրամասնութիւններ. — Երեսփոխան Լըբլըթիէ Սէն Ֆարժօի սպանութիւնը. Բարիզի մէջ իրարանցումը. Լուդովիկոս ԺԶ. մնաք բարով կ'ըսէ իր ընտանիքին. իր վերջին վայրկեանները՝ բանտին մէջ եւ կառափնարանին վրայ։*

Լուդովիկոս ԺԶ.ի դատավարութիւնը վերջապէս տեղի ունէր, եւ կուսակցութիւնները իրարու կը սպասէին, իրենց ոյժը կշռելու, իրարու դիմաւորութիւն հասկնալու եւ վերջնական մը-ծիռ մը արձակելու համար։ Մասնաւոր ուշադրութեամբ նշմարուած էին Ժիրօնտէնները, որպէս զի, եթէ անոնք գութի ամենափոքր շարժում մը ընեն, կարելի ըլլայ զանոնք ամբաստանել իբր արքայական, եթէ երբեք գահընկէց թագաւորը յաջողէր սրտերնին յուզել։

Ժաքօպէններուն կուսակցութիւնը, որ յանձին Լուդովիկոս ԺԶ.ի բռնակալ միապետութիւնն էր որ կը հալածէր, անտարակոյս զօրացած էր, բայց

տակաւին բաւական ուժգին դիմադրութեան մը կը բաղխէր Բարիզի եւ մանաւանդ՝ Ֆրանսայի միացեալ մասին մէջ։ Ժաքոպէնները կը տիրապետէին մայրաքաղաքին մէջ, իրենց Ակումբովը, Համայնքային Խորհուրդովը, մասնաճիւղերովը, բայց միջին դասակարգը վերստին ոյժ կ'առնէր և դեռ քիչ մը դիմադրութիւն ցոյց կուտար։

Բէղիօն քաղաքապետութեան պաշտօնը մերժած ըլլալով, բժիշկ Շամպօն ստացած էր առաւելագոյն քուէն, և ակամայ ընդունած էր պաշտօն մը, որ իր խոհական բնաւորութեանը և իրեն պէս բնաւ փառասէր չեղող մէկու մը քիչ կը պատշաճէր։ Այս ընտրութիւնը ցոյց կուտայ այն զօրութիւնը որ տակաւին ունէր միջակորեարը՝ Բարիզի մէջն իսկ, ու շատ աւելի մեծ ոյժ մը՝ Ֆրանսայի միացեալ մասերուն մէջ։ Կալուածատէրերը, առևտրականները, վերջապէս, բոլոր միջին դասակարգերը չէին լքած ո՛չ թաղապետական մարմինները, ո՛չ գաւառական ժողովները, ո՛չ ժողովրդային ընկերութիւնները, և ուղերձներ կը ղրկէին Քօնվանսիօնի մեծամասնութեան, օրէնքը և խոհականութիւնը յիշեցնելու համար։ Ժաքոպէններու հետ կապակցութիւն ունեցող բազմաթիւ ընկերակցութիւններ դժգոհ էին մայր ընկերութենէն, և բարձրաձայն կը պահանջէին որ Մարա վտարուի. անոնք նոյն իսկ Ռոպէսփիէռի վտարումը կը պահանջէին։ Վերջապէս, Պուշ տիւ Ռօն, Քալվատօս, Ֆինիսդէր և Ժիրօնտ նահանգներէն կը մեկնէին նոր դաշնակիցներ, որոնք Օգոստոս 10ի նման հրամանագիրներ կանխելով, կուգային պաշտպանել Քօնվանսիօնը և անոր անկախութիւնը ապահովել։

Ժաքոպէնները տակաւին տիրացած չէին բանակին. սպայակոյտերը և զինուորական կոմմիսէրութիւնը կը շարունակէին անոնցմէ հեռու մնալ։ Այսու հանգերձ անոնք ողողած էին նախ խարարութիւն մը, պատերազմականը։ Բաշ անոնց առջև բացաւ պատերազմական պաշտօնատունը իր տկարութեամբը, և իր բոլոր նախկին պաշտօնեաներուն տեղը դրաւ Ժաքոպէն Ակումբին անդամները։ Այդ պաշտօնատան մէջ իբարու «դուն»ով կը խօսէին, աղտոտ զգեստներով կ'երթային հոն, հրամայական առաջարկութիւններ կ'ընէին, և հոն կը գտնուէին մեծ թուով ամուսնացած քահանաներ, որոնք մտած էին Բաշի փեսին՝ Օտուէնի ձեռամբ, որ ինքն ալ ամուսնացած քահանայ մըն էր։

Պատերազմական պաշտօնատան պետերէն մին Հասէնֆրացն էր, որ ուրիշ շատերու նման, բարձր պաշտօններու հասած էր ամբոխավարական մեծ եռանդ ցոյց տալով։ Այս կերպով կը վերակազմէին բանակին վարչութիւնները, և կարելի եղածին չափ բանակը կը լեցնէին նոր դասակարգով մը և նոր կարծիքներով։ Ասկէ զատ, մինչ Ռօլան Ժաքոպէններու ատելութեանը արժանացած էր, Բաշ անոնց սիրելին էր և կը գովաբանուէր. կը փառաբանէին անոր քաղցրութիւնը, համեստութիւնը, մեծ կարողութիւնները, և ատոնց դէմ յանդիման կը դնէին Ռօլանի խստութիւնը զոր գոռոզութիւն կ'անուանէին։ Արդարեւ, Ռօլան թոյլ չէր տուած ըլլալու, որ Ժաքոպէնները ոտք կոխեն ներքին գործոց Նախարարութեան մէջ։ Վարչական մարմիններու տեղեկագիրները նկատի առնել, իրենց իրաւասութեան սահմանէն դուրս ելլողները կարգի բերել, հանրային անդորրութիւնը պաշտպանել, ժողովրդային ընկերութեանց վրայ հսկել, ունեւորները հոգալ, վաճառականութիւնը և ինչքերը պաշտպանել, այսինքն հսկել պետութեան ամբողջ ներքին վարչութեան վրայ, ահա՛ ատոնք էին իր բազմատեսակ գործերը, զորս հազուադէպ կարողով մը ի գլուխ կը հանէր։ Ամէն օր Համայնքային խորհուրդին թերութիւն-

ները կը մանրանանչէր, կը հետապնդէր անոր ոտնձգութիւնները և պատգամաւոր դրկելու սովորութիւնը կը դատապարտէր, անոնց խղճահարութիւնները կը գրաւէր. ինչպէս նաև Ժաքօպէններունը, և անոնց բուռն գրութեանց տեղ կը դնէր խոհականութեամբ աւելի ուրիշ գրութիւններ, որոնք ամէն կողմ շատ լաւ տպաւորութիւն կը ձգէին։ Անիկա կը հսկէր պետութեան բաժին ծնկած տարագիրներու ստացուածքներուն վրայ, մեծ խնամք կը տանէր ուտեստեղէններուն, որոնցմէ յառաջ եկած խռովութիւնները կը զսպէր, և ձեւով մը ինքզինքը նեղը կը դնէր յեղափոխական կիրքերուն դէմ հանելու համար օրէնքը և ոյժը, երբոր կարենար։

Դիւրին է մակաբերել թէ Ժաքօպէնները ինչ զանազանութիւն կը դնէին Բաշին և Ռօլանին միջեւ։ Երկու նախարարներուն ընտանիքները իրենք իսկ կ՚օժանդակէին, որ այս տարբերութիւնը աւելի զգալի ըլլայ. Բաշի կինը և աղջիկները ակումբները և մանաճիղերը կ՚երթային, մինչեւ իսկ զօրանոցներուն մէջ կ՚երեւային, զանոնք իրենց կողմը շահելու համար. անոնք հասարակ ժաքօպէնութեամբ մը կը զանազանէին Ռօլանի կնոջմէն, այդ քաղաքակիրթ և հպարտ կնոջմէն, որ մանաւանդ շրջապատուած էր այնքան փայլուն և այնքան զզուելի բամբասաններէ։

Այսպէս ուրեմն, Բաշ և Ռօլան այն երկու մարդիկներն էին, որոնց շուրջ երկուքի կը բաժնուէին դահլիճին մէջ։ Ելմտական նախարար Քլավիէռ թէեւ յաճախ կը սրդողէր միւսներուն հետ, իր բնաւորութեան ծայրայեղ բարկացոտութեամբը, բայց միշտ Ռօլանին կը միանար, երբ իր հանդարտութիւնը գտնէր։ Լըպրէօն, ակոր մէկը, բայց իր լուսամտութեամբը Ժիրօնտէններուն յարած, Պրիսօյի հետ շատ կը յօդէր։ Ժաքօպէնները, զայն կեր-րիկան մը անուանելով, կըսէին թէ անիկա աւելին է ամբողջ կառավարութեան, որովհետեւ կ՚օգնէր Լըպրէօնին, դիւանագիտական աշխատութեան մէջ։

Կոսա, կուսակցութիւններուն վրայ նայելով ընազանցական բարձրութենէ մը, կը դոհանար զանոնք դատելով և ինքզինքը բանադատուած չէր զգար անոնց դէմ մարտնչելու։ Հարկադրուած ըլլալ կը կարծէր Ժիրօնտէններուն չօժանդակելու, որովհետեւ անոնց սխալ արարքները երեւան կը հանէր։ Անիկա իր անգործութիւնը ճշմարիտ իմաստութեան մը վերածած էր։ Այսու հանդերձ, Ժաքօպէնները այնքան ականաւոր մէկու մը չէզոքութիւնը կընդունէին իբր թանկագին առաւելութիւն մը, և զովեստով կը հատուցանէին զայն։ Վերջապէս, Մօնժ, չափազէտ միտք, ականաւոր հայրենասէր, Ժիրօնտէններուն քիչ մը տարտամ վարկածներուն շատ կուսակից չըլլալով, կը հետեւէր Բաշի օրինակին, թոյլ կուտար որ իր նախարարութեան մէջ Ժաքօպէնները ողողեն, և, առանց երեւ դարձնելու Ժիրօնտէններուն, որոնց կը պարտէր իր դիրքը, անոնց հակառակորդներուն զօրեանները կընդունէր և պատերազմական նախարարին չափ ժողովրդական էր։

Ահա այսպէս, ժաքօպէն կուսակցութիւնը, յանձին Բաշի և Մօնժի երկու հաճոյակատարներ, և Կարայի մէջ անտարբեր գաղափարապաշտ մը ունենալով, ու նշմարելով յանձին Ռօլանի անճկուն հակառակորդ մը, որ Լըպրէօնը և Քլավիէռը դէպ իրեն կը հակեցնէր և յաճախ միւսները ալ հետը կը տանէր, ժաքօպէն կուսակցութիւնը տակաւին իր ձեռքին մէջ չունէր կառավարութիւնը, և ամէն կողմ կը կրկնէր թէ իրաց նոր վիճակին մէջ միշտ թագաւոր մը պակաս կար, բայց թէ ատկէ զատ, նոյն այն առջի բռնակալութիւնն ու մեքենայութիւնները և մասնաւ-

թիւնները կը շարունակուէին։ Մարքոպէնները կ'ըսէին թէ յեղափոխութիւնը այն ժամանակ միայն կատարեալ և անվերադարձ պիտի ըլլայ, երբ բոլոր դաւադրութեան և ընդդիմութեան գաղտնի ձեռնարկները՝ բնաջնջուած ըլլան, կամ Տամփլի մէջ բանտարկուին։

Ցոյց տուինք, թէ ի՛նչ էին կուսակցութեան յուրաքանչիւր ուժերը և յեղափոխութեան վիճակը այն պահուն, ուր սկսաւ Լուդովիկոս ԺԶ.ի դատավարութիւնը։ Թագաւորը իր ընտանիքին հետ կը բնակէր Տամփլի մեծ աշտարակին մէջ։ Համայնքային Խորհուրդը, որ իր տրամադրութեան տակ ունէր զինւոր ոյժ և մայրաքաղաքի ոստիկանական հսկողութիւնը, պարտաւոր էր հսկել նաև Տամփլի պահպանութեան վրայ, և իր մասայ, կասկածոտ ու քիչ վեհանձն իշխանութեան ենթարկուած էր արքայական ընտանիքը։ Այս ամբողջ ընտանիքը, զոր կը պահպանէր այնպիսի դասակարգ մը մարդոց, որ շատ աւելի ստորադաս էր քան Գոնվանսիոնը բաղկացնող մարդոց դասակարգը, ոչ խոհականութիւն կրնար ակնկալել և ոչ ալ այն ակնածանքը, զոր դաստիարակութիւնը և քաղաքակիրթ բարքերը ցոյց կուտան՝ հանդէպ դժբաղդութեան։

Արքայական ընտանիքը նախ և առաջ դրուած էր փոքրիկ գաւիթին մէջ, յետոյ փոխադրուած էր մեծ գաւիթը, որովհետև այնպէս համոզում գոյացուցին թէ այդ կերպով հսկողութիւնը աւելի դիւրին և աւելի ապահով պիտի ըլլար։ Թագաւորը ունէր իր առանձին յարկաբաժինը, իսկ իշխանուհիները անոր հետ գրաւած էին ուրիշ յարկաբաժին մը։ Ցերեկ ատեն, թոյլ կը տրուէր որ քով քովի գան և միասին անցընեն իրենց գերութեան տխուր վայրկեանները։ Միակ սպասաւորի մը թոյլ տրուած էր անոնց բանտին մէջ ալ միասին ըլլալ. տոկուն հաւատարիմ Քլէրին էր, որ, Օգոստոս 10ի կոտորածներէն ճողոպրած, Բարիզ վերադարձած էր, իրենց դժբաղդութեան միջոցին ծառայելու անոնց, որոնց ծառայած էր ամենազօր իշխանութեան փայլուն օրերուն։

Քլէրի առտուն կանուխ կ'ելլէր և ինքզինքը տասը կատր կ'ընէր, որպէսզի կարենայ անցքը բանալ այն բազմաթիւ սպասաւորներուն, որոնցմով շրջապատուած կ'ըլլար ամէն օր։ Ժամը 9ին նախաճաշ կ'առնէին Թագաւորին սենեակին մէջ. ժամը 10ին ամբողջ ընտանիքը կը հաւաքուէր Թագուհիին մօտ, և Լուդովիկոս ԺԶ. այն ատեն կը զբաղէր իր տղուն դաստիարակութեան գործով. անոր կը սորվեցնէր Ռասինէն և Քորնէյլէն բանաստեղծութիւններ, այնուհետև կուտար աշխարհագրութեան առաջին գիտելիքները. ինքը մեծ փութաջանութեամբ և յաջողութեամբ մշակած էր աշխարհագրական գիտութիւնը։ Իր կողմէն, Թագուհին կը դաստիարակէր իր աղջիկը և յետոյ իր քրոջը հետ ասեղնագործութեամբ կը պարապէր։ Ժամը մէկին, երբ օդը աղէկ ըլլար, ամբողջ ընտանիքը պարտէզ կը տարուէր, մաքուր օդ շնչելու և կարճ պտոյտ մը ընելու համար։ Մէկ քանի քաղաքապահ զինւորներ և անձնապահ գունդի սպաներ կ'ընկերանային, և պարագային համեմատ, այդ զինուորականները երբեմն գթասիրտ կ'ըլլային, երբեմն ալ կարծրասիրտ ու արհամարհոտ։

Քիչ դաստիարակուած մարդիկը քիչ վեհանձն են, և անոնց համար, երբ մեծութիւնը յաղթահարուած վիճակ մը ունի, ներման չարժանանար։ Երևակայեցէք կոշտ արհեստաւորներ, որոնք նաև կրթութիւն առած չեն, ուր կը հանդիպին այդ ընտանիքին, որուն իշխանութիւնը այնքան երկար ատեն հանդուրժած և փառաւորութիւնները սնուցած ըլլալուն համար ինքզինքնին կը մեղադրէին. և ահա դիւրին է երև-

ւանկայի թէ վրէժխնդրական ինչ սոսորին միջոցներ մերթ ընդ մերթ ի գործ կը դրուէին անոր վրայ։ Ցաճախ թագաւորը և թագուհին սարսափելի խօսքերու ականջալուր կ'ըլլային, և գաւիթին ու նրբանցքներուն պատերուն վրայ կը գտնէին արտայայտութիւնը այն ատելութեան, որուն յաճախ արժանի եղած էր նախկին կառավարութիւնը, այլ զոր ներշնչելու համար ոչինչ ըրած էին Լուդովիկոս ԺԶ. և իր ամուսինը։

Սակայն և այնպէս արքայական ընտանիքը երբեմն մխիթարութիւն մը կը գտնէր գաղտագողի արտայայտութեանց ի լուր, և կը շարունակէր իր վշտալից պտոյտը տղոց համար, որովհետև պտոյտը անհրաժեշտ էր անոնց։ Մինչ տխրօրէն կը շրջագայէին Դամբլի պարտէզին մէջ, դրացի տուներու պատուհաններուն առջև կը նշմարէին նախկին հպատակներ, որոնք ցարդ հաւատարիմ մնացած էին իրենց տէրերուն, և եկած էին տեսնելու այն նեղկուկ միջոցը, ուր փակուած էր գահընկէց միապետը։ Ժամը 2ին պտոյտը կը վերջանար, և ճաշ կուտային. յետոյ թագաւորը քիչ մը կը հանգչէր, ու մինչ կը քնանար, իր կինը, քոյրը և աղջիկը լուռ ու մունջ կ'աշխատէին, և Քլէրի, ուրիշ սրահի մը մէջ, երիտասարդ իշխանին իր տարիքին յատուկ վարժութիւններ ընել կուտար։ Այնուհետև, ամենքը միասին ընթերցում մը կ'ընէին, կ'ընթրէին, և իւրաքանչիւրը կը մտնէր իր յարկաբաժնէն ներս, վշտալի ողջագուրումէ մը յետոյ, որովհետև, երբէք իրարմէ չէին բաժնուեր առանց ցաւի։ Թագաւորը պառկելէ առաջ քանի մը ժամ կը կարդար դեռ. Մոնդեսքիէօ, Պիւֆոն, պատմագիր Հիւմ, Նմանութիւն Յիսուսի Քրիստոսի, քանի մը լատին և իտալացի դասական հեղինակներ կը կազմէին իր ընթերցանութեան սովորական նիւթերը։ Երբ Դամբլէն դուրս ելաւ, 250 գիրք կարդացած էր։

Ահա՛ այսպէս կեանք կը վարէր միապետը իր տխուր գերութեան միջոցին։ Անգամ մը որ անձնական կեանք մը ապրիլ սկսաւ, իր բոլոր առաքինութիւններուն տէր եղաւ, և բոլոր պարկեշտ մարդոց յարգանքին արժանի դարձաւ։ Իր թշնամիներն իսկ, զայն տեսնելով այսքան պարզ, հանդարտաբարոյ, պարկեշտ, չէին կրնար ակամայ յուզում մը չունենալ, և պատրաստ էին, մարդկային առաքինութեան սիրոյն, ներել թագաւորին յանցանքներուն։

Համայնքային Խորհուրդը, ծայրայեղօրէն կասկածոտ, շատ նեղացուցիչ զգուշաւորութիւններ ցոյց կուտար։ Քաղաքապահ զօրաց սպաները աչքէ չէին փախցներ բնաւ արքայական ընտանիքին անդամները, և միայն քնանալու ժամանակը կը հաւանէին անկէ բաժնուիլ փակուած դուռով մը։ Այն ատեն, իւրաքանչիւր յարկաբաժինի դրան առջև անկողին մը կը զետեղէին, անոր ելքը փակելու համար, ու գիշերը հոն կ'անցընէին։ Սանդէռ, իր սպայակոյտին հետ, ընդհանուր հսկողութիւն մը կը կատարէր ամբողջ աշտարակին վրայ, և կանոնաւոր տեղեկագիր մը կը պատրաստէր այդ մասին։ Անձնապահ զօրաց սպաները տեսակ մը մնայուն խորհուրդ կազմած էին աշտարակին սրահին մէջ, և հրամաններ կ'արձակէին ու բանտարկեալներուն բոլոր խնդիրներուն գոհացում տալու հրահանգ ունէին։ Ի սկզբան, բանտին մէջ մելան, թուղթ և գրիչ կար. բայց շատ չանցած բոլոր ատոնք վերցուցին, ինչպէս նաև բոլոր հատու գործիքները, օրինակի համար՝ դանակ, ածելի, մկրատ, զմելի. ամենէն մանրակրկիտ և վիրաւորիչ հետախուզութիւնները կատարեցին երեւան հանելու համար այնպիսի գործիքներ, որոնք թերևս ծածկուած էին։ Այս բանը մեծ վիշտ պատճառեց իշխանուհիներուն, որոնք այն ժամանակէն սկսան

ղուրկ մնացին իրենց կար կարելու սիտոյքներէն, և այնուս չկրցան նորոգել իրենց զգեստները, որոնք արդէն խիստ ողորմելի վիճակի մը վերածուած էին, քանի որ Դամփլ փոխադրութենէն ի վեր կարկտուած չէին։

Պալատին մէջէն ամէն ինչ որ կը պատկանէր Թագաւորական ընտանիքին, ջարդ ու փշուր եղած էր։ Անգլիոյ դեսպանին կինը ձերմակեղէն ղրկեց Թագուհիին, և Համայնքային Խորհուրդը, Թագաւորին խնդրանքին վրայ, ամբողջ ընտանիքին համար ձերմակեղէններ շինել տուաւ։

Գալով վրայի զգեստներուն, ո՛չ Թագաւորը և ո՛չ ալ Թագուհին ունեցին. անտարակոյս իրենց պիտի տրուէր, եթէ ուզած ըլլային։ Դրամական խնդիրներուն գալով Սեպտեմբեր ամսուան մէջ Թագաւորական ընտանիքին տուին 2000 ֆրանք, մանր ծախքերու համար, բայց անկէ վերջ, այնուս դրամ տալ չուզեցին, որովհետև վախցան որ այդ դրամը ուրիշ բանի կը գործածեն։

Գումար մը յանձնուեցաւ Դամփլի մատակարարին, և ամէն անգամ որ բանտարկեալները բան մը ուզէին, այդ գումարով կը գնուէր։ Պէտք չէ չափազանցել մարդկային բնութեան յանցանքները, և ենթադրել որ մահուանդութեան կատարութեան միջոցներով զզուելի սարսուութիւն մը, բանտարկեալ ընտանիքին պահապանները հաճոյքով կը հարկադրէին անօթայի զրկանքներ, և այս կերպով ուզած ըլլան աւելի սաստկի ընել անցեալ մեծութեան յիշատակը։ Մանաւանդ մերժումներու միակ պատճառը անխոհեմութիւնն էր։ Օրինակի համար, մինչ դաւադրութեանց և հաղորդակցութեանց երկիւղը թոյլ չէր տար իրենց, որ բանտէն ներս 4 ծառայէ աւելին թողտուութիւն ըլլայ, բազմաթիւ սպասաւորներ կը գործածուէին անոնց ուտելիքը պատրաստելու համար։ Սոսկ խոհանոցին մէջ 13 հոգի կը ծառայէին, այս խոհանոցը Դամփլէն քիչ մը հեռու հաստատուած էր. Դամփլի ծախքերուն տեղեկագիրները, որոնց մէջ մեծ պարկեշտութիւն մը ցոյց կը տրուի, ո՛ր բանտարկեալներուն մասին յարգանքով կը խօսուի, որ անոնց ժուժկալութիւնը կը գովաբանուի, և որոնց մէջ Լուդովիկոս ԺԶ.ի համար ըսուած է թէ՝ շատ գինի չէ գործածեր, ինչպէս ոմանք մեղադրած են. այս ոչ կասկածելի տեղեկագիրները ցոյց կուտան թէ, երկու ամսուան մէջ սեղանի ծախքերը 28745 ոսկի եղած են։

Մինչ 13 սպասաւորներ կը գործածուէին խոհանոցին համար, միայն մէկ հատ կրնար բանտ մտնել, և կ՚օգնէր Գլէրիին, բանտարկեալներուն քնացած միջոցին։ Բայց բանտարկեալներու հընարաւորութիւնը այնքան մեծ է որ, այդ ծառային զգացումները շարժած ըլլալով Գլէրի, դուրսի աշխարհին լուրերը երբեմն Դամփլի մէջ կը մտնէին։ Դժբաղդ բանտարկեալներուն ամէն առնին զլացուցած չէին թէ դուրսը ինչ կ՚անցնի կը դառնայ. Համայնքային Խորհուրդի ներկայացուցիչները կը բաւականանային անոնց տալով այն թերթերը, որոնք հանրապետութեան յաղթութիւնները կը յիշատակէին, և որոնք ամէն յոյս կորսնցնել կուտային։

Գլէրի երեւակայած էր, գաղտնի հաղորդակից պահելու համար, ձայնիկ միջոց մը, որ բաւական լաւ կը յաջողէր։ Դուրսի հետ իր հաստատած յարաբերութեանց միջոցով, վարձ էր ու կը վճարէր մունետիկ մը, որ Դամփլի պատուհաններուն տակ կը կենար և լրագիր ծախելու պատրուակով, և իր ամբողջ ոյժովը կը պոռար ամենէն կարեւոր լուրերը հաղորդելով։



ԼՈՒԴՈՎԻԿՈՍ ԺԶ. ԿԸ ԴԱՏՈՒԻ ՔՈՆՎԱՆՍԻՈՆԻ ԱՌՋԵՒ

Քլէրի, որ անոր հասնելիք ժամէն տեղեկութիւն ունէր, նոյն պատուհանին մօտ կը նստէր, լաթերը կը հաւաքէր եւ իրիկունը, թագաւորին անկողնին վրայ կը հանէր. այն վայրկեանին՝ ուր անոր վարագոյրները կը գոցէր՝ ու իր իմացածները անոր կը հաղորդէր: Ահա՛ այս էր կացութիւնը դժբաղդ ընտանիքին, որ գահէն ինկած էր չղթաներու մէջ, և ահա ա՛յս էր այն եղանակը, զոր ի գործ կը դնէր ճարտարամիտ եռանդը հնարամիտ ծառայի մը, իր պահապաններուն միշտ կասկածամտութեանը դէմ պայքարելով:

Յանձնաժողովները վերջ ի վերջոյ հաղորդեցին Լուդովիկոս ԺԶ.ի դատավարութեան մասին իրենց տեղեկագիրը: Տիւֆրիշ-Վալազէ առաջին տեղեկագիր մը պատրաստած էր միապետին վերագրուած յանցանքներուն մասին, և յիշած էր այն վաւերաթուղթերը, որոնք կըրնային հաստատել այդ յանցանքները: Այդ տեղեկագիրը՝ այնքան երկար՝ որ չէր կարելի զայն մտիկ ընել մինչև ծայրը, Քօնվանսիոնի հրամանով տպուեցաւ և բաշխուեցաւ բոլոր անդամներուն: Նոյեմբեր 7ին երեսփոխան Մէյլ, խօսելով յանուն օրէնսդիր յանձնախումբին, տեղեկագիր ներկայացուց այս երկու կարեւոր խնդիրներուն վրայ, որոնց ծնունդ կուտար դատավարութիւնը. —

Լուդովիկոս ԺԶ.ը կրնա՞յ դատուիլ. ո՞ր դատարանը պիտի արձակէ վճիռը:

Ասոնք էին երկու կենսական հարցերը, որոնք պիտի զբաղէին միտքերը և զանոնք պիտի յուզէին խորապէս. անմիջապէս հրամայուեցաւ որ տեղեկագիրը տպուի, ամէն լեզուներու թարգմանուելով, բազմաթիւ օրինակներով

ամէն կողմ ցրուեցաւ և քիչ ատենէն Ֆրանսան և Եւրոպան ողողուեցաւ այդ անդեկագրով։ Վիճաբանութիւնը յետաձգուեցաւ 13՚ին, հակառակ Պիյօ Վարէննին, որ կ՚ուզէր որ միաձայնութեամբ վճռուի դատաստանի ենթարկումը։

Եւ ահա այս պարագային պիտի մղուէր վերջին պայքարը Սահմանադիր ժողովի գաղափարներուն և Քօնվանսիօնի գաղափարներուն միջեւ. ու այդ պայքարը անո՛ր համար մանաւանդ բուռն պիտի ըլլար, որովհետեւ թագաւորի մը կեանքը կամ մահը պիտի վճռուէր։ Սահմանադիր ժողովը իր գաղափարներովը ժողովրդավարական էր, իսկ զգացումներովը՝ միապետական։ Այս պատճառաւ, մինչ ամբողջ պետութիւնը հանրապետութեան կը փոխուէր, Լուդովիկոս ԺԶ.ի մասին գութի և յարգանքի բեկոր մը դեռ ունենալով, տակաւին կը պահէր թագաւորութիւնը իր այն ստորոգելիներով, որ համաձայնուած էր տալ թագաւորութեան, աւատական միապետութեան դրութեան մէջ։ Ժառանգականութիւն, գործադիր իշխանութիւն, օրէնսդիր մարմինի անդամակցութիւն և մանաւորապէս անբռնաբարելիութիւն, ահա՛ ասոնք են այն առանձնաշնորհումները, որոնք նոր ժամանակի միապետութեանց մէջ կը սրբուին գահուն, և զորս առաջին ժողովը ձգած էր իշխող գերդաստանին։ Օրէնսդիր իշխանութեան և գործադիր իշխանութեան մասնակցութիւնը հանգամանքներ են, որ կարող են տարբերիլ իրենց սահմաններուն մէջ, և որոնք այնքան անհրաժեշտաբար չեն կազմեր ժամանակակից միապետութիւնը, որքան ժառանգականութիւնը և անբռնաբարելիութիւնը։ Այս վերջին երկուքէն մին՝ կ՚ապահովէ թագաւորութեան բնական և մշտնջենական փոխանցումը. երկրորդը՝ ամէն բռնաբարումէ զերծ կը կացուցանէ զայն, յանձին ամէն մէկ ժառանգորդի։ Վերջապէս երկուքն ալ մշտնջենական բան մը կ՚ընեն, որ չընդհատիր, և նաև՝ անմերձենալի բան մը՝ զոր ոչ մէկ պատիժով կարելի է պատժել։ Դատապարտուած ըլլալով գործելու միմիայն նախարարներու միջոցով, որոնք պատասխանատու են իր արարքներուն, թագաւորութիւնը մերձենալի է միմիայն իր գործակալներով, եւ այս կերպով ծնունդ կ՚առնէ կէտ մը, ուր կարելի է հարուածել զայն, առանց քանդելու։ Ահա այսպէս է աւատական միապետութիւնը, որ յաջորդաբար ձեւափոխուած է ժամանակին հետ, և համերաշխած՝ ազատութեան այն աստիճանին հետ, որուն հասած են ժամանակակից ժողովուրդները։

Սակայն և այնպէս, Սահմանադիր ժողովը տարուած էր սեղմում մը դնել այդ թագաւորական անբռնաբարելիութեան։ Դէպ ի Վառէն փախուստը, տարագիրներուն ձեռնարկները, վերջ ի վերջոյ անոր մտածել տուին թէ նախարարական պատասխանատուութիւնը չէր կրնար երաշխաւոր ըլլալ ազգին հանդէպ, թագաւորութեան բոլոր մեղքերուն համար։ Այս պատճառաւ, անիկա կանխատեսած էր այն պարագան, երբ միապետ մը թշնամի բանակի մը գլուխը պիտի անցնէր, պետութեան սահմանադրութեան վրայ յարձակելու համար, և կամ թէ, յայտնի եւ որոշ արարքով մը չպիտի ընդդիմանար իր անուամբը եղած այս կարգի ձեռնարկի մը։ Այս պարագային մէջ, ժողովը յայտարարած էր թէ, թագաւորը երբէք արդարանալի չէ դրուժանութեան դէմ սովորական օրէնքներով, այլ՝ գահընկէց է. թագաւորը պէտք է գահէն հրաժարած ըլլայ։ Այս էր ահա օրէնքին լեզուն, բառ առ բառ, զոր բանաձեւած էր։ Սահմանադրութիւնը ընդունելու առաջարկը, զոր ժողովը ըրած էր թագաւորին, եւ այս վերջինոյն կողմէ այդ առաջարկին ընդունումը, այսու վերջնական հանգամանք մը տուած էին սահմանադրու-

թեան, և Ժողովը հանդիսաւորապէս յանձն առած էր նուիրական բան մը համարել միապետնիրու անձը։

Այսօրինակ յանձնառութեան մը առջև է ահա որ կը գտնուէր Թօնվանսիօնը, Լուդովիկոս ԺԶ.ի բաղդը վճռուած միջոցին։ Բայց այս նոր սահմանադիրները, որոնք Քօնվանսիօնէն անուան տակ հաւաքուած էին, այլ ևս ինքզինքնին պարտաւոր չէին զգար յարգելու իրենց նախորդներուն յանձնառութիւնները, ինչպէս որ այս վերջինները ինքզինքնին պարտաւոր չէին համարած աւատականութեան նախկին հաստատութիւններուն կապուած զգալու։

Միտքերը ենթարկուած էին այնքան արագ յեղաշրջութեան մը, որ 1791 ի օրէնքները 1792ի սկզբունքին այնչափ անհեթեթ կը թուէին, որչափ ԺԳ. դարու օրէնքները թուած էին 1789 ի սկզբունքին։ Այս պատճառաւ, Թօնվանսիօնի անդամները ինքզինքնին հարկադրուած չէին զգար օրէնքով մը, զոր անհեթեթ կը համարէին, և կը յայտարարէին թէ անոր դէմ կընդվզին, ինչպէս որ Համայն Դատակարգերը (Էթա Ժէնէրօ) ըմբոստացան երեք կարգերուն դէմ։

Այս պատճառներով, Նոյեմբեր 13ին վիճաբանութիւնները բացուելնուն պէս, երկու հակիմաստ առաջարկներ եղան։ Մէկ կողմը կը պնդէր թէ թագաւորը անձեռնմխելի է, միւս կողմը բացարձակապէս կը մերժէր այս հանգամանքը։ Պաշտպանները այնքան փոխուած էին, որ Թօնվանսիօնի անդամներէն ո՛չ մին կը համարձակէր պաշտպանել անբռնաբարելիութեան սկզբունքը, իբր ինքնին լաւ բան մը, և անոնք իսկ, որոնք այդ սկզբունքին կողմնակից էին, կը պաշտպանէին զայն միայն իբր թագաւորական նախընթաց իրաւունք մը, զոր ունէր թագաւորը, և զոր կարելի չէր վիճելի համարել առանց ազգային յանձնառութիւն մը դրժած համարուելու։ Այսու հանդերձ, քիչ թուով երեսփոխաններ կային, որոնք թագաւորը կը պաշտպանէին՝ այս յանձնառութեան տեսակէտով, իսկ Ժիրոնտէնները զայն կը պաշտպանէին նոյն իսկ այս տեսակէտով. թէև, վիճաբանութեանց չէին մասնակցեր, և ցուրտ կերպով մը կը դիտէին անբռնաբարելիութեան սկզբունքի կուսակիցներուն և անոր բազմաթիւ հակառակորդներուն միջև սկսուած վիճաբանութիւնը։

Անբռնաբարելիութեան հակառակորդները կ'ըսէին. «Նախ և առաջ, որպէս զի յանձնառութիւն մը օրինաւոր ըլլայ, պէտք է որ յանձնառուն իրաւունք ունենայ յանձնառութիւն մը ընելու։ Արդ, ազգային գերիշխանութիւնը է, և ապագային համար երաշխաւորութիւններ չի կրնար ստանձնել։ Ազգը կրնայ գործադիր իշխանութիւնը զերծ պահել օրէնսդիր մարմնին հատուածներէն, սակայն քաղաքական նախազգուշութիւն մըն է, որուն շարժառիթը դիւրին է մեկնաբանել Սահմանադիր Ժողովի դրութեամբ. բայց եթէ Սահմանադիր Ժողովը անբռնաբարելի հռչակած է թագաւորը՝ բոլոր հասարակ իշխանութեանց համար, չէր կրնար ինքզինքին համար ալ անբռնաբարելի հռչակել զայն, որովհետև անիկա երբէք չի կրնար հրաժարիլ ամէն բան ընելու և ամէն բան կարենալու իրաւունքէն. այս իրաւունքը կը կազմէ իր ամենակարողութիւնը, որ անփոխանցելի է. հետևաբար, կ'ըսէին, ազգը չէր կրնար ո և է յանձնառութիւն առած ըլլալ Լուդովիկոս ԺԶ.ի հանդէպ, և կարելի չէ ազգին դէմ հանել յանձնառութիւն մը, զոր չէր կրնար առած ըլլալ։

«Երկրորդ, կ'ըսէին, նոյն իսկ ենթադրելով որ կարելի ըլլար այդպիսի յանձնառութիւն մը ստանձնել, պէտք պիտի ըլլար որ անիկա փոխադարձ ըլլայ. արդ, երբէք Լուդովիկոս ԺԶ.ի կողմէ յանձնառութիւն մը առնուած չէր.

ամէն կողմ ցրուեցաւ և քիչ ատենէն Ֆրանսան և Եւրոպան ողողուեցաւ այդ տեղեկագրով: Վիճաբանութիւնը յետաձգուեցաւ 13ին, հակառակ Պիյօ Վարէնին, որ կ'ուզէր որ միաձայնութեամբ վճռուի դատաստանի ենթարկումը:

Եւ ահա այս պարագային սկսաւ մղուէր վերջին պայքարը Սահմանադիր Ժողովի գաղափարներուն և Քոնվանսիոնի գաղափարներուն միջև. ու այդ պայքարը անո՛ր համար մանաւանդ բուռն պիտի ըլլար, որովհետև թագաւորի մը կեանքը կամ մահը պիտի վճռուէր: Սահմանադիր Ժողովը իր գաղափարներովը ժողովրդավարական էր, իսկ զգացումներովը՝ միապետական: Այս պատճառաւ, մինչ ամբողջ պետութիւնը հանրապետութեան կը վերածէր, Լուդովիկոս ԺԶ.ի մասին գութի և յարգանքի բեկոր մը դեռ ունենալով, սակայն կը պահէր թագաւորութիւնը իր այն ստորոգելիներով, որ համաձայնուած էր տալ թագաւորութեան, աւատական միապետութեան դրութեան մէջ: Ժառանգականութիւն, գործադիր իշխանութիւն, օրէնսդիր մարմնի անդամակցութիւն և մասնաւորապէս անբռնաբարելիութիւն, ահա՛ ասոնք են այն առանձնաշնորհումները, որոնք նոր ժամանակի միապետութեանց մէջ կը սրբուին գահուն, և զորս առաջին Ժողովը ձգած էր իշխող գերդաստանին: Օրէնսդիր իշխանութեան և գործադիր իշխանութեան մասնակցութիւնը հանգամանքներ են, որ կարող են տարբերիլ իրենց սահմաններուն մէջ, և որոնք այնքան անհրաժեշտաբար չեն կազմեր ժամանակակից միապետութիւնը, որքան ժառանգականութիւնը և անբռնաբարելիութիւնը: Այս վերջին երկուքէն մին՝ կ'ապահովէ թագաւորութեան բնական և մշտնջենական փոխանցումը. երկրորդը՝ ամէն բռնաբարումէ զերծ կը կացուցանէ գահն, յանձին ամէն մէկ ժառանգորդի: Վերջապէս երկուքն ալ մշտնջենական բան մը կ'ընեն, ու չընդհատիր, և նաև՝ անմերձենալի բան մը՝ զոր ոչ մէկ պատիժով կարելի է պատժել: Դատապարտուած ըլլալով գործելու միմիայն նախարարներու միջոցով, որոնք պատասխանատու են իր արարքներուն, թագաւորութիւնը մերձենալի է միմիայն իր գործակալներով, և այս կերպով ծնունդ կ'առնէ կէտ մը, որով կարելի է հարուածել զայն, առանց քանդելու: Ահա այսպէս է աւատական միապետութիւնը, որ յաջորդաբար ձևափոխուած է ժամանակին հետ, և համերաշխած՝ ազատութեան այն աստիճանին հետ, որուն հասած են ժամանակակից ժողովուրդները:

Սակայն և այնպէս, Սահմանադիր Ժողովը տարուած էր սահման մը դնել այդ թագաւորական անբռնաբարելիութեան: Դէպ ի Վարէն փախուստը, սադրիչներուն ձեռնարկները, վերջ ի վերջոյ անոր մտածել տուին թէ նախարարական պատասխանատուութիւնը չէր կրնար երաշխաւոր ըլլալ ազգին հանդէպ, թագաւորութեան բոլոր մեղքերուն համար: Այս պատճառաւ, անիկա կանխատեսած էր այն պարագան, երբ միապետ մը թշնամի բանակի մը գլուխը պիտի անցնէր, պետութեան սահմանադրութեան վրայ յարձակելու համար, և կամ թէ, յայտնի եւ որոշ արարքով մը, չպիտի ընդդիմանար իր անուամբը եղած այս կարգի ձեռնարկի մը: Այս պարագային մէջ, Ժողովը յայտարարած էր թէ, թագաւորը երբեք արդարանալի չէ դրուժանութեան դէմ սովորական օրէնքներով, այլ՝ գահընկէց է. թագաւորը պէտք է զայն հրաժարած ըլլար: Այս էր ահա օրէնքին լեզուն, բառ առ բառ, զոր բանաձևած էր: Սահմանադրութիւնը ընդունելու առաջարկը, զոր Ժողովը ըրած էր թագաւորին, և այս վերջնոյն կողմէ այդ առաջարկին ընդունումը, այսինքն վերջնական հանգամանք մը տուած էին սահմանադրու-

թեան, և ժողովը հանդիսաւորապէս յանձն առած էր նուիրական բան մը համարել միապետներու անձը։

Այսօրինակ յանձնառութեան մը առջև է ահա որ կը գտնուէր Գօնվանսիօնը, Լուդովիկոս ԺԶ.ի բաղդը վըճռած միջոցին։ Բայց այս նոր սահմանադիրները, որոնք Գօնվանսիօնէն անուան տակ հաւաքուած էին, այլ ևս ինքզինքնին պարտաւոր չէին զգար յարգելու իրենց նախորդներուն յանձնառութիւնները, ինչպէս որ այս վերջինները ինքզինքնին պարտաւոր չէին համարած առանձնակալութեան նախկին հաստատութիւններուն կապուած զգալու։

Մտքերը ենթարկուած էին այնքան արագ յեղաշրջութեան մը, որ 1791 ի օրէնքները 1792.ի սկզբունքին այնչափ անհեթեթ կը թուէին, որչափ ԺԳ. դարու օրէնքները թուած էին 1789 ի սկզբունքին։ Այս պատճառաւ, Գօնվանսիօնի անդամները ինքզինքնին հարկադրուած չէին զգար օրէնքով մը, զոր անհեթեթ կը համարէին, և կը յայտարարէին թէ անոր դէմ կընդվզին, ինչպէս որ Համայն Դասակարգերը (Էթա Ժէնէրօ) ըմբոստացան երեք կարգերուն դէմ։

Այս պատճառներով, Նոյեմբեր 13ին վիճաբանութիւնները բացուելնուն պէս, երկու հակիմաստ առաջարկներ եղան։ Մէկ կողմը կը պնդէր թէ թագաւորը անձեռնմխելի է, միւս կողմը բացարձակապէս կը մերժէր այս հանգամանքը։ Գաղափարները այնքան փոխուած էին, որ Գօնվանսիօնի անդամներէն ո՛չ մին կը համարձակէր պաշտպանել անբռնաբարելիութեան սկզբունքը, իբր ինքնին լաւ բան մը, և անոնք իսկ, որոնք այդ սկզբունքին կողմնակից էին, կը պաշտպանէին զայն միայն իբր թագաւորական նախընթաց իրաւունք մը, զոր ունէր թագաւորը, և զոր կարելի չէր վիճելի համարել առանց ազգային յանձնառութիւն մը դրժած համարուելու։ Այսու հանդերձ, քիչ թուով երեսփոխաններ կային, որոնք թագաւորը կը պաշտպանէին՝ այս յանձնառութեան տեսակէտով, իսկ Ժիրոնտէնները զայն կը դատապարտէին նոյն իսկ այս տեսակէտով. թէև, վիճաբանութեանց չէին մասնակցեր, և ցուրտ կերպով մը կը դիտէին անբռնաբարելիութեան սակաւաթիւ կուսակիցներուն և անոր բազմաթիւ հակառակորդներուն միջև սկսուած վիճաբանութիւնը։

Անբռնաբարելիութեան հակառակորդները կ՚ըսէին. «Նախ և առաջ, որպէսզի յանձնառութիւն մը օրինաւոր ըլլայ, պէտք է որ յանձնառուն իրաւունք ունենայ յանձնառութիւն մը ընելու։ Արդ, ազգային գերիշխանութիւնը է, և ապագային համար հրաժարումներ չի կրնար ստանձնել։ Ազգը կրնայ գործադիր իշխանութիւնը զերծ պահել օրէնսդիր մարմինին հատուածներէն, անիկա քաղաքական նախազգուշութիւն մըն է, որուն չարժանիքը դիւրին է մակաբերել Սահմանադիր Ժողովի դրութեանը. բայց եթէ Սահմանադիր Ժողովը անբռնաբարելի հռչակած է թագաւորը՝ բոլոր հաստատեալ իշխանութեանց համար, չէր կրնար ինքզինքին համար ալ անբռնաբարելի հռչակել զայն, որովհետև անիկա երբէք չի կրնար հրաժարիլ ամէն բան ընելու և ամէն բան կարենալու իրաւունքէն. այս իրաւունքը կը կազմէ իր ամենակարողութիւնը, որ անփոխանցելի է. հետևաբար, կ՚ըսէին, ազգը չէր կրնար ո և է յանձնառութիւն առած ըլլալ Լուդովիկոս ԺԶ.ի հանդէպ, և կարելի չէ ազգին դէմ հանել յանձնառութիւն մը, զոր չէր կրնար առած ըլլալ։

«Երկրորդ, կ՚ըսէին, նոյն իսկ ենթադրելով որ կարելի ըլլար այդպիսի յանձնառութիւն մը ստանձնել, պէտք պիտի ըլլայ որ անիկա փոխադարձ ըլլայ. արդ, երբէք Լուդովիկոս ԺԶ.ի կողմէ յանձնառութիւն մը արուած չէր.

այն սահմանադրութիւնը՝ որուն վրայ յենուլ կ՚ուզէ հիմա, երբէք սիրով չընդունիր ինքը. միշտ բողոքեց անոր դէմ, և երբէք չդադրեցաւ անոր դէմ բողոքելէ, և միշտ աշխատեցաւ զայն քանդելու համար, ո՛չ միայն ներքին դաւաճանութիւններով, այլ նաև թշնամիներու զէնքերուն միջոցաւ։ Ուրեմն ի՞նչ իրաւունք ունի հիմա՝ անոր պաշտպանութեան դիմելու։

«Բայց ընդունինք պահ մը, որ այդ յանձնառութիւնը կարելի և փոխադարձ բան մըն է. բայց պէտք է դարձեալ, որ արժէք մը ունենալու համար անհեթեթ չըլլայ։ Ընդունինք թէ անբռնաբարելիութեան ենթակայ են այն բոլոր յայտնի արարքները, զորս նախարար մը կը կատարէ յանուն թագաւորին. այս կարգի ամէն գործերու համար նախարարական պատասխանատուութեան մէջ երաշխաւորութիւն մը կայ, և անբռնաբարելիութիւնը, այլ ևս անպատիժ մնալու հանգամանքը չըլլալով, կը դադրի անհեթեթ ըլլալէ։ Բայց բոլոր գաղտնի արարքներուն, ծածուկ մեքենայութիւններուն, թշնամիին հետ կատարուած հաղորդակցութեանց, վերջապէս՝ մատնութեանց համար կա՞յ նախարար մը, որ պատասխանատուութիւն ստանձնէ։ Եւ սակայն, այս յիշուած արարքները անպատիժ պիտի մնային, թէև ամէնէն աւելի ծանրակշիռ և յանցապարտ արարքներն են։ Ահա ա՛յս բանն է զոր անընդունելի կը համարինք, և պէտք է ընդունիլ թէ, թագաւորը, որ անբռնաբարելի է իր վարչական գործերուն համար, այլ ևս կը դադրի նոյն բանը ըլլալէ երբ կը կատարէ այնպիսի գաղտնի և ոճրապարտ արարքներ, որոնք հանրային անդորրութիւնը կը վրդովեն։ Օրինակի համար, թէև երեսփոխան մը իր օրէնսդիրի հանգամանքովը և դեսպան մը իր դիւանագիտական պաշտօններովը անբռնաբարելի է, ասոր հակառակ, նոյն այդ երեսփոխանը և դեսպանը կը դադրին նոյն բանը ըլլալէ իրենց անհատական կեանքին միւս արարքներուն մէջ։ Հետևաբար անբռնաբարելիութիւնը իր սահմանը ունի, և պարագաներ կան, ուր թագաւորին անձը կը դադրի յարձակումէ զերծ ըլլալէ։ Արդեօք ըսողներ պիտի ըլլա՞ն որ գահընկէցութիւնը արդէն պատիժ մըն է այն խաբեբայութեանց դէմ, որոնց համար պատասխանատու չէ թագաւոր մը. այսինքն թէ՝ իշխանութենէ զրկումը միայն պէտք է ըլլար միակ պատիժը, զոր տալու էր միապետին, այդ իշխանութիւնը այնքան անհեթեթօրէն չարաչար գործածած ըլլալուն համար։ Ժողովուրդը, որ մատնուած, օտարին սուրին յանձնուած և միանգամայն բոլոր պատուհասներուն ենթարկուած էր, պէ՞տք էր արդեօք գոհանար թագաւորին ըսելով՝ քաշուեցէ՛ք. բայց ասիկա խաբեբայական արդարութիւն մը միայն պիտի ըլլար, և ազգ մը չի կրնար այս կերպով զանցառու ըլլալ ինքզինքին դէմ, անպատիժ թողլով ոճիր մը, որ գործուած էր իր գոյութեան և ազատութեան դէմ։

«Պէտք է, կը յարէին նոյն այն հռետորները, արդարև պէտք է յայտնի պատիժ մը, որ նախընթաց օրէնքով մը սահմանուած ըլլայ, որպէս զի կարելի ըլլայ զայն ի գործ դնել յանցանքի մը պարագային. բայց մատնութեան դէմ սովորական պատիժներ չկա՞ն միթէ. այդ պատիժները նոյնը չե՞ն բոլոր օրինագրքերուն մէջ ալ. միապետը միթէ չէ՞ր գիտեր, ամէն ժամանակներու և ամէն տեղերու մէջ գոյութիւն ունեցող բարոյականով, թէ մատնութիւնը ոճիր մըն է. և բոլոր ժողովուրդներու օրէնսդրութիւններէն չէ՞ր գիտեր որ այս ոճիրը ամենասոսկալի պատիժներու ենթակայ է։ Բնական օրէնքէ մը դատ, պէտք է սակայն դատարան մը. բայց ահա՛ գերիշխան ազգը, որ իր մէջ կը միացնէ բոլոր իշխանութիւնները, թէ՛ դատելու

և թէ օրէնքներ կազմելու, խաղաղութիւն կնքելու և պատերազմ հռչակելու իշխանութիւնը. հոս է անիկա իր ամենազօրութեամբը, իր տիեզերականութեամբ, և չկայ ոեւէ հանգամանք, զոր անիկա չկարենայ լրացնել. այդ ազգը՝ Քոնվանսիոնն է, որուն ներկայացուցիչն է, անոր կողմէ ամէն բան ընելու լիազօրութեամբ, անկէ վրէժ լուծելու, զայն սահմանադրելու, և փրկելու իշխանութեամբ։

«Հետեւաբար, Քոնվանսիոնը ձեռնհաս է Լուդովիկոս ԺԶ.ը դատելու. անիկա բռնակալաչափ իշխանութիւն ունի. ամենէն անկախ դատարանն ունի, ամենէն բարձրը, զոր ամբաստանեալ մը երբէք կրցած ըլլայ ընտրել, և եթէ միապետութեան ուզածը կողմնակցութիւն կամ թշնամիին վարձկանն ըլլալ չէ, ուրիշ դատաւորներ ունենալ չի կրնար բաղձալ։ Բայց եթէ, սովորական դատարաններու մէջ, հանգամանքները կ՚անջատուին և կ՚արգիլուի որ ամբաստանութիւնն ընողներն իսկ պաշտպանեն զայն, ազգին Ընդհանուր Ժողովին մէջ որ ամէն շահերէ վեր կը կանգնի, ու ամէն անհատական շարժառիթներէ բարձր, նոյն զգուշաւորութիւնները այլ եւս անհրաժեշտ չեն։ Ազգը չի կրնար մոլորիլ, եւ այն երեսփոխանները, որոնք ազգը կը ներկայացնեն, անոր պէս անսխալական են և նոյն իշխանութիւնները ունին։

«Այս կերպով, կը շարունակէին անբռնաբարելիութեան հակառակորդները, 1791ին կնքուած յանձնառութիւնը չի կրնար կապել ազգային գերիշխանութիւնը, և անիկա փոխադարձ պայմաններու տակ կնքուած չըլլալով ու մանաւանդ՝ անհեթեթ նախադասութիւն մը պարունակելուն համար, որ է՝ մատնութիւնը անպատիժ թողուլ՝ բոլորովին ջնջուած պէտք է համարիլ, և Լուդովիկոս ԺԶ. կրնայ դատուիլ։ Գալով պատիժին, ամէն ատեն ծանօթ եղած է և բոլոր օրէնքներուն մէջ արձանագրուած է։ Գալով դատարանին, Քոնվանսիոնն ինքն է այդ դատարանը, ստացած՝ իր օրէնսդրական, գործադիր և դատական իրաւունքները։»

Բոլոր այս նկատումներով, հետեւորդները Յանձնախումբին հետ կը պահանջէին որ՝ Լուդովիկոս ԺԶ. դատուի, ազգային Քոնվանսիոնին մէջ, որ մասնաւոր պաշտօնատարներու ձեռամբ անոր վերագրուած յանցանքներէն ամբաստանագիր մը պատրաստուի, որ թագաւորը անձամբ ներկայանայ դատարան՝ պատասխան տալու համար, որ իրեն փաստաբաններ տրուին ինքզինքը պաշտպանելու համար, և վերջապէս, զայն լսելէ անմիջապէս յետոյ Քոնվանսիոնը անուանական քուէարկութեամբ անոր վճիռը արձակէ։

Անբռնաբարելիութեան պաշտպանները անպատասխանի թողած չէին այս պատճառաբանութիւններէն և ո՛չ մին, և հերքած էին իրենց հակառակորդներուն բոլոր տեսութիւնները. ասոնք կ՚ըսէին. —

«Պնդողներ կան թէ՝ Ազգը չի կրնար լքել իր վեհապետական իրաւունքները և ինքզինքին արգիլել իրաւունքը՝ պատժելու համար իր անձին իսկ դէմ գործուած արարք մը. պնդողներ կան, որ 1791ին վճռուած անբռնաբարելիութիւնը միայն օրէնսդիր մարմինը կը կապէր, և ո՛չ թէ ազգը։ Նախ և առաջ, եթէ ճիշդ է որ ազգային գերիշխանութիւնը չի կրնար լքել իր իրաւունքները և իր օրէնքները վերակազմելէ զրկուիլ, նոյնքան ճիշդ է որ անցեալին համար ո՛չ մէկ բան կրնայ ընել. այսինքն՝ անիկա անկարող է եղածը չեղած ընել. ազգային գերիշխանութիւնը չի կրնար արգիլել, որ իր կազմած օրէնքները արդիւնք մը ունենան, եւ իրեն ներածը՝ ներուած մնացած ըլլայ. ապագային համար կրնայ յայտարարել որ միապետները այլեւս անբռնաբարելի չեն,

բոլոր ազդեցութիւնը չգործեցին մինչեւ որ Ռոպէսփիէռի նմանողութեամբ՝ անոնք դարձան աւելի սոփերական, պայծառ և հռետորական։

Անիկա խօսեցաւ Մօրիսոնէն յետոյ, որ ամենաեռանդուն պաշտպան մըն էր անբռնաբարելիութեան և առանց անձնականութիւն գործածելու իր հակառակորդներուն դէմ, որովհետեւ անձնական ատելութիւններ զգալու դեռ ժամանակ չէր ունեցած. Նախ զայրացած թուեցաւ միայն Ժողովին գձձութեանց և վիճաբանութեան նրբախօսութեանց դէմ (Նոյեմբ. 13ի նիստը)։ «Ի՛նչ, ըսաւ անիկա, դուք, յանձնախումբը եւ անոր հակառակորդները տաժանելիօրէն ձեւակերպութիւններ կը փնտռէք դատելու համար նախկին թագաւորը։ Դուք կը ջանաք որ զայն քաղաքացի մը դարձնէք, զայն բարձրացնէք այդ աստիճանին իրեն դէմ գործադրելի օրէնքներ գտնելու համար։ Իսկ ես, ընդհակառակը, կ'ըսեմ որ թագաւորը քաղաքացի մը չէ, թէ թշնամիի մը պէս պէտք է դատուի, թէ մենք աւելի պէտք է անոր դէմ կռուինք՝ քան թէ զայն դատենք, եւ թէ անիկա Ֆրանսացիները իրարու միացնող պայմանագրութեան մէջ բան մը չըլլալով, դատավարութեան ձեւակերպութիւնները բնաւ չպիտի գտնենք քաղաքային օրէնքի մէջ, այլ՝ մարդկային իրաւանց օրէնքին մէջ...։»

Այսպէս ուրեմն, Սէն-Ժիւստ դատավարութեան մէջ արդարութեան խնդիր մը չէր գտներ, այլ կռուի հարց մը։ «Թագաւոր մը դատե՛լ քաղաքացիի մը պէս. այս բառը, կ'ըսէ, պիտի զարմացնէ իրենց պաշտօնը գտած սերունդները։ Դատելը, օրէնքը գործադրել է. օրէնք մը արդարութեան կապ մըն է. ի՞նչ արդարութեան կապ կայ արդեօք մարդկութեան և թագաւորներուն միջեւ։

«Միա՛յն թագաւորելը եղեռնագործ մըն է, բռնատիրութիւն մը՝ որ ո՛չ մէկ բանով կը քաւուի. ժողովուրդ մը յանցաւոր է անոր հանդուրժելուն և որուն դէմ իւրաքանչիւր մարդ բոլորովին անձնական իրաւունք մը ունի։ Անմեղօրէն կարելի չէ թագաւորել՝ առանց մեղաւոր ըլլալու. այդպիսի բանի մը խենդութիւնը շատ մեծ է։ Պէտք է այնպէս մը վարուիլ այդ բռնատիրութեան հետ, ինչպէս թագաւորները կը վարուին երբ իրենց ենթարկեալ իշխանութիւնը բռնատիրողներ ըլլան։ Քրոմուէլի յիշատակը չդատապարտեցի՞ն Զարլս Ա.ի իշխանութեան բռնատիրած ըլլալուն համար։ Եւ անշուշտ, մէկը աւելի բռնատիրող չէր քան թէ միւսը. որովհետեւ, երբ ժողովուրդ մը այնքան վատ է՝ որ թող կու տայ բռնաւորներուն իր վրայ տիրել. տիրապետութիւնը առաջին հանդիպողին իրաւունքն է, եւ անիկա աւելի նուիրական ու աւելի օրինաւոր չէ՝ ոչ մէկին և ոչ միւսին գլխուն վրայ։»

Ձեւակերպութեան խնդիրն անցնելով, Սէն-Ժիւստ այդ բանին մէջ ալ ուրիշ անկապակից սխալներ կը տեսնէ։ Դատավարութեան մը մէջ ձեւակերպութիւնները միայն կեղծաւորութիւն են. դատավարութեան ձեւը չէ որ ժողովուրդներուն ծանօթ բոլոր վրէժխնդրութիւնները արդարացուց. անիկա ուժի իրաւունքն է ուժին դէմ։

«Օր մը, կը գոչէ, պիտի զարմանան որ ԺԸ. դարուն մէջ Կեսարի ժամանակէն նուազ յառաջացած էինք. այն ատեն բռնաւորը զոհուեցաւ ծերակոյտին մէջ իսկ, առանց ո և է ձեւակերպութեան, դաշոյնի քսան երեք հարուածներ միայն առաւ, և առանց Հռոմի ազատութիւնը միայն իբր օրէնք ունենալու։ Իսկ այսօր, յարգանքով կը կատարենք դատավարութիւնը՝ ժողովուրդի մը արիւնը մանող մարդու մը, որ ոճիրը գործած պահուն բռնուեցաւ...։»




ԼՐԱԲԵՐ ՄՈՒՆԵՏԻԿԸ

Խնդիրը քննելով տարբեր տեսակէտէ մը, որ Լուդովիկոս ԺԶ.ի հետ կապ ունէր, Սէն-Ժիւստ իր յարձակի մտքերու գերագանց նրբութեան դէմ, որը կ՚ըսէ, կը փառաւէ մեծ գործերու: Լուդովիկոս ԺԶ.ի կեանքը ոչինչ է, այլ անոր դատաւորներուն մէջէն հանող գաղափարն է որ գիս կը մտահոգէ. Ինքզինքնուն համար իրենց իսկ առած չափն է որ իմ ուշադրութիւնս կը գրաւէ. «Այն մարդիկը որ Լուդովիկոսը պիտի դատեն, հանրապետութիւն մը ունին հաստատելիք և անոնք որ մեծ կարեւորութիւն կ՚ընծայեն թագաւորի մը արդար պատժին, երբեք հանրապետութիւն մը չպիտի հաստատեն: Տեղեկագրէն ի վեր տեսակ մը վարանում մէջէն ելած է: Իւրաքանչիւր ոք իր յատուկ տեսակէտներով կը մեղադրէ թագաւորին դատի ենթարկուիլը. ոմանք կարծես կը

վախնան որ իրենց քաղքութեան հետեւանքը պիտի կրեն, ոմանք հրաժարած չեն միապետութենէ. ոմանք կը վախնան առաքինութեան օրինակէ մը, որ մեծութեան կաղ մը պիտի ըլլար...։

«Մենք ամենքս գիտենք կ՚զգանք խստութեամբ, պիտի ըսեմ նոյն իսկ կատաղութեամբ. մենք միայն կը խորհինք ժողովուրդին կորովը և ազատութիւնը պաշտպանել, մինչ հոգին կ՚ամբաստանուի հասարակաց թշնամին, և թէ ամէնքը, կա՛մ ազատութեամբ լեցուն, կամ ոճիրի մէջ խառնուած՝ առաջին հարուածը տալէ առաջ իրարու կը նային։

«Քաղաքացինե՛ր, եթէ համեմատենք ժողովուրդը, 600 տարուան առաքինի կեանք մը անցընելէ ետք, եթէ Մեծն Բրիտանիա, Քրոմուէլի մահուընէ ետքը, ահա թագաւորներուն վերածնիլը՝ հակառակ իր կորովին, ինչպէ՞ս վախնալու են մեր մէջէն ազատութեան բարեկամ բարի քաղաքացիները, երբ կը տեսնան որ կայծը կը դողայ մեր ձեռքերուն մէջ և թէ ժողովուրդ մը, իր ազատութեան առաջին օրէն իսկ կը յարգէ իր շղթաներուն յիշատակը։ Ինչ հանրապետութիւն կ՚ուզէք հաստատել մեր ներքին պայքարներուն և մեր ընդհանուր ազատութեանց մէջ...։ Երբեք աչքէս չպիտի հեռացնեմ այս պարագան, որ այն ոգին, որով թագաւորը պիտի դատուի, նոյնն է որով պիտի հաստատուի նոյն ինքն հանրապետութիւնը...։ Այս դատավարութեան մէջ դրած ձեր փիլիսոփայութեան չափը պիտի ըլլայ նաև սահմանադրութեան մէջ ձեր ունեցած ազատութեան չափը։»

Սակայն Սէն-Ժիւսդէն նուազ մոլեռանդ խորհողներ կային, որոնք կը ջանային ուրիշ ճշգրիտ համեմատութեանց մէջ մտնել եւ կը ջանային ժողովը մղել իրեն ըսածը գնահատելու ուրիշ արդար տեսակէտէ մը։

«Տեսէք, ըսած էր Ռօզէ (15 Նոյեմբերին), թագաւորին ճշմարիտ կացութիւնը 1791ի Սահմանադրութեան մէջ։ Անիկա կեցած էր ազգային ներկայացուցչութեան դէմ, մրցելու համար անոր հետ։ Բնական չէ՞ր որ անիկա ջանար կարելի եղածին չափ մեծ չափով իր կորսնցուցած իշխանութենէն ձեռք անցընել։ Դուք չէ՞ք որ իրեն բացած էիք այդ մրցարան և զայն հոն կանչած էիք պայքարի համար օրէնսդիր իշխանութեան դէմ։ Էհ, լաւ, այդ երկրորդին մէջ, անիկա յաղթուեցաւ. անիկա մինակ է, զինաթափ և ընկճուած 25 միլիոն մարդոց ոտքերուն տակ և այդ 25 միլիոն մարդիկը վստահութիւն պիտի ունենան պարտուողը զոհելու։ Արդէն, յարեց Ռօզէ, դիտելու այս յատկանշական հանգամանքը, որով լեցուած են բոլոր մարդոց սիրտերը, գտնուած չէր Լուդովիկոս ԺԶ.ի սրտին մէջ, ուրիշ քան աշխարհի սէր մէկ վեհապետի։ 1789էն իր իշխանութեան մէկ մասին կորուսոր մէկ զոհողութիւնը չըրա՞ւ միթէ։ Անիկա չհրաժարեցա՞ւ իր իրաւունքներուն մէկ մասէն, զորս գործածել ինքզինքնուն ներուած էին իր նախորդները։ Գերութիւնը չջնջե՞ց իր երկիրներուն մէջ։ Իր դահլիճին մէջ չհրաւիրե՞ց իմաստասէր նախարարները, և նոյն իսկ այն փարձառական փիլիսոփաները, զորս հանրային քուէն իրեն կը մատնանշէր։ Անիկա չհրաւիրե՞ց Էդա-Ժէնէրօն և նորէն դատարաններուն չվերադարձո՞ւց իր իրաւունքներէն մաս մը։»

Ֆօռ, Սէն-Էնֆէրիէօրի երեսփոխան, ուրիշ յանդգնութիւն ցոյց տուած էր։ Յիշելով Լուդովիկոս ԺԶ.ի վարմունքը, համարձակած էր անոր յիշատակը արթնցնել։ «Ժողովուրդին կամքը, ըսած էր, կրնար պատժել Տիտոս մը, ինչպէս նաև Ներոն մը, և անիկա ոճիրներ պիտի վերագրէր անոնց, եթէ նոյն իսկ միայն Երուսաղէմի առջեւ գործուածները ըլլային։ Բայց ո՞ւր են այն ոճիրները, զորս կը վերագրէք Լուդովիկոս ԺԶ.ի. բոլոր ուշադրութեամբ հետեւեցայ

առաջ՝ դէմ կարդացուած վաւերաթուղթերուն, անոնց մէջ գտայ միայն սխալութիւնը մարդու մը, որ կը տարուի իրեն ընծայուած բոլոր յոյսերէն՝ իր նախկին իշխանութիւնը ձեռք ձգելու համար. և ես կը պնդեմ որ իրենց անկողինին մէջ մեռած բոլոր միապետները աւելի յանցաւոր էին քան թէ Լուդովիկոս ԺԶ.։ Բայց Լուդովիկոս ԺԲ.ն իսկ իր անձնական մէկ վէճին համար յիսուն հազար Ֆրանսացի զոհելով Իտալիոյ մէջ, հազար անգամ աւելի ոճրապարտ էր։ Անձնական գանձ, վէտօ, նախարարաց ընտրութիւն, կինը, ազգականները, մանկլաւիկներ, առհասարակ Բայէն (Լուդովիկոս ԺԶ.ը) հրապուրողները, և ինչ հրապուրողներ. վկայութեան կը կոչեմ Արիստիտէսը, Էպիքդէտը. թո՛ղ ինծի ըսեն, եթէ իրենց հաստատակամութիւնը պիտի դիմանա՞ր այսպիսի փորձութիւններու։ Բարձրացէք ուրեմն ազգային գերիշխանութեան ամբողջ մեծութեան. ըմբռնեցէ՛ք թէ այդպիսի զօրութիւն մը ինչքա՛ն հրաշալիք պիտի բովանդակէր։ Կանչեցէ՛ք Լուդովիկոս ԺԶ.ը, ո՛չ թէ իբր յանցաւոր մը, այլ իբր Ֆրանսացի մը և ըսէք իրեն. անոնք որ քեզ ժամանակաւ պատուած էին և իրենց թագաւորը կոչած, այսօր զքեզ գահընկէց կ'ընեն. դուն խոստացած էիր իրենց հայրը ըլլալ և չեղար ... իբր քաղաքացի քու ունենալիք առաքինութեամբդ զարմանէ՛ այն վարմունքը, զոր ունեցար իբր թագաւոր։ »

Մաքերու արտակարգ գերագրգռութեան մէջ, իւրաքանչիւր ոք մղուած էր խնդիրը նկատելու տարբեր տեսակէտներէ։ Ֆօշէ, այս սահմանադրական քահանան, որ 1789ին հռչակաւոր եղած էր, յեղափոխական քարոզութիւնները ամպիոնը տարած ըլլալուն համար, հարցուցած էր որ մարդկային ընկերութիւնը իրաւունք ունէ՞ր մահուան պատիժ տալու (13 Նոյեմբ. ի նիստին)։ «Մարդկային ընկերութիւնը, ըսած էր, իրաւունք ունի՞ մարդէ մը խլելու այն կեանքը, զոր ինքը չէր տուած անոր։ Անշուշտ, պէտք է որ ինքզինքը պաշտպանէ. բայց ճի՞շդ է որ այդ բանը միայն յանցաւորին մահուամբը կրնայ ըլլալ։ Եւ եթէ անիկա կրնայ ուրիշ միջոցներով, իրաւունք չունի՞ ղանոնք գործածելու։ Այս խնդրին մէջ, կ'աւելցնէր, աւելի քան ուրիշ խնդրի մը մէջ, այս ճշմարտութիւնը մանաւանդ գործադրելի է։ Ինչ, հանրային շահո՞ւ համար, կամ նորածին հանրապետութեան հաստատմա՞ն համար է որ պիտի զոհէք Լուդովիկոս ԺԶ.ը։ Բայց արդեօք իր բոլոր ընտանիքը պիտի մեռնի՞ այն նոյն հարուածէն, որով ինքն իսկ պիտի զարնուի։ Ժառանգականութեան դրութեան համեմատ թագաւոր մը անմիջապէս չի յաջորդեր ուրիշի մը։ Լուդովիկոս ԺԶ.ի մահուամբը ոչնչացած կ'ըլլա՞ք այն իրաւունքներէն, զորս ամբողջ ընտանիք մը կը կարծէ թէ ընդունած է բազմաթիւ դարերու սերնդականութեամբ։ Ուրեմն միայն մէկուն ջնջումը անօգուտ է. ընդհակառակը, ձգեցէք որ ընտանիքին ներկայ պետը ապրի, որպէս զի բոլոր միւններուն թագաւոր ըլլալը արգիլէ. ձգեցէք որ ապրի այն ատելութեամբ, զոր իր վարանումները և անզգամութիւնները կը ներշնչեն բոլոր ազնուականներուն. ձգեցէք որ ապրի իր ակարութեան համբաւովը, իր ապառածի ինկածութեամբը, և դուք նուազ վախնալու տեղ պիտի ունենաք իրմէն, քան ուրիշ ոեւէ մէկէ մը, թողէ՛ք որ այդ գահազուրկ թագաւորը թափառի ձեր հանրապետութեան ընդարձակ ծոցին մէջ, առանց այն մեծափառ թափօրին, որով շրջապատուած էր. ցոյց տուէ՛ք թէ որքա՛ն թագաւոր մը պզտիկ է, երբ ինքզինքին ձգուած է։ Խորունկ արհամարհանք մը յայտնեցէք իր նախորդ վիճակին հանդէպ, և այդ յիշատակը այլեւս վախնալիք բան մը չպիտի ըլլայ։ Մեծ դաս մը տուած պի-

տի ըլլաք մարդոց․ այդպէսով հանրա-
պետութեան և անոր ապահովութեան
և լուսաւորութեան համար աւելի բան
ըրած պիտի ըլլաք՝ քան թէ ձեզի չվե-
րաբերող արիւն մը թափելով։ Գալով
Լուդովիկոս ԺԶ․ի տղուն, յարեց՝ Փօշէ,
եթէ կրնայ մարդ դառնալ, մենք զայն
քաղաքացի մը կ'ընենք, ինչպէս Երի-
տասարդ Հաւասարութիւնը։ Անիկա պի-
տի պայքարի հանրապետութեան ի նը-
պաստ և չպիտի վախնանք որ ազատու-
թեան ոեւէ զինուոր երբէք իրեն օգնէ,
եթէ անիկա խենթութիւնը ունենար
հայրենիքի դաւաճան մը դառնալու։
Այսպէսով՝ ցուցնենք ժողովուրդներուն
թէ մենք բանէ մը չենք վախնար․ հրա-
ւիրենք զիրենք մեզի հետեւելու․ Թո՛ղ
ամենքը միացած եւրոպական համաժո-
ղով մը կազմեն, թո՛ղ հրաժարեցնեն ի-
րենց վեհապետները, թո՛ղ այդ նկուն
էակները ձգեն որ իրենց մթին կեանքը
քաշքշեն հանրապետութեանց մէջ, և
թո՛ղ նոյն իսկ անոնց պզտիկ թոշակներ
կապեն, որովհետև այդ էակները այն-
քան զուրկ են ոեւէ կարողութենէ, որ
նոյն իսկ պէտքը իրենց չպիտի սորվեց-
նէ կերած հացերնին շահիլ։ Բարբարոս
պատիժի մը ջնջումին մեծ օրինակը
տուէ՛ք այդպէսով։ Վերցուցէք արիւն
թափելու այդ գէշ միջոցը և մանաւանդ
ժողովուրդը բժշկեցէք արիւն թափելու
մարմաջէն։ Ջանացէք անոր մէջ ամո-
քելու այդ ծարաւը, զոր չարամիտ մար-
դիկ կ'ուզեն գրգռել, անով հանրապե-
տութիւնը խանգարելու համար։ Խոր-
հեցէ՛ք որ բարբարոս մարդիկ ձեզմէ կը
պահանջեն դեռ հարիւր յիսուն հազար
գլուխ, և անգամ մը որ իրենց ընծայէք
նախկին թագաւորին գլուխը, այլեւս
ո՛չ մէկը պիտի կրնաք մերժել։ Արգի-
լեցէ՛ք այն ոճիրները, որոնք երկար ա-
տեն պիտի յուզեն հանրապետութեան
խորքը, պիտի անպատուեն ազատու-
թիւնը, պիտի յապաղեցնեն անոր յա-
ռաջդիմութիւնները և պիտի վնասեն
աշխարհիս երջանկութեան փութացու-
մին։ »

Այս վիճաբանութիւնը տեւած էր Նոյեմբեր 13էն մինչև 30, և ընդհանուր վրդովմունք յառաջ բերած էր։ Անոնք, որոնց երևակայութիւնը բոլորովին չէր ընդգրկած իրաց նոր վիճակը եւ դեռ 1789էն յիշատակներ պահած էին միապետին բարութենէն, անոր հանդէպ տածուած սէրէն, չէին կրնար հասկնալ որ այդ թագաւորը յանկարծ բռնապետի փոխուած ըլլալով կառափնատի արժանացած ըլլայ։ Նոյն իսկ ի նկատի ունենալով իր յարաբերութիւնները օտար պետութեանց հետ, այս սխալը կը վերագրէին իր ակարութեանը, զինքը շրջապատողներուն, ժառանգական իշխանութեան մասին ունեցած այն անյաղթելի սիրոյն եւ նախատալի մահապատիժի մը գաղափարը զիրենք կ'ըմբոստացնէր։ Սակայն և այնպէս չէին համարձակեր յայտնապէս Լուդովիկոս ԺԶ․ը պաշտպանելու։

Վերահաս վտանգը, որուն ենթարկուած էինք Բրունսուիքեններու արշաւանքով, այն ընդհանուր կերպով տարածուած կարծիքը, թէ արքունիքը դաւաճանաբար պատճառ եղած էր մեր սահմանագլուխներու այս յարձակումին, այնպիսի զայրոյթ մը յառաջ բերած էին որ զմբաղդ միապետին վրայ կը ձգէին ամէն յանցանք, և այդ զգացումին դէմ դնել ոչ ոք կը համարձակէր։ Ընդհանուր կերպով մը կը դիմանային դիմադրելով անոնց, որոնք վրէժխնդրութիւններ կը պահանջէին․ զանոնք կը նկարագրէին իբր խռովութեանց գրգռիչներ, իբր Սեպտեմբերեաններ, որոնք կ'ուզէին Ֆրանսան ծածկել արիւնով եւ աւերակներով։ Առանց անուանապէս Լուդովիկոս ԺԶ․ը պաշտպանելու, չափաւորութիւն կ'ակնկալէին յաղթուած թշնամիներու համար․ իրաւ կը յանձնարարէին զգուշանալ կեղծաւոր կորովէ մը, ․ Հանրապետութիւնը մահապա-

տիմներու միջոցաւ պաշտպանել ձեռնարնելով, միմիայն կը ջանար զայն հաստատկեցնել սարսափով և կամ զայն կասկածելի դարձնել Եւրոպայի աչքին։

Ժիրոնտէնները դեռ խօսք առած չէին։ Աւելի կ՚ենթադրուէր, քան թէ կը հասկցուէր անոնց կարծիքը և Մօնդանեին, զանոնք ամբաստանելու առիթ ունենալու համար, կը պնդէր թէ անոնք կ՚ուզէին Լուդովիկոս ԺԶ.ը ազատել։ Այլ սակայն Ժիրոնտէնները վարանոտ էին այս խնդրին մէջ։ Մէկ կողմէ, մերժելով անբռնաբարելիութիւնը, եւ Լուդովիկոս ԺԶ.ը նկատելով իբր մեղսակից՝ օտար նուաճման մէջ, միւս կողմէն յուզուած էին մեծ դժբաղդութեան մը առջեւ և ամէն առթիւ տարուած ըլլալով դիմադրելու իրենց հակառակորդներուն բռնութեանը, չէին գիտեր թէ ինչ միջոցի դիմեն ու երկդիմի եւ սպառնական լռութիւն մը կը պահէին։

Ուրիշ խնդիր մը այդ միջոցին կը յուզէր միտքերը եւ նախորդ խնդրէն նուազ վրդովմունք չէր պատճառեր. անիկա ուտեստեղէններու խնդիրն էր, որ յեղափոխութեան ամէն շրջաններուն խռովութեանց մեծ շարժառիթ մը եղած էր։

Արդէն տեսանք թէ որքա՛ն մտահոգութիւն եւ նեղութիւն պատճառած էին՝ Գալոնի և Նէքէրի 1789ի առաջին օրերը։ Նոյն դժուարութիւնները, ա՛լ աւելի մեծցած, կը ներկայանային 1792ին վերջերը, ամենավտանգաւոր շարժումներու հետ։ Վաճառականութեան ազատութիւնը՝ ամէն ճիւղերու մէջ, որոնք ամենաանհրաժեշտ պիտոյքներուն չեն վերաբերիր, կրնայ շատ վնասել ճարտարագործութեան և հետզհետէ արգելել գործաւոր դասակարգերուն վրայ. բայց երբ անհրաժեշտ սնունդը, ցորենը կը պակսի, խռովութիւնը և անկարգութիւնը կը յաջորդեն անմիջապէս։ Այս պատճառաւ է որ նախկին տէրկանութիւնը ուտեստեղէններու հոգը դըրած էր իր իրաւասութեանց կարգին մէջ, իբր մէկը այն խնդիրներէն, որ ամենէն աւելի կը շահագրգռէր հանրային անդորրութիւնը։

Ցորենը սակաւ չէր 1792ին. բայց հունձքը ուշացած էր եղանակին բերմամբ, եւ առկէ զատ ցորենահարութիւնը յապաղած էր բազուկներու պակասութեան պատճառաւ։ Սակայն եւ այնպէս, սովին ամենամեծ պատճառը ուրիշ տեղ էր։ 1782ին, ինչպէս 1789ին, ապահովութեան պակասը, ճանբաներու վրայ թալլուելու վախը, և սակարկութեանց մէջ կրելիք նեղութիւնները արգելք կ՚ըլլային որ հողատէրերը բերեն իրենց արմտիքները։ Անմիջապէս ձայն բարձրացուցած էին թէ ցորենը կը գրաւեն։ Մանաւանդ վայրագած էին այն հարուստ հողատէրներուն դէմ, զորս ազնուական կը կոչէին, և որոնց միջեւ՝ շատ տարածուն հողային կալուածները, կ՚ըսէին թէ պէտք է բաժնուի։ Քանի կը բարկանային անոնց դէմ, այնքան անոնք քիչ կ՚երեւային շուկաներուն մէջ, և ա՛յնքան աւելի սովը կ՚աւելնար։ Թղթադրամներն ալ պատճառ եղան սովը յառաջ բերելու։ Շատ մը հողատէրներ, որոնք միայն դրամ դիզելու համար կը ծախէին, չէին ուզեր հաւաքել փոխանակման արժէք ունեցող թուղթ մը եւ կը նախընտրէին իրենց ցորենահատիկները պահել։ Ասկէ զատ, որովհետեւ ցորենը ամէն օր աւելի հազուագիւտ կը դառնար և թղթադրամները աւելի առատ, նիւթին և արժէքին մէջ անհամեմատութիւնը շարունակաբար աճած էր և սղութիւնը կ՚աւելնար հետզհետէ աւելի զգալի եղանակով մը։ Սովի ժամանակներու մէջ սովորաբար եղած ձեւով մը, նախապաշարութիւնը աւելնալով՝ վախու հետեւանքով, իւրաքանչիւր ոք կ՚ուզէր պաշար հաւաքել. ընտանիքները, թաղապետութիւնները, կառավարութիւնը՝ առաջին գնումներ

տի ըլլալ մարդոց. այդպէսով հանրապետութեան և անոր ապահովութեան և լուսաւորութեան համար աւելի բան ըրած պիտի ըլլաք՝ քան թէ ձեզի չվերաբերող արիւն մը թափելով: Գալով Լուդովիկոս ԺԶ.ի մահուն, յարեց Փօշէ, եթէ կրնայ մարդ դատել, մենք զայն քաղաքացի մը կ'ընենք, ինչպէս Երիտասարդ Հաւասարութիւնը: Անիկա պիտի պայքարի հանրապետութեան ի նըպաստ և չպիտի վարանինք որ ազատութեան ոեւէ զինուոր երբեք իրեն օգնէ, եթէ անիկա խենթութիւնը ունենար հայրենիքի դաւաճան մը դառնալու: Այսպէսով՝ ցուցնենք ժողովուրդներուն թէ մենք բանէ մը չենք վախնար. հրաւիրենք զիրենք մեզի հետեւելու. թո՛ղ ամենքը միացած եւրոպական համաժողով մը կազմեն, թո՛ղ հրաժարեցնեն իրենց վեհապետները, թո՛ղ այդ նկուն էակները ձգեն որ իրենց մէջին կեանքը քաշքշեն հանրապետութեանց մէջ, և թո՛ղ նոյն իսկ անոնց պզտիկ թոշակներ կապեն, որովհետեւ այդ էակները այնքան զուրկ են ոեւէ կարողութենէ, որ նոյն իսկ պէտքը իրենց չպիտի սորվեցնէ կերած հացերնին շահիլ: Բարբարոս պատիժի մը ջնջումին մեծ օրինակը տուէ՛ք այդպէսով: Վերցուցէք արիւն թափելու այդ գէշ միջոցը և մանաւանդ ժողովուրդը բժշկեցէք արիւն թափելու մարմաջէն: Ջանացէք անոր մէջ ամոքելու այդ ծարաւը, զոր չարամիտ մարդիկ կ'ուզեն գրգռել, անով հանրապետութիւնը խանգարելու համար: Խորհեցէ՛ք որ բարբարոս մարդիկ ձեզմէ կը պահանջեն դեռ հարիւր յիսուն հազար գլուխ, և անգամ մը որ իրենց ընծայէք նախկին թագաւորին գլուխը, այլեւս ո՛չ մէկը պիտի կրնաք մերժել: Արգիլեցէ՛ք այն ոճիրները, որոնք երկար ատեն պիտի յուզեն հանրապետութեան խորքը, պիտի անպատուեն ազատութիւնը, պիտի յապաղեցնեն անոր յառաջդիմութիւնները և պիտի վնասեն աշխարհիս երջանկութեան փութացումին: »

Այս վիճաբանութիւնը տեւած էր Նոյեմբեր 13էն մինչև 30, և ընդհանուր վրդովմունք յառաջ բերած էր: Անոնք, որոնց երեւակայութիւնը բոլորովին չէր ընդգրկած իրաց նոր վիճակը եւ դեռ 1789էն յիշատակներ պահած էին միապետին բարութենէն, անոր հանդէպ տածուած սէրէն, չէին կրնար հասկնալ որ այդ թագաւորը յանկարծ բռնապետի փոխուած ըլլալով կառափնատի արժանացած ըլլայ: Նոյն իսկ ի նկատի ունենալով իր յարաբերութիւնները օտար պետութեանց հետ, այս սխալը կը վերագրէին իր տկարութեանը, զինքը շըրջապատողներուն, ժառանգական իշխանութեան մասին ունեցած այն անյաղթելի սիրոյն եւ նախատալի մահապատիժի մը գաղափարը զիրենք կ'ըմբոստացնէր: Սակայն և այնպէս չէին համարձակեր յայտնապէս Լուդովիկոս ԺԶ.ը պաշտպանելու:

Վերահաս վտանգը, որուն ենթարկուած էինք Բրունսվիգեաններու արշաւանքով, այն ընդհանուր կերպով տարածուած կարծիքը, թէ արքունիքը դաւաճանապէս պատճառ եղած էր մեր սահմանագլուխներու այս յարձակումին, այնպիսի զայրոյթ մը յառաջ բերած էին որ դժբաղդ միապետին վրայ կը ձգէին ամէն յանցանք, և այդ զգացումին դէմ դնել ոչ ոք կը համարձակէր: Ընդհանուր կերպով մը կը գոհանային դիմադրելով անոնց, որոնք վրէժխնդրութիւններ կը պահանջէին. զանոնք կը նկարագրէին իբր խռովութեանց գրգռիչներ, իբր Սեպտեմբերեաններ, որոնք կ'ուզէին Ֆրանսան ծածկել արիւնով եւ աւերակներով: Առանց անուանապէս Լուդովիկոս ԺԶ.ը պաշտպանելու, չափաւորութիւն կ'ախնկալէին յաղթուած թշնամիներու համար. խրատ կը յանձնարարէին զգուշանալ կեղծաւոր կարծէ մը, որ հանրապետութիւնը մահապա-

տիմներու միջոցաւ պաշտպանել ձեւացը-նելով, միմիայն կը ջանար զայն հպա-տակեցնել սպառումով և կամ զայն կաս-կածելի դարձնել Եւրոպայի աչքին։

Ժիրոնտէնները դեռ խօսք առած չէին։ Աւելի կ'ենթադրուէր, քան թէ կը հաս-կըցուէր անոնց կարծիքը և Մօնդանեըն, զանոնք ամբաստանելու առիթ ունե-նալու համար, կը պնդէր թէ անոնք կ'ուզէին Լուդովիկոս ԺԶ.ը ազատել։ Այլ սակայն ժիրոնտէնները վարանոտ էին այս խնդրին մէջ։ Մէկ կողմէ, մերժելով անբռնաբարելիութիւնը, եւ Լուդովիկոս ԺԶ.ը նկատելով իբր մեղ-սակից՝ օտար նուաճման մէջ, միւս կող-մէն յուզուած էին մեծ դժբաղդութեան մը առջեւ և ամէն առթիւ տարուած ըլլալով դիմադրելու իրենց հակառա-կորդներուն բռնութեանը, չէին գիտեր թէ ինչ միջոցի դիմեն ու երկդիմի եւ սպառնական լռութիւն մը կը պահէին։

Ուրիշ խնդիր մը այդ միջոցին կը յուզէր միտքերը եւ նախորդ խնդրէն նուազ վրդովմունք չէր պատճառեր. անիկա ուտեստեղէններու խնդիրն էր, որ յեղափոխութեան ամէն շրջաններուն խռովութեանց մեծ շարժառիթ մը ե-ղած էր։

Արդէն տեսանք թէ որքա՛ն մտա-հոգութիւն եւ նեղութիւն պատճառած էին՝ Պայեիի և Նէքէրի 1789 ի առա-ջին օրերը։ Նոյն դժուարութիւնները, ա՛լ աւելի մեծցած, կը ներկայանային 1792 ին վերջերը, ամենավտանգաւոր շարժումներու հետ։ Վաճառականու-թեան դադարումը՝ ամէն ճիւղերու մէջ, որոնք ամենաանհրաժեշտ պիտոյքներուն չեն վերաբերիր, կրնայ շատ վնասել ճարտարագործութեան և հետզհետէ ազ-դել գործաւոր դասակարգերուն վրայ. բայց երբ անհրաժեշտ սնունդը, ցորենը կը պակսի, խռովութիւնը և անկար-գութիւնը կը յաջորդեն անմիջապէս։ Այս պատճառաւ է որ նախկին ատր-կանութիւնը ուտեստեղէններու հոգը դը-րած էր իր իրաւասութեանց կարգին մէջ, իբր մէկը այն խնդիրներէն, որ ամենէն աւելի կը շահագրգռէր հանրա-յին անդորրութիւնը։

Ցորենը սակաւ չէր 1792 ին. բայց հունձքը ուշացած էր եղանակին բեր-մամբ, եւ ասկէ զատ ցորենահարու-թիւնը յապաղած էր բազուկներու պա-կասութեան պատճառաւ։ Սակայն եւ այնպէս, սովին ամենամեծ պատճա-ռը ուրիշ տեղ էր։ 1782 ին, ինչպէս 1789 ին, ապահովութեան պակասը, ճամբաներու վրայ թալլուելու վախը, և սակարկութեանց մէջ կրելիք նեղու-թիւնները արգելք կ'ըլլային որ հողա-տէրերը բերեն իրենց արմտիքները։ Անմիջապէս ձայն բարձրացուցած էին թէ ցորենը կը գրաւեն։ Մանաւանդ զայրացած էին այն հարուստ հողատէր-ներուն դէմ, զորս ազնուական կը կո-չէին, և որոնց միջեւ՝ շատ տարածուն հողային կալուածները, կ'ըսէին թէ պէտք է բաժնուի։ Քանի կը բարկա-նային անոնց դէմ, այնքան անոնք քիչ կ'երեւային շուկաներուն մէջ, և ա՛յն-քան աւելի սովը կ'աւելնար։ Թղթա-դրամներն ալ պատճառ եղան սովը յա-ռաջ բերելու։ Շատ մը հողատէրներ, որոնք միայն դրամ դիզելու համար կը ծախէին, չէին ուզեր հաւաքել փոխա-նակման արժէք ունեցող թուղթ մը եւ կը նախընտրէին իրենց ցորենահատիկ-ները պահել։ Ասկէ զատ, որովհետեւ ցորենը ամէն օր աւելի հազուագիւտ կը դառնար և թղթադրամները աւելի ա-ռատ, նիւթին և արժէքին մէջ անհա-մեմատութիւնը շարունակաբար աճած էր և սղութիւնը կ'աւելնար հետզհետէ աւելի զգալի եղանակով մը։ Սովի ժա-մանակներու մէջ սովորաբար եղած ձեւով մը, նախազգուշութիւնը աւել-նալով՝ վախու հետեւանքով, իւրաքան-չիւր ոք կ'ուզէր պաշար հաւաքել. ըն-տանիքները, թաղապետութիւնները, կառավարութիւնը առաջին գնումներ

կ՚ընէին և այսպէսով ցորենահատիկը աւելի հազուագիւտ եւ աւելի սուղ կը դարձնէին։ Մանաւանդ Բարիզի մէջ, քաղաքապետութիւնը շատ ծանր եւ շատ հին գործածում մը կը գործէր։ Անիկա դրացի նահանգներէն ցորէն կը գնէր եւ զայն կը ծախէր իր գնէն վար գնով մը, ժողովուրդը ամոքելու և աւելի ժողովրդականութիւն շահելու կրկնակի դիտաւորութիւններով։ Այս բանէն սա յառաջ կուգար որ վաճառորդները, մըրցակցութենէն ճնշուելով կը քաշուէին շուկայէն, և գիւղերու ժողովուրդը՝ աժանութենէն հրապուրուած, կուգար կը գրաւէր ուտեստեղէնի մէկ մասը, զոր մեծ ծախքերով ոստիկանութիւնը հաւաքած էր։

Այս դէչ միջոցները, որոնք ներշնչուած էին տնտեսագիտական սխալ ըմբռնումներէ և ծայրայեղ ժողովրդականութեան փառասիրութենէ մը, կ՚ապահովէին վաճառականութիւնը, որ մանաւանդ Բարիզի համար անհրաժեշտ էր, ուր պէտք էր պզտիկ տարածութեան մը վրայ դիզել ոևէ տեղէ աւելի մեծ քանակութեամբ ցորենահատիկ։ Սակի պաշտօնները՝ ուրեմն՝ շատ բազմազան էին. նախ, հողատէրերու ստրատը, որոնք շուկաներէն կը հեռանային. թղթադրրամներէն յառաջ եկած սղութիւնը, պաշար հաւաքելու կարողութիւնը, և վերջապէս՝ Բարիզի քաղաքապետութեան միջամտութիւնը, որ կը խանգարէր վաճառականութիւնը իր զօրեղ մրցակցութեամբը։

Այսպիսի դժուարութիւններու մէջ դիւրին է գուշակել թէ ինչ դեր պէտք է կատարէին այն երկու դասակարգերու մարդիկը, որոնք Ֆրանսայի գերիշխանութիւնը իրենց մէջ կը բաժնէին։ Բուն միտքերը՝ որ մինչև այժմ ուզած էին ոևէ դիմադրութիւն հեռացնել, դիմադրողները փճացնելով, որոնք դաւադրութիւնները արգիլելու պատրաստկամ զինուած էին բոլոր անոնք, որոնց մասին կը կասկածէին թէ իրենց հակառակ են, այսպիսի միտքերը սակը վերցնելու համար մէկ միջոց միայն կ՚ըմբռնէին. — դարձեալ բռնի ուժը։ Անոնք կ՚ուզէին որ հողատէրերը իրենց անգործութենէն դուրս հանեն, զանոնք ստիպեն շուկայ երթալու, որ անոնք հոն հարկադրուած ըլլան իրենց ապրանքը ծախելու Համայնքային իշխանութենէն որոշուած գնով մը. կ՚ուզէին որ ցորենահատիկները իրենց տեղերէն չհեռանան և չերթան դիւրութեամբ «գրաւադներ» կոչուողներուն ամբարներուն մէջ։ Կը պահանջէին ուրեմն վաճառականներուն բանի ներկայութիւնը շուկաներուն մէջ. գիներու սակը կամ բարձրագոյն գինը, ամէն շրջաբերութեան արգելք. վերջապէս վաճառականներուն հնազանդութիւնը՝ իրենց փափաքներուն ո՛չ թէ շահու օրինական հրապոյրով, այլ պատիժներու և մահուան վախով։

Զարմանալի միտքերը՝ ընդհակառակը, կը փափաքէին որ թող տրուէր վաճառականութեան՝ իր ընթացքը վերստանալու, հողատէրերու վախերը փարատելով, զիրենք ազատ ձգելով որ իրենց գինները որոշեն, իրենց ներկայացնելով հրապոյրը՝ ազատ, ապահով և շահաւոր փոխանակութեան, թող տալով մէկ նահանգէն միւսը փոխադրութիւնը, որպէս զի կարենային օգնել այն նահանգներուն, որոնք ցորեն չէին արտադրեր։ Այսպէսով՝ կը մերժէին սակերը, ամէն կարգի արգելքները և տնտեսագէտներուն հետ կը պահանջէին ընդարձակ ազատութիւն ցորենահատիկներու վաճառականութեան՝ ամբողջ Ֆրանսայի մէջ։ Լոռ Պարզատուի, որ շատ հմուտ էր այս նիւթերուն մէջ, կ՚ուզէին որ օտար երկիրներու արտածումի տուրքի մը ենթարկուի, որ աւելնար երբ գիները բարձրանային. այսպէսով ցորենի արտածումը աւելի դժուար պիտի դառնար, երբ ցորենահատիկի ներկայութիւնը աւելի անհրաժեշտ դառնար։

էր կրօնական խնդիրներու նկատմամբ։ Երկու անդամներ Ժողովին կողմէ ղրկուելով Թուրվիլլի շրջակաները քանի մը հազար գիւղացիներու բազմութիւն մը գտան, որոնք բրիչներով եւ որսի հրացաններով զինուած էին և ստիպուած եղան, մահուան սպառնալիքին տակ [illegible] ստորագրելու։ Անոնք համակերպեցան, և Քոնվանսիօնը չընդունեց իրենց ըրածը։ Անիկա յայտարարեց որ, պէտք էր որ մեռնէին և ջնջել այն [illegible], զոր ստորագրած էին։ Զինուորական ուժ ղրկեցին հաւաքումները ցրուելու համար։ Այսպէս, կը սկսէին Արեւմտեան նահանգներու խռովութիւնները, թշուառութեան և կրօնքի համար ունեցած սիրոյն հետեւանքով։

Տանդօնի առաջարկին վրայ Ժողովը խաղաղեցնելու համար Արեւմտեան նահանգներու Ժողովուրդը յայտարարեց որ իր դիտաւորութիւնը կրօնքը ջնջել չէր, բայց յամառեցաւ մերժելու քահանայից գինը։ Այսպէս, դեռ անվրդով՝ փոթորիկներու մէջէն, Քոնվանսիոնի մեծամասնութիւնը կ'արտայայտուէր առեւտուրի ազատութեան ի նպաստ յեղափոխական գրութիւններու դէմ։ Ուրեմն, եթէ նկատողութեան առնուի թէ ինչ կ'անցնէր կը դառնար բանակին, պաշտօնատարութեանց, Լուդովիկոս ԺԶ.ի դատավարութեան մէջ, պիտի տեսնէին սարսափելի եւ եզական տեսարան մը։ Եռանդուն մարդիկը կը գերադրդուէին, և կ'ուզէին լրիւ վարձատրել բանակը և պաշտօնատարութիւնը, անոնցմէ հեռացնելու համար գողն և կաշառելի տարրերը. կ'ուզէին բռնի ուժ գործածել վաճառականութեան դէմ, անոր կասեցումը արգիլելու համար և սարսափելի վրէժխնդրութիւն ի գործ դնել ահաբեկելու համար բոլոր թշնամիները։ Չափաւոր մարդիկ, ընդհակառակը, կը վախնան բանակը կազմալուծել զայն վերանորոգելով, սպաննելէ վաճառականութիւնը բռնութիւն ընելով, միտքերը ըմբոստացնելէ, ահաբեկում ի գործ դնելով։ Բայց իրենց հակառակորդները կը դաւանէին նոյն իսկ այս երկիւղէն, և ա՛յլ աւելի կը մղուէին իրագործել՝ ամէն բան վերանորոգելու, ամէն ինչ բռնի կերպով կատարելու և ամէն ոք պատժելու ծրագիրը։ Ահա այս էր այն տեսարանը որ այդ միջոցին կը ներկայացնէր Քոնվանսիոնի ձախակողմը, ընդդէմ աջակողմին։

Նոյեմբեր 30ի նիստը շատ յուզումնալից եղած էր, որովհետեւ Ռօլան գանգատ կը յայտնէր քաղաքապետութեան թերութեանց դէմ, ու տեսակէտի խնդրին մէջ, և մէյ մըն ալ շնորհիւ այն տեղեկագրին, զոր պատրաստած էին Էօռ-է-Լուար ղրկուած պատուիրակները։

Երբ անգամ մը մարդ սկսի թուել դէչ բաները, ամէն բան միտքը կ'իյնայ։ Մէկ կողմէ՝ կը վերյիշէին կոտորածները, գրգռիչ հրատարակութիւնները, միւս կողմէ՝ անորոշութիւնները, թագաւորականութեան բներգները, ազգային վրէժխնդրութեան դէմ հանուած դանդաղութիւնները։

Մառա խօսած և ընդհանուր զզուանութիւն պատճառած էր։ Ռոպէսբիէռ ատեանին մէջ խօսք առաւ, և բաւ թէ եկած է առաջարկել բոլոր միւսներէն աւելի ազդեցիկ միջոց մը, համայնքային անդորրութիւնը վերահաստատելու համար, միջոց մը՝ որ Ժողովը անկողմնակալ ու համբերատար պիտի դարձնէ, որ իրար պիտի խառնէ ազգային Քոնվանսիոնի թշնամիները, որ բոլոր պարտաւագիրները լռել պիտի պարտաւորէ և զրպարտութեանց առաջքը պիտի առնէ. ամէն կողմէ պոռացին. — «Ո՞րն է այդ միջոցը, ո՞րն է։»

Ռոպէսբիէռ յարեց. «Վա՛ղն իսկ պէտք է դատապարտել Ֆրանսացիներուն թագաւորը՝ իր ոճիրներուն արժանի պատիժին, և այս կերպով բնաջինջ ընել դաւադիրներուն ապաւէնը։»



ՍԷՆ-ԺԻՒՍԴ

«Յաջորդ օրը պէտք է օրէնք մը քուէարկէք ուտեստեղէններու մասին. իսկ անոր յաջորդող օրն ալ դուք պիտի զետեղէք ազատ Սահմանադրութեան մը հիմունքը։»

Այս միաժամանակ յանդուգն եւ հնարամիտ եղանակը՝ փրկութեան միջոցները ծանուցանելու՝ այնպէս մը ընելով որ այդ միջոցը մէկ հատիկ է, ու այն ալ աջակողմին հակառակած մէկ բանն է, գրգռեց Ժիրոնտէնները եւ զանոնք հարկադրեց բացատրութիւն մը տալ դատավարութեան մեծ խնդրին մասին։ Պիւզօ ըսաւ. —

«Դուք կը խօսիք թագաւորին նըկատմամբ. խռովութեանց յանցանքը կ'իյնայ անո՛նց վրայ, որոնք կ'ուզեն անոր տեղը ուրիշ թագաւոր մը դնել։ Երբոր ժամանակը գայ անոր կացութեան մասին բացատրութիւն տալու, ես պիտի գիտնամ խօսիլ այն խստութեամբ, որուն արժանի հանդիսացած է. բայց հիմա խնդիրը այդ բանին վրայ չէ. յառաջ եկած խռովեալ վիճակին վրայ է



ՍԷՆ-ԺԻՒՍԴ

«Յաջորդ օրը պէտք է օրէնք մը քուէարկէք ուսուցիչներու մասին, իսկ անոր յաջորդող օրն ալ դուք պիտի զետեղէք ազատ Սահմանադրութեան մը հիմունքը:»

Այս միաժամանակ յանդուգն եւ հնարամիտ եղանակը՝ փրկութեան միջոցները ծանուցանելու՝ այնպէս մը ընելով որ այդ միջոցը մէկ հատիկ է, ու այն ալ աջակողմին հակառակ մէկ բանն է, գրգռեց Ժիրոնտէնները և զանոնք հարկադրեց բացատրութիւն մը տալ գաղափարութեան մեծ խնդրին մասին: Պիւզօ ըսաւ. —

«Դուք կը խօսիք թագաւորին նըկատմամբ. խռովութեանց յանցանքը կ'իյնայ անո՛նց վրայ, որոնք կ'ուզեն անոր տեղը ուրիշ թագաւոր մը դնել: Երբոր ժամանակը գայ անոր կացութեան մասին բացատրութիւն տալու, ես պիտի գիտնամ խօսիլ այն խստութեամբ, որուն արժանի հանդիսացած է. բայց հիմա խնդիրը այդ բանին վրայ չէ. յառաջ եկած խռովեալ վիճակին վրայ է

խնդիրը, խռովութիւններ կը ծագին անիշխանական կացութենէն. անիշխանութիւնը յառաջ կու գայ օրէնքներուն անգործադրելի մնալէն. այս վիճակը պիտի յարատեւէ, այնքան ատեն որ Քօնվանսիօնը բան մը չընէ կարգ կանոնը ապահովելու համար։»

Պիւզոյէն վերջ անմիջապէս խօսք կ՚առնէ Լըժանտր եւ կը հրաւիրէ իր պաշտօնակիցները, որ անձնականութիւնները մէկ կողմ թողուն ու զբաղին միմիայն հանրային խնդրով և այն դըրգրութիւններով, որոնք կը կատարուին թագաւորը փրկելու համար, և որոնք վերջ պիտի գտնեն, երբ այլ եւս գոյութիւն չունենայ թագաւորը։ Այս պատճառով առաջարկեց Ժողովին՝ վճռել որ դատավարութեան շուրջ կազմուած կարծիքները դիւանին յանձնուին, տպուին, բոլոր անդամներուն բաժնուին, և այնուհետեւ որոշել թէ՝ Լուդովիկոս ԺԶ. պէ՞տք է դատուի, առանց երկար բարակ ճառախօսութիւններով ժամանակ կորսնցնելու։

Ժան Պօն Սէնդ Անտրէ գոչեց որ, նոյն իսկ այս նախապատրաստական աշխատութիւնները աւելորդ են, և թէ հարկ է անմիջապէս արձակել վճիռը և պատիժին ձեւը։ Վերջ ի վերջոյ Քօնվանսիօնը ընդունեց Լըժանտրի առաջարկը, և որոշեց բոլոր ճառերը տպել. խնդրոյն վճարանութիւնը յետաձգուեցաւ Դեկտեմբեր 3 ին։

Երբ հասաւ Դեկտ. 3ը, ամէն կողմէ պահանջեցին խնդիրը ձեռք առնել, ամբաստանագիրը խմբագրել, և որոշել այն ձեւերը, որոնց համեմատ տեղի պիտի ունենար դատավարութիւնը. Ռօպէսպիէռ խօսք ուզեց, և թէև որոշուած էր բոլոր կարծիքները տպել ու չի կարդալ, ամբիոն յաջողեցաւ խօսք առնել, որովհետեւ կ՚ուզէր խօսիլ ո՛չ թէ դատավարութեան վրայ, այլ նոյն ինքն անոր հակառակ, և առանց դատավարութեան կ՚ուզէր որ դատապարտութիւն մը ըլլայ։

Ռօպէսպիէռ բացատրեց՝ թէ դատ մը բանալը կը նշանակէ խորհրդակցիլ. թէ՝ թող տալ որ խորհրդակցութիւն տեղի ունենայ, կը նշանակէ կասկածիլ և նոյն իսկ ամբաստանեալին նպաստաւոր լուծում մը կ՚ենթադրէ։ Արդ, Լուդովիկոս ԺԶ. ի ոճիրը կասկածի ենթարկելը կը նշանակէ ամբաստանել Բարիզցիները, դաշնակիցները, վերջապէս այն ամէն հայրենասէրները, որոնք Օգոստոս 10 ի յեղափոխութիւնը յառաջ բերին. ասիկա կը նշանակէ անպարտ համարել Լուդովիկոս ԺԶ.ը, ազնուականները, օտար տէրութիւնները և անոնց յայտարարութիւնները. մէկ բառով, ըսաւ, ասիկա կը նշանակէ թագաւորութիւնը անմեղ և հանրապետութիւնը յանցապարտ հռչակել։ Ռօպէսպիէռ շարունակեց. —

«Նայեցէ՛ք թէ ազատութեան թշնամիները ինչպէ՛ս յանդուգն դարձած են յորմէհետէ այդ կասկածը մէջտեղ հանած էք. անցեալ Օգոստոսին, թագաւորին կուսակիցները ինքզինքնին կը ծածկէին. ով որ համարձակէր անոր գովեստ հիւսել, իբր դաւաճան կը պատժուէր. բայց այսօր անոնք գլուխ բարձրացուցած են անպատիժ կերպով. այսօր, լրբենի գրութիւնները ողողած են Բարիզն ու գաւառները. զինեալ մարդիկ, որոնք առանց ձեր գիտնալուն, և օրէնքի հակառակ այս պատերուն տակ կանչուած են, խռովարարական աղաղակներով կը թնդացնեն այս քաղաքը և կը պահանջեն որ Լուդովիկոս ԺԶ. անպատիժ մնայ։ Ձեզի այլ եւս ուրիշ բան չի մնար ընելիք, այլ բանալ այս շրջափակը անոնց առջեւ, որոնք արդէն կը անձկան զայն պաշտպանել պատուով։ Աւելին կայ. այսօր՝ Լուդովիկոս ԺԶ. Ժողովուրդի պատգամաւորներուն մէջ պաշտպաններ ունի. անոր թեր ու դէմ կը խօսին. ասկէ երկու ամիս առաջ, ո՞վ կրնար կասկածիլ այսանկ, որ խնդիր պիտի ըլլար անոր անբռնաբարելիութիւնը։ Բայց, յորմէհետէ քաղաքացի Բէդիօն իբր լուրջ խնդիր մը մէջտեղ հանեց աս հարցը՝ թէ

կարելի՞ էր Թագաւորը դատել, մինչդեռ այդ խնդիրը առանձինն պէտք էր նկատի առնել, Սահմանադիր Ժողովի վարդապետութիւնները կրկին երեւան ելան հոս։ Ի՞նչ ըսիր, ի՞նչ նախատինք. Ֆրանսացի ժողովուրդին բեմը թնդաց Լուդովիկոս ԺԶ.ի ներբողականովը. մենք լսեցինք բռնապետին առաքինութիւնները եւ բարիքները գովաբանողները։ Մինչ մենք մեծագոյն դժուարութիւնը կրեցինք լաւագոյն քաղաքացիները ազատելու հապճեպ որոշումներու պատճառելիք անարդարութենէն, բռնապետին դատը առանձինն այնքա՛ն նուիրական դարձեր է, որ այլեւս կարելի չէ, կ՚ըսեն, ո՛չ երկար բարակ եւ ոչ ազատօրէն վիճաբանել անոր վրայ։ Եթէ հաւատ ընծայենք իր ջատագովներուն, դատավարութիւնը պիտի տեւէ քանի մը ամիս, եւ պիտի հասնի գարունը, որ ատեն բռնապետները ընդհանուր յարձակում մը պիտի գործեն մեր վրայ. եւ տեսէք թէ ի՛նչ լայն ասպարէզ մը բացուած է դաւադիրներուն առջեւ. տեսէք թէ խառնակիչներուն եւ ազնուականներուն ի՛նչ աղէկ նիւթ կը մատակարարուի։

«Արդա՛ր երկինք, բռնապետութեան վայրագ խուժանները կը պատրաստուին անգամ մըն ալ պատառել մեր հայրենիքին սիրտը յանուն Լուդովիկոս ԺԶ.ի, որ տակաւին կը պայքարի մեզի դէմ, իր բանտին խորէն, եւ տակաւին կասկածողներ կան որ յանցաւո՞ր է թէ ոչ, կամ՝ պէ՞տք է թշնամի նկատել զայն, թէ՝ ոչ։ Հարցնողներ կան որ ի՞նչ օրէնքով կարելի է դատապարտել զայն. Սահմանադրութեան կոչում կ՚ընեն անոր ի նպաստ։ Սահմանադրութիւնը կ՚արգիլէր սակայն այն բանը՝ զոր ըրիք. եթէ Լուդովիկոս ԺԶ. պէտք էր միայն գահընկէցութեամբ պատժել, դուք չէիք կրնար այդ վճիռը արձակել, առանց իր դատը քննած ըլլալու. իրաւունք չունէիք բնաւ զայն բանտը պահելու. յանիկա իրաւունք ունի վնասուց հատուցում եւ ազատ արձակում պահանջելու. Սահմանադրութիւնը կը դատապարտէ զձեզ. գացէ՛ք Լուդովիկոսին ոտքը ինկէք եւ գթութիւն հայցեցէք։»

Այս կրակոտ ճառախօսութիւնները թէեւ Սէն-Ժիւստի բառերէն աւելի նոր բան մը չէին պարունակեր, Ժողովին վրայ խորունկ տպաւորութիւն մը գործեցին, եւ Ժողովը կ՚ուզէր անմիջապէս վճիռ արձակել։ Ռոպէսպիէռ պահանջած էր որ անմիջապէս Լուդովիկոս ԺԶ. անմիջապէս դատուի. սակայն եւ այնպէս մէկ քանի երեսփոխաններ ու Բէզիոն պնդեցին որ դատավարութեան եղանակը որոշել առաջ պէտք է, առնուազն, վճռել թէ դատի պիտի ենթարկուի անիկա, որովհետեւ, կ՚ըսէին, ասիկա նախապատրաստական անհրաժեշտ միջոց մըն է, որքան ալ ուզուի փութացնել դատավարութիւնը։

Ռոպէսպիէռ կ՚ուզէ նորէն խօսք առնել, եւ կը թուի պահանջել նոյն իսկ, բայց իր լրութիւնը զայրոյթ կը պատճառէ, եւ զինքը կ՚արգիլեն խօսելէ։ Վերջ ի վերջոյ, Ժողովը սա որոշումը կու տայ. «Ազգային Քոնվանսիոնը կը յայտարարէ թէ ինքը պիտի դատէ Լուդովիկոս ԺԶ.ը» (Դեկտ. 3ի նիստ)։

Դեկտեմբեր 4ին, վիճաբանութեան կը դնեն դատավարութեան ձեւերը. Պիւզօ, որ շատ լսած էր թագաւորականութեան մասին խօսք ըլլալը, խօսք կ՚ուզէ առաջարկ մը ընելու համար, եւ բառ, ամէն կասկած փարատելու համար, մահու պատիժ կը պահանջեմ ընդդէմ բոլոր անոնց, որոնք Ֆրանսայի մէջ պիտի առաջարկէին թագաւորութեան վերահաստատում մը։ Ասոնք միջոցներ են, զորս յաճախ ձեռք կ՚առնեն կուսակցութիւնները, ապացուցանելու համար որ անկարող են այն բանին, որով կ՚ամբաստանեն զիրենք։

Բազմաթիւ անձեր ծափահարեցին այս անօգուտ առաջարկը, բայց Մօնթան-

եանները, որոնք ըստ իրենց դրութեան, պէտք չէր որ արգիլէին այդ բանը, գայրոյթով կը հակառակէին, և Պաշիա անոր դէմ մաքառիլ ուզեց. ամէն կողմէ՝ բռնէ՛, բռնէ՛ կը պոռան։ Ֆիլիպօ, միանալով Պաշիային, կ՚առաջարկէ միմիայն Լուդովիկոս ԺԶ.ով զբաղիլ, եւ մշտնջենական նիստ մը գումարել, մինչեւ որ անոր դատավարութիւնը վերջանայ։ Այն ատեն հարց եղաւ թէ՝ ինչ չափ էր այդ որ կը մղէր ընդդիմադիրները՝ մերժել Պիւզոյի առաջարկը, որովհետեւ մէկը չկայ որ կարենայ աաղել թագաւորութեան անցնիլը։ Լըժէօն պատասխանեց թէ ասիկա կը նշանակէ վերստին խնդիր ընել այն բանը՝ որ վճռուած էր արդէն, թագաւորութիւնը բնաջնջել ընելով։ «Բայց, ըսաւ, Բրուպէլ, պէտք է պատմական որոմնագրութիւն մը ունենալ թագաւորութեան բնաջնջումի հրամանագրին. ուրեմն, արդէն իսկ որոշուած բան մը խնդրոյ առարկայ ընել չի նշանակեր։»

Մէրլէն, աւելի անճարակ քան իր նախորդները, բարեփոխում մը կ՚ուզէ ընել և կ՚առաջարկէ բացատրութիւն մը դնել մահու պատիժին գործադրութեան մէջ, այն պարագային՝ որ թագաւորութիւնը վերահաստատելու առաջարկը ընէին տարրական ժողովներու մէջ։ Այս խօսքին վրայ, ամէն կողմէ աղաղակներ կը բարձրանան. «Հիմա՛ դաւանիքը պարզուեցաւ, ըսին, թագաւոր մը կ՚ուզեն, բայց պայմանաւ որ տարրական ժողովներէն եկած ըլլայ, այսինքն այն ժողովներէն, ուրկէ եկած են Մարա, Ռօպէսպիէռ և Տանդօն։» Մէրլէն ջանաց ինքզինքը արդարացնել, ըսելով թէ ինքը ուզեց յարգանք մատուցանել ժողովրդային վեհապետութեան։ Զինքը ստիպեցին լռել, արքայական անուանելով զայն, և առաջարկեցին ի կարգ հրաւիրել զայն։

Այն ատեն, Կուտոն, դէչ տրամադրութեամբ մը, զոր ամենէն պզտիկը մարդիկն իսկ երբեմն կը դնեն բարկացոտ վիճաբանութեան մը մէջ, պնդեց որ պէտք է յարգել կարծիքի ազատութիւնը, որուն կը պարտինք, ըսաւ, կարեւոր գաղափար մը երեւան հանած ըլլալնիս, և որ մեծ մեքենայութեան մը բանալին է։ «Ժողովը, ըսաւ, պէտք չէ ցաւ զգայ այս բարեփոխումը լսելուն համար, որ իրեն ցոյց կուտայ թէ նոր բռնակալութիւն մը պիտի յաջորդէ քանդուած բռնապետութեան, և պէտք է շնորհակալ ըլլալ Մէրլէնին, փոխանակ զայն ի կարգ հրաւիրելու։»

Բողոքողներու պոռթկում մը ծածկեց Կուտոնի ձայնը. Պաշիա, Մէրլէն, Ռօպէսպիէռ այս զրպարտութեան դէմ աղաղակեցին, և ճիշդ է որ ժողովրդավար թագաւոր մը գահընկէց թագաւորին տեղը դնելու մեղադրանքը այնքան անհեթեթ էր, որքան Ժիրօնտէններուն ուղղուած մեղադրանքը՝ դաշնակցականութեան մասին։ Վերջ ի վերջոյ, Ժողովը մահու պատիժ վճռեց ընդդէմ ամէն մէկուն, որ պիտի ուզէր Ֆրանսայի մէջ թագաւորութիւն հաստատել, ինչ անուան տակ որ ալ ըլլայ։

Կրկին խնդիր կ՚ըլլայ դատավարութեան ձեւերը և՛ մշտատեւ նիստ գումարելու առաջարկը։ Ռօպէսպիէռ նորէն կը պահանջէ որ վճիռ անմիջապէս արձակուի։ Բէդիոն, որ սակայն յաղթական էր մեծամասնութեան կռթնած ըլլալով, որոշել կուտայ որ նիստը մշտատեւ չըլլայ, և ոչ ալ վճիռը՝ անմիջական, այլ կ՚որոշուի որ Ժողովը ամէն օր զբաղի այդ խնդրով, և ամէն գործ դադրի ժամը 11էն մինչեւ իրիկուան ժամը 6։

Յաջորդ օրերու միջոցին կարդացին այն վաւերաթուղթերը, զորս գտած էին Լաբորդի մօտ, և ուրիշ վաւերաթուղթեր, զորս դեռ նոր երեւան հանած էին պալատին գաղտնի դարանին մէջէն, զոր թագաւորը շինել տուած էր պատին թանձրութեամբը։ Այդ դարանին դուռը

երկաթեայ էր, և այդ իսկ պատճառաւ այնուհետեւ կոչուեցաւ երկաթեայ դարակը: Այն գործաւորը՝ որ զայն շինած էր, մատնեց Ռօլանին, որ իրողութիւնը ճշդելու փութկոտութեանը մէջ, անխոհեմութիւնն ունեցաւ յանկարծակիօրէն հոն երթալու, առանց Ժողովէն վկաներ առնելու հետը, և այս պատճառաւ իր թշնամիները յետոյ ըսին թէ, անիկա թուղթերուն մէկ մասը վերցուցած էր:

Ռօլան երկաթեայ դարակին մէջէն գտաւ բոլոր այն վաւերաթուղթերը, որոնք կապ ունէին պալատին և դաւադիրներուն հաղորդակցութեան հետ, ինչպէս նաեւ Ժողովի զանազան անդամներուն հետ կատարուած թղթակցութիւնները: Միրապոյի գործառնութիւնները հասկցուեցան այդ թուղթերէն, և մեծ ըմբաստացին յիշատակը պիտի անպատուուէր, երբ, իր եռանդուն հիացողին՝ Մանուէլի պահանջին վրայ, Ժողովի հարցաքննիչ մասնախումբին պաշտօն տուին այդ վաւերաթուղթերուն մասին լիակատար քննութիւն մը կատարել: Միրապոյի դէմ այս յայտնութիւնը երեւան ելաւ Դեկտեմբեր 5 ի նատին. ուզեցին անմիջապէս խորտակել Միրապոյի կիսարձանը, և հրամայել որ անոր աճիւնները վերցուին Բանթէօնէն, բայց այդ օրը բաւականացան կիսանդրիին վրայ միայն քօղ մը նետելով:

Յետոյ յանձնաժողով մը անուանեցին, այդ վաւերաթուղթերուն համաձայն կազմելու համար ամբաստանագիր մը, Լուդովիկոս ԺԶ.ի վերագրուած արարքներուն մասին: Անգամ մը որ այս ամբաստանագիրը խմբագրուէր, Ժողովին կողմէ պիտի վաւերացուէր. յետոյ Լուդովիկոս ԺԶ. անձամբ պիտի ներկայանար Քօնվանսիօնի ատեանին առջեւ, և պիտի հարցաքննուէր ամբաստանագրին պարունակած ամէն մէկ խնդրին մասին: Այդ հարցաքննութենէն յետոյ իրեն երկու օր պայմանաժամ պիտի տային ինքզինքը պաշտպանելու համար, և պաշտպանողականին յաջորդ օրն իսկ վճիռը պիտի արձակուէր անուանական քուէարկութեամբ: Գործադիր իշխանութեան պաշտօն տրուեցաւ ձեռք առնել բոլոր անհրաժեշտ միջոցները, հանրային անդորրութիւնը ապահովելու համար այն պահուն, ուր թագաւորը բանտէն Ժողովին պիտի երթար: Այս որոշումները տրուեցան Դեկտեմբեր 9 ի նատին:

Դեկտեմբեր 10 ին ամբաստանագիրը ներկայացուեցաւ Ժողովին, և որոշուեցաւ որ յաջորդ օրն իսկ Լուդովիկոս ԺԶ. դատի քաշուի:

Ուրեմն այս դժբաղդ թագաւորը պիտի դատուէր Ազգային Քօնվանսիօնին առջեւ, և հոն պիտի հարցաքննուէր իր թագաւորութեան բոլոր արարքներուն մասին: Դատավարութեան և Քօնվանսիօնի առջեւ ելլելու լուրը հասած էր մինչեւ Թէմփլին, շնորհիւ թղթակցութեան այն գաղտնի միջոցներուն, զորս հաստատած էր արտաքին աշխարհին հետ. Քլէրի դողդողալով այս լուրը հաղորդած էր դժբաղդ ընտանիքին: Չհամարձակելով ուղղակի թագաւորին տալ այդ տեղեկութիւնը, զայն հաղորդեց Տիկին Էլիզապէթին, և անկէ զատ անոր իմացուց թէ Համայնքային Խորհուրդը որոշած էր դատավարութեան միջոցին, բաժնել Լուդովիկոս ԺԶ.ն իր ընտանիքէն: Տիկին Էլիզապէթի հետ կարգադրութիւն մը ըրաւ, որպէս զի կարելի ըլլայ թղթակցիլ այդ բաժանման միջոցին. ըստ այդ կարգադրութեան, Քլէրի, որ թագաւորին քովը մնալու սահմանուած էր, թաշկինակ մը պիտի զրկէր իշխանուհիներուն, այն պարագային որ Լուդովիկոս ԺԶ. հիւանդանար: Ահաւասիկ թէ ամենը ամենը ինչ բան իրարու իմաց տալ կը յուսային դժբաղդ բանտարկեալները: Թագաւորը իր քրոջմէն իմացաւ թէ ի մօտոյ դատի պիտի քաշուի, և թէ այդ միջոցին պիտի զատեն զինքը իր ընտանիքէն: Այս լուրը կատարեալ համակերպութեամբ մը

ընդունեց և պատրաստուեցաւ կորովի կերպով մը կրել այս ցաւագին տեսարանը։

Համայնքային Խորհուրդը որոշած էր որ Դեկտեմբեր 11 ի առաւօտէն սկսեալ բոլոր վարչական մարմինները նիստ գումարեն, որ բոլոր մասնաճիւղերը զինուին, ամէն հասարակաց վայրերու, դրամատուններու, մթերանոցներու ևն. պահակազօրքերէն իւրաքանչիւրին վրայ 200ական հոգի աւելցուի, որ ստուարաթիւ պահեստի զինուորներ զետեղուին զանազան կէտերու վրայ, միասին ունենալով թնդանօթներ, եւ թէ ընտրեալ պահակազօրք մը ընկերանայ կառքին։

Դեկտեմբեր 11ի առաւօտէն սկսեալ, ընդհանուր թմբկահարութիւն մը Բարիզի մէջ ծանոյց այս այնքան տխուր և նոր տեսարանը։ Բազմաթիւ զինուորներ շրջապատած էին Դամբլը, և զէնքերուն ու ձիերուն աղմուկը մինչեւ բանտարկեալները կը հասնէր, բայց անոնք այնպէս կը կեղծէին թէ, այս գրգռման պատճառը չեն գիտեր։ Առաւօտեան ժամը 9 ին, ըստ սովորութեան ընտանիքը հաւաքուեցաւ թագաւորին սենեակը, հոն նախաճաշելու համար։ Քաղաքապահ զօրաց սպաները, առաւել քան երբէք արթուն, իրենց ներկայութեամբը արգելք կ'ըլլային ամենապզտիկ սրտազեղութեանը։ Վերջապէս, զանոնք իրարմէ բաժնեցին. ի զուր թագաւորը խնդրեց որ քանի մը վայրկեան ալ իր զաւակը քովը ձգեն։ Հակառակ իր աղաչանքներուն, երիտասարդ իշխանը առին քովէն և իրր երկու ժամ առանձին մնաց։

Այն ատեն, Բարիզի քաղաքապետը եւ ընդհանուր դատախազը եկան և անոր հաղորդեցին Գօնվանսիոնի վճիռը, որով դատի կը կանչուէր Լուի Գաբէ անուան տակ։ Թագաւորը պատասխանեց. «Գաբէն իմ նախահայրերէս մէկուն անունն է, իմ անունս չէ։»

Յետոյ ոտքի ելլելով գնաց դէպ ի քաղաքապետին կառքը, որ իրեն կըսպասէր։ Վեց հարիւր ընտրեալ պահակներ կառքը շրջապատած էին. առջեւէն կ'երթային երեք թնդանօթներ, երեք ալ՝ ետեւէն։ Ստուար թուով հեծելազօրքեր յառաջապահը և յետսապահը կազմած էին։ Խուռներամ բազմութիւն մը լռութեամբ կը դիտէր այս չարագուշակ թափօրը, և կը տոկար այս խստութիւններուն, ինչպէս այնքան երկար ժամանակ տոկացած էր նախկին կառավարութեան խստութեանց։ Մէկ երկու հոգի աղաղակեցին, բայց շատ ցանցառ թուով. իշխանը երբէք չյուզուեցաւ ատկէ, և հանդարտօրէն զբաղեցաւ ճամբուն վրայ գտնուող առարկաներով։ Անմիջապէս որ Ֆէօյեաններու Ակումբը հասան, զայն դրին սրահի մը մէջ, սպասելով Ժողովին հրահանգներուն։

Անդին, նոյն պահուն, զանազան առաջարկներ կ'ըլլային Լուդովիկոս ԺԶ.ն ընդունելու ձեւին մասին։ Առաջարկուեցաւ որ ո՛չ մէկ խնդրագիր մտիկ պիտի ըլլուէր, ոչ մէկ երեսփոխան պիտի խօսք առնէր ու թագաւորին ի նպաստ կամ հակառակ ո՛չ մէկ ցոյց պիտի ըլլար։ Լըժանտր ըսաւ, որ պէտք է զայն ունկնդրել գերեզմանային լռութիւն մը ցոյց տալով։ Դժգոհութեան աղաղակներ բարձրացան այս անգութ խօսքերուն դէմ. Տրֆէրմօն առաջարկեց որ ամբաստանեալին համար աթոռ մը յատկացուի. այս առաջարկը այնքան իրաւացի համարուեցաւ որ, քուէի իսկ չդրուեցաւ և բեմին առջեւ աթոռ մը դրին. Ծիծաղելի ունայնամտութեամբ մը Մանուէլ առաջարկեց վճռաբանութեան ձեռնարկել օրակարգի խնդրին վրայ, որպէս զի այնպէս չկարծուի որ թագաւորով կը զբաղին, նոյն իսկ յարեց, թէ պէտք ըլլայ զայն սպասցնել դրանը առջեւ։ Այս պատճառաւ սկսան վճռաբանել ատրագիրներու դէմ օրէնքի մը վրայ։

Վերջապէս՝ Սանդէռ ծանոյց Լուդովիկոս ԺԶ.ի ժամանումը. կը նախագահէր Պաւէր, որ ըսաւ. «Քաղաքացինե՛ր, Եւրոպան ձեզի կը նայի. ապագայ սերունդը պիտի դատէ զձեզ անճկելի խստութեամբ մը. ուրեմն պահեցէք ձեր արժանապատուութիւնը և պաղարիւնը, որ պատշաճ է դատաւորներու. յիշեցէ՛ք այն ահաւոր լռութիւնը, որ ընկերացաւ Վառէնէն Բարիզ բերուած Լուդովիկոսին։»

Ժամը երկուք ու կէսին Լուդովիկոս ԺԶ. բեմին առջև երեւցաւ. քաղաքապետը և Սանդէռ ու Վիթէնկօֆ զօրավարները երկու քովը կեցած են. խորունկ լռութիւն մը կը տիրէ ժողովին մէջ։ Լուդովիկոսի խրոխտ և հանդարտ կեցուածքը՝ այնքան մեծ դժբաղդութեան մը մէջտեղին, ամէն ոքի յուզում կը պատճառէր։ Կեդրոնի երեսփոխանները կը յուզուին. Ժիրօնտէնները խորապէս գութ կը զգան. Սէն-Ժիւստ, Ռօպէսբիէռ և Մառա իրենք իսկ կը զգան թէ իրենց մոլեռանդութիւնը կը տկարանայ, և կ'ապշին որ մարդ մը կը գըտնեն այն թագաւորին մէջ, որուն պատժուիլը կը պահանջէին։

Պաւէր ըսաւ Լուդովիկոս ԺԶ.ին. «Նստեցէ՛ք եւ պատասխանեցէք ձեզի ուղղուելիք հարցումներուն։»

Լուդովիկոս ԺԶ. նստաւ և ունկընդրեց ամբաստանագիրը, յօդուած առ յօդուած։ Անոր մէջ յիշատակուած էին արքունիքին բոլոր սխալանքները, զորս կը վերագրէին անձնականապէս Լուդովիկոս ԺԶ.ին։ Զայն կը մեղադրէին որ 1789 Յունիս 20ի նիստը ընդհատեց, Յուն. 23ին գումարուած ժողովին համար, ազնուականներուն դաւադրութիւնները, որ պարապը հանուած էր Յուլիս 14ի ապստամբութեամբ, պահակազօրաց ճաշը, ազգային զարդանշանին հանդէպ կատարուած նախատինքը, Իրաւանց Յայտարարութիւնը վաւերացնելու մերժումը, ինչպէս նաև Սահմանադրութեան զանազան յօդուածները. վերջապէս՝ բոլոր այն եղելութիւնները, որոնք Հոկտեմբերին նոր դաւադրութիւն մը կը յայտնէին, և որոնց յաջորդեցին Հոկտեմբեր 5 ի և 6 ի դէպքերը, և որոնք կը խոստանային յետս կոչում մը, որ անկեղծ չէր. տակաւին կը մեղադրէին Յուլիս 14 ի դաշնակցութեան արուած կեղծ երդումը, Դալոնի և Միրապոյի միջնորդութիւնները՝ հակայեղափոխականութիւն մը յառաջ բերելու համար, կարգ մը երեսփոխաններ շահելու միտք տրուած դրամը, «դաշոյնի ասպետներուն» հաւաքոյթը՝ 1791 Փետրվար 28ին, դէպ ի Վառէն փախուստը, Շան տը Մարսի հրացանաձգութիւնը, Բիլնիցի դաշնադրութեան մասին պահուած լռութիւնը, Ավինեօնը Ֆրանսայի միացնող հրամանագրին հրատարակման յապաղումը, Նիմի, Մութօպանի, Մէնտի և Ժալէսի շարժումները, արձակուած սահմանադրական պահակախումբին և տարագիրներուն թոշակին վճարման շարունակումը, տարագիր իշխաններուն հետ կատարուած գաղտնի թղթակցութիւնը, սահմանագլուխին վրայ հաւաքուած բանակներուն անբաւականութիւնը, 20,000 հոգինոց բանակին վաւերացման մերժումը, բոլոր ամրացեալ վայրերու պէնընկեցութիւնը, Բրուսիացիներու արշաւանքին յառաջմանց յայտարարութիւնը, գաղտնի ընկերակցութեանց կազմակերպութիւնը, Բարիզի մէջ զուիցերիական զինուորներուն եւ պալատին պահակազօրքին առջև կատարուած անցքը՝ Օգոստոս 10ին, այս պահակազօրքին կրկնապատկումը, քաղաքապետին Թիւիլըրի կանչուիլը, վերջապէս՝ այն արիւնահեղութիւնը, որ յառաջ եկած էր այս զինուորական ձեռնարկներուն հետեւանքով։

Եթէ բնական չհամարուէր իր նախկին զօրութեան համար զգացած վիշտը, թագաւորին վարմունքին մէջ ամէն բան կրնար ոճիրի փոխուիլ. որովհետև իր

վարմունքը երկարատեւ վէճ մըն էր, որուն խառնուած էր քիչ մը երկչոտ ճիգ, իր կորսնցուցածը վերստին ձեռք անցընելու համար։ Ամբաստանագրին ամէն մէկ յօդուածին առջեւ նախագահը կանգ կ'առնէր եւ կը հարցնէր. «Ի՞նչ պատասխան ունիս տալ։»

Թագաւորը միշտ անյողդողդ ձայնով մը կը պատասխանէր եւ ամբաստանութեանց մէկ մասը կ'ուրանար, միւս մասին պատասխանատուութիւնը նախարարներուն վրայ կը նետէր եւ միշտ կ'ապաւինէր Սահմանադրութեան, որմէ երբեք հեռացած չըլլալը կը հաւատէր։ Անոր պատասխանները միշտ խոհական էին. բայց երբ իրեն հարցուեցաւ թէ ինչո՞ւ ժողովրդին արիւնը թափել տուած էր Օգոստոս 10ին, ուժգին ձայնով մը գոչեց, «Ո՛չ պարոն, ո՛չ, ես չեմ թափել տուողը։»

Այնուհետեւ իրեն ցոյց տուին ձեռք անցուած բոլոր փաստաթուղթերը. Թագաւորը իր յարգելի առանձնաշնորհումը գործածելով, մերժեց անոնց մէկ մասը, եւ խնդրական համարեց երկաթեայ դարակին գոյութիւնը։ Այս ուրացումը աննպաստ տպաւորութիւն մը թողուց. ըրածը խելացի գործ չէր, քանի որ ապացուցուած բան մըն էր դարակին գոյութիւնը։ Յետոյ Թագաւորը ամբաստանագրին մէկ օրինակը ուզեց, ինչպէս նաեւ միւս թուղթերուն պաշտպան փաստաբան մըն ալ ուզեց։

Նախագահը յայտնեց իրեն թէ կրնայ մեկնիլ. յարակից սրահին մէջ կազդուրիչ ըմպելիներ տուին իրեն, եւ յետոյ կառք մը նստեցնելով Դամբլ վերադարձուցին։ Ժամը 6 ու կէսին հասաւ հոն, եւ առաջին հոգը եղաւ իր ընտանիքը տեսնելը. մերժեցին, առարկելով թէ որոշուած է, որ դատավարութեան միջոցին իր ընտանիքէն հեռու ապրի։ Ժամը 8 ու կէսին, ընթրիքի պահուն անգամ մըն ալ խնդրեց որ թող տրուի իր զաւակները համբուրել. բայց համայնքային Խորհուրդի ատեաններ անգութ դարձուցած էր բոլոր պահապանները, որոնք մերժեցին այդ մխիթարութիւնը։

Այդ միջոցին, Ժողովը իրարանցումի մատնուած էր, Լուդովիկոս ԺԶ.ի փաստաբան մը խնդրելուն հետեւանքով։ Դրէյար եւ Բէդիոն ուժգնօրէն կը պնդէին որ այդ խնդրանքին գոհացում տրուի. Դալիէն, Պիյօ-Վարէն, Շասլօ եւ Մէրլէն կը հակառակէին, առարկելով որ այդպիսի բծախնդրութիւններով պիտի յետաձգուի դատավարութիւնը։ Վերջապէս Ժողովը փաստաբան մը տուաւ Թագաւորին։

Պատգամաւորութիւն մը պաշտօն յանձնուեցաւ Լուդովիկոս ԺԶ.ի իմացընել այս պարագան եւ անոր հարցնելու թէ զո՞վ պիտի նշանակէ իբր պաշտպան։ Թագաւորը նշանակեց Դարժէն, կամ՝ հակառակ պարագային՝ Դրոնշէն, եւ եթէ կարելի էր, երկուքը միասին։ Անկէ զատ խնդրեց որ իրեն տրուի մելան, գրիչ եւ թուղթ, իր ինքնապաշտպանութիւնը պատրաստելու համար, եւ խնդրեց նաեւ որ թող տրուի իրեն՝ տեսնել իր ընտանիքը։ Քոնվանսիոնը անմիջապէս վճռեց որ անոր տրուի ամէն ինչ որ պէտք է՝ գրելու համար, որ անոր ընտրած երկու պաշտպան փաստաբաններուն իմաց տրուի, որ ինքը ազատութիւն ունենայ անոնց հետ, ինչպէս նաեւ իր ընտանիքին հետ տեսակցելու։

Դարժէ մերժեց Լուդովիկոս ԺԶ.ի առաջարկած պաշտօնը, առարկելով որ 1785էն ի վեր պաշտպանողական ճառ չէր կրնար խօսիլ. Դրոնշէ անմիջապէս գրեց որ պատրաստ էր իրեն վստահուած պաշտպան փաստաբանի գործը ստանձնելու, եւ մինչ զբաղած էին նոր փաստաբան մը նշանակելու խնդրով, նամակ մը ընդունեցին, զոր գրած էր 70 տարեկան քաղաքացի մը, պատուականն Մալզէրպը, Թիւրկոյի բարեկամ եւ ընկեր, եւ Ֆրանսայի ամենէն յարգուած փաստաբանը։ Ազնուական ծերունին սապէս կը գրէր Նախագահին.



ԼՈՒԴՈՎԻԿՈՍ ԺԶ. ԵՒ ԻՐ ՓԱՍՏԱԲԱՆՆԵՐԸ

«Ժամանակին, երբ ամէն ոք կը ցանկար թագաւորին փաստաբանն ըլլալ, երկու անգամ այդ պաշտօնը ըստանձնած եմ. հիմա, երբ շատ մը մարդիկ այդպիսի գործ մը ստանձնելը վըտանգաւոր կը գտնեն, ես թագաւորին կը պարտիմ մատուցանել միեւնոյն ծառայութիւնը:»

Ու Մալզէրպ կը խնդրէր Նախագահէն յայտնել Լուդովիկոս ԺԶ.ի որ ինքը պատրաստ էր իր պաշտպանութիւնն ստանձնել: Ուրիշ բազմաթիւ քաղաքացիներ ալ միեւնոյն առաջարկը ըրին, և ա ս մասին տեղեկութիւն տրուեցաւ թագաւորին, որ շնորհակալութիւն յայտնելով՝ միայն Դրօնշէն և Մալզէրպը ընդունեց: Համայնքային Խորհուրդը որոշեց որ երկու փաստաբաններն ալ մանրակրկիտ կերպով խուզարկուին իրենց յաճախորդին քովը երթալէ առաջ: Քծնվանախոնը որ արտօնած էր ,ազատ հաղորդակցութիւնը, նորոգեց իր հրամանը, եւ անոնք կրցան ազատօրէն մտնել Դանբլը:

Մալզէրպը տեսնելով թագաւորը ընդառաջ վազեց, պատկառելի ծերունին անոր ոտքերուն փարեցաւ արտասուելով: Թագաւորը զայն ոտքի հանեց եւ երկար ատեն գիրկընդխառն մնացին: Անմիջապէս սկսան պաշտպանողականով զբաղիլ: Ժողովին քարտուղարները ամէն օր Դանբլը կը բերէին վաւերաթուղթերը եւ հրաման ունէին զանոնք հաղորդելու, առանց երբէք ձեռքէ հանելու: Թագաւորը զանոնք կը քննէր շատ ուշադրութեամբ եւ այնպիսի հանդարտութեամբ մը, որ ամէն անգամ, ա՛լ աւելի կը զարմացնէր պաշտպանները:

Միակ մխիթարութիւնը՝ որ ուզած էր, իր ընտանիքը տեսնելն էր. բայց

բնաւ ալ սրուած չէր իրեն, հակառակ Քոնվանսիոնի հրամանագրին։ Համայնքային Խորհուրդը այդ բանին միջոց արգելք յարուցանելով, ուզած էր հրամանագրին պատճառաբանութիւնը։ «Ինչքան ալ դուք հրաման տաք, ըսաւ Դափէն՝ Քոնվանսիոնին, եթէ Համայնքը չուզեր, տակաւ չկրնար ըլլայ։» Այս յանդուգն խօսքերը մեծ ժխոր յառաջ բերին։ Սակայն և այնուհետ, Ժողովը փոխելով իր հրամանագիրը, ըսաւ որ Թագաւորը կրնար իր երկու զաւակները իր մօտ ունենալ, բայց այն պայմանաւ որ անոնք այլեւս չվերադառնան իրենց մօրը քով, դատավարութեան բոլոր միջոցին։ Թագաւորը զգալով որ տղաքը աւելի անհրաժեշտ էին իրենց մօրը, չուզեց զայն զրկել և հպատակեցաւ այս նոր վիճակին այնպիսի համակերպութեամբ մը, զոր ոեւէ պարագայ չէր կրնար խախտել։

Քանի՛ դատավարութիւնը կը յառաջանար, ա՛լ աւելի կը զգային խնդրին կարեւորութիւնը։ Ոմանք կը հասկնային որ Նախկին Թագաւորութեան դէմ արքայասպանութիւն գործածելով, մտած կ'ըլլային վրէժխնդրութեան և անգթութեան անագորոյն դրութեան մը մէջ, և մահացու կռիւ յայտարարած կ'ըլլային Նախկին կարգ ու սարքին, զոր թէեւ տապալել կ'ուզէին, բայց ո՛չ ջնջել այդքան ուժգին եղանակաւ մը։ Ուրիշներ, ընդհակառակը, կ'ուզէին այդ կատաղի կռիւը, որ այլեւս չէր ընդունէր ո՛չ տկարութիւն, ո՛չ վերադարձ և վիհ մը կը բանար միապետութեան և յեղափոխութեան միջեւ։ Թագաւորին անձը գրեթէ կ'աներեւութանար այս շատ մեծ խնդրին մէջ, եւ այլեւս մէկ բան կը քննէին, որ սա էր, թէ պէ՞տք էր բոլորովին խզուիլ անցեալէն յայտնի եւ սարսափելի արարքով մը, թէ՝ ոչ։ Կը տեսնէին միայն հետեւանքը, և աչքէ կը հեռացնէին զոհը, որուն վրայ պիտի իյնայ հարուածը։

Ժիրոնտէններու՝ որոնք յամառութեամբ ժաքօպէնները կը հալածէին, անոնց երեսին կը զարնէին շարունակ Սեպտեմբերի ոճիրները և զանոնք կը ներկայացնէին իբր անիշխանականներ, որոնք Քոնվանսիոնի տիրել կ'ուզէին ահաբեկումով և զոհել Թագաւորը, անոր տեղ դնելու համար եռապետները։ Կուատէ յաջողեցաւ գրեթէ զանոնք վտարել Քոնվանսիոնէն, հրամանագրել տալով որ ամբողջ Ֆրանսայի ընտրողական ժողովները հաւաքուին հաստատելու կամ հրաժարեցնելու իրենց երեսփոխանները։

Այս առաջարկութիւնը որ հրամանագրուեցաւ և տպագրուեցաւ քանի մը վայրկեանի մէջ, եղականօրէն սարսափեցուցած էր ժաքօպէնները։ Ուրիշ պարագաներ դեռ շատ աւելի զիրենք կը վրդովէին։ Դաշնակիցները կը շարունակէին հասնիլ ամէն կողմերէն. Քաղաքապետութիւնները շատ մը կոչեր կը ղրկէին, որոնց մէջ հանրապետութիւնը գնահատելով և Ժողովը շնորհաւորելով զայն հաստատած ըլլալուն համար, կը դատապարտէին անիշխանութեան ոճիրները և ծայրայեղութիւնները։ Մասնաճիւղերը միշտ կը յանդիմանէին մայր ընկերութիւնը իր ծոցին մէջ արիւնարբու մարդիկ ունենալուն համար, որոնք կ'ապականէին հանրային բարոյականը և կ'ուզէին Քոնվանսիոնի ապահովութեան դէմ դաւել։ Ոմանք կ'ուրանային իրենց մայրը, կը յայտարարէին թէ ոեւէ կապ չէին ուզեր պահել և կը ծանուցանէին որ առաջին նշանին վրայ պիտի սուրային Բարիզ՝ Ժողովը պաշտպանելու համար։ Ամենքն ալ մանաւանդ Մառայի վտարումը կ'ուզէին և ոմանք ալ Ռոպէսպիէռինը, նոյն իսկ։

Յուսահատած ժաքօպէնները, կը խոստովանէին որ հանրային կարծիքը կ'ապականէր Ֆրանսայի մէջ. իրարու կը յանձնարարէին միացած մնալ, ժամանակ չկորսնցնել գաւառներուն գրելու և իրենց մոլորուած եղբայրները յու-

սարսելու. կ'ամբաստանէին դաւաճան Ռօլանը թէ՝ իրենց նամակները կը բանէր և անոր տեղ կը դնէր նենգամիտ գրութիւններ, որոնք կ'ապականէին միտքերը: Կ'առաջարկէին կամաւոր նուէր մը՝ լաւ գրութիւնները տարածելու համար եւ մանաւանդ Ռոպէսփիէռի հիւանդի ճառերը և միջոցները կը փընտռէին զանոնք իրենց տեղերը հասցնելու ի հեճուկս Ռօլանի, որուն համար կ'ըսէին թէ թղթատարական ազատութիւնը կը բռնաբարէր: Սակայն և այնպէս, բանի մը վրայ համաձայն էին, այն էր՝ որ Մառա զիրենք կը վտանգէր իր գրութեանց ուժգնութեամբը, և ըստ իրենց, պէտք էր որ մայր ընկերութիւնը իմացնէր Ֆրանսայի թէ ի՞նչ տարբերութիւն կը դնէր անիկա Մառային, որուն բոցավառ խառնուածքը սահմաններէ դուրս կը հանէր զինքը և իմաստուն, առաքինի Ռոպէսփիէռին միջև, որ միշտ ճշմարիտ սահմանին մէջ, առանց տկարութեան՝ բայց առանց չափազանցութեան կ'ուզէր ինչ որ արդար էր և կարելի: Բուռն վիճաբանութիւն մը բացուած էր այս երկու մարդոց վրայ: Ընդունած էին որ Մառա զօրաւոր և յանդուգն գլուխ մըն էր՝ բայց շատ գրգռուած. օգտակար եղած էր, կ'ըսէին ժողովուրդի դատին, բայց անիկա չէր գիտեր կանգ առնել: Մառայի կողմնակիցները պատասխանած էին որ անհրաժեշտ չէին համարեր գործադրել անոր ամէն ըսածները, և թէ՝ ոեւէ անձէ աւելի լաւ կը զգային այն տեղը, ուր պէտք էր կենալ: Անոր զանազան խօսքերը կը յիշատակէին: Մառա ըսած էր.— Միայն մէկ Մառա պէտք է հանրապետութեան մը. — Անցիր կ'ուզեմ նուազագոյնը ստանալու համար. — Ձեռքս պէտք չունիմ աւելի քան թէ պէտք գրել, երէ համառօտ որ ժողովուրդը բաղցիօրէն պէտք գործադրէ բոլոր տուած խորհուրդները: — Բարձր գին մը կը պահանջեմ ժողովուրդէն, որովհետեւ գիտեմ որ անիկա սակարկելով գործ կը տեսնայ:

Օթեակներէն պաշտպանած էին Մառայի այս արդարացումները իրենց ծափահարութիւններով: Սակայն ընկերութիւնը որոշած էր կոչ մը ընել, որուն մէջ նկարագրելով Մառայի և Ռոպէսփիէռի նկարագիրները, պիտի ցուցնէր թէ ի՞նչ տարբերութիւն կը դնէր մէկուն իմաստութեան և միւսին յանդգնութեան միջև: Այս միջոցը գործադրելէ ետքը, շատ մը ուրիշներ առաջարկեցին և մանաւանդ առաջադրեցին շարունակաբար պահանջել որ դաշնակիցները դէպ ի սահմանագլուխ մեկնին: Եթէ, իրաւ ալ իմանային որ Տիւմուրիէի զօրաբանակը կը տկարանար դասալքութեանց հետեւանքով, ժաքոպէնները կը գոչէին որ դաշնակիցներու օգնութիւնը անոր անհրաժեշտ էր: Մառա կը գրէր որ տարիէ մը աւելի էր որ վար դրած էին այն կամաւորները, որոնք ամենէն առաջ մեկնած էին և թէ ժամանակ էր որ անոնց տեղը դնէին անոնք՝ որ Բարիզ կը բնակէին. Նոր իմացած էին որ Քիւստին ստիպուած էր Ֆրանքֆորդը լքելու, թէ Պէօրնօնվիլ անօգուտ տեղը յարձակած էր Դրէվի իշխանութեան վրայ, և ժաքոպէնները կը պնդէին որ, եթէ այդ երկու զօրավարները իրենց հետ ունենային դաշնակիցները, որոնք անօգուտ կերպով մը կը լեցնէին մայրաքաղաքը, այդ պարտութիւնը չպիտի կրէին: Պէօրնօնվիլի անօգուտ փորձին և Քիւստինի անյաջողութեան զանազան լուրերը շատ գրգռած էին հանրային կարծիքը: Այս լուրերը դիւրին էր նախագուշակել, որովհետեւ Պէօրնէնվիլ գէշ եղանակի մը մէջ և առանց բաւարար միջոցներու յարձակելով անմատչելի դիրքերու վրայ, չէր կրնար յաջողիլ. և Քիւստին, յամառելով յանկարծակիօրէն Հռենոսի վրայ չնահանջելու, խոստովանած չըլլալու համար իր յանդգնութիւնը, յայտնի էր որ անխուսափե-

ներու միջեւ, բայց ո՛ւր փախչիլ: Եւրոպայի մէջ, տարագիրները իրեն կըսպառէին և նախանձինքներու, թերեւս նոյն իսկ տանջանքներու սպառնալիքին ներքեւ թագաւորութեան այս ազգականը, ուրացած էր իր ծնունդը և աստիճանը: Ֆրանսայի մէջ, կը ջանար իր ընկերական դիրքը ծածկել ամենախոնարհ տիտղոսներու ներքեւ և ինքզինքը կը կոչէր Հաւասարութիւն: Բայց իր նախկին գոյութեան անջնջելի յիշատակը կը մնար, ինչպէս նաև իր անսահման հարստութեան մինչ ներկայ վկայութիւնը:

Միմիայն ցնցոտիներ հագնելով, եւ չնականութեամբ ինքզինքը արհամարհելի դարձնելով էր որ կրնար կասկածելի ըլլալէ զերծ մնալ: Ժիրոնտէններու շարքերուն մէջ, կորսուած պիտի ըլլար առաջին օրէն իսկ, և թագաւորականութեան բոլոր մեղադրանքները, զորս կ'ընէին այդ կուսակցութեան, արդարացած պիտի ըլլային: Ժաքոպէն շարքերու մէջ՝ Բարիզի կատաղութիւնը ունէր իբր նիզակ, բայց չէր կրնար զերծ մնալ Ժիրոնտէններու ամբաստանութիւններէն, ինչ որ իրաւ ալ պատահեցաւ: Անոնք դուքսին չներեցին իրենց թշնամիներուն շարքին մէջ անցնիլը և կ'ենթադրէին որ տանելի դառնալու համար իր գանձերը կը շռայլէր անիշխանականներուն և անոնց կը հայթայթէր իր մեծ հարստութեան օգնութիւնը:

Կասկածոտ Լուվէ աւելին կը հաւատար և անկեղծօրէն կ'երեւակայէր որ անիկա միշտ թագաւոր ըլլալու յոյսը կը սնուցանէր: Առանց այդ կարծիքը բաժնելու, բայց Թիւրիոյի առաջարկութեանը դէմ ուրիշ առաջարկութիւնով մը պայքարելու համար, Պիւզօ ըսել եղաւ: «Եթէ Թիւրիոյի առաջարկած օրէնքը վստահութիւն յառաջ պիտի բերէ, ես ալ, ըսաւ, ուրիշ մը պիտի առաջարկեմ որ միւսէն վար չպիտի մնայ: Ֆրանսական միապետութիւնը տապալուած է, բայց անիկա դեռ կ'ապրի սովորութեանց, անոր նախկին արարածներուն յիշատակներուն մէջ: Հեռացնենք Համայնքներուն: Անոնք վանեցին Տարկինիոսը և իր ընտանիքը. անոնց պէս վտարենք Պուրպոնեան ընտանիքը: Այդ ընտանիքին մէկ մասը բանտարկուած է, բայց ուրիշ ճիւղ մը կայ շատ աւելի վտանգաւոր, որովհետև աւելի ժողովրդական եղաւ. տակաւ Օրլէանի ճիւղն է: Օրլէանի դուքսին կիսարձանը պըտըտցուցին Բարիզի մէջ, իր զաւակները, քաջութեամբ փրփրացող, նշանաւոր կը դառնան մեր բանակին մէջ և այդ ընտանիքին արժանիքներն իսկ զայն վտանգաւոր կը դարձնեն ազատութեան համար: Թո՛ղ այդ ընտանիքը վերջին զոհողութիւնն մը ընէ հայրենիքին՝ անոր ծոցէն հեռանալով: Թո՛ղ երթայ ուրիշ տեղ տանի գահուն մերձեցած ըլլալու դժբաղդութիւնը և դեռ աւելի մեծ դժբաղդութիւնը այնպիսի անուն մը կրելու, որ մեզի համար զզուելի է և որմէ ազատ մարդու մը ականջը չի կրնար չվիրաւորուիլ: »

Լուվէ յաջորդելով Պիւզոյին և նոյն ինքն Օրլէանի դուքսին խօսք ուղղելով, անոր յիշեցուց Գոլլադէնի կամաւոր աքսորը և զայն հրաւիրեց հետեւիլ անոր: Լանժուինէ կը յիշէ Բարիզի ընտրութիւնները որոնց մաս կը կազմէ Հաւասարութիւնը և որոնք կատարուեցան անիշխանական խռովարարներու դաշոյնին ներքեւ. կը յիշէ այն ջանքերը որոնք եղան պատերազմական նախարար անուանելու համար Օրլէանի ընտանիքէն պաշտօնատար մը, այն ազդեցութիւնը՝ որ այդ ընտանիքին զաւակները առած են բանակին մէջ, և բոլոր այս պատճառներուն համար Պուրպոններուն վտարումը կը պահանջէ: Պազիր, Սէն—Ժիւստ, Շապօ, կը մերժեն այդ առաջարկութիւնը աւելի Ժիրոնտէններուն քան թէ Օրլէանի դուքսին շահուն համար: Կը պնդեն թէ ատենը չէ խստութեամբ վարուելու այն միակ Պուրպոնին

դէմ, որ վեհանձնօրէն վարուած է ազգին հանդէպ, թէ պէտք է նախ պատժել բանտարկեալ Պուրպօնը, յետոյ կազմակերպել Սահմանադրութիւնը, և անոնցմէ վերջ պէտք է զբաղիլ վտանգաւոր դարձած քաղաքացիներով. Աւաց որ, Օրլէանի դուքսը Փրանսայէն դուրս հանելը զայն մահուան դրկել է և թէ գոնէ պէտք է յետաձգել այդ անգութ միջոցը:

Սակայն և այնպէս, վտարումը վճռուեցաւ ծափահարութեանց մէջ: Խնդիր էր միայն վտարման ժամանակը որոշելը, հրամանագիրը խմբագրելով: «Քանի որ խեցեվճիռ կը գործածէք Հաւասարութեան (Օրլէանի դուքսին) դէմ, կ'ըսէ Մէրլէն, գործածեցէ՛ք զայն բոլոր վտանգաւոր մարդոց դէմ, և ամենէն առաջ զայն կը պահանջեմ գործադիր իշխանութեան դէմ:

—Ռօլանի դէ՛մ, կը գոչէ Ալպիթ:

—Ռօլանի և Բաշի դէ՛մ, կ'աւելցնէ Պարէր, որոնք պառակտում սերմանեցին մեր մէջ: Թո՛ղ մէկը և միւսը նախարարութենէն վտարուին մեզի դարձնելու համար հանդարտութիւնը և միութիւնը:» Սակայն և այնպէս Բէրօէն վախ կը յայտնէ որ Անգլիա՝ նախարարութեան այս կազմալուծումէն օգտուելով մեզի դէմ աղիտաբեր պատերազմ մը յայտարարէ, ինչպէս ըրաւ 1757ին, երբ Արժանսօն և Մաշօ շնորհազուրկ եղան:

Ռիւպէլ խնդիր կ'ընէ որ կարելի՞ է վտարել ժողովրդեան ներկայացուցիչ մը և թէ Ֆիլիփ-Հաւասարութիւն այդ հանգամանքով չի պատկանիր այն ազգին որ զինքը ընտրեց: Այս զանազան դիտողութիւնները կը կասեցնեն մտքերու շարժում մը: Զիրար կ'ընդհատեն, կը վերադառնան հարցին և առանց ջնջելու Պուրպօններու վտարման հրամանագիրը, վիճաբանութիւնը երեք օր կը յետաձգեն, հանդարտելու և աւելի հասունութեամբ մտածելու համար այն հարցին վրայ թէ, կարելի էր Հաւասարութիւնը վտարել, և առանց վտանգի հրաժարեցնել ներքին գործոց և պատերազմական նախարարները:

Այս վիճաբանութիւններէն ետք, կը գուշակուի թէ ինչ անկարգութիւն կը տիրէր Համայնքային խորհուրդին և Ժաքօպէններու մասնաճիւղերուն մէջ: Ամէն կողմէ գոչեցին թէ խեցեվճիռ էր տրուածը և խնդրագիրներ պատրաստուեցան վիճաբանութեանց վերսկսումին համար: Երեք օրեր անցնելէ ետք, վիճաբանութիւնը վերսկսաւ. քաղաքապետը մասնաճիւղերուն գլուխը անցած եկաւ հրամանագրին տեղեկագիրը ուզելու: Ժողովը օրակարգին անցաւ խնդրագրին ընթերցումէն ետք. բայց Բէդիօն տեսնելով որ այս խնդիրը ինչ աղմուկ յառաջ կը բերէր, պահանջեց որ անիկա Լուդովիկոս ԺԶ.ի դատավարութենէն ետքի յետաձգուի: Այս տեսակ մը զիջումը ընդունուեցաւ, և նորէն ինկան այն գահին վրայ, որուն դէմ գրգռուած էին բոլոր կիրքերը: Ուրեմն, հռչակաւոր դատավարութիւնը անմիջապէս ձեռք առնուեցաւ:

Լուդովիկոս ԺԶ.ի տրուած ժամանակամիջոցը՝ իր պաշտպանողականը պատրաստելու համար՝ հազիւ թէ կը բաւէր հաւաքելու այն շատ մը տուեալները, որոնց վրայ անիկա հաստատուած պիտի ըլլար: Իր երկու փաստաբանները խնդրեցին որ աւելի երիտասարդ և աւելի գործունեայ երրորդ փաստաբան մը աւելցուի իրենց վրայ, որ պաշտպանողականը խմբագրէր և արտասանէր, մինչ իրենք փնտռէին և պատրաստէին միջոցները: Այս երիտասարդ օգնականը Տըսէզ փաստաբանն էր, որ Յուլիս 14էն ետք պաշտպանած էր Պէզընվալը: Քոնվանսիոնը պաշտպանողականը ընդունած ըլլալով, չմերժեց նոր խորհրդական մը և Պ. Տըսէզ Մալզէրպի և Դրօնշէի պէս իրաւունք ունեցաւ Թանպլը մտնելու: Յանձնաժողով մը ամէն օր հոն կը տանէր

վավերաթուղթերը, զանոնք կը ցուցնէր Լուդովիկոս ԺԶ.ի, որ զանոնք կ'ընդունէր շատ պաղարիւնութեամբ և այնպիսի ձևով մը որ իբր թէ այս դատավարութիւնը ուրիշի մը պատկանէր, կ'ըսէր համայնքային անդեկագիր մը։ Պատգամաւորներուն հետ կը վարուէր մեծ քաղաքավարութեամբ և անոնց ճաշ կը հրամցնէր, երբ նիստերը շատ երկարատև ըլլային։ Այն միջոցին որ այսպէս իր դատավարութեամբ զբաղած էր, իր ընտանիքին հետ թղթակցելու միջոց մը գտած էր։ Լուդովիկոս ԺԶ. կը գրէր այն թուղթին և գրիչներուն շնորհիւ զորս իրեն տուած էին իր պաշտպանողականը պատրաստելու համար. իսկ իշխանուհիները կը գծէին իրենց պատասխանները թուղթի վրայ գնդասեղի ծակերով։ Երբեմն նամակները կը դնէին դերձանի կծիկներուն մէջ զորս սպասաւորներէն մէկը ճաշի միջոցին սեղանին ներքև կը նետէր. երբեմն թելով մը կ'իջեցնէին մէկ յարկէն միւսը։ Դժբաղդ բանտարկեալները այսպէսով իրենց առողջութեան մասին իրարու լուր կու տային և մեծ մխիթարութիւն կ'ունենային իմանալով որ հիւանդ չէին։

Վերջապէս, Պ. Տըսէզ իր պաշտպանողականը վերջացուցած էր, գիշեր ցորեկ աշխատելով։ Թագաւորը վերցնել տուաւ այն մասը որ ճարտասանական էր և ուզեց գոհանալ պարզ յիշատակութեամբը այն միջոցներուն զորս կրնար իբր փաստ գործածել։ Ամսոյն 26ին, առաւօտեան ժամը իննուկէսին, ամբողջ զինուորական ուժը շարժման մէջ էր Լուդովիկոս ԺԶ.ը առաջնորդելու համար Դամբլէն Ֆէօյյաններու Ակումբը, այն նոյն նախազգուշութիւններով և նոյն կարգով, ինչպէս առաջին անգամ ներկայացած էր։ Քաղաքապետին կառքը նստած ըլլալով, անոր հետ խօսակցեցաւ ճամբան, իր սովորական հանդարտութեամբը։ Խօսեցան Սենէկիոսի, Տիտոս-Լիվիոսի և հիւանդանոցներու վրայ. նոյն իսկ բաւական նուրբ կատակ մը ուղղեց քաղաքապետարանի պաշտօնեաներէն մէկուն, որ կառքին մէջ գլխարկը գլուխը դրած էր. Ֆէօյյաններուն Ակումբը հասնելով մեծ հոգածութիւն ցոյց տուաւ իր պաշտպան փաստաբաններուն, որոնց քով նստեցաւ ժողովին մէջ. շատ հանդարտութեամբ աչքերը ուղղեց այն նստարաններուն ուր իր ամբաստանիչները և դատաւորները նստած էին, ջանաց անոնց դէմքին վրայ Պ. Տըսէզի պաշտպանողականին յառաջ բերած ազդեցութիւնը փնտռել և քանիցս խօսակցեցաւ Դըրօնշէի և Մալզէրպի հետ։ Ժողովը ընդունեց իր պաշտպանողականը մահատիպ լռութեան մէջ և ոևէ արհամարհում չյայտնեց։

Պաշտպան փաստաբանը զբաղեցաւ նախ իրաւունքի խնդիրներով և երկրորդ՝ Լուդովիկոս ԺԶ.ի վերագրուած իրողութիւններով։ Թէև ժողովը, որոշելով որ թագաւորը պիտի դատէր, ինքնին հրամանագրած կ'ըլլար թէ անբռնաբարելիութեան վրայ չէր կարելի պնդել, Պ. Տըսէզ շատ լաւ ապացուցուց թէ ո՛չ մէկ բան կրնար սահմանափակել պաշտպանողականը և թէ անիկա ամբողջական կը մնար նոյն իսկ այդ հրամանագրէն ետք, և թէ, հետևաբար, եթէ Լուդովիկոս ԺԶ. անբռնաբարելիութիւնը պաշտպանելի նկատէր, իրաւունք ունէր զայն իբր փաստ գործածելու։

Նախ, ստիպուած եղաւ ընդունելու ժողովուրդին գերիշխանութիւնը, և 1791ի Սահմանադրութեան բոլոր պաշտպաններուն հետ պնդեց թէ գերիշխանութիւնը թէև բացարձակ տէր էր, կրնար խոստումներով յանձնառու ըլլալ. թէ անիկա ուզած էր հանդէպ Լուդովիկոս ԺԶ.ի այդպէս ըլլալ ընդունելով անբռնաբարելիութիւնը. թէ անիմաստ ման մը ընել ուզած չէր միապետական

դրութեան մէջ եւ թէ, հետեւաբար, խոստումը պէտք էր գործադրել, եւ թէ, նոյն իսկ եթէ թագաւորը բոլոր կարելի ճիգերը գործած ըլլար, միայն դանդաղութեամբ կարելի էր ընել պատժել: Ըսել որ, առանց ասոր, 1791 ի Սահմանադրութիւնը Լուդովիկոս ԺԶ.ի դէմ լարուած վարագ որոգայթ մը կ'ըլլար, քանի որ անոր խոստում մը տուած պիտի ըլլային՝ զայն չկատարելու գաղտնի դիտաւորութեամբ. Եթէ Լուդովիկոս ԺԶ.ին մերժէին իր թագաւորի իրաւունքները, գոնէ պէտք էր իրեն թողուլ քաղաքացիի իրաւունքները. Եւ հարցուց թէ՝ ո՞ւր էին ամենազաւան ձեւակերպութիւնները, զորս պահանջելու իրաւունքը ունի ամէն քաղաքացի, ինչպէս, օրինակի համար, ամբաստանիչ երդուեալներու եւ երդուեալ դատաւորներու մէջ եղած տարբերութիւնը, դատական մերժումի իրաւունքը, երկու երրորդի մեծամասնութիւնը, գաղտնի քուէարկութիւնը եւ դատաւորներու լռութիւնը՝ իրենց կարծիքները կազմուած միջոցին: Աւելցուց յանդգնութեամբ մը, որ միայն բացարձակ լռութեան մը բաղխեցաւ, թէ ամէնուրեք դատաւորներ կը փնտռէր եւ միայն ամբաստանիչներ կը գտնէր:

Յետոյ՝ անցաւ վիճաբանութեանը դէպքերուն՝ զորս երկու կարգի դասաւորեց, անոնք՝ որ տեղի ունեցած էին Սահմանադրութեան հաստատումէն առաջ, եւ անոնք՝ որ տեղի ունեցած էին Սահմանադրութեան հաստատումէն ետքը: Առաջինները կը պաշտպանուէին Սահմանադրութիւնը ընդունելովը եւ միւսները՝ անբռնաբարելիութեամբ: Սակայն եւ այնպէս չէր մերժեր առանց մասին վիճաբանիլ եւ այս բանը բրաւ յաջողութեամբ, որովհետեւ խել մը աննշան դէպքեր դիզած էին, օտար պետութեանց հետ թագաւորին ունեցած համաձայնութեանց վրայ որոշ ապացոյց մը չունենալով. ասիկա ոճիր մըն էր, որուն համար համոզուած էին՝ բայց որուն դրական ապացոյցները դեռ չկային:

Պաշտպան փաստաբանը յաղթականօրէն մերժեց Օգոստոս 10ին Ֆրանսական արիւն թափել տուած ըլլալու ամբաստանութիւնը: Իրաւ ալ, այդ օրը կռուողը Լուդովիկոս ԺԶ.ը չէր, այլ ժողովուրդը: Օրինաւոր էր որ Լուդովիկոս ԺԶ. յարձակում կրած ըլլալով՝ ինքզինքը պաշտպանէր, ջանար եւ անհրաժեշտ նախազգուշութիւնները ձեռք առնէր: Նոյն իսկ բարձր պաշտօնատարները համաձայն էին իրեն եւ զինուորներուն բացարձակ հրաման տուած էին բռնի ուժը բռնի ուժով հետ մղել: Հակառակ ասոր, կ'ըսէր Պ. Տըսէզ, թագաւորը չէր ուզած գործածել այս իրաւունքը՝ որ իրեն կու տային թէ՛ բնութիւնը, թէ օրէնքը, այլ ապաստանած էր օրէնսդիր մարմինին ծոցին մէջ, արիւնահեղութիւնը համար:

Այդ դէպքին յաջորդող կռիւի պատասխանատուութիւնը իրեն չէր պատկաներ, նոյն իսկ իր մասին ներողամտութիւն յառաջ բերելու էր, քան թէ վրէժխնդրութիւն, քանի որ իր ձեռքով գրուած հրամանի մը վրայ էր որ Զուիցերիական զինուորները պալատին եւ իրենց կեանքին պաշտպանութենէն ետ կեցած էին: Ուրեմն աղաղակող անարդարութիւն մըն էր Լուդովիկոս ԺԶ.ը մեղադրելը Ֆրանսական արիւն թափած ըլլալու յանցանքով, եւ այս կէտին վրայ անիկա մեղադրանքի արժանի չէր. ընդհակառակը, անիկա ինքզինքը յայտնած էր փափկանկատութեամբ եւ առաքինութեամբ լեցուն:

Պաշտպան փաստաբանը՝ սա շատ կարճ եւ պարզ խօսքերով վերջացուց, միակ խօսքերը, որոնց մէջ Լուդովիկոս ԺԶ.ի առաքինութեանց ակնարկութիւն կայ. —



ՄԱԼԶԷՐԲ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՈՏՔԸ Կ'ԻՅՆԱՅ

«Լուդովիկոս գահ բարձրացած էր քսան տարեկանին և այդ տարիքին, գահուն վրայ պարկեշտ բարքերու օրինակը տուաւ. անիկա հոն չբերաւ ոչ մէկ յանցապարտ տկարութիւն և ոչ մէկ ապականարար կիրք։ Անիկա գահուն վրայ եղաւ խնայող, արդար, խիստ և յարատև բարեկամ երևցաւ ժողովուրդին. ժողովուրդը իր վրայ ճնշող ադիտերը տուրքի մը ջնջումը կը փափաքէր, Թագաւորը զայն ջնջեց. ժողովուրդը գերութեան տապալումը կ'ուզէր, անիկա սկսաւ ինքն իսկ տապալել իր կալուածներուն մէջ. Ժողովուրդը բարեփոխումներ կը խնդրէր ոճրադատ օրէնսդրութեան մէջ ամբաստանեալներու վիճակին բարելաւմանը համար. անիկա կատարեց այս բարեփոխումները. Ժողովուրդը կ'ուզէր որ հալածուող Ֆրանսացիներ, որոնք մեր սովորութեանց խստութեան հետևանքով մինչև այն ատեն զրկուած էին քաղաքացիա-

րու պատկանող իրաւունքներէ, ստանան կամ վերստանան այդ իրաւունքները, թագաւորը դանոնք շնորհեց իր օրէնքներով. ժողովուրդը ազատութիւն ուզեց, անիկա տուաւ ազատութիւնը։ Նոյն իսկ անիկա իր զոհողութիւններով ընդ առաջ գնաց ժողովուրդին, այլ սակայն այդ նոյն ժողովուրդին անունով է որ այսօր կ'ուզուի... քաղաքացիներ. չեմ վերջացներ... կանգ կ'առնեմ պատմութեան առջեւ։ Մտածեցէք որ պատմութիւնը պիտի դատէ ձեր դատաստանը և թէ անորը՝ դարերու դատաստանը պիտի ըլլայ։»

Լուդովիկոս ԺԶ. իր փաստաբանէն անմիջապէս ետք խօսք առնելով քանի մը բառ արտասանեց զորս գրի առած էր. «Քիչ առաջ, բառ, ձեզի ներկայացուցին իմ պաշտպանողականիս միջոցները. չպիտի կրկնեմ զանոնք. թերեւս վերջին անգամը խօսելով ձեզի հետ, կը յայտարարեմ թէ իմ խղճմտանքս զիս յանցաւոր չի համարիր և թէ իմ փաստաբաններս ձեզի ճշմարտութիւնը ըսին։

«Երբեք չեմ վախցած իմ վարմունքս հրապարակաւ քննուելէն։ Բայց իմ սիրտս վիրաւորուած է ամբաստանագրին մէջ գտնելով ժողովուրդին արիւնը թափել ուզելու ոճրագործութիւնը և մանաւանդ Օգոստոս 10ին դժբախտութիւնները ինծի վերագրուիլը։

«Կը խոստովանիմ որ ամէն ժամանակ, ժողովուրդը սիրելու մասին տուած բազմապատիկ ապացոյցներս և իմ վարուելու եղանակս ինծի կը թուէր որ պարտ էին ապացուցանել թէ ես չէի վախնար ինքզինքս վտանգի ենթարկելէն, խնայելու համար ժողովուրդին արեան և ինձմէ ատ յաւէտ հեռացնելու այդպիսի մեղադրանք մը։»

Ցետոյ նախագահը հարցուց Լուդովիկոս ԺԶ.ի թէ ուրիշ բան չունէ՞ր ըսելիք իր պաշտպանութեանն համար։ Լուդովիկոս ԺԶ. յայտարարած ըլլալով որ ամէն բան ըսած է, նախագահը անոր յայտնեց թէ կրնար երթալ։ Մօտակայ սրահ մը առաջնորդուելով իր փաստաբաններուն հետ, հոգածութիւն ցոյց տուաւ երիտասարդ Տըսէզի որ յոգնած կը թուէր երկար պաշտպանողականէն։ Ցետոյ կառքը տարուելով նոյն հանդարտութեամբ խօսեցաւ անոնց հետ որ իրեն կ'ընկերանային և ժամը հինգին Դամբլը հասաւ։

Հազիւ թէ Լուդովիկոս հեռացած էր Քոնվանսիոնէն, երբ բուռն փոթորիկ մը բրթաւ։ Ոմանք կ'ուզէին որ վճռաբանութիւնը սկսէր. ուրիշներ, կը գանգատէին որ յաւիտենական յապաղումներ կ'ըլլային այս դատավարութիւնը վճռելու համար և անմիջապէս կը պահանջէին անուանական քուէարկութիւն, ըսելով որ ամէն դատարանի մէջ, ամբաստանեալը մաքի ըսելէ ետք քուէի կ'անցնին։ Լանժուինէ դատավարութեան սկիզբէն ի վեր այնպիսի զայրոյթ մը ցոյց տուած էր որ իր բուռն նկարագիրը իրեն թոյլ չէր տար այլեւս զսպել։ Անիկա խօսք առաւ և իր ներկայութենէն գրգռուած աղաղակներուն մէջ, պահանջեց ոչ թէ պայմանաժամ մը վճռաբանութեան համար, այլ նոյն իսկ դատավարութեան ջնջումը. անիկա գոչեց որ վայրագ մարդոց ժամանակը անցած է, թէ պէտք չէ ժողովը անպատուել իրեն դատել տալով Լուդովիկոս ԺԶ.ը, թէ Ֆրանսայի մէջ ոչ ոք այդ բանին իրաւունքը ունի և թէ մանաւորապէս ժողովը ո և է հանգամանք չունի այդ բանը ընելու համար. և եթէ կ'ուզէ գործել իբր քաղաքական մարմին, անիկա միայն ապահովութեան միջոցներ կրնայ ձեռք առնել նախկին թագաւորին դէմ. բայց եթէ անիկա գործէ իբր դատարան, ամէն սկզբունքէ դուրս է, որովհետեւ անիկա յաղթուածը յաղթողին իսկ դատել տալ է, քանի որ ներկայ երեսփոխաններէն շատերը ինքզինքնին յայտարարած են իբր Օգոստոս 10ի դաւա-

գիրները։ Դատաւորներ բառին ահակի մխոր մը բարձրացաւ ամէն կողմէ։ Կը գոչէին ի կա՛րգ. Ապպէ՛յ, առանձնակէն վար։ Լանժուինէ ի զուր կ'ուզէ արդարացնել դատաւորներ բառը, ըսելով որ այս պարագային անիկա նշանաւոր իմաստով մը առնուելու է, և թէ Օգոստոս 10ը փառաւոր դաւադրութիւն մը եղաւ, անիկա կը շարունակէ աղմուկին մէջ և կը վերջացնէ յայտարարելով որ հազար անգամ աւելի նախընտրեր մեռնիլ, քան թէ դատապարտել օրէնքի հակառակ, նոյն իսկ ամենէն զազրելի բռնաւորը։

Խել մը ատենախօսներ իրեն յաջորդեցին և մխորը աւելի շատցաւ։ Այլ եւս բան մը չէին ուզեր մտիկ ընել, տեղերնին կը թողուն, կը խառնուին, խումբեր կը կազմուին, զիրար կը նախատեն, իրարու կ'սպառնան և նախագահը կ'ստիպուի գլխարկը դնել։ Ժամուան մը յուզմունքէ ետք վերջապէս հանդարտութիւնը կը վերահաստատուի և Ժողովը ընդունելով կարծիքը անոնց որոնք վճարանութիւնը կը պահանջէին Լուդովիկոս ԺԶ.ի դատավարութեան վրայ, կը յայտարարէ որ վճարանութիւնը բացուած է և պիտի շարունակուի, ամէն գործ դադրեցնելով, մինչեւ որ վճիռը արձակուի։

Ուրեմն վճարանութիւնը վերսկսաւ Դեկտ. 27ին. այն բազմաթիւ ատենախօսները որոնք արդէն խօսած էին, վերստին կ'երեւան բեմին վրայ։ Սէնժիւսդ հոն կ'բարձրանայ նորէն. Լուդովիկոս ԺԶ.ի խոնարհած, պարտուած և դժբաղդութեան մէջ գտնուող անդորր ներկայութիւնը կարգ մը նկատողութիւններ ծնեցուցած էին իր միտքին մէջ։ Բայց այդ նկատողութիւններուն կը պատասխանէ, Լուդովիկոսը կոչելով համեստ և ճկուն բռնաւոր մը, որ ծնած է համեստութեամբ և որուն թափանցող քաղցրութեան դէմ պէտք է պաշտպանուիլ ամենամեծ խնամքով։

Նախկին Թագաւորը հրաւիրեց Էթա Ժէնէրօն, բայց անիկա ազնուականութիւնը խոնարհեցնելու և բաժնելով տիրելու համար էր։ Այդ պատճառաւ, երբ անիկա տեսաւ որ երեք դասակարգերուն զօրութիւնը այնքան արագութեամբ աճեցաւ, ուզեց զանոնք ջնջել։ Յուլիս 14ին, Հոկտեմբեր 5ին և 6ին տեսնուեցաւ որ անիկա գաղտնապէս միջոցներ ձեռք առաւ Ժողովուրդը ճզմելու համար. բայց ամէն անգամ որ իր դաւադրութիւնները ի դերեւ կ'ելլային ազգային կորովով, ինքն իսկ նահանջել կը ձեւացնէր։ Իր պարտութեան և Ժողովուրդին յաղթանակին վրայ կեղծ ուրախութիւն մը կը յայտնէր, ինչ որ բնական չէր։ Անկէ ի վեր այլ եւս ոյժ չկրնալով գործածել կ'ապականէր ազատութեան պաշտպանները, օտարներու հետ կը դաւադրէր, կը յուսահատեցնէր նախարարները, որոնցմէ մին ստիպուած եղաւ իրեն գրելու. «Ձեր գաղտնի յարաբերութիւնները զիս կ'արգիլեն օրէնքները գործադրելէ, ես կը քաշուիմ պաշտօնէս:» Վերջապէս, անիկա գործածած էր ամենամեծ խաբեբայութեան բոլոր միջոցները մինչեւ Օգոստոս 10 և դեռ հիմակ կեղծ քաղցրութիւն մը կը ձեւացնէր իր դատաւորներուն միտքը չփոթեցնելու և անոնց ձեռքէն խուսափելու համար։

Այսպէսով, Լուդովիկոս ԺԶ.ի այնքան բնական վարմունքները կը ներկայացուէին բռնի մտքի մը մէջ, որ զօրաւոր և հաշուուած նենգամտութիւն մը կը տեսնէր հոն, ուր միայն տկարութիւն և անցեալի ցաւ կար։ Ուրիշ ատենախօսներ յաջորդեցին Սէնժիւսդին և ամենքը անհամբերութեամբ կը սպասէին որ Ժիրոնտէնները խօսք առնեն։ Անոնք դեռ ինքզինքնին յայտնած չէին և ժամանակ էր որ մտքերնին բացատրէին։ Արդէն տեսանք որ ինչ էին թէ՛ իրենց վարմունքները, թէ՛ իրենց յուզուելու տրամադրութիւն-

ները, թէ՛ իրենց հակումը Լուդովիկոս ԺԶ.ի դիմադրութիւնը ներելու, որովհետեւ իրենք ալ կարող էին այդ բանը հաւնելու քան թէ իրենց ընդդիմադիրները։ Վէրնիօ քանի մը բարեկամներու առջեւ խոստովանեցաւ իր զղջացած ըլլալը։ Առանց այդ քան ըղձացուած ըլլալու թերեւս, միւսները բոլորովին պատրաստ էին զոհել չահագրգռութիւնը, և այս կացութեան մէջ միջոց մը գտան որ կը յայտնէ իրենց յուզմունքը և իրենց դիրքին փափկութիւնը. այդ միջոցը ժողովուրդին կոչ ընելն էր։ Վտանգաւոր պատասխանատուութենէ մը ազատիլ և ազգին վրայ վրայ ձգել բարբարոսութեան մեղադրանքը, եթէ թագաւորը դատապարտուած էր. և կամ թագաւորասպանութեան մեղադրանքը ազգին վրայ նետել, եթէ անիկա անպարտ արձակուէր. ահա այս էր Ժիրոնտէններուն նպատակը և անիկա տկարութեան յայտնութիւն մըն էր։ Քանի որ Լուդովիկոս ԺԶ.ի խոր դժբաղդութեան առջեւն զգածուած էին, պէտք էր որ քաջութիւնը ունենային իրենք ևս զայն պաշտպանելու և պէտք չէր որ քաղաքային պատերազմը գրգռէին Ֆրանսայի քառասուն և չորս հազար մասնաճիւղերուն դրկելով խնդիր մը՝ որ անվրիպելիօրէն բոլոր կուսակցութիւնները իրարու դէմ պիտի հանէր և ամենէն կատաղի կիրքերը պիտի բորբոքէր։ Պէտք էր զօրեղապէս գրաւել իշխանութիւնը, քաջութիւնը ունենալ անձամբ զայն գործածելու, առանց ամբոխին վրայ բեռցնելու ահռելի հոգ մը, որուն համար անկարող էր և որ երկիրը պիտի ենթարկէր ահաւոր շփոթութեան մը։ Այս պարագային՝ Ժիրոնտէններ իրենց հակառակորդներուն անսահման առաւելութիւն մը կու տային զանոնք ամբաստանելով պատասխանելու թէ քաղաքային պատերազմը կը պատրաստէին և կասկածի ենթարկել ազգով իրենց քաջութիւնը և անկեղծութիւնը։ Այսպէս ուրեմն, Ժաքօպէններու Ակումբին մէջ չմոռցան ըսելու թէ անոնք որ Լուդովիկոս ԺԶ.ը անպարտ արձակել կ'ուզէին, աւելի անկեղծ և աւելի յարգի էին քան թէ անոնք որ ժողովուրդին քուէին կը դիմէին։ Բայց այդպէս է չափաւոր կուսակցութեանց սովորական վարմունքը. հա՛ վարանելով ինչպէս վարուած էին Սեպտեմբեր 2ին և 3ին, Ժիրոնտէնները կը վարանէին ինքզինքնին կասկածի ենթարկել թագաւորի մը համար զոր թշնամի կը նկատէին և որ իրենց համոզմամբ զիրենք ջնջել ուզած էր օտարի զէնքով. սակայն և այնպէս, յուզուած այս պարտուած թշնամիի առջեւն, կը ջանային զայն պաշտպանել, կը զարմանային անոր հանդէպ գործուած բռնութենէն և բաւական բան կ'ընէին ինքզինքնին վտանգել տալու, առանց պէտք եղածը ընելու զայն փրկելու համար։

Սոյլ, որ ամենէն աւելի Լուվէի երեւակայած բաներուն ազդեցութեանց տակ կը մնար և որ նոյն իսկ զայն կը գերազանցէր երեւակայական դաւադրութեան ենթադրութեան մէջ. Սոյլ, առաջինը եղաւ ժողովուրդին դիմելու դրութեան վրայ պնդողը, 17ի նիստին մէջ։ Հանրապետականներու բոլոր մեղադրանքին ենթարկելով Լուդովիկոս ԺԶ.ի վարմունքը և խոստովանելով որ անիկա արժանի էր այն բոլոր խստութեան որ կարելի էր գործածել, այլ սակայն գիտել տուաւ որ ոչ թէ վրէժխնդրութիւն մը այլ քաղաքական արարք մըն էր, որ ժողովը պէտք էր գործադրէր. ընդ նմին ուրեմն որ հանրային շահու տեսակէտով է որ խնդիրը պէտք էր դատուէր։ Արդ, անպարտ արձակման և դատապարտութեան պարագաներուն ալ, անպատեհութիւններ կը տեսնէր։ Անպարտ արձակումը անհամաձայնութեան մշտական պատճառ

մը պիտի ըլլար և Թագաւորը պիտի դառնար բոլոր կուսակցութեանց միացման կէտը։ Անոր դաւադրութեան փորձերուն յիշատակը միշտ ժողովին երեսին պիտի տային, իր նենգամտութիւնը երեսին զարնելու համար. անպատիժ ձգելը հանրային դաւաճանութիւն մը պիտի ըլլար, որ յառաջ պիտի բերէր թերեւս ժողովրդային ըմբոստութիւններ, և որ իբր պատրուակ պիտի ծառայէր բոլոր խռովարարներուն։ Բանմնեյի մարդիկը, որոնք արդէն տակն ու վրայ ըրած էին պետութիւնը իրենց ոճիրներով, չպիտի թերանային այս գթութեան արարքէն քաջալերուելու՝ նոր ոճիրներու փորձեր ընելու համար, ինչպէս ինքզինքնին արտօնած էին դատարաններու դանդաղութեամբ Սեպտեմբերի ջարդերը ընելու։ Ամէն կողմէ, վերջապէս, Քոնվանսիոնը պիտի ամբաստանէին որ քաջութիւնը չէր ունեցած այդքան խռովութեանց վերջ դնելու և հանրապետութիւնը հիմնելու կորովի և սարսափելի օրինակով մը։

Դատապարտելով, Թագաւորը իր ընտանիքին պիտի կապէր իր ցեղին բոլոր յուսախաբութիւնները, և զանոնք պիտի կապէր աւելի վտանգաւոր եղբայրներու, որովհետև անոնք նուազ յարգէ ինկած էին իրենց ազնուութեամբ։ Ժողովուրդը, այլ ևս չտեսնելով ոճիրները, այլ մահապատիժը, թերեւս թագաւորին վիճակին վրայ գթալու պիտի սկսէր և խռովարարները այս տրամադրութեան մէջ պիտի գտնէին տակաւին զօյն դրդուելու միջոց մը՝ Ազգային Քոնվանսիոնին դէմ։ Եւրոպայի վեհապետները մռայլ լռութիւն մը կը պահէին, սպասելով այն դէպքին, որ կը յուսային թէ ընդհանուր պայքար մը պէտք էր յառաջ բերէր. բայց անմիջապէս որ Թագաւորին գլուխը իյնար, ամէնքն ալ այս պատրուակէն օգուտ քաղելով, միեւնոյն ատեն պիտի յարձակէին Ֆրանսայի վրայ, զայն յօշոտելու համար, թերեւս՝ այն ատեն, Ֆրանսա, իր տառապանքներէն կուրցած՝ Քոնվանսիոնին երեսին պիտի զարնէր արարք մը՝ որ յառաջ բերած պիտի ըլլար անգութ և աղէտաբեր պատերազմ մը։

Այս է, կ՚ըսէր Սալ, այն չարաբաստիկ երկընտրանքը, որ կը ներկայանայ Ազգային Քոնվանսիոնին։ Այսպիսի դրութեան մը առջև, ազգին կ՚իյնայ ինքն իսկ որոշել և իր բաղդը վճռել, վճռելով Լուդովիկոս ԺԶ.ին բաղդը։ Քաղաքային պատերազմի վտանգը անհիմն է, որովհետև քաղաքային պատերազմ մը չպայթեցաւ երբ հրաւիրեցին նախնական ժողովները ընտրելու համար Քոնվանսիոն մը, որ պիտի վճռէր Ֆրանսայի բաղդը և կարծես թէ այդ բանէն աւելի չեն վախնար նոյնքան ծանրակշիռ առիթի մը մէջ, քանի որ այդ նոյն նախնական ժողովներուն կը յանձնեն Սահմանադրութեան վաւերացումը։ Ի զուր կ՚առաջարկեն քառասուն չորս հազար ժողովներու մէջ ըլլալիք նոր վիճաբանութեան մը երկարաձգութիւնները և դժուարութիւնները. որովհետև խնդիրը վիճելուն վրայ չէ, այլ առանց վիճաբանութեան ընտրելուն երկու առաջարկութիւններէն մէկը, զորս Քոնվանսիոնը կը ներկայացնէ։ Այսպէս պիտի դրուէր հարցը նախնական ժողովներուն. Լուդովիկոս ԺԶ. մահապատժի պիտի ենթարկուի՞, թէ պիտի բանտարկուի՝ մինչև խաղաղութիւնը։ Եւ անոնք պիտի պատասխանեն. բանտարկուած, կամ մահուան ենթարկուած։ Արդարև վարանողներու միջոցաւ պատասխանը կրնայ հասնիլ տասն և հինգ օրուան մէջ՝ Ֆրանսայի ամենէն հեռաւոր ծայրերէն։

Այս կարծիքը յաղթեց չորս զանազան առաջարկութիւններով։ Սէս, Վերթին Արդեաններու երեսփոխանը հոս կ՚առնէ իր առաջին կարծիքը՝ որ Թագաւորը դատելու կոչուած էր, և կը պահանջէ ժողովրդային քուէի դիմում մը։

Պարզապէս դէմ կը խօսի Լուդովիկոս ԺԶ.ի արդարացման՝ առանց եզրակացութիւններ ընելու, որովհետեւ չէր համարձակեր անպարտութեան կողմը հակիլ իր գործակիցներու իղձին հակառակ, ոչ ալ դատապարտել համառօտ իր բարեկամներուն փափաքին։ Պիւզօ ժողովուրդի քուէին դիմելու կողմը կ'անցնի. այլ սակայն կը բարեփոխէ Սալի կարծիքը եւ կ'ուզէ որ Քոնվանսիօնը ինքն իսկ նախաձեռնութիւնը առնէ մահուան համար քուէ տալու եւ նախնական ժողովներէն պահանջելով միմիայն պարզ վաւերացումը այդ դատավճիռին։ Ռապօ Սէնդ-Էթիէն, այս բողոքական հովիւը, որ արդէն ինքզինքը ծանօթացուցած էր Սահմանադիր Ժողովին մէջ իր ընդունակութիւններով, կը պայրանայ Քոնվանսիօնին այս իշխանութեանց կեդրոնացումին դէմ։ «Պա-յոլ ինծի, կ'ըսէ անիկա, ես յոգնած եմ ինծի բաժին ինկած բռնապետութենէն։ Ես յոգնած, պատառուած, տանջուած եմ այն բռնապետութենէն զոր իմ կարգիս կը գործադրեմ եւ կը ցանկամ այն վայրկեանին՝ երբ դատարան մը պիտի ստեղծէք որ ինծի կորսնցնել պիտի տայ բռնաւորի մը ձեւերը եւ դիրքը ....։ Դուք քաղաքական պատճառներ կը փնտռէք, այդ պատճառները կան պատմութեան մէջ ... Լոնտոնի այն ժողովուրդը որ այնքան արագացուցած էր Թագաւորին մահապատիժը, առաջինը եղաւ որ անիծեց անոր դատաւորները եւ խոնարհեցաւ զոհին յաջորդին առջեւ։ Երբ Զարլս Բ. գահ բարձրացաւ, քաղաքը անոր տուաւ սքանչելի ճաշ մը, ժողովուրդը ինքզինքը տուաւ արտակարգ ուրախութեան մը, եւ վազեց ներկայ ըլլալու մահապատիժին այն նոյն դատաւորներուն, զորս Զարլս անիկէ ետքը գտեր իր հօրը ոճիրներուն։ Բարիզի ժողովուրդ, Ֆրանսայի Խորհրդարան, իմացա՞ք խօսքերս ....։»

Թօն կը պահանջէ դատաստանի են-թարկման բոլոր հրամանագիրներուն տեղեկագիրը։ Վերջապէս կ'երեւայ մռայլ Ռօպէսփիէռը՝ անոր բարկութեամբ եւ դառնութեամբ։ «Ես ալ, ըսաւ, զգածուեցայ եւ զգացի որ իմ սրտիս մէջ հանրապետական առաքինութիւնը կը խախտի ի ներկայութեան յանցաւորին, որ խոնարհած էր գերիշխան ուժին առաջ։ Բայց անձնուիրութեան վերջին ապացոյցը՝ որ պարտական ենք հայրենիքին, խեղդելն էր ամէն զգացական շարժում։» Այն ատեն կը կրկնէ բոլոր այն բաները, որոնք ըսուած էին Քոնվանսիօնի ձեռնհասութեան վրայ, ազգային մեծամասնութեան տրուած անվերջ յետաձգումներուն, բռնաւորին հանդէպ պահուած փափկանկատութիւններուն վրայ, մինչ առանց ոեւէ վերապահութեան յարձակում կը կրեն ազատութեան ամենաջերմ բարեկամները. կը կարծէ թէ ժողովուրդի քուէին դիմելը Կուատէի երեւակայածին նման միջոց մըն է, երբ անիկա պահանջած էր մաքրագործող քուէտուփը թէ այս նենգաւոր միջոցը նպատակ ունէր ամէն բան խառնակի դարձնել, թէ այժմու երեւակայութիւնը, թէ' Օգոստ. 10ը, թէ' նոյն իսկ Հանրապետութիւնը։ Հարցը միշտ բերելով իր եւ իր թշնամիներուն վրայ, անիկա կը բաղդատէ օրուան կացութիւնը 1791 Յուլիսին հետ, երբ խնդիրը Լուդովիկոս ԺԶ.ը դատելուն վրայ էր, անոր Վառէն փախչելուն համար։ Ռօպէսփիէռ այդ բանին մէջ կարեւոր դեր մը խաղացած էր։ Կը յիշէ թէ' իր վտանգները, թէ' իր ընդդիմադիրներուն յաջող ջանքերը Լուդովիկոս ԺԶ.ը կրկին գահուն վրայ դնելու համար, կը յիշէ Շան դը Մարսի հրացանաձգութիւնը որ այդ դէպքին յաջորդած էր եւ այն վտանգները որոնց Լուդովիկոս ԺԶ. ենթարկած էր հանրային դատը՝ գահուն վրայ բարձրանալով։ Նենգամտութեամբ կը մատնանշէ այսօրուան իր հակառակորդները Փրր երբեմնի իր

Թշնամիները. Անգլիան և Ֆրանսան կը ներկայացնէ ենթարկուած այն ժամանակուան վտանգներուն և միշտ գաւերովը այն խայտառակներուն, որոնք ինքզինքնին այլամերժօրէն շնորհքով մարդիկ կը նկատեն: «Այսօր, կ'աւելցնէ Ռօպէսպիէռ, անոնք կը լուծեն հայրենիքին ամենամեծ շահերուն վրայ. կը քաշուին իրենց կարծիքը արտայայտելու վերջին թագաւորին վրայ: Բայց իրենց համր և թունալեր գործունէութիւնը յառաջ կը բերէ այն բոլոր խռովութիւնները, որոնք կը յուզեն հայրենիքը, եւ մոլորեցնելու համար առաջ բայց յաճախ խաբուած մեծամասնութիւնը, կը հալածեն ամենաջերմ հայրենասէրները խռովարար փոքրամասնութիւն անուան տակ: Փոքրամասնութիւնը, յաճախ մեծամասնութեան փոխուած է, երբ խաբուած ժողովները լուսաբանուած են: Առաքինութիւնը միշտ փոքրամասնութիւն կազմած է երկրիս վրայ: Ասոր թէ ոչ երկիրը լեցուն պիտի ըլլա՞ր բռնաւորներով և ստրուկներով: Հէմբդէն և Սիտնէյ փոքրամասնութեան կողմն էին, որովհետև մեռան կախաղանի վրայ: Կրիտիասները, Անիտոսները, Կեսարները, Կլոդիոսները մեծամասնութեան կողմն էին, բայց Սոկրատ փոքրամասնութեանն էր, որովհետև մոլեխինդը խմեց. Կատոն փոքրամասնութեանն էր, որովհետև պատռեց իր աղիքները:» Ռօպէսպիէռ յետոյ ժողովուրդին հանդարտութիւն յանձնարարեց ու ն է պատրուակ չտալու իր թշնամիներուն, որոնք իր հաւատարիմ երեսփոխաններուն եղած պարզ ծափահարութիւնները կը ներկայացնեն իբր ապստամբութիւն մը: «Ժողովո՛ւրդ, կը գոչէ անիկա, պահէ՛ քու ծափահարութիւններդ, մեր վիճարանութեանց անտարբերէն փախիր: Դու աչքերէդ հեռու, մենք նուազ չպիտի պայքարինք:» Կ'աւարտէ վերջապէս պահանջելով որ Լուդովիկոս ԺԶ. անմիջապէս յանցաւոր յայտարարուի և մահուան դատապարտուի:

Ատենախօսներ կը յաջորդեն 28ին, 29ին և մինչև 31 ին: Վերջապէս Վերնիօ առաջին անգամ ըլլալով խօսք կ'առնէ և մտիկ կ'ընեն արտակարգ փութկոտութիւնով մը ամենամեծ ատենախօսը Ժիրոնտէններուն, որուն բերնով ինքզինքնին կ'արտայայտեն խզելով լռութիւն մը որով միայն Ռօպէսպիէռ չէր որ զիրենք կ'ամբաստանէր:

Վէրնիօ նախ կ'ընդլայնէ ժողովուրդին գերիշխանութեան սկզբունքը և կ'որոշէ այն պարագաները երբ ներկայացուցիչները պարտական են դիմել ժողովուրդին՝ շատ երկար, շատ դժուար պիտի ըլլար մեծ ժողովուրդի մը դիմել ամէն օրէնսդրական գործի համար. բայց կարգ մը մեծ կարևորութեամբ գործերու համար, բոլորովին ուրիշ բան է: Օրինակի համար, Սահմանադրութիւնը առաջուընէ ենթարկուած էր ազգային վաւերացման: Բայց այդ բանը միակը չէ որ արժանի է արտասովոր վաւերացումի մը: Լուդովիկոսի դատավարութիւնը այնպիսի ծանրակշիռ հանգամանքներ ունի, ըլլա՛յ կեդրոնացեալ իշխանութեան տեսակէտով զոր ժողովը կը գործադրէ, ըլլա՛յ անբռնաբարելիութեան տեսակէտով զոր միապետին տրուած էր սահմանադրականօրէն, ըլլա՛յ վերջապէս քաղաքական հետևանքներով որոնք յառաջ պիտի գան դատապարտութեան պարագային, որ կարելի չէ այս բանին մեծ կարևորութիւնը ուրանալ և անհրաժեշտութիւնը զայն նոյն ինքն ժողովուրդին քուէին ենթարկելու: Այս դրութիւնը պարզելէ ետքը, Վէրնիօ՝ որ մանաւանդ Ռօպէսպիէռի փաստերը կը ջրէ, վերջապէս կը հանի ժողովուրդի քուէին դիմելու քաղաքական անպատեհութեանց և կը շօշափէ բոլոր այն մեծ հարցերը որոնք կը բաժնեն երկու կուսակցութիւնները:

Նախ կը զբաղի այն անհամաձայնութիւններով որոնք կը վախնան որ կը պայթին, եթէ ժողովուրդին ղրկուի Թա-

պաշտօնին դատապարտութեան վաւերացումը։ Կ՚անդրադառնայ ուրիշ ժիրոնտէններու տուած պատասխանատուութիւններուն եւ կը պնդէ որ եթէ քաղաքային պատերազմէ մը չէին վախցած Նախականի ժողովները գումարելով Սահմանադրութիւնը վաւերացնելու համար, չէր հասկնար թէ ինչո՞ւ պիտի վախնային անկէ, զանոնք գումարելու թագաւորին համար արուած վճիռը վաւերացնելու պատճառով։ Այս պատճառաբանութիւնը, զոր յաճախ կը կրկնէին, քիչ արժէք ունէր, որովհետեւ Սահմանադրութիւնը յեղափոխութեան ճշմարիտ նպատակը չէր, այլ միայն կրնար ըլլալ արդէն հրամանագրուած եւ համաձայնուած հաստատութեան մը, հանրապետութեան մանրամասն կանոնագրութիւնը։ Բայց թագաւորին մահը շատ մեծ խնդիր մըն էր, պէտք էր գիտնալ թէ, թագաւորութեան դէմ մահուան միջոցով գործելով, յեղափոխութիւնը անդարձ կերպով կը խզուէր անցեալէն եւ վերջնականութիւններով անագորոյն կերպով մը ինքզինքին առաջարկած նպատակին պիտի դիմէր։ Արդ, եթէ այսքան սարսափելի խնդիր մը արդէն այնքան ուժեղօրէն կը պառակտէր Գոնվանսիոնը եւ Բարիզը, ուսկի մեծ վտանգ կար զայն առաջարկելուն մէջ քառասուն եւ չորս հազար մասնաճիւղերուն որ Ֆրանսական հողի վրայ կը գտնուէին։ Բոլոր թաղերուն, բոլոր ժողովրդային ընկերութիւններուն մէջ ալեկոծ կերպով մը կը վիճաբանէին, եւ պէտք էր որ Գոնվանսիոնը ոյժը ունենար ինքնիրեն հարցը որոշելու, Ֆրանսայի չյանձնելու համար զայն որ թերեւս պիտի լուծէր զինու միջոցաւ։

Վէրնիօ, այդ առթիւ իր բարեկամներուն կարծիքէն ըլլալով, որոնց թէ քաղաքային պատերազմի վտանգ չկար։ Ըսաւ թէ նահանգներուն մէջ խռովարարները ազդեցութիւն չէին առած զոր վատ տկարութիւն մը Բարիզի մէջ իրենց բանատրիչ տուաւ․, թէ անոնք թէեւ վախցին հանրապետութեան բոլոր կողմերը, բայց թէ ամենուրեք միայն արհամարհանք գտան եւ թէ օրէնքի հնազանդութեան ամենամեծ օրինակը տուին յարգելով այն անմաքուր արիւնը որ կը հոսէր իրենց երակներուն մէջ։ Ցետոյ ջրեց վախերը զորս յայտնեցին ճշմարիտ մեծամասնութեան մասին, որուն համար ըսին թէ դաւադիրներէ, թագաւորականներէ, ազնուականներէ կազմուած է. անիկա դէմ խօսեցաւ այն գաղող հաստատումին դէմ թէ առաքինութիւնը փոքրամասնութիւն կը կազմէ երկրիս վրայ։ «Քաղաքացինե՛ր, գոչեց Վէրնիօ, Կատիլինա փոքրամասնութեան կազմն էր Հռոմի ծերակոյտին մէջ եւ եթէ այդ փոքրամասնութիւնը յաղթահարէր, Հռոմ, ծերակոյտը եւ ազատութիւնը վերջացած էին։ Սահմանադիր ժողովին մէջ Մօրի, Գազալէս, փոքրամասնութիւն կը կազմէին եւ եթէ անոնք յաջողէին, դուք լինցած էիք։ Թագաւորները ալ երկրիս վրայ փոքրամասնութիւն կը կազմեն, եւ ժողովուրդները գերութեան մէջ պահելու համար՝ անոնք ալ կ՚ըսեն թէ առաքինութիւնը փոքրամասնութիւն կը կազմէ․ անոնք ալ կ՚ըսեն թէ ժողովուրդներու մեծամասնութիւնը կազմուած է խաբեբաներէ, զորս պէտք է բռնութեան դատապարտել ահաբեկելով, եթէ կ՚ուզուի պետութիւնները պահպանել ընդհանուր տակնուվրայութենէ մը։»

Վէրնիօ խնդիր ըրաւ թէ՝ արդեօք կարգ մը մարդոց խղճերուն համապատասխան մեծամասնութիւն մը կազմելու համար պէ՞տք է գործածել վտարումը եւ մահը, Ֆրանսան անապատի վերածել եւ այսպէսով զայն մատնել քանի մը չարագործներու յղացումներուն։



ՊԱՌԷՐ

Մեծամասնութեան և Փրանսայի վրէ-ժը լուծելէ ետք ատենախօսը վրէժը կը լուծէ իր և իր բարեկամներուն զորս ցոյց կուտայ միշտ գլխագրող, հաւասար քաջութեամբ մը բոլոր բռնապետու-թեանց։ Զանոնք ցոյց կուտայ Օգոստոս 10ի օրուան մէջ, որոնք նիստ կազմած էին պալատին թնդանօթի որոտումնե-րու մէջ և արտասանեցին գահընկէցու-թիւնը, ժողովուրդին յաղթանակէն ա-ռաջ, մինչ այդ Բրուտոսները որոնք այնքան փութկոտ են այսօր պաշտօնած բռնաւորները սպաննելու, իրենց վախը կը ծածկէին երկրին ընդերքին մէջ և սպասելով կը սպասէին հետեւանքին այն անստոյգ պայքարին որ ազատութիւնը կը մղէր բռնապետութեան դէմ։

Յետոյ իր թշնամիներուն վրայ կը ձգէ քաղաքային պատերազմ գրգռելու մեղադրանքը։ «Այո՛, կ՚ըսէ Վէրնիօ, անոնք կ՚ուզեն քաղաքային պատերազ-մը որ մարդասպանութիւն քարոզելով բռնապետութեան կուսակիցներուն դէմ, այդ անունը կը յատկացնեն բոլոր այն

զոհերուն զորս իրենց տոհմութիւնը կ՚ուզէր սպաննել։ Անոնք որ դաշոյնները կը հրաւիրեն ժողովուրդին ներկայացուցիչներուն վրայ, և կ՚ուզեն կառավարութեան և Քոնվանսիոնի լուծումը, անոնք որ կ՚ուզեն փոքրամասնութիւնը մեծամասնութեան իրաւարար դարձնել, որպէս զի կարենայ իր վճիռները օրինաւորել ապստամբութիւններով և որպէս զի Կատիլինաները հրաւիրուին Ծերակոյտին մէջ տիրելու։ Քաղաքային պատերազմ կ՚ուզեն անոնք որ այս սկզբունքները կը քարոզեն բոլոր հասարակաց վայրերու մէջ և ժողովուրդը կ՚ապականեն բանականութիւնը ամբաստանելով իբր Ֆէտէրալիզմ, արդարութիւնը իբր ազնուապետութիւն և սուրբ մարդկայնութիւնը՝ իբր դաւաճանութիւն։

«Քաղաքային պատերա՛զմ, կը գոչէ ատենախօսը, դիմում ընելու համար ժողովուրդի գերիշխանութեա՛ն... Սակայն և այնպէս 1791 Յուլիսին դուք աւելի համեստ էիք, դուք չէիք ուզեր զայն անդամալուծել և անոր տեղ տիրել։ Դուք զեկուցագիր մը կը փութացնէիք ժողովուրդին հետ խորհրդակցելու համար Վառէնէն վերադարձող Լուդովիկոս ԺԶ.ին դատաստանի մասին։ Այդ ատեն դուք ժողովուրդին գերիշխանութիւնը կ՚ուզէիք և չէիք մտածեր որ անոր դիմում ընելը կրնար քաղաքային պատերազմ գրգռել։ Արդեօք պատճառը ա՞յն է որ այն ատեն անիկա համաձայն էր ձեր գաղտնի նպատակներուն և թէ այսօր կը հակառակի։»

Ատենախօսը յետոյ կ՚անցնի ուրիշ նկատողութիւններու։ Ըսուեցաւ որ ժողովը պէտք էր բաւական մեծութիւն և քաջութիւն ցոյց տար ինքն իսկ գործադրելու համար իր վճիռը առանց ժողովուրդին կարծիքին կրթնելու։ «Քաջութիւն պէտք էր յարձակելու համար Լուդովիկոս ԺԶ.ի վրայ իր ամենակարողութեան միջոցին։ Նոյնքան պէտք կա՞յ քաջութեան՝ մահապատիժի ենթարկելու համար պատրաստուած և զինաթափ Լուդովիկոս ԺԶ.ը։ Կիմպրիացի զինուոր մը Մարիուսի բանտին մէջ մտած է զայն դաշունահարելու համար. սարսափած՝ զոհին տեսքէն անիկա կը փախչի առանց համարձակելու անոր զարնել։ Եթէ այդ զինուորը Ծերակոյտի անդամ ըլլար, կը կարծէ՞ք որ պիտի վարանէր բռնաւորին մահուան քուէ տալու։ Ի՞նչ քաջութիւն կը գտնէք արարքի մը մէջ, զոր կատարելու կարող պիտի ըլլար վատ մը։»

Դեռ կը խօսի տարբեր տեսակի քաջութեան մը վրայ, օտար պետութեանց դէմ գործածուելիք քաջութիւնը։ «Քանի որ կը խօսուի չարունակաբար, կ՚ըսէ Վէրնիօ, քաղաքական մեծ գործի մը վրայ, անօգուտ չէ խնդիրը քննել այդ տեսակէտէն։ Անտարակուսելի է որ պետութիւնները այդ վերջին պատրուակին կը սպասեն միահաղոյն կերպով խուժելու համար Ֆրանսայի վրայ։ Անոնց պիտի յաղթենք անշուշտ. Ֆրանսայի զինուորներուն հերոսութիւնը այդ բանին ապահով մէկ երաշխիքն է. բայց տակաւին ծախքերու և ամէն կարգի ջանքերու մաշում մը պիտի ըլլայ։ Եթէ պատերազմը ստիպէ որ նոր թղթադրամներ շրջաբերութեան հանուին, ինչ որ սարսափելի համեմատութեամբ մը պիտի բարձրացնէ նախնական պիտոյքները կազմող ապրանքներու գինը, եթէ պատերազմը նոր և մահացու հարուածներ տայ վաճառականութեան, եթէ արիւնի հեղեղներ թափել տայ ցամաքի և ծովերուն վրայ, ինչ մեծ ծառայութիւն մատուցած պիտի ըլլաք մարդկութեան։ Ի՞նչ երախտապարտութիւն պիտի ունենայ ձեզի հայրենիքը, իր անունովը և իր անտեսուած գերիշխանութեան հակառակ վրէժխնդրութեան արարք մը գործած ըլլալնուդ համար որ միայն պատճառ կամ պատրուակ դարձած պիտի ըլլար այսքան աղետալի դէպքերու։ Մէկ կողմ կը դնեմ, կը գո-

չէ առանձնախօսը, անյաջողութեան ամէն գաղափար, բայց պիտի համարձակի՞ք հայրենիքին առջեւ պարծենալ ձեր ծառայութիւններուն համար. ընտանիք մը չպիտի գտնուի որ չլայ իր հայրը, կամ իր զաւակը. շուտով քաղուեններ պիտի պակսին երկրագործութեան համար. աշխատանոցները պիտի լքուին. պետութեան ծախսել տալով նոր հարկերու հաւաքման պատճառ պիտի ըլլաք. ընկերային մարմինը յոգնած՝ դուրսէն ստացած հարուածներէն զոր իրեն պիտի տան գլխաւոր թշնամիները եւ ներսէն՝ ապըստամբած խռովարարները, մահացու թմրութեան մը մէջ պիտի իյնայ: Վախցէք որ այս յաղթանակներուն մէջ Ֆրանսան չի նմանի այն հռչակաւոր յիշատակարաններուն որ Եգիպտոսի մէջ ժամանակին դէմ յաղթած են. անցորդ օտարականը զարմանայ անոնց մեծութեան վրայ. եթէ ուզէ անոնց մէջ թափանցել. ի՞նչ կը գտնայ հոն. անշունչ աճիւններ եւ գերեզմանային լռութիւն:»

Այս երկխօսներէն ետքը, ուրիշներ ալ կան որոնք կը ներկայանան Վէրնիօի մտքին. անոնք թելադրուած են իրեն անգլիական պատմութենէն եւ Քրոմուէլի վարմունքէն որ թէեւ թագուն բայց գլխաւոր հեղինակն էր Զարլս Ա.ի մահուան: Անիկա, մինչ ժողովուրդները մղելով նախ թագաւորին դէմ, յետոյ նոյն իսկ Խորհրդարանին դէմ, ետքէն ջախջախեց իր ախոյ գործիքը եւ բարձրացաւ գերագոյն իշխանութեան: «Զէ՞ք լսած, ուելցուց Վէրնիօ, այս շրջանակին մէջ եւ այլուր չէ՞ք լսած որ մարդիկ կը գոչեն. Եթէ հացը սուղ է, պատճառը Դանրլի մէջ է. եթէ ճնշուն դրամը ծագուագիտ է, եթէ մեր բանակը գէշ պարտէնաւորուած է, պատճառը Դանրլի մէջ է:

«Անոնք որ այս լեզուն կը բանեն, չեն անգիտանար սակայն որ հացին սղութիւնը, ռոճկատեղէններու փոխադրութեան պակասը, բանակին մէջ եղած գէշ կազմակերպութիւնը եւ թըշուառութիւնը որուն տեսքը մեզ կը վշտացնէ, Դանրլէն տարբեր պատճառներ ունին: Ինչ են ուրեմն իրենց ծրագիրները: Ո՞վ գիտ կ'ապահովցնէ որ այս նոյն մարդիկը որ շարունակաբար կը ջանան Բօնվանսիօնը ստորնացնել, որ թերեւս պիտի յաջողէին այդ բանին, եթէ անոր մէջ գոյութիւն ունեցող ժողովուրդին վեհափառութիւնը կախում ունենար իրենց նենգամտութիւններէն, որ այս նոյն մարդիկը որ ամէն տեղ կը յայտարարեն թէ նոր յեղափոխութիւն մը անհրաժեշտ է, որ այս կամ մամնաճիւղը կը հռչակեն մշտատեւ ապըստամբութեան վիճակի մէջ, որ համայնքային Խորհուրդին կ'ըսեն որ երբ Բօնվանսիօնը յաջորդեց Լուդովիկոս ԺԶ.ին, ուրիշ բան չեղաւ բայց միայն բռնաւորի փոփոխութիւն, եւ թէ Օգոստոս 10ի պէս ուրիշ օր մը պէտք է, թէ այս նոյն մարդիկը, որոնք կը խօսին միայն դաւադրութեանց, մահուան, դաւաճաններու, վտարումներու վրայ, որ կը հրատարակեն մասնաճիւղերու ժողովներուն եւ իրենց գրութեանց մէջ, թէ պէտք է պաշտպան մը անուանել հանրապետութեան, թէ միայն մէկ պետ մը կայ զայն փրկելու կարող, ո՞վ ինծի կ'երաշխաւորէ, կ'ըսեմ, թէ այս նոյն մարդիկը Լուդովիկոսի մահուընէ ետք չպիտի գոչեն ամենամեծ ուժգնութեամբ.

«Եթէ հացը սուղ է, պատճառը Բօնվանսիոնի մէջ է, եթէ ճնշուն դրամը ծագուագիտ է, եթէ մեր բանակը գէշ պարտէնատրուած է՝ պատճառը Բօնվանսիոնի մէջ է, եթէ կառավարական մեքենան դժուարաւ կը քաշքշուի, պատճառը Բօնվանսիոնին մէջ է, որ պաշտօն ունէր զայն վարելու, եթէ պատերազմի աղէտները առած են Անգլիոյ եւ Սպանիոյ յաղթարարութիւններով, պատճառը Բօնվանսիոնին մէջ է, որ այդ յաղթարարութիւնները գրգռեց Լուդովիկոս ԺԶ.ը անպարանքով դատապարտելով:

«Ո՞վ ինծի կ'երաշխաւորէ որ՝ այս

Պառէր երկարօրէն խօսեցաւ դատավարութեան վրայ, և դայն նկատի առաւ ամէն տեսակէտներով, բոլոր իրողութիւնները, օրէնքները և քաղաքական կացութիւնը աչքի առջև բերաւ, և դատապարտութեան շարժառիթներ հայթայթեց բոլոր այն տկարացողներուն, որոնք տեղի տալու համար հաւանական պատճառաբանութիւններ կ'ուզէին: Իր միջակ փաստաբանութիւնը իբր շարժառիթ ծառայեց բոլոր անոնց, որոնք կը սոսկային, և այդ վայրկեանէն սկսեալ դժբաղդ Թագաւորը դատապարտուեցաւ:

Վիճաբանութիւնը երկարաձգուեցաւ մինչև 1793 Յունվար 3, և այլ ևս ոչ ոք կ'ուզէր մտիկ ընել միևնոյն փաստերուն կրկնումը: Առանց հակառակ քուէի, վիճաբանութեան փակումը որոշուեցաւ. բայց նոր յետաձգման մը առաջարկը շատ բուռն գրգռում մը յառաջ բերաւ, և վերջապէս վճռուեցաւ որ Թագաւորին հարցումներ ուղղուին և անուանական քուէարկութիւն կատարուի 14 Յունվարին:

Երբ հասաւ այդ ճակատագրական օրը, հանդիսատեսներու արտասովոր բազմութիւն մը խռնուած էր Ժողովին շուրջ և օթեակները լեցուցած էր: Բաղմաթիւ ճառախօսներ կը փութան առաջարկել զանազան եղանակներ՝ հարցում ուղղելու: Վերջապէս, երկարատև վիճաբանութիւններէ ետք, Գոնվանսիօնը բոլոր հարցումները հետևեալ երեքին մէջ կ'ամփոփէ. —

«Լուի Գապէ յանցաւո՞ր է ազգային ազատութեան դէմ դաւաճանած ըլլալու յանցանքով, եւ Պետութեան ընդհանուր ապահովութեան դէմ ձեռնարկներ ըրած ըլլալու յանցանքով.

«Վճիռը, ինչ որ ալ ըլլայ, ժողովուրդին կողմէ վաւերացուելու պիտի դրկուի՞.

«Ինչ պատիժ պիտի տրուի իրեն:»

Յունվար 13ին ամբողջ օրը, զբաղեցան հարցումներ ուղղելու, Յունվար 15ին վերապահեցին անուանական քուէարկութիւնը: Ժողովը նախ որոշեց որ իւրաքանչիւր անդամ բեմէն տայ իր քուէն, թէ այդ քուէն կրնար պատճառաբանեալ ըլլալ, ու պիտի ըլլար գրաւոր և ստորագրուած, թէ առանց պատճառի բացակայողները պիտի քննութեան ենթարկուէին, բայց վերջը եկողները պիտի կրնային իրենց բաղձանքը յայտնել, նոյն իսկ անուանական քուէարկութենէն յետոյ:

Վերջապէս, այս քստմնելի քուէարկութիւնը սկսաւ առաջին հարցումին վրայ. ութն անդամներ հիւանդութեան պատճառով կը բացակայէին, իսկ քսան հոգի՝ Ժողովին յանձնախումբերուն անդամ նշանակուած ըլլալնուն համար: Երեսուն և եօթ հոգի, իրենց քուէին զանազան պատճառաբանութիւններ տալով Լուդովիկոս ԺԶ.ը յանցաւոր կը համարէին, բայց ինքզինքնին անկարող կը հռչակէին վճիռ մը արձակելու և անոր դէմ միայն ընդհանուր ապահովութեան միջոցներ ձեռք առնել կը պահանջէին: Վերջապէս, 683 անդամներ, առանց բացառութեան, Լուդովիկոս ԺԶ.ը յանցաւոր կը հռչակեն: Ամբողջ ժողովը բաղկացած էր 749 անդամներէ:

Նախագահը յանուն Ազգային Գոնվանսիօնի, յայտարարեց թէ Լուի Գապէ յանցաւոր է ազգին ազատութեան դէմ դաւաճանած եւ Պետութեան ապահովութեան դէմ դաւադրութիւններ սարքած ըլլալուն համար:

Անուանական քուէարկութիւնը կը վերսկսի երկրորդ հարցին վրայ, այն է՝ ժողովուրդին վաւերացմանը դիմե՞լ թէ չդիմել. 29 անդամներ կը բացակային. չորս հոգի կը մերժեն քուէարկել. ուրիշ մը նոյնպէս. 11 հոգի կարծիք կը յայտնեն զանազան պայմաններով, 281 հոգի ի նպաստ քուէ կու տան, 483 քուէ հակառակ կողմը կը շահի: Եւ ահա Նախագահը յանուն Ազգային Գոնվանսիօնին կը յայտարարէ թէ Լուի Գապէի

վճիռը ժողովրդային վաւերացման չպիտի ներկայացուի:

Յունվար 15ի ամբողջ օրը անցաւ այս երկու քուէարկութիւններով. իսկ երրորդը յետաձգուեցաւ յաջորդ օրուան ժողովին։

Բարիզի մէջ գրգռումը կ'աւելնար քանի կը մօտենար վճռական վայրկեանը. Թատրոններուն մէջ, Լուդովիկոս ԺԶ.ին նպաստաւոր աղաղակներ կը բարձրացնէին Օրէնքներու բարեկամը թատերախաղին առթիւ։ Համայնքային Խորհուրդը հրամայած էր որ բոլոր ներկայացումները դադրեցուցուին. բայց գործադիր մարմինը այս որոշումը բեկանած էր, զայն նկատելով բռնաբարում մը մամուլի ազատութեան, որուն մէջ կար նաեւ թատրոնի ազատութիւնը։ Բանտերուն մէջ, շատ մեծ ահաբեկում մը կը տիրէր։ Լուր տարածած էին որ Սեպտեմբերի ջարդերուն օրերը վերստին պիտի երեւան գային. և բանտարկեալները, ինչպէս նաեւ իրենց ազգականները թախանձագին դիմումներ կը կատարէին երեսփոխաններուն մօտ, որպէս զի մահուընէ փրկուէին։ Միւս կողմէ, Ժաքոպէնները կ'ըսէին թէ ամենուրեք կը դաւադրէին, Լուդովիկոս ԺԶ.ը մահու պատիժէն փրկելու և թագաւորութիւնը վերահաստատելու համար։ Անոնց զայրոյթը, որ ձգձգումներէն և արգելքներէն յառաջ կուգար, ա'լ աւելի սպառնալից կը դառնար անցնելով. և այս կերպով երկու կուսակցութիւնները զիրար կ'ահաբեկցնէին, իրարու վերագրելով քստմնելի ծրագիրներ։

Յունվար 16 ի նիստը առաջիններէն շատ աւելի բուռն մրցակցութիւն մը յառաջ բերած էր։ Առիթը վճռական նիստն էր, որովհետեւ յանցապարտութեան յայտարարութիւնը ոչինչ պիտի արժէր, եթէ Լուդովիկոս ԺԶ. միմիայն աքսորի դատապարտուէր, և նպատակնուն հասած պիտի ըլլային անոնք՝ որ անոր փրկութեանը կ'աշխատէին, որովհետեւ այդ պահուն մեծագոյն բանը զոր կրնային ակնկալել, զայն մահուընէ փրկելն էր։

Առաւուն կանուխէն, Ժաքոպէնները խուռներամ լեցուած էին օթեակներուն մէջ, և անոնց նայուածքը սեւեռած էր այն բեմին վրայ, ուր իւրաքանչիւր երեսփոխան պիտի երթար իր քուէն տալու։ Օրուան մէկ մեծ մասը անցաւ կարգապահական միջոցներով, նախարարները կանչելով, զանոնք մտիկ ընելով, քաղաքապետէն բացատրութիւն պահանջելով և ստանալով Բարիզի դուռներուն փակման խնդրին մասին, որովհետեւ խօսք եղած էր թէ ցերեկ ատեն անոնք փակուած էին։ Գօնվանսիօնը վճռեց որ անոնք բացուին, և թէ Բարիզի մէջ ներկայ եղող դաշնակիցները Բարիզցիներուն օգնեն, քաղաքին եւ բոլոր հանրային հաստատութեանց պահպանման համար։

Ըստ որում ժամանակը բաւական յառաջացած էր, որոշուեցաւ որ նիստը մշտատեւ ըլլայ մինչեւ քուէարկութեան վերջանալը։ Այն պահուն, ուր քուէարկութիւնը պիտի սկսէր, խնդիր ըրին որոշելը թէ վճիռը քանի՞ քուէով պիտի տրուէր։ Լըհարտի առաջարկեց երկու երրորդի մեծամասնութիւն, ինչպէս կըլայ ոճրադատ ատեաններու մէջ։ Տանթոն, որ դեռ նոր ժամանած էր Պելճիքայէն, ուժգնօրէն հակառակեցաւ այս առաջարկին, և պահանջեց պարզ մեծամասնութիւնը, այսինքն կէսէն մէկ աւելին քուէն։ Լանժուինէ ենթարկուեցաւ նոր յարձակումներու, երբ պահանջեց որ դատական այնքան ձեւակերպութիւնները ոտնակոխ ընելէ յետոյ զէթ յարգուի երկու երրորդի մեծամասնութիւնը։ «Մենք քուէ տալու վրայ ենք, գոչեց, խորհրդարաններու դաշոյնին և ատրճանակին տակ։» Այս խօսքին վրայ ամէն կողմէ պոռացին կանչեցին և Գօնվանսիոնը վերջացուց վիճաբանութիւնը, յայտարարելով թէ իր հրա-

մանագիրներուն ձեւը եղական է և թէ, այդ ձեւին համաձայն, անոնք բոլորն ալ կը տրուէին պարզ մեծամասնութեամբ։

Իրիկուան ժամը 7 ու կէսն էր. քուէարկութիւնը սկսաւ ու տեւեց ամբողջ գիշերը. ոմանք պարզապէս մահու պատիժ առաջարկեցին. ուրիշներ բանտարկութեան ու աքսորի քուէ տուին։ Ոմանք ալ մահու պատիժ քուէարկեցին մէկ քանի պայմաններով, այն է՝ քննել թէ պատշաճ չէ՞ վճիռին գործադրութիւնը յետաձգել։ Մէյլ այս մեղմումը առաջարկողն էր, ու այդ կերպով կը յուսար փրկել Լուդովիկոս ԺԶ.ը, որովհետեւ այս պարագային ժամանակը ամէն ինչ էր, և յետաձգում մը կրնար փրկութիւն համարուիլ։ Բաւական թուով երեսփոխաններ այս կարծիքին համամիտ գտնուեցան. քուէարկութիւնը շարունակուեցաւ ազմուկներու մէջ. այդ պահուն, Լուդովիկոս ԺԶ.ի յարուցած հետաքրքրութիւնը իր լրումին հասած էր. և բազմաթիւ երեսփոխաններ եկած էին այդ առաջարկին ի նպաստ քուէարկելու։ Բայց միւս կողմէ ալ իր թշնամիներուն կատաղութիւնը աւելցած էր, և ժողովուրդը վերջ ի վերջոյ հանրապետութեան դատը նոյնացուցած էր վերջին թագաւորին մահուան հետ, և հանրապետութիւնը դատապարտուած կը համարէր եւ թագաւորութիւնը՝ վերահաստատուած, եթէ Լուդովիկոս ԺԶ. չմեռնէր։ Ահարեկած՝ այն կատաղութենէն, զոր կը յարուցանէր այս ժողովրդային համոզումը, բազմաթիւ երեսփոխաններ կը սոսկային որ քաղաքային պատերազմ մը կը ծագի, և թէեւ շատ յուզուած էին Լուդովիկոս ԺԶ.ի վիճակին համար, բայց միւս կողմէ անպարտ արձակման հետեւանքներէն ալ կը սոսկային։ Այս վախը ա՛լ աւելի կը մեծնար երբ կը տեսնէին ժողովը ու տեսարանները, որոնք կը պարզուէին հոն. անմիջապէս որ երեսփոխան մը բեմին սանդուխներէն բարձրանար, կը լռէին, զայն մտիկ ընելու համար. բայց քուէն տալէն յետոյ, գնահատման կամ դժգոհութեան աղաղակները անմիջապէս կը բարձրանային և երեսփոխանին ետ դարձած միջոցին իրեն կ'ընկերանային։

Օթեակները մոլեռանդուհիներով կ'ընդունէին բոլոր այն քուէարկութիւնները, որոնք ի նպաստ մահու պատիժին չէին. յաճախ իրենք իսկ ժողովին կ'ուղղէին սպառնալից շարժումներ. երեսփոխանները ասոնց կը պատասխանէին սրահին ներքէն և ամէն յառաջ կուգար սպառնալիքներու և նախատալից խօսքերու փոխանակութիւն մը։

Այս սոսկալի և ողբալի տեսարանը վրդոված էր բոլոր հոգիները և շատ մը որոշումներ փոխել տուած էր. Վերգոյի Լըքուանդըրն, որուն քաջութիւնը կասկածի չէր կարելի ենթարկել, և որ չէր դադրած օթեակներուն դէմ սպառնական շարժումներ ընելէ, ատեան բարձրացաւ, պահ մը վարանեցաւ և վերջապէս իր բերնէն դուրս թողուց անունիկ և ահաւոր բառը՝ մահ։

Վէրնիօ, որ խորապէս զգածուած էր Լուդովիկոս ԺԶ.ի ճակատագրին համար, և որ իր բարեկամներուն յայտարարած էր թէ երբէք չի կրնար դատապարտել, Վէրնիօ, այս խառնաշփոթ տեսարանին ի տես կը կարծէ նշմարել քաղաքային պատերազմին ի Ֆրանսա և մահու վճիռը կ'արտասանէ, յարելով սակայն թէ յետաձգման բարեխօսումը կ'ընդունի։ Երբ իր կարծիքի փոփոխութեան մասին հարցուցին, պատասխանեց որ այնպէս կարծեց թէ քաղաքային պատերազմը պայթելու մօտ է, և թէ չհամարձակեցաւ զուգակշռի դնել անհատի մը կեանքը Ֆրանսայի փրկութեան գործին հետ։

Դրեթէ բոլոր միրոնականները համամիտ գտնուեցան Մէյնի բարեփոխման, երեսփոխանի մը քուէն մասնաւորապէս բուռն հետաքրքրութիւն պատճառեց. արդէն Օրլէանի դուքսն էր։ Հարկադրուած ըլլալով անձնելի դառնալ Ժաքոպէններուն և կամ կորստեան մատնուիլ, Օրլէանի դուքսը իր ազգականին մահուան վճիռը արձակեց և իր տեղը վերադարձաւ, իր քուէին յառաջ բերած գրգռման մէջ։

Այս մահասարսուռ նիստը տեւեց Յունվար 16ի ամբողջ գիշերը, ինչպէս նաեւ Յունվար 17ի օրը, մինչեւ իրիկուն ժամը 7. արտաքոյ կարգի անհամբերութեամբ մը կը սպասէին որ քուէները հաշուուէին։ Ժողովին շրջակայ ծառուղիները մեծ բազմութեամբ մը լեցուած էին, և ամէն ոք իր միջնաւորին կը հարցնէր թէ քուէարկութեան արդիւնքը ի՞նչ եղաւ։ Ժողովին մէջ սակայն անստուգութիւն կը տիրէր, և կը կարծէին թէ բանտարկութիւն կամ աքսոր բառերը այնքան յաճախ լսած էին, որքան մա՛հ բառը։ Ըստ ոմանց, մէկ քուէ միայն կը պակսէր դատապարտութիւնը արձակելու համար. իսկ ուրիշներ կ'ըսէին թէ մեծամասնութիւն կար արդէն, բայց միայն մէկ քուէով։ Վերջապէս, ամէն կողմէ կ'ըսէին թէ միակ քուէ մը կարող էր խնդրոյն վճռական հանգամանք մը տալ, և անձկութեամբ կը սպասէին որ նոր քուէարկու մը գայ։

Եւ ահա՛ ճիշդ այդ միջոցին բեմ բարձրացաւ մարդ մը որ դժուարութեամբ կը քալէր, և որուն փաթթուած գլուխէն կը հասկցուէր որ հիւանդ մըն էր. արդէն Տիւշաստէլն էր, Տէօ Սէվրի երեսփոխանը, որ անկողինէն դժուարութեամբ ելած էր, գալու և իր քուէն տալու համար։ Երբ բեմին վրայ կը բարձրանայ, ամէն կողմէ բարձրաղաղակ կը գոչեն. ըսողներ կ'ըլլան թէ դաւադիրներ գացած գտած են զայն, Լուդովիկոս ԺԶ.ը ազատելու համար. կ'ուզէին զայն հարցաքննել, բայց Ժողովը կը մերժէ և անոր իրաւունք կուտայ քուէարկել, նախապէս տրուած որոշման համաձայն։ Տիւշաստէլ հաստատակամութեամբ ատեան կը հասնի և ընդհանուր ակնկալութեան մէջ աքսորի քուէ կուտայ։

Նոր միջադէպեր վրայ կը հասնին. արտաքին գործոց նախարարը խօսք կ'ուզէ, հաղորդելու համար մէկ գեկոյցը սպանիական դեսպանին։ Սպանիա կ'առաջարկէր չէզոք մնալ և միւս տէրութեանց մօտ բարեխօսել, եթէ Լուդովիկոս ԺԶ.ի կեանքը շնորհուէր։ Զայրագրգռուած Մոնթանեաններ կը պնդեն, թէ արդէն կազմակերպուած մեքենայութիւն մըն է նոր արգելքներ յարուցանելու համար և օրակարգը կը պահանջեն. Տանթօն փափաք կը յայտնէ որ Ֆրանսա անմիջապէս պատերազմ հռչակէ Սպանիոյ դէմ։ Ժողովը կ'որոշէ օրակարգ անցնիլ։

Քիչ յետոյ նոր խնդրանք մը երեւան կ'ելլէ. Լուդովիկոս ԺԶ.ի պաշտպան փաստաբաններն են, որ կ'ուզեն Ժողովին ներկայանալ, անոր բան մը հաղորդելու համար. Մօնթանեի կողմէն նոր աղաղակներ կը բարձրանան. Ռօպէսփիէռ կը պնդէ որ պաշտպան փաստաբաններուն գործը վերջացած է արդէն, և թէ փաստաբանները այլեւս բան մը չեն կրնար ունենալ Քօնվանսիօնին հաղորդելիք, թէ վճիռը տրուած է և պէտք զայն յայտարարել։

Կը նախագահէր Վէրնիօ. «Քաղաքացինե՛ր, ըսաւ, ձեզի պիտի իմացնեմ թէ ի՛նչ եղաւ քուէարկութեան արդիւնքը. կը յուսամ որ խորունկ լռութիւն մը պիտի պահէք. երբ արդարութիւնը խօսած է, մարդասիրութիւնն ալ իր կարգին պէտք է խօսի։»



ԹԱԳԱՒՈՐԻՆ ՓԱՍՏԱԲԱՆՆԵՐԸ՝ ՄԱԼԶԷՐԲ ԵՒ ԴՐՕՆՇԷ

Ժողովը կը բաղկանար 749 անդամնէրէ. 15 հոգի զանազան պաշտօններով կը բացակայէին, 8 հոգի հիւանդ էին, 5 հոգի չէին ուզած քուէարկել, որով ներկայ անդամներուն թիւը կ'իջնէր 721ի, և բացարձակ մեծամասնութիւնը կ'ըլլար 361 քուէ։ Ընդամենայն 286 հոգի բանտարկութեան կամ աքսորի քուէ տուած էին զանազան պայմաններու տակ, 2 հոգի շղթայակիր աշխատանքի վճիռ տուած էին, 46 հոգի՝ մահու պատիժ, բայց յետաձգելով կա՛մ մինչև խաղաղութեան կնքումը և կամ Սահմանադրութեան վաւերացումը, 26 հոգի՝ մահուան վճռին ի նպաստ քուէարկած էին, բայց Մէյլ՝, նման, կը պահանջէին քննել թէ աւելի օգտակար բան մը չէ՞ր ըլլար գործադրութիւնը յետաձգել։ Այսուհանդերձ իրենց քուէն տրուած էր այս վերջին պարբերութենէն անկախաբար։ Իսկ 361 հոգի քուէարկած էին անպայման մահու պատիժ։

Նախագահը, վշտահար չեչտերով յայտարարեց յանուն Քոնվանսիոնին, թէ Լուի Քաբէի դէմ արձակուած վճիռը մահու պատիժն է։

Այդ պահուն, ատեան կը հրաւիրեն Լուդովիկոս ԺԶ.ի պաշտպան փաստաբանները. Պ. Տըսէզ խօսք առնելով, կ'ըսէ թէ իր յաճախորդին կողմէ զրկուած է վերաքննութեան դիմելու, Քոնվանսիոնին արձակած վճիռը ժողովրդային քուէարկութեան ենթարկելով։ Անիկա ծանրացաւ դատապարտութիւնը վճռող քուէներուն աննշան մեծամասնութեան վրայ, և ըսելով թէ, քանի որ այդպիսի կասկածներ ծագած են ամենուն մտքին մէջ, աւելի պատշաճ է նոյն ինքն ազգին վճիռին դիմում ընել։ Դրօնշէ յարեց որ ոճրային օրէնսգիրքին ամէն կերպով հեռացած ըլլալով՝ պատիժին խստութեան գործին մէջ, պէտք էր նաև ձևերու յարգանքին մէջ մարդասիրութիւն ցոյց տալ, և երկու երրորդի մեծամասնութիւն պահանջել։ Պատկառելին Մալզէրպ խօսեցաւ իր կարգին, հեծեծանքներէն կըցկըտուր եղած ձայնով մը. «Քաղաքացինե՛ր, ըսաւ, ես խօսելու վարժութիւն չունիմ ... ցաւով կը տեսնեմ որ ինծի ժամանակ չեն տար իմ մտածումներս ամփոփելու, քուէները հաւաքելու եղանակին մասին ...։ Ատենօք այս խնդրին վրայ երկարօրէն խորհած եմ, շատ մը խորհրդածութիւններ ունիմ ձեզի հաղորդելիք ... բայց ... քաղաքացինե՛ր ... ներեցէք իմ վրդովմունքիս ... մինչև վաղը միջոց տուէք ինծի որ իմ մտածումներս ներկայացնեմ ձեզի։»

Ժողովը կը յուզուի այս պատկառելի ծերունիին արցունքներուն և ճերմակ մազերուն ի տես։ «Քաղաքացինե՛ր, ըսաւ Վէրնիօ, երեք փաստաբաններուն ուղղելով խօսքը, Քոնվանսիոնը մտիկ ըրաւ ձեր պահանջքը. ասոնք ընելը նուիրական պարտականութիւն մըն էր ձեզի համար. կ'ուզէ՞ք, ըսաւ, իր խօսքը ուղղելով ժողովին, Լուդովիկոսի պաշտպաններուն ընծայել հարկ եղած յարգանքը։»

— Այո՛, այո՛, գոչեցին միաձայնութեամբ։

Ռոպէսպիէռ անմիջապէս խօսք առաւ և յիշեցնելով ժողովուրդի քուէին դիմում ընելու դէմ տրուած որոշումը, փաստաբաններուն պահանջքը մերժեց։ Կուտոն փափաք յայտնեց, որ առանց ընդունելու ժողովուրդին քուէին դիմելու առաջարկը, 24 ժամ միջոց տրուի Մալզէրպին։ Մէրլէն տը Տուէ պնդեց թէ ո՛չ մէկ առարկութիւն կարելի է ընել քուէները հաշուելու եղանակին վրայ. որովհետև, եթէ ոճրային օրէնսգիրքը, որուն դիմում ընողներ կան, քուէի երկու երրորդի մեծամասնութիւն կը պահանջէ յանցանքը հաստատելու համար, պարզ մեծամասնութեամբ մը կը գոհանայ պատիժին գործադրութեան միջոցին. արդ, այս պարագային, յանցաւորութիւնը յայտարարուեցաւ գրեթէ միաձայնութեամբ, և ուրեմն այլևս փոյթ չէ թէ պատիժին տեսակին համար պարզ մեծամասնութիւն միայն գոյացաւ։

Այս զանազան դիտողութեանց համաձայն, Քոնվանսիոնը մէկ կողմ կը դնէ պաշտպան փաստաբաններուն պահանջքը, չեղեալ կը հռչակէ Լուդովիկոս ԺԶ.ի վերաքննութեան դիմումը, և յաջորդ օրուան կը թողու պատիժի գործադրութեան յետաձգման խնդիրը։

Յաջորդ օրը, Յունվար 18, առարկողներ կ'ըլլան թէ քուէները ճիշդ չեն համրուած, և կը պահանջեն որ նոր քուէարկութիւն կատարուի. ամբողջ օրը կ'անցընեն թեր ու դէմ խօսելով. վերջապէս հաշիւը ճիշդ կը գտնեն և կը սահմանեն յաջորդ օրուան թողուլ պատիժի յետաձգման խնդիրը։

Վերջապէս, Յունվար 19ին սա վերջին խնդիրն ալ կը յարուցանեն. կ'ուզեն խնդրոյ առարկայ դարձնել ամբողջ դատավարութիւնը, որովհետև ո՛ և է

յետաձգումով Լուդովիկոս ԺԶ.ի կեանքը փրկուած կ'ըլլար։ Այս պատճառաւ, պատիժին և վերաքննութեան մասին վիճաբանելու առթիւ ամէն տեսակ փաստ սպառելէ յետոյ, Ժիրոնդէնները և Լուդովիկոս ԺԶ.ը փրկել ուզողները չէին գիտեր թէ ի՞նչ միջոց պէտք է գործածել։ Եւ ահա քաղաքական նկատումներ մէջտեղ հանեցին։ Իրենց պատասխան տրուեցաւ որ, եթէ Լուդովիկոս ԺԶ. մեռցուէր, անոր վրէժը լուծելու համար պիտի զինուէին. իսկ եթէ ողջ մնար ու բանտարկուէր, դարձեալ պիտի զինուէին զայն ազատելու համար, և հետեւաբար, արդիւնքը միեւնոյնը պիտի ըլլար։

Պառէր առարկեց թէ անտրամաբան բան է առանց գլուխ մը առնել և օտար արքունիքները պտտցնել, ու դատապարտեալի մը կեանքը կամ մահը պայման դնել, զայն համարելով դաշնագրութեան յօդուած մը։ Յարեց թէ անիկա անգթութիւն է նոյն ինքն Լուդովիկոս ԺԶ.ին համար, որ պիտի մեռնէր բանակներուն ամէն մէկ շարժումին հետ։

Ժողովը անմիջապէս փակելով վիճաբանութիւնը, վճռեց որ ամէն մէկ անդամ այոով կամ ոչով մը քուէ պիտի տայ, առանց ամբիոնէն ելլելու։ Յունուար 20 ին, առտուան ժամը 3 ին, քուէարկութիւնը վերջացաւ, ու նախագահը յայտարարեց թէ 380 քուէի մեծամասնութեամբ՝ ընդդէմ 310 քուէի, Լուի Քարէի վճիռին գործադրութիւնը չպիտի յետաձգուի։

Ճիշդ այդ միջոցին, Քէրսէնէն նամակ մը հասաւ. այս երեսփոխանը իր հրաժարականը կը մատուցանէր. կ'ըսէր Ժողովին, թէ այլեւս չկրնար հանդուրժել այն ամօթին, զոր կը զգայ նստելով արիւնկզակ մարդոց հետ քով քովի, քանի որ ահաբեկումի ազդեցութեան տակ, բարեսիրտ մարդոց կարծիքը տեղի կուտայ, մինչ Մառա կը յաղթանակէ Բէդիոնի։ Այս նամակը շատ մեծ իրարանցում մը յառաջ բերաւ։ Ժանսօնէ խօսք առաւ և՝ այս առիթէն օգուտ քաղեց տրուած վճիռէն՝ վրէժ լուծելու համար սեպտեմբերեաններէն։

—«Բռնապետութեան յանցանքները պատժելը մեծ բան մը չպիտի արժէր, ըսաւ, եթէ ա՛լ աւելի ահաւոր ոճիրները չպատժուէին. մեր պարտականութեան կէսը միայն լրացուցած պիտի ըլլայինք, եթէ չպատժէինք սեպտեմբերեան ոճիրներուն հեղինակները, և եթէ անոնց դէմ դատական քննութիւն մը բանալ չհրամայէինք։»

Ժողովին մեծամասնութիւնը համամիտ կը գտնուէր այս առաջարկին, Մառա և Դալիէն կ'ընդդիմանան և կը գոչեն. «Եթէ պիտի պատժէք Սեպտեմբերի կոտորածին հեղինակները, պատժեցէք ուրեմն նաև այն դաւադիրները, որոնք Օգոստոս 10 ին, պալատին մէջ ամբարած էին։»

Ժողովը, անմիջապէս կ'ընդունի այս բոլոր առաջարկները և կը հրամայէ դատական նախարարին, որ դատի ենթարկէ միանգամայն Սեպտեմբերի առաջին օրերուն աւազակութիւն գործողները, Օգոստոս 9էն 10ի գիշերը պալատին մէջ զէն ի ձեռին բռնուածները և այն պաշտօնատարները, որոնք իրենց պաշտօնատեղին թողած էին, Բարիզ գալով պալատին հետ դաւադրելու համար։

Լուդովիկոս ԺԶ. վերջնականապէս դատապարտուած էր. ոչ մէկ յետաձգում կրնար մահապատիժին գործադրութիւնը յապաղեցնել, և աղէտալի վայրկեանը յետաձգելու համար հնարուած բոլոր միջոցները սպառած էին։ Աջակողմեան անդամները բոլորն ալ, ծածուկ արքայականները, ինչպէս նաև հանրապետականները՝ հաւասարապէս վրդովուած էին թէ՛ այդ անգութ վճիռէն և թէ Մօնթանեի տուած գերակշռութենէ։ Բարիզի մէջ խորունկ ահաբեկում մը կը տիրէր. նոր կառավարութեան յանդգնութիւնը յառաջ բերած էր ամբոխին վրայ ի գործ դրուած ոյ-

մէն ընական ազդեցութիւնը. անիկա անդամալուծած և յուսահատ դատապարտած էր շատերը, ու սոսկ զայրոյթը զրգռած էր մէկ քանի անկիւ ուժեղ հոգիներու։ Դեռ գոյութիւն ունէին Լուդովիկոս ԺԶ.ի մէկ քանի վաղեմի հաւատարիմները, մէկ երկու ազնուական երիտասարդներ, քանի մը անձնուրաց զինուորներ, որոնք մտադրած էին, կ՚ըսուէր, երթալ թագաւորը ազատել կառափնատէն։ Բայց զինուոր ունենալ, իրարու հետ համաձայնիլ՝ մէկ կողմէն սարսափելի երկիւղին և միւսներուն գործօն հսկողութեան մէջ, անկարելի կը դառնար, և շատ շատ՝ կարելի կ՚ըլլար փորձել յուսահատական մէկ քանի անջատ ձեռնարկներ։

Ժամքաղէնները, իրենց տարած յաջողութենէն զինովցած, ապշած մնացած էին սակայն, և իրարու կը յանձնարարէին հսկատ մնալ վերջին 24 ժամուան մէջերին, պատգամաւորներ զրկել բոլոր իշխանութեանց, համայնքային Խորհուրդին, ազգային պահակազօրաց սպայակոյտին, գործադիր իշխանութեան, որպէս զի անոնց եռանդը բորբոքեն և վճռին գործադրութիւնը ապահովեն։ Անոնք իրարու կ՚ըսէին թէ գլխատումը տեղի պիտի ունենար, ճար չկար, բայց այս խօսքը կրկնելուն մէջ իրենց զրած ճիգէն կը հասկցուէր որ ատոր բոլորովին չէին հաւատար։ Թագաւորին արդուած այդ պատիժը, երկիր մը մէջ՝ որ տակաւին 3 տարի առաջ իր թագաւորումը, սովորութիւններովը և օրէնքներովը բացարձակ միապետութիւն մըն էր, տակաւին կասկածելի կը թուէր, ու հաւատալի կը դառնար վճռին գործադրութենէն ետք միայն։

Գործադիր իշխանութեան սակայն պաշտօնը յանձնուած էր մահու վճիռը գործադրելու։ Բոլոր նախարարները հաւաքուած էին իրենց ժողովասրահին մէջ, վախերնուն ահաբեկած, Կառա, իբր դատական նախարար, բոլոր գերեւուն մէջէն ամենէն տաժանելին յանձնած էր, այն է՝ երթալ Լուդովիկոս ԺԶ.ին հաղորդել Քոնվանսիոնի վճիռները։ Սանթէռին հետ Տամբլ գնաց, իրենց հետ կային պատգամաւորները համայնքային Խորհուրդին, ոճրադատ ատեանին և գործադիր իշխանութեան քարտուղարը։

Լուդովիկոս ԺԶ. չորս օրերէ ի վեր իր պաշտօնական փաստաբաններուն կը սպասէր և ի զուր կը խնդրէր որ զանոնք կրկին տեսնէ։ Յունվար 20ին, կէսօրուան ժամը 2ին, դեռ կը սպասէր անոնց, երբ յանկարծ իր սենեակին հասաւ սանդուխին թափօրի մը աղմուկը. դէպ յառաջ գնաց և նշմարեց գործադիր իշխանութեան պատուիրակները։ Արժանայարգ կերպով մը կանգ առաւ իր սենեակին դրանը առջեւ ու ըսաւ յուզեալ չթուեցաւ։ Այն ատեն Կառա տխրօրէն ըսաւ անոր, թէ պաշտօն ունի իրեն հաղորդել Քոնվանսիոնի որոշումները։ Կրուվէլ, գործադիր իշխանութեան քարտուղարը, կարդաց զանոնք։ Առաջին որոշումը կը յայտարարէր թէ Լուդովիկոս ԺԶ. յանցաւոր է պետութեան ընդհանուր ապահովութեանը դէմ դաւաճանած ըլլալուն համար. երկրորդ որոշումը՝ մահուան դատապարտութիւնն էր. երրորդը՝ ժողովրդային քուէարկութեան դիմումի մերժումն էր. վերջապէս, չորրորդ որոշումով կը հրամայուէր մինչեւ 24 ժամ վճիռը գործադրել։

Լուդովիկոս իր չուրջի գտնուողներուն վրայ անխռով նայուածք մը պըտըտցնելէ յետոյ Կրուվէլի ձեռքէն առաւ վճռագիրը, իր գրպանը դրաւ զայն, և Կառային կարդաց նամակ մը, որով Քոնվանսիոնէն կը խնդրէր երեք օր միջոց՝ մահուան պատրաստուելու համար, խոստովանահայր մը, որ ներկայ գտնուի իր վերջին վայրկեաններուն, իր ընտանիքը տեսնելու թոյլտուութիւն, և կը խնդրէր ապահովութիւն՝ որ իր ընտանիքը դուրս ելլէ Ֆրանսայէն։

Կառա առաւ այս նամակը և խոս-

տուցաւ որ զայն անմիջապէս պիտի յանձնէ Քօնվանսիոնին։ Միեւնոյն ատեն, թագաւորը անոր տուաւ հասցէն այն եկեղեցականին, որուն ձեռքովը կը փափաքէր ստանալ վերջին մխիթարութիւնը։

Լուդովիկոս ԺԶ. կատարեալ հանդարտութեամբ իր սենեակը քաշուեցաւ, կերակուր ուզեց և սովորականին պէս ճաշեց։ Սեղանին վրայէն դանակները վերցուցած էին, և կը մերժէին տալ. խոժոռ կերպով մը ըսաւ. «Կը կարծեն թէ այնքան վախոտ եմ, որ անձնասպան ըլլամ. ես անմեղ եմ, և պիտի գիտնամ աներկիւղ մեռնիլ։»

Հարկադրուեցաւ առանց դանակի ճաշել. կերակուրը աւարտեց, իր յարկաբաժինը քաշուեցաւ և պաղարիւնով սպասեց իր նամակին պատասխանին։

Քօնվանսիոնը մերժեց պատիժի գործադրութեան յետաձգումը, բայց միւս բոլոր խնդրանքները ընդունեց. Կառա մարդ ղրկեց, բերել տալու համար Գ. Էճուօրթ տը Ֆիրմօնը, այն եկեղեցականը զոր Լուդովիկոս ԺԶ. ընտրած էր։ Զայն իր կառքը նստեցուց և անձամբ տարաւ Դանփլ. ժամը 6ին հասաւ հոն և Սանդէռին հետ թագաւորին իմաց տուաւ թէ Քօնվանսիոնը իրեն թոյլ կու տար եկեղեցական մը կանչել, առանց ուրիշի մը ներկայութեան իր ընտանիքը տեսնել, միայն թէ կը մերժէր պատիժի յետաձգման խնդրանքը։ Կառա աւելցուց թէ Գ. Էճուօրթ եկած էր արդէն, թէ խորհրդակցութեան սրահին մէջն էր և հիմա նորա պիտի բերէին զայն։

Կառա մեկնեցաւ, հետզհետէ աւելի զարմացած և զգածուած, թագաւորին հանդարտ մեծանձնութենէն։

Գ. Էճուօրթ թագաւորին քովը գնաց թէ չէ, ուզեց անոր ոտքը նետուիլ, բայց թագաւորը զայն անմիջապէս ոտքի հանեց և անոր հետ վշտի արցունքներ թափեց։ Այնուհետև, բուռն հետաքրքրութեամբ մը, թագաւորը տեղեկութիւն ուզեց Ֆրանսայի Կղերին կացութեան վրայ, ինչպէս նաև մէկ քանի եպիսկոպոսներու, մասնաւորապէս Բարիզի արքեպիսկոպոսին մասին, և խնդրեց Գ. Էճուօրթէն, թէ այս վերջինը վստահացնէ որ Ս. հաղորդութեան հաւատարիմ մնալով կը մեռնի ինքը։

Երբ ժամը ութը զարկաւ, թագաւորը ոտքի ելաւ, խնդրեց Գ. Էճուօրթէն որ իրեն սպասէ, և յուզուած մեկնեցաւ սենեակէն, ըսելով թէ իր ընտանիքը տեսնելու կ'երթայ։ Պահապանները, չուզելով աչքէ հեռացնել թագաւորին անձը, նոյն իսկ այն պահուն որ անիկա իր ընտանիքին քովը պիտի ըլլար, որոշեցին որ տեսակցութիւնը տեղի ունենայ ճաշասարահին մէջ, որ ապակեպատ դուռ մը ունէր, որմէ կարելի էր տեսնել թագաւորին բոլոր շարժումները, առանց ձայնը լսելու։

Թագաւորը գնաց այդ սրահը և սեղանին վրայ ջուր դնել տուաւ որպէս զի իշխանուհիներուն հրամցնէ, եթէ պէտք ունենան։ Մտահոգութեամբ կը շրջագայէր, սպասելով այն տխուր վայրկեանին, երբ պիտի երևային իրեն այնքան սիրելի եղող էակները։

Ժամը ութուկէսին դուռը բացուեցաւ. թագուհին, իր զաւկին ձեռքէն բռնած, տիկին Էլիզապէթը, տիկին Ռուայեալը, հեծեծանքներ արձակելով գացին իյնան Լուդովիկոս ԺԶ.ի թեւերուն մէջ։ Սենեակին դուռը գոցուեցաւ և պահակները, Քլէրի, Գ. Էճուօրթ գացին կեցան ապակեայ դրան առջև, այս սրտաճմլիկ տեսակցութեան ականատես ըլլալու համար։ Առաջին վայրկեանին ընդհանուր շփոթութիւն և յուսահատութիւն մը տիրեց։ Աղաղակներուն և հեծեծանքներուն մէջէն ոչինչ կարելի կ'ըլլար զանազանել։ Վերջապէս, արցունքները չորցան, խօսակցութիւնը աւելի հանդարտեցաւ, և արքայազուն

տիկինները Թագաւորը միշտ գրկած, քանի մը վայրկեան ցած ձայնով խօսեցաւ հետը։

Թագաւորը, բաւական երկարատեւ տեսակցութենէ մը յետոյ ոտքի ելաւ այդ վշտալից կացութենէն ազատելու համար, և խոստացաւ զանոնք վերստին տեսնել յաջորդ առտու ժամը ութին։

— «Կը խոստանա՞ք մեզի այդ բանը» հարցուցին, պնդելով իշխանուհիները։

— «Այո, այո՛» պատասխանեց Թագաւորը վշտալի ձայնով մը։

Այդ միջոցին, Թագուհին բռնած էր անոր մէկ ձեռքը, իսկ Տիկին Էլիզաբէթ՝ միւս ձեռքը։ Տիկին Ռուայեալ իր հայրը գրկած էր մէջքէն, իսկ երիտասարդ իշխանը անոր առջեւը կեցած էր, ձեռքը դրած մօրը և հօրաքրոջը վրայ։ Դուրս ելլելու միջոցին Թագաւորին աղջիկը մարեցաւ, անմիջապէս զայն հեռացուցին, և Թագաւորը վերադարձաւ Պ. Էճուօրթի մօտ, այս սրտաճմլիկ տեսարանին տակ ճընշուած։ Քանի մը րոպէ յետոյ, ինքզինքը գտաւ և հանդարտեցաւ։

Այն ատեն Պ. Էճուօրթ առաջարկեց պատարագ մատուցանել, երկար ժամանակէ ի վեր լսած չէր Թագաւորը։ Մէկ քանի դժուարութիւններէ յետոյ, Համայնքային Խորհուրդը հաւանութիւն տուաւ այդ արարողութեան, և մերձակայ եկեղեցիէն ուզեցին յաջորդ առտուան պատարագին համար հարկ եղած սպասները։ Կէս գիշերին մօտ Թագաւորը քնացաւ, յանձնարարելով Քլէրիին որ ժամը 5էն առաջ արթնցնէ զինքը։ Պ. Էճուօրթ անկողին մը նետուեցաւ. Քլէրի աթոռի վրայ կեցաւ իր տիրոջը սնարին մօտ, դիտելով այն անխռով քունը, որով կը ննջէր Թագաւորը, կառափնատ բարձրանալու նախընթօրին։

Մինչ այս բաները տեղի կ'ունենային Դամբլի մէջ, Բարիզի մէջ ահաւոր տեսարան մը կը պարզուէր։ Մեկ երկու անարժան մարդիկ հոս հոն խռովութիւն կը սերմանէին, մինչ ամբոխը, կա՛մ անտարբեր և կամ ահաբեկած, անշարժ կը կենար։ Բառի անուն քաղաքապահ զինուոր մը վճռած էր Լուդովիկոս ԺԶ.ի մահուան վրէժը լուծել, անոր դատաւորներէն մին սպաննելով։ Լըբէլըթիէ Սէն Ֆարժօ, իր դասակարգին պատկանող մարդոց մեծ մասին նըման մահու պատիժը քուէարկած էր, իր ծագումը և հարստութիւնը մոռցնել տալու համար։ Անիկա այս պատճառաւ շատ մեծ զայրոյթ մը գրգռած էր արքայականներուն, որովհետեւ ինքը ազնուականներու դասակարգին կը պատկանէր։ Յունուար 20ի իրիկունը, Բալէ Ռուայալի մէկ ճաշարանին մէջ Լըբէլըթիէ Սէն Ֆարժօն ցոյց տուին Բառի քաղաքապահ զինուորին, այն պահուն, ուր անիկա ճաշելու կը պատրաստուէր։ Երիտասարդը, երկար և լայն հագուստ մը վրան առած, ներկայացաւ անոր ու ըսաւ.

— Դո՞ւն ես ապիրատ Լըբէլըթիէն, որ Թագաւորին դէմ մահու վճիռ արձակեցիր։

— Այո՛, պատասխանեց անիկա, ես խղճիս ձայնին համաձայն քուէ տուի։

— Շատ աղէկ, ահա՛ վարձատրութիւնդ, ըսաւ Բառի, և սուրը խոթեց անոր կողը։

Լըբէլըթիէ գետին ինկաւ, իսկ Բառի փախաւ գնաց, ու ժամանակ չգտան զայն ձերբակալելու։

Այս սպաննութեան լուրը անմիջապէս տարածուեցաւ ամբողջ Բարիզի մէջ։ Քօնվանսիօնին, Ժագօպէններու Ակումբին և Համայնքային Խորհուրդին մէջ կը դատապարտեն զայն. և այս նոր դէպքը ա՛լ աւելի հաստատութիւն կուտայ Թագաւորականներու դաւադրութեան լուրերուն, որովհետեւ զրոյց կը շրջէր թէ արքայականները պիտի փորձեն կոտորել ձախակողմեաններն և Թա-

դաւորր ողորմելի կառավարութեան առջեւէն։ Ժաքոպէնները յայտարարեցին թէ մշտնջենական կերպով ժողովի մէջ են, և նոր պատուիրակներ ղրկեցին բոլոր իշխանութեանց և մասնաճիւղերուն, անոնց եռանդը բորբոքելու և ամբողջ ժողովուրդը զինելու համար։

Յաջորդ օրը, 21 Յունուար, ժամը 5 հնչած էր Դամբլի մէջ։ Թագաւորը արթնցաւ, կանչեց Քլէրին, ժամը հարցուց անոր եւ մեծ հանդարտութեամբ սկսաւ հագուիլ. ինքզինքը շնորհաւորեց, քնանալով իր ոյժերը վերստացած ըլլալուն համար։ Քլէրի կրակը վառեց, դարա՛կ մը առաւ և անով խորան մը շինեց. Պ. Էճուորթ պատարագիչի բըղգեստներ հագաւ և սկսաւ պատարագ մատուցանել. իրեն կը սպասաւորէր Քլէրի, և թագաւորը ծունկի եկած կ'ունկնդրէր իրեն ամենամեծ մտամփոփումով։ Այնուհետև Պ. Էճուորթի ձեռքէն ընդունեց հաղորդութիւնը, և պատարագէն յետոյ ոտքի ելաւ վերակենդանացած և հանդարտութեամբ սպասելով այն պահուն, երբ դէպ ի կառափնատեղին երթար։

Մկրատ ուզեց իր մազերը իր ձեռքովը կտրելու համար, և որպէս զի չենթարկուի իր դահիճներուն ձեռամբ կատարուելիք այս նուաստացուցիչ գործողութեան, բայց Համայնքային Խորհուրդը չվստահելով՝ մկրատ չտուաւ իրեն ձեռքը։

Այդ միջոցին, մայրաքաղաքին մէջ թմփկահարութիւն կը կատարուէր. բոլոր անոնք, որ զինեալ մասնաճիւղերուն անդամ էին, իրենց զօրագունդերը կ'երթային կատարեալ հնազանդութեամբ։ Անոնք՝ որ սեւ պարտականութիւն չունէին՝ այս ահաւոր օրուան մէջ, իրենց տունը պահուըտած էին։ Դուռները եւ պատուհանները գոցուած էին և ամէն ոք իր տունը նստած կը սպասէր այս մահատարատու եղեռութեան վերջանալուն։ Ռազմներ կային որ չորս հինգ հարիւր անձնուէր մարդիկ պիտի խոյանան կառքին վրայ և թագաւորը պիտի առեւանգէին։ Քոնվանսիոնը, Համայնքային Խորհուրդը, Գործադիր իշխանութիւնը և Ժաքոպէնները նիստ գումարած էին։

Առաւօտեան ժամը 8ին Սանթէռ, Համայնքային Խորհուրդին, կառավարութեան և ոճրապարտ ատեանին պատգամաւորներուն հետ Դամբլ գնաց. Լուդովիկոս ԺԶ. աղմուկը լսելով, ոտքի կ'ելլէ և կը պատրաստուի մեկնիլ։ Անիկա չէր ուզած վերստին տեսնել իր ընտանիքը, որպէս զի այդ օրուան սըրտաճմլիկ տեսարանը չկրկնուի։ Քլէրիին պաշտօն յանձնեց իր կողմէ միայն բարով ըսել իր կնոջը, քրոջը և տղոցը, անոր տուաւ կնիք մը, մազեր և զանազան գոհարեղէններ, խնդրելով որ զանոնք յանձնէ իր ընտանիքին։ Յետոյ անոր ձեռքը սեղմեց և շնորհակալ եղաւ մատուցած ծառայութեանը համար։ Այնուհետև պահակներէն միայն ուզելով խօսքը, խնդրեց որ Համայնքային Խորհուրդին հաղորդէ իր կտակը։ Այդ պահակը նախկին քահանայ մըն էր, Ժաք Ռու անունով, եւ իրեն բրտօրէն պատասխանեց թէ ինք պաշտօն ունի զայն դէպ ի կառափնատ առաջնորդել և ո՛չ թէ իրմէ պատուէրներ ընդունիլ։ Ուրիշ մը կը ստանձնէ այդ պաշտօնը, եւ Լուդովիկոս դէպ ի թափօրը դառնալով անյողդողդ կերպով մը մեկնումի նշանը տուաւ։

Ոստիկան զօրաց սպաներ դրուած էին կառքին առջեւը, թագաւորը և Պ. Էճուորթ նստած էին կառքին խորը. ճամբան, որ բաւական երկար տեւեց, թագաւորը կը կարդար, Պ. Էճուորթի աղօթագրքին մէջէն, հոգեվարքի աղօթքները, եւ երկու ոստիկանները շփոթած կէին իր բարեպաշտութենէն և անխռով համակերպութենէն։ Կ'ըսուի թէ անոնք պատուէր ընդունած էին զայն սպաննել, անմիջապէս որ կառքին վրայ յարձակում գործուէր։

Սակայն և այնպէս, ոև է թշնամական ցոյց չեղաւ Դամբլէն մինչև Ռէվօլիւսիոնի հրապարակը։ Զինեալ բազմութիւն մը զինուորներու շարքին քովն ի վեր կեցած էր. կառքը կամաց կամաց կը յառաջանար. ընդհանուր լռութեան մէջ։ Ռէվօլիւսիոնի հրապարակին վրայ լայն տեղ մը պարապ ձգուած էր կառափնարին շուրջ. այդ հրապարակին ամէն կողմը թնդանօթներ զետեղուած էին. ամենէն մոլեռանդ դաշնակիցները կեցած էին կառափնարին շուրջը, և գռեհիկ խուժանը, որ միշտ պատրաստ է նախատելու հանճարը, առաքինութիւնը, դժբաղդութիւնը, երբ այդ բանին նշանը տրուի իրեն, դաշնակիցներուն շարքերուն ետևը խռնուած էր, և միայն անիկա գոհունակութեան ակներև նշաններ ցոյց կուտար, մինչ ամէն ոք իր սրտին խորը թաղած էր զգացածը։

Ժամը 10ը տասը վայրկեան անցած, կառքը կանգ առաւ. Լուդովիկոս ԺԶ. ուժգնօրէն ոտքի կանգնեցաւ, և հրապարակին վրայ իջաւ. երեք դահիճներ դէմը ելան, զանոնք մէկ կողմ հրեց և ինքն իր ձեռքովը հանուեցաւ։ Բայց տեսնելով որ իր ձեռքերը կապել կ'ուզեն, վայրկեան դողաց և ինքզինքը պաշտպանել պատրաստուեցաւ. Պ. Էճուորթ, որուն բոլոր խօսքերը շատ վսեմ եղան այդ պահուն, վերջին ակնարկ մը նետեց անոր և ըսաւ. «Հանդուրժեցէ՛ք այս նախատինքին ալ, վերջին անգամ մըն ալ նմանելով Աստուծոյ, որ ձեր վարձատրութիւնը պիտի տայ։»

Այս բառերուն վրայ, համակերպած և հնազանդ, զոհը թող կուտայ որ ձեռքերը կապեն, և դէպ ի կառափնատանին։ Յանկարծ, Լուդովիկոս քայլ մը առաւ, դահիճներէն հեռացաւ և առաջ անցաւ ժողովուրդին խօսելու համար։

— «Ֆրանսացինե՛ր, ըսաւ, ուժեղ ձայնով մը, ես կը մեռնիմ անպարտ այն ոճիրներէն, զորս ինծի կը վերագրեն. կը ներեմ զիս մեռցնողներուն և կ'աղօթեմ որ արիւնիս մեղքը չքայէ Ֆրանսան։»

Դեռ պիտի շարունակէր, բայց հրաման տրուեցաւ որ թմբկահարութիւնը սկսի, անոնց դոռումը թագաւորին ձայնը անլսելի դարձաւ, դահիճները բռնեցին զայն և Պ. Էճուորթ անոր ըսաւ սա խօսքը.

— «Որդի՛ Ս. Լուդովիկոսի, երկի՛նք բարձրացէ՛ք։»

Հազիւ թէ արիւնը թափած էր, և ահա կատաղի մարդիկ անոր մէջ թաթխեցին իրենց աչգերը և թաշկինակները, և ամբողջ Բարիզի մէջ ցրուեցան գոչելով. կեցցէ՛ Հանրապետութիւնը. կեցցէ՛ Ազգը, և գացին մինչև Դամբլի դուռներուն առջև, ցոյց տալու համար այն գազանային և արուեստական ուրախութիւնը, զոր ամբոխը կը յայտնէ բոլոր իշխաններու ծնած, գահ բարձրացած և ինկած միջոցին։

ՎԵՐՋ ՏԱՍՆ ԵՒ ՄԷԿԵՐՈՐԴ ԳԻՐՔԻ

դաւաճաններուն, Օգոստոս 10էն ի վեր գործուած ծայրայեղութիւնները։ Այս պատճառաւ, անոնք մինչեւ վերջին վայրկեանը կասկածներ էին իրենց յաղթանակին վրայ. բայց Յունվար 21ի անխռով գլխատութիւնը զանոնք վերջնականապէս ապահովցուցած էր։ Այն օրէն ի վեր սկսած էին կարծել թէ յեղափոխութեան դատը փրկուած կարելի էր համարել և շրջաբերականներ կը պատրաստէին դաւաճանները լուսաբանելու և զանոնք վերջնականապէս ջնջելու համար։

Միւս կողմէ, Ժիրոնտէնները արդէն իսկ զգածուած զոհին վիճակէն և ամէն դաւ իրենց հակառակորդներուն յաղթանակէն վրդովուած, սկսեր էին Յունվար 21ի դէպքին մէջ տեսնել երկար և արիւնահեղ պայքարներու նախանշանը և առաջին ապացոյցն այն անագորոյն դրութեան, որուն դէմ կը մարտնչէին։ Իրաւ է որ անոնց պահանջքին գոհացում տրուած էր Սեպտեմբերի հեղինակները հետապնդելով, բայց ասիկա ապարդիւն զիջում մըն էր։ Լուդովիկոս ԺԶ.ը լքելով անոնք ուզած էին ապացուցանել թէ արքայական չեն. անոնց յանձնելով Սեպտեմբերականները, կ՚ուզէին ապացոյցը տալ թէ ոճիրը չեն պաշտպաներ. բայց այս կրկնակի ապացոյցները ոչ մէկը գոհացուցած էին կամ ապահովցուցած։ Յանձին անոնց միշտ կը տեսնէին տկար հանրապետականներ և գրեթէ թագաւորականներ, և իրենց հակառակորդներուն մէջ միշտ կը տեսնէին արիւնի և սպանութեան ծարաւի թշնամիներ։

Ռօլան, բոլորովին յուսահատած, ո՛չ թէ վտանգէն, այլ օգտակար հանդիսանալու անկարելիութենէն, իր հրաժարականը տուաւ Յունվար 23ին։ Ժաքօպէնները մեծ գոհունակութեամբ ընդունեցին այդ հրաժարականը, բայց շատ չանցած առարկեցին թէ նախարարութեան մէջ կը գտնուէին տակաւին Կլավիէր և Լըպրէօն, թէ դաւադիր Պրիսօն բռնատիրած էր դահլիճին, թէ չարիքը դեռ արմատախիլ եղած չէր բոլորովին, թէ պէտք չէր տնտնալ, այլ ընդհակառակը՝ եռանդը կրկնապատկել, մինչեւ որ կառավարութենէն հեռացուած ըլլան դաւադիրները. Ժիրոնտէնները. Ռօլանականները. Պրիսօականները, ևն։

Եւ ահա յանկարծ, Ժիրոնտէնները պահանջեցին վերակազմութիւնը պատերազմական նախարարութեան, զոր Բաշ, Ժաքօպէններու հանդէպ իր ցոյց տուած թուլութեամբը, շատ ողբալի դրութեան մը մէջ դրած էր։ Բուռն վիճաբանութիւններէ յետոյ, Բաշ ճամբուեցաւ իբր անկարող. և այսպէսով, նախարարութիւնը իրենց միջեւ բաժնող երկու պետերը, որոնց անունները համախմբման երկու հակառակ կէտեր եղած էին, կառավարութենէն դուրս ձգուեցան։ Քօնվանսիօնի մեծամասնութիւնը կարծեց որ այսպէս ընելով կը ծառայէ խաղաղութեան դատին, իբր թէ, մէջտեղէն վերցնելով այն անունները զորս կը գործածէին թշնամի կիրքերը, այդ կիրքերը իրենք պիտի դադրէին կենդանի մնալէ, նոր անուններ գտնելով պայքարը շարունակելու համար։

Պէօրնօնվիլ, բարեկամը Տիւմուրիէի և Ֆրանսայի Աժաքը մականուանեալ, պատերազմական նախարարութեան պաշտօնին կոչուեցաւ. անիկա կուսակցութիւններուն ծանօթ էր սակայն միայն իր քաջութեամբը. բայց կարգապահութեան համար ցոյց տուած իր մեծ յարգանքը շատ չանցած զինքը պիտի հակառակորդ հանդիսացնէր Ժաքօպէններուն անհատ սատարակցի կարողութեանց։ Այս կարգադրութիւնները ընելէ յետոյ, օրակարգին մէջ անցուցին ելմտական խնդիրները, որոնք ամենէն կարեւորներն էին այդ գերագոյն վայրկեանին, երբ յեղափոխութիւնը ստիպ-